Vark Srbots' Harants'

59

722 p.

ՎԱՐՔ

# ՍՐԲՈՑ ՀԱՐԱՆՑ

ԵՒ

ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԻՒՆՔ ՆՈՑԻՆ

ԸՍՏ

ԿՐԿԻ՛Ն ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ

ՆԱԽՆԵԱՑ

ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ







Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1855 ՌՅԴ

ՅԻՇԱՏԱԿ

# ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՀՈԳՒՈՑ

# ՊՈՒՐԻՍԵԱՆ

# ԲԱՐԵՊԱՇՏՕՆ ՏՈՀՄԻՆ

Vark Srbots' Harants'

59

722 p.

# ՎԱՐՔ

# ՍՐԲՈՑ ՀԱՐԱՆՑ

ԵՒ

## ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԻՒՆՔ ՆՈՑԻՆ

ԸՍՏ

## ԿՐԿԻՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ

ՆԱԽՆԵԱՑ

ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ








Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1855 ՌՅԴ

ՅԻՇԱՏԱԿ

# ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՀՈԳԻՈՑ

# ՊՈՒՐԻՍԵԱՆ

# ԲԱՐԵՊԱՇՏՕՆ ՏՈՀՄԻՆ

րիւք փափագէր 'ի տառապեալ խղճիս մենակեցացն երթեւեկել, եւ անդ զաղքատին գրգլեակսն եւ զպարզ կերակրինս նոցա՝ քան զարքունի գահուն բարեկենդանութիւն վերադասէր: Նովին տենչանօք վառէր համապազ եւ գահագլուխ սրբազան պերճախօսացն հայրապետս, որ 'ի կենցաղ երկնակրօնիցն այնոցիկ մտօքն եւեթ երեւութացեալ, եւ առ չժուժալ սրտին զի վրիպեաց 'ի դասուէ նոցա, զերկնահանգէտ ուղղութիւնս նոցին հրաշալան յօրինուածովք նկարագրէր:

Մ՝ի ընդ խստակրօնութեանն տարրաց երանելեացն գթեալ որ եւ յոչէութիւն զիրսն տանիցի՝ թէ զի չկան այժմ, ապա եւ չկցեն սոքա ստոյգ, կամ աւելորդօք քան զոր եղեւն՝ գրեցան: Ամերամիտ մարդկանդ երկբայութիւն եւ առ երանելեօքն լուեալ լինէր երբեմն յարժամ զվկայս հնագունիցն քան զնմբեանս ընթեանուլին. այլ ոչ սուրբք երկբայութեանցն սասուերացեալ անհետանալ հրեշտակակրօնիցն քաղաքավարութիւն, եթէ յաշոր միանգամ ամփոփէ զաստուածայինն սիրոյն զհուր եւ ըղհանդերձեալ բարեացն ցանկալիս՝ որք զամենայն չարչարանս ժամանակիս թեթեւ զործէին առ նոսա: Բայց ոչ զծանր ծանր ճգնանց եւեթ հանդէս աւանդէ մեզ մատենանս, այլ եւ զօրինակս կարկառ եւ անհրաժեշտ առաղութեանցն ցուցեալ եւ զմեռելութեան ախտից, յորդորս առաքինասէր վաստակաւորացն լինի հետեւել պատցիկ լինել, թէպէտ եւ յոյժն ոչ համարձակիցին:

Այդ էին աղբեօք եւ միանձնակեցացն կեանք որ փոյթ կալեալ անխափան պահել զառաքինի արանցն նկարագիր: Աթանաս եւ Հերոնիմոս, Սոփրոնիոս եւ Պալադիոսի եւ Թէոդորիտոս, եւ որք ընդ նոցունց բազումք յարեւելեայց եւ յարեւմտեայց արժանաւորք յիշատակաց ցկատարած զարդուց, որք զանձն ամբարեցին եկեղեցւոյ գրաւոր վաստակօքն, է որ 'ի լսոյ եւ 'ի տեսանելոյ զվկայս աստուածանուէր հարանցն 'ի գիր առեալ, եւ է որ յառաջնոցն գրուածոց թարգմանաբար յայլ լեզու փոխեալ.

ասել թարգմանութեանց այսոր զխղճ էր զՀինն ևեթ Հրա-
տարակել՝ զանց զերկրորդականն արարեալ. զի նա պատրաստա-
կամութեանն և սա ընդարձակութեանն կարևոր զա-
տեցան 'ի միասին տեսանել զլոյս, քանզի և չկամիմք թէ
և Հաստատած մի մանր կարիցէ յարատադրութենէ բանից
մերոցս նախնեաց։ Վասն որոյ զՀինն եղեալ 'ի մէջ,
զՀաւատար նորին երկրորդ թարգմանութեանն՝ եթէ
չարադրածով այլանձև ինչ էր՝ մանրատառիւ շարեցաք 'ի
ստորևն էջ առ էջ Համեմատ ընդ Հնոյն. Նոյնպէս ա-
րարաք և զՀամառօտեալ սակաւաթիւ Հատուածս Հնոյն՝
այլ երկիրջեանս առնելով զնոսին յորոշումն յայլոցն։ Որ-
պէս զի և իղձք Հնասիրացն լիակատար լցցին, տեսեալ
առընթեր միմեանց որպիսի և որքան այլայլութիւն կր-
րեալ իցէ մատեանս 'ի Հնոց անտի մինչև ցկիլիկեան
դարսն. և զի գործի իմն կարևոր առձեռն պատրաստե-
ցեմք վաստակաւորացն 'ի բարգաւաճանս բարբառոյս։
Նաև որ ինչ մնացորդք երևեցան յերկրորդ թարգմա-
նութենէ և 'ի Հինն չկայր Հաւատար նոցին, և յայտ է
թէ յետոյ ուրեմն թարգմանեալք են, զայնոսիկ 'ի կա-
տարած իւրաքանչիւր մասանց կամ գլխոցն ամփոփեցաք՝
մնացորդս կոչելով զնոսա յերկրորդ թարգմանութենէ,
թէպէտ և Հարիւր և յիսնիւ չափ Հատուածովք առա-
ւելու և Հինն քան զերկրորդս։ Զկարգս բանից մա-
տենին ընտրեցաք զՀինն թարգմանութեանն, որ սկիզբն
'ի վարուցն Պաւղոսի արարեալ՝ միահետ ածէ 'ի մէջ
զամենայն երկարագոյն վարս, իմա զայնոսիկ որոց վեր-
նագիրք կան։ Յետ այնորիկ զմանր Հատուածսն և զկար-
ճառօտ պատմութիւնս, քանզի խառն 'ի խուռն 'ի մի
վայր խմբեալ էր, որպէս վերագոյն ասացաք, ըստ երկ-
րորդ թարգմանութեանն որոշեցաք ըստ գլուխս գլուխս՝
բովանդակեալ զամենայն յինքեանսն։ Այլ յետ ամե-
նայնի դարձեալ ըստ կարգի Հնոյն գլխատակաց Ճառսն
եդեալ, սկիզբն 'ի բանից Թմուացւոյն Սերապիոնի ա-
րարեալ, կարևոր գիտելեօք ծանօթս տուեալ եմք։

Մակարայ աշակերտին Անտոնի . . . . . . . 266
Խոխգորեայ վանաց Նկարագիր . . . . . . . 269
Սերեպիոնի հօրն . . . . . . . . . . . 270
Պատմութիւն Գերոնտի մաքսաւորին . . . . . . . 271
Վարք Եփրոսինեայ . . . . . . . . . . . . 278
Վարք Մարիամու եգիպտացւոյն . . . . . . . 287-291
Վարք Եւագրեայ պոնտացւոյ . . . . . . . . . 318
Պատմութիւն Պաւղոսի լուսարարացւոյ . . . . . . . 323
Վարք Սիմէոնի սիւնակեցի . . . . . . . . . 325
Վարք Իղարիոնի . . . . . . . . . . . . . 327
Վարք Մարտինիանոսի . . . . . . . . . . . 330
Վասն բարձրամիտ անապատականին . . . . . . . 338
Վարք Մակարայ Հռոմայեցւոյ . . . . . . . . . 340
Վասն որք զդրախտին լեառն գտին . . . . . . . 348
Վարք Մարկոսի աղլանի . . . . . . . . . . 350
Վարք Սիմէոնի ապուշի . . . . . . . . . . 352
Պատմութիւն Ներսէհի . . . . . . . . . . . 360
Վարք կամաւոր աղքատացելոյ որդւոյ թագաւորին Հռոմայ 369
Զեղջ և գործ Մովսէսի աւազակին . . . . . . . 390
Վարք Թէոդորայ . . . . . . . . . . . . 392
Վարք Մարիամու Մարինոսի . . . . . . . . . 402
Զեղջ և ապաշխարութիւն Տայիսայ . . . . . . . 406

ԲԱՆՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ՍՈՒՐԲ ՀԱՐԱՆՑ

Ա. Վասն կատարեալ առաքինութեան . . . . . . 413
Բ. Վասն հանդարտութեան . . . . . . . . . . 493
Գ. Վասն մտադրութեան կամ զգուշութեան և պատրաստութեան . 519
Դ. Վասն պահոց և ժուժկալութեան . . . . . . 564
Ե. Վասն զգուշութեան պոռնկութեան . . . . . . 597
Զ. Վասն անընչութեան . . . . . . . . . . 705

# ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

Է. Վասն արիութեան և համբերութեան . . . . . 5
Ը. Վասն ոչ առնել ինչ՝ի ցոյց մարդկան . . . . . 55
Թ. Վասն դատելոյ . . . . . . . . . . . . 75
Ժ. Վասն աստուածայնոյն և ուղիղ դատողութեան . . . 96
ԺԱ. Վասն արթուն և զգաստ լինելոյ . . . . . . 187
ԺԲ. Վասն աղօթից . . . . . . . . . . . . 211
ԺԳ. Վասն ասպնջականութեան և ողորմած լինելոյ . . . 218
ԺԴ. Վասն հնազանդութեան . . . . . . . . . 251
ԺԵ. Վասն խոնարհութեան . . . . . . . . . . 276
ԺԶ. Վասն անյիշաչարութեան . . . . . . . . . 342
ԺԷ. Վասն սիրելոյ զաստուած և զընկերն . . . . . 353

ԺԸ. Վասն հոգեւոր հարցն . . . . . . . . . . 374
ԺԹ. Վասն քաղաքավարութեան հարցն . . . . . . 452

ԽՐԱՑՔ ՍՈՒՐԲ ՀԱՐԱՆՑ

Սերեպիոնի Թմուայեցւոյ բանք . . . . . . . . 507–522
Յաղագս առաքինութեան . . . . . . . . . . . 522
Վասն երկիւղին Աստուծոյ . . . . . . . . . . 527
Մովսէսի միայնակեցի առ Ամոն . . . . . . . . 532
Աբբայ Մովսէսի վասն ոխակալութեան . . . . . 534
Աբբայ Եփրեմի բանք . . . . . . . . . . . . 537
Փերլքսոփանոսի բանք . . . . . . . . . . . . 538
Մեծին Մակարայ Թուղթ . . . . . . . . . . . 562
Մակարայ գիտնաւորի բան . . . . . . . . . . 570
Առ հայրն Մակար հարցուածք . . . . . . . . 571 - 574
Իպերիքեայ խօսք . . . . . . . . . . . . . 591
Գաքինոսի լուծումն հարցուածոյ . . . . . . . 592
Ամոնի Թուղթք երեք . . . . . . . . . 597–603
Վասն կարգի սրբութեան պաշտօնէից . . . . . . 604
Թէ որպէս պարտ է որբել զանձինս . . . . . . 606
Յաղագս յիշելոյ զգործեցեալ մեղսն . . . . . . —
Պատուէրք սուրբ հարցն . . . . . . . . . . . 607
Յաղագս Ճգնաւորաց . . . . . . . . . . . . 610
Խրատք ծերոյ մեծի . . . . . . . . . . . . 611
Յառաջնումն հարեգայի . . . . . . . . . . . 628
Հօրն Յոհաննու վասն երիտասարդաց . . . . . . 631
Խրատք սուրբ հարցն . . . . . . . . . . . . 633
Նեղոսի խրատք . . . . . . . . . . . . 641–725



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Եւ

# ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

## ԱՆԱՊԱՏԱՒՈՐ ՃԳՆԱՒՈՐԱՑ

### ՎԱՐՔ

### ՍՐԲՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ ԱՆԱՊԱՏԱԿԱՆԻ

Առ բազմօք բազում անգամ խնդիր լինէր եթէ յո՞ւմ ումեքէ զառաջինն սկսաւ բնակել յանապատի։ Ոմանք զառաջինսն յիշեցեալ յերանելւոյն Եղիայէ և Յովհաննէ ասեն սկիզբն առնուլ անապատական վարուց։ Այլ մեզ Եղիաս եւեթ մեծ եղեալ քան զմիայնակեացս, և Յովհաննէս յառաջ քան զծնանելն իւր սկըսաւ մարգարէանալ։ Այլ ոմանք դարձեալ վիճին՝ զԱնտոն առաջնորդ լինել խոստմանս այսմ։ Այլ թէպէտ և փոքր 'ի շատէ ինչ իցէ հաւատալ ըստ ասացելոյն նոցա, սակայն ոչ եթէ յառաջ քան զամենեսին եղև, այլ

Առ բազմօք բազում անգամ խնդիր լինէր եթէ յումմէ՛ ումեքէ սկսաւ զառաջինն բնակել յանապատի։ Ոմանք զառաջինսն յիշեցեալ յերանելւոյն Եղիայէ և 'ի Յովհաննէ ասեն սկիզբն լինել անապատական վարուց։ Այլ Եղիաս մեզ եւեթ մեծ քան զմիայնակեացս, և Յովհաննէս յառաջ քան զծնանելն իւր սկսաւ մարգարէանալ. և որք այսպիսիքս նախնիք և անապատաւորութիւնք 'ի վեր քան զբնութիւնս։ Այլ ասեն այժմ և ժամանակի նորոգս մանկանց՝ սկիզբն այս խոստմանս անապատականաց առաջնորդ՝ ոմանք ըստ բազում կարծեաց մարդկան վիճին զՀրայր Անտոնն լինել։ Այլ թէպէտ հաւատալի է ըստ աւե-

նովաւ բազումք 'ի նախանձ աստուածպաշտութեանս այսմիկ կոչեցան։ Նաև նորին իսկ երանելւոյն Նոննի աշակերտք, և մանաւանդ Մամասս և Մակարիոս, որք և թաղեցին զնա, մինչև ցայսօր պնդեալ ասեն զՊաւղոս ոմն թեբայեցի իրիս այսմիկ սկիզբն և առաջնորդ լեալ. և մեք յայսմ հաստատեալ եմք։ Արդ վասն զի երանելւոյն Նոննի վարուցն ոչ միայն Յունաց, այլ և Հռոմայեցւոց և Ասորւոց բարբառն վկայէ հանդերձ գրովն, կարևոր համարեցայ և ես սակաւ ինչ զՊաւղոսի սկիզբն և զկատարած վարուցն ընդ գրով արկանել. քանզի թէ որպէս զժամանակս միջին հասակին եկաց և որպիսի ճգնութիւնս ետես և որչափ փորձութեանց սատանայի համբեր, 'ի բազմաց է ծածկեալ։

Ի թագաւորութեան Դեկայ և Վաղերիանոսի ամբարշտաց և հալածչաց, յորում ժամանակի Կոռնելիոս 'ի Հռոմ քաղաքի և Կիպրիանոս 'ի Կարքեդոնի երանութեամբ վախճանեցին, բազում չարչարանս և փորձութիւնս յԵգիպտոս և 'ի Թեբայիդ կրեաց կաթողիկէ եկեղեցի, և ամենայն առաքինի և աստուածա-

լոյ նոցա՝ սակայն ոչ եթէ նա յառաջ, քան զայլ և նախկին, բայց նովաւ եղև նախանձ աստուածպաշտութեանս այսորիկ անապատաբնակութեան ամենեցուն առ հասարակ՝ միանձանց և վանորէից։ Քանզի թէպէտ նախկին և առաջին պնդեալ ասեն զհայրն Պաւղոս Թեբայեցի՝ իրիս այսմիկ սկիզբն և առաջնորդ լինել, և մեք յայսմ հաստատեալ եմք, որպէս և սոցին աշակերտքն երանելւոյն Անտոնի Մամասս և Մակարիոս որք թաղեցին զնա, սակայն հայրն Պաւղոս ոչ ումեք երևեալ՝ յինքեան միայն էր անապատական, -թէպէտ նախ և առաջինն էր միանձնական։ Արդ քանզի վասն երանելւոյն Անտոնի վարուցն ոչ միայն Յունաց և Ասորւոց և Հռոմայեցւոց բարբառն վկայէ, այլ և ամենայն ազգաց քրիստոնէից, զիտակ են նորին քաջամարտիկ ճգնութեանն և օրինակ և պատճառ գոլոյն ամենայն ճգնաւորական գառուցն և անապատաբնակութեան և վանորէից, կարևոր համարեցայ և ես սակաւիկ ինչ և զերանելւոյն Պաւղոսի զսկիզբն և զկատարած վարուցն ընդ գրով արկանել. քանզի թէ որպիսի ժամանակի միջահասակին եկաց և կամ թէ որպիսի ճգնութիւնս կրեաց և կամ թէ որպիսի և որչափ փորձութեանց սատանայի համբերեաց, 'ի բազմաց ծածկեալ էր. քանզի ոչ ոք ետես զնա 'ի մարդկանէ յանապատի անդ և խօսեցաւ, բայց միայն երանելի սուրբն Անտոն, որ և 'ի գերեզմանի եդեալ ամփոփեաց զսուրբ նշխարս նորա։ Արդ սկսայց օժանդակութեամբ աղօթից նորին սրբոյն։

ակի թագաւորին Դեկոսի և Վաղէսի ամբարշտաց և հալածչաց և սուրբն Կոռնելիոս 'ի Հռոմ քաղաքի և սուրբն 'ի Կարքեդոնի երանութեամբ վախճանեցին, յորոց և 'ի Թեբայիդ բազում չարչարանս և փորձութիւնս

տէր քրիստոնեայ փութայր վասն անուանն Յիսուսի Քրիստոսի մեռանել։ Այլ Թշնամին ճշմարտութեան սատանայ ոչ միայն զմարմինս, այլ և զհոգին սպանանել կամէր։ Որգ զմիոյ ուրումն 'ի սրբոց վկայիցն, որ 'ի բազում ճգունս էր նահատակեալ, և 'ի նմին իսկ 'ի խաչին և 'ի տանջանս յաղթեալ և յամօթ արարեալ զարքանեակն սատանայի, անօրէն դատաւորն հրամայէր մեղու զամենայն մարմինսն օծանել և 'ի մէջօրէի 'ի տապ արեգականն ընկենուլ ձեռս յետս կապելովք, զի 'ի ճանճոց և 'ի պիծակաց չիթեալ հարկաւ առ աղէտից ցաւոցն հաւանեսցի անօրէն հրամանին՝ այն որ 'ի հրատից տապակացն ոչ հերքեցաւ։ Իսկ երանելին 'ի տօթոյն աղէխարշեալ և 'ի խայթոցացն խոցոտեալ, կայր և մնայր նոյնպէս անյաղթելի նահատակութեամբ։

Դարձեալ և զմիւս ևս պատանի ոմն աստեօք մանկութեան ծաղկեալ, 'ի բուրաստան ուրեմն ծաղկաւէտ հրամայէր տանել, և անդ 'ի մէջ պայծառ շուշանաց և անուշահոտ վարդից 'ի խաղաղական գնացս վտակաց, առ ծառովք որոց տերևք յօդոցն հեզիկ շարժէին ախորժալից ձայնիւ, անկողին կակուղ հրամայէր տարածանել, և կապել զսուրբն փափուկ կապանօք և 'ի վերայ անկողնոյն յորսայսել. և կին զոմն 'ի պոռնկաց ժանտաբարոյ և անօրէն գեղեցիկ դիմօք արձակել անդ 'ի

կրեաց կռաթաղիկէ եկեղեցի, և ամենայն առաքինի և աստուածասէր անձինք փութային վասն անուանն Յիսուսի Քրիստոսի մեռանել։ Այլ Թշնամին ճշմարտութեան սատանայ ոչ զմարմին միայն, այլ զհոգին վկայիցն սպանանել կամէր. ըստ օրինակի զմիոյ ուրեմն 'ի սրբոց վկայիցն յետ բազում ճգանց համբերելոյն և յետ խաչին տանջանացն՝ որ համբերութեամբն իւր յաղթեալ յամօթ արարեալ էր զարքանեական սատանայի, հրամայէր անօրէն դատաւորն օծանել զամենայն մարմին նորա մեղու և 'ի մէջօրէի 'ի տապ արեգականն ընկենուլ ձեռօք յետս կապելովք, զի 'ի ճանճոց և 'ի պիծակաց չիթեալ հարկաւ առ աղէտից ցաւոց հաւանեսցի հրամանացն։ Իսկ երանելին 'ի տօթոյն աղէխարշեալ և 'ի խայթոցացն խոցոտեալ կայր մնայր նոյնպէս 'ի նահատակութեանն։

Դարձեալ միւս ևս պատանի՝ տիօք մանկութեան ծաղկեալ նահատակ Քրիստոսի, զայնպիսի զարդարեալն մանկութեամբ՝ հրամայէր իշխանն անօրէն 'ի ծաղկաւէտ բուրաստան ուրեմն տանել, և անդ 'ի մէջ պայծառ շուշանաց և անուշահոտ վարդից և 'ի խաղաղական գնացս վտակաց, առ ծառովք որոց տերևք յօդոցն հեզիկ շարժէին ախորժական ձայնիւ, անդ կակուղ անկողինս հրամայէր արկանել, և զերանելի նահատակն կակուղ կապանօք հրամայէր կապել, և 'ի վերայ անկողնոյն տարածել. և զոմն կին 'ի պոռնկաց ժանտաբարոյ և անօրէն՝ այլ

դայթակղութիւն սրբոյն ։ Եւ ապաստաւորացն կատարեալ զհրամանն՝ գնացին 'ի վայրէն ։ Եւ կնոջն մատուցեալ այնուհետև լըբենի երեսօք լկտէր ընդդէմ սրբոյն, զոր ինձ ասել տգեղծ է ։ Եւ արդ զինչ արդեօք պարտ էր զինուորին Քրիստոսի գործել և կամ զինչ զմտաւ ածել. որ 'ի տանջանացն չհերքեցաւ՝ հանդերձեալ էր 'ի խտղտմանց ցանկութեանցն յաղթահարիլ. լուր և զարմացիր ։ Յերկնից ոյժ առեալ եռանդնոտ հոգւով սրբով՝ ատամամբ զլեզուն ինքեան կտրէր, և փոխանակ համբուրի՝ յերեսս պոռնկին թքանէր, և այնպէս զբոց ցանկութեան շիջուցանէր կարեօք մեծ ցաւոցն ։

Արդ յայնմ ժամանակի յորում այս գործք գործէին 'ի վերնումն Թեբայիդ, երանելին Պաւղոս քերբն իւրով հանդերձ ամուսնացելով առն և վախճանելով հօրն և մօրն 'ի մեծի ժառանգութեան մնացեալ լինէր իբրև վեցտասանամեայ գոլով, և Յունաց և եգիպտացւոց իմաստութեամբն յոյժ խրատեալ՝ զհոգւոյն խոնարհութիւն առաւել յարմարէր և զսէրն որ առ Ած, և յազ-

դիմօք և տեսլեամբ գեղեցիկ յոյժ, զայնպիսին հրամայեր արձակել անդր 'ի գայթակղութիւն սրբոյն . իսկ ապաստաւորքն կատարեցին զհրամանն և գնացին 'ի վայրէն ։ Եւ կնոջն մատուցեալ այնուհետև լըբենի երեսօք լկտէր ընդդէմ սրբոյն, զոր ինձ ասել զամենայն տգեղծ է ։ Եւ արդ զինչ պարտ իցէ արդեօք գործել զինուորին Քի և զինչ զմտաւ ածել. որ 'ի տանջանացն ոչ հերքեցաւ՝ հանդերձեալ էր 'ի խտղտանց ցանկութեանն յաղթահարիլ ։ Արդ լուր և զարմացիր որպէս և հրեշտակք և հրեշտակապետք ամ երկնային զօրօք կային զարմացեալք ընդ ամծ ասիրութեն վկային Քի . զոր և ինքն տէրն ամենեցուն քերկրեալցուցանէր իւրոց հրեշտակաց զսէր վկային իւրոյ որ յաւէտ քան զՅովբ սէփին էր աստ ։ Քանզի վկայն և նահատակն Քրիստոսի յերկնից ոյժ առեալ եռանդնոտ հոգւովն սրբով, և ատամամբքն զլեզուն ինքեան կտրէր, և փոխանակ համբուրի՝ յերեսս պոռնկին թքանէր ; և այնպէս զբոց ցանկութեանն շիջուցանէր կարեօք ցաւոցն ։ Զոր տեսեալ երկնային զօրացն՝ պարակցեալ փառս մատուցին ամենեցուն տեառն . իսկ ձախակողմեան գունդն բեւեռարդ կորագլուխ և ամօթալից եղեալ տանջեցան հալածանօք . քանզի այսպիսի առաքինի պատերազմիս յաղթութի մեծ է և առաւելեալ քան զտանջանաց և մահու . վս այսորիկ ասացի եթէ զհոգին սպանանել առաւել կամի Չարն քան զմարմինն ։

Արդ յայսպիսի դառնագոյն ժամանակին, որք հոգւոյն սպանութեան առաւել ջանային քան զմարմնոյն 'ի վերնումն Թեբայիդ, երանելին Պաւղոս քերբն իւրով ամուսնացելոյն կայր՝ յետ վախճանի ծնողացն հօրն և մօրն, և բազում մեծութեան ծնողացն ժառանգլեալ էր ինքն, քանզի մեծատունք էին . և էր ամաց ինքն յայնժամ վեցտասանից, և Յունաց և եգիպտացւոց իմաստութեամբն յոյժ խրատեալ էր, և զհոգւոյն խոնարհութիւնն առաւել յարմարէր և ըղ-

դոջ հալածանացն էր յագարակի ուրեմն ղօղեալ։ Այլ ագահութիւն որ հարկեցուցանէ զամենայն միտս մարդկան առ 'ի գործել զա̃մ ոճիրս, և յայնժամ զայնր մարդկան զմիտս գերէր, զոր և մեզ ուսանելի է 'ի միջէն։ Այր քեռ նորա փութայր մատնել զերանելին' շնորհուկս իմն կամեցեալ առնել անօրէն իշխանացն, զոր մանաւանդ պահելն պարտ էր։ Եւ յայնմ անօրէն խորհրդեանէն ոչ կնոջն արտասուք և ոչ ազգականութե̃ կապ և օրէն և ոչ ա̃ծն ամենագէտ և ոչ երկիւղ նորա ամենայաղթ զայրն զառածանէր, այլ կայր 'ի նմին անողորմ խստութե̃' զմատնութիւն ընդ ա̃ծպաշտութե̃ փութացեալ փոխանակել։ Իսկ երանելւոյն զգացեալ զդաւաճանութիւն խոյս տայր յանապատ տեղիս, և անդ յամուրս լերանցն ղօղեալ' յանկ ելանելոյ հալածանացն սպասէր, զհարկ վտանգին 'ի կամս յօժարութե̃ դարձուցեալ։ Եւ սակաւ սակաւ յառաջ մատուցեալ հասանէ 'ի լեառն մի ապառաժ և գտանէ անդ քարայր մի փակեալ փոքր քարիւ միով, և զայն 'ի բաց թաւալեցուցեալ 'ի ներքս մտանէր։ Եւ անդ ըստ բազմախոյզ սովորութե̃ մարդկան անյագութե̃ զներքին կողմն այրին խուզեալ գտանէ 'ի ներքս աղբիւր մի ն̃ք և յստակ ջրոյ. և այ-

տէրն որ առ Աստուած, և վասն հալածմանացն ղօղեալ էր յագարակի ուրեմն։ Իսկ ագահութիւն որ հարկեցուցանէ զամենայն միտս մարդկան զանհնարին ոճիրս գործել, ըմբռնեալ էր զմիտս առն քուերն նորա, վասն ժառանգութեան մնացեալ ընչից ծնողացն երանելւոյն. վասն այսորիկ փութայր մատնել զնա' շնորհուկս իմն կամեցեալ առնել անօրէն իշխանացն զոր մանաւանդ պահելն պարտ էր։ Եւ յայնմ անօրէն խորհրդոցն ոչ կնոջն արտասուք և ոչ ազգականութեան կապ և ոչ Աստուած ամենագէտ և ոչ երկիւղ նորա ամենայաղթ զայրն զառածանէր կամ թուլացուցանէր 'ի յանօրէն խորհրդոյն. այլ կայր 'ի նմին անողորմ խստութեան արտին, որ զաստուածպաշտութիւնն ընդ մատնութիւն փոխանակել փութայր։ Իսկ երանելւոյն ըղգացեալ և ծանուցեալ զդաւաճանութիւնն խոյս տայր յանապատ տեղիս և անդ յամուրս լերանց ղօղեալ լինէր, և հալածանացն անկանելոյ սպասէր։ Եւ 'ի միտս իւր խորհէր զի՞նչ կայ իմ բնաւ յաշխարհի, կամ 'ի նմանէ զի՞նչ շահ օգուտ լինիցի ինձ. և այլ սոյնպիսի բարի խորհրդով ուրանայր զաշխարհ ոչ դառնալով անդրէն, այլ ծառայել տեառն յանապատի անդ. և յայսմանէ սիրտ երանելւոյն քաջալենայր անձառ խնդութե̃։ Եւ սակաւ սակաւ յառաջ մատուցեալ հասանէր 'ի լեառն մի յապառաժ և գտանէր քարայր մի փակեալ փոքր քարիւք' զայն 'ի բաց թաւալեցուցեալ 'ի ներքս մտանէր։ Եւ անդ ըստ բազմախոյզ սովորութեան մարդկան անյագութեամբ զներքին կողմն այրին խուզեալ գտանէր 'ի ներքս աղբիւր մի սառն և յստակ ջրով. և

զայթակղութիւն սրբոյն։ Իսկ սպասաւորացն կատարեալ զհրամանն՝ գնացին 'ի վայրէն։ Իսկ կնոջն մատուցեալ այնուհետև լքենի երեսօք լինէր ընդդէմ սրբոյն, զոր ինձ ասել տգեղծ է։ Իսկ արդ զինչ արդեօք պարտ էր զինուորին Քրիստոսի գործել և կամ զինչ զմտաւ ածել. որ 'ի տանջանացն չհերքեցաւ՝ հանդերձեալ էր 'ի խողողմանց ցանկութեանցն յաղթահարիլ. լուր և զարմացիր։ Յերկնից ոյժ առեալ եռանդնոտ հոգւով սրբով՝ ատամամբ զլեզուն ինքեան կտրէր, և փոխանակ համբուրի՝ յերեսս պոռնկին թքանէր, և այնպէս զբոց ցանկութեն շիջուցանէր կարեօք մեծ ցաւոցն։

Արդ յայնմ ժամանակի յորում այս գործք գործէին 'ի վերնումն Թեբայիդ, երանելին Պաւղոս քերբն իւրով հանդերձ ամուսնացելով առն և վախճանելով հօրն և մօրն 'ի մեծի ժառանգութեան մնացեալ լինէր իբրև վեցտասանամեայ գոլով, և Յունաց և Եգիպտացւոց իմաստութեամբն յոյժ խրատեալ՝ զհոգւոյն խոնարհութիւն առաւել յարմարէր և զսէրն որ առ Ած, և յազ-

դիմօք և տեսլեամբ գեղեցիկ յոյժ, զայնոսիկն հրամայէր արձակել անդր 'ի գայթակղութեն սրբոյն. իսկ սպասաւորքն կատարեցին զհրամանն և գնացին 'ի վայրէն։ Եւ կնոջն մատուցեալ այնուհետև լքենի երեսօք լինէր ընդդէմ սրբոյն, զոր ինձ ասել զամենայն տգեղծ է։ Եւ արդ զինչ պարտ իցէ արդեօք գործել զինուորին Քի և զինչ զմտաւ ածել. որ 'ի տանջանացն ոչ հերքեցաւ՝ հանդերձեալ էր 'ի խողողմանց ցանկութեանն յաղթահարիլ։ Արդ լուր և զարմացիր որպէս և հրեշտակք և հրեշտակապետք ամ երկնային զօրօք կային զարմացեալք ընդ մեծ արիութեն վկային Քի. զոր և ինքն տէրն ամենեցուն բերկրեալ ցուցանէր իւրոց հրեշտակաց զսէր վկային իւրոյ որ յաւէտ քան զՅովսէփին էր աստ։ Քանզի վկայն և նահատակն Քրիստոսի յերկնից ոյժ առեալ եռանդնոտ հոգւովն սրբով, և ատամամբքն զլեզուն ինքեան կտրէր, և փոխանակ համբուրի՝ յերեսս պոռնկին թքանէր, և այնպէս զբոց ցանկութեանն շիջուցանէր կարեօք ցաւոցն։ Զոր տեսեալ երկնային զօրացն՝ պարականեցեալ փառս մատուցին ամենեցուն տեառն. իսկ ձախակողմեան գունդն բելիարայ կորագլուխ և ամօթալից եղեալ տանջեցան հալածանօք. քանզի այսպիսի սաստիկ պատերազմիս յաղթութն մեծ է և առաւելեալ քան զտանջանաց և մահու. վն այսորիկ ասացի եթէ զհոգին սպանանել առաւել կամի չարն՝ քան զմարմինն։

Արդ յայսպիսի դառնագոյն ժամանակին, որք հոգւոյն սպանութեան առաւել ջանային քան զմարմնոյն 'ի վերնումն Թեբայիդ, երանելին Պաւղոս քերբն իւրով ամուսնացելովն կայր՝ յետ վախճանի ծնողացն հօրն և մօրն, և բազում մեծութեան ծնողացն ժառանգեալ էր ինքն, քանզի մեծատունք էին. և էր ամաց ինքն յայնժամ վեցտասանից, և Յունաց և Եգիպտացւոց իմաստութեամբն յոյժ խրատեալ էր, և զհոգւոյն խոնարհութիւնն առաւել յարմարէր և ըզ-

դոյ հալածանացն էր յագարակի ուրեմն զօղեալ։ Այլ ագահութիւն որ հարկեցուցանէ զամենայն միտս մարդկան առ 'ի գործել զչմ՟ ոճիրս, և յայնժամ զայնր մարդկան զմիտս գերէր, զոր և մեզ ուսանելի է 'ի միաջէն։ Այլ քեռ նորա փութայր մատնել զերանելին՝ շնորհուկս իմն կամեցեալ առնել անօրէն 'իշխանացն, զոր մանաւանդ պահելն պարտ էր։ Եւ յայնմ անօրէն խորհրդենէն ոչ կնոջն արտասուք և ոչ ազգականութե կապ և օրէն և ոչ ա՟ծն ամենագէտ և ոչ երկիւղ նորա ամենայաղթ զայրն զաւածանէր, այլ կայր 'ի նմին անազորմ խստութե՝ զմատնութն ընդ ա՟ծպաշտութե փութացեալ փոխանակել։ Իսկ երանելւոյն զգացեալ զդաւաճանութիւն խոյս տայր յանապատ տեղիս, և անդ յամուրս լերանցն զօղեալ՝ յանկ ելանելոյ հալածանացն սպասէր, զհարկ վտանգին 'ի կամս յօժարութե դարձուցեալ։ Եւ սակաւ սակաւ յառաջ մատուցեալ հասանէ 'ի լեառն մի ապառաժ և գտանէ անդ քարայր մի փակեալ փոքր քարիւ միով, և զայն 'ի բաց թաւալեցուցեալ 'ի ներքս մտանէր։ Եւ անդ ըստ բազմախոյզ սովորութե մարդկան անյագութե զներքին կողմն այրին խուզեալ գտանէ 'ի ներքս աղբիւր մի ո՟ք և յստակ ջրոյ. և այ-

ռէրն որ առ Աստուած, և վասն հալածանացն զօղեալ էր յագարակի ուրեմն։ Իսկ ագահութիւն որ հարկեցուցանէ զամենայն միտս մարդկան զանհնարին ոճիրս գործել, ըմբռնեալ էր զմիտս ասն քուերն նորա, վասն ժառանգութեան մնացեալ ընչից ծնողացն երանելւոյն. վասն այսորիկ փութայր մատնել զնա՝ շնորհուկս իմն կամեցեալ առնել անօրէն իշխանացն զոր մանաւանդ պահելն պարտ էր։ Եւ յայնմ անօրէն խորհրդոյն ոչ կնոջն արտասուք և ոչ ազգականութեան կապ և ոչ Աստուած ամենագէտ և ոչ երկիւղ նորա ամենայաղթ զայրն զաւածանէր կամ թուլացուցանէր 'ի յանօրէն խորհրդոյն. այլ կայր 'ի նմին անողորմ խստութեան արտին, որ զաստուածպաշտութիւնն ընդ մատնութն փոխանակել փութայր։ Իսկ երանելւոյն ըղգացեալ և ծանուցեալ զդաւաճանութիւնն խոյս տայր յանապատ տեղիս և անդ յամուրս լերանց զօղեալ լինէր, և հալածանացն անկանելոյ սպասէր։ Եւ 'ի միտս իւր խորհէր զի՞նչ կայ իմ բնաւ յաշխարհի, կամ 'ի նմանէ զի՞նչ շահ օգուտ լինիցի ինձ. և այլ սոյնպիսի բարի խորհրդով սուրանայր զաշխարհ ոչ գտանելով անդրէն, այլ ծառայել տեառն յանապատի անդ. և յայսմանէ սիրա երանելւոյն քաղցրանայր անձառ խնդութբ։ Եւ սակաւ սակաւ յառաջ մատուցեալ հասանէր 'ի լեառն մի յապառաժ և գտանէր քարայր մի փակեալ փոքր քարիւք՝ զայն 'ի բաց թաւալեցուցեալ 'ի ներքս մտանէր։ Եւ անդ ըստ բազմախոյզ սովորութեան մարդկան անյագութեամբ զներքին կողմն այրին խուզեալ գտանէր 'ի ներքս աղբիւր մի սաւրբ և յստակ ջրով. և

նուհետև ցանկացաւ տեղւոյն իբր թէ յայս իցէ նմա շնորհեալ, զնոյն ժամանակս կենաց իւրոց 'ի նմին դաղարէր՝ զզգեստ և կերակուր ունելով յարմաւենեաց 'ի տեղւոջն բուսելոց: Վասն որոյ մի անկար ունեմք թուեսցի իրն այն. առաջի Այ վկայեմ և սրց հրեշտակաց զի 'ի նմին տեղւոջ յանապատին որ է մերձ 'ի կողմանս տաճկաց, տեսի միայնակեացս յորս էր 'մի ումն արգելական և զերեսուն ամ ողջոյն գարեհացիւ և պղտոր ջրով դարմանեալ: Եւ այլ ումն դարձեալ 'ի գբի միում հնում հնգետասան թզով յաւուրն շատացեալ և սակաւ մի ջրով: Եւ այս եթէ անհաւատ ումեք 'ի լսողացն երևեսցի, նոքա գիտասցեն. այլ մեք անդրէն յառաջիկայն եկեսցուք յոր և սկսաքն:

Յայնուհետև իբրև հարիւրորդի և երեքտասաներորդի ամի էր երանելին Պաւղոս երկնաւոր վարուք յերկրի կացեալ, և Անտոն իննսուն ամ ունելով յայլում կողման անապատին բնակեալ, որպէս և նա իսկ սովոր էր պատմել: Խորհուրդ 'ի միտ անկանէր Անտոնի և ձնչէր զցայգ և զցերեկ եթէ իցէ՞ ոք արդեօք միայնակեաց յանապատի անդ 'ի ներքսագոյն քան զնա բնակեալ: Որում 'ի գիշերի յայտնեցաւ թէ է ումն 'ի ներքսագոյն յոյժ լաւագոյն քան զքեզ, և քեզ արժան է փութով երթալ առ նա և տեսանել: Եւ ընդ այգ ընդ

այնուհետև ցանկացեալ տեղւոյն իբրև թէ յայս իցէ նմա շնորհեալ. և զնոյն ժամանակս իւրոց կենաց 'ի նմին գաղարէր. իսկ զգեստ և կերակուր յարմաւենեաց անտի ունէր, որք 'ի տեղւոջն յայն բուսեալ էին: Եւ այսպիսի խստակրօն վարուց վկայ՝ ես տեսի 'ի նմին յանապատին յայն որ մերձ է 'ի կողմանս տաճկաց. և վկայեմ առաջի Այ և հրեշտակաց սրբոց զի միայնակեաց մի արգելական, որ զերեսուն ամ ողջոյն գարեհացիւ և պղտոր ջրով դարմանեալ լինէր: Եւ դարձեալ այլ ումն 'ի գբի միում հնգետասան թզով շատացեալ և սակաւ ջրով: Արդ վասն այն ասացի վկայելով զտեսեալն իմով ականբ, զի են ոմանք որք ոչ հաւատան յորժամ լսեն վարս խստակրօնս, քանզի հեռացեալք են նոքա յըղձմանէ փափագելի վարուց ամայոց: Իսկ մեք յառաջիկայսդ եկեսցուք պատմութեանս:

Այնուհետև իբրև հարիւր և երեքտասանամեայ էր երանելին Պաւղոս երկնաւոր վարուքն կացեալ 'ի յերկրի, և հայրն Անտոն իննսնամեայ էր և յայլում կողման անապատի բնակէր, որպէս և սովորէր և նա յանապատի: Արդ խորհուրդ մի անկանէր 'ի միտս հօրն Անտոնի և ձնշէր զցայգ և զցերեկ, եթէ իցէ՞ ոք արդեօք միայնակեացս յանապատի անդ 'ի ներքսագոյն քան զնա բնակեալ: Որում 'ի գիշերի յայտնեցաւ եթէ ումն է 'ի ներքսագոյն՝ յոյժ լաւագոյն քան զնա, և նմա արժան է փութով երթալ և տեսանել զնա: Եւ ընդ այգն ընդ առա-

Ճակատն եղջիւրս, և յետոյկողմն մարմնոյն այծի ոտս կատարէր: Իսկ հայեցեալ ընդ տեսիլն ընդ այն՝ զխահանմն հաւատոց և զզրահն յուսոյ առաքինւոյ նահատակին 'ի ձեռն առեալ հարցանէր թէ ո՞ ոք իցէ որ երևեցաւն: Իսկ նորա պատասխանեալ՝ մահկանացու եմ ես և մի ոք 'ի բնակելոցն յանապատի աստ զոր բազմապատիկ մոլորութիւն հեթանոսաց 'ի պաշտօն առնուլ հրապուրեաց, և այժմ հրեշտակ եկեալ յերամէն իմմէ աղաչեմք զքեզ վասն մեր հասարակաց առ տէր աղօթս առնել. քանզի և մեք 'ի վաղուց հետէ գիտացաք զեկեալ փրկութիւն աշխարհի, վասն զի ընդ ամ երկիր ել բարբառ նորա: Զայս նորա ասացեալ, ալևորն զառաջի եղեալ զճանապարհն վճարէր, և զերեսն լի առատ արտասուօք: Ուրախ էր 'ի վերայ փառացն Քի և սիրոյն և 'ի վերայ կորստեանն սատանայի. միանգամայն և զարմանայր ես եթէ զիարդ կարէր զբանս նորա իմանալ: Զցուպն 'ի գետնի կռձեալ՝ ասէր. վայ քեզ քաղաք Աղեքսանդրեայ, որ փոխանակ այ՝ հրաշից երկիր պագանես. վայ քեզ քաղաք պոռնիկ, յոր դևք ամ աշխարհաց ժողովեցան. զի՞նչ պատասխանի ունիցիս տալ չխոստովանելով զՅս Քս զոր և գազանք անգամ վայրենի խոստովանին: Չև ևս էին բանք նորա կատարեալ, իբրև զթևաւոր անասուն եղեալ գազանն փախ-

եղջիւր. և յետոյկողմ մարմնոյն այծի ոտս էր: Եւ հայեցեալ ընդ տեսիլն ընդ այն՝ զխահանմն հաւատոյ և զզրահն յուսոյ առաքինի նահատակին 'ի ձեռն առեալ հարցանէր թէ ո՞ ոք իցէ որ երևեցաւն: Եւ նա ասէ. մահկանացու եմ ես, և մի եմ 'ի բնակողացն յանապատի աստ զորս բազմապատիկ մոլորութիւն հեթանոսաց 'ի պաշտօն առնուլ հրապուրեաց, և այժմ հրեշտակ եկեալ եմ ես յերամէն իմմէ՝ լուեալ զգալուստն սրբութեան քո յանապատի աստ՝ աղաչել զքեզ, վասն մեր աղօթս առնել առ հասարակաց տէրն, և մի մոռասցիս զխնդրուածս մեր. քանզի և մեք 'ի վաղուց հետէ գիտացաք զեկեալ փրկութիւնն աշխարհի, վասն զի ընդ ամ երկիր ել բարբառ նորա: Զայս նորա ասացեալ, սուրբ ալևորն զառաջի եղեալ ճանապարհն վճարէր առելով ըստ հաւատոց ձերոց եկեալ ձեզ. և զերեսն լի առատ արտասուօք: Եւ ուրախ էր 'ի վերայ փառացն Քրի և սիրոյն և 'ի վերայ կորստեանն սատանայի. միանգամայն և զարմանայր ես թէ զիարդ կարէր զբանս նորա իմանալ: Եւ սկսաւ ասել. վայ քեզ Աղեքսանդրիա, որ փոխանակ այ՝ հրաշից երկիր պագանես. վայ քեզ քաղաք պոռնիկ, ուր դևք ամ աշխարհի ժողովեցան. զի՞նչ պատասխանի ունիս տալ ոչ խոստովանելով զՔս զոր և գազանք վայրենիք խոստովանին: Եւ չև ևս էին բանքն կատարեալ, գազանն այն իբրև թևաւոր անասուն եղեալ փախ-

ըռյն Պաւղոսի զձայնն լուեալ՝ յարուցեալ զմուտն փակէր, քանզի բաց կայր։ Յայնժամ Անտոն առաջի դըրացն անկեալ մինչև 'ի վեցերորդ ժամու աւուրն, և նա առաւել աղաչէր բանալ նմա զմուտն՝ ասելով զինքենէ ով որ իցէ և ուստի եկեալ և վասն էր իրիք։ Գիտեմ, ասէր, զի անարժան եմ քում տեսլեանդ. այլ սակայն թէ ոչ տեսանեմ, ոչ թողում. որ զգազանս ընդունիս, զմարդիկ ընդէ՞ր մերժես. զքեզ խնդրեցի և գտի, և բախեմ զի բացցես ինձ. ապա թէ ոչ դիպեցայց՝ աստ մեռանիմ առաջի դրացս քոց, զի գոնեայ զմարմինս իմ տեսեալ թաղեսցես։ Այսչափ և առաւել քան զայս ժտեալ նորա, հազիւ ուրեմն պատասխանի տուեալ երանելին Պաւղոս ասէր. ոչ այդպէս ապառնալեօք խնդրէ ոք և ոչ համդերձ արտասուօք դատախազէ։ Եւ այսպիսի շնորհալից բանս բարբառեալ եբաց նմա զմուտն. և այնուհետև զմիմեամբք փարեալ իւրաքանչիւր ոք զմիմեանս յանուանէ կոչեալ ողջագուրէին։

Եւ յետ սրբոյ ողջունին նստեալ Պաւղոս համդերձ Անտոնիւ՝ ասէ այսպէս. զո՞ ոք այդչափ աշխատութե խնդրեցեր տեսանել. ահաւասիկ տեսանես հնացեալ և մաշեալ մարդ՝ որ յետ սակաւ ինչ ժամանակի հող լինելոց է։ Այլ վասն զի սէր ա՛մ իմիք համբերէ՝ ասա ինձ աղաչեմ զքեզ զիա՞րդ կայ ազգ մարդկան, և եթէ յառաջին քաղաքսն նոր ինչ շինուածք շինին, և կամ

զի 'ի բաց կայր յայնժամ։ Եւ սուրբն առաջի դրանն անկեալ մինչև զվեց ժամ աւուրն, աղաչէր բանալ նմա զմուտն՝ ասելով զինքենէ թէ ով իցէ և ուստի եկեալ և վասն էր իրիք։ Գիտեմ, ասէ, զի անարժան եմ քում տեսութեանդ. այլ սակայն եթէ ոչ տեսից, ոչ թողում. որ զգազանսդ ընդունիս, զմարդիկ ընդէ՞ր հալածես. զքեզ խնդրեցի և գտի, և բախեմ զի բացցես ինձ. ապա թէ ոչ դիպեցայց, աստ մեռանիմ առաջի դրանդ քո, զի գոնեայ զմարմինս իմ թաղեսցես։ Այսչափ նորա և առաւել քան զայս ժտեալ՝ հազիւ ուրեմն պատասխանի տուեալ երանելին Պաւղոս ասէ. ոչ այդպէս սպառնալով խնդրէ ոք և ոչ համդերձ արտասուօք դատախազէ ոք։ Եւ այսպիսի շնորհալից բանս բարբառեալ եբաց նմա զմուտն. և այնուհետև զմիմեանս փարեալ իւրաքանչիւր զմիմեանս յանուանէ կոչելով ողջագուրէին։

Եւ յետ սուրբ ողջունին նստաւ սուրբն Պաւղոս համդերձ սրբով Անտոնիւ և ասէ. զո՞ ոք այդչափ աշխատութե խնդրեցեր տեսանել. ահա տեսանես հնացեալ ալեոր մարդ՝ որ յետ սակաւ ինչ ժամանակաց հող լինելոց է։ Այլ զի սէր ա՛մ համբերէ, արդ ով եղբայր սիրեցեալ Անտոնէ, զարդ անապատի և միանձանց կրօնաւորաց, բարեաց

թէ զխմորդ աշխարհ 'ի հնազանդութ՟ի կայ թագաւո-րաց, և իշխանք տակաւին և այժմ գերի՟ն 'ի պատրա-նաց մոլորութ՟ե դիւաց: Այլ մինչդեռ նոքա զայս խօ-սէին, ահա ագռաւ մի անդուստ 'ի ներքուստ անապա-տէն հեղիկ թռուցեալ եկն նստաւ յատս ծնկոյ միոյ ընդդէմ նոցա, որ ունէր 'ի բերան հաց մի ողջ. և զայն առաջի նոցա եդեալ, մինչդեռ նոքա զարմանային՝ դար-ձեալ թռանէր: Այլ յետ գնալոյ թռչնոյն, ասէ Պաւ-ղոս. տէր առաքեաց մեզ զճաշս. արդարեւ ողորմած և մարդասէր է: Վաթսուն ամ է այսուհետև յոր կէս կէս հացի ընդունէի աւուր աւուր, այլ 'ի գալստեան քում իւրոց զինուորաց Ք՟ս կրկին առաքեաց զամձիկս: Այլ այնպէս զտեառնէ գոհացեալ մերձ յաղբիւրն նըս-տան երկոքեան. և անդ եթէ ո՛ յառաջ զհացն բեկա-նիցէ հակառակէին մինչև 'ի մերձիլ գիշերոյն: Այլ ուր ուրեմն ապա բարի զմտաւ ածեալ երկոքեան բուռն հա-րին զհացէն և բեկին յանուն տեառն, և այնպէս գո-հացեալ զա՟յ ճաշակեցին և զգիշերն ա՟մ հսկեցին:

Այլ իբրև առաւօտ եղև, Պաւղոս այսպէս ասաց ցԱն-տոն. 'ի վաղուց հետէ խնդրեցայ զքեզ, եղբայր իմ և ծա-ռայակից, եթէ 'ի տեղիս յայսոսիկ բնակեալ ես, զոր և խոստացաւ ինձ Ք՟ս ածել 'ի ծանօթութիւն: Արդ

արարեր զի եկիր. արդ ասա ինձ աղաչեմ զքեզ, զխմորդ կամ ազգ-մարդկան, և կամ զի յառաջին 'ի քաղաքս նոր ինչ շինութ՟ե լինէին, լինին և այժմ, և կամ զխմորդ կայ աշխարհ 'ի հնազանդութ՟ե թագա-ւորաց, և կամ իշխանք տակաւին և այժմ գերի՟ն 'ի պատրանաց մո-լորութ՟ե դիւաց: Եւ մինչդեռ նոքա զայն խօսէին, ահա ագռաւ մի անդուստ 'ի ներքին անապատէն հեղիկ թռուցեալ նստաւ յատս ծըն-կոյ միոյ ընդդէմ նոցա և ունէր 'ի բերան հաց մի ողջ. և զայն առաջի երկուց նոցա եդեալ, մինչդեռ նոքա զարմանային՝ թռանէր: Եւ յետ գնալոյ թռչնոյն, ասէ հայրն Պաւղոս. տէր առաքեաց մեզ ճաշս, ար-դարեւ ողորմած և մարդասէր է. քանզի վաթսուն ամ է իմ որ աստ կամ, կէս կէս հացի ընդունէի աւուր աւուր. այլ 'ի գալստեանդ քում՝ իւրոց զինուորաց Ք՟ս կրկին առաքեաց զամձիկս: Եւ այնպէս զտեառնէ գոհացեալք 'ի վերայ աղբերն նստան երկոքեան. և եթէ ո՛ յառաջ բեկանիցէ զհացն հակառակէին մինչև մերձենալ գիշերոյն: Եւ ուր ուրեմն ապա զմտաւ ածեալ երկոքեան բուռն հարեալ զհա-ցէն բեկանէին յանուն տեառն, և այնպէս գոհացեալք զա՟յ ճաշա-կէին. և զգիշերն ամենայն հսկեցին:

Եւ իբրև առաւօտ եղև, Պաւղոս ասաց ցհայրն Անտոնի. եղբայր իմ և ծառայակից, 'ի վաղուց հետէ խոստացաւ ինձ տէր 'ի ծանօթութի՟ւ ածել զքեզ ինձ, և ծանեայ եթէ 'ի տեղիս յայսոսիկ բնակեալ ես, զոր կարօտեալ մեռայ գալստեան քո աւուրս. քանզի քնոյ իմոյ ժամա-

վասն զի քնոյ իմոյ ժամանակ մերձեալ է, և որում յամ ժամանակի ցանկայի զլուծանիլն և ընդ Ք՛ի լինել, կատարեալ է ժամանակն և մնայ ինձ արդարութեան պսակն. դու աշակերտեցար ’ի տեառնէ զի զմարմինս իմ ծածկեսցես, մանաւանդ թէ երկրի զերկիրս տացես: Եւ զայս նորա ասացեալ, Անտոն այնուհետև արտասուօք մեծաւ համբուրանօք աղաչէր զնա զի մի մնասցէ ’ի նմանէ, այլ ճանապարհակից լիցի ուղւոյ նորա: Եւ նա ասէ. չպարտիս խնդրել, եղբայր, զքոյն ևեթ, այլ և զընկերին. զի թէ և քեզ օգուտ է զբեռն մարմնոյդ ’ի բաց դնել, այլ բազում եղբարց չէ օգուտ, որոց կէտ առաջի եդեալ է զի քեզ նմանողք լիցին: Բայց ես աղաչեմ զքեզ, եթէ չիցէ ծանր զոր ասեմս, զի փութով երթայցես և զհանդերձն զոր քեզ Աթանաս եպիսկոպոս շնորհեաց, բերցես ’ի պատանս մարմնոյ իմոյ: Այլ զայն զի խնդրէր երանելին Պաւղոս, ոչ եթէ հանդերձին ինչ ցանկացեալ էր, զոր գիտէր եթէ յերկրի ապականելոց էր, այլ զի հեշտեաւ և խաղաղութեամբ առանց մտակաց ուրուք լինելոյ հրաժարեսցէ ’ի կենացս: Իսկ Անտոնի զարմացեալ ’ի լսելն զԱթանասէ և զհանդերձէն նորա, այնուհետև իբրև զՔ՛ս ’ի նմա տեսանելով և ’ի զարշապարս նորա տեսանել երկիր պագանելով, և մինչև զբազում ժամս պատասխանի ոչ իշխէր

նակ մերձեալ է, որում յամ ժամ ցանկայի զլուծանելն և ընդ Ք՛ի լինելն: Արդ ով եղբայր իմ ’ի տէր, ահա կատարեալ է ժամանակն և մնայ ինձ արդարութեան պսակն. վասն որոյ դու աշակերտեցար ’ի տ՛նէ, զի յերկրի զմարմինս իմ թաղեսցես, մանաւանդ երկրի զերկիրս տացես: Իբրև լուաւ զայսոսիկ հայրն Անտոն, այնուհետև արտասուօք և բազում համբուրանօք աղաչէր զնա զի մի մնասցէ ’ի նմանէ, այլ ճանապարհակից լիցի ուղւոյ նորա: Իսկ հայրն Պաւղոս պատասխանի ետ և ասէ. չպարտիս խնդրել զքոյն ևեթ, այլ և զընկերին. զի թէ և քեզ օգուտ է զբեռն մարմնոյդ ’ի բաց դնել, այլ բազում եղբարց չէ օգուտ, որոց կէտ առաջի եդեալ է զի քեզ նմանողք լիցին: Բայց աղաչեմ զքեզ. թէ չիցէ ծանր զոր ասեմս, զի փութով երթիցես և զհանդերձն զոր Աթանաս եպիսկոպոսն քեզ շնորհեաց՝ բերցես ’ի պատանս մարմնոյ իմոյ: Այլ զայն զի խնդրէր երանելին Պաւղոս, իբրև ոչ եթէ հանդերձի ինչ ցանկացեալ էր՝ զոր գիտէր եթէ յերկիր դառնալոց էր, այլ զի հեշտեաւ և խաղաղութեամբ հրաժարեսցի ’ի կենացս առանց մտակաց ուրուք լինելոյ: Իսկ հայրն Անտոն զարմացեալ եղև ’ի լսելն զԱթանասէ և զհանդերձէ նորա. այնուհետև իբրև զՔ՛ս տեսողի ’ի նա տեսանելով զՔ՛ս ’ի զարշապարս նորա անկեալ երկիր պագանէր, և մինչև ցբազում ժամս պատասխանի ոչ իշխէր տալ. այլ

տաղ. այլ բազում արտասուօք համբուրեալ զսա նորա և զձեռս՝ ՚ի վանս իւր փութայր, որ յետ այնորիկ ՚ի տաճկաց աւերեցաւ։

Եւ իբրև եկն ՚ի վանս իւր, երկու աշակերտք նորա որք ՚ի բազում ժամանակաց հետէ պաշտէին զնա, ընդ առաջ եղեալ նմա ասէին. ուր էիր այսքան ժամանակս, հայր։ Եւ նորա պատասխանի տուեալ ասէ. վայ ինձ մեղաւորիս, որ կերպարանօք ունիմ զանուն միայնակեցի. քանզի տեսի զԵղիա, տեսի և զՅովհաննէս յանապատին, արդարև ՚ի դրախտին տեսի զՊաւղոս։ Եւ այնպէս մեծաւ գոչմամբ լալով և ձեռօքն զկուրծսն ծեծէր, և ելեալ ՚ի վանացն հանդերձ պատանօքն յուղի անկանէր։ Իսկ եղբարցն աղաչեցեալ զնա, ճշմարտութե ուսանել վասն իրին թէ զինչ իցէ։ Եւ նա ասէ ցնոսա. ժամանակ է ասելոյ և ժամանակ լռելոյ։ Եւ հրաժարեալ ՚ի նոցանէ անսուաղ ՚ի Ճանապարհն ուստի եկն՝ ՚ի նոյն փութայր, քանզի ծարաւի էր տեսլեան սրբոյն, և տենչայր միւսանգամ տեսանել զնա՝ յամ ժամ աչօք և խորհրդով առաջի իւր նկատելով, և կասկածէր թէ գուցէ յառաջ քան զերթալն իւր՝ նա զպարտս հոգւոյն հատուցանիցէ տեառն։ Եւ միւսոյն ևս աւուրն եղեալ երրորդ ժամ՝ ետես ՚ի Ճանապարհին գունդս հրեշտակաց և դասս մարգարէից և առաքելոց, և ՚ի մէջ նոցա

բազում արտասուօք համբուրեաց զձեռս և զսա նորա, և փութացաւ անդրէն դարձեալ ՚ի վանսն իւր, ասելով աղօթս արա վասն իմ, ով հայր պատուական. և իբրև ընկալաւ ՚ի նմանէ զօր հայրենացն, խնդալից եղեալ յուղի անկեալ զՃանապարհն վճարէր հանդերձ արտասուօք։
Եւ իբրև եկն եհաս ՚ի վանսն իւր, երկու աշակերտքն նորա որք ՚ի բազում ժամանակաց հետէ պաշտէին զնա, ընդ առաջ եղեալ նմա ասեն. ուր էիր այսքան ժամանակս, հայր։ Եւ նորա պատասխանի տուեալ ասէ. վայ ինձ մեղաւորիս՝ որ կերպարանօք միայն ունիմ զանուն միայնակեցի. քանզի տեսի զԵղիա, տեսի և զՅովհաննէս յանապատին, և արդարև ՚ի դրախտին տեսի զՊաւղոս։ Եւ այնպէս մեծաւ գոչմամբ և լալով ձեռօք զկուրծսն ծեծէր, և ելեալ ՚ի վանացն հանդերձ պատանօքն որ խնդրեցաւ ՚ի նմանէ բերել՝ յուղի անկեալ գնայր։ Իսկ եղբարցն աղաչեալ զնա ճշգրտութեամբ ուսանել վասն իրին թէ զինչ իցէ, նա ասէ ցնոսա. ժամանակ է ասելոյ և ժամանակ է լռելոյ։ Եւ հրաժարեալ ՚ի նոցանէ անսուաղ ՚ի Ճանապարհն փութայր ուստի եկն, քանզի ծարաւի էր տեսլեան սրբոյն, և տենչայր միւսանգամ տեսանել զնա, և յամ ժամ խորհրդոյ աչօք առաջի իւր նկարէր, և կասկածէր թէ գուցէ յառաջ քան զերթալն իւր՝ նա զպէտս հոգւոյն հատուցանիցէ տեառն։ Իսկ ՚ի միւսում աւուր եղեալ յերրորդ ժամ ետես ՚ի Ճանապարհին գունդս հրեշտակաց և դասս մարգա-

'ի ձեռն սպիտակութեան պայծառացեալ զերանելւոյն Պաւղոս զի ելանէր յերկինս։ Այլ նոյնժամայն յերկիր յերեսս անկեալ և զաւազն 'ի վերայ գլխոյն ցանեալ՝ լալով և հառաչանօք ասէր․ ընդէ՞ր թողեր զիս, տէր Պաւղէ․ ընդէ՞ր գնացեր զվերջին ողջոյնն չընկալեալ։ Այլ յարուցեալ այնուհետև յերկրէն՝ այնպէս ձեպէր փութով հասանել առ երանելւոյն Պաւղոս, մինչև համեմատել թռչնոց երկնից ընթացիցն Անտոնի, որպէս և ինքն իսկ յետ այնորիկ պատմէր։

Հատեալ այնուհետև 'ի միում վայրկենի զմեծ ուղին, հասանէր 'ի ցանկալին․ և մտեալ 'ի ներքս 'ի յայրն տեսանէ զերանելւոյն Պաւղոս 'ի գուձս հարեալ՝ կանգուն ունելով զպարանոցն և զձեռսն տարածեալս․ և զառաջինն կարծեալ թէ կենդանի ևս իցէ, ծունր եդեալ ընդ նմա յաղօթս կայր։ Այլ յորժամ ոչ լուաւ ձայնի հառաչանացն զոր յաղօթս կալն սովոր էր հեծել երանելւոյն, իմացաւ այնուհետև եթէ մարմինն զերկրպագութեան մատուցանէր այ, որում ամ ինչ կենդանի է։ Այլ այնպէս պատեալ զմարմինն և յառաջ բերեալ սաղմոսիւք և օրհնութեամբ ըստ աւանդութեան քրիստոնէից պաշտամանն՝ յոյժ տրտմէր մեծն Անտոն վասն չբերելոյ ընդ իւր փայտատ որով զերկիրն բրեալ թաղեսցէ զերանելւոյ մարմինն։ Այլ տարակուսեալ այնու-

րեկից և առաքելոց և 'ի միջի նոցա 'ի ձեռն սպիտակութեան պայծառացեալ զերանելւոյն Պաւղոս զի ելանէր յերկինս։ Իսկ նոյնժամայն երանելւոյն Անտոն յերեսս անկեալ և զաւազն 'ի վերայ գլխոյն ցանեալ՝ ասէր կական բարձեալ ողբալով և հառաչելով․ ընդէ՞ր թողեր զիս, տէր Պաւղոս, ընդէ՞ր գնացեր՝ զվերջին ողջոյն ոչ ընկալեալ։ Իսկ յարուցեալ այնուհետև յերկրէն՝ այնպէս փութով ձեպէր հասանել առ երանելւոյն Պաւղոս, մինչև համեմատէր երագութեն թռչնոց ընթացք Անտոնի երանելւոյ ծերոյն, որպ ինքն յետ այնորիկ իսկ պատմէր։

Արդ այնուհետև հատեալ 'ի միում վայրկենի զմեծ ուղին հասանէր 'ի ցանկալին իւր․ և մտեալ 'ի ներքն 'ի յայրն տեսանէր զերանելւոյն Պաւղոս 'ի գուձս հարեալ՝ կանգուն ունելով զպարանոցն, և զձեռսն տարածեալս․ զառաջինն կարծեաց թէ կենդանի ևս իցէ, և ծունր եդեալ հայրն Անտոն ևս յաղօթս կայր ընդ նմա։ Իսկ յորժամ ոչ լուաւ զձայն հառաչանաց նորա, զոր սովոր էր երանելւոյն Պաւղոս հեծեծել յաղօթս կալն իւր, իմացաւ այնուհետև թէ սուրբ մարմինն երկրպագութիւն մատուցանէր այ, որում կենդանի են ամ ինչ սրբոց։ Իսկ քաղցր արտասուօք և սաղմոսիւք և օրհնութեամբ ըստ աւանդութեան քրիստոնէից պաշտաման յառաջ բերեալ զսուրբ մարմին նորա պատեաց․ և 'ի խոր տրտմութեն մտեալ տարակուսեալ եղև մեծն Անտոնիոս վասն

հետև խորհուրդ 'ի մէջ առեալ կամէր անդրէն 'ի վանս փութով երթալ, և դարձեալ երկնչէր՝ զերկայնութիւն ճանապարհին զմտաւ ածելով, եթէ 'ի չորս աւուրս չկարէ վճարել: Այլ այնպէս անկեալ յերկիր ասէր. Մեռայց և ես, որպէս և պարտ իսկ է, մօտ առ ծառայիս քում, տէր: Այլ մինչդեռ նա զայն զմտաւ ածէր, առիւծք երկու 'ի ներքին անապատէն 'ի միասին եկին հասին յընթացս 'ի վայրն: Զորս տեսեալ Անտոնի, զառաջինն զարհուրեցաւ, և յետ այնորիկ զմիտս իւր առ ած ամբարձեալ զերկիւղն 'ի բաց մերժէր յինքենէ, և իբրև զոչխարս վարկանէր զնոսա: Իսկ առիւծուցն ընդ ուղիղ ճանապարհն դիմեալ եկին կացին առ մարմնով սրբոյ ալևորին և անկեալ առ ոտսն քծնէին և մեծաւ գոչմամբ ոռնային՝ մինչև իմանալ երանելւոյն Անտոնի եթէ լան և ողբան զլուծանիլն երանելւոյն Պաւղոսի 'ի մարմնոյն: Այ՛ յետ այնորիկ սկսան զերկիրն ոտիւքն փորել և զաւազն 'ի բաց մղել: Այլ իբրև բրեցին զտեղին իբրև առն չափ յերկայնութիւն, նոյնժամայն վարձս ընդ վաստակոցն առնուլ հայցէին: Այլ եկեալք առ երանելին Անտոն զգլուխսն խոնարհեցուցեալ սկսանէին լեզուլ զձեռս և զոտս նորա: Այլ նորա իմացեալ եթէ օրհնութիւն խնդրեն 'ի նմանէ գազանքն ընդ վաստակոցն, առանց յերկուանալոյ ընդ փառսն այ զարմացեալ, զի անխօս բնութիւն

չքերելոյ ընդ իւր փայտատ որով զերկիրն բրեալ թաղեսցէ զերանելի մարմինն: Այնուհետև խորհուրդ 'ի մէջ առեալ կամէր անդէն 'ի վանս փութով երթալ, և դարձեալ երկնչէր զերկայնութէն ճանապարհին զմտաւ ածելով, քանզի 'ի չորս աւուր ոչ կարէր վճարել զճանապարհն: Եւ ասէր. ո տէր, մեռայց և ես ընդ ծառային քում որպէս պարտ իսկ է, և տարեալ մխիթարեա և զիս որպէս և կամիս յայս ախտալից կենցաղոյս: Եւ մինչդեռ նա զայս զմտաւ ածէր, առիւծք երկու 'ի ներքին անապատէն 'ի միասին եկին հասին յընթացս 'ի վայրն ուր ոսկերքն էին: Զոր տեսեալ երանելւոյն Անտոնի զառաջինն զարհուրեցաւ, և յետ այնորիկ զմիտսն առ ած համբարձեալ զերկիւղն 'ի բաց մերժէր յինքենէ, և իբրև զոչխարս տեսանէր զնոսա: Իսկ առիւծուցն եկեալ կային առ մարմնով սրբոյ ալևորին և անկեալ առ ոտսն քծնէին և մեծաւ գոչմամբ ոռնային, մինչև իմացեալ սրբոյն Անտոնի թէ լան և ողբան զլուծումն սրբոյն Պաւղոսի 'ի մարմնոյն: Եւ յետ այնորիկ սկսան ոտիւքն զերկիրն փորել և զաւազն 'ի բաց մղել: Եւ իբրև բրեցին զտեղին իբրև առն չափ և երկայնութիւն նոյնպէս, նոյնժամայն վարձս ըստ վաստակոյն առնուլ հայցէին. եկեալ առ երանելին Անտոն զգլուխս խոնարհեցուցանէին և լեզուին զոտս և զձեռս նորա: Եւ նորա իմացեալ թէ օրհնութիւն խնդրեն 'ի նմանէ գազանքն ընդ վաստակոցն, առանց յերկուանալոյ յայնժամ ընդ փառսն այ զարմացեալ

զլաւագոյնն իմանայ, այսպէս ասէր. տէր, առանց քոյոյ կամաց և հրամանի տերև 'ի ծառոյ չանկանի և ոչ մի 'ի թռչնոց յերկիր, դու հատո սոցա ոպ̃ և գիտես։ Եւ ձեռամբքն նշանացի արարեալ հրամայեաց գնալ նոցա։ Եւ յետ գնալոյ նոցա առեալ զմարմինն եդ ըստ սովորութեանն ոպ̃ օրէն էր։ Եւ յետ աւուր միոյ անցանելոյ, իբրև օրինօք ժառանգաւոր զմնացեալ պարեգօտն առնոյր՝ զոր երանելւոյն Պաւղոսի ինքեան արարեալ էր յարմաւենեաց։ Եւ եկեալ 'ի վանս իւր, զա̃մ եղելոյն 'ի կարգի պատմեաց իւրոց աշակերտացն։ Եւ այնպէս 'ի տօնի զատկին և 'ի պենտակոստէին միշտ զերանելւոյն Պաւղոսի զպարեգօտն զգեցեալ ուրախ լինէր։

Եւ արդ ես աղաչեմ զքեզ որ ընթեռնուս զայս՝ զԵրոնիմոս զմեղաւոր յիշել, որ կամօքն իմ̃ զպարեգօտն Պաւղոսի երանելւոյն կամէի հաւատովքն նորա՝ քան զթագաւորաց ծիրանիսն հանդերձ պատուով նոցա 'ի փառս ամենասուրբ Երրորդութեանն։

բերկրէր, զի և անխօս բնութիւն զլաւագոյնն իմանայ։ Եւ ասէ. տէր, առանց քո կամացդ և հրամանի տերև 'ի ծառոց ոչ անկանի և ոչ մի 'ի թռչնոց յերկիր. դու հատո սոցա որպէս և գիտես։ Եւ ձեռամբ նշանացի արարեալ հրաման տայր նոցա երթալ։ Եւ յետ գնալոյ նոցա առեալ զմարմինն սուրբ՝ եդ 'ի գերեզմանի ըստ սովորութեան որպէս օրէն էր։ Եւ յետ աւուր միոյ անցելոյ իբրև օրինօք ժառանգաւոր զմնացեալ պարեգօտն առնոյր զոր երանելւոյն Պաւղոսի ինքեան արարեալ էր յարմաւենեաց։ Եւ յուղի անկեալ դարձաւ 'ի վանսն իւր. և իբրև եհաս, ընդ առաջ եղեն աշակերտքն, քանզի մնային յա̃մ ժամ գալըստեան նորա։ Յայնժամ արտասուօք պատմեաց զա̃մ եղելոյն իւրոց աշակերտացն։ Եւ 'ի տօնի զատկին և 'ի պենտակոստէին միշտ զգեցեալ ուրախ լինէր զպարեգօտն երանելւոյն Պաւղոսի։

Արդ աղաչեմ զձեզ ով որք ընթեռնուն զայս՝ յիշել զԵրոնիմոս զմեղաւոր զհաւաքօղս պատմութեանս փոքր 'ի շատէ երանելւոյն Պաւղոսի, զորոյ զպարեգօտն կամէի հաւատովք առնուլ քան զթագաւորական ծիրանիս հանդերձ 'ի պատիւ սրբոյն և 'ի փառս Քի̃ Յի̃ տեառն մերոյ։

## ՎԱՐՔ

# ԵՐԱՆԵԼՈՅՆ ԱՆՏՈՆԻ

## ԵԳԻՊՏԱՑԻՈՅ ՄԻԱՅՆԱԿԵՑԻ

## ԹՈՒՂԹ ԱԹԱՆԱՍԻ

ԲԱՐԻՈՔ է նախանձ առաքինութեան դնել ընդ միայնաւորս եգիպտացւոց, հաւասարել կամ առաւելուլ զօրօք կամեցեալ լոյս առաքինութեան ձերոցդ վարուց. քանզի և առ ձեզ այսուհետև գոն միաւորատունք և անուն մենակեցաց. զի զայսպիսի յառաջարկութիւն յիրաւի և գովեսցուք, և աղօթիւք ձերովք ած կատարեսցէ։ Արդ վասն զի և յինէն պահանջեցէք բան վասն առաքինութեան վարուցն Անտոնեայ ուսանել կամեցեալք թէ զինչ օրինակ արդեօք սկիզբն արարեալ վարուցն և կամ զինչ արդեօք յառաջ քան զայս էր և ոպի եղև վախճան կենաց նորա և թէ ճշմարիտ են զնմանէ առացեալքն, և քանզի առ ՚ի նորա հակառակութին զձեզ մատուսջիք՝ բազում յօժարութեամբ ընկալայ զառ ՚ի ձէնջ հրամանդ. քանզի և ինձ իսկ մեծ շահք օգտի են և լոկ միայն Անտոնեայ անուանն յիշատակ։ Գիտեմ և դուք զայս լուեալք յետ զարմանալոյ ընդ այնր՝ կամեսջիք և նախանձել ևս ընդ նորա գեղեցիկ շահիցն պատճառս. քանզի բաւական է առ ՚ի գեղեցիկ օրինակ ՚ի վարս միայնակեցութեան կրօնքն Անտոնեայ։ Արդ զոր ինչ լուեալ էք վասն նորա ՚ի պատմողաց՝ մի անհաւատէք, այլ սակաւ քան զարժանն ՚ի նոցանէ լուեալ համարեցարուք, զի և նոքա այսչափ հազիւ կարացին պատմել։ Այս և ես հրամայեալ ՚ի ձէնջ ՚ի ձեռն թղթոյս նշանեալ առաքեմ ձեզ՝ սակաւս զնորայն յիշեցեալ։ Այլ դուք մի դադարիցէք հարցանել որ առ ՚ի մէնջ այդր նաւարկեն. զի ամ ուրեք որ ինչ գիտէ ոք ասելով՝ հազիւ թէ յարժանի զի առ ՚ի նմանէ եղիցին պատմութիւնք։

Վասնզի և ես կամեցայ զձեր թուղթն ընկալեալ կոչել
զոմանս 'ի մենաւորաց որ մանաւանդ յաճախագոյնս սո-
վոր էին առ նա երթալ, զի թերևս զբազումն հարցա-
նելով կատարելագոյնս առաքէի ձեզ։ Այլ վասն զի
ժամանակ նաւարկութ̃են փակէր և թղթաբերն փու-
թայր, վասն այսորիկ զոր ես գիտեմ պատմեմ ձեզ.
քանզի բազում անգամ տեսի զնա և կարացի ինչ ու-
սանել 'ի նմանէ, որոյ զհետ երթեալ էի նորա սակաւ
մի ժամանակ և ջուր զձեռօք նորա արկեալ, գրել ձե-
րում բարեկամութ̃եդ փութացայ՝ յա̃մ կողմանց զճշ-
մարտութ̃ին հոգացեալ, զի մի առաւել ոք լուիցէ և թե-
րահաւատեսցէ, և զի մի դարձեալ նուազագոյն քան
զարժանն ուսանել արհամարհեսցէ զառնէն։

Անտոնիոս յազգէ էր եգիպտացի յազատ ծնողաց, և
ստացուածս ըստ տանց իւրեանց ունէին. և վասն զի
քրիստոնեայք էին՝ քրիստոնէաբար և նա սնեալ լինէր։
Այլ մինչդեռ մանուկն էր սնանէր առ ծնողսն. բայց 'ի
նոցանէ և 'ի տանէ անտի զայլ ոք ոչ ճանաչէր։ Այլ իբ-
րև աճեցեալ եղև պատանեակն և յառաջացեալ լինէր
սակաւ հասակաւ, դպրութ̃ի ուսանել յանձին ոչ կա-
լաւ, վասն զի անընդել լինել կամեցաւ սովորութեան
մանկտւոյ, և զցանկութ̃ի ունէր ըստ գրեցելումն իբրև
առանց պատրաստի պաճուճանաց բնակել 'ի տանն իւ-
րում։ Այլ թէպէտ և միաբանել լինէր ընդ ծնողսն 'ի
տէրունականն տանն, սակայն ոչ իբրև զմանուկ ծուլայր
և ոչ իբրև զարգացեալ հասակաւ արհամարհէր, այլ
և ծնողացն հնազանդ լինէր և զբաց ընթերցուածոց
ունկնդրութ̃ի առնէր, զի զառ 'ի նոցանէ օգտութ̃ի յին-
քեան պահեսցէ. և ոչ դարձեալ իբրև զմանուկ չափա-
ւոր ժառանգութ̃ե 'ի սնունդ նեղէր ինչ զծնողսն վասն
բազմապատիկ ինչ ազգի ազգի և պայծառ կերակրոց,
և ոչ ընդ այսպիսի ինչ ցանկութ̃իս զանձն արկանէր։

Իսկ յետ մահուան ծնողացն ինքն միայն մնացեալ
լինէր հանդերձ միով քերբ փոքու. և էր մերձ ամաց
ութուտասան և կամ քսանի եղեալ, և ինքն էր հոգա-
բարձու տանն և քեռն իւրում։ Եւ ևս ամիսք վեց ան-
ցեալ էին մահուան ծնողացն, նա ըստ սովորութ̃ե իւ-
րում ելեալ երթայր յեկեղեցին և զմիտսն յինքն ամ-
փոփեալ խորհէր վասն ամենեցուն թէ որպէս առաքեալք

առաքեալքն թողեալ զամենայն գնացին զհետ փրկչին. և դարձեալ ոմանք 'ի գործս առաքելոցն որք վաճառէին զիւրեանցն և բերեալ դնէին առ ոտս առաքելոցն 'ի բաշխումն այնոցիկ որոց պէտքն պահանջէին, որպիսի արդեօք և որչափ սոցա յոյս յերկինս պահեալ դնիցի, զայս ընդ միտ ածելով եմուտ 'ի ներքս 'ի ժողովարանն։ Դիդէպ եղև յայնմ ժամու ընթեռնուլ զաւետարանն, և լուաւ 'ի տեառնէ զի ասէր ցմեծատունն. Եթէ կամիս կատարեալ լինել, երթ վաճառեա զինչս քո և տուր աղքատաց և եկ զկնի իմ և կացցես գանձս յերկինս։ Իսկ Անտոնիոս իբրև յայն իմն ունէր յինքեան զյիշատակս սրբոցն. և իբրև թէ վասն նորա ընթերցուածն եղեալ լինէր, անդէն վաղվաղակի 'ի դուրս ելեալ 'ի տէրունականն տանէն, զստացուածսն զոր ունէր 'ի նախնեացն՝ զի էին նորա արտավարք քաջաբերք և ընտիրք յոյժ՝ զայնս շնորհեաց գեղջէիցն, զի մի ինչ ընաւ լլկեսցեն զնա և զքոյրն։ Իսկ որ այլ ինչ էր իւրեանց բառնալի, զամենայն վաճառեալ՝ ժողովեաց արծաթ բազում և բաշխէր տնանկաց, սակաւ մի և քեռն թողոյր յամէ։ Իսկ իբրև դարձեալ եմուտ յեկեղեցին և լուաւ յաւետարանի տեառն զի ասէր՝ մի հոգայք վասն վաղուի, և ոչ կարաց յերկար եւս համբերել, այլ 'ի դուրս ելեալ վաղվաղակի և զայն եւս բաշխէր աղքատաց, և զքոյրն յանձն առնէր ծանօթ և հաւատարիմ կուսանաց, տրւեալ զնա 'ի կուսութիւն սնանել, և ինքն արտաքոյ շինին բնակէր։ Ուշահեաւ ընդ կարգօք կրօնիւք զանձն 'ի վայր արկանէր և ժուժկալութեամբ զինքն կրթէր. քանզի չև եւս գոյին յայնմ ժամանակի յԵգիպտոս յաճախ միայնաւորաստանք, և ոչ ընաւ գիտէր իսկ ոք միայնակեաց զհեռաստանն անապատ, այլ ամենայն ոք որ կամէր անձին միտ դնել՝ ոչ հեռաստան ուրեք յիւրմէ գեղջէն միայնացեալ կրօնաւորէր։

Ի ժամանակին յայնմիկ գոյր ծերունի ոմն 'ի մերձաւորն գեօղ, 'ի մանկութենէ զմենաւորութեան կրօնս վարժեալ։ Զսա տեսեալ Անտոնի նախանձեցաւ 'ի բարիս, և նախ սկիզբն արար իւր բնակութեան 'ի մօտաւոր տեղիս գեղջն. և անտի թէ ուրուք փոյթ զումեքէ լսէր, 'ի խնդիր ելեալ լինէր իբրև զիմաստուն մեղու. և ոչ դառնայր յիւր տեղին, եթէ ոչ նախ զնա տեսանէր, և

իբրև համբար իմն ճանապարհի առաքինութեան 'ի նմա-
նէ առեալ լինէր ։ Ընդ սկիզբն առնէր իւր ժամանակ
մի բնակութեան. զխորհուրդսն կշռէր, զի մի 'ի հայրենի
երկիր իւր դարձցի և զազգականացն 'ի միտ արկցէ. այլ
զամ փափագումն և զբնաւ զփոյթն դնէր 'ի պնդութիւն
կրօնից և գործէր ձեռօք իւրովք, լուեալ զայն թէ որ
գործէն ոչ՝ և կերիցէ մի. և էր ինչ հացն զոր 'ի կարօ-
տեալս ծախէր ։ Այլ յաղօթս կայր յաճախագոյնս, և
ուսեալ թէ պարտ և պատշաճ է առանձինն կալ յա-
ղօթս անսպառ. քանզի ուշ այնպէս եդեալ էր յընթեր-
ցուածս գրոց, զի մի ինչ 'ի նմանէ 'ի գրելոց 'ի գետնի
անկցի. այլ զամ ինչ ունել, զի այնուհետև նմա յիշա-
տակքն փոխանակ գրոց լիցին ։ Այսպէս զինքն վարուքն
կրօնաւորելով սիրելի էր ամենեցուն Անտոնիոս ։ Այլ
ինքն սրտի մտօք առ փոյթսն՝ առ որս երթեալ լինէր՝
զանձն ընդ հպատակութեամբ կարգէր, և յինքեան զամ
ուրուք զառաքինութեան փոյթ և զանձնթար կրօնից խու-
զէր, զորումն զշնորհաւոր լրջմտութիւն, և զորումն զառ
'ի յաղօթս զփոյթն տեսանէր, և զայլոյ որումն զոչ բար-
կանալն, զայլոյ մարդասիրութիւն իմացեալ տեսանէր, և
որումն 'ի հսկումնն, և որումն 'ի դրասէր ընթերցուածն
հայէր, և զումն 'ի ժուժկալութեան, և զումն 'ի պահս և
յերկրատապաստութեան. զարմանայր և ընդ որումն ընդ
հեզութիւն, և զորումն զերկայնմտութիւն դիտէր. միան-
գամայն զամենեցուն առ 'ի Քս բարեպաշտութիւն և զառ
միմեանս սէրն. և այսպէս ինքն ամբարեալ այսրէն դառ-
նայր յիւր իսկ բուն տեղի կրօնաւորութեան ։ Այլ ապա
այնուհետև զառ 'ի յամենեցունց յանձն ժողովեալ
փութայր զամ յինքեան ցուցանել ։ Եւ և ընդ հասա-
կակիցսն իւր ոչ հակառակէր, բայց միայն զի մի քան
զնոսա երկրորդ 'ի լաւութեան երևեսցի ։ Այլ զայս ևս առ-
նէր զի մի զոք ամենևին տրտմեցուսցէ, այլ և զնո-
սողմն ևս 'ի վերայ իւրոցն բերկրեցուցանէր ։ Այլ զամ
գեղայինքն և բարեկամքն հայեցեալ ընդ նորա գեղե-
ցիկ սովորութիւն և այնպէս զնա տեսեալ աստուածա-
սէր կոչէին. ոմանք իբրև զորդի և ոմանք իբրև զեղ-
բայր համբուրէին ։

Իսկ չարակամ բարկատեաց մեղասէրն բանսարկուն
ոչ կարաց համբերել տեսեալ 'ի տղայութեան այսպիսի

յառաջադիմութե. այլ որպիսի ինչ սովորն էր առնել՝ նոյնպէս և սկիզբն առնէ և վասն սորա գործել: Այլ նախ զառաջինն փորձէր զնա 'ի գեղեցիկ և յանշարժ կրօնիցն ընկենուլ, յուշ առնելով նմա զյիշատակ ստացուածոցն և զքեռան իւրոյ զխնամակալութիւն, զազգայնոցն զընտանութի, զարծաթսիրութի զփառասիրութի, զկերակրոց զազգի ազգի զցանկութիս, և զայլ ևս զաշխարհիս հանգիստ, և կատարած՝ զխստամբերութիւն առաքինութեն, և թէ բազում են նորա բանք աշխատութե, և զմարմնոյ հիւանդութի 'ի միտս արկանէր, և զժամանակի երկայնութի, և բնաւ կարի իմն սաստիկ յարուցանէր 'ի միտս նորա մրրիկ խորհրդոց՝ կամեցեալ քեցել զնա 'ի գեղեցիկ ուղիղն քաղաքավարութե:

Այլ իբրև եսես թշնամին զինքն տկարացեալ առ յառաջադրութիւն Անտոնեայ, մանաւանդ զի եսես զինքն պարտեալ 'ի նորա յանշարժ հաստատութենէն և գայթակղեալ 'ի հաւատոցն և ընկճեալ 'ի ստէպ ստէպ աղօթիցն Անտոնեայ, յայնժամ 'ի վերայ պորտոյ որովայնին զգէնս իւր քաջալերեալ, և սոքօք պանծալով՝ պարծէր, քանզի այս է նր սաստիկ դարան առ տհասս. և յարձակի 'ի վերայ նորահասակացն 'ի գիշերի ամբոխելով և 'ի տուէ այնպէս լլկելով մինչև տեսողացն անգամ զգայութի լինել զառ 'ի միմեանսն կռիւ: Քանզի նա 'ի միտս արկանէր նորա խորհուրդս աղտեղիս, իսկ սա աղօթիւք զայն անդրէն դարձուցանէր. և նա խտղտմամբ զայրացուցանէր, իսկ սա իբրև կարծիս իմն ամօթոյ հնարէր՝ հաւատովք և պահօք զմարմինն պարըսպէր, և դժնդակութեց բանսարկուին յանցիցն տևէր: Այլ իբրև կին մարդ 'ի գիշերի կերպարանեալ լինէր, և ամ ձև օրինակաց նմանէր, միայն զի կարասցէ զԱնտոնիոս պատրել: Իսկ սա զՔս զմտաւ ածելով և վասն բարեծնութեն զշահեմնրանս խնամատութե ընդ միտ ածելով՝ զհուրն շիջուցանէր զկայծակն մոլորութե նորա: Այլ դարձեալ թշնամին 'ի միտ արկանէր զգայթակղութիւն ցանկութե. իսկ սա իբրև բարկացելոյ և սպառնացելոյ նմանել՝ զսպառնալիս հրոյն և զցաւս որդանցն ընդ միտ ածելով և զայն ընդ այսմ կշռելով՝ անցուցանէր անվնաս: Այլ լինէր այս ամ 'ի յամօթ թշնամւոյն. քանզի որ կարծեացն հաւասարել ած, այժմ 'ի ձեռն

մանկան տղայոյ խաղացաւ. և որ զմարմնով և արտաքին արհամարհէր, 'ի մարմնաւորգեաց մարդոյ կործանէր. Վասնզի օգնական և յաղթող և գործակից էր նմա տէր, որ վասն մեր մարմին զգեցաւ և մարմնոյս 'ի վերայ բանսարկուին ետ յաղթութիւն, մինչև ասել այսպէս ամ̅ մարտուցելոցն ընդ նմա՝ ոչ ես, այլ շնորհքն ա̅յ որ ընդ իս։

Այլ յետ այսորիկ իբրև ոչ կարաց և ոչ յայսմ յաղթել Անտոնի վիշապն, այլ տեսանէր զինքն մերժեալ արտաքսեալ 'ի սրտէ նորա, կրճտէր զատամունս ըստ գրեցելումն, և իբրև հիացեալ լինէր 'ի զարմացումն ընդ հաստատութիւն մտացն։ Այլ այսպէս դարձեալ առաջօք թուխ և դժնեայ պատանեակ յանդիման երևէր։ Այլ իբրև ընդ ձեռամբ անկեալ եղև և ոչ ևս կարէր խորհրդոցն պէս 'ի վերոյ լինել, քանզի 'ի դուրս քարշեալ ընկեցեալ լինէր նենգաւորն, այնուհետև զմարդկան ձայն 'ի կիր արկեալ ասէր. բազումս խաբեցի և շատ յերկիր կործանեցի, և այժմ 'ի վերայ այլոցն քոյոց տանջանօք և ցաւովքս անկարացայ։ Եպա Անտոնիոս եհարց զնա. ո՞վ ես դու այդպիսիս ընդ իս բարբառելով։ Նոյնժամ վաղվաղակի նա պարզելի ձայնս արձակեալ ասէր. ես պոռնկութեան եմ սիրելի, ես զսորա դարանս և զխտղտմունս առ նորահասակն յանձն առեալ և կալեալ եմ, և հոգի պոռնկութեան կոչիմ. զքանիս որ կամէին ողջամիտ լինել, և ես խաբեալ պատրեցի. և թէ բազում են նորա ջանք աշխատութեան, ես հաւանեցուցի խոտորելով [1], և վասն որոյ մարգարէն մեղադիր լինի. ասէ՝ հոգւով պոռնկութեան պատրեցայք. քանզի ինև էին նոքա կարթեալք։ Այս եմ որ բազում անգամ լլկեցի զքեզ և սաստել քան զբազումս եղէ 'ի քէն փախստեայ։ Իսկ Անտոնիոս գեղեցիկ գոհութիւն տեառն ա̅յ մատուցանէր, և արհամարհելով զնմանէ ասէր զնա՝ թէ կարի յոյժ գձուձ ես և դիւրարհամարհ. քանզի ես դու թուխ միտօք և արհամարհ իբրև զանձնուկ. չիք ինչ ինձ այսուհետև հոգալ վ̅ս քո, զի տէր է ինձ օգնական, և ես տեսից 'ի թշնամիս իմ։ Զայս իբրև լուեր թուխն, անդէն վաղվաղակի 'ի բաց փախչէր. և զարհուրեալ նա յերանելւոյն յերկեղի մերձ լինէր, այլ ևս մերձենալ յայլոն ոչ իշխէր։

1 Ցօրինակին խանգարեալ բառ. եգաւ ըստ օրինակի Ճառընտրաց։

Նախ այս նահատակութիւն եղև երանելւոյն Անտոնեայ ընդ բանսարկուին. այլ և յայսմ ևս փրկիչն գտաւ Անտոնի ձեռնկալութիւն յաղթողութեան, որ զմեղս դատապարտեաց 'ի մարմնի իւրում, զի արդարութիւն օրինացն կատարեսցի 'ի մեզ որք ոչ ըստ մարմնոյ գնայցեմք, այլ ըստ հոգւոյ: Այլ և ոչ Անտոնիոս իբրև զի ընդ ձեռամբ անկեալ էր դևն՝ զգերիվերութիւն պանծացեալ անհոգ լինէր այնուհետև և անփոյթ ինչ առնէր զանձնէ: Եւ ոչ թշնամին 'ի պարտութեան մատնեալ դադարէր 'ի դարանամնալ լինելոյ, և գնայր շրջէր իբրև առիւծ՝ խնդրելով պատճառս ինչ գտանելոյ: Իսկ Անտոնիոս 'ի գրոց ուսեալ թէ բազում են թշնամւոյն մեքենայք խարդախութեան, վաղվաղակի 'ի ձեռն արկանէր զդեղեցիկ կրօնսն, զածիչելն աւատից ընդ միտ ածել: Ո՛չ իթէ-պէտ և ոչ զօրեաց 'ի ցանկութեան մարմնոյն զխրամն պատրել, սակայն փորձեսցէ այլովք մեքենայիւք և դարանամտութեամբ խաբանս լինել. քանզի և ընդդէմ մեղանչաւոր դիւին ևս քան զևս ճնշեցուցանէր զմարմինն և ծառայեցուցանէր 'ի հնազանդութիւն, զի մի երբէք որ յայլում յաղթեաց՝ և յայլում զաղացեալ լիցի. կամէր այնուհետև ծանր և խիստ կրօնիւք զինքն սովորեցուցանել: Եւ բազումք ընդ այն սքանչացեալ լինէին. սակայն նա դիւրաւ զջանն վաստակոյն տանէր, քանզի յօժարութիւն հոգւոյն՝ սովորութիւն գեղեցիկ բարուց 'ի նմա գործէր, մինչ զի փոքր անգամ պատճառս ինչ յայլոցն ընկալեալ՝ բազում փոյթ յօժարութեան առ այս ցուցանէր, և հսկէր այնչափ՝ մինչև բազում անգամ դէպ լինէր նմա զգիշերն ամ անքուն կատարել. և զայս ոչ եթէ մի անգամ, այլ բազում անգամ զայս արարեալ սքանչելի լինէր: Ուտէր մի անգամ յաւուրն յետ մտիցն արեւու. էր երբէք զի յետ երկուց, բազում անգամ և յետ չորից աւուրց ուտէր: Եւ էր կերակուր նորա հաց և աղ և ջուր ըմպելի. այլ վասն մսոյ և գինւոյ և ասել իսկ աւելի է. որ ոչ և առ այլս անգամ փութականս գտանիցի ինչ յայսպիսեաց առատի: Եւ 'ի քուն շատացեալ լինէր խսրեղինաւ, և բազում անգամ յերկիր անձանկողին անկեալ դնէր: Այլ օծանել զինքն ձիթով առնելին ոչ առ յանձն, ասելով թէ պարտ և արժան է նորահաստակացն խնդաբարոյ յօժարութեամբ զառաքինու-

թեան կրօնան յինքեան բերել, և մի խնդրել զայն որ թուլացուցանէ զմարմինն. այլ ընդելացուցանել զառ վաստակօք, ընդ միտ ածելով զառաքելական բանն՝ թէ յորժամ տկարանամ, յայնժամ զօրանամ: Քանզի ասէր եթէ յայնժամ զօրանան միտք հոգւոյն, յորժամ ցանկութիւնք մարմնոյն տկարացեալ լինին:

Եւ էր յոյժ զարմանալի և արդարեւ արտաքոյ քան զկարծիս այս խորհուրդք նորա. քանզի ոչ կամէր ժամանակաւ չափել զառաքինութեանն ճանապարհ, և ոչ վասն նորա զհրաժեշտութիւն, այլ փափագելով և յօժարութեամբ: Բայց ինքն ոչ երբէք յիշէր զանցեալ ժամանակի զվաստակն, այլ իբրև հանապազօր սկիզբն առնէր գիտութեանն, և վաստակոց վարուցն մեծապէս առնէր աճումն յառաջատութեան 'ի վերայ իւր, ասելով հանապազ յաճախագոյն զառաքելական բանն՝ զվերջինսն մոռացեալ և յառաջինսն նկրտեալ, յիշելով և զձայն մեծին Եղիայի որ ասէ. կենդանի է տէր, որոյ կացեալ եմ առաջի նորա ես այսօր. զգուշացեալ՝ զայս օրն ասելով՝ ոչ համարէր զանցեալ ժամանակն, այլ միշտ իբրև սկիզբն առնելով հանապազօր փոյթ յանձին ունէր առաջի կալ այ̄ այնպէս որպէս արժան էր երևել այ̄ սուրբ սրտիւ, և պատրաստէր հլու լինել կամաց նորա: Եւ զի թէպէտ և ոչ այլ ումեք, սակայն ասէր յինքեան՝ թէ այնպէս պարտ և պատշաճ է կրօնաւորաց 'ի վարուց մեծին Եղիայի ուսանել, զի իբրև ընդ հայելի տեսանիցէ միշտ զիւր կարգս կրօնիցն:

Եւ ապա այսպէս պնդեալ զինքն Անտոնիոս երթայր գնայր 'ի հեռաստան ուրեմն շիրիմն 'ի գեղջէն, և պատուէր տայր միում ումեմն յիւրոց ծանօթիցն յետ բազում աւուրց տանել նմա զհացն: Եւ ինքն մի 'ի շիրմաց մտոր եմուտ 'ի ներքս. և նա ած փակեաց արտաքուստ զդուրսն ընդդէմ նորա, և նա մնացեալ լինէր այնուհետև 'ի ներքս միայն: Եւ զայն իբրև ոչ կարաց տանել 'ի թշնամին՝ երկուցեալ թէ մի գուցէ առ սակաւ սակաւ և զանապատն պարապեսցէ կրօնաւորութեամբ, եկն 'ի վերայ նորա 'ի միում գիշերի հանդերձ բազում դիւօք, և այնչափ եհար զնա տանջանօք մինչև անձայն և անբարբառ անկեալ դնէր նա 'ի սաստիկ հարուածոցն: Քանզի պատմէր և ասէր հաստատութեամբ այնչափ սաս-

տիկ լինել զգաստն՝ մինչև անհնար համարել զատ 'ի մարդկանէն հարուածս այսպիսի զգայութիւն տանջանաց գործել: Իսկ ըստ կանխագիտութեան խնամք ոչ անտես առնէ որք յուսան 'ի նա: Ի վաղուց անդր ծանօթն անդր եկեալ լինէր՝ բերեալ նմա հաց. իբրև ճրագ զդուրան և ետես զնա զի յերկիր անկեալ դնէր իբրև զմեռեալ, 'ի վեր առեալ տանէր 'ի գեօղն 'ի տէրունական տաճարն իւր և դնէր 'ի գետնի: Եւ բազումք յազգականաց անտի և 'ի գեղջէիցն շուրջ զնովաւ անցեալ նստէին իբրև զմեռելով: Իսկ 'ի մէջ գիշերի յինքն եկեալ Անտոնիոս և զարթուցեալ տեսանէր զամենեսեան ննջեցեալս, և զծանօթն միայն արթուն. ակնարկէ նմա գալ առ ինքն և աղաչէր զնա դարձեալ բառնալ տանել զնա անդրէն 'ի շիրիմն մի զոք զարթուցանելով:

Եւ ապա իբրև տարեալ եդև յառնէն, և դարձեալ ըստ սովորութեան դրօքն փակելովք էր 'ի ներքս միայն և յոտն կալ ոչ կարէր վասն դիւացն հարուածոց, այլ անկեալ դնելով կայր յաղօթս: Եւ յետ աղօթիցն ասէր մեծաձայն. աստ եմ ես Անտոնիոս, ոչ փախչիմ 'ի ձերոց հարուածոց. զի թէպէտ և աւելի ինչ արաջիք, ոչ ինչ է որ մեկնէ զիս 'ի սիրոյն Քի: Եւ յետ այնորիկ սաղմոսէր. եթէ յարիցէ 'ի վերայ իմ պատերազմ, ոչ երկիցէ սիրտ իմ: Եւ սակայն երանելի կրօնաւորն խորհելով զայս ասէր: Իսկ բարիատեաց չարակամ թշնամին զարմացաւ թէ ընդ յետ այսչափ հարուածոց իշխեաց աստ գալ. կոչեցեալ առ ինքն զիւր շունսն իւր և հերգիծանէր 'ի սաստկութիւն բարկութե. տեսանէք, ասէ, զի ոչ խորհրդով պոռնկութեան և ոչ հարուածովք դադարեցուցաք զսա, այլ և ըմբոստանայ ընդդէմ մեր, մերձեսցուք առ նա այլով օրինակաւ. քանզի դիւրագոյն է բանսարկուին առ 'ի չարիս կերպարանել: Յայնժամ 'ի գիշերին յայնմիկ թնդիւն առնէին այնչափ սաստիկ մինչև կարծել զտեղին ամ շարժել, և զխցկանն զչորեսին որմն պատառեալ կարծիս տայլին դևքն. ինքեանք ընդ այն մտանել կերպարանեալք 'ի գազանս և 'ի սողունս առ աչս երևելով, և անդէն վաղվաղակի տեղին լնոյր առ աչս տեսլեամբ առիւծուք և եղջերուաց զուարակօք, արջովք և ընձովք, կարճովք և գայլովք, և իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ շարժեալ լի-

նելով ըստ իւրաքանչիւր կերպարանաց։ Այլ առիւծն գոչելով կամէր յարձակիլ և ցուլարակն թուէր եղջիւր ածել և օձն սողելով ոչ մերձենայր և գայլն յարձակելով արգելեալ լինէր։ Այլ ամենեւին ահագին էին և անհնարին միահամուռ ամենեցուն բարկութն սրտմտութիւնքն և ձայնիցն հնչմունք։ Սակայն Անտոնիոս տանջելով և խոցոտելով ՚ի նոցանէ առնոյր զգայութն ՚ի նոցանէ զանհնարին ցաւոյ մարմնաւորի. սակայն անդողդոջ և աներկիւղ զարթմամբ հոգւոյն անկեալ դնէր և հեծէր վասն մարմնոյն ցաւոցն, և լուրջ՚էր արթմամբ հոգւոյն։ Այլ իբրև ծաղր առնելով ասէր. թէ զօրութիւն ինչ գոյր ՚ի ձեզ, բաւական էր մի ոք գալ ՚ի ձէնջ. արդ վասն զի ջլատեաց զձեզ տէր ՚ի զօրութենէ, վասն այնորիկ գոնեայ բազմութբ իմն փորձիք երկեցուցանել. իսկ յայտնութն պիտութն ձերոյ տկարութեանդ այդ իսկ է՝ նմանելդ ձեր ՚ի կերպարանս անասնոց։ Այլ քաջալերելով դարձեալ ասէր. զի թէ կարէք և իշխանութիւն առէք, մի յապաղեալ յերկարէք, այլ ՚ի վերայ յարձակեցարուք. ապա թէ ոչ զօրէք՝ զի՞ զուր տարապարտուց խռովեալ էք, քանզի կնիք մեր և պարիսպ ամրութեան են ՚ի տէր մեր հաւատք։ Այլ իբրև բազում ջիշխեցեալ ձեռնարկել՝ կրճէին զատամունս ՚ի վերայ նորա, զի զինքեանս խաղային և ոչ զնովաւ։

Իսկ սակայն տէր և յայսմիկ ոչ մոռացաւ զջանն վաստակոց նահատակութեանն Անտոնեայ, այլ օգնական ձեռնկալու եղև նմա։ Ի վեր հայեցեալ տեսանէր զձեղունն բացեալ և ճառագայթս իմն լուսոյ զի իջանէր առ նա, և անդէն վաղվաղակի դևքն աներևոյթ լինէին. նոյնժամայն և ցաւք մարմնոյն դադարէին, և տունն դարձեալ էր ողջ բովանդակ։ Իսկ Անտոնիոս իբրև ըզգաց զտեառն ձեռնկալութն օգնականութեանն, ոգի առեալ և թեթևացեալ ՚ի ցաւոցն՝ աղաչէր զտեսիլն որ երևեցաւ և ասէր. ու՞ր էիր և ընդէ՞ր յառաջ իսկ ոչ երևեցար, զի զիմ զցաւսն դադարեցուցանէիր։ Այլ եղև ձայն առ նա. Անտոնիէ, աստ էի, այլ կայի մնայի տեսանել զքո նահատակութիւնդ. արդ վասն զի համբերեցեր և ոչ յաղթեցար պատերազմօք, եղէց քեզ միշտ օգնական, և տաց քեզ անուանի լինել ընդ ամ երկիր։ Զայս իբրև լուաւ յոտն կացեալ կայր յաղօթս, և այն-

չափ զօրանայր մինչև զող նմա առաւել և յաւելուած զօրութե ընդունել 'ի մարմինսն քան զոր յառաջին ունէր։ Այլ էր այնուհետև մերձ իբրև ամաց երեսուն և հնգից։

Այլ այնուհետև յառաջ անցանէր և յօժարութբ յանձնպաշտութիւն։ Այլ առ այլ հին ծերունի երթեալ լինէր և աղաչէր ընդ նմա բնակիլ յանապատին։ Իսկ նա իբրև ոչ կամէր յանձին վասն տղայութե հասակին, և վասն զի ոչ երբէք եղեալ այսպիսի սովորութի, ինքն անդէն վաղվաղակի դիմէր 'ի լեառնն։ Այլ դարձեալ Թշնամին իբրև տեսանէր զնորա փոյթն, կամեցաւ խափանել զնա. ընկենոյր զառաջօք Ճանապարհին սկտեղ արծաթի առաջօք երևելոյ։ Իսկ Սուրբն իբրև գիտաց զարուեստ բարխառեցին, յանց եկաց, և 'ի սկտեղն հայեցեալ զբանսարկուն որ 'ի նմա՝ կշտամբեալ յանդիմանէր ասելով. յանապատի ուստի՞ գտանի սկտեղ, ոչ է Ճանապարհս այս կոխեալ, չիք աստ հետ ուրուք գնացելոյ Թէ անկանէր, և Թէ յումեքէ անկաւ՝ ոչ կարէր անգիւտ լինել զի մեծ է. այլ որ կորոյսն՝ դառնայր և գտանէր, վասն զի անապատ է տեղիս. այս արուեստ և մեքենայք բանսարկուին են. ոչ խափանեսցես այսու զիմ յօժարութիւս, բանսարկու, զի այս ընդ քեզ լիցի 'ի կորուստ։ Այլ Սուրբն իբրև զայս ասաց, ապականեցաւ նա իբրև ծուխ հրոյ զի պակասի։

Այլ ապա դարձեալ ոչ առաջօք ևս երևելոյ, այլ մինչդեռ գնայր՝ Ճշմարիտ ոսկի յանցս Ճանապարհացն ընկեցեալ տեսանէր. զի եԹէ Թշնամին եցոյց և եԹէ այլ ոք 'ի լաւ զօրութեց՝ կրԹելով զնահատակն և ցուցանել բանսարկուին, զի և ոչ Ճշմարիտ ստացուածոցն ցանկացաւ, ոչ նա պատմեաց և ոչ մեք գիտացաք, բայց սակայն ոսկի էր որ երևէրն։ Բայց Սուրբն զարմանայր ընդ բազմուԹին, և իբրև զհրով զանց արարեալ այնպէս անցանէր անյետադարձուԹբ, և փուԹայր այնպէս ընԹացիւք մինչև ծածկել զտեղին և չգիտել։ Եւ ևս քան զևս պնդեալ զյօժարուԹին դիմէր 'ի լեառնն. և եգիտ անդ բանակետղ մի յայնկոյս գետոյն լի սողնօք, վասն զի էր բազում ժամանակաց Թափուր. անդր զինքն փոխեալ բնակէր, և սողունքն 'ի բաց գնային իբրև յումեքէ հալածեալք. և ինքն զմուտն ամրացուցեալ ծածկէր, և հաց 'ի ներքս հանէր ամաց վե-

ցից. քանզի առնեն զայս թերացիք, և բազում անգամ անցեալ մնացեալ լինէին 'ի տարւոջ անմշակք. և ջուր 'ի ներքս գայր: Այլ իբրև յանդուգնս տարեալ զօղէր միայն 'ի վանսն. ոչ ինքն 'ի դուրս ելանէր և ոչ զոք յեկելոցն տեսանէր: Այլ բազում ժամանակս այսպէս անցուցանէր, շատեալ 'ի տարւոջն միայն երկիցս անգամ 'ի վերուստ 'ի տանեացն ընդունել զհացն:

Այլ որ առ նա 'ի ծանօթիցն եկեալ լինէին, վասն զի ոչ տայր 'ի ներքս մտանել, դէպ լինէր զի արտաքս բազում աւուրս և գիշերս լինէին, և լսէին 'ի ներքուստ անտի իբրև ամբոխս բազմութեան, թմբկինս և թնդիւնս և անվայելուչ ձայն արձակէին և աղաղակէին՝ 'ի բաց կաց 'ի մերոցս, զի՞ կայ քո և անապատիս, ոչ կարես կրել զմեր խարդախութիս: Այլ զառաջինն համարէին մարդս ոմանս զի մարտնչէին ընդ նմա, և արտաքինքն կարծէին զոսսա սանդղովք իջեալս առ նա: Այլ իբրև ընդ ծերպ մի 'ի ներքս նայեցեալ ոչ զոք տեսանէին, յայնժամ գիտացին թէ դևք էին, և զահի հարեալք զԱնտոնիոս կարդային: Իսկ նա նոցա առաւել լսէր, քան թէ զնոսա ինչ համարէր: Այլ մերձ երթեալ առ դուրսն աղաչէր զարսն երթալ գնալ և մի զարհուրել: Քանզի ասէր այսպէս վասն դիւաց թէ առնեն առ աչս իմն տեսիլ վասն երկչոտաց. բայց դուք կնքեցէք զանձինս և գնացէք քաջալերութ՟բ, և զսոսա թոյլ տուք խաղալ զինքեամբք: Այլ երթեալ գնացեալ լինէին նոքա պարըսպեալք նշանաւ խաչին. և նա անցեալ մնացեալ լինէր 'ի տեղւոջն ոչ ինչ ամենևին վնասեալ 'ի նոցանէ, այլ և ոչ վաստակեալ լինէր մարտնչելովն, քանզի յաւելուածք եղեն նմա վերին տեսլեանն որ լինէին նմա, և թշնամեացն տկարութ՟ի բազում նմա 'ի ցաւոց անտի մատուցանէին հանգիստ, և առաւել ևս յօժարութ՟ի պատրաստեալ կազմէր, քանզի յաճախագոյն երթային ծանօթքն կարծեալ եթէ գտանեմք զնա մեռեալ, և լսէին 'ի նմանէ ձայն սաղմոսի զի ասէր. յարիցէ ա՟ծ և ցրուեսցին ա՟մ թշնամիք նորա, փախիցեն ատելիք յերեսաց նորա. որպէս պակասի ծուխ՝ պակասեսցին. որպէս հալի մոմ առաջի հրոյ, այնպէս կորիցեն մեղաւորք յերեսաց ա՟յ: Այլ դարձեալ. ամենայն ազինք պատեցան զինև, և անուամբ տեառն վանեցի զնոսա: Այլ այսպէս

կրօնաւորեալ քսան ամ կատարէր, ոչ 'ի դուրս ելեալ և ոչ յումեքէ տեսեալ ։

Եւ յետ այսորիկ բազումք յախտաժետաց և որք նախանձել կամեցան ընդ նորա վարուն և այլոց ևս ծանօթից՝ որք եկին և բռնի զդուրսն կործանեցին և աղաչեցին զնա, և ելին 'ի դուրս Անտոնիոս իբրև ուստեմն յանձին 'ի ներքսական կողմանց խորհուրդ բերեալ քնախրատ և ա̃ծընկալ ։ Նախ առաջին յայնժամ երևէր նոցա՝ 'ի բանակետեղէն 'ի դուրս ելեալ առ նոսա ։ Նոքա իբրև տեսին զարմացան. վասն զի տեսին զմարմին նորա 'ի նոյն բնութե̃, ոչ պարարեալ իբրև զամեհի և զանկիրթ, և ոչ վատեալ իբրև 'ի պահոց 'ի մարտից դիւաց, այլ այնպէս տեսանէին զնա որպէս յառաջ քան զբնակաստանն մեկնելոյ. և դարձեալ զհոգւոյն սուրբ սովորութիւն, զի ոչ իբրև 'ի ձանձրութենէ ծմրեալ, և ոչ 'ի ծաղուէ և 'ի տրտմութենէ բռնազբօսեալ ոչ տեսանելով զժողովսն խռովեցաւ, և ոչ իբրև 'ի յայսչափ 'ի բազմաց համբուրեալ ուրախ եղև, այլ էր ամենայն հարթ, իբրև 'ի բանէն մատակարարեալ և 'ի բնութեան կայր ։ Եւ բազում ախտաժէտս որ եկեալ անդ՝ բժշկեաց տէր 'ի ձեռն նորա. և այլս 'ի դիւաց սրբէր, և շնորհս տայր Անտոնեայ 'ի խօսելն ։ Եւ այսպէս զբազում տրտմութիս մխիթարէր և բազում կռուեալս հաշտեցուցանէր 'ի խաղաղութիւն՝ ամենեցուն ասելով, մի ինչ ամենևին յերկրի ընտրել փոխանակ սիրոյն ա̃յ ։ Խօսէր և յիշեցուցանէր վասն հանդերձելոց բարեացն և որ 'ի մեզ եղև ա̃յ մարդասիրութիւն՝ որ ոչ խնայեաց յորդին իւր, այլ ընդ մեր ամենեցուն մատնեաց զնա ։ Եւ համանեցուցանէր զբազումս յանձն առնուլ զմիանորական կեանս ։ Եւ լինէր այնուհետև այնպէս 'ի լերինսն միաւորաստանք, և անապատն լնոյր վանականօք որք 'ի լերինսն էին գնացեալք յիւրեանց ընտանեաց և գրեցան յերկնաւոր քաղաքակցութիւնն ։

Եղեն նմա պէտք երբեմն անցանել ընդ Արսինոտեայ Ջրադարձն, և էին պէտքն վասն այցելութե̃ եղբարց, և լինէր Ջրադարձն լի կոկորդիլոսօք. և միայն իբր եկաց յաղօթս՝ մտանէր ինքն և ամենեքին որ ընդ նմա էին և անցեալ լինէին անվնասք ։ Եւ դարձեալ իբրև երթայր անդրէն 'ի վանսն, բուռն հարկանէր զպարկեշտ

և զարդար վաստակոց և խօսէր ստէպ ստէպ և զմիայ-
նաւորացն յօժարութի՟ն աճեցուցանէր և զբազում զայլ
ևս զարթուցանէր 'ի ցանկութի՟ն կրօնաւորութեան, և
վաղվաղակի ձգեալք 'ի բանէն՝ եղեն բազում վանորայք,
և ամենեցուն նոցա իբրև հայր առաջնորդէր։

Յաւուր միում եկին ամենեք առ նա և աղաչէին լսել
'ի նմանէ բան, և ասէր նոցա եգիպտացւոց բարբառովն
զայս՝ թէ գիրք բաւական են առ 'ի խրատ վարդապե-
տութեան․ իսկ մեզ արժան է զմիմեանս մխիթարել հա-
ւատովք և մարզել բանիւք։ Եւ դուք այսուհետև իբրև
որդիք հօրն պատրաստ լերուք որ ինչ գիտէք ասել, և
ես որ ինչ գիտեմ քան զձեզ իբրև երիցագոյն հասա-
կաւ, և հմուտ եմ մատուցանել ձեզ։ Եղիցի մեզ ամե-
նեցուն հասարակաց քան զա՟մ զայս փոյթ ընտրելոյ
սկիզբն արարեալ մի թուլանալ և մի ձանձրանալ վաս-
տակօք, և մի ասել թէ բազում ժամանակս եղեալք 'ի
կրօնաւորութեանն․ այլ առաւել ևս օր ըստ օրէ իբրև
սկիզբն արարեալ յօժարութենն աճեցուսցուք։ Քան-
զի ա՟մ իսկ կեանք մարդկան դուզնաքեայք են չափա-
ւորեալք առ պատրաստեալ կեանսն, մինչև ա՟մ ժամա-
նակս մեր ոչ ինչ լինել առ յաւիտենական կենօքն, և
ա՟մ իրք աշխարհիս ըստ արժանոյ վաճառեալ լինին և
զոյգ ընդ զուգի փոխանակի։ Իսկ խոստմունք յաւիտե-
նականն կենացն սակաւ մաւին գնեալ լինին․ քանզի
գրեալ է՝ աւուրք կենաց մերոց 'ի նոսա եօթանասուն
ամ, և որ ինչ աւելին քան զայս՝ ցաւք և վաստակք։
Արդ յորժամ բովանդակ զութսուն ամն և կամ զհա-
րիւրն կացեալ մնացեալ իցեմք 'ի վարս առաքինութե՟,
ոչ եթէ հաւասար ըստ հարիւր ամացն և թագաւորեալ
լիցուք․ և յերկրի աստ մարտուցեալք ոչ յերկրի ընդու-
նիմք ժառանգութիւն, այլ յերկինս ընկալեալ եմք ըզ-
խոստմունս։ Եւ դարձեալ զմահկանացու մարմինս 'ի
բաց ընկեցեալք՝ անապական ընդունելոց եմք զնա։

Արդ որդեակք, մի վհատիք և կարծէք յերկարանալ
'ի նմին կամ մեծ ինչ գործել․ քանզի ոչ են արժանի
անցք արդեան ժամանակիս առ պատրաստեալ փառսն
որ յայտնելոց են․ և մի յերկիրս հայել՝ կարծեսցուք
իբրև 'ի մեծաց ինչ հրաժարեալք, քանզի և սոյն իսկ
բովանդակ ա՟մ երկիրս դուզնաքեայ է քան զերկինս։

Արդ եթէ ամ̃ երկրիս տեարք էաք և 'ի բաց կայաք յամէ, ոչ ինչ դարձեալ արժանի էր և հաւասար առ արքայութեան երկնից. որպէս ոք եթէ արհամարհեսցէ քանքար մի պղնձի, որպէս զի ստասցի քանքարս ոսկիս հարիւր. այսպէս որ տէր է ամ̃ երկրիս, չարժէ զերկնաւորսն: Տես զի եթէ թողեր սակաւ զերկիրս՝ իբրև ոչ ինչ լքեալ, կամ տուն կամ ոսկի բազում թողցէ՝ ոչ պարտի պարծել կամ վհատել: Արժան է մեզ խորհել զի թէպէտ վասն առաքինութեան ոչ թողցուք, այլ յետոյ մեռեալք լքանեմք զայս, և դէպ լինի զի և որոց ոչ կամիմք, որպէս և ժողովողն յիշեաց: Իսկ ընդէր մեք վասն առաքինութեան ոչ թողումք, զի զարքայութիւն երկնից ժառանգեսցուք. վասն այսորիկ և ստանալ ոչ ինչ 'ի մէնջ ցանկութիւն 'ի միտ մի արկցէ: Իսկ զինչ իցէ ստանալ զոր ոչս կարեմք ընդ մեզ առնուլ. և կամ ընդէր իսկ բնաւ զայն չստանամք զոր և առնուլ ոք կարէ ընդ իւր, որ է բարեխորհրդութ̃ի ողջմտութիւն պարկեշտութ̃ի արդարութ̃ի արութ̃ի իմաստութ̃ի սէր աղքատսիրութ̃ի հաւատք 'ի Ք̃ս չարկութ̃ի օտարասիրութ̃ի: Զայս ստացեալ՝ գտցուք զնա առաջի մեր անդ պատրաստիչ վանաց մեզ յերկրին հեզոց և խոնարհաց:

Եւ այսու հաւանեցուցէ այր զինքն մի վհատել, և մանաւանդ եթէ զինքն ծառայ տեառն համարեսցի. և եթէ պարտ է ծառայել տեառն, զոր օրինակ զի ծառայն ոչ իշխէ ասել՝ վասն զի երեկ գործեցի, այսօր ոչ գործեմ, և ոչ զառաջին ժամանակն համարելով դադարեսցէ զառաջիկայ աւուրսն, այլ զօրհանապազ որպէս յաւետարանին գրեալ է՝ զնոյն յօժարութ̃ի ցուցանել զի տեառն հաճոյ լիցի և պատուհասապարտ, այսպէս և մեք կացցուք հանապազօր 'ի կրօնաւորութեանս. գիտասցուք զի եթէ մի օր հեղգասցուք, ոչ վասն անցեալ ժամանակին թողցէ մեզ, այլ վասն ծուլութեան բարկասցի մեզ: Որպէս և յԵզեկիէլէ լուաք. այսպէս և Յուդաս միով գիշերաւ կորուսանէր զանցեալ ժամանակին վաստակսն: Արդ եղիցուք որդիք վարուց և մի ձանձրասցուք. քանզի ունիմք և յայսմիկ զտէրն գործակից և յաջողիչ, որպէս և գրեալ է՝ ամ̃ի որ առաջարկեն կամել 'ի բարիս, յաջողէ ա̃ծ 'ի բարիս. և 'ի չհեղգալն բարիօք է մեզ առաքելական բանիւն բար-

բանել՝ զօրհանապազ մեռանիմք. զի եթէ և մեք իբրև մեռեալք հանապազ այնպէս կեցցուք՝ ոչ մեղանչեմք, քանզի է ասացեալ այսպիսի իմն զի յառնելով հանապազօր համարեսցուք չհասանել մինչև 'ի սպառ աւուրն: Եւ դարձեալ ննջեցեալք չհաւատասցուք զյառնելն, վասն զի անյայտ են և բնութ̃ի իսկ կեանքս մեր և չափաւորեալ հանապազօր յառաջգիտութ̃են: Եւ այսպէս միշտ յուսով և այսպէս կելով ոչ մեղիցուք և ոչ ումեք ցանկասցուք և ոչ ոխս ումեք պահեսցուք և ոչ գանձեսցուք յերկրի, այլ իբրև հանապազ մեռանելով անստացուածք լիցուք և ամենեցուն զամ̃ ինչ թողցուք: Այլ ցանկութ̃ի կանանց և կամ այլ ինչ աղտեղի խորհուրդք զբաղմանց բնաւ ամենևին 'ի մեզ մի բնակեցուսցուք, այլ իբրև յանցաւորէ զերեսս 'ի բաց դարձուսցուք՝ միշտ երկնչելով և հայելով յօր դատաստանին. քանզի յարաժամ երկիւղ մեծ և արհաւիրք տանջանաց լուծանեն զբռնութ̃ի ցանկութ̃ց և զանկեալ ոգին կանգնէ:

Արդ սկսեալք և 'ի վերայ ելեալք ճանապարհին առաքինութ̃ե նկրտեսցուք յոյժ զի հասանել կարասցուք, և մի ոք յետս դարձցի իբրև զկինն Ղովտայ. մանաւանդ զի տէրն ասաց՝ ոչ ոք ձեռն զմաճով արկեալ և յետս դարձեալ ուղղաշիր լիցի յարքայութեանն երկնից: Իսկ դառնալն յետս ոչ այլ ինչ է, այլ զղջանալ և դարձեալ զերկրաւորս խորհել: Եւ մի երկնչիք յորժամ լսէք վասն առաքինութ̃ե և մի զարմանայք վասն անուանն, քանզի ոչ մեկուսի ուրեք է 'ի ձէնջ հաստատիչն, այլ 'ի ներքս 'ի ձեզ են գործքն և դիւրագոյն են իրքն, միայն թէ կամեսցուք եթ: Ոի եթէ հեթանոսք ընդ ծով անցանեն զի դպրութ̃ի ուսանիցին, իսկ մեզ ոչ ինչ են պէտք ոչ 'ի հեռաստան ուրեք երթալ վասն արքայութ̃են երկնից և ոչ ընդ ծով անցանել վասն առաքինութ̃ե, որովհետև ասաց տէրն՝ եթէ արքայութ̃ին երկնից 'ի ներքս 'ի ձեզ է: Ապա եթէ այդպէս է, զկամելն միայն պահանջէ 'ի մէնջ առաքինութ̃ին. վասն զի 'ի մեզ է և 'ի մէնջ հաստատի և 'ի բովս բնութ̃ե իւրոյ եթէ որպէս եղև հաստատուն կացցէ, քանզի եղև բարիոք և ուղիղ յոյժ: Վասն այսորիկ և ՙՆաւեայ որդին Յեսու պատուիրելով ասէր ժողովրդեանն. ուղղեցէք զսիրտս ձեր առ տէր ա̃ծ իսրայէլի: Իսկ Յովհաննէս՝

ուղիղ արարէք զշաւիղս ձեր։ Վասնզի ուղիղ լինել հոգւոյն այս ինքն է՝ բուսոյն բնութ̄ե միաւորականութ̄ե իւրոյ որպէս հաստատեցաւ։ Եւ դարձեալ յորժամ խոտորեսցի և 'ի Թիւրութ̄ե լիցի՝ որ ոչ ըստ բնութ̄ե է՝ յայնժամ չարութ̄ի ոգւոյ ասի։ Արդ թէ այդպէս է, չեն դժուար իրք. զի եթէ կացցուք մնասցուք որպէս եղաքն՝ յառաքինութ̄ե եմք, և եթէ անուղղայս ինչ խորհեսցուք՝ իբրև չար ծառայ տանջեալ լինիմք։ Ո՛ի եթէ արտաքուստ ունէաք էր ստանալ զիրսն, արդարև դժուարին էր. 'այլ թէ 'ի մեզ է, պահեսցուք զանձինս յաղտեղի խորհրդոց. իբրև յաւանդ առեալ զհոգին 'ի տեառնէ պահեսցուք, զի ծանիցէ նա զարարիչն իւր. այսպէս կալ մնալ ոգւոյն որպէս ինքն արար զնա։ Եւ եղիցի մեր մարտ նահատակութ̄ե, զի մի բռնադատեսցէ զմեզ սրտմտութ̄ի և մի յաղթեսցէ մեզ ցանկութ̄ի. քանզի գրեալ է՝ թէ բարկութ̄ի առն զարդարութ̄ի այ̄ ոչ գործէ. և դարձեալ՝ եթէ ցանկութիւն յղացեալ ծնանի զմեղս, իսկ մեղքն կատարեալ ծնանին զմահ։ Եւ այսու կրօնաւորեալք արթուն լիցուք հաստատութ̄բ, որպէս և գրեալ է. ամ̄ զգուշութ̄բ պահեսցուք զսիրտս մեր, քանզի թշնամիս ունիմք անհնարին չարս և խարդախս և ամենագործս գգլւս չարս, և ընդ սոսա է մարտ պատերազմի մեզ, որպէս առաքեալ ասաց. ոչ ընդ մարմին և ընդ արիւն, այլ ընդ իշխանս ընդ պետս ընդ աշխարհակալս խաւարիս այսորիկ ընդ հոգևորս չարութեան յերկնաւորս։ Վասնզի սաստիկ է նոցա բազմութիւն որ զմեօք օդքս են և հեռի ոչ են 'ի մէնջ, և բազում իմն են և ազգի ազգի գունակք կերպարանաց նոցա։ Եւ վասն բնութեան նոցա և փոփոխ կերպարանաց բազում և յերկարապատում են բանք, և մեծ եւս այլոց քան զմերս են վասն այսորիկ պատմութիւնք։ Բայց որ այժմս ստիպէ, հարկ է և մեզ միայն գիտել որ վասն մեր լինին 'ի նոցանէ բազմահնար խարդախութիւնս։

Նախ զայս գիտասցուք զի դևք ոչ եթէ վասն զի դևք կոչին՝ այնպէս հաստատեցան, վասն զի ոչ ինչ չար արար ա̄ծ, այլ և նոքա բարիք հաստատեցան, և անկեալք յերկնաւոր բարեխորհրդութ̄ե և այնուհետև ընդ երկիր թաւալեալք զհեթանոսս պատրեցին առ ուչս երևե-

լով, և ընդ մեզ քրիստոնեայս չար նախանձ բերեալ, զնոյն շարժել կամեցեալ խափանել մեզ զելս երկնաւոր ճանապարհին, զի մի ուստի նոքայն անկանն՝ մեք ելեալք լիցուք։ Աստ որոյ բազում աղօթից և կրօնաւորութե՟ պէտք են, զի թերևս ընկալեալ ոք շնորհս մեկնութեան այսոցիկ՝ գիտել կարասցէ որ վասն նոցայն ինչ է։ Այլ զի են ոմանք ՚ի նոցանէ դոյզն չարք և ոմանք ՚ի նոցանէ չարագոյնք, և վասն որպիսի ինչ գործոց իւրաքանչիւր ոք ՚ի նոցանէ զփոյթն ունիցի, և զիարդ զոք ՚ի նոցանէն կարիցէ հալածել և ՚ի բաց հանել. քանզի բազում են նոցա խարդախութիւնքն։ Քանզի և երանելի առաքեալն և որք ընդ նմայն՝ գիտէին զայսպիսիս ասելով՝ քանզի ոչ եթէ անտեղեակ ինչ եմք խորհրդոց նորա։ Իսկ մեք յորոց իրաց զփորձ առեալ եմք ՚ի նոցանէն, այսոքիւք պարտիմք զմիմեանս ուղղել ՚ի հաստատութիւն։

Այլ ես վասն զի փոքր ՚ի շատէ զփորձ առի ՚ի նոցանէն՝ իբրև որդւոց ասեմ. քանզի նոքա եթէ տեսցեն զքրիստոնեայս ամ՟, մանաւանդ զմիայնակեացս վաստակաւորս յառաջադէմս, նախանձ դնեն, ձեռն արկանեն և փորձեն միշտ՝ շաւղաց գայթակղութիւն դնել, և ընդ նոցա գայթակղութ՟ն խորհուրդք աղտեղիք։ Այլ ոչ է մեզ արժան երկնչել ՚ի նոցանէ որ ինչ ՚ի միտս արկանեն մեր. քանզի աղօթիւք և պահօք և առ ՚ի տէրն հաւատովք անդէն վաղվաղակի անկանին նոքա. այլ և անկեալք՝ ոչ դադարեն, այլ դարձեալ անդրէն յարձակին խորամանկութ՟ և նենգութ՟։ Քանզի յորժամ յայտնապէս և աղտեղի ցանկութ՟ք ոչ կարասցեն պատրել զմեր միտս, դարձեալ այլ ազգ ՚ի վերայ գան. և այնուհետև առ աչս երևելով պատճառանօք արհաւիրս ստեղծանեն՝ այլակերպելով և նմանելով կանանց, գազանաց և սողնոց և անհեդեդ մարդոց և բազմութեան զօրականաց։ Այլ ոչ այսպէս արժան է մեզ երկնչել ՚ի նոցանէ առ աչսն երևելով, քանզի ոչ ինչ են և վաղվաղակի աներևոյթ լինին, մանաւանդ եթէ ոք հաւատովք և նշանաւ խաչին զինքն ամրացուցանէ. քանզի յոյժ համարձակ են ՚ի չարիս և անզանգէտք։ Այլ եթէ այսպէս պատրաստեալք գտցին, և այլով օրինակաւ յարձակին դարձեալ, և պատճառին զապարանիսն ասել և որ յետ ա-

ւորցն գաղտցն է, և ցուցանեն զխիզախս բարձունս մինչև 'ի ձեղունս հասեալ և լայնս մեծութք : Եւ զորս խորհրդովք ոչ կարացին պատրել, յափշտակեցին զանեայ այսպէս առ աչս տեսլեամբ : Ապա թէ այսպէս գտցեն զոգիսն անվրէպ · զգուշացեալ հաւատով և յուսով խորհրդոցն, և այնուհետև գան՝ ածեն 'ի վերայ զփշխանն կուրեանց :

Եւ բազում անգամ այսպիսիս ասէր զնա երևեալս, որպէս և Յոբայն յայտնեաց տէր զբանսարկուն ասելով՝ աչք նորա իբրև զտեսիլ արուսեկի, և 'ի բերանոյ նորա ելանեն ճառագայթք բորբոքեալք, և թօթափին շանթք հրոյ յռնգանց նորա, և ելանէ ծուխ հնոցի բորբոքելոյ և կայծականց հրոյ, և շոգի նորա կայծակունք և բոց 'ի բերանոյ նորա ելանէ : Այսպիսի երևեալ իշխանն դիւաց զարհուրեցուցանէ, որպէս և յառաջին ասացի, մեծամեծս բարբառելով խորամանկն : Որպէս և դարձեալ խայտառակեաց տէրն Յոբայն ասելով՝ քանզի համարեալ է նմա երկաթ իբրև զյարդ, և պղինձ որպէս փայտ փուտ, և համարեալ զծով որպէս զճնճղան և զտարտարոսն անդնդոց իբրև գերի, համարեցաւ ճեմել 'ի յանդունդս : Եւ 'ի ձեռն մարգարէին զի ասաց. ասէ թշնամին՝ հալածեցից հասից. զաշխարհս ամ̃ ըմբռնեցից իբրև զբոյն մի, իբրև զմնացեալ ձուս բարձից : Եւ ամենայնիւ այսպիսիս խրոխտանան, ձեռն արկանել խոստանան, զի թերևս կարասցեն պատրել զաստուածապաշտսն : Այլ մեզ հաւատացելոցս և ոչ այսպէս պարտ է երկնչել 'ի նոցանէն և ոչ առ աչսն երևելով և ոչ հայել 'ի բարբառս ձայնից նոցա, քանզի սուտ են և ոչ ինչ ամենևին զճշմարիտն խօսին : Նա և այսպիսիսն և այլաշափսն խօսելովն, և 'ի չարին խօսելովն և յուսալովն՝ իբրև զվիշապ ձգեցաւ 'ի կարթէ փրկչին և իբրև անասուն զբթողջն կոճէս[1] առաւ, իբրև փախըստական զանգունն շրջշակաւ կապեցաւ և ծակեալ եղև զանգամանաւանդաւ զշրթունս և կապեցաւ 'ի տեառնէ, իբրև ճնճղուկ խաղալիկ եղև 'ի մէնջ. և եղեալ է նա և որ ընդ նովաւ զաչքն իբրև զկարիճս և զօձս կոխան 'ի մէջ քրիստոնէից : Եւ այս է յայտնութն զի-

1 Միւս օրինակին կոճէն :

տութեն մերս ընդդէմ նոցա՝ կրօնաւորութեան զինուորել. քանզի որ զծովն խոստանայր ջնջել և յոչինչ համարել և աշխարհիս ամի գեր՚ի վերոյ լինել, և ահա ոչ կարէ արգելուլ զկրօնս մեր և ոչ զիմ որ խօսիմ զվատթա-րութիւն նորա։ Մի՛ այսուհետև ՚ի միտ առցուք զոր ինչ խօսի նա, քանզի սուտ է. և մի՛ երկիցուք ՚ի նորա առ աչս տեսլենէն, զի և այն սուտ է. քանզի ոչ եթէ ճշմարիտ լոյս է որ ՚ի նոսա երևի, այլ պատրաստելոցն հրոյն նոցա է յառաջակայութիւն տանջանացն, որոց և զկերպարանսն յինքեան բերեն յորում և այրելոց են։ Նյաղքիւք փոխ ձևն զարհուրեցուցանելով զմարդիկ, քանզի երևին և առ նմին աներևոյթք սուզանին և ոչ ումեք վնասեն ՚ի սրբոց, այլ բերեն յինքեանս զնմանութիւն կերպարա-նաց որ ընդունելոց է զնոսա ՚ի պատրաստեալ հուրն։ Վասն որոյ և ոչ այսպէս արժան է երկնչել ՚ի նոցանէ, քանզի շնորհօքն այ ոչ ինչ են ամ հնարագիտութիւն գործոց նոցա. զի նենգաւորք են և խաբեբայք և պատ-րաստ են փոփոխել յամ կերպարանս և ՚ի ձևս նմանել։

Բազում անգամ պատճառին երգովք և սաղմոս ա-սելով առանց երևելոյ, քանզի առնեն յուշ զառ ՚ի գրոցն բանս։ Քանզի յորժամ կարդամքն, նոքա ան-դէն վաղվաղակի իբրև զարձագանքն զմերն բարբառն զոր ընթերցաքն. և բազում անգամ ՚ի քնոյ զարթու-ցանեն զմեզ յաղօթս, և զայս յառաջագոյն առնեն մինչև նմջել անգամ թոյլ ոչ տան։ Եւ է երբեք զի օրինակեն զինքեանս ՚ի կերպարանս միայնակեցաց իբրև երկիւղածք և բարեկարգք և պատճառեն խօսել ըղ-թիւրման մարմնաւոր պատկերաւ, զի կարասցեն խաբել, և այնուհետև զխաբեալսն ՚ի նոցանէ ուր և կամ է ի-րեանց՝ յածեցուցանեն։ Այլ և ոչ այսպէս արժան է հայել ՚ի նոսա, զի թէպէտ և յաղօթս յարուցանեն, և եթէ խրատ տան մի ճաշակել ինչ ամենևին, և եթէ ամբաստան լինել և նախատել ինչ պատճառին զորս գի-տացին ինչ զմէնջ անարգալուրս. քանզի ոչ եթէ վասն երկիւղածութեն և բարեընկալութեն ճշմարտութեն զայս-պիսիս առնեն, այլ զի զպարզամիտսն և զանմեղսն ՚ի զղջումն խոնարհեցուցանեն, և անշահ և անօգուտ արաս-ցեն զկրօնաւորութեան վարսն, և նողկալ տան մարդ-կան վհատութե, իբրև բեռնաւոր իմն և խիստ և ծանրա-

գոյն հնարիւն վարկանել զքաւարանէ կեանս, զի խափանել կարասցեն որք ՚ի նոցանէ գեղեցիկ կրօնիւք վարին ։

Այլ մարգարէն առաքեալ ՚ի տեառնէ եղուկս ասելով աւաղէր զայնպիսիսն. վայ որ արբուցանէ զմերձաւոր իւր պղտոր յետսադարձութեամբ ։ Վասնզի այսպիսի խմաստք զարծոց խորհուրդք յետադարձականք են առ ՚ի յառաքինութե ճանապարհն հանելոյ ։ Իսկ ինքն տէրն վասն իւր, զի թէպէտ և անսուտ բարբառեալ դուքն, քանզի ճշմարիտ ասէին՝ դու ես որդի այ, սակայն պապանձեցուցանէր և արգելոյր ՚ի խօսելոյ, զի մի ընդ ճըշմարտութեան խառն և զիւրեանց չարութիւն սերմանեսցեն, և դարձեալ զմեզ սովորեցուցանէն մի երբէք յայսպիսիս հայել, զի թէպէտ և ճշմարիտս կարծեն ասել ։ Վասնզի յոյժ անվայելուչ են մեզ որք ստացեալ եմք զգիրս զառ ՚ի փրկչէն՝ զազատութիւն, ուսանել ՚ի բանսարկուէն՝ որ ոչ զիւր անգամ զկարգ աստիճանին պահեաց այլ ընդ այլոյ խորհելով ։ Ասն այսորիկ և խօսել զառ զառ ՚ի գրոցն բանս արգելու և ասէ. մեղաւորին ասէ ած՝ վասն էր դու բնաւ պատմես զարդարութիւն իմ, կամ առնուս զուխտս իմ ՚ի բերան քո ։ Վասնզի զամ ինչ առնեն և խօսին և խուճապեն և կեղծաւորեն և խօսին առ ՚ի խաբել զպարզամիտսն և զանմեղսն, և թնդիւնս առնեն և ծափս հարկանեն, կայթեն և ծիծաղին անմտութբ և չնչեն. և եթէ ոք ոչ հայեսցի ՚ի նոսա, այնուհետև լան և ողբան իբրև պարտեալք ։ Այլ զի տէրն ած պապանձեցուցանէր զդևսն, իսկ մեք ուսեալք ՚ի սրբոցն՝ արժան է առնել որպէս և նոքայն առնէին՝ նմանել նոցա արութեանն. քանզի և նոքա զայս ուսանելովն ասէին՝ ՚ի հակառակել մեղաւորին առաջի իմ խուլ եղէ և խոնարհեցայ, լռեցի ՚ի բարութենէ. և դարձեալ՝ թէ ես որպէս խուլ զի ոչ լսէ և իբրև համր զի ոչ բանայ զբերան իւր. եղէ իբրև զմարդ որ ոչ լսէ ։ Իսկ եթէ այդպէս է, և մեք մի լռիցուք նոցա, զի թէպէտ և յաղօթս յարուցանեն և եթէ խօսեսցին վասն պահոց, այլ յառաջադրութեան կրօնից մերոց միայն միտ դիցուք, և մի ՚ի նոցանէն պարտեալ գտցուք որ զամ ինչ գործեն խաբդախութբ ։ Այլ ոչ արժան է երկնչել ՚ի նոցանէ. զի թէպէտ և յարձակել կարծեն և թէ մահուամբ սպառնան, զի անկարք են և ոչ զօրեն, բայց միայն սպառնան ։

Արդ ահա վասն այսորիկ ասացի փոքր ՚ի շատէ, և դարձեալ զնոյն ասել ընդարձակագոյնս ոչ դանդաղեցայց, զի հաստատուն և անվրէպ լիցի ձեզ յիշատակն. զի տեառն գալստեան կործանեաց զթշնամին, տկարացան զօրութիւնք նորա, և վասն այսորիկ ոչ կարէ. սակայն իբրև բռնաւոր և կործանելովն յերկիր ոչ դադարէ, այլ գոռեայ միայն բանիւքն սպառնալ. Եւ զայս ամէն ոք ՚ի մէնջ այսպէս խորհեսցի և ապա կարէ արհամարհել զդևսն. Զի եթէ այսպիսի մարմնով յօդեալ էին դևք որպէս և մեքս ՚ի կար զօրութեան, պիտոյր ասել նոցա եթէ ղօղեալս զմարդիկ ՚ի թաքուստ ոչ գտանեմք, և զորս գտանեմք մեռանեմք. Եւ կարէաք և մեք դարձեալ թաքչել ՚ի նոցանէն դրօք ամրութեան փակելովք. Արդ զի ոչ եղեն այսպէս, այլ և դրօք փակելովք կարեն մտանել, և յամ օդս գտանին նոքա և նոցա բանսարկու առաջնորդն, և են նոքա չարակամք և առ վնասել պատրաստք. որպէս ասաց փրկիչն՝ թէ ՚ի սկզբանէ մարդասպան է բանսարկուն չարութեան հայր. և կամք մեք այժմ և ընդդէմ նորա զինուորիմք կրօնիւքս. Եւ յայտ է թէ ոչ ինչ կարեն առնել. քանզի ոչ տեղի արգելու զնոսա վնասս զմէնջ կարկատել և ոչ առ սիրելիս ունին զմեզ թէ խնայեսցեն, ոչ բարեսէրք են եթէ ուղղեսցեն, այլ անհնարին չարք են, և ոչ ինչ է նոցա այլ փոյթ կամաց որպէս վնասել ծառայիցն և բարեպաշտից. Եւ վասն զի ոչ ինչ կարեն առնել, վասն այսորիկ և ոչ առնեն ինչ, բայց միայն սպառնան. զի եթէ կարէին՝ ոչ յապաղէին, այլ նոյնժամայն գործէին զչարն, պատրաստ ունելով առ այս զյօժարութիւն և մանաւանդ առ մեզ. Արդ ահա եկեալ ՚ի մի վայր զնոցանէ խօսիմք, և տեղեակ են զի յառաջադիմութիւս մերով տկարանան նոքա. Արդ եթէ ունէին իշխանութիւն, ոչ ումեք ՚ի մէնջ ՚ի քրիստոնէից տային կեալ. քանզի ախորժ թուի մեղաւորի ամբարշտութիւն. Արդ վասն զի ոչ ինչ կարեն առնել, վասն այսորիկ զինքեանս խոցոտեն, զի ոչ ինչ կարեն առնել որում սպառնան. Այլ և զայս արժան է մեզ զմտաւ ածել առ ՚ի չերկնչել ՚ի նոցանէ. զի թէ զօրութիւն գոյր ՚ի նոսա, ոչ գային բազմօք և ոչ առաջօք տեսիլս ինչ առնէին և այլակերպ նմանութեան հնարս խնդրէին. այլ շատ մի ոք միայն գայր ՚ի նոցանէն և առ-

նել զոր ինչ և կամիցին։ Այլ մանաւանդ զի ամ ոք որ իշխանութիւն ունի, ոչ առ աչս տեսլեամբ սպառնայ և ոչ բազմօք զարհուրեցուցանէ, այլ անդէն վաղվաղակի յոր֊ ժամ կամի զիշխանութիւն 'ի գործ արկանէ։ Նոյն դևք վասն զի ոչ ինչ կարեն առնել, խաղան իբրև ստուերք, փոփոխին կերպարանօք և զմանկունս երկեցուցանեն բազմութեամբ առ աչս երևելով և այլանման կերպարա֊ նօք, և վասն այսորիկ առաւել ևս արհամարհելիք են վասն տկարութեան։ Վասնզի ճշմարիտ հրեշտակն որ ա֊ ռաքեցաւ 'ի տեառնէ վասն ասորեստանեայցն, ոչ ինչ կարօտացաւ բազմութեան և ոչ առ աչս ինչ երևելոյ ար֊ տաքուստ և ոչ թնդմանց և կայթմանց, այլ հանդար֊ տութեամբ անդէն զիշխանութիւն 'ի գործ արկեալ սատա֊ կեաց վաղվաղակի հարիւր ութսուն և հինգ հազար այր։ Իսկ դևք ոչ ինչ կարեն, որպէս դևքն, սոքա ջանան առ աչս երևելոյ փորձիւն երկեցուցանել։

Այլ թէ ոք զՅոբայն խորհեսցի և ասասցէ՝ թէ ընդ֊ էր իբրև ել բանսարկուն զամ ինչ գործեաց վասն նորա և 'ի ստացուածոցն զնա լերկեաց և զմանկունս նորա կո֊ տորեաց և եհար զնա չարաչար հարուածովք, և գի֊ տասցէ այսպիսին եթէ ոչ էր սատանայ որ զայս կարաց առնել, այլ ած որ ետ 'ի ձեռս զՅոբ վասն փորձութեան։ Այլ իբրև ոչ ինչ կարէր առնել, խնդրեաց և ապա ա֊ ռեալ այնուհետև իշխանութի գործէր։ Որպէս և յայսմ ևս յոյժ ըստգիւտելի եղև թշնամին. քանզի թէպէտ և կամէր, սակայն ոչ իւիք ոչ կարաց առնել ինչ առնն արդարոյ. զի եթէ կարացեալ էր՝ ոչ խնդրէր, և խնդրե֊ լոյն ոչ մի անգամ միայն, այլ և երկիցս երևեցաւ տկա֊ րութիւն և ոչ ինչ զօրել. Այլ ոչ ինչ է զարմանալի եթէ 'ի վերայ Յոբայ ոչ զօրեաց, որ և 'ի վերայ անասնոց անգամ ոչ եղև ինքնակամ եթէ ոչ էր թոյլացուցեալ։ Նոյն և ոչ խոզիցն ունին իշխանութի, քանզի երկնչէին որպէս յաւետարանին գրեալ է, զի աղաչէին եթէ գո֊ նեայ 'ի խոզսն հրաման տուր մեզ երթալ։ Արդ և ե֊ թէ 'ի վերայ խոզից անգամ ոչ ունին իշխանութիւն, որչափ ևս առաւել ոչ իշխեն մարդկան որ ըստ նմանու֊ թեան պատկերի կերպարանեաց այ հաստատեալ է։ Յայս միայն արժան է երկնչել և զսոսա արհամարհել և ընդ֊ ամենևին զնոսա մի ինչ համարել. այլ ևս առաւել որ֊

չափ նոքա զայս առնեն, մեք ընդդէմ նոցա զինուորես-ցուք զկրօնս միայնաւորութե, քանզի մեծ զէնն են վարք ուղիղք ընդդէմ նոցա և առ ա͞ծն հաւատք։ Վասնզի երկնչին նոքա 'ի կրօնաւորաց, 'ի պահոցն 'ի հսկմանէն յաղօթիցն 'ի հեզութենէն 'ի հանդարտութենէն 'ի չար-ծաթսիրութենէն 'ի չսնապարծութենէն 'ի խոնարհութենէն յաղքատասիրութենէն և զողորմութիւս առնելով և զտուրս տալով, զանբարկութի և 'ի վեր քան զ͞ամ զառ 'ի Քս բարեպաշտութի։ Վասն այսորիկ զ͞ամ ինչ առնեն, զի մի գտցին որք կոխիցեն զնոսա. քանզի գիտեն զշնորհս փրկչին տուեալ հաւատացելոց ընդդէմ նոցա զասա-ցեալս նորա՝ եթէ ետու ձեզ իշխանութիւն կոխել 'ի վերայ իժից և կարճաց և 'ի վերայ ա͞մ զօրութե թշ-նամւոյն։

Արդ եթէ զլինելոց ինչ յառաջանան ասել կեղծա-ւորութք, մի ոք ինչ գրեսցէ զնոսա. քանզի բազում անգամ յառաջ աւուրբք՝ որք յետ աւուրց ապա գան եղբարք. և առնեն սոքա զայս ոչ իբրև թէ զի ա-խորժելով զլսողս, այլ զի հաւատալ յինքեանս հաւա-նեցուսցեն զնոսա և այնուհետև ընդ ձեռամբ արկեալ կորուսցեն։ Վասն որոյ ոչ է արժան հայել 'ի նոսա. այլ թէպէտ և ասեն ինչ, անդրէն դարձուցանել արժան է՝ միթէ պիտո՞յ ինչ իցէ մեզ այս։ Զինչ զարմանալի է եթէ փոյթ յանձին կալեալք կարեն թեթև և նուրբ բնութք առաւել քան զմարդիկ ընթանալ որ յառաջ-արկին 'ի ճանապարհ երթալ. քանզի իբրև տեսանեն զնոսա, յառաջեն ընթացիւք և պատմեն. զի զայս և ձիոց նմանիւք ոք կարէ առնել և ասել զնմանէ յառաջ որ գնան ոտիւք։ Որպէս և ոչ յայսմիկ զարմանալ ինչ պարտ է ընդ նոսա, քանզի ոչ ինչ յանեղելոց գիտեն, այլ ա͞ծ միայն է որ զ͞ամ ինչ գիտէ յառաջ քան զլի-նելն իւրեանց. իսկ սոքա զոր ինչ տեսանեն, իբրև գողք վաղվաղեն ընթացիւք և պատմեն։ Ո՛չ'ս քան՝ զի ումանց այժմ զմերս, զի 'ի մի վայր եկաքս և խօսիմք զնոցանէ, գիտուն առնեն յառաջ մինչև ոք 'ի մէնջ երթեալ պատ-մեսցէ։ Զայս և մանուկ յառաջընթաց կարէ առնել և յառաջել քան զհեղգն և զյամրն։ Զոր ասեմս այս-պիսի ինչ է. եթէ ոք սկիզբն արարեալ իցէ գնալ 'ի թեբայեցւոցն և կամ յայլմէ աշխարհէ յառաջ մինչև

ակնկալն առաջարեալ է գնալ. ոչ գիտէին թէ գնայցէ. նախ իբրև գնայն, տեսեալ զնա յառաջին և մինչև եկեալ է պատմեն. և այսպէս դէպ լինի յետ աւուրցն և ասա գայ: Նա բազում անգամ զի ոտք գնանն, յորժամ անդրէն դարձեալ լինին՝ սուտ լինին ոտքս: Այսպէս և վասն ջուրց գետոյն է երբէք զի շատ խօսէին, քանզի տեսանէին բազում անձրևս եղեալ 'ի կողմանս երկրին Եթովպացւոց. և գիտացեալ զի անտի լինի գետոյն յարուցումն, յառաջ մինչև հասեալ է ջուրն յԵգիպտոս՝ վաղվաղեն պատմել: Զայս և մարդք կարէին առնել եթէ կարէին այնչափ ընթանալ որպէս և նոքայն: Նա որպէս դեւն Պաւլթայ ելեալ 'ի բարձրաւանդակ վայրն առաւել քան զայն՝ որ մինչդեռ 'ի Նիւս և 'ի խոնարհ երկրին էր՝ յառաջագոյն տեսանէր զայն որ գայրն. և նոքն իսկ որ յառաջընթացն եղեալ էր՝ առնէր վաղ քան զայլս ոչ զեղեալս, այլ զեղեալսն: Այնպէս և ոգիս յանձինս ունին աշխատ լինել և ազդ առնել մարդկանց, մինչ զի պատրել կարասցեն: Արդ եթէ յառաջգիտութի է 'ի մէջ այսորիկ, խորհեսցի ինչ վասն ջաւրցն և կամ վասն ճանապարհացն: Ստեցին դևք և խաբեցան այնոքիկ որ միտ եդին նոցա:

Այսպէս եղև և հեթանոսացն գիտութիւք և այսպէս զառաջինն մոլորեցան 'ի դիւաց: Այլ զի թէպէտ և այսպէս էր, դադարեալ եղև մոլորութիւն. քանզի եկն տէրն որ հանդերձ մոլորութեամբ նոցա և զդևսն խափանեաց. քանզի ոչ ինչ գիտեն յինքեանց, այլ իբրև գողք զոր յայլս տեսանեն, զայս բանս 'ի մէջ արկանեն. և առաւել դիպուածովք են և ոչ յառաջագէտք: Այսն որոյ զի թէպէտ և ճշմարիտ ինչ երբէք այսպիսի ասիցեն, և այսպէս մի ոք զարմասցի ընդ նոսա. քանզի բժիշկք ըզփորձ առեալ գիտութեան ախտից, յորժամ տեսանեն յայլում ումեք զնոյն ախտ, բազում անգամ դիպեցուցեալ 'ի սովորութենէն յառաջագոյն ասեն. և նաւավարք և մշակք դարձեալ 'ի սովորութենէն գիտեն, տեսանելով զօդոցն դիրս յառաջագոյն ասեն թէ պղտորելոց են յանխնայութի և կամ 'ի խաղաղութի. և ոչ վասն այսորիկ ոք զնոսա յածեղէն հօգւոյն ասասցէ զյառաջաբանութիւն, այլ 'ի տեղեակ փորձութէն և 'ի սովորութենէ: Այսն արդ և դևք եթէ զնոյն երբէք գիտե-

ցուցեալ յառաջագոյն տեսանցեն, և վասն այսորիկ ոք մի ինչ զարմասցի ընդ նոսա և մի միտ դիցէ նոցա: Վասնզի զինչ օգուտ է այնոցիկ որ լսեն 'ի նոցանէ գիտել յառաջ աւուրքք որ լինելոցն է. զինչ փոյթ է զայսպիսեացս և կամ զինչ պէտք են զայսպիսիս գիտել, զի թէպէտ և ճշմարիտ գիտիցէ: Վասնզի ոչ եթէ գիտելն զնոսա առաքինութեան ինչ գործ է և բարի բարոյից է յայտնութիւն. քանզի ոչ ոք 'ի մէնջ դատապարտեալ լինի եթէ ընդէր ոչ գիտէս, և ոչ ոք երանեալ լինի զի ուսաւ և գիտաց: Այլ յայտնի են դատաստանք իւրաքանչիւր ուրուք, եթէ զհաւատոն պահեաց և զպատուիրանսն մտադիւրութ̃ ընկալաւ: Ուստի ոչ է արժան փոյթ առնել զայսցանէ և ոչ վասն այսորիկ զանձն 'ի վայր արկանել և աշխատ լինել զի կանխաւ ինչ գիտասցուք, այլ զի ա̃յ բարւոք հաճոյ լիցուք: Եւ յաղօթս արժան է կեալ ոչ զի յառաջ ինչ գիտասցուք և ոչ զայս վարձ ընդ կրօնաւորութեն պահանջել, այլ զի յաջողիչ լիցի մեզ տէր յաղթութ̃ի տալ առ բանսարկուն: Ապա եթէ միանգամայն և զայս ևս գիտել մեզ փոյթ ինչ լիցի, սրբեսցուք զխորհուրդս մեր. քանզի ես հաւատամ եթէ սրբեալ լիցի հոգին յա̃մ կողմանց և ըստ բունոյ բնութ̃ե իւրոյ գտցի, կարէ առաւել թափանցանց լինելով ընդ տեսիլս և հեռագոյն ևս քան զդևսն տեսանել. քանզի ունի յինքեան զտէրն յայտնիչ, որպէս Եղիսէին էր այն որ տեսանէրն ընդ Գեհեզայն որ երթեա շուրջ զիւրեաւ պարսպեալ զօրսն:

Արդ յորժամ եկեսցեն առ մեզ գիշերի և կամիցին զառաջայայտն ինչ ասել և կամ ասասցեն եթէ մեք եմք հրեշտակք, մի անսայցէք քանզի ստեն. և կամ թէ գովեսցեն զկրօնս ձեր և երանեսցեն զձեզ, մի լսէք և մի ամենևին համարէք ինչ զնոսա. այլ կնքեսցէք զձեզ և զտունն և յաղօթս կացէք և տեսանիցէք զնոսա աներևոյթ եղեալ, քանզի երկիւղածք են և երկնչին յոյժ 'ի նշանէ տէրունականն խաչին: Վասն զի և զնոսա յինքենէ 'ի բաց մերկանալով խայտառակեաց փրկիչն: Եւ եթէ լրբեալք կայցեն և կաքաւիցեն ազգի ազգի կերպարանօք առ աչս տեսլեամբքն, մի երկնչիք և մի սարսէք և մի իբրև ընդ բարիս հայիցէք. քանզի զչարեացն և զբարեացն զգալուստն դիւրաւ հնար է գիտել ա̃յ

չնորհօքն այսպէս ։ Վասնզի սրբոցն յանդիմանն տեսիլքն ոչ լինի պղտորեալ խռովութ̃բ ․ քանզի ոչ հակառակեսցէ և ոչ աղաղակեսցէ և ոչ ոք լուիցէ ձայն ինչ 'ի նմանէ, այլ հեզութ̃բ և հանդարտութ̃բ լինի այսպէս, մինչև ամենայն վաղվաղակի խնդութ̃ի և ցնծութ̃ի լինել և քաջալերութիւն հոգւոյն ։ Վասնզի է ընդ նոսա տէրն՝ որ է մեծ ուրախութ̃ի, ա̃յ հօր զօրութ̃ին, և խորհուրդք նորա առանց խռովութեան և առանց ալեաց կան մնան, մինչև պայծառ լուսաւորութ̃բն զնա 'ի ձեռն տեսողացն տեսանել ։ Վասնզի փափաքումն ա̃ծութ̃ն և պատրաստելոցն 'ի նմա մտանել, կամ իբրև մերձեցի՝ ընդ նոսա գնասցէ ․ ապա եթէ իբրև զմարդիկ ոք երկիցէն զբարեաց տեսիլն, ամենայն վաղվաղակի երևեալքն բառնան զերկիւղ սիրով, որպէս արար Գաբրիէլ Զաքարիայի և որ երևեցաւ հրեշտակն կանանցն յա̃ծընկալ գերեզմանին և հովուացն, ասելով յաւետարանին՝ մի երկնչիք ․ քանզի է երկիւղ նոցա ոչ 'ի զարհուրումն ոգւոց, այլ 'ի յայտնութ̃ի գիտութ̃ե լաւ և ընտիր գալստեանն ․ այսպիսի է սրբոցն տեսիլս ։

Իսկ չարացն 'ի վերայ յարձակումն և առաջօք տեսիլքն լի են խռովութ̃բ և թնդմամբ և հնչմամբ և աղաղակաւ, որպէս լինի մանկանց տղայոց անխրատից և զողոց շարժմունք ։ Ուստի ամենայն վաղվաղակի արհաւիրք լինին ոգւոցն, խռովութ̃ի և անպատրաստութիւն խորհրդոցն խաւարին և ատելութիւն առ կրօնաւորս, ձանձրութ̃ի տրտմութ̃ի և յիշումն ընտանեաց և երկիւղ մահու և ամենայն ցանկութ̃ի չարեաց և լքումն լուծումն յառաքինութ̃է և բարուցն անառակութ̃ի ։ Յորժամ տեսջիք զք̃ յայսպիսեաց աստի՝ երկնչիջիք ․ և եթէ ամենայն վաղվաղակի երկիւղն բարձեալ լիցի, և եղիցի փոխանակ այնր խնդութ̃ի անպատում և ուրախութիւն հոգւոյ և քաջալերութ̃ի և հանգիստ և խորհրդոցն խաղաղութ̃ի, և այլ ևս որ յառաջին ասացի՝ արութ̃ի և սէր առ ա̃ծ, քաջալերեցարուք և յաղօթս կացէք ․ քանզի խնդութ̃ի և խաղաղութ̃ի և բարի դիրք ոգւոցն ցուցանեն առ ձեզ զեկելոցն սրբութ̃ի ։ Այսպէս Աբրահամ իբրև ետես զտէր ուրախ եղև, և Յովհաննէս իբրև լուաւ զձայն ա̃ծածին կուսին խաղաց խնդութ̃բ ։ Իսկ եթէ յերևել ուրուք խռովութ̃ի լիցի և թնդիւն ար֊

տպքուստ և առ աչօք տեսիլ աշխարհաւորք և սպառնումն մահու և որ ինչ յառաջին ասացի, գիտակ լինիջիք զի չարեացն է յարձակումն խաղաղութեն ։

Եւս և այս նշանակ ձեզ լիցի գիտել . յորժամ կայ-ցեն մնայցեն ուրուք ոգիքն յերկար զարհուրեալ, այս գիտելուստ թշնամեացն է, քանզի ոչ կարեն 'ի բաց բառ-նալ զայսպիսի երկիւղ դևքն, որպէս արար Մարիամայ մեծ հրեշտակապետն և Զաքարիա և որ երևեցաւ կա-նանցն 'ի սուրբ գերեզմանին ։ Այլ առաւել յորժամ տեսանեն զարհուրեալս, աճեցուցանեն զառաջօք տե-սիլսն, զի մեծապէս սարսեալ երկեցուցանիցեն զնոսա . և այնուհետև 'ի վերայ յարձակեալ խաղալիկ առնեն ասելով՝ երկիր պագէք ։ Զի և զհեթանոսս այնպէս մո-լորեցուցին . քանզի այսպէս համարեալ եղեն առ նոսա սուտանուն աստուածքն ։ Իսկ մեզ ոչ ետ թոյլ տէր պատրել 'ի բանսարկուէն, որ երբեմն նմա այսպիսի առ-աչօք տեսիլ առնելով ասաց՝ երթ յետս, սատանայ, քանզի տեառն այ քում երկիր պագցես և զնա միայն պաշտեսցես ։ Արդ ևս քան զևս վասն այսորիկ արհա-մարհեալ լիցի 'ի ձէնջ արհամարհեալն ։ Քանզի որ ա-սացն տէրն՝ մեզ յօգնութիւն արար զայս, զի 'ի մէնջ լուեալ դևքն այսպիսի բարբառս՝ յետս դարձցին վասն տեառն որ 'ի ձեռն մերոյն սաստէ նոցա ։ Եւ ոչ է ումեք արժան պարծել զդևս հանելով և ոչ վասն բժշկութե ամբարտաւանել և ոչ ընդ այն միայն զարմանալ որ զդևսն հանէ և արհամարհել զայն որ ոչն հանէ, այլ զամ ուրուք զգեղեցիկ կրօնաւորութիւն գիտասցէ և ապա կամ նմանեալ հաւասարեսցէ, կամ ուղղեսցէ ։ Քանզի զի առնելն նշանս ոչ մեր է, այլ փրկչին գործ է . զի ա-շակերտացն ասէր՝ եթէ մի ուրախ լինիք զի այսք հնա-զանդին ձեզ, այլ զի անուանք ձեր գրեալ են յերկինս ։ Քանզի անուանցն յերկինս գրել վկայութի է մերոյ առաքինութե և վարուց . իսկ զդևսն հանել տուողին փրկչին են շնորհք ։ Ուստի և այնոցիկ որք ոչ առաքինու-թեամբքն, այլ նշանօքն պարծէին և ասէին՝ ո՞չ յանուն քո դևս հանաք և քո անուամբդ զօրութիւնս բազումս արարաք, ետ պատասխանի և ասէ . ամէն ասեմ ձեզ՝ ոչ գիտեմ զձեզ . քանզի ճանաչէ տէր զճանապարհս ամբարշտաց ։ Եւ 'ի վերայ ամի յաղօթս արժան է կալ,

որպէս յառաջին աւուրն, և ընդունել շնորհս մեկնութեան հոգւոյ սրբոյ և գրեալն է՝ մի՛ ամ հոգւոյ հաւատայցուք:

Արդ վասն զի կամեցայ լսել և մի ինչ յանձնէ ասել, և զի մի յետ այսորիկ կարծեսջիք ասել ինչ ընդ վայր, այլ 'ի փորձ տեղեկութեան և 'ի ճշմարտութեան հաւատասջիք ինձ զայս պատմել ձեզ: Վասն այսորիկ թէպէտ և անմիտ եղէց, այլ գիտէ տէր որ տայ զխորհրդոց սրբութիւն, և զի ոչ վասն իմ ինչ, այլ փոխանակ ձերոյ սիրոյդ և յօժարութեան որ ինչ տեսի զգիւաց զհնարագիտութիւն գործոց, և զայս դարձեալ ասեմ: Քանիցս անգամ երանեցին զիս, և ես նզովեցի զնոսա յանուն տեառն. Քանիցս անգամ յառաջագոյն պատմեցին ինձ վն ջուրց գետոյն, և ես ասացի զնոսա՝ թէ զի հող է ձեր վասն այսօցիկ: Եկին երբեմն սպառնալով և պատեցին զիս իբրև զինուորք սպառազինութեան և ձիովք, և երբեմն գազանօք և սողնօք լի արարին զտունս, և ես սաղմոսէի՝ սոքա կառօք և երիվարօք, այլ մեք յանուն տեառն այ մերոյ մեծք եղիցուք. և աղօթիւք նոքա յետս երթեալ լինէին: Եկին երբեմն 'ի խաւարչտի լոյս բերեալ առաջօք տեսիլ և ասէին՝ եկայք քեզ լոյս առնել, Անտոնիէ: Իսկ ես կափուցանելով զաչս յաղօթս կայի, և անդէն վաղվաղակի շիջաւ լոյսն ամպարշտաց: Իսկ յետ սակաւամսոց եկին իբրև սաղմոս ասելով և խօսելով իբրև 'ի գրոց, և ես իբրև խուլ ոչ լսէի: Իսկ շարժեցին երբեմն զխցիկն իմ, և ես յաղօթս կայի անշարժ խորհրդովք. և դարձեալ յետ այսորիկ եկեալ ծափս հարկանէին, ճչէին կաքաւէին. իբրև յաղօթս կացի և 'ի կողմ անկեալ կայի և ընդ միտս սաղմոս ասէի, անդէն վաղվաղակի սկսան ողբալ և լալ իբրև լքեալք և տկարացեալք. և ես փառաւորեցի զտէր որ կործանեաց և խայտառակեաց զհանդգնութիւն և զմոլորութիւն նոցա:

Իսկ երևեցաւ երբեմն դև մի յոյժ բարձր հանդերձ առաջօք տեսլեանն և իշխեաց ասել. ես եմ զօրութիւն այ և ես եմ յառաջգիտութիւն մատակարարութեան խնամոց, զինչ կամիս թէ շնորհեցից քեզ: Իսկ ես յանժամ առաւել փչեցի ընդդէմ նորա զՔս անուանելով, և տանջել կամեցայ զնա և կամէի հարկանել. և վաղվաղակի այնչափին և այնպիսին հանդերձ ամ դիւօքն ինքնովք 'ի միջոյ 'ի բաց ջնջեցաւ յանուն Քսի: Իսկ եկն

երբեմն 'ի պահս խնամ իբրև 'ի կերպարանս միայնա-
կեցի նենգաւորն, և առաջօք տեսիլ 'ի ձեռին բերեր
հաց, և խրատ տայով ասէր. առ կեր և դադարեա 'ի
բազում վաստակոցդ, քանզի դու մարդ ես և տկարա-
նալոց ես: Այլ իբրև գիտացի զնորա զարմանամտ խար-
դախութիւն յոտն կացի կալ յաղօթս, և նա ոչ կարաց
ժոյժ ունել, քանզի նուաղեալ պակասեաց և ընդ դուրսն
որպէս զծուխ ելանելով երևեցաւ: Բազմիցս անգամ
յանապատին առաջօք տեսիլ ոսկւոյ եցոյց, զի մերձե-
ցայց և տեսից. իսկ ես ընդդէմ նորա սաղմոս ասէի, և
նա հալածեալ լինէր: Բազում անգամ հարեալ լինէի
տանջանօք. և ես ասէի՝ ոչ ինչ մեկնեսցէ զիս 'ի սիրոյն
Քրիստոսի, և նոքա այնուհետև զմիմեանս տանջէին: Այլ
ոչ եթէ ես էի որ դադարեցուցանէի զնոսա և խափա-
նէի, այլ տէրն էր որ ասացն՝ տեսանէի զսատանայ որպէս
փայլակն զի անկանէր յերկնից: Այլ ես, որդեակք, յիշե-
ցուցանեմ ձեզ՝ զառաքելականն բանն յանձն առեալ,
զի դուք ուսջիք մի ձանձրանալ 'ի կրօնաւորութեան և մի
երկնչել 'ի բանսարկուէն և կամ 'ի դիւաց նորա ա-
ռաջս տեսլեանն:

Այլ վասն զի եղէ 'իբրև անմիտ պատմելով, և դուք
ընկալարուք զայս առանց երկիւղածութեան ձեր և հաւա-
տացէք, քանզի ոչ ստեմ: Բախեաց ումն երբեմն 'ի միա-
ւորաստանին զիմ խցկանն զդուրսն. և ելեալ արտաքս
տեսի զոմն երկայն և բարձր զի երևէր. ապա իբրև հար-
ցի թէ ով ես դու, ասէ՝ ես եմ սատանայ: Այլ ապա
իբրև ասացի ես թէ զի եկեալ ես այսր, ասէր նա՝ թէ
զի մեղադիր լինին ինձ միայնակեացք, և այլ ամ քրիս-
տոնեայք զի նզովեն զիս ժամու ժամու: Այլ ես իբրև
ասացի նմա, իսկ ընդդէ՞ր աշխատ առնես զնոսա, ասէ ցիս՝
եթէ չեմ ես պատճառք նոցա, այլ ինքեանք զինքեանս
խռովեցուցանեն, զի ես տկար եղէ. ոչ ընթերցան՝ զի
թշնամոյն պակասեաց սուր իսպառ, և զքաղաքս աւե-
րեցեր. և ոչ ևս գոյ իմ տեղի, ոչ նետ և ոչ քաղաք.
ամ ուրեք քրիստոնեայք եղեն. այսուհետև անապատս
լի է միայնակեցօք. անձանց իւրեանց զգոյշ կայցեն և
մի զուր տարապարտուց զիս նզովեսցեն: Յայնժամ ես
զարմացեալ ընդ շնորհսն տն ասացի ցնա. հանապազ
ստուտ ես և ոչ երբէք խօսեցեալ ես զճշմարտութիւն,

սակայն և այժմ զայս ոչ կամեցեալ ասացեր. քանզի Ք՛ս իբրև եկն, եբեկ զքո զօրութիւն և կործանեաց և մերկացոյց։ Իսկ Նա իբրև զանուն փրկչին լուաւ, ոչ կարաց տանել զկիզումն 'ի Նմանէ, աներևոյթ լինէր։

Արդ եթէ ինքն իսկ բանսարկուն խոստովանի ոչ ինչ կարել առնել, պարտ է ամենևին արհամարհել զնա և զդևսն. քանզի թշնամին հանդերձ իւրովք չարեօքն այսպիսի իմն ունի խարդախութիւն. և մեք ուսեալք զնոցա տկարութիւն կարեմք արհամարհել զնոսա այսպիսի օրինակօք։ Մ՛ի յառաջ անկցուք խորհրդովքս և մի դիցուք յոգիս մեր արհաւիրս և մի ստեղծցուք 'ի մեզ երկիւղս, և մի ասասցուք թէ մի արդեօք դև եկեալ յետս հարցէ զիս, և մի արդեօք 'ի վեր առեալ զարկուցէ զիս և կամ յանկարծակի 'ի վերայ հասեալ խռովեցուցէ զիս։ Ո՛չ ամենևին զայս և մի 'ի միտ ածցուք և մի տրտմեսցուք իբրև կորուսեալք, այլ առաւել քաջալերեսցուք և ուրախ լիցուք հանապազ իբրև ապրեալք, և խորհեսցուք 'ի հոգիս մեր զի տէր ընդ մեզ է որ պարտեաց և խափանեաց զնոսա. և խորհեսցուք հանապազ ընդ միտ ածելով թէ տէր ընդ մեզ է, ոչ ինչ առնեն մեզ թշնամիքն։ Քանզի զան և յորպիսի իրս գտանեն զմեզ՝ և նոքա այնպէս լինին առ մեզ, և որպիսի խորհուրդս գտանեն 'ի մեզ՝ այնպէս և նոքա առաջի տեսիլս նմանեցուցանեն. եթէ երկուցեալս և խռովեալս գտանեն, անդէն վաղվաղակի նոքա իբրև գողք զտեղին անպահապան գտեալ 'ի վերայ հասանեն. և զոր ինչ մեք 'ի մեզ խորհեալ լինիմք՝ զայս նոքա վերադիրօք առնեն։ Քանզի եթէ տեսանեն զմեզ երկուցեալս և զարհուրեալս, մեծապէս աճեցուցանեն զերկիւղն առաջի տեսլեամբք և սպառնամամբք, և այնուհետև յայսոսիկ տառապեալ հոգին հարեալ լինի։ Այլ եթէ 'ի խնդութե՛ տեառն գտցեն զմեզ և խորհեցեալս վասն պատրաստեալ բարեացն և ընդ միտ ածեալ զտէրունականսն և ընդ միմեանս խօսեցեալս թէ ա՛մ ինչ 'ի ձեռին տեառն է, և ոչ ինչ կարէ դև առնել քրիստոնէի, և բնաւ ամենևին իշխանութիւն ումեք ոչ ունի, իբրև տեսանեն այսպիսի խորհրդովք անվթար պարսպեալ զոգիսն՝ երթան զնոսա ամաչեցեալք։ Այսպէս և զՅոբ իբրև ետես թշնամին ամրութ՛բ պարսպեալ՝ 'ի բաց մեկնէր 'ի նմանէ, և զՅուդա մերկ 'ի յայսցանէ գտեալ գերեաց։

Արդ եթէ կամիք արհամարհել զթշնամին, միշտ զմտաւ խորհեցարուք, և ուրախ լիցի հանապազ հոգին յուսովն, և տեսցուք իբրև զծուխ զխաղս դիւացն և առաւել փախուցեալս զնոսա և ոչ զկնի մեր դարձեալս. քանզի յոյժ երկչոտք են նոքա որպէս յառաջն ասացի, ակն կալեալք հանապազ խուրեանց պատրաստեալ հրոյն: Բայց և զայս առ 'ի չերկնչել 'ի նոցանէն իբրև հաստատուն նշանակ պահեցէք 'ի ձեզ. և յորժամ առաջօք տեսիլք ինչ լիցի, մի վաղվաղակի կործանեալ ոք լիցի յերկիւղ, այլ որպիսի ոք և իցէ՝ նախ քաջալերեալ հարցցէ թէ ով ես դու և ուստի: Եթէ իցէ սրբոց ուրուք տեսիլն, հաճեսցէ զմիտս քո հաւանութեամբ և զերկիւղն քո 'ի խնդութիւն դարձուսցէ. ապա եթէ բանսարկուին ոք իցէ, անդէն վաղվաղակի տկարացեալ լինի իբրև տեսանէ մեծապէս առողջ զխորհուրդսն. քանզի անխռովութեան[1] է հաստատուն նշանակ բնաւ և հարցանելն իսկ թէ ով ես և ուստի: Որպէս որդին Նաւեայ եհարց և ուսաւ, և ոչ թշնամին կարաց թաքչել իբրև եհարց Դանիէլ:

Զայս իբրև ասէր Անտոն, ամենեքեան ուրախ լինէին, և ոմանց ցանկութիւն առաքինութեան աճեցեալ լինէր և ոմանց լքումն և դանդաղումն մխիթարեալ լինէր, և ամենեքեան հաւանէին և արհամարհեալ զդիւական ցանկութիս և զմոլորութիս և զարմացեալք ընդ տուեալ մեկնութիս Անտոնի 'ի տեսանէ: Այլ էին այնուհետև 'ի լերինս վանորեայ իբրև յարկք լցեալ ա̄ծեղէն պարուցն սաղմոսողացն և գրակարդացացն, պահողացն և աղօթականացն, ցնծացելոցն 'ի վերայ պատրաստեալ յուսոյն և գործաւորաց առ 'ի զողորմութիւն առնելոյ, և սէր և միաբանութիւն ունողացն առ միմեանս: Այլ էր ճշմարիտ տեսանել իբրև երկիր ինչ յինքեան առանձնացեալ ա̄ծպաշտութեամբ և արդարութեամբ. քանզի ոչ գոյր անդ որ մեղանչէր, և ոչ բռնադատանք հարկահանի, այլ բազմութիւնք կրօնաւորաց: Այլ մի խորհուրդք էին ամենեցուն՝ առաքինութիւն, մինչ զի և տեսանել դարձեալ ումեք զվանորայն և զայնպիսի կարգ միայնաւորացն և զձայն բարձր վերացուցանել և ասել՝ իբրև զի գեղեցիկ են բնակութիւնք քո, Յակոբ, և խորանք

1 Մէկս օրինակին անխռովականութեան.

քո, Իսրայէլ. իբրև լերինք հովանացեալք և իբրև դը-րախտք 'ի վերայ գետոց և իբրև խորանք զոր կանգնեաց Տէր և իբրև մայրք մերձ 'ի ջուրս:

Իսկ նա ըստ սովորութեան իւրում մեկնէր զինքն և յիւ-րում խցկանն զկրօնաւորութիւն իւր ձիգ և պինդ տանէր, և զօրհանապազ հեծելով մինչէր՝ զմտաւ ածեալ զար-քայութիւնն երկնից, և զփափաքումն ունէր յայտ-նիկ: Նա գիտելով զօր ըստ օրէ կեանս մարդկան, և քան-զի իբրև կամէր ուտել և 'ի քուն լինել և 'ի վերայ այ-սոյ հարկի 'ի պահանջման մարմնոյն՝ ամաչէր ընդ միտ ածելով զմտաւորական ոգիսն: Նա բազում անգամ դէպ եղև զի իբրև ընդ բազումս 'ի միայնակեցացն պատ-րաստեալ էր ուտել, յիշեցեալ զհոգևոր կերակուրն 'ի բաց հրաժարէր, և հեռի 'ի նոցանէ գնացեալ կարծիս տայր զանգիտման թէ յայլոց տեսեալ լիցի ուտելով, և ուտէր ինքն առանձինն վասն հարկի մարմնոյն,՝ և բա-զում անգամ ընդ եղբարսն ամաչեցեալ 'ի վերայ այ-սոցիկ: Նա համարձակեալ վասն շահաւորական բանից ասէր. պարտ և պատշաճ է զա̃մ հոգս խորհրդոցն տալ հոգւոյն առաւել քան մարմնոյն, և թոյլ տալ վասն հարկաւորին սակաւ մի ժամանակ և մարմնոյն, և առա-ւել զայլ ա̃մ հոգալ հոգւոյն և զօրա շահ օգտին խնդրել, զի մի սա ձգեալ լիցի 'ի ցանկութենէ մարմնոյն, այլ ա-ռաւել սմա ծառայեցուցանել զմարմինն: Վասնզի այս էր որ ասացաւ 'ի փրկչէն՝ մի հոգայք վասն շնչոյդ ձերոյ զինչ կերիջիք և մարմնոյ ձերոյ զինչ զգեցջիք, և դուք մի խնդրէք զինչ կերիջիք և կամ զինչ արբջիք, և մի ափշեալ յիմարիք իբրև պակշոտեալք, քանզի զայս հե-թանոսք երկրի խնդրեն. իսկ ձեր հայրն գիտէ զինչ պի-տոյք են ձեզ այսմ ա̃մի. բայց խնդրեցէք զարքայութիւն ա̃յ, և այս 'ի վերայ դրեսցի ձեզ:

Յետ այսորիկ հասեալ լինէր 'ի վերայ եկեղեցւոյ հա-լածումն՝ որ յայնժամ եղև 'ի Մաքսիմոսեայ, և սրբոց մարտիրոսացն ածելոցն յԱղեքսանդրիայ զհետ չոգաւ և նա՝ թողեալ զիւր խցիկն ասելով. թող երթիցուք կամ նահատակեսցուք կոչեցեալք, և կամ տեսցուք ըզ-մարտ նահատակացն: Նա զփափաքումն ունէր 'ի վկայ-ելն և մատնել կամէր զինքն, սակայն տանել խոստովա-նողացն ուր անկեալ կային 'ի բանս գործաւորացն և 'ի

բանդս։ Բազում փոյթ էր նորա յատենին, և զկոչեցեալսն 'ի մարտ նահատակութեան մարզէր 'ի յօժարութիւն, և զվկայեալսն յինքնին ընդունել և յուղարկել մինչև կատարեսցին։ Իսկ դատաւորն տեսեալ զնորա և որ ընդ նմայն էին զառ 'ի յայս փոյթ յօժարութեան. պատուէր ետ զի մի ոք 'ի միայնակեցաց յատենին երևեսցի, և մի բնաւ ամենևին 'ի քաղաքին շրջել։ Այլ այլքն ամ կամեցան թաքչել զօրն զայն. իսկ Անտոն այնչափ ընդ միտ տարաւ, մինչև առաւել ևս լուանալ զվերին զգեստն, և 'ի վաղիւ անդր 'ի վերայ բարձրաւանդակի միոյ կալ առաջի իշխանին և երևել յայտնապէս պայծառագոյն։ Այլ իբրև ամենեքեան 'ի վերայ այսորիկ զարմացեալ լինէին և ինքն իշխանն ականատես լինէր և յետ ատենին առ նովաւ անցանէր, նա անցեալ կայր ցուցանելով զմեր քրիստոնէից զյօժարութիւն։ Քանզի յաղօթս կայր և ինքն իսկ վկայել, որպէս յառաջն իսկ ասացի։ Զի թէպէտ և ինքն ցուցանէր զինքն լի տրտմութեամբ զի ոչն մարտիրոսացաւ, զի ինքն յոյժ էր կամօքն պատրաստեալ, համայն տէր էր որ պահէր զնա 'ի մեր և այլոց օգտութիւն, զի զարդու կրօնաւորութեան զոր ինքն 'ի գրոց ուսեալ էր՝ բազմաց վարդապետ լիցի։ Քանզի միայն և տեսանելով իսկ զնորա վարսն՝ բազում իսկ փոյթ յանձին ունէին նախանձաւորք նորա կրօնից։ Այլ դարձեալ սպաս տանէր խոստովանողացն, և իբրև կապեալ էր ընդ նմա աշխատեալ 'ի բանդարարութեն սպասուց։

Այլ վասն զի այնուհետև հալածումն դադարեաց և վկայեաց երանելի եպիսկոպոսն Պետրոս, երթայր գնայր այնուհետև, և դարձեալ յիւր վանկունսն առանձնացեալ միայնանայր, և էր անդ հանապազ վկայեալ մըտօքն և նահատակեալ հաւատոցն մարտիւք։ Քանզի բազում կրօնիւքն և փոյթ վարուքն զանձն 'ի կիր արկանէր, քանզի միշտ պահէր և ունէր զգեստ 'ի ներքոյ այծեղէն և 'ի վերոյ մաշկեղէն, և մինչև 'ի վախճան պահեաց զայս։ Այլ ոչ զմարմինն ջուրբ լուանայր և ոչ բնաւ ամենևին զոտսն 'ի բաց լուանայր և կամ գոնեայ ընդ վայր առանց հարկի իրիք ընդ ջուր հարկանել։ Այլ և ոչ մերկացեալ ոք զնա ետես և ոչ բնաւ ամենևին ետես զմարմինն Անտոնի, եթէ ոչ յորժամ վախճանեցաւն և թաղեալ լինէր։

Այլ երբեմն իբրեւ 'ի բաց գնաց և եղ առաջի ինքեան առնել ժամանակ մի, զի մի ինքն ելցէ 'ի դուրս և մի զոք ընկալցի, Մարտինոս ոմն իշխան զօրաց եկեալ լինէր բազմօք առ Սինոնիոս, քանզի դուստր իւր վշտացեալ լինէր 'ի դիւէ. և իբրեւ բազում ժամս կաց մնաց բախելով զդուրսն և աղաչէր ելանել նմա արտաքս և կալ յաղօթս առ ա̃ծ վասն աղջկանն, իսկ նա բանալ ոչ համեցաւ, այլ 'ի վայր կարկառելով՝ 'ի վերուստ անտի ասաց. այր դու, զի՞ զանուն իմ անձանձրոյթ կարդաս, մարդ եմ ես որպէս և դու. եթէ հաւատաս 'ի Քրիստոս զոր պաշտեմն, երթ և որպէս հաւատաս, աղաչեա զա̃ծ և լիցի քեզ: Այլ նա անդէն վաղվաղակի հաւատացեալ և կարդացեալ զանուն Քրիստոսի 'ի բաց գնայր, սրբէր և դուստրն 'ի դիւէն: Բազում այլ եւս առնէր տէր 'ի ձեռն նորա սքանչելիս, որպէս և ասացն՝ խնդրեցէք և տացի ձեզ: Քանզի բազում չարչարեալք յախտաւորաց կային առ դուրսն, վասն զի նա զդուրսն ոչ բանայր, այլ լոկ արտաքոյ վանացն ննջէին և հաւատային յաղօթս կացեալ մտադիւրութե̃ և սրբեալք լինէին:

Այլ իբրեւ ետես զինքն նեղեալ 'ի բազմաց և ոչ տրւեալ թոյլ ըստ կամաց առանձնանալ որպէս և կամէր, երկեաւ զի մի գուցէ զոր տէր առնէր 'ի ձեռն նորա, կամ ինքն հպարտացի կամ այլ ոք առաւել քան որչափ էն՝ համարեսցի զնա, խորհեցաւ և դիմեաց ելանել և գնալ 'ի վերին Թեբայիդա առ այնս որք ոչն գիտէին զնա: Այլ յեղբարց անտի ընկալեալ զհացիկն և նստելով 'ի խաղս գետոյն, դիտելով թէ երբեւս անցցէ նաւ, և 'ի ներքս մտեալ անցցէ ընդ նոսա: Այլ զայս նորա խորհելով՝ ձայն եղև 'ի վերուստ և ասէ. Սինոնիէ, ո՞ւր գնացեալ երթաս և վասն էր: Իսկ նա ոչ եթէ խռովեալ ինչ, այլ իբրեւ սովոր բազում անգամ յայսպէս կոչեցեալ՝ լուեալ պատասխանի առնէր ասելով. վասն զի ոչ տան ինձ թոյլ բազմութիւքն առանձնանալ, վասն այսորիկ կամիմ ելանել 'ի վերին Թեբայիդա վասն բազում ըկանացս որ յիս լինի աստ; և մանաւանդ զի պահանջեալ լինիմ 'ի նոցանէ առաւել քան զկարն իմ: Այլ ձայնն առ նա ասաց. զի թէպէտ և 'ի Թեբայիդա երցես, և թէ որպէս խորհիսդ իջցես յանդունդս, երկպատիկ առաւել եւս ջան վաստակոյ քեզ լիցի. այլ արդ

քեզ լիցի համբերել. արդ եթէ արդարեւ կամիս խաղաղանալ, երթ գնա այժմ 'ի բաց 'ի ներքին անապատն։ Եւ ասէ Անտոնիէ. ո՞ ցուցցէ ինձ զճանապարհն, քանզի անփորձ եմ ես և անտեղեակ նմա։ Եւ անդէն վաղվաղակի եցոյց նմա զՍարակինոսս որ գնալոց էին զայն ճանապարհն։ Իսկ Անտոն երթեալ մերձենայր 'ի նոսա և աղաչէր երթալ ընդ նոսա յանապատն։ Իսկ նոքա իբրև 'ի հրամանէ ումեմնէ յառաջագէտ մատակարարութեան յօժարութեամբ ընդունէին զնա։ Եւ գնացեալ ընդ նոսա երիս տիւս և երիս գիշերս, և գայր ընդ նոսա 'ի լեառն մի բարձր յոյժ. և էր 'ի լեռնոտինն ջուր ականակիտ քաղցր և վճիտ և կարի յոյժ ցուրտ, և արտաքոյ կողմանէ դաշտ և սակաւ մի արմաւենիք անդարմանք։ Իսկ Անտոն իբրև յոյժ զօրացեալ սիրէր զտեղին, քանզի այս էր զոր նշանս ետ որ խօսեցաւն ընդ նմա յեզր գետոյն։ Եւ նախ ընկալեալ լինէր զհացիկն 'ի ճանապարհորդացն և անցեալ մնայր 'ի լերին անդ միայն, այլ ոք ոչ էր ընդ նմա, և իբրև զիւր տուն ծանուցեալ զտեղին զայն ունէր այնուհետև։ Իսկ նոքին իսկ Սարակինոսքն իբրև տեսանէին զԱնտոնի զյօժարութիւն, սովորութի առնէին իւրեանց գալ զայն ճանապարհ և բերէին նմա հաց խնդութեամբ. ունէր և յարմաւենեացն յայնժամ սակաւ ինչ մխիթարութիւն։

Յետ այսորիկ ուսեալ եղբարց զտեղին, իբրև որդիք զհօրէ յիշեալ՝ հոգ 'ի մտի ունէին առաքել նմա զհացիկն։ Այլ իբրև ետես Անտոն եթէ 'ի պատճառս հացին աշխատեալ լինին ոմանք և վաստակեալ ջանիւ, խնայեաց և յայսմիկ 'ի միայնակեացսն և խորհեցաւ յինքեան և զոմն յեկելոցն առ նա աղաչեաց բերել նմա հողաբիր մի երկմատնի և փայտատ և սակաւ մի ցորեան։ Եւ իբրև բերեալ եղև այս, շրջեալ ընդ տեղիսն շուրջ զլերամբն եգիտ փոքր մի տեղի պատեհ 'ի հողագործութի և զջրոյն ոռոգումն ըստ կամս իւր ընդարձակ՝ բազում և առատ ունելով սերմանեաց։ Եւ ամ ըստ ամէ զայս առնելով ստանայր անտի զհացիկն, և ուրախ էր զի մի ումեք լիցի բեռն և աշխատութիւն, և զի յամենայնի զինքն առանց ձանձրութեան պահեսցէ։ Այլ յետ այսորիկ տեսանելով զմարդս որ անդր գային, վարեաց և սակաւ մի բանջար, զի եկեալքն առ նա ունիցին սակաւ մի մխի-

թարութի ընդ վաստակոցն և ընդ դժնդակ ճանապար-հին: Այլ նախ զառաջինն որ յանապատին գազանքն էին՝ 'ի պատճառս ջրոյն գայլին անդ և բազում անգամ մխա-ծէին նորա սերմանեացն և հողագործութեն: Իսկ նա զուարթապէս ըմբռնեալ մի 'ի գազանացն՝ ասէ ցամե-նեսեան. վասն էր մխաս առնէք ինձ իբրև ոչ ինչ իմ ձեզ մեղուցեալ. 'ի բաց երթայք գնացէք յանուն Տն և այլ մի ևս մերձենայք այսր: Այլ յայնմհետէ այնու-հետև իբրև երկուցեալք 'ի պատուիրանէն՝ ոչ ևս մեր-ձենային յայն տեղի:

Իսկ նա միայն էր 'ի ներքուստ լերինն՝ աղօթից և կրօ-նաւորութեան պարապեալ: Այլ եղբարքն որ մտեալ էի-նէին՝ աղաչէին զնա , և յետ ամաց սպաս տանելով բե-րէին նմա ձիթապտուղ և ոսպս և ձէթ , քանզի ծե-րունի էր այնուհետև: Այլ անդ նորա յայնժամ բնա-կելով , քանզի 'ի կռիւս և 'ի մարտս համբերելով ըստ գրեցելումն՝ ոչ առ մարմին և արիւն , այլ առ ընդդիմա-կաց դևսն , 'ի մտելոցն առ նա ասաք: Քանզի և անդ խուճապանաց և ձայնից շարշափիւն իմն լսէին և զլեառն լի գազանօք , և զայն գիշերի եղեալ տեսանէին , և զնա իբրև ընդ յանդիմանն իսկ աչաց մարտուցեալ և յաղօթս կացեալ վասն նոցա , և զմտեալսն առ ինքն քաջալերէր և ինքն մարտնչէր նահատակութբ և ծունր յերկիր խո-նարհեցուցեալ յաղօթս կայր առ Տծ: Այլ էր արդարև արժանի զարմանալոյ , զի միայն էր յայսպիսի անապա-տի , և ոչ 'ի դիւացն յարձակմանցն սասանէր , և ոչ զի իբ-րև այսչափ էր անդ գազանաց չորքոտանեաց և սողնոց՝ երկնչէր ինչ 'ի նոցա վայրենի ամեհութէն: Այլ ճըշ-մարիտ որպէս և գրեալն է՝ յուսացեալ որպէս 'ի լեառն Սիոն , անշարժ և անալեկոծ ունէր զմիտսն , մինչև ա-ռաւել փախչել դիւացն , և վայրենի գազանացն՝ որպէս և գրեալ է՝ խաղաղութի ունել ընդ նմա: Իսկ բանս-արկուն , որպէս և գրեացն Դաւիթ , գաղտնի սպասէր նմա և կրճէր 'ի վերայ զատամունս իւր: Իսկ Անտոն մխիթարեալ լինէր 'ի փրկչէն , և անվնաս ապրեալ լինէր 'ի նորա խորամանկ կեղծաւորութենէն և 'ի բազմապա-տիկ խարդախուէն: Այլ մինչդեռ հսկէր նա 'ի գիշերին , արձակ 'ի վերայ նորա զգազանս առ հասարակ զանա-պատին այնորիկ , և ամ բորեանքն 'ի դուրս ելեալ յոր-

ջից իւրեանց և պատէին զնովաւ, և նա էր 'ի մէջ նոցա, և զբերան բացեալ ա̃մ ուրուք և խածանելոյ սպառնային նմա: Իբրև իմացաւ զարուեստ խորամանկին՝ ասէ ամենեցուն նոցա. եթէ իշխանութի̃ առէք վասն իմ, պատրաստ եմ կեր լինել 'ի ձէնջ. ապա եթէ 'ի բանսարկուէն 'ի մտի եդիք, մի յապաղեալ յերկարէք, այլ 'ի բաց մեկնեցարուք յինէն, քանզի Ք̃ի ծառայ եմ: Զայս Անտոնի ասացեալ, փախչէին նոքա իբրև 'ի գազանէ 'ի բանէն հալածեալք:

Այլ յետ սակաւ աւուրց մինչդեռ գործէր և փոյթ յանձին ունէր վաստակել, կացեալ առ դրանն և ձգէր զյեռեալ հիւսուած գործոյն, քանզի զփխուրիդս կարէր. և զայս որք գային առ նա՝ փոխանակ բերելոցն տայր նոցա: Այլ յոտն կացեալ ետես գազան մի նման մարդոյ մինչև ցբարձսն, և կարթքն և ոտքն նման իշոյ: Իսկ Անտոն իբրև զինքն միայն կնքեաց և ասաց՝ Ք̃ի ծառայ եմ, իսկ գազանն հանդերձ ա̃մ դիւօքն այնպէս փախեաւ, մինչև յարագութե̃ անտի զարկեալ լինէր և մեռեալ, քանզի գազանին մահ կործանումն դիւացն էր. քանզի զա̃մ ինչ փոյթ յանձին կալեալ առնել, զի իջուսցեն զնա յանապատէ անտի, և ոչ կարացին:

Աղաչեալ երբեմն 'ի միայնակեցաց ոմանց իջանել առ նոսա, և յետ բազում ժամանակաց այց առնել նոցա և տեղեացն, և գնաց հանդերձ միայնակեցօքն որ եկին առ նա. և ուղտ բարձեալ ունէր նոցա զհացն և զջուրն, քանզի անջրդի էր անապատն ա̃մ և ամենևին ջուր ոչ գոյր ըմպելոյ, բայց միայն յայնմ լերինն ուստի բարձին զջուրն յորում կրօնաւորքն բնակեալ էին և ինքն իսկ: Այլ իբրև պակասեաց ջուրն 'ի ճանապարհին, և էր տօթ յոյժ և ամենեքեան տարակուսեալ լինէին 'ի մահ, քանզի շուրջ եկեալ զտեղօքն և ոչ գտանէին ջուր, ապա այնուհետև գնալ ոչ կարէին, այլ յերկիր անկեալք դնէին, և զուղտն հարկանէին թողուին ընդ վայր՝ իբրև վախճանեալք զիւրեանց կենդանութե̃: Իսկ ծերունին իբրև ետես զնոսա վտանգեալս յոյժ, տրտմեալ լինէր և հեծէր մռնչելով. և սակաւ մի 'ի բաց գնացեալ 'ի նոցանէ և ծունր յերկիր խոնարհեցուցեալ և զձեռսն տարածեալ կայր յաղօթս: Այլ անդէն վաղվաղակի աբար տէր ջուր ուր յաղօթսն կայր. և այսպէս ըմպէին

ամենեքեան, և հոգեբերեալ անդրէն հաստատեցան զօրութեամբ. լցին զտիկսն, և խնդրեցին զուղտն և զտին, քանզի դէպ եղև պարուսանելն զքարիւ միով պատել. և այնպէս ըմբռնեալ նորա ըստ մատակարարութեանն այ, և ածեալ այնուհետև արբուցին ջուր և եդին 'ի վերայ զտիկսն և գնացին անվնասք: Իսկ իբրև եկին յարտաքին վանորայսն և ամենեքին իբրև զհայր ողջունիւ համբուրէին, և ինքն իսկ իբրև պաշար բերեալ 'ի լեռնէն զօրացուցանէր զնոսա բանիւ վարդապետութեան և կցորդանէր զնոսա օգտութեան: Իսկ դարձեալ լինէր խնդութիւն 'ի լերինն և նախանձ յառաջադիմութեան և մխիթարութիւն վասն 'ի միմեանս հաւատոյն, և ուրախ էր և նա տեսանելով զեղբարցն յօժարութիւնն. և զքոյրն իւր գտանէր պարարեալ ծերութեամբ 'ի կուսութեան և առաջնորդ զնա այլոցն կուսանաց:

Իսկ յետ աւուրց դարձեալ ինքն եկն եմուտ 'ի լեառնն յորժամ բազումք այնուհետև առ նա մտեալ լինէին, և այլ ախտաժէտք համարձակեցան մտանել: Իսկ առ ամենեսին որ գային առ նա միայնակեացք՝ այս էր նորա յաճախագոյն պատուիրանն, հաւատալ 'ի Տն և սիրել զնա և պահել զինքեանս յաղտեղի խորհրդոց և 'ի մարմնաւոր ցանկութեանց, որպէս և յառակսն Սողոմոնի գրեալ է՝ եթէ մի պատրիք լցուցանել զորովայն. և փախերուք 'ի սնապարծութենէ, և յաղօթս կացէք յառաջ քան զքուն և յետ քնոյ. և 'ի բերան ունել զառ 'ի գրոց պատուիրանսն և յիշել զգործս սրբոցն և յարմարել զոգիս 'ի նախանձ: Իսկ յիշեցուցանելով 'ի պատուիրանացն, և առաւել յաճախագոյն խրատ տայր զառաքելականն բանն և անդադար զմտաւ ածել՝ զի արեգակն 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ: Իսկ զայս միաբան վասն ամ պատուիրանացն ասացեալ կարծեսցուք. զի մի միայն 'ի վերայ բարկութեան, այլ մի և 'ի վերայ այլոցն յանցանաց մերոց արեգակն մի մտցէ. քանզի բարի և պիտանացու է՝ մի զարեգակն վասն տուընջեան չարեացն անցուցանել, և մի զլուսինն վասն գիշերայինն մեղացն, և կամ բնաւ ամենևին խորհրդոց ըստգիւտ լինել 'ի մէնջ: Զի եթէ սա 'ի մեզ պահեալ լիցի, բարիոք է լսել առաքելոյն և պահել. քանզի ասէ՝ զանձինս հարցէք և դատեցարուք, և զանձինս փորձե-

ցէք համապազօր ։ Այսուհետեւ զտուընջեան զգիշերայ-ին գործոցն ամ որ զպահանջմունս յիւրեան ընկալցի. եթէ մեղաւ՝ դադարեսցէ. եթէ ոչ մեղաւ՝ մի պարծես-ցի, այլ մնասցէ բնակաւոր 'ի բարիսն եւ մի հեղգասցէ, եւ մի դատապարտեսցէ զընկերն եւ զանձն արդարա-ցուսցէ, որպէս եւ ասէ երանելի առաքեալն Պաւղոս՝ մինչեւ եկեսցէ տէր որ զգաղտնիսն քննէ ։ Քանզի բա-զում անգամ որ 'ի մեզ խոկ լինի մոռանամք, եւ մեք ոչ գիտեմք, խոկ տէր հասու է ամի ։ Արդ նմա զընտրութի դատաստանին տուեալ՝ մեք միմեանց վշտակից լիցուք եւ զմիմեանց ծանրութի բարձցուք. զանձինս փորձես-ցուք եւ զոր ինչ նուազեալ պակասիմք՝ փութասցուք կա-տարել. եւ եղիցի այս առ 'ի զգուշութիւն ոչ մեղանչել մեզ ։ Սուզեալ ճշմարտիւ իւրաքանչիւր զգործս եւ ըզ-շարժմունս ոգւոցն իբրեւ պատրաստեալք անձանց պատ-մել նշանակեսցուք եւ գրեսցուք եւ քաջալերեսցուք, եւ իբրեւ ամաչեցեալք յայտնի լինել՝ դադարեսցուք 'ի մե-ղանչելոյ, եւ մի բնաւ ամենեւին խորհել ինչ անօթոյ արժանի ։ Քանզի ո՞վ ոք մեղուցեալ եւ կամիցի տեսիլ լինել, եւ կամ ո՞վ ոք յանցուցեալ եւ ոչ առաւել տեսցէ կամելով անյայտ լինել ։ Զոր օրինակ զի իբրեւ տեսա-նելով զայս ոչ պոռնկիմք, այսպէս եւ իբրեւ պատմելով միմեանց զխորհուրդսն գրեսցուք. կարի քաջ պահես-ցուք զմեզ եւ զանձինս յաղտեղի խորհրդոց՝ ամաչեցեալ գիտելի լինել յումեքէ ։ Եւ եղիցի մեզ կրօնաւորացս գիրն փոխանակ աչաց մերոց, զի երկիցուք գրել իբրեւ զտեսանելն ։ Ա՛ն ամենեւին խորհեսցուք անօթաբերս ինչ, այսպէս օրինակել զմեզ ընդ կարգօք կարող լինել ծառայեցուցանել զմարմինս եւ հաճոյ լինել տեառն եւ ուսանել զխորամանկ դարանամտութի թշնամւոյն ։

Զայս որք գային առ նա պատուիրէր, եւ որք վշտա-նային յախտից՝ վշտակից լինէր եւ աղօթս առնէր 'ի վերայ նոցա ։ Եւ բազում անգամ 'ի բազում իրս լսէր նմա տէր. ոչ լսելովն պարծէր եւ ոչ չլսելովն տրտնջէր, այլ միշտ գոհանայր զտեառնէ, եւ զախտացեալսն ա-ղաչէր մխիթարութ երկայնամիտ լինել եւ գիտել զի բնաւ խոկ ամենեւին 'ի մարդկանէ չէ բժշկութիւն, այլ միայն յայ՝ որ առնէ յորժամ կամի եւ ում կամի ։ Եւ ախտաւորքն իբրեւ զդեղս բժշկութե ընդունէին զբանս

ծերոյն՝ ուսեալք և նոքա զոչն վհատել, այլ առաւել եր-
կայնամտել. և բժշկեալքն ուսեալք լինէին մի Անտոնի
գոհութիւն մատուցանել, այլ միայն Այ̃։

Այլ մի ամն որում անուն է Փրոնտոն, և նա էր յար-
քունական դրանէն և ունէր ախտ դժնդակ, քանզի զլե-
զուն ուտէր և յաչաց անտի էր վնասեալ. եկն եմուտ 'ի
լեառնն, և աղաչէին զԱնտոն կալ յաղօթս վասն նորա։
Եւ նա կացեալ յաղօթս ասէր ցՓրոնտոն. երթ գնա
և բժշկեսցիս։ Իսկ նա իբրև բռնացեալ 'ի ներքս մնայր
զաւուրս, և ոչ դադարէր Անտոն ասել՝ եթէ ոչ կարես
աստ մնալով բժշկել, այլ երթ գնա 'ի բաց. և հասեալ
յԵգիպտոս տեսցես եղեալ 'ի քեզ նշան, և նա հա-
ւատացեալ 'ի բաց գնայր, և անդէն իբրև ետես զԵ-
գիպտոս՝ դադարեաց և ախտն, և եղև այրն ողջ ըստ բա-
նին Անտոնի, և յաղօթս կացեալ ուսաւ զայս 'ի փրկչէն։

Եւ կոյս մի ամն 'ի Բիւրսիրեայ յերից քաղաքացն
քաղաքէն ախտ ունէր անհնարին դժնեայ և յոյժ ժանտ.
քանզի արտասուք նորա և աղտ ունգանցն և գէջն ական-
ջացն յերկիր անկեալ և անդէն որդունք լինէին։ Այլ և
մարմինն լուծեալ, և աչքն էին ըստ բուսոյ բնութենէն։
Եւ սորա ծնողքն տեսեալ եթէ երթան ոմանք 'ի միայ-
նակեցացն առ Անտոն, և հաւատացեալք 'ի տէր յայն
որ զարիւնակաթն բժշկեաց, աղաչեցին զնոսա ընդ դըս-
տերն ուղեկից լինել։ Եւ սոքա իբրև յանձին կալան,
հայրն և մայրն հանդերձ աղջկամբն անցին մնացին ար-
տաքոյ քան զլեառնն առ Պափնուտեայ որ կոչէր խոստո-
վանող և միայնակեաց։ Եւ նոքա գնացին մտին միայն.
իբրև կամեցան պատմել վասն կուսին, յառաջեաց նա
զնոսա, պատմեաց և զախտ աղջկանն և զիարդ ուղե-
կիցն եղև ընդ նոսա։ Եւ ապա սոքա իբրև աղաչեցին
զնա հրաման տալ և նոցա մտանել 'ի ներքս, և զայս ոչ
հրամայեաց, այլ ասաց եթէ երթայք և գտանէք զնա
բժշկեալ եթէ ոչ մեռաւ. քանզի ոչ եթէ իմ ինչ է
առաքինութի̃, այլ փրկչին է բժշկութի̃՝ որ առնէ յա̃մ
տեղիս զողորմութիւն իւր որ կարդան զանուն նորա, և
նմա յաղօթս կացելոյ տէր այց արար, և ինձ ազդ արար
նորա մարդասիրութիւնն զի անդ բժշկեաց զախտ աղջ-
կանն, և եղեն սքանչելիք։ Եւ 'ի դուրս ելեալ գտին
զհայրն և զմայրն լի ուրախութ̃, և զաղջիկն առողջացեալ։

Եւ այնուհետեւ դէպ եղեւ երկուց ումանց եղբարց մը-
տանել յանապատն. եւ իբրեւ պակասեաց նոցա ջուրն 'ի
ճանապարհին, մինն մեռաւ եւ միւսն եւս մեռանելոց էր,
վասն զի ոչ կարէր գնալ. եւ նա եւս յերկիր անկեալ դնէր՝
ակն ունելով մեռանելոյ: Իսկ Անտոն նստելով 'ի լերինն
կարդայր երկուց ումանց միայնակեցաց, քանզի դէպ եղեւ
նոցա անդ լինել՝ փութացուցանէր ասելով. առէք սա-
փոր մի ջուր եւ ընթացարուք ընդ ճանապարհն եգիպ-
տացւոց, քանզի երկուք ումանք գային այսր, մինն արդ
եւս վախճանեցաւ եւ միւսն եւս վախճանելոց է եթէ ոչ
փութասջիք հասանել. քանզի այս ինձ յաղօթս կացեալ
այժմ ցուցաւ: Եւ երթեալ միայնակեացքն գտին զմինն
զի անկեալ դնէր մեռեալ եւ թաղեցին, եւ միւսումն ար-
բուցին ջուր եւ կանգնեցին եւ առեալ տարան առ ծե-
րունին, քանզի էր 'ի բացեայ աւուրց գնաց ճանա-
պարհին: Արդ եթէ ոք խնդրեսցէ զայս եթէ ընդէր
ոչ յառաջ քան զմիւսոյն եւս վախճանելն ասացաւ՝ ոչ
ուղիղ խնդրէ զայս ասելով, քանզի ոչ եթէ Անտոն էր
մահուն որոշիչ, այլ ա̃ծ որ վասն նորա զնա սահմանեաց
եւ վասն նորա յայտ արար: Այլ Անտոնի այս միայն է
զքանչելիք զի 'ի լերինն նստելով ունէր զսիրտն զուարթ
առ ա̃ծ որ ցուցանէր նմա զհեռաւորսն:

Քանզի եւ դարձեալ երբեմն մինչ նստէր 'ի լերինն՝
'ի վեր հայեցեալ տեսանէր զոմն 'ի յօդս զի 'ի վեր տա-
նէին. եւ բազմաց ոգւք ընդ առաջ ելին՝ զեղեալ ուրա-
խութիւն: Ապա յաղօթս կացեալ եւ երանելով զայսպիսի
պարս զօրաց բազմաց, եւ յաղօթս կայր ուսանել թէ
զինչ արդեօք իցէ այս: Եւ անդէն վաղվաղակի եկն նմա
ձայն՝ եթէ այս Ամոնի հոգին է որ 'ի Նիտրիա էր միայ-
նակեաց: Քանզի էր սորա մինչեւ յալեւորոյթ զկրօնա-
ւորական վարս վարեալ. եւ էր հեռաւորութիւն ճանա-
պարհին մինչեւ 'ի լեառն ուր Անտոն բնակեալ էր՝ գը-
նացք աւուրց երեքտասանից: Իսկ որք էին ընդ Անտո-
նեայ, իբրեւ տեսին զարմացեալ զծերն՝ աղաչեցին ու-
սանել. եւ լուան զի ասաց՝ եթէ այժմ վախճանեցաւ
Ամոն: Քանզի ծանօթ էր. նմա վ̃ն ստէպ ստէպ առ նա
երթալոյն, եւ վասն բազում եւ 'ի ձեռն նորա նշանացն
լինելոյ՝ յորոց մի է այս ինչ: Երբեմն պէտք եղեն նմա
անցանել ընդ գետն որ կոչի Գայլ, եւ էր յայնժամ յա-

րոյցք ջուրցն. աղաչեաց զԹէոդորոս որ ընդ նմա էր՝ հեռագոյն երթալ 'ի նմանէ, զի մի մերկ զմիմեանս տեսցեն ընդ ջուրն անցանելով։ Այլ իբրեւ 'ի բաց գնաց 'ի նմանէ Թէոդորոս, դարձեալ ամաչէր ինքն զինքն մերկ տեսանել. և մինչդեռ յամօթն հարեալ էր և հագայր, յանկարծակի տարեալ եղև յայնկոյս գետոյն։ Իսկ Թէոդորոս վասն զի և նա այր երկիւղած էր և բարեընկալ, իբրեւ մերձեցաւ և ետես զնա յառաջեալ, և զի բնաւ ամենևին ջուրք չէր թացեալ, աղաչէր ուսանել թէ զինչ օրինակաւ յայնկոյս անցաւ։ Այլ իբրեւ ետես եթէ ոչ կամի ասել նմա, բուռն հարեալ ունէր զոտս նորա, և ոչ վազվազ թողուլ եթէ ոչ նախ ուսցի 'ի նմանէ։ Իբրեւ ետես Ամոն զյամառութիւն Թէոդորոսի և մանաւանդ վասն բանին զոր ասաց, պահանջեաց և նա 'ի նմանէ բան զի մի ումեք ասասցէ մինչև 'ի մահ նորա. և ապա այնուհետև պատմեաց՝ զի բարձաւ և եդաւ յայնկոյս գետոյն, և եթէ ոչ կոխեաց բնաւ ամենևին 'ի վերայ ջուրցն, և զի ոչ յայս ամենևին կար մարդկան, բայց միայն տեառն և որոց նա հրամայեսցէ, որպէս և արարն մեծի առաքելոյն Պետրոսի։ Իսկ Թէոդորոս ապա յետ մահուանն Ամոնի պատմեաց զայս։ Իսկ միայնակեացքն որոց ասաց Անտոն վասն մահուանն Ամոնի, նշանակեցին զօրն։ Իբրեւ եկին անդ ոմանք յեղբարցն 'ի Սկիտեա յետ աւուրց երեսուն, հարցին և գտացին զի կշիռ յայնմ աւուր իսկ և յայնմ ժամու հանգեաւ Ամոն յորում ետես ծերն զի զոգի նորա 'ի վեր տանէին, և կարի յոյժ զարմացեալ լինէին և սքա ընդ սրբութի ոգւոյն Անտոնի՝ զէ իբրեւ յայսչափ հեռաստանէ յերկքտասանօրեայ գնացք ճանապարհի զեղեալն ինչ անդէն վաղվաղակի ուսաւ և զոգին ետես զի 'ի վեր տանէին։

Այլ դարձեալ երբեմն Ներեղաւոս անուն կոմս իբրեւ եգիտ զնա յարտաքնումն լերինն, աղաչեաց աղօթս առնել վասն Պաւղիկրատեայ՝ որ 'ի Լաւոդիկայն էր սքանչելի և ք̅ընկալ կոյսն, վասն զի անհնարին ցաւէին նորա ստամոքսն և կողքն 'ի խստամբերութենէն, և ամ մարմնով իսկ էր տկար։ Իսկ Ամոն իբրեւ արար աղօթս, կոմսն նշանակեաց զօրն յորում եղեն աղօթքն։ Այլ իբրեւ չոգաւ 'ի Լաւոդիկեա, եգիտ զկոյսն ողջացեալ։ Հարցանէր եթէ յորում աւուր դադարեաց 'ի

նմանէ ցաւն անկարութե. և եբեր 'ի մէջ զքարտէսն յորում զժամանակ աղօթիցն գրեաց: Այլ իբրև ուսաւ 'ի նոցանէ, ցուցանէր և ինքն զգիր քարտիսին: Այլ իբրև գիտացին զարմանալին ամենեքեան, զի յայնժամ դադարեցոյց տէր զցաւսն 'ի նմանէ յորում Անտոնիոս յաղօթս եկաց և աղաչեաց զբարերարութիւն փրկչին վասն նորա: Այլ վասն այնոցիկ որ գային առ նա, բազում անգամ դէպ լինէր զի յառաջագոյն աւուրբք ասէր, և էր երբեք զի ամսով յառաջ ասէր զպատճառն վասն որոյ գային: Ոմանք վասն հիւանդութե, և ոմանք ախտացեալք 'ի դիւաց, և ամենեքեան ոչ աշխատութի ինչ կամ վնաս համարէին զվաստակ ճանապարհին, քանզի դարձեալ խոնարհեալ լինէին ամենեքեան և զչափ առեալ օգտութե: Այլ նա իբրև զայսպիսի իրսն տեսանէր, աղաչէր և ասէր ցնոսա զի մի ոք զարմասցի ընդ նա վասն այսոցիկ, այլ յԱմի զտէր փառաւորել, զի մեք մարդիկ եմք և շնորհեաց մեզ ոչչափ զօրութի է ճանաչել զնա:

Այլ դարձեալ իբրև էջ երբեմն յարտաքին վանօրեայն, և աղաչեցին զնա մտանել 'ի նաւ մի՝. յաղօթս կալ միայնակեցօք համդերձ, և նա միայն զհոտ աննոյր զազրութե շարաւոյ և յոյժ դառնութեան: Իսկ որք 'ի նաւին էին, ասէին ցնա՝ եթէ ձուկն տանիկք 'ի նաւիս և 'ի նոցանէ է հոտդ: Իսկ նա ասէր. ոչ, այլ այլ ինչ շարաւահոտ է: Այլ դարձեալ իբրև ասաց նա, ապա պատանեակ մի յորում գոյր դև, յառաջագոյն մտեալ և թագուցեալ էր 'ի նաւին; և անդէն վաղվաղակի ճչեաց մեծաձայն: Իսկ նա իբրև սաստեաց 'ի վերայ նորա յանուն տեառն մերոյ Յիսի Քսի, և վաղվաղակի դևն 'ի բաց գնայր 'ի նմանէ և այրն ողջ լինէր, և ամենեքին գիտացին զի դևն էր այն ժահահոտութիւնն:

Այլ այլ միւս ես ամն այր երևելի եկն առ նա, յորում գոյր դև. և էր դևն այն չար անհնարին մինչև չգիտենալ նմա յորում էրն և թէ առ Անտոն եկն. այլ և զաւելլիս մարմնոյն իւրոյ ուտէր: Իսկ որք ածին զնա, աղաչեցին զԱնտոն աղօթս առնել վասն նորա: Իսկ Անտոն գթացեալ 'ի պատանին կայր յաղօթս և զգիշերն ամ հսկէր ընդ նմա: Այլ պատանին մերձ յառաւօտն յանկարծակի յարձակեցաւ 'ի վերայ Անտոնի և մղեաց

զնա ։ Իսկ որ ընդ նմայն եկեալ էին՝ բարկանային 'ի վերայ նորա ։ Այլ ասէ Անտոն . մի բարկանայք ցասմամբ 'ի վերայ պատանւոյդ . քանզի ոչ եթէ դա է, այլ որ 'ի դմա դևն է . քանզի սաստեաց 'ի վերայ նորա ելանել և գնալ յանջրդի տեղիս, վասն այսորիկ մոլորեցաւ և տրտար զայս ։ Արդ փառաւորեցէք զտէր, քանզի այսպէս յարձակելն նորա 'ի վերայ իմ նշանակ եղև ձեզ ելք հալածման դևուն ։ Այլ զայս իբրև ասաց Անտոն, անդէն պատանին եղև առողջ և զգաստացաւ այնուհետև և գիտաց ուր էին և ստէպ ստէպ համբուրէր զծերունին գոհանալով զա̃յ ։

Այլ բազում այլ ինչ այսպիսիս միաբանութեամբ և տգէտն հեզութեան ասացին 'ի ձեռն նորա եղեալ բազում միայնակեացք . այլ ոչ է այս այնչափ զարմանալի, որչափ այլ ևս ինչ սքանչելագոյն երևի ։ Քանզի երբեմն իբրև կամեցաւ ուտել և յառն կացեալ կայր յաղօթս յիններորդ ժամուն, և զգաց զինքն յափշտակեալ մըտօքն . և որ արտաքս քան զկարծիս են սքանչելիքն՝ անցեալ կայր և տեսանէր զինքն իբրև արտաքոյ ինքեան եղեալ և իբրև յօդս զինքն առաջնորդեալ յամանց ։ Այլ տեսանէ զոմանս դառինս և անհնարին դժնեայս որք կային յօդս և կամէին արգելուլ զնա զի մի անցցէ ։ Իսկ որք մարտնչէին ընդ նմա, առաջնորդէին Անտոնի, և պահանջէին նոքա բան 'ի սոցանէ և ասէին՝ թէ տեսցուք մի գուցէ պարտապան է մեզ . քանզի կամէին ասել իմն բան 'ի նորա ծննդենէն և արգելուլ զնոսա ։ Իսկ որք առաջնորդէին Անտոնի, ասէին ցնոսա՝ եթէ զծննդեան նորա տէր 'ի բաց ջնջեաց . այլ յորմէհետէ եղև միայնակեաց և խոստացաւ ա̃յ, իշխանութիւն ունիք խնդրել ձեզ համար ։ Յայնժամ նոքա ամբաստան եղեն և յանդիմանել ինչ ոչ կարացին, քանզի ազատեցաւ ինքն և անարգել եղև նմա ճանապարհն ։ Այլ անդէն վաղվաղակի ետես զինքն յինքեան եկեալ ժողովեալ, և դարձեալ էր ողջ կատարեալ Անտոնիոս ։ Յայնժամ զհացն ուտել մոռացաւ նա, և անց մնաց նա այնուհետև զօրն ողջոյն և զգիշերն ա̃մ հեծելով և մռնչելով և յաղօթս կալով 'ի գլուխ հանելով ։ Քանզի զարմացաւ տեսանելով թէ առ քանիս է մեզ մարտ պատերազմիս, և որչափ ջանիւ և մեծ աշխատութեամբ

անցանելոյ եւեթ ընդ օդս։ Այլ յիշեաց եթէ այս է զոր ասացն Պաւղոս՝ ըստ իշխանութեան իշխանի օդոյս այսորիկ։ Վասնզի յայսմ ունի Թշնամին իշխանութիւն մարտնչել և փորձել, զի 'ի բաց արգելցէ որք երթանն։ Վասն այսորիկ առաւել խրատ տայր և ասէր. առէք ընդ ձեզ զսպառազինութիւն այ, զի կարասջիք ընդդիմել կալ նորա յաւուրն չարի. զի իբրև ոչ ինչ գտցէ զձէնջ ասել Թշնամին անարգանաց արժանի, յամօթ լիցի։ Այլ մեք զայս ուսեալք յիշեսցուք զայն որ ասաց առաքեալն. զի եթէ մարմնով՝ ոչ գիտեմ, և եթէ առանց մարմնոյ՝ ոչ գիտեմ, այ գիտէ. այլ սակայն Պաւղոս մինչև յերրորդ երկինս վերացաւ և լուաւ բանս անճառս և էջ։ Իսկ Անտոն մինչև յօդս ետես զինքն առաջնորդեալ և մարտուցեալ մինչև ազատ երևեցի. քանզի ունէր և զայս շնորհս, զի 'ի լերինն միայն նստէր, և եթէ երբէք ինքն յինքեան ինչ խնդրէր և անհնարեալ տարակուսէր, այս նմա՝ իբրև յաղօթս կայր՝ 'ի կանխագիտութենէն և 'ի մատակարարութենէն յայտնեալ լինէր, և էր որպէս և գրեալն է՝ ածուսոյց եղեալ երանելին։

Յետ այսորիկ իբրև խօսք եղեն նմա առ ոմանս որք մտին առ նա վասն կրօնից հոգւոյ եթէ որ տեղի յետ այսորիկ լիցէ նոր, իսկ 'ի միւս գիշերի կոչէ զնա ոմն 'ի վերուստ և ասէ. Անտոնիէ, յոտն կաց, ել 'ի դուրս և տես։ Այլ իբրև ել արտաքս, քանզի գիտէր ում ումեք արժան է լսել. և 'ի վեր հայեցաւ և ետես զոմն երկայն ահագնատես չարատեսիլ և ահագին, քանզի կայր և հասանէր մինչև յամպս, և ելանէին ոմանք իբրև Թռուցեալք. և նորա տարածեալ զձեռսն և զոմանս արգելոյր և ոմանք 'ի վերոյ քան զնա Թռուցեալք և անցեալք՝ այնուհետև աներկիւղ և անհոգ վերացեալք։ Այլ 'ի վր այսպիսեաց և երկայնն կրճտէր զատամունսն, և 'ի վայր անկելոցն 'ի նմանէ ուրախ լինէր։ Այլ անդէն վաղվաղակի ձայն եղև առ Անտոն և ասէ. իմա որ եղևդ։ Այլ բացան նր միտքն և գիտաց զի հոգւոյն էին անցք ճանապարհին. և երկայնն որ կայր, նա է որ զչարի ընդ բարիս հաւատացելոց, և որ դատապարտք են նմա՝ զնոսա ունի և արգելու և չտայ անցանել։ Իսկ որք ոչն հաւանեցան նմա, ոչ կարէ ըմբռնել, այլ 'ի վերոյ քան զնա զանց առնեն։ Դարձեալ զայս իբրև ետես Անտոն, իբրև ընդ միտ

տանելով զվշտատակսն, ջանայր որ ըստ օրէ և առաւել յառաջադէմ լինել վարուքն։ Եւ զայս ոչ եթէ նա կամելով պատմեաց, քանզի իբրև յերկարեաց յաղօթսն, իբրև ինքն յինքեան զարմացեալ լինէր, և հարցին զնա որք ընդ նմայն էին, և իբրև նեղեցին զնա վասն այսորիկ՝ հարկ եղև նմա ասել իբրև հայր զի ոչ կարէ ծածկել յորդւոց։ Այլ և զայս ընդ միոյ ածէր զգիտակցութիւնն իւր, զի խիղճ մտացն էր սուրբ, և նա առնէր պատմութիւն օգտութե որք ուսանէին, և կրօնաւորութիւնն լինէր բարի պտուղ և ջանոյ և վաստակոյ, բազում անգամ մխիթարէին զտեսիլքն. վասն զի և բարքն իւր էին անձանձրոյթ և հոգին հեզիմաց և խոնարհախորհուրդ և քաղցրաբարբառ։

Եւ քանզի այսպիսի էր, և զկարգն եկեղեցւոյ առաւելապէս պատուէր, և զամենեսեան որք վիճակեալն էին յաստիճան քահանայութեան կամէր յառաջ քան զինքն պատուեալ։ Եւ որ եպիսկոպոսք և երիցունք էին, ոչ ամաչէր ինքն խոնարհեցուցանել զգլուխն։ Եւ սարկաւագունք եթէ երբէք եկեալ լինէին առ նա վասն օգտութե, խօսէր ինչ ընդ նոսա որ օգուտն էր. բայց վասն իշխանութեն առնէր նոցա տեղի, և չամաչէր և ինքն ուսանել. քանզի բազում անգամ հարցանէր և աղաչէր լսել յայնցանէ որք երթային անդ առ նա, և խոստովան լինէր զօգուտն եթէ ոք պիտանացու ինչ ասէր։ Եւ երեսք նորա բազում շնորհս ունէին, և ևս՛ զքանչելի շնորհս իմն ունէր նա զայս ՚ի փրկչէն։ Վասնզի թէ էր ուրեք ՚ի մէջ բազմութե եղբարց և յառաջ ոք ոչ գիտէր զնա և կամէր տեսանել, և իբրև մտանէր՝ զայլովքն ամենեքումբք զանց առնէր և դէպ ուղիղ ՚ի նա ընթանայր՝ իբրև յերեսաց նորա ձգեալ. ոչ եթէ բարձրութբ կամ լայնութբ ինչ առաւել երևէր քան զայլսն, այլ բարուցն ցնծութբ և հոգւոյն սրբութբ։ Վասնզի վասն անխուճապութե հոգւոյն առանց խռովութե ստացեալ ունէր և զարտաքին զգայութիւնն. և իբրև ՚ի խնդութէ հոգւոյն լուրջ և զուարթ և պայծառ ունէր զդէմսն, և ՚ի շարժմանց մարմնոյն էր զգալ և գիտել զհոգւոյն դիրս ցածութե, որպէս և գրեալն է՝ թէ ուրախութի սրտի զուարթ առնէ զերեսս, և տրտմութիւն ազացուցանէ։ Նոյնպէս և Յակոբ ծանեաւ զԼա-

բան, զի խորհէր զնմանէ չարութիւն և տայր ցփանայս իւր . ոչ են երեսք հօր ձերոյ որպէս յերեկն և յեռանդն ։ Նոյնպէս և Սամուէլ ծանեաւ զԴաւիթ, քանզի խնդարար և ուրախագործ էր, և զաչսն ստացեալ ունէր գեղեցիկ և զատամունսն իբրև զկաթն սպիտակ ։ Նոյնպէս Անտոն ծանուցեալ՝ լինէր յորժամ խռովեալ լինէր, քանզի զուարթ երեսօք էր, և կամ երբ խոժոռեալ լինէր, վասն զի ուրախ էր միտքն ։

Այլ հաւատովքն և՛ բնաւ իսկ զարմանալի էր բարեպաշտութեամբն, քանզի և ոչ ընդ մելիտիանոսն հերձուածողս հաղորդէր, վասն զի գիտաց զնոցա զիսկզբանէ չարութիւն և զապստամբութիւն . և ոչ ընդ մանիքեցիսն և ոչ ընդ այլում ումեք և ոչ ընդ կամակոր հերետիկոսացն ինչ խօսէր սիրով, բայց միայն յաղօթս խրատու առաջնորդէր վասն յա̄ծպաշտութիւնն դարձուցանելոյ ։ Պատուիրէր և ասէր զնոցա սէրն և զմիաբանութիւն վնաս, և կորուստ ոգւոցն համարել ։ Նոյնպէս և յարիանոսաց հերձուածոյն գարշէր, և պատուէր տայր ամենեցուն մի մերձենալ 'ի նոսա և մի զչար հաւատս նոցա ընդունել ։ Քանզի չոգան երբեմն առ նա յարիանոսացն, և եհարց զնոսա և ուսաւ, և իբրև զամբարիշտս 'ի լեռնէն 'ի բաց հալածեաց, և ասէր եթէ քան զօձս չար են բանք նոցա ։ Զրպարտեցին երբեմն արիանոսքն ստութ̄ և ասեն՝ թէ և նա զմերս խորհի ։ Իսկ նա իբրև լուաւ բարկացաւ և զարմացաւ ընդ լուրն ։ Յետ այսորիկ աղաչեցին զեպիսկոպոսն և եղբարքն ամ̄ և իջուցին 'ի լեռնէ անտի և տարան յԱղեքսանդրիա . և քարոզեաց վասն արիանոսացն և ասէ՝ եթէ 'ի հերձուածողութէ են և ինքնակամ . և ասէր եթէ յետին է սա և կարապետ նեռինն ։ Ուսուցանէր զժողովուրդսն և ասէր՝ եթէ հաստատած ոչ է որդին ա̄յ և ոչ արարած և ոչ 'ի չգոյէ եղեալ, այլ 'ի հօր էութէ և 'ի բնութէ է բան և իմաստութի . և վասն այսորիկ ամբարշտութի է ասել՝ եթէ էր երբեմն զի չէր, քանզի միշտ էր բանն էակից հօր ։ Աստի և ոչ մի ինչ հաղորդութի ասէր ունել առ ամբարիշտ արիանոսսն . քանզի և ոչ մի ինչ միաբանութի գոյ լուսոյ ընդ խաւարի ։ Իսկ դուք վասն զի բարիոք պաշտէք, քրիստոնեայք էք . բայց նոքա զի արարած ասեն զառ 'ի հօրէ զորդին ա̄յ զբանն, ոչ ինչ են մեկուսի

'ի հեթանոսաց, վասն զի սպառ տանէին արարածոց փոխանակ արարչին ա̃յ: Հաւատամք զի և սոյն իսկ արարածք ա̃մ բարկացեալ են վասն նոցա, զի զհաստատիչն և զտէրն որով ա̃մ ինչ եղև՝ ընդ եղեալս համարին:

Այլ այլքն ա̃մ ուրախ լինէին, վասն զի լսէին յայնպիսւոյ առնէն նզովել զքնամարտ հերձուածն: Իսկ քաղաքացիքն ա̃մ առ հասարակ ընթանային տեսանել զԱնտոնիոս: Իսկ հեթանոսքն և որ անուանեալ քուրմքն էին նոցա, յեկեղեցին գային և ասէին. աղաչեմք տեսանել զայրն ա̃յ, քանզի ամենեքեան զնա անդ այսպէս կոչէին, վասն զի և անդ 'ի ձեռն նորա զբազումս բժըշկեաց տէր 'ի դիւաց և զպակասեալս 'ի մտաց ողջացոյց: Բազումք և 'ի հեթանոսաց աղաչէին գոնեայ մերձենալ 'ի ծերունին միայն, քանզի հաւատային շահս օգտի գտանել, և վասն այսորիկ այնչափ քրիստոնեայք եղեն 'ի սակաւ աւուրսն յայնոսիկ որ ոչ գոյր թիւ: Այլ իբրև կարծէին ոմանք 'ի ժողովրդոցն թէ խռովի, և վասն այնորիկ յետս դարձուցանէին զբազումս 'ի նմանէ: Իսկ նա ոչ եթէ խռովեալ ինչ ասէ ցնոսա՝ եթէ ոչ են սոքա բազումք քան զդևսն որ մարտնչէին ընդ մեզ 'ի լերինն: Այլ յորժամ 'ի բաց գնայր և յուղարկէաք զնա, և իբրև հասաք 'ի դուռնն, կին մի զկնի աղաղակէր և ասէր. կաց մնաց, այրդ ա̃յ, զի դուստր իմ 'ի դիւէ անհնարին չարչարի. մնա աղաչեմ զի մի ես վշտացայց ընթանալով: Իբրև լուաւ ծերունին և աղաչեցեալ եղև 'ի մէնջ, անց մնաց կամելով: Այլ իբրև մերձեցաւ կինն, և աղջիկն անկեալ դնէր յերկիր, իսկ Անտոն իբրև զաղօթսն արար և զՔս̃ անուանեաց, յոտն եկաց աղջիկն ողջ, և դևն 'ի բաց գնաց 'ի նմանէ, և մայրն օրհնէր զա̃ծ և ամենեքեան գոհանային, և ինքն ուրախ երթալով 'ի լեառն իբրև յիւր տուն:

Այլ իմաստուն էր յոյժ. և սքանչելի այն էր զի դպրութի̃ն ոչ էր ուսեալ և այնպէս լի էր բարի խորհրդով և էր գիտուն այր: Երբեմն փիլիսոփայք երկու հեթանոսք եկին առ նա, և կարծէին այնպէս եթէ կարեմք զփորձ առնուլ Անտոնեայ: Այլ էր նա յայնժամ 'ի լերինն արտաքնում, և ծանեաւ 'ի դիմաց անտի զարսն. ելանէր արտաքս և ասէր նոցա թարգմանաւ. զի՞ այդչափ աշխատ եղերուք, ով փիլիսոփայք, գալ առ յիմար

այր։ Եւ նոքա ասեն. ոչ ես յիմար, այլ կարի իմաստուն յոյժ։ Ասէ ցնոսա. զի թէ առ իբրև յիմար ոք եկիք, զուր և տարապարտուց են վաստակք ձեր. ապա եթէ կարծէք զինէն թէ իմաստուն եմ, եղերուք և դուք իբրև զիս, քանզի պարտ և պատշաճ է նմանել բարեաց. և ես եթէ առ ձեզ եկեալ էի, յայտ է թէ նմանեցի ես ձեզ։ Արդ վասն զի դուք եկիք առ իս, եղերուք իբրև զիս, քանզի քրիստոնեայ եմ։ Եւ նոքա զարմացան և ՚ի բաց գնացին, քանզի տեսանէին զդևս երկուցեալս յԱնտոնեայ։

Դարձեալ այլք ոմանք այսպիսիք եկին առ նա ՚ի լեառն արտաքին, և կարծէին եթէ կարեմք խաղ առնել զնա զի առանց դպրութեան է։ Ասէ ցնոսա Անտոն. զի՞նչ է առաջին՝ միտք եթէ գիրք, և ո՞ր պատճառք են գիւտի՝ միտք գրոցն եթէ գիրք մտացն։ Եւ նոքա ասեն. միտք յառաջ են, և գտակք գրոց են միտք։ Ասէ Անտոն. ապա թէ այդպէս է, որ միտքն ողջ են՝ չեն ինչ նմա պիտոյ գիրք։ Եւ այսու բանիւ զմերձաւորսն և զնոսա հիացուցանէր։ Եւ չոգան գնացին այնուհետև զարմացեալք, վասն զի տեսին այնչափ իմաստութիւն ՚ի նմա առանց խարդախութեան և դպրութեան։ Քանզի ոչ եթէ իբրև ՚ի լերին սնեալ և անդ զարգացեալ ծերութեամբ՝ վայրենի ինչ բարք էին, այլ յոյժ զուարթակամ էր և քաղաքաբարոյ։ Եւ էին բանք նորա համեմեալ ա͞ծային աղիւն, զի մի ոք չարեացի ամենևին ընդ նա և մի չարախնեսցէ, այլ առաւել ուրախ լինէին ամենեքեան որք գային առ նա։

Յետ այսորիկ դարձեալ եկին առ նա ոմանք յիմաստուն հեթանոսացն և պահանջէին ՚ի նմանէ բան վասն Ք͞նի հաւատոցն որ ՚ի մեզ է, և ձեռն արկանէին և իշխէին քննել և խնդրել հակառակութ͞ք վասն քարոզութեան ա͞ծեղէն խաչին, և կամէին ընդ խաղ արկանել զիրսն։ Եւ Անտոն սակաւ մի արգել զինքն. և նախ գթացեալ ՚ի վերայ նոցա տգիտութեան, և ապա ասէր առ նոսա թարգմանաւ այնու որ գեղեցիկ զնորայն թարգմանէր, և ասէր այսպէս. ո՞ր բարւոք է՝ ՚ի խա՞չ խոստովանել եթէ չնութ͞ի պատանեկագիտութ͞ք զանկանել որ ձեր աստուածքն անուանեալ են. քանզի զոր մեքս ասեմք՝ արութիւն և առաքինութիւն է հաստատուն նշա-

նակ և արհամարհանաց մահու յայտնի գիտութի. իսկ ձերդ գիջութէ ախտ է և անհնարին թշնամանաց: Այլ դարձեալ որ բարուք է ասել. զի բանն այ ոչ ստեղծաւ, այլ նոյն ինքն որպէս և էրն՝ վասն փրկութե մարդկան և բարերարութե յինքն առաւ մարմին մարդկեղէն, զի մարդկան ծննդեան կցորդ եղեալ արասցէ զմարդիկ կը-ցորդ իւրոյ ածեղէն և իմաստնական բնութէն, եթէ յանձնառուս նմանեցուցանել զմտ և վասն այսորիկ պաշ-տել զչորքստանիս և զատղուս և զմարդկան պատկերս, քանզի այս ձեր իմաստնոցն են գիւտք պաշտամանց: Այլ զիա՞րդ իշխէք դուք զմեզ ծաղր առնել, և ասէք զՔն մարդ յայտնեալ. որ և դուք 'ի մտաց զհոգին որոշէք և ասէք մոլորեալ զնա և անկեալ յերկնից: Այլ երանի թէ 'ի մարմին և 'ի մարդ միայն ասէիք, և ոչ 'ի ստ-ղուս և 'ի չորքստանիս փոփոխեալ և շրջեալ: Վասնզի մեր հաւատքս վասն փրկութե մարդկան զՔրիստոսի գա-լուստն ասեն, իսկ դուք մոլորութիւս անեղելածինս հո-գւոց պատմէք. և մեք զհնարն և զխոհթն և զմարդա-սիրութիւն զկանխագէտ մատակարարութեն խորհիմք, զի և այս ոչ ինչ է գժուարին այ. իսկ դուք 'ի պատկեր մտաց զհոգին ասելով կործանմամբ զանկանէք զնա, և ասէք զնա փոփոխելի առասպելաբար, և ապա այ-նուհետև զնոյն ինքն զմիտսն վասն հոգւոյն 'ի փոփո-խումն խոնարհեցուցանէք. քանզի որպիսի ինչ իցէ պատկերն, նոյնպէս հարկ է լինել նմա որոյ պատկերն է: Այլ յորժամ վասն մտացն այսպիսի ինչ կարծիցիք, խորհեցարուք զի և զնա իսկ զհայր մտացն հայհոյէք: Իսկ վասն խաչին զի՞նչ ինչ լաւ կարասջիք ասել, եթէ՝ ոչ ստութբ և կեղծաւորութբ՝[1] մատնութե չարացն համ-բերեալ 'ի խաչին՝ և չերկնչել թէ որպէս զիարդ ոք ինչ և էր մահն 'ի վերայ եկեալ, եթէ մոլորութիւնն Ոսիրիդեայ և Իսիդեայ և միստակարութի կայծական ծնելոյ առանցից և փախուստն Որհմեայ և որդւոցն գիշատումն և հայրասպանութե առասպելս բարբանջել: Այսպէս է ձեր իմաստութի: Այլ իբրև ծաղր առնելով զՔն և ոչ զարմանայք ընդ յարութին. քանզի որ զայնն ասացին՝ և զայս նոքա գրեցին: Այլ կամ ընդէր յիշե-լով զխաչն՝ լուռ լինիք և վասն մեռելոցն զոր յարոյց և

1 Չէք 'ի յոյնն էնէ ոչ ստութեամբ և կեղծաւորութեամբ:

կուրացն որոց աչքն բացան և անդամալուծացն որ բժշկեցան և բորոտացն որք սրբեցան և զ՚ի ծովուն վերայ հետևակագնացութիւն և զայլոց նշանացն և զարուեստիցն որք ոչ են մարդկօրէն, այլ ա՟ծ յայտ առնեն զՔ՟ս։ Այլ կարի յոյժ թուիք ինձ անիրաւ մեղանչել, և ոչ սուրբ մտօք և ընտանութ՟ք ընդ հարեալ էք ընդ գիրս մեր։ Այլ երթայք ընթացարուք դուք և տեսէք զոր ինչ արարն Ք՟ս, զի ա՟ծ յայտ առնեն զնա եկեալ ՚ի փրկութի մարդկան։

Ասացէք դուք մեզ և զձերն. և զի՞նչ ինչ ասասջիք և վասն անասնոցն, բայց եթէ անասնութի և վայրենութիւն. ապա եթէ որպէս լսեմ կամեսջիք ասել՝ առասպելաբար ասացեալ է զայս առ ձեզ, և այլ ընդ այլք պատմել զյափշտակութի աղջկանն սանդարամետականին յերկիր և զՀեփեստեայ կաղութիւն ՚ի հօր և զՅերեայն յօդս և զԱպողոնեայն յարեգակն և զԱրտեմեայն ՚ի լուսին և զՊոսիդոնեայն ՚ի ծով, ոչ ինչ է վատթարութի նուազութե զա՟ծ պաշտել, այլ արարածոց պաշտօն մատիք փոխանակ ա՟յ որ զա՟մ հաստատեաց։ Արդ վասն զի բարուք և գեղեցիկք են արարածքս, այդպիսիս հաստատեալ կազմեաց. այլ պարտ և պատշաճ էր ձեզ մինչև ՚ի զարմանալն միայն հասանել, և ոչ աստուածացուցանել զարարածս, զի մի զհաստողին պատիւ եղելոցս մատուսջիք. վասն զի ժամ է ձեզ և զարուեստապետին պատիւն որ ՚ի նմանէ հաստեցաւ՝ ՚ի տունն փոխել և կամ զզօրավարին պատիւն զօրականին։ Արդ զի՞նչ ինչ ասասջիք առ այս, զի գիտասցուք եթէ արդարև նախատանաց ինչ ունիցի խաչն Ք՟սի։

Այլ նոքա ափշեալ և տարակուսեալ լինէին և զերեսս այսր անդր տանէին բերէին։ Հեզաբար ծիծաղեալ Անտոն և դարձեալ ասէ ցնոսա թարգմանաւն՝ եթէ այս և ՚ի դոյն իսկ յերեսաց ձերոց ունի զյանդիմանութիւն. վասն զի դուք յեցեալ յուսացեալ էք ՚ի հաստատութի գիտութե բանից, և զայս արուեստ ունելով կամիք և զմեզ և՛ս զի մի առանց բանից հաստատութեան զա՟ծ պաշտեսցուք։ Արդ ասացէք նախ դուք ինձ զիրս և մանաւանդ վասն ա՟ծգիտութե թէ որպէս ճշմարիտ գիտացեալ լինի, յայտնութեամբ գիտութե բանից՝ եթէ գործովք զօրութե հաւատոց. և ո՞վ նախ երիցագոյն է, զօրութե հաւատքն՝ եթէ բանից յայտնու-

թեան գիտութեա՞ն։ Որքա ետուն պատասխանի և ասեն՝
եթէ նախ առաջին է ճշմարիտ հաւատոյն գիտութիւն։
Ո՞չ է Ո՞նտոն. բարւոք ասացէք, քանզի հաւատք 'ի հաս-
տատութէ և 'ի սիրոյ ոգւոյն լինին. իսկ խոստովանն
յարուեստէ շինողաց և 'ի հաստողաց բանից է։ Ապա
թէ այդպէս է, յորս գոյ հաւատոյ զօրութի, սոցա ոչ
ինչ է պիտոյ հարկաւորն, այլ և աւելի ևս են բանիցն
յայտնութե գիտութիւնք. և զոր ինչ մեք հաւատովք
իմանամք, դուք զայս 'ի ձեռն բանից կամիք կազմել և
շինել. և բազում անգամ դէպ լինի զի և ոչ 'ի գիտու-
թիւն բերել կարէք բանիւք զոր մեքն իմանամք։ Վասն
այսորիկ լաւագոյն և հաստատագոյն զօրութե են հա-
ւատքն քան զիմաստութե ձերոցն խորհրդոց։

Վասնզի մեք քրիստոնեայքս ոչ իմաստութե բանիւք
հեթանոսաց ասացեալ՝ ունիմք զխորհրդակցութի նն,
այլ զօրութե հաւատոյն որ շնորհեցաւ մեզ 'ի ձեռն
Յի Քի այ։ Եւ զի ճշմարիտ է բանս, և ահա մեք
առ այժմ ոչ եմք ուսեալ գիր՝ հաւատամք յած, և գի-
տեմք յարարածոց նորա զառ 'ի յամ ինչ կանխագի-
տութի զօրութե և մատակարարութեն այ, և հաստա-
տուն և հզօր են հաւատք մեր. և ահա այժմ յեցեալ
և հաստատեալ եմք 'ի Քս հաւատովք նորա, և դուք
'ի բանամարտիկ իմաստնականութիդ։ Սակայն ձերդ 'ի
նմանութի կերպարանացդ առ աչս տեսիլքն խափանին.
իսկ որ առ մեզ հաւատքս՝ աճեցեալ զարգանան և ձգին
ամ ուրեք։ Եւ դուք խորհելովդ և հնարելովդ և հա-
կառակելով արուեստից իմաստութե բանիւքդ՝ ոչ զոք
'ի քրիստոնէից կարէք հաւանեցուցանել 'ի հեթանո-
սութի. իսկ մեք զառ 'ի Քն հաւատն ուսուցանելով
լերկեմք և նուազեցուցանեմք զձեր դիւցականութեան
պաշտօնդ՝ գիտելով ամենեցուն զՔս թէ ած է և որդի
այ։ Եւ դուք ձերովդ գեղեցկաբանութե ոչ կարէք ընդ-
ոտս անկանել և խափանել զՔսի վարդապետութիւն.
իսկ մեք անուանելով զխաչելեալն Քս՝ հալածեմք ա-
մենեւին զդեւսն յորոց դուք երկնչիք իբրև յաստուածոց.
և ուր նշան խաչին հասանէ՝ տկարացեալ լինին մոգու-
թիւնք և ոչ զօրէ կախարդութիւն։

Ասացէք դուք ինձ, ո՞ւր են ձեր այժմ յառաջագիտու-
թիւնք՝ հարցուածոյն մոլեգնութե, և ո՞ւր են եգիպ-

տացուցին զխառունս, որ են մեղացն առաջօքն տեսիլք. և երբ այս ամ̃ լռեալ դադարեաց և սկսարացաւ՝ թէ ոչ յորժամ Տ̃ի խաչն եղև։ Իսկ արդ աղօթք արժանի լիցի սա նախատանաց և ծաղր առնելոյ, եթէ ևս առաւել խափանեալքն 'ի նմանէ և յանդիմանեալքն տկարութբ։ Վասնզի և այս իսկ զարմանալի է, զի ձերն ոչ ուրեք երբեք յումեքէ հալածեցաւ, այլ 'ի մարդկանէ և յամ̃ քաղաքս պատուեալ լինի. իսկ Տ̃ին հալածեալ լինի, և առաւել ևս մերս քան զձերդ ծաղկէ և բազմանայ. և ձերն գովութբ և զգոյշ պահպանութբ ապականի և հնանայ, իսկ Տ̃ի հաւատքն և վարդապետութին ծաղր լինելով 'ի ձէնջ և բազում անգամ հալածելով 'ի թագաւորաց ելից զաշխարհս ամ̃։ Վասնզի երբ այսպէս ա̃ծգիտութի ծագեաց, և երբ այսպէս ողջախոհ պարկեշտութի և առաքինութի կուսութեան երևեցաւ, և կամ երբ այսպէս արհամարհեցաւ մահ, եթէ ոչ յորժամ խաչն Տ̃ի հաստատեցաւ։ Եւ զայս ոչ ոք է անգէտ՝ տեսանելով զմարտիրոսն որք արհամարհեցին զմահ վասն Տ̃ի, տեսանելով զեկեղեցւոյ սուրբ կուսս որք վասն Տ̃ի պահեն ամբծութբ զմարմինս իւրեանց։ Եւ էր բաւական այս հաւատոյն նշան յայտ առնել զառ 'ի Տ̃ն հաւատոն՝ զի նա միայն է ճշմարիտ յա̃ծպաշտութիւն։ Ապա թէ դուք և այլ ևս թերահաւատէք և խնդրէք զբանիցն բազմասացութի խորհրդոց, իսկ մեք ոչ հեթանոսաբար հաւանութբ, որպէս ասաց վարդապետն մեր՝ զայս ունիցիմք, այլ հաւատոցն հաւանիմք, որ առաքինութեամբ յինքն կազմէ զբանիցն շինուածս։ Արդ ահաւասիկ են աստ ախտացեալք 'ի դիւաց, քանզի էին ոմանք եկեալք առ նա ախտացեալք 'ի դիւաց, և 'ի մէջ անցուցեալ ասէ ցնոսա. դուք խորհրդովք ձերովք և բազմաբանութբ որպիսի արուեստիւք և կամիք՝ զոր զուր և ընդունայն նմանութի կերպարանաց ձերոց կոչէք, սրբեցէք զդա. ապա թէ ոչ կարէք, 'ի բաց ընկեցէք ընդ մեզ զկռուի և տեսջիք զզօրութիւն խաչին Տ̃ի։ Եւ զայս ասելով՝ 'ի վերայ կարդաց զՔ̃ս և կնքեաց զախտաւորն նշանաւ խաչին երկիր և երիր անգամ, և անդէն վաղվաղակի անցեալ կացին առջն առողջք և ողջամիտ զգաստութբ։

Եւ այնուհետև զոհանային զտեառնէ. և որք ա-

նուաճեալ փիլիսոփայքն էին, զարմացան և ճշմարիտ հիացեալ լինէին ընդ իմաստութե̅ սանն և ընդ եղեալ նշանն։ Իսկ Նեստոր ասէ. զի՞ զարմացեալ էք 'ի վերայ այսորիկ. ոչ եթէ մեք որ առնեմք, այլ Ք̅ս է որ առնէ 'ի ձեռն այնոցիկ որ հաւատան 'ի նա։ Արդ հաւատացէք և դուք իբրև զմեզ և տեսէք զի ոչ գոյ 'ի մեզ արուեստ բանից, այլ հաւատք սիրով 'ի Ք̅ս զօրացեալ. զոր և դուք եթէ ստացեալ լինիք, ոչ ևս այնուհետև զբանիցն յայտնութիւն խնդրեսջիք, այլ բաւական զառ 'ի Ք̅ս հաւատսն համարեսջիք։ Այս էին Նեստորեայ բանքն։ Իսկ նոքա յոյժ ևս զարմացեալք 'ի բաց գնացին, և համբուրէին զնա և խոստովանէին բազում ինչ օգտեալ 'ի նմանէ.

Այլ եհաս մինչ 'ի Թագաւորս համբաւն Նեստորի. քանզի զայս իբրև լուաւ Կոստանդիանոս Թագաւոր և որդիք նորա Կոստանդին և Կոստաս և Կոստանդիոս՝ որք Թագաւորազունքն էին; գրէին 'ի նա իբրև 'ի հայր, և աղօթիւք խնդրէին 'ի նմանէ ընդունել փոխանակ այնր գիր։ Այլ նա ոչ վասն գրոյն ինչ փոյթ առնէր և ոչ 'ի վերայ Թղթոյն խնդայր ինչ, այլ նոյն ինքն էր նա որպէս և յառաջին էր մինչ չև գրեալ էր առ նա Թագաւորացն։ Այլ յորժամ բերեալ լինէին նմա Թուղթքն, կոչէր զմիաբանակեացսն և ասէր՝ թէ մի զարմանայք զի. գրեալ է առ մեզ Թագաւորացն, զի մարդիկ են. այլ զարմացարուք զի Ա̅ծ զօրէնս իւր ետ մեզ իբրու զի մարդիկ եմք, և որդւոյն իւրով խօսեցաւ ընդ մեզ։ Այլ ոչ կամէր ընդունել զԹուղթսն ասելով այսպէս՝ եթէ ոչ գիտեմք փոխանակ այսր անդէն գրել։ Այս բանադատեալ եղև ողոքանօք յամ̅ միաբանակեցացն՝ եթէ քրիստոնեայք են Թագաւորքն, և զի մի իբրև տարակուսեալք գայթակղեսցին։ Այս հրամայէր ընթեռնուլ և փոխանակ գրել անդէն, և ընդունէր զնոսա զի Ք̅ի երկրպագուք էին. և խրատ տայր նոցա 'ի փրկութիւն և մի մեծ ինչ համարել զմօտաւորս և զձեռամբ եկեալս, այլ յիշել առաւել զպատրաստեալ դատաստանն և գիտել զի Ք̅ս միայն է ճշմարիտ Թագաւոր յաւիտենական։ Այլ աղաչէր զնոսա մարդասէրս լինել, և հոգ տանել արդարութե̅ և աղքատաց։ Այլ նոքա իբրև ընկալան, յոյժ ուրախ լինէին։ Այլ այսպէս ամենեցուն սի-

ըմպէ լինէր Աշտամ, և ամենեքեան աղաչէին ընդունել
զնա իբրև զհայր ։

Այլ այսպիսեացս իբրև զխառն եղև և այսպէս պա-
տասխանի առնելով որք գային առ նա, դարձեալ դառ-
նայր 'ի ներքսագոյն սենեակն և զամփոփութիւն կրկին
իւր 'ի գործ արկանէր ։ Այլ բազում անգամ դէպ լինէր
զի յորժամ նստէր ընդ այնպիսիս որ մտանէին առ նա,
միտքն համբարձեալ լինէին այսպէս և զբեալ է 'ի Պա-
նիլէն. զի թէպէտ և նա յետ ժամուց խօսէր զխորհ-
բանիցն ընդ եղբարսն որ էին ընդ նմա, սակայն նոքա
զգային թէ տեսիլ ինչ տեսանէ նա. քանզի է որ յԵ-
գիպտոս ինչ լինէր, բազում անգամ մինչդեռ 'ի լերինն
նստէր, տեսանէր և պատմէր Սերապիոնի եպիսկոպոսի
որ 'ի ներքսն էր և տեսանէր նա զԱնտոնիոս զբաղեալ
տեսլեամբքն ։ Այլ երբեմն մինչդեռ նստէր և գործէր,
իբրև մեկնեալ ինչ եղև 'ի հիացումն, և 'ի բազում
տեսլեանն հեծեծէր և մնչէր, և ապա յետ ժամու
միոյ դարձեալ առ այնս որ ընդ էին՝ հառաչեաց և լի
եղև ահագին դողութեամբ. յարուցեալ կայր յաղօթս, և
ծունր եդեալ կաց մնաց բազում ժամս, և կանգնեալ
անտի լայր ծերունին ։ Այլ իբրև լի եղեն ամենեքեան
դողութեամբ և երկեան որք ընդ նմայն էին և աղաչէին
նորա ուսանել 'ի նմանէ և յոյժ նեղէին զնա, մինչև բռա-
նադատեալ ասէր այսպէս մեծապէս հեծեծելով. ով
որդեակք իմ, բարւոք էր մեռանել յառաջ մինչ չև ե-
ղեալն իցէ այս տեսիլ ։ Այլ նորա դարձեալ աղաչէին
զնա ։ Իսկ նա արտասուելով ասէր՝ եթէ 'ի վերայ ե-
կեղեցւոյ բարկութիւն ինչ հասանելոց է, և եթէ մատ-
նելոց է 'ի ձեռս մարդկան որք նմանն են անասնոց չնչա-
ւորաց ։ Տեսի ես զսեղանն տէրունական և շուրջ զնո-
վաւ ջորիք զի կային յամ կողմանց և աքացէին զայնս
որ 'ի ներքսն էին՝ այնպէս որպէս ստահակքն յամեհի անաս-
նոց որք անառակք կայտռիցեն վայրապար անզգուշիւք ։
Այլ ապա հեծեծելով և յոգւոց հանելով ասէր. ապա-
քէն զգացէք զխարդ յոգւոց հանէի, քանզի լուայ ձայն
որ ասէր՝ եթէ սեղանն իմ 'ի պղծութիւն մատնեսցի ։
Զայս ետես ծերունին, և յետ երկուց ամաց եղև այժ-
մու արիանոսացս 'ի վերայ յարձակումն և յափշտակու-
թիւն եկեղեցեացս, յորժամ և զսպասն բռնաբար յա-

փրշտակեալ հեթանոսաց տայրն բառնալ, յորժամ և հեթանոսացն հարկ առնէին թողուլ զգործ և գալ ժողովել ընդ նոսա, և առաջի նոցա առնէին 'ի վերայ սեղանոյն զինչ և կամէին: Յայնժամ մեք ամենեքեան գիտացաք զի կայտուռիկատակ Ջորւոցն զայս յայտ արարին Նստանեայ, զոր այժմ արխանոյքն առնեն անսասանաբար իբրև ընչաւորք: Որպէս զտեսիլն ետես, այնպէս և եղև, որպէս լուան որք անդն էին: Ապաչէր և մխիթարէր ասելով՝ թէ մի վհատեալ տրտմիք, որդեակք. քանզի որպէս բարկացաւն տէր, սոյնպէս և դարձեալ բժշկէ, և դարձեալ վաղվաղակի անդրէն յինքն ընկալցի եկեղեցի զկարգ իւր, և ըստ սովորութեան վերստին որպէս զլոյս պայծառ ծագեսցէ, և տեսջիք զհալածեալսն անդրէն հաստատեալս, և զամբարիշտսն տեսջիք անդրէն 'ի յորջսն 'ի բաց երթեալ գնացեալ, և զբարեպաշտ հաւատսն ամբարձեալ ամենայն ազատութ՟ եմ՟ ուրեք: Դուք միայն պինդ կացէք այժմ և մի պղծէք զձեզ ընդ արխանոսսն. քանզի ոչ է այս առաքելոցն վարդապետութիւն, այլ դիւաց և հօր իւրեանց սատանայի, և առաւել անսասուն է անծին ուղիղ խորհրդոց, որպէս և Ջորւոցն ընչաւորաց: Այսպիսի էր Նստոնին:

Այլ ոչ է արժան մեզ թերահաւատել թէ այսչափ սքանչելիք եղեն 'ի ձեռն մարդոյ, քանզի փրկչին է խոստումն որ ասէ. թէ ունիջիք հաւատս իբրև զհատն մանանխոյ և ասասջիք լերինս այսմիկ թէ փոփոխեաց աստի՝ փոխեսցի և ոչ ինչ եղիցի ձեզ տկարութի. և դարձեալ, ամէն ամէն ասեմ ձեզ զի զոր ինչ խնդրիցէք 'ի հօրէ իմմէ յանուն իմ՝ տացէ ձեզ. խնդրեցէք և տացի ձեզ: Այլ նա է որ ասաց աշակերտացն և ամենեցուն որ հաւատան 'ի նա. զհիւանդս բժշկեցէք, զդևս հանէք, ձրի առէք և ձրի տուք: Վասնզի ոչ եթէ հրաման տալով բժշկէր Նստոն, այլ յաղօթս կալով և զՔս անուանելով, մինչև ամենեցուն յայտնի լինել զի ոչ նա էր որ առնէր, այլ տէր էր որ 'ի ձեռն Նստոնի զիւր մարդասիրութիւն ցուցանէր, որ բժշկէրն զախտաժէտս. Նստոնի՝ միայն աղօթքն էին և գեղեցիկ կրօնաւորութիւնն: Վասն որոյ և 'ի լերինն նստէր. և թէպէտ և ուրախ էր վասն ա՟ծական տեսլեանցն, սակայն արտմէր զի 'ի բազմաց նեղեալ լինէր:

Ի լեռանն արտաքին ելանէր, քանզի և դատաւորք աղաչէին զնա 'ի լեռնէն իջանել, վասն զի խնդրանք ոչ կարէին երթալ անդ վասն դատախազացն որ զկնի նոցա շրջէին, և աղաչէին զի միայն եկեսցէ և տեսցեն զնա: Եւ նա 'ի բաց դառնայր և հրաժարէր և ոչ կամէր երթալ զառ 'ի նոսայն ճանապարհն: Եւ նոքա կայէին մնային և վիճէին. և մանաւանդ զդատապարտեան պահպանութեամբ զինուորացն մօտ անդր առաքէին, զի գոնեայ 'ի նոցա պատճառս իջցէ: Իսկ 'ի հարկէ բռնադատեալ լինէր՝ իբրև տեսանէր զնոսա զի լային և ողբային, և գայր 'ի լեռանն արտաքին: Իսկ դարձեալ ոչ եթէ անօգուտ ինչ լինէր աշխատութիւն նորա, քանզի բազմաց շահ օգտի լինէր և բարեգործութի̅ էր մերձաւորութի̅ նորա: Իսկ դատաւորացն օգուտ լինէր խրատն տալով, և առաւել քան զա̅մ պատուել զարդարութի̅ և երկնչել յա̅յ, և գիտել թէ որով դատաստանաւ դատին՝ դատելոց են: Բայց սակայն 'ի լերինն բնակել առաւել քան զա̅մ ինչ սիրէր: Յայնժամ իբրև բռնադատեալ եղև յայնցանէ որոց պէտքն պահանջէին, և 'ի զօրավարէն՝ վասն զի առաքեաց առ նա բազում և աղաչեաց իջանել 'ի լեռնէն, և ապա իջանէր և խօսէր սակաւ մի որ մերձեցուցանէր 'ի փրկութիւն, և առաւել վասն կարօտելոցն փութայր: Իսկ որում դուքսն առէին, աղաչէր զնա սակաւ մի յամել առ նոսա: Իսկ նա ասէ ցնա՝ եթէ ոչ կարեմ յամել առ ձեզ. և զուարթալից և ուրախարար առակաւ հաւանեցուցանէր զնա և ասէր՝ թէ զոր օրինակ ձկունք յերկարեալ 'ի ցամաքի յերաշտ չորութեան սատակին, սոյնպէս և միայնակեացք որ յերկարեն առ ձեզ և առ ձեզ շրջին՝ լքեալ լուծանին. արդ պարտ և արժան է որպէս ձուկն 'ի ծով՝ սոյնպէս և մեզ 'ի լեռանն փութով հասանել, զի մի երբէք յամեալք մոռասցուք զվանական կրօնսն: Իբրև լուաւ զայս զօրավարն և այլ ևս բազում 'ի նմանէ, զարմացաւ և ասէ. Ճշմարտիւ այր ա̅յ է սա. քանզի ուստի՞ գտանի այսչափ իմաստութի̅, մանաւանդ որ առանց դպրութե̅ է, թէ ոչ էր սիրելի ա̅յ:

Զօրավար մի որում անուն էր Բաղակիոս, դառնութեամբ հալածէր զմեզ զքրիստոնեայս վասն փոյթ յանձին ունելոյ օգտութիւն տանելոյ դաժանութեաց արիանո-

տացն. և այնչափ անհնարին էր խակ և խիստ և ստահակ, մինչև զկուսանս անգամ գան հարկանել, և ըզմիայնակեացն մերկացուցանել և տանջել։ Ապա առաքեաց առ նա Անտոն և գրեաց այսպիսի պատճառ 'ի Թղթին՝ եթէ տեսանեմ զի գայ բարկութին 'ի վերայ քո, համդարտեա 'ի հալածելոյ զքրիստոնեայսդ, զի մի հասցէ 'ի վերայ քո բարկութիւնն, քանզի ահա պատրաստեալ է գալ։ Իսկ Բաղակիոս ծիծաղելով և Թքանելով 'ի նա ընկէց յերկիր զԹուղԹն, և որք բերինն Թշնամանեաց և զայս պատուիրեաց պատմել Անտոնի. քանզի հոգաս, ասէ, վասն աբեղայիցդ, արդ ահա և 'ի վերայ քո եկեց։ Իսկ ոչ անցին աւուրք հինգ, և եհաս 'ի վերայ նորա բարկութին. քանզի յառաջ էր վանս մի 'ի քաղաքին աղեքսանդրացւոց որ կոչի Պերէուսաւ, չոգաւ ինքն Բաղակիոս և սպարապետն եգիպտացւոց, և երկոքեան հեծեալ էին 'ի ձիս. և էին ձիք Բաղակայ քաղցամուդք և համդարտք քան զամենեսեան որ բուծեալն էին առ նմա։ Մինչ չև հասեալ էին նոքա 'ի տեղին, սկսան ձիքն ըստ սովորութեն խաղալ ընդ միմեանս. և յանկարծակի 'ի համդարտագոյն վայրի յորոյ վերայ նստէր Նեստորիոս, և նա ատամանցի զԲաղակ յերկիր ընկենոյր և հարկանէր 'ի վերայ նորա, և այնպէս ատամամբքն հերձեաց զբարձս նորա մինչև անդէն վաղվաղակի 'ի քաղաքն առնուլ տանել զնա և յերիր աւուր մեռանել նմա, և ամենեցուն զարմանալ. զի զոր յառաջագոյն ասաց Անտոն, վաղվաղակի եղև։

Այսպէս դաւանցն բարի խրատ տայր, և զայլսն որ գային առ նա՝ այնպիսի միաս դնէր նոցա, մինչև անդէն իսկ վաղվաղակի մոռանալ նոցա զամբարտաւանութին և երանել զայնոսիկ որ 'ի բացն մեկնեցան և գնացին 'ի կենաց աշխարհիս այսորիկ։ Իսկ զի այսպէս վերակացու էր զրկելոց, մինչև կարծել եթէ ոչ այլ ոք, այլ ինքն է զրկեալ։ Իսկ այսպէս դարձեալ ամենեցուն բաւական էր յօգտութի, մինչև զբազումս իսկ զինուորեալս և որք բազում ինչս ստացեալ ունէին՝ 'ի բաց հարկանել, Թողուլ զծանրութի աշխարհիս և այնուհետև լինել միայնակեաց։ Իսկ այսպէս ամ եգիպտացւոցն էր իբրև զբժիշկ տուեալ յԱյ. քանզի ով ոք երԹայր առ նա, և ոչ գնայր լի ուրախութբ 'ի նմանէ. ով ոք երԹայր առ

նա որոյ մերձեալ որք էր նմա, և ոչ անդէն վաղվաղակի ՚ի բաց եղեալ լինէր սուգն. ո՞ որ գնայր առ նա բարկացեալ, և ոչ ՚ի սէր փոփոխեալ լինէր. ո՞ որ աղքատ հասեալ առ նա վաստակեալ և ձանձրացեալ կենօք աշխարհիս, և ոչ իբրև լուաւ ՚ի նմանէ և ետես զնա՝ արհամարհեաց զմեծութիւն և մխիթարեցաւ յաղքատութիւնն. ո՞ որ միայնակեաց վաստակեալ և լքեալ ՚ի վարուցն՝ միայն եհաս առ նա, և ոչ առաւել հզօրագոյն եղև. ո՞վ որ մանուկ եկն ՚ի լերանն և միայն ետես զԱնտոն, և ոչ անդէն վաղվաղակի ցանկացեալ ՚ի ցանկութեանցն և սիրեաց պարկեշտութիւն ողջմիտ կալ. ո՞վ որ գայր առ նա վշտացեալ ՚ի դիւաց, և ոչ լինէր հանգուցեալ. ո՞վ որ գայր առ նա նեղեալ խորհրդովք, և ոչ խաղաղանայր և ցածնոյր մտօք։ Քանզի այս էր դեղեցիկ կրօնաւորութիւն Անտոնի, որպէս յառաջն ասացի, շնորհս ունէր մեկնութեան հոգւոց և ճանաչէր զնոսա ՚ի շօշափմունս և ՚ի շարժմունս, և եթէ առ որ ինչ որք ունի զյարձակումն և զփոյթ մեծապատկար խարդախութեանն. ոչ եթէ նա միայն ոչ խաբէր ՚ի նոցանէ, այլ և յայլոցն որք նեղեալ էին խորհրդովք ՚ի նոցանէ՝ ուսուցանէր թէ որպէս կամ զիարդ կարասցեն զխորհուրդս նոցա յինքեանց ՚ի բաց հալածել, վասն զի պատմէր նա զգործ խորամանկութեան և զտկարութիւն նոցա։ Քանզի ոմն որք իբրև զեղջերու իջանէր ՚ի նմանէ, քաջալերեալ և համարձակեալ ՚ի վերայ իմաստից խորամանկութեանց բանսարկուին և դիւաց նորա։ Իսկ քանի՞ կուսանք որ ՚ի խօսման կային, միայն իբրև տեսանէին զԱնտոն յայնմ կողմանէ միայն ՚ի Քն հաստատեալ կային մնային կուսանք։ Իսկ գային յարտաքին կողմանցն առ նա, և նոքա ընդ ամենեսին զօգուտն ընկալեալ դառնային անդրէն իբրև ՚ի հօրէ յուղարկեալք։ Քանզի իբրև ննջեաց նա, ամենեքին իբրև որբք ՚ի հօրէ մնացին և լոկ միայն նորա յիշատակօքն մխիթարէին զանձինս, և միանգամայն յինքեանս ուսանելով զխրատն և զմխիթարութիւն վարդապետութեան նորա. զորոյ վախճան կենաց նորա և ինձ արժան է յիշել և ձեզ լսել փափագելով։

Քանզի և այս նորա նախանձելի էր, որ ըստ սովորութեան այց առնէր միայնակեցացն որ յարտաքնումն լերինն էին. և յառաջագոյն ուսեալ ՚ի յառաջագէտ մարգարէութէ

խնամոցն ձ՛ն վ՛ն իւրոյ վախճանին, խօսէր ընդ եղբարսն և ասէր՝ եթէ զայս վերջին այցելութի՛ առնեմ ձեզ, և զարմանամ եթէ դարձեալ զմեզ աստ՝ այսինքն ասեմ՝ այսու կենօք տեսցուք. քանզի ժամանակ է ինձ այսուհետև դարձի իմոյ, քանզի մերձ եմ ամաց հարիւր և հնգից: Այլ կէսքն իբրև լուէին, լային և գիրկս արկանէին և համբուրէին զծերունին: Իսկ նա իբրև յօտար քաղաքէ յիւր տունն դառնալով գնալով՝ խօսէր և պատուիրէր նոցա մի վհատել և մի լքանել 'ի վաստակոցն և մի ձանձրանալ 'ի վարս կրօնաւորութե՛ն, այլ որպէս համապազօր մեռանելով կեալ, որպէս յառաջին ասացի. փոյթ ունել և պահել զօգիսն յաղտեղի խորհրդոց և նախանձ առնել ընդ սուրբսն և մի մերձենալ 'ի հերձուածողս մելետիանոսս, քանզի գիտէք զնոցա չար և զպիղծ բարոյսն. և մի ինչ բնաւ միաբանութի՛ ունել ընդ ամբարիշտ արիանոսս, քանզի և սոցա ամբարշտութիւն ամենեցուն յայտնի է. և մի եթէ տեսանիցիք զդատաւորս վերակացուս նոցա և օգնականս, քանզի դադարելոց է և առ սակաւ մի է նոցա առաջօք տեսիլն իբրև մահկանացուաց: Արդ առաւել սուրբ պահեցէք զձեզ 'ի նոցանէ, և զգուշացարուք զհարցն աւանդութիս և զպատուիրանս զոր աւանդեցին ձեզ. և նախ առաջին քան զա՛մ զառ 'ի տէր մեր Յ՛ն Ք՛ն զբարեպաշտութե՛ հաւատոյն զոր 'ի գրոց ուսայք ամենեքին, զոր և ես բազում անգամ յիշեցուցանէի ձեզ:

Այլ եղբարքն բռնադատէին զնա լինել անդ մինչև կատարեսցի: Իսկ նա ոչ կամէր յանձին վասն բազում ինչ իրաց, իբրև զի ինքն լուռ կայր և ցուցանէր յինքեան, և մանաւանդ վասն այսորիկ զի եգիպտացիքն զմարմինս հանգուցելոց և զփոյթ վաստակաւորաց և մանաւանդ զսուրբ մարտիրոսաց սիրեն պատել պինդ կտաւովք և դնել. այլ ոչ եթէ ընդ հողով ծածկեն, այլ 'ի վերայ մահճաց դնել և պահել 'ի ներքս առ ինքեանս, քանզի կարծեն այսու պատուել զհրաժարեալս իւրեանց 'ի կենաց աշխարհիս: Իսկ Անտոնիոս բազում անգամ վասն այսորիկ և զեպիսկոպոսն աղաչէր պատուիրել ժողովրդոցն, և զաշխարհականսն յամօթ առնէր և կանանցն սաստէր և ասէր. ոչ օրինաւորական և ոչ բնաւ սրբութիւն է այս. քանզի յառաջ հարցն և նահապե-

տացն և մարգարէիցն մինչև ցայժմ ողջ պահէին շիրիմք նոցա, և նորին իսկ տեառն մարմինն 'ի շիրմի եդաւ և քար 'ի վերայ կափուցեալ ծածկեաց զնա մինչև յարեաւ յետ երից աւուրց։ Այլ զայս ասելով յայտ առնէր անօրինել որոց մարմինք յետ վախճանելոյն ոչ ծածկեցան, թէպէտ և սուրբ իցէ․ քանզի զի՞նչ է մեծ և սրբագոյն քան զտէրունական մարմինն։ Այլ բազումք իբրև լուեալ զայս, այնուհետև ծածկէին ընդ հողով և գոհանային զտեառնէ բարւոք ուսեալք։ Իսկ նա վասն զի զայս գիտէր, երկնչէր թէ մի գուցէ զնորա մարմինն արասցեն այնպէս, և փութացուցանէր զինքն հրաժարել 'ի միայնակեցացն որ յարտաքնում լերինն էին։

Այլ իբրև եկն 'ի ներքին լեառնն յորում սովոր էր լինել, յետ սակաւ ամսոց հիւանդացաւ և կոչեաց զնոսա որք ընդ իւրն էին․ և էին երկուք որք եղեն ընդ նմա 'ի ներքս ամս հնգետասան՝ վարուքն կրօնաւոր և սպաս տանել նմա վասն ծերութեանն։ Ասէր ցնոսա․ Ես որպէս և գրեալ է՝ զճանապարհս հարցն երթամ, քանզի տեսանեմ զիս կոչեցեալ 'ի տեառնէ։ Այլ դուք արթուն կացէք այսուհետև և զբազմամեայ կրօնս ձեր մի կորուսանէք, այլ իբրև թէ արդ սկիզբն արարեալ փութացարուք պահել զյօժարութիւն ձեր․ քանզի գիտէք իսկ զխաբեբայ զհասակար դևսն, գիտէք զիարդ վայրենիք են և տկար զօրութ̃բ․ և արդ մի երկնչիք 'ի նոցանէ, այլ 'ի Քսէ միշտ․ և մի հնամայք և հաւատայք այս տուրևառիկ շնչոյս, այլ իբրև թէ հանապազ մեռանիցէք՝ կացէք միտ դնելով անձանց և յիշելով զխրատն զոր լուայք յինէն։ Մի իմն լիցի միաբանութիւն ձեր առ հերձուածողսն և մի բնաւ ամենևին առ կամակոր ինքնակամ արիանոսսն, քանզի գիտէք զիարդ և ես փախչէի 'ի նոցանէ վասն քրիստոսամարտութեան նոցա և օտարափառ բարուցն։ Այլ փութացարուք և դուք առաւել միաբանել զձեզ նախ առաջին ընդ տեառն և ապա ընդ սուրբս նորա, զի յետ մահուանն 'ի յաւիտենական բնակութիւնն իբրև զսիրելիս և զծանօթս ընկալցին զձեզ․ և դուք զայս ընդ միտ ածէք և զսոյն խորհեցարուք։ Այլ զի եթէ փոյթ ինչ իցէ ձեզ վասն իմ և յիշեցէք զիս իբրև զհայր, մի ումեք թողուք տալ առնուլ զմարմինն իմ յԵգիպտոս, զի մի գուցէ 'ի տունս տարցեն զի-

ցեն զիս, քանզի վասն այսորիկ եկի մտի 'ի լեառնս յայս. և գիտէք զկարգ յամօթ առնէի զայնս որ զայնպիսիսն առնէին և պատուիրէի դադարել յայնպիսի սովորութէ: Արդ թաղեցէք զձերս դուք և մի տայք եգիպտացւոցն, և ծածկեցէք ընդ հողով. և եղիցի բանս իմ պահեալ 'ի ձեզ, զի մի ոք գիտասցէ զտեղին՝ բայց միայն 'ի ձէնջ. քանզի ես 'ի յարութեն մեռելոց ընկալայց զսա անապական 'ի փրկչէն: Եւ բաժանեցէք զիմ հանդերձս, և տուք զմի մաշկեակս և զոր 'ի ներքոյ արկանէի անկողինն՝ Աթանասի եպիսկոպոսի, զոր անկողինն նա նոր ետ ինձ և յինէն եղև հնացեալ. և Սերապիոնի եպիսկոպոսի տուք զմիւս ևս մաշկեակն, և դուք կալջիք առ ձեզ զայծեղէն զգեստն. և այսուհետև ողջ մնացէք, որդեակք, քանզի Անտոն փոխելոց է աստի և այլ ոչ ևս է ընդ ձեզ բնակելոց:

Զայս իբրև ասաց, և նոքա համբուրէին զնա, համբարձ զաչս իւր և ետես զսիրելիսն իւր որք եկին զնմանէ, և վասն այսորիկ լի ուրախութեամբ լինէր. քանզի երևէր անկեալ զնելովն զի զուարթ երեսօք նուազեցաւ ոգիքն և յաւելաւ առ հարս իւր: Եւ նոքա այնուհետև որպէս ետ նոցա պատուէր՝ թաղեցին զնա, և պատեալ զմարմինն նորա ծածկեցին ընդ հողով. և ոչ ոք գիտէ զտեղին ուր ծածկեցին զնա մինչև ցայժմ, բայց միայն 'ի նոցանէ յերկուցն: Եւ որք առին իւրաքանչիւր ոք զերանելոյն Անտոնի զմաշկեակն և զմաշկ հանդերձն, իբրև զմեծ ինչ պահէին. քանզի տեսանելով զայն՝ իբրև զԱնտոն՝ տեսանէին, և արկանելովն զիւրեամբք՝ իբրև թէ զնորա խրատ միխթարութեն բարձեալ էր յանձին՝ խնդութեամբ հանդերձ ունէին:

Այս է մարմնոյն կենաց վախճան երանելոյն Անտոնի, և այս կրօնիցն և վարուցն սկիզբն. և եթէ փոքր է այս առ նորա առաքինութիւն, այլ յայսմանէ համարեցարուք և դուք եթէ որպիսի ինչ ոք էր այրն այ Անտոնիոս 'ի մանկութէ մինչև յայս չափ հասակի՝ հարթ պահեալ զյօժարութի կրօնիցն: Եւ ոչ վասն ծերութեն պարտեցաւ երբէք 'ի բազում կրօնիցն և ոչ վասն տկարութե մարմնոյն փոխեաց զձև հանդերձին և ոչ ջրով զոտս լուացաւ, և սակայն յամի կաց մնաց անվնաս. քանզի և աչքն էին առողջ և տեսանէր գեղեցիկ, և յատա-

մանց անտի նորա և ոչ մի ոչ թափեցաւ, բայց միայն ընդ լնդօքն մաշեալ եղև վասն բազմամեկեցութե՟ հասակի ծերութեանն. և ոտիւքն և ձեռօքն ամբողջ մնացեալ անցուցանէր զաւուրս իւր, և ա՟մ իւիք քան զա՟մ ոք որք ազգի ազգի կերակրօք և լուացիւք և պայծառ հանդերձիւք զարդարեալ էին՝ նա առաւել պայծառագոյն երևէր, և առ զօրութիւնն յօժարագոյն: Այլ ա՟մ ուրեք հռչակեալ լինէր և զարմանալի ամենեցունց և ցանկալի յայնցանէ որոց ոչ էր տեսեալ զառաքինութիւն և զաստուածասէր ոգւոյ նորա յայտնութիւն: Քանզի ոչ եթէ վասն գիտութե՟ դպրութե՟ և ոչ վասն արտաքին ինչ իմաստութեան և ոչ վասն արուեստի իրիք, այլ միայն վասն ա՟ծպաշտութե՟ եղև Անտոնիոս ամենեցուն ծանօթ և սիրելի: Այլ այս յա՟յ պարգևք եղեն նմա զոր ոչ ոք ուրասցի. քանզի ուստի 'ի Սպանիա և 'ի Գաղղիա և զիարդ 'ի Հռոմ և յԱփրիկէ՝ որ 'ի լերինն թագուցեալ նստէր՝ լսելի եղև, եթէ ոչ ա՟ծ էր որ ա՟մ ուրեք գիտակ առնէ զիւր մարդն, որ և Անտոնի 'ի սկզբանն զայս խոստացաւ: Զի թէպէտ և նոքա 'ի ծածուկ գործեցին և ոչ արարին ազդ մարդկան, այլ տէր զնոսա իբրև ճրագ վառեալ ամենեցուն յայտնի առնէր. զի և զայս որք լսեն՝ գիտասցեն եթէ կարող են պատուիրանք ա՟ծն յուղղել, և նախանձ առաքինութե՟ ճանապարհին ընկալցին:

Արդ զայս և այլոց եղբարց ընթերցջիք, զի ուսցին եթէ տէրն մեր և փրկիչն Յս՟ Քս՟ զփառաւորիչս իւր փառաւորէ, և որք ծառայեն նմա մինչև 'ի վախճան՝ ոչ միայն յարքայութիւնն երկնից տանի, այլ և աստ որք թագուցեալ և փոյթ յանձին կալեալ են մեկնելով առանձնանալ՝ յայտնի հռչակեալ և հոյակապս վասն իւրեանց առաքինութեն և վասն այլոց օգտի առնէ ա՟մ ումեք: Այլ թէ պէտք ինչ լինիցին, և հեթանոսաց առաջի ընթերցանիջիք, զի գոնեայ այսպէս գիտասցեն զտէր մեր Յս՟ Քս՟՝ ոչ միայն ա՟ծ է և որդի ա՟յ, այլ զի և որ նմա մտադիւրութե՟ և ընտանութե՟ պաշտօն տանին և հաւատան 'ի նա բարեպաշտութե՟, զդևսն զոր նոքա հեթանոսքն կարծեն թէ ա՟ծք են՝ զնոսա քրիստոնեայք յանդիմանեն ոչ միայն զի չեն ա՟ծք, այլ և կոխեն ևս և հալածեն իբրև զմոլարս և զապականիչս, որպէս և երանելի հայրս մեր Անտոնիոս արար 'ի փառս ա՟յ և Քս՟ի նորա և սուրբ հոգւոյն յաւիտեանս յաւիտենից:

ԹՈՒՂԹ

# ՍԵՐԵՊԻՈՆԻ ՍՈՒՐԲ ՀՕՐՆ

## ԱՌ ԱՇԱԿԵՐՏՍ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ԱՆՏՈՆԻ

## ԱՌ ՄԱԿԱՐ ԵՒ ԱՌ ԱՄԱՏԱՍ

Մեծ բարեխօս կորոյս աշխարհս, և մեծ մարդ ընկալաւ երկինք. եգիտ վերինն զոր խնդրէր, և կորոյս ներքինս զոր ունէր. տօն է այսօր վերնոցն վասն երթալոյ նորա 'ի վեր, իսկ ապականութի՟ն բազում և նեղութի՟ն որք 'ի խոնարհս մնացաք վասն հրաժարելոյ նորա 'ի մէնջ: Արդ տեսէք, եղբարք. առժամայն իսկ յորժամ հրաժարեաց ծերունին 'ի մէնջ՝ որ և յաղագս տեղերաց էր բարեխօս՝ երանելին Անտոն, ահա միանգամայն իսկ անկեալ կործանեցաք, և վշտացեալ լինին ա՟մ տարերքս առ հասարակ, և բարկութի՟ն ա՟յ հասեալ նախ Ճարակէ զԵգիպտոս. և ահա հեռանալն նորա 'ի մէնջ եցոյց զմեր իսկ մերս ապականութե: Արդ որչափ եւս, ասէ, առաւել համարձակութի՟ նորա ցուցցէ զեղեալսն յերկինս զուրախութիւն: Այս մինչդեռ սուրբն յերկրի էր, խօսէր և բարբառէր և զսուրբ ձեռս իւր միշտ տարածեալ ունելով առ Ա՟ծ և խօսելով ընդ նմա վայելչացեալ պայծառանայր 'ի տէր, և իջանել բարկութե ոչ տայր Թոյլ, և 'ի վերին խորհրդոյն համարձակելով որքոյն՝ զբարկութի՟ն ա՟յ արգելոյր առ մեզ: Արդ իբրև ձեռնն այն ամփոփեալ ժողովեցաւ և ոչ ոք գտաւ որ կարէր արգելուլ 'ի մէնջ զիջումն բարկութեանն, և արդ յանկարծակի ծորեալ էջ և վշտացուցանէ զամօր իսկ գաւառ և ապականել կամի զա՟մ ինչ: Այս քանզի Ահարոն՝ յորժամ սկսան հարուածքն լինել 'ի ժողովրդեանն, զբուրվառն առեալ ընդդէմ բարկութե՟ն ա՟յ՝ եկաց որոշելով զնա 'ի մէջ մեռելոցն և 'ի մէջ կենդանեացն, և նմանց ոչ ետ մեռանել, և բարկութե՟ն ա՟յ

իջանելոյ 'ի խոնարհ ոչ թողացոյց, և զոմանս պահեաց կենդանիս, իսկ զմահճն 'ի բաց դարձոյց, և դադարեալ եկաց բարկութիւն այ պատկառելով յարդարոյն ։ Իսկ ծերունին յերկրի երանելին Անտոն մինչդեռ էր ընդ մեզ, զսուրբ բուրվառն միշտ ունէր 'ի վեր կախեալ, և զբարկութիւն այ շիջուցեալ չթողոյր գալ առ մեզ ։ Իսկ արդարեւ յորժամ սուրբն այն ընդ մեզ էր, ոչ ևս էջ. և սուրբն այն մինչդեռ ընդ մեզ էր, բարկութիւն հեռի էր 'ի մէնջ. և իբրև անց արդարն, դարձեալ եգիտ ժամանակ և էջ առ մեզ՝ զարգելիչն իւր չգտանելով 'ի միջի մերում ։ Արդ զո՞ր արտասուս հեղցուք և կամ զո՞ր ողբս ողբասցուք որ 'ի չքնաղ և 'ի սքանչելագործ սըրբոյն յետոյ գտաք և 'ի մեծ բարկութենէ պաշարեալք եղեաք ։ Իսկ արդ վասն զի դեղ այսմ ոչ գտանել ոչ կարեմք, ապա այժմ առ ձեզ աղաւթիւմք՝ որ պարտիք զնորա նմանութիւնն առնուլ, սուրբ աշակերտք երանելոյն, որ տպաւորեալ 'ի ձեզ պարտիք զնորայն վարդապետութիւն. ողջ լերուք 'ի տէր ։

ՃԱՌ

# ՊԱՒՂԱՅ ՄԻԱՅՆԱԿԵՑԻ

ՊԱՒՂ էր այր հողագործ, և առաւել ամբիծ և անարատ և սուրբ վարուք, և մտաւոր կարգայ բարեաց, և ամուսնացեալ 'ի կարգս աշխարհիս. և պատահեաց կինն չարաբար և այլանդակ 'ի գործ շնութեն ։ Քանզի Պաւղ ընդ ժամանակս ժամանակս բացօթեայ լինէր. և յաւուր միոջ գալ եղև 'ի տուն իւր և եգիտ զնա և զխիղեղն 'ի միասին ։ Իսկ բարբառեցաւ ծերն և ասէ

Պաւղ էր այր հողագործ և առաւել ամբիծ և անարատ և սուրբ վարուք և մտաւոր կարգաց բարեաց, և ամուսնացեալ էր 'ի կարգս աշխարհի. և կինն նորա չարաբարոյ պատահեաց և այլանդակ 'ի գործս շնութեն ։ Քանզի Պաւղ ժամանակաւ բացօթեայ լինէր, և կինն չարաբարոյ զոր ինչ կամէր գործէր անվեհեր ։ Իսկ յաւուր միոջ եկն Պաւղ 'ի տուն իւր յանդաստանաց իւր, և յանկարծակի եմուտ և եգիտ զնա և զխեղեխն նորա 'ի միասին. իսկ նոքա յերկիւղէն 'ի փախուստ դառնալ և աներևոյթ լինել ոչ ժամանեցին ։ Իսկ ծերն բարբառեցաւ առ

ցնոսա. աղաղակեւ ասեմ ձեզ՝ այսօր արձակեցէք զիս 'ի ձէնջ: Եւ ասէ ցսիրելեացն. Տնիւ ասեմ քեզ՝ այսուհետեւ չէ իմ ամուսին, երթ աՀա ունիս զնա 'ի կնութե և զմանկունսդ յորդեգրութե, և ես այսուհետեւ առնեմ միայնակեաց: Եւ ոչ ումեք ասաց, և չոգաւ գնաց 'ի վանս երանելւոյն Անտոնի:

Եւ իբրեւ եհաս 'ի դուռն՝ բախեաց զդուրս խրճթին, և ել նա 'ի դուրս երանելին Անտոն և ասէ. ով ես և կամ զի՞նչ խնդրես: Եւ ասէ ցնա Պաւղ. ես եմ և կամիմ միայնակեաց լինել: Եւ ասէ ցնա Անտոն. դու այր ծեր ես և անցեալ զժամանակօք՝ ոչ կարես միայնակեաց լինել. այլ պարտ է քեզ երթալ 'ի գեօղ մի և գործել և ուտել զկերակուրն և փառաւորել զԱծ, քանզի ոչ կարես Համբերել նեղութեց որ են յանապատի: Իսկ ծերն ասէ. զԱմ որ ինչ ասես ինձ՝ առնեմ: Ասէ ցնա Անտոն. ասացի քեզ թէ ծեր ես, եթէ կամիս երթ մուտ 'ի միաբանակեցաց վանս և լեր ընդ նոսա որ կարող են զծերութի քո մխիթարել: Եւ այսպիսի

նոսա և ասէ. մի երկնչիք զի չար ոչ ունիմ ինչ առնել ձեզ, այլ լուարուք ինձ զոր ասեմս Ճշմարտութբ 'ի Քս. աՀա այսօր աղաչեցայ ես 'ի ձէնջ և 'ի մնոտի ունայնութէ աշխարհիս: Եւ ասէ ցսեղբին. Քնիւ ասեմ քեզ՝ այսուհետեւ դու չէ իմ ամուսին, երթ աՀա ունիս զնա 'ի կնութե, նոյնպէս և զտունս զայս և զոր ինչ իմ է՝ քեզ ունիս ընդ կնոջ այսորիկ, և այլ ոչ է իմ այդորիկ [illegible], նոյնպէս և մանկունս իմ քեզ յորդեգիրս եղիցին. զի ես աՀա Հրաժարեմ 'ի ձէնջ և բովանդակ յամ աշխարհէ, և առնեմ միայնակեաց՝ որում ցանկայի 'ի Հերուն Հետէ, և լից ած զփափագս իմ. և զայս վասն այն ասացի. զի առանց կարծեաց և անՀոգութբ կացջիք: Զայս ասացեալ ել 'ի նոցանէ և 'ի բնակութէ իւրմէ և 'ի զաւակացն և 'ի գոյիցն. ոչ ինչ առեալ Թոշակ ընդ իւր, այլ իբրեւ օտար ոք այնպէս եղեալ՝ գնաց նախ յեկեղեցին գեղջն, և կացեալ անդ յաղօթս յերկարս արտասուօք՝ յանձնեաց զինքն յԱծ, զի կարծանեացէ զԹշնամին կենաց առաջի նորա. և ելեալ գնաց 'ի վանս յանապատին երանելւոյն Անտոնի:

Եւ իբրեւ եհաս 'ի դուռն բախեաց զդուրս խրճթին, և ել նա 'ի դուռն երանելին Անտոն և ասէ. ով ես և կամ զի՞նչ խնդրես: Ասէ ցնա Պաւղ. ես եմ, ով Հայր, մարդ գաւեհիկ, այլ կամիմ միայնակեաց լինել. արա ակր և ժողովեա զիս առ քեզ և լից զփափագս իմ: Ասէ ցնա Հայրն Անտոն. դու այր ծեր ես և անցեալ ժամանակօք, ոչ կարես միայնակեաց լինել, այլ պարտ է քեզ երթալ 'ի գեօղ մի և գործել և ուտել զկերակուրն և փառաւորել զԱծ, վասն զի ոչ կարես Համբերել նեղութեց որ են յանապատի: Իսկ ծերն Պաւղ ասէ. զԱմ զոր ուսուցանես ինձ առնեմ, ով Հայր պատուական, միայն ժողովեա զիս: Ասէ ցնա Հայրն Անտոն. ասացի քեզ թէ ծեր ես, այլ թէ կամիս երթ մուտ 'ի միաբանից վանս և լեր ընդ նոսա որ կարող են զծերութիւնդ քո

բանս դժուարինս առաց ծերոյն և փակեաց զդուրսն և ոչ ել արտաքս զչորս աւուրս։ Իսկ ծերն ոչ մեկնեցաւ անտի։ Եւ յաւուրն հինգերորդի ել արտաքս, և իբրև ետես Անտոն զծերն զի կայր անդ՝ ասէ ցնա. Ել գնա աստի, ալեւոր, զի՞ ձանձրացուցանես զիս. ոչ կարես կալ դու աստ։ Եւ ասէ ծեր ցԱնտոն. չիք հնար այլուր մեռանել ինձ, բայց եթէ աստ։ Ետես Անտոն թէ կերակուր ինչ չունի և ոչ ջուր, և այս չորք աւուրք են զի առնի աստ առանց ուտելոյ և ըմպելոյ, խորհեցաւ ընդ միտս իւր Անտոն և ասէ. գուցէ մեռանի զի տխմար է և ոչ գիտէ պահել, և առնի ինձ դատապարտանք յոյժ։

Եւ ասէ Անտոն ցծերն. արի եկ 'ի ներքս, եղբայր։ Եւ առեալ Անտոնի ընդ աւուրսն ընդ այնպիսի զման-կութեան տխուր զպահս և զաղօթս, և թրմեաց Անտոն արմաւենի և ետ ծերոյն և ասէ ցնա. առ մանեա զայս չուան որպէս ես մանեմ։ Եւ մանեաց ծերն մինչև ցինն ժամն գիրկս մինչև երկերիւր և քսան, և յոյժ աշխատեցաւ։ Եւ հայեցեալ ետես երանելին զմանուածն և ոչ հաճեցաւ և ասէ ցասմամբ. ոհ զի չարաչար մանե-

միխիթարել։ Եւ զայս ասացեալ փակեաց զդուրսն ընդդէմ նորա և ոչ ընկալաւ զծերն և ոչ կամեցաւ զնա և ոչ ել արտաքս զչորս աւուրս։ Իսկ ծերն Պաւղ ոչ մեկնեցաւ անտի։ Եւ յաւուրն հինգերորդի ել արտաքս հայրն Անտոն, և իբրև ետես զծերն զի կայր անդէն՝ ասէ ցնա. դե՞ռ ես աստէն ես և ոչ գնացեր. ասացի քեզ մի անգամ՝ ոչ կարես կալ դու աստ, արդ մի՛ ձանձրացուցաներ զիս, ով ալեւոր դու, երթ գնա աստի, ընդէ՞ր նեղեալ վշտացուցանես զիս. և դու զիա՞րդ կալով արտաքոյ ոչ երկեար 'ի գազանաց անապատիս որ շրջին աստ 'ի գիշերի. այլ արդ գնա, մի այլ յամեցիր աստ։ Ասէ ծերն Պաւղ ցհայրն Անտոն. ով հայր պատուական, մի կարծեր թէ գնալոց եմ աստի ես, զի չիք հնար այլուր մեռանել ինձ, բայց եթէ աստ առաջի դրաց քոց։ Իսկ երանելին Անտոն ետես թէ կերակուր ինչ ոչ ունի և ոչ ջուր, և այս չորք աւուրք են զի առնի աստ առանց ուտելոյ և ըմպելոյ, խորհեցաւ ընդ միտս իւր և ասէ. եթէ ոչ ընդունիմ զսա այսպէս, գուցէ մեռանիցի սա աստ, քանզի տխմար է և ոչ գիտէ պահել, և առնին ինձ դատապարտանք յոյժ։

Յայնժամ ասէ հայրն Անտոն ցծերն Պաւղ. արի եկ 'ի ներքս, եղբայր։ Եւ իբրև էառ զծերն 'ի ներքս 'ի խրճիթն իւր, ասէ 'ի միտս իւր. սա ոչ կարէ ժուժկալել յանապատի, և յետոյ գնայ և նախատեալ այպանէ զվարս միայնակեցացս. պարտ է փորձել զժուժկալութիւն սորա։ Յայնժամ առեալ Անտոնի յաւուրսն յայնպիսի զախս մանկութեան և յոյժ 'ի պահս և յաղօթս, և թրմեաց արմաւենի և ետ ծերոյն և ասէ ցնա. առ մանեա զայս չուան որպէս ես մանեմ։ Եւ մանեաց ծերն մինչև ցինն ժամն զգիրկս իբրև երկերիւր և քսան, և յոյժ աշխատեցաւ։ Եւ հայեցեալ ետես երանելին Անտոն զմանուածն և ոչ

ցեր, քակեա և դարձեալ սկսիր մանել։ Եւ պահէր այն օր հինգ, և էր այր ծեր և անցեալ զժամանակօք. և այնպէս պնդեաց Անտոն զծերն, զի փախիցէ յաշխատութենէն։ Իսկ երանելի ծերն քակեաց զչուանն և դարձեալ մանեաց մեծաւ աշխատութբ։ Եւ ետես Անտոն զծերն եթէ ոչ տրտնջեաց և ոչ նեղսարտեաց և ոչ խռժոռեցաւ ինչ և ոչ ամենևին կնճիռն ծնաւ յերեսս նորա, և յոյժ ուրախ եղև Անտոն իբրև զայն ետես։

Եւ եղև երեկոյ և ասէ Անտոն ցծերն. հայրիկ, եթէ կամիս ճաշակեսք փոքր մի հաց։ Ասէ ցնա ծերն. որպէս և կամիս, հայր։ Եւ յայսմ առաւել ուրախ եղև Անտոն, զի ոչ ընթացաւ յուտելն, այլ յԱնտոն կրթեաց զիշխանութիւն, և ասաց՝ որպէս դու կամիս արա։ Եդ Անտոն ծերոյն սեղան, և արբանեկէր սուրբն Անտոն ծերոյն իբրև զմանուկ մի։ Եւ եբեր եդ 'ի սեղանն պաքսամատս չորք, այս ինքն վեցերորդ մասն նկանակի միոյ, և ծերոյն եթաց մի և զերիսն չոր եդ 'ի սեղանն. և սկսաւ ասել սաղմոս երանելին Անտոն՝ երկոտասան սաղմոս և երկոտասան ծունր եդ։ Եւ յայսմ ևս փորձեաց զծերն, իսկ ծերն առաւել ևս յօժարութբ կայր յաղօթս քան զԱնտոն։ Իբրև կատարեցին զերկոտասան ժամն և սկսան ուտել, եկեր Անտոն զմի կտորն և այլ

հանձեցաւ և ասէ ցասմամբ. ոհ չարաչար մանեցեր և աւերեցեր, արդ քակեա անդրէն և դարձեալ սկսիր մանել։ Եւ անսուաղ էր հինգ օր ծերն Պաւղ և նքթեալ էր, քանզի հնացեալ և անցեալ ժամանակօք էր. և այնպէս պնդեաց զծերն հայրն Անտոն պահօք և աշխատութբ, զի գնասցէ և փախիցէ յաշխատանաց։ Իսկ երանելի ծերն Պաւղ քակեաց զչուանն և դարձեալ անդրէն մանեաց մեծաւ աշխատութեամբ։ Եւ ետես հայրն Անտոն զծերն եթէ ոչ տրտնջեաց և ոչ նեղսարտեաց և ոչ խռժոռեցաւ ինչ, և ոչ ամենևին կնճիռն ծնաւ յերեսս նորա, զայն տեսեալ հայրն Անտոն յոյժ ուրախ եղև։

Եւ իբրև երեկոյ եղև, ասէ հայրն Անտոն ցծերն. հայրիկ, եթէ կամիս ճաշակեսցք փոքր մի հաց։ Ասէ ցնա ծերն. որպէս և կամիս, հայր։ Եւ յայսմ ևս առաւել ուրախ եղև հայրն Անտոն, զի ոչ ընթացաւ յուտելն, այլ յԱնտոն յանձնեաց զիշխանութիւն և ասաց՝ որպէս դու կամիս արա։ Յայնժամ հայրն Անտոն եդ ծերոյն սեղան և արբանեկէր նմա իբրև մանկան. և եդ 'ի վերայ սեղանոյն հաց պաքսամատս չորս, այսինքն վեցերորդ մասն նկանակի միոյ, և եթաց մի խաւ, և զերիսն ծերոյն։ Եւ սկսաւ երանելին Անտոն և ասաց զերկոտասան սաղմոս, և երկոտասան ծունր եդ։ Եւ յայսմ ևս փորձեաց զծերն. իսկ ծերն առաւել ևս յօժարութբ կայր յաղօթս քան զհայրն Անտոն։ Իբրև կատարեցին զաղօթս ժամուն և սկսան ուտել, եկեր Անտոն զմի կտորն և այլ ոչ մերձեցաւ. իսկ ծերն յուշիկ ուտէր։ Իբրև ետես եթէ հայրն

ոչ մերձեցաւ. իսկ ծերն յուշիկ ուտէր։ Իբրև ետես եթէ Անտոն եթող, և նա ոչ մերձեցաւ. և մնայր Անտոն ծերոյն մինչև սպառեսցէ։ Այլ իբրև ետես ծերն եթէ եթող Անտոն, եթող և ծերն։ Այլ ասէ Անտոն. կեր, եղբայր։ Ասէ ծերն. եթէ դու ուտես՝ և ես, և եթէ դու ոչ ուտես՝ և ոչ ես։ Ասէ Անտոն. ինձ շատ է զի միայնակեաց եմ։ Այլ ասէ ցնա ծերն. և ինձ շատ է քանզի և ես կամիմ միայնակեաց լինել։ Այլ դարձեալ յարեան և արարին ժամ և երկոտասան ծունր եդին։ Այլ իբրև կատարեցին զաղօթսն, և առին մէն մի խո-տեղէն և ննջեցին սակաւ, և յարեան 'ի մէջ գիշերին և սկսան պաշտել մինչև ցայգն։

Այլ ետես Անտոն զյօժարութի͞ն ծերոյն և զերթալ զհետ կարգին աշակերտութե͞, և ասէ Անտոն ցծերն. ահա զչափ առեր. արդ եթէ կարես հանապազօր այսպէս առնել, կեր ընդ իս. եթէ ոչ, գնա ուր և կամիս։ Ասէ ծերն. եթէ առաւել ևս քան զայս յաւելուս՝ ոչ գիտեմ, այլ այսմ ևս ատակ եմ։ Յայնժամ Անտոն ասէ ցնա. ահա յանուն Ք͞ի եղեր և դու միայնակեաց։ Այլ հաճեցաւ Անտոն յոյժ վարս ծերոյն, զի կատարեալ ծառայ Ք͞ի եղև ծերն։ Այլ յետ սակաւ աւուրց անցեալ, քանզի աջող էր Անտոն յոյժ գործս բարիս, և արար խրձիթ մի 'ի բացեայ յիւրմէ իբրև մղոնօք չորիւք։ Այլ ասէ Անտոն ցնա. ահա զօրութի͞ն Ք͞ի յա-

Անտոն եթող. յայնժամ և նա ոչ մերձեցաւ. իսկ հայրն Անտոն մնայր ծերոյն թէ սպառեսցէ զեփեալ բաժինն առաջի նորա։ Եւ իբրև դադարեաց և նա և ոչ ուտէր, ասէ սուրբն Անտոն ցծերն. կեր, եղբայր։ Ասէ ծերն. եթէ դու ուտես՝ և ես, և եթէ դու ոչ ուտես՝ և ոչ ես։ Ասէ ցնա հայրն Անտոն. ինձ շատ է զի ես միայնակեաց եմ։ Ասէ ցնա ծերն՝ և ինձ շատ է, քանզի և ես միայնակեաց կամիմ լինել։ Յայնժամ յարեան և արարին աղօթս և երկոտասան ծունր եդին։ Եւ իբրև կատարեցին զաղօթսն, առին մէն մի խոտեղէն և ննջեցին սակաւ, և յարեան 'ի մէջ գիշերի և սկսան կատարել զպաշտօնն մինչև ցայգն։

Եւ ետես երանելին Անտոն զյօժարութի͞ն ծերոյն և զերթալն զհետ կարգին աշակերտութե͞, և ասէ ցծերն. ահա զչափ առեր. արդ եթէ կարես հանապազօր այսպէս առնել, կեր ընդ իս. և եթէ ոչ՝ գնա ուր և կամիս։ Եւ ասէ ծերն. եթէ առաւել քան զայս աւելուս՝ ոչ գիտեմ, այլ այսմ ևս հաստատակեմ։ Յայնժամ ասէ հայրն Անտոն ցնա. ահա յանուն Ք͞սի եղեր և դու միայնակեաց։ Եւ հաճեցաւ սուրբն Անտոն ընդ վարս ծերոյն յոյժ, զի կատարեալ ծառայ Ք͞սի եղև ծերն։ Եւ յետ սակաւ ինչ անցանելոյ աւուրց ասէ ցծերն. կամիս զի խրձիթս քեզ արասցուք, քանզի ահա զօրութի͞ն Ք͞սի յաջողեաց քեզ զի եղեր

ջողեաց քեզ զի եղեր միայնակեաց, արդ լեր միայն։ Եւ եթող Անտոն զծերն 'ի խրճիթի անդ, և ինքն գնաց յիւր խրճիթն։

Եւ իբրև եղև աւր մի ծերոյն, շնորհք տուան նմա յԱյ բժշկել զհիւանդս և զախտաժէտս և հաստատել նմա 'ի կարգ միայնակեցութե սքանչելապէս։ Եւ յաւուր միոջ ածին դիւահար մի առ Անտոն, չար առաւել քան զչարս։ Իբրև ետես Անտոն զերիտասարդն, ասէ ցածողսն. այս գործ ծերոյն է, զի նա արժանաւոր եղև շնորհացս այսոցիկ։ Եւ առեալ երանելւոյն զպատանին եկն առ ծերն և ասէ. հայր Պաւղ, հրամայեա դիւիս ելանել 'ի պատանւոյս, զի փառաւորեսցի անուն տեառն մեր Յի Քի։ Ասէ ծերն. դու զինչ գործես։ Ասէ Անտոն. ես ոչ ժամանեմ, քանզի գործ ունիմ։ Եւ եթող զպատանին առ ծերոյն և եկն յիւր խրճիթն։ Յարուցեալ ծերոյն և կայր յաղօթս ըստ սովորութե իւրում. և իբրև կատարեաց զաղօթսն իւր, ասէ ցդևն. որպէս ասաց հայրն Անտոն՝ ել 'ի պատանւոյդ, զի փառաւորեսցի անունն Այ։ Եւ դևն մեծաձայն սկսաւ թշնամանել զնա և ասէ. այ դառնացեալ ծեր, զի՞ կայ իմ և քո զի հալածես զիս։ Իսկ երանելին առ զմաշկեակն և ծեծեաց զթիկունս նորա և ասէ. ել աստի որպէս հրամայեաց քեզ հայրն Անտոն։ Իսկ դևն սկսաւ հայհոյել զԱնտոն և զՊաւղ՝ շուայտեալք և արբեցողք, զի ոչ երբէք յագին իւրեանց խորտկօք, զինչ բնակութի կայ մեր ընդ ձեզ զի զմեզ բռնադատէք։ Իբրև դադարեաց դևն 'ի խօսից անտի, ասէ ծերն ցդևն. ելանես եթէ երթամ ասեմ Քսին իմոյ։ Եւ ասէ դևն. չելանեմ աստի չելանեմ։ Իսկ սուրբն ել 'ի խրճթէն 'ի հասարակ աւուր 'ի տօթ ժամու. և այնպէս էր տեղին տօթ առաւել քան զհնոցն Բաբիլոնի։ Եւ ել ծերն արտաքս և եկաց 'ի վերայ վիմի միոջ իբրև զսիւն 'ի վերայ խարսխի, և ասէ այսպէս. դու գիտես, Յս Քս, որ խաչեցար 'ի պոնտացւոյ Պիղատոսէ, ոչ իջանեմ 'ի վի-

միայնակեաց, վասն այսորիկ պարտ է քեզ լինել միայն և փառաւորել զԱծ։ Ասէ ծերն. եղիցի որպէս և հրամայես, հայր։ Եւ ապա արար նմա խրճիթ, որ էր բացագոյն յիւրմէ իբրև մղոնս չորս 'ի քարայրոջ՝ մի և անդ եթող զնա, քանզի ետես զի այր կատարեալ 'ի չափ հասակի եղև ծերն Պաւղ, և ինքն գնաց յիւր խրճիթն։ . . .

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍՈՒՐԲ ՀՕՐՆ ՄԱԿԱՐԱՅ

## ԵԳԻՊՏԱՑԻՈՅ

ՍԿԻԶԲՆ առասցուք պատմել զվարս երանելւոյն Մակարայ։ Ես Պեղան եղէ ընդ երանելւոյն Մակարայ ամս քսան և երկու, և ուսայ 'ի նմանէ զգործս հաւատոց, զի հաւատացեալ էր առաւել քան զհաւատացեալս և ընտրեալ և հաճոյ այ։ Եւ այս խորհուրդք էին ծերոյն սրբոյ. ոչ քան զոգին կրկնէր, փառս տայր այ երիցս և ասէր. 'ի սէր եղբարց մի վհատկոտք լինիք։ Ի պահս և յաղօթս անհամար էր. և եթէ լսէր վասն հաւատոց, փոյթ յանձին ունէր տեսանել։ Եւ լուաւ յումեմնէ եթէ Ոնեսիփորոն զամ աւուրս կենաց իւրոց զայն ուտէր որ ոչ ընդ հուր անցանէր։ Եւ այսպէս հաստատեաց երանելին Մակար, զեօթն ամ ոչ ուտէր ինչ որ ընդ հուր անցանէր, բայց միայն բանջար հում ուտէր, և եթէ ասյն ուրեք թրջեալ գտանէր. և այսպէս զեօթն ամ ուղղեաց զամ խորհուրդս իւր ազատութեամբ։ Եւ դարձեալ լուաւ սուրբն Մակար վասն այլոյ ուրումն եթէ հաց կշռով ուտէ զյիսներորդ բաժինն նկանակի միոյ, և ընդ այն առաւել նախանձ 'ի մտի եդ ծերունին։ Եւ առար հաց և չորացոյց յոյժ, և մանրեաց զչոռն և արկ 'ի սափոր մի նեղաբերան. և յորժամ ուտել կամենայր, զձեռնն 'ի սափորն արկանէր, և որ գայր 'ի ձեռսն զայն ուտէր. և այս ևս մեծ ճգնութիւն էր սրբոյն։ Եւ բանադատեցաք մեք սակաւ մի թրջել զհացն և տալ ուտել նմա։ Եւ նա ասէ ցմեզ. մաքսաւորս ոչ տայ ինձ դադար, դուք զի՞ դատիք զիս։ Եւ զայս պահեաց զերիս ամս, և դարձեալ սկսաւ ուտել զհինգ մասն նկանակի միոյ զչորս ամս։ Եւ չորս դորակս չափէր և արկանէր 'ի յամանն. տարւոյ 'ի տարի այն էր ըմպելի նորա։ Եւ դարձեալ յայլ կարգս ուղղութեան մտանէր զինք ծերն։ Այսպէս եղեալ էր համատութեամբ 'ի. սրտին իւրում

մէջս, և ոչ կերայց և ոչ արբից մինչև հանցես զդեւս զայս 'ի պատանւոյս: Այլ մինչ նա զայս խօսէր, աղաղակեաց դևն և ասէ. գնամ գնամ աստի, զի դատես զիս տարաժամ. ելանեմ 'ի պատանւոյս և այլ ոչ ևս դառնամ 'ի սա: Այլ ըստ բանի ծերոյն ել դևն և եմուտ 'ի վիշապ մի, և մեծութի նորա իբրև կանգունս վաթսուն, և սողեցաւ եկն անկաւ 'ի ծովն կարմիր: Այլ կատարեցաւ բանն որ ասէ. եթէ ունիցիք հաւատս, և լերինք փոփոխեսցին 'ի սիրտս ծովու: Այլ դարձեալ տէրն մեր ասաց. յո՞վ հանգեայց կամ յո՞վ բնակեցայց, եթէ ոչ 'ի հեզս և 'ի խոնարհս և որ դողան 'ի բանից իմոց:

Այս վարք էին միայնակեցին Պաւղեայ երանելւոյ և սրբոյ և խոնարհի և ամբծի, և սա եղև օրինակ ամենայն միայնակեցաց, և վախճանեցաւ լի և կատարեալ ամ̃ իրօք. և 'ի միայնակեցութեն եկաց ամս քառասուն, և ընդ ամ̃ հարիւր և ութ ամ և ամիս վեց: Այս ննջեաց սուրբն յամսեանն հոռի որ օր քսան և ինն էր՝ յաւուր ուրբաթու. և թաղեցին զնա Ամոնաս և Անտոն, որք էին աշակերտք Անտոնի:

Եւ ըստ բանի ծերոյն ել այսն ադիղծ 'ի պատանւոյն այն, և գնաց եմուտ 'ի վիշապ մի մեծ, որ էր երկայնութեամբ իբրև կանգունս վաթսուն, որ էր 'ի լերանն անապատին այնմ, և աղօթիւք սրբոյ հարցն միայն ինչ ոչ առնէր, այլ երևեալ երևեցան՝ գազանայր անդրէն 'ի լերանն քարանձաւին յորջն իւր. իսկ 'ի մտանել դիւին այն 'ի նա, նոյնժամայն սողոսկեալ եկն անկաւ 'ի ծովն կարմիր որ կայր ընդդէմ նորա: Եւ կատարեցաւ բանն: . . .

Այս էին վարք Պաւղեայ միայնակեցին երանելւոյ սրբոյն, զի խոնարհ էր անչափ և հեզ ամենեւին և անբիծ և պարզամիտ: Եւ այսպէս կացեալ 'ի միայնակեցութեան ամս քառասուն լի և կատարեալ ամ̃ իրօք առաքինագործ վարուք: Եւ ընդ ամ̃ ամք կեցեալ եղև հարիւր և ութ ամ և վեց ամիս. և վախճանեալ ննջեաց սուրբն Պաւղ յաւուր ուրբաթու, և թաղեցին զնա Ամմոնաս և Անտոն աշակերտք սրբոյն Անտոնի յետ վախճանի նորա:

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍՈՒՐԲ ՀՕՐՆ ՄԱԿԱՐԱՅ

## ԵԳԻՊՏԱՑԻՈՅ

ՍԿԻԶԲՆ արարացուք պատմել զվարս երանելոյն Մակարայ։ Ես Կեղոն եղէ ընդ երանելոյն Մակարայ ամս քսան և երկու, և ուսայ 'ի նմանէ զգործս հաւատոց, զի հաւատացեալ էր առաւել քան զհաւատացեալս և ընտրեալ և հաճոյ այ̃։ Եւ այս խորհուրդք էին ծերոյն սրբոյ. որքան զոգին կրկնէր, փառս տայր այ̃ երիցս և աւէր. 'ի սէր եղբարց մի՛ վհատկոտք լինիք։ Ի պահս և յաղօթս անհամար էր. և եթէ լսէր վասն հաւատոց, փոյթ յանձին ունէր տեսանել։ Եւ լուաւ յումեմնէ եթէ Բենեսիտոն զա̃մ աւուրս կենաց իւրոց զայն ուտէր որ ոչ ընդ հուր անցանէր։ Եւ այսպէս հաստատեաց երանելին Մակար, զեօթն ամ ոչ ուտէր ինչ որ ընդ հուր անցանէր, բայց միայն բանջար հում ուտէր, և եթէ ոսպն ուրեք թրջեալ գտանէր. և այսպէս զեօթն ամ ուղղեաց զա̃մ խորհուրդս իւր աղաւութ̃ք։ Եւ դարձեալ լուաւ սուրբն Մակար վասն այլոյ ուրումն եթէ հաց կշռով ուտէ զինններորդ բաժին նկանակի միոյ, և ընդ այն առաւել նախանձ 'ի մտի եդ ծերունին։ Եւ արար հաց և չորացոյց յոյժ, և մանրեաց զչորն և արկ 'ի սափոր մի նեղաբերան. և յորժամ ուտել կամենայր, զձեռնն 'ի սափորն արկանէր, և որ գայր 'ի ձեռսն զայն ուտէր. և այս ևս մեծ ճգնութիւն էր սրբոյն։ Եւ բռնադատեցաք մեք սակաւ մի թրջել զհացն և տալ ուտել նմա։ Եւ նա ասէ ցմեզ. մաքսաւորս ոչ տայ ինձ դադար, դուք զի՞ դատիք զիս։ Եւ զայս պահեաց զերիս [illegible] և դարձեալ [illegible] ուտել զհինգ մասն նկանակի [illegible] ամս [illegible] դորակս չափէր և արկանէր 'ի [illegible] տարաց [illegible] յն էր ըմպելի նորա։ Եւ դար[illegible] այլ կ[illegible] ւթեան մատնէր զինքն ծերն։ [illegible] պէս եղ[illegible] սատտութ̃ի 'ի. սրտին իւրում

մէս, և ոչ կերայց և ոչ արբից մինչև հանցես զդեա զայս 'ի պատասխանւոյս։ Եւ մինչ նա զայս խօսէր, աղաղակեաց դևն և ասէ. գնամ գնամ աստի, զի դատես զիս տարաժամ. երանեմ 'ի պատասխանւոյս և այլ ոչ եմ դառնամ 'ի սա։ Եւ ըստ բանի ծերոյն ել դևն և եմուտ 'ի վիշապ մի, և մեծութիւն նորա իբրև կանգունս վաթսուն, և սողեցաւ ելին անկաւ 'ի ծովն կարմիր։ Եւ կատարեցաւ բանն որ ասէ. եթէ ունիցիք հաւատս, և լերինք փոփոխեսցին 'ի սիրտս ծովու։ Եւ դարձեալ տէրն մեր ասաց. յո՞վ հանգեայց կամ յո՞վ բնակեցայց, եթէ ոչ 'ի հեզս և 'ի խոնարհս և որ դողան 'ի բանից իմոց։

Այս վարք էին միայնակեցին Պաւղեայ երանելւոյ և սրբոյ և խոնարհի և ամբծի, և սա եղև օրինակ ամենայն միայնակեցաց, և վախճանեցաւ լի և կատարեալ ամաւ իրօք. և 'ի միայնակեցութեան եկաց ամս քառասուն, և ընդ ամ հարիւր և ութ ամ և ամիս վեց։ Եւ ննջեաց սուրբն յամսեանն հոռի որ օր քսան և հինգ էր՝ յաւուր ուրբաթու. և թաղեցին զնա Ամոնաս և Անտոն, որք էին աշակերտք Անտոնի։

Եւ ըստ բանի ծերոյն ել այսն ախրծ 'ի պատասխանւոյն այն, և գնաց եմուտ 'ի վիշապ մի մեծ, որ էր երկայնութիւն իբրև կանգունս վաթսուն, որ էր 'ի լեառն անապատին այնմ, և աղօթիւք սրբոց հարցն մնաց ինչ ոչ առնէր, այլ երևեալ երբեմն՝ գազանաց անդրէն 'ի լեառն քարանձաւին յորջն իւր. իսկ 'ի մտանել գիւղին այն 'ի նա, նոյնժամայն սողացեալ եկն անկաւ 'ի ծովն կարմիր որ կայր ընդդէմ նորա։ Եւ կատարեցաւ բանն։...

Այս էին վարք Պաւղեայ միայնակեցին երանելի սրբոյն, զի խոնարհ էր անչափ և հեզ ամենեին և անբիծ և պարզամիտ։ Եւ այսպէս կացեալ 'ի միայնակեցութեան ամս քառասուն լի և կատարեալ ամ իրօք ծածանձոյ վարուք։ Եւ ընդ ամ ամք կենաց եղև հարիւր և ութ ամ և վեց ամիս. և վախճանեալ ննջեաց սուրբն Պաւղ յաւուր ուրբաթու, և թաղեցին զնա Ամմոնաս և Անտոն աշակերտք սրբոյն Անտոնի յետ վախճանի նորա։

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍՈՒՐԲ ՀՕՐՆ ՄԱԿԱՐԱՅ

## ԵԳԻՊՏԱՑԻՈՅ

ՍԿԻԶԲՆ արասցուք պատմել զվարս երանելւոյն Մակարայ: Ես Պեղան եղէ ընդ երանելւոյն Մակարայ ամս քսան և երկու, և ուսայ 'ի նմանէ զգործս հաւատոց, զի հաւատացեալ էր առաւել քան զհաւատացեալս և ընտրեալ և հաճոյ այ: Եւ այս խորհուրդք էին ծերոյն սրբոյ. որքան զոգին կրկնէր, փառս տայր այ երիցս և անէր. 'ի սէր եղբարց մի վհատկոտք լինիք: Ի պահս և յաղօթս անհամար էր. և եթէ լսէր վասն հաւատոց, փոյթ յանձին ունէր տեսանել: Եւ լուաւ յումեմնէ եթէ Ոհննեսիտոն զամ աւուրս կենաց իւրոց զայն ուտէր որ ոչ ընդ հուր անցանէր: Եւ այսպէս հաստատեաց երանելին Մակար, զեօթն ամ ոչ ուտէր ինչ որ ընդ հուր անցանէր, բայց միայն բանջար հում ուտէր, և եթէ սամն ուրեք թրջեալ գտանէր. և այսպէս զեօթն ամ ուղղեաց զամ խորհուրդս իւր ազատութբ: Եւ դարձեալ լուաւ սուրբն Մակար վասն այլոյ որումն եթէ հաց կշռով ուտէ զինն երորդ բաժին նկանակի միոջ, և ընդ այն առաւել նախանձ 'ի միտ եդ ծերունին: Եւ արար հաց և չորացոյց յոյժ, և մանրեաց զչորն և արկ 'ի սափոր մի նեղաբերան. և յորժամ ուտել կամենայր, զձեռնն 'ի սափորն արկանէր, և որ գայր 'ի ձեռսն զայն ուտէր. և այս ևս մեծ ճգնութիւն էր սրբոյն: Եւ բանադատեցաք մեք սակաւ մի թրջել զհացն և տալ ուտել նմա: Եւ նա ասէ ցմեզ. մաքսաւորս ոչ տայ ինձ դադար, դուք զի՞ դատիք զիս: Եւ զայս պահեաց զերիս ամս, և դարձեալ սկսաւ ուտել զհինգ մասն նկանակի միոջ զչորս ամս: Եւ չորս դորակս չափէր և արկանէր 'ի յամանն. տարւոյ 'ի տարի այն էր ըմպելի նորա: Եւ դարձեալ յայլ կարգս ուղղութեան մտանէր զինք ծերն: Որպէս եղեալ էր հաստատութի 'ի սրտին իւրում

վասն քնոյ զի յաղթեսցէ նմա. և զայս ինքն պատմեաց մեզ՝ զի ոչ մտի ընդ յարկաւ զքսան տիւ և զքսան գիշեր զի յաղթեցից քնոյ. զի 'ի տուէ տօթ խորշակի այրէր զիս և 'ի գիշերի հարաւահողմ մնասակար. և եթէ ոչ վաղվաղակի 'ի քարայր մի մտեալ էի և սակաւ մի յափշտակեալ 'ի քնոյ, քաջ քաջ ցամաքեաց ուղեղ գլխոյ իմոյ և եղև իբրև զաման ունայնացեալ. և այսպէս, ասաց սուրբն, զի յաղթեցի քնոյ: Այլ զայս զի ասացի ձեզ առ 'ի խրատ, զի յորժամ պահիցէք 'ի ջրոյ և 'ի քնոյ՝ յայնժամ դևն ձանձրուն ոչ մերձենայ 'ի ձեզ:

Այլ մինչդեռ երանելի ծերն նստէր 'ի խցին իւրում, մժղուկ մի 'ի սրունն նստաւ. իսկ երանելի ծերն շփեաց զոտն և ճմլեաց զմժղուկն: Այլ իբրև ետես զարիւն մժղկին, ինքն զինքն սկսաւ բասրել և ասէ. անձամբ զանձին վրէժ խնդրեցիր. և սկսաւ խորհել ընդ միտս իւր և ասէ՝ զինչ իցէ արժանի այս ապաշխարութիւն: Այլ չոգաւ առ միայնակեացն Յովսէփ և խոստովանեցաւ զիրսն: Իսկ երանելի ծերն Յովսէփ ասէ. երթ, եղբայր; այդ արժան զրոյցք են, չկարեմ ինչ քեզ ասել: Յայնժամ ծերոյն մերկացեալ յիւրմէ զհանդերձն իւր և երթեալ յանապատ և նստեալ անդ ամիսս վեց. և տեղեացն այն այնպէս էին զոռոզք և պիծակք՝ զի սովոր էին զխոզս վայրենիս ուտել. և այնպէս արարին զմարմին նորա որպէս զէշ զազանաց կրծեալ յասկերաց: Այլ յետ անցանելոյ վեց ամսոյն, դարձաւ ծերն անդրէն 'ի խրճիթն իւր, և ոչ ոք ճանաչէր եթէ տէր Մակար իցէ:

Այլ իբրև եղև զերիս աւուրս 'ի խցին՝ և ասէ. ցանկամ մտանել 'ի դրախտն Յանիսայ և Յամբրիսայ: Այլ խնդրէր շնորհս յԱյ զի մտցէ 'ի դրախտ կախարդացն, և ասէր՝ թէ լուեալ է իմ թէ յոյժ ժամ վառեալ կան դևքն չարութեն ընդ իւրեանցն. քանզի Յանէսն և Յամբրէսն տնկեցին տունկս և այսպէս ամրացուցին զնա, զի ոչ գոյր ուրեք իբրև զնա. և զայս արարին զի յոյս նոցա յերկրի էր: Նյամ դրախտի ցանկացաւ երանելի ծերն ծառայն Քի Մակարիոս, զի փորձեսցի 'ի դիւացն: Այլ դիմեաց երանելի ծերն գնալ, և առաջնորդ առեալ նմա զարուսեակն իբրև նաւավարս 'ի խորս, և ելեալ գնայր ընդ անապատն: Այլ առի, ասէ, տրցակ մի եղեգն և նշանակեցի ընդ որ անցանէի՝ զտեղին և

ասէի. յորժամ դարձայց 'ի խրճիթն, առանց աշխատութե՟ եկից։ Իբրև մերձ եղէ 'ի դրախտն մղոնաւ մի և էր գիշեր, քուն առ զիս։ Իսկ վայրենի և չար դևքն չոգան ժողովեցին զեղէգնն և արարին տրցակ և եդին ընդ գլխով իմով։ Այլ յարեայ ես և տեսի զեղէգն տըրցակ արարեալ և եդեալ ընդ գլխով իմով և ասեմ. զայս մեծ շնորհս արարին ինձ, և այս 'ի կամաց տեառն եղև և ոչ 'ի դիւաց՝ զի մի յեղեգան առաջնորդութիւն ապաստան եղէց, այլ 'ի շնորհս տեառն մերոյ որպէս ամպով առաջնորդեաց որդւոցն Իսրայէլի յանհագին անապատին զքառասուն ամ։

Իբրև մերձեցայ ես 'ի դրախտն, ելին ընդ առաջ իմ դևքն. ոմանք կայքաւէին, ոմանք աղաղակէին, ոմանք վազէին, ոմանք կրճէին զատամունս իւրեանց 'ի վերայ իմ, ոմանք իբրև զագռաւս թևացէին զերեսս իմ և ասէին. զի եկիր, Մակար միայնակեաց, փորձել զմեզ. միթէ միաբանութիւն է մեր ընդ ձեզ միայնակեացդ. այն ո՞չ է շատ քեզ զի զընկերսն մեր հալածեցեր յանապատէն, և ոչ ինչ հաւասարութիւն է մեր ընդ ձեր, զի եկիր 'ի տեղիս մեր. շատ է միայնակեացդ զի զանապատն թողաք ձեզ. այս տեղիս յանուն մեր շինեցաւ, չիք հնար լինել քեզ աստ, զի խնդրես մտանել յայլոց արարս. զի յորմէ հետէ մեռեալ են շինողք սորա, ոչ մտեալ է որդւոյ մարդոյ այսր։ Իբրև այսք և այնք յամառեցան դևքն, յայնժամ ասէ ծերն ցնոսա. մի անգամ մտանեմ տեսանեմ և ելանեմ գնամ աստի։ Իսկ դևքն ասեն ցնա. երդուիր մեզ 'ի Ք՟ս ա՟ծն որ ելանես։ Իսկ Մակար ասէ. զայս առնեմ, և դևքն անդէն չիք եղեն առաջի նորա։

Այլ մտի, ասէ, և տեսի զա՟մ ինչ և եղէ անդ զերիս աւուրս և առանց խռովութե՟ ելի անտի։ Այլ յետ քսան աւուր դարձայ անդրէն 'ի խուցն իմ, և ոչ ճաշակեցի զայնքան աւուրս ոչ հաց և ոչ ջուր մինչև զիրսն կատարեցի։ Այլ իբրև եղէ զերիս աւուրս 'ի խցին, երևեցաւ ինձ 'ի կերպարանս աղջկան դև մի և ունէր 'ի ձեռին իւրում կուժ մի և հանդերձ նորա սպիտակ, և շրջեցաւ զերիս աւուրս, և յաւուրն երրորդի յանդգնեցաւ և ասէ ցիս. առ արբ ջուր, զի ահաւասիկ մեռանիս 'ի պապաքայդ։ Այլ ես ոչ ետու նմա պատասխանի։ Յետ

վասն քնոյ զոր յաղթեցէ նմա. և զայս ինքն պատմեաց մեզ՝ զի ոչ մտի ընդ յարկաւ զքսան տիւ և զքսան գիշեր զի յաղթեցից քնոյ. զի 'ի տուէ տօթ խորշակի այրէր զիս և 'ի գիշերի հարաւահողմ վնասակար. և եթէ ոչ վաղվաղակի 'ի քարայր մի մտեալ էի և սակաւ մի յափշտակեալ 'ի քնոյ, քաջ քաջ ցամաքեաց ուղեղ գլխոյ իմոյ և եղև իբրև զամման ունայնացեալ. և այսպէս, ասաց սուրբն, զի յաղթեցի քնոյ։ Այլ զայս զի ասացի ձեզ առ 'ի խրատ, զի յորժամ պահիցէք 'ի ջրոյ և 'ի քնոյ՝ յայնժամ դևն ձանձրուէ ոչ մերձենայ 'ի ձեզ։

Այլ մինչդեռ երանելի ծերն նստէր 'ի խցին իւրում, մժղուկ մի 'ի սրունսն նստաւ. իսկ երանելի ծերն շփեաց զոտն և ճնկեաց զմժղուկն։ Այլ իբրև ետես զարիւն մժղկին, ինքն զինքն սկսաւ բասրել և ասէ. անձամբ զանձին վրէժ խնդրեցից. և սկսաւ խորհել ընդ միտս իւր և ասէ՝ զինչ իցէ արեանս այս ապաշխարութիւն։ Այլ չոգաւ առ միայնակեացն Յովսէփ և խոստովանեցաւ զիրսն։ Իսկ երանելի ծերն Յովսէփ ասէ. երթ, եղբայր; այդ արեան զրոյցք են, չկարեմ ինչ քեզ ասել։ Յայնժամ ծերոյն մերկացեալ յիւրմէ զհանդերձն իւր և երթեալ յանապատ և նստեալ անդ ամիսս վեց. և տեղեացն այն այնպէս էին զօռողք և պիծակք՝ զի սովոր էին զխոզս վայրենիս ուտել. և այնպէս արարին զմարմին նորա որպէս գէշ գազանաց կրծեալ յասկերաց։ Այլ յետ անցանելոյ վեց ամսոյն, դարձաւ ծերն անդրէն 'ի խրճիթն իւր, և ոչ ոք ճանաչէր եթէ տէր Մակար իցէ։

Այլ իբրև եղև զերիս աւուրս 'ի խցին՝ և ասէ. ցանկամ մտանել 'ի դրախտն Յաննիսայ և Յամբրիսայ։ Այլ խնդրէր շնորհս յայ զի մտցէ 'ի դրախտ կախարդացն, և ասէր՝ թէ լուեալ է իմ թէ յոյժ ժամ վառեալ կան դևքն չարութեան ընդ իւրեանսն. քանզի Յաննէսն և Յամբրէսն տնկեցին տունկս և այսպէս ամրացուցին զնա, զի ոչ գոյր ուրեք իբրև զնա. և զայս արարին զի յոյս նոցա յերկրի էր։ Այսմ դրախտի ցանկացաւ երանելի ծերն ծառայն Տեառն Մակարիոս, զի փորձեսցի 'ի դիւացն։ Այլ դիմեաց երանելի ծերն գնալ, և առաջնորդ առեալ նմա զարուսեակն իբրև նաւավարս 'ի խորս, և ելեալ գնայր ընդ անապատն։ Այլ առի, ասէ, որցակ մի եղէգն և նշանակեցի ընդ որ անցանէի՝ զտեղին և

ասէի. յորժամ դարձայց 'ի խրճիթն, առանց աշխատութեան եկից: Ապա և մերձ եղէ 'ի դրախտն մղոնաւ մի և էր գիշեր, քուն առ զիս: Իսկ վայրենիք և չար դևքն չոգան ժողովեցին զեղէգնն և արարին տրցակ և եդին ընդ գլխով իմով: Այլ յարեայ ես և տեսի զեղէգն տըրցակ արարեալ և եդեալ ընդ գլխով իմով և ասեմ. զայս մեծ շնորհս արարին ինձ, և այս 'ի կամաց տեառն եղև և ոչ 'ի դիւաց՝ զի մի յեղեգան առաջնորդութիւն ապաստան եղէց, այլ 'ի շնորհս տեառն մերոյ որպէս ամպով առաջնորդեաց որդւոցն Իսրայէլի յահագին անապատին զքառասուն ամ:

Ապա և մերձեցայ ես 'ի դրախտն, ելին ընդ առաջ իմ դևքն. ոմանք կուքաւէին, ոմանք աղաղակէին, ոմանք վազէին, ոմանք կրճէին զատամունս իւրեանց 'ի վերայ իմ, ոմանք իբրև զագռաւս թևացէին զերեսս իմ և ասէին. զի եկիր, Մակար միայնակեաց, փորձել զմեզ. միթէ միաբանութիւն է մեր ընդ ձեզ միայնակեացդ. այն ո՞չ է շատ քեզ զի զընկերսն մեր հալածեցեր յանապատէն, և ոչ ինչ հաւասարութիւն է մեր ընդ ձեր, զի եկիր 'ի տեղիս մեր. շատ է միայնակեացդ զի զանապատն թողաք ձեզ. այս տեղիս յանուն մեր շինեցաւ, չիք հնար լինել քեզ աստ, զի խնդրես մտանել յայլոց արարս. զի յորմէ հետէ մեռեալ են շինողք սորա, ոչ մտեալ է որդւոյ մարդոյ այսր. Ապա այսք և այնք յամառեցան դևքն, յայնժամ ասէ ծերն ցնոսա. մի անգամ մտանեմ տեսանեմ և ելանեմ գնամ աստի: Իսկ դևքն ասեն ցնա. երդուիր մեզ 'ի Տ̃ն ա̃ծն որ ելանես: Իսկ Մակար ասէ. զայս առնեմ, և դևքն անդէն չիք եղեն առաջի նորա:

Այլ մտի, ասէ, և տեսի զամ ինչ և եղէ անդ զերիս աւուրս և առանց խռովութեան ելի անտի: Այլ յետ քսան աւուր դարձայ անդրէն 'ի խուցն իմ, և ոչ ճաշակեցի զայնքան աւուրս ոչ հաց և ոչ ջուր մինչև զիրսն կատարեցի: Այլ իբրև եղէ զերիս աւուրս 'ի խցին, երևեցաւ ինձ 'ի կերպարանս աղջկան դև մի և ունէր 'ի ձեռին իւրում կուժ մի և հանդերձ նորա սպիտակ, և շրջեցաւ զերիս աւուրս, և յաւուրն երրորդի յանդգնեցաւ և ասէ ցիս. առ արբ ջուր, զի ահաւասիկ մեռանիս 'ի պապակոյդ: Այլ ես ոչ ետու նմա պատասխանի: Յետ

սակաւ միոյ չոգաւ աղջիկն կթեաց բողողմ մի, եբեր զկաթնն և ասէ. առ արբ զայդ, զի մի մեռանիցիս ՚ի պապքոյդ։ Այլ յայսմ ևս մխիթարեցին զնա շնորհքն ա՟յ։ Օ ՚ի յաջողեալ ա՟ծ Մակարիոսի ՚ի գործս և ՚ի շնորհս և ՚ի բժշկութիւնս. ՚ի գործ լերինն ՚ի լերինս շինուած ասնէր, զի վայրի արջառք ՚ի կաւագործի կային. շնորհս բժշկութեան ունէր, զի բիւրս բիւրուց դիւահարս բժշկեաց։

Ա ինքն Մակար լուաւ վասն վանաց միոջ, և անուն էր լերինն Նիենեսիտոն՝ թէ մեծ ճգնաւորք են քան զն՟մ միայնակեացս։ Այլ ես, ասէ, եղէ իբրև զաշխարհական մի հողագործ, և հնգետասան օթեվանօք ՚ի զատ էաք, և չոգայ ընդ անապատն և որ օր հնգետասան էր՝ հասի ՚ի վանսն և նստայ առ դուրսն զեօթն օր, և ոչ կամեցան տեսանել զիս։ Այլ յետ եօթն աւուր ետես վարդապետն, որում անուն էր Պաքմէոս, այր ընտրեալ, և շնորհս ունէր նախագիտութեան։ Այլ ծանուցեալ ա՟ծ զերանելին Մակար, զի մի յայտնեսցի ո՛ ոք իցէ նա։ Այլ պատահեալ նմա Մակար ասէ ցնա. աղաչեմ զքեզ ժողովեա զիս ՚ի վանս քո, զի և ես եղէց միայնակեաց։ Այլ ասէ ցնա Պաքմէոս. դու այր ծեր ես և անցեալ ժամանակօք, ոչ կարես միայնակեաց լինել. սոքա եղբարքս ՚ի մանկութէ ընդ այսմ մնեալ են, և դու յայդ չափոյ ոչ կարես տևել աստ, և ելանես ՚ի վանացս և հայհոյես զմեզ և զաստուծոյ գայթակղեցուցանես։ Այլ ոչ կամեցաւ ժողովել զծերն։ Այլ իբրև առ դուրսն եղեալ զեօթն և զտասն օր ամենևին ոչ ինչ կերեալ, և դարձեալ անկաւ յոտս վարդապետին և ասէ. ժողովեա զիս. եթէ ոչ պահեսցիս իբրև զեղբարսդ և գործեսցիս, յայնժամ հրամայեա հանել զիս ՚ի վանաց քոց։ Այլ հաւանեցոյց Պաքմէոս զեղբարսն զի ժողովեսցեն զծերն, քանզի էին ՚ի վանսն յայն հինգ հարիւր այր, և կամեցան ամենեքեան և ժողովեցին զայրն։ Այլ իբրև անցին փոքր մի ժամանակ, և մտին ՚ի պահս զյիսներորդն. և ետես Մակար զիւրաքանչիւր առաքինութիւնս, ոմանք պահէին զերեկոյն, ոմանք զշաբաթն հանէին, ոմանք յոտն կային զյիսունն, ոմանք ՚ի հանգիստ եղբարցն փութային։ Իսկ ծերն Մակար եկաց յանկեան միոջ յոտն զյիսունն մինչև զատիկն

կատարեցաւ, և ոչ հաց և ոչ ջուր եմուտ 'ի բերան նորա, և ծունր ոչ կրկնեաց ամենևին. բայց միայն կաղամբակուրծ ուտէր 'ի կիւրակէ մինչև ցմիւս կիւրակէն։ Եւ յորժամ երթայր 'ի պէտս իւր, ձեռքն գործէին, քանզի չուանաման էր. և 'ի բերանոյ նորա ոչ ոք այլ ինչ լսէր, բայց միայն օրհնութիւն։

Զայն իբրև տեսանէին եղբարքն, խռովեցան ամենեքեան ընդ վարդապետին և ասեն ցնա. հան զդա աստի, եթէ ոչ՝ ելանեմք 'ի քէն այսօր։ Զայս լուեալ յեղբարցն մեծին Պաքմէոսի՝ հարց ցնոսա վասն ծերոյն եթէ զինչ գործ ունի. և ասացին նմա որպէս գիտէին։ Եւ սկսաւ խնդրել յԱյ Պաքմէոս վասն ծերոյն եթէ ով ոք իցէ նա։ Եւ հրեշտակն 'ի գիշերին յայտնեաց նմա և ասէ. սա է Մակար միայնակեաց։ Յայնժամ կալաւ զձեռանէ նորա Պաքմէոս և տարաւ յեկեղեցին և եհան մօտ 'ի սուրբ սեղանն և ողջունեաց զնա և ասէ. ով ծեր կատարեալ և բարի, դու ես Մակարիոս և թաքուցեր յինէն. ես 'ի բազում ամաց փափագ ունէի տեսանել զքեզ. շնորհ ունիմ քեզ զի զմանկտեակս իմ յատէն կացուցեր, զի մի պարծեսցին և ասասցեն՝ թէ ոչ գոյր իբրև զմեզ. և այժմ աղաչեմ զքեզ երթ 'ի տեղին քո, շատ է մեզ որ շինեցեր զմեզ, և աղօթս արա վասն մեր։ Եւ լուաւ նոցա և յուղարկեցաւ 'ի նոցանէ սաղմոսիւք և օրհնութեամբ։

Եւ դարձեալ ասէր երանելի ծերն. եդի 'ի միտի իմում եթէ զհինգ օր զմիտս իմ և զխորհուրդս առ Այ արարից և ոչ զբաղեցայց յինչ ուրեք, բայց միայն առ Այ խորհեցայց։ Զայս խորհեցայ 'ի սրտի իմում և փակեցի զդուռն խրճթին և զաւթին, զի մի ոք եկեսցէ առ իս։ Եւ սկսայ խօսել ընդ իս յերկրորդում աւուրն և ասեմ. զգոյշ կաց քեզ և մի խորհիր դու զմարդկան, այլ խորհեաց դու յերկինս. յերկինս ունիս դու հրեշտակս և հրեշտակապետս և զզօրութիւնս և զսերովբէս և զքերովբէս և զԱծ որ ամի արարիչ է. մի իջաներ դու 'ի ներքոյ երկնից, զի մի անկանիցիս դու 'ի խորհուրդս երկրաւորս։ Եւ զերիս տիւս և զերիս գիշերս այսպէս կացի առ Այ, և այսպէս սրեցան վասն իմ դևքն և իբրև զբոց բորբոքեցան և ջեռուցին զոսկերս իմ։ Եւ այսպէս կարծէին միտք իմ թէ այսմ 'ի ներքս աստ այ-

րեն՝ զիս: Այլ մինչդեռ կային, խոստեղէն մի լուցին և
հարին յասկերս իմ, և ոչ զոք տեսի անդ, և վիրաւորե-
ցին զիս չարաչար դևքն 'ի ժամանակին յայնմիկ, առ-
կայն ոչ կարացին հանել զխորհուրդս իմ յարարչէն իմ
մէ, և ապա այնուհետև չոգայ բացի զդուրս գաւթին:
Այլ զայս զի ասացի ձեզ, եղբարք, առ 'ի խրատ ասա-
ցի. զի յորժամ այսպէս լինիցիմք, դևքն մերկք կռուին
ընդ մեզ:

Այլ դարձեալ ասէ. յարեան 'ի վերայ իմ խորհուրդք
շրջագայութեան և կամէին հանել զիս 'ի խրճիթէն և
տեսն. քարի է քեզ եթէ շրջիս և փառաւորիս 'ի մարդ-
կանէ: Այլ կամէին վարել զիս 'ի Հռոմ քաղաք և ա-
ռնէին ցիս՝ թէ երթ և անդ քարոզեա զշնորհսն ա̃յ: Իսկ
երանելի ծերն անկաւ 'ի խրճիթն 'ի գետնի և ձգեաց
զոտսն ընդ դուրսն և ասէ ցշրջագնացութե̃ն դևսն. քար-
շեցէք զիս արտաքս եթէ կարէք, ես իմով ոտիւք այլ
ուրեք ոչ երթամ. եթէ կարէք տանել զիս այսպէս՝
դուք գիտէք: Երդմամբ ասէր ծերն՝ թէ այնպէս ոտքս
ընդ դուրսն կացին մինչև ցերեկոյն: Իբրև յարեաւ ե-
րեկոյին, քանզի նսեմ էր, դարձեալ 'ի գիշերին սկսան
խռովել զիս խորհուրդք: Այլ յարեայ, ասէ, լցի որթ
մի քար և կոշտ, և եդի յուս իմ և շրջէի անդէն 'ի
տան: Այլ եկն, ասէ, յԱնտիոք քաղաքէ այր մի, որ
աւելածու էր եկեղեցւոյն, Պետոզէն անուն, ետես զիս
և ասէ. զի՞նչ բարձեալ ունիս, հայրիկ, ընդէ՞ր աշխա-
տիս: Ասէ ծերն. աշխատեմ զաշխատիչն իմ, քանզի
ընդունայն այսօր սուրհանդակ կամէին առնել զիս:

Սքանչելիս այս Մակար պատմէր զայս բազում միայ-
նակեցաց և ասէր վասն Մարկոսի ծերոյ՝ թէ ոչ յու-
մեքէ օրէնս առ նա երբէք, այլ հրեշտակ ա̃յ առնոյր 'ի
սեղանոյ անտի և տայր նմա. բայց միայն զդատակ ձե-
ռինն տեսի ես Մակար: Մարկոս 'ի մանկութէ իւրմէ
մինչև ցծերութի՝ ոչ ետես զկին մարդ, զի հեզ առաւել
քան զհեզս էր և իմաստուն կատարեալ, և էր այր նո-
րա 'ի բացեայ 'ի մէնջ ասպարիսօք հինգ հարիւր: Այլ
եղև յաւուր միում երթալ առ նա. իբրև չոգայ կացի
առ պատուհանին, և էին ամք կենաց նորա հարիւր և
վեց ամ, զհարիւր ամն յանապատի կացեալ, և զվեց ամն
ընդ հօրեղբօր իւրոյ. մարմինն վատեալ և ատամունս

բնաւ ոչ ունէր։ Այլ սկսաւ ծերն կռուել ընդ ինքեան և ասէ. չարածեր, զի՞նչ կամիս այսուհետև, և դառն ծեր, շուայտեալ պոռնոյ ծառայ. և ինքն զինքն թշնամանէր. ահա և գինի ճաշակեցեր և իւղով զոտսդ օծեր, արդ զի՞նչ կամիս այսուհետև։ Այլ դարձեալ ասէ ցսատանայ. երթ թափեաց յինէն այսուհետև, թշնամի ճշմարտութեան, զի ոչ ինչ գտանես զիս, զի գերեցեր զիս և աւար հարեր. զի իւղով զոտս իմ ետուր օծանել և գինի ետուր ճաշակել։ Այլ այսպէս կագ եղեալ իբրև ընդ ընկերի և դարձաւ առ ինքն և ասէ. աղճատեալ ալևոր, մինչև յե՞րբ ընդ քեզ ես։

Այս Մակար և Եւագրիոս և Ողբինոս և Ամոնիոս կամեցաք ճշմարտել վասն երանելւոյն Յոհաննու։ Ասէ Եւագրիոս. երթայք յիւրաքանչիւր խրճիթս և կացցուք յաղօթս և տեսցուք ո՛ արժանի լինիցի տեսանել զերանելի ծերն Յոհան։ Այս Մակար դադարեցի մի օր, և 'ի միւսում աւուրն փակեցի զդուրս խրճթին և գնացի 'ի կողմանս հնդկաց, և որ օր քսան և ութ էր՝ հասի 'ի վանս նորա և տեսի զի փակեալ էր նա զխրճիթն իւր, և նորա չինուած ամենէին. և ծերոյն այս սովորութիւն էր, զշաբաթն և զկիւրակէ միայն տեսանէր զեղբարսն։ Այլ իբրև իմացայ՝ լուռ կացի մինչև 'ի շաբաթն օր, և շաբաթն օր 'ի յերկու ժամուն չոգայ զի նստէր 'ի պատուհանին, և որ երթայր ող՝ ողջոյն տայր և ասէր. աղօթս արարէք վասն իմ։ Այլ իբրև չոգայ ես, ետ ինձ ողջոյն և ասէ թարգմանաւն. ուստի՞ գաս և կամ ընդէ՞ր թողեր զծերն Եւագրիոս միայն և դու եկիր այսր։ Մինչդեռ ընդ իս խօսէր, եկն իշխան աշխարհին, և եթող զիս ծերն և սկսաւ խօսել ընդ նմա։ Այս տեղի ետու նոցա. և 'ի շատ խօսելն նոցա ձանձրացայ ես, և 'ի ձանձրանալն իմում տրտնջեցի ես զծերոյն և ասացի. զիս արհամարհեաց և զայն շուն պատուեաց։ Զայս խորհեցայ և կամէի գնալ։ Իսկ երանելի ծերն կարդաց զթարգմանն և ասէ. երթ և ասա եղբօրն այնմիկ՝ մի նեղասրտիր, այժմ արձակեմ զսա և խօսիմ ընդ քեզ զինչ և կամիս։ Ապա գիտացի թէ հոգի գիտութե գոյ 'ի նմա։ Զայս իբրև լուայ համբերեցի։ Այլ իբրև գնաց դատաւորն, կարդաց զիս և ասէ. ընդէ՞ր տրտմեցար և տրտնջեցեր վասն իմ, եղբայր. ո՞չ գրեալ է, ասէ, ոչ է

պիտոյ բժշկի ողջոց, այլ հիւանդաց. զքեզ յորժամ կամիմ՝ և գտանեմ, նոյնպէս և դու զիս. և եթէ ես զքեզ ոչ մխիթարեմ, այլ ոք մխիթարեսցէ զքեզ. սա ընթանեալ 'ի կապանս սատանայի և յիրս աշխարհիս, դու յամ ժամ զհետ Քի երթաս: Յայնժամ աղաչեցի զծերն զի աղօթս արասցէ վասն իմ, և իմացայ և գիտացի թէ արդարև գիտնաւոր է: Յայնժամ կալայ զաջոյ ձեռանէ նորա, և զահեակ իւր եդ 'ի վերայ ծնօտի իմոյ և ասէ ցիս. ընդ շատ նեղութի ունիս անցանել դու և յոյժ պատերազմունք պատահեն քեզ: Յորժամ գնաս 'ի պատճառս օրհնութե գոհութե, պատահեն քեզ դևք. պինդ կաց այսուհետև և մխիթարեսցեն զքեզ, և մի նեղիր յանապատին: Այլ և զայս ես ասեմ քեզ՝ մի պիտոյ եղիցին քեզ երթալ 'ի գաւառ, գրեալ այսպէս է՝ ոչ ոք արկանէ ձեռն զմաճով և դառնայ յետս: Եւ յայս օգտեցայ ես 'ի բանս գիտնաւորին և ուրախ եղէ և գոհացայ զԱյ: Եւ դարձեալ ասէ ցիս գիտնաւոր ծերունին. կամիս եպիսկոպոս լինել: Ասեմ. ես եմ եպիսկոպոս: Իսկ ծերունին ասէ. որո՞ց քաղաքի ես: Եւ ասեմ. 'ի խոհակերոցի պուտանց և սափորոց. յորժամ մեղանչեն ինձ՝ կապեմ զնոսա, զպուտկունսն աղիւ և համեմով, զսափորսն ջրով և գինւով: Ասէ գիտնաւոր ծերն. թոյլ տուր անդր զխաղդ. եպիսկոպոս ունիս լինել և շատ նեղութիւնք հասանեն քեզ. և եթէ կամիս փախչել 'ի նեղութէն, մի ելաներս յանապատէն. յանապատի զքեզ ոչ ոք առնէ եպիսկոպոս: Եւ հրաժարեցի 'ի ծերոյն և եկի 'ի տեղին իմ ուր էի, և պատմեցի հարցն վասն ածպաշտութե գիտնաւոր ծերոյն: Եւ ասեն ցիս. և արդ երանի է քեզ, եղբայր, զի եգեր արժանի օրհնութե ծերոյն: Եւ մոռացայ զբանս ծերոյն զոր ասաց վասն եպիսկոպոսութե: Եւ յետ երից ամաց խօթացայ ես, և առին բերեցին զիս եղբարքն յԱղեքսանդր քաղաք առ բժիշկսն: Իսկ բժիշկքն ասացին ցիս. Պաղեստին օդքն օգնեն քեզ, քանզի անդ անօդր են: Եւ 'ի Պաղեստինէ տարան զիս 'ի Նեթանիա: Եւ զայս ոչ գիտեմ, եթէ 'ի մարդոյ եղև եթէ յԱյ՝ Ած գիտէ, և արարին զիս եպիսկոպոս: Եւ զերիս ամս կացի արգելեալ և ոչ կամեցայ երթալ յեկեղեցին: Եւ երևեցաւ ինձ 'ի նմանութի Յոհաննու և ասէ. ո՞չ

ասացի քեզ եթէ եպիսկոպոս լինիս։ Այս յետ սակաւ աւուրց լուայ եթէ Յոհան ծեր վախճանեցաւ, և զայս պատմէր բազում միայնակեցաց վասն երանելւոյն Յոհաննու պիտանաւորի և վասն համբերութեան նորա։

Սա Յոհան զքառասուն և զվեց ամ եկաց յանապատին, զկնոջ մարդոյ երես ոչ ետես երբեք, և ոչ ոսկի 'ի ձեռն էառ, և ոչ զուտել նորա ոք ետես երբէք և ոչ զըմպելն, և վախճանեցաւ բարի վարուք։ Սա եղև օրինակ բարի միայնակեցաց ամենեցուն մինչև ցայսօր։

## ՎԱՐՔ ԵՒ ԿԱՏԱՐՈՒՄՆ

# ՅՈՀԱՆՆՈՒ ԹԵԶԲԱՑԻՈՑ ԵՒ ՄԱՐԳԱՐԷԻ

ՏԵՍԱՔ մեք 'ի յերկրին Թեբայեցւոց 'ի սահմանս Լիկիայ զմեծն զերանելին Յոհաննէս, այր սուրբ ճըշմարիտ լի առաքինութ̃բ. որ 'ի նորան իսկ գործոցն յայտնի լինէր մարգարէութ̃ն շնորհօք աշխարհի, և զամ̃ զոր ինչ գալոց լինէր 'ի վերայ աշխարհի՝ յառաջագոյն ցուցանէր բարեպաշտ արքային Թէոդոսի. որ զինչ միանգամ անցք անցանելոց էին, ցուցանէր նմա։ Այս զի նորին իսկ 'ի վերայ յառնելոց էին բուռն Թագաւորք՝ գուշակէր և զվաղվաղակի կորուստ նոցա, և զանթիւ և զանհամար զխուժադուժ ազգացն անկանել ցուցանէր զկորուստ նոցա։ Եւ երբեմն 'ի ժամանակի միոջ զօրավար ոմն եկն առ նա, հարցանէր զնա եթէ իցէ՞ հնար յաղթականն լինել նմա զօրացն եթովպացւոց որ զկողմամբքն Սիհենայ, զի նա ինքն է սկիզբն Թեբայեցւոց, որ եկին յանկարծակի անկան զգիւղով և զաշխարհն աւերեցին։ Ասէ ցնա Յոհաննէս. երթ համարձակ յաղթեսցես նոցա և ըմբռնեսցես զնոսա և հնազանդեցուսցես զնոսա, և առաջի Թագաւորացն փառաւորեսցիս դու. որպէս և եղեն իսկ։ Հարցեալ և վասն արքային՝ ասէ. քնաւէրն արքայ Թէոդոս իւրով մահու մեռցի և ոչ յայլոց ձեռաց։ Այս ունէր ինքն մեծ առաւելութիւն մարգարէութ̃ն շնորհաց երանելին, զի 'ի հարցն առաջնոցն որ զնովաւ էին՝ լսէաք որոց իւրեանց իսկ վարքն

ընտրեալք էին և 'ի մէջ ամենեցուն էին հռչակաւորք, որ հաստատեցին եթէ ոչ ինչ շնորհելով առեալք, բայց թէ պակաս ինչ պատմեալք, որպիսի էր այրն ։

Դարձեալ զօրագլուխ մի եկն առ նա. և իբրև ընտելաւ ընդ նմա, սկսաւ աղաչել՝ համարձակել գալ տեսանել զնա ամուսնոյ իւրոյ. զի կարի, ասէ, մեծ ցանկութիւն ունի տեսանել զքեզ և ապա գնալ 'ի Միհենա, զի օրհնեսցես զնա և արձակեսցես ։ Իսկ նա քանզի չէր երբէք տեսեալ կին մարդ զայն քառասուն ամն և ոչ ելեալ արտաքս յայրէ անտի, զի ինքն էր ամաց իննսուն, և ոչ ուրուք բնաւ մտեալ առ նա և ոչ տեսեալ, բայց միայն ընդ պատուհանն ողջոյն տայր և ուսուցանէր ամ̃ մարդոյ ըստ իւրում պիտոյից, և ոչ 'ի յանձն առ տեսանել զազատ կինն ։ Իսկ իբրև շատ աղաչէր զնա զօրագլուխն զի հրամայեսցէ նմա գալ տեսանել, զի մերձ էր քաղաքն 'ի յայր անդր իբրև հինգ մղոնաւ, և նա ոչ առնոյր յանձն, զի ասէր եթէ չէ հնար, և զայրն տրտում արձակէր ։ Իսկ կինն ոչ դադարէր յաղաչելոյ զայրն իւր 'ի տուէ և 'ի գիշերի զի հնարեսցէ նմա գալ տեսանել, և մեծաւ ծանր երդմամբ հաստատէր եթէ ոչ խաղամ ըստ. այս տեղիս եթէ ոչ զմարգարէն տեսանեմ ։ Իբրև դարձեալ սկսաւ այրն պատմել Յովհաննու վասն երդման կնոջն, և ասէ ցնա. յայսմ գիշերի երևեցայց նմա յերազի, բայց մի յօժարեսցէ տեսանել զերեսս իմ ։ Նա պատմեաց այրն կնոջ իւրում զբանս հօրն ծերունւոյ ։ Եւ արդ աւասիկ յերազի տեսանէր կինն զհայրն զի գայր առ նա ։ Եւ ասէ ցնա. զի՞ կայ իմ և քո, կին դու, զի ցանկացար տեսանել զերեսս իմ. միթէ մարգարէ՞ ոք իցեմ ես, կամ կա՞րգս վարուց մարգարէութե̃ ստացեալ ունիմ յանձին. այր մի մեղաւոր չարչարակից չարչարանաց մարդկան. բայց սակայն աղաչեցից 'ի վերայ քո և 'ի վերայ տան առն քո, զի եղիցի ձեզ ըստ հաւատոց ձերոց. երթայք խաղաղութե̃ 'ի բնակութի̃ ձեր ։ Եւ զայս իբրև ասաց, աներևոյթ լինէր ։ Իբրև զարթեաւ 'ի քնոյ անտի կինն, պատմեաց զբանս մարգարէին առն իւրում, և զձև տեսլեանն պատմէր և գոհանայր զա̃յ, և գոհութե̃ բազմաւ 'ի ձեռն առնն անդրէն յուղարկէր ։ Իբրև եւտես զայրն երանելին Յովհաննէս, յառաջագոյն խօսել սկսաւ ընդ նմա և ասէ.

ահաւասիկ զաղօթսն քո կատարեցի, զի երևեցայ նմա և հաճեցի զմիտս նորա, զի մի ևս յաւելցի տեսանել զիս, այլ երթայք խաղաղութեամբ:

Դարձեալ միւս ևս այլ սենեկապետի միոյ կին մինչ-դեռ այրն 'ի ճանապարհի էր և նա մերձ 'ի ծնանել, և յայնմ աւուր յորում այրն նորա զՅովհաննէս տեսանէր, յերկն հարեալ էր և 'ի տագնապի կայր զոգին 'ի բաց արձակել: Իսկ սուրբն երանելին իբրև ետես զայրն, սկսաւ աւետիս տալ և ասէ. եթէ գիտէիր դու զպարգևսն այ՝ զի որդի տուաւ քեզ այսօր, փառաւոր առնէիր զած. բայց մայրն սակաւիկ մի պխտեցաւ զոգին 'ի բաց արձակել. այլ դու երթիցես և գտցես զմանուկն եօթնօրեայ ծնեալ, և դիցես 'ի վերայ նորա զանուն Յովհաննու, և զզաստութն և իմաստութն սնուցես զնա, և յեօթնամենից ածցես զնա առ միայնակեացս յանապատ: Եւ զայս ամ առ արտաքինս որ գային առ նա՝ երևեցուցանէր զսքանչելիս. այլ իւրում քաղաքայնն մարդկանն որ գային ստէպ ստէպ, զիւրաքանչիւր ախտոյից վ̃ր խօսէր ընդ նոսա և ցուցանէր յառաջագոյն որ լինելոց էր առ յապայ, և գիտէր զամ ինչ որ ինչ յառաջ լինելոց էր, և զգաղտնիսն զիւրաքանչիւր գործոցն ճանաչէր, և վասն Նեղոս գետոյ և վասն արդեանցն ցուցանէր նոցա: Դարձեալ և պատուհաս իմն որ գալոց էր 'ի վերայ նոցա յայ՝ պատմեաց նոցա, և զպարտաւորսն կշտամբէր: Եւ ինքն երանելին Յովհաննէս յայտ յանդիման զնշան բժշկութեանցն ոչ առնէր, այլ ձէթ և եթ օրհնէր և բազում հիւանդութիւնս բժշկէր:

Դարձեալ սինկղիտոսի ուրումն կին վատնեալ յաչաց, չարաչար լոյսն զբօքն ձգեալ, աղաչէր զայր իւր երթալ տանել զնա առ սուրբն անդր: Եւ նա ասէ ցկինն. կին դու, ոչ իշխեմք տանել զայդ, քանզի չիք երբէք առաջի նորա կին մարդ մտեալ: Այլ ևս քան զևս աղաչէր. դու միայն բանս և եթ հասո 'ի նա, զի աղօթս արասցէ 'ի վերայ իմ: Եւ նա իբրև արար այնպէս, ձէթ օրհնեաց միայն և ետ տանել: Եւ իբրև առ օծ աւուրն երիցս զերիս աւուրս, և անդէն սրբեցան աչք նորա. տեսանէր համարձակ և գոհանայր զայ: Եւ զինչ ևս ասել պիտոյ է վասն այլոց գործոց նորա. յանդիման իսկ տեսանէաք զամ ինչ և ընդունէաք 'ի նմանէ:

Եօթն եղբարք էաք մեք օտարք 'ի միմեանց ամենեքեան որ երթեալ էաք առ նա ։ Եւ իբրեւ ետ մեզ զողջոյնն զուարթութէ̄ երեսաց, ընդդէմ խրախճանչիւր երեսաց մերոց զուարճանայր ։ Նա մատուցեալ աղաչեցաք զնա զի յաղօթս նախ կացցէ 'ի վերայ մեր, զի այս խուկ է սովորութիւն հարցն որ 'ի յերկրին եգիպտացւոց են ։ Նա սկսաւ հարցանել նա. միթէ ոք 'ի ձէնջ օծեալ իցէ ։ Մեք տուաք պատասխանի' թէ չիք ոք 'ի մէնջ օծեալ ։ Նա հայեցաւ ընդ առն խրախճանչիւր երեսս եւ ծանեաւ զթագուցեալն. զի էր ոմն 'ի մէնջ 'ի սարկաւագութէ̄ եղեալ, եւ մի ոմն յեղբարց անտի միայն գիտէր զայն, եւ նորա պատուէր տուեալ էր զի մի ումեք ասասցէ վասն խոնարհութէ̄, եւ զի 'ի մէջ ընտրութէ̄ այսպիսի սրբոցն եւ յողջունի քրիստոնէից հազիւ զանձն իւր արժանի առնէր յառաջ մատչել, թող թէ զիւր պատիւն երեւեցուցանել ։ Նա զձեռն իւր կարկառեալ եւ վաղվաղակի ցուցանէր ամենեցուն եւ ասէր. այրս այս սարկաւագ է ։ Նա իբրեւ ստէպ ստէպ յուրաստ կայր եւ ճողոպրել խնդրէր, բուռն արկ զձեռանէն եւ համբուրէր ընդ պատուհանն, աղաչէր եւ ասէր. մի անարգեր զշնորհն այ, որդեակ, մի ստեր ուրանալով զպարգեւն այ. զի ստուն օտարոտի է, թէպէտ 'ի փոքու խրիք վերայ լինիցի կամ 'ի մեծի. զի թէպէտ եւ յօգուտ ինչ լինիցի' չէ գովելի, զի փրկիչն մեր այսպէս ասաց' թէ ստութի 'ի չարէ անտի է ։ Նա իբրեւ յանդիմանեցաւ' լուռ եղեւ, իբրեւ ընկալաւ հեզութէ̄ զկշտամբութիւնն ։ Նա իբրեւ յաղօթս կացաք եւ կատարեցաք զաղօթսն, եղբայր ոմն եկն տապով չարաչար, եւ տագնապէր եւ աղաչէր զնա ։ Նա ետ նմա պատասխանի եւ ասէ. մի զչարիր, որդեակ, զի օգուտ է այդ առ ժամանակ մի որ եղեալ է քեզ ։ Սակայն ետ նմա իւղ եւ հրամայեաց նմա օծանել ։ Նա իբրեւ օծաւ, 'ի նմին ժամու զա̄մ ինչ որ 'ի փորին' ընդ բերանն եհեր, եւ նոյնժամայն ազատեցաւ եւ յարեաւ յախտէ անտի եւ իւրով ոտիւքն 'ի վանս իւր երթայր ։ Եւ անդ էր տեսանել զերանելին ինննսնամեայ մաշեալ զա̄մ մարմինն, եւ 'ի ճնշութէ̄ անտի պահոցն նեղութեէց եւ մօրուք անգամ չէին բուսեալ յերեսս նորա. զի ամենեւին այլ ոչ ինչ ուտէր, բայց միայն միրգ, եւ զայն յետ արեգական մը-

տանելոյ 'ի ծերութեան անդր, և զայն յետ բազում նեղութեան ձգնութեանց, որ և զինքն 'ի վարժ կացուցանէր յառաջագոյն. զի ամենևին և հաց անգամ չէր անցեալ ընդ բերան նորա, և ոչ զոր ինչ միանգամ որ պէտք հրոյ գործք գործէին։

Որդ. իբրև հրաժարեցաք մեզ նստել, գոհացաք մեք զՏէր զի արժանի եղեաք յանդիմանն լինել նմա։ Իսկ նա իբրև զորդիս ալեաց հերոց մեծաց ժամանակաց զմեզ տեսեալ զուարթագին երեսօք՝ այսպիսի բանս ընդ մեզ խօսեցաւ. ուստի՞ էք, որդեակք իմ, կամ յորմէ՞ աշխարհէ առ այր մի տկար դիմեալ եկեալ էք։ Իբրև ասացաք զաշխարհէն, և թէ վասն օգտի ոգւոց յԵրուսաղէմէ յարուցեալ առ ձեզ եկաք, զի այն որ ինչ միանգամ լուաք վասն ձեր՝ զայն աչօք մերովք եկեալ տեսաք, զի լսելիք ականջաց թերահաւատագոյնք են քան զտեսութիւն աչաց, զի զհետ ականջաց լսելեաց թերևս մոռացումն ինչ լինիցի, իսկ զհետ տեսանելեաց աչացն ոչ յիշատակն նուազի և ոչ տեսիլն 'ի մտացն ելանէ, այլ 'ի ներքս անդր նկարեալ կայ, եւ մեզ պատասխանի երանելին և ասէ. և զի՞նչ սքանչելիս գայիք տեսանել, ով երանելի մանկունք, զի այսչափ աշխատութիւն և վաստակ ճանապարհի յանձն առէք, և առ այր մի խոնարհ և տառապեալ, և առ ոչինչս տեսանել ցանկացեալ գայիք, զի ոչ ինչ արժանի տեսլեան և ոչ սքանչելեաց յանձին բարձեալ բերեալ։ Այլ դուք յա̃մի ունիք առ ձեզ զա̃մ տեղիս սքանչելեացն և գովութեան արժանի զմարգարէսն և զառաքեալսն որ հանապազ յեկեղեցիս ա̃յ ընթեռնուն։ Այլ զարմացեալ եմ, ասէ, վասն ձերոյ փութոյդ, զայնչափ վտանգին ճանապարհս արհամարհեալ՝ իբրև առ մեզ վասն օգտի իրիք եկեալ, զի մեք առ վատութեան դանդաղութեան և ըստ այրից ընդ դուրս արտաքս դանդաղիմք ելանել։ Այլ սակայն արդարեւ, ասէ, գովութեան ինչ մեծ ունին իրք խորհրդոց ձերոց, մի ինչ իբրև բարի արարեալ՝ իբրև կատարեալ բաւական համարեսջիք, զի այս հագիւ ուրեք գտանի. զի թէպէտ և զա̃մ ինչ ստացեալ ունիցիք, զի այս անհնար է, սակայն և այնպէս մի յանձինս ձեր ապաստան լինիցիք. զի գտան ոմանք յանձնապաստան եղեալք և 'ի վեր իսկ 'ի ծայրս առաքինութեան հասին, և 'ի կատա-

րածի 'ի վերուստ 'ի բարձանց անտի անկեալ կործանե-
ցան։ Արդ զգոյշ կացէք անձանց ձերոց եթէ 'ի ձեզ
բարի իցէ, մանաւանդ յաղօթս ձեր. գուցէ սրբութի
յստակութե մտաց ձերոց պղտորեալ իցէ, գուցէ միտք
ձեր 'ի զբօսանս մոլորութե ախտացեալ իցեն 'ի ժամանա-
կի աղօթիցն յորժամ առաջի ա͞յ կայցէք, գուցէ այլ
ոք ուստեք 'ի ներքս անկեալ ախտաւոր խորհրդովք՝
զմիտսն յայլ ճանապարհ դարձուցէ, գուցէ յիշատակ
ինչ անօրէն խորհրդոց 'ի ներքս անկեալ զմիտսն ճնշի-
ցէ։ Տեսէք զգոյշ լերուք եթէ ճշմարտութ͞բ յուսան
ա͞յ մտեալ իցէք հաստատունք, և ոչ որպէս դէտք լրտե-
սութ͞բ զգաստութիս մեր լրտեսեալ իցէք. գուցէ առ
հպարտութե նորափառ՝ ամբարհաւաճութե զմերս ա-
ռաքինութի յորս եկեալ իցէք, զի անհոգս երևեսջիք
մարդկան՝ մերոց գործոց նմանողք եղեալք։ Զգոյշ լե-
րուք գուցէ ախտ ինչ հպարտութե 'ի ձեզ 'ի ներքս բու-
սանիցի, անդրէն 'ի յանձինս ձեր ներքուստ 'ի ներքս
ճնշիցէ։ Մի պատիւ մի փառք մի գովութի 'ի մարդ-
կանէ, մի քահանայութի կեղծաւորութ͞բ, մի արծաթ-
սիրութե ագահութե, մի հպարտանալ՝ արդարք երևեալ,
մի պարծել վասն արդարութե պարծանաց, մի անձուկ
յիշատակ ազգատոհմի 'ի ժամանակ աղօթիցն 'ի միտս
արկանել, մի բարեկենդանութեան կամ այլ ինչ կարգ
մարմնոյ, մի բնաւ այլ ինչ յիշատակ յաշխարհի իսկ
գլխովին. ապա թէ ոչ՝ ընդունայն է ա͞մ իրք զինչ գոր-
ծիցէք, 'ի ժամանակի յորժամ յանդգնի յանդիման
կացեալ ընդ տեառն իւրում խօսեսցի, և 'ի մէջ զբաղ-
ման խորհրդոց խորհի։ Բայց ախտանայ մարդ զգայ-
թակղութիւն մտացս այսոցիկ յորժամ ոչ բովանդակ
յաշխարհէ ուրացեալ իցէ, այլ յորս ելանիցէ մտացն
հաճոյ լինել բազմաց. զի վասն բազում խորհրդոց բա-
ժանեալ լինի նորա որ 'ի մտի հոգք կան մարմնաւորքն
և հոգեղէնքն։ Իսկ մինչդեռ ընդ այնքան ախտս տայ
պատերազմ, ոչ կարէ տեսանել զա͞ծ. այլ և մի 'ի նոյն
ինքն 'ի գիտութի անդր պարտուածն² ճշմարտիւ հայել
խմանալ, գուցէ անարժան ոք իցէ այնպիսի մեծութե,
և տակաւին մի ումեք հասու եղեալ՝ կարծիցէ թէ ա͞մի

1 Երկու օրինակք նորա՝ առ ամէնը . . .   2 Օրինակ մի պարտուածն։

հասու եմ, և ամենևին կործանեալ լինի յայնպիսի յապականութ̃ի: Այլ պարտ և պատշաճ է փոքր մի առ սակաւ սակաւ խոնարհութ̃բ և երկիւղածութ̃բ մատչել առ ա̃ծ, որչափ իւրաքանչիւր ոք կարող լինիցի մըտօք իւրովք անձին իւրում առաջնորդել, որչափ պարտ և պատշաճ իցէ հասու լինել մարդկութեանս այսմ: Արդ պարտ և պատշաճ է յայլմէ յա̃մէ պարապ առնել խորհրրդոցն այնոցիկ որ կամին զա̃ծ. զի պարապեցէք և տեսէք, ասէ, զի ես եմ ա̃ծ: Արդ որ գիտութեան ա̃յ փոքր 'ի շատէ ինչ արժանի հասու եղեալ իցէ, զի ա̃մք ո՞ կարէ հասու լինել կամ ընդունել, լինի նա հասու այլոցն ա̃մ գիտութեանց: Իսկ տեսանէ նա զխորհուրդս ա̃յ զի ցուցցէ նմա, և յառաջադէմ տեսանէ նա զհանդերձեալսն ա̃մ, և տեսանէ նա զյայտնութիւնս որպէս և սուրբքն ա̃մ, և կարող լինիցի զօրութիւնս առնել և բարեկամ լինել ա̃յ, և զա̃մ խնդրուածս զոր խնդրէ յա̃յ առեալ բերէ 'ի նմանէ:

Իսկ իբրև ասաց նա զայս ա̃մ և այլ բազում ևս քան զայնս վասն մահու, և զմահուանէ իբրև զփոխումն 'ի բարեաց կենաց պարտի ոք ընդունել, և մի յախտ անդր մարմնոյ հայեսցի, և մի ուսուցանել որով իւիք և իցէ զպտուղն. զի յազեցաւ, ասէ, ա̃նն կերակրովք, և զնոյն խորհուրդս 'ի մտի եդ զոր փափկասէրքն եդին. այլ ջանասջիր մեծաւ վարդապետութ̃բ յաղթել ցանկութ̃ե և զանչափութ̃ի ստամանալ: Իսկ մի ոք 'ի պատրաստեալ սեղան անդր զհանգիստ մարմնոյն խնդրեսցէ, այլ ձընչեսցի և նեղեսցի և հիւանդասցի, զի զընդարձակութ̃ի Ա̃ի արքայութեան ժառանգել կարասցէ: Զի պարտ է մեզ, ասէ, բազում նեղութ̃բք մտանել յարքայութիւն երկնից. զի նեղ է, ասէ, և անձուկ ճանապարհն որ տանի 'ի կեանս, և սակաւք են որ մտանեն ընդ նա. ընդարձակ է ճանապարհն որ տանի 'ի կորուստ, և բազումք են որ երթան ընդ նա: Արդ զի պարտ և պատշաճ է մեզ աստ չհեղգանալ, զի յետ սակաւ ինչ ժամանակաց երթալ 'ի հանգիստն յաւիտենից: Իսկ արդ զի ոչ է պարտ ումեք հպարտանալ 'ի վերայ իւրոց վարուցն և գործոցն ուղղութ̃ե, այլ խոնարհ լինել յա̃մ ժամանակի և 'ի հեռագոյն անապատսն հասանել, մանաւանդ յորժամ տեսցէ ոք զանձն իւր 'ի հպարտութ̃ի

համարձակեալ. զի 'ի մերձաւոր տեղիքն բնակելով, բազում անգամ և զկատարեալսն վնասեցէ : Սան այսօրինկ Պուիթ խոկ յիւրում օրհնութեան յայնպիսի ինչ յուսացեալ ասաց. Երկայն արարի զփախուստ իմ, և բնակեցայց յանապատի. ակն ունէի այ որ փրկէր զիս 'ի կարճմտութէ զայրանալոյ և 'ի մրրկեալ նեղութենէ :

Որ բազումք են և 'ի մերոց եղբարց՝ ընդ որ այս անցք անցին, և յամբարհաւաճելն իւրում վրիպեցաւ 'ի նպատակէ անդր : Որ էր ոմն երբեմն 'ի միայնակեցաց 'ի մերձաւոր անապատի անդ յայրս մի ամրացեալ, զամ կարգս առաքինութե կատարեալ և 'ի վաստակս ձեռաց իւրոց զաւուրն հացիկն առօրեայ վարձեալ : Նա իբրև կանխէր յաղօթս իւր և յառաջադէմ լինէր ամ առաքինութք, սակաւ ինչ յանձնապաստան լինէր՝ քաջ ջանեցեալ 'ի վերայ իւրոց կարգացն և վարուցն առաքինութե : Իսկ որ փորձիչն էր որպէս Յոբայն, կոչեաց զնա յինքն. և արդ յակն արկանէր նմա, առաջօք տանէր ցնորս ինչ տեսլեան ընդ երեկոյն կնոջ գեղեցկի ընդ անապատն մոլորելոյ : Նա իբրև տեսանէր զդուրս այրին բացեալ, 'ի ներքս անկանէր յայր անդր և զոտիւք ծնկօք պատեալ առնն խնդրէր հանգիստ 'ի նմանէ, իբրև զի երեկոյին ժամուն 'ի վերայ նորա տարաժամելոյ : Նա իբրև ողորմեցաւ նմա, որ չէր իսկ պարտ և արժան ողորմել նմա, առընկալաւ զնա յայր անդր, և արդ առեալ հարցանէր զնա վասն մոլորութե ճանապարհին : Նա կաց պատմեաց և քծինս ևս պատիր բանիցն ներքուստ 'ի ներքս հաստատեալ սերմանէր, և բազումս և երկայնս զճառս բանիցն արարեալ՝ մեղմով մեղմով 'ի գութ արկեալ զնա 'ի ցանկութիւն յօժարեցուցանէր : Նա բանք պատիր բազմեալ՝ ընդ միմեանս՝ ծաղր այնուհետև, ժպտումն և քեքումն և քնքումն. և ահա առեալ տանէր մոլորականն բազում և երկայն ճառիւք իւրովք : Նա յայնմհետէ անդ այնուհետև շօշափումն, ձեռն զմօրուօքն և զպարանոցաւ ձեռնածեալ, և գերեալ երթայր այնուհետև 'ի կատարած առաքինի նահատակն : Նա իբրև խոտորեալ էր նա ներքուստ 'ի ներքս խորհրդովքն, իբրև զի 'ի ձեռն եկեալ իրացն պարա-

1 Օրինակ մի ճառում եղեալ. . և ծծրումն և ջնա խոն և ջնջումն. և այլն :

դութի̃ և ժամ պարապոյն՝ կատարել զախտ ցանկութե̃ն խորհեցաւ, յանձն առեալ այնուհետև զմտացն և 'ի միւս լինել զմտաւ ածէր, մնաց արտաքոյ եղեալ իբրև իգամոլ ձի պատրաստեցաւ։ Կինն յանկարծակի 'ի մեծ բարբառ աղաղակեաց և չիք լինէր 'ի ձեռաց նորա, իբրև ստուեր ինչ յանկարծակի 'ի միջոյ կորուսեալ։ Եւ ծաղր մեծ այնուհետև 'ի մէջ օդոց լսէին զշխուացն, և կշտամբէին զնա որ պարտեցինն, և մեծաւ բարբառով գոչէին առ նա և ասէին. այդպէս որ բարձրացուցանէ զանձն իւր, նկուն լիցի. արդ դու բարձրացուցեր զանձն քո մինչև յերկինս, արդ նկուն եղեր և ընկեցեալ կաս դու ահաւասիկ։ Ընդ այգն ընդ առաւօտն յարուցեալ անտի, զուգն տրտմութե̃ գիշերոյն զխուրեաւ առեալ ողբայր և զլոյս հատեալ զանձին իւրոյ՝ զոր չէր նման նմա առնել՝ անդուստ անդէն առ նմին յաշխարհ մտաբերեալ դառնայր։ Զի այս իսկ է չարագործութե̃ խորամանկութեան չարին. յորժամ ումեք յաղթեսցէ 'ի մարտի անդ, ապա յինքն քաղէ զմիտս նորա, զի այնուհետև մի կարասցէ կանգնել 'ի գլորմանէ անտի։

Վասն այսորիկ որդեակք իմ, չէ պարտ 'ի մերձաւոր վայրս յանապատի բնակել և ոչ 'ի կանանց պատահումն յօժարել, զի անշէջ են յիշատակք տեսլեանն և ձայնք խօսից՝ որ զմիտս անմեղս յանձինս իւրեանց կորզեն։ Եւ ոչ պարտ և պատշաճ է մեզ հատանել զլոյս անձանց մերոց և յանյուսութի̃ անդր կործանել. զի բազումք իսկ են որ հատին զլոյս իւրեանց, յողորմած 'ի մարդասիրէն այ̃, սակայն 'ի մարդասիրէն անտի այ̃ ոչ զրկեցան։ Զի էր ոմն երիտասարդ 'ի քաղաքի, որոյ բազում և մեծամեծ չարիս գործեալ էր և չարաչար մեղաց 'ի ներքոյ էր. որ յակնարկել իմն այ̃ զզջացաւ 'ի վերայ բազում մեղաց իւրոց. ինքն յինքեան փախստեայ 'ի գերեզմանս ականէր նախ, և անդ անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց՝ անձամբ զանձն իւր վասն առաջին կենաց իւրոց և գնացից ողբայր, և անդ անձամբ զանձն զարկուցեալ կոծէր։ Ի վերայ երեսաց անկեալ դնէր և ոչ կամէր բնաւ ամենևին բարբառ արձակել և ոչ իշխէր զանուն այ̃ անուանել և ոչ աղաղակել առ նա, զի անարժան համարեցաւ զանձն իւր. և 'ի ժամանակին կենաց ինքն զլխովին և յառաջ քան զմահն 'ի մեռելոց գերեզմանի զանձն ար-

դել, և զայս հատեալ կենաց անձին իւրոյ՝ հեծեէր միայն, յոգւոց ելանէր յանդնդոց խորոց սրտի։ Այս իբրև շաբաթ մի անց 'ի վերայ, յայնմ գիշերի եկին համին դևքն 'ի վերայ յոր կենաց նորա յառաջ մնաակարք իսկ էին, դոչէին և աղաղակէին և ասէին. ո՞ւր է պիղծն, անօրէննն և անարժանն՝ որ յայնմ գիջութեն զանձն յագեցոյց, արդ եկեալ մեզ աւանիկ տարաժամ զգաստերևի, և հեզ և հանդարտ կամի լինել. արդ զի՞նչ կամիս դու, չյագել չարեօք մերովք. ո՞չ 'ի սովորութի մեր անդր կաս վաղվաղակի. արդ կան մնան քեզ պոռնիկք և կրպակապետք, և 'ի նոյն ցանկութի գաս վաղվաղակի, զի ո՞ւմ ինչ յոյս քո շիջեալ է և կորուսեալ. ապաքէն եկեալ հասեալ է 'ի վերայ քո վճիռ դատաստանին, թէպէտ և այդպէս զանձն քո սպանանես։ Արդ զի՞ փութաս արագ արագ հասանել 'ի տանջանս անդր, ով թշուառական, կամ զի՞ փութաս վաղվաղակի գալ հասանել 'ի վերայ քո դատաստանին։ Այս այլ բանս խօսէին. եկիր, ասեն, ընդ մեզ ուխտս եդիր և դաշինս կռեցեր, զանօրէնութիւն զո՞ւմ ուսար և ընդ մեզ դատապարտեցար, արդ փախստեա՞յ կամիս լինել, չտա՞ս պատասխանի, ո՞չ գաս ելանես այտի, ո՞չ գաս գնաս ընդ մեզ։ Նա իբրև 'ի հեծեծութեան անդ իւրում կայր, և ոչ զլսելիսն անգամ մատուցանէր նոցա բարբառոյն, և ոչ տայր բնաւ ամենևին բանիցն պատասխանի, թէպէտ և կարի յաճախէին ձանձրացուցանել զնա դևքն, արդ իբրև ոչ կարացին մուտ գտանել նովին բանիւք, բազում անգամ հարկանելոյ մտեան, դարձեալ դևքն չարաչար տանջանօք տանջեալ զնա և չարաչար զամենայն մարմինն գզէին, և տանջանօք կիսամահ թողեալ գնացին։ Իսկ նա ոչ ինչ պակաս 'ի մահուանէ անկեալ կայր ուր թողին զնա, և դնէր մռնչելով։ Արդ իբրև սակաւ մի յանձն իւր եկն, մռնչելով անկեալ դնէր և հեծեծէր, եկին առ նա ընտանիքն որ զհետ նորա ելեալ էին 'ի խնդիր. իբրև գտին զնա, զպատճառս տանջանացն հարցանէին, և աղաչելով առնուլ տանել զնա 'ի տուն։ Իսկ նա՝ թէպէտ և շատ բազում անգամ նեղէին զնա՝ յանձն ոչ առնոյր։ Դարձեալ 'ի միւս գիշեր անդր դևքն 'ի վերայ հասեալ՝ ևս չարաչար տանջէին զնա, սակայն և այնպէս ոչ եղև հնար եկելոց ընտա-

նեաց նորա շարժել զնա 'ի տեղւոջէ անտի ։ Լաւ լիցի, ասէ, 'ի սոյն տանջանս մեռանել, քան այնպիսի 'ի խիղճ մտաց անօրէնութեան պղծութեան մարմնոյ կենդանանալ ։ Յերրորդ գիշերի անդր դեւքն դարձեալ հասին 'ի վերայ նորա, և սակաւիկ ինչ պիտեցաւ և սպառսպառ զոգին թափեալ 'ի նմանէ ․ այնպէս անողորմ հասին 'ի վերայ նորա չարաչար տանջանօք, և մինչև 'ի յետին սպառել ոգւոյն տանջէին ։ Այլ իբրև տեսին թէ սակաւ մի ոչ թուլացաւ, անմռունչ թողին զնա յայրն և գնացին, և աղաղակաւ երթեալ ասէին՝ թէ յաղթեցեր, և այլ ոչ ևս մերձենային 'ի յայրն ։ Այլ սուրբն այնուհետև սրբութեամբ բնակէր 'ի նոյն գերեզմանի և սրբութեամբ վարէր զկարգ վարուց սրբութեան առաքինութեան իւրոյ ։ Այնպէս առաջի այ եղեալ պատուական զօրութբ նշանօք և արուեստիւք սքանչելեօք, մինչև բազմաց զարմանալի էր և բազմաց բազում առուեստից առակ օրինակաց լինէր ։ Այլ բազումք 'ի նոցանէ որոց և կարի յոյժ իւրեանց հատեալ էր, դարձեալ 'ի գործս բարութեան զանձինս իւրեանց ուղղեցին 'ի ճանապարհս սրբութեան ։ Այլ կատարէր 'ի վերայ նոցա բանն որ ասացաւ՝ թէ ամ որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի ։

Որդ առաւել քան զամ, արդեաւք իմ, զխոնարհութիւն ուսարուք, որ հիմն և խարիսխ է առաջին ամենայն առաքինութեանց և քաջութեանց, և առաւել օգուտ է մեզ 'ի հեռաւոր անապատ երթալ առ ուսման և կարգաց և վարուց լաւութեան ։ Զի եղև այլ ոմն միայնակեաց՝ զհեռաւոր անապատ բնակէր, և բազում ամօք զառաքինութիւս քաջութեան լուսաւորէր, 'ի թանձրութեան ծերութեան մեծի 'ի դիւաց փորձութիւս անկանէր ։ Զի էր նա պինդ՝ յոյժ 'ի կարգս վարուց իւրոց՝ զմիայնութիւն և զլռութիւն սիրեցեալ, աղօթիւք և խնդրուածովք և օրհնութեամբք կարգեալ, տեսլեամբք տունջեան և երազովք գիշերոյ, և տեսիլս զարմանալիս ածեղէնս տեսանէր՝ էր որ առ արթնութեան մարմնոյն և էր որ գիշերային տեսլեամբք ․ իբրև գրեթէ նշմարանք էին անմարմին կենդանութեան ։ Ոչ զերկիր գործէր, ոչ հոգ յանձին ինչ

1 Օրինակ մի [illegible] 'ի ձեռս իւր ։

ունէր վասն անձինն կերակրոյ, ոչ ըմպելիք ինչ զայլ գտանել մխիթարութի բերանոյ, ոչ յերկիր հայեր ըղ-բոյս երկրի ոգեպահ գտանել, ոչ յորս Թաքնոց և ոչ այլ անասնոց, այլ էր յուսով ածութեն։ Յորմէհետէ 'ի չէն աշխարհէ հրաժարեալ էր և բանք ինչ ոչ էին ա-մենևին նորա որով խիղճ մարթ իցէ լինել մարմնոյն մխի-թար առ 'ի տալ ունել կենդանութե, այլ մնացեալ զնմ 'ի կատարեալ գութ անդր ածութեն զանձն իւր պատրաստէր, կայր մնայր կոչմանն յաշխարհէս փոխե-լոյ, և առաւել ևս զուարճանայր տեսլեամբ յուսոյն ա-րով կերակրէրն իսկ։ Այլ ոչ վատէր մարմինն նորա եր-կայնաձիգ կարգօքն, և ոչ ոգիքն տրտմէին. այլ 'ի պար-կեշտութե վարուց կարգի զկարգս գեղեցկութե վարէր։ Սակայն 'ի պատիւ մեծ պատուեալ զնա ած 'ի կարգի իրիք՝ յերկուս կամ յերիս աւուրս նկանակ մի եղեալ լինէր 'ի վերայ սեղանոյն 'ի պէտս նորա սուրբ աղինս։ Երբեմն մնանէր նա յայր անդր, յորժամ իմանայր եթէ կարի պէտք են մարմնոյ՝ գտանէր զայն կերակուր. եր-կիր պագանէր, ուրախ լինէր, և դարձեալ յօրհնութիւ և յաղօթս դառնայր և 'ի նոյն կանխէր։ Այլ տեսլեամբք զուարճանայր, և լուութբ ծաղկէր զօրհանապազ, և յա-ռաջադէմ լինէր արթնութբ և քաջութբ՝ յուսով յա-ռաջադէմ եղեալ և լուսաւորէր. և գրեթէ ձեռն յան-ձին հարեալ էր, և իբրև լուացոյն կարգս 'ի ձեռին առեալ և մտեալ հաստատութբ, որ և անցին իսկ ընդ նա առ 'ի փոքր մի գթելոյ 'ի փորձութե անտի որ հա-սին 'ի վերայ նորա։ Այլ զինչ ասեմք որ սակաւ մի դը-թեաց. զի իբրև մեծամտեաց իմն և մոռացաւ զինքն և համարէր 'ի մտի իւրում մեծ և առաքինի զանձն իւր և այլ այսպիսի իմն յանձն ապաստան լինէր, արդ լինէր նմա ոչ ընդ երկար, այլ սակաւիկ ինչ հեղգութի այն-չափ որչափ և չհեղգութի համարեալ։ Դարձեալ բա-սանէր հեղգութի մեծ որչափ և 'ի միտսն զգայութիւն հասանէր. քանզի և 'ի քնոյ անտի դանդաղագոյն յառ-նէր, և առ օրհնութիւն և աղօթսն հեղգագոյն լինէր, և օրհնութիք ոչ այնպէս յերկարեալ լինէին, և ոգիքն ոչ այնպէս յօժարագոյնք լինէին, և 'ի հանգիստ անդր յօժարագոյն խոկայր, և միտքն 'ի խոնարհ հայէր, և խորհուրդքն 'ի մեղսութի կործանէր և զանկարգութիք

անկանէին. սակայն սովորութիւքն յառաջին կարգ անդր
ձգէին, զի այն իբրև 'ի սովորութէ իմն դեռ զառաջին
կարգն պահէր։ Նա և առ դէպ երբեմն եղև յետ սովո-
րութէ աղօթիցն ընդ երեկս մտանել գտանել նկանակս
'ի վերայ սեղանոյն որ նախ կարգեալն էր յայն. առ եկեր
և հանգեաւ։ Բայց սովորեալն զպակասութիւնն զայն
եթող և ոչ համարեցաւ բնաւ թէ իցէ ինչ որ զանե-
սիլն զայն խնայէ, և ոչ 'ի դարման բժշկութեան չարին
դարձաւ, այլ թեթև համարեցաւ՝ որ առ սակաւ մի
կարեաց պէտքն պահանջեցան, յայնմհետէ այնուհետև
գիջութի ցանկութէ յափշտակեաց և զաշխարհաւ գալ
սկսաւ խորհրդովք, սակայն արգել զանձն իւր առ ժա-
մանակ մի, և 'ի վաղիւ անդր ըստ սովորութեն դա-
նայր 'ի կարգս վարուցն։ Արդ կացեալ յաղօթս և օրհ-
նեալ՝ եկն եմուտ յայրն գտանել. եգիտ զնկանակն 'ի
վերայ սեղանոյն, այլ ոչ այնպէս կազմիկ սրբիկ որ-
պէս զերեկն ջինջ, այլ գտանէր իբրև զաղտեղեալ իմն
և յոռացեալ. զարմացեալ յոյժ և տրտմէր, սակայն
առնոյր ուտէր և հանգչէր։ Նա իբրև երիր գիշերն եղև,
և երեքկին չարն յաւելոյր, քանզի վաղվաղակի միտքն
ընդ խորհուրդքն բախէին, ած զմտաւ թէ իբրև առ
նախ անկեալ կայր կին մի, և ինքն 'ի հաւանութիւն ե-
կեալ և զգործս առաջի աչաց կատարեալ առնէր, իբրև
արարեալ կատարեալ համարէր։ Սակայն ելանէր և
զերկիր աւուրս այն 'ի գործ իւր, և զաղօթսն և զօրհ-
նութիւնս ոչ սուրբ կատարէր, զի 'ի ներքս յանձին իւ-
րում ունէր զխորհուրդս օտարոտիս, և ստէպ ստէպ
յայնկոյս զիւրև հայեցեալ մաշէր՝ յամ կողմանց զաչսն
արձակեալ, զի կատարէին զգործս բարութէ նորա յի-
շատակն ցանկութէ։ Արդ գայր ընդ երեկս 'ի խնդիր
նկանակին և գտանէր զնա 'ի վերայ սեղանոյն իբրև 'ի
մկանց կամ 'ի շանց կրծեցելոց. յայնժամ յոգւոց հա-
նէր և արտասուէր։ Արդ ոչ այնչափ որչափ բովանդա-
կէր, և ոչ այնչափ որ զչարն կարծել մարթէր, և կե-
րակրէր որչափ կամէր, և հանգչէր ոչ որպէս հանգիստ
իւր էր։ Արդ մտեալ առ նա խորհուրդք չարք, շուրջ
եղեալ պաշարէին զնա և կարևոր պատերազմաւ նե-
ղէին զմիտս նորա և անդուստ վաղվաղակի յաշխարհ
դարձուցանէին։ Յարեաւ վաղվաղակի գնաց յաշխարհ

ընդ անապատն գիշերավար։ Իբրև եհաս նմա տիւն ; աշխարհն դեռ հեռագոյն էր՝ հասանէր 'ի վերայ նորա տօթ, և յոյժ խանձավառուտակ տագնապաւ վառատակէր. շուրջ զաչսն ածել սկսաւ եթէ արդեօք նորա վանք մի դիպեսցի, զի մտեալ հանգիցէ. որ և եղև իսկ։ Այլն ընկալան զնա սանձք յեղբարց հաւատացելոց, որք իբրև զհայր ընդ առաջ ելեալ ընդունէին զնա. լուանային զձեռս և զերեսս 'ի փոշւոյ անտի և զոտս նորա, և յաղօթս կացեալ եղին սեղան առաջի որ ինչ գտանիւր, աղաչէին ճաշակել։ Իբրև հանգեան, սկսան աղաչել և հարցանել զնա բանս փրկութեան՝ կարգաց և գնացից ամբարշտութեան։ Ոչ ինչ պարտ և պատշաճ իցէ, ասէ, ապրել յորդայթից սատանայի, և զինչ հնարք իցեն 'ի վերայ պղծութեանց յաղթական լինել։ Նա սկսաւ նոցա իբրև հայր որդւոց խրատ մատուցանել. կալ ձեւալ ժոյժ ունել, ասէ, սակաւ ժամանակեայ կենացս և յետոյ 'ի հանգիստն յաւիտենից փոխել։ Բազում և այլ վարդապետութեան բանիւք խօսէր ընդ նոսա և յոյժ օգտեալ շահէր զնոսա։ Իբրև լուռ եղև 'ի խրատելոյ անտի և սակաւ մի 'ի միտս իւր եկեալ՝ սկսաւ խորհել ընդ անձին իւրում՝ զի այլոց խրատ տայր, և ինքն արտաքոյ մնաց անխրատ ելեալ գնայր։ Եւ իբրև 'ի միտս իւր էջ, ետես զինքն 'ի պարտութիւն մատնեալ. յարուցեալ ընթացաւ վաղվաղակի, 'ի նոյն անապատն հասանէր, լայր ողբայր զանձն իւր և ասէր. եթէ ոչ տեառն օգնեալ էր ինձ, սակաւիկ մնա ևս բնակեալ էր անձն իմ 'ի դժոխս։ Եւ սակաւիկ ինչ պղտեցաւ, ասէ, և եղեալ գտանէի 'ի մէջ ամ̃ չարեաց. սակաւիկ ինչ պիտէր, և սպառեալ կործանէր զիս յերկիր։ Արդ եկն և կատարեցաւ 'ի վերայ նորա բանն որ ասէ. եղբայր եղբօր օգնական եղեալ՝ իբրև քաղաք մի ամուր և իբրև պարիսպ ամուր առանց կործանելոյ։ Եւ յայնմհետէ 'ի սուգ մտեալ ողբայր զամ̃ աւուրս կենաց իւրոց։ Բայց յա̃ծակոյս կողմանէ անտի սեղանն միայն պակասեաց 'ի նմանէ, և 'ի գործս ձեռաց իւրոց զկերակուր իւր առնէր։ Եւ արգելեալ զանձն իւր պահէր, քուրձ զգեցեալ և 'ի վերայ մոխրոյ անկանէր, և ոչ ևս յաւելոյր կանգնել 'ի գետնոյ անտի մինչև լսէր զձայն բարբառոյ հրեշտակին՝ որ խօսէր ընդ նմա 'ի տեսլեան գիշերոյ և ա-

ւէր. ընկալաւ ա̃ծ զապաշխարութիւն քո և լուաւ աղօթից քոց և ողորմեցաւ քեզ. ահաւասիկ գան մխիթարել զքեզ աշակերտեալքն ՚ի քէն, և բերցեն քեզ օրհնութիւն՝ զոր առցես դու և ճաշակեսցես նոքօք հանդերձ, և զա̃յ գոհասջիր յամենայն ժամանակի:

Արդ զայս ասեմ ձեզ, մանկունք իմ, զի յա̃մ ժամանակի զխոնարհութիւն ուսջիք եթէ մեծ ոք իցէ և եթէ փոքր, զի այս պատուիրան առաջին որ ասէ. երանի որ խոնարհ իցեն հոգւով, զի նոցա է արքայութիւն երկնից. և զի մի պատրիցիք դուք ՚ի դիւաց անտի որ ցնորս առաջօք յարուցանիցեն ձեզ: Եթէ ոք գայցէ առ ձեզ եղբայր կամ բարեկամ կամ կին կամ հայր կամ մայր կամ ծեր ոք կամ վարդապետ ոք կամ քոյր կամ եղբայր կամ տէր կամ ծառայ, նախ զձեռս ձեր յաղօթս ամբառնայցէք. և ապա եթէ իցեն ցնորք ինչ առաջօք եղեալ, վաղվաղակի փախիցէ ՚ի ձէնջ: Իսկ դարձեալ եթէ խաբեսցեն զձեզ դևքն յաղօթս կալով, կամ իբրև մարդիկ պատրիցեն ողոքեսցեն զձեզ և գովեսցեն, մի անսայցէք նոցա և մի հպարտանայք ՚ի միտս ձեր. քանզի և զիս պարտեցին բազում անգամ ՚ի գիշերի, և ոչ յաղօթս կալ և ոչ հանգչել թոյլ ետուն ինձ զգիշերն ա̃մ՝ ցնորս առաջօք ածելով. և դարձեալ ՚ի վաղիւ անդր եկեալ խաղ առնէին, առաջի անկանէին ոտից իմոց և ասէին. թողացո մեզ, հայրիկ մեր, զի աշխատ արարաք զքեզ այսօր: Ասեմ ցնոսա. ՚ի բաց կացէք յինէն ամենեքեան ոյք գործէք զանօրէնութիւն:

Այսուհետև դուք, որդեակք իմ, զլռութ̃է զհամբերութ̃է զհանդարտութ̃է զհետ երթայք, զի սրբութ̃է միտս ստանալ մարթասջիք՝ առ ա̃ծ աղօթս մատուցանելով: Գեղեցիկ է այն արգելական, որ կանխէ ՚ի կրթութ̃է յաշխարհի, և ՚ի գործս բարութ̃է և սրբութ̃է զեղեալ լինի, որ զհանդէս եղբայրսիրութ̃է ցուցանիցէ և զհիւրասիրութ̃է, և զսէր և զողորմածութ̃ի հանապազ գործէ, և բարի առնէ մերձաւորաց ՚ի տալ օգնականութ̃ի վաստակաւորաց, և ինքն առանց գայթագղութեան հաստատուն կայ: Գեղեցիկ է այս և յոյժ բարիոք, զի արդիւնաւոր մշակ է պատուիրանաց, սակայն ընդ աշխարհ պատաղեալ է: Իսկ լաւ է քան զսա և մեծ ես որ գիտնագոյն է՝ որ յարդիւնական վարուց անտի

յիմաստութիւն գիտութեան անդ ընթացեալ, զայս այլոց թողեալ է առ 'ի հոգալ. և ինքն զինքն իսկ ուրացեալ և մոռացեալ և յայժ 'ի քնին է երկնաւորացն, զի ինքն առաւել քան զամենեսեան կացցէ առաջի այ, ոչ 'ի միւ ջէ իմեքէ հոգոց յետսակողմն ձգեալ: Զի այնպիսին ընդ այ շրջի, գործակից է անդադար օրհնութեանց՝ միշտ համապազ զած օրհնելով:

Զայս և այլ այսպիսի քան զոյն պատմէր մեզ երանելին Յոհաննէս յերիր աւուր ժամանակաց անդ, մինչ չև յիններորդ ժամու խօսէր ընդ մեզ և բժշկէր զոգիս մեր: Նորա տուեալ ես մեզ օրհնութիւն, և խաղաղութեան զճանապարհն երթալ հրամայէր: Պատմեաց մեզ մարգարէութիւն մի և ասէ. այսօր է յաղթութիւն բարեպաշտ թագաւորին Թէոդոսի. այսօր բերին զնշան յաղթութեան 'ի քաղաքն աղեքսանդրացւոց զբռնաւորն թագաւորին նշան սպանման. և զի պարտ և պատշաճ է թագաւորին ոչ 'ի ձեռն թշնամւոյ, այլ իւրով մահուամբ մեռանել, որպէս և եղև իսկ ճշմարտիւ:

Իսկ արդ իբրև բազում և այլ հարս տեսաք, եկին եղբարք և պատմեցին մեզ՝ եթէ կատարեցաւ Յոհաննէս 'ի Ղն ազանչելի իմն օրինակաւ: Զի պատուէր տուեալ էր նորա ընդ ամ կողմանս զի զերիս աւուրս ումեք բնաւ ամենեւին մի իշխել մտանել առ նա, և ծունր եդեալ կայր յաղօթս, և 'ի նմին յաղօթսն կատարեցաւ առ ած գնալով:

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՅՈՀԱՆՆՈՒ ԳԲԱՑՒՈՅՆ

Կին ոմն քնասէր, որում անուն էր Յուլիա, մեծա-տուն յոյժ. և էին նորա մանկունք երկու՝ Յովհաննէս և քոյր նորա Թեմեստիա: Ընդ ժամանակսն ընդ այնս եկաց իշխան անօրէն. որոյ հրաման առեալ 'ի Թագա-ւորաց, զի զորս միանգամ գտանէր հաւատացեալս 'ի Քս՝ զանազան տանջանօք վատնէր: Իսկ երանելւոյն Յուլիայ լուեալ թէ գայ և 'ի քաղաքն յայն, խոյս տայր 'ի տուն մի փոքր և անդ թաքչէր հանդերձ մանկամբքն, ուսուցանել նոցա զբարեպաշտութեան օրէնս: Եւ եղև Յովհաննէս իբրև ամաց հնգետասանից, գաղտ 'ի մօրէն երթայր յեկեղեցին և զսովորական աղօթսն կատարէր:

Եւ յաւուր միում գտեալ զնա առն միում յեկեղե-ցւոյն եհարց զնա և ասէ. ասա ինձ, մանուկ դու, յո՞ր ազգի ես, զի այդպէս զսովորական աղօթսդ միայն կա-

ՑՆՐԳՐԷՆ փիւնիկեցւոց էր Յովհաննէս 'ի քաղաքէն Կեսարու. ու-նէր մայր այրի և բարեպաշտ և մեծատուն, և անուն նորա էր Յու-լիա. ունէր և քոյր մի փոքրիկ, որուն անուն էր Թեմաստիա: Եւ յա-ւուրսն յայնոսիկ առաքեցաւ յանօրէն իշխանէն Փիլիկոնէ Կոմոդիանոս գատաւոր 'ի Կեսարիա քաղաքն Պաղեստինու. և զոր տեսանէր զքրիս-տոնեայսն որ ոչ զոհէր կռոցն՝ տանջանօք սպանանէր: Եւ լուեալ զայս երանելին Յուլիա, առեալ զերկուսին զաւակսն իւր թաքեաւ առ-տաքոյ քաղաքին 'ի ներքնատուն մի նեղ և անձուկ. և յայնժամ էր Յովհաննէս երկոտասան ամաց: Եւ ուսուցանէր մայրն զաւակացն գիր երկիւղիւ, և զբարեպաշտութեան հաւատոյ Քսի: Եւ յետ որ երթայր յեկեղեցին և զսովորական աղօթսն կատարէր: Իսկ բարեպաշտ մայրն նորա երկնչէր մի գուցէ ըմբռնեսցի մանուկն իւր յանօրէն գահճաց. վասն այնորիկ ասէր մանկանն մի երթալ յեկեղեցին, այլ 'ի տան աղօթել. այնուհետև Յովհաննէս գաղտ 'ի մօրէն երթայր յեկեղեցին և ոչ զոք գտանէր անդ, այլ ինքն միայն աղօթելով գտանէր առ մայր իւր: Եւ եղև Յովհաննէս ամաց իբրև հնգետասանից, անձեցին և առա-քինութեամբն ընդ նմա: Իսկ երանուհի մայրն նորա տեսանելով զմա-նուկն բարեպաշտութեան սիրով, ուրախանայր յոյժ. բայց տեսանելով զնա ոչ երկնչելով 'ի սպառնալեաց անօրինաց, զարհուրէր թէ գու-ցէ յանկարծակի ըմբռնեսցի:

Եւ 'ի միում աւուր ելեալ Յովհաննէս գնաց յանապատ հեռաւորոյն և կայր յաղօթս. և տեսեալ զնա անդ ծեր մի, ասէ ցնա. ով պատա-նեակ դու, ուստի՞ ես, կամ յորմէ՞ ազգէ: Ասէ ցնա Յովհաննէս. որդի

յիմաստութիւն գիտութեան անդ ընթացեալ, զայս այլոց թողեալ է առ 'ի հոգալ. և ինքն զինքն իսկ ուրացեալ և մոռացեալ և յոյժ 'ի քնին է երկնաւորացն, զի ինքն առաւել քան զամենեսեան կացցէ առաջի ա՟յ, ոչ 'ի միջէ իմեքէ հոգոց յետսակողմն ձգեալ։ Զի այնպիսին ընդ ա՟յ շրջի, գործակից է անդադար օրհնութեանց՝ միշտ հանապազ զա՟ծ օրհնելով։

Զայս և այլ այսպիսի քան զսոյն պատմէր մեզ երանելին Յոհաննէս յերրիր աւուր ժամանակաւ. տայ անդ, մինչև յիններորդ ժամու խօսէր ընդ մեզ և բժշկէր զոգիս մեր։ Արդ առեալ ետ մեզ օրհնութիւն, և խաղաղութեամբ զճանապարհն երթալ հրամայէր։ Պատմեաց մեզ մարգարէութիւն մի և ասէ. այսօր է յաղթութիւն բարեպաշտ թագաւորին Թէոդոսի. այսօր բերին զնշան յաղթութեան 'ի քաղաքն աղեքսանդրացւոց զբռնաւորատ թագաւորին նշան սպանմանն. և զի պարտ և պատշաճ է թագաւորին ոչ 'ի ձեռն թշնամւոյ, այլ իւրով մահուամբ մեռանել, որպէս և եղև իսկ ճշմարտիւ։

Այս արդ իբրև բազում և այլ հարս տեսաք, եկին եղբարք և պատմեցին մեզ՝ եթէ կատարեցաւ Յոհաննէս 'ի Ք՟ն սքանչելի իմն օրինակաւ։ Զի պատուէր առեալ էր նորա ընդ ա՟մ կողմանս զի զերիս աւուրս ումեք բնաւ ամենևին մի իշխել մտանել առ նա, և ծունր եդեալ կայր յաղօթս, և 'ի նմին յաղօթելն կատարեցաւ առ ա՟ծ գնալով։

ՎԱՐՔ

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՅՈՀԱՆՆՈՒ ԳԲԱՑԻՈՅՆ

Կին ոմն քնասէր, որում անուն էր Յուլիա, մեծատուն յոյժ. և էին նորա մանկունք երկու՝ Յոհաննէս և քոյր նորա Թեմեստիա: Ընդ ժամանակս ընդ այնս եկաց իշխան անօրէն. որոյ հրաման առեալ 'ի Թագաւորաց, զի զորս միանգամ գտանէր հաւատացեալս 'ի Քրիստոս՝ զանազան տանջանօք վատնէր: Իսկ երանելւոյն Յուլիայ լուեալ թէ գայ և 'ի քաղաքն յայն, խոյս տայր 'ի տուն մի փոքր և անդ թաքչէր հանդերձ մանկամբքն, ուսուցանել նոցա զբարեպաշտութեան օրէնս: Այլ եղև Յոհաննէս իբրև ամաց հնգետասանից, գաղտ 'ի մօրէն երթայր յեկեղեցին և զսովորական աղօթսն կատարէր:

Այլ յաւուր միում գտեալ զնա առն միում յեկեղեցւոյն եհարց զնա և ասէ. ասա ինձ, մանուկ դու, յո՞ր ազգի ես, զի այդպէս զսովորական աղօթսդ միայն կա-

ՑՈՐԳՐԷՆ փիւնիկեցւոց էր Յոհաննէս 'ի քաղաքէն կեսարու. ունէր մայր այրի և բարեպաշտ և մեծատուն, և անուն նորա էր Յուլիա. ունէր և քոյր մի փոքրիկ, որում անուն էր Թեմաստիա: Եւ յաւուրսն յայնոսիկ առաքեցաւ յանօրէն իշխանէն Փիլիկոնէ կամոլիկոնոս գաւառաւոր 'ի կեսարիա քաղաքն Պաղեստինու. և զոր տուգէր զքրիստոնեայսն որ ոչ զոհէր կռոցն՝ տանջանօք սպանանէր: Եւ լուեալ զայս երանելին Յուլիա, առեալ զերկուսին զաւակսն իւր թաքեաւ արտաքոյ քաղաքին 'ի ներքնատուն մի նեղ և անձուկ. և յայնժամ էր Յոհաննէս երկոտասան ամաց: Եւ ուսուցանէր մայրն զաւակացն զիր երկնային, և զբարեպաշտութեան հաւատն Քի: Եւ յետ որ երթայր յեկեղեցին և զսովորական աղօթսն կատարէր: Իսկ բարեպաշտ մայրն նորա երկնչէր մի՛ գուցէ ըմբռնեսցի մանուկն իւր յանօրէն գահճաց. վասն այնորիկ սաստէր մանկանն մի՛ երթալ յեկեղեցին, այլ 'ի տան աղօթել. այնուհետև Յոհաննէս գաղտ 'ի մօրէն երթայր յեկեղեցին և ոչ զոք գտանէր անդ, այլ ինքն միայն աղօթելով դառնայր առ մայր իւր: Եւ եղև Յոհաննէս ամաց իբրև հնգետասանից, աճեցին և առաքինութիւնքն ընդ նմա: Իսկ երանուհի մայրն նորա տեսանելով զմանուկն բարեպաշտութեան սիրող, ուրախանայր յոյժ. բայց տեսանելով զնա ոչ երկնչելով 'ի սպառնալեաց անօրինաց, զարհուրէր թէ գուցէ յանկարծակի ըմբռնեսցի:

Եւ 'ի միում աւուր ելեալ Յոհաննէս գնաց յանապատ հեռագոյն և կայր յաղօթս. և տեսեալ զնա անդ ծեր մի, ասէ ցնա. ով պատանեակ դու, ումո՞ն ես, կամ յորմէ՞ ազգէ: Ասէ ցնա Յոհաննէս. որդի

տարես։ Իսկ Յովհաննէս ասաց. որդի եմ կնոջ միոյ այրւոյ. ունիմ քոյր մի փոքրիկ, և եմք հանդերձ մարբն Թաքուցեալ ՚ի տան միում. և ես գաղտ ՚ի մօրէն իմմէ գամ ՚ի ժամու յեկեղեցիս և չգտանեմ զոք ընդ որում օրհնեցից զԱծ, քանզի երկեան ամ քրիստոնեայք և փախեան. այլ ես երկնչիմ յերկնաւոր Թագաւորէն՝ որ յաւուր յայնմիկ տայ ինձ զառհաւատչեայն անմահուԹեան։ Ասէ ցնա այրն. և զի՞նչ հարկ է քեզ յայդմ հասակի պատերազմել ընդդէմ այդպիսի կարիս. այլ Թէ կամիս յաղԹել հակառակորդ զօրուԹեանցն, երԹ յանապատն և որոշեա զքեզ ՚ի մարդկանէ և լեր երկիւղած յԱյ և կեցցես իբրև զմի ՚ի հրեշտակաց. քանզի կեանքս այս սնոտի են, և իրք և ճոխուԹիւնք աշխարհիս իբրև զստուեր և իշխանուԹիւնք սորա իբրև զծուխ կորիցեն, և վայ մարդոյն այնմիկ որ կորուսանէ զմեծուԹիւն հոգւոյ իւրոյ։ Իսկ Յովհաննու լուեալ զայն զղջացաւ և ասէ ցայրն. և զի՞նչ արարից զի ողորմիմ մօրն իմում և քեռն իմում զի տղայ է, և շատ վաստակեցաւ վասն մեր մայրն զի ուսուցուք զդպրուԹի և կարասցուք ունել զտուն, զի մի կորիցեն ինչք մեր։ Իսկ այրն ասէ ցնա. լաւագոյն են ինչք որ յերկինսն են։ Ասէ ցնա Յովհաննէս. իսկ երԹայց հրաժարեցից ՚ի մօրէն իմմէ և այնպէս գնացից,

եմ կնոջ այրւոյ, և քոյր իմ փոքր է քան զիս. և խրատեալ ՚ի մօրէ իմմէ ըստ Աստուծոյ պատուիրանին. իսկ ես յարաժամ երԹամ յեկեղեցին և ոչ զոք գտանեմ անդ ընդ որում օրհնեմք զԱծ, քանզի երկեան ամ քրիստոնեայք և փախեան ՚ի սպառնալեաց. այլ ես երկընչիմ առաւել յերկնաւոր Թագաւորէն յայնմանէ որ տայ ինձ զառհաւատչեայն անմահուԹեան։ Եւ այրն զարմացաւ ընդ պատասխանիս մանկանն և ասէ ցնա. և զի՞նչ հարկ է քեզ յայդմ հասակի պատերազմել ընդդէմ այսպիսի կարիս. այլ Թէ կամիս յաղԹել հակառակորդ զօրուԹեան և կատարեալ լինել, երԹ յանապատ և որոշեա զքեզ ՚ի մարդկանէ և լեր ընդ Այ և կաց իբրև զմի ՚ի հրեշտակաց, և մի տար զքեզ ՚ի տանջանս չարչարանաց, վասն զի տղայ ես, և եղիջիր ծառայ Այ։ Ասէ Յովհաննէս. զի՞նչ արարից զի ողորմիմ մօր իմոյ այրուԹեան։ Ասէ ցնա ծերն. երԹ հրաժարեա ՚ի մօրէն, զի և նա կամակից լինի այդմ, և առեալ զօրհնուԹի նորա գնասցես, և ՚ի քուրոջէն ևս հրաժարեա և յընչիցն, և ապրեսցես զոգի քո ՚ի մահուանէ. զի այս կեանքս փոքր մի է ժամանակ և զբաղումս խաբէ և կորուսանէ։ Եւ Յովհաննէս հաստատեցաւ ՚ի բանս ծերոյն, և գոհացեալ ՚ի նմանէ վասն բարի խրատուցն գնաց ՚ի տուն իւր և պատմեաց մօրն զամենայն բանս ծերոյն։ Եւ իբրև լուաւ մայրն նորա երանելին Յուլիտա, յոյժ հաճեցաւ վասն այնր բանի, մի զի գիտէր զմանուկն Աստուծոյ սիրողն առեալ, և դարձեալ զի յոյժ երկնչէր ըմբռնիլ մանկանն ՚ի կռապաշտից. լուա

զի մի՛ հառաչեսցէ վասն իմ, զմտաւ ածելով եթէ արհամարհեցի ինչ զծերութիւն նորա. այլ եթէ աղօթս արասցէ 'ի վերայ իմ, իբրեւ զմեծ թոշակ զայն առեալ գնացից: Այլ չոգաւ վաղվաղակի 'ի տուն իւր: Ասէ ցնա մայրն իւր. ո՞ւր յամեցեր այսքան ժամանակ, որդեակ, և տրտմեցուցեր զսիրտ իմ. զի իմ արհամարհեալ զըստացուածս հօր ձերոյ թաքուցի զձեզ, զի մի՛ անկանիցիք 'ի ձեռս անօրէն իշխանին, և դու կամիս զքեզ յայտնել և տառապեցուցանել զթշուառ աղխս իմ: Ասէ ցնա Յովհաննէս. յեկեղեցին չոգայ, և անդ եգիտ զիս ոմն յուսմնակցաց իմոց և կամեցաւ զիս առ իւր արգելուլ: Այլ ես ասացի ցնա՝ եթէ ոչ կարեմ զայդ առնել առանց հրամանի մօր իմոյ. այլ եւտու նմա բան երթալ քոյովք կամօք: Արդ արձակեա զիս, մայր իմ, և աղօթս արա վասն իմ. և եթէ յամեցից, դու մնա խաղաղութեամբ: Այլ մայրն ասէ. երթ, որդեակ իմ, 'ի խաղաղութի, և Ա̃ծ լիցի առաջի երեսաց քոց:

Այլ Յովհաննու հրաժարեալ 'ի մօրէն և ողջոյն տըւեալ քեռն՝ ել և գնաց, և վաղվաղակի դիմեալ յանապատ զի անդ բնակեսցէ: Այլ անցեալ ընդ Յորդանան գետ և գնացեալ ընդ անապատ օթս երկուս, և եգիտ անդ քարայր մի յորում բնակեալ էր այր մի եգիպտացի, և ագաւ առ նմա զգիշերն զայն: Այլ 'ի վաղիւն ասէ ցնա միայնակեացն. զի՞նչ խնդրես աստ, մանուկ դու: Այլ նա ասաց. կամիմ կեալ յանապատի, քանզի սիրեցի զվարս միանձանց: Ասէ ցնա միայնա-

համարեցաւ յանապատ անդր առաքել զնա առ կրօնաւորս, քան 'ի ձեռս դահճացն անկանիլ: Վասն այսորիկ ասէ մայրն. երթ, որդեակ, 'ի խաղաղութիւն, և Տէր առաջնորդեսցէ քեզ ըստ կամաց իւրոց. լաւ է քեզ խրատն այն, որդեակ, քանզի այրն այն ոչ էր մարդ, այլ հրեշտակ էր Այ̃. լաւ է ինձ, որդեակ, զի յանապատի անդ կեցցես, քան անկանել 'ի ձեռս անօրինաց: Եւ առեալ օրհնութիւն հրաժարեաց 'ի մօրէն և 'ի քուրոջէն բազում արտասուօք՝ իբր այլ ոչ տեսանել զմիմեանս յայսմ աշխարհի:

Եւ ելեալ 'ի տանէն դիմեալ գնաց 'ի Յորդանան գետ և անցաւ զնա, և յորժ եհաս յանապատն խորին և ահագինն այն, և ընդ այնպիսի յանապատն գնաց երկուց աւուրց ճանապարհ: Եւ եգիտ անդ ծերունի մի եգիպտացի՝ որ բնակեալ էր յայրին, որում անուն էր Փարմութէոս. և Յովհաննէս տեսեալ զծերն անկաւ առ ոտս նորա: Եւ ասէ ծերն. վասն էր եկեալ ես աստ, որդեակ: Ասէ Յովհաննէս. վասն զի, հայր սուրբ, կամիմ բնակել յանապատիս և ուսանել զվարս միայնութեան: Ասէ ծերն. ոչ կարես բնակել, վասն զի դու կարի մանկա-

կեացն. ոչ կարէ միայնակեաց ընդ այլում լինել, ապա թէ ոչ՝ չէ այնպիսին իբրև յանապատի, այլ իբրև 'ի քաղաքի բնակեալ: Եւ Յովհաննէս ասէ ցնա. ես կամիմ, հայրիկ, մնալ 'ի քեզ բնակել վասն լսելոյ ինչ բանս 'ի քէն որով պարտ է ինձ կեալ: Եւ թոյլ ետ եգիպտացին աւուրս եօթն: Էր սովորութիւն եգիպտացւոյն ընդունել կերակուր ըստ այ տեսչութեան 'ի հրեշտակէ մի անգամ 'ի շաբաթու: Եկեալ նախ կերակուր ըստ սովորութեան ընկալաւ, և Յովհաննու ոչ ետ: Եւ կոչեցեալ եգիպտացւոյն ասէ ցնա. երթ գնա դու աստի եւ 'ի ներքսագոյն անապատն և խնդրեա դու քեզ կայան և լեր անդ, մինչև տէր խնդիր արասցէ քեզ և տացէ քեզ կերակուր, զի իմ չիք կերակուր յերկրէ եթէ կերակրեցից զքեզ. այլ չէ իսկ քեզ հրաման աստ բնակել, ապա թէ ոչ՝ բերէր արդեօք և քեզ կերակուր: Եւ Յովհաննու լուեալ զայն՝ մատեաւ համբուրեաց զոտս նորա և խաղաց գնաց յանապատի:

Եւ մինչդեռ գնայր ընդ անապատն, եգիտ զնա հրեշտակ և ասէ ցնա. յո՞ երթաս, պատանեակ: Եւ նա ասէ ցնա. խնդրեմ տեղի, ուր բնակեցից: Եւ եցոյց նմա հրեշտակն յո երթիցէ: Եւ երթեալ զՃանապարհ աւուր միոյ եգիտ գուբ մի, և յաղօթս կացեալ նշմարեաց 'ի խոնարհ զգուբն, և հայեցեալ յերկինս ասաց. որ զՅովնան յորովայնէ կիտին հաներ երեքօրեայ և զԴա-

գոյն ես և ոչ կարես հանդուրժել յանբնակ անապատս: Ասէ Յովհաննէս. ես, հայր, մերձ կալով առ քեզ ուսանիմ 'ի քէն զոր ինչ հրամայես վասն փրկութեան անձին իմոյ: Եւ եկաց Յովհաննէս մերձ 'ի յայրին եօթն օր անսուաղ. իսկ ծերն փորձութեամբ ուսուցանէր և խրատէր՝ մեծաւ Ճգնութեամբ ծառայել այ: Եւ կերակուր ծերոյն էր 'ի հրեշտակէն տեառն մի անգամ 'ի շաբաթուն. և յետ ութ աւուր արաւ հրեշտակն կերակուր ծերոյն, և Յովհաննու ոչ տարաւ: Ասէ ծերն. որդեակ Յովհաննէս, երթիցիր յայլ տեղի և գիտ քեզ բնակութիւն մինչև այց արասցէ քեզ տէր և տացէ քեզ կերակուր որպէս և ինձ. զի եթէ կամէր ած բնակել քեզ առ իս, առաքեալ էր և քեզ կերակուր, և ինձ ոչ գոյ որ կերակրեմ զքեզ: Եւ լուեալ զայս Յովհաննէս՝ անկեալ յոտս ծերոյն համբուրեաց զնա, և գնաց միայն 'ի ներքսագոյն անապատն:

Եւ հանդիպեցաւ նմա հրեշտակ տեառն և ասէ. ո՞ւր երթաս: Ասէ Յովհաննէս. խնդրեմ, տէր, տեղի յորում բնակեցայց: Իսկ հրեշտակն տեառն եցոյց նմա Ճանապարհ: Եւ երթեալ այնպէս ընդ անապատն օր մի, եգիտ ջրհոր մի խոր յոյժ, և նա աղօթեաց առ տէր և ասէ. տէր ած Յն Քն, որ պահեցեր զՅովնան 'ի փոր կիտին և զԴանիէլ 'ի

նիէլ ՚ի գբոյ առիւծուցն և զԵրեմիա ՚ի գբոյ տղմոյն և զՀայրն Յովսէփ ՚ի գբոյ նախորդութե՛, դու տէր և այժմ ՚ի գթիս յայտնեաց. քանզի ընկենում զիս ՚ի ներքս յանուն քո, և եղիցի ինձ տեղիս այս ՚ի բնակութիւն, և դու կերակրեսցես զիս. և ոչ ելից աստի զամենայն աւուրս կենաց իմոց զորս որոշեցեր ինձ ՚ի վերայ երկրի: Եւ կատարեալ զաղօթսն ընկէց զինքն ՚ի գուբն և անվնաս պահեցաւ ՚ի հրեշտակէ սրբոյ. և էր ՚ի ներքս անդադար փառաւորելով զԱծ, և ոչ եկեր և ոչ արբ զաւուրս քառասուն:

Եւ իբրև կատարեցան աւուրքն, եկն հրեշտակն և եբեր կերակուր առ եգիպտացին և ասէ ցնա. արի, Փարմութիէ, և տար զկերակուրդ Յոհաննու, զի այս քառասուն օր է զի ոչ եկեր և ոչ արբ և ոչ ծանր եղեալ և ոչ զձեռս թողացուցեալ ՚ի խնամարհ, այլ միայն կայ յաղօթս և աղաչէ զտէր: Եւ վասն զի տղայ է, ոչ հրամայեաց ինձ տէր տանել նմա զկերակուրս, զի մի հպարտասցի և փորձեսցէ զնա սատանայ. այլ կամեցաւ զի ՚ի ձեռն քո տացի նմա. և յորժամ տացես զկերակուրդ, քաջալերեա զնա և հաստատեա բանիւ տեառն: Իսկ սատանայ որ փորձելոցն էր զեգիպտացին, մօտ անդր կայր և լսէր զամ: Եւ իբրև լուաւ զամ, աղաղակեաց և ասէ. եկի այսր կարծեցեալ եթէ անօթ ընտիր է Փարմութիոս, և ջան մեծ է ինձ խաբել զնա. բայց արդ նա զինչ, զոր եթէ կամիմ՝ իբրև զտերև մի ՚ի հողմոյ շարժեմ. զինչ արարից, զի և մանկտի ՚ի վերայ իմ զօրաժողով լինին. այլ երթայց մինչդեռ փափկիկն է, և բազում մենքենայիւք իմովք խաբեցից զնա. քանզի եթէ սովորեսցի և ոչ ձանձրասցի, ոչ ես կարեմ խաբել զնա:

Իսկ Փարմութի առեալ զկերակուրն ՚ի հրեշտակէն չոգաւ առ Յոհաննէս, և յաղօթս կացեալ ՚ի տեղւոջն կոչեաց զնա՝ Յոհաննէս ծառայ Այ, որում այց արար

միջոյ առիւծուցն և զԵրեմիա ՚ի գբոյ տղմին և զՅովսէփ ՚ի գուբն խոր՝ յոր ընկեցին եղբարքն. պահեա և զիս յայս գբիս և կերակրեա զիս աղօթմամբ քով, և ես ոչ ելից աստի մինչև յօր կատարման իմոյ: Եւ արարեալ զնշան խաչին ընկէց զինքն ՚ի խորն, և հրեշտակ տեառն իջոյց զնա անվնաս: Եւ էր ՚ի ներքս անդադար փառաւորելով զԱծ, և էր անսուաղ զաւուրս քառասուն: . . .

վասն ժուժկալութեան աղօթից քոց և առաքեաց քեզ
կերակուր, զի մի տկարասցիս. արդ ընկալ զառաքեալս
քեզ 'ի տեառնէ: Եւ Յոհաննէս ասաց. եթէ կամք
էին տեառն տալ ինձ կերակուր, այսր արդեօք առա-
քեալ էր ինձ. այլ վասն զի ոչ ծանեաւ զիս ա̃ծ, և ոչ
կերակուր առաքեաց ինձ: Ասէ ցնա Փարմութիոս. ես
եմ Փարմութիոս՝ որ եկիր զառաջինն անդր յայրն:
Եւ նա ասէ. օրհնեա տէր, և այնպէս տուր ինձ զկերա-
կուրդ: Եւ օրհնեաց զտէր, և ասացեալ զամէնն՝ ետ
նմա զկերակուրն: Եւ Յոհաննու ընկալեալ զայն զօ-
րացաւ և ասէ ցնա. երթ, ծառայ ա̃յ, նիստ յայրին և
փառաւորեա զա̃ծ և յիշեա զիս յաղօթս քո, զի կեն-
դանի է տէր որ ոչ եթող զտառապանս իմ՝ ոչ ես ըն-
կալայց կերակուր 'ի ձեռաց մարդկան մինչև ոգիս յիս
է. այլ եթէ է ինձ կեալ աստ, այց արասցէ ինձ տէր և
առաքեսցէ ինձ կերակուր. քանզի ոչ ելից 'ի գբոյս յայս-
մանէ և ոչ պատահեցայց մարդոյ և ոչ յիշեցից զինչսն,
այլ լիցի սա ինձ տուն 'ի կեանս իմ և գերեզման յետ
իմ. բայց ա̃մ 'ի տէրն փոյթ լիցի վասն իմ:

Ասէ ցնա Փարմութիոս. լուր որդեակ, համբերութի̃
ընկալ և փառաւորեա զա̃ծ, զուցէ փորձիցիս երբէք 'ի
սատանայէ, քանզի յոյժ ընդդիմակաց է զօրուս սյսմիկ
և յա̃մ ժամ պատերազմի ընդ մեզ և ածէ 'ի վերայ
մեր ձանձրութի̃ և խորհուրդս չար՝ զվարս կենաց, զըն-
չից առաւելութիւն, զմօր գութ, զքեռ անձուկ, զծա-
ռայից աղերս, զազգի սէր, զհասակակցաց բարեկամու-
թիւն. և միտքն հեղձանին 'ի խորհրդոցն և սիրտն խըռ-
ռանայ և անպտուղ առնէ զմարդն: Եւ * դարձեալ այլ
խորհուրդս արկանէ նոյն օրինակաւ, արտասուս և անի-
րաւ խորհուրդս և միայնութի̃ և օտարութի̃ յաշխար-
հէ և անապատային ճանապարհ և կենաց լուծումն և
մահու ելս, և սաստկէ զփոյթն և խաբէ զսիրտ անմե-
ղաց. այլ դու զուարթ կաց յա̃մի և ա̃ա խաղաղութե̃

* Եւ դարձեալ այլ խորհուրդս արկանէ նոյն օրինակաւ, զարտասուս-
ման լինելն, արտամերժումն ա̃մ բարեաց ցուցանէ անիրաւ խորհր-
դով, և զմիայնութի̃ չար վարկանելով, և զօտարութի̃ յաշխարհէ, և
զանապատին ճանապարհ առաւել ցուցանելով, և զկենաց՝ լուծումն և
զմահու ելս ծանր, և այսպէս սաստկէ զփոյթս և խաբէ զսիրտս անմե-
ղաց. այլ դու, որդեակ, զուարթ կաց յամենայնի արթուն մտօք և
ա̃ա խաղաղութե̃ յա̃մի պահել 'ի տեառնէ: Եւ ասէ ցնա Յոհաննէս.

պահիլ 'ի տեառնէ ։ Այլ ասէ ցնա Յոհաննէս ․ երդուեա՛ն տամ քեզ 'ի փառս տեառն, զի յորժամ յիշեսցէ զքեզ ա՛ծ և առաքեսցէ քեզ կերակուր, մի՛ բերցես ինձ ։ Իսկ սատանայ լսէր զամենայն զբանս զայսոսիկ ։

Այլ եղև յետ գնալոյ եգիպտացւոյն թողլ ետ սատանայ տարի մի ․ և յետ այնր երևեալ յայրն 'ի կերպարանս ծառայի միոյ հօրն Յոհաննու՝ ողջագուրէ զՓարմութէոս և անկանի առաջի նորա լալով և ասէ ․ ահա կատարեալ եղէր հրաժարեալ յաշխարհէս և գիտես զի՞մ տառապանս կենացս այսոցիկ՝ զգութ մօր, զանձուկ քերց և եղբարց, զծառայից վարս, զընչից բազմութիւն, զազգի պատիւ ․ արդ այնպէս մշտակից լեր ինձ, սուրբդ ա՛յ, իբրև զշատ ոք աշխատեալ ։ Իսկ Փարմութի չգիտացեալ եթէ փորձութիւն է, սկսաւ հարցանել զնա և ասել ․ մինթէ զինուորակա՞ն ես կամ ծառայ փախուցեալ 'ի տեառնէ չարէ, կամ աղքա՞տ ես բռնադատեալ 'ի հարստէ ։ Այլ սատանայ ասէ ․ ունէաք տէր այր բարեպաշտ, նոյնպէս և տիկին ․ և վախճանեցաւ տէրն մեր մինչդեռ մանկագոյն եւս էր, և եթող զբարեպաշտ տիկինն մեր հանդերձ մանկամբք երկու ․ այլ որդին նորա տէրն մեր և ժառանգաւոր ընչից տեառն մերոյ գնաց ուրեմն և ոչ գիտեմք զի եղև նմա ։ Եթէ հոգի մոլորեցոյց զնա և կամ թէ գազանակուր եղև ոչ գիտեմ, և տիկինն մեր յոյժ գորովէ, և ուր և լսէ եթէ ոք երկիւղած իցէ յա՛յ՝ հանդերձ մեծաւ փութով երթայ առ նա ։ Այլ այժմ եկն առ նա այր մի ա՛ծապաշտ քո պէս, և եհարց ցնա տիկինն մեր վասն մանկանն ․ և նա ասաց՝ եթէ այդպիսի մանուկ զոր դու խնդրես, տեսի ես յանկոյս Յորդանան գետոյ, բայց եթէ յո շրջաւ

բարւոք արարեր, հայր սուրբ, զի խրատեալ զգուշացուցեր զորդի քո, հատուսցէ քեզ տէր բարիս ըստ սիրոյ քո հայրաբար ․ և արդ երդուեան տամ քեզ 'ի փառս տեառն, զի յորժամ յիշեսցէ զքեզ ա՛ծ և առաքեսցէ քեզ կերակուր, մի՛ բերցես ինձ ։ Իսկ սատանայ լսէր զամենայն բանս զայսոսիկ ։

Եւ եղև յետ գնալոյ եգիպտացւոյն թողլ ետ սատանայ տարի մի ․ և յետ այնր եկն 'ի կերպարանս միոյ ծառայիցն Յոհաննու և գնաց առ Փարմութէոս 'ի յայրն և ողջագուրելով զնա անկաւ առ ոտս նորա և լալով ասէր ․ աղաչեմ զքեզ որ գիտես զգութ ծնողաց առ զաւակն և զխնամս ծառայից առ տէրս իւրեանց, ողորմեա ինձ և լեր աղաչանաց իմոց և մշտակից լեր ինձ, սուրբդ ա՛յ, իբրև զշատ ոք աշխատեալ ։ ․ ․ ․

ոչ գիտեմ. և հանդերձ բազում արտասուօք հառաչանօք և աղաչանօք առաքեաց զիս տիկինն իմ խնդրել զնա՝ գրեալ առ նա թուղթ, և անուն նորա Յովհաննէս, և է այսուհետև ամաց հնգետասանից. և այժմ առաջնորդեաց ինձ ա̃ծ 'ի ձեռն աղօթից տիկնոջն իմոյ գտանել այր արժանի ա̃յ, որ 'ի ձեռն աղօթից կարէ ցուցանել ինձ եթէ յո չոգաւ տէրն իմ։

Այս տեսեալ եգիպտացւոյն զարտասուս նորա, վշտակից եղև նմա և ասէ. մնա այսօր աստ, և վաղիւ ես ցուցանեմ քեզ. և մնաց անդ սատանայ։ Իսկ եգիպտացին զգիշերն ա̃մ փղձկէր 'ի խորհրդոցն և ոչ կամէր աղօթս կատարել, այլ էր 'ի հոգս և 'ի ծուփս։ Այս իբրև առաւօտ եղև, անկանի սատանայ առաջի ոտից նորա. բուռն հարեալ և աղաչէր զնա, և հանեալ զնա արտաքս յայրէն փութով այնպէս զի և զաղօթսն անգամ չետ կատարել։ Այս երթեալ եգիպտացւոյն 'ի գուբն սկսաւ խօսել ընդ Յովհաննու և ասէ. քանի արութ̃ի և արասցէ մարդ և. ոչ հանգուցէ զծնողս իւր, անպտուղ ելանէ 'ի կենացս յայսցանէ, և վաստակ նորա զոր վաստակեցաւ 'ի մանկութենէ իւրմէ՝ յոչինչ համարեալ լինի. և քո թողեալ զտառապեալ մայրն քո, և որչափ համարիս դու աստ բարի ինչ կատարեալ, նա զայն արտասուօք զառածանէ։ Արդ լուր, որդեակ, և երթ հանգո զմայրն քո, և առ 'ի քեզ զտացուածս հօրն քո և տուր աղքատաց, և յայնժամ աստ եկեսցես այսր, քանզի ահաւասիկ և մանուկ առաքեաց առ քեզ։

Ասէ ցնա Յովհաննէս. ով Փարմութիէ, այդչափ վաստակեալ քո զիա՞րդ ոչ տեղեկացար նմա որ հեղձուցանէր զխորհուրդս քո և շրջէր զմիտս քո և գերէր զզգայութիւն քո և շարժէր զքեզ յաղօթից։ Յայդմ պարտ էր քեզ գիտել եթէ չարեօք է ճանապարհդ քո. զի 'ի գալ քո այսր ոչ ետուր փառս ա̃յ, այլ իբրև յանզգայութենէ խօսեցար։ Արքեա զքեզ և առ 'ի ձեռն զվահանն հաւատոյ, ամփոփեա 'ի քեզ զմիտս քո. գիտեա զինչ խօսեցար, և երթ նիստ յայրին քում. դարձո ըզքեզ 'ի քեզ, գուցէ եթէ պարծեսցի երբէք փորձիչն 'ի վերայ քո։ Իսկ Փարմութէի առեալ զխրատն և յեւեալ 'ի հոգին իւր, և գիտացեալ եթէ պղտորումն է յինքեան, անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց, գոչեաց և

ասէ․ որդեակ Յոհաննէս, դու աղաչեա վասն իմ զտէր զի դարձայց 'ի գիտութիւն իմ, զուցէ եթէ յետ բազում ինչ վաստակոցս կորեայց․ զի ես այսպէս կարծէի եթէ այսուհետեւ անցի ըստ հակառակորդին մոլորութեան ։ Յայնժամ Յոհաննէս ասէ․ տէր, գիտես զերիկամունս եւ փորձես զսիրտս․ տուր զգալ ծառայի քում՝ որ շատ աշխատեցաւ վասն անուանդ քո, եւ դարձո յետս զհակառակորդն մեր ։

Իսկ սատանայ ասէ ցՅոհաննէս․ քանի՞ տառապեցուցեր զմեզ եւ զքեզ․ ահա ածի զսուրբ ծառայս ա՟յ եւ ոչ լսար ինձ․ արդ երթամ ես պատմեմ, եւ թշուառական մայրն քո տառապելի եւ խնդրէ գալ այսր, քանզի գիտեմ եթէ ոչ ժուժան աղիք նորա մնալ, այլ գայ հասանէ ։ Իսկ Յոհաննէս ամենեւին ոչ ետ նմա պատասխանի, այլ ցեգիպտացին ասէ․ դարձիր, հայր, եւ որպէս տառապեցուցեր զքեզ 'ի մանկութէ, նոյնպէս խոնարհեաց՝ զի մի կորուսցես զհոգեւոր կերակուրն ։ Իսկ նորա գնացեալ ասէր ցՅոհաննէս․ ես բազում վաստակեցայ եւ չարաչար անկայ, այլ դու բարեխօսեա վասն իմ առ տէր ։ Իսկ Յոհաննու զայն լուեալ ասէր․ մի կարասցես, տէր, զմարգարիտն քո, զի շատ աշխատեալ նորա եցոյց ինձ ճանաչել զքեզ ։ Իսկ Փարամութիոս երթայր լալով եւ ողբալով ասէր․ ով սատանայ չար, քանի՞ մարտեար զի խաբեսցես զիս․ այլ զիս արդեօք իբրեւ զառանցեալ պարտեցեր, այլ մանուկն յաղթեաց քեզ ։ Այլ արդ ես ալեւորս եղից ընդ քեզ գումար իբրեւ ըզմանուկ եւ յաղթեցից հնարից քոց, քանզի կարծեցեր ինեւ ապականել զմանուկն տեառն, որ զքեզ խայտառակեաց եւ զիս դարձոյց 'ի տէր ։

Իսկ* թողացուցեալ այնուհետեւ սատանայի ժամանակ մի, դարձեալ առնու ընդ իւր բազմութիւն դիւաց չարաց եւ երթայ 'ի տեղին, եւ 'ի բացուստ 'ի կերպարանս մօրն նորա եղեալ աղաղակէր եւ ասէր․ ով որդեակ, քանի՞ աշխատեցայ վասն քո, զիարդ սնուցի ըզքեզ, որպէս ուսուցի վասն բազում գթոց իմոց, զի մի

* Իսկ սատանայ թոյլ ետ տասն օր, եւ յետ տասներորդ աւուրն առնու ընդ իւր բազում դեւս եւ գնացին 'ի դուռն առ Յոհաննէս, եւ 'ի բացուստ 'ի կերպարանս մօրն նորա եղեալ աղաղակէր եւ ասէր․ ով քաղցրիկ որդեակ իմ, որչափ աշխատութիւն սնուցի զքեզ եւ ուսուցի

կորուսից զքեզ. անարգել եղէ բազում ժամանակս, զիա՞րդ ոչ ողորմեցար ինձ այրւոյս և անվերակացուիս. ո՞չ յիշեցեր զստինսն իմ զորս դիեցեր, ո՞չ խանդաղատեցուցին զքեզ աղիքս իմ և ոչ գութ քեռն քո և ոչ անձուկ ընտանեաց քոց և ոչ սէր ընկերաց քոց և ոչ խնդք հօրն քո, այլ այդպէս անզգամ եղեր յածեալ ընդ անապատ: Այլ մերձ եկեալ սակաւ մի 'ի գուբն ասէր. որդեակ Յոհաննէս, անկցի զեղջ 'ի սիրտ քո վասն ծերացեալ մօր քո՝ որ բազում վաստակս վաստակեցայ 'ի քեզ. ողորմեաց և տառապելոյ քեռն քում, զի իբրև զհայր կոչէր զքեզ. յիշեա զհայրենի ստացուածսն քո և սթափեաց յարբեցութէ՛ չարին. ով հոգի չար, զի՞նչ մեղայ քեզ զի այդպէս զօրացար 'ի վերայ իմ և կորզեցեր յինէն զորդեակն իմ: Այսպէս և 'ի քեռն կերպարան եղեալ աղաղակէր առ նա և ասէր. ողորմեաց ինձ որբոյս և գայթակղելոյս, զի ոչ զոք ունիմ վերակացու, այլ յամենեցունց ալէկոծիմ: Այլ դարձեալ 'ի նմանութի ծառայիցն բազում զդևքն աղաղակէին և ասէին. վայ մեզ՝ անտէրունջք եմք. եկ այսրի, տէր, աղաչեմք զքեզ, և ողորմեաց տիկնոջս մերում և դարձո զստացուածս հօրն քում և կարգեա զայն ընդ հազարապետօք և ընդ գաւառապետօք և բաշխեա աղ-

գիր. որ լինէիր ժառանգորդ ստացուածոց իմոց, և վասն քո փախեայ և թաքեայ 'ի ներքնատունն 'ի նեղ և անձուկ, և դու ոչ ողորմեցար գերի մօր քո և տղայ քուրոջ քո, և 'ի ծերութիւնս աշխատեցուցեր զիս գալ առ քեզ զայսքան ճանապարհս քարուտ և ապառաժուտ յանապատիս և թողեր զիս անտէր և զտղայ քուրս քո որբ: Եւ երթեալ 'ի վերայ հորոյն ասէ. ով որդեակ, ողորմեա ալեաց ծերոյս և տղայ քուրոջդ, և դարձիր 'ի տուն քո և հոգա զքուր քո, և բաշխեա զինչս քո աղքատաց և կրօնաւորաց, և շահեա զաղօթս իմ և առաւել վարձս առցես 'ի տեառնէ Այ: Իսկ Յոհաննէս ամենևին ոչ ինչ ետ պատասխանի: Եւ յորժամ ոչ խօսեցաւ՝ ասէ. ով չար սատանայ, ո՞րպէս յափշտակեցեր զմիամօր որդեակն իմ 'ի գրկաց իմոց և բերեր 'ի յանապատ և ընկեցեր 'ի խորս յայս և իբրև զմեռեալ թարշամեցուցեր զգեղ վայելչութե նորա, և զիմ անձս խաւարեցուցեր: Եւ միւս այլ դեն 'ի կերպարանս քուրոջ նորա եղեալ աղաղակէր և ասէր. քաղցրիկ և բազմագութ եղբայր իմ, ողորմեա որբոց և արտասուաց մերոց և դարձիր առ մեզ, և տուր զիս 'ի կուսանաց վանսն, և աղօթս առնեմ հոգւոյ քում. մի թողուր զիս որ կորնչիմ յերկրի, և լինի քեզ խիղճ մեղաց: Եւ այլ դևքն աղաղակէին ասելով. վայ մեզ վայ մեզ զի անտէր մնացաք, և ամենեքեան զմեզ կոխահարեն և հալածեն. եկ 'ի վերադարձ և դու ինքնին ազատեա զմեզ, և տուր մեզ բաժին յինչից քոց և որհնեմք զքեզ: Եւ դարձեալ մայրն աղաղակէր. որդեակ իմ քաղցրիկ,

քառաց, և մեծամեծ ծառայից քոց պարգևս տուր, և դարձիր յայսր 'ի գործ բարիոք կատարեալ. ապա թէ ոչ՝ առ և զմեզ 'ի խոնարհ, զի ընդ քեզ մեռցուք և մեք: Զայս ամ բանս ասացեալ նոցա, և ոչ մի ինչ ամենևին առ այն պատասխանի տայր նոցա Յովհաննէս, այլ միայն փառաւորէր զԱծ:

Իսկ իբրև ետես սատանայ եթէ ոչ մի ինչ մաւտ եղև որով խաբեսցէ զնա, սկսաւ ասել. չխօսիս ընդ իս, որդեակ, չտաս պատասխանի, չակնածես յարտասուացս, չողորմիս ալեացս. գիտես զի ոչ երբէք բացաւ երեսօք շրջեցայ, և այժմ իբրև զվայրենի գազան ընդ յանապատս շրջեցայ, գոնեայ ձայնի միոյ արժանի արա զիս, որդեակ: Իսկ իբրև շատ աղաղակեաց նա, և դևքն ամ, և ողբումն յոյժ արարին և ոչ ինչ լուան, յառեալ սատանայի 'ի ջրհորն աղաղակէր և ասէր. թոյլ տուք ինձ անկանել 'ի խոնարհ, զի գոնեայ այնպէս տեսից զնա և շօշափեցից զփափուկ անդամսն զմահկանացու եղեալսն 'ի սովք. թերևս և մեռեալ է որդեօք և վասն այնր ոչ տայ ձայն: Իսկ ապա թոյլ ետ վայր մի՝ կարծեալ եթէ տացէ պատասխանի: Իսկ իբրև ոչ ետ՝ ասէ. եկայք բերէք չուանս, և մի զմի իջուսցուք 'ի ներքս: Իսկ իբրև սկսան պատրաստել, մի ոմն 'ի դևացն աղաղակեաց և ասէ. յորժամ դուք ամենեքեան իջանէք, զիս ո՞ իջուցանէ: Իսկ բարկացեալ սատանայի, զի յանդիմանեաց զխաբէութիւն նորա, հալածեաց զնա 'ի գնդէն իւրմէ: Իսկ իբրև գիտաց եթէ յայտնեցան հնարք իւր, վիշապ եղև և անկաւ 'ի խոնարհ, և պատեալ զՅովհաննու գօշէր զմարմինս նորա, և գոչէր և զգայրէր յերեսս նորա. սակայն և այնպէս ոչ կարացին խափանել զնա

թէ չես ողորմել և ելանել, իջի՛ ապա և զիս առ քեզ, զի ամսից զքեզ և առ քեզ մեռայց: Իսկ Յովհաննէս յաղօթիցն ոչ դադարէր, և ոչ պատասխանի առնէր նոցա:

Ասէ սատանայ. մեռեալ է որդեակն իմ, վասն այն ոչ տայ ձայն: Եւ ապա թոյլ ետ վայր մի, կարծեալ եթէ տայցէ պատասխանի: Եւ իբրև ոչ ետ, ասէ. եկայք բերէք չուանս, և մի զմի իջուսցուք 'ի ներքս: Եւ իբրև սկսան պատրաստել, մի ոմն 'ի դևացն աղաղակեաց և ասէ. յորժամ դուք ամենեքեան իջանէք, զիս ո՞ իջուցանէ: Եւ բարկացեալ սատանայ 'ի վերայ նորա, զի յանդիմանեաց զխաբէութիւն նորա, և հալածեաց զնա 'ի գնդէն իւրմէ: Եւ իբրև գիտաց եթէ յայտնեցան հնարքն իւր, վիշապ եղև և անկաւ 'ի խոնարհ, և պատեալ զՅովհաննու գօշէր զմարմինն նորա, և գոչէր և զգայրէր յերեսս նորա. սա-

յաղօթիցն ։ Եւ իբրև բազում ժամք անցանէին և ոչ կարէր խաբել զնա, ասէր․ վայ ինձ, մինչ կամէի զմիմն շահել՝ զաշխարհ կորուսի․ թողից զսա և երթայց ձգեցից զայլս բազումս առ իս, գուցէ երթեալ ունայն զսանիցեմ զաղքունիսն իմ։ Եւ Յովհաննու զայն լուեալ՝ երգմնեցոյց զնա 'ի տէր զի այլ մի եկեսցէ 'ի տեղին յայն, մի առ նա և մի առ այլ ոք որ կամիցի բնակել անդ ։ Եւ երդուեալ ըստ կամաց նորա, և ապա արձակեաց զնա ։

Եւ կացեալ երանելւոյն Յովհաննու 'ի գբին ամս տասն՝ եհաս ժամանակ փոխելոյ նորա ։ Եւ Աբիսոս էի յանապատին բարատացւոց՝ շրջեալ անդ ամ երեսուն․ և երթեալ ըստ յայտնութե յանապատն՝ տարայ պատանս Յովհաննու ։ Եւ իբրև մերձեցայ 'ի դուռն, ողջագուրեաց զիս Յովհաննէս և ասէ ցիս․ մեծ ուրախութի է ինձ 'ի գալստեան քում, Աբիսէ, զի բազում ճգնութեց համբերեցեր 'ի մանկութէ քումմէ ։ Եւ յաղօթս կացեալ երդումն եսու նմա 'ի փառս տեառն զի պատմեսցէ ինձ զվարս իւր որ 'ի մանկութէ իւրմէ, և նա ասաց ինձ զամ։ Եւ իբրև արարի անդ աւուրս երիս, բարձրացաւ երկիրն 'ի խորութէն 'ի վեր, և տեսաք զմիմեանս

կային և այնպէս ոչ կարաց խափանել զնա յաղօթիցն, և ոչ կարաց զարհուրեցուցանել։ Ցայնժամ աղաղակեաց սատանայ և ասէ․ վայ ինձ որ նախատինս եղէ ամ գիւաց, զի զերկիր ամ կլայ և այս մանկանս ոչ կարացի յաղթել։ Իսկ Ցովհաննէս զօրացեալ հոգւովն սրբով կոխեաց զգլուխն վիշապին և խեղդէր, և սատանայ երդուաւ յանուն ամենակալին և անեղին Այ որ այլ 'ի յանապատն յայն ոչ երթիցէ, միայն թողլ տացէ նմա, զի փախիցէ 'ի նմանէ։ Եւ ապա թողլ ետ և արձակեաց զնա յինքենէ, և որպէս հրալից ծուխ լեալ ել 'ի վիրապէն և եղև աներևոյթ։

Եւ երանելի ճգնաւորն Քրիստոսի Ցովհաննէս եկաց 'ի վիրապի անդ ամս տասն և լցան աւուրք կենաց իւրոց։ Եւ Աբիսոս էի յանապատին բարատացւոց՝ շրջեալ անդ ամս երեսուն․ և յայտնեաց ինձ տէր վասն Ցովհաննու ննջմանն, և ես առեալ պատանս գնացի յանապատն յայն ըստ առաջնորդութեան Այ։ Եւ իբրև մերձեցայ 'ի դուռն, ողջունեաց զիս Ցովհաննէս և ասէ ցիս․ մեծ ուրախութիւն է ինձ 'ի գալստեանդ քում, Աբիսէ եղբայր․ զի բազում ճգնութեց համբերեցեր 'ի մանկութենէ քումմէ։ Եւ իմ յաղօթս կացեալ երդումն եսու նմա 'ի փառս տեառն զի պատմեսցէ ինձ զվարս իւր որ 'ի մանկութէ իւրմէ։ Իսկ նա ասէ․ այո եղբայր, կատարեցից զհրամայեալսն առ 'ի քէն, այլ ձեռնջեր ասա մինչև յերրորդ օր և հանգիստեացուք միմեանց, և կատարեսցի հրամայեալն առ 'ի քէն։ Եւ իբրև արարի անդ աւուրս երիս, բարձրացաւ երկիրն 'ի խորութէն 'ի վեր, և տեսաք զմիմեանս

և ողջոյն տուաք: Այլ անդ և վէմ մի մեծ 'ի ջրհորն, և պատուիրեալ նորա ինձ դնել զայն 'ի վերայ ջրհորոյն, և հրաժարեաց յինէն և աւանդեաց զհոգին: Իսկ իմ եդեալ զվէմն 'ի վերայ որպէս պատուիրեաց ինձ, լցի և աւազ յոյժ 'ի բանձկոնն իմ և տարայ արկի 'ի վերայ վիմին, և նոյնժամայն եղ 'ի տեղւոջն արմաւենի մի լի պտղով և հովանի ունէր տեղւոյն: Իսկ իմ տեսեալ զայն փառաւորեցի զտէր՝ հաւատացեալ եթէ տացէ վարձս ըստ վաստակոց: Դարձայ անդրէն 'ի տեղին՝ ուր էի զա-ռաջինն առաջնորդութե̃ տեսանն. և անդ կոչեցեալ իմ զբարեպաշտօնեայ մի յեկեղեցւոյն զայր երկիւղած յա̃յ՝ աղաչեցի զնա գրել զայս յիշատակարանս առ 'ի յորդո-րումն և 'ի մխիթարութե̃ ա̃մ յուսացելոց 'ի տէր, և վասն սրբոյ առնն, զի գիտասցեն թէ որպիսի շնորհս տայ երկիւղածաց իւրոց ա̃ծ, որում փառք յաւիտեանս ամէն:

և ողջագուրեցաք և աղօթեցաք. և յետ աղօթիցն նստաք, և պատմեաց ինձ զա̃մ ինչ 'ի մանկութէ իւրմէ: Եւ անդ կայր առ հորովն վէմ մի մեծ, պատուիրեաց և ասէ ինձ դնել զայն 'ի վերայ ջրհորոյն: Եւ ա-ղօթեալ երկար ասէ ցիս. խաղաղութի̃ ընդ քեզ. եղբայր Կրիսէ: Եւ հրաժարեալ յինէն ընկողմնեցաւ և աւանդեաց զհոգին 'ի ձեռս ա̃յ երանելին Յոհաննէս: Եւ ես արտասուօք և օրհնութեամբ ամփոփեցի զոսկերս նշխարս նորա 'ի վերայ գրոյն, և եդի զվէմն 'ի վերայ որպէս պատուիրեաց ինձ, և դարձաւ հողն մարմնով սրբոյն 'ի տեղի իւր որ-պէս էր յառաջագոյն խոր գուբ. լցի և աւազ յոյժ 'ի բանձկոնն իմ և տարայ արկի 'ի վերայ վիմին, և նոյնժամայն եղ 'ի տեղւոջն ծառ մի արմաւենի լի պտղով և հովանի ունէր տեղւոյն: Եւ իմ տեսեալ զայն փառաւորեցի զտէր՝ հաւատացեալ եթէ տայ վարձս ըստ վաստակոցն: Եւ դարձայ անդրէն 'ի տեղին ուր էի զառաջինն՝ տեսանն առաջնոր-դութե̃. և անդ կոչեցի զբարեպաշտօն մի յեկեղեցւոյն զայր երկիւ-ղած յա̃յ և աղաչեցի զնա գրել զայս յիշատակարանս առ յորդորումն և մխիթարութե̃ ա̃մ յուսացելոց 'ի տէր և 'ի պատիւ արժանաւոր առն ա̃յ, զի գիտասցեն թէ որպիսի շնորհս տայ երկիւղածաց իւրոց ա̃ծ որ առատապարգև է ա̃մ ողորմութե̃, որում փառք յաւիտեանս ամէն:

Եւ հրեշտակ տեսանն երևեցաւ 'ի տեսլեան խաւարինին տեսողա-տական ծերոյն՝ պատմելով նմա զվանկալքն Յոհաննէս և զա̃մ վարս նորա 'ի մանկութէ նորա. ասաց և զվախճան նորա որ յառաջիկն քան և երեք էր: Իսկ ծերունին խաւիւսիոն փոփոխեալ ցանկայր տեսա-նել զոսկերս գերեզմանն երանելոյն: Յայնժամ հրեշտակ տեսանն ե-րևեալ ծերոյն ասէ. եկ և ցուցից քեզ զառն ա̃յ նշխարսն: Եւ առ-եալ եցոյց նմա զգուբն և զծառն 'ի վերայ հովանացեալ և զգուբն 'ի բերան ջրհորոյն, որ էր անձուկ բերանով և 'ի ներքուստ լայնացեալ խորոջէր գուբն: Իսկ խաւիւսիոն ծերն խոնարհեցուցեալ զգլուխն 'ի ներքս 'ի գուբ անդ՝ ետես զմարմինն տարածեալ, և լոյս փայլատա-կեալ զոսկերք մարմնոյն պայծառ քան զարեգակն, և հոտ անոյշ բու-րեալ անպատմելի, մինչև զմայլեալ հիացեալ օրհնէր զա̃ծ, որ փառա-

ՎԱՐՔ

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՅՈՀԱՆՆՈՒ

## ՈՐԴՒՈՅ ԵՒՏՐՈՊԻՈՍԻ

### ԿԱՄԱՒՈՐ ԱՂՔԱՏԱՑԵԼՈՅՆ ՎԱՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ՅԱՄՍ ժամանակաց թագաւորութեան Արկադեայ որդւոյ մեծին Թէոդոսի և 'ի հայրապետութեան սրբոյն Յոհաննու ոսկեբերանի այր ոմն էր յանձապահ քաղաքին Կոստանդնուպօլիս՝ կոչեցեալն՝ Նոր Հռոմ՝ մեծատուն յոյժ, որոյ անուն Եւտրոպիոս կոչեցեալ։ Նա էր կարգեալ 'ի թագաւորէն 'ի պատիւ ստրատելատութեան, և անուն կնոջ նորա Թէոդորա։ Նա էին երկոքեան երկիւղածք յա̃յ, և գնային յամենայն պատուիրանս և յիրաւունս տեառն անարատք։ Նա էին նոցա որդիք երեք, և զերկուսն 'ի նոցանէ զինուորեցուցին 'ի դուռն թագաւորին 'ի դասս սինկղիտոսացն. իսկ զկրսերն 'ի տան իւրեանց սնուցանէին և խրատէին երկիւղիւ և իմաստութեամբ ըստ ա̃ծպաշտութեան հանդիսիցն, և ետուն զնա յուսումն գրոց սրբոց։ Նա իբրև կատարեաց զուսմունս ա̃ծաշունչ պատուիրանաց, յետ այնորիկ ետուն զնա 'ի վարդապետս փիլիսոփայական արհեստիցն, զի ուսցի զճարտարական և զփիլիսոփայական ներվարժմունս արտաքին իմաստասիրացն։ Նա զի յոյժ զօրաւոր էր միտք, 'ի սակաւ ժամանակս բովանդակեաց զամենայն ուսմունսն և զհանճարս նոցա։ Նա սիրէր զաղօթս և զեկեղեցիս ա̃յ և զվկայարանս սրբոց, և յաղօթելն ոչ դադարէր զտիւ և զգիշեր, և յընթերցմանէ գրոց

ւորէ զաւուրս իւր։ Եւ ծերոյն երթեալ 'ի վանսն գրեաց զճգնութեն երանելւոյն Յոհաննու ոսկ և լուաւ մի ըստ միոջէ 'ի հրեշտակէ տեառն առ 'ի յորդորումն անապատականացն և 'ի բարեխօսութեն անձանց մերոց և 'ի փառս Քի Այ մերոյ։ Եւ գտաւ մի և նոյն գրեալն 'ի Կրիսիէ Ճգնաւորէ և 'ի Խաչիափանէ ծերոյ և համեմատ միմեանց. որով անդադար փառս մատուցանէին ամենատեառն Յիսուսի Քրիստոսի։

ոչ երբէք ձանձրանայր, մինչ զարմանալ յամենայն ժառանգաւորաց եկեղեցւոյն ընդ ուսմնաւորութիւն նորա։

Այլ իբրև եղև ութևտասնամեայ, 'ի միում աւուր իբրև գայր առ ուսմնակիցսն իւր 'ի վարդապետարանն, հանդիպեցաւ նմա միայնակեաց մի յանհանգստից վանացն՝ որ կոչէր ակիւմիտ՝ 'ի վերին սահմանացն, որոյ ուխտ եղեալ էր երթալ 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և ինքն էր հրեշտակակերպ տեսլեամբ և ձևով։ Այս եղև նմա անցանել ընդ դուռն տանն յորում ուսանէրն Յովհաննէս։ Այս տեսեալ զնա Յովհաննու, լցաւ հոգւոյն սրբով և սկսաւ հարցանել զնա և ասել. հայր պատուական, ուստի՞ ես կամ յո՞ երթաս։ Այլ նա ասաց նմա զպատճառս երթալոյն իւրոյ. և տեղեկանայր ըզկարգս վանաց նոցա և զճգնաւորական հանդէսն։ Իսկ նա պատմեաց զամենայն կարգաւորութիւն ուխտի միայնակեցացն։ Ասէ ցնա Յովհաննէս. կամիս միասանգամ դառնալ այսրէն։ Այլ նա ասէ. զուխտն զոր եդի ընդ այ կատարեցից և երթայց 'ի սուրբ տեղիսն Երուսաղէմի, երկիր պագից և դարձայց 'ի միայնարանան իմ կամօքն այ։ Լուեալ զայն Յովհաննու կալաւ զձեռանէ միայնակեցին, տարաւ առանձինն յանկիւն մի փողոցին. երդմամբ մեծաւ աղաչեաց զնա և պատուիրեաց՝ զի յորժամ դարձցի 'ի սուրբ քաղաքէն Երուսաղեմէ, եկեսցէ առ նա և տարցէ զնա զկնի իւր 'ի վանս իւր։ Այլ ասէ ցնա Յովհաննէս. Ճշմարտութեամբ աստուծով իմով ասեմ քեզ, զի եմք մեք եղբարք երեք, այլ հայրն և մայրն առաւել սիրեն զիս և գթան 'ի վերայ իմ քան յեղբարցն իմոց, և բազում դպրութեամբ և հանճարով և իմաստութեամբ վարժեցին զիս, և ուսուցին զամենայն պատուիրանս այ, և կամին զինուորեցուցանել զիս 'ի դուռն թագաւորին 'ի դասս սինկղիտոսացն. և յայնժամ ամուսնացուցանեն զիս և զբաղեցուցանեն 'ի հոգս և 'ի զբօսանս մնոտի և անցաւոր կենցաղոյս։ Այլ ես յարաժամ երթալով յեկեղեցին և լսելով զաստուածաշունչ գիրս զոր ընթեռնուն, իմացեալ ծանեայ զի ոչինչ են կեանք աշխարհիս։ Այլ այս ամենայն ունայնութիւն է և խաբողական և կորստական, և միայն այն է մարդ՝ որ արհամարհէ զկենցաղս զայս ըստ նմանութեան ձերոյ և այլոց 'ի յաւիտենական հրոյն, և ժառանգէ զանմահ և զան-

չեաց զծառայսն յինքեանէ և ինքն գնաց առ միայնակեացսն․ և տուեալ զհարիւր դահեկանն ցնաւաստեան և մտեալ երկոքեան ՚ի նաւն, աջողակ հողմոյ պատահեալ՝ վաղվաղակի եհաս նաւն յեզր ծովուն, և գնացին խաղաղութեամբ ՚ի վանսն ։

Իսկ պատմեաց միայնակեացսն զամենայն պատահեալսն առաւօտն և զերեմեանն յօժարութիւն նորա, և ուրախ եղև առաւօտն ։ Իսկ ասէ ցերանելին Յոհաննէս․ որդեակ, դու դեռ ես մանուկ ես փափկասուն[1], և կարգ միայնակեացաց այս է՝ զի որ ոք կամեսցի կրօնաւորել, զաւուրս քառասուն պարտ է լինել ՚ի վանս մինչև տեսցէ զվարս ժուժկալութեան միայնակեցացս և զհամբերութիւն՝ և ապա առցէ զձև կրօնից սոցա զմազեղէն պարեգօտն և զնոյնակերպ կրկնոցն և զմաշկեղէն գօտին և զամենայն հաղաթափն ։ Իսկ ասէ Յոհաննէս․ աղաչեմ զքեզ, հայր, որպէս զի այսօր վաղվաղակի զգեցուսցես ինձ զայդոսիկ զասացեալսդ ՚ի քէն՝ և փոքրեա զհեր գլխոյ իմոյ, զի յոյժ ցանկամ զգենուլ զայդպիսի ձև հրեշտակական ։ Իսկ առաւօտն տեսեալ զյօժարութիւն նորա, նոյնժամայն ժողովեալ զամենայն դասս միայնակեցացն՝ փոքրեաց զվարս[2] գլխոյ նորա և զգեցոյց նմա զխոշորագոյն մազեղէնն և ած զմաշկեղէն գօտին ընդ մէջ նորա, և կատարեալ ՚ի վերայ նորա զամենայն կարգ և զկանոն պաշտամանն՝ յանձն արար զնա ամենախնամ շնորհացն այ ։

Իսկ երանելին Յոհաննէս սկսաւ այնուհետև խստակրօն ճգնութբ և[3] արտասուաթոր պաղատանօք և ամենագիշեր սաղմոսերգութբ և անսուաղութբ և գետնատարած անկողնօք և հեզութբ և հնազանդութբ և եղբայրսիրութբ և ամենայն բարեկարգօք կանօք, և մտօք յանձայնսն եւեթ խօկայր՝ զվերինն խորհելով ուր Քս նստի ընդ աջմէ այ, արհամարհելով զստորեա ամենայն և զապականացուս և զառօրեայս, մինչև յոյժ զարմանալ ծերոցն ընդ խստակրօն ճգնութիւն նորա և[4]

1 փափկասնունդ ։

2 զհերս ։

3 և անմեղկելի վարուք քաղաքավարել զժամանակս կենաց իւրոց ողջնութբ, և արտասուաթոր պաղատանօք կանխէ ողջոյն գիշերս սաղմոսերգութեամբ ։

4 և բաղդատէր բարի նախանձաւոր օրինակ եղին ինքեանց զերանելւոյ արտասուալից աղօթսն անդադարս և զժուժկալութիւն պահոցն նորա ։

նախանձել ընդ արտասուալից աղօթս նորա անդադարս և ընդ ժուժկալութի պահոցն: Այլ արարեալ նորա 'ի վանս անդր ամս վեց՝ ուսոյց զամենայն եղբայրութիւն թէ մրցելս պարտ է ճգնութբ ծառայել այ: Այլ ասէ ցնա հայր վանացն. կարի շատ և անըմբերելի ճգնութե ե-տուր զանձն քո, որդեակ, զոր ոչ կարես այդպիսի կրօ-նիւք օրինակաւ 'ի գլուխ հանել զկարգաւորութիւս ա-ղօթից և զկանոն սաղմոսերգութե սրբոյ եկեղեցւոյ: Քանզի տանել անչափ տքնութի և քաղց և ծարաւ տկարացուցանէ զանձն և խափանումն տանէ հանապա-զորդ աղօթից և ծնրադրութեանն, և բազում արտա-սուքն պակասեցուցանէ զլոյս աչացն: Իսկ երանելին այն ևս քան զևս ճնշեցուցանէր զանձն իւր 'ի խիստ պահս ճգնութե: Այլ էր կերակուր նորա մարմինն և արիւնն Քի, և 'ի շաբաթու և 'ի կիրակէի հաց և աղ և ջուր սակաւ:

Արդ այնուհետև տեսեալ ատելին և բարկացեալ բանսարկուն սատանայ զայնպիսի յառաջադիմութիւն ճգնութե և զընթացս յօժարական կամացն 'ի տղայա-կան հասակին, 'ի նախանձ մտեալ՝ զի ոչ կարաց յաղ-թել ճգնութեան նորա, վասն զի միացեալ էր 'ի սէրն Քի, ապա արկանէ 'ի սիրտ նորա զգութ տեսութե ծնողացն, զհնազանդութի ծառայիցն, և զտէր և զան-ձուկ սնուցանողացն և հայրենի մեծութենն, և զցայգ և զցերեկ վարանեցուցանէր զանձն նորա բազում տրտ-մութբ և հոգովք: Այլ 'ի տքնութենէն և 'ի բազում ճգնութենէն հալէր և մաշէր անձն նորա և իբրև զան-շունչ պատկեր եղև: Այլ տեսեալ զնա հայր վանացն 'ի տկարութենէ անտի 'ի մահ վարեալ՝ ասէ ցնա. որդեակ, ած զայն պահանջէ 'ի մարդոյն զոր տանել կարիցէ: Ասէ ցնա Յովհաննէս. հայր, հաւատա ինձ, զի ոչ որպէս դու կարծես թէ պահք և տքնութիւնք մաշեն զիս, այլ մեղք իմ, զի ծանր և բազում են յոյժ, և 'ի բազում աւուրց հետէ ընկեցեալ սատանայ 'ի սիրտ իմ զգութ կարօ-տութե ծնողաց իմոց և զտեսութի ընտանեաց և ծա-ռայից. և ես հաստատուն յուսով պարծիմ յած և յա-ղօթս սրբութեան ձերոյ, զի և անդ երթեալ կոխեցից զզօրութիւն և զխայթոցս հաղքից բանսարկու թշնա-մւոյն և անոյժ արարից զամենայն որոգայթս նորա: Ասէ ցնա հայրն. ո՞չ ասացի քեզ յառաջագոյն, որդեակ, թէ

ծանր և դժնդակ է կարգ միայնակեցաց, և ոչ ես բաւական յանգ հանել զնոսա: Եւ արտասուեալ ասէ աբբայն. զի՞նչ կամիս թէ արարից քեզ, որդեակ: Ասէ Յոհաննէս. արասցես ինձ աղօթս հանդերձ միայնակեցօքդ, և կամօքն այ երթայց զճանապարհս իմ: Եւ աղօթեալ հանդերձ արտասուօք յուղարկեցին զնա:

Եւ երթեալ Յոհաննէս իբրև քարընկեց մի, դարձաւ յետս և հայեցեալ տեսանէ զանապատն յորմէ հրաժարեաց, և արտասուալից հառաչմամբ 'ի ծունկս անկեալ ասէ: ողջ մնա, սուրբ ուխտ միաբանից որդւոց հրեշտակաց բնակարան. ողջոյն և ձեզ դասք և ժողովք միայնակեցացդ՝ որ բարիոք կալայք և սնուցէք զիս. յոյս իմ հաստատուն է առ այծ, զի մարտակցութբ աղօթից ձերոց և 'ի տան հօր իմոյ յաղթեցից դաւաճանող թըշնամւոյն և կոխեցից զգլուխ աներևոյթ և կամակոր վիշապին: Եւ երթայր զճանապարհայն թախծեալ սրըտիւ և անմխիթար տրտմութբ վասն հեռանալոյն 'ի միայնակեցաց անտի և յանապատէն: Եւ մինչդեռ գընայր նա արտասուելով և սաղմոսելով, հանդիպեցաւ նմա աղքատ մի 'ի ճանապարհի անդ, զի զգեցեալ էր քուրձ մի պատառատուն յոյժ, և ասէ. ողջոյն քեզ, եղբայր. և համբուրեաց զնա: Եւ ասէ ցնա Յոհաննէս. տեսանեմ զքեզ, այր դու, զի յոյժ տկարացեալ ես և ոչ կարես բաւական այդպիսի քրձեղէն հանդերձ. աղաչեմ զքեզ զի հանցես զայդ 'ի քէն և տացես ինձ, և առեալ զգեցցիս դու զիմս: Իսկ աղքատն ուրախութբ մեծաւ մերկացաւ յինքենէ զհնացեալ ձորձս իւր և առեալ զգեցաւ զայծեայսն զոր ունէր երանելին Յոհաննէս. նոյնպէս և Յոհաննէս զգեցաւ զնորա պատառատուն և հին հանդերձն: Եւ հրաժարեալք 'ի միմեանց գնացին զիւրաքանչիւր ճանապարհս:

Իսկ յորժամ եկն եհաս Յոհաննէս 'ի քաղաք ծննընդեան իւրոյ 'ի մեծն Կոստանդնուպօլիս, եկն եհաս մերձ յապարանս հօր և մօր իւրոյ, և անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց յերկիր՝ արտասուօք աղաչէր զած և ասէր. տէր իմ Յսս Քս, մի թողուր զիս 'ի ձեռանէ քումմէ, զի առ քեզ ապաւինեցայ՝ օգնեա ինձ: Եւ յարուցեալ գնաց 'ի դուրս տանն իւրոյ և ասէ դարձեալ. գոհանամ զքէն, տէր իմ և այծ իմ, որ և զերկրաւոր

յարկս ծնողաց իմոց ցուցեր ինձ. և այժմ աղաչեմ զքեզ, տէր, 'ի քո բարերարութենէդ մի զրկեր զիս և տուր ինձ կատարեալ յաղթութի̄ ընդդէմ սատանայի և մի տար զիս 'ի փորձութիւն, և վախճանեցայց յաշխարհէ՝ ոչ յայտնի լինելով ծնողաց իմոց 'ի կենդանութեան իմում: Այս հնչեաց 'ի տեղւոջն յայնմիկ: Այս ընդ այգանալ առաւօտուն բացաւ դուռն ապարանից հօր նորա: Այս եկեալ դռնապանն ասէ ցՅովհաննէս. արի գնա աստի յայլ տեղի, զի մի տեսցէ զքեզ տէրն իմ աստ և բարկասցի ինձ: Ասէ Յովհաննէս. մարդ եմ աղքատ, օտար և անանկ. հայեաց դու 'ի բարձունս առ ա̄ծ և արա ինձ ողորմութի̄ և թոյլ տուր ինձ զի յանկիւն մի փողոցի աստ բնակեցայց ես. և յորժամ ելանել կամ մտանել կամիցի տէրն քո, յառաջեա և ասա ինձ զի հեռացայց յայնմ տեղւոջէ մինչև մտցէ և ելցէ տէրն քո. և ես ոչ ումեք ծանրացայց, և դու ոչ երբէք ծանրասցիս յինէն, և ակն կալջիր առնուլ յա̄յ վարձս բարեաց վասն իմ, որ զնեղեալ և զտարակուսեալ հոգիս ապրեցուցես 'ի դրանս յայսմիկ: Այս գթացեալ 'ի վերայ դռնապանն եթող զնա 'ի տեղւոջն յայնմիկ:

Այս իբրև ելին ծնողքն իւր յապարանից իւրեանց, եսես զնոսա երանելին և լցան աչք նորա արտասուօք և իջանէր արտօսրն յաչաց նորա իբրև զվտակս ջուրց, և ասէ. տեսի ճշմարտապէս զծնողս իմ ըստ կամելոյն ա̄յ և զխայթոցս սատանայի զհրացեալս կախեցից զօրութեամբ ա̄յ որ է յիս: Այս ամբարձեալ զձեռս իւր յերկինս ասէ. տէր Յ̄ս Ք̄ս ա̄ծ ճշմարտութե̄ և տէր ողորմութե̄, մի թողուր զիս 'ի պահպանական զօրութենէ քումմէ և մի մերժեր զիս յերեսաց քոց վասն մեծի փառաց անուան քո սրբոյ, և տուր ինձ համբերութիւն մինչև վախճանիմ 'ի տեղւոջս յայսմիկ: Այս եկաց 'ի նմին տեղւոջ մեծաւ տաժանմամբ և համբերական ժուժկալութե̄ զտարի մի: Այս հայրն առաքէր նմա կերակուր 'ի սեղանոյ իւրոյ և ասէր. սքանչացեալ հիացեալ զարմանամ յոյժ ընդ համբերութե̄ աղքատին այնորիկ՝ որ անկեալ կայ 'ի տեղւոջն յայնմիկ արտաքոյ դրանն՝ թէ զիարդ կամ որպէս համբերէ նա այնմ դառնաշունչ դժնդակ սառնամանեաց ձմերային օդոյս և ոչ երբէք մտանէ յապարանս մեր: Այս հրամայեաց ծա-

ուայեցն և արարին 'ի վերայ նորա խուղ պրասուեղէն, և ասէ. կարող է ա̄ծ և մ̄ր դորա ողորմել մեզ, և վասն այնո-րիկ ած 'ի դուրս մեր, զի 'ի ձեռն դորա ողորմեսցի մեզ ։

Եւ 'ի միում աւուր եկեալ մայր նորա ետես զՅով-հաննէս, և 'ի զարմացման եղեալ՝ զի որպէս վայրենի ճնչաւոր երևեցաւ նմա, զի յոյժ նքաղեալ և անշքացեալ[1] էր գեղ երեսաց նորա 'ի սաստիկ ձգնութենն և 'ի տա-ռապանաց մարմնոյն ։ Եւ ասէ ցծառայս իւր. քարշեցէք հանէք առէք տարայք զդա աստի. զի թէ այդր բնակէ դա, ոչ կարեմ ես անցանել ընդ ճանապարհդ ընդ այդ ։ Եւ նոյնժամայն բուռն հարեալ ծառայիցն քարշէին զնա յայլ հեռագոյն տեղի ։ Եւ նա դարձեալ դառնայր անկանէր անդ և ոչ հեռանայր ։ Ապա ցնա դռնապանքն. երթիջիր հեռացիր յայդմ տեղւոյ, ով օտարական այր դու, զի տիկինն մեր ոչ կարէ յաչս տեսանել զքեզ ։ Ասէ ցնոսա Յովհաննէս. աղաչեմ զձեզ՝ որպէս յառաջ-նումն ողորմեցարուք ինձ, նոյնպէս և այժմ գթացէք յիս և 'ի տեղւոջս յայսմիկ արարէք ինձ խղիկ մի փոք-րիկ. և նոքա արարին որպէս կամեցաւ ։ Եւ հայր նորա առաքէր նմա կերակուր յա̄մ ժամ 'ի սեղանոյ իւրոյ. և նա ոչ ուտէր, այլ 'ի ծածուկ զայն աղքատաց բաշ-խէր, և ինքն խոշորագոյն հաց չորացեալ թրջէր ջրով, և ընդ երեկս աւուրն 'ի մտանել արեգականն ուտէր ։ Եւ այնչափ տկարացոյց զինքն և ճնշեաց զմարմին իւր, մինչ զի որպէս զանշունչ պատկեր երևեալ նմա մարդկան ։

Եւ յետ երից ամաց տեսեալ Տ̄ր զմեծ ձգնութ̄ի քաջամարտիկ նահատակին իւրոյ և կատարեալ միայ-նակեցին Յովհաննու, առաքեաց առ նա հրեշտակ յերկ-նից և ասէ ցնա 'ի տեսլեան. ողջոյն քեզ, ծառայ իմ Յովհաննէս բարի և հաւատարիմ. արդ ընդ յորջորջ-մանն անուանս քում դասեսցիս դու ընդ Յովհաննու մկրտա-չի և բնակեսցես 'ի յերկնային խորանս ընդ ամենայն սուրբ ձգնաւորս իմ, և կատարումն և փոխումն եղիցի տառապանաց քոց և յետ սակաւ աւուրց փոխեսցիս առ իս ։ Եւ որպէս 'ի զարթնման եղեալ ետես զտեսիլն զայն և ոչ յանուրջս ինչ ։ Եւ ամբարձեալ զհանապազատա-րած զձեռս իւր յերկինս՝ մեծակական հառաչանօք և

1 անշքեղացեալ ։

արտասուագոյն ձայնիւ աղօթեաց այսպէս և ասէ. Տէր հարցն և տէր ողորմութեան, Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, գոհանամ զքէն որ զանարժանութիւն իմ խառնեցեր 'ի թիւ սիրելեաց քոց որք 'ի սկզբանէ հաճոյ եղեն քեզ. աղաչեմ զքեզ, յիշեա մարդասիրութեամբ քո զծնողսն իմ և թող զմեղս և ջնջեա զձեռագիր յանցանաց նոցա. զողորմեա և միաբանեանցն այնոցիկ' որ զիս ընկալան սիրով և սնուցին անտրտունջաբար:

Եւ կոչեաց զվանահայրն և զհոգաբարձու տանն հօր իւրոյ և ասէ ցնա. աղաչեմ զքեզ զի զոր ինչ պատուիրեմ քեզ, ասասցես տիկնոջն քում: Եւ նա ասէ. ասա ինձ զոր ինչ հաճոյ է քեզ, և ես ծանուցից տիկնոջն: Եւ ասէ Յովհաննէս. ասասցես նմա թէ աղքատիկն այն զոր 'ի դրանէն հալածէիր, զոր և քարշելն իսկ հրամայեցեր և ընկեցիկ առնել, ասաց թէ մի գարշիր յինէն, այլ արժանի արա գալ ձեր առ իս, զի ունիմ բան ինչ ասել քեզ: Եւ նորա երթեալ պատմեաց տիկնոջն իւրում զոր ասացն Յովհաննէս: Եւ նա ասէ. զինչ է բանն զոր ասել կամի ինձ աղքատն այն, զի ոչ կարեմ 'ի գարշահոտութենէն և [1] 'ի գարշելի կենաց նորա տեսանել զնա: Եւ երթեալ պատմեաց առն իւրում: Ասէ ցնա այրն նորա. երթիջիր և մի գարշիր յաղքատէդ, զի զնա ընտրեաց Տէր: Եւ նա ոչ կամեցաւ երթալ: Եւ Յովհաննէս դարձեալ առաքեաց զայլ ոք 'ի ծառայիցն և ասէ. յետ երից աւուրց վախճանելոց եմ ես. և եթէ ոչ եկեսցես և տեսցես զիս, ապաշաւես յոյժ, և զղջացեալ դու խնդրելին մեղադիր լինիցիս անձին քում, զի ոչ եղև խնդրածն 'ի սրտէ քումմէ: Եւ յորժամ լուաւ վասն մահու նորա, երթեալ մինչև ցտեղին ուր էրն Յովհաննէս' և կացեալ առ դրանն ասէ ցծառայս իւր. բարձէք և բերէք զնա առ իս, և տարան զնա առ տիկինն: Եւ տեսեալ զնա Յովհաննու ասէ. Տէր տուողն ամենայն բարութեանց հատուսցէ ձեզ զվարձս բարեաց հարիւրապատիկ յայսմ աշխարհի և 'ի հանդերձեալումն որ գալոցն է, զի բարիոք ընկալայք զիս և առ իս կատարեցէք զպատուիրան աւետարանական քաղցրութեամբ Քրիստոսի' թէ որում արարէք միում 'ի փոքրկանցս յայսցանէ եղբարց,

1 և յաղտեղի կենաց:

ինձ արարէք: Այլ ես աղքատս ոչ ունիմ նշան որհ-նութեան զի տացից ձեզ. և դու երդուիր ինձ զի զոր միանգամ տացից քեզ՝ արասցես: Եւ երդուաւ նմա և ասէ. զոր ինչ ասասցես, կատարեցից զամենայն: Ասէ ցնա Յովհաննէս. մատեղէն քրձաւս այսմիկ զոր զգե-ցեալս եմ՝ թաղեա զիս և մի այլ ինչ պատմուճան զգե-ցուսցես ինձ կամ յայլում տեղւոջ թաղեսցես, այլ յայսմ տեղւոջ՝ յորում անապականելիս իմ է, յորում 'ի կենդանութեան իմում հանգչէի: Եւ զայս ասացեալ եցոյց նմա զաւետարանն և հանեալ եդ 'ի ձեռս նորա և ասէ. այդ լիցի թոշակ և բաժին առ և 'ի հանդեր-ձեալ աշխարհին քեզ և տեառն իմում առն քում: Եւ առեալ զսուրբ աւետարանն 'ի ձեռս իւր՝ շրջշրջէր յայս-կոյս և յայնկոյս և ասէր՝ թէ զիարդ նման իցէ աւետա-րանս այս աւետարանին զոր արարաք որդւոյն մերոյ Յով-հաննու, և սքանչանայր յոյժ: Եւ ընթացեալ եմուտ 'ի տունն և եցոյց առն իւրում: Եւ տեսեալ ասէ. ճըշ-մարտութ̃բ ասեմ զի այս է աւետարան որդւոյն մերոյ, և եթէ ուստի անկաւ 'ի դա՝ ոչ գիտեմ. ապա ուրեմն դա գիտէ ուր է որդեակն մեր: Եւ 'ի խնդութենէն 'ի վեր յարուցեալ երկոքեան 'ի միասին եկին առ Յով-հաննէս զոր օտար աղքատն կարծէին, և ասեն ցնա լալով և արտասուօք. երդմնեցուցանեմք զքեզ յանուն ահաւոր մեծին այ̃ զի ասասցես մեզ թէ ուստի կամ յումմէ անկաւ աւետարանս այս 'ի քեզ: Եւ նորա խառ-վեալ յոգի իւր և գորովեալ 'ի գթոյ ծնողացն ոչ կա-րաց ժուժկալել, և բախեալ արտասուօք՝ յոգւոց հա-նեալ զառն հեծեծանօք և հառաչմամբ ասէ. ես եմ Յովհաննէս որդին ձեր, և այս այն աւետարանն է զոր դուքն ինձ կազմեցէք և ետուք զի ուսայց 'ի դմանէ զփրկութիւնագործ ճանապարհն ճշմարտութե̃. ունկն-դիր եղեալ պատուիրանացն որ 'ի դմա՝ թողի զամե-նայն և բարձեալ զխաչն Ք̃ի գնացի զկնի նորա, զի արժանի եղէց նմա, և ցանկացայ այսմ զգեստու և կրօ-նաւոր ժուժկալութե̃ վասն փրկութեան անձին իմոյ և ձեր, և բարձի զքաղցր լուծն Ք̃ի:

Իսկ այնուհետև իբրև ծանեան ծնողքն նորա զնա, մեծակական ձայնիւ սկսան լալ և ողբալ և աղիողորմ արտասուօք անկեալ 'ի վերայ նորա փարէին զպարանո-

ցաւ նորա և հառաչելով հանդերձ կողկողէին՝ յառա-ւօտէ մինչև 'ի հասարակ աւուրն։ Լուր եղև ամենայն բազմութեան քաղաքին, և ժողովեցան 'ի տեղին յայն գրեթէ ամենայն բազմութիւն քաղաքին արք և կանայք, քահանայք և կրօնաւորք, և մեծաւ հառաչմամբ ող-բային։ Իսկ Յովհաննէս անկեալ դնէր 'ի մահիճսն, և հայեցեալ յերկինս պայծառ դիմօք և զուարթագին խնդութեամբ՝ ասէ. Տէր Յիսուս, ընկալ զոգի իմ. և թէ, 'ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ. և աւանդեաց զոգին։ Իսկ՝ մայրն զպատուէր որդւոյն իւրոյ մոռացեալ մեր-կացոյց 'ի նմանէ զմազեղէն հանդերձն և զգեցոյց նմա ոսկեթել ծանրագին հանդերձ. և նոյնժամայն լուծա-կլինն, գօսացան երկոքին ձեռքն։ Իսկ եկեալ 'ի միտս հօրն Յովհաննու ասէ. զպատուէր և զհաճոյս որդւոյն մերոյ արասցուք։ Իսկ մերկացուցին զպատուական հան-դերձն 'ի նմանէ և զգեցուցին նմա զիւր հին և պատա-ռատուն մազեղէնն և պատեալ զպատեցին։ Իսկ նոյնժա-մայն հաս անուշութիւն բուրեաց 'ի սուրբ մարմնոյ նորա և ելից զպղատուեղէն խուց նորա և զքաղաքն ամենայն, և ծագեաց լոյս սաստիկ 'ի վերայ սուրբ մարմնոյն, և մայրն բժշկեցաւ։ Իսկ տեսեալ ամենեցուն զեղեալսն ետուն փառս այ, և թաղեցին 'ի նմին տեղւոջ յորում էր խուց նորա։ Իսկ ծնողք նորա շինեցին տաճար աղօ-թից 'ի վերայ սուրբ գերեզմանին յանուն սրբոյն, յո-րում տեղւոջ բազում բժշկութիւն առնէ Տէր 'ի ձեռն բարեխօսութեան նորուն վկայի։ Իսկ զամենայն ստա-ցուածս իւրեանց ետուն 'ի սպաս պաշտաման եկեղե-ցւոյն այնորիկ և զմնացեալսն 'ի կարօտեալս բաշխեցին, և ինքեանք կրօնաւորեալք 'ի նմին տեղւոջ սպասաւո-րելով սուրբ ոսկերաց նորա մինչև յելս վախճանի կե-նաց իւրեանց։

Կատարեցաւ երիցս երանելի ճգնաւորն Տէր Յով-հաննէս յամս ինքնակալաց մերոց թագաւորաց Արկա-դեայ և Ոնորեայ յամսեանն յունուարի 'ի տասներորդի հինգերորդում աւուրն, զընթացն կատարեալ, զհա-

1 կողկողէին անդադարմամբ կոծ-կծական կականմամբ յառաւօտէն։
2 խնդամտութեամբ։
3 և ոչ կարէցէ պատմել զկո-կծալի կոծն և զկականն զոր արա-րին ծնողքն և եղբարքն և ազգա-կանքն և ամենայն քաղաքն առ հա-սարակ։ Եւ մայրն։

ւոտան պահեալ և զբարութիւն յուսոյ յաղթանակի մերին կոչմանն զառհաւատչեայն ընկալեալ և զանձն իւր օրինակ տուեալ զկնի եկելոցս, զհամբերութիւն Յոբայ լուեալ և զկատարումն տեառն տեսեալ, անխիղճ քաղաքավարութեամբ և ուղղափառ հաւատով և անմեղկելի և անստանելի ժուժկալութեամբ հանգեաւ ՚ի Քս Յս ՚ի տէր մեր, որում փառք յաւիտեանս։

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՅԱՂԱԳՍ ՈՐԴԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀՌՈՄԱՅԵՑՒՈՑ

### ՈՐՈՅ ԱՆՈՒՆ ԿՈՉԻ

## ԱՅՐ ԱՍՏՈՒԾՈՅ

ԱՅՐ մի Թագաւոր ՚ի Հռոմ քաղաք, և անուն նորա Եփեմիանոս և անուն կնոջ նորա Ագլայիս. և

*Պատմութիւն վարուց առն Աստուծոյ կամաւոր աղքատացելոյն փառն Քրիստոսի որոյ անուն Ալեքսիոս. ՚ի մարդոյ հնգետասան:*

ԱՅՐ մի էր ՚ի Հռոմ քաղաքի մեծատուն յոյժ և պատուելի, և անուն նորա Եւփեմիանոս, և էր երկրորդ իշխանաց քաղաքին Հռոմայեցոց, փառաւոր և մեծ իշխան յաւուրս բարեպաշտ Թագաւորացն Արկադէոսի և Ոնորիոսի, և անուն կնոջ նորա Ագլայիս։ Եւ յոյժ երկիւղածք էին յԱյ և սիրէին զաղքատասիրութիւն և զառաքինութիւն. զկարօտեալս ժողովէին ընդ յարկաւ իւրեանց և կերակրէին։ Եւ ոչ գոյր նոցա զաւակ որում թողցեն զժառանգութիւն իւրեանց, և հանապազ խնդրէին յԱյ զի տացէ նոցա զաւակ որով մխիթարեսցին։

*Այս բան համառօտեցաւ է յառաջաբան, բայց Ցանկացն յառաջաբանութեան յատկոյն բանիւք եղաւ:*

ԵՐԱՆԵԼԻՆ Ալեքսիոս որդի էր մեծի իշխանի և փառաւոր պատուելի. որոյ անուն է Եւփեմիանոս, ՚ի Հռոմ քաղաքէ յաւուրս բարեպաշտ Թագաւորացն Արկադէոսի և Ոնորիոսի որդւոց մեծին Թէոդոսի։ Եւ ինքն Եւփեմիանոս ունէր զասա քաղաքն, և մեծացեալ յոյժ. ունէր ծառայս երեք հազար ոսկեհուռն երիզակաւք և զգեստաւորեալս հանդերձիւք։ Եւ էր յոյժ երկիւղած յԱյ, որով ունէր եկեղեցիս իւր շինեալ, և ՚ի նոցա չհանեալ էր մեծամեծս, և յորում նստեալ մինէր Եւփեմիանոս՝ անդ ժողովէին աղքատք. քանզի սեղան կէին և զլացէին, զի յորժամ պատրաստ մինէր յաւուրս ամեն որբոց և այրեւմնեցն՝

ղօթից նոցա. յղացաւ կինն նորա և ծնաւ որդի, և պատմեցին հօրն նորա, և փառաւոր արար զնա. և անուանեաց զանուն մանկանն այր այ, զի աղաւօթք և աղօթիւք խնդրեցաք զդա յայ: Եւ եղև յորժամ մեծացաւ մանուկն, ետուն զնա յուսումն ածպաշտութեան մինչև եկն 'ի չափ հասակի, և էր երկիւղած յայ: Եւ ասէր Ամփո-

թէ ամենայն քաղաքն. քանզի Թագաւորն Ոնորիոս և եպիսկոպոսապետն Ինովկենտիոս եկեալ 'ի պալատն Եփիմիանոսի խնդացին ընդ նմա: Սոյնպէս և յաւուր մկրտութեան մանկանն արարին տօն ուրախութեան Թագաւորաւ և հայրապետաւ և աշխարհաժողով պայծառական խնդութեամբ, և եդին զանուն մանկանն Ալեքսիոս: Եւ երանելի մայրն նորա ոչ դադարէր 'ի տուէ և 'ի գիշերի աղօթելով առ Ած արտասուօք վասն մանկանն Ածսիրութեան և բարեպաշտութեանն: Քանզի ասէր երանուհի մայրն նորա՝ թէ ոչ է այս ուրախութիւն իմ կատարեալ, մինչև տեսից զմանուկս իմ զԱլեքսիանոս վառեալ 'ի սէրն Այ:

Եւ իբրև զարգացաւ մանուկն, ետուն զնա յուսումն փիլիսոփայական արհեստին, և ուսաւ զամենայն հռետորական իմաստս, զի էր ուսումնասէր յոյժ և Ածասէր անչափ. ուսաւ և զամ վարդապետութիւնս հին և նոր կտակարանաց, և որ քան զօրէ վառէր 'ի սէրն Այ: Զոր տեսեալ երանելի ծնողացն զմանկան բարեպաշտութիւն՝ գոհութիւն ողորմութեանն Այ մատուցանէին և ասէին. ահա լուաւ Տէրն խնդրուածս սրտից մերոց, զի տեսանեմք զորդեակս մեր յառաջադիմութեն 'ի լաւ անդր: Քանզի էր Ալեքսիանոս զարդարեալ ամենայն առաքինութեամբ, և ոչ ինչ փոյթ էր նմա մեծութեն և երևելի փառացն ծնողացն, այլ հեզ էր և խոնարհ և հանդարտ և իմաստուն յոյժ և խոհեմ և լի հոգւով սրբով, և էր հնազանդ և հլու ծնողացն: Եւ էր վայելուչ հասակաւ և գեղեցիկ պատկերաւ արեգակնակերպ տեսակաւ, և ունէր ձայն զօրաւոր և քաղցր իբրև զթնարի, և էր յոյժ սիրեցեալ յաչս Թագաւորին և հայրապետին և իշխանացն ամենեցուն: Իսկ ծնողքն Ալեքսիոսին զարդարէին զնա իշխանական ձիաւորութեամբ և բերկրեալ լինէին սիրտք նոցա 'ի վերայ պայծառ զաւակին իւրեանց: Եւ ամփոփեցուցանէին զնա 'ի պալատն Թագաւորին՝ առ Թագաւորն տանելով զնա, զի ինքն իսկ բարեպաշտ Թագաւորն Ոնորիոս պատուէրէր Եփիմիանոսի մեծի պատրկի բերել զպատանեակն Ալեքսիոս և սպասաւորել առաջի Թագաւորին և մեծի սինկղիտոսացն: Զոր տեսեալ զգլխաւորութիւն սպասաւորելն մանկան և զհանճարեղութիւն խելաց նորա՝ գովելով գովէին զնա և մարգարէանային վասն նորա՝ եթէ այսպիսի խոհեմութիւն առ մեծի փառաց հասանելոց է 'ի Թագաւորէն, որպէս թէ երկրորդ լինել Թագաւորութեան նորա. և ասէին երանութիւն հօրն նորա այնպիսի զաւակաւն: Զոր լուեալ հայրն նորա զայսոսիկ և որ նման սոցա 'ի Թագաւորէն և 'ի մեծամեծացն՝ խնդութեամբ լնոյր սիրտ նորա, և գնացեալ պատմէր զուգակցին մօրն Ալեքսիանոսի զամենայն: Եւ ցնծային 'ի սիրտս իւրեանց և նովաւ պարծէին, և մեծութեն և փառս առաւելագոյն զայն համարէին իւրեանց:

Իսկ երանելին Ալեքսիանոս զայն Ամ սէր և զվաստականական պատիւ զոր տեսանէր զինքեամբ շուրջ պատեալ՝ ոչ ախտանայր նովաւ. բայց երկնչէր թէ գուցէ երբեք յափշտակի 'ի փառաց և 'ի մեծութենէ անտի որ գային 'ի վերայ նորա: Վասն որոյ աղօթս մատուցանէր Այ

բառնալ զնշխարս երանելւոյն, զի դիցեն 'ի հանգստի։ Այլ ոչ կարացեալ 'ի բազմութենէն զերիս աւուրս 'ի յուզել ամբոխին, հրամայեաց պատրիարգն և մեծամեծքն գանձ բազում արկանել ցրիւ, զի զայնով անկցին. և բռնութեամբ բարձին զսուրբն և եդին 'ի հանգստի սաղմոսիւք և օրհնութեամբ։ Այլ բազում բժշկութիւնք լինէին 'ի հողոյ հանգստի սրբոյն։ Այլ շինեցին եկեղեցի 'ի վերայ երանելւոյն, և տօնէին զօր ննջման նորա տօն մեծ յամենայն փետրուարի որ օր հինգ էր ամսոյն, 'ի փառս ամենասուրբ երրորդութեան հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

այնպէս ուրախութեամբ և արտասուօք և օրհնութեամբ և փառօք տարեալ եդին զնշխար սրբոյ առն այ Ալեքսիանոսին արծաթապատ տապանօք 'ի տաճար սուրբ առաքելոցն Քսի։ Եւ երիս աւուրս ոչ մեկնեցան մեծամեծք քաղաքին 'ի տաճարէ անտի և 'ի նշխարաց սրբոյն, առ բարեպաշտ ծնողացն սրբոյն կալով և մխիթարելով զնոսա. նոյնպէս և ամ ամբոխք քաղաքին կուտեալ գային 'ի համբոյր սրբոյ նշխարացն մինչև յերիս աւուրս։

Եւ ընթերցան զգրեալն 'ի սրբոյն զկատարեալ զվարսն իւր. քանզի մի ըստ միոջէ գրեալ էր սկսեալ 'ի ծննդենէն, և զհարսանիսն և վասն գաղտ գնալոյն, և թէ որքան եկաց 'ի քաղաքն Ուռհայ և որպիսի կենօք և թէ զիարդ էառ ողորմութիւն 'ի ծառայիցն և ծառայքն ոչ ծանեան զնա, և զիարդ վարեալ նաւն բռնութեամբ հողմոյն եւ 'ի Հռոմ 'ի ձեռն բանսարկուին մախանացն, և թէ զիարդ պատերազմ յարոյց 'ի վերայ զծառայից նախատինսն և զկոփանս, և զհամբերութիւն որ վասն անուանն Քսի, և զկոխելն զգլուխ սատանայի առ դրունս ծնողացն իւրոց. և թէ որպէս խրատէր զնոսա որք առ նա դիմէին հաւատալով սրբութեան նորա և ճգնութեան, 'ի սէր և 'ի խոնարհութիւն, 'ի քաղցրութիւն 'ի համբերութիւն յօտարսիրութիւն 'ի ժուժկալութիւն և 'ի սէր ընդ ամենեսեան։ Արդ իբրև լուան զայս ամ բազմութիւնն, զարմացեալ հիանային ընդ համբերութիւն նորա, մանաւանդ ընդ նախատինսն զոր կրեալ էր 'ի ծառայից հօր իւրոյ։ Եւ լացին բազմութիւնք քաղաքին մեծամեծօքն հանդերձ։ Իսկ ծնողք սրբոյն գտան հեծեծանօք լային զնեղութիւնսն զոր կրեալ էր երանելին. և մխիթարեալ սփոփէին և խնդութեամբ լնուին զսիրտս իւրեանց վասն աստուածահաճոյ վարուցն և սքանչելեացն որ գործէին առ ախտաժէտս և առ այսահարս և առ ամ նեղեալսն։ Եւ շինեցին եկեղեցի վայելուչ հանգստարան սրբոյ առն այ, և անդ հանգուցին զնա։

Իսկ ծնողք երանելւոյն եղեն սպասաւորք սուրբ գերեզմանի նորա, թողեալ զիշխանութիւն պատուին իւրեանց և զանցաւոր մեծութիւն իւրեանց փառացն։ Եւ զինչսն յերիս բաժինս արարին. զմինն աղքատաց և վանորէից ետուն, և զմինն ընտանեաց հանին և ծառայից՝ ազատելով զնոսա 'ի լծոյ, իսկ զմիւսն ուր նշխարք սրբոյն էին՝ եդին 'ի նորաշէն եկեղեցւոջն. և ինքեանք անդ բարւոք ճգնութեամբ կացեալք վախճանեցան 'ի կենցաղոյս և յաւելան առ սուրբսն այ, և որում անձկացեալ էին Քսի այ անեղծ մերոյ, որում փառք և պատիւ և գոհութիւն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

ՎԱՐՔ

# ՍՐԲՈՅՆ ՍԵՐԵԳԻՈՆԻ ԾԵՐՈՑ

Սերեգիոն այր երկիւղած և ազնուական եղև միայնակեաց, և յաջողեալ էր նմա ած յամենայն 'ի գործս։ Ունէր սա կողոբս տասանց թեզանեաց, և գիրս ոչ գիտէր, այլ 'ի խօսելն՝ զամենայն գիրս առակ ածէր։ Այլ յաղքատութենէն ոչ կարացեալ իւր խրձիթ շինել, այլ շրջէր ընդ երկիրն եգիպտացւոց որպէս զանմարմին։ Արդ վասն նորա պատմեաց մեզ. Մակար երանելին՝ եթէ գնաց յԱղեքսանդր քաղաք և վաճառեաց զինքն երկու փողահարի հեթանոսաց ընդ քսան դահեկանի, և ծառայեալ նոցա զերիս ամս դարձոյց զնոսա 'ի քրիստոնէական հաւատոն. և իբրև մկրտեաց զնոսա, ասէ, ետ զքսան դահեկանն ցնոսա։ Եւ նոքա աղաչէին զնա տալ զայն աղքատաց, զի դա եղև, ասեն, առիթ փրկութեան մերոյ։ Իսկ նա ասէ. ձեր է, դուք տուք. զի ես միայնակեաց էի և տեսի զձեզ մոլորեալս, ողորմեցայ ձեզ և ած դարձոյց զձեզ յինքն. այժմ ինձ թոյլ տուք, զի և այլ ուրեք գնացից շահել զոք։ Իսկ նոքա ասեն. հայրիկ, գէթ 'ի տարւոջն մի անգամ եկեսցես առ մեզ զի տեսցուք զքեզ։ Իսկ սուրբն անտի իջեալ յԱթէնս ոչ հաց ունելով և ոչ կերակուրս և ոչ գաւազան, բայց միայն մի պարեգօտն զոր ունէր, և երթեալ 'ի մէջ քաղաքին աղաղակեաց և ասէ. արք աթենացիք, օգնեցէք ինձ։ Եւ նոքա ասեն. զի՞նչ է, ուստի՞ ես և կամ ո՞ր պէտք են քեզ։ Եւ նա ասէ. ես եմ եգիպտացի և միայնակեաց, և յարեան 'ի վերայ իմ խորհուրդք երեք և ոչ կարացի նոցա զպարտսն հատուցանել։ Եւ նոքա ասեն. ո՞ւր են այնք որ նեղեն զքեզ, ցոյց զնոսա մեզ և օգնեսցուք քեզ։ Իսկ ծերն ասէ. նեղեաց զիս 'ի մանկութենէ իմմէ արծաթսիրութիւն և ոչ ունէի որ տայի զայն պոռնկութեան. դարձեալ ոչ ունիմ ոսկի զի թափեցից զորկրամոլութիւն, որ զի հաց գնեցից և կերայց. զի այս

երիս աւուրս էին և ոչ եգիտ[1] ուտելոյ, և կարի սովալէ զիս որպէս զչար պարտապան. և եթէ ոչ տամ ուտել, ոչ տայ ինձ ապրել։ Յայնժամ տեսանք 'ի փիլիսոփայիցն իմացան զիրսն և ետուն նմա դահեկան մի։ Իսկ նորա առեալ զայն՝ ետ հացավաճառին և առ 'ի նմանէ մի հաց, և գնացեալ այլ ոչ դարձաւ 'ի տեղին։ Յայնժամ իմացան փիլիսոփայքն՝ թէ արդարեւ ստոյգ միայնակեաց ոք էր այրն։ Իսկ սուրբ ծերն եկն 'ի Օակայէն քաղաք, եգիտ անդ մանիքեցի զոմն մեծատուն. և ապա ըստ առաջին օրինակին վաճառեաց զինքն նմա երանելին, և յետ երից ամաց դարձոյց զնա և զտուն իւր 'ի ճշմարիտ հաւատս և մկրտեաց զնոսա։ Իսկ յետ հնգետասան աւուր գնաց 'ի Հռոմ, և իջեալ 'ի ծովեզրն և մտեալ 'ի նաւ գնացին. կարծէին նաւորդքն թէ ունիցի ինչ թոշակ. զի ամենայն ոք գիտէ զայս՝ որ 'ի նաւի շատ ծախք պիտոյ է։ Իսկ իբրև[2] երեկոյ եղև, յառաջնումէ օրէ մինչև ցհինգերորդ օրն և ծերն ոչ ուտէր ինչ ուտելոյ, ասեն նաւորդքն. ընդէ՞ր ոչ ուտես, հայրիկ։ Ասէ ցնոսա. զի ոչ ունիմ ինչ։ Ասեն ցնա. և ընդէ՞ր մտեր այսր։ Իսկ ասէ. եթէ չունաս ինչ նաւլոդ արարի, դարձուցէք զիս 'ի տեղին ուր և գտէքն։ Իսկ քննեալ ոչ գտին թէ ով արկ զնա 'ի նաւն. ապա առեալ կերակրեցին զնա և տարան 'ի Հռոմ։ Իսկ մտեալ 'ի քաղաքն, գտեալ զաշակերտն Դոմնեա, որ և գերեզման նորա դեռ ևս բժշկութիւն առնէ, և եհարց ծերն՝ եթէ է՞ աստ կուսան արդարական։ Իսկ նա եցոյց նմա զդուռն կուսանի մի՝ որ քսան և հինգ ամ չէր զոք տեսեալ։ Իսկ եկեալ ծերն նստաւ 'ի դուրս նորա, և առաքեաց առ նա զոմն՝ թէ մեռ ասա, թէ միայնակեաց ոմն կայ և կամի տեսանել զքեզ։ Իսկ նա ոչ եբեր նմա պատասխանի. և կացեալ զերիս աւուրս առ դրանն և[3] ասէ ցաղջիկն թէ մեռ ասա՝ եթէ ա̃ծ առաքեաց զիս առ քեզ։ Յայնժամ ասէ կոյսն. ածէք զնա այսր։ Իսկ մտեալ աղօթեցին և նըստան։ Ասէ ծերն ցկոյսն. զի՞ նստիս այսր։ Ասէ կոյսն. ոչ նստիմ, այլ գնամ։ Ասէ ծերն. ո՞ւր գնաս։ Ասէ կոյսն.

1 Այդպէս ն̃մ օրինակն հինգ և նոյն։
2 իբրև անցին զի յառաջնմէ։
3 Եւ եւս զի աղջիկն մի գայր մտանել առ կոյսն։ Ասէ ցաղջիկն. միտեալ գու, ով զաւակիկ, ասա՝ թէ միայնակեաց որ կայ առ դուրս, ասէ՝ ա̃ծ առաքեաց։

աա ա̃ծ իմ։ Ասէ ծերն. կենդանի՞ ես թէ մեռեալ։ Ասէ
կոյսն. յաշխարհէ աստի մեռեալ եմ։ Ասէ ծերն. զիս
համարիս եթէ զա̃ծ՝ որ ասես զքեզ մեռեալ. արդ արա
զոր ասեմ քեզ, արի երթ յեկեղեցին և թող տեսա-
նեն զքեզ մարդիկ։ Ասէ կոյսն. քսան և հինգ ամ է
զիս ոչ ոք է տեսեալ, և այժմ տեսեալ զի՞նչ ասեն։
Ասէ ծերն. վահ, չասացե՞ր թէ մեռեալ եմ, և մեռեալն
զաշխարհիս իրս ոչ իմանայ։ Զայս իբրև լուաւ ՚ի ծե-
րոյն՝ ել արտաքս և եկն յեկեղեցին. չոգաւ ծերն և ե-
գիտ զնա ՚ի դուռն եկեղեցւոյն, և ասէ ծերն ցկոյսն.
թէ արդարև մեռեալ ես, արա զոր ես առնեմ։ Ասէ
կոյսն. ասա, հայր իմ։ Ասէ ծերն. մերկասցուք, ասէ,
ես և դու զհանդերձս մեր և դիցուք ՚ի յուսս մեր և
երթիցուք և դարձցուք ընդ մէջ քաղաքիդ՝ ես առաջի
և դու զկնի։ Ասէ կոյսն. եթէ զայդ առնեմք, ասեն
մարդիկդ զմէնջ եթէ դիւահարք են, զի ամօթ է այդ։
Ասաց ծերն. չասացե՞ր եթէ մեռեալ եմ, արդ մեռելոյ
զի՞նչ փոյթ է վասն ամօթոյ։ Ասէ կոյսն. աղաչեմ զճշ-
մարիտ ծառայդ Քի̃՝ բայց յայդմանէ այլ զոր ինչ ա-
սես առնեմ։ Յայնժամ ասէ ծերն. տես մի բարձրա-
նար զի չես մեռեալ, այլ կենդանի ես աշխարհի։ Եւ ու-
սաւ կուսանն ՚ի նմանէ զխոնարհութի̃։

Եւ նորա դարձեալ անտի եկն յԱղեքսանդր և ունէր
փոքրիկ աւետարանիկ. ետես զոմն ըմբռնեալ վասն պար-
տուց, և վաճառեաց զաւետարանն և ետ ՚ի պարտսն և
թափեաց զնա։ Արդ յառաջ քան զայս ետես աղքատ
մի մերկ սարսափեալ ՚ի ցրտոյն, հանեալ զպարեգօտն
ետ ցնա։ Իբրև ետես զնա որ զճանապարհն խաղաղու-
թեան պահէր, ասէ ցնա. հայրիկ, ո՞վ մերկացոյց զքեզ։
Եւ նա հանեալ զաւետարանն ասէ ցնա. սա մերկացոյց
զիս. և ապա վաճառեաց զաւետարանն։ Եւ իբրև եկն
՚ի խուցն, ասէ ցնա աշակերտն իւր Զաքարիա. հայր,
ո՞ւր է կողոբն քո։ Ասէ ցնա. որդեակ, առաքեցի զնա
յառաջ ուր պէտն է մեզ։ Եւ նա ասէ. ո՞ւր է փոքրիկ
աւետարանիկն։ Իսկ նա ասէ. որ ասէր ցիս եթէ վա-
ճառեա զինչս քո և տուր աղքատաց, ես զինքն վաճա-
ռեցի և իւր ետու, զի համարձակ լիցուք անդ։

Սա եղև յանապատին ամս վաթսուն և եօթն, և զհինգ
ամ ընդ հօրեղբօրն իւրում։ Զսա բազում անգամ գը-

տանէ յին արտաքոյ գեղջ, որ նստէր և լայր. հարցանէին զպատճառն, և նա ասէր. տէր իմ եւ յիս զգանձ իւր և ես կորուսի զնա, արդ չարաւ տանջելոց է զիս։ Իսկ նոքա ընկենուին նմա հաց և ասէին. առ, եղբայր, կեր, և վասն գանձուն զոր կորուսեր՝ ա̃ծ տացէ զայն քեզ։ Իսկ նա ասէր՝ ամէն։ Սա աշակերտ էր սրբոյն Մակարայ, և բազում բարիս արար առաւել քան զայլ միայնակեացսն։ Սա զերիս ամս յոտն եկաց, և զերկուս ամս ընդ յարկաւ ոչ եմուտ։ Սա՝ վախճանեցաւ 'ի Սկիւթ 'ի խցի աշակերտի իւրոյ Զաքարիայի 'ի փառս Ք̃ի։

ՎԱՐՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# Ս. ՀՕՐՆ ՄԵՐՈՅ ՈՆՈՓՐԻՈՍԻ ԱՆԱՊԱՏԱԿԱՆԻ

ԶՈՐ ՊԱՏՄԵԱՑ

## ՍՈՒՐԲ ՀԱՅՐՆ ՊԱՓՆՈՏԻՈՍ *

Ի ՄԻՈՒՄ աւուր փութացայ ընթանալ և լինել 'ի ներքսագոյն անապատն առ 'ի տեսանել թէ իցէ՞ այլ ոմն եղբայր 'ի ներքսագոյնն քան զիս ծառայել ա̃յ։ Եւ յարուցեալ չոգայ զաւուրս չորս 'ի ներքսագոյն անապատն կոյս՝ ոչ ինչ ճաշակելով հաց կամ ջուր։ Եւ 'ի չորրորդում աւուրն գտի այր մի փոքրագոյն, կացի առ դուրս այրին բախելով զնա ժամ մի ըստ սովորութեան եղբարց, յուսալով թէ գուցէ իցէ ոմն 'ի միայնակեցաց,

1 Սա առ սուրբն աբբայ Մարկոս գնացեալ առաքմամբ հրեշտակաց և ընդ հրեշտակս, և խօսեցեալ ընդ նա որ 'ի մարդկանէ սմա միայն կարօտեալ էր տեսանել յայնմ ժամանակի, և ամփոփեալ զնա դառնայ անճառ ուրախութեամբ արժանաւորեալ երանութեանց երանելիս այս հայր Սերապիոն։ Սա վախճանեցաւ։

* Զուիլլըն պարծանութեն՝ հօրն Տիմոթէոսի ձեռնագրէ նոր թարգմանութիւնն, իւր ըհ նախ ընծանէ է բանն այսպէս. Վասն հօրն Տիմոթէոսի զոր պատմեաց սուրբ հայրն Պափնուտիոս։ Եւ-այս 'ի բանէն Եւ դարձեալ միւսանգամ վարանէր յիս խորհուրդք իմ. (էջ 169) ձեռագրէ տպածոյ Ոնոփրեայ օրհնեալ այս, Վարք և պատմութիւն սուրբ հօրն մերոյ երկրաւոր երանելւոյն Ոնոփրիոսի անապատականի զոր պատմեաց տէր հայրն Պափնուտիոս, մինչեւ ութէ զպատմութիւն մինչև չափարածն։

եղջէ յայրէս յայսմանէ և հանգիստեցուցց նմա։ Այլ բախեալ 'ի բազում ժամս՝ ոչ ինչ լուայ յումեքէ պատասխանի։ Այլ բացեալ զդուրս այրին մտի 'ի ներքս ասելով՝ օրհնեա տէր. և տեսի զամն նստեալ, և մերձեցայ 'ի հանդերձ արկանելեաց նորա, և առժամայն եղև որպէս փոշի. և շօշափեալ զմարմին նորա, գտի զնա վախճանեալ 'ի բազում ամաց։ Տեսի և հանդերձ մի կախեալ. մերձեցայ և յայն, և եղև 'ի ձեռին իմում իբրև զփոշի, և առժամայն մերկացայ 'ի հանդերձից իմոց և ծածկեցի զմարմին վախճանելոյն. և յօժարութեամբ բրեցի զհող աւազոյն ձեռամբ իմով և ամփոփեցի զնշխարս նորա աղօթիւք և բազում արտասուօք։ Այլ ելեալ անտի եւս չոգայ 'ի ներքսագոյն կողմ անապատին և գտի այլ այր մի, և տեսի առ դուրս այրին տնկահեա մարդոյ, և ծանեայ եթէ բնակիցէ ոք աստ. և սակաւ մի ժամ նստայ առ դուրս այրին բախելով զնա, և ոչ լուայ ձայն զուրուք. ապա յարուցեալ մտի 'ի ներքս 'ի յայրն և ոչ զոք գտի։ Դարձեալ ելի 'ի նմանէ՝ զմտաւ ածելով եթէ ծառայ ոք այ̃ բնակեալ է 'ի սմա, և 'ի գործ աղօթից իւրոց երթեալ իցէ մատուցանել զառանձին աղաչանս, և դառնայցէ անդրէն 'ի բնակութիւն իւր։ Այլ կացի համբերելով զաւուրն ամ̃ առ դուրս այրին, և փափագէի բազում յօժարութ̃բ հանդիպել նմա, և յաղօթս կայի անդադար յերգս սաղմոսաց։

Այլ 'ի կատարել աւուրն այնորիկ տեսի ջոկս գազանց զի գային և եղբայր ոմն 'ի մէջ նոցա։ Այլ իբրև մերձ եղեն առ իս՝ հայեցեալ տեսի զայրն զայն մերկանդամ 'ի հանդերձից և հերք նորա ծածկեալ էր զմարմին նորա, և կայի հիացեալ 'ի տեսլեանն յորում էի՝ կարծելով՝ զնա շունչ ինչ գոլ։ Այլ նորա եղեալ 'ի զարմացման տանակալեաց 'ի տեսլեանն յորում էր՝ յաղօթս կալով, քանզի բազում անգամ յայսմ տեսլեան ոգիք չարք փորձեալ էին զնա, որպէս և ինքն յետոյ մինչև 'ի վախճան պատմեաց ինձ։ Այլ իմացեալ իմ զայն՝ յառաջ մատուցեալ ասեմ ցնա. վասն որոյ պատճառանաց երկնչիս, ծառայ Հ̃որ Ո̃որ և այ̃ իմոյ. նայեաց և տես զգնացս ոտից իմոց և ծանիր զի մարդ եմ իբրև զքեզ. շօշափեա զանձն իմ և դիտեա՝ եթէ մարմին եմ և արիւն։ Այլ իբրև ետես զիս և ծանեաւ, գոհացեալ զայ̃՝ ասաց զա-

մէնն¹ : Եւ ես աղաչեցի զնա հաւանեցուցանելով, զի մուծցէ զիս 'ի վանս իւր : Եւ առեալ զիս մուծանէ յայրն, հարցանելով ցիս՝ թէ որպէս եկիր այսր : Եւ պատմեցի նմա զխորհուրդս իմ և ասեմ . կամեցայ տեսանել զծառայս Ք̃ի, որ են յայսմ անապատի . վասն որոյ եկի հասի յայս տեղի, և ա̃ծ ոչ ընդունայն արար զխնդրուածս իմ զայս : Եւ հարցի ցնա և ասեմ . և դու տէր, որպէս եկիր այսր և կամ քանի՞ ամք են բնակութե̃ քում յայսմ անապատի և վասն որո՞յ պատճառի ես մերկանդամ՝ ոչ ինչ զգենլով քո : Եւ ասէ ցիս . ես յառաջագոյն նստէի, եղբայր իմ, ընդ միայնակեացս 'ի վանս միաբանութե̃ յերկրին Թեբայիդայ և գործ ունէի կտաւոյ : Եւ մտին յիս խորհուրդք և զմտաւ ածէի ելանել յայնմ միաբանութե̃ և միայն կալ առանձին 'ի վանս ուրեք, զի ընդունակ լինիցիմ օտարաց անցաւորաց . և միայնացայ, և այնու փութայի առնուլ մեծագոյն վարձս յա̃յ : Զայս յօժարագոյն զմտաւ ածելով շինեցի ինձ խուց մի փոքրագոյն, և կայի 'ի նմա առանձինն՝ գործելով զձեռագործն իմ : Որք և բազումք գային առ իս և խնդրէին ունել ինձ գործ զպէտս իւրեանց, և ոչ սակաւ ստացուածս լինէր ինձ յայնմանէ՝ զոր և բաշխէի յաղքատս և 'ի կարօտեալս և յօտարս : Իսկ ամենաչարն և բարիատեացն և թշնամին արդարութե̃ նախանձեալ ընդ իս յայնմ ժամու՝ կամեցաւ խափանումն առնել ինձ յայնպիսի բարեաց յօժարութե̃ն որ առ ա̃ծ . մտեալ 'ի միտս կնոջ միայնաւորի գալ առ իս և խնդրեաց առնել իւր գործ կտաւոյ, և ստիպեաց զնա այնն չար գալ առ իս բազում անգամ, մինչև համարձակել մեր առ միմեանս 'ի սովորութենէ ընդելութեան և մերձաւորիլ և զծանրագոյնն ես կատարել մեղ զցաւս մեղացն, և կացեալ 'ի մեղս չարեացն զամիսս վեց : Եւ յետ այնորիկ զմտաւ ածէի զվախճան կենցաղոյս և դարձեալ զյաւիտենականն և զմեծ դատաստանն և զխաւարն արտաքին և զանշէջ հրոյ գեհեննոյն զբորբոքումն և զանքուն որդանցն լինել կերակուր, ասացի ցանձն իմ . վայ քեզ, անձն իմ²,

1 զամէնն . յայնժամ ողջագուրեալ երկրպագեցաք : Իսկ ես :

2 իմ՝ թէ յորովայնէ մօրն թաւալեցայ և գուցէ կարատեան քեզ բացեր . այլ արդ զինչ արարից և մեծապէս աղաչեցայց : Եւ զմտաւ ածեալ ասեմ . լաւագոյն է :

լուսագոյն է քեզ յառնել երթալ յանապատ և փախչել 'ի մեղաց: Եւ առժամայն յարուցեալ թողի զամենայն ստացուածս իմ և զկնիկն զայն, և եկեալ հասի յայս տեղի անապատիս և գտի զայրս զայս և զաղբիւրս և զծառս զայս զարմաւենի՝ որ է պատճառ կենաց իմոց, զի յամենայն ամի բերէ ողկոյզս երկոտասան, այսինքն է ամենամսն ողկոյզ մի, և ողկոյզն այն բաւական լինի ինձ զաւուրս երեսուն, և յետ այնորիկ հասանէ միւս այլ ևս ողկոյզն, և այսպէս կերակրիմ զաւուրս կենաց իմոց 'ի շնորհացն ա̃յ. և այլ ոչ ինչ ունիմ յայրս յայսմիկ ոչ հաց կերակուր և ոչ զգեստ անձին իմոյ: Այլ և զգեստիկն զոր ունէի՝ պատառոտուն եղև, և 'ի յերկարութ̃է ժամանակիս հերով գլխոյ իմոյ մարմին իմ հանդերձ անդամօքս ծածկեալ լինի. և այժմ երեսուն ամ է իմ մինչև բնակեալ եմ յայսմ անապատի, և ոչ պակասեաց ինձ ցօղ երկնային առ 'ի կեցուցանել զիս, և ոչ եմ ճաշակեալ բնաւ հաց մինչև ցայսօր:

Եւ զայս իմ լուեալ յարդարոյն յայնմանէ՝ հարցի ցնա և ասեմ. Նախ 'ի սկզբանն յորժամ եկիր 'ի տեղիս յայս, աշխատեցա՞ր յոյժ թէ ոչ: Եւ նա պատասխանի ետ և ասէ. Նախ յոյժ աշխատութիւն կրեցի, ով եղբայր, և 'ի բազում ողբալոյն յերկիր կործանէի զանձն իմ բախելով զկուրծս իմ, և ոչ կարէի բնաւ 'ի վեր ունել զգլուխ իմ և կամ յոտնկացութ̃բ կատարել զաղօթս իմ. այլ յաղագս յոյժ տրտմութեան սրտի իմոյ զանձն իմ յերկիր կործանէի, և թաւալելով ընդ գետինն կատարէի զկարգեալ աղօթսն, և աղաչէի զբարեգութն ա̃ծ յաղագս փարատեցուցանելոյ յինէն զտագնապ՝ սրտի իմոյ և վասն փրկութ̃ե անձին իմոյ և քաւութեան մեղաց իմոց, բազումս համբերեալ այսպիսի տանջանաց՝ մինչև[1] 'ի ցաւս մարմնոյ հիւանդութ̃ե անկանէի: Ի միում աւուր կայի նստեալ, և եղև զի տագնապէի յոյժ 'ի լերդէ իմմէ, և տեսանէի այր մի փառաւորագոյն զի կայր առաջի իմ և ասէ ցիս. զի՞ է քեզ և զի՞նչ է տագնապ սրտի քո: Եւ նոյնժամայն իբրև լուայ զայս 'ի նմանէ, զօրացայ և ասեմ ցնա. այս տէր՝ լերդ

1 և երկանց և տրտմութեանց որ վասն մեղաց, այլ ոչ յուսահատութեան, մինչև:

իմ ցաւէ յոյժ։ Եւ ասէ ցիս. ցոյց ինձ զտեղին յորում ամփոփեալիս։ Եւ իմ ցուցեալ զտեղին, և նորա յարձակեալ զձեռնն մխեաց զմատունս իւր 'ի կողս իմ և պատառեաց իբրև սուսերաւ և եհան արտաքս զլեարդս, և նա ցաւէր յոյժ։ Եւ եցոյց ինձ զվէրսն որ էին 'ի նմա, և մաքրեաց զայն ձեռամբ իւրով և[1] դարձեալ անարատ դարձոյց զնա 'ի տեղի իւր. և շօշափեալ զամենայն մարմինս իմ օրհնեալ ձեռօք իւրովք և ողջացոյց զպատառեալ կողս իմ։ Եւ ասէ ցիս. ահաւասիկ ողջացար, այլ մի ևս մեղանչեր՝ զի մի ևս չարագոյն եղիցի քեզ, այլ ծառայեա տեառն ա՟յ յայսմհետէ մինչև յաւիտեան։ Եւ ահաւասիկ յայնմ օրէ հետէ բժշկեցաւ ամենայն մարմին իմ և դադարեաց ցաւ լերդի իմոյ, և կամ անարատ յայնմ օրէ հետէ օրհնելով զա՟ծ և փառաւորելով զնա յամի յաղագս բազում գթութե՟ իւրոյ։

Եւ իբրև պատմեաց ինձ զայս ամենայն, աղաչեցի զնա լինել յայնմ գիշերի ընդ նմա 'ի խցիկն իւր։ Եւ նա ասէ. ոչ կարես, եղբայր իմ, ընդդէմ կալ պատերազմի բանսարկուին։ Այլ յետ այսորիկ աղաչեցի զնա ծանուցանել ինձ զանուն իւր։ Եւ ասէ. Տիմոթէոս է անուն իմ. յիշեա զիս և աղօթեա վասն իմ, եղբայր իմ սիրեցեալ 'ի տեառնէ, զի ա՟ծ կատարեսցէ առ իս զողորմութի՟ իւր որում արժանացայց։ Եւ ես Պափնուտիոս անկեալ առ ոտս նորա աղաչեցի զնա օրհնել 'ի նմանէ զի աղօթս արասցէ 'ի վերայ իմ։ Եւ նա ասէ. տէրն մեր Յ՟ս Ք՟ս օրհնեսցէ զքեզ և փրկեսցէ յամենայն որոգայթից բանսարկուին և ուղղեսցէ զճանապարհս քո 'ի խաղաղութիւն՝ հասանել քեզ առ ամենայն սուրբս իւր այժմ և յաւիտեան։ Եւ իբրև օրհնեցայ 'ի նմանէ, և ընկալեալ զաղօթս նորա յօժարութեամբ հանդերձ՝ բազում խնդութեամբ փառաւորէի զա՟ծ յաղագս բարի օրհնութե՟ցն զոր ընկալայ յերանելւոյն Տիմոթէոսէ. և այնպէս երթայի զճանապարհս իմ ուրախութ՟բ դառնալով 'ի բնակութիւնս։

Եւ դարձեալ միւսանգամ վարանէր յիս խորհուրդք իմ, և տրտմէի յոյժ՝ զմտաւ ածելով եթէ զինչ իցեն

1 և եղև ողջացեալ խոցեալ ան- և հաստատեցաւ 'ի տեղին իւր ող-
գին վէրացն, և մաքուցեալ եւ- ջացեալ յամի. և շօշափեալ։
դարձեալ զլեարդ իմ 'ի տեղի իւր.

կեանք իւր և կամ քաղաքավարութիւն. և կացի ոչ սա-
կաւ աւուրս խորհելով զայսպիսիս, և վարանեալ կարօ-
տէի ա̃ծահաճոյ անձն այնպիսի արդարոյ զհետ երթալ:
Այլ 'ի մարդասիրութենէն ա̃յ ծագեաց յիս շնորհք իմաս-
տութե և ոչ անփոյթ արարի զկենաց իմոց, այլ դար-
ձեալ միւսանգամ յարեայ և չոգայ ես 'ի ներքսագոյն
անապատին ընդ ճանապարհ անբնակ, ուր էին ազգն որ
կոչին Մ՝ազքնանք: Այլ դարձեալ յոյժ փոյթ եղև ինձ
թէ իցէ՞ ոք որոշեալ 'ի ներքսագոյն կողմ անապատին
որ ծառայիցէ ա̃յ, զի արժանաւորեցայց և նմա հանդի-
պիլ: Այլ այսմ ճանապարհի սկիզբն արարեալ՝ առի ընդ
իս հաց սակաւ և ջուր ամանով, որ բաւական եղեն ինձ
զաւուրս չորս. և յետ աւուրց չորից սպառեցաւ կերա-
կուրն իմ և ըմպելին և տրտմեցայ յոյժ, և նոյնժամայն
դարձեալ զօրացայ՝ զմահ առաջի աչաց իմոց տեսանելով
և զա̃ծն ամենեցուն օգնական ունելով ընթացայ զճանա-
պարհն այլ ևս աւուրս չորս և գիշերս չորս ոչինչ ճաշա-
կեալ ամենևին: Այլ դարձեալ նեղասրտեցայ յոյժ 'ի
բազում աշխատութենէն և անկեալ յերկիր կործանեցայ 'ի
կարօտութէ կերակրոյ, կարծէի մեռանել ինձ 'ի նմին ժա-
մու: Յայնժամ տեսի այր մի փառաւորագոյն մերձ ե-
կեալ առ իս և զձեռս իւր եդ 'ի վերայ շրթանց իմոց,
և իբրև զբժիշկ ճարտար որ դեղ արկանիցէ՝ այնպէս
աչքն բացաւ և առժամայն զօրացայ իբրև թէ ոչ իցեմ
քաղցեալ: Այլ իբրև տեսի զմեծամեծ սքանչելիսն զայն
և զահաւոր զօրութիւն եղեալ առ իս, յարեայ դարձեալ
ուրախութե մեծաւ՝ գնալով յօժարութե զճանապարհս
իմ: Այլ գնացեալ այլ ևս աւուրս չորս և գիշերս չորս
աշխատեալ տկարացայ յոյժ, և համբարձեալ զձեռս
իմ յերկինս յաղօթս կայի առ ա̃ծ. և ահա դարձեալ
տեսանեմ զի գայր առ իս այրն այն փառաւորագոյն զոր
տեսի յառաջագոյն, և օծեալ մատամբն զշրթունս իմ՝
առի նովաւ զօրութիւն բազում և չոգայ զճանապարհս
իմ մինչև կատարեցան աւուրք հնգետասան ընթացից
ճանապարհի իմոյ:

Այլ ահա տեսանեմ այր մի 'ի հեռաստանէ յոյժ ա-
հաւոր տեսլեամբ զի գայր և հեր գլխոյ նորա բազում
յոյժ, մինչ զի այնու ծածկեալ լինէր ամենայն մարմինն
իւր, և դիմօքն ահաւոր և 'ի զգեստից մերկ և տերև

բանջարոյ ափածեալ ունէր զմիջօքն իւրովք ։ Եւ իբրեւ այնպէս մերձ եղեւ առ իս, երկեայ յոյժ և ընթացայ 'ի կողմ ստորոտ լերինն և ելի 'ի վեր 'ի լեառնն 'ի տեղի ինչ բարձրագոյն յոյժ և բազում զարհուրանօք կալեալ զիս՝ կարծելով եթէ մարդակերպ գազան իցէ ։ Իսկ նա իբրեւ եհաս առ ոտս լերինն մերձ առ քարափն, անկեալ մեկ-նեցաւ ընդ հովանեաւ վիմին, զի էր տկարացեալ յոյժ 'ի բազում ծերութէ անձին իւրոյ և 'ի կարօտութենէ կերակրոց, մանաւանդ 'ի տօթոյ և 'ի խորշակէ բազում աշխատութէն զոր կրեալ էր յանապատին ։ Եւ նայե-ցեալ 'ի վեր կոյս 'ի կողմ լերինն ետես զիս, ձայն ետ և ասէ. էջ առ իս, ով այրդ սրբասնեալ, քանզի ես մարդ եմ իբրեւ զքեզ և բնակեալ յայսմ անապատի վասն անուան տեառն մերոյ Յ͞սի Ք͞սի ։ Եւ իբրեւ լուայ զայս 'ի ծերունւոյն սրբոյ, իջի յօժարութ͞բ և անկայ առ ոտս նորա յերկիր ։ Եւ ասէ. արի կաց, որդեակ իմ, քանզի եւ դու ծառայ իցես Ա͞յ և սիրելի սրբոց ։ Եւ իբրեւ աղօթեալ յարեայ և արժանաւորեցայ նստել հանդէպ նորա, և սկսայ խօսել ընդ նմա և՝ աղաչեցի զնա զի ասասցէ զանուն իւր և զկարգ կենցաղավարութ͞ե իւրոյ ։ Եւ ասէ ցիս. Ոնոփրիոս է անուն իմ, որդեակ իմ, և այս վաթսուն ամ է ինձ յանապատի աստ բնակութ͞ե, և շրջիմ ընդ լերինս յայսմ անապատի՝ կերակրելով 'ի շնորհացն Ա͞յ, և մարդ բնաւ ամենեւին ոչ է իմ տեսեալ, բայց միայն զքեզ, եղբայր ։ Եւ նախ քան զգալն իմ աստ՝ էի բնակեալ 'ի վանս մի ապաստուանական՝ որ կոչի Եռ-միպաւլիտացւոց, ուր էին բնակեալ 'ի նմա եղբարք թուով իբրեւ հարիւր՝ որք էին համախոհք միմեանց և համակրօնք, և էին 'ի սէրն Ա͞յ ամենեքեան կատարեալ՝ խաղաղութեամբ տեառն մերոյ Յ͞սի Ք͞սի, և ճգնէին առաւել քան զառաւել բազում աշխատութեամբ՝ փա-ռաւորելով զբարերարութիւնն Ա͞յ ։ Եւ կացի անդ մինչեւ հասի 'ի չափ հասակի կատարելութեան, ուսեալ և

1 Եւ յետ հարցանելոյն զինէն և զաշխարհէ և զեղբարց, աղաչեցի զնա բազում անգամ զի վաղվա-ղակի ասա այժմ ասասցէ ինձ չև 'ի տեղւոջէ աստի ելեալ իցեմք, զի ծարաւի էի լսել զասելիս վասն նորա և յագեցուցանել զփափագ իմ և մխիթարել 'ի բազում աշ-խատութեանց ։ Եւ իբրեւ ժտեցայ ասել ինձ զանուն իւր և զկարգ կենցաղավարութեան իւրոյ, ասէ ցիս. այս որդեակ, ասասցից քեզ զմի մի ըստ միոջէ. արդ անուն իմ, որդեակ, Ոնոփրիոս է, և այս ։

'վարժեալ զաստուածսիրութի՟ն 'ի սուրբ հարցն և զհա-
ւատոյն ճշմարտութեան և զկանոնեալ աղօթան բարե-
պաշտութե՟ : Այլ ուսեալ և կատարեալ զա՟մ՝ լաւ 'ի
սուրբ հարցն պատմելով միմեանց յաղագս սքանչելի և
ա՟ծասէր սուրբ հօրն մերոյ Եղիայի մարգարէի, որ զօ-
րացեալ յա՟յ հաճոյ եղև նմա համբերութե՟ն իւրով, և
աղօթիւք և պահովք զոր կրեաց յանապատին՝ վերա-
ցաւ : Այլ դարձեալ վասն սրբոյ կարապետին Յովհան-
նու, զոր ոչ ոք երբէք եղև նման նմա և կամ կրեաց
զվարս նորա և զոր ինչ արար յանապատին մինչև յօր
երևելոյ նորա Իսրայէլի : Իսկ ես մխիթարանէի ընդ սուրբ
հարսն որ էին 'ի վանսն և ասէի . և զի՞նչ իցէ որք
բնակեալ իցեն յանապատի՝ լինել նոցա վերագոյն քան
զմեզ առ ա՟ծ : Այլ նոքա պատասխանի տուեալ ասեն
ցիս . այս որոշեալ, վերագոյն են նոքա քան զմեզ . քան-
զի մեզ յարաժամ տեսանելով զմիմեանս մխիթարիմք
'ի միմեանց, և զաղօթս մեր 'ի միասին կատարելով ու-
րախանամք, և յորժամ քաղցնումք՝ զկերակուր մեր
պատրաստական գտանեմք, նոյնպէս և յորժամ ծարա-
ւիմք՝ գոյ մեզ ջուր առ 'ի յարբումն, և եթէ հանդիպի
ումեք 'ի մէնջ անկանել 'ի տկարութի՟ նոյն մխիթարի
յեղբարցն վասն լինելոյ մեզ 'ի միաբանութե՟, և եթէ
առաւելագոյն ինչ կերակրոյ կարօտանայցէ ոք 'ի մէնջ՝
պատրաստեմք միմեանց յաղագս սիրոյն ա՟յ : Իսկ այնք
որ բնակեալ իցեն յանապատ, յայսմ ամենայնէ թա-
փուր լինին, քանզի ուստի՞ գտանի առ նոսա այս . և ե-
թէ նեղութի՟ հասանիցէ նոցա կամ մարտ պատերազմի
որոգայթից թշնամւոյն, ուստի՞ գտանիցեն զոք առ 'ի
քաջալերել զսիրտս նոցա կամ մխիթարել զնոսա սի-
րովն ա՟յ և զօրացուցանել . և եթէ կերակրոյ ինչ ցան-
կանայցեն, ոչ դիւրաւ է նոցա գտանել զայն . նոյնպէս
եթէ ծարաւի ոք առ նոսա, ջուր ոչ գոյ նոցա առ 'ի զո-
վացումն : Մանաւանդ եւս առաւել բազում աշխատու-
թիս կրեն այնպիսիքն 'ի սկզբանն յորժամ խորհին կեալ
'ի բնակութի՟ անապատի և զծառայութի՟ ա՟յ յանձն առ-
նուն՝ տալով 'ի ձգնութիս զանձինս իւրեանց, և յօժա-
րին համբերութե՟ տանել քաղցի և ծարաւոյ, որք և
զգաղտնի պատերազմ բանսարկուին փութան յաղթա-
հարել, և զամենայն նեղ և զանձուկ ճանապարհ որ է

'ի տեղ' զնան նոքա, զի մի ընաւ յաղթիցին 'ի թշնա-
մւոյն չարեաց. վասն զի յոյժ փոյթ է նորա համապազ
վասն այնոցիկ որք փափագին այսպիսի ճանապարհաց' ար-
գել լինել և խափանումն առնել' փորձելով զնոսա ամե-
նայն հնարիւք, զի դարձուսցէ զնոսա 'ի բարւոք ճանա-
պարհէն, ոչ միայն նոցա 'ի ճգնութի աշխատութեն
և առնուլ զմեծամեծ պարգևսն այ յորժամ ելանիցեն
'ի մարմնոյս: Վասն զի որք համբերեն իմաստութբ. 'ի
ճգնութիս նեղութեց, հասանէ առ նոսա բարերարի
տեառն մերոյ գթութի առ 'ի հատուցանել վարձս զոր
վասն այ համբերեցին. որ և 'ի ձեռն հրեշտակաց իւ-
րոց սրբոց առաքէ առ նոսա զպէտս կարեաց կերակրոյ
և ջուր ըմպել 'ի վիմէ, որպէս և մարգարէն Եսայի ու-
սուցանէ' թէ որ համբերեն տեառն' լցցին բարութբ և
թևս առնուցուն և վերանայցեն իբրև զարծուիս, գնան
և ոչ քաղցնուն, ընթանան և ոչ աշխատին. և դար-
ձեալ ասէ' թէ ծարաւեաց արբուցէք ջուր 'ի վիմաց,
ընձեղեցան [1] նոցա բանջարք խոտոց անապատի քաղցր
'ի քիմս և 'ի կոկորդս նոցա իբրև զխորիսխ մեղու:
Այլ եթէ հանդիպեսցի նոցա չար ինչ, կամ մարտ 'ի թշ-
նամւոյն յառնէ 'ի վերայ նոցա, 'ի նմին ժամու յոր-
ժամ զձեռս իւրեանց համբառնայցեն առ տէր աղա-
ղակելով և աղաչելով, վաղվաղակի 'ի տեառնէ առաքի
'ի վերուստ առ նոսա օգնականութիւն, և ցրուեսցի և
փարատեսցի 'ի նոցանէ փորձութիք նոցա յաղագս ճըշ-
մարիտ հաւատոյ և սուրբ սրտից նոցա: Այլ ո՞չ իցէ լը-
ւեալ քո, ով որդեակ, զոր արկեալ են ընդ գրով' թէ
ած չմոռանայ զտնանկն իսպառ, և համբերութիք աղ-
քատաց ոչ կորիցեն յաւիտեան. և դարձեալ ասէ' թէ
զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր, աղօթից նոցա
լսէ և փրկէ զնոսա յամենայն նեղութեց. քանզի ած
է որ հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործոց և ըստ աշ-
խատութե այնոցիկ որ համբերեն վասն նորա: Արդ ե-
րանի իցէ այնոցիկ որք առնիցեն զկամս այ 'ի վերայ երկ-
րի, զի հրեշտակք սպասաւորեն նոցա ցնծութբ և ու-
րախութբ և զօրացուցանեն զնոսա յամենայն ժամ
մինչ իցեն 'ի մարմնի::

1 Այլք ձեղեցան:

Զայսոսիկ լուեալ իմ 'ի հարցն սրբոց որ էին 'ի վանսն յայն, և ուսեալ 'ի նոցանէ ես տառապեալս Ոնոփրէոս, նոյնժամայն լցաւ սիրտ իմ քաղցրութ̃բ և հոգի իմ առաւելապէս քան զխորիսխ մեղու. և դարձեալ քննէի զբանսն 'ի նոցանէ և սորվէի՝ որպէս յայլ ինչ պատճառ զբանսն հանելով: Եւ 'ի միում գիշերի յարուցեալ բազում յօժարութ̃բ առի ընդ իս հաց սակաւ և ջուր զոր կարծէի բաւական լինել ինձ զաւուրս չորս և փութացայ ղևորել 'ի տեառնէ ըստ մարդասիրութեան իւրոյ 'ի հասանել ինձ 'ի տեղի ուր կամիցի բնակեցուցանել զիս ա̃ծ: Եւ իբրև ելի 'ի վանացն 'ի գիշերին յայնմիկ, եկի առ ճանապարհաւ լերինն որ է մերձ 'ի մուտս անապատին, և տեսի լոյս մեծ առաջի իմ, և զայն տեսեալ զարհուրեցայ յոյժ մինչև խորհեցայ յերկիւղէն դառնալ և լինել ինձ 'ի տեղւոջն ուր կայի զառաջինն: Ապա դարձեալ 'ի վերագոյնն եղեալ. 'ի տեառնէ եղև ինձ յառաջադիմութիւն ըստ խնամածութեան իւրում: Եւ ահաւասիկ մինչդեռ էի յերկիւղին, երևեցաւ ինձ այր մի փառաւորագոյն յոյժ, և եղեալ մերձ առ իս ասէ ցիս. մի երկնչիր, զի ես եմ հրեշտակ տեառն ամենակալի որ պահեմ զքեզ հանապազ 'ի տիոց մանկութենէ քումմէ, և պարգևքդ այդ որ արժանաւորեցար 'ի տեառնէ ընթանալ քեզ զճանապարհդ զայդ՝ կատարեսցին: Եւ զայս ասացեալ գնացաք 'ի միասին և հասաք յանապատն իբրև վեց մղոնաւ ճանապարհի կամ եօթն, և տեսի անդ այր մի փոքրագոյն, և մերձ եղեալ առ դուրս այրին խորհեցայ խնանալ եթէ իցէ ոք բնակեալ 'ի նմա եթէ ոչ. և բացեալ զդուրսն աղաղակեցի և ասեմ՝ օրհնեա տէր, ըստ սովորութ̃ե քննասէր եղբարց: Եւ ահա ել անտի այր մի ալեօր պատուական և գեղեցիկ յոյժ տեսլեամբ և երեսք նորա պայծառացեալ շնորհօքն ա̃յ, և անկայ առ ոտս նորա 'ի վերայ երկրի և երկիր պագի նմա, և նա ձեռամբ իւրով յարոյց զիս, ողջունեաց զիս և ասէ. դու իցես եղբայրն իմ Ոնոփրէոս և գործակիցն իմ 'ի տէր. մուտ, որդեակ, և ա̃ծ օգնական լիցի քեզ և մնասցես 'ի բարութ̃ե, որպէս և կոչեցար 'ի տեառնէ կատարել զքեզ զգործ ըստ երկիւղի նորա: Եւ իմ մտեալ կացի առ նմա մինչև 'ի սակաւ աւուրս, և փութայի ուսանել 'ի նմա

նէ զգգածս սրբութեան կրօնից ; որպէս և եղև իսկ . քանզի ուսոյց ինձ զվարս միայնակեցաց : Եւ իբրև ծանեաւ երանելւոյն եթէ հոգի իմ լուսաւորեցաւ 'ի յուսուցանելոյ ինձ զգործս բարեպաշտութեան հաւատոց փեսան մերոյ Յսի Քսի և ընդդէմ կալ գազանի պատերազմաց բանսարկուին և երկիւղի զոր և ինչ իցէ յանապատի՝ ասէ ցիս . տարայց զքեզ յայլ ևս ներքսագոյն անապատ , զի բնակեսցես յայրի միում առանձինն կրել քեզ աշխատութիւն . քանզի յայդ իսկ առաքեցար յԱյ ըստ նախախնամութեան , զի բնակեսցես 'ի ներքսագոյն անապատին : Եւ զայս նորա ասելով ցիս՝ յարուցեալ գնացաք 'ի միասին 'ի ներքսագոյն կողմ անապատին մինչև յաւուրս չորս և գիշերս չորս , և հասաք առ խուց մի փոքրագոյն՝ յորում կայր առ նմա ծառ արմաւենի : Եւ խօսեցաւ ցիս այրն այն պատուական և ասէ . ահա այս իցէ տեղին որ պատրաստեցաւ քեզ 'ի մարդասիրութենէն Այ բնակել 'ի սմա : Եւ կացեալ յայնմ տեղւոջ առ իս այրն այն պատուական զաւուրս երեսուն ուսուցանելով ինձ զվարս գործոց բարեաց , և յետ աւուրցն երեսնից ողջունեցաք զմիմեանս և գնաց նա 'ի տեղի իւր : Եւ յայնմհետէ և առ յամս ամի ամի հանդիպեցաք միմեանց մինչև փոխեցաւ երանելին այն 'ի կենացս . զոր բարձեալ զմարմին նորա՝ եդի զսուրբ նշխարս նորա մերձ առ բնակութիւնն իմ :

Եւ իբրև պատմեաց ինձ զայս ամենայն սուրբ հայրն Ոնոփրէոս , հարցի ցնա ես տառապեալս Պափնութիոս և ասեմ . ո հայր պատուական , և բազում աշխատութիւն կրեցեր զառաջինն յորժամ հասեր 'ի տեղի անապատիս : Եւ ասէ ցիս երանելի ծերունին . հաւատա ինձ , եղբայր սիրելի , զի այնչափ աշխատութիւն կրեցի բազում ժամանակս մինչև անյոյս լինել 'ի կենաց իմոց . զի բազում անգամ հասի 'ի տեղի մահու 'ի քաղցոյ և 'ի ծարաւոյ որ հասանէր 'ի վերայ իմ . ընդ նոսին 'ի տապոյ և 'ի խորշակէ 'ի տունջեան ժամանակի յաւուրս ամառանոյ , և 'ի ցրտոյ և 'ի դժնդակ ցօղից գիշերային ժամու յաւուրս ձմերայնոյ մինչև ներկեալ լինէր մարմին իմ 'ի ցօղոյ երկնից : Իսկ բարերարն Ած իբրև ետես զայսպիսի համբերութիւն իմ և զջան վաստակոց իմոց և աղօթից , և թէ որպէս ետու զանձն իմ 'ի ձգնու-

Օ այսուհետև լուեալ իմ 'ի հարցն որոց որ էին 'ի վանսն յայն, և ուսեալ 'ի նոցանէ ես տառապեալս Ոնոփրէոս, նոյնժամայն լցաւ սիրտ իմ քաղցրութեամբ և հոգի իմ առաւելապէս քան զխորիսխ մեղու. և դարձեալ քննէի զբանսն 'ի նոցանէ և ստուգէի՝ որպէս յայլ ինչ պատճառ զբանսն հանելով: Եւ 'ի միում գիշերի յարուցեալ բազում յօժարութեամբ առի ընդ իս հաց սակաւ և ջուր զոր կարծէի բաւական լինել ինձ զաւուրս չորս և փութացայ դիմել 'ի տեառնէ ըստ մարդասիրութեան իւրոյ 'ի հասանել ինձ 'ի տեղի ուր կամիցի բնակեցուցանել զիս ա̄ծ: Եւ իբրև ելի 'ի վանացն 'ի գիշերին յայնմիկ, եկի առ ճանապարհաւ լերինն որ է մերձ 'ի մուտս անապատին, և տեսի լոյս մեծ առաջի իմ, և զայն տեսեալ զարհուրեցայ յոյժ մինչև խորհեցայ յերկիւղէն դառնալ և լինել ինձ 'ի տեղւոջն ուր կայի զառաջինն: Այս դարձեալ 'ի վերագոյնն եղեալ. 'ի տեառնէ եղև ինձ յառաջադիմութիւն ըստ խնամածութեան իւրում: Եւ ահաւասիկ մինչդեռ էի յերկիւղին, երևեցաւ ինձ այր մի փառաւորագոյն յոյժ, և եղեալ մերձ առ իս ասէ ցիս. մի երկնչիր, զի ես եմ հրեշտակ տեառն ամենակալի որ պահեմ զքեզ հանապազ 'ի տիոց մանկութենէ քումմէ, և պարգևքդ այդ որ արժանաւորեցար 'ի տեառնէ ընթանալ քեզ զճանապարհդ զայդ՝ կատարեսցին: Եւ զայս ասացեալ գնացաք 'ի միասին և հասաք յանապատն իբրև վեց մղոնաւ ճանապարհի կամ եօթն, և տեսի անդ այր մի փոքրագոյն, և մերձ եղեալ առ դուրս այրին խորհեցայ խնանալ եթէ իցէ ոք բնակեալ 'ի նմա եթէ ոչ. և բացեալ զդուրսն աղաղակեցի և ասեմ՝ օրհնեա տէր, ըստ սովորութեան ք̄նասէր եղբարց: Եւ ահա ել անտի այր մի ալևոր պատուական և գեղեցիկ յոյժ տեսլեամբ և երեսք նորա պայծառացեալ շնորհօքն ա̄յ, և անկայ առ ոտս նորա 'ի վերայ երկրի և երկիր պագի նմա, և նա ձեռամբ իւրով յարոյց զիս, ողջունեաց զիս և ասէ. դո՛ւ իցես եղբայրն իմ Ոնոփրէոս և գործակիցն իմ 'ի տէր. մուտ, որդեակ, և ա̄ծ օգնական լիցի քեզ և հասուսցէ 'ի բարութեն, որպէս և կոչեցար 'ի տեառնէ կատարել քեզ զգործ ըստ երկիւղի նորա: Եւ իմ մտեալ կացի առ նա մինչև 'ի սակաւ աւուրս, և փութայի ուսանել 'ի նմա

նէ զգործս սրբութեան կրօնից ; որպէս և եղև իսկ . քանզի ուսոյց ինձ զվարս միայնակեցաց ։ Այլ իբրև ծանեաւ երանելին եթէ հոգի իմ լուսաւորեցաւ 'ի յուսուցանելոյ ինձ զգործս բարեպաշտութեան հաւատոց փրկանմերոյ Յ̃սի Ք̃սի և ընդդէմ կռոյ զաղտնի պատերազմաց բանսարկուին և երկիւղի զոր և ինչ իցէ յանապատի՝ ասէ ցիս . տարայց զքեզ յայլ ևս ներքսագոյն անապատ , զի բնակեսցես յայրի միում առանձինն կրել քեզ աշխատութիւն . քանզի յայդ իսկ առաքեցայ յԱ̃յ ըստ նախախնամութեան , զի բնակեսցես 'ի ներքսագոյն անապատին ։ Այլ զայս նորա ասելով ցիս՝ յարուցեալ գնացաք 'ի միասին 'ի ներքսագոյն կողմ անապատին մինչև յաւուրս չորս և գիշերս չորս , և հասաք առ խուց մի փոքրագոյն՝ յորում կայր առ նմա ծառ արմաւենի ։ Այլ խօսեցաւ ցիս այրն այն պատուական և ասէ . ահա այս իցէ տեղին որ պատրաստեցաւ քեզ 'ի մարդասիրութենէն Ա̃յ բնակել 'ի սմա ։ Այլ կացեալ յայնմ տեղւոջ առ իս այրն այն պատուական զաւուրս երեսուն ուսուցանելով ինձ զվարս գործոց բարեաց , և յետ աւուրցն երեսնից ողջունեցաք զմիմեանս և գնաց նա 'ի տեղի իւր ։ Այլ յայնմհետէ և առ յապա ամի ամի հանդիպեցաք միմեանց մինչև փոխեցաւ երանելին այն 'ի կենացս . զոր բարձեալ զմարմին նորա՝ եդի զսուրբ նշխարս նորա մերձ առ բնակութիւնն իմ ։

Այլ իբրև պատմեաց ինձ զայս ամենայն սուրբ հայրն Ոնոփրէոս , հարցի զնա ես տառապեալս Պափնուտիոս և ասեմ . ո հայր պատուական , և բազում աշխատութի̃ կրեցեր զառաջինն յորժամ հասեր 'ի տեղի անապատիս ։ Այլ ասէ ցիս երանելի ծերունին . հաւատա ինձ , եղբայր սիրելի , զի այնչափ աշխատութի̃ կրեցի բազում ժամանակս մինչև անյոյս լինել 'ի կենաց իմոց . զի բազում անգամ հասի 'ի տեղի մահու 'ի քաղցոյ և 'ի ծարաւոյ որ հասանէր 'ի վերայ իմ . ընդ նմին 'ի տապոյ և 'ի խորշակէ 'ի տունջեան ժամանակի յաւուրս ամարանոյ , և 'ի ցրտոյ և 'ի դժնդակ ցօղից գիշերային ժամու յաւուրս ձմերայնոյ մինչև ներկեալ լինէր մարմին իմ 'ի ցօղոյ երկնից ։ Իսկ բարերարն Ա̃ծ իբրև ետես զայսպիսի համբերութի̃ իմ և զջան վաստակոց իմոց և աղօթից , և թէ որպէս ետու զանձն իմ 'ի ձգնու-

թիւնս, հրամայեաց հրեշտակի իւրոյ սրբոյ սպասաւո-
րել ինձ զօր ըստ օրէ կերակրիւքն և ջուր չափաւոր առ
'ի հաստատութիւն մարմնոյ իմոյ։ Այլ արմաւենին այն
բերէ երկոտասան բազուկ յամենայն ամի, որ լինի ինձ
ամսոյ ամսոյ բաւական մի մի 'ի նոցանէ։ Զայդոսիկ
ճաշակելով հանդերձ բանջարովք անապատիս, որ լինին
խնամածութեամբն այ, քաղցր առաւել քան զխորիսխ մե-
ղու, որպէս և գրեալ է՝ թէ ոչ հացիւ կեցցէ մարդ։
Այլ եթէ առնիցես, ով եղբայր Պափնուտիէ, զկամս
տեառն մերոյ, ընդունիս զօգնականութին նորա. քանզի
ասէ 'ի սուրբ աւետարանին իւրոյ՝ թէ մի հոգայցէք
զինչ ուտիցէք կամ զինչ ըմպիցէք, քանզի տէրն ձեր
և հայրն երկնաւոր գիտէ զպէտս ձեր և զկարիս. այլ
խնդրեցէք նախ զարքայութին այ և զարդարութիւն, և
այդ ամենայն յաւելցի ձեզ։

Զայսոսիկ իմ լուեալ յերանելի ծերունւոյն Ոնո-
փրէոսէ՝ զարմացայ յոյժ և ասեմ. ո հայր պատուական,
աղաչեմ զքեզ զի ասասցես ինձ և զայդ՝ եթէ 'ի շա-
բաթու և 'ի կիրակէի ուստի առնուցուս հաղորդութին։
Այլ նա ասէ ցիս. որդեակ, հրեշտակ տեառն բարերարի
մերձ լինելով առ իս սպասաւորէ ինձ ածայինն խորհըր-
դին. և ոչ միայն ինձ, այլ և զամենեսեան հաղորդե-
ցուցանէ որք բնակեալ իցեն յայսմ անապատի վասն
տեառն, որք ոչ տեսանեն զմարդ, և ուրախութեամբ լնու
զամենեսեան։ Այլ եթէ ոք 'ի նոցանէ կարօտանայցէ
տեսանել զմարդ, վերամբառնայ զնա յերկինս առ 'ի
տեսանել նմա զամենայն սուրբս և ողջունել զնոսա, և
այսու պայծառանայ հոգի նորա իբրև զլոյս և ուրախա-
նայ հոգւով և մարմնով և բերկրի յոյժ և ցնծայ բա-
րեացն արժանաւորելով որք ոչ սպառին յաւիտեան,
մինչև մոռանալ նմա զամենայն աշխատութիւս և զվաս-
տակս զոր կրեալ իցէ յանապատին. և յետ այնորիկ
դարձուցանէ զնա 'ի տեղի իւր՝ մնալով 'ի տեղւոջն ու-
րախութեամբ, և ճգնի բազում յօժարութեամբ զաւուրս կե-
նաց իւրոց՝ զմտաւ ածելով եթէ փոխելոց է յայն աշ-
խարհ և ընդունելոց է զայնպիսի պարգևսն զոր ետես
աչօքն իւրովք, և ոչ զմտաւ ածէ բնաւ թէ իցէ 'ի կեն-
ցաղումս։ Զայսոսիկ ամենայն սուրբ. հայրն Ոնոփրէոս
պատմեաց ինձ մինչդեռ նստէաք առ ոտս լերինն 'ի ներ-
քոյ վիմին 'ի տեղւոջն յորում հանդիպեցայ նմա։

Եւ իբրև լուայ զայս ամենայն, լցայ բազում ուրախութեամբ, և մխիթարեցայ յինէն բազում աշխատութիւնն զոր կրեցի 'ի ճանապարհին յայնմիկ, և զքաղցն և զծարաւ բնաւ ոչ ինչ համարէի և կամ զմտաւ ածէի, և զօրացայ յոյժ հոգւով և մարմնով, և լցեալ բազում զուարճութեամբ ասեմ ցնա. երանի է քեզ, ով հայր պատուական, որ արժանաւորեցայ տեսանել զքեզ և լսել 'ի քէն զպայծառ բարի և զքաղցր բանս՝ որ եղեն քեզ առիթ փրկութեան և օգնականութեան: Եւ նա ասէ ցիս. արի, որդեակ, այժմ զի երթիցուք 'ի միասին: Եւ ոչ սակաւ զարմացեալ և զքանչանայի ընդ փառս տեսլեան երանելի սուրբ հօրն Ոնոփրեոսի: Եւ իբրև չոգաք մղոնս երկու կամ երեք, հասաք առ դուրս խցի միոյ փոքու՝ որ կայր առ նմա ծառ մի արմաւենի. և յաղօթս կացեալ 'ի տեղւոջն հանդերձ ինև, և իբրև կատարեցաք զաղօթսն՝ ասաց զամէնն: Յետ այսորիկ նստաք և կացաք զտիւն ամենայն պատմելով միմեանց զշնորհս Այ բարերարութեան: Իսկ 'ի սպառել տուընջեանն և մտանել արեգականն՝ հայեցեալ տեսաք 'ի մէջ խցին զի եդեալ կայր նկանակ մի հաց և սակաւ ջուր: Եւ ասէ ցիս ծերունին այն երանելի. արի, որդեակ, ճաշակեսցուք սակաւ մի հաց և ջուր զոր եդեալ կայ առաջի, քանզի տեսանեմ զքեզ մերձ եղեալ 'ի մահ 'ի քաղցոյ և 'ի ծարաւոյ և յաշխատութենէ ճանապարհիդ: Եւ ասեմ ցնա. կենդանի է տէր և փրկիչն իմ Յս զի ոչ ճաշակեմ և ըմպեմ, եթէ ոչ 'ի միասին արձակեսցուք զձեռս մեր և ճաշակեսցուք: Եւ բազում անգամ աղաչեցի զնա և հազիւ կարացի հաւանեցուցանել մխել զձեռն իւր ընդ իս, և բեկեալ զհացն ճաշակեցաք 'ի միասին մինչև յագեցաք, և յաւելաւ մեզ 'ի հացէ անտի. և գոհացեալ զԱյ կացաք զգիշերն ամենայն յաղօթս:

Եւ իբրև այգ եղև, տեսի զնա 'ի ժամ աղօթիցն առաւօտուն զի այլագունեալ պայծառացան երեսք նորա իբրև զարեգակն և այլափոխեալ եղև 'ի կերպարանս հրեշտակի Այ: Եւ զայն տեսեալ իմ՝ զարհուրեցայ յոյժ և երկեայ, և նորա իմացեալ զայս ասէ ցիս. մի երկնչիր, եղբայր Պափնուտիէ, քանզի որ յամենայնի գթած և մարդասէր Այն է՝ նա առաքեաց զքեզ առ իս զի առ փոփկեսցես զնշխարս մարմնոյ իմոյ, զի ահաւասիկ յայսմ

աւուր կատարեմ զընթացս վաստակոց իմոց․'ի տէր 'ի Հանգիստն յաւիտենականն ։ Այլ է օրս այս ըստ թուոյ ամենայնն եգիպտացւոց որ է պունի՝ տասն և վեց, և ըստ յունականին՝ երկոտասան օր յունիս ամսոյ ։ Դարձեալ պատուիրեաց ինձ և ասէ․ եթէ եղանիցես յերկիրն եգիպտացւոց, եղբայր Պափնուտիէ, քարոզեա զյիշատակս իմ 'ի խունկս անուշահոտութե՟ 'ի մէջ եղբարց և ամենայն հաւատացելոց․ զի եթէ ոք յանուն իմ մատուսցէ պատարագ տեառն ա՟յ իմոյ յամենայն տեղիս, համարեսցի զնա տէր յառաջին ժամուն 'ի սկզբանն, քանզի այս են խնդրուածք իմ զոր խնդրեցի 'ի տեառնէ ։ Այլ եթէ ոք կերակրէ զեղբայր զոք յանուն իմ, յիշեսցիս զնա յիշատակաւ առաջի ա՟յ, զի արժանի արասցէ զնա տէր հասանել յառաջին ժամու 'ի սկզբանն ։ Այլ ես պատասխանի տուեալ ասեմ ցնա․ եթէ ոք աղքատ իցէ և ոչ ունիցի կարողութի՟ մատուցանել պատարագ և կամ կերակրել զեղբայր ոք յաւուր յիշատակի քո, այնպիսին յառաջին ժամու 'ի սկզբանն ո՞չ լինիցի ։ Այլ նա ասէ․ եթէ սակաւ խունկ արկանիցէ յանուն իմ տեառն 'ի հոտ անուշութե՟, արժանաւորեսցի նոյնպիսի ուրախութե՟ ։ Համարձակեցայ և զայս ինչ հարցանել ցնա․ եթէ ոք ընակեալ իցէ յանապատի և ոչ կարիցէ գտանել խունկս և արկանել տեառն 'ի հոտ անուշութե՟, ո՞չ համարեսցի այնպիսին յառաջին ժամու 'ի սկզբանն ։ Մանաւանդ, հայր պատուական, աղաչեմ զի հասցէ առ ամենեսեան աղօթք արդարութեան քո․ քանզի գիտեմ եթէ զոր ինչ խնդրեսցես յա՟յ, տացէ քեզ ա՟ծ․ և ոչ ընդունայն լինին խնդրուածք քո յաղագս հանապազորդ և անդադար աղօթից քոց և ծառայութեան քո տեառն զոր յայսմ վաթսներորդ ամի կրեալ համբերութե՟ ամենայնի վասն տեառն բնակելով յայսմ անապատի ։ Այլ նա ասէ ցիս․ եթէ ոք աղքատ է և բնակեալ իցէ յանապատի և ոչ կարիցէ առնել պատարագ կամ մատուցանել խունկ, յարիցէ այնպիսին ասասցէ զհայր մեր որ յերկինսդ ես՝ մինչև յամէնն, յանուն իմ մատուցանելով տեառն․ և ես յիշեցից զնա առաջի տեառն աղօթս առնելով վասն նորա, զի արժանաւորեսցի ողորմութե՟ տեառն առաջին ժամուն 'ի սկզբանն, և ընդ արդարս ամենայն զվարձս ժա-

ռանգեսցէ։ Եւ ես դարձեալ ասեմ ցնա. Հայր սուրբ, եթէ արժանի իցեմ, յօժարութիւն սրտի իմոյ բնակե-ցայց յայսմ տեղւոջ զկնի ելանելոյ քո 'ի մարմնոյդ։ Եւ նա ասէ ցիս. ոչ եկիր յիրս գործոյդ այդորիկ, այլ երթ՝ ա՟ծ առաքեաց զքեզ զի զսուրբս նորա փառաւո-րեսցես զբնակեալսն յայսմ անապատի, և քաջալերեսցես զբուրումն վարուց նոցա 'ի մէջ եղբարց ա՟ծասիրաց առ 'ի յօգտութիւն և 'ի փառաբանութիւն հաւատացելոց լսո-ղաց։ Արդ երթ, որդեակ, յԵգիպտոս և կացցես անդ 'ի գործ բարեաց ծառայելով տեառն, և քաջալերեսցես զամենայն զոր ինչ տեսեր յայսմ անապատի։

Զայս ամենայն ասելով պատուական ծերունւոյն Ո-նոփրէոսի՝ նոյնժամայն անկայ առ ոտս նորա և ասեմ. աղաչեմ զքեզ, հայր պատուական, օրհնեա զիս զի գտից ողորմութիւն առաջի ա՟յ, և որպէս արժանի արար զիս փրկիչն մեր Ք՟ս տեսանել զքեզ յայսմ աշխարհի և երկիր պագանել, սոյնպէս արժանաւորեսցէ զիս 'ի հան-դերձելումն հանդիպել քեզ։ Եւ նա ասէ ցիս. որդեակ Պափնուտիէ, տէր ոչ ընդունայն առնիցէ զխնդրուածս քո, այլ օրհնեսցէ զքեզ և հաստատեսցէ զքեզ 'ի սէր իւր և լուսաւորեսցէ զմիտս քո լուսով ա՟ծութեան իւրոյ և փրկեսցէ զքեզ յամենայն ապականութենէ և յորոգայ-թից թշնամւոյն և կատարեսցէ զընթացս քո 'ի բարի և պահպանեսցէ զքեզ հրեշտակօք իւրովք, օգնական լինելով քեզ յամենայն մարտս պատերազմի բանսար-կու թշնամւոյն, և ոչ ինչ գտանի նորա յանդիմանել զքեզ 'ի ժամու ահեղին յորժամ կացցես առաջի ա՟յ և առնիցես պատասխանի ամենայն վարուց։ Եւ յետ այ-նորիկ յարուցեալ երանելւոյն եկաց յաղօթս առ ա՟ծ ար-տասուօք և բազում հեծեծանօք, և սակաւիկ մի խո-նարհեցոյց զանձն իւր յերկիր, կատարեցաւ 'ի տէր, ա-ւանդեալ զհոգին սուրբ 'ի ձեռս ա՟յ ուրախութեամբ մեծաւ։ Եւ նոյնժամայն լուայ ձայն հրեշտակաց սրբոց բարձր բարբառով, որ օրհնէին զա՟ծ երթալով առաջի հոգւոյն Ոնոփրէոսի։ Եւ եղև ուրախութիւն մեծ 'ի ժամու հան-դիպման հոգւոյ նորա առաջի ա՟յ։ Եւ իմ յարուցեալ մերկացայ յինէն զաղաբողմն զոր զգեցեալ ունէի, և քակեալ բարժանեցի յերկուս, և զմի մասն արկի 'ի վերայ սուրբ մարմնոյ նորա և ծածկեցի ըստ կարգի պա-

տանաց, և զմիւսն առկի զինե զի մի մնացից մերկ։ Այլ զոտի վէմ մի փորեալ իբրև զգերեզման և եդի անդ ըզմարմին սրբոյն, և ժողովեալ քարինս մեծամեծս ծածկեցի զսուրբ նշխարս նորա։

Այլ յետ այսորիկ յարուցեալ յաղօթս կացի, խնդրելով 'ի տեառնէ զի մնացից անդէն 'ի տեղւոջն. և նոյնժամայն տեսի զխուց սրբոյն 'ի վայր կործանեալ, և զարմաւենին յորմէ կերակրէր երանելին՝ անկեալ։ Զայն իբրև տեսի այնպէս եղեալ, վաղվաղակի զարմացայ յոյժ և ծանեայ եթէ ոչ են կամք այ բնակել ինձ յայսմ[1] տեղւոջ. Ճաշակեցի զմնացեալ հացն, ընդ նմին և զորբի զջուրն. և դարձեալ համբարձի զձեռս իմ յերկինս և յաղօթս կացեալ տեսանեմ զի գայր առ իս այրն այն զոր տեսի յառաջագոյն մինչդեռ գայի զճանապարհ անապատին։ Այլ նորա զօրացուցեալ զիս՝ գնալով առաջի իմ անդրէն, զի տրտմեալ էի յոյժ յաղագս վախճանի երանելւոյն Ոնոփրեսի. և դարձեալ լի եղև ուրախութեամբ անձն իմ, վասն զի 'ի սուրբ բերանոյ նորա օրհնութեան արժանաւորեցայ։ Այլ չորեք զաւուրս չորս և երկեալ հասի առ դուռն խցի միոյ՝ որ էր շինեալ 'ի բարձրաւանդակ տեղւոջ, և մտեալ 'ի ներքս ոչ զոք գտի, և նստայ առ դրանն սակաւ մի, վարանեալ 'ի խորհուրդս իմ ասէի՝ եթէ իցէ՞ ոք բնակեալ յայսմ տեղւոջ՝ յորում եբեր զիս այրն այն։

Այլ մինչդեռ խորհէի զայս 'ի սրտի իմում, եկն այր մի սուրբ և պատուական կատարեալ ալեօք, որոյ և տեսիլն սքանչելի և վայելուչ. ունէր համդերձս հիւսածոյս 'ի տերևոց արմաւենեաց և այնու ծածկեալ էր մարմին նորա։ Իբրև ետես զիս, առժամայն խօսեցաւ ցիս և ասէ. դո՞ւ իցես եղբայրն Պափնուտիոս՝ որ ամփոփեցեր

1 յայսմ տեղւոջ։ Ցայսժամ զգացեալ զանձնատուութիւն սրբոյն ոչ յենէն, որում տեսութիւն և լուսաւոր բանիւն զսարձեցեալ՝ մտացեալ էի զաշխատութիւն ճանապարհին, զոր սաղմոսիւք և օրհնութիւ և հեկեկեալ արտասուօք եդի 'ի գերեզմանի։ Դարձեալ արտասուօք համբարձի զձեռս իմ յերկինս և յաղօթս կացի առ տէր. և մինչդեռ յաղօթսն էի տեսի զի այրն այն՝ զոր տեսի յառաջագոյն մինչդեռ գայի ըզճանապարհն անապատին՝ եկեալ առ իս զօրացոյց զիս և միսիթարեաց ասելով. երանելի եղեր առաւել զի կատարման սրբոյն Ոնոփրիոսի հանդիպեցար, զի տրտմեալ էի . . . արժանաւորեցայ։ Եւ փառաւոր այրն այն գնալով առաջի իմ անդրէն չոգաւ։

զմնացորդին երանելւոյն հօրն մերոյ Ոնոփրեսի։ Այլ ես ծանեայ եթէ 'ի ձեռն հրեշտակի ազդեալ իցէ նմա եղեալ գործն, և յարուցեալ անկայ առ ոտս նորա և երկիր պագի նմա։ Այլ նա ասէ. արի կաց, եղբայր, քանզի ած արժանաւորեաց զքեզ լինել բարեկամ սրբոց և ծառայից իւրոց. և աՀաւասիկ ծանուցաւ ինձ 'ի նախախնամութենէ նորա գալուստ քո այսօր առ մեզ, զի յայտնեսցիս քեզ, եղբայր սիրելի, զգործս վարուց մերոց. զի այս վաթսուն ամ է յորմէ հետէ բնակեալ եմք յայսմ անապատի և բնաւ ոչ եմք տեսեալ զմարդ որ գայցէ առ մեզ, բայց միայն զմիմեանս որք բնակեալ եմք յայսմ տեղւոջ։

Այլ մինչդեռ խօսէաք ընդ միմեանս, եկին հասին առ մեզ այլ ևս երիս անձինս՝ որք էին սուրբք և պատուականք ծերագոյն ժամանակօք, և նոյնժամայն խօսեցան ցիս և ասեն. օրհնեա, տէր, դու իցես Պափնուտիոս եղբայր և գործակից մեր 'ի տէր, որ և ամփոփեցեր զպատուական մարմին սրբոյն Ոնոփրեսի. թողութիւն արա, եղբայր, քանզի մեծամեծ շնորհաց և փառաց արժանաւորեցար, և տէր ողորմութեամբ իւրով ծանոյց մեզ զգալուստ քո առ մեզ յայսմ աւուր, և հրամայեաց մնալ քեզ առ մեզ միօրեայ ժամանակ։ Այլ այս վաթսուն ամ է յորմէ հետէ բնակեալ եմք յայսմ անապատի և բնաւ ոչ եմք տեսեալ մարդ զոք, բայց միայն զքեզ։ Այլ սկսաք խօսել ընդ միմեանս յաղագս երանելւոյ սրբոյ հօրն Ոնոփրեսի և այլոց սրբոցն իբրև ժամս երկու։ Այլ յետ այսորիկ ասեն ցիս. արի, եղբայր, ճաշակեա սակաւ մի հաց և հաստատեսցի սիրտ քո, վասն զի 'ի հեռաստանէ եկեալ ես առ մեզ, և յոյժ փոյթ է մեզ ուրախանալ ընդ քեզ այսօր։ Այլ իբրև յարեաք կացաք յաղօթս 'ի միասին առ ած, և աՀա տեսի եդեալ առաջի մեր նկանակս հինգ ջերմ և փափուկ յոյժ և գեղեցիկ, որպէս թէ առժամայն իցէ եփեալ։ Նոքին և այլ ինչս կերակրոց ըստ պիտոյից անապատին. և նստաք ամենեքեան և ճաշակեցաք 'ի միասին։ Իսկ նոքա դարձեալ ասեն ցիս. աՀաւասիկ այսօր, որպէս և ասացաք քեզ եթէ վաթսունամեայ ժամանակ ունիմք բնակեալ յայսմ անապատի, և 'ի հրամանէ տեառն այ մերոյ պատրաստեալ լինի մեզ կերակուր յերկնից աւուրն նկանակս չորս. իսկ

այժմ 'ի գալստեանդ քո, եղբայր, յաւելաւ 'ի թիւ նկանակացս առաքելով քեզ 'ի տեառնէ. և ոչ գիտեմք ուստի գայցէ կամ ով պատրաստիցէ, այլ միայն իբրև մտանեմք յայրս յայս՝ գտանեմք զսոսա պատրաստեալ 'ի տեառնէ, որով կերակրիմք և գոհանամք զնմանէ։ Եւ այսպէս ճաշակեցաք 'ի միասին և կացաք զգիշերն ամենայն մինչև յառաւօտն յաղօթս առ այ՝ կարգաւորութիւն մեծ կատարելով, զի էր այգուցն լուսանալոյ առաւօտուն միաշաբաթու կիւրակէին։ Եւ իբրև այգ եղև, աղաչեցի զնոսա մնալ ինձ առ նոսա 'ի նմին տեղւոջն մինչև ցվախճան կենաց իմոց։ Եւ նոքա ասեն ցիս. ոչ է հրամայեալ քեզ 'ի տեառնէ բնակել յայսմ անապատի և կամ լինել ընդ մեզ, այլ յայտնեցեալ երթիցես յԵգիպտոս և պատմեսցես քնասէր եղբարց զամենայն զոր տեսեր վասն յիշատակի մերոյ և վասն յիշատակի հօրն մերոյ երիցս երանելւոյ Ոնոփրեայ առ յօգտութիւն լսողաց։ Եւ զայս նոցա ասելով ցիս՝ աղաչեցի զնոսա յոյժ զի ծանուսցեն ինձ զանուանս իւրեանց, և նոքա ոչ առին յանձն պատմել ինձ։ Եւ դարձեալ աղաչեցի զնոսա յոյժ աշխատ առնելով և ոչ կարացի հաւանեցուցանել զնոսա զի ասասցեն ինձ զանուանս իւրեանց, այլ միայն ասեն ցիս. նա որ յամենայնի գիտողն է՝ ճանաչէ զանուանս մեր. այլ դու յիշեա զմեզ, եղբայր, զի արժանի լիցուք տեսանել զմիմեանս 'ի գաւիթս այ կենդանւոյ. և փութա, որդեակ մեր սիրելի, փախչել 'ի փորձութեանց կենցաղոյս և մի լինել քեզ ծաղր 'ի նոցանէ, վասն զի զբազումս խաբեցին 'ի միայնակեցաց։ Զայսոսիկ իմ լուեալ 'ի նոցանէ, անկայ առ ոտս նոցա և օրհնեցայ 'ի նոցանէ և ելեալ գնացի խաղաղութեամբ այ։ Ասացին ինձ և այլ իրս բազումս, որ եղեն ամենայն և կատարեցան։

Արդ իբրև մեկնեցայ ես 'ի նոցանէ և գնացի ես 'ի ներքսագոյն կողմ անապատին աւուր միոյ ճանապարհ, հասի առ դուռս այրի միոյ յորմէ բխէր աղբիւր ջրոյ յորդաբուխ, և նստայ անդ զի հանգեայց սակաւ մի յաշխատութեանց ճանապարհին, և տեսի զտեղին աչագեղ յոյժ՝ զի էին 'ի նա ծառատունկ բազում շուրջ աղբերին լցեալ պտղօք։ Եւ իբրև հանգեայ սակաւուկ մի, յարուցեալ մտի 'ի մէջ ծառոցն տեսանել զայնպիսի

գործ սքանչելի, և զարմանայի յոյժ ընդ բազում պտու-ղաբերութիւն նոցա, և վարանեալ 'ի սրտի իմում եթէ ո՞ իցէ զոտս տնկեալ յայսմ անապատի, զի էին պտղաբերքն ծառոցն բազում յոյժ՝ արմաւ և Թրունջ[1]՝ և նուռն և Թութ և դեղձ և յունապ, այգիք և Թզենիք և ամենայն լցեալ պտղովք, բազում և այլ պէսպէս ծառք պտղաբերք՝ որոց ճաշակն քաղցր իբրև զմեղր. ընդ նոսին և մուրտ և այլ բազում անուշահոտ համադամք 'ի մէջ այնր ծառոց, յորմէ բուրէր հոտ անուշութե̄. և աղբիւրն այն ոռոգանէր զամենայն, մինչև կարծել ինձ եթէ դրախտն ա̄յ իցէ այն:

Այլ մինչդեռ հիացեալ և զարմացեալ կայի ընդ տեսիլ գեղեցկութե̄ տեղւոյն այնորիկ, և ահա տեսանեմ մանկունս չորս գեղեցիկս և վայելուչս զի գային 'ի հեռաստանէ հանդէպ տեղւոյն յորում կայի, և էին սփածեալ մորթս ոչխարաց: Նորա մերձ եղեալ տեսին զիս, ասեն ցիս. ողջ լեր, եղբայր Ոնոփրիէ, և ես անկեալ յերկիր 'ի վերայ երեսաց իմոց երկիր պագի նոցա, և նոքա մերձ եղեալ յարուցին զիս, և նստաք առ միմեանս և խօսեցաք ընդ իրեարս. և էին փառաւորք յոյժ տեսլեամբ, մինչև կարծել ինձ զնոցանէ եթէ հրեշտակք իցեն իջեալ յերկնից. որք և բազում ցնծութ̄ ուրախացան ընդ իս, և բերեալ 'ի պտղոց ծառոցն այնոցիկ՝ եդեալ առաջի իմ մեծարելով զիս ճաշակել, և յոյժ բերկրեցաւ սիրտ իմ վասն այնպիսի ա̄ծային սիրոյ և խնամոց նոցա 'ի վերայ իմ: Այլ կացի առ նոսա զաւուրս եօթն կերակրելով 'ի պտղոյ ծառոցն այնոցիկ: Հարցի ցնոսա և ասեմ՝ թէ ո՞րպէս եղև գալուստ ձեր 'ի տեղիս յայս, և կամ յորմէ՞ գաւառէ իցէք: Այլ նոքա ասեն ցիս. եղբայր, յորմէ հետէ առաքեաց զքեզ ա̄ծ առ մեզ, զամենայն ինչ վասն մեր պատմեսցուք քեզ: Մեք եմք 'ի քաղաքէն՝ որ կոչի Ոքսիրինքոս, և ծնողքն մեր խորհրդականք էին քաղաքին այնորիկ և փոյթ ունէին ուսուցանել մեզ զգիտութիւն և զուսմունս ըստ գնացից իւրեանց և ետուն զմեզ յուսումն 'ի միասին և ուսաք զմնատի ուսմունս իմաստութե̄ կենցաղոյս և կատարեցաք զամենայն: Սկսաք ուսանել և զբարձրագոյն

1 Թուրինջ.

խնամատուԹեն Քնի այ, և եղաք համախոհք միմեանց, և տէր օգնական լինէր մեզ 'ի բարիսն : Այս խորհեցաք ուսանել և զկատարելապաշտութե վարս կրօնաւորուԹեան . և յայնմհետէ հանապազօր խորհուրդք մտաց մերոց յօժարուԹեամբ մեծաւ 'ի նոյն յորդորէին զմեզ : Իսկ այնպիսի խորհրդոյս բարեաց ունելով 'ի մտի մերում չոգաք յանապատն կոյս՝ փուԹացեալ գտանել մեզ տեղի և անդ լինել 'ի լռուԹե սակաւ աւուրս, մինչև ճանաչել և գիտել զոր ինչ յայ առ մեզ նախախնամուԹն լինիցի : Առաք ընդ մեզ հաց սակաւ և ջուր չափաւոր յաղագս պիտոյից մերոց, որ բաւական լինէր մեզ զաւուրս եօԹն : Իսկ հասաք 'ի ներքսագոյն կողմ անապատին, և եղաք իբրև 'ի տեսլեան, և տեսանեմք այր մի փառաւորագոյն զի կայր առաջի մեր և կալաւ զձեռանէ մերմէ և եբեր զմեզ մինչև 'ի տեղիս յայս, և յանձն արարեալ զմեզ առն միում ծերունւոյ ծառայի այ, և ահաւասիկ այս վեց ամ է յորմէհետէ եկաք 'ի տեղիս յայս և կացաք ընդ առն այնորիկ ամ մի՝ ուսանելով 'ի նմանէ զամենայն կրօնս ածպաշտուԹեան Թէ որպէս պարտ է ծառայել այ : Իսկ 'ի սպառել ամին այնորիկ կատարեցաւ սուրբ հայրն այն 'ի Քնս բարի քաղաքավարուԹբ, և յայնմհետէ մեք միայն մնացաք 'ի տեղիս յայս : Իսկ ահաւասիկ, եղբայր մեր սիրելի, խոստովանեցաք վեցամեայ ժամանակօք լինել մեզ յայսմ տեղւոջ որպէս յառաջագոյն ասացաք : Իսկ ոչ գիտեմք զճաշակ հացի կամ այլ ինչ կերակրոց, բայց միայն զպտուղ ծառոցս այսոցիկ . և յամենայն շաբաԹու մի անգամ տեսանեմք զմիմեանս : Իսկ այսպիսի օրհնական ժողովիմք յայսմ տեղւոջ հանդէպ միմեանց յաւուր շաբաԹու և սրբոյ կիւրակէի, և յետ երկուց աւուրցն այնոցիկ իւրաքանչիւր ոք երԹայ 'ի տեղի իւր առանձինն և անդ փառաւորէ զած կատարելով զկարգ իւր :

Հարցի ցնոսա և ասեմ. և ուստի հաղորդիցիք յաւուր շաբաԹու և կիւրակէի : Իսկ նոքա ասեն . վասն այսորիկ ժողովիմք 'ի տեղւոջս յայս յամենայն շաբաԹու և կիւրակէի, զի հրեշտակ լուսոյ առաքի առ մեզ 'ի տեառնէ և հաղորդեցուցանէ զմեզ 'ի խորհրդոյն սուրբ : Իսկ յոյժ ուրախացեալ բերկրեցաւ ոգիս իմ իբրև լուայ զբանս զայս, զի ոչ Թաքուցին յինէն, և փափագէի յոյժ

երանութեան այնմիկ տեսանել։ Այլ զկնի աւուրցն եօթանց մինչ կայի 'ի տեղւոջն և եհաս օր շաբաթուն, տեսի զիս երանելիքն այնոքիկ. պատրաստեա զանձն քո, ով եղբայր սիրելի, զի ահա յայսմ աւուր գայ հրեշտակ տեառն այ մերոյ և տայ մեզ զխորհուրդն անապականն և կենդանարար հանդերձ քև. և որ ընդունի զնա 'ի ձեռաց նորա, պահպանի 'ի թշնամւոյն և թողցին նմա ամենայն մեղքն իւր, և յայնմհետէ ոչ է հնար փորձիլ նմա յամենայն մեքենայից թշնամւոյն։ Այլ մինչդեռ նոքա զայս ասէին, բուրեաց հոտ անուշութեան խնկոց՝ մինչև զարմացեալ իմ՝ զի ոչ էի բնաւ ամենևին այնպիսի առեալ հոտ անուշութե խնկոց։ Այլ 'ի նմին ժամու յարեաք վաղվաղակի կացաք յաղօթս սաղմոսելով և բարեբանելով զԹագաւորն մեր Քս մինչև 'ի ժամ աւուրն իններորդի։ Այլ ահաւասիկ եկն եհաս հրեշտակ տեառն առ մեզ և արժանաւորեցոյց զմեզ ընդունել զկենարար սուրբ խորհուրդն մարմնոյ և արեան տեառն մերոյ և փրկչին Յսի Քսի։ Այլ զկնի հաղորդութեան օրհնեցաք 'ի փառաւոր հրեշտակէն, և նա համբարձաւ 'ի յերկինս առաջի մեր։ Այլ իբրև արժանաւորեցայ ես այնպիսի մեծ շնորհաց, զարհուրեցայ յոյժ, և իբրև 'ի քուն թմբրութե նիրհեցի բազում ժամս։ Իսկ նոքա մատուցեալ ձայն ետուն ինձ և ասեն. արի, եղբայր, զօրացիր և լեր այր զօրաւոր 'ի տէր, քանզի երեկոյ եղև։ Այլ հազիւ կարացի յառնել 'ի թմբրութենէն և յերկիւղէն որ անկաւ 'ի վերայ իմ՝ առաւել յանուշահոտութէ բուրման խնկոցն։ Այլ դարձեալ կատարեցաք զգիշերն զայն ամենայն կալով յաղօթս և 'ի սաղմոսերգութե՝ փառաւորելով զտէր ած մինչև ցառաւօտն այգանալոյ սուրբ կիւրակէին։ Այլ իբրև մերձեցաւ առաւօտ աւուրն այնմիկ մեծի, դարձեալ բուրեաց նոյն հոտ անուշութե խնկոցն, և լցաք 'ի նմանէ ուրախութբ մեծաւ՝ համարելով զմեզ որպէս թէ չիցեմք յաշխարհի, այլ 'ի լցման կենաց։ Այլ յետ այսորիկ եկն մերձեցաւ 'ի մեզ հրեշտակն տեառն այ որպէս յառաջագոյն, և դարձեալ հաղորդեցոյց նոցա զխորհուրդն սուրբ. և ես զօրացեալ սրտիւ և հոգւով ընկալայ զահաւոր օրհնութե և զսուրբ խորհուրդն 'ի ձեռաց նորա։ Այլ օրհնեաց զմեզ զամենեսեան զիւրաքանչիւր ոք 'ի մէնջ և ասէ.

եղիցի ձեզ մարմինս այս և արիւնս տեառն Յ՟ի Ք՟ի և ծ՟յն մերոյ կերակուր անապական կենդանութեան և փրկութե՟ ՚ի կեանսն յաւիտենից ։ Եւ մեք առացաք եր-կիւղիւ՝ ամէն ։ Եւ եղև ուրախութի մեծ սրտից մերոց՝ արժանաւորեալք այնպիսի փառաց ։

Եւ յետ այսորիկ դարձաւ հրեշտակն յիս կրկին և ա-սէ . երթ այսուհետև յԵգիպտոս խաղաղութ՟բ յանա-պատէս յայսմանէ և վարդապետեա զամենայն զոր ինչ տեսեր՝ ք՟սասէր . եղբարց , զի և նոքա փութասցեն սի-րել զգործս բարիս և յանձինս իւրեանց ընդունել՝ փա-ռաւորելով զբնակեալն յանապատի վասն անուան տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի ։ Մանաւանդ քարոզեա զհրամայեալսն քեզ ՚ի սրբոյն Անտոնէոսէ զոր արժանաւորեաց զքեզ տէր տեսանել զնա յերկրի և երկիր պագանել նմա և ամփոփել զսուրբ մարմին նորա ՚ի պատրաստեալ վիմին . զի ահաւասիկ և վասն այսորիկ կոչեցար դու ՚ի տեառ-նէ և օրհնեցար դու ՚ի նմանէ և յայլոց սրբոց և հա-մարեցար ՚ի թիւ նոցա ։ Եւ ես բազում թախանձանօք աղաչեցի զնա զի թողութի շնորհեսցէ ինձ բնակել ընդ նմա մինչև ՚ի վախճան կենաց իմոց ։ Եւ նա ասէ ցիս . որպէս հաճոյ եղև ա՟յ , այնպէս հրամայեաց բնակել իւ-րաքանչիւր ումեք յիւրում տեղւոջ . և արդ ամենայն գործ որ ՚ի տեառնէ իցէ հրամայեալ , բարի է և ընդու-նելի , և ամենեքեան մտանեն ՚ի գաւիթս ա՟յ և առնու-ցուն զփոխարէնսն հարիւրապատիկ ըստ վաստակոցն ։ Արդ երթիցես յաշխարհն եգիպտացւոց , քանզի այս-պէս հրամայեաց ինձ տէր առաքել զքեզ անդր ։ Եւ զայս ասացեալ հրեշտակին օրհնեաց զմեզ և համբար-ձաւ յերկինս մեծաւ փառօք և զօրութ՟բ որպէս և տե-սանէաք աչօք մերովք ։ Եւ նոքա դարձեալ բերին ՚ի պտղոցն յայնցանէ , և ճաշակեցաք ՚ի միասին և այնպէս գնացաք զճանապարհ անապատին իբրև մղոնս վեց , և ողջոյն տուեալ կամէաք հրաժարել ՚ի միմեանց ։ Եւ աղաչեցի զնոսա զի ասասցեն ինձ զանուանս իւրեանց ։ Եւ ասէ անդրանիկն . Յովհաննէս է անուն իմ , և երկ-րորդին՝ Անդրէաս , և երրորդին՝ Իուակլամոն , և չորրորդին՝ Փիլոթէոս ։ Եւ պատուէր տուեալ ինձ պատմել զա-նուանս նոցա ՚ի մէջ եղբարց առ ՚ի յիշատակ նոցա , և ես աղաչեցի զնոսա յիշել զիս . և հրաժարեցաք ՚ի մի-

մեանց։ Այլ իբրև անյայտ եղեալ ծածկեցան յինէն, տրտմեցայ յոյժ գնալով զճանապարհն իմ, և վարանեալ ընդ միտս իմ զարմանայի ընդ սքանչելիսն զոր տեսի աչօք իմովք. և դարձեալ լնուի մեծաւ խնդութեամբ ընդ իրսն որ եղեն ինձ, զմտաւ ածեալ զարմանայի ընդ օրհնութեանցն արժանաւորութիւն զոր ընկալայ 'ի սուրբ հարցն անապատականաց և 'ի մեծէ հրեշտակէն տեառն։

Այլ եկեալ հասի յերկիրն եգիպտացւոց յետ ճանապարհորդութեան աւուրց երից, և գտի եղբարս աստուածասէրս և երկիւղածս 'ի տեառնէ և հանգեայ առ նոսա աւուրս տասն, և զամենայն որ ինչ տեսի՝ պատմեցի նոցա և զոր եղև ինձ։ Այլ նոքա ասէին յիս ամենայն ուրախութեամբ. Ճշմարիտ, եղբայր Պափնուտիէ, արժանաւորեցար տեսանել զմեծ և զկատարեալ սուրբս և զծառայս աստուծոյ։ Այլ էին եղբարքն այնոքիկ միայնակեացք և երկիւղածք 'ի տեառնէ յամենայն սրտէ և 'ի զօրութենէ իւրեանց. զոր իբրև լուան զասացեալ պատմութիւն սուրբ հարցն յինէն, 'ի նմին ժամու բազում փութով և յօժարութեամբ ընդ գրով արկին զամենայն, և վաղվաղակի առեալ ընթացան ընդ ամենայն Եգիպտ և պատմէին ամենեցուն զեղելոցն զոր գրեցին 'ի պատմելոյն յինէն։ Այլ իբրև ընթերցեալ լուան զայսոսիկ սուրբ հարքն, առեալ ընկալան զնա յեկեղեցի աստուծոյ՝ թողլով յիշատակ մեծ վասն օգտութեան և ուրախութեան ամենայն լսողաց հաւատացելոց։ Առաւելապէս փառաւորէին զԱստուած և զամենայն սուրբս իւր ընթեռնլով զնա յամենայն ժամ. վասն զի յոյժ լցեալ է հաւատովք և ցնծութեամբ և ուրախութեամբ, և յորդորէ 'ի բարիս զսիրտս լսողաց. զոր ես տառապեալս Պափնուտիոս ողորմութեամբն աստուծոյ արժանաւորեցայ տեսանել և պատմել։ Այլ եղիցի խաղաղութիւն և ողորմութիւն տեառն աստուծոյ մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ամենեսեան աղօթիւք և բարեխօսութեամբ ամենայն հաճոյացեալ սրբոյ իւրոց և երանելի սուրբ հարցն ճգնաւորաց *։

* Զնորոգող և զթարգմանիչ սրբոյ պատմութեանս զտէր Գրիգոր Հայոց կաթողիկոս յիշեսջիք 'ի Քս։ Իսկ թարգմանեցաւ 'ի թուականութեանս Հայոց ՌՃԹ ամին յաշխարհիս եգիպտացւոց 'ի փառս ամենասուրբ երրորդութեանն։

## ՎԱՐՔ

# ԵՐԱՆԵԼՈՅՆ ԱԲԲԱՅ ՄԱՐԿՈՍԻ

### ԵՒ ԿԱՏԱՐՈՒՄՆ ՆՈՐԻՆ ԵՒ

## ԽՕՍՔ ԱՌ ՍԵՐԱՊԻՈՆ

ՊԱՏՄԵԱՑ մեզ երանելին Սերապիոն մինչ էրն 'ի մէջ Սկիւթեայ որ է յԵգիպտոս, առ 'ի վախճանել ծերոյն այնորիկ ասէ: Տեսի տեսիլ մեծ ես յորժամ էի առ աբբայն Յովհաննէս մեծն ծերունի: Տեսանէի զի գային եղբարք երկու 'ի կերպարանս մենազնաց 'ի տունն Յովհաննու ծերունւոյ և հարցանէին զաբբայն՝ ո՞վ է սա որ ննջէ աստ: Իսկ ասէ ցնոսա ծերն. աբբայն Սերապիոն է: Իսկ ասեն ցմիմեանս. եկ որ ձեռնադրութիւն առնումք 'ի սմանէ: Իսկ ասէ ցնոսա աբբայն Յովհաննէս ծերունին. անսացէք սակաւ ինչ զի հանգիցէ, վասն զի այժմ եկն 'ի ճանապարհէ և վաստակեալ է և ննջէ: Իսկ ասեն ցնա. քանզի են ճանապարհք գնացից դորա, և կամ ընդէ՞ր ոչ իցէ երթեալ դորա առ աբբայ Մարկոս ծերունին՝ որ բնակեալն է 'ի լերինն Թարմակիայ, քանզի ոչ ոք է 'ի ժամանակիս յայսմիկ յամե-

Վարք աբբայ Մարկոսի միայնակեցի, որ բնակեալ էր 'ի լերինն Թարմակիա. զոր պատմեալ է Սերապիոնի աբբայ հօրն:

ՊԱՏՄԵԱՑ երանելին Սերապիոն մինչ էր նա 'ի Մեսնեայ՝ որ է 'ի միջադետս Եգիպտոսի, որ էր գնացեալ առ 'ի հրաժարել ծերոյն այնորիկ, և յետ վախճանի ծերոյն այնորիկ պատմեաց և ասէ: Տեսի տեսիլս յորժամ էի 'ի տան Յոհաննու մեծի ծերոյ. տեսանէի երկուս եղբարս զի գային 'ի կերպարանս մենազնաց 'ի տունն Յոհաննու և հարցանէին ցնա վասն իմ և ասէին. ո՞ է այս որ ննջէ աստ: Նա պատասխանի ետ և ասէ. աբբայ Սերապիոն է: Եւ նոքա ասեն ցմիմեանս. եկայք ձեռնադրութիւն առնումք 'ի սմանէ: Պատասխանի ետ աբբայ Յոհաննէս և ասէ ցնոսա. անսացէք ժամ մի որ հանգիցէ, վասն զի դեռ եկն 'ի ճանապարհէ և աշխատեալ է և ննջէ: Ասեն ցնա. և քանզի են ճանապարհ գնացից դորա, և կամ ընդէ՞ր ոչ իցէ երթեալ դորա առ աբբայ Մարկոս որ բնակեալ է 'ի լերինն Թարմակիայ, քանզի ոչ է 'ի ժամանակիս յայսմիկ 'ի մէջ մենազնաց 'ի հաւատս արքա-

նոյն բանակս միաբանեանց որ նմանէ սրբութեան նորա. և արդ ծերացեալ է նա և հասեալ յամս հարիւր և երեսուն, և ոչ ոք է հասեալ առ նա յեղբարց ամս իննսուն և հինգ. և յայսմհետէ գալոց են առ նա յերկրէն կենդանեաց արս քառասուն և վեց հարք, որք բնակեալ են յերկրին կենդանեաց, և տանին զնա առ հարեանս: Եւ իբրև զայս ասացին ծերունւոյն, զարթեայ և հայեցայ և ոչ զոք տեսի առ նմա: Յայնժամ պատմեցի ծերոյն զտեսիլն: Եւ նա ասէ ցիս. Ճշմարիտ տեսիլդ այդ յ̃յ է, բայց և ոչ լուեալ է իմ զլեառնն Թարմանկիա: Եւ ես ասեմ ցծերունին. Հայր սուրբ, աղօթս արա վ̃ իմ: Եւ աղօթս արարեալ՝ ողջունիւ յուղարկեցայ 'ի նմանէ:

Եւ չոգայ 'ի քաղաքն Աղեքսանդրիա, և էր նա յԱղեքսանդրէ հեռի իբրև երկոտասան աւուր ճանապարհ: Եւ 'ի ձեռն տեսլեանն առաջնորդութ̃ սուրբ հոգւոյն հասի յԱղեքսանդրիա մեծաւ տառապանօք, 'ի տուընջեան արեգակնակէզ և 'ի գիշերի անհանգիստ յաւուրս հինգ, և հարցի ցվաճառականս զանուն լերինն: Եւ ոմանք 'ի հեռագնաց վաճառականացն ասացին. լեառնն Թարմանկիա հեռի է յԱղեքսանդրէ քան և հինգ աւուրց ճանապարհ, և է նա 'ի սահմանս բար-

թեան նորա. և նա ծերացեալ է յոյժ և հասեալ է յամս հարիւր և երեսուն. և այս իննսուն և հինգ ամ է որ ոչ է հասեալ առ նա մարդ, և ոչ տեսեալ նա զմարդ. և ահա այսուհետև գալոց են առ նա յետ քառասուն աւուր, և վերացի ուր ամենայն հարքն բնակեալ են յաշխարհին կենդանեաց, զի տանին զնա առ հուրեանս: Եւ իբրև 'զայս ասացին ծերոյն, զարթեայ ես և հայեցայ և ոչ զոք տեսի անդ, զի ոչ գոյր անդ մարդ առ աբբայ Յոհաննու. յայնժամ պատմեցի ծերոյն զտեսիլն: Պատասխանի ետ ծերունին և ասէ ցիս. Ճշմարիտ այդ տեսիլդ յ̃յ է, բայց ոչ գիտեմ եթէ ուր իցէ Թարմանկիա: Յայնժամ ասացի ցնա ես Սերապիոն. աղօթս արա վասն իմ, հայր սուրբ: Եւ ողջունեցի զնա, և օրհնեցայ 'ի նմանէ:

Եւ յայնժամ գնացի յԱղեքսանդրիա, որ հեռի էր 'ի տեղւոյն յայնմանէ գնալս իբրև տասն աւուրց ճանապարհ. և առաջնորդեաց ինձ տեսիլն զոր տեսի: Եւ գնացի զճանապարհն զայն բազում նեղութ̃ և ճգնութ̃, 'ի տուէ և 'ի գիշերի անհանգիստ լինելով. զի 'ի տուընջեան արեգակնակէզ լինէի և ոտթափարշ, և այնպիսի կերպանօք՝ որ և զհող երկրի կիզոյր այրելով: Եւ իբրև հասի յԱղեքսանդրիա, հարցի անդ զվաճառականսն զայնս որք հեռագոյն ընթացեալ ճանապարհորդեալ էին, թէ գիտէք կամ լուեալ էք զլեառն Թարմանկիա: Պատասխանի ետուն ոմանք 'ի նոցանէ և ասեն, թէ յԱղեքսանդրիայ մինչև ցԹարմանկիա լեառն քան և երից աւուրց ճանապարհ է, և է նա 'ի սահմանս բարբարոսաց 'ի վերայ մեծի ծովուն Քափթանկլթայ:

բարոյաց և հայի նա 'ի վերայ ծովուն Պիափանեղթայ : Ասէ ասեմ ցնոսա . և որպէս հասանեմ անդ : Ասէ ասեն . եթէ ընդ ծով գնաս՝ դիւրին է , զի կարճ է . այլ եթէ ընդ ցամաք՝ 'ի ծարաւոյ տառապիս յոյժ , զի յերկար է : Յայնժամ առի ջուր ամանով և արմաւ , և նուիրեցի զանձն իմ այ և ելի 'ի ճանապարհն և ջան եղեալ գնացի զաւուրս տասն , և ոչ տեսի ամենևին շնչաւոր ինչ , և ոչ անձրև հասեալ էր երբէք 'ի սահմանսն յայնոսիկ : Ասէ սպառեցաւ ջուրն և արմաւն զոր ունէի , և աշխատեցայ յոյժ , տկարացայ և անկայ վհատեալ , և ոտք զօրութեն ոչ գոյր յիս քայլ մի առնուլ , և երկեայ դառնալ յետս և հաստատեցայ 'ի յոյսն իմ Քս և նուիրեցայ ընդ մեռեալս և նուաղ ձայնիւ աղաղակեցի առ Ած յօգնել ինձ : Ասէ նոյնժամայն 'ի վեր հայեցայ և տեսի զերկուս եղբարսն զայնք որ զտեսիլն ցուցին ինձ , եկին ողջոյն ետուն ինձ և ասեն . ծարաւեա՞լ իցես : Ասէ ասեմ՝ այո , տէարք իմ : Ասէ ասեն . արի զօրութեամբն այ : Ասէ ետուն ինձ յանապատէ անտի իբրև կաեզ ինչ և ասեն .

Ես ասեմ ցնոսա . ես որ կամիմ գնալ անդ՝ որպէս հասանել կարիցեմ , կամ 'որպէս գնալ լաւագոյն է : Եւ նոքա ասեն ցիս . եթէ ընդ ծովակ գնաս , դիւրին է և կարճ . իսկ եթէ ընդ ցամաքդ՝ հեռի է և դժուարին յոյժ , որպէս տասացս , քան և երեք կամ քան և հինգ աւուր ճանապարհ է : Յայնժամ առ իս մտախորհ եղեալ և քննեալ՝ լաւ համարեցայ աշխատութբ երթալ առ երանութեն , որում օգնական և զօրացուցիչ տէրն է , քան նաւելով և հանգստեամբ կամելով գնալ որում օգնականն տարակուսեալ է : Այսպէս հաստատեցայ առ ցամաք , և առի ջուր ամանով մի և արմաւ և նուիրեցի զանձն իմ այ , և ելի ընդ անապատ անջրդի , և կայի 'ի ստամոքսն . և գնացի զաւուրս տասն , և ամենևին ոչ ինչ տեսի ոգի շնչաւոր և ոչ թռչուն . վասն զի ոչ գոյր անդր տեղի գազանաց և ոչ թռչնոց : Այլ և ոչ երբէք եկեալ էր անձրև 'ի յերկրին յայն և ոչ ցօղ առաւօտու , և ամենևին ոչ գոյր ինչ իրս 'ի նմա մխիթարութիւն : Եւ իբրև գնացի ընդ անապատ զաւուրս տասն , այլա սպառեալ ջուրն և արմաւն զոր ունէի ընդ իս , և նոյնժամայն անկայ յաշխատութէ և տկարացայ յոյժ , մինչ ոչ գոյր յիս զօրութիւն և ոչ շարժ մի առնուլ : Եւ զարհուրեցայ դառնալ անդրէն վասն յուսոյն զոր առ Քս ունէի հաստատունք , և նուիրեալ էի զանձն իմ առ նա . և մնացի ես անդ այնպէս ընդ մեռեալս կարծեմութբ , և անշարժ եղէ և նուաղեցայ , և աղաղակեցի առ տէր Ած օգնել ինձ : Եւ համբարձի զաչս իմ և տեսի զերկուս եղբարսն զորս տեսեալ էի 'ի տանն Յոհաննու մեծի 'ի տեսլեանն . իսկ նոքա եկեալ առ իս ասեն ցիս . ընդէր ոչ մնացեր մեզ որ եկեալ հասեալ էաք առ քեզ , և արդ արի զօրութեամբ այ : Եւ իբրև յարեայ , հայեցայն և տեսին զիս և ասեն ցիս . ծարաւեա՞լ ես : Եւ ասեմ . յոյժ , տէարք իմ : Յայնժամ ցուցին ինձ արմաւս ինչ յանապատին իբրև զկաղնի և ասեն ցիս . առ կեր և գնա զօ-

կեր և գնա զօրութեամբ ա̃յ։ Այլ կերեալ կենդանացայ փութով և զօրացայ յոյժ և ցնծութեամբ ընթանայի ա-ռանց վաստակոց։ Այլ ուսուցին ինձ զճանապարհն և տանն. փութա առանց յապաղմանց։ Այլ եղեն անե-րևոյթ յինէն։

Այլ ընթանայի ընդ ահագին անապատն զաւուրս եօթն և հասի 'ի լեառնն. ելի 'ի վեր 'ի գլուխ լերինն և ոչ ինչ տեսի ամենևին և ոչ դալար խոտոյ. և զար-մացայ ընդ բարձրութիւն և ընդ դժուարութիւն լերինն, այնպէս համարէի թէ յերկինս ելանիցեմ։ Այլ երևե-ցաւ առ ստորոտով լերինն ծով մի մեծ, և շրջեցայ 'ի գլուխ լերինն այլ ևս աւուրս եօթն և ոչ ինչ տեսի ա-մենևին։ Այլ իբրև ութերորդ օրն լուսանայր, տեսա-նէի զհրեշտակսն ա̃յ զի իջանէին յերկնից և կային 'ի վերայ այրի միոյ և ասէին ցուրբն. երանի է քեզ և երանի է սուրբ հոգւոյ քո, աբբայ Մարկոս, և ահա ածաք առ քեզ զաբբայ Սերապիոն զոր փափաքէր ոգի քո տեսանել. քանզի մարդկան ումեք ոչ կարօտանայ-իր, բայց միայն Նմա. արդ տես զդա և ցնծա հոգւով և մարմնով։ Այս իբրև լուայ զայս, երկեայ երկիւղ մեծ, և ընթացայ զհետ ձայնին և հասի յայրն սրբոյն Մար-կոսի. և 'ի վերանալ հրեշտակացն յերկինս՝ մերձեցայ

րութեան ա̃յ։ Եւ իբրև կերայ ես 'ի նմանէ փոքր մի, փութով կենդա-նացայ, և գնաց յինէն ծարաւն և կարճմտութիւն, և սթափ եղեն ոսկերք իմ, և եղէ ես որպէս զմի 'ի հանգչելոցն։ Եւ ուսուցին ինձ զճանա-պարհն թէ այսպէս գնա փութանակի և ընթացիր, մի յամեր։ Զայս ասելով, 'ի նոյն աներևոյթ եղեն յինէն։

Ցայնժամ ցնծութեամբ ընթանայի առանց վաստակոց, վարեալ զիս յահագին անապատին զաւուրս հինգ. և հասի ես 'ի լեառն և ոչ ինչ տեսի 'ի լերինն դալար խոտոյ, և ապշեցայ ընդ դժուարութեան և ընդ բարձրութեան լերինն այնմիկ, և այսպէս ածէի զմտաւ իմով եթէ յեր-կինս եմ ելանել։ Եւ իբրև ելի ես 'ի լեառն, և ոչ անդ տեսի ամե-նևին ինչ դալար խոտոց։ Եւ երևեցաւ առ ստորոտով լերինն ծով մեծ ահագին։ Եւ գնացի ես այլ ևս աւուրս եօթն 'ի վերայ գլխոյ լե-րինն և ոչ ինչ տեսի ամենևին։ Եւ եղև իբրև ութերորդն օր լուսա-նայր, 'ի մէջ գիշերոյն տեսանէի զհրեշտակս ա̃յ զի իջանէին յերկնից 'ի վերայ այրի միոյ 'ի վերայ սրբոյն և ասէին այսպէս. երանի է քեզ և երանի է հոգւոյդ քում, ով աբբայ Մարկոս։ Եւ ասաց թէ ահա ածաք առ քեզ զաբբայ Սերապիոն, որում փափագէր հոգի քո տեսանել զնա. քանզի զայլ ոք 'ի մարդկանէ չէիր ցանկացեալ տեսանել, բայց միայն Նմա. և արդ տես և ցնծա հոգւովդ և մարմնով ընդդէմ նորա։ Եւ իբրև զայս լուայ 'ի հրեշտակացն, երկեայ երկիւղ մեծ, և ընթացայ 'ի բարբառն յայն մինչև յայրն սրբոյն աբբայ Մարկոսին։ Եւ իբրև

տեառն շուրջ է զերկիւղածովք։ Այլ տէր երանէ ծառայից արարողաց զկամս տեառն իւրեանց։

Այլ իբրև կատարեաց զբանս պաղատանացն որ 'ի սուրբ գրոց, և ես կայի ունկն դնելով արտաքոյ այրին, և տեսեալ զնա երկրպագելով ողջունիւն տեառն, կոչեաց զիս և ասէ. խաղաղութիւն Քրի եկիր, եղբայր Սերապիոն. տացէ քեզ տէր շնորհս ըստ վաստակոց ոտից քոց։ Ով եղբայր Սերապիոն, մերձեցիր առ իս և համբուրեա զհայր քո, զի 'ի բազում ժամանակաց ցանկայի տեսանել զքեզ։ Այլ իբրև մերձեցայ առ նա, և բազկատարած գիրկս արկեալ համբուրել՝ լայր զպա-

տեառն շուրջ են զերկիւղածովք և պահեն զնոսա։ Զոր և տէրն ասէ. երանի է ծառային այնմիկ որ արասցէ զկամս տեառն իւրոյ։

Եւ իբրև կատարեաց զմխիթարական բանս 'ի սուրբ գրոց՝ որ առ իւր որբացեալ հոգին, քանզի զարհուրելով երկնչէր հոգի նորա 'ի փառաց տեառն Այ թէ որքան մեծի և ահաւոր թագաւորի առաջի կալոց ես, որոյ անպատում երախտեացն ապերախտ երևեալ լինիս, և անբաւ սիրոյ նորա որ առաւել առ քո տկարութիւնդ նուաղեալ անթալից գտանիս, և այսպիսի երկիւղիւ դողայր, գարշեալ յիշէր զպարտասանութիւն նենգաւոր ոգեացն, որ 'ի վերայ ճանապարհին օդային և քննիչքն ամենայն մեղաց չար հոգիք՝ որք ժպիրհք և սաստիկք, որք դիւաւն յանդգնութիւն յարձակիլ և դաւ ընդդէմ և սրբոց և անբծից անամօթաբար. վասն որոյ և մխիթարելով զինքն սփոփէր՝ մի երկնչիր հոգի իմ, զի ոչ գտանեն ինչ յիւրայնոցն 'ի քեզ։ Զի հոգիք սրբոցն խոնարհագոյնք են յաւէտ՝ ունելով զինքեանս յետնեալս քան զամենայն, և ճշմարիտ՝ երկիւղածք յԱյ՝ որք դողան 'ի բանէ նորա, որպէս և սուրբս այս աբբայ Մարկոս դողայր յերկիւղէն յելանելոյ հոգւոյն։ Եւ իբրև աւարտեաց զբանն իւր՝ եկեալ վաղվաղակի առ դուրս այրին, անդ լայր դառնապէս զփախուստն իւր յաշխարհէ, որպէս թէ յաշխարհի կեցեալ ոչ կարէր զչափ ծառայութեան Այ զպարտն և զպատշաճ պատիւն յաշխարհէս, և արդ փոխէ զքեզ յանձառ բարիսն և անպատում փառս, և ոչ ըստ արժանեաց քոց, այլ ըստ իւրում բարերարութեան։ Վասն որոյ 'ի պատկառանացն լայր, և խոնարհ հոգին այն յերկիւղէն դողայր, որով զաւէր [illegible] իւր ուրախ առնէր 'ի վերայ իւր, և արժանի լինէր և 'ի վերայ երկրի փառաւորելոյ զինքն 'ի նմանէ։ Իսկ ես Սերապիոնս կայի ունկն դնելով արտաքոյ այրին մինչև աւարտեաց. և ահաբեկեալ և հիացեալ կայի առ իս՝ զսքանչելի բանս բերանոյ նորա լսելով թէ որպէս զինքն անարժան համարելով յերկիւղէն դողայր սուրբն և նահատակն այն Քրի։ Եւ ապա գնացեալ յառաջ՝ տեսի զնա և երկրպագեցի ողջունիւն տեառն։ Իսկ նա կոչեաց զիս առ ինքն և ասէ ցիս. խաղաղութիւն Քրի եկիր, եղբայր Սերապիոն. տացէ քեզ տէր վասն վաստակոց ոտից քոց շնորհս բարեաց։ Ով եղբայր Սերապիոն, մերձեցիր առ իս և համբուրեա զհայր քո ծերունիս, զի 'ի բազում ժամանակաց ցանկայի տեսանել զքեզ։ Եւ իբրև մերձեցայ առ նա, բազկատարած գիրկս եարկ ինձ յայժ իբրև զմանուկ, և համբուրէր լայր զպարանոցաւ իմով և ասէր. ահաւասիկ յաջ-

բանտացաւ խմոլ և ասէր . ահաւասիկ յորդւոյ իմոյ Սերապիոնէ բուրէ հոտ անուշահոտ խնկոց : Ո՛վ որ իմ հոտաւետալ առի 'ի հրեշտակացն տն : Եւ ասէ . ով զաւակ իմ, զի՞ աշխատեցար այսպիսի . այլ զճշմարիտն ասեմ քեզ, զի այս իննսուն և հինգ ամք են՝ զի ոչ են տեսեալ աչք իմ յորդւոց Ադամայ :

Եւ տարաւ զնա յայրն սուրբ և ասէ . որդեակ, յորմէ հետէ մտի ես յայրս յայս, ոչ ետես ակն իմ 'ի խաշանց և յանասնոց երկրի, և ոչ կերայ զկերակուր մարդոյ և ոչ զգեցայ զգեստ անցաւոր : Եւ կացի 'ի լերինս աստ երեսուն մեծաւ ճգնութբ տանջեալ . սովով և ծարաւով և մերկութբ մարտնչէի ընդ պիղծ ոգւոցն, 'ի սովոյն ուտէի զհող, և 'ի ծարաւ ըմպէի զաղի ջուր ծովուն, և զամս երեսուն այսպէս շրջէի . վշտօք և փորձութբք չարին դարձադարձ առնելովն պատերազմէր ընդ միտս խորհրդոց իմոց : Եւ այսպէս անպատմելի լինելութբ բազում անգամ կամեցան ընկենուլ զիս 'ի ծովն, 'ի գլխոյ լեռնէ աստի քարշելով զիս մինչև 'ի ստորոտ լերինս, մինչև ոչ մնալ միս կամ մորթ յոսկերս իմ . և աղաղակէին և ասէին՝ գնա 'ի տեղւոջէ և 'ի սահմանէ աստի,

դւոյ իմմէ Սերապիոնէ բուրէ անուշահոտ խնկոց : Յայնժամ բուրեաց ինձ հոտ անուշութեն խնկոց՝ որպէս և սոյն իսկ յետ : Եւ ասէ ցնա . ով զաւակ իմ, զի՞ աշխատեցար այդպիսի աշխատանօք և եկիր տեսանել զայսպիսի ապիկարացեալ ալեւոր . այլ ճշմարիտ ասեմ քեզ, որդեակ իմ, ունիմ ես աստ ահա ամս իննսուն և հինգ՝ որ ոչ եմ տեսեալ բնաւ իսկ յորդւոց Ադամայ :

Եւ ապա տարաւ զնա յայրն իւր . և իբրև նստաք 'ի յայրին, ասէ ցնա . որդեակ իմ, յորմէ հետէ եկեալ եմ ես յայրս յայս, ոչ եմ տեսեալ խաշն և անասուն երկրի, և ոչ եմ կերեալ կերակուր մարդոյ, և ոչ զգեցայ զհանդերձ անցաւոր աշխարհիս : Իսկ 'ի լերինս յայս . որդեակ, կացի ամս երեսուն տանջանօք և անպատմելի ճգնութեամբ, սովով և ծարաւով և մերկութեամբ, և մարտնչէի ընդ պիղծ ոգւոցն . զհող երկրի ուտէի 'ի սովոյն, և 'ի ծարաւն խմում զջուր ծովուն աղի ըմպէի, ով զաւակ իմ, և մերկ շրջեցայ զամս զայն երեսուն . և անցին 'ի վերայ իմ փորձութիւնք և վիշտք չարեաց և նեղութիւնք անպատմելի, և դարձադարձ առնելովն պատերազմէին ընդ միտս խորհրդոց իմոց : Եւ բազում անգամ քարշեցին զիս դևքն 'ի յայսմ լերինս գլխոյն մինչև 'ի ստորոտս լերինս, և բազում անգամ կամեցան ընկենուլ զիս 'ի ծովն և ոչ կարացին զայն առնել . այլ այնքան քարշեցին 'ի վերաստ 'ի վայր զիս, մինչ ոչ մնաց միս 'ի մարմնի իմում և ոչ մորթ յոսկերս իմ ողջ բնաւ, այլ կուտկուտեալ լինէր մորթ իմ 'ի չարաչար քարշելոյն և պատառ պատառ յերկիր անկանէր, և միս իմ կոտորէր խոցեալ ցաւօք նեղէր զիս . քանզի որքան նոքա 'ի վայր բերէին քարշելով՝ ոչ կամելով 'ի վեր անդ կալ ինձ, այնքան ես խոցոտ 'ի

զի ոչ ոք 'ի մարդկանէ եկեալ է աստ։ Այլ փրկեաց զիս ամծ 'ի չարութենէ նոցա։ Այլ իբրև համբերեցի ես զամս երեսուն քաղցոյ և ծարաւոյ, և մերկութեան մարմնոյ ընդ սատանայի, և յետ այնորիկ առաքեցաւ առ իս ողորմութիւն յայ և հրամայեաց մարմնոյ իմոյ երկանել մազ յոյժ և ծածկեցաւ մարմին իմ. և յայնմհետէ արագևեցան ինձ կերակուր ժամէ 'ի ժամ։ Այլ բազում անգամ տեսի զի Զուարթունս հրեշտակաց առ իս և ցուցին ինձ զարքայութիւն և զթագաւորութիւն սրբոցն. տեսի և զխոստումն ուրախութեանցն զոր արդարոցն պատրաստեալ է. տեսի և զդրախտն այ և զծառն յորմէ կերան Ադամ և Եւայ. տեսի և զԵնովք և զԵղիա յերկիրն կենդանեաց, և խնդրեցի յայ ոչ այլ ինչ, բայց միայն զայն որպէս ցուցաւ ինձ այս ամենայն։

Յայնժամ ասեմ ցնա. ով հայր սուրբ, երբ եղև սկիզբն գալոյ քո աստ։ Այլ ասէ ցիս. ով որդեակ իմ, ես էի յԱթէնս քաղաքի և ուսանէի զփիլիսոփայականն իմաստութիւն. և իբրև վախճանեցան ծնողքն իմ, ասացի ես 'ի սրտի իմում՝ թէ և ես վախճանելոց եմ. եթէ ես ոչ թողում զայս անցաւոր զկեանս վասն Քի, յետոյ

վեր կոյս անդ խաղայի գնայի հանդարտութբ մինչև 'ի կատար լերինն։ Իսկ նենգաւոր հոգիքն աղաղակէին և ասէին. զնա ասաք յերկրէս մերմէ, զի ոչ այլ ոք 'ի մարդկանէ եկեալ է այսր։ Եւ յամենայն նեղութենէ նոցա փրկեաց զիս տէր. զի համառատուն յուսով որ ունէի առ բարերարն ած, պատերազմէի ընդ նոսա ոչ ինչ համարելով ըղմերան իմ որ առ 'ի նոցանէ։ Եւ իբրև համբերեցի զամս երեսուն, ով զաւակ իմ, քաղցոյ և ծարաւոյ և մերկութե և մարտնչելոյ ընդ սատանայի, յայնժամ եկն 'ի վերայ իմ ողորմութիւն այ, և հրամայեաց մարմնոյ իմոյ և եկ մազ յոյժ մինչև ծածկեցան ամենայն անդամք մարմնոյ իմոյ. և յայնմհետէ պարգևեաց ինձ ած ժամէ 'ի ժամ կերակուրս հոգևորս և մարմնաւորս։ Եւ հրեշտակք համարձակ սկսան այնուհետև իջանել առ իս, և մխիթարէին զիս։ Եւ տեսեալ եմ ես զարքայութիւն և զթագաւորութիւն սրբոց. և տեսեալ եմ և զուրախութիւն խոստմանցն. և տեսեալ եմ ես և զդրախտն այ, և զծառն յորմէ կերան Ադամ և Եւայ. և տեսեալ եմ ես, ով որդեակ, զԵնովք և զԵղիա յերկրին կենդանեաց, բայց խնդրեցի ժամելով 'ի տեառնէ ցուցանել ինձ զայս ամենայն։

Իսկ ես Սրապիոնս լուեալ զայսպիսիսս՝ կայի ահաբեկեալ հիացմանցն մեծաւ։ Եւ յայնժամ ասացի. ով սուրբ հայր, աղաչեմ զքեզ ասա ինձ և զայն. թէ երբ եղև սկիզբն գալոյ քո այսր, և կամ զիարդ եկիր։ Եւ նա ասէ ցիս. ով զաւակ իմ, ես էի յԱթէնս քաղաքի և ուսանէի զփիլիսոփայականն իմաստութի. և իբրև վախճանեցան ծնողքն իմ, ասացի ես 'ի սրտի իմում՝ թէ և ես վախճանելոց եմ, և ով է որ եկեալ մնաց ասանձ և ոչ նեղութիւն և վշտակիր եղեալ, և յետոյ թողեալ

Թողուլ տան ականկեալ, որպէս է սովորութիւն մարդկան ազգի գնալ ունայն 'ի սենեկէ :

Այլ իբրև խորհեցայ զայս, մերկացայ զզգեստն իմ և ընկեցի զանձն իմ 'ի ծով 'ի վերայ տախտակի միոյ յու- սովն որ առ ինձ, որպէս զի առաջնորդեսցէ ինձ որպէս և կամիցի. և հասի ես տախտակաւն յամն երկինս : Այլ այս տասն ամք են՝ աւելի կամ պակաս՝ որ ասաց ինձ զա- նուն քո հրեշտակ իմ, և որ ըստ օրէ ցանկայի տեսանել զքեզ, և տեսի և ցնծացաւ հոգի իմ. օրհնեալ է առա- քիչն, և բարիոք արարեր զի եկիր :

Այլ զայս ասացեալ՝ առաւօտն մերկանայր : Այլ տե-

գնաց առ որ հարկ է գնալ՝ և անդ դատիլ ըստ արդար դատաստանին մեծի Թագաւորի և տեառն իմոյ. և եթէ ես ինքնին ոչ Թողում զաշ- խարհս զայս անցաւոր, սակայն յետոյ Թողուլ տան բռնաւորք յակա- մայ, որպէս ամ մարդոյ է զանոսի կենցաղս Թողուլ և գնալ 'ի հան- գերձեալսն : Իսկ յորժամ հաստատեցայ յայս խորհուրդ՝ Թէ է ճըշ- մարիտ որ ունայնութիւն է կենցաղս, ապա այնուհետև զմտաւ ածէի Թէ որպէս պարտն է առնել, զի մի ըմբռնեցայց 'ի պատրանաց աշխար- հիս : Յետ այսորիկ հաստատեցայ յուսով և սասցի՝ ընկեցի զիս 'ի վերայ տախտակի միոյ 'ի մէջ ծովուն և հեռացայց այնպէս յաշխար- հէ : Եւ յորժամ յայս խորհուրդս մնացի, լուսաւորեցան հոգի և միտք իմ, և ուրախութեամբ ցնծացայ, և ոչ բնաւ ամենևին երկիւղ ահագին ծովուս խռովեցոյց զիս :

Յայնժամ առեալ տախտակ մի մեծ և արձակ՝ տարայ առ անքոյթ ափն յեզր ծովուն և մերկացայ յինէն զզգեստն իմ, և միով Թեթևով հանդերձիւ նստայ 'ի վերայ տախտակին այնմիկ որ 'ի վերայ ծովուն եդի և խաղացուցի զտախտակն ընդ խորս ծովուն, և իմ յանձն արարի զյոյս իմ զոր ունէի առ նա, զի առաջնորդեսցէ ինձ ուր ինքն կամես- ցի : Եւ եւ յանկարծակի նոյնժամայն հողմ բարեշունչ և վարեաց զիս տախտակաւն 'ի խորս անդ և աներկիւղ եղև ցամաքն. և այնպէս երԹայի ուրախութեամբ իբրև 'ի մէջ նաւի մեծի անտրտում և անխռով գնացեալ, և ոչ երկեցոյց զիս ահագին ծովն այն և ոչ միով իւիք : Եւ այնպէս գնալով երևեցաւ ինձ լեառնս այս 'ի ծովէն մինչ բերեալ տախտակաւն այն հասոյց զիս առ իմ յամն երկինս այս զոր տեսանեսդ : Եւ ելեալ իմ 'ի ցամաքն, եդեալ ծունր՝ գոհացայ զբարերար տէրուղէն որ փրկեաց զիս յահագին ծովէս և յերկար ճանապարհէ՝ որ է յայն- կոյս ծովէն մինչև յայսկոյս ծովուն 'ի լեառնս յայս : Եւ իբրև հայե- ցեալ գիտացի զլեառնս, ոչ գտաւ բնաւ արմատ ինչ կամ կանաչ խո- տոյ : Յայնժամ յանձն արարի զիս բարերարին իմ, զի որ փրկեացն յահագին ծովէն, փրկեսցէ և յանապատիս յայս նեղութեանց. և այն- պէս մնացի յուսով որ առ տէր՝ տեսցի և համբերեցի նեղութեանց մեծի յայն երեսուն ամին որպէս և պատմեցի յառաջագոյն : Իսկ իբրև պատ- մեաց զայս ամենայն, ասէ ցիս. որդեակ իմ Սերապիոն, ահա այս տասն ամք են՝ աւելի կամ պակաս՝ որ ասաց ինձ զանուն քո հրեշտակն իմ, և որ ըստ օրէ մնայի և ցանկայի տեսանել զքեզ, և ահա տեսի և ցնծացաւ հոգի իմ. և օրհնեալ է առաքիչն քո, և բարւոք արարեր զի եկիր :

Եւ զայս ասացեալ առաւօտն մերկանայր, քանզի նաւ և մուԹն

տեալ զնա՝ երկնուղ և դողումն կալաւ զիս, զի ոչ էր մարմին նորա նման մարդոյ, բայց միայն խօսքն: Եւ նա իբրև ետես զիս զարհուրեալ՝ ասէ ցիս. որդեակ, մի զարմանար ընդ տեսիլ մարմնոյ իմոյ որ այսպէս է այլակերպեալ. և չիք սմա հնար մինչև 'ի գալուստ արքայութեանն, որ նորօք է զմեզ աղտեղեալ և զհնացեալ պատկեր, որ ըստ իւրում հրամանին արհամարհեալ աղտեղանայ:

Եւ դարձեալ ասէ ցիս. ով զաւակ իմ, պատմեա ինձ զաշխարհէ: Եւ ասեմ. ով հայր իմ, աշխարհս յանդաւորութբ̃ և խաղաղութբ̃ վարի հանապազ: Եւ ասէ. Ե՞ն թագաւորք կռապաշտք և իշխանք հալածիչք քրիստոնէից և եկեղեցւոյ Ք̃ի: Եւ ասեմ. էանց այն ժամանակ, և եղծան կռապաշտութիւնք 'ի ձեռն Յ̃ի Ք̃ի և աղօթից քոց, և ոչ ուրեք երևի կռապաշտ, և թագաւորք երկրի և զօրք իւրեանց առ հասարակ քրիստոնեայք են: Եւ իբրև լուաւ զայս, ցնծացաւ յոյժ և ասէ ցիս. Ե՞ն յաշխարհի մարդիկ սքանչելագործք, հիւանդաց բժիշկք և մեռելոց յարուցիչք, որպէս և ասաց փրկիչն մեր Յ̃ս Ք̃ս յաւետարանին. եթէ ունիցիք հաւատս մինչև ցհատ մանանխոյ և ասիցէք լերինս այսմիկ՝ թէ փոխեաց աստի: Եւ զայս իբրև ասաց, հատաւ

դիշէր էր: Եւ իբրև ծագեաց զլոյսն, և ես հայեցեալ 'ի նա տեսի զմարմին նորա զի ոչ նման մարդոյ էր, այլ բրդագեղեաց կենդանեաց նմանեալ. բովանդակ թաւ մազով ծածկեալ էր մարմինն, բայց խօսքն միայն մարդոյ էր: Եւ զայն այնպէս տեսեալ այլակերպ՝ երկիւղ և դողումն կալաւ զիս: Իսկ իբրև ետես զիս զի երկեայ և դողայի, ասէ ցիս. որդեակ Սրապիոն, մի զարհուրիր ընդ տեսիլս մարմնոյ իմոյ որպէս զի աղտեղեալս է և այլակերպեալ. այլ ոչ գոյ հնար աղտեղութեանն մեռեալ սմա 'ի գալստեան արքայութեանն, որ նորօք զամենայն աղտեղեալ և զհնացեալ պատկեր:

Յայնժամ ասէ ցիս. ով զաւակ իմ Սրապիոն, արդ և դու պատմեա ինձ զաշխարհէ թէ որպէս յառաջն էր, և այսօր ո՞րպէս: Եւ ես ասեմ. ով հայր պատուական և սուրբ, աշխարհս յանդաւորութբ̃ և խաղաղութբ̃ վարի հանապազ: Եւ նա ասէ. Ե՞ն այժմ թագաւորք կռապաշտք և իշխանք հալածիչք եկեղեցեացն նոյ: Եւ ասեմ. էանց այն ժամանակն, հայր սուրբ, և եղծան կռապաշտութիւնքն 'ի ձեռն Ք̃ի ողորմութեամբն և սուրբ աղօթիւք քո, զի և ոչ ևս գտանի մի 'ի կռապաշտիցն, այլ թագաւորք և զօրք իւրեանց քրիստոնեայք են ամենեքեան: Իբրև լուաւ զայս սուրբ ծերն, լցաւ խնդութբ̃ և օրհնեաց զԱ̃ծ և ասէ ցիս. Ե՞ն յաշխարհի արք սուրբք և սքանչելագործք, մեռելոց յարուցիչք և հիւանդաց բժիշկք, որպէս ասաց տէրն մեր Յ̃ս Ք̃ս 'ի սուրբ աւետարանին իւրում. եթէ ունիցիք հաւատս իբրև զհատ մանանխոյ, ասիցէք լերինդ այդմիկ՝ փոխեաց անտի՝ և փոխեսցի բանիւք,

լեռանն և բարձրացաւ 'ի վեր իբրև կանգունս յիսուն և կամէր անկանել 'ի ծով, և նոյնժամայն ծերունւոյն կարկառեալ զձեռն իւր ասէ. ոչ քեզ ասացի փոխել, այլ բանս ինչ ընդ եղբօրս խօսիմ, կաց դու 'ի քում հաստատութեան. և անդէն հաստատեցաւ լեռանն: Իսկ ես անկայ 'ի վերայ երեսաց իմոց յահէ անտի, և նա յարոյց զիս և ասէ. կարծեմ, եղբայր, եթէ այլ ոչ երբէք տեսեալ է քո այսպիսի սքանչելիս: Եւ ասեմ, ոչ տէր: Եւ յոգւոց հանեալ ասէ. վայ այսմ աշխարհի, որ թէպէտ և քրիստոնեայք են՝ այլ անուամբ և ոչ գործովք. օրհնեալ է տէր ած Իսրայէլի՝ որ առաջնորդեաց ինձ 'ի լեռնիս յայս և օտարացոյց յաշխարհէ, և ոչ մեռայ առ շիրիմս ծնողաց իմոց և տոհմի շաղախեալ մեղօք:

Եւ իբրև երեկոյ լինէր՝ ասէ ցիս. եղբայր, ո՞չ է մեզ ժամ սիրոյ: Եւ ես ոչ ինչ ասացի նմա: Իսկ նա յարուցեալ ամբարձ զձեռն իւր յերկինս և ասէ. տէր հովուեսցէ զիս: Եւ բուռն եհար զաջոյ իմոյ և ասէ. հրա-

էին այդպիսիք: Իբրև զայս ասաց, հատաւ լեառն և բարձրացաւ 'ի վեր և սկսաւ գնալ և կամէր անկանել 'ի ծովն մեծ: Յայնժամ բուռն հարեալ ծերոյն ձեռամբն կարկառելով ընդդէմ նորա ասէ. ոչ եթէ զփոխելդ քո ասացի հրամայելով քեզ, այլ բանս ինչ ընդ եղբօրս հաղցանելով ասեմ, կաց դու անսասանելի 'ի քում հաստատութեան և մի երկնչիր: Եւ տեսի զի դարձեալ անդրէն հաստատեցաւ լեառն և ոչ ևս այլ շարժեցաւ: Զայն տեսեալ իմ անկայ 'ի վերայ երեսաց իմոց 'ի յահէ անտի և կործանեցայ, և դողալով յերկիր մնացի: Յայնժամ յարոյց զիս և ասէ. ո՞չ ես տեսեալ այսպիսի սքանչելիս այլ, ով զաւակ իմ: Եւ ասեմ. ոչ եմ տեսեալ այլ այսպիսի, սուրբ հայր: Ապա յոգւոց հանեալ հրամայէր թէ այլ ոչ ես տեսեալ, և ոչ գոյ յայսմ ժամանակի այսպիսի քրիստոնեայք. քանզի ճշմարիտ քրիստոնեայք յայնժամ են յորժամ լերանց հրամանս տայցեն, և բառ աներկբայ հաւատոյն հնազանդեսցին նմա տարերքս: Եւ ուր հաւատ ուղիղ ոչ գոյ, անդ անուամբ միայն են քրիստոնեայք: Եւ յայնմ աշխարհի վայ է, ով զաւակ իմ, ուր անուամբ եթէ իցեն և ոչ գործովք քրիստոնեայք: Վասն այսորիկ ասեմ քեզ, զաւակ իմ. օրհնեալ է տէր ած իմ, որ առաջնորդեաց ինձ 'ի լեառնս յայսմիկ, և եհան զիս յաշխարհէ անտի զի ոչ մեռայ ես առ ծնողացն իմոց շաղախեալ մեղօք. քանզի վայրաքարշ է աշխարհ և խաբող, և որ մնայ 'ի նմա՝ ոչ դիւրաւ զերծանի 'ի նմանէ: Եւ որ վայ ասացի, մի անգութ համարեալ զիս զթիցես. քանզի ուր արդարև սիրելի տեառն ոչ իցէ, անդ ամ թշուառութիւն իցէ. բայց տէր խնամեսցէ զարարածս իւր որպէս և գիտէ:

Եւ իբրև երեկոյ լինէր՝ ասէ ցիս. եղբայր իմ, ոչ է մեզ ժամ սիրոյ խօսելոյ, այլ և կերակրովք: Եւ ես ոչ ինչ ասացի նմա: Յայնժամ յարուցեալ սուրբ ծերունին համբարձ զձեռս իւր յերկինս և ասաց աղօթիւ՝ տէր հովուեսցէ զիս՝ և որ 'ի կարգին: Յայնժամ հայեցաւ յաջակոյս և ասէ ցիս. հրամայեա եկ, որդեակ, 'ի սեղանս և առնուցուք

մնայեա, եղբայր, 'ի սեղանս զոր ճաշակեմք զկերակուրս զոր պատրաստեաց մեզ ած։ Այլ ես զարմացայ յոյժ, զի ոչ զոք տեսի անդ, և ոչ յայրն կայր ինչ։ Այլ մտեալ 'ի ներքս տեսի սեղան վայելուչ և աթոռք երկու և հաց ջերմ մաքուր յոյժ և միրգ զարմանալի և ձուկն երկու խորովեալ և պատուական խաւարտ և ձիթապտուղ գեղեցիկ և արմաւ և աղ և բաժակ մի ոսկեղէն լի ըմպելեաւ՝ քաղցր և համեղաճաշակ 'ի հոտս սքանչելապէս՝ ումեք ոչ գիտելի։ Այլ իբրև նստաք, ասէ ծերն. օրհնեա, եղբայր։ Այլ ասեմ. Թողութիւն արա ինձ վասն տեառն։ Այլ տեսի զաջ իւր ձգեալ և իբրև զհուր փայլատակեաց խաչանիշ 'ի վերայ կերակրոցն և սեղանոյն և ասէ. օրհնեա, տէր, բարերարութիւն քո զկերակուրս զոր պատրաստեցեր մեզ բարերար կամօք քո։

Այլ յորժամ ճաշակեցաք և գոհութիւն փառաւորեցաք, ասէ ցիս. առ զսեղանդ։ Այլ իմ առեալ զսեղանն՝ էի 'ի մեծի զարմացման, զի բնաւ ամենևին ոչ էր ծանօթ կերակրոցն և ըմպելեացն, ոչ ջամոցն և ոչ հոտոցն։ Այլ ասէ ծերն. տեսե՞ր, եղբայր, զողորմութիւն բարերարին այ առ երկիւղածս իւր. զի 'ի ժամէ 'ի ժամ ինձ մի մասն շնորհէր, իսկ այսօր երկու մասն շնորհեաց.

կերակուրս զոր պատրաստեաց մեզ ած։ Իսկ ես հիացեալ զարմացայ, զի 'ի մարդկանէ ոչ զոք տեսի անդ, և 'ի յայրին չկայր ինչ բնաւ։ Եւ առեալ զաջոյ իմմէ եմույծ զիս յայրն. և իբրև մտաք՝ տեսի սեղան վայելուչ և երկու աթոռս, և հաց ջերմ և սպիտակ իբրև զձիւն, և սուրբ խաւարտս և վայելուչ ձիթապտուղս և արմաւ և աղ և բաժակ ոսկեղէն ըմպելեօք, և էր քաղցր առաւել քան զմեղր ըմպելին այն, և համ և ճաշակ անպատմելի և անուշահոտ յոյժ. և զմայլեցայ անմնահապէս, և զարմացայ 'ի յանհամեմատ ճաշակէ նորա յետոյ յորժամ ճաշակեցաք 'ի նմանէ։ Այլ իբրև նստաք, ասէ ցիս. օրհնեա, եղբայր Սերապիոն։ Եւ ասեմ ցնա. Թողութիւն արա ինձ վասն տեառն։ Եւ ապա տեսի զաջ նորա իբրև զհուր փայլատակեալ խաչանիշ 'ի վերայ սեղանոյն և կերակրոցն, և ասէ. օրհնեա, տէր, բարերարութեամբդ քո զկերակուրս զոր պատրաստեցեր մեզ բարերար կամօք քո։

Եւ իբրև ճաշակեցաք և գոհութիւն փառս տուաք այ, ասէ ցիս. առ զսեղանդ, որդեակ։ Եւ իմ առեալ եդի առ հրամայեացն։ Եւ էի 'ի մեծի զարմացման, զի բնաւ ամենևին ոչ էր ծանօթ կերակրոցն և ըմպելեաց համոցն և անուշահոտութեանցն այնմանիկ. կարծեմ և ոչ թագաւորք աշխարհիս այնպիսեաւ պատահեալ իցեն համոց և հոտոց։ Եւ ասէ ցիս սուրբ ծերունին. տեսե՞ր, եղբայր Սերապիոն, զայս բարերարին ողորմութիւն, թէ որպէս ողորմի երկիւղածաց իւրոց. վասն զի յամենայն ժամու ինձ մասն մի շնորհէր, իսկ այսօր համեմատ քեւ երկու մասն շնորհեաց. քանզի ինձ կէս հացի ջերմ բաւ շահիւ սովորեալ

և այսպէս զամենայն աւուրս կենաց իմոց տայր ինձ ած կերակուր և ըմպելի 'ի ձեռն հրեշտակաց իւրոց ։ Նաև զի զամս երեսուն, զոր յառաջին ասացի, ոչ ինչ գտի արմատ խոտոյ ։ և զայնքան ամէն համբերեցի ամենայն նեղութեանց, և շրջէի բոկ մինչև սպառեցաւ մարմին իմ և մորթ ոտից իմոց, և էի որպէս մեռեալ, և պատերազմէր սատանայ համապազ և քարշէին զիս մինչև 'ի վայր ։ այլ օգնութիւն և խնամք բարերարին փրկէր զիս յամենայն փորձութեանց ։ Իսկ յերեսներորդ ամին մինչև՝ ետես զհամբերութիւն իմ, և իբրև կատարեցան ամք ճգնութեան իմոյ, հրամայեաց ած մարմնոյ իմոյ և եղ մազ թաւ և ծածկեաց զամենայն մարմինս իմ ։ և յայնմհետէ այլ ոչ ևս իշխեաց սատանայ պատերազմել ընդ իս, և ոչ հիւանդութիւն տկարացոյց ։ Բայց արդ կատարեցան ամք կենաց իմոց ։ վասն այսորիկ առաքեաց զքեզ ած,

խմում էր, և մի թերթ խաւարտ ընդ աղի, և երբեմն հատս ձիթապտուղ և մի արմաւ, և ունէր բաժակաւ բուռ չափու խմում ըմպելի, և ամենեքեան սոքա զմայլեցուցիչք և կեցուցիչք էին որպէս և տեսեր ։ Այսպէս, եղբայր իմ Սերապիոն, տայ ինձ ած կերակուր հանապազ և ըմպելի 'ի ձեռն հրեշտակաց իւրոց փոխանակ նեղութեանց և քաղցոյ և ծարաւոյ և մերկութե և ընդ դևս պատերազմելոյ ։ Քանզի փոխանակ այն երեսուն ամաց տանջանաց, զոր ասացի քեզ յառաջագոյն, շնորհեաց ինձ բարերարն ած առհաւատչեայ հանգիստ մարմնոյս և անչափ ուրախութիւն հոգւոյս ։ և փոխանակ աւազոյ և հողոյ զոր ուտէի՝ զանհամեմատ համով զջերմ հացիկն ընդ վայելչականսն զոր տեսեր զհարկաւորն տայ ։ և փոխանակ ծծելոյ աղի ջրոյն զանապատականն քաղցրահամ ըմպելիքն ։ և փոխանակ վշտին տօթոյ և ցրտին ընդ մազեղենիս ամփոփեալ՝ ես ամրութիւն մարմնոյս, որ ոչ ևս այլ գիտացի տօթ կամ ցուրտ ։ և փոխանակ գիւղացն տանելոյ՝ որոց համբերութիւն տարայ յամենայնի, այժմ հրեշտակք ած մխիթարիչք և փառաբանակիցք են ինձ ։ Այսպէս խմացեալ ծանիր, ով զաւակ իմ, զած զանեզրական գթութիւնն 'ի վերայ երկիւղածաց իւրոց ։ և անձն որ համբերէ նմա, հանգչի 'ի գութ նորա ։ քանզի ոչ է պարտ զերկայնամտութիւնն ած արհամարհել, և կամ յուսահատել 'ի քաղցրութենէն ած, ով զաւակ իմ ։ Եւ յիմոյ անտի ծանիցես ամ ոք զած զանմոռանալի գթութիւնն ։ քանզի զայն երեսուն ամն ոչ ամենևին կարծիս ծնաւ յիս թէ մոռացեալ է զիս տէր, և ոչ 'ի միտս իմ ինչ բան մեղադրանաց ընդդէմ ած՝ իբր թէ անպիտան համարեալ լինի ած նեղութեանց իմ ։ Այլ ուրախութեամբ համբերէի և արժանի վարկանէի զամ եկեալսն 'ի վերայ իմ վասն մաքրութե տխալանաց իմոց ։ վասն այսորիկ նայեցաւ յիս բարերարութեն ած, ով զաւակ իմ, զի ոչ յուսահատ եղէ յերկայնամտութեն նորա ։ Արդ ով եղբայր իմ Սերապիոն, այսպէս, զոր լուար և տեսեր՝ քարոզեսցես եղբարց երկիւղածաց ած 'ի յօգուտ նոցա, զի վասն որոցն ած պատմեսցին 'ի հաւատ անուշութեն աշխարհի ։ Իսկ այս իննսուն և հինգ ամ է յորմէհետէ եկի ես յայս լեառնս ։ և արդ կատարեցան ամք կե֊

զի թաղեսցես զիս յերկրի՝ զթշուառացեալ մարմինս իմ ձեռօք քո:

Այլ իբրև ասաց զայս, հինգերորդ օրն ընդ երեկս լինէր, և մեք յաւուրսն յայնոսիկ աւուր աւուր ճաշակէաք զկերակուրն հոգևոր: Այլ ասէ ցիս. Թողութիւն արա ինձ, եղբայր Սերապիոն, զի փոքր մի աշխատ առնեմ զքեզ յայսմ գիշերի արթնութեամբ և սաղմոսերգութեամբ: Այլ 'ի մտանել արեգականն և մինչև ցերրորդ ժամ գիշերին կատարեցաք զամենայն սաղմոսն: Այլ ասէ ցիս. Նիստ, եղբայր: Այլ իբրև նստաք՝ ասէ. տես եղբայր, թէ որպէս ծածկեսցես զմարմինս իմ ակնդագայնս և փութով երթիցես 'ի խաղաղութիւն և մի յամեսցես աստ: Այլ ես ողբացի սաստիկ արտասուօք և ասեմ. Հայր սուրբ, արա վասն իմ աղօթս և աղաչեա զԱծ, զի և զիս վախճանեսցէ ընդ քեզ. քանզի խառնեալ է անձն իմ յահագին յանապատիս յայսմիկ անշաւիղ և անջուր: Այլ ասէ ցիս. ոչ է ժամս զայդ քննել. արդ լուեա յողբոցդ և մի երկնչիր. քանզի Ած որ առաջնորդեաց քեզ գալ աստ, նոյն առաջնորդեսցէ անաշխատ գնալ, և ոչ որպէս եկիր տաժանեալ: Արդ ով

նաց իմոց, վասն այնորիկ առաքեաց զքեզ Ած, ով զաւակ իմ, զի թաղեսցես զիս յերկրի՝ զթշուառացեալ մարմինս իմ սուրբ ձեռօքդ քո:

Արդ այսքան բանք սրբոյն Ծյ և պատուէր և խրատ մինչև ցեօթներորդ օր՝ առաջ աւարտեալ կատարեցաւ. քանզի յամ օր յետ ճաշոյ ուտելու ինչ նստէր պատմելով և խրատելով զբարերարութիւնս Ծյ և զսքանչելիսն, և որք սոցին նման բանք, և զայլն ընդ պաղատանաց և ընդ օրհնութեան պարապէր՝ խառնակից Ծյ և հրեշտակաց լինելով, յորմէ հետեւեալ զարհուրեալ կայի բարեբանելով զայնպիսի պարգևաց տուողն Ած: Իսկ յութերորդ աւուրն իբրև ճաշակեցաք զհոգևոր կերակուրն զայն որպէս յամ օր, ասէ ցիս. Թողութիւն արա ինձ, եղբայր Սերապիոն, վասն զի սակաւ մի աշխատ առնեմ զքեզ յայսմ գիշերիս արթնութեամբ և սաղմոսիւք: Եւ իբրև եմուտ արեգակն, սկսաք զսաղմոսն Դաւթի օրհնութեամբ հանդերձ մինչև ցվեցերորդ ժամ գիշերոյն: Եւ իբրև կատարեցաք զսաղմոսն, ասէ ցիս. Նիստ, եղբայր Սերապիոն. և նստաք: Եւ ասէ ցիս. տես, եղբայր, թէ որպէս ծածկեսցես զմարմինս իմ ակնդագայինս և պատեսցես զերեսս իմ 'ի յայդմ կոյս, և դու փութով գնա 'ի խաղաղութիւն և մի յամեր աստ: Յայնժամ լացի ես սաստիկ արտասուօք յոյժ, և ողբալով ասացի. ով սուրբդ Ծյ հայր պատուական, արա ինձ ողորմութիւն և աղաչեա զՏէր վասն իմ, զի և զիս վախճանեսցէ ընդ քեզ. քանզի ահա խառնեալ է անձն իմ յահագին անապատիս յայսմիկ, զի անճանապարհ և անջուր է: Պատասխանեալ ասէ ցիս. ժամս ոչ է զայդ քննել և ոչ այդմ լինելի, լուռ լեր 'ի լալոյդ և մի երկնչիր. քանզի Ած որ առաջնորդեաց զքեզ գալ աստ առ իս, նոյն ինքն առաջնորդեսցէ քեզ և առնէ անաշխատ.

եղբայր Սերապիոն, այսօր մեծագոյն և ևս առաւելա-
գոյն է ինձ քան զամենայն աւուրս կենաց իմոց. քանզի
այսօր տեսանէ հոգի իմ զպատրաստեալ արքայութիւն
և մտանէ 'ի կեանսն յաւիտենականս առ ոգիսն արդա-
րոց կատարելոց. այսօր հանգիցէ մարմինս տկարացեալ
'ի ծերութեան վշտաց. այսօր արժանաւորի կենացն ան-
վախճանից։

Արդ իբրև ասաց զայս, լցաւ այրն լուսով առաւել
քան զարեգակն պայծառ, և փայլէին լերինք և բլուրք
հոտ անուշութեան, զոր ոչ ոք պատմել կարէ։ Եւ ես
անկայ յերեսս իմ, և բուռն հարեալ զձեռանէ իմմէ
յարոյց զիս։ Եւ ասէ. եկիք 'ի խաղաղութիւն, ծառայք
այ Գաբրիէլ և Միքայէլ։ Եւ տարաւ զիս բացագոյն
յայրէ անտի, և եհան խաչ ընդդէմ այրին և ասէ. ո-
ղորմութիւն այ եկեսցէ 'ի վերայ քո, ով այր, զի եղեր
կենդանութեան իմոյ տաճար վայելուչ, և 'ի միջի քո էր
հանգստարան պանդխտութեան իմոյ և յարկ ծածկութեան
մարմնոյս թշուառացելոյ. արդ յանձն առնեմ քեզ,
ծածկեա զծերացեալ մարմին իմ մինչև եկեսցէ յա-
րուցիչն մեռելոց։ Եւ դու մարմին իմ տուն ցաւոց և
բնակարան վտանգաց և կոշկոճանաց, ամփոփեաց 'ի դա

և ոչ որպէս եկիր տանջանօք, այլ նոյն հանգստեամբ։ Նա ասէ. ով եղ-
բայր Սերապիոն, ահա այսօր մեծ է ինձ և առաւել քան զամ աւուրս
կենաց իմոց. քանզի այսօր տեսանէ հոգի իմ զարքայութիւն զոր պատ-
րաստեալ է տէր իմ մտանել 'ի կեանսն յաւիտենից 'ի հոգւոյն սուրբ
արդարոց. այսօր հանգչի տկարացեալ մարմին իմ 'ի վշտաց հիւան-
դութեանց և հասանէ 'ի կեանս երկնաւոր։

Իբրև ասաց զայս, լցաւ սուրբ այրն լուսովն այ` որ առաւել պայծառ
էր քան զարեգակն. և փայլատակէին լերինք մեծամեծք, և լցաւ նաև
յորում միք էաք` լի եղև ծխով անուշահոտութեան զորս ոչ կարեմ
պատմել։ Իսկ ես յերկիւղէն զարհուրեալ անկայ 'ի վերայ երեսաց
իմոց յերկիր։ Իսկ սուրբ ծերունին առաջի Մարկոսի լուսափայլ դէ-
մքն բուռն հարեալ յարոյց զիս, ասէ. զարթիր, որդեակ. մի վհա-
տիր, քաջ լեր զօրութեամբ սուրբ հոգւոյն։ Նա ինքն լցաւ հոգւով սր-
բով և՝ասաց այսպէս. եկիք խաղաղութեամբ, պաշտօնեայք Քրի Գաբ-
րիէլ և Միքայէլ։ Նա առեալ տարաւ զիս բացագոյն յայրէն և ասէ
ցիս. ով որդի, ողորմութիւն այ եկեսցէ 'ի վերայ քո։ Նա դարձաւ 'ի
յայրն յոր բնակեալն էր և ասէ. այր, օրհնեալ եղիցիս, վասն զի ե-
ղեր կենդանութեան տաճար և հանգստարան պանդխտութեան իմոյ 'ի
միջի քում, և մարմնոյս իմոյ երկիթացելոյ և տկարի ծածկոյթ 'ի կեանս
իմում. և աւասիկ յանձն առնեմ քեզ, ծածկեա զթշուառացեալ մար-
մինս իմ մինչև գայ յարուցիչն մեռելոց։ Նա դու մարմին իմ տուն ցա-
ւոց և բնակարան վտանգաց և կոշկոճանաց, բնակեա 'ի դու խաղաղու-

եղեն յինէն։ Այլ ապա աղօթս արարի մինչև ցառաւօտն և առի զուրբ մարմինն և մատուցի յայրն, թաղեցի և պնդեցի զդուրս այրին քարամբք, և աղօթս արարեալ իջի 'ի լեռնէ անտի և աղաչեցի զա̃ծ զի առաքեսցէ ինձ օգնական աղօթիւք սրբոյն, զի առաջնորդեալ հանցէ զիս ընդ ահագին անապատն։

Այլ 'ի մտանել արեգականն եկին առ իս երկոքին արքն որ զառաջինն ցուցին ինձ և ասեն ցիս. Ճշմարտապէս թաղեցեր դու այսօր զմարմին, որ այնպէս ոչ գոյ ոք յաշխարհիս յայս և ոչ ոք է հաւասար Նմա։ Արդ արի 'ի գիշերիս զի գնասցուք ընդ հովտին հողմոյս, զի 'ի տուընջեան ոչ կարեմք գնալ յահագին տօթոյն. և յարուցեալ գնացաք մինչև յառաւօտն։ Այլ իբրև ծագեաց տիւն, ասեն ցիս. Երթ 'ի խաղաղութիւն և աղօթս արա վասն մեր։ Այլ իբրև հեռացան յինէն, տեսանէի զի կայի ես յառն առ դուրս աբբայ Յովհաննու ծերունւոյ 'ի Սկասկաւիա՝ ուստի գնացի. և յորժամ տեսի զնա անդ, զարմացայ յոյժ և գոհացայ զտեառնէ։ Լուաւ աբբայ Յովհաննէս զձայն գոհութեան իմոյ և ել արտաքս և ասէ. Եկիր խաղաղութեամբ Քնի, եղբայր Սերապիոն.

աներևոյթ եղև հետ նորա յաշաց իմոց։ Ցայնժամ դարձայ և աղօթս մատուցի 'ի վերայ սուրբ մարմնոյ նորա՝ կականաւ բարձեալ, և առի ըզսուրբ մարմինն և մատուցի յայրն և անդ թաղեցի, և պնդեցի զդուրս այրին քարամբք, և կացի յաղօթս 'ի լեռանն անդ և աղաչեցի զա̃ծ զի առաքեսցէ առ իս օգնականութիւն իւր աղօթիւք սուրբ հօրն Մարկոսի, զի հանցէ զիս 'ի լեռնէ անտի մեծ և յահաւոր յանապատէ։

Եւ իբրև երեկոյ եղև և մտաւ արեգակն, տեսի զարսն որ յառաջագոյն տեսեալ էի 'ի լեռանն յանապատի անդ և 'ի տան Յոհաննու մեծի ծերոյ, որք ետուն ինձ զօրութիւն յանապատի անդ, և եկին առ իս և ասեն ցիս. ողջոյն քեզ, եղբայր Սերապիոն, և երանի քեզ զի արժանացար տեսանել զայնպիսի երկիւղած լոյս զայրն սուրբ, և Ճշմարտապէս այսօր թաղեցեր զերանելի մարմինն սրբոյն աբբայ Մարկոսի, և արժանաւոր դասար օրհնիլ 'ի Նմանէ, որ այնպիսի ոչ գոյ յաշխարհի և ոչ այլ ուրեք ոք հաւասար Նմա։ Արդ արի և գնասցուք 'ի գիշերիս ընդ հովտին հողմոյս, վասն զի 'ի տուընջեան ոչ կարես գնալ դու 'ի յահագին տօթոյն։ Եւ յարուցեալ գնացաք 'ի միասին իբրև ժամս հինգ, խօսելով ընդ միմեանս վասն բարերարութեանն Այ և վասն սրբոյ ծերոյն Մարկոսի։ Եւ ասեն Նոքա ինձ. արդ երթ 'ի խաղաղութիւն և աղօթս արա վասն մեր։ Իսկ իբրև հեռացան յինէն, տեսի զիս զի կայի յառն առ դրան աբբայ Յոհաննու մեծի ծերոյ՝ ուստի ելի ես. և 'ի կալն խնդամ անդ՝ յոյժ զարմացեալ հիանայի և օրհնէի զա̃ծ։ Եւ լուաւ Յոհաննէս զձայն գոհութեան իմոյ, և վազվաղակի ելեալ 'ի սենեկէն եկեալ զիս և ասէ. եկիր խաղաղութեամբ Քի աբբայ Սերա-

և ողջունիւ համբուրեաց զնա։ Եւ մնաց ՚ի անձնականն, և պատմեաց նմա զամենայն զգործսն։ Յայնժամ բարձրացուցեալ ձեռայն զձայն իւր առ Տէր և ասէ. Ճշմարտապէս մեք ոչ եմք գործովք քրիստոնեայք, այլ անուամբ միայն. այլ խնդրեմք ՚ի տեառնէ զի թողցէ մեզ զյանցանս մեր և ողորմեսցի մեզ ըստ մեծի ողորմութեն իւրոյ և անցուսցէ ՚ի մէնջ զամենայն փորձութիւն և զորոգայթ թշնամւոյն աղօթիւք և բարեխօսութբ սրբոյն։

## ՈՐ ՅԵՐԿՐԻՆ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ ՀԱՐԱՆՑՆ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Օրհնեալ տէր Տէր, որ զամ մարդիկ կամի զի կեցցեն և ՚ի գիտութի ճշմարտութե եկեսցեն։ Որ և մեզ առաջնորդեաց իջանել յերկիրն եգիպտացւոց և ցուցանել մեզ մեծամեծ սքանչելիս՝ գրոց և յիշատակաց արժանիս։ Որ ետ մեզ առնուլ զհանգամանս փրկութեան, և ամենայն որ կամիցին ապրել՝ յառակ օրինակի կենաց բարութեցն՝ ճառս բաւականս զարթուցանել զանձինս յածպաշտութի անդր, որ կարող են առաքինութե կարգաց և գնացից ճառս գեղեցիկս յիշատակաց։ Եւ արդ ես անարժանս մի այսպիսի՝ բուռն հարից զճառիցս, զի ոչ են բաւական փոքունք մեծամեծ առակաց բուռն հարկանել առ ՚ի չլինել բաւական ըստ արժանաւորութեն կարգել, ճշմարտութբ պատմել, մանաւանդ ՚ի գիր հանել զիրսն տկարութբ. բանիւ զզօրաւորս ճառսն ՚ի ճառ իշխել արկանել. որ ինքն յանդգնագոյն իսկ երևի և վշտագոյն, իբրև զմեզ թերակատարիցս, և մանա-

ալիքն. և փութացեալ համբուրեաց զնա։ Եւ իբրև մնաց ՚ի անձնականն, պատմեաց նմա զգործսն զայն ամ մի ըստ միոջէ արտասուօք ՚ի միասին։ Յայնժամ բարձրացուցեալ ձեռայն զբարբառ իւր մեծաձայն՝ օրհնեաց զՏէր և ասէ. Ճշմարիտ մեք ոչ եմք քրիստոնեայք գործովք, այլ լոկ բանիւ եմք անուանեալ քրիստոնեայք. և արդ տէր թողցէ զյանցանս մեր և ողորմեսցի մեզ և անցուսցէ ՚ի մէնջ զայս ամ փորձութիւնս և զորոգայթս թշնամւոյն։ Եւ առաջ գրեցին առք երկիւղածք զերանելի ձեռայն սրբոյն աբբայ Մարկոսի զպատմութիւնն ՚ի փառս Քրիստոսի այ մերոյ։

եղեն յինէն ։ Այլ ապա աղօթս արարի մինչև ցառաւօտն և առի զսուրբ մարմինն և մատուցի յայրն, թաղեցի և պնդեցի զդուրս այրին քարամբք, և աղօթս արարեալ ելի 'ի լեռնէ անտի և աղաչեցի զՏէր զի առաքեսցէ ինձ օգնական աղօթիւք սրբոյն, զի առաջնորդեալ հանցէ զիս ընդ ահագին անապատն ։

Այլ 'ի մտանել արեգականն եկին առ իս երկոքին արքն որ զտեսիլն ցուցին ինձ և ասեն ցիս. Ճշմարտապէս թաղեցեր դու այսօր զմարմին, որ այնպէս ոչ գոյ ոք յաշխարհիս յայս և ոչ ոք է հաւասար նմա ։ Արդ արի 'ի գիշերիս զի գնասցուք ընդ հովութեն հողմոյս, զի 'ի տուընջեան ոչ կարեմք գնալ յահագին տօթոյն. և յարուցեալ գնացաք մինչև յառաւօտն ։ Այլ իբրև ծագեաց տիւն, ասեն ցիս. երթ 'ի խաղաղութի և աղօթս արա վասն մեր ։ Այլ իբրև հեռացան յինէն, տեսանէի զի կայի ես յառն առ դուրս աբբայ Յոհաննու ծերունւոյ 'ի Սկասկսիա՝ ուստի գնացի. և յորժամ ետես զիս անդ, զարմացաւ յոյժ և գոհացաւ զՏեառնէ ։ Լուաւ աբբայ Յոհաննէս զձայն գոհութեն իմոյ և ել արտաքս և ասէ. եկիր խաղաղութեամբն Քի, եղբայր Սերապիոն.

աներևոյթ եղև հեռ նորա յաչաց իմոց ։ Յայնժամ դարձայ և աղօթս մատուցի 'ի վերայ սուրբ մարմնոյ նորա՝ կական բարձեալ, և առի ըզսուրբ մարմինն և մատուցի յայրն և անդ թաղեցի, և պնդեցի զդուրս այրին քարամբք, և կացի յաղօթս 'ի լեառն անդ և աղաչեցի զՏէր զի առաքեսցէ առ իս զօգնականութիւն իւր աղօթիւք սուրբ հօրն Մարկոսի, զի հանցէ զիս 'ի լեռնէ անտի մեծ և յահաւոր յանապատէ ։

Եւ իբրև երեկոյ եղև և եմուտ արեգակն, տեսի զարսն որ յառաջագոյն տեսեալ էի 'ի լեառն յանապատի անդ և 'ի տան Յոհաննու մեծի ծերոյ, որք ետուն ինձ զօրութի յանապատի անդ, և եկին առ իս և ասեն ցիս. ողջոյն քեզ, եղբայր Սերապիոն, և երանի քեզ զի արժանացար տեսանել զայնպիսի երկիւղած յոյժ զայրն սուրբ, և Ճշմարտապէս այսօր թաղեցեր զերանելի մարմինն սրբոյն աբբայ Մարկոսի, և արժանաւոր գտար օրհնիլ 'ի նմանէ, որ այսպիսի ոչ գոյ յաշխարհի և ոչ այլ ուրեք ոք հաւասար նմա ։ Արդ արի և գնասցուք 'ի գիշերիս ընդ հովութի հողմոյս, վասն զի 'ի տուընջեան ոչ կարես գնալ դու 'ի յահագին տօթոյն ։ Եւ յարուցեալ գնացաք 'ի միասին իբրև ժամս հինգ, խօսելով ընդ միմեանս վասն բարերարութեան այ և վասն սրբոյ ծերոյն Մարկոսի ։ Եւ ասեն նոքա ինձ. արդ երթ 'ի խաղաղութի և աղօթս արա վասն մեր ։ Իսկ իբրև հեռացան յինէն, տեսի զիս զի կայի յառն առ դրան աբբայ Յոհաննու մեծի ծերոյ՝ ուստի եկի ես. և 'ի կալն իմում անդ՝ յոյժ զարմացեալ հիանայի և օրհնէի զՏէր ։ Եւ լուաւ Յոհաննէս զձայն գոհութեն իմոյ, և վաղվաղակի ելեալ 'ի տեննեկէն եկեա զիս և ասէ. եկիր խաղաղութեամբն Քսի աբբայ Սերա-

և ողջունիւ հանճարութեան զնա։ Այլ մնալք 'ի անձնականն, և պատուիրեցի նմա զամենայն զգործեմն։ Յայնժամ բարձրացուցեալ ձեռըն զձայն իւր առ ած և ասէ. Ճշմարտապէս մեք ոչ եմք գործովք քրիստոնեայք, այլ անուամբ միայն. այլ խնդրեմք 'ի տեառնէ զի թողցէ մեզ զյանցանս մեր և ողորմեսցի մեզ ըստ մեծի ողորմութե իւրոյ և անցուսցէ 'ի մէնջ զամենայն փորձութիւն և զորոգայթ թշնամւոյն աղօթիւք և 'բարեխօսութե սրբոյն։

## ՈՐ ՅԵՐԿՐԻՆ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ ՀԱՐԱՆՑ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՕՐՀՆԵԱԼ տէր ած, որ զամ մարդիկ կամի զի կեցցեն և 'ի գիտութիւն ճշմարտութե եկեսցեն։ Որ և մեզ առաջնորդեաց իջանել յերկիրն եգիպտացւոց և ցուցանել մեզ մեծամեծ սքանչելիս՝ զոր և յիշատակաց արժանիս։ Որ ետ մեզ անսալ զհանդամանս փրկութեան, և ամենայն որ կամիցին ապրել՝ յառակ օրինակի կենաց բարութեցն՝ ճառս բաւականս զարթուցանել զանձինս յամպաշտութի անդր, որ կարող են առաքինութե կարգաց և գնացից ճառս գեղեցիկս յիշատակաց։ Այլ արդ ես անարժան մի այսպիսի՝ բուան հարից զճառիցս, զի ոչ են բաւական փոքունք մեծամեծ առակաց բուան հարկանել առ 'ի չլինել բաւական ըստ արժանաւորութեն կարգել, ճշմարտութե պատմել, մանաւանդ 'ի գիր հանել զիրան տկարութե. բանիւ զդժուարարար ճառան 'ի ճառ իշխել արկանել. որ ինքն յանդգնագոյն իսկ երևի և վշտագոյն, իբրև զմեզ թերակատարիցս, և մանա-

ղիսն. և փառաթացեալ հանճարութեան զնա։ Եւ իբրև մնաք 'ի անձնականն, պատուիրեցի նմա զգործն զայն ամ մի ըստ միոջէ տրտմութեամբ 'ի միասին։ Յայնժամ բարձրացուցեալ ձեռըն զբարբառ իւր մեծաձայն՝ օրհնեաց զած և ասէ. Ճշմարիտ մեք ոչ եմք քրիստոնեայք գործովք, այլ լոկ բանիւ եմք անուանեալ քրիստոնեայք. և արդ տէր թողցէ զյանցանս մեր և ողորմեսցի մեզ և անցուսցէ 'ի մէնջ զայս ամ փորձութիւնս և զորոգայթս թշնամւոյն։ Եւ ապա գրեցին արք երկիւղածք զերանելի ձեռոյն սրբոյն առաքյ Մարկոսի զպատմութիւնն 'ի փառս Քրիստոսի ամ մերոյ։

երկրպագուողացս։ Նաեւ արդ է զնոսա տեսանել, զի յանապատի անդ ափին շրջին որպէս որդիք ճշմարիտք, զի կայցեն մնայցեն հօրն իւրեանց գալստեանն Ք̃ի. կամ զզօրս ինչ անձկալիս որ փափաքիցեն տեսանել զիւրեանց զԹագաւորն, և կամ դուռն ինչ գեղեցիկ որ ցանկանայցէ ընդ առաջ լինել իւրեանց ազատչին տէրութեան։ Ոչ հոգք կան 'ի մէջ նոցա, ոչ հոգք կերակրոց և հանդերձից, այլ կան միայն օրհնութ̃բ գալստեանն Ք̃ի։ Արդ յորժամ ումեք 'ի նոցանէ կարևոր պէտք պահանջեսցեն, ոչ 'ի քաղաքս մտանեն և ոչ 'ի գիւղս և յագարակս, ոչ յեղբարս իւրեանց, ոչ 'ի բարեկամս, ոչ 'ի հարս և ոչ 'ի մարս իւրեանց, ոչ 'ի դրունս իւրեանց, զի անտի խնամակք պիտոյից իւրեանց մխիթարեսցեն. այլ միայն խորհուրդք իւրեանց հաճոյ եղեալ առ աղօթս գոհութ̃բ զձեռս իւրեանց համբարձեալ առ Ա̃ծ շրթամբք իւրեանց մատուցանեն. և այն ամենայն իբրև յաղօթս կացին առաջի նոցա անդ կուտեցաւ։

Նաեւ արդ զայս բնաւ վասն նոցա զի պիտոյ է ասել։ Նոքա 'ի Ք̃ս հաւատովք իւրեանց կարող են և զլերինս փոփոխել. զի բազումք 'ի նոցանէ և զյորդահոս հոսանս գետոց կացուցին, և 'ի վերայ Նեղոս գետոյ գնացեալ անցանէին, և զգազանս մեծամեծս առաջի իւրեանց սատակէին, և զբժշկութիւնս բազումս արարին, զօրութիւնս առնէին որպէս սուրբ երանելի մարգարէքն և առաքեալքն. նոյնպէս և 'ի ձեռս նոցա նշանք և արուեստք 'ի փրկչէն լինէին, և ամենեցուն յայտնի էր որ անդն էին՝ եթէ 'ի ձեռն նոցա կեայ աշխարհ և վասն նոցա կեանք մարդկութեան մեծարեալ են։ Տեսանէի և այլ բազում յոյժ միայնակեացս՝ որ ոչ էր բաւ և համար զթիւ ունել մարդկանն։ Նաեւ անդ էր տեսանել հասակս ազգի ազգի մարդկանն յանապատի անդ, որչափ ոչ էր մարթ երկրաւոր թագաւորի յանձին իւրոյ այնչափ զօրս ժողովել։ Զի ոչ էին գեօղք կամ քաղաքք յերկրին Եգիպտացւոց և 'ի Թեբայիդա որ ոչ վանորայովքն իբրև պարսպօք և աշտարակօք ամրացեալ էին, և 'ի նոցուն յաղօթսն ժողովքն ամենայն իբրև յԱ̃ծ յեցեալ էին։ Նաեւ ոմանք որ առ նոսա մերձ կային յանապատի անդ, և ոմանք ևս յանդունդս 'ի խիթս անդր մտեալ ամրացեալ էին. ընդ ամենայն տեղիս զգե-

ւանդ նորոգագոյն մատուցելոցս յայտապխաւ բարձրութե̃ կարգս գրով ինքն մերձենալ։ Այլ սակայն իբրև յաճախեցին քաղցրութիւքն եղբայրութեանցն, որ 'ի սուրբ լերինն ձիթենեաց կարգեալ են, առնուլ 'ի մէջ՝ գրել ցուցանել նոցա որ 'ի յերկրին եգիպտացւոց մենակեացքըն կարգս և վարս յանձինս բարձեալ բերեն։ Արդ իբրև զինեցի զայն ամենայն և տեսի զանչափ և զանբաւ ուսմնասէր համբերութիւն, և 'ի նոցունց յաղօթս համարձակեալ՝ իշխեցի 'ի սքանչելի պատմութիւս յայս մտանել, զի և ես շահ ինչ մեծ 'ի նոցունց օգտիցն շահեցայց նմանեալ նոցուն կարգացն առաքինութե̃, և բավանդակել զորոշմունս յաշխարհէ՝ յանձն առեալ աւ քութի̃ համբերութե̃ առաքինութե̃ն մինչև 'ի վախճան։ Զի տեսի ես ճշմարտութբ̃ զգանձն ա̃ծային յամանս խեցեղէնս թաքուցեալ. և ոչ հանդարտեցի ծածկել և թաքուցանել զօգուտն բազմաց, այլ հասարակաց 'ի մէջ առեալ մատուցի, և զգեղեցիկ շահավաճառացս այսոցիկ օգտիւն իւրով եղբարց մատուցանել, զի և նոքա առեալ՝ աղօթս առնիցեն 'ի վերայ իմոյ փրկութե̃։

Արդ առաջին սկիզբն արարից գրոցս այսոցիկ զտեառըն մերոյ Յ̃ի Ք̃ի զգալուստն, և զի ըստ նորուն վարդապետութեանն որ 'ի յերկրին եգիպտացւոց մենակեացք են՝ զվարս իւրեանց բարձեալ բերեն։ Զի տեսի ես անդ բազում հայրս որ զվարս հրեշտակաց վարեն և ըստ նմանութե̃ փրկչին մերոյ շրջին. և այլ մանկունս երիտասարդս իբրև զմարգարէս նոցա 'ի վարս իւրեանց ըստ ա̃ծեղէն սքանչելի առաքինութե̃ն շրջին՝ յանձինս իւրեանց զա̃ծեղէն զօրութիւն բարձեալ իբրև ճշմարիտ ա̃յ պաշտօնեայք շրջին. և ոչ մի ինչ հողեղէն զանցաւորս զայս խորհուրդս յանձինս համարեալ ունին, այլ ճշմարտիւ սոքա յերկրի շրջին՝ յերկինս գումարեալ։ Զի են բազումք 'ի նոցանէ որ թէ բնաւ գուցէ իսկ աշխարհ յերկրի՝ չգիտեն, այլ ճշմարտիւ միայն անդր կացեալ են՝ թէ խաղաղութի̃ բազում է այնոցիկ որ սիրեն զանուն քո. և զայն զի ասէ՝ ես եղէց նոցա 'ի հայր և նոքա եղիցին ինձ որդիք և դստերք, ասէ տէր ամենակալ։ Այլ բազումք 'ի նոցանէ են որ զարմանան ընդ իրս աշխարհիս իբր լսեն թէ գուցէ աշխարհ յերկրի, բնակութի̃ իւրեանց արարեալ զմտացուցին իւրեանց

երկրաւորացս ։ Այլ արդ է զնոսա տեսանել, զի յանապատի անդ ափիս շրջէին որպէս որդիք Ճշմարիտք, զի կայցեն մնայցեն հօրն իւրեանց գալստեանն Տ՟ռի. կամ զզօրս ինչ անձկալիս որ փափաքիցեն տեսանել զիւրեանց զթագաւորն, և կամ դուռն ինչ գեղեցիկ որ ցանկանայցէ ընդ առաջ լինել իւրեանց ազատչին տէրութեան ։ Ոչ հողք կան 'ի մէջ նոցա, ոչ հողք կերակրոց և հանդերձից, այլ կան միայն օրհնութ՟ք գալստեանն Տ՟ռի ։ Արդ յորժամ ումեք 'ի նոցանէ կարևոր պէտք պահանջեսցին, ոչ 'ի քաղաքս մտաբերեն և ոչ 'ի գիւղս և յագարակս, ոչ յեղբարս իւրեանց, ոչ 'ի բարեկամս, ոչ 'ի հարս և ոչ 'ի մարս իւրեանց, ոչ 'ի դրունս իւրեանց, զի անտի խնամովք պիտոյից իւրեանց մխիթարեսցին. այլ միայն խորհուրդք իւրեանց հաճոյ եղեալ առ աղօթս գոհութ՟ք զձեռս իւրեանց համբարձեալ առ ա՟ծ շրթամբք իւրեանց մատուցանեն. և այն ամենայն իբրև յաղօթս կացին առաջի նոցա անդ կուտեցաւ ։

Այլ արդ զայս բնաւ վասն նոցա զի՞ պիտոյ է ասել ։ «Նոքա 'ի Տ՟ռ հաւատովք իւրեանց կարող են և զլերինս փոխել. զի բազումք 'ի նոցանէ և զյորդահոս հոսանս գետոց կացուցին, և 'ի վերայ «Նեղոս գետոյ գնացեալ անցանէին, և զգազանս մեծամեծս առաջի իւրեանց սատակէին, և զբժշկութ՟ս բազումս արարին, զօրութիւնս առնէին որպէս սուրբ երանելի մարգարէքն և առաքեալքն. նոյնպէս և 'ի ձեռս նոցա նշանք և արուեստք 'ի փրկչէն լինէին, և ամենեցուն յայտնի էր որ անդն էին՝ եթէ 'ի ձեռն նոցա կեայ աշխարհ և վասն նոցա կեանք մարդկութ՟ս մեծարեալ են ։ Տեսանէի և այլ բազում յոյժ միայնակեացս՝ որ ոչ էր բաւ և համար զթիւ ունել մարդկանն ։ Այլ անդ էր տեսանել հասակս ազգի ազգի մարդկանն յանապատի անդ, որչափ ոչ էր մարթ երկրաւոր թագաւորի յանձին իւրոյ այնչափ զօրս ժողովել ։ Զի ոչ էին գեօղք կամ քաղաքք յերկրին եգիպտացւոց և 'ի Թեբայիդա որ ոչ վանորայօքն իբրև պարսպօք և աշտարակօք ամրացեալ էին, և 'ի նոցուն յաղօթսն ժողովքն ամենայն իբրև յա՟ծ յեցեալ էին ։ Այլ ոմանք որ առ նոսա մերձ կային յանապատի անդ, և ոմանք ևս յանդունդս 'ի խոխթս անդր մտեալ ամրացեալ էին. ընդ ամենայն տեղիս զգե-

ղեցիկ հակառակութիւն 'ի մտի եդեալ՝ այր քան զայր առաւել սքանչելիս երեւեցուցեալ առաքինութիւս վասն հեռաւորացն, և ոմանք ջանային թէ գուցէ ոք քան զնոսա 'ի կարգս վարուց ուղղութեան առաւել գտանիցին։ Ոմանք 'ի մերձաւորացն կարծէին թէ գուցէ ոք քան զնոսա 'ի հեռաւորաց անտի առաքինեալ քաջացին։ Վասն այնորիկ զանչափ զանհամար զօգուտս զայս առեալ 'ի նոցանէ 'ի պատմութիւն բանիցս մատուցի առ 'ի նախանձ արկանել կատարելոցդ յիշատակի առ 'ի շինուած օգտի յօժարեցուցանել, սկիզբն մտավարժութեանդ մատուցանել։ Արդ նախ առաջին կամօքն ա̃յ սկիզբն արասցուք պատմութեան զսրբոց զերանելեաց զմեծաց միայնակեցաց զկարգ վարուցն, զայս եդեալ 'ի մտի թէ և այժմ զնոյն զօրութիւս առնէ 'ի ձեռն նոցա փրկիչն զոր առնէր յառաջ 'ի ձեռն մարգարէիցն և առաքելոցն. զի նոյն ինքն տէր է և այժմիկ և առ յապա որ զօրացուցանէ զամենայն յամենայնի։

## ՎԱՍՆ ԱՊՈՂՈՐԱՑ

ՏԵՍԱՔ մեք այր մի սքանչելի յերկրին Թեբայեցւոց Ապողոր անուն նորա, հայր վանականաց բազում իբրև հազար եղբարց. տեսիլ նորա իբրև հրեշտակի, ամաց իբրև իննսնից, մօրուքն մինչև 'ի լանջսն անդր հասանէին. զուարթագին երեսօք սպիտակ յոյժ, և տեսիլն իսկ ահաւոր և սքանչելի ակնածել տայր յառնէ անտի։ Սա բազում անգամ 'ի հեռաւոր յանապատի անդ առանձինն զվարս իւր վարեալ, յետ այնորիկ 'ի մերձաւոր յանապատի անդ բազում վաներ միաժողով շինէր. դաշտ մի տնկեալ իւրովք ձեռօքն 'ի տնկոց վայրենեաց անտառախիտ մայրիս յանապատի անդ կազմէր։ Իսկ առէին ցմեզ որ շուրջ զնովաւ հարքն ծերք բնակեալ էին՝ թէ բնաւ ամենևին 'ի տեղի աստ յայսմ տրուպ բոյս չգտանէր մինչ չև եկեալ էր առնն երանելւոյ յանապատէ անտի. և նա եկն տնկեաց զայն, զի վասն պիտոյից՝ որ առ նա եղբարքն ժողովեալ էին՝ վասն իրիք իրիք շըրջեալ զբաղնուցուն։ Այլ զամենայն խնամս դարմանոց 'ի ներքս առնէր վասն նոցա, և առ ա̃ծ աղօթս մատու-

ցանէր վասն նոցա փրկութեան պատերազմել, զի ընտանենալ ինչ կամ պակաս մի լիցի 'ի պիտոյից նոցա, և մի պատճառք լիցի նոցա հեղգութեան զբօսանաց զբաղմանն իրաց: Սա* մինչդեռ նախ յանապատի անդ էր, ուտել ինչ ոչ ուտէր, բայց միայն բանջար ինչ որ գտանէր և քաղցր արմատ ինչ վայրենի. ըմպէր ջուր յորժամ երբէք ուրեք յանկարծ ինչ գտանէր. աղօթիւք և օրհնութեամբ զա̃մ աւուրս կենաց իւրոց անցուցանէր:

Արդ իբրև 'ի կատարեալ չափ հասակի ծերութեան հասանէր, եկն էջ հրեշտակ առ նա և երևեցաւ նմա 'ի տեսլեան և ասէ. եղիջիր դու յազգ մեծ, և ժողվուրդք բազում հաւատասցեն քև, և եղիցին որ 'ի ձեռն քո փրկեալք՝ լինիցին բիւրք իբրև տասն. զի որչափ զգք աստ շահեցիս, այնչափ հազարաց իշխան լինիցիս 'ի հանդերձեալ ժամանակի անդ: Եւ մի ինչ երկնչիր, ասէ հրեշտակն ցնա, զի ոչ երբէք ինչ պակասեսցէ քեզ 'ի պէտս դարմանոց մինչև ցկատարած. զի որչափ կարդասցես դու առ ա̃ծ, և ա̃ծ լուիցէ քեզ: Այս** իբրև լուաւ, 'ի մերձաւոր անապատ անդր դիմեաց միայն. նախ անդր բնակեաց, տաղաւարակ մի փոքրիկ միայն առ անձին իւրում արարեալ, և ինքնեակ բանջարով լոկով շատացեալ, բազում անգամ 'ի շաբաթէ 'ի շաբաթ մի որ երբէք յայն լուծանէր զբերանն: Եւ տառանց դպրութեան էր զառաջինն և ոչ ինչ գիտէր 'ի գրոց. իսկ իբրև սկսաւ յանապատէ անտի ելանել անդր յանապատ, շնորհք այսպիսիք տուան նմա յա̃յ, զգիրս ամենայն ուշիմ մտօք 'ի բերան կարդայր. զի իբրև տայինն 'ի ձեռս նորա գիրս եղբարքն, իբրև տե-

* Սա մինչդեռ յանապատի անդ էր, ոչ ինչ ուտէր 'ի պիտոյական կերակրոց յանաւելորդաց, բայց միայն բանջար ինչ որ գտանէր գուն ուրեք, և քաղցր արմատ վայրենի որ գտանէր անդ, և ջուր ըմպէր յորժամ երբէք յանկարծ ինչ գտանէր, և աղօթիւք և օրհնութեամբ զամենայն աւուրս կենաց իւրոց անցուցանէր....

** Զայսպիսի պատգամս իբրև լուաւ, երկնչելով 'ի հրամանացն՝ 'ի մերձաւոր յանապատ անդր դիմեաց. և տառանց գրութեան էր 'ի գրոց: Եւ իբրև էջ յանապատէ անտի 'ի մերձաւոր անապատ, շնորհք տուան նմա յա̃յ զի զգիրս ամենայն ուշիմ մտօք ընթեռնոյր և զբաղում 'ի բերանոյ կարդայր. քանզի տային նմա գիրք եղբարք վանիցն իբրև տեղեկացեալ գրութեան, զի ընթերցեալ մեկնեսցէ զգիրս յառաջ քան զմարմնաւոր կերակուրն ըստ աւանդութեան Հարցն: իսկ նա առեալ ընթեռնոյր և մեկնէր և հիացուցանէր, և ինքն բանջարով լոկով շա-

դեկացելոյ դպրութե, առեալ վաղվաղակի ընթեռնոյր զայն ։ Առեալ նորա շնորհս միւս ևս 'ի վերայ դիւաց հալածելոյ. զի իբրև բազումք իսկ 'ի չարչարելոց անտի իբրև ոչ կամէին, գային կային առաջի նորա աղաղակէին վասն վարուց կարգաց առաքինութեան նորա, զի բժշկութիւն բազում առնէր ։ Այլ ոչ էր դիւլ և դադար ժողովելոց առ նա յամենայն կողմանց 'ի բազում հազարաւորաց 'ի միանգամայն ժողովել նոցա ։

Այլ իբրև եօթն զմեզ այրն, զուարթագին երեսօք խնդալով ողջոյն ետ մեզ, և անդէն նախ յաղօթս կայր ։ Այլ ապա լուացեալ զոտս և զձեռս մեր իւրովք իսկ ձեռօքն՝ անդէն 'ի վարդապետութիւն դառնայր, զի տեղեակ իսկ էր գրոց սրբոց՝ յանձութէ անտի զշնորհս զայս ստացեալ. և բազում ճառս 'ի գրոց անտի մեզ մեկնէր, և զուղիղ հաւատոց զճշմարտութիւնն ուսուցեալ՝ անդէն յաղօթս յօժարեցուցեալ. զի սովորութիւն էր այս մեծամեծացն ոչ յառաջագոյն կերակուր առնուլ մինչ չև զհոգևոր կերակուր հոգւոց մատուցեալ, այսինքն է զտեառն մերոյ զհաղորդութիւն ։ Որդ իբրև առաք զայն և գոհացաք զնմ, վաղվաղակի 'ի սեղան անդր յօժարեցուցանէր. ինքն յիւր փոյթ անդր դարձեալ մեզ յիշեցուցանէր, նստեալ խօսէր ընդ մեզ ։ Սփոեմ ես, ասէ, այր մի յանապատի անդ ոչ մի ինչ յերկրաւորացս ճաշակեալ զամս երիս. այլ հրեշտակ յերկնից յերիր աւուր կերակուր բերէր և դնէր 'ի բերան նորա, և այն լինէր նմա փոխանակ կերակրոյ և ըմպելւոյ ։ Այլ գիտեմ ես, ասէ, զայրն զայն զի եկին մատեան առ նա դևքն 'ի ցնորս տեսլեան, որք գունդս գունդս զօրաց հրեշտակաց երևեցուցանէին, կառս հրեղէնս և սպասաւորս բազումս որպէս թէ թագաւորի ուրուք իցէ յանկարծակի 'ի վերայ հասելոյ, և ասէր ցնա. արարեր ուղղեցեր կա-

տարեալ լինէր ։ Եւ այսպէս 'ի մերձաւորան անապատ տարարեալ միայն անձին իւրոյ՝ և 'ի շաբաթէ շաբաթ բազում անգամ մի օր երբեք լուծանէր զբերանն բանջարով ։ Եւ առեալ սորա միւս ևս այլ շնորհք, քանզի տուաւ նմա իշխանութիւն 'ի վերայ դիւաց հալածելոյ զնոսա. և բազումք իսկ 'ի չարչարելոց անտի, թէպէտ և ոչ կամաւ, գային առաջի նորա աղաղակէին վասն վարուց կարգաց առաքինութեան նորա, և բժշկութիւն բազումս առնէր ։ Եւ էր առ ինքն անդորր դադար ժողովելոցն առ նա յամ կողմանց իբրև հազարաց բազմաց՝ մինչև տասն բիւրոց եկելոցն առ նա ։ ...

թողեցեր զամենայն ինչ, այր դու, եկ երկիր պագ և վերացիր իբրև զԱրշակայն։ Ասէր միայնակեացն ընդ միտս իւր. ես համապազ երկիր պագանեմ իմում Թագաւորին և փրկչին. արդ եթէ էր սա, ոչ խնդրէր զայս յինէն։ Այլ իբրև 'ի վեր եհան նմա զխորհուրդս մտաց իւրոց, զի ասաց՝ իմ արքայ տեառնձին Քն է, որում պարտ և պատշաճ է ինձ երկիր պագանել, և վաղվաղակի 'ի միջոյ անդէն 'ի բաց կորնչէր։

Զայս ամենայն նա մեզ իբրև զայլ ումեք պատմէր, զիւրոյ անձինն առաքինութիւն իբրև թաքուցանել կամէր. իսկ որ զնովաւ շուրջ հարքն կային, իմացուցանէին մեզ՝ եթէ դորին իսկ տեսեալ է զայդ ամենայն։ Զի էր այնպիսի այրն փառաւորեալ յամենայնի 'ի մէջ հարցն ամենեցուն, որ իբրև բազում միայնակեացք առ նա ժողովէին՝ ամփոփէր զամենայն եղբարսն առ ինքն, և 'ի միում աւուրց զխցկունս ամենեցուն հանդերձէր, զի ոմն աղխս մատուցանէր, ոմն կաւ, ոմն ջուր, ոմն փայտ կոփէր։ Այլ իբրև կատարեցին զգործ խցկացն, ինքն իւրով ձեռօքն մատուցանէր բովանդակ զպէտս նոցա։ Սա և սուտ եղբօր մի առ նա եկելոյ և զիւր ձորձոն մեկուսի թաքուցելոյ յանդիմանեաց զնա առաջի ամե-

Զայսոսիկ նա մեզ որպէս զայլոց ումեք պատմէր, զիւրոյ անձինն առաքինութիւն որպէս թաքուցանել կամելով. իսկ որ զնովաւ շուրջ հարքն կային, իմացուցանէին մեզ՝ թէ դորին իսկ կրեալ է զայդ ամ։ Զի է այնպիսի այրն փառաւորեալ յած 'ի մէջ հարցն ամենեցունց, որ իբրև բազում միայնակեացք առ նա ժողովեցան, նա զնոսա այնպէս ամփոփեաց առ ինքն որպէս զառաքելաւորս, և այլ եւս յոգնապատիկ կարօտ էր։ Որում և եղև իսկ եղբարք բազում յոյժ իբրև հարիւր հազարաց. և ամենեցուն տեղ և գագար շինէր և վանորայս և անապատս և միայնաւորս և հանգստարանս, և անզբաղ և անխռով հոգաբարձութիւն հոգայր և ոչ ցնորէր. քանզի ած էր որ հոգայր զհոգս նորա և յաջողէր զամ յոյժ, և զոր ինչ միանգամայն հրամայէր, այն առժամայն կատարեալ լինէր։ Քանզի 'ի միում աւուր զխցկունս բազումս նոցա շինէր և յամ ինչ յաջողութեամբ յառաջանայր և լինէր. և ձեռնտու էր նմա ած յոյժ։ Նա այսպէս կատարեալ զամ պէտս նոցա միանգամայն, անգործանայր և հանգարտէր և հանգարտեցուցանէր զամենեսեան. և զվարդապետութիւնն իւր անթերի տանէր 'ի լսելեաց նոցա գնալով առ ամենեսեան և տեսանելով զնոսա և աղօթս տանելով 'ի վերայ մի մի խուցականչիւր 'ի նոցանէ։ Քանզի և հրեշտակակերպ տեսիլ նորա ահարկութեան՝ բաւականապէս շատանայր առ 'ի յորդորել զնոսա և հաստատել 'ի խիստ վարս առաքինութեան։ Նա անգէր տեսանել զնոսա իբրև զազանիս միամիտս 'ի բարեգործութիւն զամենեսեան զնոսա։ Սա և սուտ եղբօր միոյ առ նա եկելոյ՝ որ զիւր զաշխարհականս ձորձս մեկուսի թաքուցեալ ունէր...։

նեցուն, և 'ի մէջ բերեալ եւս զթաքուցեալ կարասին, զի յայնմհետէ և ոչ իշխէր ինչ ոք ամենևին սատել առաջի նորա. զի այնչափ շնորհք առաքինութեան էին 'ի նմա զոր 'ի բարեաց վարուց կարգաց առ ինքն ժողովէր: Այլ էր անդ տեսանել զբազմութիւն միայնակեցաց 'ի ժողովս իւրեանց իբրև զգունդս գունդս արդարոցն սպիտակահանդերձս, անդադար օրհնութեամբ զՔս փառաւորէին:

## ՎԱՍՆ ԱՄՈՆԵԱՑ

ՏԵՍԱՔ մեք անդ 'ի կողմանս Թեբայեցւոց այր մի, Ամոն անուն նորա, հայր երից հազարաց միայնակեցաց, զոր և տաբեննացիսն անուանեն, մեծամեծ վարուք և կարգօք զարդարեալք, մաշկահանդերձք, սքօղարկեալ զերեսօք, գլխաւարեալս յուտելոյ ժամ՝ զի մի ոք տեսանիցէ, և լռութիւն յանձինս իւրեանց կարգեալ բազում իբրու թէ չիցէ անդ բնաւ ամենևին ոք, այլ իւրաքանչիւր ոք զիւր կարգմն վարուց 'ի միմեանց թաքուցեալ ծածկեալ ունէին, լոկ իբրև կերպարանօք առ սեղան անդ նստեալք. զի այր ընկերի իւրում թուիցի թէ ուտէն ինչ, և 'ի միմեանց ծածուկ թաքուցանէին: Ո 'ի ամանք 'ի նոցանէ մի անգամ և երկիցս պատարկ զձեռն 'ի բերանն տանէին 'ի հացէ անտի կամ 'ի ձիթոյ կամ զինչ առաջոյն կայր, միով նուագով պաշտեալ լինէին կերակրովն այնուիկ, և կէսք զհացն 'ի բերան տարեալ իբրև ծամել երևէին, 'ի չմեղս եղեալ յայլոց կերակրոցն պահէին: Կէսք զԹանիկն՝ երկիցս մխեալ միայն յայլմէն պահէին. և ամենայն վարք նոցա էին սքանչելի զոր թողուլ յօժարեցի, յորմէ օգուտ և փառք նոցա ծանիցին:

1 զԹանիկն ռոպնեայ երիցս միայն խմեալ.. զոր թողուլ յօժարեցայ զբանս զարմանալիս իմն և. զեղյս, զի մի ծանրութեան ձանձրացկառացն եղիցի, յորմէ օգուտ և շահ է յօժարասէրս լսողաց:

## ՎԱՍՆ ԱՊԱԲԱՅ

ՏԵՍԱՆԷԱՔ մեք այլ ծեր մի որ հեզութեամբն և հանդարտութե̃ն անցուցանէր զամենայն մարդկամբք, և անուն նորա Ապաբա. զորմէ հաստատէին ամենայն եղբարքն եթէ չիք ամենևին երդուեալ նմա և ոչ բնաւ սուտ խօսեալ և ոչ բարկացեալ ումեք ամենևին և սա-տեալ ումեք բանիւ լոկով: Եւ էին վարք նորա հեզ և հանդարտ և կարգն խոնարհ յոյժ, և զանձն իւր գձուձ և խոնարհ ունէր. զի բազում անգամ աղաչէաք մեք զնա ասել ընդ մեզ բան ինչ յօժարութեամբ, հազիւ հազիւ յանձն առնոյր խօսել վասն խոնարհութե̃ սա-կաւ ինչ բանիւք: Սա երբեմն յուշկապարիկ մի ձիա-գետի՝ որ ելանէր ապականէր զանդաստանս մերձաւո-րացն, եկին աղաչեցին զնա բնակիչք վայրացն այնոցիկ. և նա եկն 'ի տեղին և հայեցեալ ետես զգազանն մե-ծութե̃ յոյժ սքանչելի. 'ի ձայն հեզութեան պատուէր տայր նմա և ասէր. պատուիրեմ քեզ յանուն տեառն մերոյ Յ̃ի Ք̃ի, մի այսուհետև իշխեսցես ապականել զանդաստանս նոցա: Նա իբրև 'ի հրեշտակէ բարբառոյ հալածեալ ամենևին 'ի տեղւոջէ անտի 'ի բաց գնաց: Նա և զկոկորդիլոսն հալածեաց երբեմն 'ի տեղւոջէ իւրմէ.

## ՎԱՍՆ ՊԵՂԷՈՆԻ ԾԵՐՈՑ

ՏԵՍԱՔ մեք այլ ծեր մի 'ի կողմանս անշինաց Պե-ղենիոս անուն, այր արդար, արուեստիւ դարբին, որ յառաջ իսկ 'ի մանկութե̃ զայն արուեստ ընկալեալ էր և յայնմ արուեստէ 'ի հաւատս կացեալ: Որ երբեմն զի մատուցեալ էր առ նա սատանայ 'ի կերպարանս կնոջ մարդոյ, մինչդեռ 'ի պէտս ինչ միայնակեցացն դարբնէր,

ՏԵՍԱՆԷԱՔ այլ ծեր մի Պեղենիոս անուն, արուեստիւ դարբին, որ յառաջ իսկ 'ի մանկութեանն ուսեալ էր, և յայնմհետէ 'ի հաւատս կրօնաւորութե̃ կացեալ էր և մեծ վարուք կայր 'ի միակեցութե̃ անդ և գործէր զդարբնութիւնն առ 'ի պէտս եղբարց և վանորէից: Եւ եր-բեմն յաւուր միում առ սուրբն մատուցեալ սատանայ 'ի նմանութե̃ կնոջ պոռնկի, մինչդեռ 'ի պէտս ինչ միայնակեցացն դարբնէր, և չար

վասն փութոյ ձեպոյն յափշտակեաց 'ի միջոյ հրատին արտաշխկագոյն զերկաթն եռացեալ, ձեռամբն 'ի բաց ձգեալ եհար զերեսն և առ հասարակ խարշատեաց զնա: Այս լսէին ամենայն եղբարքն զբարբառ կնոջն զի վայէր և լայր 'ի ներքս 'ի խցկան անդ: Յայնմհետէ այսուհետև այրն զերկաթն զոր գործէր ջեռեալ՝ ձեռամբն իսկ ունէր և գործէր, և այն ինչ ոչ վնասէր նմա:

Որ զմեզ իբրև ետես՝ սիրով ընկալաւ, և որք ընդ նմա եղբարքն կեցեալ էին՝ պատմէր վասն նոցա մեզ զի և նոքա կենդանի իսկ էին վասն որոց պատմէրն: Այր ոմն, ասէ, յանապատի յայսմիկ եղբայր մեր՝ Յոհաննէս անուն նորա. է անցեալ ըստ չափ հասակի իւրոյ, բայց առաւել է այժմ քան զամենայն մենակեացս որ աստ են, զոր ոչ ոք երբէք վաղվաղակի տեսանել կարէր, քանզի միշտ փոփոխի 'ի տեղւոջէ 'ի տեղի յանապատի աստ: Սա նախ զերեք ամ յոտն եկաց ընդ վիմաւ միով, յամենայն ժամանակի անխափան յաղօթս կացեալ և ամենևին 'ի քուն ոչ լինէր, բայց այնչափ որչափ նիրհ առնոյր. յաւուր կիւրակէի միայն որչափ յօրինացն առնոյր զոր երէցն տանէր նմա, այլ ինչ ամենևին երբէք ոչ ճաշակէր:

Արդ 'ի միում աւուրց երբեմն ժամանակի կերպարանեաց զինքն սատանայ 'ի նմանութիւն երիցուն, իբրև

քծնելով կամէր մտանել առ նա: Իսկ նա վասն փութոյ ձեպոյն յափշտակեաց 'ի միջոյ հրոյն առաւագոյն շիկնեալ զերկաթն ձեռամբացի և եհար յերեսս կերպարանեալ չարին, և առ հասարակ խարշատեաց զնա: Եւ այս լսէին եղբարքն զանհեթեթ բարբառ կնոջն զի լայր և վայէր 'ի ներքս 'ի խցի անդ, վասն զի տանջեալ եղև գեն.'ի քաջութէ յուսոյ առն: Եւ յայնմհետէ 'ի հոգւոյն զօրութէ շնորհս տուաւ նմա, զի զերկաթն առաւագոյն ձեռամբացի արկանէր 'ի հուրն և հանեալ 'ի հրոյն գործէր, և մինչև ցմախճանն իւր ոչ ես կարատանայր ունելեաց:

Սա իբրև ետես զմեզ, յոյժ սիրով ընկալաւ. և սա ինքն պատմեաց մեզ ասելով. է ոմն յանապատի անդ եղբայր՝ Յոհաննէս անուն, անցեալ զչափ հասակի իւրոյ, և առաւել է այժմ քան զամենայն միայնակեացս որք աստ են, և զնա ոչ ոք երբէք տեսանել կարէ, զի միշտ փոփոխի 'ի տեղւոջէ 'ի տեղիս յանապատի անդ: Սա նախ զերեքեամ միջոտն եկաց ընդ վիմաւ միով, յամ ժամ անխափան յաղօթս կալով, և ամենևին ոչ ընկողմանէր վասն քնոյ և կամ 'նստէր, բայց եթէ սակաւ մի նիրհ առնոյր, և զայն ես յոտն կալով: Եւ յաւուր կիւրակէի երէցն տանէր առ նա յօրինացն, զայն առնոյր և այլ ինչ ամենևին ոչ ճաշակէր:

Արդ 'ի միում աւուրցն կերպարանեաց սատանայ զանձն 'ի նմանութիւն երիցուն, իբրև վաղագոյն յարուցեալ առ նա երթայր, և այն-

վաղագոյն իմն յայտնեցաւ առ նա երթայր, այնպէս ե-րեւեցուցանէր որպէս թէ զհաղորդութիւն օրհնացն մա-տուցանիցէ նմա։ Իսկ երանելին Յովհաննէս իբրեւ ծա-նեաւ ասէ զնա. ո՜ հայր ամենայն նենգութեան եւ խորա-մանկութեան, թշնամի ամենայն արդարութեան. իսկ ոչ դադարիցես ամենեւին պատրել խաբել զամենայն միտս արանց արդարոց, որք համարձակիս ժպրհիս եւ 'ի խոր-հուրդ յայդ մատչել։ Իսկ նա ետ նմա պատասխանի եւ ասէ. վայրիկ միւս եւս շահեալ էր իմ զքեզ 'ի կոր-ծանման իմ, զի այդպէս զոմն 'ի քոյոց եղբարց անտի մոլորեցուցի, եւ արտաքոյ մտաց իւրոց արարեալ 'ի մո-լորութիւն դարձուցի. վասն որոյ. բազում արդարք բա-զում ժամանակօք յաճախեալ յաղօթս հազիւ կարա-ցին զնա անդրէն 'ի նոյն միտս իւր դարձուցանել։ Այլ զայս իբրեւ ասաց դեւն, գնաց 'ի նմանէ։ Իբրեւ տեսանէր զոտս նորա ընդ չորիր պատառեալ յանշարժ կալոյն բա-զում ժամանակօք, եւ զի արենաջուրք իջանէին, եկն էջ հրեշտակն մերձեցաւ 'ի բերան նորա եւ ասէ. Քս ինքն եղիցի քեզ կերակուր եւ սուրբ հոգին Ճշմարիտ ըմպելի, զի շատ է քեզ որ այժմ 'ի մանկութենէ կերակուրն է, զի մի իբրեւ յագեսցիս՝ փախեսցես։ Իբրեւ բժշկեաց զնա, փոխեցաւ 'ի տեղւոջէ անտի. գնայր եւ շրջէր ընդ անապատն եւ ուտէր բանջար որ անդ գտանէր, եւ յա-

պէս երեւեցուցանէր թէ հաղորդութիւն օրհնացն մատուցանէր նմա։ Իսկ երանելին Յովհաննէս իբրեւ ծանեաւ ասէ ցդեւն. ո՜ հայր ամ նենգու-թեանց եւ խորամանկութեանց եւ թշնամի ամ արդարութեան, մի՞չ շատ է զի ոչ դադարես պատրել եւ խաբել զամ միտս արդարոց. արդ համար-ձակեալ ժպրհիս եւ յանհաւատ խորհուրդդ մատչել։ Իսկ սատանայ ետ պատասխանի, թէ վայրիկ մի եւս եւ շահեալ էր իմ զքո կործանումդ, զի այսպէս եւ զոմն մի 'ի քոց եղբարց յայդ իմն զլորեցի եւ արտաքոյ մտաց իւրոց արարի եւ զայրն, եւ այնպէս 'ի մոլեգնութիւն դարձուցի. վասն որոյ բազում արդարք բազում ժամանակս աղօթս արարեալ յաճախ հազիւ կարացին զնա անդրէն 'ի միտս դարձուցանել։ Եւ զայս իբրեւ ասաց դժնեայն, փախեաւ 'ի նմանէ։ Եւ էր տեսանել զոտս նորա 'ի չորից պատառեալ 'ի յոտն կալոյն ժամանակօք, եւ ջուր արիւնախառն իջանէին 'ի ոտնից նորա եւ 'ի բարձուցն։ Եւ ապա հրեշտակ տեառն եկեալ եկաց առ նա եւ մերձեցաւ 'ի բերան նորա եւ ասէ. Քս ինքն ե-ղիցի քեզ կերակուր եւ սուրբ հոգին Ճշմարիտ ըմպելի, զի շատ է քեզ որ այժմ 'ի մանկութէ կերակուրն է, զի մի իբրեւ յագեսցիս՝ փախ-խեսցիս յայլ ինչ։ Եւ առողջացոյց զնա առժամայն 'ի վէրաց անտի։ Եւ հայրն Յովհաննէս առեալ ոչ առայր հանդիպատ տեղւոյն, այլ փոխեալ 'ի տեղւոջէ 'ի տեղի գնայր եւ շրջէր ընդ անապատն, եւ բանջար որ յան-

ուր կիւրակէի 'ի նոյն տեղի հասանէր և հաղորդութեանն կցորդ լինէր։

Իբրև ոստս ինչ սակաւ յերիցուէ անտի խնդրեաց, ատպատանս առնէր գրաստու. իբրև կամեցաւ երթալ առ նա այր մի՝ սողուն ունելով վասն բժշկութեան, և իբրև եւ հեծաւ 'ի վերայ գրաստուն, իբրև մերձեցան ոտքն յատպատանն որ սրբոյն արարեալ էր, անդէն բժշկեցաւ։ Դարձեալ օրհնութիւնս ինչ հիւանդաց ումեք տանել տայր. և վաղվաղակի թօթափէին նոքա յախտէն իւրեանց։ Յայտնի տեսիլ տեսանէր նա վասն իւրոց վանականացն. քանզի բազումք 'ի նոցանէ էին՝ որ ոչ ուղիղ վարս յանձինս իւրեանց ցուցանէին։

Գրեաց նա առ ամենեսին Թուղթս 'ի ձեռն երիցուն՝ եթէ նոքա հեղգան և սոքա ձեպին յառաքինութիւնս. և գտաւ ճշմարիտ թէ արդարեւ այսպէս է։ Գրեաց և առ հարսն, և այլքն յոյժ աղաչէին, և նա զամենեցուն զպատիւս և զտանջանս պատմէր։ Դարձեալ զայլս առ կատարելագոյնս 'ի չափ հաստատութեան յօժարեցու-

ապատին գտանիւր՝ այնու շատանայր, և 'ի կիրակէն 'ի նոյն տեղի հասանէր՝ զի հաղորդութե օրինացն կցորդ լիցի։

Արդ 'ի միում կիրակէից յետ օրինացն կցորդութեան 'ի դառնալն՝ խնդրեաց գրաստ յերիցուէ անտի վասն ոտիցն տկարութե, զի յոյժ խոնջեալ տկարացուցեալ էր զոտիցն զօրութե. և ատպանդակ արարեալ ոտիցն նստաւ 'ի վերայ նորա և անց ընդ դժուարուտ վայրն 'ի հարթ տեղի 'ի ճանապարհս անապատին. և դարձոյց անդրէն զգրաստըն, և ինքն գնաց յանապատն իւր։ Եւ յետ աւուրց ինչ այր մի սողուն ցաւով և գօսացեալ ոտիւք կամեցաւ գնալ առ սուրբն վասն բըժըշկութե իւրում. և խնդրեաց զգրաստն որում սուրբն էր նստեալ այնու գնալ, զի ոչ կարէր ոտիւք ընթանալ։ Եւ իբրև նստաւ 'ի վերայ նորա և մերձեցան ոտք նորա յատպանդակն ուր եդեալ էին ոտք սրբոյն, վաղվաղակի առողջացան գօսացեալ ոտք նորա. և թափեալ զինքն 'ի գրաստէ անտի յընթացս հասանէր առ սուրբն, և գոհեալ զնա անկանէր առ ոտս նորա և օրհնէր զԱծ։ Այլս յայնմհետէ ոչ կամեցաւ ոք 'ի հիւանդաց երթալ առ նա, այլ օրհնութիւնս ինչ տայր երիցուն, զի զայն տացէ եկեղոց հիւանդաց, և մի տացէ թոյլ ոք գալ առ նա. և որք մի անգամ յօրհնութէն այնորիկ առնուին, վաղվաղակի թափէին յախտէն իւրեանց։ Սա և յայտնի տեսիլս տեսանէր վասն սրբոց վանականացն. քանզի բազումք 'ի նոցանէ էին՝ որ ոչ ուղիղ վարս յանձինս իւրեանց ունէին։

Գրեաց առ ամենեսեան նոցա թուղթս 'ի ձեռն երիցուն եթէ նոքա ամենք հեղգան, իսկ սոքա այսոքիկ ձեպ առն յառաքինութիս. և գըտաւ ճշմարիտ զի այնպիսի էին։ Գրեաց և առ հարսն, և զամենեցուն տանջանս և զպատիւս պատմէր։ Դարձեալ զայլս կատարելագոյնս և 'ի չափս հաստատութեան յօժարեցուցանէր, և 'ի պայծառական վա-

ցանկէր 'ի զգայունաւորական վարուք աստէն 'ի մտաւորական խորհուրդս մերձենալ, և 'ի մարմնաւոր կարգաց անտի 'ի հոգևորն մերձենալ. քանզի և ժամանակ իսկ է անդէն զայնպիսի վարուց առաքինութիւն երևեցուցանել. զի ոչ պարտ և պատշաճ է, ասէ, զամենայն աւուրս կենաց մերոց մանկտի երևել, այլ արդէն իսկ 'ի վերայ կատարեալ մտացն հասանել և զգործս արդարութեան 'ի ձեռն առնուլ պիտի և մեծամեծ արդարութեանցն հասանել: Զայս ամենայն և առաւել քան զայս հայրն վասն առնն պատմէր, զոր վասն առաւելութեան զքանչելեացն մեք 'ի գիր առնել ոչ մարթացաք. քերև ոչ եթէ ոչ էին ճշմարիտք, այլ վասն ուրուք չհաւատալոյ: Այլ մեք բովանդակ լսեալ եմք 'ի բազում մեծամեծաց զայնս որ պատմէին, որք և մեք մեղէն իսկ աչօք մերովք տեսաք:

## ՎԱՍՆ ՊԱՔՐՈՏԵԱՑ *

ԶՈԳԱՔ տեսաք մեք զտեղին Պաքրոտեայ միայնակեցի առնն մեծի և առաքինւոյ, որ ոչ բազում ժամանակօք ինչ անցեալ էր, որ կատարեալ էր 'ի կողմանս մի Թեբայեցւոց և 'ի Հերակղիտայ, վասն որոյ բազում ինչ բազմաց պատմեցին: Յետ բազում կարգաց վաստակոց իւրոց աղաչէր զԱծ յայտնել նմա նմանել ումեք որ զվարս իւրեանց ուղիղ վարիցեն, և թերևս իցէ ինչ

րուց աստի 'ի մտաւորականսն վերանալ, և 'ի մարմնաւոր կարգաց անտի 'ի հոգևորսն ելանել. վասն զի ժամանակն արդէն իսկ է զայնպիսի առաքինութիւս երևեցուցանել. զի ոչ պարտ և պատշաճ է զամենայն աւուրս կենաց մերոց մանկտի երևել, այլ արդէն իսկ 'ի վերայ կատարեալ մտացն հասանել, և 'ի գործ արդարութեան արկանել պարտիմք: Զայս այսպէս գրեալ ուսուցանելով զամենայն եղբարս որ շուրջ զնովաւն էին: Զայս ամենայն և առաւել քան զայն վասն սքանչելեաց առն պատմեաց մեզ սուրբն Պեղենիոս. և զյոքունս 'ի նոցանէ որ իւր էր արարեալ, և զայն վասն նորա պատմէր ծածկելով զինքն, զոր և հարքն որ առ նովաւ էին պատմեցին մեզ զվարուց սքանչելի առն Պեղենիոսի, զոր վասն առաւելութեան 'ի գիր առնուլ ոչ մարթացաք. իւր ոչ եթէ ճշմարիտք չէին, այլ վասն ուրուք չհաւատալոյ. վասն այն բովանդակեցաք 'ի բազմաց զաւակաւն, զոր մեք մեղէն աչօք մերովք տեսաք:

* Այսպէս յամենայն օրինակի, որ այն ինքն է Պափնուտիոս:

Ոչ երբէք մտին 'ի տուն իմ օտար արմտիք։ Ոչ երբէք դիպեցայ 'ի մարտի զօր ոչ 'ի խաղաղութեան դարձուցի։ Ոչ երբէք մեղադիր կարացի լինել ստահակութեան ծառայից իմոց։ Ոչ երբէք ճաշակեցին յօտար պտղոց երամակք խաշանց իմոց։ Ոչ երբէք սերմանեցի նախ զանդս իմ՝ եթէ ոչ զայլոց յառաջ առնէի և ապա ես զմնացեալսն սերմանէի։ Ոչ երբէք ետու ես բռնադատել մեծատանն զաղքատն։ Ոչ տրտմեցուցի ես զոք 'ի կեանս իմում. վճիռ դատաստանի դառնութեան զումեքէ չհաւանէի։ Զայս ամենայն 'ի կամացն տր յանձին իմում գիտեմ՞ թէ արարեալ է։ Արդ իբրև լուաւ Պափնուտիոս զառնն քաջութիւն, կալեալ զգլուխ նորա համբուրէր և ասէր. օրհնեսցէ զքեզ տէր 'ի Սիոնէ, և տեսցես զբարութիւնս Երուսաղեմ, զի բարւոք զայդ ամենայն կատարեալ ուղղեցեր. արդ պիտի քեզ մի ինչ որ առաքինութեանցն գլուխ է, ամենագիտին տր ծանօթութիւն. զի ոչ կարես դու առանց ջանոյ վաստակոց ստանալ՝ եթէ ոչ դու զանձն քո որոշեալ յաշխարհէ ուրացեալ զտանիցիս; եթէ ոչ առեալ զխաչ քո զհետ փրկչին երթիցես։ Նա իբրև լուաւ զայս, անդէն վաղվաղակի յայտնեաց ոչ իւրոց ընտանեացն, հրաժարեալ զհետ առնն գնաց յանապատ։ Արդ իբրև եկին հասին 'ի գետափն անդր, և տեսին զի ոչ ուրեք նաւ երևէր, եկաց յաղօթս Պափնուտիոս անցանել ընդ գետն՝ ընդ որ ոչ ոք կարէր անցանել վասն խորութեան գետոյն։ Եւ իբրև անցին յայնկոյս և ջուրն գտաւ նոցա մինչև ցգօտիսն հասեալ՝ տարաւ կացոյց զնա 'ի տեղի միոջ, և նա աղաչէր զած լաւագոյն գտանել զանձն իւր քան զայնպիսիսն։ Եւ յետ ոչ բազում ժամանակաց տեսանէր նա զհոգի զառն զայնորիկ զի հրեշտակք իջեալ ընկալեալ տանէին, օրհնէին և ասէին. երանեալ է զոր ընտրեցեր և ընկալար և բնակեսցեն 'ի գաւիթս քո։ Եւ դարձեալ արդարքն պատասխանի տային և ասէին. խաղաղութիւն բազում է այնոցիկ որ սիրեն զօրէնս քո։ Եւ ծանեաւ զայրն կատարեալ։

Եւ կանխէր միշտ Պափնուտիոս, աղաչէր զած և յերկարէր զպահսն՝ ո՞ւմ ումեք նմանիցէ։ Դարձեալ ձայն բարբառոյ եղև նմա յածութէ անտի և ասէ. նման ես դու վաճառականի՝ որ խնդրիցէ գեղեցիկ և մեծամեծ

մարգարիտ. արդ արի կաց դու և մի յամեր, և ընդ ա-ռաջ լիցի քեզ այրն որում դու նմանելոց ես ։ Յարեա-ւ էջ վաղվաղակի և ետես այր մի աղեքսանդրացի՝ այր երկիւղած և ա̃ծասէր. քանզի երկուս բիւրս դահեկանի վաճառ բերէր երկու նաւօք 'ի վերին Թեբայեցւոց ան-տի. զամենայն գանձս առեալ բերէր 'ի վաճառ աղքա-տաց և զամենայն գանձս իւր աղքատաց բաշխեալ, որ իւրով մանկտւով տասն խանթար ունդս բերէր մատա-ցանէր նմա, և այրն բարեկամ էր նորա ։ Սկսաւ խօսել ընդ նմա Պափնուտիոս, և ասէ ցնա վաճառականն. պը-տուղ իմոց վաստակոց են հանգիստ արդարոց առաջի ա̃յ մատուցեալ ։ Ասէ ցնա Պափնուտիոս. իսկ արդ յայդր ամենայնի վերայ ընդէ՞ր ոչ վկայես զքաղցրութե̃ անուն ։ Իմ անդէն խոստովան եղև. քանզի և ես, ասէ, 'ի դմին կամ ։ Ասէ ցնա. իսկ արդ ցե՞րբ զհողեղէն վաճառօք թօ-թափիս և ոչ զերկնաւոր վաճառօք բուռն հարկանես. այլ զայս ամենայն՝ օտարաց, արդ բուռն հարեալ զհետ երթ փրկչին, զի յետ սակաւ ինչ ժամանակաց առ նա երթալոց ես ։ Իսկ նա ոչ յայս բանից կարգաց իւրոց 'ի վեր հանեալ, բայց միայն պատուէր տայր զոր ինչ մնա-ցեալ էր՝ զայն աղքատաց բաշխել ։ Եւ ինքն 'ի լեառն ելեալ, զանձն իւր անդէն 'ի նմին տեղւոջ արգել՝ յորում վայրի յառաջ քան զնա երկու կատարեալքն էին, և անդ կանխէր առ ա̃ծ յաղօթս իւր ։ Եւ յետ սակաւ ժամանակօք անցելոյ, թողեալ զմարմինն՝ երկնաւորացն քաղաքակից լինէր ։ Իսկ նա և զնա ևս յերկինս յու-ղարկեաց. դարձեալ և ինքն զոգին հրաժարեցուցա-նէր՝ իբր ոչ այսուհետև կարեմ վարել զվարդապետու-թիւն ։ Մատեաւ եկաց առ նմա հրեշտակ և ասէ. եկ այսուհետև դու, երանելի, 'ի յաւիտենական 'ի մշտըն-ջենաւոր խորանսն, զի եկեալ հասեալ են աւասիկ մար-գարէքն իւրեանց պարուքն զքեզ ընդունել. զի ես քեզ յառաջագոյն ոչ յայտնեցի, զի մի հպարտացեալ նուա-ղեսցիս 'ի պատուոյ անտի ։ Իսկ նա եկաց յայդր ամե-նայնի վերայ օր մի միայն, ծերոց ոմանց ըստ յայտնութե̃ առ նա եկելոց և զա̃մ ինչ նա նոցա իբրև պատմեաց՝ արձակեաց զոգին ։ Եւ յայտնապէս տեսին զնա ծերքն 'ի գունդս հրեշտակաց վերացեալ յերկինս խառնեալ, և է բարեխօս միշտ վասն ա̃մ աշխարհի առ Ք̃ս ա̃ծ մեր ։

եթէ ընկենուլ զնա արտաքս՝ յոյժ երկնչիմ, քանզի երդուեալ. և եթէ ոչ ընկենուլ զնա, չար աւուրս անցուցանէ ընդ իս։ Եւ նոքա ասեն ցնա. տար զնա առ մեծն, քանզի այսպէս սովոր էին նոքա կարդալ զսուրբն Անտոն։ Եւ նա զինչ ասէ՝ արա, և լեր անդ մինչև ելանէ յայրէ անտի և ասա նմա զիրսն, և նա զինչ ասէ՝ նշանակեա զբանսն, քանզի ած խօսի ընդ ձեան նորա։ Եւ բարի թուեցաւ Պիգինոսի զինչ ասացին նմա։ Եւ եկն սկսաւ փաղաքշել անդամալուծին՝ զի որպէս մարթասցէ տանել զնա առ սուրբն Անտոն։ Եւ ասէ Պիգինոս ցանդամալոյծն. կամիս, տէր, երթամք յաղօթս 'ի վանսն Անտոնի։ Եւ ասէ անդամալոյծն. որպէս դու կամիս։ Եւ յարեան գնացին և եկին առ աշակերտսն Անտոնի և եղեն անդ օր մի։ Եւ եղև 'ի վաղիւ անդր գայր երեկուննն սուրբն Անտոն առ աշակերտսն և ասէր նա. եղբայր Մակար, եկին եղբարք ոք այսօր թէ ոչ։ Պատասխանի ետ Մակար և ասէ՝ եկին։ Եւ ասէ սուրբն ցնա. եգիպտացիք են եթէ պաղեստինացիք։ Եւ ասէ Մակար. խառն են։ Քանզի զայս նշան տուեալ էր սորայն՝ եթէ յորժամ տեսանես հեզագնաց զոք՝ եգիպտացիք են, և յորժամ զազնուական զոք՝ երուսաղէմացիք են։ Եւ յորժամ ասէր նմա Մակար՝ եթէ եգիպտացիք են, ասէր սուրբն. եփէ ոսպնաթան և տուր ուտել. և անէր նոցա աղօթս մի և արձակէր զնոսա։ Եւ յորժամ ասէր Մակար թէ երուսաղէմացիք են, նստէր զամենայն գիշերն և խօսէր նոցա վասն փրկչին մերոյ։ Եւ յայնում աւուր նստաւ յերեկորեայ, կարդաց զաշակերտսն իւր և խրատէր զնոսա ըստ սովորութեանն իւրում։ Եւ ոչ ոք ասաց ցնա եթէ զինչ անուն է Պիգինոսի և սուրբն ոչ ետես, քանզի երեկոյ խաւարչտին էր. և սկսաւ կարդալ զանունն Պիգինոսի, և ասէ երկիցս. Պիգինէ Պիգինէ։ Իսկ Պիգինոս իբրև զայր իմաստուն քողատիկոս ոչ ետ նմա պատասխանի։ Ասէ ցնա դարձեալ սուրբն. քեզ ասեմ, Պիգինէ, որ յԱղեքսանդր քաղաքէ ես։ Յայնժամ ասէ Պիգինոս. աւասիկ եմ, տէր իմ։ Ասէ ցնա սուրբն Անտոն. զի եկիր այսր։ Պատասխանի ետ Պիգինոս և ասէ. որ յայտնեաց քեզ, տէր, զանունն իմ, և զիրս իմ նա ասէ քեզ։ Ասէ ցնա սուրբն Անտոն. գիտացի յինչ իրս եկեալ ես, այլ առաջի եղբարցս ասա

զիրս զի և ողջս գիտասցեն: Եւ ասէ Պիգմենոս. զայս անդամալուծս զոր 'ի վաճառանոցին և ողորմեցայ սմա և երդուայ ա̃յ և ասացի՝ եթէ տուր ինձ համբերութիւն զի համբուրեցից զսա յանուն քո, որպէս զի ես կեցից 'ի համբուրեցանելն զսա. և այս հնգետասան ամ է զի էաք 'ի միասին որպէս և սրբութեանդ քում յայտնեաց ա̃ծ զամենայն: Եւ ոչ գիտեմ զի եղև, դառնացաւ ինքն և դառնացոյց զիս, և խորհեցայ ընկենուլ զսա արտաքս: Արդ զայս եկի խնդրել 'ի սրբութենէդ քումմէ զի ասասցես ինձ զինչ արարից, և աղօթս արասցես վասն իմ, զի չար դառնացեալ եմ ես: Եւ ասէ ցնա սուրբն Պոնտոն ցասմամբ և խժդժութեամբ. ընկենո՞ւս զդա, Պիգմենէ, այլ ա̃ծ որ արար զդա՝ ոչ ընկենու. դու 'ի քէն ընկենուս զդա, ա̃ծ յարուցանէ և բարւոք ես քան զքեզ համբուրեցանէ զդա: Իսկ Պիգմենոս յօժարութեամբ լսէր զբանսն: Եւ եթող զՊիգմենոս Պոնտոն և սկսաւ խօսել ընդ անդամալուծին և ասէ. լուծեալ և աղտեղի, անարժան երկնի և երկրի, ո՞չ կարկես կաս 'ի կռուելոյդ, այլ բարկացուցանես զեղբայրդ. զայս ո՞չ գիտես եթէ վասն Ք̃ի պաշտէ զքեզ. զիա՞րդ իշխես ընդ Ք̃ի բարբառել. ո՞չ գիտես եթէ վասն Ք̃ի ծառայէ քեզ: Եւ եթող զնոսա և սկսաւ մխիթարել զեղբարսն ըստ սովորութեան իւրում: Եւ դարձեալ առ Պիգմենոս և անդամալուծին և ասէ ցնոսա. մի՛ որդեակք իմ, մի՛ խռովեցուսցէ զձեզ խռովիչն, այլ երթայք դուք խաղաղութեամբ և մի՛ մեկնիք 'ի միմեանց, քանզի չարն խռովեցոյց զձեզ. դարձարուք այսուհետև սուրբ սիրով 'ի խորձիթն ձեր, և առաքեսցէ ա̃ծ առ ձեզ հրեշտակ սիրոյ և խաղաղութեան. քանզի ոչ ունէք եղև ձեզ խռովութիւն, բաց 'ի հակառակորդէ անտի. քանզի տեսեալ զձեզ հաւանս և հաւասարս և կատարեալս, և առնոյք զպսակս 'ի Ք̃է, դու վասն սորա և սա վասն քո. գնացէք այսուհետև խաղաղութեամբ, զի եկեսցէ հրեշտակն և գտցէ զձեզ 'ի նմին տեղւոջ միաբանս: Եւ փութացան և եկին 'ի խորձիթն իւրեանց: Եւ յետ քառասուն աւուր ննջեաց երանելին Պիգմենոս և չոգաւ առ տէրն իւր, և որ օր երեք էին՝ ննջեաց և անդամալոյծն. և այսպէս կատարեցան երկոքեանն կատարեալ վարուք:

Եւ ընդ ժամանակսն ընդ այնոսիկ եկն երանելին

Կրոնոս միայնակեացն շրջել 'ի վանորայն, և պատահեալ երանելւոյն յիշատակի սրբոյն Պիգինոսի և անդամալուծին, և առեալ սրբոյ հօրն զաւետարանն և մխիթարէր և խօսէր զբանս կատարեալս վասն կատարելոցն 'ի Քս Յս 'ի տէր մեր։

## ՎԱՍՆ ՈՐՈՑ ՑՈՔՄԻՐԻՆՔՈՍ

### ՔԱՂԱՔԻՆ ՀԱՄՑ

Եկաք հասաք 'ի քաղաք մի Թեբայեցւոց՝ զի անուն էր նորա Ոքսիրինքաս, զորոյ ոչ է հնար պատմել զսքանչելիս նորա. զի լցեալ էին 'ի ներքս անդր վանորայն, իբրու զի գրէ՝ եթէ զպարիսպն մերժեցին 'ի քաղաքէ անտի. նա և շուրջ խսկ բնակեալ էին զքաղաքաւն վանեար, իբրու զի թուիցի ումեք եթէ այս այլ քաղաք է զքաղաքաւն։ Եւ լի էին տաճարք քաղաքին և կըրպակքն միայնակեցօք, և ընդ ամենայն կողմանս քաղաքին բնակեալ էին միայնակեացք. և երկոտասան եկեղեցիք էին 'ի քաղաքին ըստ մեծութեան քաղաքին ուր ժողովուրդք ժողովէին։ Եւ վանականաց տունք աղօթից ևս ազնուականագոյնք էին, և գրէ՝ թէ առաւելագոյնք էին միայնակեացքն քան զաշխարհականսն ըզքաղաքացիսն։ Եւ յամենայն գնացս քաղաքին և յաշտարակս դըրանցն վանք վանք նստէին. հինգ հազար միայնակեացք ասէին թէ իցեն անդր 'ի ներքս, նոյնքան արտաքոյ ևս զնովաւ պատեալ էին։ Եւ ոչ էր ժամ 'ի տուընջեան յորում պաշտօնն մեծ որ առ Ած՝ դադարէր։ Նա և 'ի հերեսիոտաց անտի ոչ մի ոչ գոյր բնակիչ, և ոչ հեթանոս գոյր բնաւ ամենևին 'ի քաղաքի անդ, այլ ամենեքեան միանգամայն հաւատացեալք և կնքաւորեալք էին, և երեխայքն՝ որ կարող էին համարձակ ողջոյն տալ եպիսկոպոսին և 'ի հրապարակս ողջոյն ժողովրդեանն։ Իսկ մեծամեծք նոցա և իշխանք և քաղաքապետքն մանաւանդ զառատութիւս պարգևացն քաղաքայնոցն նուիրէին յանցս յանցս քաղաքին, և 'ի դրունս քաղաքին դէտս համապազ կացուցանէին եթէ ոք աղքատ օտար երևին՝ ածել առ իւրեանս, զի մատիցեն տացեն իւրաքանչիւր ոք մխիթարութիւն 'ի ծախոց

խուրեանց ։ Իսկ զիւրդ ոք մարթասցէ պատմել զխոնարհութիւն երկիւղածութեան զօրաց նոցա. որք իբրեւ տեսանէին զմեզ եթէ օտարք ոմանք ընդ հրապարակն անցանեն՝ իբրեւ ընդդէմ հրեշտակաց գային պատէին զմեօք ։ Կամ զիւրդ ոք մարթէ զբազմութիւն պատմել զկուսանաց միայնակեցաց, զի անթիւս կային ։ Բայց որչափ ոք 'ի սուրբ եպիսկոպոսէ անտի ստուգէր, զի պատմէր մեզ որ ընդ ձեռամբ նորա էին՝ բիւր միայնակեացք և երկու բիւր կուսանք ։ Իսկ զհիւրասիրութիւն նոցա կամ զսէր նոցա՝ որպիսի սէր ունէին առ մեզ՝ անհնար է պատմել, զի պատառէին բաճկոնք մեր յայսկոյս յայնկոյս ձգտելով ։ Տեսաք մեք անդ հարս մեծամեծս որ ազգի ազգի շնորհս յանձինս իւրեանց բերէին, զոմանս կարգօք, զոմանս բանիւք, զոմանս ազգի ազգի շնորհօք և արուեստիւք ։

## ՎԱՍՆ ԹԷՈՎՆԱՑ

ՏԵՍԱՔ մեք և այլ ոչ ինչ կարի հեռի 'ի քաղաքէ անտի յանապատ կողմ կոյս՝ Թէովնաս անուն նորա, այր սուրբ, 'ի խցկան միոջ միայն, այր արգելական, որ երեսուն ամ էր զի նստէր լռութիւն պահեալ, որ մեծամեծ բազում զօրութիւնս կատարեալ էր, իբրեւ զմարգարէ էր 'ի մէջ նոցա. զի եկանէին առ նա բազմութիւնք ժողովրդոց տկարաց, և ընդ պատուհանն ձեռն դնէր 'ի վերայ նոցա և բժշկեալ արձակէր զնոսա ։ Այլ անդ էր տեսանել զերեսս նորա իբրեւ զերեսս հրեշտակի զուարթագին աչօք և ամենալի շնորհօք ։ Յորոյ վերայ ոչ քան զչուտ ժամանակս աւազակք 'ի վերայ հասեալ էին՝ օտարք 'ի հեռաստանէ. համարեալ էր նոցա թէ ոսկւոյ ինչ գանձք բազում գտանիցին առ նա, և կամէին սպանանել զնա ։ Նա եկաց յաղօթս, նոքա հարան կացին փայտացեալք առ դուրս նորա մինչև յառաւօտն ։ Ի վաղիւ անդր իբրեւ եկին ժողովեցան ժողովուրդքն առ նա, կամեցան կենդանւոյն այրել զնոսա ։ Հարկ եղև սրբոյն 'ի լռութէ անտի խօսել ընդ նոսա. Թոյլ տուք, ասէ, երթալ գնալ դոցա ողջանդամ 'ի դրաց իմոց. ապա թէ ոչ՝ շնորհք բժշկութեան ձերոյ 'ի բաց հալածին յինէն ։ Նոքա լուան վաղվաղակի 'ի հարկէ, քանզի և անարգել

զբանն ոչ իշխէին։ Իսկ աւազակքն անդէն անցին մնա-ցին որ շուրջ զնովաւ անդէն վանեարն էին՝ փոխեալ զբարս իւրեանց և 'ի վերայ անցելոց իրաց յապաշխա-րութ̃ն մտեալ։ Այս էր ուսեալ այրն այն երեքկին բար-բառ շնորհաց՝ յոյն և ղաղմատ և եգիպտացի ընթեր-ցուածս, որպէս 'ի բազմաց այլոց և 'ի նմանէ հաստա-տել մարթացաք. զի իբրու գիտաց զմէնջ եթէ օտարք ամենք են, գրեաց 'ի տախտակս և գոհացաւ առ ա̃ծ վասն մեր։ Բայց ուտէր նա կերակուր ունդ որ առանց եփելոյ էր։ Եւ ելանէր արտաքս գիշերն 'ի խցկանէ ան-տի, և որպէս զրոյց տային՝ և ընդ գազանս անապատի շրջէր և զջրիկն որ գտանէր՝ նոցա արբուցանէր. զի էր զհետս տեսանել գազանաց և ցռուց և զայծեմանց շուրջ զվանօք նորա, և նոքօք ցնծայր հանապազ։

## ՎԱՍՆ ԵՂԻԱՅԻ ՄԻԱՅՆԱԿԵՑԻ

ՏԵՍԱՆԷԱՔ մեք անդ միւս ևս այլ ծեր յանապատի անդ Անտինեայ քաղաքի, Եղիա անուն, զի էր նա ա-մաց հարիւր և տասն. յորոյ վերայ ասէին եթէ հոգի մարգարէին Եղիայի հանգուցեալ էր և հռչակաւոր էր ընդ ամենայն ահագին անապատն, զի էր անդ նստեալ ամս եօթանասուն։ Այլ ոչ ինչ է ումեք հնար արժանի պատմել զդժուարութ̃ն անապատին այնորիկ յորում նա նստէր, և ոչ էր նա իջեալ անտի երբէք յաշխարհ։ Բայց շաւիղ մի նուրբ ելանէր որ առ նա երթային, զի հազիւ ոք կարէր կալ 'ի վերայ ոտիւք իւրովք, զի առատ անտի վէմք չարաչարք զշաւիղն ունէին. և էր անդ նըս-տեալ ընդ վիմով միով առաջի այրին։ Զի և տեսիլ նո-րա յոյժ ահագին էր. և առ հասարակ ամենայն ան-դամքն դողդոջայր 'ի ծերութ̃է անտի տագնապեալ։ Այլ բազում ևս զօրհանապազ նշանս և արուեստս առնէր և բժշկութիւնս 'ի վերայ հիւանդաց, և ոչ դադարէր։ Այլ ասէին որ շուրջ զնովաւ հարքն էին՝ եթէ ոչ ոք երբէք յիշէ երբ լեալ է ելք նորա 'ի բարձունս անդր։ Այլ ու-տէր նա 'ի ծերութ̃ն իւրում ժամէ 'ի ժամ ընդ երեկոյն երիս նուկի հաց և երիս ձիթապտուղս. բայց 'ի ման-կութ̃ն իւրում սքանչելիք էր զա̃մ աւուրս կենաց իւրոց։

# ՎԱՍՆ ԱՊՈՂՈՆԵԱՑ

ՏԵՍԱՆԵՆՔ մեք և այլ ծեր մի սուրբ, զի անուն էր նորա Ապողոն 'ի կողմանս Թեբայեցւոց 'ի սահմանս Հերմոպօղէոս, յոր փրկիչն մեր Մարիամաւ և Յովսեփաւ հանդերձ եկն եմուտ և կատարեաց զմարգարէութիւն զի ասէ. ահաւասիկ տէր նստեալ գայ թեթև ամպով և եկեսցէ յերկիրն եգիպտացւոց, և շարժեսցին պակերակերպ ձեռագործքն եգիպտացւոց և կործանեսցին յերկիր: Տեսաք մեք անդ և զմեհեանն յոր եկն եմուտ փրկիչն մեր 'ի քաղաքի անդ, ուր անկան կործանեցան կուռքն 'ի վերայ երեսաց իւրեանց յերկիր: Տեսաք մեք զայրն զայն յանապատի անդ վաննեար շինեալ՝ հայր վանականաց իբրև հինգ հարիւր. որ և ինքն հռչակաւոր էր յերկրին Թեբայեցւոց, և զօրութիւն բազումս առնէր ած 'ի ձեռն նորա, և նշանս և արուեստս կատարէին բազումս: Սա 'ի մանկութենէ բազում վաստակս վաստակեալ՝ 'ի կատարածի հասակի իւրոյ այսպիսի շնորհաց արժանի եղեալ, զի ինքն ութսունամեայ էր և շինեաց վանս մեծ արանց կատարելոց՝ թուով իբրև հինգ հարիւր, որ ինքեանք իսկ հզօր էին առնել նշանս և արուեստս: Նա 'ի հնգետասանամենից միայնակեաց եղև յաշխարհէ, և քառասուն ամ 'ի մեծ յահագին յանապատի անդ կատարեաց և յամենայն առաքինութիւն քաջութեամբ վարժեցաւ:

Յետոյ բարբառ լուաւ նա յայս զի խօսէր ընդ նմա՝ Ապողոն Ապողոն, ասէ, 'ի ձեռն քո կորուսից զիմաստութիւն եգիպտացւոց և զմեհեանս անմտաց հեթանոսաց անարգեցից. ապականեսցես դու ընդ նոսա և զիմաստութիւն բաբելացւոցն և զամենայն սատանայութիւն դիւթութեան պաշտամունս 'ի միջոյ 'ի բաց կորուսցես. և արդ ել գնա դու յաշխարհ, զի ծնցիս դու ինձ անդ ժողովուրդ սեպհական նախանձաւոր գործոց բարութեան: Նա պատասխանի ետ նմա և ասէ. 'ի բաց առ յինէն, տէր, զհպարտութիւն ամբարտաւանութեան, գուցէ հպարտացեալ քան զամենայն եղբայրութիւն՝ 'ի մեծաբարի առաքինութենէ անտի զրկեցայց: Խօսել սկսաւ ընդ նմա

բարբառն ածութեան և ասէ. արկ զձեռն քո ընդ պարանոցաւ քով, և զինչ ըմբռնեսցես դու այդր՝ թաղեսցես զնա ընդ աւազով: Եւ անդէն վաղվաղակի արկանէր ընդձեռն ընդ պարանոցաւն և ըմբռնէր անդ պատառնեակ մի հնդիկ փոքրիկ և թաղէր ընդ աւազովն, զի աղաղակէր և ասէր. վայ, ես եմ դևն ամբարտաւանութեան: Պատձեալ եղև նմա բարբառ 'ի վերուստ և ասէ. եւ զնա զի զամենայն զոր ինչ խնդրեսցես դու յայ՝ գտցես:

Եւ իբրև լուաւ, անդէն վաղվաղակի դիմեաց յաշխարհ ընդ ժամանակս Յուլիանոսի բռնաւորի արքայի, և անցեալ բնակէր 'ի մերձաւոր յանապատի անդ. այր մի եգիտ անդ և անդ կալաւ վանս ընդ լերամբն: Եւ գործ էր նորա զօրն ցերեկ աղօթս մատուցանել առ ած, հարիւր անգամ՝ 'ի գիշերի, նոյնչափ ծնրադրութք 'ի տուընջեան. և կերակուր նորա առ ժամանակ անդր՝ որպէս յառաջ իսկ՝ յայ առանց պաճուճանաց մատակարարէր. քանզի մինչդեռ յանապատի անդ էր, 'ի ձեռն հրեշտակի կերակուր համբարէր նմա: Եւ էր հանդերձ նորա դեբիտոն, զոր ոմանք կողոբիոնայ թարգմանեալ կոչեն, և ընծայեալ մի փոքրիկ զգլխով նորա, զի այն էր որ մնացեալ էր նմա յանապատի անդ առանց մաշելոյ:

Եւ էր նա մերձաւոր յանապատին մօտ յաշխարհ, զօրութք հոգւոյն հուպ յաշխարհի շրջելով՝ նշանս և արուեստս և բժշկութիւս և սքանչելիս բազումս առնէր. և ոչ ոք մարթէ վասն բազմութեան առաւելութեան սքանչելեացն պատմել, որպէս և յայնցանէ իսկ լուաք՝ որ ընդ նմա էին, 'ի մեծամեծաց ծերոց և 'ի նոցուն կատարելոց և յառաջնորդաց բազում եղբայրութեանց: Եղև վաղվաղակի հռչակաւոր այրն իբրև նոր ոք մարգարէ և առաքեալ դէպ մերում դարուս հասեալ, և համբաւ հռչակաւոր ընթանայր ընդ ամենայն կողմանս. և ամենեքեան որ շուրջն էին միաբանակեացք բնակեալ՝ առ նա ժողովէին, իբրև առ հայր բունն՝ զիւրեանց ոգիս և զանձինս պատարագ բերեալ մատուցանէին: Նաև նա զոմանս 'ի տեսիլս կոչէր, և զոմանս յարդիւնաւորութիւ առաքինութեան մատուցանէր. նախ յայտ առնէր զօրծովքն, առանց հպարտութեան առնել խրատէր, զի բազում անգամ յայտ առնէր նոցա զվարս առաքինութեան: Կիւրակէ 'ի կիւրակէ միայն ինչ ճաշակէր. այլ ինքն ոչ

ինչ այլ ունէր, բայց միայն բանջարիկ ինչ ինքնեակ բու-
սեալ յերկրէ ։ Ո ի բազում անգամ յանդիմանեաց
զվարս առաքինութեան նոցա. ոչ հաց և ոչ ունդս և ոչ
զինչ միանգամ 'ի ծառոց պտուղս իցեն՝ ճաշակէր, և
ոչ զինչ միանգամ հրով գործէր՝ զայն ուտէր ։

Արդ իբրև լուաւ երբեմն 'ի ժամանակս Յուլիանոսի,
եթէ եղբայր ումն 'ի զօրսն կալեալ՝ 'ի բանտի կապեալ
նստի, եկն եհաս 'առ նա եղբայրութ̃ն հանդերձ, աղա-
չէր զնա և խրատէր համբերել ցաւոցն, և 'որ ինչ միան-
գամ վիշտք 'ի վերայ գայցեն՝ արհամարհել զնոսա. զի
ժամանակ այս է պատերազմի նմա, և զխորհուրդս նո-
րա 'ի նեղութեան փորձել ։ Իսկ իբրև հաստատեաց զմիտս
նորա բանիւքս այսոքիւք, եկն եհաս զօրագլուխն ուժով
չարին վառեալ, իբրու զի գուշակ եղեն ոմանք վասն նո-
ցա. փականս նորա դրրաց բանտին արկանէր, և զնոյն
ինքն և որ ընդ նմա մնակեացք եղբարք երթեալ էին՝
'ի ներքս արգելոյր, իբրև զի նոքին իսկ արժանացին
զինուորութեան. և պահապանս բովանդակս 'ի վերայ կա-
ցուցանէր. և ինքն յապարանս իւր գնայր, և բանից ան-
գամ ունկն չեդեալ՝ խստացեալ գնայր ։ Ի մէջ գիշերին
կանթեղնաւոր հրեշտակ երևէր պահապանացն, և 'ի
սաստկութեան շողիւն լուսոյ զամենեքումբք փայլատակէր
որ 'ի տան անդ էին, մինչև 'ի սքանչելի զարմանալեաց
անտի ցամաքել պահապանացն. որք յարուցեալ վաղ-
վաղակի աղաչէին զնոսա երթալ գնալ 'ի նոցանէ դը-
րամբքն փակելովք. զի լաւ համարէին՝ թէ ինքեանք մե-
ռանիցին վասն նոցա, քան թէ յերկնից եկեալ բար-
կութեան անառանաբար առ հասարակ ամենեցուն կոտո-
րել, և կամ զա̃ծութ̃ն ազատութ̃ն՝ որ 'ի վերայ նո-
ցա տարապարտն կալեալ եկեալ էր, արհամարհել ։ Իսկ
զօրագլուխն իշխանօքն հանդերձ ընդ այգն ընդ առա-
ւօտն 'ի դուրս հասանէր բանտին, սաստէր տագնապէր ե-
լանել արանցն գնալ 'ի քաղաքէ անտի. զի շարժումն մեծ
եղև ապարանից նորա, և զընտիր ծառայիցն 'ի ներքս
փլուցեալ կոտորէր ։ Իսկ սուրբքն իբրև լուան բարբա-
ռոյն, գոհութեամբ օրհնէին զա̃ծ, և ելեալ անդրէն
յանապատ անդր դիմէին ։

Իսկ էին այնուհետև ամենեքին միաբան ըստ օրինա-
կի առաքելոցն. և էին, ասէ, նոքա ամենեքին սիրտ մի և

հոգի մի։ Որդ ուսուցանէր զնոսա զօրհանապազ առա-
ւել զուարճանալ 'ի գործս առաքինութե, և զանհնար
բիւրապատիկ զխորհուրդսն սատանայի անդէն վաղվա-
ղակի 'ի սկզբան անդ վարել կարծել. զի գլխոյ օձին առ
'ի ջաղջախելոյ՝ ամենայն մարմինն մեռեալ լինի. զի մեզ
հրաման տուաւ, ասէ, 'ի տեառնէ սպանել գլխոյ օձին,
այսինքն է՝ զի մի 'ի սկզբան անդ զյոռութե խորհուրդս
զանպատեհս զմտաւ ածել յանձն առնուցուք, թող թէ
զպղծութեցն որ 'ի մտի եդեալ՝ թօթափեալ գտանել։
Այլ ջանասջիք, ասէ, զմիմեամբք ելանել առաքինու-
թեամբքն. զի մի այլ քան զընկեր քաջութբքն 'ի վայր
գտանիցի։ Այլ առակ օրինակի այս է, ասէ, վարուցն
առաքինութե յառաջադէմ լինելոյ, յորժամ զանչար-
չարութիւն և զանցանկութիւն երկրաւոր կենացս յան-
ձինս ձեր ստացեալ իցէք. զի սկիզբն է շնորհացն այ
այս ամենայն։ Այլ յորժամ նշանաց և արուեստից
սքանչելեաց զհանդէս ոք ցուցանել մարթիցէ, մի հպար-
տանայցէ. և մի բարձրասջիք 'ի խորհուրդս ձեր, որ ա-
ռաւել ևս իմն ինչ քան զընկերսն մեծարեալ. և մի 'ի
ցոյցս ինչ առնիջիք, յորժամ այնպիսի շնորհաց հասեալ
գտանիջիք. ապա թէ ոչ՝ զանձինս ձեր խաբէք, կապուտ
կողոպուտ յուզիղ խորհրդոց անտի մնացեալ գտանիցիք,
և 'ի շնորհաց անտի զրկեալ գտանիջիք։ Որդ առնէր 'ի
բանից մեծամեծ զայս վարդապետութիւս, որոց և մեք բա-
զում անգամ յետոյ փորձեալ լեաք. այլ գործովք և
արդեամբք մեծամեծ ևս քան զսոյն առնէր կատարեալ,
զի ամենայն խնդրուածք անդէն վաղվաղակի կատարէին՝
զոր խնդրէր յայ։ Այս և յայտնութիւս բազումս տեսա-
նէր. և ետես նա զիւր զերեց զոգւոյ եղբայրն 'ի հե-
ռաստանէ յանապատի անդ կատարեալ, որ մեծամեծ
վարուց առաքինութիւս քան զնա ցուցանէր. ընդ որում և
ինքն իսկ բազում ժամանակս յանապատի անդ կեցեալ
էր։ Որդ տեսանէր նա 'ի տեսլեան զանձն իւր աթոռա-
կից եղեալ առաքելոցն, և զժառանգութի առաքինութեցն
իւրոց նմա թողեալ. և իբրև աղաչէր վասն նորա զած,
և ինքն խնդրէր վաղվաղակի փոփոխումն լինել նմա յայ,
և ընդ նմա յերկնից հանգիստ անդր մտանել։ Որդ իբ-
րև խօսել սկսաւ ընդ նմա փրկիչն, և ասէ. սակաւիկ
միւս ևս ժամանակս պարտապան ես կալ յերկրի վասն

կատարման, Մակոզան, մինչև զատակ օրինակաց կարգաց վարուցդ քոց բազումք նախանձեալ յանձինս իւրեանց կրեսցեն։ Զի այլ ոմն մեծ 'ի միայնակեցաց անտի զայն կարգման ընդունելոց էր, և գունդ մի բարեպաշտացն, որ-ժանի վաստակացն զհանդէս բարութե սա առեալ բե-րիցէ առաջի մեծութեցն։

Զայս 'ի տեսլեան տեսիլ տեսանէր, որ եղև իսկ. զի եկին ժողովեցան բազումք 'ի բազում կողմանց 'ի լուր ականջաց առ նա, և վասն վարդապետութե իւրոյ և վարուց կարգացն սաքինութե։ Իսկ զի բազումք ա-մենեքին ամենայնիւ հրաժարեալք յաշխարհէ՝ լինէին միայնակեացք ընդակեացք. բազում եղբարք 'ի միասին առ նա ժողովեալք, որպէս յառաջն ասացաք՝ իբրև հան-դէս բիւր միաբանակեացք, մի պաշտօն, 'ի մի սեղան և մխիթար անձանց 'ի կերակուր։ Իսկ անդ էր տեսանել զնոսա իբրև գունդ մի հրեշտակաց 'ի սպառազինութի զարդարեալ 'ի զարդ սպիտակազարդ հանդերձի։ Իսկ բան գրոյն առ նոսա կատարեալ, որ ասէ. ուրախ լեր, անապատ ծարաւի, ցնծեա և աղաղակեա որ ոչ ծնար. զի բազում են որդիք այրւոյն քան զարամբւոյն։ Լցեալ կատարեցաւ բանս այս մարգարէութե 'ի վերայ հեթա-նոսաց եկեղեցւոյն. լցեալ կատարեցաւ և յեգիպտա-կան անապատի անդ, զի բազմագոյն ևս որդիս ծնեալ՝ ած կացոյց առաջի առաւել քան զշէն աշխարհն հեթա-նոսաց. զի ո՞ւր, յորո՞ւմ 'ի քաղաքաց անտի այնչափ կու-տեալ էին միայնակեցաց երամակքն, որչափ եգիպտա-կան անապատն առաջի այ զիւր զմանկունսն կացուցա-նէ. զի որքան սաստ ժողովուրդք են, այնչափ յանապատ միայնակեացք բնակեալ են։ Իսկ ինձ այսպէս թուի, եթէ բան առաքելոյն 'ի վերայ նորա կատարեալ է, զոր ասէ. ուր առաւելան մեղքն, առաւել ևս եղեն շնորհքն. զի բազմացեալ էին յերկիրն եգիպտացւոց բազում իմն անկարգ աղտեղութիւք և կռապաշտութիւնք, իբր ոչ 'ի միում ումեք երբէք 'ի հեթանոսաց. զի շունս և կուզս և գայլս և կապիկս պաշտէին, և այլ ինչ՝ զոր և բնաւ անարգ է ասել, զսոխ և զխստոր և զայլ անարգ բանջա-րոցն իբրև աստուածս իւրեանց համարէին։ Որպէս և 'ի սրբոյ հօրն անտի մեր Մակոզանէ լուաք, որ պատմէր վասն նոցա, որ զբազմաստուածութիւն նոցա մեզ պատ-

մեր. եղինն, ասէ, որ իբրեւ զմի երկիր պատգամնէին առաջին հեթանոսքն. զի նովաւ, ասէ, զարդիւնաբարութիւն կատարեն, եւ ՚ի նմանէ կերակրին. իսկ զջուրն Եղեղսի, զի զանդաստանս նոցա արբուցանէր: Եւ զերկիրն պաշտէին իբրեւ առատաբեր պտղոյ քան զամենայն երկիրս աշխարհի: Այլ զայլ սնոտիսն՝ զշունսն եւ զկուզս եւ զցայլս եւ զկապիկս եւ զամենայն անօրէնութիւս բանջարոց պաշտէին, կամ դազանս կամ ձկունս, իբրու զի պատճառք լեալ էին նոցա զբաղուանն այն ՚ի ժամանակին Փարաւոնի անպարապութի եղեալ իւրեանց աղբելոյ, ՚ի ժամանակին՝ իբրեւ նա զհետ երթեալ Մովսէսի՝ ՚ի ծովն ընկղմեցան. այր իւրաքանչիւր յորում զբաղման լեալ էր չերթալ զհետ Փարաւոնի, զայն իսկ աստուածացոյց եւ ասէր՝ սա փրկիչ եղեւ ինձ այսօր, վասն այսորիկ իսկ եւ ոչ կորեայ ընդ Փարաւոնի: Զայս ինչքն զամենայն՝ որ բանիւ պատմէր սուրբն Եպիփան:

Իսկ որ ինչ առաւել գործովք եւ արդեամբք առաւել քան զբանիւք ունէր, պարտ եւ պատշաճ է եւ զայն գրել. զի էին եւ առ նովաւ հեթանոսք բնակեալ ընդ ամենայն տեղիսն, գիւղք աւանք տասն մերձագոյնք ՚ի նա, որ ըղղիւապաշտութե պաշտամանս պաշտէին ՚ի նա. եւ մեհեան մի մեծ ՚ի միում ՚ի գիւղաքաղաքի անդր. եւ անդ էին կուռք մի յոյժ երեւելի եւ փայտեղէն ուրեմն ոմն պատկերն այն էր. եւ իբրեւ ՚ի հանդիսի առեալ շրջեցուցանէին զնա գիւղից գիւղից, զորով քուրմքն բազմօքն հանդերձ պարս առեալ կաքաւէին. կեաք զջուր գետոյն պաշտամանս կատարէին: Դէպ եղեւ ՚ի նմին ժամանակի ընդ այն անցանել Եպիփանեայ եղբարքք սակաւուք. եւ իբրեւ հայեցաւ եւտես զբազմութի մարդկանն դիւացնեալ ընդ վայրսն մոլեգնէին, ծունր եդեալ վաղվաղակի եւ յաղօթս սկսաւ կալ առ փրկիչն: Եւ առ հասարակ ամենայն մարդիկն հեթանոսաց ածեալ կացեալ ՚ի կաքաւոյ անտի անշարժ կային: Որք իբրեւ յառաջել ըստ տեղին ոչ կարէին, այլ զընկեր մղէր յառաջ. եւ այնպէս զցերեկն ամենայն ՚ի տօթի անդ ջեռեալք խարշատպատէին. ընդ միտս իւրեանց անկեալ՝ ՚ի վարանս մտեալ էին, ուստի իցէ անցիցս այնոցիկ ընդ նոսա անցանել: Զայնժամ քուրմքն խօսել սկսան, եթէ հաստատուն ՚ի քրիստոնէից ոք գոյ ՚ի վայրս աստ, որ աստէն

յանապատիս աստ յայսմիկ բնակեալ իցէ, և այս ազգք ընդ մեզ յայսմանէ անցանեն, իբրու զի թէ զԱպողոնեայ ասէին, և ջանային աղաղակելով տեսանել զնա, զի մի կորիցեն: Այլ որ 'ի հեռաստանէ բնակեալ էին, 'ի գոյժ անցից և յաղաղակ ելեալ գային. և զինչ այդ իրք իցեն արդեօք, ասէին, որ ընդ ձեզ անցանեն, կամ ուստի՞ եղեն. և նոքա ոչ գիտեմք, ասէին: Բայց լոկ կարծեմք միայն վասն առնն ասէին, թէ պարտ և պատշաճ է մեզ զնորա միտսն հանձնել. կեանքն և վկայութիւն ևս տային, եթէ մեք լոկ տեսաք, զի անց ընդ այս: Այլ իբրև աղաչեցին զնոսա, եթէ հնարեցէք ինչ, զի վաղվաղակի օգնութիւն ինչ տացէ մեզ. եղինս ածեալ առկեալ` շարժել 'ի տեղւոջէ անտի զպատկերն կամէին. իսկ այն իբրև անշարժ քրմօքն հանդերձ 'ի տեղւոջն անդէն ցցեալ կայր: Այլ իբրև ոչ այլ ինչ մի ինչ մեկնենայս կարացին գտանել, հրեշտակս բարեխօսս 'ի մերձաւորաց անտի առ Ապողոն յղէին, զի 'ի բաց գնասցեն անտի. զի և ինքեանք 'ի մոլորութենէ անտի խոստովանեալ դառնային: Որդ իբրև լուր եղև առնն, էջ վաղվաղակի առ նոսա այրն այ. և իբրև եկաց յաղօթս, և լուծան ամենեքեան 'ի կապանաց անտի. նոքա ամենեքին առ հասարակ 'ի վայր խաղացին, 'ի նորա փրկիչն ամենայնի 'ի սքանչելագործն այ հաւատացին. անդէն վաղվաղակի զկուռսն հրով այրէին: Այլ զնոսա զամենեսեան դարձուցեալ 'ի հաւատս` 'ի ժողովուրդն յաւելուր. զի բազումք 'ի նոցանէ մինչև ցայսօր ժամանակի արգելականք եղեն, և ընթացան համբաւքն ընդ ամենայն կողմանս նորա. և հաւատացին բազումք 'ի տէր, զի յայնմհետէ այնուհետև ամենեքին ոք 'ի սահմանս նոցա հեթանոս անուն չանուանէր:

Այս իբրև ոչ առ բազում ինչ ժամանակս աւանք երկու առ միմեանս 'ի հակառակ մատուցեալ` պատերազմ ընդ միմեանս տային, վասն անդրիցն մարտնչէին: Իբրև լուր եղև առնն, վաղվաղակի գնաց առ նոսա` հաւանեցուցանել զնոսա 'ի խաղաղութիւն: Իսկ որ 'ի միոջէ կողմանէ անտի իբրև ոչ անսային, այլ ընդդէմ կային նմա, յայր մի յաւազակապետ յուսացեալ էին իբրև առ պատերազմն. իբրև ետես զնա, թէ ստէպ ստէպ ընդդէմ կայր նորին և ոչ անսայր նմա, ասէ ցնա Ապողոն.

եթէ ունկնդիր լիցիս ինձ իբրև զբարեկամ; աղաչեցից ես զոտէր իմ՝ Թողութիւն առնել ամենայն մեղաց քոց։ Նա իբրև լուաւ, ոչ ինչ հեղգացաւ, այլ զզէնն 'ի բաց ընկեց վաղվաղակի, և զոտիւք ծնգաւքն հատանէր փարէր, և աղաչէր միջնորդ ևս եղեալ խաղաղութեանն՝ զիւր կողմնն անդրէն 'ի տունս իւրեանց յուղարկէր։ Արդ իբրև նոքա խաղաղացան՝ անցին գնացին, որ հուշակաւոր նահատակն էր նոցա, զհետ երթայր այնուհետև առնն զխոստացեալն կատարել։ Զնա իբրև ընկալաւ երանելին Ապողոն, 'ի մերձաւոր անապատի անդ պատուիրէր զանեղի առնուլ և համբերել, զի կարող է ա̃ծ զայն ամենայն տալ նմա։ Արդ իբրև գիշեր եկն եհաս, և արդ աւանիկ արք յերկնից յերազի իջեալ կային առաջի բեմին Ա̃ծի. տեսանէի, ասէ, որ արդարութեամբն ա̃յ երկրպագէին, նոյն օրինակ և նոքա 'ի վերայ երեսաց իւրեանց անկեալ՝ երկիր պագանէին փրկչին։ Նովե բարբառ յերկնից յա̃յ առ նոսա և ասէ. զինչ հաւասարութիւն է լուսոյ ընդ խաւարի, կամ զինչ մասն կայ հաւատացելոյն ընդ թերահաւատին, կամ զիա՞րդ է աւազակ զի մարդասպանդ առ արդարոյդ, քանզի և ինքնդ իսկ անարժան է այդպիսում տեսլեան. այլ երթ գնա, այր դու, շնորհեալ լիցի քեզ յատածնինդ այդ, 'ի քեզ անկեալ փախստեայդ այդ։ Այլ զի և այլ բազմապատիկ ևս լուաք, և տեսաք զսքանչելիս, զի ոչ բանիւք ոք մարդ կարէ ասել, և ոչ ունկն լսել, զուարթագին եղեն և որ ընդ նմա էին, նոցա ցուցանէին. սքանչացեալ էին ամենեքին, զի զմի և զնոյն տեսիլ երկոքեան պատմէին։

Արդ անց մնաց այնուհետև մինչ 'ի կատարած ժամանակին իւրոյ ընդ միայնակեացսն, որ ոչ մարդասպան՝ զբանս առաջինս 'ի կարգ ածեալ, իբրև գառն մի անմեղ 'ի գայլեղէն բարուցն փոփոխեալ, կատարեցան 'ի վերայ նորա գիրքն Եսայեայ մարգարէի, զի ասէ. գայլք և գառինք 'ի միասին ճարակեսցին. եզն և առիւծ 'ի մի մսուր յարդ կերիցեն։ Զի և անդ էր տեսանել արս հրեդիկս ընդ միայնակեացս բնակեալ, և բազում ևս այլս, որ առաւել ևս էին առաքինութեամբն, և կատարեալ 'ի վերայ նոցա գիրն զի ասէ. և հնդիկք յառաջագոյն ձեռնատու լիցին առ ա̃ծ։

Դարձեալ յայլում ժամանակի ժողովեալ էին հե-,

թանոսք առ քրիստոնեայ գեղջկայն 'ի վերայ անդաստանացն 'ի մարտ պատերազմի, և բազմութիւն յոյժ երկոցունց կողմանցն վառելոց. եկն եհաս 'ի վերայ Ապողոն խաղաղութիւն առնել. ընդդէմ դարձան նմա նահատակքն հեթանոսաց՝ իբրև անհնար իմն և վայրենի էր, բռնացեալ պնդեալ էր, և ասէր. ոչ առնի խաղաղութիւն մինչև 'ի մահն իւրեանց: Ասէ նա ցնա. այդ իսկ լիցի զոր ընտրեցերդ. զի այլ ոք ամենևին մի մեռցի, բայց դու. զի եղիցի՝ իբրև մեռեալ իցես դու, ոչ եթէ երկիրս քեզ գերեզման լիցի, այլ կուշտք գազանաց և անգեղաց՝ որ յագեսցին 'ի քեզ: Եւ անդէն բանքն վաղվաղակի արդիւնք լինէին. և ոչ ոք էր 'ի միոջէ կողմանէ որ մեռանէր, բայց միայն նահատակն այն, զոր թաղեցին անդէն իսկ ընդ աւազովն. 'ի վաղիւ անդր գտանէին բրեալ փորեալ հանեալ պատառեալ յանգեղաց և 'ի թռչնոց: Արք իբրև տեսին զսքանչելիսն և զկատարել բանիցն, ամենեքեան 'ի փրկիչն հաւատացին, մարգարէ ոմն զնա քարոզէին:

Եւ էր ոմն յառաջ քան զնա 'ի յայլի անդ լերինն, ուր սուրբն Ապողոն հինգ եղբարք ոմանք հանդերձ, և որոց յառաջ իսկ առ նմա աշակերտեալ էին: Եւ իբրև եկն եհաս տօն զատկացն, և զպաշտօնն առ ած պաշտեցին, կամէին եթէ որ ինչ գտեալն է՝ զայն ուտել. և էին անդ նկանակք սակաւ ինչ ցամաքեալ, և բանջարկունք իմն ուստեք ուստեք ժողովեալ: Արդ սկսաւ Ապողոն խօսել ընդ նոսա. եթէ գուցեն հաւատք 'ի մեզ, որդեակք՝ մանկունք ճշմարտիւ Քի, խնդրեսցէ այր իւրաքանչիւր 'ի տեառնէ՝ որ ինչ ըստ մտի իցէ իւրաքանչիւր առ 'ի ճաշակել: Իսկ նոքա զամենայն ինչ 'ի նա առնէին, զի զանձինս անարժանս համարէին յայնպիսի շնորհս: Նա իբրև զուարթագին երեսօք եկաց յաղօթս, և ամենեքին իբրև զամէնն ասացին, անդէն վաղվաղակի հասանէին 'ի դուռն այրիցն արք ոմանք օտարականք անծանօթք ամենեքին. որք զանձինս իւրեանց 'ի հեռաստանէ պատմէին եթէ եկեալ իցեն. զամենայն ինչ բարձեալ բերէին, որչափ ինչ ամենայն 'ի լեռն նոցա չէր հասեալ, և որչափ զինչ յերկրին եգիպտացւոց գտանէր. պտուղս ազգի ազգի բերէին, խաղող և նուռն, թուզ և ընկոյզ, 'ի տարաժամ ժամանակի

զամենայն ինչ գտեալ, մեղր և կաթն առաւժամայն դրուեալ սափորով լի, և մեծամեծ արմաւս նիկողացիս, և նկանակս տաքն՝ սուրբս. ջերմն, իբրև յօտար իմն աշխարհէ կարծիս տային թէ իցեմք եկեալ: Իսկ որ բերին զայն արքն, և 'ի ձեռն ետուն, երևեցուցին՝ եթէ յառնէ միոջէ՝ որ աւագ է և մեծատուն, առաքեալ է. 'ի նմին ժամանակի անդէն վաղվաղակի գնացին: Արդ իբրև ճաշակեցաք 'ի կերակրոց անտի, և մինչև 'ի գլուխ պենտեկոստէիցն բաւական լինէր մեզ. մինչև զարմանալ և ասել, եթէ արդարև այս ա̃մ յ̃յ առաքեցաւ մեզ:

Մի ոմն 'ի միայնակեցաց անտի աղաչէր զհայրն՝ շնորհաց ինչ արժանի լինել. և իբրև եկաց յաղօթս, խոնարհութե̃ շնորհք տուան նմա հեզութե̃. մինչև զարմանալ ամենեցուն վասն նորա, առաւելութի̃ իմն հեզութե̃ ստացելոյ: Եւ պատմէին մեզ այնուհետև՝ որ ընտիր հարքն էին, և յայնպիսի զօրութե̃ց վերայ վըկայութի̃ ետուն և բազում եղբարք. զի այն՝ որ սոցա եղև ոչ յառաջ քան զբազում ժամանակս, որ 'ի կողմանս Թեբայեցւոցն հասեալ էր, իբրև լուան բնակիչք վայրացն ժողովուրդք որ զայնու վայրովքն ժողովք միայնակեցացն էին, բազում անգամ առանց պաճուճեալ կերակրոց կերակրէին, եկեալ կացին առաջի նորա կանամբք և մանկտւով հանդերձ, օրհնութի̃ անդրէն և կերակուրս խնդրէին: Իսկ արդ նա ոչ ինչ զանգիտէր, եթէ գուցէ նուաղեսցէ ինչ 'ի կերակրոցն, առեալ բաշխէր ամենեցուն՝ որ գային առ նա՝ իւրաքանչիւր բաւանդակութի̃ ըստ աւուրն: Զի մնային երեք զամբիղք մեծամեծք հացիւ հանդերձ, և սոցա 'ի վերայ հասանէր. հրամայեաց 'ի մէջ բերել զզամբիղսն, ուստի միայնակեացքն ուտելոց էին ըստ նմին աւուր. իբրև 'ի լսելիս իմն ամենայն եղբարցն և ժողովրդոյն ասէր մեծաւ բարբառով, մի եթէ ո՞չ կարէ ձեռն տեառն բազմացուցանել զայս: Զի այսպէս իսկ ասաց հացին սուրբ. մի պակասեսցէ հաց 'ի զամբիղացս այստի, մինչև յագեսցուք ամենեքեան նոր ցորենով: Եւ հաստատեցին ամենեքեան՝ որ եկեալն էին, չորեքամսեայ ժամանակեան բաւական լինել նկանակքն այնոցիկ: Սոյնպէս և 'ի վերայ ձիթոյ և հացին երբէք արար. մինչ զի երբեմն հասեալ էր սատանայի յայն վայր, սկսեալ էր խօսել և ասել ընդ նմա. արդ

միթէ Եղիա՞ արդեօք իցես դու, կամ այլ ոք 'ի մարգարէիցն կամ յառաքելոց անտի, զի այդպիսի նշանս իշխես առնել: Նա ետ պատասխանի, և ասէ ցնա. ո՛չ ապաքէն մարդիկ էին սուրբքն առաջինն, մարգարէքն և առաքեալքն, որ զայսպիսի ինչ գործ գործեալ ուսուցին. և եթէ յայնժամ մերձ էր ա՛ծ, արդ հեռացա՞ւ ուրեմն. ա՛ծ կարող է յամենայն ժամանակի առնել զայս, և ոչ ինչ տկարութի՛ է առաջի նորա. արդ եթէ ա՛ծ առատ է, դու ընդէ՞ր ես չար: Իսկ արդ ընդէ՞ր չէ մարթ ասել՝ զոր և մեք իսկ անձամբ տեսաք. զի լի և լի զգամբիւղսն բերէին 'ի մէջ սեղանոյ եղբարցն. և զնկանակսն բերէին, ուտէին անտի հինգ հարիւր եղբայր մինչև ցյագ. լի և լի դարձեալ հացիւ անդրէն զգամբիւղսն տանէին:

Որ միւս ևս այլ իմն զարմանալի տեսաք, և սքանչացաք՝ յիրաւի է ասել. իբրև եկաք մեք առ նա երեք եղբարքս, ծանօթ լինէաք եղբարցն 'ի հեռաստանէ, իբրև տեսանէին զմեզ՝ որոց լուեալն էր 'ի նմանէ վասն մերոյ գալստեանն, որ իբրև տեսին զմեզ, փութացան գալ վաղվաղակի ընդ առաջ մեր սաղմոսիւք. զի այս իսկ է սովորութի՛ նոցա առ ամենայն արգելականս. և յերկիր անկեալ խոնարհ երկիր պագանէին և համբուրէին ըզմեզ. միմեանց ցուցանէին զմեզ և ասէին. ահաւասիկ եկեալ են եղբարքս, վասն որոց հայր մեր յառաջ քան զերիս աւուրս ասէր մեզ, եթէ յետ երից աւուրց գալոց են առ մեզ յԵրուսաղէմէ: Կէսքն 'ի նոցանէ առաջի երթային մեր, և կէսքն զկնի գային սաղմոսիւք, մինչ մօտ 'ի նա եկաք հասաք: Իբրև լուաւ հայրն Ապողոն զձայն սաղմոսացն, ինքն յարեաւ ընդ առաջ լինէր մեզ. որպէս էր սովորութիւն նորա առ ամենայն եղբարս: Իբրև ետես զմեզ՝ նախ ինքն երկիր եպագ, տարածեաց զինքն յերկիր, ապա յոտն յարուցեալ՝ համբուրել սկսաւ. և իբրև առ 'ի ներքս գնաց, նախ յաղօթս եկաց, և զոտս մեր սկսաւ լուանալ ձեռօքն իւրովք, հանգիստ առաջի առնէր մեզ:

Արդ զայս ամենեցուն եղբարցն առնէր նա՝ որ առ նա երթային. զի որ ընդ նմա եղբարքն էին, ոչ յառաջագոյն ինչ ճաշակէին, մինչև խորհրդոց գոհութեն Ա՛ծի հաղորդ լինէին. և զայս զօրհանապազ յինն ժամու առ-

նէին։ Այլ արդ իբրև կերակրէին, անցեալ նաւէին, նորին վարդապետութեանն անսացեալք զամենայն պա-տուիրանս մինչև յառաջագոյնս անդր. յայնմհետէ ո-մանք յանապատ կոյս գնային, 'ի բերանոյ զամենայն գիրս սուրբս կարդացեալ. ոմանք անդէն կային մնային՝ անդադար անհանգիստ օրհնութը մինչև ցառաւօտն օրհնէին զած։ Նոյն այն՝ որ ես ինձէն աչօք իմովք տե-սի, յերեկորեայ սկսեալ օրհնել զած, և մինչև ցայգ-առաւօտուն չդադարեալ։ Բազումք 'ի նոցանէ ըստ իննն ժամուն միայն իջանէին 'ի լեռանէ անտի. և իբրև յօրի-նաց անտի առնուին, անդէն վաղվաղակի 'ի լեառն գնայ-ին, բաւական անձանց համարեալ զհոգևոր կերակուրն, մինչև դարձեալ 'ի նոյն ժամ. զայս առնէին բազումք 'ի նոցանէ զբազում աւուրս։ Այլ անդ էր տեսանել զնոսա 'ի ցնծութեն ընդ անապատն ամենայն. զոր ցնծութիւն ոչ է մարթ ուրեք տեսանել յաշխարհի, և ոչ ուրա-խութի ինչ մարմնաւոր։ Այլ ոչ տրտում ոք և խոժոռ գտանէր 'ի մէջ նոցա. այլ թէպէտ և ոք խոժոռ գտա-նէր 'ի նոսա, անդէն վաղվաղակի հայրն հարցանէր զնա զպատճառս տրտմութեանն. և այն ինչ որ 'ի գաղտնիս սրտիցն ունէին, նա յայտնապէս ցուցանէր և ասէր այս-պէս. ոչ է պարտ և պատշած տրտմել 'ի վերայ գիւտի ժառանգութեն երկնից. տրտմեսցին, ասէ, հեթանոսք. լացցեն հրեայք և սուգ առցեն մեղաւորք. իսկ արդարք ուրախ եղիցին։ Այլ արդ որ զերկրաւորս հոգան, վասն երկրաւորացն ուրախ լինին. իսկ դուք որ այնպիսի յու-սոյ արժանի եղեալ էք, զիարդ է՝ զի ոչ միշտ յամենայն ժամանակի ուրախ լինիք. զի առաքեալն ինքնին զմեզ յօժարեցուցանէ յամենայն ժամանակի ուրախ լինել, անպակաս յաղօթս կալ, յամենայնի գոհանալ։

Այլ զինչ ևս այլ ինչ ոք մարթիցէ պատմել վասն բանից շնորհաց՝ որ 'ի նմանէ բղխէին. և որ զայլ ամե-նայն առաքինութի նորա վասն առաւելութեն աքանչե-լեացն լուեսցուք պատմել, միշտ 'ի նմանէ և յայլոցն՝ որ լսէաք բազում անգամ։ Նա և վարուց և կարգաց և գնացից խօսէր առանձին բազում անգամ. և վասն ըն-դունելութե եղբարց ասէր, թէ պարտ և պատշած է 'ի գալստեան եղբարցն երկիր պագանել. զի ոչ եթէ նոսա, այլ զայ երկրպագես. տեսեր զեղբայր քո, տեսեր զտէր

ռած քո։ Այլ զայս, ասէ, յԱբրահամէ ինքն ընկալաք. զի պարտ և պատշաճ է, զի իցէ երբեք յորժամ զեղբարսն բանադատիցես առ քեզ մտանել, 'ի Պղատոյ ուսեալ եմք, եթէ առ փնցաւորօքն ճանապարհին և ըղհրեշտակսն ընդունիցիս։

Այլ զի պարտ և պատշաճ է, եթէ հնար իցէ, եղբարցն հանապազօր խորհրդոցն գոհութեան տեառն մերոյ հաղորդել. զի որ հեռի ունի զանձն իւր յայսմանէ, հեռի առնէ զանձն իւր յայս։ Իսկ որ կանխէ զայս առնել՝ սակաւ սակաւ առնուլ, զած յինքն ընդունի. զի փրկութեն բարբառն այսպէս ասաց. որ ուտէ 'ի մարմնոյ իմմէ, և ըմպէ յարենէ իմմէ, նա յիս, և ես 'ի նմա։ Զայս յագուստ միայնակեցացդ յիշեցուցանեմք. զի փրկութեն չարչարանօքն ապրեալք 'ի կանխել անդր մերում, և զօրհանապազ կազմ կալ՝ առ 'ի պատրաստել զանձինս մեր այնպիսի ինչ լինել, իբրև արժանի լինել յամենայն ժամանակի առ 'ի յաւիտենական միանձնաւորաց ընդունելութիւն իսկ, որովհետև թողութեան մեղաց արժանի լինիմք։

Իսկ որ բուռն գլխաւոր պահքն են, ոչ է արժան լուծանել առանց ամենայն իրիք տագնապի. զի 'ի չորեքշաբաթուջ անդ, ասէ, մատնի տէրն, և յուրբաթու անդ 'ի խաչ ելանէ։ Բայց եթէ դիպեսցի եղբայր առ քեզ հասեալ, և նմա հանգիստ պիտոյ իցէ 'ի ժամանակի պահոցն, դիցես դու առաջի նորա միայն սեղան. ապա թէ ոչ կամիցի ճաշակել ինչ, մի ստիպեր զնա, զի հասարակաց է վարդապետութիւնն։

Այլ յոյժ սովորանէր՝ որ զերկաթսն արկանէին, և որ զհերսն ժողովէին. զի այսպիսիքս 'ի ցոյց առնել պարապին, և զմարդահաճութիւն որսան. զի պարտ և պատշաճ էր նոցա առաւել պահօք զմարմինն նուաղեցուցանել, և 'ի գաղտնիս բարիս գործել։ Իսկ որ ոչ է այսպէս միայն, այլ ամենեցուն կամին զանձինս իւրեանց յայտնի առնել։

Այլ զինչ ոք ինչ ասիցէ վասն վարդապետութեանց նորա, որ նմանէին վարուց և կարգաց նորա. զի ոչ գրել ոք արժանապէս նմանել մարթ էր։ Այլ այլ բազմապատիկ նա զշաբաթն ամենայն խօսէր ընդ մեզ առանձին։ Այլ իբրև յուղարկէր զմեզ, ասէ ցմեզ. խաղաղութիւն

կալջիք ընդ միմեանս. 'ի միմեանց մի մեկնեսջիք: Մեր-սաւ ասել առ այնոսիկ՝ որ ընդ իւր եղբարքն էին. ո՞ րք իցէ 'ի ձենջ, որ կարիցէ առաջի լինել յուղարկել զասա մինչև 'ի ներքսագոյն Հարսն. և գրէ թէ ամենեքեան յառաջ կացին յօժարութեամբ՝ առաջնորդել յուղարկել զմեզ: Իսկ սուրբն Ապողոն առաքեաց արս, որ բովան-դակեալ լինէին ամենայն կարգովքն վարուց իւրեանց, և ճարտար էին 'ի բանս Յունաց և Պաղեստաց և Եգիպ-տացւոց: Այլ իբրև յուղարկէր զնոսա ընդ մեզ, պա-տուէր տայր նոցա՝ մի թողուցուք զդոսա, մինչև տես-ցեն բովանդակ զամենայն Հարսն զոր կամիցին տեսա-նել. զի ոչ էր մեզ մարթ բնաւ ընդ ամենայն կեանս մեր զամենեսեան տեսանել: Արդ օրհնեաց զմեզ և ար-ձակեաց և ասէ. օրհնեսցէ զձեզ տէր 'ի սիոնէ, և տես-ջիք դուք զբարութիւն Երուսաղէմի զամենայն աւուրս կե-նաց ձերոց:

Արդ իբրև գնացաք մեք ընդ անապատն, 'ի միջօրեայ ժամանակի անդ յանկարծակի տեսանէաք քարշնահետ մեծի վիշապի. զի իբրև քարշած էր գերանաց մեծի 'ի վերայ աւազոյն: Այլ իբրև տեսաք, յերկիւղի մեծի հա-րաք. այլ որ առաջնորդէին մեզ եղբարքն, աղաչէին մի ինչ երկնչիք, ասէին. այլ քաջալերեցարուք և եկայք զհետ քարշածի վիշապիդ. զի տեսջիք, ասէ, զհաւատս մեր, եթէ յորմէ կարասցուք ընկենուլ զնա. զի բազում անգամ՝ ուրեք, ասէ, վիշապս և քարբս ձեռբացի սպա-նեալ է մեր. և բան գրոյն 'ի վերայ նոցա կատարէր, եթէ ետու ձեզ իշխանութիւն կոխել 'ի վերայ օձից և քար-բաց և կարճաց և 'ի վերայ ամ̃ զօրութեան թշնամւոյն: Մեք իբրև թերահաւատութեամբ. լի էաք, և առաւել ևս զահի հարեալ էաք և աղաչէաք զնոսա՝ մի զհետ եր-թայք քարշածի վիշապիդ, այլ զուղղորդ ճանապարհն գնացէք, մի ոմն յեղբարց անտի յայնցանէ մեծաւ յօ-ժարութեամբ. թողոյր զմեզ 'ի տեղւոջն անդէն՝ ընդ անա-պատն ուղղի առնէր՝ գնալ քննել թէ ուր իցէ գազանն ամ-րացեալ. և իբրև գտանէր ոչ ինչ հեռի զայրն վիշա-պին, աղաղակէր առ մեզ, եթէ յայրի աստ է վիշապն. և կոչէր առ ինքն, եկայք տեսէք, ասէ, զինչ գործ լի-նելոց են: Յօժարեցուցանէին զմեզ և այլ եղբարքն, և խրախոյս տային՝ թէ մի երկնչիք: Այլ իբրև մեք մե-

ծառ երկիւղիւ երթայաք տեսանել զգազանն, ընդ առաջ եղև մեզ եղբայր մին, զձեռանէ առեալ ձգէր յինքն 'ի վանս անդր և ասէր. մի երթայք, ոչ կարէք զդէմ ունել զանհնարին վիշապին. մանաւանդ զի ոչ էր ուրեք մեր երբէք այնպիսի ինչ տեսեալ. զի նա ասէր, եթէ բազում անգամ տեսեալ է իմ, զի կարի մեծ անհնարին է գազանն. և ասէր, եթէ աւելի քան զհնգետասան կանգուն է: Հրամայեաց մեզ օթեվանս առնել անդէն 'ի տեղւոջն. երթայր նա առ եղբայրն անդ, որ 'ի յայրս անդր երթեալ էր, զի հաւանեցուսցէ 'ի բաց կալ 'ի յայրից վիշապին. զի նա ոչ հաւանէր 'ի բաց լինել 'ի տեղւոջէ անտի, եթէ ոչ զվիշապն սպանցէ: Սակայն հաւանեցոյց զնա 'ի բաց կալ, առ և եկն առ մեզ. զի թերահաւատութի մեր ստգտանէր:

Նոյն' իբրև հանգեաք մեք առ եղբօրն այնմիկ, որոյ իբրև մղոնաւ միով վանքն էին. և անդ յոյժ իբրև նորոգեցաք, տայր նա մեզ զբոյց' զինչ որ եղեալ էր 'ի տեղւոջն յայնմիկ 'ի նմին' ուր ինքն իսկ նստէր' եթէ էր աստ այր մի սուրբ, որում իւր իսկ աշակերտեալ էր, Նման անուն էր նորա. զի մեծամեծ զօրութիւնս 'ի տեղւոջն յայնմիկ կատարեալ էր նորա. զի բազում անգամ 'ի վերայ նորա անկեալ էին աւազակք, զհացն և որ ինչ կերակուր գտանէր նորա յափշտակէին: Նա և իբրև կարի նեղացաւ նա 'ի նոցանէ, ելեալ գնացեալ էր մի օր յաւուրցն յանապատն. գայր նա անդրէն, և երկու վիշապք ընդ իւր գային. և ած կացոյց զնոսա, և հրամանս ետ պահապան կալ, և պահել զդուրս վանացն: Իսկ մարդասպանքն այն ըստ սովորութեն իւրեանց իբրև եկին 'ի տեղի անդր և տեսին զսքանչելիսն, անմռունչ եղեն և անկան անդ 'ի տեղւոջն կործանեցան 'ի վերայ երեսաց իւրեանց: Իբրև ել եկն արտաքս և ետես զնոսա զի կործանեալ կային մերձ 'ի մահ, մատեաւ յարոյց զնոսա, և պատուհասակոծ առնէր զնոսա նախատելով և ասէր. տեսանէ՞ք, ասէ, որչափ դուք վայրենագոյն էք քան զգազանսն. զի նոքա վասն այ կամօք իւրեանց հնազանդին, և դուք ոչ յայ երկերուք և ոչ յերկիւղածու-

1 Յունականն յաւելու վերնագիր վասն Ամոնի. զոր մեր օրինակին անվերնագիր թողեալ տարեալ ընդ նախընթացին:

թենէ անտի քրիստոնէից ակն ածէք ։ Այլ առ տարաւ վնասս 'ի ներքս 'ի խղէկ անոր , և սեղան առաջի դնէր , և ապա խրատէր փոփոխել զքարս իւրեանց ։ Որքա ան֊ցէն 'ի հնոյ բարուց իւրեանց 'ի բաց կացին և առաւե֊լագոյնք երևեցան , և ոչ յետ բազում ինչ ժամանա֊կաց նոքին զնոյն նշանս արտևատիցն առնել սկսան ։

Այլ երբեմն , ասէ , անհնարին ոմն մեծ վիշապ մեր֊ձաւոր երկրին զանդաստանսն վնասէր , և բազում խա֊շինս անասնոց սատակէր . եկին առ հասարակ բնակիչք երկրին առ հայրն , առաջի անկեալ աղաչէին սատակել յերկրէ նոցա զգազանն ։ Իսկ նա իբրև թէ ոչ ինչ կա֊րիցէ օգնել նոցա , տրտմեալ զմարդիկն 'ի բաց արձա֊կէր ։ Ընդ առաւօտն յարուցեալ՝ յանցս ճանապարհի գազանին երթայր . իբրև երիցս անգամ ծունր դնէր յաղօթս կալով , յարձակէր 'ի վերայ նորա գազանն մե֊ծաւ սրտմտութ̃բ , չարաչար շաչի արձակելով , շնչելով փքալով և չարաչար ժանտահոտ յառաջագոյն 'ի բե֊րանոյն արձակէր ։ Իսկ նա իբրև ոչ ինչ համարեցաւ , դարձաւ 'ի վիշապ անդր և ասէր . ըմբռնեսցէ զքեզ . Յ̃ս որդի այ̃ կենդանւոյ , որ ըմբռնեաց զմեծ վիշապն ։ Այլ իբրև նա զայս ասաց , անդէն վաղվաղակի վիշապն պայ֊թեաց , և զամենայն ժանիսն և զթոյնսն արեամբն հան֊դերձ փախեաց ։ Այլ եկին շինականքն յետ աւուրց , և զմեծ և զանհնարին սքանչելիսն իբրև տեսին , և իբրև 'ի հոտոյ անտի ժոյժ ոչ ունէին , աւազ բազում 'ի վե֊րայ մեռելոյն կուտէին , մինչդեռ անդէն իսկ կայր հայրն 'ի վերայ նորա . քանզի մերձենալ իսկ ոչ իշխէին , թէ֊պէտ և մեռեալ էր վիշապն ։ Մանուկ ոմն , ասէ , եր֊բեմն 'ի հովիւսն էր 'ի կենդանութեն վիշապին . երբեմն ուրեմն իբրև տեսանէր զնա , նայեցաւ անկաւ պակա֊սեալ . և անկեալ դնէր պատանին անմռունչ անդէն 'ի տեղւոջն զօրն ամենայն ։ Այլ իբրև եկին գտին զնա ըն֊տանիքն ընդ երեկս աւուրն ժամանակի՝ սակաւիկ ինչ դի մնչէր , ուռուցեալ փքացեալ յիմարեալ 'ի տեսլենէ անտի , առեալ ածին զնա առ հայրն Մոմն , իբրև ոչ ինչ գիտէին զինչ անցք անցեալ էին ընդ նա ։ Այս իբրև ե֊կաց յաղօթս , և ձիթով առեալ օծանէր զնա , յոտն եկաց պատանեակն և պատմէր զինչ անցք անցեալ էին ընդ ինքն . վասն այնորիկ իսկ առաւել այրն յօժարեաց սպանանել զվիշապն ։

# ՎԱՍՆ ԿՈԳՐԵԱՑ

Էր անդ ծեր մի յախտապատ Կոպրեա անուն՝ այր սուրբ, կարև իմաստամտրայ ժամանակօք, և էր գլուխ երրև յխանից. և ինքն բազում նշանս և զօրութիւնս առնէր, բժշկէր զախտաժէտս և զդևս հալածէր և մեծամեծ սքանչելիս գործէր, և էր որ ինչ առաջի աչաց մերոց արար: Նորա կարև եւտես զմեզ, ողջոյն ետ, օրհնեաց զմեզ և լուաց զոտս մեր. հարցանէր զաշխարհէ: *Նաև մեք առաւել աղաչէաք՝ զկարգս խրատանց վարուցն պատմել մեզ. և թէ զինչ ըստ նմա շնորհս պարգևեաց, և կամ յորպիսի կարգաց վարուց իւրոց զայնպիսի շնորհս գտանէր: Նա ոչ ինչ իսկ իւրս հպարտութ, այլ պատմէր մեզ զկարգս վարուց իւրոց և զիւրոց զառաջնոց հարց զգազգմանց և մեծամեծաց յառաջ քան զնա, որոց կարգացն և վարուց ինքն առաջի եղեալ նմանող լինէր. զի ոչ ինչ են սքանչելի այս որ իմ գործս են առ հարցն վարուց և զնացից:

Զի էր այր մի յառաջ քան զմեզ Մ՝իւսիս անուն, որ գլխաւոր էր ամենայն միայնակեցաց՝ որ 'ի տեղւոջս յայսմիկ եղեալ էին, որ և զմիայնակեցութեան հանդերձս նախ նա եգիտ և արար. զի նա աւազակապետ լեալ էր յառաջ և դիմաւթաղ հեթանոսաց, և հռչակաւոր էր 'ի չարի անդ՝ յորում և կայր: Պատճառ իմն գտանէր այսպիսի փրկութեան անձին իւրոյ. զի եհաս եր-

* Եւ սկսաք աղաչել զծերն պատմել մեզ զկարգս խրատանց առ 'ի յօգուտ մեզ, և զայն ևս թէ զիարդ և որով իւիք ած նմա զշնորհն զայն պարգևեաց, և կամ յորպիսի կարգաց վարուց իւրոց զայնպիսի շնորհս գտանէր: Եւ 'ի բազում աղաչանաց մերոց լսելի լինէր նմա խնդրուածք մեր. և ոչ իբրև ինչ հպարտութն, որ հեռի է այս 'ի սրբոցն Այ, այլ առաւել օգտութն բազմաց, որ և յայտ հրամայեալ նմա պատմել զարժանին պատմելոյ: Եւ այսպէս պատմէր մեզ զկարգս վարուց իւրոց և զիւրոց առաջնոց հարց բազմաց և մեծամեծաց որ յառաջ քան զնա, որոց կարգացն և վարուցն ինքն առաջի եղեալ նմանող լինէր. զի ոչ ինչ են սքանչելիք այս որ իմ գործս է, ասէ, առ հարցն վարուց և զնացից զորոյ առհաս ունիմ ասել ձեզ զսքանչելիս և զարժանիս գովութե:
Զի էր յառաջ քան զմեզ այր մի Մուսիս անուն որ գլխաւոր էր ամե միայնակեցաց... Իսկ պատճառ փրկութեան նորա այսպիսի իմն լինէր. զի եհաս նմա երբեմն 'ի վերայ վանաց կուսի միոջ եկանել. զի.

բեմն 'ի գիշերի 'ի վերայ կուսի միոջ վանաց տեռաղերծել զնա, և եգիտ ինչ մեհքենայս՝ որով ելցէ 'ի տանիս անդր։ Դարձեալ իբրև ոչ գտանէր ճանապարհ՝ որով 'ի շտեմարանս անդր մտցէ և կամ որով դառնալ անդրէն մարթասցէ՝ անցեալ կայր 'ի վերայ տանեացն մտախոհ մինչև տիւն զառաւօտն մերկանայր։ Սակաւիկ մի նիրհեաց և տեսանէր զի կայր իբրև Թագաւոր մի. խօսէր ընդ նմա՝ մի՛ սպանութեանց զկնի և մնոտեացս այստցիկ յօժարութեանց լինիր. այլ եթէ կամիս փոփոխել յառաքինութեն զկարս քո և զօրաւոր լինել հրեշտակական զօրութեանց, առ յինէն զայդ իշխանութիւն։ Նա իբրև մեծաւ յօժարութեամբ զբանն ընկալաւ, ածէր վաղվաղակի զունդս միայնակեցաց առաջի առնէր և իշխան լինել առաջի նոցա հրամայէր։

Իբրև զարթեաւ 'ի քնոյ անտի, տեսանէր զկոյսն այն եկեալ կայր առաջի նորա. բողոք բարձեալ ասէ. այր դու, ո՛վ ես և ուստի՞ յայս վայր եկեալ ես, կամ զի՞նչ գործ կամ զի՞նչ ազգ է քո։ Նա իբրև ոչ ինչ գտանէր պատասխանի տալ նմա՝ ասէ. զեկեղեցին զեկեղեցին՝

գտյր ճանապարհ 'ի տանեաց անտի 'ի ներքս անդր իջանել. և 'ի խորհուրդ մտեալ եգիտ ինչ մեքենայս որով ելցէ 'ի տանիս անդր, զի ամբարձեալ էր տուն կուսին այն մեծապատ յամենայն կողմանց՝ և բարձրաբերձ շինուածք իբրև բրգունս ամրոցաց։ Արդ 'ի գիշերի միոջ գնաց առ 'ի կողոպտել զտուն կուսին, և մեքենայիւքն զոր եգիտ՝ ել 'ի տանիս անդր և շրջեալ այսր անդր յամենայն կողմանց ոչ կարաց գտանել ճանապարհ որով 'ի շտեմարանս անդր մտցէ և կամ որով անդրէն դառնալ մարթասցէ. և այնպէս իբրև ընդբանեալ կայր 'ի վերայ տանեացն այն, և մտախոհ լինէր՝ և այսպէս յահ և յերկիւղ մնացեալ կայր 'ի գեղերանս մինչև տիւն զառաւօտն մերկանայր։ Յայնժամ սակաւիկ մի նիրհէր, և տեսանէր յանուրջս զի կայր իբրև Թագաւոր մի, և խօսէր ընդ նմա և ասէր. մի սպանութեանց զկնի ընթանար, և մի մնոտեացս այսոցիկ յօժարութեանց լինիր. այլ եթէ կամիս փոփոխել յառաքինութիւն զկարս քո և զօրաւոր լինել հրեշտակական զօրութեանց, առ յինէն զայդ իշխանութիւնդ։ Իսկ իբրև լուաւ զայս 'ի Թագաւորէն այն որ հզօր և ըզձանչելի էր զօրօք և մեծութեամբ և ահաւոր իշխանութեամբ, զի քաղցրութեամբ և խոստով տալով իշխանութեան զօրութեան հաւատայր նմա, մեծաւ յօժարութեամբ ընկալաւ զբանն։ Իսկ ապա հրամանն ահաւոր Թագաւորին այն ածէր վաղվաղակի զունդս միայնակեցաց, և առաջի առնէր նմա և իշխան լինել առաջի նոցա հրամայէր. մինչև ցայս վայր տեսանէր զտեսիլն։

Եւ իբրև զարթեաւ 'ի քնոյ անտի տեսանէր զի կոյսն այն որ ապարանիցն էր տէր, եկեալ կայր առաջի նորա, և բողոք բարձեալ ասէ. այր դու, ո՛վ ես և ուստի՞ յայս վայր եկեալ ես, կամ զի՞նչ գործ կամ զի՞նչ ազգ է քո։ Նա իբրև ոչ ինչ գտանէր պատասխանի տալ նմա

զեկեղեցին ցոյց ինձ։ Եւ եթէ ցուցանէր, դայր անկանէր առաջի երիցանցն, աղաչէր զնոսա զի քրիստոնեայ արասցեն զնա, զի և տեղի ևս տացէ ապաշխարութեան։ Իբրև ծանեան զնա ծերքն, զարմացեալ էին և մատուցեալ խրատէին զնա պատուիրանօք, ուսուցանէին թէ յայսմհետէ մի ևս մեղանչիցես ումեք։ Եւ աղաչէր զնոսա զի զսաղմոսաց օրհնութիւն լուիցէ. և միայն իբրև զերիս կարգս յառաջին սաղմոսէն լուաւ՝ շատ համարեցաւ առ անգամ մի անձին իւրում զայն 'ի վարդապետութիւն։ Եւ իբրև երեկեաց առ նոսա երիս աւուրս, ել վաղվաղակի գնաց յանապատն կոյս. աղօթիւք և արտասուօք կանխէր յաւուրսն յայնոսիկ, և կայր շատացեալ կերակրովք վայրենի բանջարօք, և զայն արածէր։ Եկն անդր յեկեղեցին և պատմէր նոցա զպրակս ուսման զոր առեալն էր, զի շնորհք տուան նմա յայն, և կայր պատմէր առ հասարակ 'ի բերան զգիրս ամենայն։ Դարձեալ զարմացեալ էին վասն նորա ծերակոյտն թէ զիարդ կատարեալ վարուք հաստատեալ էր նա 'ի միտս իւր։

այլ ինչ, միայն զայս տայր. զեկեղեցին զեկեղեցին՝ զեկեղեցին ցոյց ինձ։ Քանզի ահաբեկ լեալ յուշաբերել ոչ կարէր, բայց միայն զայս տայր՝ թէ զեկեղեցին ցոյց։ Եւ իմացեալ ծանեաւ կոյսն՝ թէ տեսիլ տեսեալ այնպէս կիսամեռ լեալ էր յահէն։ Եւ զի ոչ կամեցաւ յայտնել նմա չար վասն բարեպաշտութեան իւրոյ. զի ծանեաւ թէ ով ոք էր և թէ վասն որոյ իրէք 'ի տանիսն ելեալ էր միջնայիւք. և որդ զի զղջացեալ էր վասն տեսլեանն և զեկեղեցին խնդրէր, վասն այսքան պատճառանաց տարաւ զաւազակն յեկեղեցին և յանձնեաց նոցա։ Իսկ Մովսէս աւազակն անկանէր առաջի երիցանցն և աղաչէր զնոսա զի քրիստոնեայ արասցեն զնա, և զի տեղի տացէ ևս ապաշխարութեան։ Եւ իբրև ծանեան զնա ծերքն, զարմացեալ հիանային թէ որպիսի ոք էր, և որպէս Քերովբեանն հուրաւոր հայցէր միջնորդութիւն. և ապա մատուցեալ խրատէին զնա պատուիրանօք և ուսուցանէին թէ յայսմհետէ մի ևս մեղիցես ումեք։ Իսկ նորա յօժարութիւն յանձին կալեալ զատացեալն 'ի նոցանէ աղաչէր զնոսա զի զսաղմոսաց օրհնութիւն լուիցէ. և միայն իբրև զերիս կարգս յառաջին սաղմոսէն լուաւ, շատ համարեցաւ առ անգամ մի անձին իւրում զայն վարդապետութիւն։ Եւ երիս աւուրս եկաց առ նոսա, և վաղվաղակի յետ այնորիկ ել և գնաց յանապատն կոյս, և աղօթիւք և արտասուօք կանխէր յաւուրսն յայնոսիկ. և վասն կերակրոյ փոյթ ինչ ոչ առնէր, այլ վայրենի բանջարօք շատանայր, և զայն ոչ ձեռօք, այլ արածէր իբրև անասուն։ Եւ ապա եկն անդր յեկեղեցին և պատմեաց նոցա զպրակսն ուսմանն մի ըստ միոջէ զոր առեալն էր 'ի նոցանէ, զի շնորհք տուան նմա յայն։ Եւ իբրև աւարտեաց զառեալն ուսմանն, ապա սկսաւ և զայն որ ոչ էր ուսեալ առ հասարակ զամենայն գիրս պատմէր 'ի բերանոյ։ Դարձեալ և զայն ևս զարմացեալ էին վասն նորա ծերակոյտն թէ զիարդ կատարեալ վա-

Եւ խորհ միաբանեցին զնա, աղաչէին առ նոսա լինել. իսկ նա միացեալ երեկեաց առ նոսա աւուրս եօթն: Դարձեալ 'ի նոյն անապատն ելեալ գնայր: Երբև ամս եօթն յանապատի անդ լինոյր, միածամն չորհօք այլոյն լինոյր, հաց ներեման նկանակ 'ի կիւրակէի անդ բերեալ լինէր խորհ. զաղօթսն զայն կատարէր զիւր: Արդ եկն յանապատէ անտի՝ զիւր վարսն ցուցանէր, և զամենայն առ իւր վարսն նախանձեցուցեալ յօժարեցուցանէր: Այլն ամն մանաւանդ առ նա յերիտասարդաց անտի աշակերտել խնդրէր. անդէն վաղվաղակի զգեցուցանէ նմա զերբ-ճակ մի, և քուսիթայ եդեալ 'ի գլուխ նորա յաշակերտութիւն ընդունէր, զմաշկեակն զթիկամբք արկեալ նորա և զենջակ մի փաթուցեալ նմա:

Արդ եթէ ոք երբէք ուրեք 'ի քրիստոնէից անտի մեռանէր, կանխէր վաղվաղակի իւրով անձնութեամբ և փառաւորապէս օրհնութեամբ 'ի հանգիստն յուղարկէր: Երբև տեսեալ աշակերտն այն այնպէս սքանչելի պարկեշտութեամբ զմեռեալսն 'ի նմանէ յուղարկեալս՝ ասէ ցնա. և զիս այսպէս յուղարկէիր յորժամ մեռանէի, վարդապետ:

րութք հաստատեալ էր նա 'ի միտս իւր: Եւ ապա սկսան զխորհուրդ միութեան կատարել 'ի մերայ նորա: Եւ խորհ միաբանեցին զնա, աղաչէին զնա առ նոսա լինել. և լուեալ աղաչանաց նոցա նորակնունքն Մխ-ախ՝ միացեալ երեկեաց առ նոսա աւուրս եօթն: Եւ յետ աւուրցն այն դարձեալ դիմեալ գնաց 'ի նոյն յանապատն, և եկաց անդ բնակութեամբ: Եւ խորհ ամս եօթն լինոյր յանապատի անդ՝ միածամն չորհօք լինոյր այլոյն, զի հաց նմա նկանակ մի 'ի կիւրակէի բերեալ լինէր 'ի սու-չութեանն իւր. քանզի մինչ զաղօթսն կատարէր, եդեալ կայր նկանակն՝ որով կերակրեալ գոհանայր զատուցէն իւր: Եւ ապա աղաչեալ նմա 'ի հոգւոյն սրբոյ իջանել յանապատէ անտի և յայտնել զվարս իւր: Եւ այնուհետև գայր յանապատէ անտի, և նախանձեցուցանէր զամենայն առ իւր վարս, և յօժարեցան ընդ նմա: Իսկ ոմն յերիտասարդաց անտի մանաւանդ առ նա, և աշակերտել խնդրէր նմա. իսկ հայրն Մխ-ախ խնդութեամբ ընկալաւ զնա և անդէն վաղվաղակի զգեցոյց նմա զերբեճակ մի, և քուսիթայ եդ 'ի գլուխ նորա, զայն որ 'ի սուղեանն հաստատեցաւ նմա յետ և ցուցեալ եւս ձեռն զգեստու կրօնաւորութեան նմա անդ, և մաշկեակ մի զթիկամբք եարկ նմա, և զենջակ մի զփաթուցեալ էր նմա. և այսպէս զգեստաւորեալ զեղբայրն առեալ գնաց յանապատն:

Արդ եթէ ոք երբէք 'ի քրիստոնէից անտի մերձակայիցն մեռանէր, զայն կանխաւ ծանուցեալ իջանէր առ նա: Եւ կանխէր վաղվաղակի իւրով անձնութեամբ, և փառաւորապէս օրհնութեամբ յուղարկէր 'ի հանգիստն: Իսկ տեսեալ աշակերտն այն, այնպէս սքանչելի պարկեշտութե, զմեռեալսն 'ի նմանէ յուղարկեալս, ասէ ցնա. հայր, և զիս էս յուղարկէիր յորժամ մեռանէի վարդապետութեամբ քո: Ասէ

Եւ ասէ ցնա. այնպէս արարից քեզ, որ ասես՝ թէ շատ է։ Եւ յետ սակաւ ժամանակաց երիտասարդն այն մեռանէր, և բանքն արդիւնք լինէին։ Եւ իբրև պատեաց և յուղարկեաց զնա սիրով, ասէ ցմեռուեալն առաջի ամենեցուն. բարւոք ննջեցեր, որդեակ, թէ պիտոյ է ևս ինչ քեզ։ Ապա յայն բարբառոյ յառնէր պատանին մեռեալ՝ ամենեցուն լսելով. կարի բարի է ինձ, Հայրիկ իմ, զի զոր խոստացար՝ կատարեցեր ինձ։ Եւ յոյժ զարմանալիք առին զմարդիկն որ անդ էին, զի մեռեալն 'ի թաղմանէ անտի ընդ կենդանեացն խօսէր, և փառաւոր առնէին զնա. և նա անդէն վաղվաղակի յանապատն գնայր՝ 'ի պարծանաց իւրոց փառաւորութէն խորշեալ։

Եւ երբեմն զի յանապատէ անտի իջանէր տեսանել զեղբարսն, որ նմին իմն երբեմն աշակերտեալ էին, որ հիւանդացեալ կային։ Եւ էր ոմն 'ի նոցանէ մերձ 'ի մահ, զի զայն ած յայտնեաց նմա. և այն ինչ դեռ երեկոյ լինէր, գիւղն հեռաւորոյն դիպեցաւ։ Եւ նա իբրև ոչ կամէր գիշերի 'ի շէն մտանել, և զփրկչական պատուիրանն յանձին բարձեալ կրէր՝ զի ասէ՝ գնացէք մինչդեռ լոյս ընդ ձեզ է, և որ գնայ, ասէ, 'ի լոյս՝ նա ոչ երբէք գայթակղի, արդ իբրև կամէր մտանել արեգակն՝ ձայն ածեալ բարբառով առ արեգակն և ասէ. վասն անուան տեառն մերոյ Յսի Քսի կալ առ վայր մի զտեղի մինչև մտից ես 'ի շէնն։ Ապա մինչդեռ կէս բոլորոյն մտեալ էր, զտեղի կալաւ և ոչ եմուտ արեգակն մինչև նա 'ի շէն անդր եմուտ։ Եւ յայտնի եղև այս գեղջն բնակչաց՝ որ յարեգակն 'ի տես ընթացեալ էին։ Եւ իբրև տեսին զերանելին Միւսիս զի գայր յանապատէ անտի, հար-

ցնա հայրն Միւսիս. որդեակ իմ, այնպէս արարից քեզ՝ մինչ դու ասիցես թէ շատ է։ Եւ յետ սակաւ ժամանակաց երիտասարդ եղբայրն այն մեռանէր և բանքն արդիւնք լինէին։ Եւ պատեալ պատշաճաբար յուղարկէր զնա. և ապա հարցեալ զննջեցեալն առաջի ամենեցուն և ասէ՝ բարւոք ննջեցեր, որդեակ, և արդարև արարեր. թէ պիտոյ է այլ ևս ինչ քեզ։ Արդ ընդ բանի սորայն յառնէր մեռեալն կենդանութբ և պատասխանէր 'ի լուր ամենեցուն և ասէր. կարի բարւոք է ինձ, հայրիկ իմ, զի զոր խոստացար՝ կատարեցեր ինձ։ Զայս լուեալ ժողովն հիացեալ զարմանային 'ի վերայ սքանչելեացն, զի մեռեալն 'ի թաղմանէ անտի ընդ կենդանեացն խօսէր. և փառաւոր առնէին զնա և պատկառեալ 'ի սորայն ակնածէին։ Եւ յետ թաղման եղբօրն վաղվաղակի յանապատն գնայր, 'ի պարծանաց իւրոց փառաւորութենէն խորշեալ։...

առ ա͞ծ և ամբաստան ընդ քեզ տանիմ զհեղգութիւն վարուց քոց: Այս սկսաւ աղաչել զնա, զի հնարիցէ պաշտպանել նմա առ ա͞ծ, շնորհել նմա այդ մի ժամանակ կենաց, զի թերևս կարիցէ զամենայն ինչ յօրինել: Այս ասէ ցնա. ժամանակ ապաշխարութեան խնդրես՝ իբրև կեանքդ 'ի վախճան հասեալ են. զի՞նչ գործէիր զամենայն աւուրս քո, ո՞չ կարէիր յայնժամ զվէրս քո բժշկել, նա և զվէրս 'ի վերայ վիրաց դնէիր: Իսկ նա ճեպէր աղաչել, և նա տայր նմա պատասխանի. թէ ոչ այլ առաւել 'ի կենդանանալն քում 'ի չարէ վրիպեսցիս, աղաչեմ զտէր վասն քո, զի նա առատ է և բարերար և երկայնամիտ, և նա շնորհէ քեզ սակաւ մի ևս կենդանութ͞ն, զի զամենայն հատուցանել մարթասցես: Արդ եկաց յաղօթս և ասէ ցնա. ահաւասիկ երիս ևս այլ ամս շնորհեաց քեզ ա͞ծ կենդանութիւն 'ի կեանս քո, բայց դու միայն սրտի մտօք ապաշխարեսջիր: Եւ կալեալ զձեռանէ նորա կանգնեաց և յոտն կացոյց և առ գնաց յանապատն: Եւ իբրև կատարեցան ամքն երեք, ածէր զնա 'ի տեղին ոչ իբրև զմարդ, այլ իբրև զմի 'ի հրեշտակաց կացուցանէր յանդիման, զի զարմանային ամենեքեան վասն վարուց կարգաց նորա: Իբրև

առ ա͞ծ, և ամբաստան ընդ քեզ տանիս զհեղգութ͞ն քոյոցն վարուց: Նա սկսաւ աղաչել զնա, զի թէ հնար իցէ պաշտպանել վասն նորա առ ա͞ծ՝ շնորհել նմա այդ մի ժամանակ կենաց, զի թերևս կարիցէ զամենայն ինչ յօրինել: Նա ասէ ցնա. ժամանակ ապաշխարութեան խնդրես՝ իբրև կեանքդ 'ի վախճան հասեալ են. զի՞նչ գործէիր զամենայն աւուրս քո, ո՞չ կարէիր յայնժամ զվէրս քո բժշկել, նա և զվէրս 'ի վերայ վիրաց դնէիր: Իսկ հիւանդ եղբայրն ճեպէր աղաչել: Յայնժամ ասէ ցնա սուրբն Միւսիս. եթէ առաւել ոչ վրիպեսցիս 'ի չարէ 'ի կենդանանալն քում, ոչ աղաչեմ զտէր վասն քո. ապա թէ առաւել խորշեսցիս 'ի չարէն և լինիցիս ընդ բարւոյն, աղաչեմ վասն քո զտէր, և նա առատ է և բարերար և երկայնամիտ, շնորհէ քեզ սակաւ մի ևս կենդանութ͞ն, զի զամենայն հատուցանել մարթասցես: Եւ իբրև յանձին կալաւ եղբայրն զասացեալն 'ի նմանէ, յարուցեալ ապա յաղօթս եկաց և ասէ ցնա. ահաւասիկ երիս ամս ևս այլ շնորհեաց քեզ ա͞ծ կենդանութ͞ն. բայց դու միայն սրտի մտօք ապաշխարեսջիր: Եւ կալեալ զձեռանէ նորա կանգնեաց զնա և յոտն կացոյց, զի առժամայն բուժեալ 'ի հիւանդութենէ բժշկեցաւ, և առեալ զնա գնաց յանապատն: Իբրև կատարեցան աւուրք երից ամաց, էառ զնա և էջ յանապատէն և եբեր 'ի մէջ եղբարց գեղջն յորմէ հանեալ էր, և կացոյց յանդիման նոցա զեղբայրն ոչ իբրև զմարդ, այլ իբրև զմի 'ի հրեշտակաց. և զարմացումն ունէր զամենեսեան ըզանճշելի գործ ծերոյն զոր առնէր 'ի ցոյց ամենեցուն բազում անգամ և յարաժամ, վասն այ-

եկին ժողովեցան եղբարքն, դնեն զնա 'ի մէջ նոցա ողջանդամ. և զամենայն գիշերն ձայնս փառաբանութեան մեկնէր: Իբրև նիրհեաց իմն սակաւ եղբայրն, և նոյն 'ի քուն մտեալ ննջեաց, նա կայր յաղօթս վասն նորա. զարդարէր պատէր զնա ըստ օրինին և յուղարկէր 'ի գերեզման անդր:

Բազում անգամ ասէ ընդ Ջուրս գետոյ սաստկութեան յարուցելոց՝ զՆեղոս ինքն գլխովին ծնկու չափ հարեալ անցանէր: Այլ երբեմն յայլում ժամանակի զի ընդ օդս եկեալ առ եղբարսն 'ի վերայ տանեաց գտանիւր դրամբք փակելովք. բազում անգամ ուրեք 'ի յորժամ կամէր՝ անդր հասեալ գտանէր: Այլ երբեմն զի տայր զրոյց եղբարց յանապատէ անտի եկեալ 'ի վերանալ նմա յերկինս տեսլեամբ և անդ տեսանել որչափ բարիք պատրաստեալ կան մնան որ ճշմարիտ միայնակեացք են, զոր բնաւ ամենևին ոք 'ի ձայնս բանից պատմել ոչ կարէ:

Նորին միայնին զարմանչացեալք թէ զինչ առնելոց է և այժմ: Իսկ իբրև ամենայն եղբարքն ժողովեցան, սկիզբն արարեալ զամենայն գիշերն ձայնս փառաբանութեն մեկնէր, և ասէ. ահա այս եղբայրս որ կայ 'ի մէջ ձերում ողջանդամ պաշտօնակից մեր, աւարտեաց զերթս ամենայն ապաշխարութեանն զոր շնորհեաց նմա ած 'ի փրկութիւն անձին իւրոյ, և բարւոք քաղաքավարեաց ըստ հաճոյից կամացն այ և խնդութեամբ պատահելոց է տեառն, զի ահա ժամ է նմա գնալ առ տէր 'ի լըրման երաշխաւորութեան իւրոյ: Եւ ասէ. ով որդեակ, ահա ժամ է և կոչէ զքեզ տէր, երթ խաղաղութեամբ առ նա: Զայս իբրև ասաց, ասէ եղբայրն. յիշեա, հայր իմ պատուական, զիս յաղօթս քո: Եւ խաղաղութիւն տուեալ ամենեցուն՝ նստեալ ընկողմանեցաւ և աւանդեաց զհոգին: Եւ հայրն Միւսիս յաղօթս կացեալ 'ի վերայ նորա զարդարեալ պատէր զնա ըստ օրինի և յուղարկէր 'ի գերեզման անդր, և զարմանչացուցանէր զամենեսեան այսպիսի գործովք, և փառս տէր առաքէին տուողին այնպիսի շնորհաց մարդկան:

Այլ և բազում անգամ ընդ Ջուրս գետոյ յորդութեն յարուցելոց՝ զՆեղոս ինքն գլխովին ծնկու չափ հարեալ անցանէր: Երբեմն յայլում ժամանակի զի ընդ օդս երկնից եկեալ լինէր առ եղբարս և 'ի վերայ տանեաց գտանիւր դրամբք փակելովք, զոր տեսեալ եղբարցն զահի հարեալ լինէին, ընդ մի եկիր, ով սուրբ հայր, դրօք փակելովք, ասելով հարցանէին: Իսկ նա ձեռամբ արարեալ հանդարտեցուցանէր՝ մի շփոթիք, ասէ, այլ զնոյն տէր Յս Քս գովեցէք զարարողն ամենայն հրաշից: Եւ բազում անգամ ուրեք յորժամ կամէր՝ անդր հասեալ գտանիւր իբրև անմարմնապէս: Եւ երբեմն տայր զրոյց եղբարցն՝ յորժամ յանապատէ անտի եկեալ էր, եթէ գիտեմ զմի զի վերացաւ յերկինս տեսլեամբ, և անդ ետես որչափ ինչ բարիք պատրաստեալ կան և մնան այնոցիկ որք ճշմարիտ միայնակեացք են, և այնպիսի բարութեն և մեծութեն որչափ բնաւ ամենեւին ոք 'ի ձայնս բանից պատմել ոչ կարէ:

վաղակի ։ Եւ էր երբեմն զի դեռ զգամանձն Փարաւոնի յայտնեալ ցուցանէր նմա, որ զուտ յատակ ունի էր, աս-սէ ցնա ․ արծաթ քո ընդ քեզ եղիցի ՚ի կորուստ ։ Նա-զում անգամ և այլ մեծամեծ սքանչելիս, ասէ, յան-դիմանն տեսանէր հայրն Մ՝իւսիոս ․ ինքն իսկ առնէր նշանս և արուեստս ։ Եւ ասէր ․ և այլ բազում յառաջ քան զմեզ լեալ էին, ասէ, յայսմ վայրի, զի ոչ արժէր ընաւ ամենայն աշխարհս զնոսա ․ զի եթէ մեք փոքրո-կունքս զայս այսչափ ինչ կարեմք առնել, որ զկաղս և ըզ-կոյրս բժշկեմք, զայս և բժշկաց ճարտարութիւն գիտէ գործել ։ Եւ մինչդեռ զայս մեզ պատմէր ծերունին Կոպ-րէս, նմջեաց եղբայր մի մեր տակաւահաւատութբ̃ իւ-րով ՚ի վերայ նորայն բանից ։ Սա տեսանէր գիրս սքան-չելի ՚ի ձեռս առնն՝ զի կային ոսկեղէն գրով գրեալ ․ և կայր այր մի ծերունի, ասէ ցնա սաստելով ․ լսելով ոչ լսես՝ միտ դնելով ընթերցուածիդ, այլ և նմջես ։ Իսկ* նա խռովեցաւ և ասէ մերով լսելով զտեսիլն դաղմատե-րէն սկսաւ ցուցանել ։

Մինչդեռ նա ընդ մեզ զայս խօսէր, եկն եհաս ումն ՚ի շինականաց անտի և ունէր աման ինչ լի աւազով, կայր մնայր ճառիցն վախճանելոյ ։ Սկսաք մեք հարցա-նել զծերունին՝ զի՞նչ կամիցի շինականն այն աւազովն այն առնել ։ Եւ պատասխանի հայրն և ասէ ․ որդեակք իմ, պատշաճ ինչ ոչ է մեզ պարծել առ ձեզ և ոչ ասել պարծանօք զհարանցն առաքինութիւնն, զի մի հպարտա-ցեալ ՚ի միտս մեր զվարձն կորուսցուք, այլ վասն ձերոյ օգտի և փոյթ առնելոյ ․ և զի այդչափ ՚ի բացարձակ ճա-նապարհէ առ մեզ եկեալ էք, զի մի զլասցուք և զրկեա-ցուք զձեզ յօգտէն, որ ինչ ած ՚ի ձեռն մեր շնորհեաց՝ եղբարցդ առաջի ասասցուք ։ Անպտուղ լինէին անդաս-տանքդ որ շուրջ զմեօք են, և որք վարէին զայն շինակա-ներն ցորեան՝ հազիւ հազիւ զկէս սերմանն ըմբռնել կա-րէին ։ Եւ որդն իմն որ ծնանէր ՚ի հասկին և զամենայն ար-դիւնսն ապականէր ։ Արդ որ շուրջ զմեօք բնակեալ շի-

* Իսկ նա խռովեցաւ և ասէ ․ արդարեւ մեղայ տեառն և ձեզ ։ Մինչ մեք լուեալ իմացաք զասացեալսն ՚ի նմանէ զմեղայն, և զարթուցաք զնա ՚ի թմրութենէն, զի ՚ի քուն անդր դաղմատերէն ասէր զմեղայն, և հար-ցեալ զնա ասացաք ․ զի՞նչ և կամ ընդ ո՞ւմ խօսէիր ։ Եւ ասաց մեզ զտեսիլն, և առաւել հաստատեցաք ՚ի վերայ ասացելոցն ծերոյն ։ ․ ․ ․

նախանձոտք էին, իբրև քրիստոնեայք եղեալք, զայնս ա-
ղաչէին զմեզ աղօթս առնել վասն հնձոց արդեանց նո-
ցա: Ասացաք մեք. եթէ ունիցիք հաւատս ինչ յանձ, և
աւազս անապատիս ձեր պտուղ մատուցանէ. և ոչ ինչ
ամենևին յերկուացան: Այն աւուր վաղվաղակի զա-
ւազն զայն որ 'ի մէնջ կոխէր, և զզօրս իւրեանց ցքեալ
մատուցանէին առ մեզ և օրհնել տային: Եւ ես իբրև
յաղօթս կացի՝ թէ ըստ հաւատոց նոցա եղիցի, նոքա
աւուր տարան սերմանեցին 'ի յանդս իւրեանց 'ի ցո-
րեանն խառնեալ, և անդէն վաղվաղակի բազում ար-
դիւնս երկրի նոցա բխէր քան զամենայն երկիրն եգիպ-
տացւոց: Արդ զայս սովորութիւն իբրև ընկալան, ամի
ամի գան նեղեն զմեզ:

Բայց մի ինչ ինձ ամ ասանձին շնորհեաց: Իջեալ և
ես երբեմն 'ի քաղաք՝ գտի անդ այր մի մանիքեցի որ
զժողովուրդն մոլորեցուցանէր: Արդ իբրև 'ի հաւանու-
թիւն ածել զնա յայտնապէս ոչ կարացի, դարձայ առ
ժողովուրդն և ասեմ. հրատ մեծ 'ի մէջ քաղաքիդ ա-
րարէք, և եկեսցուք մտցուք երկոքեանս 'ի բոց անդր.
և եթէ որ 'ի մէնջ առանց կիզելոյ ելցէ, նորա են հա-
ւատք հաստատուն: Արդ իբրև այս եղև, անդէն վաղ-
վաղակի ժողովուրդքն զհրատն բորբոքեցին. ես կալեալ
ձգէի զնա 'ի հրատն ընդ իս: Նա ասէ. այր իւրաքան-
չիւր մտցէ, և նախ այժմ պարտ է մտանել՝ որ զհրա-
մանդ ետ: Իսկ իբրև յանուն Ա͞նի զանձն իմ կնքեցի
և 'ի ներքս մտի, և բոցն յայսկոյս յայնկոյս պատառե-
ցաւ և ոչ ինչ վնասել կարաց ինձ. իբրև կէս ժամու
միոյ 'ի ներքս կացի: Իսկ տեսին ժողովուրդքն զսքան-
չելիսն և զաղաղակ բարձին և ստիպէին զնա գալ 'ի հուր
անդր մտանել: Իսկ նա իբրև ոչ կամէր մտանել, զեր-
կիւղն հարեալ էր. առին զնա ժողովուրդքն և 'ի մէջ
անդր ընկեցին, և շուրջանակի բորբոքեցաւ կիզեալ, և
մեծաւ անարգանօք ըստ քաղաքս արտաքս ընկեցին:
Իսկ ժողովուրդն առ հասարակ աղաղակէին՝ զխաբե-
բայդ և զմոլարդ կենդանւոյն այրեցէք: Իսկ զիս առին
վերամբարձ և 'ի ձայն բարձր գոհութեամբ առաջնորդեալ
յեկեղեցի անդր դիմեցին:

Իսկ էր ուրեմն զի անցանէի ես առ մեհենիւ միով.
անդ 'ի հեթանոսաց անտի կռոց իւրեանց զոհ մատու-

ցանէին ։ Ասեմ ցնոսա՝ թէ ընդէր դուք կենդանւոյդ մեռելոց զոհս մատուցանէք . արդ դուք անասնազգին եւս էք ։ Այսպէս իբրեւ զբարի ինչ և յիրաւի առասցելոց անդէն վաղվաղակի զհետ գնացին 'ի մի փրկիչն հաւատացեալ ։

Այլ էր երբեմն զի պարտէզ էր իմ 'ի մերձաւոր անդաստանաց նոցա՝ վարեալ վասն եղբայրութեան որ առ մեզ գային ։ Այլ էր անդ աղքատ մի որ զայն գործէր . եկն եմուտ 'ի հեթանոսաց մնոտի յափշտակել զպանջարն ։ Այլ իբրեւ գողացաւ առ և գնաց , և երիս ժամս 'ի պայման արարեալ եփել զայն ոչ կարէր , այլ կայր անդէն 'ի կատսայն նոյնպէս հում թրջեալ . զի թէպէտ և բուռն ինչ ջանային , ամենեւին ջուրն ոչ ջեռնոյր ։ Իբրև 'ի միտս իւր եկն այրն , առեալ վաղվաղակի զպանջարն առ մեզ եբեր և աղաչէր զի թողութիւն լիցի յանցանաց նորա . և յանձն առնոյր քրիստոնեայ լինել , որ և եղեն իսկ ։ Այլ անդէն վաղվաղակի 'ի նմին ժամու եկին առ մեզ եղբարքն . վասն որոյ զպանջարն որ առ մեզ մատուցին , վաղվաղակի առեալ մեր կերաք և գոհացաք զնմ, կրկին ուրախութիւն արարեալ՝ վասն առնն փրկութեան և վասն եղբարցն գալստեան ։

ԻՍԿ ապա սուրբք երբեմն դիպեցան միմեանց Պաւղոս և Իսայի , յանկարծակի 'ի վերայ գետոյն գտեալ , որք երկիւղածք յոյժ և պիտանիք վարուք , զի նոքա երեք օթեվանօք հեռի էին 'ի միմեանց ։ Իբրեւ եկին 'ի մի վայր , ասեն ցմիմեանս . Հապա , Հայր վաղվաղակի ցուցցէ զկարգս վարուց և որպէս ոք յոյժ 'ի կեանս իւր պատուական իցէ ։ Ասէ ապա սուրբն Պաւղոս ցնոսա՝ . խնդրեմ ես պարգեւս յոյժ զզօրութիւն այ հոգւոյ ։ Այլ միայն իբրեւ եկաց յաղօթս , գտաւ 'ի տեղւոջ անդ նաւ մի վաղվաղակի , և օդք քաղցր , և 'ի թարթել ական գտաւ յայնմ տեղւոջ ուր և կամէին ։ Ասէ ցնոսա Իսայի . զինչ սքանչելիք են , սիրելիք , եթէ ընդ առաջ լիցի մեզ այր մի որ զկարգս վարուց զիւրաքանչիւրոց 'ի մէնջ պատմէ ։ Ասէ Պաւղոս ցնոսա՝ թէ և մեզ յայտ-

1 Չիք ընդ Պաւղոսի և Եսայեայ և Միւրոս և Անոսի յիշատակին առ Ռուփինոսի ։

նեաց ա՟ծ եթէ զայրն եւս որ պատմեցէ, զնմի երից ա-ւուրց ես փոխադրելոց եմ։ Անդէն վաղվաղակի իբրև առաջին, այրն ընդ առաջ լինէր նոցա. իբրև դիպեցաւ, ողջոյն տայր նոցա։ Ասէ Պաւղոս ցնա. պատմեա մեզ զվարս քո, զի յետ երից աւուրց առ ա՟ծ երթալոց ես դու խաղաղութ՟բ։ Ասէ ապա Անուփ ցնոսա. օրհնեալ է ա՟ծ որ և զդոյն ինձ յայտնեաց. և ասէ ծերոց կար-գաց և վարուց և զպանդխտութեանց։ Իբրև առաջին զիւ-րաքանչիւր առաքինութի, արդ և նա զիւրն այսուհետև պատմէր և ասէր. յորմէհետէ զանուն փրկչին 'ի վերայ երկրի կոչեցեալ եմ, չիք բան ստութե 'ի բերանոյ իմմէ ելեալ. երկրաւոր ամենևին 'ի միտ իմ ոչ է անկեալ, և հրեշտակ էր որ զաւուրեայ կերակուրն ինձ մատուցա-նէր, ոչ այլ ինչ բնաւ ամենևին ցանկութի անկեալ 'ի սիրտ իմ բաց յա՟յ։ Այլ ոչ ինչ ծածկեաց յինէն ա՟ծ յերկրաւորաց աստի, և ոչ երբէք պակասեաց լոյս յա-չաց իմոց, և ոչ 'ի տուընջեան երբէք ննջեցի և ոչ հան-գեայ 'ի գիշերի, զի 'ի խնդիր էի ա՟յ։ Այլ հրեշտակն առ իս հանապազ կայր որ զզօրութիս ամենայն աշխարհի ցուցանէր։ Այլ լոյս մտաց իմոց չէ երբէք շիջեալ, և զա-մենայն խնդրուածս զոր խնդրէի յա՟յ՝ անդէն գտանէի։ Տեսանէի և զհուրաւորս հրեշտակաց առաջի ա՟յ զի կային. տեսանէի և զդասս մարտիրոսաց. տեսանէի և զժողովս առաքելոց. տեսանէի և զկարգս վարուց միայ-նակեցաց. տեսանէի և զգործս ամենեցուն և փառաւոր առնէի զա՟ծ. տեսանէի և զսատանայ զի 'ի հուր մատ-նեալ էր. տեսանէի և զհրեշտակս նորա զի 'ի տանջանս կային. տեսանէի և զարդարսն 'ի մշտնջենաւոր ուրա-խութիւն։ Զայս ամենայն և առաւել քան զայն պատ-մէր մեզ, և յետ երից աւուրց զոգին 'ի բաց արձակէր. և վաղվաղակի հրեշտակք ընկալան զնա և պարք մար-տիրոսաց առեալ յերկինս հանէին. նոքին իսկ կային յանդիմանն և լսէին զօրհնութիս տեառն։

ՏԵՍԱՔ մեք այլ ծեր մի՝ Աղոգիոս անուն նորա, որ 'ի ժամանակի մատուցանելոյ զպատարագն՝ զամենայն ումեք որ 'ի յօրէնս անցոր գային, զմիտս և զխորհուրդս քննել գիտէր։ Այս բազում անգամ իբրև տեսանէր զմիայնակեացսն զի ձեռն 'ի ձեռաց վերայ եդեալ գային

յօրէնսն, նորդեղցը և ասէր. զիա՞րդ իշխէք 'ի սուրբ խորհուրդս մատչել որ զխորհուրդս չարս յանձին բար-ձեալ բերէք: Ո՞ւր, ասէ, յայսմ գիշերի խորհեցայր խորհուրդս անպարժանս վասն պոռնկութե: Միւսումն ասէր. դու երկմտեցեր 'ի խորհրդոյ աստի, ասացեր՝ թամ կարասցէ՞ զիս սրբել պատարագն թէ ոչ. երթայք արդ, ասէ, ապաշխարեցէք և սրբեցէք զխորհուրդս ձեր, և ապա եկեսջիք 'ի սուրբ խորհուրդս մերձենալ:

ՄԻՒՍ ևս այլ հայր՝ Սպերդէս[1] անուն, 'ի մանկութէ մինչև 'ի կատարած համբերեալ՝ որ մերձ էին եղբարք առ նա, հուր 'ի գոգ բարձեալ բերէր և նախանձ ար-կանէր նոցա, զի և նոքա յօժարեսցին նշանս առնել առաւելոտից. և ասէր ցնոսա. եթէ ճշմարտութի վար-դապետէք, այսուհետև զնշանս առաքինութեան ձերոյ յայտնապէս արարէք, եթէ ճշմարտիւ վարժեալ էք: Սոյն այր երբեմն, զի էր նա միայն յանապատի, ցան-կութիւն յանկարծակի իմն 'ի միտ արկանէր. և անդէն վաղվաղակի ընդ վիմով միով խորխոխ մեղու գտանէր և ասէր. 'ի բաց կաց յինէն, ժպիրհդ ցանկութեան, զի գրեալ է այսպէս՝ եթէ հոգւով գնացէք և զցանկութի մարմնոյ մի կատարէք: Եթող զայն անդ և 'ի բաց գը-նաց: Նա էր երբեմն զի այն երրորդ շաբաթ էր, զի ան-սուաղ լինէր. միրգ եգիտ անդ թնկեալ. ասէ՝ ոչ կե-րայց և ոչ մերձեցայց ամենևին 'ի քեզ, զի մի գայթակ-ղեցուցից զեղբայրն, այսինքն անձին իւրում. զի գրեալ է այսպէս. ոչ թէ կերակրով միայն կեայ մարդ: Նա իբրև միւս ևս այլ շաբաթ մահհեաց, 'ի քուն եմուտ: Արդ եկն հրեշտակն գիշերի տեսլեամբ և ասէ ցնա. արի կաց և զոր ինչ գտցես կերիջիր: Նա իբրև շուրջ զիւրեաւ հայէր, տեսանէր աղբիւր մի և բանջարս կա-կուղս փափուկս: Նորա ճաշակեաց 'ի կերակրոյ անտի և ըմպելւոյ, պատմէր մեզ՝ եթէ ոչ երբէք քաղցրագոյն քան զայս գտեալ է իմ: Նա այս փոքրիկ մի իբրև գտա-նէր, լինէր աւուրս սակաւս նօթի: Նա իբրև կերակրոյ պէտք լինէին, կայր յաղօթս և տեսանէր զի ամենայն ինչ որ 'ի կերակրոց էր՝ կայր առաջի նորա, հաց ջերմ և ձիթապտուղ և միրգ ազգի ազգի:

1 Ա— Հ[illegible]

Պատմէր երբեմն և առ եղբարս իւր զորս բազում ան-դամ խրատեալ էր, և դարձեալ յանապատ մեկնէր, և առեալ տանէր ինչ 'ի պէտս եղբարցն ։ Երբեմն ետես ցնաս զի Ճարակէին, ասէ ցնոսա . Եկայք առ իս, և յա-նուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի մի ոք 'ի ձէնջ բարձցէ զգեստն զոր ունիմ ։ Եւ անդէն նոյնժամայն մի 'ի նոցա-նէ առ նա դիմեաց, և արկ զնովաւ զկարպասն և ել նորա-տեաւ ևս 'ի վերայ նորա . և իբրև օթեվանս մի 'ի տեղի անդր հասանէր, և եդ նա զհացն և զմիրգն յարևու-անդ, եկին հասին 'ի վերայ այնորիկ գազանք յաղբիւր անդր, և իբրև մերձեցան միայն յուտել զհացն՝ անդէն սատակեցան ։

Եւ էր երբեմն զի երթայր առ եղբարս ոմանս միայ-նակեացս յաւուր կիւրակէի, ասէ ցնոսա . զի՞ այսպի-սում աւուր զգործս ժողովոյ ձերոյ չէք կատարեալ ։ Նո-քա ասեն . վասն զի չև եկեալ է երէցն յայնմ կուսէ ։ Ասէ ցնոսա . երթամ՝ զնա ածից առ ձեզ ։ Նոքա ա-սեն ցնա . չէ ինչ հնար ումեք անցանել ընդ ջուրս վասն խորութեան գետոյն . նա և գազան ինն չար ասեն կոկոր-դեղոս, որ զբազում մարդիկ կլեալ է ։ Իսկ նա ոչ ինչ հեղգացաւ, այլ յարուցեալ վաղվաղակի անդէն եր-թայր զերիցուէն ։ Իբրև եհաս 'ի գետափն, եկն գազանն մատոյց զիւր մկանունսն և անդէն վաղվաղակի յայս-կոյս գետոյն անցուցանէր ։ Իբրև եկն եգիտ զերէցն 'ի շինի անդ, աղաչէր զնա զի մի արհամարհեսցէ զեղբար-սն ։ Եւ յորժամ ետես զպատառատաւն չանչաղոտիսն զոր զգեցեալն էր՝ հարցանէր զնա . ուստի՞, ասէ, զայդ պատառատուտիսդ զգեցեալ ես ։ Եւ ասէ . գեղեցիկ համ-դերձս ունիմ, եղբայր ։ Նա իբրև ընդ խոնարհութիւն նորա զարմացեալ, զհետ գնայց նորա 'ի գետափն անդր ։ Իբրև հասին ոչ գտանէին և ոչ կուր որով անցանէին, բարբառ արար Ապեղէս առ գազանն և կոչէր առ ինքն ։ Կոկորդեղոսն իբրև լուաւ, արագ առ նա հասանէր և զիւր մկանունսն նմա մատուցանէր ։ Նա աղաչէր զերէցն, զի ելցէ և նա ընդ նմա . նա զահի հարեալ 'ի փախուստ դառնայր, յետս յետս խուսէր՝ և զարմացեալ էր . և որ յայնկոյս գետոյն եղբարքն էին՝ զարմացեալ էին, և

1 Ամենայն օրինակք խոսէր ։

կայրին հայէին ընդ գազանին հնազանդութիւն, և թէ զիարդ ընդ անհունն յայնկոյս անցանէին։ Արդ և եկն եղ 'ի ցամաքն, բուռն արկանէր զգազանաւն և ձգանել հրամայէր, և ասէ. քեզ լաւ իցէ մեռանել, զի ըղձաստասանն հատուցանես զեղբարցն զոր կերեալ է քո։ Այս վաղվաղակի գազանն զոգին 'ի բաց թափէր։

Այս եկեալ՝ լինէր անդ աւուրս երիս առ եղբարսն, և անդ նոսակր ուսուցանել զնոսա, և զիւրաքանչիւր խորհուրդսն՝ որ ինչ 'ի ծածուկ ունէին՝ յայտնէր նոցա. զոմն երևեցուցանէր՝ թէ պոռնկութեան ցանկութեամբ ներգեալ է, և ումեմն ասէր՝ թէ նորափառ հպարտութեամբ ներգեալ է, և զոմն ասէր՝ եթէ կերակրոց ցանկութեամբ տագնապի, և զմիւսմէն ասէր՝ թէ սրտմտութեամբ վարանի, և այլ ումեմն՝ թէ դա հեզ է, և զումեմնէ զհանդարտութէ, զոմանց արիութիւն, և զոմանց զվատութիւն և զչարութիւն կշտամբեալ յանդիմանէր։ Նոքա իբրև լուէին, զարմացեալ էին և ասէին. արդարև այդ այդպէս է։ Ասէ ցնոսա. պատրաստեցէք ինչ բանջար մեզ, զի դայցեն այսօր եղբարք բազմագոյնք առ մեզ։ Նոքա մինչդեռ պատրաստէին, հասեալ եղբարքն՝ միմեանց ողջոյն տային։

Այր ոմն յեղբարց անտի, զի աղաչէր զնա զի ընդ նմա շրջեսցի յանապատի անդ։ Ասէ նա ցնա. ոչ կարես դու համբերել անդ փորձութեան դիւաց։ Նա իբրև հաստատութեամբ սրտով և գթով մատուցեալ էր, յամենայն զոր ինչ և հարցէ, ասէ, համբերեցից։ Որդ իբրև առընկալաւ զնա, յայլ տեղի հրամայեաց երթալ նմա։ Արդ և հասանէին գիշերի 'ի վերայ նորա դևքն, հեղձուցանել զնա ջանային. զառաջինն պինդ և ապտեղի խորհրդով խռովէին զնա։ Նորա ընթացեալ վաղվաղակի առ Ա-պեղէս, և զինչ անցք անցեալ էին՝ պատմէր նմա. նա շուրջ զտեղեաւն իբրև դիր հանէր, և հրամանս տայր այնուհետև անհոգութեամբ կեալ նմա։ Արդ և հայց պակասեաց նոցա յայրի անդ, եկն եհաս հրեշտակ մի 'ի նմանութեան եղբօր, գայր բերէր նոցա զկերակուրն։

Այր երբեմն զի 'ի խնդիր էին նմա եղբարք տասն և մոլորեալ էին յանապատի անդ. և այն աւուրք եօթն էին զի նօթիս շրջէին մոլորեալք։ Արդ և եկն եգիտ զնոսա, հրամայեաց նոցա հանգչել յայրի անդ. նոքա իս-

րև յուշ արարին վասն կերակրոց, նա քանզի ոչ ինչ ունէր դնել առաջի՝ ասէ. կարող է Ած պատրաստել սեղան յանապատի։ Նոյնժամ վաղվաղակի արտաքս ելեալ առ դուրսն՝ գտին երիտասարդ մի գեղեցիկ՝ որ կայր և ստէպ բախէր զդուրսն մինչդեռ նոքա յաղօթս կային. բացին զդուրսն և տեսին զերիտասարդն զի բարձեալ էր զամբիղ լի հացիւ և ձիթապտղով, առին զայն և ճաշակեցին և գոհացան զԱյ. և պատանին անդէն աներևոյթ եղև։ Զայս ամենայն զսքանչելիս և առաւել քան զնոյն հայրն Սոպրէս պատմեաց մեզ։ Նաև ընկալեալ զմեզ օրհնօք սիրով, առեալ զմեզ յիւր պարտիզին մուծանէր, և ցուցանէր մեզ արմաւենիս և այլ բազում մրգաբերս. ոչ մի անգամ իւր իսկ յանապատի անդ տնկեալ, որ ՚ի շինականացն հաւատոց անտի յիշատակեցաւ, յորս ասացն՝ թէ կարող է անապատն պտուղ տալ այնոցիկ որ ունիցին հաւատս առ Ած։

ՏԵՍԱՔ մեք ՚ի կողմանս Թեբայեցւոց լեառն մի բարձր զի կայր ՚ի վերայ գետոյ, ահեղ սքանչելի և դժուարին, և միայնակեացք բազումք արգելականք կային անդ։ Հայր էր նոցա Պիտիրոն անուն, որ էր յաշակերտաց անտի Անտոնի, զոր բազում նշանս և արուեստս առնէր. զի իբրև ՚ի տեղի մատեաւ նա Անտոնի, զժառանգութիւն շնորհաց նորա ընկալաւ։ Տայ նա մեզ խրատ և ասէ. դև ոմն է՝ որ զցաւոց զկնի շրջի և զախտս մեր բազում անգամ ՚ի կարիս դարձուցանէ։ Արդ՝ որ կամեսցի ոք ՚ի մէնջ զդևն հալածել, նախ զախտ բարուցն ծառայեցուսցէ. զի որում ախտի բարուց ոք կարասցէ յաղթել, նովին և զդևն նորա հալածել կարէ։ Իսկ արդ պարտ և պատշաճ է առ սակաւ սակաւ ախտի բարուցն նախ յաղթել, զի այնուիկ զդևսն հալածել մարթասցէ։ Է դև մի զկնի որկորստութեն. արդ եթէ ոք ջանասցէ որկորստութեան յաղթել, կարող լինի հալածել զնորա դևն։ Այլ ինքն այրն ուտէր երկիցս ՚ի շաբաթու՝ կիւ-

1 Սոյն հայրն Պիտիրիոն աշակերտ մեծին Անտոնի. եթէ ոք կամի զդևս հանել յումեքէ, յառաջագոյն զախտս իւր ծառայեցուսցէ. զի որ ոք որում ախտի յաղթեսցէ, զնորին զդևն հալածեսցէ։ Նա այսպէս իցէ. միացեալ կայ դևն ընդ բարկութեն. եթէ կալցես զբարկութիւն, հալածեսցես զդև նորա. և զայս գրեալ ՚ի վերայ ամենայն ախտից։

րանկէի և հինգշաբաթու՝ ըսել խելս ասկանալի մի ատեան, և ոչ այլ ինչ ընտա կարէր ճաշակել. քանզի զբարան իւր յախոյլոփի կարգի կացուցեալ էր:

## ՎԱՍՆ ԱՅՆՈՑԻԿ

## ՈՐ Ի ՆԻՏՐԱՑԻՈՑ ՔԱՂԱՔ ԱՆԴՐ ԷԻՆ

ԵԿԱՔ իջաք մեք 'ի Նիտրիա, յորում բազում մե-նաստանս տեսաք միայնակեաց, է որ օտարս և է որ ան-ջէն գաւառականս. առաքինութեամբ վարուք իւրեանց զմիմեանս ելանէին և հակառակագոյն իմն ընդ մի-մեանս 'ի կարգս վարուց իւրեանց էին և զամենայն ա-ռաքինութիւնս ցուցանէին և ջանային 'ի վաստակս իւ-րեանց զմիմեանս ելանելով: Այլ ոմանք 'ի նոցանէ ընդ տեսիլս և ոմանք զգործովք արդիւնականօք պարապեալ էին: Այլ իբրև տեսանէին զմեզ ոմանք 'ի նոցանէ մինչ-դեռ 'ի հեռաստանէ էաք, մինչ ընդ անապատն խոկ գը-նայաք, ջուր առեալ ընդ առաջ մեր գային. և ոմանք զոտս մեր մաքրուցեալ լուանային, և ոմանք զձեռս մեր հանեալ լուանային, և ոմանք 'ի կերակուր զմեզ թա-խանձէին, և այլք ոմանք 'ի հարցումն առաքինութեան վարդապետութի, և այլք 'ի բանս գիտութե 'ի գիտու-թիւն այ: Այլ որչափ ինչ միանգամ ոք 'ի նոցանէ կա-րող ինչ լինէր ջանային փութալով օգնել զմեզ. արդ և զինչ ևս ոք մարթասցէ ասել վասն ամենայն առա-քինութեց նոցա, և ոչ ինչ բաւական լինէին բանք առ 'ի պատմել զնոցանէ: Յանապատ տեղիս հաստեալ բնա-կեալ են, և խցկունքն իւրեանց 'ի միմեանց մեկուսի են, զի ճանաչել անգամ ոչ մարթեն 'ի հեռաստանէ զայլ յընկերէ, և ոչ տեսանել վաղվաղակի և ոչ բար-բառ լսել, այլ 'ի մեծի լռութե են՝ այր իւրաքանչիւր առանձին արգելեալ, բայց միայն 'ի շաբաթի և 'ի կիւ-րակէի 'ի ժողովուրդս անդր. երևէին և միմեանց ողջոյն տային: Ոմանք 'ի նոցանէ բազում անգամ և չորս աւուրս 'ի խցկունս անդ իւրեանց երևէին 'ի չտեսանել զմիմեանս, բայց միայն 'ի ժողովս անդ իւրեանց: Այլ

ոմանք 'ի նոցանէ երկուք մղոնօք և չորիւք 'ի ժողովս անդր հասանեն, այնչափ հեռի 'ի միմեանց հաստեալ կան ։ Այլ սէր այնչափ ունէին ընդ միմեանս և առ ամենայն եղբայրութիւն, զի բազմաց 'ի նոցանէ փոյթ է 'ի մի տեղի հասանել. այր իւրաքանչիւր փութացեալ են զիւրաքանչիւր խցիկ ընկերի իւրում 'ի հանգիստ մատուցանել ։

ՏԵՍԻ 'եւ անդ այր մի Մենիոս անուն տատուել ազնիւ խցկունս շինեալ տուահիւք և ջրհորովք, կազմեալ և այլ պէտս ինչ ։ Արդ իբրև եկն ոմն առ նա յեղբարց իբրև փրկութիւ անձին իւրում խնդրել և խցիկ մի 'ի բնակութիւն իւր խնդրէր, և նա իբրև վաղն սորին իսկ բանի արտաքս գնացեալ պատուէր տայր նմա զի մի մեկնեսցի նա 'ի խցկանէ անտի մինչև գացէ նա ըստ նմա արժանի վանս, և եթող նմա զամենայն ինչ որ ինչ ինքն ունէր խցկան հանդերձ. և ինքն զինքն 'ի փոքրիկ խցիկ հեռի 'ի նոցանէ տարեալ արգելոյր ։ Ապա թէ և բազում եւս ոք էին որ առ նա ժողովէին՝ որ ապրել կամէին, յինքն ամփոփէր զամենայն եղբայրութիւն, և ամեմն աղխս մատուցանէր, և 'ի միում աւուր անդէն վաղվաղակի զնոցա խցկնեարն կատարէր առ օրին՝ որ մտանէր բնակել 'ի խցկունս անդր, և իբրև նաւակատիս՝ առնէր նոցա ուրախութիւ ։ Այլ մինչդեռ նոքա յուրախութեանն կենէին, այր իւրաքանչիւր յիւրոց վանաց անտի լցեալ զմաշկեակն իւրեանց և կամ զամբիղս լի հացիւ և կամ այլ ինչ որ ինչ և էր՝ 'ի նորաշէն խցկունս անդ մտանէին ։ Արդ զի մի յայտնի լինիցի իւրաքանչիւր պտուղ երախայրեաց, և գային ընդ երեկս որ բնակելոց էին 'ի խցկունս անդր, գտանէին զամենայն ինչ որ ինչ պէտք էին իւրեանց ։

ՏԵՍԱՔ մեք և այլ այր մի զի անուն էր նորա Այսղիմոս, ծեր աւուրբք 'ի հատակի անդ իւրում և զաւաթացին երեսօք, որ զիժս և զօձս և զկարիճս և զքարբս իւրովք ստիւքն փշրէր և սպանանէր. զի այլ ոչ ոք իշխէր բնաւ ամենևին առնել զայն յանապատի անդ, այլ և բազումք յընկերաց նորա մեռան 'ի գազանաց անտի ։

ՏԵՍԱՔ և այլ ծեր մի հայր 'ի միաբանակեցաց անտի Սկոտիրդէս անուն գեղեցիկ ծերութբ, որ 'ի տեղւոջէ անտի գնացեալ հինաւուրց սակի, որ ինքն իսկ ընդ Անտոնի կացեալ էր և ամաց էր հարիւր տասն. որ բազում անգամ յաճախէր յոյժ մխիթարել զմեզ, և աղաչէր զանձն իւր անգոսնել. այնպիսի խոնարհութիւն 'ի ծերոյթս իւր ստացեալ ունէր ։

Տեսաք մեք երիս եղբարս ճարտարս իմաստունս և առաքինիս, որ վասն առաքինութե վարուց իւրեանց յեպիսկոպոսութի ընտրեցան. վասն խոնարհութեան իւրեանց առեալ յարեան զիւրեանց ականջսն խածեցին. առնել արարին յանգգնութի յոյժ, սակայն վասն իմաստուն լինել խորհրդոց, զի յայնմհետէ մի ոք ամենեւին զնոսա նեղեսցէ ։

ՏԵՍԱՔ մեք և զԵւագրիոս այր իմաստուն և ճարտար, որ զճարտարութի բազում ունէր զիմաստութե կշիռ, որ փորձ ամենայն իրաց էր ամեթացեալ, որ բազում անգամ իջեալ էր նորա յաղեքսանդրացւոց քաղաք անդր և զՅունաց զփիլիսոփայսն ընկճերանէր ։ Սա պատմէր տայր եղբարց որ ընդ մեզ էին. Ջուր, ասէ, մի յոյժ ըմպիցէք, զի դեւք 'ի ջրահոյս տեղիս առաւելագոյն ջանան կանխել ։ Բազում և այլ բանս ասէր նա ընդ մեզ և հաստատէր զանձինս մեր ։ Բազումք 'ի նոցանէ և հաց ոչ ուտէին և ոչ միրգ, բայց միայն եղերդ և եղեգ. կէսքն բնաւ ամենեւին 'ի նոցանէ 'ի քուն ոչ մտանէին, այլ սակաւ նստէին և կամ յոտն կային մինչև յառաւօտն. այնպէս ժոյժ ունէին յաղօթս կալոյ ։

ՏԱՑԻՆ մեզ զրոյց բազում եղբարք վասն վարուցն Մակարայ աշակերտին Անտոնի, որ յառաջ քան զակաւ ժամանակս այն ինչ կատարեալ էր, որ մեծամեծ առաքինութիւս արուեստից արարեալ էր իբրև զԱնտոնիոս՝ որ առնէր բժշկութիւս և նշանս և արուեստս բազումս զոր ոչ ոք ժամանէ պատմել զամենայն ինչ. սակաւինչ յիշեցեալ զնորա զառաքինութենցն փոքր 'ի շատէ ինչ ծանիցուք ։ Սորա տեսեալ առ մեծի այնմ Անտոնի ոստս արմաւոյ զի առեալ գործէր, խնդրեաց 'ի նմանէ

ողջին մի յաւուրց անօթի : Ասէ ցնա Անտոնիոս . գրեալ է այսպէս՝ թէ մի ցանկանայցես ընչից ընկերի քո : Եւ իբրեւ զայն ասաց , վաղվաղակի ոստ արմաւոյն իբրեւ հրով այրեցաւ . զոր իբրեւ ետես Անտոնիոս , ասէ ցՄակարիոս . ահաւասիկ հանգեաւ ոգի իմ 'ի քեզ , և եղիցիս դու այսուհետեւ իմոց առաքինութեանցս ժառանգորդ : Նոր՛ վարձեալ եգիտ զնա սատանայ յանապատի անդ աշխատեալ յոյժ և ասէ ցնա . ահաւասիկ զշնորհն Անտոնի առեր դու , ընդէ՞ր ոչ վարես զիշխանութիւն նորա և խնդրես դու յա̃յ կերակուր և զօրութի̃ առ 'ի ճանապարհ գնալոյ : Նա ետ պատասխանի և ասէ . իմ զօրութի̃ և օգնութի̃ իմ տէր ա̃մ է , այլ դու ոչ փորձեսցես զծառայ ա̃յ : Եւ արար առաջօք նմա սատանայ ուղտ մի բեռնաւոր հանդերձ ընդ անապատն զի դայր մոլորեալ և բարձեալ բերէր զամենայն ինչ որ ինչ 'ի պէտս նորա էր : Իբրեւ ետես Մակարիոս զուղտն , եկն նստաւ առաջի նորա , նա ած զմտաւ եթէ ցնորք ինչ առաջօք եղեն որպէս և էրն իսկ . նա անդէն յաղօթս ուղղեցաւ , իսկ նա վաղվաղակի ընդ գետին մտանէր : Դարձեալ յայլում ժամանակի իբրեւ պահեալ էր յոյժ , կաց յաղօթս և խնդրեաց յա̃յ զի ցուցցէ նմա զդրախտն զոր յանապատին եգիպտացւոց Յանէսն և Յամրէսն տնկեցին , որ իբրեւ նմանութի̃ ճշմարիտ դրախտին կամեցան առնել : Որ իբրեւ մոլորական գայր ընդ անապատն՝ երեք շաբաթօք նօթի էր , առաջնորդեաց հրեշտակն յերկնից և եցոյց նմա զտեղին . և էին դեւքն պահապան որ պահէին զեղ և զմուտ դրախտին յամենայն կողմանէ և ոչ տային թոյլ մտանել նմա . և էր դրախտն մեծ յոյժ և յոյժ մեծութի̃ ընդարձակութե̃ ունէր տեղին : Եւ նա կաց յաղօթս , և հանդէպ 'ի ներքս համարձակեցաւ եմուտ , և եգիտ 'ի ներքս անդ երկուս սուրբս , զի և նոքա ըստ նմին օրինակի երթեալ էին . ժամանակս մեծս կային յաղօթս և միմեանց ողջոյն տային խնդալով յոյժ : Նոքա առին զոտս նորա լուացին , և 'ի պտղոյ դրախտին առաջի նորա եդին : Եւ իբրեւ առ ճաշակեաց և գոհացաւ զա̃յ , և զարմացեալ էր վասն մրգոյն զի մեծամեծք և ազգիազգիք էին : Խօսել սկսան ընդ միմեանս և ասեն . բարի է և լաւ եթէ ամենայն միայնակեացք աստ 'ի ներքս էին : Իսկ էին աղբիւրք երեք

մեծք 'ի մէջ դրախտին յանդնդոց անտի բխեալ և առ-
բուցանէին զդրախտն, զի ամենայն ծառ հաստ է բարձր
և ստուար, բազմաբեր և պտղալից. ամենայն ազգ մր-
գոց որ 'ի ներքոյ երկնից՝ անդ էր պտղաբեր ։ Այլ եղև
առ նոսա աւուրս եօթն ։ Սգաչէր դարձեալ Մակար
անդրէն դարձ առնել յաշխարհ և առնուլ ածել ընդ
իւր զայլ միայնակեացսն ։ Իսկ սուրբքն ասէին ցնա. ոչ
կարես առնել դու զայդ, բազում է և յոյժ մեծ անա-
պատն որ ընդ մէջ և ընդ երկար տարածեալ է, և բա-
զում են այն դևք որ ունին զանապատն ամենայն, որ
մոլորեցուցանեն զմիայնակեացսն և սպանանեն իսկ. բա-
զումք են այլք որք կամէին գալ այսր, և կոտորեցան 'ի
նոցանէ ։ Իսկ Մակարիոս ոչ առ յանձն լինել անդէն,
այլ պնդեալ ասէր՝ եթէ պարտ է ինձ երթալ և ածել
զնոսա այսր, զի 'ի փափկութեան աստ յայսմ և նոքա
վայելեսցեն ։ Գնաց յաշխարհ և առեալ ընդ իւր տա-
նէր 'ի մրգաց անտի առ 'ի ցոյցս ինչ առնելոյ. և սոսա
արմաւոյ բազում ժողովեալ բառնայր և նշանակ դնէր,
մինչ գայրն զճանապարհն, յաստոց անտի յանապատն
անդ, զի մի վրիպեսցի որ գալոցն իցէ ։ Այս իբրև վայ-
րիկ մի ննջեաց յանապատի անդ և զարթեաւ, եգիտ
զամ նշանակսն դիւացն ժողովեալ և բերեալ եդեալ ընդ
սնարս նորա ։ Խօսել սկսաւ ընդ դևսն իբրև զարթեաւ
և ասէ. եթէ կամք այ են, դուք ոչ կարէք արգելուլ
զմեզ մտանել 'ի դրախտն ։ Արդ իբրև եկն եհաս յաշ-
խարհն, ցուցանէր զմիրգ դրախտին միայնակեացցն և
յօժարեցուցանէր զնոսա յառնել գնալ երթալ 'ի դր-
ախտն ։ Այլ ժողովեալ առ նա հարք բազումք և ասեն.
գուցէ եթէ 'ի սատակումն անձանց մերոց դրախտն այն
լինիցի. զի թէ աստ 'ի նմա վայելեմք, ապա ընկալեալ
լինիմք զբարիսն մեր աստէն յերկրի. իսկ արդ զի՞նչ
վարձք իցեն մեզ 'ի կատարածի յորժամ առ ած եր-
թիցեմք, և կամ 'ի վերայ որո՞ց առաքինութեանց հաստա-
նիցեմք ։ Այլ այսու հաճեցին զմիտս նորա զի այլ անդ-
րէն դարձ մի արասցէ ։

*Այլ երբեմն զի խաղող հասուն անդէն առ ժամեայն
յորթոյ հատեալ ուտել ցանկացաւ. իբրև բերին՝ յայտ

* Բերեալ եղև երբեմն խաղող Մակարայ հօրն. և զի կարօտէր յու-
տելն, և նա 'ի վերայ նորա եցոյց զկարգ պահոց իւրոց, զի առաքեաց

առնէր զժուժկալութիւն, եւ տանել առ եղբայր մի որ հիւանդացեալ էր. և էր զի հիւանդին այն ցանկայր խաղողոյ, նա էառ զխաղողն և յոյժ խնդաց ընդդէմ նորա. իբրև կամեցաւ զիւր պնդութիւն ցուցանել, այլում եղբօր եւ տանել իբրև թէ ինքն ոչ ինչ կարի ցանկանայցէ կերակրոյն: Իբրև առ այն եղբայր, նոյնպէս արար և նա, թէպէտ և կարի քաջ ինքն ցանկացեալ էր ուտել 'ի նմանէ: Իբրև ընդ բազում եղբարս եկն անց խաղողն և ոչ ոք կամեցաւ 'ի նմանէ ճաշակել, վերջինն դարձեալ առեալ զնա անդրէն առ Մակար եւ տանել. համարէր եթէ մեծ պատարագ իմն տամ տանել նմա: Իբրև առ Մակարիոս, ծանեաւ զխաղողն և քննեաց և գոհացաւ զաստուածէ 'ի վերայ այնպիսի պնդութեան նոցա և համբերութեան և սիրոյն որ առ միմեանս ունէին, և ոչ նա ճաշակեաց:

ՏԵՍԻ ես և այլ 'ի կողմանս Թեբայեցւոց վանք մի Իսիդորեայ, որ ունէին մեծ պարսպօք քարակոփ շինեալ ամրացեալք, որ հազար միայնակեացս 'ի ներքս ունէր: Եւ էին 'ի ներքս ջրհորք և դրախտք և որ ինչ միանգամ պէտք են մարդոյ 'ի վամս իւրեանց: Երբէք ըստ դուռն պարսպին արտաքս չէին ելեալ միայնակեացք. հայր մի ծեր էր որ բարապան էր, և այլ ումեմն բնաւ ամենեւին ոչ ելանել տայր և ոչ մտանել, այլ որ կամէր մինչև 'ի մահ անդէն 'ի ներքս բնակել և ոչ ուրեք ելանել, և ոչ միանգամ անդր հասանէր. Երկու եղբարք էին ծերք որ զպէտս եղբարցն պատմէին, ելանէին համարձակ արտաքս և զպէտս նոցա արտաքուստ 'ի ներքս ամբարել մարթէին: Ասէր մեզ այն որ առ դրանն նստ-

զնա այլում ակար եղբօր, քանզի և նա խնդրէր զնա: Որ իբրև ետես զնա, ուրախ եղև յոյժ և խնդութեամբ ընկալաւ, զի և նա կամեցաւ ծածկել զառաքինութիւն իւր: Եւ իբրև ել եղբայրն որ եբեր զխաղողն, առժամայն առաքեաց զնա այլում եղբօր, զի և նա հիւանդ էր և ոչ կարէր առնուլ ինչ: Իսկ նա իբրև էառ զնա, այնպէս արար՝ թէպէտ և յօժարէր 'ի ճաշակել, այլ և նա առաքեաց զնա այլում եղբօր. և զի այսպէս շրջեալ ընդ բազմութիւն եղբարցն խաղողն այն՝ և ոչ մի ոք ճաշակեաց 'ի նմանէ: Իսկ յետինն այն առ որ եկն առեալ զնա առաքեաց առ հայրն Մակար իբրև ընծայս մեծ. իսկ իբրև ետես զնա ծերն ծանեաւ. և զի ոչ ոք մերձեալ էր 'ի նա, լի եղև խնդութեամբ և գոհանայր զԱյ սակս այսչափ ճգնութեան և համբերութեան եղբարցն: Եւ բերեալ զնա յեկեղեցին, և բաժանեաց օրհնութեան որպէս և էր իսկ:

տէր ծերն. այսպիսի ոք են այն որ 'ի նեղքս տուրքն են, և կարող են նոքա զամենայն նշանս և զարտաւոտս տանել, և ոչ ոք է 'ի նոցանէ որ ախտիւ հիւանդանայ մինչև 'ի մահ իւր. այլ որչափ ինչ իւրաքանչիւր փոխումն լինէր յաշխարհէ, և գուշակէր ամենեցուն, և ինքն 'ի կողմ ելեալ ննջէր:

ՏԵՍԱՆԷԻ ես 'ի կողմանս Արսինոլտոայ ծեր մի այր զի անուն էր նորա Սերեպիոն՝ հայր քաղաքամ վանականնայ, որ առաջնորդէր քաղաքամ եղբայրութեանց՝ որ թուով իբրև բիւր մի էր. քաղաքամ ինչ դարման զեղբարցն 'ի ժամանակին իւրեանց մատուցանել մարթ էր, որք զիւրաքանչիւր պտուղ երախայրեացն առ նա մատուցանէին այր իւրաքանչիւր ըստ տարւոյն ցորենոյ արդուս երկոտասանս, և լինէր իբրև քառասուն զրիւ մերայոյս. և այս էր 'ի պաշտօն աղքատաց: Այլ այն ամենայն ընդ ձեռամբ նորա պաշտէին, իբրև զի բնաւ ամենեքին աղքատ ոք ոչ գտանէր 'ի գաւառի անդ: Այլ և աղքատանոցաց աղքատացն տայր տանել: Այս և որ յառաջագոյն հարքն էին յերկրին եգիպտացւոց, ոչ եթէ հեղգացեալք ինչ էր վասն այսր կարգաց և գնացից, այլ և 'ի վաստակոց եղբայրութեանն լցեալ նաւս ցորենով և հանդերձիւ մինչ 'ի քաղաքն աղքատանոցաց աղքատացն առաքէին. նաւաքս էին շուրջ գնդքօք որ կարօտք էին:

ՏԵՍԱՔ մեք և 'ի կողմանս բաբելացւոց և մեմփացւոց արս բազումս և մեծամեծս, և բազմութիւն անթիւ միայնակեցաց ազգի ազգի առաքինութեամբ զարդարեալ: Տեսաք մեք զշտեմարանս Յովսէփայ, որ և զցորեանն 'ի ժամանակի սովոյն ժողովեալ էր:

## ԱՆՈՂՈՐՄ ՊԵՏՐՈՍԻ ՄԱՔՍԱՒՈՐԻՆ

ՅԱՓՐԻԿԵՑԻՈՑ աշխարհէն էր ոմն մեծատուն յոյժ ստամբակ և անողորմ, անուն Պետրոս, և էր մաքսաւոր: Այս՝ ի միում աւուր՝ ի ձմերին նստէին աղքատք յարևու և ջեռնուին. սկսան իւրաքանչիւր ոք ՝ի նոցանէ գովել ըզտունս ողորմածաց և աղօթել նոցա մի ըստ միոջէ. նոյնպէս և զտունս անողորմից պարսաւել և նախատել: Այս՝ ի խօսել նոցա եկն ՝ի մէջ և մաքսաւորին անուն, և սկսան ՝ի միմեանց հարցանել՝ ով արդեօք ՝ի մէնջ առեալ է ՝ի տանէ նորա ողորմութիւն. և ամենեցուն հարցեալ զմիմեանս, ՝ի նոցանէ ոչ ոք գտաւ որ եթէ առեալ ինչ էր ՝ի տանէ նորա: Այլ ասէ մի ոմն ՝ի նոցանէ. զի՞նչ տայք ինձ և ես առից ՝ի նմանէ ողորմութիւն այսօր: Այլ արարին ընդ նմա գրաւ. գնաց և եկաց առաջի դրան մաքսաւորին և ակն ունէր թէ յոր ժամ եկեսցէ. և ՝ի նմին եհաս և մաքսաւորն՝ բարձեալ գրաստու հաց գերմակ ճաշոյ իւրոյ համար: Իբրև ետես զաղքատն, ածեալ զաչսն ոչ եգիտ քար, և ՝ի սրտմտութենէն առեալ ՝ի բուռն զգլուխակ մի ՝ի գրաստուէ անտի արձակեաց յերեսս նորա: Իսկ նորա խնդութեամբ առեալ ընթանայր և ասէ ցընկերս իւր երդմամբ՝ թէ յիւրում ձեռացն իսկ առի զայս: Իսկ յետ երկուց աւուրց հիւանդացաւ մաքսաւորն հիւանդութիւն մեծ մինչև ՝ի մահ. և տեսանէ յանուրջս զինքն իբր թէ համարս համարէին նմա և ըզգործս իւր զամենեսեան ՝ի կշիռս եդեալ կշռէին, և ՝ի մի կողմանէ կշռոցն սևք ոմանք և չարադէմք ժողովեալ էին և դնէին զչար գործսն, իսկ ՝ի միւս կողմանն այլոց էր սպիտակազգեստից և ահաւոր տեսլեանք, որոց ոչ ինչ գտեալ բարի գործս որ դնիցեն յիւրեանց կողմանն ընդ զանկշիռ չարեացն՝ տրտմէին յոյժ ընդ ինքեանս և ճարակ յուղէին ասելով, ասեն մեք ոչ ինչ ունիմք, բայց մի գլուխակ հացի որ ետ Քրիստոսի, և զայն յակամայ: Իբրև եդին զգերմակ հացն ՝ի կշիռն, հաւասարեաց կշիռն, և ասեն սպիտակազգեստքն մաքսաւորին. երթ յաւել ՝ի

գերմանկդ յայդ, եթէ ոչ՝ այդ սեւքդ տամնեն զքեզ։ Այլ զարթուցեալ գիտաց եթէ չիք տուտ տեսիլդ, այլ զի զամենայն որ ինչ 'ի մանկութէ իւրմէ գործեալ էր և զոր ինչ մոռացեալ իսկ էր իւր՝ տեսանէր զի եթով-պացիքն այն ժողովէին և բերէին 'ի կշիռն, և ասէր. քաղէ քաղէ, եթէ մի օրինօքն զոր սրտմտութիւ արձակեցի այնպէս օգուտ եղև, յորքան չարեաց փրկէ որ ոք զուարթութիւ տայցէ զինչս իւր կարօտելոց։

Այլ ապա այնուհետև այնպիսի զգաստացաւ և եղև այնպիսի ողորմած, որ և 'ի մարմինն իւր ոչ խնայեաց։ Այլ դէպ եղև երբեմն իբրև երթայր 'ի մաքսաւորութեան, հանդիպեցաւ նմա նաւորդ մի որ ապրեալ էր 'ի նաւաբեկութէ մերկ, և անկեալ առաջի նորա աղաչէր խնդրելով 'ի նմանէ զգեստ։ Իսկ նորա կարծեալ թէ աղքատ ոք իցէ, հանեալ զներքին հանդերձն ետ նմա, և երդմնեցոյց ըստ հաւատոյ՝ թէ վասն այ̃ դու զգեցիր զայդ և աղօթս արա ինձ։ Իսկ նորա պատկառեալ ար-կանել զիւրև, և ետ ումեմն զի վաճառեսցէ. և յան-ցանելն Պետրոսի ընդ այն ետես 'ի վաճառման և տրտմեցաւ յոյժ և երթեալ 'ի տուն իւր ոչ ինչ ճաշակեաց. բայց փակեաց զդուրս սենեկին, նստէր և լայր և խորհէր ընդ միտս իւր եթէ ոչ եղէ արժանի որ զի ունիցի աղքատն զիմ յիշել ինչ։ Այլ զկնի 'ի տրտմութեան էր՝ 'ի քուն եղև, և տեսանէր զոմն գեղեցիկ քան զարեգական՝ որ ունէր խաչ 'ի գլուխ իւր և եկաց 'ի վերայ, զգեցեալ և զհանդերձ նորա զոր տուեալ էր ցնաւորդն, և ասէ ցնա. զի՞ լաս Պետրոս։ Այլ նա ասէ որպէս առ տէր իւր. տէր, յորոց պարգևես մեզ՝ տամք ումեք, և զօշաքաղս առնուն ոմք առնուն։ Յայնժամ ասէ ցնա. Ճանաչես զայս. և եցոյց նմա զհանդերձ նորա զոր ունէր 'ի ներքոյ զգեցեալ զայն։ Ասէ ցնա Պետրոս. այո տէր։ Ասէ ցնա որ երևեցաւ նմա. ահաւասիկ իմ զգեցեալ եմ մինչ չև տուեալ ես, և գոհ եմ զբարուոք կամաց քո, քանզի ցրտացեալ էի և զգեցուցեր զիս։

Իսկ Պետրոս 'ի միտս իւր եկեալ զարմացաւ և սկսաւ երանել զաղքատս և ասել. կենդանի է տէր եթէ աղքատն Ք̃ս է, ոչ մեռայց եթէ ոչ եղէց մի 'ի նոցանէն։ Այլ * 'ի նոյն կոչեալ զծառայ իւր, զոր և գնեալն իսկ էր,

Եւ * նոյնժամայն կոչեալ զծառայ իւր զոր և գնեալ իսկ էր զնա, և ասէ

ասէ ցնա. խորհուրդ մի կամիմ ձառել քեզ, և աստուծով հանդերձ՝ եթէ յայտնես զխրատ և կամ ոչ լուիցես ինձ, յայլազգիս վաճառեմ զքեզ: Տայ նմա տասն լիտր ոսկի և ասէ ցնա. երթ գնեա քեզ վաճառ, և առ զիս և տար 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ և վաճառեա զիս ումեք քրիստոնէի և զգինս իմ տուր աղքատաց: Իսկ դպիրն իւր յամառէր զարմանալով: Ասէ ցնա երդմամբ. եթէ ոչ վաճառես զիս, ես վաճառեմ զքեզ որպէս ասացի 'ի բարբարոսս. և լուռ եղև դպիրն իւր:

Այլ իբրև հասին 'ի սուրբ տեղիսն, եգիտ զոմն սիրելի իւր մտերիմ դպիրն՝ արծաթագործ, անկեալ 'ի տառապանս: Այլ իբրև անկան երկոքեան զխօսիւք, ասէ

ցնա. խորհուրդ մի կամիմ ձառել քեզ, և աստուծով հանդերձ՝ թէ յայտնես զխրատ և կամ ոչ լուիցես ինձ զոր ասեմս, յայլազգիս վաճառեմ զքեզ և ոչ խնայեմ: Եւ այս է խորհուրդն զոր ասելոց եմ քեզ. տասն լիտր ոսկի տամ քեզ, և առեալ զայն գնեսցես քեզ վաճառ Երուսաղէմի. և ես ընդ քեզ երթայցեմ իբրև ծառայ քո, և ոչ ոք գիտասցէ զայս թէ դու ով ես և կամ ես ով եմ: Եւ 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ յորժամ հասանիցեմք, 'ի նոյն վաճառեա զիս ումեմն քրիստոնէի և զգինս իմ տացես աղքատաց: Իսկ դպիրն իւր յամառէր զարհուրելով վասն իրացն զոր լսէր, և զարմանայր թէ որպէս կամի զայս ամենայն մեծութիւն իւր զոր ունի՝ թողուլ և աղքատանալ և ծառայ ևս լինել. վասն այն ոչ հաւանէր առնել զայն: Ասէ. բազում ծառայք և բազում ոք ունիս ընդ ձեռամբ մեծութեան քո, միում այլ հրամայես զխորհուրդդ զայդ, զի ես պատկառեմ 'ի բանէդ յայդ և ոչ իշխեմ առնել զայդ ընդ փառաւորեալ մեծութիւն քո: Ասէ ցնա երանելին Պետրոս երդմամբ. եթէ ոչ լուիցես ինձ և ոչ վաճառեսցես զիս, ես վաճառեցից զքեզ 'ի բարբարոսս, որպէս և ասացի. այլ թէ լուիցես ինձ հօրն քում, դու օրհնութիւն լիցիս զամենայն աւուրս քո: Յայնժամ յարտասուս եղեալ կականով լայր դպիրն, քանզի 'ի ծածուկ տեղւոջ էին և հեռաւորն ուրեք յայգւոջ իւրում. և քանզի իմաստուն և հաւատարիմ և երկիւղած ոք էր դպիրն իւր այն, վասն այն հնազանդեցաւ գլխաւորին իւրոյ հրամանացն, և օրհնութեան նորա որում կարօտէր՝ արժանաւոր եղև: Եւ ինքն փառաւորն Պետրոս զամենայն զոր ինչ պարտն էր առնել ընչից և տանն և ընտանեաց արար և ազատեցաւ յամենայն ծանրացուցիչ հոգոց: Եւ իբրև թէ 'ի վաճառ երթայ 'ի հեռաւոր քաղաքս, և իբրև գնացին 'ի տեղի ինչ, բաժանեցաւ 'ի սիրելեաց և 'ի ծանօթից որք ընդ նմա իսկ եկեալ էին յուղարկէին իւրեանց, պատճառելով յայլ ուրեք երթալ՝ յորում նոքա ոչ էին գնալոց, և այլափոխեալ զինքն 'ի ձև ծառայի յուղի անկեալ 'ի տեղւոջէն յայն ընդ անծանօթ ամանց գնայր ընդ դպիրն իւր իբրև ծառայ նորա:

Եւ իբրև հասին 'ի սուրբ տեղիսն, եգիտ անդ զոմն արծաթագործ որ էր սիրելի և մտերիմ յոյժ դպրին. քանզի յառաջագոյն ինչ առեալ զկիմեանս 'ի տեղի ինչ, որ վաճառի աղաղաւ գնացեալ էին, սիրելի լեալ էին միմեանց յոյժ. իսկ արծաթագործն 'ի տառապանս

ցնա դայլոյն. Եկ դու, տէր Ուղէ, քանզի այս էր անուն նորա, գնեա ծառայ մի որ ունիմ՝ ազնուական, զի յորժամ տեսանէ մարդ զնա՝ երդնու և ասէ թէ պատրիկ է։ Իսկ արծաթագործին լուեալ թէ ծառայ առացաւ՝ զարմացաւ, քանզի գիտէր եթէ նա ծառայ էր. զի և արծաթագործն յափրիկեցւոց աշխարհէն էր, բայց զտէր նորա ոչ ճանաչէր։ Եւ ասէ. ած գիտէ 'ի տառապանս անկայ և ոչ ինչ ունիմ։ Ասէ ցնա դարձեալ. փոխառութեա և գնեա զնա, զի գիտէ ած՝ կարի բարիոտն է և լաւաբարոյ, և օրհնէ զքեզ ած վասն նորա։ Իսկ նորա հաւանեալ գնեաց զնա 'ի նմանէ հնոտիս զգեցեալ և անպաճոյճ՝ ընդ յիսուն դահեկանի։ Եւ թողեալ զնա դայլոյն իւրոյ գնաց 'ի Կոստանդնուպօլիս, տուեալ նմա երդմամբ զբանս այս եթէ ոչ ճանաչեսցէ զխորհուրդն ումեք, և ոչ հատու լինել 'ի գնոյն նորա դանկի միոյ, այլ 'ի նոյն զայն աղքատաց տալ։

Եւ էր տեսանել զնա երբեմն ջերմ առնելով տեառն իւրում զատ 'ի պէտս նորա և երբեմն լուաց առնելով և երբեմն սաւանսն կրէր, որ ոչ երբէք յայնպիսի ինչ

անկեալ էր և նուաղեալ յոյժ։ Եւ իբրև անկան երկոքեան զկնի իրեարց. ասէ ցնա դայլոյն. Եկ դու, տէր Զուղէ, քանզի այս էր անուն նորա, գնեա ծառայ մի զոր ունիմ, և է ազնուական յոյժ, և այնպէս որ է՝ որ իբրև տեսանէ մարդ զնա՝ երդնու և ասէ թէ պատրիկ է։ Իսկ արծաթագործն իբրև լուաւ թէ ծառայ առացեալ է՝ զարմացաւ, քանզի գիտէր զնա որ ծառայ էր. և լուեալ գիտէր զտէրն Պետրոս, բայց ոչ էր տեսեալ զնա, քանզի 'ի տղայութեն հասակին ելեալ էր յափրիկեցւոց աշխարհէն, վասն զի և նա յայնմ աշխարհէն էր։ Եւ ասէ. գիտէ ած զի 'ի տառապանս անկեալ կամ և ոչ ունիմ ինչ։ Ասէ ցնա դայլոյն դարձեալ. փոխառութեա և գնեա զնա, զի ինձ ոչ է արժան պահել զնա, զի և ես ծառայ եմ. այլ դու բարեկամ իմ ես, վասն այն քեզ կամաւորիմ. զի գիտէ ած՝ կարի բարիոտն է և լաւաբարոյ, և օրհնէ զքեզ ած վասն նորա։ Իսկ նորա հաւանեալ գնեաց զնա ընդ յիսուն դահեկանի։ Եւ զգեցեալ էր հնոտիս տէրն Պետրոս որպէս զծառայ անպաճոյճ։ Եւ թողեալ զնա դայլոյն իւր գնաց 'ի Կոստանդնուպօլիս։ Եւ տուեալ էր նմա Պետրոս երդմամբ զբանս այս զի ոչ ճանաչեսցէ զխորհուրդն նորա ումեք և հատու լինիցի 'ի գնոյն անտի և ոչ դանկ մի, այլ և զնոյն զայն աղքատաց տացէ։ Եւ դայլոյն յորժամ յիշէր զտէրն իւր, լայր դառնապէս և ասէր. ով թէ ո՞ւր իցէ նա որ զայնպիսի մեծութիւն իւր եթող աւերեալ։ Եւ ոչ յայտնեաց ումեք ամենևին զխորհուրդն նորա. և սուգ մեծ էր տան նորա և ընտանեաց և սիրելեաց, զի ոչ գիտէին թէ զինչ եղև։

Իսկ տէրն Պետրոս սպասաւորէր տեառն իւրում մտերմապէս՝ երբեմն ջերմ առնելով նմա և երբեմն լուաց առնելով և երբեմն զսաւանսն կրէր և զայլ ևս սպասաւորութիւնս, որ ոչ երբէք յայնպիսի ինչ

տնօրինեալ էր. և պաշարէր զանձն իւր բազում պահօք։ Իբրև ետես այր նորա զինքն և զտուն իւր օրհնեալ առաւել օրհնութեամբ, պատկառէր յայնչափ առաքինութեան նորա և 'ի խոնարհութեան։ Այլ էր բազում անգամ տեսանել զնա արհամարհեալ և կափեալ 'ի ծառայակցաց իւրոց, քանզի ունէին զնա որպէս անմիտ մինչև անուն կոչել նմա բախեալ. և յորժամ տրտմեցուցանէին զնա, երթեալ 'ի քուն լինէր։ Այլ երևէր նմա որ երևեցաւ յԱփրիկէ զգեցեալ զհանդերձ նորա, և ունէր զխաչն զահեկանն 'ի ձեռին իւրում և ասէր. մի տրտմիր, եղբայր Պետրէ, քանզի ես առի զգինս արեան քո, այլ համբերեա մինչև գայցես 'ի ծանօթութիւն։ Իսկ 'ի միում աւուր ասէ ցնա տէրն նորա. կամիմ, տառապեալ Պետրէ, ազատել զքեզ և ունել այսուհետև որպէս զեղբայր իմ։ Իսկ նա ոչ յօժարեցաւ։

Այլ յետ այսորիկ եկին ոմանք յաշխարհէ նորա արծաթագործք աղօթել 'ի սուրբ քաղաքն, և կոչեաց զնոսա տէրն Պետրոսի 'ի ճաշ. և 'ի սպասաւորելն նոցա ծանեաւ զնոսա տէրն Պետրոս։ Այլ նոքա դարձեալ 'ի բաղմելն իւրեանց սկսան նշանօք իմն որ 'ի նմա տեսանէին՝ 'ի ծանօթս ածել, և սկսան քրթմնջել ընդ միմեանս և ասել. տէր տծ, զինչ նման է մարդս այս տես-

տնօրինեալ էր. և պաշարէր զանձն իւր բազում պահօք։ Եւ իբրև ետես տէրն նորա զինքն և զտուն իւր օրհնեալ առաւել օրհնութեամբ, պատկառէր յայնչափ առաքինութենէ նորա և 'ի խոնարհութենէ։ Եւ էր տեսանել զնա բազում անգամ արհամարհեալ և կափեալ 'ի ծառայակցաց իւրոց, քանզի ունէին զնա որպէս անմիտ վասն բազում լռութեան և հանդարտութեան նորա, մինչև անուն կոչել նմա բախեալ. և յորժամ յոյժ տրտմեցուցանէին զնա, նա երթեալ 'ի քուն լինէր։ Եւ երևէր նմա այն՝ որ երևեցաւ նմա յԱփրիկէ զգեցեալ զհանդերձ նորա, և ունէր զխաչն զահեկանն 'ի ձեռին իւրում և ասէր. մի տրտմիր, եղբայր Պետրէ, քանզի ես առի զգինս արեան քո, այլ համբերեա մինչև գայցես 'ի ծանօթութիւն։ Եւ զարթուցեալ մխիթարէր հոգւով և ուրախ էր։ Իսկ 'ի միում աւուր ասէ ցնա տէրն նորա. կամիմ, տառապեալ Պետրէ, ազատել զքեզ 'ի ծառայից, և ունել այսուհետև որպէս զեղբայր իմ։ Այլ Պետրոս ոչ յօժարեցաւ բանին զոր տէրն իւր խոստացաւ նմա։

Եւ յետ այսորիկ եկին ոմանք յաշխարհէ նոցա արծաթագործք աղօթել 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և կոչեաց զնոսա 'ի ճաշ Զուղէ ոսկեգործն տէրն Պետրոսի. և 'ի սպասաւորելն նոցա ծանեաւ զնոսա տէրն Պետրոս։ Իսկ նոքա իբրև տեսին զտէրն Պետրոս 'ի բաղմելն իւրեանց սկսան նշանօք իմն որ 'ի նմա տեսանէին 'ի ծանօթս ածել, և սկսան քրթմնջել ընդ միմեանս և ասել. տէր աստուած,

ուրն Պետրոսի մաքսաւորին. իսկ նա որքան կարէր զե-րեսս իւր թաքուցանէր։ Դարձեալ մինչդեռ ճաշէին, սկսան ասել ցտէրն Պետրոսի. որպէս կարծեմք, տէր Զուղէ, մեծ իրք հասեալ են 'ի քեզ. և եթէ ոչ խաբիմք, ափսոսական զամն ունիս 'ի տարապարտութիւն քո. քանզի ոչ գիտէին զհաստատան, զի էին երեւք նորա 'ի խոնհակերութենէ անտի և 'ի պահոցն պղպջեալ։ Եւ 'ի բազում ժամս հայեցեալ ընդ նա, ասէ ոմն 'ի նոցանէ. աստուծով տէր Պետրոս է, այլ յարուցեալ բուռն հա-րից 'ի նա. քանզի լուեալ թագաւորին յոյժ տրտմեցաւ ընդ կորուստ նորա։ Իսկ տէրն Պետրոս արտաքուստ լուեալ նոցա զխօսս միմեանց՝ ոչ եմուտ 'ի ներքս, այլ 'ի բաց եդեալ յիւրմէ զսկուտեղն ընթացաւ 'ի դուռն։ Եւ ունէր տէրն նորա դռնապան մի խուլ և համր 'ի ծնէ, բայց միայն ակնարկութեամբ առնէին ընդ՝ փակեա և փակէր, և դարձեալ բաց և բանայր։ Իսկ ծառայն այ Պետրոսի ձեղեալ յելանելն՝ ասէ ցխուլն և ցհամրն. քեզ ասեմ յանուն Յսի Քսի։ Իսկ նա 'ի նոյն լուաւ և ասէ՝ ահաւասիկ. Եւ նա ասէ՝ բաց։ Եւ ասէ համրն՝ ես, տէր. և յարուցեալ եբաց նմա. և նա ելեալ գնաց։ Եւ նորա գնացեալ խնդութեամբ ել 'ի վեր որ երբեմն խուլ և համրն էր, աղաղակեաց առաջի ամենեցուն և ասէ ցտէր իւր՝ տէր իմ։ Իսկ ամենայն ընտանեաց հիացեալ

Թէ զինչ նման է մարդս այս ուռան Պետրոսի մաքսաւորին։ Այլ նա որքան կարէր զերեսս իւր թաքուցանէր։ Իսկ նոքա դարձեալ մինչ դեռ ճաշէին, սկսան ասել ցտէրն Պետրոսի. որպէս կարծեմք, տէր Զուղէ, մեծ իրք հասեալ են 'ի քեզ. և եթէ ոչ խաբիմք, ափսոսական զամն ունիս 'ի տարապարտութիւն քո. և ոչ գիտէին զհաստատան. քանզի էին երեւք նորա 'ի խոնհակերնոցէն անտի և 'ի պահոցն պղպջ-լեալ և թարշամեալ. վասն այն 'ի բազում ժամս հայեցեալ 'ի նա, մի ոմն 'ի նոցանէ ասէ՝ աստուծով տէրն Պետրոս է նա, այլ յարուցեալ բուռն հարից 'ի նա. քանզի և թագաւորն լուեալ յոյժ տրտմեցաւ ընդ կորուստ նորա։ Իսկ տէրն Պետրոս յարտաքուստ լուեալ զխօսս նոցա ընդ միմեանց՝ ոչ եմուտ 'ի ներքս, այլ 'ի բաց եդեալ յիւրմէ զսկուտեղն՝ ընթացաւ 'ի դուռն։ Եւ ունէր տէրն նորա դռնապան մի խուլ և համր 'ի ծնէ, բայց միայն ակնարկութեամբ առնէին ընդ՝ փակեա և փակէր, և դարձեալ բաց և բանայր։ Իսկ ծառայն այ Պետրոսի ձե-ղեալ յելանելն՝ ասէ ցխուլն և համրն. քեզ ասեմ յանուն Յսի Քսի։ Իսկ նա 'ի նոյն ժամայն լուաւ և խօսեցաւ և ասէ. ահաւասիկ եմ, տէր։ Եւ նա ասէ. բաց զդուռն։ Եւ խուլն ասէ. հրամայեա տէր. և յա-րուցեալ եբաց նմա, և տէրն Պետրոս ելեալ գնաց։ Իսկ դռնապանն գնաց խնդութեամբ, ել 'ի վեր առ նոսա՝ որ երբեմն խուլ և համրն էր, ա-ղաղակեաց առաջի ամենեցուն և ասէ ցտէր իւր. տէր իմ, այն մարդն որ 'ի խոնհակերնոցէն կայր՝ ել ընթանալով 'ի դրանէ. առա մի դուցէ

ընդ խօսս նորա, նա դարձեալ ասէ. այն մարդն որ խո-
հակերն էր՝ եւ ընթանալով, բայց տես մի գուցէ փա-
խիցէ, քանզի մեծ ծառայ է ՏՆ. քանզի յորժամ էջ
առ իս ասէ ցիս՝ քեզ ասեմ, և 'ի նոյն տեսի բոց եղեալ
'ի բերանոյ նորա և մերձեալ յականջս իմ և 'ի բերան
իմ, և նոյնժամայն լսեցի և խօսեցայ: Եւ յարուցեալ
ամենեցուն ընթացման զհետ նորա և ոչ տեսին զնա:
Յայնժամ սկսան աղաչել և զղջանալ ընտանիք տանն
և ինքն տէրն նորա եթէ յորժամ անարգութեն ունէր
զնա, և մանաւանդ որք կարդային նմա բախած և յիմար:

փախիցէ. Իսկ ամենայն ընտանիքն հիացեալ զարմանային ընդ խօսսն
նորա: Եւ նա դարձեալ ասէր առ ամենեսեան. մեծ ծառայ է նա ՏՆ.
քանզի յորժամ էջ առ իս, ասէ ցիս՝ քեզ ասեմ, և 'ի նոյն տեսի բոց
եղեալ 'ի բերանոյ նորա և մերձեցաւ յականջս իմ և 'ի բերան իմ, և
նոյնժամայն լսեցի և խօսեցայ: Եւ իբրև լուան զարհուրեցան և յար-
տասուս եղեն, և յարուցեալ ընթացան զհետ նորա և ոչ տեսին զնա
և ոչ գտին, և ոչ իմացան ամենեւին ուրեք թէ իցէ: Յայնժամ սկսան
ամենեքեան աղաչել և զղջանալ յոյժ, և ինքն տէրն նորա անմխի-
թար լայր յորժամ յիշէր եթէ յորժամ անարգութեն ունէր զնա, և
մանաւանդ որք բախած և յիմար անուանէին զնա:

Իսկ արծաթագործք այնոքիկ որք յաշխարհէ նորա էին, թէպէտ
տրտմութեն էր նոցա զի ոչ կարացին հաւատալ ճանաչել զնա, այլ
այնու մխիթարէին զի տեսին զնա և խօսեցան ընդ նմա, և զի յայտնե-
ցաւ և գիտացին թէ որպիսի ինչ եղեալ էր նմա, զի առ ՏԾ գնացեալ
էր և մի 'ի սրբոց նորա եղեալ էր: Եւ յայտնեցաւ աշխարհի և թէ որ-
պէս յառաջագոյն անողորմ և անգութ լեալ՝ յետոյ ողորմած անչափ
և աղքատասէր եղեալ, և զանձն եւս աղքատացոյց մինչ 'ի ծառայու-
թիւն եւս կարգեալ զինքն և յաշխատանս վասն սիրոյն ՔՍի, որ վասն
մեր աղքատացաւ և զաղքատս երանեաց:

Եւ տէրն Պետրոս յորժամ ել 'ի գրանէ տեառն իւրոյ Զուղէ, ա-
ռաջնորդեաց նմա հրեշտակ տեառն. քանզի հանդիպեցան նմա երեք
միայնակեացք եգիպտացիք որք եկեալ էին աղօթել 'ի սուրբ տեղիսն,
և անդէն դարձեալ երթային 'ի խուցս իւրեանց. և էր մինն 'ի նոցա-
նէ աշակերտ սրբոյն Մակարայ. և Պետրոս գնաց ընդ նոսա մինչև յԵ-
գիպտոս առ հայրն, և պատմեաց աշակերտն մեծին Մակարայ հօրն
իւր և այլոցն եղբարց զժուժկալութիւն առն, որ 'ի ճանապարհին
զերկուս աւուրս պահէր և սակաւ ճաշակէր: Եւ կոչեաց Մակար զՊետ-
րոս առ ինքն և երդմնեցոյց զնա 'ի տէր պատմել նմա զամենայն վարս
իւր. և նա պատկառեալ և հարկեալ 'ի հօրէն Մակարայ, ստուգիւ
ասաց նմա զամենայն: Եւ եկաց յանապատին առ աշակերտս սրբոյն
Մակարայ կրօնաւորեալ զամս հինգ յոյժ ճգնութբ, մինչ զի 'ի հո-
վանւոյն անգամ սարսէին դեւք, և տառապեալք բժշկեալ լինէին 'ի նը-
մանէ: Եւ յետ հինգ ամին եկն յանապատէն յայրն սրբոյն Մակարայ
և հիւանդացաւ անդ առ նմա երեք օր և այնպէս փոխեցաւ առ փե-
սայն իւր ՔՍ, և եղբարքն եդին զնա 'ի գերեզմանի և գրեցին ընդ
վարս առաջնոցն և զնորայն: Այսպէս աղքատացաւ վասն ՔՍի երա-
նելին Պետրոս և ստացաւ զանսուտ մեծութեն և զերկնից արքայութիւն
ընդ ամենայն սուրբս 'ի ՔՍ:

## ՎԱՐՔ

# ԱՂԱԽՆՈՅՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԵՓՐՈՍԻՆԵԱՅ

Եղեւ այր ոմն մեծատուն յԱղեքսանդրիա քաղաքին, որում անուն էր Պափնուտիոս, յոյժ երկիւղած յա̃յ և խնամատար պատուիրանաց նորա։ Սա առեալ կին զպարկեշտ ոմն և արժանի իւրում լաւ բարուցն՝ յազնուական ազգէ և նորա գոլով. և էր ամուլ և ոչ ծնանէր։ Այլ ի բազում տրտմութեան էր այր նորա վասն այնորիկ, զի ոչ ունէր զոք որում թողցէ զստացուածս իւր, որպէս զի յետ վախճանի նորա ինչք նորա բարւոք կարգաւորեսցին կարօտելոց։ Իսկ կինն նորա տեսանելով զայր իւր յայնպիսի տրտմութեան, ոչ դադարէր հպատակելով ի սուրբ եկեղեցիս, և աղօթիւք և պահօք զաստուած աղաչելով պարգևել նոսա մանուկ, բազում գանձս ի յաղքատս և ի սուրբ տեղիս ծախեալ։ Այնպէս և այր նորա շրջէր ի վանորայս յուղելով թէ արդեօք գտանիցէ մարդ արժանի ա̃յ որ աղօթիւք կարասցէ մաղթել և կատարել զըղձումն նոցա։ Այլ եկն ի վանսն միաբանակեցաց յորում էր վանականն մեծ առաջի ա̃յ, և մտեալ ի ներքս մատոյց սակաւ գանձ. և նստեալ ի խօսս ոգեշահս ընդ նոցա, եղև ըստ սովորութեան ծանօթութիւն ընդ վանականսն և ընդ այլ եղբարցն. և յետ ժամանակի ձաւեաց աբբայուն զիւրսն։ Այլ յանձին կալեալ զաղաչանս աննն աղաչեաց զա̃ծ տալ նոցա զպտուղ որովայնի։ Այլ լուեալ ա̃ծ աղաչանաց նոցա, շնորհեաց նոցա դուստր մի։ Այլ տեսեալ Պափնուտիոս զվարս աբբայուն ոչ կայր ի բացեայ ի վանացն յայնմ, ուստի և զամուսին իւր բազում անգամ ածէր անդր օրհնիլ յաբբայէն և յեղբարցն։ Այլ զարգացեալ մանկան ի սմանէ անտի՝ եղեալ իբրև վեց ամաց, մկրտեաց զնա և անուանեաց զնա Եփրոսինէ. և խնդացին ի վերայ ծնողք նորա, զի էր կայտառ առաջի ա̃յ և գեղեցիկ երեսօք և բարի տեսլեամբ յոյժ։

Իբրև եղև ամաց երկոտասանից, մայր նորա վախճանեցաւ. իսկ հայր նորա մնացեալ խրատեաց զնա զբոց

ընթերցմունք և այլ իմաստութիւնք, և պատահեաց յա-
ջողակ բնութիւն, որպէս պտուղ աղօթից գոլով: Եւ այն-
քան եղև ուսումնասէր, որպէս զի զարմանալ հօր նորա ընդ
այնքան ուսումնասիրութիւն. և 'ի համբաւոյ նորա լցեալ
զքաղաքն յաղագս ուսումնասիրութեան և առաքինութեան,
այլ և մարմնոյ նկարագրութեան և տարազոյն դիրութեան և
վայելչական գեղեցկութեան զբազումս յազնուականաց
և 'ի մեծամեծաց յորդորումն ձգեալ առնուլ զնա որդւոց
իւրեանց 'ի կնութիւն, և բազմաց նեղելով զհայր նորա
վասն նորա և յառաջեալ զընկերն պայքարելով ասէր՝
կամք ա̃յ եղիցին: Այս յետոյ մի ոմն 'ի մեծաց առա-
ւելեալ քան զամենեսեան պատուով և մեծութ̃բ՝ կո-
չեաց զհայր նորա հաւանեցոյց տալ զդուստր իւր որդւոյ
նորա 'ի կնութիւն, և յանձն կալեալ արար ըստ սովորու-
թեանն խօսս հաստատութեան:

Եւ յետ սակաւ մի ժամանակի առեալ զնա հօր իւրոյ՝
գոլով ութևտասան նորաբեկան գնաց 'ի վանս՝ բազում ինչս
տարեալ 'ի մխիթարութիւն եղբարցն. և խօսեալ ընդ վա-
նականին ծանոյց նմա՝ թէ զպտուղ աղօթից քոց մա-
տուցի առաջի քո, որպէս զի աղօթեսցես 'ի վերայ նորա,
զի կամիմք զնա տալ յամուսնութիւն: Եւ հրամայեաց
վանականին նոցա իջանել 'ի քսենոդոհինի վանացն և խօ-
սել ընդ նմա և օրհնել, և խրատ տուեալ յաղագս պար-
կեշտութեան և վշտակցութեան՝ յոյժ օգտակար եղև: Եւ
արարեալ նոցա իբրև երիս աւուրս 'ի վանսն, ունկնդիր
լինէր սաղմոսերգութեան զօր ըստ ժամու ժամու ասէին:
Եւ տեսեալ զխորաքանչիւր ձեպումն և տրամադրութիւն
վայելուչ ըստ կրօնաւորութեան՝ զարմանայր ընդ վարս
նոցա ասելով. Երանելի են արքս այսոքիկ՝ ոյք և յաշ-
խարհիս այսորիկ որպէս հրեշտակք են և յետ մահուանն
զկեանսն յաւիտենականս ժառանգեն: Եւ սկսաւ սիրտ
նորա 'ի զղջումն գալ և 'ի նախանձ երկիւղի ա̃յ: Իսկ
յետ երից աւուրց ասէ Պափնուտիոս ցվանականն. հրա-
մայեա, հայր հոգևոր, առ աղախինն քո զի երկիր պագցէ
քեզ, և աղօթեսցես նմա զի երթիցուք 'ի քաղաքն:
Եւ իբրև գնաց առ նա, ընկեց զինքն յոտս ծերոյն ա-
սելով. աղօթս արա ինձ աղաչեմ զքեզ, որ զի ա̃ծ ապ-
րեցուսցէ զանձն իմ: Եւ տարածեալ զձեռս իւր աբբան
ասէ. ա̃ծ, որ ճանաչես զամենայն յառաջ քան զլինել

նոցա, դու ինքն և զաղախինս քո զայս հոգասցիս, որպէս զի հանձն եղեալ քեզ արժանի եղիցի գտանել բաժին և ժառանգութի ընդ այնոսիկ որոց հանձնեցեալ են քեզ: Իսկ հայր նորա յորժամ գտանէր միայնակեաց 'ի քաղաքին, ածէր 'ի տուն և տանէր ընդունելութի և աղաչէր աղօթս առնել վասն իւր և վասն դստերն իւրոյ:

Այլ դէպ եղև եթէ յիշատակ լինէր այնմ որ զվանսն շինեաց, և առաքեաց վանականն եղբայր մի հրաւիրել զՊափնուտիոս յիշատակ աւուրն: Այլ երթեալ 'ի տունն խնամոց արար. ընտանեացն ասացեալ եթէ յաղօթս էանց և չիք այստ: Յուսեալ Եփրոսինէ կոչեաց զեղբայրն և սկսաւ հարցանել զնա՝ քանի՞ եղբարք են 'ի վանսն: Այլ նա ասէ. երեք հարիւր և յիսուն և երկու: Այլ եթէ գայցէ ոք որ կամիցի նստել՝ ընդունի՞ աբբան: Ասէ միայնակեացն՝ այո, և որ ոք կամի գալ՝ ընդունի: Այլ նա ասէ. իսկ ամենեքեան 'ի մի՞ եկեղեցի սաղմոսեն և հաւասա՞ր պահեն: Այլ ասէ միայնակեացն. զսաղմոսսն 'ի միասին սաղմոսեմք, իսկ զպահսն իւրաքանչիւր ոք որպէս կամի և հանդուրժէ: Իսկ նորա զամէն որ ինչ 'ի վանսն կարգք են հետաքրքրեալ, ասէ ցեղբայրն. կամէի յայժ խնկել անձին և մտանել յայդ վարս, բայց երկնչիմ 'ի հօրէ իմմէ. զի վասն ընչոց իւրոց աշխարհիս կամի զիս առն տալ: Ասէ ցնա միայնակեացն. մի՛ տապականեսցէ այր զմարմին քո և մի՛ մատներ զայդպիսի գեղեցկութիւն յախտս անարգութե, այլ բոլորովիմբ զանձն քո հարսնացո Քրի, որ կարող է շնորհել քեզ փոխանակ անցաւորիս այսորիկ զանանց արքայութիւն իւր. և լաւելեայն գերծեալ զգէս քո ել 'ի տանէս և երթ 'ի վանս և ապրիս: Իսկ նորա լուեալ զայս և ախորժեալ մտադիւրութե ընկալաւ և ասէ. ո՞վ կտրէ զիս. և ոչ կամէի յաշխարհականէ կտրել, զի զխորհուրդս ոչ պահեն: Ասէ ցնա միայնակեացն. ահաւասիկ զհայրն քո տանելոց եմ 'ի վանսն, և յամելոց է անդ երիս կամ չորս աւուրս. ած դու միայնակեաց մի, որպէս կամիս՝ առնէ: Այլ մինչդեռ նոքա զայս խօսէին, եկն հայրն նորա. և տեսեալ զմիայնակեացն ծանուցեալ եհարց զնա եթէ ընդէ՞ր աշխատեցար: Այլ ասէ միայնակեացն եթէ յիշատակ հօր վանացն է, և ասաց վանականն որ զի գաս և վայելես յաղօթից նո-

րաւ։ Իսկ նորա խնդագին եղեալ, և բազում պէտս ա-ռատապէս առեալ եմուտ 'ի նաւակ, ուր և էր 'ի վանսն։
Եւ եղեւ 'ի լինելն նորա անդ՝ արձակեաց Եւփրոսինէ զհաւատարիմ մի 'ի ծառայից իւրոց յեկեղեցին որ կոչի Թէոդոսիոս և ասէ. զոր ոք և գտցես անդ միայնա-կեաց, ած առ իս։ Եւ նախախնամութեամբ ա̃յ ահա ծեր ոմն մեծ 'ի Սկիւթէ եկեալ վաճառէր զձեռագործ իւր. իբրև ետես զծերն մենաւորն, և առ զնա 'ի տուն։ Եւ տեսեալ Եւփրոսինեայ ասէ. աղօթս արա ինձ, հայր։ Եւ նորա արարեալ աղօթս՝ նստան։ Եւ ասէ ցծերն. ես, աբբայ, հայր ունիմ ծառայ ա̃յ և 'ի մեծութեան յոյժ գո-լով. և ունէր կին և 'ի նմանէ ծնաւ զիս և կամի վասն ընչից իւրոց տալ զիս յաշխարհ անիրաւութեան, և ոչ կա-միմ ապականիլ ապականութեամբ աշխարհի, և դարձեալ տրտմեցուցանել հօրն իմ երկնչիմ, և զինչ արարից ոչ գի-տեմ, և զամենայն գիշերս առանց քնոյ անցուցի վասն այսորիկ աղաչելով զա̃ծ ծանուցանել ինձ զօգտակարն տառապեալ անձինս իմոյ. իբրև այգ եղեւ, կամ եղեւ ինձ արձակել յեկեղեցին և ածել մի 'ի հարանցդ և 'ի նմանէ լսել բան. արդ աղաչեմ զքեզ որպէս յա̃յ տուա-քեալ ուսո ինձ զօգտակարսն։ Ասէ ցնա ծերն. որ ասէն եթէ որ ոչ ատեայ զհայր իւր և զմայր և զեղբարս և զանձն իւր՝ ոչ կարէ իմ աշակերտ լինել, ես զինչ ու-նիմ ասել քեզ աւելի քան զայդ. եթէ գիտես որ կա-րող ես տանել մարմնաւոր փորձութեանց, թող զամե-նայն և փախիր. քանզի նախնեաց ընչից քոց բազում ժառանգք գտանին, ահաւասիկ աղքատանոցք, եկեղե-ցիք, ծերանոցք, վանորեայք, այրիք, որբք, օտարք, գե-րեալք. ուր հաճոյ իցէ հօրն քո, անդ թողցէ, դու միայն զանձն քո մի կորուսաներ։ Ասէ ցնա Եւփրոսինէ. յու-սամ յա̃ծ և յաղօթս քո՝ եթէ ջանամ ունիմ ապրեցու-ցանել զանձն իմ։ Ասէ ցնա ծերն. այսպիսի յօժարու-թիւնք յապաղելով մի լիցին, եթէ ոչ գիտէ ժամանակ 'ի զղջումն ածել։ Եւ նա ասէ ցծերն. և ես վասն այ-սորիկ աշխատեցուցի զքեզ, զի կատարես զցանկութիւն անձին իմոյ։ Եւ յարուցեալ ծերոյն և արարեալ աղօթս կտրեաց զնա և ետ նմա ագել կրօնաւորութեան և աղօ-թեալ 'ի վերայ ասէ. ա̃ծ որ ապրեցոյց զա̃մ սուրբս իւր, նա պահեսցէ զքեզ 'ի չարէն։ Եւ զայս ասացեալ գնաց։

ո՞ր գայլ զիմ որոջն կեղեքեաց, ո՞ր անեղն զարեգականա-կայ զայն թաքոյց զգեղեցկութի՛, ո՞ր խորութիւն զե-րեալ ունի զարքունականն զայն նկարագիր. Նա էր աղ-ջիկն իմոյ հաստատութի, նա էր ծերութե՛ իմոյ ցուպ, նա էր վշտի իմոյ լուծումն, նա էր վաստակոց իմոց հան-գիստ, նա էր ցաւոց իմոց թեթեւումն. Հող մի ծածկեա-ցէ 'ի վերայ արեւան մարմնոյ իմոյ մինչեւ ծանեայց զինչ եղեւ Եփրոսինեայ որ զուրախութիւն իմ տրտմագործ ա-նիցէ։ Արդ եւ զայսպիսի բանս լսէին որ հանդիպեալն էին սիրելիք՝ ողբային ձայնիւ. որպէս զի ամենայն քաղաքն զգեա թէ արտասուէր 'ի յանկարծակի կորստեան Ե-փրոսինեայ։

Իսկ հայրն նորա քանզի ոչ կարէր հանդուրժել 'ի մոր-մոքելոյ սրտին, գնաց 'ի վանսն յայն եւ անկեալ յոտս վանականին ասէ. աղաչեմ զքեզ մի լռել յաղաչելոյ զԱծ, որպէս զի գտցին վաստակք աղօթից. քանզի ան-հետ եղեւ աղախնին քո դուստրն իմ։ Արդ եւ լուաւ վա-նականն տրտմեցաւ յոյժ, եւ հրամայեաց հարկանել ժամ որ զի ժողովեսցին եղբարքն։ Եւ իբրեւ եկին, ասէ ցնոսա. արարէք սէր, եղբարք, եւ վաստակեցէք շաբաթ մի եւ պահեցէք եւ աղաչեցէք զԱծ զի յայտնեսցէ մեզ ուր է դուստրն Պափնուտի։ Եւ պահեալ զշաբաթն ամենե-ցուն՝ ոչ յայտնեաց Ած ումեք 'ի նոցանէ, քանզի նորա աղօթքն յաղթէր ամենեցունցն, քանզի աղաչէր զԱծ չյայտնել 'ի կենդանութեանն իւրում։ Իսկ ամենեցուն զարմացեալ ընդ գործն, սկսաւ աբբայն մխիթարել զնա եւ ասել. մի լքանիր եւ տրտմիր, այլ գոհացիր զամենայնէ, եւ յորժամ կամի գիտենաս յաղագս նորա. եւ զայս գի-տա եթէ ոչ մատնեաց զնոքն 'ի չար ինչ, այլ 'ի բարի, եւ վասն այնորիկ ոչ յայտնեցաւ ումեք 'ի մէնջ. քանզի եթէ 'ի չար ինչ էր, ոչ անտես առնէր Ած զվաստակս քո եւ զջանս զոր ցուցեր վասն անուան նորա յամենայն սուրբս՝ առաւել եւս 'ի մեզ, այլ բայց եթէ յայտնէր գործն։ Եւ զայսպիսի լուեալ Պափնուտիոս եւ սակաւ ինչ հաւանեալ գնաց 'ի քաղաքն գոհանալով զԱծ եւ խնա-մելով բարւոք վարուց։

Եւ յետ սակաւ ժամանակի դարձեալ գնայր 'ի վանսն եւ ողջոյն տայր եղբարցն, եւ դարձեալ գնայր 'ի քաղաքն։ Իսկ 'ի միում աւուր եկեալ, ասէ ցնա վանականն. կա-

րև նշան երրորդ օրն և գիտաց եթէ երթալոց է աշխա-
րհէս առ տէր, կոչեաց առ ինքն զհայրն իւր և ասէ ցնա.
որովհետև ած զոր առ իս տնօրինեաց որպէս կամեցաւ և
կատարեաց զպանդխտութի իմ, կամիմ որ անտրտում լինիցիս
յայսմ օրէ յաղագս դստերն քո Եփրոսինէ. քանզի ես
եմ տառապեալս, և ահաւասիկ տեսեր և հաւատացեր
և մի ումեք տալ պատմել զմանրամին իմ բայց 'ի քէն: Եւ
քանզի յանձին կալայ վանականին թէ ունիմ ինչս բա-
զումս, և եթէ չինեցայց՝ տացից 'ի վանս, առ զայն 'ի
վանս. քանզի գիտեմ եթէ ըստ այ վարի տեղիս, և ա-
ղօթս արա ինձ: Եւ զայս ասացեալ աւանդեաց զհոգին
իւր 'ի ձեռս այ: Իբրև լուաւ զայսպիսիկ Պափնուտիոս 'ի
հիացմանէ անտի լքեալ անկաւ 'ի վայր որպէս մեռեալ:
Եւ ընթացեալ 'ի ներքս Ագապիոս և արկեալ ջուր զե-
րեսօքն նորա կանգնեաց զնա և ասէ. զի՞ է քեզ, տէր:
Եւ նա ասէ. Թողէք զիս այսր մեռանել զի հրաշալիս
տեսի այսօր: Եւ յարուցեալ անկաւ զսուրբ երեսօք նո-
րա, արտասուօք ողողելով զաչէր, վայ ինձ, որդեակ իմ
քաղցրիկ, զիա՞րդ ոչ յառաջ ժամանակաւ ծանուցեր ինձ
զայդ՝ որ և ես այժմ մահակից լեալ էի բարուցդ քոց.
բարէ զիա՞րդ վրիպ եղեր 'ի չարութէ թշնամւոյն, զիա՞րդ
անցեր ընդ իշխանութիւն և ընդ պետութիւնս, որդեակ
իմ, և մտեր 'ի կեանս յաւիտենականս:

Եւ զայսպիսիկ լուեալ Ագապիոսի, և ապշեալ լալով
ընթացաւ առ վանականսն և պատմեաց զգործն: Եւ ե-
կեալ փութանակի վանականքն անկեալ 'ի վերայ ասէր.
հարսն Քրի ճշմարիտ այ մեր և դուստր սրբոց, մի մո-
ռանար զընտանեկիցս քո և մի զկենակիցս զայս փա-
րախ, այլ աղօթեա պարգևել և մեզ խնամութի արժա-
բար վարեալս հանդիպել 'ի կեանսն յաւիտենականս,
և քև վայելել զարքայութիւն յերկնից բարութեանն: Եւ
հրամայեաց ժամ հարկանել որ զի ժողովեսցին եղբար-
քըն ամենայն. Իբրև եկին ամենեքեան և լուան զգործն,
զարմացան և զարհուրմամբ ըմբռնեալ փառաւորէին
զած որ առնէ սքանչելիս. Իսկ մի ոմն յեղբարցն միա-
կանի էր, և մտեալ յողջոյն՝ իբրև ողջունեաց զսուրբ ե-
րեսս նորա, նոյնժամայն բացաւ ակն նորա և ետես. և
տեսեալ ամենեցուն փառաւոր առնէին զած որ առնէ
հրաշալի սքանչելիս և ցուցանէ օրինակ փրկութե սրբոց

կամքն ընթանայր 'ի գթութիւն նորա։ Այլ մեծապէս օգտեալք եղեն զնա 'ի գերեզմանի հարանցն։

Իսկ հայրն նորա զամենայն ինչս իւր ետ յեկեղեցիս և 'ի վանորեայս և յօտարանոցս և յաղքատս. հրաժարեաց և եկն 'ի վանսն և լուեաց 'ի խցի դստերն իւրոյ մեծապէս մխիթարեալ լաստին յորում 'ի կենդանութեան դուստրն իւր դնէր յաստակի։ Այլ կեցեալ նորա 'ի վանսն ամս տասն՝ թողեալ զերկրաւորս փոխեցաւ յերկինս, թաղեցաւ մերձ առ դստերն իւրոյ Եփրոսինեայ։

## ՎԱՐՔ

## ԵՐԱՆԵԼՈՅ ՄԱՐԻԱՄԱՅ ԵԳԻՊՏԱՑԻՈՅՆ

ԿԻՆՍ այս պոռնիկ էր 'ի քաղաքէն Աղեքսանդրիոյ եգիպտացւոց, ոչ 'ի մեծատան կամ յաղնուական ազգէ, և էր յաւուրս քրիստոնէութեան։ Այլ յորժամ եղև երկոտասան ամաց, արհամարհեաց զգութ ծնողացն և ապականեաց զկուսութիւն իւր, ետ զանձն իւր 'ի դառն և 'ի չար ախտս պոռնկութեան։ Այլ նստաւ 'ի պանդոկի և յումեքէ ոչ ինչ առնոյր վասն անյագ ցանկութեան մարմնոյն, զի երթիցեն բազումք առ նա. և այնպէս զեօթն և զտասն ամ թաւալէր յաղբս մեղաց, ապականէր և զայլ երիտասարդս 'ի բորբոքումն չնութեան։ Այլ 'ի միում աւուր տեսանէ ամբոխ բազում որ երթային 'ի ծովն, և տեղեկանայր եթէ ուր կամիցին երթալ. և գիտաց զի երթային յԵրուսաղէմ վասն տօնի սուրբ խաչին, զի երկիր պագցեն պատուական փայտին Քսի։ Այլ ասէ 'ի միտս իւր՝ գնացից և ես. գիտեմ որ յայնչափ ժողովրդեանէն իցեն պոռնիկք՝ որ պէտք է իւրեանց կին։ Այլ առժամայն գնաց 'ի ծովեզրն և եմուտ 'ի նաւ. և փոխանակ վարձու նաւուն զանձն իւր ետ նաւավարացն, և բազում մարդիկ 'ի նաւելոցն ընկեաց 'ի խաղս պոռնկութեան։ Այլ յորժամ նաւեցին յԵրուսաղէմ, ոչ դադարեաց 'ի չար գործոց։

Այլ իբրև եհաս տօն սուրբ խաչին վերացման, որ 'ի սեպտեմբերի չորեքտասան, ընթանային բազմութիւն

ժողովրդեանն ընդ աստուածն յերկրպագութեան ծննդեան խաչին Տեառն․ խառնեցաւ և Մարիամ 'ի ժողովուրդն և երթայր գնաց, զի մնաց յեկեղեցին․ Այլ յորժամ գնացին 'ի դուռն եկեղեցւոյն, ամենեքեան մտանէին, և Մարիամ մնայր արտաքոյ, քանզի ամենայն զօրութիւն սրբոյ խաչին արգելոյր զնա արտաքս․ և բազում անգամ ջանայր մտանել և մերժէր և ընդ այլս՝ և ոչ կարաց, զի ոչ տայր թոյլ մտանել աներևոյթ զօրութիւն սրբոյ խաչին, և գիտաց, որ վասն անսուրբ գործոց իւրոց ոչ արժանաւորեցաւ մտանել․ Ապա արտաքոյ դրանն, և նայեցեալ 'ի վեր տեսանէ 'ի վերայ դրան եկեղեցւոյն զպատկեր ամենասրբուհւոյ Ա̃ծածնին՝ ունելով 'ի գիրկս իւր զմարմնացեալ Ա̃ծն մեր․ Այլ արտասուալից պաղատանօք աղաչէր և ասէր․ Երաշխաւորեա, ամենօրհնեալ սուրբ կոյս Ա̃ծածին, զի մտից յեկեղեցին և այլ ոչ ևս տաց զանձն իմ 'ի չար գործս պղծութեան․ Այլ 'ի բազում ժամս ելաց հեծեծանօք և դառն արտասուօք, և առժամայն եմուտ յեկեղեցին և արժանաւորեցաւ տեսութեան և երկրպագութեան ամենօրհնեալ սուրբ խաչին յորժամ հայրապետն վերացուցանէր 'ի տեսութիւն ամենայն ժողովրդեանն․ Այլ ելեալ առաջի ամենասրբուհւոյ Ա̃ծածնին անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց և երկիր եպագ, և արտասուօք գոհանայր, և որպէս յերաշխաւորէ խնդրէր ցուցանել նմա ճանապարհ փրկութեան, զի մի այլ դարձցի 'ի քաղաքն իւր և 'ի տունն․ Այլ լուաւ ձայն որպէս թէ 'ի պատկերէն՝ որ ասէր․ եթէ անցանիցես ընդ Յորդանան, բարի հանգիստ գտցես․ Այլ երթեալ առ այր մի խնդրեաց 'ի նմանէ փող մի, և առեալ գնեաց երեք փոքր նկանակս հացի․ Գնաց 'ի Յորդանան, և յեկեղեցի սրբոյն Յոհաննու մտեալ աղօթեաց, և հաղորդեցաւ 'ի սուրբ և 'ի փառաւորեալ մարմնոյ և յարենէ որդւոյն Ա̃յ․ Այլ գտեալ նաւ՝ անց ընդ Յորդանան և գնաց յանապատն, և մեծաւ վարուք ճգնեալ ամս քառասուն և եօթն․ և որչափ բաւեաց երեք նկանակ հացին՝ որպէս հաղորդութիւն 'ի նմանէ ճաշակէր, և զխոտ դալար զվայրի ուտէր, և ոչ ձեռօքն հատանէր զխոտն, այլ դնէր զերեսս իւր յերկիր, և ատամամբքն որպէս զանասուն կրծէր և ուտէր․ և զայնչափ ժամանակս այնպէս եկաց յանապատին․

Իսկ յորժամ կատարեցան աւուրք կենաց իւրոց, տընկեաց ա̄ծ 'ի սիրտ Ճգնաւոր կրօնաւորի միում, որոյ անուն էր Զոսիմաս՝ ոչ հերձուածողին, այլ ուղղափառին, 'ի վանորայիցն Յորդանանու, երթալ 'ի ներքսագոյն անապատն տեսանել եթէ իցէ ոք բնակեալ 'ի ծառայից ա̄յ: Իսկ զքանն օր շրջէր յանապատին և աղաչէր զա̄ծ ցուցանել նմա եթէ իցէ ոք բնակեալ անդ. և ամենևին ոչ ետես զազան կամ երէ կամ թռչուն: Իսկ յորժամ զօր հասարակի աղօթսն կայր, տեսանէ 'ի բատորոս վիմի միոջ ստուեր մարդոյ, և կնքեալ նշանաւ խաչին զերեսն և զամենայն անձամբն, զի կարծեաց երևմունս դիւականս տեսանել. և նկատեալ Ճշգրտիւ՝ տեսանէ զերանելի կինն զի երթայր 'ի կողմն հարաւոյ մերկ և թուխ, մարմինն սևացեալ 'ի տօթոյ արեգականն և հեր գլխոյն սպիտակ իբրև զասր. և ընթանայր ծերունին Զոսիմաս զկնի նորա: Իսկ նորա գիտացեալ սկսաւ փախչել և երթեալ եմուտ 'ի ձոր մի: Իսկ յորժամ եկանէր յայնկոյս ձորոյն, եհաս և Զոսիմաս յայսմ կողման 'ի գլուխ ձորոյն. և մեծաւ երդմամբ ձայնէր և աղաչէր, զի կացցէ և տեսցէ զնա: Իսկ նա ասէ. ով Զոսիմա, ընդէ՞ր կամիս տեսանել զմեղաւոր կին. արդ եթէ յօժարես զիս տեսանել, ընկեա զփիլոնդ քո զի ծածկեցից զմարմինս իմ և շահեցայց յաղօթից քոց: Իսկ Զոսիմաս զթիկունս իւր 'ի նա դարձուցեալ ընկեց ըզմաշկեղէնն. և առեալ պատեաց մասն ինչ 'ի մարմնոյն: Իսկ անկան երկոքեան 'ի վերայ երեսաց իւրեանց և երկիր պագին միմեանց. և բանադատէր մինն զմիւսն տանել աղօթս: Ասէ կինն. քեզ արժան է մատուցանել աղօթս, զի քահանայութեան պատիւ ունիս: Իսկ յորժամ մատոյց զաղօթսն, կանգնեցան. և աղաչեաց Զոսիմաս զկինն զի և նա արասցէ աղօթս: Իսկ նորա տարածեալ զձեռս իւր յերկինս՝ յաղօթս եկաց լռելեայն 'ի բազում ժամս: Իսկ տեսանէ զնա Զոսիմաս զի կախեցաւ յօդս կանգուն մի բարձր յերկրէ, և երկեաւ ընդ միտս իւր՝ եթէ հոգի ինչ իցէ և կեղծաւորութե̄ կայ յաղօթս: Իսկ գիտացեալ կնոջն զխորհուրդս մտաց նորա և ասէ. ընդէ՞ր խորհուրդս բերես 'ի միտս քո եթէ երևումն ինչ իցեմ. հաւատա ինձ, հայր, որ կին եմ մեղաւոր՝ որպէս տեսանես զիս. ա̄ծ փրկեսցէ զմեզ 'ի

խաբէութեան սատանայի։ Եւ աղա խնդրէր ծերն թողութիւն։ Եւ նա հարցանէր զերկրէ եթէ որպէս իցեն մարդիկ յաշխարհի քրիստոնէութեամբ, և որպէս թագաւորք վայելեն։ Եւ ծերն ասէ. մայր սուրբ, բարիոք՝ աղօթիւք քո։ Եւ Օսիմաս երդմնեցուցանէր զնա պատմել նմա 'ի տղայութենէ զգործս իւր խոստովանութեամբ. և կինն մի ըստ միոջէ որպէս վերագոյն գրեալ է՝ պատմեաց և ոչ ինչ թագոյց։

Եւ աղաչեաց կինն զՕսիմաս զի 'ի մեծի հինգշաբաթուն աւուրն տարցէ նմա հաղորդութիւն 'ի պատուական յօրինացն. և ասէ՝ ընդ Յորդանան մի անցաներ յայս կոյս, այլ անդ ա՛ռ ինձ առ ափն գետոյն։ Եւ դարձաւ Օսիմաս 'ի վանսն իւր, և 'ի մեծի հինգշաբաթին աւուրն ընդ երեկս եարկ 'ի սկիհ 'ի սուրբ արենէ և մարմնոյ որդւոյն ա̃յ, առեալ և սակաւ թրջեալ ոսպն գնաց յեզր գետոյն և հոգայր եթէ որպէս անցանէ երանելի կինն ընդ Յորդանան։ Եւ առժամայն եհաս կինն, և արարեալ զնշան խաչին 'ի վերայ գետոյն՝ անց ոտիւքն որպէս ընդ ցամաք 'ի վերայ ջրոյն, և գնաց առ Օսիմաս և ասաց նմա պաշտել զերեքսրբեանն, և զՀաւատամք 'ի մի ա̃ծ, և զՀայր մեր որ յերկինս, և համբուրեցին զմիմեանս յողջոյն սրբութեան. և հաղորդեցաւ յանմահական խորհրդոյն, և առեալ հատս յոսպանցն եկեր և ասէ. բաւական է այս 'ի պէտս մարմնոյս։ Եւ աղաչեաց զՕսիմաս զի 'ի միւս այլ ամին անցցէ ընդ Յորդանան և երթիցէ յանապատն 'ի տեղին ուր տեսին զմիմեանս։ Եւ արարեալ զնշան սրբոյ խաչին 'ի վերայ գետոյն՝ որպէս ընդ կամուրջ անց յայնկոյս և դիմեաց յանապատն։ Եւ Օսիմա ուրախութեամբ լցեալ դարձաւ 'ի վանսն, և վասն ոչ հարցանելոյ զանուն պատուական կնոջն՝ յոյժ տրտմէր։

Եւ 'ի կատարել տարւոյն անց Օսիմա նաւով ընդ գետն, և գնաց քսան աւուրս 'ի տեղին և եգիտ մեռեալ զերանելի կինն, և զմարմինն ըստ կարգի քրիստոնէից յարեւելից կողմն. և մերձ 'ի գլուխն եգիտ գիր յորում գրեալ էր. ամփոփեա Օսիմէ, թաղեա զտառապեալ Մարիամայ մարմինս, տուր հողոյ զհողս և վասն տեառն ինձ աղօթս արա, ես ննջեցի յապրիլի 'ի մին յօր չարչարանաց Քրի ա̃յ մերոյ։ Եւ գիտաց սուրբ ծերունին

Զոսիմաս եթէ զգիշերն զայն յորում հաղորդեցաւ 'ի սուրբ խորհրդոյն, գնաց 'ի տեղին երանելւոյ կնոջն և հանգեաւ, զոր Զոսիմաս 'ի քսան օրն գնաց։ Եւ վասն քաղցի յոյժ տրտմէր թէ որպէս փորեսցէ զերկիր, և դառնալ 'ի քսան օր 'ի վանսն անհնարին թուէր. և 'ի տարակուսի լեալ թէ զինչ արասցէ, և տեսանէ մերձ Մարիամայ առիւծ մի, և գիտաց եթէ յԱյ առաքեցաւ՝ հրամայեաց նմա փորել զերկիրն. և սկսաւ փորել զերկիրն որչափ բաւական էր։ Եւ թաղեաց զնա երանելի ծերն սաղմոսիւք և օրհնութբ և արտասուօք։ Եւ դարձաւ 'ի վանսն իւր. պատմեաց մի ըստ միոջէ ամենեցուն զվարս երանելւոյն Մարիամայ։ Եւ յետոյ Սոփրոնիոս հայրապետն Երուսաղէմի գրեաց զպատմութի երիցս երանեալ և երջանիկ աղախնոյն այ Մարիամայ եգիպտուհւոյ։

ՎԱՐՔ ԵՒ ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԻՒՆ

# ՄԱՐԻԱՄՈՒ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ

## ՈՐ Ի ՊՈՌՆԿԱՑ ԵՂԵՒ ՍՈՒՐԲ ՃԳՆՈՒԹԵԱՄԲ

## ՅԱՆԱՊԱՏԻ *

ԶԽՈՐՀՈՒՐԴ թագաւորի 'ի ծածկել բարիոք է, և զգործս այ քարոզել փառաւորապէս. քանզի այսպէս ասաց հրեշտակն առ Տոբիթ յետ հրաշափառ կուրութեան աչաց վերահայեցութեան, և յետ այնորիկ ընդ վտանգսն ընդ որ էանց և յորոց փրկեցաւն 'ի ձեռն որոյ ունէր բարեպաշտութե։ Վասնզի զթագաւորի ոչ պահելով զխորհուրդս՝ անզգուշութիւն է և կորուստ, և լռել զայ զգործս՝ հրաշափառ անձին բերէ զվնասս։

* Զհամառօտ կենսագրութիւն եգիպտացւոյն Մարիամու եդեալ 'ի մեր անդր ըստ օրինակաց հարանց վարուց, ըստ պարզաբանութեան զոյս համառօտեալ բացին թարգմանութեն Հերոնիմոսի յաւելեալ մեզ գտանել 'ի ձեռագիր գրոցն։ Այլ ղպաշտօնատեաց խանգարմանս նորա, 'ի հնութե օրինակին թէ որդեօք առ Գերեզին մարտիրոսին Լիպպոմանոյ, որպէս 'ի Վերջնատան համառօտին, կամ այլ ուր զանկցուրդ խմբագրութե ինչ բանից, ելեալեցաւ 'ի ըստ բնականին իմնակերպ անսնել, զանխլագիր ընթերցողաց օրինակին անխտիր թողեալ 'ի մեզ կամ ամփոփեալ 'ի սպառնա։

Ուստի և ես ուղիղ 'ի լռութեն առ 'ի յանձեանն՝ եղէ փոխեալ[1], և զգանձեալ ծառային զվտանգն ուսանելով՝ որոյ առեալ 'ի տեառնէ զտաղանդն՝ ընդ երկրաւ զայն թաքոյց, և զտուեալն առ 'ի գործել՝ ծածկեաց, պատմութիւն հոգեշահ՝ որ մինչև ցիս հասեալ՝ ոչ երբէք լռեցից: Այլ ինձ մի՛ ոք անհաւատ լիցի զբազիս՝ զոր օրինակ լուայ, և կամ ինձ արուեստաւորել ինչ ամենևին համարել՝ և յիրացս զարհուրեալ մեծութենէ: Վասն զի ինձ մի՛ լիցի մեծին հակառակ ասել և վաճառականն լինել բանին, որով ա՛ծ յիշատակի: Այլ զփորձն արհամարհել իբրև անարժանն այ բանին մարմնացելոյ մեծութեան, և անհաւատալ որոց զայն ասեն, ոչ թուի ինձ ունել իրաւունս: Իսկ եթէ ունիմք այսպիսի զօրաւորութեան հանդիպեալք, և ընդ հրաշափառութիւն բանին թերևս հայեցեալք, և զհաւատալն տիրապէս ոչ կամեցեալք, և նոցա քաւիչ եղիցի տէր. վասն զի և զնոցա տկարութիւն ըստ մարդկային բնութեան զմտաւ ածել, համարին հրաշափառաբար զոր յաղագս մարդկան ասացեալ են: Իսկ ինձ այսուհետև զպատմութիւն իւրս ասելով, որ ըստ մերումս ազգի լինել զճառեալսն, զոր օրինակ մեծն այն այր՝ զա՛ծեանն ասել և գործել 'ի մանկութէ ուսանելով պատմեաց: Զի մի և այս յանհաւատութի ձգիցի, որ ըստ մերումս ազգի զայսպիսի սքանչելիս լինել՝ համարել անկարելի. քանզի շնորհք հոգւոյն սրբոյ ըստ ազգաց առ 'ի յանձինս սուրբս փոփոխեալս բարեկամս այ և մարգարէս կազմէ, զոր օրինակ ա՛ծեանն ուսոյց Սողոմոն: Նման է այսուհետև մեծին այնորիկ սկիզբն առնել պատմութե:

Այլև ոմն ըստ պաղեստինացւոց վանորէիցն վարուք և բանիւք զարդարեալ, որ առ 'ի նոցունց իսկ խանձարուրոցն մենազնականօքն սնանէր սովորականութեա և իրօք. Զոսիմոս էր անուն ծերոյն: Բայց մի ոք անուանակոչութեան Զոսիմոյ, որ երբեմն 'ի դաւանութիւնսն ամբաստանեալ, այլափառ զսա կարծիցէ. քանզի այլ սա և այլ նա. և շատ ինչ է ընդ մէջ երկաքանչիւրոցն զանազանութե, թէպէտ և զմի ունին անուանակոչութիւն երկաքանչիւրքն: Այսպէս Զոսիմոս ուղղափառ միան-

1 Թէրևս յեղափոխեալ. չպ. Ուստի և ես լռել զա՛ծայինն երկուցեալ կամ ահաբեկեալ:

ձանց առ 'ի սքանչելի միումն ուրեմն 'ի վանսն պաղեստինացւոց ըստ ամենայն առաքինութիւնս որ զինչ և է՝ անցանելով, և առ ամենայն ժուժկալութե̃ խորհուրդս եղեալ դիպող։ Վասն զի զամենայն զկանոնսն¹ աւանդեալ նոցա, յորոց այնպիսի զնա մրցմունս վարժողացն զկրթութիւնս պահեալ, բազում ինչ և ինքն յանձնէ իմացեալ հնազանդեցուցանել խնդրելով զմարմինն հոգւոյն։ Այլ ահա առ 'ի դիտաւորութենէն ոչ ինչ վրիպեաց. քանզի այսպէս յաղագս գործոյ ծերոն բարենշան, որպէս զի բազմաց բազում անգամ առ 'ի մերձակայ վանորայիցն, է զի որոց հեռի եղելոց՝ գալ առ նա, և առ ժուժկալութի̃՝ 'ի նորայն վարդապետութե̃ օրինակել և կանոնել։

Այլ թէպէտ այսպէս ունելով յաղագս գործականացն ծերոն զՋան, ոչ ամենեւին առ յընթերցմանց հոգեւոր բանից ծուլացեալ. այլ ննջելով և յառնելով և 'ի ձեռս ունելով զձեռագործն, զկերակրոցն զհեշտալի և զբարի կերակուրն՝ յորմէ ճաշակէր հաղորդելով որպէս սովորեացն, 'ի գործն ունելով անդադար ոչն երբէք լռելն, այն է զսաղմոսեն յարաժամ, և կրթութիւնս առնելով վարժ ամենայն գործոց։ Բազում անգամ առեն և ա̃ծայնոցն արժանանալ տեսութեանց զծերն՝ յա̃ծանմանայն եղելոց լուսափայլութե̃ց։ Այլ սքանչելի ինչ ոչ է և ոչ անհաւատալի. զի եթէ երանեալ են մաքուրք սրտիւք, զի նոքա զա̃ծ տեսցեն, որպէս և ասաց տէրն, զմարմինն՝ յայտ է՝ զինքեանց մաքրելով և խոկալով, միշտ արթնութե̃ անձին աչօք տեսանեն զա̃ծային տեսչութե̃ց զառհաւատչեայ՝ աստուստ զհանդերձելոցն նոցա ընդունել զաւետիս։ Քանզի ասէր այս Զոսիմաս ուղղափառ՝ առ 'ի նոյն ինքն մայրական ծոցոյ 'ի վանսըն զնա տալ, և մինչև յիսուն և երեք ամն 'ի նմա զընթացս ճգնութե̃ն առնել։ Իսկ յետ այսորիկ նեղեալ² յամանց խորհրդոց, որպէս ասաց, իբրև զի լինել կատարեալ յամենայնի, որպէս թէ յայլ վարդապետութեան ոչ³ կարօտ գոլ զինքն։ Այլ զայս, որպէս պատմեցաւ, տանանձինն զմտաւ ածէր ասելով. Թերևս իցէ 'ի վերայ երկրի միայնակեաց՝ նոր ինչ աւանդել ինձ

1 Յօրինակին զկեանսն։
2 Յօրինակին անցիլ։
3 Յօրինակին պակասէր ոչ։

կամ շահեցուցանել զնա կարող գոլ ոչ գիտացեալ, և ոչ գործեցի զատեսակ ճգնութե. Թերևս գուցէ յորոց յանապատի իմաստասիրաց այր, որ ըստ գործոց և կամ տեսութեց վերագոյն քան զնա: Զայսոսիկ ծերոյն զմտաւ ածեալ զօրինակ, 'ի վերայ նորա եկաց ասելով. ո Զոսիմէ, ամենայնպէս ապա որպէս կարելի մարդոյ՝ ճգնեցար, բարիոքաբար և զճգնութեց զընթացս աւարտեր. բայց սակայն ոչ ոք 'ի մարդիկ՝ որ ունի զկատարեալն. այլ մեծագոյն է ճգնութիւն որ առաջի կայ քան ' զանցելոցն, ահա թէպէտ և դուք ոչ ճանաչէք զապառնիսն: Բայց զի ծանիցես և դու թէ որչափ են այլ 'ի փրկութի ճանապարհք, ել յերկրէ քումմէ և յազգէ քումմէ, ել 'ի տանէ հօր քոյ, զոր օրինակ և Աբրահամն այն՝ որ 'ի հայրապետս բարենշան, և եկ 'ի վանսն որ մօտ 'ի Յորդանան գետ յարամնացեալ:

Իսկ և իսկ ապա ծերոյն հետևեալ հրամանին՝ ելանէ 'ի վանացն յորում 'ի մանկութէ էր միանձնացեալ. և եկեալ հասանէ 'ի Յորդանան, որ 'ի գետս սրբագոյն, առաջնորդեալ 'ի կոչողէն, յայն վանսն՝ զոր ա͞ծ նմա երթալ հրամայեաց: Իսկ բախեալ ձեռամբն զդրաննեակ դրանն՝ հանդիպի նախկի միայնակեցի, որ ըզդուռնն պահէր. և նա զուշակէ վանականին: Իսկ նորա ընկալեալ՝ զձև և զսովորականութի երկիւղածական տեսանելով՝ արարեալ ըստ մենաւորական ձևի զերկրպագութիւնն, և ընկալեալ աղօթս, եհարց զայս. ուստի եկիր, եղբայր, և էր վասն տառապացեալս եկիր առ մեզ ծերս: Իսկ Զոսիմա պատասխանեաց ասելով. յաղագս թէ ուստի՝ զայս ասել ոչ ինձ կարևոր, բայց եկի վասն օգտի. քանզի լսէի վասն ձերոց մեծութե և արժանի գովեստի, և կարէ՝ ընտանեցուցանել զանձն 'ի միաւորութիւն Ք͞սի ա͞յ մերոյ: Ասէ ցնա աբբայն. Եղբայր, ա͞ծ որ միայն է բժիշկ մարդկայնոյ հիւանդութեց, նա և քեզ և մեզ ուսուսցէ զա͞ծայինսն կամս, և առաջնորդեսցէ բարւոքս առնել զվայելչականն. վասն զի մարդ մարդոյ օգնել ոչ կարէ, բայց իւրաքանչիւր ոք ինքեան զգուշասցի հանապազ և արթուն լինելով մտօք զկրթուացն գործեսցէ, զա͞ծ ստացեալ գործելոյն օգնական:

1 Օրինակին պակասէր քան:    2 Օրինակին կարի:

Բայց զի ասացեր՝ տէրն Քի շարժեաց զմեզ տեսանելով զպատահեալ զմեր ծերութիս, մնա ընդ մեզ, որովհետև վասն այդորիկ եկիր. և զամենայն զմեզ կերակրեացէ հոգւոյն շնորհօք հալիւն բարի՝ որ եւ զանձն փրկանս վասն մեր, և զիւր զոչխարսն կոչէ յանուանէ։ Զայս ասա ասելով վանականին՝ Զոսիմաս խոնարհեցոյց ծունր, խոկ և խոկ երկրպագեաց, և խնդրեալ աղօթս՝ մնաց 'ի վանման յայն։

Եւ ետես ծերս գործովք և տեսութեամբք պայծառացեալս և հոգւով ջերմս և տեառն ծառայեալս. քանզի սաղմոսերգութիս և անդադար ժուժկալութի ունելով յարաժամ յաղօթս, և զձեռագործն միշտ 'ի ձեռս ունելով և սաղմոս 'ի բերան։ Քանզի բան դատարկ առ նոսա ոչ քաղաքավարիւր. հոգ իրաց՝ նոցա ոչ էր պիտոյ. ծախք կերակրոց տուեալ և համահաւաքեալ և հոգք աշխարհականք ջանիւ պանձուցեալք՝ և ոչ անուանք առ նոսա ճանաչիւր. այլ մի և միայն էր փոյթ նոցա ամենեցուն զիւրաքանչիւր ոք որպէս մեռեալ գոլ մարմնով, իբր միանգամ աշխարհի և որոց յաշխարհէ՝ յամենայնէ մեռեալ և ոչ կեալ։ Իսկ կերակուր ունէին անծախելի զա̃ծաշաւնչ բանս. կերակրէին զմարմինս հարկաւորօք միայն, այս է հացիւ և ջրով, որպէս իւրաքանչիւր ոք շարժիւր, հրամայեալք ա̃ծային սիրով։ Զայսոսիկ ասա Զոսիմաս տեսանելով՝ շինէր յոյժ, ներբեալ յառաջադէմն միշտ, աճեցուցանելով զընթացս իւր, և զուգափափագողս[1] գտեալ ազնուապէս զա̃ծեան նորագործելով զգրախտ։

Իսկ աւուրց բազմաց անցելոց մերձեցաւ ժամանակն, զոր օրինակ զմեծվայելուչ զպահօն կատարել քրիստոնէից աւանդեալ է. նախ մաքրեալ զինքեանս յա̃ծային չարչարանացն, և յարութեան Քի տեառն երկրպագութիւն։ Իսկ դրան վանացն ոչ երբէք բացելոյ, այլ միշտ փակեալ ունելով, և անցեալ անդրջապէս զմիանձնանցն զձգնութիւն. քանզի և ոչ երբէք բանալ, բայց եթէ միանձնօքն վասն կարեւոր իրաց գայր։ Քանզի անապատ էր տեղին, և դրացեացն միաբանիցն ոչ անկոխելի միայն, այլ և անծանօթ։ Իսկ կանոն զայնպիսի 'ի վե-

1 Յօրինակին զուգափափագող գտեալ։

րուստ՝ վանատան պահեալ. վասն որոյ, որպէս կարծեմ, և ամ գ.[1] Ո ոսխմա յայն վանս եած:

Բայց եթէ զինչ կանոն և կամ որպէս պահեալ լինէր, աստուստ ասացից: Ախուրակէի յորմէհետէ առաջին շաբաթն սկսանել պահոց սովորեաց՝ կատարէր առտուածեան խորհուրդ. յայտ է թէ ըստ սովորութեն իւրաքանչիւր ոք անապականագործ և կենդանարար խորհրրդոյ հաղորդէր: Այլ սուղ ինչ կերակրոյ սովորակի լինէին ճաշակման. այնպէս ապա ժողովէին ամենեքեան յաղօթանոցն և ծունրդրութեն. յոլովագունի աղջոյն տային միմեանց ծերքն. և գիրկս զվանականաւն արկանելով իւրաքանչիւրքն, մատուցանէին երկրպագութի. աղաչելով առնուլ փոխանակ աղօթս, և ունելով առաջիկայ մրցումն ձգնակից և ճանապարհորդակից: Այլ աղտոցիկ եղելոց՝ զուռն վանացն բանայր, և սաղմոսաբանելով զուգաձայնաբար՝ զտէր լուսաւորութիւն իմ և փրկիչ իմ, տէր պաշտպան կենաց իմոց՝ ես յումմէ՞ երկեայց, և ըստ կարգի զբոլոր սաղմոսս, ելանէին 'ի վանացն ամենեքեան, մի միայն կամ բազում անգամ երկուս պահապանս վանացն թողեալ. ոչ զի պահեսցեն զառ 'ի ներքս շտեմարանականսն, քանզի ոչ ինչ գոյր նոցա արժանիք գողոց յափշտակութե, այլ զի մի առանց պաշտաման զաղօթանոցն թողցեն. և իւրաքանչիւր ոք նոցա պատրաստէր՝ զկերակուրն որպէս կարէր և որպէս կամէր. վասն զի ոմն 'ի նոցանէն հաց տանէր առ 'ի պէտս մարմնոյն զչափաւորն, իսկ ոմն թուզ և միւսն արմաւ և այլքն դարձեալ ունդս առ 'ի թրջել ջրով. իսկ միւսն և ոչ ինչ, բայց միայն զմարմինն իւր և զհանդերձիկն զոր զգեցեալն էր: Այլ կերակուր որչափ բնութիւն հարկաւորէր, բուսեալ որ ըստ անապատին բանջարովք: Այլ կանոն իւրաքանչիւր ոք ինքն առանձինն. և օրէն առ նոսա անվրէպ գոյր զոչ ճանաչելն զընկերն թէ որպէս պահէ և կամ որպէս միւսն վարի: Ամանց ընդ Յորդանան իսկ և իսկ անցեալք հեռի 'ի միմեանց որոշէին, և քաղաք ունէին զանապատս, և ոչ ոք 'ի նոցանէն երթայր առ ընկերն. այլ թէպէտ և ոք տեսանէր 'ի հեռաստանէ զընկերն գալով առ նա կոյս, իսկ և իսկ 'ի

1 Յօրինակին չէր պատրաստեր:

բաց խոտորէր առ 'ի նմին կոյս երթալոյ և միւս կողմն գնայր. ինքեան գոլով և ոչ, սաղմոսով յարաժամ, և կերակրոյ հաղորդէր զսահմանեալ ժամու ։ Այսպէս ապա զբոլորն կատարեալ զպահսն՝ դառնային 'ի վանսն կիւրակէի՝ որ նախ քան զկենդանագործ փրկչին 'ի մեռելոցն յարութիւն, զոր տօն նախատօնակ հանդերձ ծաղկացն գեղեցկաղխտակ վայելչութեամբ տօնէ եկեղեցի ։ Այլ դառնայր ապա իւրաքանչիւր ոք ունելով զինքեան մշակմանն վարձ, զգիտակցութիւն ունելով ճանաչող վաստակոցն՝ թէ որպէս ճգնեցաւ. ոչ ոք հարցաքննէր բնաւին զընկերն, թէ որպէս կամ որով օրինակաւ զնախանձեալն կատարեաց զմրցումն առ 'ի հոգւոցն փրկութիւն ։

Այսպէս ապա վանացն այնորիկ կանոն, և այսպէս ապա ազնուաբար աւարտելով. քանզի իւրաքանչիւր ոք նոցա յանապատ լինելով՝ ընդ ճգնաւորաւն ոչ ըստ ինքեան ճգնէր, ոչ զի մարդկան հաճոյ լինելով ըստ ցուցմանն պահեալ, ուստի ազատ գոլով առ 'ի մարդահաճութենէ, միաբան[1] դատապարտ ։ Քանզի որ վասն մարդկան եղեալ և առ 'ի հաճոյս մարդկան կատարեալ, ոչ ինչ ամենևին օգտեցուցանեն զգործօնեայսն, այլ և բազում անգամ լինի պատճառք վնասու արարողին ։

Յայնժամ ապա և Զոսիմաս ըստ սովորական վանացն կարգի ընդ Յորդանան անցեալ, սուղ ինչ և նորա բարձեալ պաշար առ պէտս մարմնոյն, և զնոյն ինքն զպատառատուն հանդերձիկն զոր զգեցեալն էր, և ապա զկանոնն կատարէր գնալով ընդ անապատն. և ժամանակ կերակրոյ առնէր զհարկաւորութեան բնութիւն, և ննջէր 'ի յերկրի սուղ ինչ գետնատարածեալ ըստ պիտոյիցն չափաւոր քնոյ ուր և նմա երեկն հասանէր ։ Իսկ 'ի խորագոյն առաւօտուն յարուցեալ՝ դարձեալ սկսանէր գնալ, ունելով միշտ զփոյթ շարժմանն ։ Որ 'ի ցանկութիւն ապա եկն՝ որպէս ասէր՝ ըստ անապատին, յուսացեալ թերևս գտանէր զոք հայր բնակեալ կարող գոլով օգտեցուցանել զնա հոգևպէս ըստ փափագմանն անձին նորա. վասն որոյ և ժուժկալութեամբ զգնացսն առնէր, որպէս ոք փութալով յօթևանն ինչ ։

Այլ իբր աւուր քսանօրեայ զճանապարհն, յայնժամ

1 Ի գրչին չիք միաբան դատապարտ ։

եհաս 'ի վեցերորդ ժամ աւուրն, հայեցեալ յարեւելս կոյս կատարէր զսովորական աղօթսն. քանզի սովորեաց զսահմանեալ աւուրցն ժամ տանել 'ի ճանապարհորդութեն փոյթ. եւ փոքր ինչ յաշխատութեն հանգչել կալով յատն, առ 'ի սաղմոսել եւ ծունր դնել, եւ այսպէս աղօթէր: Իսկ ահա մինչդեռ աղօթէր նա, հայեցեալ յերկինս անսայթաքելի հայեցուածովք, տեսանէր յայլ-մէ կողմանէ, յորում կացեալ յատն զվեցերորդ ժամու աղօթէր, ստուեր երեւեալ որպէս մարդկայնոց մարմնոց, եւ զառաջինն վրդովէր. երեւոյթ ինչ դիւական զայն կարծեցեալ, եղեւ 'ի դողման. եւ կնքեալ զինքն նշանաւ խաչին՝ զերկիւղն հերքեալ մերժէր, վասն զի ահա եւ զկատարումն իսկ ունելով աղօթիցն նորա, դարձեալ տեսանէ Զոսիմաս զոմն աչօք իսկ ճշմարտապէս՝ գնալով 'ի հարաւ կոյս. եւ մերկ գոյր երեւեալն սեաւ մարմնով, որպէս զի յարեգակնայինն սեւացեալ բոցոյ, եւ հերս 'ի գլուխն ունելով սպիտակ որպէս զասր, եւ զայն սակաւ, իբրու զի ոչ աւելի քան զպարանոց մարմնոյն աճեցեալ զայն:

Իսկ Զոսիմայ տեսեալ եւ 'ի հրճուանս առ 'ի փափագմանէ եղեալ եւ ցնծացեալ հրաշափառ տեսլեանն, սկսաւ ընթանալ առ նա կոյս. եւ փութայր առ երեւեալն, ուրախացեալ յոյժ զուրախութիւն անպատմելի. քանզի ոչ էր տեսեալ 'ի մէջ աւուրցն այնոցիկ զտեսակ մարդկայինս եւ կամ այլ ինչ կենդանի եւ կամ թռչուն եւ կամ բնաւ զկերպ ցամաքայնոց կամ ստուեր ինչ: Խնդրէր ապա ճանաչել թէ ով ոք իցէ եւ կամ որպիսի երեւեալն, յուսով թէ մեծամեծաց ումանց տեսող լինիցի: Իսկ իբրեւ ետես նա զԶոսիմաս գալով 'ի հեռաստանէ, սկսաւ ընթանալ եւ փախչել 'ի նմանէ առ 'ի ներքսագոյն անապատն: Իսկ Զոսիմայ որպէս մոռացումն արարեալ ծերութեն իւրում, տակաւին զաշխատութիւն ճանապարհին առ ոչ ինչ համարեալ, ձգեաց զինքն առ 'ի հասանել փախուցելոյն առ 'ի նմանէ. եւ այսպէս հետամուտ եղեալ լինէին սրագոյն Զոսիմայն ընթացք, եւ առ սակաւ սակաւ մերձեալ լինէր առ փախուցեալն: Իսկ որպէս մօտարկեաց, ահա իբրեւ ձայնին այնուհետեւ լսելի լինել, սկսաւ աղաղակել ծերն եւ այսպէս ձայն թողուլ հանդերձ արտասուօք ասելով. վասն էր փախչիս յինէն առ 'ի ծերոյ մեղաւորէ, ծառայդ ճշ-

մարտնչին ինձ : մինչ ինձ ով ոք և խցես վասն իմ, յաղագս որոյ և յայսմ անապատի բնակիս, մինչ ինձ տկարի և անարժանի վասն յուսոյն զոր ունիս առ 'ի յայցելութեանց փոխադրութիւն. կաց և քաջախեա աղօթս և օրհնութիւն ծերոյս վասն իմ որ ոչ երբէք զքեզ արհամարհէ : Զայսոսիկ Զոսիմայ հանդերձ արտասուօք ասելով, հասին ընթանալով 'ի տեղի ինչ, որ երևէր որպէս հովիտ ինչ, վասն զի առդ յայնպիսումն վիճակեցաւ ցուցման: Իսկ որպէս հասին յառաջացեալն յայն տեղի՝ փոխեցեալն էջ և եղ խաչ և խաչ եկաց ընդ միւս կողմն : Իսկ Զոսիմա աշխատեալ և ոչ ևս կարացեալ ընթանալ եկաց 'ի միւս կողմն հակառակատեանն տեղւոյ . և յուսելադրեաց աղաւսուս առ արտասուս, և 'ի հեծութիւս հեծմունս, որպէս զի զառաւելութիւն հեծութեան նորա է 'ի նմա լսել:

Յայնժամ ապա փոխեցեալն այն մարմին այնպիսի ձայն արձակէ. հայր Զոսիմա, թողութիւն արա ինձ վասն Տեառն. ոչ կարեմ զատնալ երևել քեզ այսպէս յերեսս, քանզի կին մարդ եմ թշուառական և մերկ որպէս տեսանես, և զամօթ մարմնոյս անծածուկ ունելով. այլ եթէ բնաւ կամիս ամենայն իրօք մեղաւորի կնոջ շնորհել աղօթս, ընկեա զուսանոցակդ զոր ունիս արկեալ, որպէս զի այդու ծածկեցից զկանանցեկան զիմոյ տկարութեանս, և դարձայց առ քեզ և աղօթս առնից: Յայնժամ դողումն և սարսափումն էառ զԶոսիմաս, որպէս ասաց Զոսիմաս՝ թէ զիարդ կոչեաց յանուանէ. քանզի սուրբ էր այրն և յաղագս աստուածայնոցն իմն ծանեաւ, եթէ ոչ անուամբ զնա կոչէր զոչն երբէք տեսեալ, զորմէ ոչն երբէք լուեալ, եթէ ոչ զի յառաջգիտութեան քաջայայտ էր շնորհօք պայծառացեալ: Իսկ արար ապա հանդերձ փութով զհրամայեալն. և հանեալ յինքենէ զուսանոցակն զոր ունէր հին և պատառատուն, ընկէց 'ի վերայ նորա 'ի վերջ կայս գնալով կացեալ: Իսկ նորա առեալ ծածկեաց զինքն որչափ կարաց ծածկել զնոսա ինչ մարմնոյն զոր պէտք էին ծածկել քան զայլսն, և դարձեալ առ Զոսիմաս ասէ. զի՞նչ քեզ կամ եղև, հայր, տեսանել զկին մեղաւոր. զի՞նչ խնդրելով տեսանել կամ ուսանել, որ զայսքան աշխատութիւնս ոչ յապաղեցեր ցուցանել: Իսկ նորա ծունր կրկնեալ խնդրէր առնուլ օրհնութիւն ըստ սո-

վարութէ։ Նմանապէս և տարս ընկեցեալ զինքն յեր-
կիր, կայծն երկրպագանչիւրքն յերկար 'ի վերայ երկրի,
երկրպագանչիւր որք խնդրեսցեն օրհնել յընկերեքն. և ոչ
ինչ այլ գործ լինել առ յիւրաքանչիւրոցն։

Այս յետ բազում ժամուց ասաց կինն առ Օսխմա.
Հայր Օսխմա, քեզ պատշաճ է օրհնել և աղօթել,
վասն զի քահանայութէ պատուովն ես պատուեալ զա-
առ 'ի բազմաց, և սուրբ սեղանոյն մերձ կացեալ, և բա-
զում անգամ զմարմնոյն խորհրդոյն եղեալ խորհրդա-
ծու։ Այս ասաց զՕսխմա և մեծապայծ երկիւղիւ մըր-
ցումն առեալ փոխարկեաց. և 'ի դողման եղեալ ծերն՝
քրտունք հոսէին 'ի նմանէ, հեծէր և զձայնն կոտո-
ւէր, և ասէր առ նա կարատելով ձայնիւ և տոկարականն
խորշմամբ՝ զարհուրեալ և 'ի տեսութենէ նորա. ով մայր
հոգևոր, դու առ ած 'ի վեր գնացեր, և յոյժ մնասամբ
յաշխարհէ մեռեալ հանդիպիս. և զայս յայտնապէս
զեկուցանէ պարգևեալդ քեզ շնորհ այդպիսի՝ քո զիս
յանուանէ կոչել և երեց աւել, որ ոչ երբէք եղեալ
տեսող. այլ քանզի շնորհք ոչ առ 'ի պատուոյ ձեռնաչի,
այլ առ 'ի բարուցն նկարագրեալ տուողեաց, դու օրհ-
նեա վասն տեառն և շնորհեա աղօթս կատարելոյ
քոյոյդ կատարելութէ ընդդիմաքանութէ[1]։ Այս Թոյլ
տուեալ ծերոյն՝ ասաց կինն. օրհնեալ է ած, փրկութէ
անձանց մարդկան խնամատար։ Իսկ Օսխմա ասելով
զամէնն, յարեան յերկրպագութենէն իւրաքանչիւր որ։
Այս ասաց կինն առ ծերն. Էր վասն առ իս մեղաւորս
եկիր, ով մարդ. հիմ զմերկ 'ի բոլոր առաքինութենէ
տեսանել կամեցար զկին համայն. վասն զի քեզ շնորհք
հոգւոյն սրբոյ առաջնորդեաց որպէս զի սպասաւորութի
ինչ կատարեսցես զպատշաճն։ Այս ինձ նախ և ա-
ռաջին, Թէ զիարդ քրիստոնէից ազգ քաղաքավարեալ,
որպէս Թագաւորք, որպէս եկեղեցիք։ Իսկ ծերն ասաց
ցնա միով բանիւ. Մայր իմ, բոլորի Ձն Վն աղօթիւք
ձերովք զխաղաղութի բարեկարգ շնորհեաց։ Այլ ըն-
կալ զանարժան ծերոյ զաղաչանս, և աղօթեա վասն
տեառն յաղագս բոլոր աշխարհի և յաղագս մեղաւորիս,
զի մի անպտուղ անապատս այսորիկ եղեցի իմն տես-
րութի։ Իսկ նա առ սա պատասխանեաց. քեզ պատեհ

1 Լուս. չունի ընդդիմաքանութեան։

է, հայր Զոսիմաս, զքահանայի զպատիւ ունել՝ յաղագս իմ և քաղցրից աղօթել, քանզի 'ի սոյն յայս և վիճակեալ ես. համայն վասն զի հնազանդութի՝ կատարել հրամայիմք, զհրամայեալսն առ 'ի քէն բարեյօժարապէս արարից: Եւ զայս ասելով դառնայ յարևելս կոյս և զաչսն առ 'ի բարձունս համբարձեալ և զձեռսն տարածեալ սկսաւ աղօթել շրթանցն միայն շարժելով, իսկ ձայնին ոչ լինելով լսելի: Սակայն Զոսիմա ոչ ինչ յաղօթիցն կարաց նշմարել, բայց կայր յառն յերկիր 'ի խոնարհ ակնարկելով. և երդնոյր զա̃ծ վկայ առաւջարկութեան, եթէ իբրև ետես զնա յաղօթս ժամանակեալ, սուղ ինչ 'ի վեր հայեցեալ որ առ 'ի յակնարկութենէ, և տեսանէ[2]՝ բարձրացեալ զնա յերկրէ՝ յօդս կախելով աղօթէր: Զայս իբրև ետես, առաւելագոյն երկիւղիւ ըմբռնեալ ընկեաց զինքն 'ի գետինն, վիժեալ քրտունք և յոյժ ձգնութբ̃[3], ոչ ինչ բնաւ բարբառել իշխեցեալ, բայց առանձինն միայն ասելով յոլովս յոլովս՝ տէր ողորմեա:

Եւ խոնարհմամբ 'ի վերայ երկրի ծերն 'ի խորհուրդոյն գայթակղեալ՝ մի՛ արդեօք հոգի իցէ և զաղօթելն կերպարանի: Եւ դարձեալ յետս կնոջն՝ յարոյց զհայրն Զոսիմաս ասելով զայս. զի՞ զքեզ, աբբահայր, խորհուրդքդ խռովեցուցանեն՝ թէ ոգի եմ և զաղօթելս կերպարանի. հաւատա, այր դու, զի կին եմ մեղաւոր, սակայն մկրտութբ̃ հոգւոյն եմ պարսպեալ. և չեմ ոգի[4], այլ երկիր և մոխիր և մարմին եմ բոլոր, ոչ ինչ հոգևորական զմտաւ ածեալ: Եւ միանգամ ընդ ասելն զայս կնքէ զինքն նշանաւ խաչիւն զճակատն և զաչսն և զշրթունսն և զսիրտն ասելով զայս. հայր Զոսիմաս, ա̃ծ զերծուսցէ զմեզ 'ի չարէն և 'ի դարանակալութենէ նորին, զի յոյժ հակառակ է մեզ զօրութի նորա: Զայսոսիկ լուեալ ծերոյն ընկեաց զինքն և կալաւ զոտիցն նորա, ասելով հանդերձ արտասուօք. երդմնեցուցանեմ զքեզ 'ի Ք̃ս ա̃ծ մեր, որ 'ի կուսէն ծնեալ, վասն որոյ զայդ առացեալ ես զմերկութի, յաղագս որոյ զայդ մարմինդ պղպջէս ծախեցեր. մի՛ ինչ թաքուցաներ յինէն,

1 Յօրինակին անգիտութիւն կատարել զհրայ իմ. լաւ. պատուիրան հնազանդութե ունիմք:

2 Լաւ. յառնելու կանգնուցանի:

3 Լաւ. յոյժ ահաբեկեալ:

4 Յօրինակին պատասխանէր և չեմ ոգի:

այլ զամենայն որ յաղագս քո խնքեան՝ պատմես ինձ, որպէս զի զիմ մեծութիւն արասցես զերկուցեալ. քանզի խոնարհութե ծածկեալ և զանձն աներևոյթ զինչ օգուտ է յիւրաքանչիւրոց, որպէս և գրեալ է։ Այս ինձ վասն տեառն զամենայն. զի ոչ եթէ պարծանաց վասն ասեմ կամ ցուցանելոյ, այլ զիս շինեսցես զմեղաւորս և զանարժանս. քանզի հաւատամ յած որով կեաս և քաղաքավարիս, զի վասն այսորիկ առաջնորդեցայ յանապատս, որպէս զի յաղագս քո արասցէ ած յայտնի։ Ոչ է այսուհետև մերոյ զօրութի ընդ դատաստանաւ ած մտանջել. վասն զի թէ ոչ էր հաճոյ Տեառն ած մերոյ ծանուցանել զքեզ թէ որպէս ձգնեցար, և ոչ տեսանել զքեզ խնքն յումեքէ թոյլ տայր, և ոչ զիս առ 'ի այնքան ճանապարհ առնել զօրացուցանէր. ոչ երբէք տաւղին ըննել կամ կարէի եկանել 'ի խորձթէ իմմէ։

Զայս և առաւել քան զայս ասելով հօրն Զոսիմոսի, յարուցեալ զնա կնոջն ասելով ցնա. աղաչեմ, աբբայ, թողութիւն արա վասն տեառն՝ զանօթն ասել քեզ զգործոց իմոց. բայց վասն զի մերկ զանդամս իմ տեսանես, մերկացուցից քեզ զգործս իմ, զի ծանիցես թէ որչափ ամօթով և նախատանօք լի է անձն իմ։ Քանզի ոչ որպէս կարծիցես յաղագս պարծելոյ անձին կամեցայ պատմել քեզ. քանզի զինչ ունիմ և պարծել իսկ, անօթ ընտիր բանսարկուին եղեալ. քանզի գիտեմ եթէ սկսայց զհակառակն իմ խնքեան պատմել, փախիցես յինէն որպէս փախչի ոք յերեսաց օձի։ Զանարժանան գործեցի, սակայն ասացից, լռել և ոչ ինչ. երդմնեցուցեալ յած ամենակալ, ոչ դադարեսցես յաղագս իմ աղօթելոյ, որպէս զի գտից զողորմութի 'ի ժամ դատաստանին։ Իսկ ծերն անդադարապէս արտասուէր։ Սկսաւ կինն յաղագս իւր խնքեան պատմել, ասելով այսպէս։

Այս, եղբայր, հայրենիս ունէի զԵգիպտոս. և կենդանի գոլով ծնողաց իմոց, զերկոտասան ամ ունելով, զնա 'ի նոսա զսէրն բացամերժեալ եկի յԱղեքսանդրիա։ Եւ եթէ որպէս 'ի սկզբանն զիմ խնքեան զկուսութիւնն ապականեցի, և եթէ զխառն անյագաբար և անարգելապէս ունելով յաղագս աղտոյ խառնակութե ամաչեմ զմտաւ ածել. քանզի զայս ապա այժմ ասել գոյ պարկեշտագոյն։ Այլ զայն հանապազորդ ձգնե-

ցից, զի չարաչար զիւրոյ ախտոյն ծանուցես զհեշտութի: Տասնեւեօթն կամ աւելի ինչ ամս, թողութի արա ինձ, Հայր, վասն տեառն, կատարեցի հրապարակաւ ժողովրդեանն առաջի կացեալ՝ զանառակութիւն վարելով: Ոչ վասն առնլոյ յումեքէ ինչս, երդուեալ 'ի Ճշմարտութի. քանզի բազում անգամ կամեցողաց տալ՝ ոչ առնուի. և զայս զմտաւ ածէի, որպէս զի յոլովից արարից առ իս ընթանալ, և որպէս պարգեւս ինչ կատարելով իմ զցանկութիւն: Եւ մի՛ դարձեալ կարծեր թէ գոյաւոր գոլով ոչ ընդունէի առ 'ի նոցանէ, այլ կայի մանելով զկտաւատին անդադար: Եւ զցանկութիւն ունէի անդադար զանառակել տարփմանացն յամենայն ժամ ընդ տիղմ թաւալելով: Եւ այս աՀա էր իմ կեանս, և գործ իմ զյարաժամն կատարել զթշնամանս բնութեան: Եւ այսպիսի օրինակաւ վարեալ իմ, տեսանեմ աՀա 'ի տեղւոջ աւուրեմն յամառնայնոյ ժամանակի արանց լիբէացւոց և եգիպտացւոց ամբոխ յոյժ ընթացողաց 'ի ծով: Հարցի ապա յայնժամ զոմն պատահեալ ինձ, թէ ո՞ւր փութան արքն այնորիկ ընթանալով: Իսկ նա պատասխանեալ ասէ ցիս. յԵրուսաղէմ ելանեն ամենեքեան յաղագս բարձրութեան և պատուականին խաչին, որ յետ սակաւ աւուրց էր լինելոց: Եւ ես ասեմ ցնա. առնուցո՞ւն արդեօք զիս ընդ ինքեանս, եթէ կամեցայց անդ հետևել: Իսկ նա ասէ. եթէ ունիս զինս նաւուն և զպէտս կերակրոյ քո, ոչ ոք է որ արգելու զքեզ: Եւ ես ասեմ ցնա. եղբայր, նաւուղ զինս և կերակուր ոչ ունիմ, բայց գամ և ես և մտանեմ 'ի նաւ, զոր ունիմն և վարձ տալ և կերակրել զիս թէ և ոչ կամիցին. քանզի մարմին ունիմ, և զայս փոխանակ գնոյ առնուցուն: Եւ վասն այնորիկ երթայի, Հայր իմ, թողութի արա ինձ վասն տեառն, զի ունիցիմ բազում բազում գործօնեայս առ 'ի պատրաստութիւն ախտի իմոյ: Աբբա Զոսիմէ, մի Հարկաւորել զիս ասել զամօթ իմ, քանզի սոսկամ զիտէ տէր՝ պղծելով զքեզ և զօդդ բանիւք իմովք:

Իսկ Զոսիմաս արտասուօք թանալով զգետինն՝ առ նա պատասխանեաց. ասա վասն տեառն, մայր իմ, ասա, մի՛ կտրեր զկարգ այդպիսի շահաւոր պատմութեանց: Իսկ նորա կրկնեալ դարձեալ ըստ կարգին յաւելադրէր զայս: Լսելով ապա երիտասարդին այնմիկ զազ-

րալի իմ զբանսն՝ ծիծաղելով գնաց։ Իսկ իմ ընկեցեալ, զաղեկատն զոր ունէի 'ի ձեռս, քանզի զայն դէպ եղև ինձ բառնալ, ընթանալով 'ի ծովն անդ ուր զփութացեալսն տեսանէի ժողովեալս, և պահա տեսանեմ պատանեակս ոմանս կացեալս առ ծովեզրն՝ թուով տասն կամ աւելի, գեղեցիկս մարմնով միանգամայն և շարժմամբ. և կարևորս ինչ երևեալս առ 'ի խնդրելյն, որպէս նմանեալ է, և այլոց նաւակցացն մնայլն. քանզի էին այլք յառաջագոյնք երթեալ 'ի նաւն։ Պատկառաբար և ես այնպէս, որպէս սովորութիւն իմ, 'ի մէջ նոցա վազեալ՝ առէք, ասեմ, և զիս, ուր և երթայք. քանզի ոչ ունիմ տանել զձեզ անհաճոյ, և դարձեալ այլ ևս ասել բանս ծաղրականս՝ շարժեցից զամենեսեան 'ի ծաղր։ Իսկ նոցա յանպատկառութիւնն զիս տեսանելով, առեալ հանին զիս յոր ունէին նաւ պատրաստական, և անդուստ սկսան գնալ։

Իսկ զանդ իրսն ապա քեզ զկարգ պատմեցից, ով մարդ. կամ ո՞ր լեզու ճառիցէ կամ լսելիք ընկալցին զոր 'ի նաւին և ըստ ճանապարհին եղեալսն, որպէս զի թէ ոչ կամէին՝ հարկաւորէի զթշուառականսն։ Այլ չէ տեսակ պղծագործութեան ճառից և անճառելեաց, որ ոչ եղէ թշուառականացն վարդապետ ես։ Այլ այժմ հաւատա, քանզի հիանամ թէ ո՞րպէս եբարձ ծովն զանտանելութիւնսն. ո՞րպէս ոչ եբաց երկիր զբերան իւր և իջոյց կենդանւոյն 'ի դժոխս զայլքան անձանց ոտագայթ։ Այլ որպէս նմանեալ է, ա՛ծ զինն խնդրէր զապաշխարութի. վասն զի ոչ կամի զմահ մեղաւորին, այլ մնայ երկայնմտելով՝ դարձին մերոյ ակն ունել։ Նոյնպէս և այսպիսով ապա փութով ելաք յԵրուսաղէմ. և որչափ աւուրս նախ քան զտօն 'ի քաղաքին արարաք, նմանօքն վարեցայ, մանաւանդ թէ ևս վատագունիւք։ Քանզի ոչ միայն նոքօք բաւականացայ երիտասարդօքն զորս 'ի ծով ունէի և 'ի ճանապարհին սպասաւորս ինձ, այլ բազումս և զայլս պղծեցի 'ի քաղաքացեացն, միանգամայն և օտարս 'ի նոյն հաւաքելով։

Իսկ յորժամ եկն եհաս տօն պատուական խաչին բարձրութեան, ես ապա որպէս յառաջինն էի զանձինս [1]

1 Ցօրինակին զանձինն որ հակառակացն տրամով։

երիտասարդացն որսալով, տեսի ահա 'ի խորին առաւօ-
տին զբոլոր զեկեղեցին զոյգ ընթացեալս. և գնացի և
ես ընթանալով ընդ նոսա, և եկաք 'ի մէջ գաւթին տա-
ճարին: Եւ յորժամ եհաս աստուածային խաչին 'ի բար-
ձրութեան ժամ, մղէի և յայլոցն ես մղեալ լինէի բռ-
նադատեալ զմտանել 'ի ներքս գոլ ընդ բազմութեան փու-
թացեալ, և մինչև ցդուռն 'ի ձեռն որոյ այնուհետև առ
'ի նոյն լինէր տաճարն որ հասանէր, յորում կենդանա-
բար փայտն ցուցանիւր, հանդերձ բազում ջանիւ և նե-
ղութեամբ առմերձենալով Թշուառականս: Իսկ յորժամ
զսեամս դրանն կոխեցի, այլքն ամենեքեան անարգելա-
բար մտանէին. իսկ զիս ա̃ծեան իմն զօրութի̃ արգելոյր, ոչ
թողացուցեալ զմտանն. քանզի իսկ և իսկ ընդդիմամղեալ
լինէի և 'ի բաց առաքեալ և կալով 'ի մէջ գաւթին:
Կարծելով առ 'ի կանանցեկան տկարութե̃ այն ինչ դի-
պեալ, դարձեալ և այլ զիս աշխատէի ընդունայն յայլս
խառնել, և ջանայի զհարդ և ուս եդեալ զիս ինքն 'ի
ներքս մղելով՝ աշխատելով 'ի սնոտիս: Քանզի իսկ և
իսկ յորժամ զսեամն դրանն կոխէի Թշուառականս, զայլս
ահա զամենեսեան մտեալս տեսանէի՝ ոչ ուրեք խափա-
նելով, իսկ զիս միայն զողորմելիս ոչ ընկալաւ: Նոյն
զօր օրինակ զինուորական բազմութիւն կարգեալ յայս
առ 'ի զիմն խափանել զմուտսն, այսպէս զիս յանկար-
ծակի արգելոյր զօրութի̃, և դարձեալ առ 'ի միջոյ գաւ-
թին առաքէր: Եւ զայսոսիկ ապա երիցս և չորիցս ան-
գամ մղեալ, աշխատեալ այնուհետև յոյժ, ոչ ևս ըն-
դունայն ընդդիմամղել կարացեալ, քանզի մարմին իմ
եղև առ 'ի սաստիկ բռնութե̃ն կոտորեալ, յորմէ սպա-
դարեալ 'ի բաց գնացի, և կացեալ ուրեմն յանկեան
գաւթի տաճարին, և հազիւ ուրեմն զգացեալ եղէ պատ-
ճառանաց արգելման իմոյ տեսանել զկենարար փայտն:
Քանզի մերձեցաւ յաչս սրտի իմոյ խորհուրդ փրկութե̃
ցուցանել ինձ, եթէ տիղմն գործոցն էր որ փակէր ինձ
զմուտսն: Սկսայ այնուհետև լալ և ողբալ և զկուրծս
բախել, հեծութի̃ս առ 'ի խորոց սրտի վերառաքելով:
Եւ տեսի ապա 'ի տեղւոջն յորում կայի, 'ի վերոյ իմ
զպատկեր ամենասրբուհւոյ և անարատ կուսին Մարիա-
մու ա̃ծածնի կացեալ, և ասեմ ցնա անսայթաքաբար
հայելով. կոյսդ տիրուհի, զա̃ծ բանն որ ըստ մարմնոյ

ծնաւք, զխօսեմ ահա որպէս զի ոչ է իրաւ և վայելուչ՝ զայսքան աղտեղիս զիս, զայսքան ամենանաաւակս զպատկերդ քո տեսանել զմիշտ կուսիդ և զանարատիդ, զմարմնոյդ քո և զհոգւոյ ունողի մաքուր և անապական. քանզի իրաւացի է զիս 'ի քումմէ մաքրութենէդ զատանել և պիղծ համարել: Նայց վասն զի, որպէս լուայ զայս, եղև ա̃ծ մարդ զոր ծնար ճշմարտապէս, որպէս զի կոչեսցէ զմեղաւորս յապաշխարութիւն. օգնեա ինձ միայնում և ոչ զոք ունողի օգնական. հրամայեա և ինձ թոյլ տալ զմուտն առ 'ի յեկեղեցին. մի զրկեր զիս առ 'ի տեսանելոյ զփայտն, յորում ըստ մարմնոյ որդին քո և ա̃ծն զոր ծնար՝ զարիւն իւր յաղագս իմ ետ փրկանս. հրամայեա և ինձ, տիրուհիդ, զդուռն բանալ ա̃ծայնոյ խաչիդ երկրպագութեան: Այլ զքեզ տամ առ 'ի քէն ծնելոյդ միջնորդ. արժանի արա հաւատալ, որպէս զի ոչ զմարմինս զայս թշնամանեցից 'ի ձեռն որ ինչ և է զազրալի խառնակութեան. և յորժամ զփայտ խաչին տեսից, յաշխարհէ և որ ինչ յաշխարհի է՝ առ 'ի բոլորից հրաժարեցից, և իսկ և իսկ ելից ուր և դու որպէս միջնորդ փրկութեան ցուցանես և առաջնորդես:

Այլ զայս ասացեալ վաղվաղակի որպէս ինչ հաւատարմութիւն ընկալեալ ըստ հաւատոց սրտի ջերմութեան, և 'ի բարեգթութիւնն ա̃յ վստահացեալ, շարժեմ զիս ինքն 'ի տեղւոյն՝ յորում կացեալ առնէի զպաղատանս, և գամ դարձեալ ընդ որս ոյք մտանէին՝ զիս ինքն խառնեմ, և ոչ ոք ևս էր որ մղէր զիս, և ոչ որ ընդդիմամղէր և արգելոյր չլինել մերձ 'ի դուռն՝ ընդ որ 'ի տաճարն մտանէին: Նաև ապա զիս սարսափումն և դողումն, և բոլոր սրտիւ խռովեալ լինէի դողայի. ապա հասանելով 'ի դուռն, որ մինչև ցայնժամ փակեալ էր ինձ ամենևին, և զօրութիւն նորա նախ քան զաւուրս ինչ արգելոյր զիս, յայնժամ ճանապարհ առնէ ինձ մուտն. և այնպէս ահա ներքս 'ի սրբութիւն սրբութեանցն մտի, և կենարար խաչին տեսութեան արժանացայ, և տեսի զա̃յ խորհուրդն, և թէ որպէս պատրաստ է առ յընդունել զապաշխարութիւն: Այլ ընկեցեալ զիս ինքնին, և զսրբոյն այնմիկ երկիր պագեալ 'ի վերայ երկրի, ընթացայ ելանել առ միջնորդողն իմ փութանակի:

Այլ եկեալ 'ի տեղին, յորում երաշխաւորութեան հաւ

տառապեցայ բանին, և խոնարհեցուցեալ ծունր առաջի ամենասուրբ անարատ և միշտ կուսի Մարիամայ ածածնին, այսպիսեօք աղօթեցեալ խօսեցայ բանիւք. դու ապա բարիասէր տիրուհիդ, որպէս առ իս ցուցեր զմարդասիրութիւն. դու զիմոյն անարժանութեան զաղաչանս ոչ համարեցար պիղծ. տեսի փառս զոր յիրաւի ոչ կարէի տեսանել անառակս. փառք Այ 'ի ձեռն քո ընդունողի զապաշխարութիւն մեղաւորաց։ Զինչ ունիմ աւելի ասել[1], բայց մեղաւոր, և խնամել և բարեբանել. ժամ[2] է առդ տիրուհիդ կատարել զերաշխաւորութիւն որով երաշխաւորեաց զուխտադրութիւն. և այժմ ուր հրամայես առաջնորդեա. այժմ լեր ինձ փրկութեան վարդապետ, դաստիարակելով ինձ 'ի ճանապարհն որ յապաշխարութիւն ածէ։

Եւ զայս տակաւին ասելով լուայ յումեմնէ 'ի հեռաստ աղաղակելով, թէ ընդ Յորդանան անցցես և գտցես ազնուական հանգիստ։ Եւ իմ ձայնին այնորիկ լսելով, և զայն վասն իմ լինել հաւատացի, արտասուելով աղաղակեցի և առ ածածինն գոչեցի՝ տիրուհի տիրուհի, տիրուհիդ մի թողուր զիս։ Եւ զայս գոչեցեալ ելի 'ի գաւթէ տաճարին և ուղղորդ գնացի։ Ելանելովն ապա իմ՝ այր ոմն տեսեալ ետ ինձ երիս փողս ասելով առ զայս, մայր իմ։ Եւ իմ զտուեալն ընկալեալ, երիս հացս գնեցի նոքօք, և զայնոսիկ առի յօրհնութեան պաշար։ Հարցի զվաճառող հացին. ո՞րպէս և ո՞ր ճանապարհ է որ հանէ 'ի Յորդանան, ով այր դու։ Եւ ուսեալ զդրուն քաղաքին որ առ յայն կողմն հանէր, ելի և ընթանալով և զճանապարհորդութիւն առնէի արտասուելով։

Եւ այնպէս ուղղաւորեալ հարցմամբ, յորմէ հետէ երկրպագեցի խաչին սուրբ, հասի ապա որպէս համարիմ 'ի մուտ արեգականն 'ի տաճար սրբոյն Յովհաննու մկրտչին, որ կայ մերձ 'ի Յորդանան։ Եւ նախ 'ի տաճարին երկրպագեալ իջի վաղվաղակի 'ի Յորդանան, և զերեսս և զձեռս 'ի սուրբ ջրոյն այն թացեալ՝ հաղորդեցայ անարատ և կենարար և սուրբ խորհրդոյն 'ի տաճարի կարապետին. և զկէս միոյ առ 'ի հացիցն կերայ, 'ի ջրոյն Յորդանանու արբեալ, 'ի վերայ երկրի 'ի գիշերի

1 Լոփ. ասել մեղաւորս։ 2 Յօրինակին յարժամ տիրուհիդ։

զիս ինքն տարածեցի ։ Ի վաղիւն գտեալ փոքրիկ նաւակ՝ անցի 'ի միւս կողմն, և դարձեալ խնդրեալ զառաջնորդն առաջնորդել ինձ, ուր և նմա իցէ հաճոյ ։ Եհաս այնուհետև ընդ այսմ անապատի . և յայնմհետէ մինչև ցայս օր փախուցեալ և աստ օթիմ, ակն ունելով ա͞յ իմոյ, որ 'ի կարճմտութենէ և յանողնդապտոյտ երկրէ զառ 'ի նա դարձուցեալս ապրեցուցանէ[1] ։

Եւ Զոսիմաս ասաց առ նա . քանի՞ ամք են քո, տիրուհի, յորմէհետէ յայսմ անապատի օթիս ։ Պատասխանի ետ կինն . քառասուն և եօթն ահա, որպէս վարկանիմ, յորմէ առ 'ի սրբոյ քաղաքէն գնացի ։ Ասէ ցնա ծերն . և զի՞նչ գտանէիր կամ գտանես կերակուր, տիրուհիդ ։ Ասէ ցնա կինն . երկու և կէս հացս ունելով ընդ Յորդանան անցի, որ սակաւ սակաւ չորացեալ քարացան, և սակաւ սակաւ ուտելով կատարեցի ։ Եւ Զոսիմաս ասէ ցնա . և ո՞րպէս անաշխատ անցեր զայդքան ժամանակաց միջոցս, ոչ երբէք յանկարծակի շփոթմանց խռովեալ զքեզ ։ Պատասխանեալ կինոջն ասէ . իբր հարցեր, հայր, զորոյ զօրինակին սարսափեմ ասել . զի թէ եկից 'ի յիշատակ այնքանեաց վտանգիցն զոր կրեցի, և խորհրդոցն դժնդակագունիցն որ նեղէին զիս, երկնչիմ մի գուցէ առ 'ի յայնցանէ իսկ ընկղմեցայց ։ Ասէ ցնա ծերն . մի ինչ թողցես, տիրուհիդ իմ, զոր ոչ պատմեսցես . քանզի միանգամ 'ի յայսց զետեղեալ կարգաւ զամենայն աննուազաբար ուսո ինձ ։

Եւ նա ասէ . զտասնևեօթն զամսն ընդ այս շրջեցայ անապատ գազանօք վայրենեօք, այս է՝ անբանութեանն[2] նեղեալ ցանկութեամբք . քանզի յորժամ 'ի կերակուրս ձեռնարկէի հաղորդել, ցանկայի մսոյ և ձկանն զոր ունէր Եգիպտոս . փափագէի և գինւոյն որ էր ինձ բաղձալի, քանզի բազում գինւոյ պիտայի յորժամ յաշխարհին վարէի . իսկ աստ և ջրոյ ճաշակումն ո՛չ ունելով դժնդակս կիզեալս, և զկարիս ոչ բերելով վտանգէր զիս ։ Նաև պոռնկական ցանկութեանցն յիշատակք անբանապէս խռովեցուցեալ միշտ, և անդրէն հաւանեցուցանէր երգել զգիւական երգսն՝ զոր և ուսեալ էի ։ Նաև իսկ և իսկ արտասուելով և ձեռամբ զկուրծս հարկանելով յիշա-

1 Յօրինակին ապրեցուցեալս ։ 2 Յօրինակին անբանութեանց .

տակէի զուխտն զոր եդի նախ քան զելանելն իմ յանապատ։ Այլ լինէի խորհրդով առ պատկերի ամենածնին ընդունողի զիս, և անդ առ նմա լայի՝ հալածելով զխորհուրդս իմ խնդրելով, որ այնքան զիմ Թշուառականի անձն վտանգէին։ Այլ յանձախագոյնս արտասուէի և ըղկուրծս ՚ի զօրութէ հարկանէի, լոյս տեսանէի ամենայն ուրեք ծաւալեալ զինև, և անտուստ այնուհետև խաղաղութին զարմանալի և հեշտարար առ մերկեալ խորհրրդոյն լինէր։ Այլ զխորհուրդս որ յաղագս պոռնկութեցն մերժեալ, ո՞րպէս քեզ, հայր, պատմեցից։ Հուր ահա ՚ի ներքուստ ՚ի սրտի իմոյ տառապելութէս ցուցանէր. ընկենուի զիս յերկիր, և զգետինն արտասուօքն Թանայի. զնոյն ինքն ինձ մերձ կալ զերաշխաւորն կարծէի սպասաւորել. զոր օրինակ յանցուցեալ, և զպահանջումն յանցանացն վրէժ առնելով։ Ոչ նախկի յառնէի առ ՚ի յանկմանէ, մինչև գիշերատիւ մի դէպ լինէր զի անցանէր, մինչև լոյսն այն քաղցր զինև փայլէր։ Այլ այնպէս միշտ զաչս մնաց իմոց առ երաշխաւորն անդադարապէս վերառաքէի, խնդրելով օգնական վտանգեցելումս ըստ այսմ անապատի անդնդոց[1]. և ահա օգնական ունէի և ապաշխարութե պաշտպան։ Այլ այսպէս անցուցի զտասնևեօթն ժամանակսն զաւացատ, բիւր վտանգիւք պաշարեալ. և յայնմհետէ մինչև ցայսօր օգնականն իմ մերձ եկաց դաստիարակելով ինձ։

Իսկ ծերն ասէ ցնա. ո՞չ ապա կարօտացար կերակրոց կամ զգեստու։ Այլ նա ասէ. զհացկունս ապա զայնոսիկ՝ որ ասացի, ծախեալ՝ զտասնևեօթն ամն կերակրեցայ բանջարովք ըստ անապատիս այսորիկ. իսկ հանդերձն զոր ունէի, անցեալ ընդ Յորդանան, պատառոտեալ ծախեցաւ։ Յոլով առ ՚ի սառամանեացն և դարձեալ յարեգակնային տապոյ խորշակի կրեցի վտանգս, կիզեալ արեգակնային ջերմութե խորշակաւ, և սառամանեօք ցրտոյն դողացեալ, որպէս զի բազում անգամ անկեալ ՚ի գետին անշունչ մնալ՝ փոքր ինչ նուազ և անշարժ. բազում անգամ և զանազան վշտօք և փորձութեամբք և խորհրդովք անիմանալեօք ըմբռնեալ։ Այլ յայնմհետէ զօրութիւն այ բազմօրինակաւ զմեղաւորս

1 Յօրինակին անընդոց։

զիմ անձն և զմարմին տառապեալ պաշտպանեաց։ Սասն զի զմտաւ ածելով՝ թէ յորպիսւոյ չարէ փրկեաց զիս տէր, կերակուր անծախելի ունիմ զայսոյն փրկութեան իմոյ. քանզի կերակրիմ և հանգչիմ բանիւ այ որ կառավարէն զամենայնսն. զի ոչ հացիւ միայն կեցցէ մարդ, և ոչ ունելով զգեստ՝ վիմաւ վէմ ապա զգեցեալ՝ որչափ որք զմեղացն զգեցան՝ զմերարկուս։

Լուեալ ապա Զոսիմաս զի 'ի վկայութենց գրաւորականաց յիշատակեաց առ 'ի Մովսիսէ և Յովբայ և 'ի գրոց սաղմոսաց, ասէ ցնա. սաղմոսաց կամ այլոց գրոց հանդիպեցա՞ր։ Իսկ նորա զայս լուեալ՝ ժպտեցաւ և ասէ ցծերն. հաւատա, ով մարդ, ոչ տեսի այլ մարդ յորմէհետէ ընդ Յորդանան անցի, բայց միայն զքո երեսս այսօր. այլ և ոչ գազան կամ այլ ինչ տեսակ կենդանւոյ, յորմէհետէ զայս տեսի անապատ։ Գիր ապա ոչ ուսայ ուրեք, այլ և ոչ սաղմոսելոյ կամ ընթեռնլոյ ուրեք լուայ. այլ բանն այ կենդանի է և ներգործող, նա է որ ուսուցանէ մարդկան զգիտութի։ Այլ զոր օրինակ առաջի սկսեալ պատմութեանս, և այժմ երդմնեցուցանեմ զքեզ ըստ այ բանին մարմնաւորութեան, աղօթել յաղագս իմոյ անառակութեան վասն տեառն։

Զայսոսիկ ասացեալ նորա և զխորհուրդն մինչև ցայս վայր բովանդակեալ, յարձակեցաւ ծերն երկրպագեալ և աղաղակեաց արտասուօք բարեբանելով, որ ածնէ զմեծամեծս և սքանչելիս փառաւորեալս և զհրաշակերտս որոց ոչ է թիւ. օրհնեալ է ած, որչափ շնորհէ երկիւղածաց իւրոց. քանզի ստուգապէս և արդարև ոչ թողեր որք խնդրեն զքեզ, տէր։ Իսկ նորա հասեալ 'ի ծերն՝ ոչ ետ նմա իսպառ երկրպագել, այլ ասէ ցնա. զայս ամենայն զոր լուար, ով մարդ, երդմնեցուցանեմ զքեզ 'ի փրկիչն մեր Քս ած՝ մի ումեք ճառել մինչև ած առ 'ի յերկրէս արձակեսցէ զիս։ Իսկ այժմ ունելով երթ խաղաղութբ. և դարձեալ 'ի տարի որ գալոցն է, տեսցես զիս և երևեսցիս այն պահպանեալ շնորհօքն։ Արդ ապա վասն տեառն զոր այժմ պատուիրեմ քեզ. 'ի պահս վենեմականս հանդերձեալ տարւոյ մի անցցես ընդ Յորդանան, զոր օրինակ սովորութի ունիք առնել 'ի վանսն։

Հիացեալ լինէր ապա ծերն, զի և զկանոնս վանացն

1 Լոփին մերկացան։

պատմեաց, և այլ ոչ ինչ ծերն ասէր, բայց միայն՝ փառք քեզ ա̃ծ, որ զմեծամեծս շնորհես սիրողաց զքեզ։ Իսկ նա ասաց ցնա. կաց, աբբայ, այսուհետև 'ի վանսն, քանզի և կամելով քո ելանել՝ ոչ եղիցի չինել։ Եւ սուրբ երեկորի ընթրեայն խորհրդականաց, առ ինձ զկենդանարար մարմինն և զպատուական արիւնն 'ի յաման վսեմական և որ ինչ այսպիսւոյ խորհրդոյ արժանաւոր, բեր և մնա ինձ 'ի կողմն Յորդանանու՝ որ մերձ է յերկիրն, որպէս զի եկեալ իմ հաղորդեցայց կենարար պատարագացն. քանզի յորմէհետէ 'ի տաճարի կարապետին հաղորդեցայ նախ քան զանցանելն իմ ընդ Յորդանան, ոչ ես մինչև ցայժմ սրբութեան այնորիկ հաղորդեցայ. և այժմ բաղձամ անարգել փափագմամբ։ Վասն որոյ աղաչեմ մի անտունկնդիր լինել խնդրոյս, այլ ամենայն իրօք ածել ինձ զայնպիսի կենարար և ա̃ծային խորհուրդ՝ ըստ որում ժամու և տէրն զաշակերտսն ա̃ծեան ընթրեացն հաղորդս արար։ Եւ հօրն Յովհաննու վանական վանացն, յորում բնակեցեր, զայս ասա. զգոյշ լեր, եղբայր, քեզ ինքեան և հօտիդ քում, քանզի իրք ինչ կատարին պէտս ինչ ունել ուղղութե̃. բայց այժմ ոչ կամիմ քեզ ասել նմա, այլ յորժամ տէր հրամայեսցէ։ Զայսոսիկ ասելով[1], և աղօթեա 'ի վերայ իմ՝ առ ծերն բարբառեալ, և իսկ և իսկ գնաց 'ի խոր անապատին։

Իսկ Զոսիմայ խոնարհեցուցեալ ծունր և երկրպագեալ զետեղոյն ուր կային հետք ոտիցն նորա, տուեալ փառս ա̃յ գոհանալով, դարձեալ ցնծացեալ յոյժ հոգւով և մարմնով, փառաւորելով և բարեբանելով զտէր ա̃ծ։ Իսկ ապա անցեալ ընդ անապատն ընդ այն և հասեալ 'ի վանսն, ըստ որում դառնալ սովոր էին մենազոնքն տեղւոյն։ Եւ ապա զտարին զայն լռեալ դադարեաց, ոչ ումեք իշխեցեալ պատմել և ոչ յորոց ետես. իսկ առանձինն զա̃ծ աղաչէր ցուցանել նմա զփափագելին երեսս։ Տրտմէր և դժուարանայր՝ զտարւոյն զմտաւ ածելով զանցանելն[2], մի օր[3] կամելով զտարւոյն լինել թէ հնար էր։

Իսկ յորժամ եկն եհաս սուրբ պահոցն սկիզբն, այս

1 Օրինակին ասել և աղօթեալ։
2 Լոփինն զյերկարելն։
3 Օրինակին պակասէր օր։

է առաջին կիւրակէն, վաղվաղակի յետ սովորական աղօթիցն այլքն ամենեքեան ելին սաղմոսելով. իսկ զնա հանդարտութի[1] ջերմութեանն կալաւ, և մնաց անդէն հարկաւորեցաւ: Յիշեաց ապա Զոսիմաս զբանսն զասացեալսն, զի թէ և կամեսցիս ելանել 'ի վանացն՝ ոչ եղիցի. Սակաւ ինչ աւուրք անցին, և 'ի հիւանդութենէն յարուցեալ 'ի վանսն եկաց: Իսկ յորժամ միանձունքն դարձեալ եկին, և մերձեցաւ մեծի աւուրն երեկոյ ընթրեացն խորհրդականացն, արար ծերն զհրամայեալն նմա. և առեալ 'ի փոքր բաժակ յանարատ մարմնոյն և 'ի պատուական արենէն Քրիստոսի մերոյ, արկ և յաման ինչ սակաւ չորաթուզ և արմաւ և ոսպն սակաւ թրջեալ ջրով, և եկն յանագանս երեկոյի և նստի յեզրն Յորդանանու, սրբոյն մնալով գալստեան: Եւ[2] ժամանելով ապա կնոջն մեծի, Զոսիմաս ապա ոչ ննջեաց, այլ անդրօս հայէր յանապատն՝ մնալով տեսանել որում ցանկայրն: Եւ ասէր առանձինն ծերն նստելով. մի արդեօք անարժանութիւս իմ արգելու զնա 'ի գալոյ. մի արդեօք եկն և ոչ գտանելով զիս՝ իսկոյն 'ի բաց գնաց: Զայսոսիկ ասէր և արտասուելով հեծէր, և զաչս յերկինս համբարձեալ զԱծ աղաչէր ասելով. մի զրկեր զիս, Տէր, 'ի սրբոյն և դարձեալ տեսանել՝ զոր տեսանելն ետուր թոյլ. մի գնացից ունայն՝ զիմս գնացից բերելով զմեղառ 'ի յանդիմանելով զիս:

Եւ զայս հանդերձ արտասուօք աղաչելով՝ իսկ և իսկ 'ի խորհուրդ անկեալ լինէր, քանզի ասէր յինքեան. զինչ թերևս եկեացէ լինիցի. զի[3] նաւու ոչ է մուտ, որպէս արդեօք ընդ Յորդանան անցցէ և առ իս անարժանս եկեացէ. վայ ինձ որ զիս յայնպիսւոյ վայելուչ գեղոյն զրկեաց: Զայսոսիկ խորհելով ծերոյն, և ահա սուրբն այս եկն: Եւ Զոսիմայ յարուցեալ ուրախացեալ անպատմելի խնդութե, գոհանալով և փառաւորելով զԱծ. և դարձեալ խորհուրդք՝ զոչն կարել նմա անցանել ընդ Յորդանան՝ մարտնչէր: Տեսանէ զնա խաչիւն Քրիստոսի զՅորդանան կնքեալ. քանզի, որպէս ասաց, բոլորալուսինն[4] գիշեր հանդիպիւր, և միանգամայն ընդ

1 Լոփինն հիւանդութիւն:
2 Յօրինակին պակասէր Ուշ. սր. Յապաղելով կամ Անապանելով:
3 Յօրինակին զինու ոչ նմուտ:
4 Յօրինակին բոլորալուսինն:

կնքելն ելեալ 'ի վերայ ջրոյն՝ գնալով եկն առ ծերն: Եւ ծերոյն կամեցեալ երկրպագել, արգել՝ զինչ առնես, աբբայ, քահանայ գոլով և բառնալով զա̄ծեան զխորհուրդ: Իսկ նորա առ նա ասացեալն պատասխանեալ ասաց. փառք ա̄յ տուողին զայսպիսի զշնորհս փառաւորչաց իւրոց: Իսկ յորժամ եհանց 'ի վերայ ջրոյն, ասաց առ ծերն. օրհնեա հայր, օրհնեա հայր: Իսկ նա պատասխանեաց դողալով, քանզի սարսափումն զնա ունէր 'ի վերայ հրաշափառ տեսութեանն. ստուգապէս անսուտ է ա̄ծ, որոյ խոստացեալ նմանել ա̄յ, որքան հասանելի է ցոյց ոմանց զինքեանս մաքրեալս. փառք քեզ, որ ոչ 'ի բացէ արարեր զաղօթս իմ և ոչ զողորմութի՛ որ 'ի ծառայէ քումմէ. փառք քեզ, Ք̄ս ա̄ծ մեր, որ ցուցեր ինձ երկիցս այսու աղախնաւ քով՝ թէ որչափ հեռի եմ 'ի չափոյ կատարելութեան:

Եւ զայս ասելով, կինն խնդրեաց զսուրբ Հաւատն, և ասա զՀայր մեր որ 'ի յերկինս ես: Եւ այսոցիկ եղելոց և աղօթիցն կատարման՝ ըստ սովորութեանն եդ սէր 'ի բերան ծերոյն, և նոյնպէս հաղորդեցաւ կենարար խորհրդոյն: Եւ իբրև հաղորդեցաւ՝ համբարձեալ զձեռս յերկինս, հեծեաց և արտասուօք գոչեաց այսպէս. այժմ արձակեա զաղախին քո, տէր, ըստ բանի քում 'ի խաղաղութի, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո: Յայնժամ ասաց առ ծերն. թողութի արա, հայր, և զմիւս եւս ցանկութիւն իմ կատարեա: Այժմ ապա երթ 'ի վանսն ա̄ծեան խաղաղութեամբ. իսկ 'ի տարի մի որ գալոց է, եկ դարձեալ 'ի նոյն հովիտս՝ ուր քեզ զառաջինն հանդիպեցայ. եկ ամենայն իրօք վասն տեառն, և դարձեալ տեսցես զիս որպէս հաճոյ է տեառն: Իսկ ծերն առ նա պատասխանեաց. երանի թէ էր կարելի՝ աստ իսկ հետևել քեզ, և տեսեալ յարաժամ զքո պատուական երեսդ. այլ արա վասն տեառն զիմ զխնդրուածս ծերոյս մեղաւորի, և սակաւ ինչ կերակուր յորոց բերի ես այսր՝ հաղորդեաց: Եւ զայս ասելով ցուցանէ նմա զամենայն զոր ունէր: Իսկ նորա մատանցն ծայրիւ յոսպն մերձեցեալ և առեալ սակաւ հատս ինքեան՝ մատոյց բերանոյ, բաւական ասելով շնորհս հո-

1 Յօրինակին կատարելի:

գուոյն սրբոյ, որպէս զի պահեալ զանձն սրբոյն անարատ։ Եւ զայս ասելով դարձեալ առաց ցծերն. աղօթեա վասն իմ առ տէր, աղօթեա և զիմ թշուառութիւնս յարաժամ յիշեա 'ի տէր։ Իսկ նորա բուռն հարեալ զոտից սրբոյն՝ աղօթել յաղագս սրբոյ եկեղեցւոյ և թագաւորութե՛ և ինքեան խնդրեալ արտասուօք, գնաց հեծեծմամբ ողբալով։ Եւ այնուհետև ապա ոչ իշխէր ունել զանըմբռնելին։ Իսկ նորա դարձեալ 'ի Յորդանան, կընքեալ ել 'ի վերայ ջրոյն, և գնալով անց զոր օրինակ զառաջինն։ Իսկ ծերոյն երկրպագեալ հետոց ոտից նորա՝ դարձաւ ուրախութեամբ և յոյժ երկիւղիւ ըմբռնեալ, տագտանելով զինքն, զի զանուն սրբոյն ոչ խնդրեաց ուսանել. համայն և այսմ յուսայ հանդիպել 'ի տարի՝ որ գալոցն էր ըստ բանի սրբոյն։

Իսկ տարւոյն մերձ գոլով դարձեալ հասանէ յանապատն. զամենայն կատարեալ ըստ սովորութեն, ընթացեալ 'ի հրաշափառն այն տեսակ։ Եւ հասեալ 'ի նշան ինչ որ ցուցանէր զխնդրելի տեղւոյն զգիւտն, յաջմէ հայէր և յահեկէ, յածէր յամենայն ուրեք հայեցուածովք որպէս և քաջ որսորդ, որ զքաղցրին զայն ըմբռնեսցէ վորս։ Եւ իբրև ոչ զոք ետես շարժեալ ուստեք, սկսաւ արտասուել։ Եւ համբարձեալ 'ի վեր զաչս արտասուելով ասէ. տէր, ցոյց ինձ զգանձն քո զանկողոպտելի, զոր յայսմ թաքուցեր յանապատի. ցոյց ինձ, տէր, զառ 'ի մարմնի հրեշտակն, որում ոչ է աշխարհս արժանի։ Եւ զայս ասելով եհաս 'ի տեղին[1] հովտաձև օրինակեալ, և կացեալ 'ի վերայ նորա ետես՝ առ 'ի կողմանն արևելից անկեալ զմարմին սրբոյն և ձեռնամածեալ ըստ օրինի յարևելս հայելով եդեալ ձևով։ Իսկ նա ընթացեալ զոտս սրբոյն լուանայր արտասուօք, քանզի ոչ[2] իշխեաց յայլ ոք անդամ մարմնոյն մերձենալ։ Արտասուեաց յայնժամ բաւականապէս, սաղմոսելով ընդ ժամանակին և զիրացն պատշաճ արար աղօթս 'ի թաղումն, և ասէր յինքեան. թաղելով արդեօք պատշաճ իցէ զնշխարս սրբոյն, գուցէ անհաճոյ եղեալ և այս երանե-

1 Յօր. այսպէս եհաս 'ի տեղին ձև օրինակեալ, և կացեալ 'ի վերայ նորա ետես առ 'ի կողման արևելից յարևելս հայելով եդեալ ձևով։

2 Յօրինակին ոչ իշխեցեալ զոք անդամ մարմնոյն։

ւոյս։ Եւ զայս ասացեալ տեսանէ 'ի մնարից կողմանէ գրեալ 'ի վերայ երկրին այսպէս. Թաղեա, հայր Զոսիմաս, յայսմ տեղւոջ զտառապեալ Մարիամու զնշխարս, և տուր հողոյ զհողս, յաղագս իմ յարաժամ աղօթելով։ Եւ կատարեցաւ Մարիամ յամսեանն փարմութի ըստ եգիպտացւոց, որ է ըստ Հռովմի ապրիլի, 'ի նմին գիշերի չարչարանացն փրկչին մերոյ յետ ածայնոյ և խորհրդական ընթրեացն հաղորդութեան։

Զայսուիկ ապա ընթերցեալ ծերոյն գիր՝ ուրախացաւ, զի ուսաւ զանուն սրբոյն և ծանեաւ՝ թէ յորժամ ածայնոյն հաղորդեցաւ խորհրդոյն 'ի Յորդանան, իսկ և իսկ 'ի տեղին հասեալ կատարեցաւ 'ի տէր. քանզի զոր ճանապարհն քսան աւուր աշխատեցաւ Զոսիմա, զայն մի ժամ Մարիամ ընթացեալ թևօք հոգւոյն սրբոյ·եհաս վաղվաղակի, և իսկ և իսկ առ ած 'ի վեր ճանապարհորդեաց։

Փառաւորելով զտէր՝ ծերոյն, և թանալով արտասուելով զմարմինն, արտասուօք ասաց. տառապեալ Զոսիմաս, ժամ է զհրամայեալսն կատարել. բայց զինչ արասցես, ով թշուառական, բրիչ 'ի ձեռին ոչ բերելով ամենևին։ Եւ զայս ասացեալ ետես 'ի կողմանէ բացագոյն փայտ մինչ փոքրիկ ընկեցեալ ըստ անապատին. զոր առեալ սկսաւ բրել։ Եւ չոր գոլով երկրին՝ ոչ ուստեք էր տեղի. աշխատեալ ծերոյն և յոյժ վաստակեալ, քրտանցն հոսելով և ոչ կարելով առնել, սկսաւ հեծել առ խորոց սրտին։ Եւ 'ի վեր հայեցեալ տեսանէ առիւծ մի մեծ մերձ առ նշխարս սրբուհւոյն կացեալ, և զհետս կողմանն[1] նորա լիզելով. և ծերոյն տեսեալ սակացաւ 'ի գազանէն երկուցեալ, մանաւանդ յիշելով զբանն Մարիամու ասելով՝ թէ ոչ երբէք գազան տեսի։ Եւ նշանաւ խաչին կնքեալ՝ հաւատաց անվնաս պահիլ 'ի նմանէ 'ի զօրութենէն Քի։ Իսկ առիւծն սկսաւ մերձենալ առ ծերն, նշանակելով հեզագոյն շարժմամբ զխաղաղութին։ Եւ Զոսիմաս ասաց ցառիւծն, վասն զի տիրուհին հրամայեաց նորին գազանին զինքն թաղել զնշխարսն. զի ես ծեր եմ և ոչ կարեմ առնել զխորածն. քանզի և ոչ գործի ունիմ զպատշաճ իրացն

1 Այդպէս յօրինակին։

գործոցն պիտոյից, և այնքան դարձեալ ոչ զօրեմ առնել բացատ, որպէս զի բերել զպատշաճ իւրաց գործոյն․ արա ապա և դուք պէտս մնգլամբքդ, որպէս զի տացուք երկրի զսրբուհւոյն նշխարս։ Այլ իսկ և իսկ առաջին ոտիւքն առիւծն արարեալ զփորածն, որչափ եղև բաւական ծածկել Թաղմամբ զմարմինն։ Դարձեալ ապա զսրբուհւոյն զոտս լուացեալ ծերոյն արտասուօք, յոյժ մաղթեալ այժմ առաւել աղօթել յաղագս բալորից, ծածկեաց զմարմինն երկրաւ՝ մերձ կալով առիւծուն, մերկ Թաղելով որգունակ և զառաջինն էր, և ոչ ինչ այլ ունելով¹, բայց միայն զայն պատառատուն հանդերձիկն՝ զոր իսկ էր ընկեցեալ 'ի վերայ նորա զառաջեան ծածկելով զմասն ինչ մարմնոյն Մարիամու։

Յայնժամ այնուհետև մեկնին իւրաքանչիւր ոք․ ուստի առիւծն 'ի ներքսագոյն անապատն որոշեցաւ որպէս ոչխար, իսկ ծերն դարձաւ օրհնելով և բարեբանելով զտէր մեծ մեր։ Որոյ եկեալ դարձեալ 'ի վանսն՝ զամենայնն մենոզոնացն պատմեաց կարգաւ, ոչ ինչ Թաքուցեալ յորոց լուաւն և յորոց ետեսն, 'ի սկզբանէ առ սակ սակ պատմէ զամենայն․ որպէս զի ամենեցուն լսելով զմեծամեծս այ՝ հիանալ և երկիւղիւ կատարել զյիշատակ սրբուհւոյն։ Այլ Յովհաննէս վանականն եգիտ զոմանս 'ի վանսն պէտս ունելով ուղղութեան, որպէս զի և ոչ զայս սրբուհւոյն զբանս լինել դատարկս։ Ախձանեցաւ և երանելին Զոսիմաս յայն վանս, հասեալ 'ի հարիւր ամս։

Այլ մնայլին մենոզոնքն ըստ փոխորդութեան ժառանգաւորապէս զայս ուսուցանելով, և հասարակ առաջի դնելով կամեցողաց․ բայց գրաւորապէս ոչ ուրեք լուայ աւանդեալ մինչև ցայսօր զպատմութիւնս։ Իսկ ես զոր էր պէտս անկաւորաբար² ընկալայ, զնոյն գրաւորապէս զեկուցի։ Թերևս և այլք զվարս սրբուհւոյն գրաւորականեցին ամենայն իրօք վայելչականագոյնք քան զիմ և բարձրագոյնք, Թէպէտ և այսպիսի ինչ յիս գիտուԹիւն ոչ եհաս․ սակայն և այ ըստ զօրութեան զայս գրեցի զպատմութի, ոչ ինչ քան զճշմարտութիւն նախապա-

1 Յօրինակին պակասէր և ոչ ինչ այլ ունելով։ գրաւորաբար․ լաւ․ Իսկ ես զոր անգիր ընկալայ։

2 Այտդէս յօրինակին, Ներսես ան.

տուեալ[1] ։ Նա է ա՛ծ որ առնէ զմեծամեծս և զսքանչելիս, հատուցանելոյ արդար ապաւինելոցն[2] առ նա, տացէ վարձս օգտի որոց հանդիպլեն այսորիկ պատմութեանս այնմ որ զմերձակայս պատմութիւս գրով աւանդել հրամայեաց․ զի և մասինն զնոսա արժանաւորեսցէ կամաց և կարգաց երանելւոյն Մարիամու յաղագս սրբոյն պատմութեան, և բոլոր որոց 'ի սկզբանէ յաւիտենից հաճեցելոց նմա 'ի ձեռն հայցուածոց 'ի Ք՛ս Յ՛ս 'ի տէր մեր․ որում փառք յաւիտեանս․ ամէն։

1՛ Յօրինակին նախ զպատուէրեալ․ լտփ․ յաւելեալ։

2 Ի խմբագրութեան օրինակին հաջորդ են եւ ապաւինեալ ք . . . ա վարձս օգտի որոց հանդիպեալքն այսորիկ պատմութեանս որ զմերձակայս պատմութիւնս գրով աւանդել հրամայեցայ։

# ՄՆԱՑՈՐԴՔ

## յերկրորդ թարգմանութեան

---

### ՎԱՐՔ

### ԵՒԱԳՐԵԱՑ ԵՐԱՆԵԼՒՈՅ

Ի ԲԱԶՈՒՄ իրս, ով սիրելիք, կարի յոյժ զարմանալի և հռչակաւոր երևեալ վարուք հաւատարիմ ծառայն ա̃յ Եւագրիոս, այր վարժ ամենայնիւ ըստ նմանութեան առաքելոցն և մարգարէիցն, ծաղկեալ պտղաւորէ բոլոր մասամբք առաքինութեան 'ի փառս ամենասուրբ երրորդութեն : Ըստ որում արժանաւորապէս ոչ կարացեալ ասել, սակաւուք հարկաւորեցայ ասել 'ի շինութիւն այնոցիկ որք ընթեռնուցուն և յօգուտ արագախորժակ լսողաց : Սա վերստին կարգեալ 'ի ձեռն հոգւոյն սրբոյ՝ եթէ որպէս 'ի հեռաւոր տեղիսն եհաս [illegible]ռեբոնի, և մեծաւ ձգնութեամբ արժանաւոր երկնից բարութեանցն գտաւ : Սա վախճանեցաւ ամաց յիսուն և չորից յանապատս կրօնաւորեալ, բովանդակ ըստ գրեցելումն սպանանելով զանդամս երկրաւորս . Ջերմեռանդն հաւատով բարձեալ զխաչն Քնի ոչ սակաւ ժամանակս, մեծաց շնորհաց եհաս երանելին :

Սա էր յազգէ պոնտացի 'ի քաղաքէ Իբերիա, որդի երիցու ումն բարեպաշտի, գրակարդաց սրբոյն Բարսղի եպիսկոպոսի կեսարացւոց, երևելի ամենեցուն յաղագս լուսաւոր իմաստից նորա : Յորժամ վախճանեցաւ երանելին Բարսեղիոս, իմաստուն և անախտական սուրբ եպիսկոպոսն Նազիանզացւոց Գրիգորիոս հայեցեալ ընդ

նորա ամենաշնորհ աջողութիւն ձեռնադրէ զնա գլխաւոր սարկաւագաց։ Յայնմ ժամանակի եղև ժողով մեծ 'ի սինհոդոսն Կոստանդինու քաղաքին. և հասեալ երանելիքն անդր, Թողու զԵւագրիոս առ սրբոյն Նեկտարեայ եպիսկոպոսի։

Եւ մինչդեռ յաստիս երիտասարդութեանն հանդիսանայր ընդդէմ ամենայն աղանդոյն արիանոսացն, աստուածազգեստ զուարճացեալ պատուարէր 'ի մեծի քաղաքի պաղատանն՝ բանիւք յաղթահարեալ զհերձուածողսն, և ոչ կարէին զդէմ ունել իմաստութեն և հոգւոյն որով խօսէր, և մեծապայծառ պատուեալ 'ի քաղաքացեացն, բարիատեացն սատանայ և նախանձոտն արկանէ զնա 'ի ցանկութի փորձութե կնոջ ումեմն, որպէս և ինքն պատմեաց մեզ։ Եւ յետ ոչ բազում աւուրց սակաւ մի հանդիստ գտեալ խորհրդոցն, դարձեալ պատահումն եղև նմին կնոջ որ էր յազգէ մեծաց և գեղեցիկ յոյժ։ Իսկ Եւագրիոս յա̅յ երկնչելով և 'ի մարդկանէ պատկառելով, առաջի աչաց ունելով զամօթն յաւիտենից և զտանջանսն անվախճանս, և յաղօթս եկաց առ ա̅ծ աղաչելով զի խափանեսցի անհնարին պատերազմ կնոջն, և ոչ կարէր։ Եւ զի յոյժ նեղէր զնա կինն տրփանօք ցանկութեն և ազգի ազգի իրօք, սիրով և սպասաւորելով, և որպէս կապանօք կապեալ լինէր և ոչ կարէր գնալ։ Իսկ բարերարն ա̅ծ լուաւ աղօթից նորա և ոչ եթող զնա 'ի փորձութիւն։ Յանկարծակի եկն 'ի վերայ նորա տեսիլ հրեշտակաց նման զօրականաց, և յափշտակեն զնա և տանէին որպէս 'ի դատաստան, և անուրս երկաթիս ընդ պարանոց նորա և շղթայս յոտս և 'ի ձեռս նորա, և արկին զնա 'ի բանտ՝ ոչ յայտնելով զյանցանս նորա. բայց ինքն ունելով զխիղճ մտացն կնոջն՝ կարծելով եթէ այնորն ամբաստան եղև զնմանէն։ Եւ մինչ յայսմ վտանգի դեռ չարչարէր, ետես զամանս պարտաւորեալս որ տանջէին առաջի նորա վասն այլ իրաց, և ևս առաւել զարհուրեալ տարակուսեցաւ։ Եւ յետ այսր ամենայնի երևեալ հրեշտակին այլով կերպարանօք որ զտեսիլն երևեցուցանէր նմա, եղեալ 'ի նմանութի սիրելի և ծանօթ բարեկամի և ասէ ցնա. կապեալ այդպիսի ահագին շղթայիւք 'ի մէջ բազում վտանգից վասն էր ես արգելեալ, տէր սարկաւագ։ Ասէ ցնա Եւագրիոս.

ճշմարտիւ ասեմ 'ի Տ՜ր՜ ևթէ ոչ գիտեմ։ Ասէ ցնա հրեշտակն. և ո՞չ դուզնաքեայ ինչ կարծիս ունիս յանձին։ Ասէ Եւագրիոս. կարծեմ ևթէ այս անուն եպարքոս չարախօս եղև զինէն 'ի բանս նախանձու վիրաւորեալ, և երկնչիմ մի արդեօք կաշառեալ զիշխանն հրամայիցէ զիս տանջել։ Ասէ ցնա. Թէ լսես ինձ բարեկամի քում, ոչ է քեզ արժան 'ի քաղաքիս յայսմ բնակել։ Ասէ ցնա Եւագրիոս. միայն ա՜ծ ապրեցուսցէ զիս յայսմ փորձութէ. ապա ևթէ դարձեալ տեսանիցես զիս աստէն յայսմ քաղաքի, գիտասջիր ևթէ յիրաւի կամ 'ի տանջանս յայսոսիկ։ Ասէ ցնա հրեշտակն. ևթէ այդպէս է, բերեմ զաւետարանն և երդուիր 'ի նա ևթէ գնամ 'ի քաղաքէս. և ապրեցուցանես զանձն քո, և ես զերծուցից զքեզ յայդմ տանջանաց։ Եւ բերեալ զաւետարանն՝ երդուաւ և ասէ. մի այսօր միայն մինչև հանից զհանդերձս իմ 'ի նաւ և ոչ յամեցից աստէն ժամ մի։ Եւ նոյնժամայն զարթեաւ 'ի գիշերին 'ի տեսլենէն, և յարուցեալ զմտաւ ածէր զերդումնն որ 'ի տեսլեան գիշերոյն. և նոյնժամայն արկեալ զկարասի իւր 'ի նաւ և գնաց յԵրուսաղէմ՝ անդ ողջունեալ սուրբ տեղեացն և երանելւոյն Մելինեայ տիկնոջն հռոմայ։

Եւ դարձեալ խստացուցեալ զսիրտ նորա սատանայի որպէս Փարաւոնին, քանզի դեռ երիտասարդ եւս էր և ոչ ումեք կամէր յայտնել, քանզի ցրուեցաւ խորհրդովքն և սկսաւ փոփոխումն առնել հանդերձիցն և հպարտանալ և մնափառել։ Իսկ արարիչն ա՜մ եղելոց ա՜ծ որ ոչ կամի ըստ մեղանչել ուրուք, արկ զնա 'ի ցաւս ջերման ամիսս վեց, և ցամաքեցաւ ա՜մ մարմին նորա, և բժիշկք ոչ կարէին հնարս գտանել բժշկութե՜։ Եւ եկեալ երանելի տիկինն հռոմայ տեսանել զնա և ասէ. ոչ է հաճոյ ինձ յերկար հիւանդութի՜դ քո, որդեակ, զի ոչ է առանց ա՜յ։ Եւ նա խոստովան եղև նմա զխորհրդոցն իւրոց։ Ասէ ցնա տիկինն. զայս վկայութի՜ դիր առաջի տեառն՝ ևթէ ունիս զմեծ ջան վաստակոյ անապատին հռեբոնի. Թէպէտ և մեղաւոր եմ՝ առնեմ աղօթս, զի տացէ քեզ ժամանակ ապաշխարութե՜։ Իսկ Եւագրիոս զղջացեալ ընդ բանս նորա՝ վաղվաղակի զգաստացեալ ողջանայր։ Եւ յարուցեալ գնաց, դէմ եդեալ երթայր 'ի լեառն՝ Նիտրիոյ Եգիպտոսի։ Եւ բնակեալ անդ ամս երկու, և եմուտ 'ի

ներքսագոյն եւս անապատն. եւ կացեալ 'ի խուղսն ամս չո-րեքտասան, ուտէր լիտր մի հաց յամիս հինգ եւ քսան մի ձիթոյ. այլ 'ի հեշտալից փափկութեցն եւ 'ի վայելչութեց աշխարհիս բովորովին հրաժարեալ: Պետնախշտե լի-նել զամենայն գիշերս սաղմոսերգութք, առնէր աղօթս հարիւր անգամ յաւուրն, եւ գրելով 'ի տարւոջն զգիրս ամենայն վանացն ուր բնակեալն էր, վասն զի փոյթ էր առ 'ի գրել ըստ նմանութեան ոքսիրինքեայ[1]: Իսկ զգնի հնգետասան ամի կենաց իւրոց եղեւ սրբեալ. եւ զգաս-տացեալ կատարեալ խորհրդով լինի արժանի շնորհաց սուրբ հոգւոյն, եւ յոլով իմաստութք վերին խոհակա-նութք առնէր քննութիւս հոգւոյն: Հաստատէր երիս գիրս ա̄ծաշունչս միայնացելոց եւ ընդդէմ բանաստեղ-ծացն եւ ընդդէմ դիւացն հնարագիտութե:

Յետ այսորիկ դարձեալ նեղեաց զնա դեւն պոռնկութե, որպէս եւ ինքն պատմեաց մեզ. եւ հատեալ խորափիտ մի խոր՝ զա̄մ գիշերս մերկ կայր 'ի ներքս յաւուրս ձմերա-նւոյ, մինչեւ սառուցեալ պաղեցաւ ամենայն մարմինն: Իսկ դարձեալ նեղէկաց զնա հոգին հայհոյութեան, եւ ոչ եմուտ ընդ յարկաւ զքառասուն օր մինչեւ կաշեցաւ ամենայն մարմինն որպէս անասնոյ: Դարձեալ երեւե-ցան նմա 'ի տունջեան երեք դեւք 'ի նմանութիւն կղե-րիկոսաց վիճելով ընդ նմա վասն հաւատոյ. ոմն 'ի նո-ցանէ ասէր զինքն Արիանոս եւ միւսն Իւնոմիոս եւ միւսն Ապողինարոս, եւ յաղթեաց նոցա իմաստութբն իւրով. եւ ծանուցեալ զփորձութիւնսն, համբարձեալ զձեռս իւր յերկինս առ ա̄ծ՝ վաղվաղակի աներեւոյթ եղեն դեւքն 'ի նմանէ: Դարձեալ 'ի միում աւուր զբանալին կո-րոյս զեկեղեցւոյն, եւ կնքեալ զդէմս փակացն յանուն Քի, եւ ձեռն արկեալ՝ ինքնին բացան նմա: Սա եղեւ տանջեալ ամենափորձ 'ի բազմազան դիւաց եւ առ զհան-դամանս նոցա որ ոչ գոյ թիւ նոցա: Իսկ եղեւ վախճա-նել հօրն, եւ նա ասէ ցայն որ պատմեացն. լռեա 'ի հայ-հոյութէ, զի իմ հայրն անմահ է: Իսկ մի յաշակերտաց

1 Յօրինակն գրեալ էր ոքսանխիւր-քեայ կամ ոքսաւնաւրիքեայ եւ կամ ոքսանիւրքեայ. ասացեալ 'ի յունակա-նէն ὀξύρυγχον որ ըստ լատին մեկնելոյ ասի իմն գրոյ նշանակէ իբրեւ սուր նօտրն: Սակայն օրինակ մի 'ի լատինացն ասի ոքսաւնիրիկեայ այն ճճին է կամ սարիշմագործն. դոր առ յիշատակէ Թուանեան կամեցեալ դարձել անհնարաւոր:

նորա վարժեալ ընդ նմա առն ութեւտասան պատմեաց զամենայնն ըստ տեսլեանն առաջնոյն. եւ մարգարէացեալ նմա ասէ ցնա՝ եթէ յորմէհետէ բնակեցայ յանապատի, ոչ կերեալ խաւարտ եւ ոչ բանջար դալար եւ ոչ խաղող եւ ոչ միրգ, ոչ միս, եւ ոչ լուացումն մարմնոյ, այլ հաց եւ գինի ամենեւին ոչ ճաշակեալ: Բայց յորժամ կամէր տկարացու մարմինն 'ի խիստ վարուցն, սակաւ մի կաթն ընդ արմաւաջուր խառնեալ վասն կարի ցաւոյ ստամոքսին զայն էառ ջեռուցեալ հրով. այլ 'ի հաց եւ 'ի գինի եւ ոչ 'ի կարի կարեւպէտս հիւանդութեանն մերձեցաւ. բայց միայն ճաշակէր սուղ ինչ բանջար եւ ունդս եւ կակաղջուր մինչեւ 'ի վախճանն: Եւ եղեւ յետ հաղորդելոյն օրհնացն յեկեղեցւոջն յաւուրս յայտնութեանց՝ պատմեաց աթոռահետն եղբարցն մերձ 'ի վախճանելն իւրում՝ եթէ այս երեք ամք են յորմէհետէ չեմ նեղեալ 'ի ցանկութէ մարմնոյ: Յետ այնչափ տանջանաց եւ նեղութեանց եւ անհնարին փորձութեանց դիւացն, եւ յետ այսչափ ճգնութեց եւ անպակաս աղօթից կրծնաւորեալ բարի վարուք, զհաւատոյն պահեալ եւ զընթացսն կատարեալ՝ հանգեաւ 'ի նմին անապատի 'ի Քս Յս 'ի Տէր մեր:

Նոյն[1] Նուագրիոս կացեալ յանապատն առն յիմաստն եւ չորս զօրութե սուրբ հոգւոյն եւ Յսի Քսի փրկչին մերոյ մեծապէս լցեալ ծաղկեաց ինձ անարժանի: Գրեցի եւ կարգեցի ըստ կարի իմում երիս գիրս յօրինեալս դիւրահաս եւ վայելուչ ճառիւք. առաջինն յաղագս միանձանց ճշմարիտ հաւատոց. երկրորդ ընդդէմ վիճողաց եւ բանաստեղծաց. երրորդ յաղագս այսոց չարութեան արարաք պատասխանի 'ի գրոց սրբոց առ դեւսն որ փորձեն զմեզ: Ոի եւ ձեր ընթերցեալ եւ շահեալ, յաղթող արասցէ Քս 'ի վերայ այսոցն չարութեան:

1 Մատենագրին է միջնորդ հա- րեալ, 'ի Գ մասեան ծաղկեալ միջերին տառիճը, որ չկարեն Եւագրեայ Գլ. Գիրս նորա:

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՎԱՍՆ ՊԱՒՂՈՍԻ ԼՈՒՍՏՐԱՑՒՈՅ

ՊԱՒՂՈՍ անուն 'ի Լուստրիոյ, որ էր պատուեալ 'ի Լուստրինս, և էր այր սուրբ և մեծատուն յոյժ, և էր նորա կին և երեք որդիք: Սա կամեցաւ կրօնաւոր լինել, և կոչեալ զկին և զորդիսն իւր ասէ ցնոսա. կամիմ ես կրօնաւոր լինել արդ, զի բաւական է այսչափ վայելելն մեր յաշխարհի. իսկ դուք որպէս կամիք, ընդ իս լինել եթէ որոշիլ: Ասեն նոքա. ընդ քեզ՝ թէ և 'ի մահ՝ բարւոք է երթալ, թող թէ 'ի ճգնութիւն սրբութեան: Ասէ ցկինն և որդիսն. այլ զի կամիմ վաճառել զձեզ 'ի վանսն, զի մի կորուսանիցէք զվաստակն ձեր բարձրամտութեամբ և ոչ ծառայելով եղբարցն: Ասեն ցնա. զամենայն ինչ զոր հաճոյ է քեզ՝ արասցես:

Յայնժամ տարեալ զկինն իւր և մասն մեծ յընչից իւրոց 'ի կուսանաց վանս և ասէ ցնոսա. ծառայ վաճառել կամիմ զսա ձեզ: Իսկ նոքա ոչ գիտէին զզօրութիւն բանին: Եւ Պաւղոս պատմեաց սարկաւագուհւոյն զխորհուրդն 'ի ծածուկ, և հատեալ զգինն գրեաց զարձանն վաճառացն և ծառայութեանն և ետ զնա ընդ նոսա, նոյնպէս և զինչսն ետ ցսարկաւագուհին 'ի ծածուկ և գնաց անտի: Եւ ապա առեալ զմանկունս տարաւ 'ի վանս եղբարցն, և այսու օրինակաւ վաճառեաց ետ 'ի նոսա զնոսին ծառայս, և զմասն ընչից նոցա ընդ նոսին: Իսկ յետոյ ինքն գնաց յայլ վանս, և այսպէս վաճառեաց նոցա և զանձն իւր և ետ զմասն ընչից իւրոց ցհայր վանիցն 'ի ծածուկ, և խնդրեաց յառաջնորդէն մտանել յեկեղեցին ինքն միայն, և հրամայեաց նմա: Եւ որպէս եմուտ յեկեղեցին, համբարձ զձեռս իւր յերկինս և ասէ մեծաձայն. Տէր իմ, դու գիտես զի բոլորով սրտիւ եկի առ քեզ աստ: Եւ եհաս առ նա ձայն յերկնից որ ասէր. և ես իսկ բոլորով սրտիւ ընկալայ զքեզ: Եւ իբրև լուաւ զձայն տեառն, զուարճացեալ գոհանայր յամենաբարի գթութեան նորա. որ ոչ էի արժանի, ասէ, և ընկալար զիս: Եւ բնակեցաւ Պաւղոս 'ի վանսն յայն,

և որպէս ծառայ սպասաւորէր նոցա զամենայն անարգ գործս. և էր ներքոյ ամենեցուն և հնազանդ խոնարհութեամբ, և բարձրացոյց զնա ած վասն խոնարհութեան նորա։ Եւ զկնի վախճանի նորա բազում նշանս կատարէր ած նովաւ, և 'ի գերեզմանէ նորա բղխէր միւռոն և բժշկութիւն բազում լինէր։ Որպէս փառաւորէ ած զայնոսիկ որք սիրեն զնա բոլորով սրտիւ յայսմ և առ յապայն։

ՎԱՐՔ

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՍԻՄԷՈՆԻ ՍԻՒՆԱԿԵՑԻ

Երանելին Սիմէոն էր 'ի քաղաքէն Անտիոքայ Ասորւոց 'ի ժամանակս բարեպաշտ արքային Լեւոնի։ Եւ մինչդեռ պատանեակն էր, լսէր յեկեղեցւոջն հանապազ զգրեալսն 'ի Պաւղոսէ առաքելոյն, և 'ի ծերունւոյ ումեմնէ ածասիրէ տեղեկանայր եթէ վասն փրկութեան հոգւոց են գրեալքն. և զայսպիսիս լուեալ առժամայն հաստատէր զինքն 'ի գործս բարութեան։ Եւ գաղտ 'ի ծնողացն երթեալ 'ի վանս եղև կրօնաւոր. և այնչափ 'ի ճգնութի կայր, զի և ոչ 'ի կերակուր ընթանայր յագ, և անձանձրոյթ ծառայէր եղբարցն մինչև ամենեքեան զարմանային։

Եւ յաւուր միում երթեալ 'ի ջրհորն եգիտ մաշեալ պարան, և գաղտ յամենեցունց մերկացաւ և պատեաց զամենայն մարմին իւր, և այնչափ պնդեաց մինչև յակերան թաղեցաւ և նեխեցաւ մարմինն և եղև որդնալից, և ժահահոտութի յոյժ ելանէր 'ի մարմնոյն։ Եւ յորժամ իմացան եղբարքն, հազիւ կարացին հանել զպարանն 'ի տորոեալ մարմնոյն տաք ջրով։ Եւ նախանձեալ կրօնաւորացն ընդ ճգնութիս արդարոյն տխրեցին զհայր վանացն հանել զնա 'ի վանացն։ Եւ իբրև հանին զերանելին, լալով երթայր. և այնպէս գնացեալ գտանէ ջրհոր մի ցամաք և խոր յոյժ լի թունաւոր զեռնօք, և ընկէց զանձն իւր 'ի մէջ օձիցն՝ ոչ ինչ ճաշակելով։ Եւ յետ աւուրց հրեշտակ տեսանէ 'ի տեսլեանն

զվտանգ հայրն զան հարեալ սպառնալեօք պատժել խոստացաւ եթէ ոչ գտցէ զծառայն իւր։ Այլ ապա երկիւղալից եղեալ անյապաղ առաքէր կրօնաւորս, և խնդրեալ գտին զնա 'ի խորագոյն ջրհորին, և հանեալ անտի տարան զնա 'ի վանքն. և նորա արարեալ անդ աւուրս ինչ, գնաց յանապատ և անդ շինեաց իւր արգելանոց նեղ և բնակեցաւ 'ի նմա ամս չորս. և ոչ ինչ ճաշակէր, բայց միայն սակաւ ոսպն թրջեալ։ Այլ յետ այնորիկ շինեաց սիւն բարձրագոյն յերկրէ գիրկս չորս, և ելեալ եկաց անդ ամս եօթն։ Այլ աղօթիւք զբազումս հիւանդս բժշկէր, և ուսուցանէր առնել զկամս այ̃ և կեցուցանել զհոգիս։

Այլ յետ քսան և եօթն ամաց լուեալ մայրն նորա գնաց տեսանել զնա և ոչ կարաց, քանզի ոչ կամեցաւ երանելին Սիմէոն, այլ քաղցրութ̃բ բարբառեալ ասաց. թողութիւն շնորհեա ինձ, մայր իմ, և մի հարկես տեսանել զիս յայսմ աշխարհի. այլ եթէ իցեմ արժանի, 'ի հանդերձեալ գալստեանն Տ̃ի տեսանեմք զմիմեանըս. և արդ ով մայրիկ իմ, հանգիր առ խարսխի սեանս իմոյ և ննջեա։ Այլ նորա եդեալ զգլուխն առ սեանն աւանդեաց զհոգին։ Իսկ երանելին Սիմէոն հրամայեաց դնել զմարմին մօրն իւրոյ առաջի սեանն, և էջ 'ի թաղել, և 'ի տեսանել զմայրն իւր տխրեցաւ. և թաղեցին զնա 'ի տեղւոջն յայնմիկ վասն տեսանելոյ միշտ զգերեզմանն և յիշելոյ զհոգի նորա։

Այլ ընդ աւուրսն ընդ այնոսիկ տեսեալ որսորդացն եղն մի, զհետ մտեալ ոչ կարէին ըմբռնել զնա. յայնժամ երդուան եղին այն յաղօթսն սրբոյն Սիմէոնի ոչ առնել նմա վնաս ինչ։ Իբրև լուաւ եղն զերդումն նոցա, դադարեաց նոյնժամայն յաղագս երդմանն։ Այլ որսորդացն ըմբռնեալ զնա, ոչ ինչ փոյթ արարեալ վասն երդմանն աղօթից սրբոյն՝ զենեցին զեղն և կերան. և դեռևս կերակուրք 'ի բերանս նոցա էին, ատամունքն նոցա անկան 'ի բերանոց նոցա առ հասարակ։ Յայնժամ 'ի զղջումն եկեալ յոյժ՝ չոգան առ երանելին Սիմէոն, ունելով իւրաքանչիւր զիւր ատամունսն 'ի ձեռս իւրեանց. խոստովանեցան զղջմամբ զոր ինչ արարին առ եղն։ Այլ երանելին Սիմէոն գթացեալ 'ի նոսա և արար աղօթս և հրամայեաց արկանել զատամունսն 'ի բերանս իւ-

րեանց։ Եւ իբրեւ արարին այնպէս, առժամայն ողջացան. զի երթեալ ամենայն ատամանցն իւրաքանչիւր 'ի տեղիս իւրեանց պնդեցան։

Եւ յետ այսորիկ իբրեւ յայտնի եղեւ առաքինութիւն առն ա͞յ, եկեալ հրամանաւն նորա՝ բարձրացուցին ըղսիւնն քառասունն կանգուն։ Եւ կայր երանելին 'ի վերայ սեանն բացօթեայ, յամառայնի արեգակնակէզ լինելով եւ 'ի ձմերայնի 'ի ցուրտ եւ 'ի ձիւն ժուժկալէր։ Եւ եկեալ ոմանք աղաղակեալ 'ի վեր առ երանելին խնդրեցին 'ի նմանէ ջուր բղխեցուցանել 'ի մերձակայ լերան որ էր անջրդի վայր, եւ ուղեւորք վաստակէին յոյժ 'ի ջրոյ։ Եւ երանելին խոնարհեալ յաղաչանս նոցա հրամայեաց նոցա 'ի վերուստ 'ի սիւնէ անտի եւ ասէ. գնացէք յայս նիշ տեղւոջ 'ի լերինն յայն անջրդի եւ բրեցէք եւ տացէ ձեզ ա͞ծ ջուր ըստ հայցմանց ձեր։ Եւ նոքա հաւատով գոհացեալք 'ի նմանէ գնացին եւ բրեցին զնշանակեալ տեղին, եւ ել ջուր յորդաբուղխ եւ առատ, եւ ուրախացան ամենայն ուղեւորք եւ մերձակայք լերինն այնմիկ։ Եւ բազում վտանգաւորք 'ի ծովու եւ 'ի ցամաքի կոչէին յօգնութիւն զանուն սրբոյն Սիմէոնի խնդրել յա͞յ յօգնել նոցա, եւ առժամայն փրկէր զնոսա ա͞ծ 'ի նեղութենէ իւրեանց աղօթիւք սրբոյն։ Եւ յետ քառասուն եւ եօթն ամաց որ եկաց 'ի վերայ սեանն, հանգեաւ խաղաղութեամբ 'ի Ք͞ս. եւ իջուցեալ զերանելին թաղեցին մերձ 'ի սիւնն իւր Անտոն աշակերտն երանելւոյն Սիմէոնի եւ նորին սպասաւորն, եւ գրեաց զա͞ծահաճոյ վարս նորա։ Եւ էր ննջումն երանելւոյն յամսեանն սեպտեմբերի մինն յաւուր տարեմտի 'ի փառս Ք͞սի ա͞յ մերոյ, որ է օրհնեալ անզրաւ յաւիտեանս. ամէն։

ՎԱՐՔ

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ԻՂԱՐԻՈՆԻ ԿՐՕՆԱՒՈՐԻ

ԵՐՋԱՆԻԿ հայրն մեր Իղարիոն էր յաւուրս սրբոյն Կոստանդիանոսի մեծի արքայի 'ի Գազայ քաղաքէն. և էին ծնօղք նորա հեթանոսք: Այլ երթեալ յԱղեքսանդրիա ուսաւ գիր և ծանեաւ զճշմարիտ հաւատն Քրի և մկրտեցաւ: Լուաւ զճգնողական վարս սրբոյն Անտոնի. գնաց առ նա՝ և արարեալ առ նմա ամիսս երկու ուսաւ զամենայն քաղաքավարութիւն նորա և զժուժկալութիւն համբերութեան: Այլ էր Իղարիոն յայնժամ ամաց իբրև հնգետասանից. վախճանեցան ծնօղքն, և զամենայն ինչս իւր բաշխեաց կարօտելոց և կրօնաւորաց, և գնաց յանապատ մազեայ և մաշկեղէն զգեստիւք, և կերակուր էր նորա թուզս հնգետասան: Այլ բազում փորձութիւնս անցուցին ընդ նմա դեւքն, և շարժէին զցանկութիւն մարմնոյն, և նշանաւ խաչին հալածէր զդեւսն: Այլ յերկար ժամանակաւ առանց խցի ժուժկալեալ տօթոյ և անձրևոյ և ցրտոյ, և ապա շինեաց խըրճիթ 'ի լայնութիւն ոտնաչափս չորս և յերկայնութիւն ոտնաչափս ութ և բարձրութիւն ոտնաչափս հինգ, և հանգչէր 'ի գետնի խորգոյն, և յամենայն աւուր առաւելեալ 'ի ճգնութիւն վարուցն՝ չարչարէր զանձն իւր. քանզի ժամանակ մի աղ և հաց ուտէր և ժամանակ մի բանջար վայրի և ժամանակ մի թրջեալ ոսպն, մինչև եղև ամաց ութսնից, 'ի ձիթոյ և յայլ կերակրոց որ պարարէ զմարմինն՝ ոչ հաղորդեցաւ ամենևին: Այլ մինչդեռ երիտասարդ էր՝ պատահեցաւ աւազակաց 'ի ճանապարհի, և հարցանէին ընդ Իղարիոն և ասէին. եթէ անկանէիր 'ի ձեռս աւազակաց զինչ առնէիր: Այլ նա ասէ. մերկ մարդ յաւազակաց ոչ երկնչի: Այլ թողեալ զնա գնացին:

Այլ 'ի ձեռն երանելւոյն Իղարիոնի բազում սքանչելիս արար ած այնոցիկ որք հաւատով 'ի նա երթային, և բազում դիւահարք և հիւանդոտք աղօթիւք ծերոյն բժշկեցան, և զվայրք էրէս ընդելացոյց իբրև ընտանի

անաստուածս, և զբազումս 'ի հելլենացւոց և 'ի հերձուածողաց դարձոյց յածգիտութի և յուղղափառութի, և սահմանեաց նզովիւք երանելի հայրս Իղարիոն որ առանց պաշտամանց և աղօթից ոչ ինչ ճաշակեր ամենևին: Այս ժողովեաց առ ինքն կրօնաւորս երեք հազար, զոր ուսոյց զկատարակրօն ճգնութիւնս: Այս յաւուրս կթոց այգեաց տարաւ զամենեսեան յայգին և օրհնեաց զպտուղն, և հրամայեաց նոցա մտանել յայգին և ուտել որչափ և կամեսցին: Այս մտին երեք հազարքն և կերան ամենեքեան որչափ և կամեցան, և այգին ամենևին ոչ նուազեաց, և քան զայլ ամացն տասնապատիկ առաւել եղև գինին 'ի յայգւոյն յայնմիկ աղօթիւք ծերոյն:

Սա ինքն սուրբ ծերունին Իղարիոն զբարի ննջումն և զվերափոխումն առ անմահ կեանքն 'ի տէր ածն ամենեցուն զերանելւոյն սրբոյն Անտոնի յառաջագոյն գիտաց և ծանոյց աշակերտացն և ասէր. ոհ քանի պակասութի է մեզ և երկրի մեկնիլն 'ի մէնջ 'ի տեսութենէ մարմնով սրբոյն մեծին Անտոնի, որ է արեգակնափայլ ճառագայթ տիեզերաց: Այս այնպէս սգաց մեծաւ տարապանօք զմեկնիլն մարմնով զերանելւոյն զայն և զերկերջանիկ սուրբն: Այս երբեմն եղեալ երաշտ ժամանակ մի յոյժ նեղացան, և հայցեալ խնդրեցին 'ի սուրբ ծերունւոյն Իղարիոնէ աղօթել առ տէր. և նորա աղօթեալ առ ած, ետ տէր ած անձրև, և լցաւ երկիր ամենայն բարութբ: Այս քանզի ոչ կամէր զերկրաւոր փառս 'ի մարդկանէ վասն բազմութե ամբոխին որ գային առ նա, վասն որոյ փախեաւ 'ի լեռնէն և գնաց 'ի Սիկիլիա, և 'ի նաւին բժշկեաց զդիւահարս որ անդ պատահեցան 'ի նաւին. և գնաց նաւն նախ 'ի Հռոմ քաղաք վասն պիտոյից իւր: Այս ելեալ սուրբ ծերունին իջավանեցաւ առ ումն. իսկ դիւահարք Հռոմ քաղաքին ձայնէին յանուանէ զերանելին Իղարիոն, և երթեալ յառաջին խուղն ուր կայր երանելին՝ ողջանային նախ քան զմտանելն առ սուրբն: Այս ապա անտի գնաց 'ի Սիկիլիա կղզւոջ: Այս Եւսեբիոս աշակերտն իւր զերիս ամս շրջելով խնդրէր զերանելին Իղարիոն և ոչ էգիտ. և հանդիպեալ հրէի միոջ, ասէ հրեայն ցԵւսեբիոս. 'ի քրիստոնէից մարգարէ ումն յայտնեցաւ 'ի Սիկիլիա կղզւոջն և տանէ բազում սքանչելիս: Այս լուեալ զայս գնաց նա-

ւեալ Ամիւքիոս 'ի Ամիկլեա կղզւոջն, և գտեալ զերանելին անդ՝ լցեալ եղև ոչ սակաւ խնդութեամբ:

Այլ տեսեալ որքոյն Իլարիոնի թէ և անդ համբաւեցաւ անուն նորա, գնաց անտի 'ի Դաղմատիա. և էր անդ որջացեալ վիշապ և բազում մարդս առնէր, և սուրբն Իլարիոն աղօթիւք եսպան զվիշապն: Այլ յաւուր միոջ շարժ եղև մեծ յոյժ, և ծովն 'ի սահմանէ իւրմէ փոխեցաւ և գնացեալ 'ի ցամաք եհան: Այլ տեսեալ արք տեղւոյն այնորիկ զծովն մրրկեալ՝ երկեան եթէ զչէնսն ընկղմեսցէ, և ընթացեալ յափշտակեցին զսուրբն Իլարիոն և կացուցին 'ի ծովեզերն, քանզի փախչէր և ոչ կամէր զաղ զլխի նոցա վասն փառաց. և զի նոքա գիտէին զսքանչելի գործն սրբոյն, վասն այնորիկ աղաչեցին զնա օգնել նոցա: Այլ նորա համբարձեալ զաչս իւր յերկինս աղաչեաց զա̃ծ, և երիցս անգամ արարեալ զնշան սրբոյ խաչին 'ի վերայ երկրի և 'ի վերայ աւազոյ ծովուն, և խոկոյն ղիզացեալ ծովն 'ի բարձունս սկսաւ սակաւ սակաւ ցածնուլ և յետս դառնալ, և դարձաւ մինչև 'ի սահմանն, և ամենայն ժողովուրդք գոհացեալ զնմանէ փառս տային ա̃յ: Իսկ սուրբ ծերունին իբրև ետես զի և անդ փառաւորեալ յայտնի եղև անուն իւր, մտեալ 'ի նաւ գնաց 'ի Կիպրոս և թաքեաւ 'ի ծածուկ տեղւոջ, այլ ա̃ծ և անդ յայտնեաց զերանելին. քանզի որքան նա փախչէր 'ի փառաց և ոչ կամէր յայտնի լինել անուամբ, նոյնքան ա̃ծ զնա հռչակելի առնէր սքանչելեօք 'ի վերայ երկրի. քանզի և անդ այսահարքն Կիպրոս կղզւոջ յանուանէ ձայնէին և դիմեալ գային առ նա, և բազում ամբոխ ժողովեալ էր առ նա: Այլ ելեալ անտի ևս փախեաւ, և երթեալ եգիտ վայրելուչ և անկասկած տեղի բազում անտառօք և յորդաբուղխ աղբերօք, և 'ի տեղւոջն յայն լեալ էր երբեմն բագին կռոց, և էին բնակեալ անդ բազմութիւն դիւաց: Իսկ երանելին Իլարիոն արար անդ ամս հինգ, և հալածեաց զբազմութիւն դիւացն զայն, և զտէր տեղւոյն այնորիկ անդամալոյծ լեալ բժշկեաց բանիւ աղօթից:

Այլ յորժամ եղև երանելին Իլարիոն ամաց ութսնից, հիւանդացաւ և կոչեաց զմերձաւոր բնակիչս տեղւոյն այնորիկ Ամիւքիոսիւ աշակերտաւ իւրով և երդմնեցոյց զնոսա՝ եթէ յորժամ վախճանիմ, իմով խորգովս թա-

ղեցէք զիս որ յանձին խնամ է, և ոչ այլ ինչ հանգեր-ձով, և 'ի տեղւոջս յայսմիկ դիք զիս, և զաչս իմ մի խը-փանէք: Իսկ յորժամ մերձեցաւ յելանել հոգւոյն, յեր-կարեաց յոգեվարսն և ասէր ինքն սուրբ ծերունին. Եւ հոգի, ընդէ՞ր երկնչիս և դողաս. Եւ հոգի, ընդէ՞ր երկ-մտեցեր. Եօթանասուն ամ ծառայեցեր Քսի, և 'ի մա-հուանէ երկնչիս: Զայս ասացեալ աւանդեաց զհոգի իւր սուրբ առ ած: Եւ ժողովուրդքն պաշտէին զնա իբ-րև զսուրբ այ, որպէս և էր իսկ. Բայց վասն պատուիրա-նի նորա ոչ իշխեցին փոխել զխորգն նորա, և 'ի տե-ղւոջն յորում հրամայեաց՝ անդ թաղեցին զնա:

Իսկ աշակերտն ծերոյն Սիւքիոս եկաց 'ի տեղի սըր-բոյն Իլարիոնի. քանզի կամեցաւ տանել 'ի վանս իւր, և ոչ ետուն ժողովուրդքն և ասէին. քաւ լիցի եթէ թող-ցուք հեռանալ 'ի մէնջ զգանձն պատուական որում ար-ժանաւորեցաք մնալ նմա առ մեզ: Եւ մնաց անդ պա-հելով զգերեզման սրբոյ ծերոյն. Բայց ժողովուրդքն զչարէին զՍիւքիոս կասկածելով 'ի նմանէ գողանալ ըզ-սուրբ նշխարս երանելւոյն, վասն որոյ յար գային և գը-նային առ նա: Եւ տնկեաց պարտէզ և այնու խաղաղա-ցոյց զնոսա սէր առնել և ունել ընդ նոսա խաղաղական, և հաւատացոյց զնոսա յինքն, և յետ տասն ամսոյ գո-ղացաւ զնշխարս երանելւոյն և տարաւ 'ի վանս իւր 'ի Պաղեստին: Եւ ժողովեալ եպիսկոպոսունք և կրօնա-ւորք սաղմոսիւք և օրհնութբ եղին 'ի տապանի, և ա-մենևին ոչ էր այլայլեալ և ոչ թուլացեալ մարմնոյն և ոչ խորգն և ոչ կնկուղն և ոչ ծածկոյթ երեսացն այլա-գունեալ: Հանգեաւ երիցս երանեալ և հայր հարանց սուրբն Իլարիոն 'ի հոկտեմբերի քսան և մի օրն 'ի փառս Քսի այ մերոյ:

## ՎԱՐՔ

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՄԱՐՏԻԱՆՈՍԻ ԿՐՕՆԱՒՈՐԻ

ԾԱՌԱՅՆ այ Մարտիանոս էր 'ի Կեսարիայ Պաղես-տինեայ. և յորժամ եղև ութևտասն ամաց, եթող զծնողսն և եղև կրօնաւոր, և յետ այնորիկ գնաց 'ի լեռ-

ուն և բնակեցաւ յայրի միում ամս հնգետասան. և խստակրօն ճգնութեամբն շնորհս էառ յայ, և բժշկէր աղօթիւք զամենայն ցաւս հիւանդաց: Իսկ բարիատեացն սատանայ բազում փորձութիւնս յարուցանէր 'ի վերայ նորա: Եւ 'ի միում աւուր մինչդեռ աղօթէր, երեւեցաւ նմա 'ի կերպարանս վիշապի և կամէր կործանել զայրն յորում բնակէր. և տեսեալ զնա երանելին՝ ոչ զանգիտեաց, այլ աղօթիւք ամօթալից և անյայտ արար զչարն: Եւ դարձեալ 'ի միւս այլ աւուր եղև 'ի կերպարանս երիտասարդի, և սպառնայր կորուսանել զնա. և սաստեալ երանելւոյն՝ դարձեալ անյայտ լինէր չարն:

Յայնժամ գնացեալ առ կին մի պոռնիկ յարոյց զնա 'ի գայթակղութիւն նորա. որոյ առեալ հանդերձս մեծագինս և ոսկի զարդարանք կնոջ՝ եդ զնոսա յամանս, և ինքն պատառատուն աղքատ զգեստիւ գնաց 'ի գիշերի և մերձեցաւ յայրն նորա, և 'ի դուրսն եկեալ աղաղակէր՝ ողորմեա ինձ, ծառայ այ, քանզի մոլորեցայ 'ի ճանապարհէն, և գազանք շուրջ պատեալ կամէին ուտել զիս: Իսկ տեսեալ զնա Մարտինոս յայնպիսի վտանգի, որ 'ի գիշերի յայնպիսի գազանաբնակ անապատի առանց ընկերաց մնացեալ էր, վասն որոյ գթացեալ նմա զի մի գազանակուր լիցի՝ եմոյծ զկինն յայրն, տուեալ նմա արմաւս և ջուր, և ինքն եմուտ 'ի ներքսագոյն յայրն: Յայնժամ եհան կինն յամանէն զզարդսն և զգեցաւ և նստաւ զարդարեալ: Եւ ընդ առաւօտն ելեալ երանելւոյն տեսե զկինն յայլակերպս, կարծեաց եթէ դիւական երեւմունք են, և եհարց եթէ ո՞վ իցես դու և կամ ուստի և վասն որո՞յ եկիր: Ասէ կինն. լուայ զքէն և ցանկացայ քեզ և եկի զի ամուսնանամ քեզ: Եւ սկսաւ կինն 'ի գրոց յիշեցուցանել նմա, և զսկիզբն յԵնովքայ արար և որ զկնի նորա արդարքն թէ որպէս զկանայս ունելով հաճոյ եղեն այ: Ասէ Մարտինոս. և ո՞րպէս ապրիմք, զի ոչ գոյ իմ ինչք: Ասէ կինն. դու միայն անցո զփափագս իմ, և ես ունիմ տունս գեղեցիկս և ծառայս և ինչս բազումս: Եւ այլ բանս պատրողականս խօսէր, և գիրկս արկեալ համբուրէր և վանէր ընդ մարմինն և խօսէր զազիր բանս մինչև խախտեաց զայրն և եհան յահէն այ: Եւ ասէ Մարտինոս. նախ ելից և տեսից և զճանապարհն դիտեցից, զի մի գուցէ ոք յան-

կարծակի եկեսցէ և գտցէ զմեզ 'ի մեղս ։ Եւ ելեալ ար-
տաքոյ այրին կանգնեցաւ 'ի վերայ բարձր վիմի և նայէր
զճանապարհս ։ Եւ մինչդեռ զաչս իւր այսր և անդր ածէր,
շրջեաց ա̃ծ զմիտս նորա զի մի կորիցէ այնչափ վաստակք
ճգնութեան զոր 'ի մանկութենէ աշխատեցաւ ։ Եւ սկսաւ
լալ և աղօթել, և հաստատեցաւ 'ի տէր ։ Եւ ապա ի-
ջեալ 'ի վիմէն եմուտ յայրն, առեալ հրահանս եւ ան-
խլաբար դարձեալ արտաքս, և ժողովեալ խռիւ վառեաց
զայն և մտեալ 'ի հուրն եկաց բոկ ոտիւք՝ ժողովեալ զայ-
ծեայս առ գլուխն, և այրեցաւ ջիլքն ընդ ծածուկ ան-
դամօքն ։ Եւ ասէ ցանձն իւր . տես Մարտիանէ, եթէ
կարող ես համբերել անշէջ հրոյն, մերձեցիր 'ի կինդ .
զի թէ շիջանուտ հուրս այսչափ դառն է, որչափ ապա
անշէջ հուրն . ապա երկիր դու յա̃յ, ով անձն ։ Իսկ կինն
մնայր զաղատեան նորա յայրի անդ . իբրև ետես զի ու-
շացաւ յամելով արտաքոյ, ելեալ և կինն յայրէն տե-
սանել զնա, և ետես 'ի մէջ հրոյն այրեցեալ անդամօք,
ճիչ բարձեալ ասէ . զինչ արարեր զայդ ։ Ասէ ցնա Մար-
տիանէ . գնա ով կին դու, փոքր մի կորուսեալ էիր զհո-
գի իմ . զի թէ այսչափ դառն է շիջանուտ հուրն, որչափ
ապա անշէջ հուրն, ով եղկելի կին դու . գնա և ապաշ-
խարէ, զի մի կորիցես զյաւիտենից կորուստն ։ Եւ իբ-
րև ետես կինն զոր արար ծառայն ա̃յ Մարտիանոս, զղ-
ջացաւ յոյժ, և հանեալ զզարդսն յանձնէն ընկէց 'ի
հուրն և այրեաց զամենայն, և կալեալ զոտից երանե-
լւոյն խոստովանեցաւ լալով զյանցանս իւր, և ուխտեաց
զի ոչ դարձցի 'ի տուն իւր, այլ ուր նա կամեսցի՝ անդ
կեցուսցէ զհոգի իւր ։ Յայնժամ խրատեալ զնա յու-
ղարկեաց 'ի վանս ճգնաւոր կանանց . և անդ արարեալ
ճգնութի̃ և ա̃ծահաճոյ վարք ամս հնգետասան, հան-
գեաւ արդարացեալ շնորհօքն ա̃յ, որ և գերեզման նո-
րա բազում նշանս առնէր 'ի հիւանդս և 'ի նեղեալս ։

Իսկ երանելւոյն Մարտիանէի հրայրեաց վէրքն ան-
ձին յետ եօթն ամաց ապա ողջացան, բազում կսկիծ
և չարչարանս կրեալ . և զամենայն գոհութբ̃ և ուրա-
խութբ̃ անցուցեալ զնեղութն̃ ժամանակին զայն, և մը-
տաւոր և հոգևոր աղօթիւք հանդերձ յորդահոս ար-
տասուօք գոհացեալ լինէր յամենատեառնէն, որ փըր-
կեաց զնա 'ի չար մեղաց անտի ։ Ապա յետ ողջութեան

վիրաց անտի երկեաւ դադարել այլ դարձեալ անդ 'ի լերինն, զի մի դարձեալ փորձեսցէ զնա սատանայ, և ասէ. գնացից յայնպիսի տեղի ուր անհնարին իցէ մարդոյ գալ առ իս: Այլ երթեալ 'ի ծովեզերն եգիտ անդ նաւավար մի. հարցանէր ցնա եթէ իցէ՞ փոքր կղզեակ 'ի մէջ ծովուն անբնակ: Ասէ նաւավարն. է վէմ մի սուր և անջուր, աւուր մի հեռի 'ի ցամաքէն: Յայնժամ աղաչեաց զնաւավարն զի տարցէ զնա անդ. և ամենայն յօժարութբ նաւավարն առեալ զնա 'ի նաւն տարաւ 'ի վէմն, և ելեալ 'ի նաւէն նստաւ 'ի վերայ վիմին, ասէ. ես այլ աստի ոչ գնացից: Ասէ ածասէր նաւավարն ցՄարտինիանէ կրօնաւորն. ահա, հայր, ես քեզ 'ի տարւոջն երիցս անգամ բերից հաց և ջուր: Այլ օրհնեաց զնա Մարտինիանէ գոհանալով զնմանէ թէ արասցէ զայն: Այլ այնպէս երանելին ձգնէր առաւել քան զառաջինն:

Իսկ սատանայ և ոչ անդ թոյլ ետ նմա 'ի փորձանաց. քանզի յորժամ շարժէր ծովն 'ի հողմոց, երևեցուցանէր նմա զալիս ծովուն բարձր քան զինքն 'ի վերայ վիմին, և այլ բազում երևմունս երևեցուցանէր նմա երկեցուցանելով զնա: Այլ նա անօթիւք զօրանայր և համբերէր նեղութեցն, և եկաց այսպէս 'ի վիմի անդ ամս տասն: Այլ ածասէր նաւավարն այն 'ի տարւոջն երիցս անգամ գայր և բերէր նմա հաց և ջուր, որ բաւական լինէր նմա մինչև 'ի չորս ամիսն:

Այլ դարձեալ փորձանս յարոյց նմա սատանայ այսպէս. քանզի 'ի միում աւուր երթայր նաւ մի լի մարդով արամբք և կանամբք, և ալէկոծեալ 'ի հողմոց զարկաւ նաւն 'ի վէմն և հերձաւ 'ի բազում մասունս, և ամենեքեան որք 'ի նաւին էին կորեան և ոչ ապրեցան 'ի սաստկութէ հողմոյն, բայց միայն աղջիկ մի մատաղ՝ կալեալ զտախտակ մի նաւուն մերձ էր 'ի խեղդիլ, և մերձ եղեալ 'ի վէմն ետես զՄարտինիանոսն և աղաղակեաց ասելով. ողորմեա ինձ, ծառայ այ, և մի թողուր զիս կորնչել: Այլ տեսեալ երանելին գիտաց եթէ 'ի չարէն է փորձութիւն այն, և իջեալ 'ի ծովն եհան զկինն և տարաւ 'ի վեր, և եցոյց նմա զհացն և զջուրն զոր մնացեալ էր, և ասէ. այսչափ կերիցես և այսչափ արբցես, զի բաւական լիցի քեզ մինչև եկեսցէ նաւավարն. քանզի երկու ամիս անցեալ է և այլ ևս երկու ամիս պիտոյ

է զի գայցէ նաւավարն բարեպաշտ և հանցէ զքեզ 'ի ցամաք ։

Եւ ետես զկինն մանուկ և գեղեցիկ և ասէ . անհնար է խոտոյ և հրոյ 'ի միասին կեալ ։ Եւ յաղօթս կացեալ արտասուօք առ տէր ասէ . մի թողուր զիս , տէր , կորնչել 'ի կամս չարին , այլ արա որպէս և կամիս . զի լաւ է ինձ անվեհեր գալ առ քեզ , քան յամել 'ի կենցաղս մեղօք ։ Եւ այսպէս յերկար աղօթեալ ընկէց զինքն 'ի ծովն ։ Եւ հրամանաւն այ երկու դելփինք ձկունք յերկու անթս մտեալ երանելւոյն բարձին զնա , և այնպէս տարեալ հանին 'ի ցամաք ։ Եւ ելեալ եդ զծունկսն իւր յերկիր և աղօթեալ յերկար գոհացաւ զայ օրհնելով զտէր համբերձ արտասուօք և ասէ յինքեան . զինչ արարից զի ոչ 'ի լերինս և ոչ 'ի ծովու թող ետ ինձ սատանայ . արդ այսուհետև լաւ է ինձ կատարել զհրամանս տեառն՝ եթէ հալածեսցեն զձեզ 'ի քաղաքէս յայսմիկ , փախիջիք 'ի միւսն ։ Եւ զայս ասացեալ սկսաւ փախչել և ասել . փախիր , Մարտիանէ , փախիր զի մի հասցէ քեզ փորձութիւն . փախիր , Մարտիանէ , մի կացցես 'ի տեղւոջ , զի մի ըմբռնեսցիս 'ի հաղբս որսողին ։ Այսպէս փախըստական կատարեաց զժամանակս կենաց իւրոց , ոչ ինչ բառնալով յինքեան ոչ հաց և ոչ դաւազան ։ Այլ յորժամ լսէր զբարեպաշտ և զերկիւղած մարդոյ՝ առ նա հանգչէր ժամ մի կամ գիշերի կամ ցերեկի ։ Եւ երկոտասան ամ այնպէս փախստական եղեալ հալածէր զանձն իւր վազս առեալ փախչելով ուժգին ընթացիւք , որպէս թէ ոք թշնամի հետամուտ եղեալ զհետ նորա փախստական առնէր զնա և այսպիսի ընթացիւք փախչելով ընդ բազում քաղաքս անցանէր ։

Եւ ապա այնպէս գնաց 'ի յԱթէնս . և երևեցոյց ած եպիսկոպոսին զգալուստ և զմահ երանելւոյն ։ Իսկ յորժամ եմուտ երանելին Մարտիանէ 'ի քաղաքն յԱթէնն , գնաց յեկեղեցին և աղօթեաց և գիտաց երանելին զմահն իւր , զի եցոյց նմա տէր զկոչումն նորա 'ի հանգիստն ։ Եւ գնացեալ անկաւ 'ի վերայ միոյ աթոռոյ եկեղեցւոյն , և աղաչեաց զպաշտաւորն եկեղեցւոյն կոչել առ ինքն զեպիսկոպոսն ։ Եւ գնացեալ պաշտաւորն առ եպիսկոպոսն ասէ . աղուաշ աբեղայ մի անկեալ 'ի վերայ աթոռոյ ասէ՝ կոչեցէք առ իս զեպիսկոպոսն ։ Եպիս-

ժամ յիշեաց եպիսկոպոսն զերազն տեսլեան զոր տէր եցոյց նմա և ասէ. աղաւաղ դու ես որ ոչ կարես ճանաչել զընտրեալն այ, զի նա ճշմարիտ ծառայ այ է: Զայս ասացեալ ել փութանակի և գնաց առ նա: Իբրև ետես զեպիսկոպոսն Մարտիանոս ոչ կարաց յառնել և գնալ ընդ առաջ նորա. այլ զձեռս իւր համբարձեալ ետ զողջոյն, և ասէ ցեպիսկոպոսն. օրհնեա զիս, տէր, և յանձնեա զիս այ, քանզի յոյժ նուաղեալ եմ: Յայնժամ նստուցեալ զեպիսկոպոսն պատմեաց նմա մի ըստ միոջէ զամենայն եղեալսն 'ի մանկութենէ իւրմէ, և որ 'ի լեռինն և 'ի ծովուն պատահմունքն: Իբրև լուաւ եպիսկոպոսն զամենայն վարքն և զհալածանօք կեանս նորա, լցան աչքն նորա արտասուօք և անկաւ 'ի վերայ լանջաց երանելւոյն և ելաց դառնապէս և ասէ. մանաւանդ դու օրհնեա զիս, հայր սուրբ: Եւ նորա տարածեալ զձեռս իւր յերկինս ասէ. տէր Յ̃ս Ք̃ս, 'ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ: Զայս ասացեալ, ժպտեալ և զուարճ երեսօք աւանդեաց զհոգին իւր առ ա̃ծ 'ի փետրուարի երեքտասան օրն: Եւ լուր եղև մահն երանելւոյն 'ի ձեռն եպիսկոպոսին, և ամենայն քաղաքն գնացին 'ի տեսանել զծառայն այ զՄարտիանոս, և մեծաւ պատուով թաղեցին զնա յեկեղեցին սաղմոսիւք և օրհնութ̃բ:

Իսկ կինն որ 'ի ծովէն ել առ երանելին 'ի վէմն, զպատուէրն նորա զոր վասն հացին և ջրոյն ասէր՝ լուեալ հիանայր. զի իբրև գնացականն ոք խօսէր ընդ նմա որ ոչ էր հնար, և 'ի միտս իւր վարանէր աղջիկն 'ի յաղօթելն երանելւոյն և ասէր. զինչ խօսի կրօնաւորս այս, և որպէս կարէ երթալ 'ի մէջ համատարած ծովուս գոլով: Եւ իբրև խաչակնքեալ զինքն երանելին վազս առեալ ընկէց զինքն 'ի վիմէ անտի 'ի խորս ծովուն, յայնժամ ճիչ բարձեալ յահի եղև և խռովեցաւ յոգի իւր, և կականով անմխիթար լայր, և դիտէր նայելով ընդ ծովն թէ գտանէ զմարմին նորա սուրբ առեալ 'ի ծովէ անտի պահեսցից առ ի մխիթար ոգւոյս և ընկեր ինձ: Եւ ասէր. լաւ էր ինձ մեռանել 'ի ծովուս 'ի նաւին ընդ ընկերսն իմ և ոչ լինել առիթ մահու ծառային այ: Եւ ահա տեսանէր զի ել սուրբն Մարտիանէ լանջօքն 'ի վեր քան զծովն, և երկու դելփինք յերկուս անթս նորա տանէին այնպէս հանդարտութ̃բ: Զայն այնպէս տեսեալ.

ուրախացեալ գոհանայր զայ, և ձայնեալ առ սուրբն ասէ. յիշեա զիս զգերիս յաղօթս քո, սուրբդ այ. քանզի մերձ իւր եւես և հուպ առ վէմն և նայէր զկնի հետոց երանելւոյն 'ի ծով անդր մինչև ծածկեցաւ յաչաց նորա: Յայնժամ առ ինքն ժողովեալ զմիտքն ասէ. ով եղկելի դու անձն, որ ոչ էիր արժանի տեսանել զսուրբն այ, ահա տեսեր և օրհնեցար 'ի նմանէ և 'ի նորա բնակութիւնն լինել արժանացար. արդ եթէ մնասանայցես զսրբութե̃ տեղիս զայս, և զաղօթողութն սիրեսցես աշխարհի, որ խաւար ոչ ընկալցի զքեզ: Եւ աղօթեալ առ տէր ած ասէ. տուր ինձ համբերութիւն բնակիլ 'ի տեղւոջս սրբութե̃, ով բարերար տէր: Եւ այնպէս զերկու ամիսն զայն որ մնացեալ էր՝ պահօք յօժարականաւ ճնշեաց զինքն, և աղօթիւք հաստատեցաւ 'ի տէր ած յուսով և ջերմեռանդ սիրով, և ուրախութբ էր զի քաղցրացաւ հոգի նորա աղօթիւք սրբոյն 'ի վէմ անդր:

Եւ յորժամ գնաց առ վէմն նաւավարն բարեպաշտ հացիւն և ջրովն և մերձ եղեալ 'ի վէմն եւես զկինն աշխարհի հանդերձիւ՝ երկեաւ յոյժ, համարելով դիւական երևումունք, և սկսաւ վարել զնաւն յետ կոյս: Եւ կինն տեսեալ զզարհուրելն նաւավարին, ձայնեաց՝ ասէ. մի երկնչիր, տէր իմ և եղբայր, ես կին եմ քրիստոնեայ, եկեսջիր մերձ և պատմեցից քեզ զեղեալ գործն: Նա դարձեալ 'ի վէմն մղեաց զնաւն և մօտեցաւ առ վէմն, և եհարց նաւավարն եթէ ո՞ւր իցէ աբեղայն որ 'ի վիմիդ էր, և ասա ինձ զճշմարիտն թէ զինչ եղև նմա: Եւ կինն յեզր ծովուն իջեալ մերձ առ նա պատմեաց նմա լալով զամենայն եղեալսն: Յայնժամ սկսաւ և նաւավարն լալ և ասէ. զրկեցայ 'ի տեսլենէ սրբոյն, որով մխիթարէր հոգի իմ և ցնծայր: Եւ ասէ ցկինն. էջ և մուտ 'ի նաւս, և հանից զքեզ 'ի ցամաք և երթիցես 'ի տուն և յազգականս քո: Ասէ կինն. մի տէր իմ, մի հաներ զիս 'ի վիմէս. այլ արա առ իս ողորմութիւն, և զոր ինչ նմա բերէիր՝ բեր և ինձ, և արասցէ ընդ քեզ տէր ած ողորմութի և հատուցումն բարեաց քոց: Եւ ած առ իս զկին քո թէ ունիցիս, և աբեղայի խորգեղէն պարեգօտ և մազեղէնս, և առցէ զոր զգեցեալս եմ, և զգեցուսցէ ինձ զխորգն և զմազեղէնն և վարձս առնուցուք յայ, զի առ ած մի է այր և կին:

Զայս լուեալ նաւավարն 'ի նմանէ, ետես զփափագումն նորա ջերմեռանդ և զսէրն բորբոքեալ առ ած, ասէ. արարից որպէս ասացեր. զօրացիր այսուհետև և մի երկնչիր, այլ հաստատուն կաց սրտիւ և մտօք: Եւ տուեալ նմա զհացն և զջուրն դարձաւ 'ի տուն իւր, և էառ զոր ինչ պատուիրեաց և զկինն իւր և նաւեաց 'ի վէմն: Եւ եկեալ ելին առ նա 'ի վէմն և ետուն նմա ողջոյն և ողջագուրեցին զմիմեանս կանայքն: Եւ նաւավարն 'ի նաւն իջեալ՝ առանձնացան նոքա, և մերկացուցեալ զկանացի աշխարհական զգեստն 'ի նմանէ՝ զգեցոյց նմա իբրև այր զխորգն և զմաշկեղէնն, և ուրախացեալ ընդ մաշկեղէնն օրհնեաց զկինն նաւավարին համբերձ նաւավարաւն, և աղաչանօք պատուիրեաց նոցա զի բերցեն նմա այծենի և վուշ, զի վաստակեցից, ասէ, ձեռօք իմովք և ձրի հաց ոչ կերայց: Իսկ նոքա զուարճացեալք ընդ ածախնամութիւն աղջկանն՝ մխիթարեալք զնա գնացին, և արարին զպատուէր նորա, բերին վուշ և այծեայս: Եւ այսպէս արարեալ կնոջն 'ի վիմին 'ի մէջ ծովուն ամս ութ մեծ ճգնութեամբ և առաքինի վարուք, և երկու ամսով յառաջ քան զգնալն նաւավարին հանգեաւ աղջիկն խաղաղութեամբ 'ի Քս:

Եւ 'ի կատարել երկուց ամսոցն գնաց նաւավարն և կինն 'ի վէմն առ 'ի տեսանել և օրհնիլ յաղախնոյն Քի: Եւ իբրև ելին 'ի վէմն, գտին զերանելին մեռեալ որպէս կենդանի 'ի քուն, ունելով ընդ ինքեան զհացն և զջուրն, որ էր երկու ամսոյ պաշար: Եւ լացին ուժգին և երանեցին, քանզի բուրէր հոտ անուշութեան 'ի մարմնոյն. և ողջունեալ համբուրիւ զնշխարս նորա իջուցին 'ի նաւն և գնացեալ 'ի ցամաքն տարան 'ի քաղաքն Կեսարիայ Պաղեստինեայ, և պատմեցին եպիսկոպոսին զամենայն եղեալսն. Ամն որոյ մեծաւ պատուով և երգովք հոգևորօք թաղեցին 'ի նշանաւոր տեղւոջ, յորմէ բազում նշանք լինէին 'ի նեղելոցն և 'ի հիւանդս 'ի փառս Քի այ մերոյ:

## ՎԱՍՆ

## ԲԱՐՁՐԱՄԻՑ ԱՆԱՊԱՏԱԿԱՆԻՆ

ՊԱՏՄԵԱՑ մեծն և սուրբ հայրն Ամմոնիոս եթէ եկն առ իս ոմն յանապատականաց միայնակեցացն և պատմեաց ինձ արտասուօք և ասէ. Ես, հայր, ունէի եղբայր աշխարհական և մեռաւ, և մնաց որդի մի երեք ամաց. և իմ լուեալ զայն գնացի 'ի տուն եղբօրն իմոյ և առի զտղայն՝ որ էր երեք ամաց, և բերի յանապատն իմ և սնուցի զնա աշխատութեամբ, ամբրաւով և բանջարով վայրի. և ոչ ցուցի նմա կերպարան կնոջ և կամ աշխարհի, և ոչ միս գիտաց նա, և ոչ ձուկն և ոչ հաց և կամ գինի ճաշակեաց նա և կամ ետես. յամենայնէ յայսցանէ զատուցի զնա և պահօք ճնշեալ սովորեցուցի զնա 'ի տղայական հասակէն, մինչև յորքան եհաս առնակի-սի ճգնութ՟ե. և վարժեցաւ յամենայն առաքինութիւնս, 'ի տքնութիւնս հոգւոյն և 'ի պնդութիւնս պահոց և աղօթից յարաժամ, և անբիծ և սուրբ և անարատ, և ոչ թողուցի զնա 'ի լեռնէն: Այլ այսպէս մնաց այն եղբօրորդին իմ յանապատի առ իս, և ոչ ետես նա գիւղ և ոչ շէն ինչ քաղաքաց և ոչ ծանեաւ նա. զերկրաւոր գործս ամենևին ոչ չար և ոչ բարի:

Այլ եղեալ ութևտասն ամաց այնպիսի ճգնութ՟ե՝ անապատական վարուք ծառայելով տեառն: Այլ 'ի միում աւուր հիւանդացաւ հիւանդութիւն և մեռաւ փախճանեալ զկեանս զայս. և սաղմոսիւք և օրհնութ՟բ և արտասուօք թաղեցի զանապատին մնացեալն(?) և զանբիծ կրօնաւորն զայն զեղբօրորդին իմ, և ուրախ էի 'ի վերայ նորա վասն սրբութ՟ե և ճգնութ՟ե զնայց(?) նորա առ հանդերձեալն: Այլ ոչ գիտէի ես չարի պատահեալս զնորա սիրտն, բարձրամտութիւն և զամբարտաւանութիւն. քանզի 'ի մէջ եղբարց ոչ եկաց, որով ծանուցեալ երևի ամբարտաւանութի և խոնարհութի և հնազանդութիւն 'ի բանից և 'ի գործոց:

Իսկ ես աղաչէի զԱծ ժտելով 'ի նմանէ զի ցուցցէ ինձ թէ յո՞ր դաս սրբոց դասեցաւ եղբօրորդին իմ: Այլ յետ

երրորդ աւուրն տեսանէի յանուրջս տեղի մի նսեմ և ժանտահոտ, և զեղջօրորդին իմ անդ ։ Իբրև զայս այսպէս տեսի, տրտմութեամբ վարանեալ վշտանայի, և սկսայ մեղադիր լինել ա̃յ և ասէի ․ ո՞չ էր երիտասարդն այն անբիծ անարատ ․ ո՞չ զցայգ և զցերեկ ծառայէր քեզ պահօք և աղօթիւք և տքնութեամբ ․ զի՞նչ է զոր տեսի զնա ։ Եւ մինչդեռ ես զայս խորհէի, ահա երևեցաւ ինձ հրեշտակ տեառն և ասէ ցիս ․ զամենայն ձգնութե̃ վարս ուսուցեր նմա, իսկ զխոնարհութի̃ և զհեզութի̃ ընդէ՞ր ոչ ուսուցեր ․ զի ունէր ՚ի սրտի իւրում մեծ հպարտութի̃ և յոյժ անձնապաստանէր՝ համարելով զինքն սուրբ և ընտիր ծառայ ա̃յ, իբր թէ ոչ գոյ այլ քան զնա ․ և զի՞արդ ոչ գիտես եթէ ա̃ծ անձնապաստանից հակառակ կայ, և պիղծ է առաջի ա̃յ ամենայն բարձրամիտ ։ Եւ զայս իմացու, զի թէ ամենայն առաքինութեամբ զարդարեալ է ոք առանց խոնարհութե̃, պիղծ է առաջի տեառն ․ իսկ եթէ ոք խոնարհ և հեզ իցէ, առանց ամենայն առաքինութե̃ հաճոյ կարող է լինել տեառն և սիրելի ․ զի այլ ո՞վ իցէ հանգիստ տեառն, եթէ ոչ հեզն և խոնարհն և որք դողան ՚ի բանից նորա ։ Եւ այժմ գիտասջիր զի յա̃յ անիրաւութի̃ ոչ լինի, և զայն զի պիղծ է առաջի նորա ամենայն բարձրամիտ և հպարտ, թէպէտ բիւր առաքինութիւն ստացեալ ունիցի որպէս քո մնուցեալն որդի ։ Այլ զի թէ գիտացեալ զնա ոչ խրատէիր, ոչ և քեզ թողուլին մեղք քո ․ բայց զի ոչ ծանեար ՚ի սրտի նորա զբաւնեալն, ոչ հոգաբարձու եղեր ։ Այլ այսուհետև զհնազանդեալսն ձեր եթէ ոչ նախ քան զամենայն առաքինութիւս ՚ի խոնարհութի̃ և ՚ի հնազանդութիւն յորդորեալ վարժիցէք, ոչ առանց մեծի պատժի լինիցիք ։ Եւ զայսքան ասացեալ հրեշտակ տեառն գնաց ։ Իսկ ես, ով հայր պատուական, զայս այսպէս տեսեալ և լուեալ սգամ և լամ յարաժամ զկորուստ երիտասարդին ։ Ասէ ցնա հայրն Անտոնիոս ․ յիրաւի, ով եղբայր, ուր իցէ անձնապաստանութի̃, ոչ է նա յա̃յ և ոչ տեսցէ զնա ։

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՄԱԿԱՐԻՈՍԻ

### ՈՐ ՔՕՍԱՆ ՄՂՐՈՆԱՒ ՄԵՐՁ ԴՐԱԽՏԻՆ ԲՆԱԿԵՐ ԳՐԵԱՑ ԶՊԱՏՄՈՒԹԻՒՆՍ ԹԷՈՓԻԼՈՍ ԿՐՕՆԱՒՈՐՆ*

Ի ՎԱՆՍՆ տեառն Ասկղեպիոսի, որ է 'ի Միջագետս Ասորւոց, բնակէի ես Թէոփիլոս մեղաւոր կրօնաւոր։ Այլ յետ երեսուն և ութ ամաց լինելոյն իմոյ 'ի վանսն ասեմ ցայլ կրօնաւոր եղբարսն. խորհուրդք իմ նեղեն զիս երթալ յԵրուսաղէմ և ելանել 'ի լեառն, և շրջե֊ ցայց յանապատն մինչև գտից զանակետաղն 'ի յայրս և 'ի փապարս լերանց ծառայս այ̃ ։ Այլ երկու ոմանք յեղ֊ բարցն Սարգիոն և Իգիոն ասեն ցիս. գնասցուք և մեք ընդ քեզ և մինչև 'ի մահ ոչ թողցուք զքեզ ։ Այլ 'ի միում գիշերի գաղտ 'ի հօրէ վանիցն ելաք 'ի վանիցն, և 'ի հնգետասան օր գնացաք յԵրուսաղէմ երկիր պա֊ գանել սուրբ տեղեացն, և ելաք յԵրուսաղէմէ և դար֊ ձաք յարևելս. գնացաք աւուրս հնգետասան և անցաք ընդ Տիգրիս գետ, և հասաք 'ի պարսիկս և տեսաք զտե֊ ղին յորում սուրբն Մերկերիոս գեղարդեամբն եսպան զՅուլիանոս արքայն զՐնոի ուրացողն. և անտի գնա֊ ցաք 'ի քաղաքն Տիսբոն, յորում հանգուցեալ էին նըշ֊ խարք սուրբ երից մանկանցն անանիանց ։

Այլ ելաք 'ի յերկրէն Պարսից և գնացաք 'ի հնդիկս. և տեսեալ զմեզ սև մարդիկն հնդկաց, փայտիւք և քա֊ րամբք հալածեցին զմեզ 'ի սահմանաց իւրեանց. և մեք գնացաք փախստականք և ոչ գիտէաք թէ յո՛ երթայաք, զի մոլորեցաք 'ի Ճանապարհաց, և գնացաք ընդ դժուա֊ րին երկիր զամենայն ընդ արևելս. ուտէաք վայրի բան֊ ջար, և ջուր ոչ պակասէր մեզ, և հասաք 'ի տեղի յո֊ րում էին ծառք պտղաբերք մրգաւէտք և զոհացաք զայ̃,

* Զվարս համաձայնեցուցաք Մակարայ ըստ Յոյնս յեկեղեցական [illegible] մա֊ [illegible], յորմէ և Գրա֊ փիանոս [illegible] ու 'ի [illegible] համարի, [illegible] մատենագրաց [illegible]։ Այլ [illegible] այնու զի ցայսօր յամենայն [illegible] [illegible] պահի յոյն և լատին, որ և է֊ րէր [illegible], [illegible] և [illegible] [illegible] [illegible] և [illegible] ոչ [illegible] [illegible]։

և յարդեցաք 'ի պտղոյն. և խնդրեցաք յԱյ զի առաջնորդեսցէ մեզ ուր ինքն կամեսցի։ Եւ յուղի անկեալ երթայաք և հասաք 'ի յերկիրն Թզկաց, որ երկայնութի մարդոյն կանգուն մի էր միայն։ Եւ տեսեալք զմեզ երկեան և փախեան 'ի մէնջ։ Եւ մեք ընդ արևելս գնալոյ ոչ դադարեցաք, և գազանաց և վիշապաց և այլ թունաւոր սողնոց հանդիպեցաք, և ամենևին չար մեզ ինչ ոչ առնէին, և ընդ բազում գետս դիւրաւ անցանէաք։ Եւ գնացաք 'ի դաշտն՝ յորում էին անթիւ փիղք, և աներկիւղ անցաք ընդ մէջ նոցա, և երթայաք ընդ որ ինքն Ած առաջնորդէր մեզ։ Եւ տեսաք կամար շինեալ մեծամեծ վիմօք, և գիր 'ի կամարն՝ եթէ. մինչև աստ փախեաւ Դարեհ Պարսից արքայն յԱղեքսանդրէ Մակեդոնացւոյն. և անցեալք ընդ կամարն երթայաք ոչ ինչ ճաշակելով, բայց միայն վայրի խոտ և ջուր։ Եւ յանկարծակի լուաք բազում ձայնս սաղմոսաց և հոտ անուշ խնկոց, և 'ի ձայնէ քաղցրալուր երգոցն և յանուշահոտութենէն ննջեցաք և 'ի քուն եղաք, և շրթունք մեր քաղցրացան իբրև զխորիսխ մեղուաց։ Եւ տեսանեմք յանուրջս այր մի ահաւոր, և եցոյց մեզ ճանապարհ և ասէ. գնացէք ընդ պողոտայս և մի խոտորիջիք մի յաջ և մի յահեակ։ Եւ կալեալ զմեզ զձեռանէ յարոյց, և էաք յարգեալք որպէս 'ի կերակրոյ, և սիրտք մեր զուարթք, և ըստ տեղեանն երթայաք ընդ արևելս։ Եւ եղեն ամ̃ աւուրք գնացից մերոց երեք ամառն և երեք ձմեռն։

Եւ գտաք քարայր մի զարդարեալ գեղեցիկ որպէս տաճար Այ, և անուշահոտութի բուրեաց 'ի ներքուստ. և մտեալ 'ի ներքս զոք ոչ գտաք, և նստաք անդէն մինչև յերեկոյ։ Եւ ելեալ յայրէն տեսաք 'ի հեռաստանէ որպէս կերպարան մարդոյ, և եկեալ մերձ տեսաք մերկ, սպիտակ հերօքն գլխոյ և մօրուաց ծածկեալ էր ամենայն անձն։ Եւ նորա տեսեալ զմեզ անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց, և երդումն տուեալ մեզ ասէ. յԱյ իցէք՝ յայտնեցէք ինձ, և թէ 'ի սատանայէ իցէք՝ 'ի բաց գնացէք յինէն 'ի տառապեալ և 'ի մեղաւոր Սակարիոսէ։ Նա մեք աղաղակեցաք միաբան. օրհնեա ըզմեզ, հայր սուրբ, մեք ծառայք եմք Այ, և 'ի տղայութենէ հրաժարեցաք 'ի սատանայէ։ Եւ եկեալ ծերոյն առ մեզ վերացոյց զձեռն յերկինս, աղօթեաց առ Ած

և որշնեաց զմեզ: Եւ 'ի բազում ծերութենէ աչքն շլա-
ցեալ էին, և յօնիցն և յարտևանանցն ծածկեալ, և հերք
մորուացն ծածկեալ էին զլանջսն և զորովայնն և ըզ-
ծնկսն և զոտսն. Նոյնպէս և յետևին հեր գլխոյն թա-
լոյժ, և մինչև յոտսն ծածկեալ զամենայն յետևսն ան-
ձինն, և ձայն խօսիցն նուաղ իբրև 'ի խորոց, և մարմինն
երևեցաւ մեզ որպէս կրիայի: Եհարց մեզ՝ ուստի՞ ե-
կէք և կամ որպէս և կամ ընդէ՞ր եկիք առ իս: Իսկ մեք
պատմեցաք նմա զամենայն լեալսն 'ի մեզ: Եւ նա ա-
սէ. դուք որ ընդդէմ յարևելս կամք եղիք գնալ մինչև
տեսանիցէք թէ ուրանօր սպառին գնացք մարդկան,
ուր ոչ է կար մարդկան գնալ որպէս ասացիք, և կամ
պատահեալ լինիք լերինն յորում իցեն փայտք դրախ-
տին, և ոչ գոյ այլ տեղի ներքսագոյն որ կարասցէ մարդ
կամ թռչուն կամ գազան երթալ: Քանզի ես մեղա-
ւորս բազում անգամ փորձեցի. զի յուղի անկեալ գը-
նայի զցայգ և զցերեկ, և յորժամ աշխատէի և նստէի՝
դարձեալ լինէի յայսմ տեղւոջս. յայնժամ եղև առ իս
ձայն և ասէ. մի փորձեր զարարիչն քո, զի ոչ ոք կարէ
անցանել ընդ այդ տեղիդ: Եւ ասեմ. ընդէ՞ր, տէր իմ:
Յայնժամ ասէ ցիս. վասն զի քսան մղոն է այստի մինչև
'ի դրախտն զոր տնկեաց Ած և եդ զԱդամ, և պարըս-
պեալ սրովբէափայլ ամրութբ հրեղէն հրով և սրով:

Եւ յորժամ լուաք զայն յերանելւոյ Մակարիոսէ յա-
հի եղաք և երկեաք, և անկեալ յերկիր գոհացաք զԱյ
և զՄակարիոսէ որ պատմեաց մեզ զքաջանչելիսն այ: Եւ
ընդ երեկոյն ասէ ցմեզ. որդեակք, յետ կայէք սակաւիկ
մի, զի երկու մանկունս ունիմ և յերեկորեայ յերեկոյ
գան առ իս, և երկնչիմ մի իբրև զօտար և զանծանօթս
ի՞նչ սաստիցեն ձեզ: Յայնժամ խոյս տուաք 'ի տեղւո-
ջէն, և եկին երկու առիւծս յընթացս և անկան 'ի յոտս
քծնելով և երկիր պագին. և մեք երկեաք յոյժ: Եւ
նորա եդեալ ձեռն 'ի վերայ նոցա ասէ. որդեակք իմ,
դոքա 'ի մարդկանէ յերկրէ եկեալ են առ մեզ, և մի
չար առնիցէք դոցա, զի այ ծառայք իցեն: Եւ ձայնեաց
զմեզ սուրբ ծերունին՝ մի երկնչիք, եկայք առ իս և կա-
տարեսցուք զերեկոյին ժամն: Եւ մեք գնացաք ահիւ և
երկիւղիւ. և եկին երկու առիւծքն, խոնարհեցուցին
զգլուխս իւրեանց և երկիր պագին մեզ, և մեք կատա-

ընթացք զերեկոյին փառաբանութեան և 'ի հանգիստ զա-ղարեցաք ։ Եւ ընդ առաւօտն նստեալք 'ի միասին առնեմք ընդ ծերոյն. հայր սուրբ, պատմեա մեզ երբ եկիր դու աստ և քանի ժամանակք իցեն որ բնակեալ ես յայսմ տեղւոջ ։

Յայնժամ սկսաւ ասել. ես աստուածեալս եմ 'ի Հռո-մայ՝ որդի իշխանի, և բռնութ. առին ինձ կին. և ընդ երեկոյն յորժամ կամեցան արգիլել 'ի սենեակ առա-գաստին, յիշեցի զփառս կուսութե և զորբութի անշա-ղախ մարմնոյ, զորոյ զիղձն ունէի 'ի մանկութէ իմմէ ։ Եւ աղօթեալ առ Տէր ած ճանապարհորդել ինձ 'ի կամս իւր և առ Սուրբն առաջնորդել յարում ցանկա-ցեալ փափագեցի, և ելի գաղտ և փախեայ և թաքեայ զեօթն օր 'ի տան պառաւու կնոջ մի, մինչ նոքա յուղ-մանէ ճանապարհաց դադարեցին. և առ հեռաւորն ըն-թացան խնդրել և հարցանել զվանորայքն և պատուի-րել անապատաւորացն; զի մի պահեսցեն և պատիժս կրեսցեն յարքունուստ ։ Զի գիտէին ծնողքն իմ զփա-փագն իմ, որ ընդ կուսութե և ընդ վարս սրբութե էր և միայնակեցութե. և յոյժ դժուարէին ընդ կամս իմ որ ընդ այս էր, զի ընդ մեծութի աշխարհիս պատաղեալ էին ։ Եւ յետ եօթն աւուրն օրհնեցի զպառաւ կինն և ելի 'ի գիշերի և փախեայ 'ի քաղաքէն ։

Եւ առաքեաց Տէր զՌափայէլ հրեշտակն իւր 'ի կերպս մարդոյ ալեւորի. և ասէ. ո՞ւր կամիս երթալ, հայր ։ Եւ նա ասէ. ուր դու եղեալ ես զհետդ երթալ, անդ կամիմ և ես ։ Եւ ասացի ցնա. Տէր առաջնորդես-ցէ մեզ զճանապարհս կենաց ։ Եւ երթայի զկնի նորա, և 'ի գիւղս խնդրէաք հաց և ուտէաք և երթայաք ընդ երկիր ։ Եւ գտաք ասելն 'ի բաց թողից. 'ի յերկս ամս հասաք եօթն աւուր օթեւանօք հեռի 'ի տեղւոջէս յայս-մանէ, և մտեալ յայր մի հանգեաք և 'ի քուն եղաք. և յորժամ զարթեաք, զալեւորն ոչ տեսաք, և յոյժ տրտմեցայ և լացի ։ Եւ դարձեալ երեւեցաւ ինձ ալեւորն և ասէ. ես եմ Ռափայէլ հրեշտակն այ որ բերի զքեզ մինչև ցաստ. և մի տրտմիր, այլ փառաւորեա զած զի անցեր ընդ խաւարային երկիր և տեսեր զայն աքանչե-լիսն. այժմ երթիջիր ուղիղ ընդ ճանապարհդ ։ Զայս ասացեալ աներեւոյթ եղև ։ Իսկ ես զարմացայ և օրհնե-ցի զած որ խնամեաց զիս հրեշտակօք իւրովք, և առաջ-

նորոգեաց ինձ յանքոյթ նուաճանգիստ, եւ ոչ մնաց առ իս տրտմութի, այլ մխիթարեալ երթայի յաղի անկեալ:

Այլ հանդիպեցաւ ինձ ցիռ արօտական, եւ ետու նմա երդումն յարարիչն ա՟ծ թէ ցոյց ինձ ճանապարհ. եւ սկսաւ գնալ առաջի իմ եւ ես զկնի երկու օր: Այլ ապա հանդիպեցաւ ինձ եղջերու մի մեծ յոյժ, եւ ցիռն դարձաւ յետս. եւ գնայի զկնի եղջերուին երեք օր: Այլ հանդիպեցաւ ինձ վիշապ մի ահաւոր, եւ եղջերուն դարձաւ 'ի տեղի իւր. եւ երկեայ 'ի վիշապէն եւ ետու երդումն զի մի չար ինչ արասցէ ինձ: Այլ վիշապն կանգնեցաւ 'ի վերայ տտանն եւ մարդկային բարբառով ասէ ցիս. բարի եկիր աստ, ծառայ ա՟յ Մակարիէ. աւուրք իցեն որ մնայր քեզ լեառնս այս, եւ պատրաստեալ է քեզ աստ տուն բնակութե, եւ Ռափայէլ հրեշտակապետն եցոյց զքեզ ինձ եւ զկերպարանս քո եւ զանուն քո ասաց ինձ. արդ եկեսցիր զկնի իմ: Այլ սկսաւ գնալ 'ի վերայ տտանն եւ ես զկնի, եւ բերեալ եհան ընդ դուռն այրոյս, եւ անյայտ եղեւ յաչաց իմոց: Այլ իբրեւ մտի յայրս, գտի մատակ առիւծ մի մեռեալ եւ երկու կորիւնս 'ի վերայ կենդանի: Այլ ես հանեալ զառիւծն արտաքս թաղեցի, եւ սնուցի զերկու կորիւնսն 'ի ծայրից ոստոց ծառոց, եւ որպէս զաւակք եղեն ինձ:

Այլ մինչդեռ զայս ամենայն պատմէր մեզ Մակարիոս, եհաս ագռաւ մի եւ նստաւ 'ի միջի մերում ունելով 'ի բերանն բլիթ մի հաց, եւ եդեալ առաջի մեր թռեաւ: Այլ ասէ ծերն. մինչեւ ցայսօր ամենայն օր կէս նկանակի բերէր ինձ ագռաւն, եւ այսօր եբեր եւ զձերն. արդ կերիցուք նախ զա՟յ պարգեւս, եւ ապա պատմեցից ձեզ վասն մեղաց իմոց: Այլ յորժամ կերաք եւ գոհացաք զա՟յ, ասէ ծերն. 'ի գալն իմ յայրս յայս յետ ութ եւ տասն ամաց ելի յայրէս եօթն ժամու աւուրն. եւ եկեալ էր սատանայ փորձել զիս, եւ ես ոչ ծանեայ զխարդախութի, զի անհոգացեալ էի եւ ասէի. արդ անցայ զամենայն փորձութիւս սատանայի, զի զհատն անմահութեան առի եւ 'ի վայրս սուրբս կոխեցի եւ ա՟ծատունկ դրախտին մերձ եւ առընթեր բնակեցայ, զինչ այլ կարող իցէ առնել չարն, որովհետեւ աստ հասանել արժանացայ: Ի յայսպիսի խորհրդով անհոգացեալ էի, եւ ոչ իմաստնացայ եւ ոչ խնդրեցի 'ի տեառնէ խնամել զայրաք

ոչ միանձնացեալս, այլ զօրէն անասնոյ անմտացայ և յապահովս էի աներկիւղ գոլով 'ի պատերազմաց, և յանախտութեն համարէի զիս ։ Այլ յելանելն իմ յայրէն եդ առաջի իմ պայծառ և վայելուչ վարշամակ, և ես թշուառականս առի զվարշամակն և եդի յայրս և ասեմ 'ի միտս ․ ուստի՞ իցէ այս վարշամակս աստ 'ի հեռաւորս անապատիս ․ և ոչ ածի զմտաւ եղկելիս՝ թէ ոչ է հնար աստ այնպիսի նիւթոյ աշխարհի գտանիլ, և ոչ զգաստացայ և ոչ աղօթեցի առ ա̄ծ ցուցանել ինձ զայս թէ ուստի իցէ ։ Այլ 'ի միւս այլ աւուրն դարձեալ ելի յանապատէս և գտի կանացի կարմիր կօշիկս, և առեալ իմ եդի մերձ վարշամակին, և յիմարեցայ ապշեալս և խաչ ոչ հանի յերեսս և զա̄ծ ոչ յիշեցի 'ի ժամուն յայնմիկ, և ոչ քննեցի թէ յուստ է այս և կամ զինչ պատշաճ էր զայնպիսի ինչ առնուլ 'ի ձեռս կամ մուծանել յայրս իբրև պիտոյ ինչ զանպէտն զայն և զանօգուտն ։

Այլ յերրորդ աւուրն ընդ առաւօտն ելի յայրէս, և ոչ յայնժամ խաչ հանի յերեսս ․ և տեսանեմ կին մի նստեալ ընդդէմ իմ զարդարեալ պայծառ զգեստիւք և ասեմ ․ ով կին, ուստի՞ դու եկիր աստ ։ Այլ նա դառն արտասուօք լայր, որ և զիս լացոյց, և ասէ ցիս ․ ես գերիս և թշուառականս 'ի Հռոմայ քաղաքէն եմ դուստր հռոմայեցւոյ իշխանին, և բռնադատեցին զիս ծնողքն իմ և ետուն ինձ այր ․ և յերեկոյ յորժամ կամեցան արգիլել զիս ընդ փեսային 'ի սենեակ առագաստին, այրն իմ որ պսակեցաւ ընդ իս անյայտ եղև ․ և յետ սակաւ աւուրց յորժամ ոչ գտաւ, փախեայ և ես 'ի ծնողաց իմոց, և ելի 'ի լեառն և մոլորեցայ 'ի Ճանապարհիս և յանապատիս, և այժմ երկոտասան ամ է որ հալածէի 'ի գազանաց և 'ի դիւական երևմանց ․ այժմ ա̄ծ հանդիպեցոյց զքեզ ինձ, ոչ գիտեմ թէ ուր իցեմ ։ Այլ ես տառապեալս և եղկելիս յամենայնի դարձեալ ոչ հանի խաչ յերեսս և ոչ յիշեցի զա̄ծ իմանալ թէ ո արդեօք իցէ երևեալն ․ այլ ապշեալ յիմարեցայ և հաւատացի կնոջն, և յիշեցի զհարսանիսն և ասեմ 'ի միտս իմ, թէ դա իցէ կինն իմ, և չկայ հրաման բաժանիլ ինձ 'ի դմանէ ․ զի զոր ա̄ծ զուգեաց, չէ պարտ մեկնել ․ և թէ չէր հրաման յա̄յ, զիա՞րդ կարէր սա զայսքան դժուարութիւն Ճանապարհիս հատանել և անցանել,

կամ զխնդրդ եկեալ եգիտ զնա զայրն իւր։ Յայնժամ կալեալ զձեռանէ նորա և մուծի յայրն, և էր յոյժ քաղ-ցեալ, և ետու նմա զծայր ստոց ծառոցն. և նա առեալ ուտէր, զի ինձ այնպէս առաջօք երևեցուցանէր իբր թէ ուտէր, և զարտասուսն հեղոյր և սիրտ իմ ճմլէր, և էր մորօքս յիմարեալ, և խաչ ոչ հանի յերեսս իմ, և 'ի վա-րանմանէ խորհրդոյս եղեալ զգլուխս նմջեցի։ Այս յա-րուցեալ կինն էառ զձեռն իւր մերկ 'ի յանձն և ընդ մարմինս իմ վանէր. և ամենևին զցանկութիւն կամաց ոչ գիտէի, նա զարթոյց զիս և խախտեաց զմարմինս 'ի ցանկութիւն, և բորբոքեցայ 'ի մեղս։ Այս յորժամ զար-ծեցի զանօրէնութիւնսն, կինն աներևոյթ եղև, և զայս ես թշուառականս յօրայս 'ի վերայ երկրի. և որպէս 'ի ծանր քնոյ սթափեցայ 'ի սատանայական պատրանացն և եկի 'ի միտս իմ, և ծանեայ զմեղս իմ որ չար և ծանր էր յոյժ։

Այս ելի յայրէս և անկայ 'ի վերայ երեսաց իմոց և ողբացի դառն արտասուօք, և փախեան յինէն երկու ա-ռիւծքն և յիս այլ ոչ գային և ոչ հնազանդէին ինձ, զի ծանեան զանօրէնութիւն իմ. և ես եղկելիս ոչ դադա-րէի յաղօթելոյ աղաչելով զՏէր, զի թողցէ զմեղս իմ և հնազանդեցուսցէ ինձ զերկու առիւծն իմ, զի որպէս զառաջինն իմ էին։ Այս մարդասէրն Տէր ոչ անտես արար զաղաղականս իմ, և դարձան առ իս առիւծքն յետ ութ աւուր. և ես մտի յայրս և նոքա ընդ իս, և հրամայեցի նոցա և փորեցին յանկիւն այրիս ձանկօք իւրեանց զեր-կու օր. և յորժամ եղև խորն մարդաչափ մի, իջի 'ի խորն և տարածեցայ որպէս մեռեալ, և աղաչեցի զա-ռիւծսն և դարձուցին զհողն 'ի վերայ իմ և թաղեցին զիս, և էի 'ի գբին ծածկեալ հողով ութ օր, և եղէ ես որպէս կաւ և ոչ մեռայ, և էին միտք իմ առ իս։ Այս յետ ութ աւուրն հերձաւ այրն 'ի վերուստ և պատառ-եցաւ և հողն 'ի վերայ իմ, և տեսի զլոյս և զահագին զՏէր, որ ջնջեաց զմեղս իմ, և մարմինս իմ եղև որպէս էրն յառաջագոյն. զի հողն վերացաւ 'ի ներքուստ 'ի վեր և եհան զիս արտաքս, և ապա մարմինն իմ առողջեցաւ որ-պէս էրն, և զօրացայ և կանգնեցայ և ելի յայրէս, և տեսի առաջի դրացս բուսեալ զարմաւ խուռ 'ի հողի վե-րայ։ Այս խնամարհեցուցեալ զծունկս իմ եղի զձեռակալս.

և զձեռս յերկինս, և տատամօքս կործեցի զշալոյն և կերայ և յագեցայ և զօրացայ։

Այլ համբարձի զաչս և զձեռս յերկինս զութ օր և զութ գիշեր ոչ ինչ ճաշակելով աղաչէի զԱծ։ Այլ յետ ութ աւուրն տեսի 'ի չորս անկիւնս այրոյս լոյս առանց հրոյ, և 'ի մէջ լուսոյն պայծառագոյն լոյս քան զարեգակն, և 'ի մէջ լուսոյն զփրկիչն իմ Քս մարդակերպ՝ ծիրանի զգեստիւք և պսակ անպատմելի և անիմանալի 'ի գլուխն, և սքանչելի և զարմանալի ձայն բարբառոյ ելանէր 'ի բերանոյ նորա որպէս երգս օրհնութեան. և յետ ձայնի նորա եղև թնդիւն յերկնից որպէս բիւրք բիւրոց հրեշտակաց, և լուայ որ ասէին՝ ամէն ամէն ամէն, յաւիտեանս յաւիտենից ամէն։ Այլ 'ի նոյնժամայն ել Քս յայրէս և վերացաւ յերկինս, և իջաւ հրեղէն ամպ յերկնից և շրջայց զպայծառ լոյսն, և վերացաւ հրեղէն ամպն յերկինս, և եղեն կայծակունք և շանթք և որոտք, և լերունք և վէմք և ծառք և դաշտք և գազանք և անասունք աղաղակեցին որպէս 'ի միոյ բերանոյ՝ սուրբ սուրբ սուրբ տէր զօրութեանց։ Այլ ես տառապեալս զարհուրեցայ և ապշեցայ և պապանձեցայ զութ օր այնպէս իբրև զթմրեալ յահէ սքանչելի երևմանցն, և զարմացեալ և հիացեալ յահի կայի աչօք պշուցեալ, բայց սրտիւ ընդարմացեալ զայն ութ օրն այնպիսի կայի կիսամահ. և երկու առիւծքն ևս անկան որպէս մեռեալք, և ոչ կանգնեցան և ոչ կերան և ոչ ննջեցին որպէս և ես։ Այլ ծանեայ որ յամպն և 'ի լոյսն որ եմուտ 'ի յայրն իմ, փրկիչն իմ էր Քս, և մաքրեաց և սրբեաց զայրն։ Այլ յայնմ օրէն զմեռանելն ինձ լաւ համարէի քան զկեալն, զի գիտացի որ մարդն ոչ ինչ է. և սքանչանայի ես մեղաւորս և անարժանս՝ թէ որպէս եղէ արժանի տեսանել զայսպիսի սքանչելիս։ Այլ յայնմ օրէ մինչև ցայժմ իցեն ամք վաթսուն, և յայնմ ժամուն էի քառասուն ամաց, և յորժամ եկի յայրս յայս և 'ի տեղիս՝ էի ամաց քսան և երկու։ Արդ լուայք, եղբարք, զոր ինչ գործեցի յերկրի, զի պատմեցի ձեզ։ Այլ եթէ կարող էք համբերել այսր ամենայնի՝ կացջիք աստ, և եթէ ոչ՝ տէր առաջնորդեսցէ ձեզ ընդ որ եկիք։

Իսկ ես Թէոփիլոս մեղաւոր կրօնաւորս և որ ընդ իմն էին երկու եղբարքն, յորժամ լուաք զայս՝ փառաւորե-

ցաք զմեծ, վասն զի ելից զիղձն և զփափագն մեր՝ զի ար-
ժանի եղաք տեսանել զանակնկալն յանապատին զերանելի
ծերն զՍակարիոս և խօսել ընդ նմա, և տեսանել ըզ-
վայրս ցանկալի դրախտին և զհոտն անուշութեան և ան-
մահարար, յորմէ զմայլեալ լիացաք քաղցրութեամբ և ու-
րախութեամբ: Եւ հաճոյ թուեցաւ մեզ՝ որ էր կամքն
նոյ, դառնալ մեզ անդրէն յաշխարհ, և պատմել զսքան-
չելիսն զոր տեսաք և զպատմութիւն երանելի ծերոյն առ
'ի յօգուտ լսողաց: Եւ գնացին երկու առիւծքն առ
սուրբ ծերն, և նա եդեալ զերկու ձեռսն 'ի վերայ նոցա
օրհնեաց զնոսա: Յայնժամ եկին և առաջի մեր և 'ի
խոնարհ երկիր պագին մեզ: Նաև մեք ասացաք ցսուրբ
ծերն. տուր մեզ, հայր պատուական, հրաման դառնա-
լոյ յաշխարհ և պատմելոյ վասն քո 'ի քաղաքս և 'ի գա-
ւառս և յանապատս և յեկեղեցիս և յԵրուսաղէմ: Եւ
նորա յարուցեալ յաղօթս եկաց վասն մեր և յանձ-
նեաց զմեզ 'ի տէր մեր Յս Քս, զի առաջնորդեսցէ
մեզ 'ի ճանապարհս խաղաղութեան: Եւ հրամայեաց եր-
կու առիւծուն, և անցին առաջի մեր և առաջնորդե-
ցին մեզ մինչև 'ի կամարն Աղեքսանդրոսի, որ փախոյց
զԴարեհ Պարսից արքայն: Եւ խոնարհեցուցեալ եր-
կու առիւծքն զգլուխս իւրեանց երկիր պագին մեզ և
դարձան առ սուրբն Սակարիոս. և մեք աղօթիւք նո-
րա խաղաղութեամբ և թեթևով դարձաք յաշխարհ և
պատմեցաք վասն ծերոյն սրբոյ:

### ՎԱՍՆ

## ՈՐՔ ԶԴՐԱԽՏԻՆ ԼԵԱՌՆ ԳՏԻՆ

### ԵՒ ԶՍՏՈՐՈՏԻՆ ՀԱՍԵԱԼ ՏԵՍԻՆ*

Ի ԺԱՄԱՆԱԿՍ տեառն Ներսէսի կլայեցւոյ Հայոց
լուսաւոր վարդապետի և կաթողիկոսի միանձնական

* Ցանկանալ գրութեան հնոյ ոճոյ յա-
ղագս անխորհուրդ ճառից գրուածին յօր-
դորեցաւ մարդկային շինի ժամանակաց, և
ըղձիւք նորափեսին նորոյն հրաւիրեցաւ
նոցա, ի դժուարինս ջեռն որչին յան-
գնալի ուղղորութեան, այլ համառօտա-
գրին և ոչ ինչ զոր ցանկային. և որք
լուանն՝ առանց թանձրացուցին զմեկ-
որն, զի կամ ինքեանք և նորին յան-
խախտ ուղղութեամբ պահպանեալ էին, և

Եղբարք վեց միախորհուրդ եղեալ գնացին յարեւելս կոյս ամս վեց, խնդրելով 'ի տեառնէ յամենայն ժամ յաղօթսն՝ հասուցանել զնոսա յանքոյթ վայրս դրախտին մերձ առ ստորոտովն։ Եւ դիպեցան լերինն միոյ ահաւորի, եւ վեց ամիս գնացեալ եղեն ընդ նա զառ 'ի վեր. ապա բուրեաց առ նոսա հոտ անմահութե, եւ զմայլեալ լիացան եւ զօրացան։ Իսկ մինն 'ի նոցանէ ասէ. դարձայց եւ պատմեցից աշխարհի զանհամեմատ զուարճութիւն զայս։ Ասեն ցնա. դու գիտես, բայց մեք աստ մնալոց եմք։ Եւ եկեալ միանձնականն այն բազում աշխատանօք եւ քարոզէր զտեսեալ վայրն ծաղկաւէտ եւ անմահահոտ, որ ստորոտն է դրախտին։ Եւ լուեալ անհաւատալի թուէին զօղ զպատմեալսն 'ի նմանէ։ Նա իբրեւ ետես ոչ ոք օգտեալ 'ի նմանէ, եւ վասն եղբարցն յորոց որոշեցաւ, եւ 'ի վայրէն այն անուշահոտ զրկեցաւ, լայր անմխիթար եւ ինչ ոչ առնէր այլ. եւ 'ի յարտասուաց զնա դադարեալ ոչ ոք ետես, մինչ զկապ ական նորա մաշեալ՝ շլացուցեալ էր արտասուսն զաչս նորա։

Եւ զայն եկեալ պատմեցին մեծի վարդապետին՝ Եփրեմի։ Եւ նա կոչեալ առ ինքն զմիանձնականն զայն պահանջեաց 'ի նմանէ երդմամբ զպատճառս արտասուացն՝ որ անդադար հեղոյր անկարելի։ Եւ ասէ. վեց եղբարք գնացաք զվեց ամ յարեւելս կոյս եւ դիպեցաք լերին մի, ընդ որ գնացաք վեց ամիս 'ի վեր. ապա բուրեաց մեզ հոտ անպատմելի եւ արբեցաք զմայլեալք՝ մոռանալով զամենայն հոգս, եւ թէ 'ի մարմնի իցեմք։ Եւ երեւեալ հրեշտակ տեառն ասաց. դրախտն յայսմ լերին վերայ կայ եւ հոտ անտի է. կացէք այդր մինչեւ 'ի լրումն աշխարհի եւ յօրն դատաստանին եւ մտանէք 'ի նա, եւ յայսմհետէ ոչ նեղէ զձեզ կարիք մարմնոյ, ոչ քաղց եւ ոչ ծարաւ եւ ոչ հիւանդութիւն եւ ոչ մահ։ Եւ ես ասեմ. թող երթամք ասեմք երկրի զոր տեսաք եւ լուաք, եւ օգտեսցին, եւ նոքա ոչ կամեցան։ Եւ ես եկեալ պատմեցի, եւ առասպել համարին. եւ զի թողի զեղբարսն իմ եւ զպտուղ վաստակոցն իմոց, չկարեմ դադարել 'ի լալոյ։ Եւ գրեաց զայս սուրբն Եփրեմ 'ի մէջ մեկնութեան արարածոց եւ քարոզէր ամենեցուն։

կամ առ հեշտի ունելեաց կերպարանս իմն տարրագունեան էական նմին. եւ առ անխիղճ հաստատուն՝ զննելեան անյիշատակ Բոլէոս որք գրեցին, կցայս 'ի դատխաւելի ախմէն ... ուրեմն ածին։ Տես եւ զծանօթութիւնն յէջ 255։

րում տեսանելով զնա ։ Զայս ասելով իմ աներեւոյթ եղեւ չարն, զի յայտնի եղեւ նենգութիւն նորա, եւ այլ ոչ եւս երեւեցաւ յայտնի չարին ։ Եւ ահա այսօր լցաւ վեշտասան ամն ապաշխարութեան իմոյ եւ ծառայելոյ տեառն յամենայն անձնէ իմմէ, եւ այսօր է օր կատարման իմոյ զոր եցոյց ինձ բարերարն իմ Քս, եւ հայցեմ յիշել զառաւապետալս Մարկոս ։ Զայս ասելով անկաւ յոտս սրբոյ Դանիէլի եւ հայրապետին, եւ յետ այնորիկ աւանդեաց զհոգին իւր 'ի Քս յուլիսի քսան եւ մի ։ Եւ նոյնժամայն անուշահոտութիւն լցաւ տունն, եւ զահի հարեալք արտասուօք թանային զինքեանս, եւ փառս մատուցանէին տեառն այ ։ Յայնժամ բարձեալ տարան զնա յեկեղեցին, եւ ըստ արժանեացն սաղմոսիւք եւ օրհնութեամբ թաղեցին զնա ։ Եւ յետ աւուրցն դիւահարք ոմանք երթեալք հանին զհողն, եւ 'ի հանելն զհողն բըժշկեցան . յայնժամ դարձեալ լցին հողով ։ Դարձեալ եւ այլ դիւահարք եկեալ փորեցին զհողն, եւ զմարմինն երանելւոյն ոչ գտին, եւ նոյնժամայն ողբեցան, քանզի դեւք կամէին նախատել զսուրբն եւ մեծ ծածկեաց զնա 'ի դիւաց . եւ արար նախանձոտս զդեւսն 'ի ձեռն նորա, բժշկելով զդիւահարեալսն եւ հալածելով զդեւսն 'ի նոցանէ . որով փառաւորեցաւ երանելին Սալոս Մարկոս 'ի փառս Քսի այ մերոյ ։

## ՎԱՐՔ

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՍԻՄԷՈՆԻ

### ՈՐ ՎԱՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՂՈՒԱՃԱՆԱՑՐ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՆԱՊԱՏԱԿԱՆԻ

Սիմէոն եւ Յովհաննէս էին յԱսորւոց յԵդեսիա քաղաքէն, եւ Սիմէոն մայր միայն ունէր . իսկ Յովհաննէս հայր միայն, եւ արար հարսանիս որդւոյ իւրում Յովհաննիսի եւ ետ նմա կին ։ Եւ 'ի տարւոջն յայնմիկ կամեցան գնալ յԵրուսաղէմ . եւ ծնողքն առին զորդիս իրեանց եւ գնացին յԵրուսաղէմ երկիր պագանել սուր-

տուեալ են և սուրբ խաչին Քրիստոսի 'ի սեպտեմբերի չորեք-տասան, և աղօթեալ ամենայն սուրբ տեղեացն՝ գնացին շրջել 'ի վանորայսն Եգիպտոսի և Յորդանանու, և ցան-կացան ուսանել զկարգ կրօնաւորութեան և լինել 'ի վանս։ Եւ հրաժարեցին 'ի ծնողացն և գնացին յայնկոյս Յոր-դանանու 'ի վանսն երանելւոյն Գերասիմոսի և գտին զառիւծն 'ի բաց. քանզի յառաջագոյն երևեցոյց նմա ըզ-գալուստն Սիմէոնի և Յոհաննու՝ երանելւոյն Գերա-սիմոսի, և նա հրամայեաց բանալ զդուռն վանացն ընդ-դէմ նոցա. և նոքա մտեալ առ երկիր պագին մեծին Գերասիմոսի։ Եւ նա տեսեալ զնոսա ասէ. բարի ե-կիք, զաւակք Քրիստոսի։ Եւ եդեալ զձեռս 'ի վերայ նոցա արար զնոսա կրօնաւորս։ Եւ յետ եօթն աւուր աղջե-ցութեան նոյ ողջունեալ զամենապնծեաց հայր վանացն Գե-րասիմոս գնացին 'ի լեառն։ Եւ երևեալ նոցա 'ի ձա-նապարհին հրեշտակ տեառն առաջնորդեաց նոցա մին-չև յանապատն Եղիայի, և անդ բնակեցան որպէս ան-մարմինք 'ի մարմնի հրեշտակական վարուք և խստակրօն ձգնութեամբ բազում աւուրս։ Եւ յայտնեաց նոցա Տէր զՍիմէո-նի մօրն մահն և զՅոհաննու կնոջն, և գոհացան զԱյ։

Եւ յետ բազում ամաց ապաշխարութեան եղև յԱյ առ Սիմէոն գնալ յաշխարհ և ընդ մարդասիրութեան յիմա-րանալով դարձուցանել զմեղաւորս յապաշխարութիւն։ Եւ ասէ Սիմէոն. գնամ յաշխարհ, ով եղբայր իմ Յո-հաննէս, որպէս զի յիշեսցես զիս և մի մոռանայցես։ Իսկ Յոհաննէս բազում անգամ աղաչեաց զնա զի մի ելցէ յանապատէն, և նա ոչ կամեցաւ լսել նմա, քան-զի ասէր. ես երթամ և յիմարութեամբ խաղ ածեմ զեր-կիր։ Ասէ Յոհաննէս. գնասցես Տէր. բայց յուսամ 'ի տէր Տէր իմ, զի գերեզմանն մարմնոյ քո ընդ մարմնոյս ի-մոյ եղիցի յանապատի։ Եւ իջեալք 'ի լեռնէն ողջու-նեցին զմիմեանս լալով, և Յոհաննէս դարձաւ յանա-պատն, իսկ Սիմէոն գնաց յԵրուսաղէմ երկիր եպագ գերեզմանին Քրիստոսի և այլ սուրբ տեղեացն, և խնդրեաց յԱյ զի զգործս իւր ոչ յայտնեսցէ 'ի կենդանութեան իւր։ Եւ սկսաւ խաղալ ընդ մանկունս, և 'ի նոցանէ անուա-նեցաւ սալոս, որ է յիմար։

Եւ գնաց յԵմեսացւոց քաղաքն և եգիտ անդ մե-ռեալ շուն մի և կապեաց լար յոտն և քարշելով ընդ

մէջ քաղաքին ասէր. քարշեցէք, մանկունք, քարշեցէք։ Եւ մանկունքն զհետ երթային ծափս հարկանելով և ասէին. քարշեա, աղուաշ, դքո մատուցդ. քարշեա, յիմար. զկնիկուղզ քո։ Եւ տարեալ ընկէց զմեռեալ շունն առաջի խանութի միում. և ելեալ վաճառականն գան եհար զնա գաւազանօք ուժգին, և կապեաց պշուռն ՚ի պարանոցն երանելւոյն Սիմէոնի մինչև եհան և ընկէց արտաքս։

Եւ դարձեալ ՚ի միում աւուր առեալ ընկոյզ յոլով և եմուտ յեկեղեցին, և ելեալ յամպիոնն ձգէր մի մի ՚ի վերայ կանթեղացն և շիջուցանէր զլոյսն և հեղոյր ըզձէթն։ Յայնժամ բարկացեալ եկեղեցպանն՝ ելեալ իջոյց զնա գանելով, և քարշեալ հանէին զնա արտաքոյ եկեղեցւոյն, քանզի ընդդէմ անկեալ ոչ կամէր ելանել։

Եւ երանելին Սիմէոն յիմարն ա̃յ ՚ի շաբաթն մի անգամ ճաշակէր։ Եւ յորժամ գիտաց թէ յայտնեցաւ նորա պահոցն պնդութիւն, յաւուր կիրակէի առաւօտուն առեալ միս, և երթալով ընդ մէջ քաղաքին ուտէր։ Եւ տեսեալ զնա այնպէս՝ ասէին. արդարև յիմար է և ոչ գիտէ սա զինչ է պահք և կամ զինչ տօն։ Իսկ յաւուրս քառասնորդաց պահոցն զամենայնն անսուաղ եկաց մինչև ՚ի մեծի հինգշաբաթին, և հաղորդեալ ՚ի սուրբ խորհրդոյն ՚ի ծածուկ, ՚ի մեծի շաբաթուն առաւօտուն առաջի ամենեցուն առեալ հաց և զկնի ուտէր. և ասէին ամենայն ժողովուրդն՝ աղուաշ է և յիմար։

Եւ էր յայնժամ ա̃ծասէր սարկաւագ մի անուն Յովհաննէս. սմա միայն յայտնեցաւ առաքինութիւն ճգնութեան երանելւոյն Սիմէոնի։ Եւ երդմնեցուցեալ զՅովհաննէս ասէ. մի յայտնեսցես զիս մարդկան մինչև յօր մահուան իմոյ։ Եւ երանելի սարկաւագն յանձին կալեալ զպատուէր նորա՝ ասէ. տես որպէս հաճոյ՝ թուի ա̃յ և քեզ, զի բարի է....

Յետ այսորիկ ոմն մի շնացաւ ընդ կին առն և պահարեցաւ. և տեսեալ զնա Սիմէոնի զի երթայր բացցա գլխով և խայտառակեալ, ընթացաւ զկնի նորա և ապտակեաց զնա և ասէ. մի ևս այլ շնասցես, ով գերի։ Եւ նա անկաւ յերկիր և փրփրեայր. և կալեալ զձեռանէ նորա յարոյց՝ և ողջացաւ, և ասէ այրն. տեսանէի զի հանէր սևաւ շուն մի ընդ բերանս փայտեաց խաչիւ։

Իսկ յաւուր միում գիտաց Սիմէոն զի շարժ կամէր լինել, առեալ փայտ հարկանէր զսիւնսն և ասէր. այսպէս ասէ տէր՝ կացջիր. և այլ սեանցն ասէր՝ այսպէս ասէ տէր՝ մի կացցես: Իսկ յորժամ եղև շարժն, սիւնքն զոր ասաց կացջիք՝ կացին անշարժ, և զոր ասաց եթէ մի կացցես՝ անկան և կործանեցան:

Իսկ եղև զի մահ անկաւ 'ի քաղաքն, և երանելի աղուաշն երթայր 'ի դպրոցն և զմանկունսն որ վախճանելոց էին համբուրէր և ասէր. երթիջիր խաղաղութ̃: Իսկ ասէր ցվարդապետն. ով աղուաշ, մի հարկաներ ըզմանկունս զայս, զի 'ի մեծ ճանապարհ երթալոց են. և զորս համբուրէր, նոքին իսկ վախճանեալ մեռանէին և երթային առ Քս̃:

Իսկ ինքն երանելին Սիմէոն 'ի տունս մեծատանց յար և հանապազ մտանէր, զի ուսուցէ և նոցա զգիտութի̃ ուղղութեան և զերկիւղ տեառն, իսկ նոքա որպէս զաղուաշ խաղ առնէին զնա: Քանզի յետ մահուան երանելւոյն հասին գիտութե̃ և ծանեան զուղղութե̃ ճանապարհն, և թողեալ զամբարտաւանութե̃ կեղծաւորութիւն զհետ գնացին խոնարհութե̃ն Քսի 'ի ձեռն երանելի յիմարին որ վասն Այ տանջեաց զինքն. և բազմաց զմեղս իւրեանց խոստովանեալ և ապաշխարութե̃ հասին: Իսկ մի յաղախնեայց մեծատանն այն որում հանապազ և յար լինէր երանելին գնալով անդ՝ յղացաւ 'ի պոռնկութե̃, և զրպարտէր զՍիմէոն թէ 'ի նմանէ է: Ասէ տիկինն աղախնոյն զՍիմէոն. ով աղուաշ, զինչ է այդ զոր գործեցեր ընդ աղախնոյն իմ: Ասէ Սիմէոն. այո ճշմարիտ է, աղաչեմ վասն այն զի լինիցի փոքրիկ Սիմէոն: Լսելով զայս 'ի նմանէ հաւատացին թէ նորա է գործն, և յոյժ գանեցին զնա անողորմաբար, և ասեն. խմառանացիր, ով աղուաշ և մի այլ անօրինիր, ապա թէ ոչ՝ այրեսցուք զքեզ կենդանւոյն, և ասեն. մնա զկին քո մինչև ծնցէ: Իսկ յայնմ օրէ յոյժ քնքշեցուցանէր երանելին Սիմէօն զաղախինն զայն մաւրալով և բերելով նմա անոյշ կերակուր և ըմպելի, և ասէր. առ, ամուսին իմ, կեր և արբ: Իսկ յորժամ լցան աւուրքն ծնանելոյ մանկանն, երկարեցաւ երկունքն և ոչ բաժանէր մանուկն: Ասէ տիկինն զՍիմէօն. ով աղուաշ, արա աղօթս առ Տծ զի ծնանիցի

կին քո. քանզի ճանաչէին զնա այր արդար և սուրբ, թէպէտ և հաւատացին թէ նորա է գործն, այլ ոչ ամենեքեան: Եւ ասէ Սիմէոն. կենդանի է տէր ած զի ոչ ելցէ մանուկն յարգանդէն մինչև խոստովանեսցի ըզհայր մանկանն: Եւ լուեալ աղախնոյն երկեաւ յոյժ յամբծութէ նորա, և խոստովանեցաւ յանուանէ զդղացուցիչն, որպէս ծնաւ զմանուկն. և հիացեալ փառս ետուն այ և ասացին. ուրեմն ճշմարիտ ծառայ այ է աղուաշս այս: Եւ հայցէին թողութի վասն անողորմաբար հարկանելոյն զնա, և ասէին. յայսմհետէ լեր առ մեզ և մի հեռանար 'ի մէնջ: Եւ երանելին ոչ ինչ փոյթ առնէր զայսցանէ բարեբանութեց, այլ դարձեալ աղուաշօրէն ցնդէր և սեգայր և խաղալիկ լինէր ամենց, մինչ ասել՝ եթէ ոչ թէ ծառայ այ ճշմարիտ է սա, այլ զոր ինչ առնէ՝ ոչ գիտէ և ոչ իմանայ: Իսկ 'ի միում աւուր առեալ կայծակունս 'ի վերայ ձեռացն, էարկ խունկ և ծխէր 'ի տունս վաճառականին: Ասէ տիկինն ցայր իւր. աւաղ է մեզ զի մեղանչեմք սմա, գիտացիր ստուգիւ զի Սիմէոն սուրբ մարդ է, որպէս և ասէի քեզ յառաջագոյն: Ասէ երանելին Սիմէոն ցտիկինն. ով յիմար կին, ո՞չ կամիս որ ձեռօքս խնկեմ: Եւ էարկ զկայծակունս 'ի գոգ մազեղինին և բազում ժամս խնկեաց, և ոչ ձեռքն այրեցաւ և ոչ մազեղէնն ամենևին, այլ ամբողջ և անարատ մնացին. յորմէ սքանչացեալ փառս տային այ, և սիրէին և պատուէին ամենայն փառօք: Եւ ասէ երանելին. զի՞նչ արարից, զի զնախատինքն ՚Նոի որ յանձին կալայ ունել՝ արատեն և խափանեն պատիւն և փառքն զոր տան յիս:...

Յետ այսորիկ դարձեալ աղուաշանայր և առաքինանայր. և ոմն մի կորոյս հինգ հարիւր դահեկան, և աղաչեաց զերանելին զի արասցէ աղօթս և գտցէ զգանձն: Եւ ասէ Սիմէոն. երդուիր զի մի հարկանիցես զոք, և գտանես զգանձն: Եւ նա երդուաւ նմա: Յայնժամ երանելին Սիմէոն եցոյց նմա զծառայն որ գողացեալ էր, և առին 'ի նմանէ զհինգ հարիւր դահեկանն: Եւ յետ սակաւ ժամանակաց մոռացաւ այրն զերդումն. և յորժամ կամէր հարկանել զոք՝ փօսանային ձեռքն, և այսպէս աղաշաւեալ զղջաց այրն և այլ ոչ ևս գործէր զանպատշաճսն:

Եւ կին մի էր 'ի քաղաքին կախարդ, և կամեցաւ ե-

րանելին Սիմէոն. խափանել զգործս նորա, զի մի՛ վնա-սեսցէ զոք։ Ասէ ցնա. կամիս զի արարից պահապան քեզ, զի մի՛ անհնահարեսցիս յումեքէ։ Եւ նա՝ այո կամիմ, ասէ, և արդիւնաւորեսցիս եւս զքեզ, ով աղուաշ։ Իսկ երանելին առեալ փոքր մագաղաթ մի գրեաց ՚ի նմա մանր գրով այսպէս. Տէր խափանեսցէ զքեզ յամենայն գործոց։ Եւ կապեաց ՚ի պարանոց նորա, և խափանեցան ամ̃ գործք կախարդութէ նորա, և ասէ կինն կախարդ. զի՞նչ արարեր, ով աղուաշ, զի խափանեցեր զգործս արուեստի իմոյ։ Ասէ ցնա երանելին Սիմէոն. ողորմեցայ քեզ, ով կին, և խափանեցի զչար գործս քո, զնա ապաշաւեա զմեղս քո և ապաշխարեա, զի այլ ոչ եւս կարելի է քեզ առնել զայն, և եթէ կամիս, եւ՝ ոչ լինի. իսկ եթէ յանդգնիս եւս, աղաչեցից զՏէր իմ Ք̃ս զի սատակեսցէ զքեզ։ Եւ երկեաւ կինն ՚ի սրբութենէ նորա և ապաշխարեաց խոստովանելով զյանցանս, քանզի գիտէին զսքանչելիս նորա զոր առնէր, թէպէտ աղուաշ հաւատային զնա։

Հրէի միոյ ապակեգործի նստաւ երանելին Սիմէոն հանդէպ դրացն ընդ այլ աղքատսն. և որչափ գործէր Հրեայն եթէ բաժակ եթէ այլ ինչ՝ խաչ հանէր ընդդէմ գործոյն և բեկանէր։ Եւ գիտացեալ հրէին հալածեաց զերանելին ՚ի տեղւոջէն և այրեաց շանթիւքն զձեռսն։ Եւ ասէ Սիմէոն. ով պիղծ և աղուաշ, եթէ ոչ արասցես խաչ ՚ի ճակատդ, զամենայնն բեկանես։ Եւ յորժամ սկսաւ գործել, բեկանէին ամենայնն. և այնչափ նեղացաւ մինչև արար խաչ յերեսն իւր, ապա գործն հաստատեցաւ, և հիանայր թէ զիարդ խաչիւ բարի ինչ լինի։ Եւ եկեալ ՚ի միտս իւր փորձեաց զամենայն ինչ խաչիւ. քանզի թէ յերկիւղական գիշերին հանէր խաչ յերեսն՝ աներկիւղ լինէր ամենևին, և եթէ ՚ի վերայ գործոյն հանէր զխաչն՝ բարւոք յաջողումն առնոյր. այսպէս զամենայն ինչ փորձեաց. զի ուր խաչ ոչ հանէր, վնասէր այն ինչ։ Եւ ապաշաւեալ յինքն և գիտացեալ զզօրութի խաչին հաւատաց ՚ի Ք̃ս և մկրտեցաւ ՚ի ձեռն սքանչելեացն երանելի աղուաշին Սիմէոնի։

Իսկ յորժամ եհաս օր վախճանի իւրոյ պատմեաց սարկաւագին Յոհաննու և ասէ. ահա, եղբայր իմ Յոհաննէս, ես երթամ զճանապարհս հարցն իմոց որպէս

և եցոյց ինձ տէրն իմ Քս. Իսկ դու օրհնեալ լիցիս յԱյ ամենակալէ, զի մխիթարութիւն և հանգիստ եղեր պանդխտութեան իմում, և ահա երեք օր է և այլ ոչ ես տեսցես զՍիմէոն աղուաշն Այ։ Եւ լուեալ Յովհաննու տրտմեցաւ յոյժ, և արտասուեալ ասէ. երանի է քեզ, նահատակդ Այ, զի չարաչար տանջեալ մեռուցեր զմարմինդ քո սուրբ և բազմաց եղեր առիթ փրկութեան և ապաշխարութեան, և երթաս առ որ անձկացեալ ես. յիշեա զծառայեալս Յովհաննէս առաջի Քսի, քանզի կալեալ ես առաջի նորա որպէս ցանկացար։ Եւ երկու աւուրբք յառաջ քան զվախճան երանելւոյն պատմեաց նմա Յովհաննէս սարկաւագն երազ և ասէ. ով երանելի, տեսանէի 'ի տեսլեան գիշերոյն զեղբայրն քո զՅովհաննէս որ յանապատին է ունելով պսակ 'ի գլուխն՝ յորում գրեալ էր՝ պսակ համբերութեան յանապատի։ Եւ ամն մի մերձ կալով ասէր. կոչեցէք զաղուաշն Սիմէոն զի առցէ և նա պսակ, ոչ մի, այլ բազումս, զի զբազումս դարձոյց 'ի մեղաց յապաշխարութիւն։ Եւ ես ասացի. աղուաշ մարդ որպէս այսպիսի բարեաց արժանաւորի։ Իսկ երանելւոյն Սիմէոնի պատուիրեաց նմա տուեալ երդումն, զի մի ումեք պատմեսցէ զերազն 'ի կենդանութեան իւրում, և ասէ. աղաչեմ զքեզ, եղբայր, մի այլ եկեսցես առ իս, զի մի մխիթարութիւն լիցի ինձ 'ի ժամ հանգստեան իմոյ. այլ 'ի Թաղել զմարմին իմ գայցես։ Իսկ երանելի սարկաւագն ողջագուրեալ ըզսուրբն Սիմէոն արտասուօք Թանայր զինքն, և զվերջին օրհնութիւնն և զողջոյնն տուեալ միմեանց՝ գնաց յերեսաց նորա. և դիտէր զժամանակակէտ պայմանին զոր եցոյց երանելւոյն Սիմէոնի։ Եւ յորժամ եհաս օր կատարման իւրոյ, հանգուցեալ վախճանեցաւ 'ի կենացս յայսմնատեացս 'ի խուցն իւր զոր շինեալ էր 'ի տեղի հանգստութեան յեզր քաղաքին, զի յամենայն գիշեր անդ գայր 'ի հանգիստ, և հանէր զգիշերն 'ի գլուխ յաղօթսն Այ ըստ սովորութեան իւրում։ Քանզի առանց հիւանդութեան ցաւոց առողջ անձամբ 'ի ժամ կատարման իւրոյ գնաց պարելով և ծափս հարկանելով 'ի խուցն իւր, քանզի ցնծայր հոգին երանելւոյն յաւուր փոխման իւրոյ, և էած զդուռն խցին, և այնչափ արտասուօք աղօթեաց մինչ կեմերչէնն լուացաւ յարտասուացն, և առա

աւանդեաց զհոգին իւր առ ա͞ծ երանելին Սիմէոն ա-ղօթաշարացեալն վասն ա͞յ յուլիսի քսան և մի ։

Իսկ երկու աղքատք եկեալ անցանէին առ խողովն երանելւոյն, տեսին զի աղօթաշիկն վախճանեալ էր. մըտեալ հանին զնա ՚ի խղէն, և բարձին զնա առանց մաքրելոյ առանց քահանայի առանց պաշտաման և խնկոց և տանէին թաղել ։ Իսկ պատահեաց նոցա պատկերագործ հրեայն որ մկրտեցաւ, և տեսանէր ամբոխ բազում ջահիւք և լապտերօք որք երգէին քաղցրաբարբառ ձայնիւ, և ասէին ուխտք ՚ի նոցանէ. երանի է քեզ, Սիմէոն աղքատ, զի վասն ոչ ունելոյ քեզ ոչ ՚ի մարդկանէ պաշտօն և աղաւթող, երկնայինն զօրք սպասաւորեն քեզ ։ Իսկ հրեայն զառաջինն կարծէր ՚ի մարդկանէ զամբոխին զայն լեալ. և գնալով ընդ նոսա տեսանէր զնոսա ահաւորս և լուսեղէնս և ոչ որպէս մարդիկ. և լուաւ ևս ՚ի նոցանէ զերանական զայն բան որք տանէին զնա. իմացեալ ծանեաւ զի երկնայինն զօրք են, և յահէ եղեալ ՚ի հեռուստ կացեալ տեսանէր զի և թաղեցին զերանելի մարմին սրբոյն Սիմէոնի սաղմոսիւք և օրհնութ͞բ ։ Իսկ ՚ի նոյն ժամն վաղվաղակի եհաս երանելի առաջնորդն Յովհաննէս լալով և կոծելով, և ետես զհրեայն զի հայէր ընդ երկնայինն զօրսն, ասէ. զինչ ասես աստ տարապանելով ։ Ասէ հրեայն. ահա զերանելւոյն Սիմէոնի զթաղումն արարին հրեշտակքն և համբարձան յերկինս, և ես տեսի մեղաւոր ականբք զնոկալիս ։ Իսկ ՚ի միասին գնացին ՚ի գերեզման երանելւոյն, և տեսին զի այն ինչ թաղեալ էին զնա երկու աղքատքն և կային առ գերեզմանաւն ։ Նոքա տեսին զի առաջնորդն և հրեայն կոծէին գոչելով զսուրբն, հրաշման եղեալ փառս տային ա͞յ ։ Իսկ ՚ի միւս աւուրն Յովհաննէս առաջնորդն տեսանէր ՚ի տեսլեան, զի իջին հրեշտակք յերկնից և բարձին զմարմին երանելւոյն Սիմէոնի և տարան յանապատն առ Յովհաննէս. և ընդ առաւօտն երթեալ ՚ի գերեզմանն եբաց և զմարմինն ոչ եգիտ ։ Իսկ բազումք ՚ի քաղաքացեացն տեսին ՚ի տեսլեան զմեծ փառս նորա որ առ ա͞ծ ։ Իսկ եկեալ շինեցին ՚ի վերայ դամբարի գերեզմանին մատուռն և կախեցին կանթեղս անշիջանելիս ՚ի փառս ա͞յ ահաւորի, որ բազում ծառայս ունի ՚ի ծածուկ, և փառաւորէ նոքօք անուն Յ͞սի Ք͞սի ։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՈՐԴԻՒՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀՌՈՄԱՑ ՈՐՈՅ ԱՆՈՒՆ ԷՐ

# ՆԵՐՍԷՀ

## ՈՐ ԹՈՂԵԱԼ ԶԱՄԵՆԱՅՆ ԿՐՕՆԱՒՈՐԵՑԱՒ Ի ՎԱՆՍ ՍՈՒՐԲ ՀՕՐՆ ԱՆՏՈՆԻ

ՊԱՏՄԵԼ մեզ զվարս բարեպաշտից եկեղեց է, զա-
ցէ յառաքինութեան վարուցն նուազագոյն գոլ առաջեալ-
քըն, և զրկեալք 'ի վարձուցն որ յաղագս այնորիկ է՝
յամենեցունց տեառնէն և 'ի գիտողէն. և լսել ահ մեծ՝
զօր լուաքն, զուցէ 'ի հեղգացելոցն անկցուք դատաս-
տան, և յերկաքանչիւրոցն տարակուսեալ յաղագս մե-
րոյ անհամաձայնութեան։ Բայց 'ի շնորհս սուրբ հոգւոյն
համարձակելով, որ տայ բան աւետարանչաց պատմելոյ
զսրբոցն վարուց նոցին բարեխօսութեամբ 'ի յորդորումն
առաքինութեան լսողացն, սկսանիմ աստուածասէր անձանց։
Այս արդ լուարուք և 'ի միտ առէք և նախանձաւոր լե-
րուք վարուց Ներսեհի որդւոյ թագաւորին Հռոմայ, որ
արհամարհեաց զփառս թագաւորութեանն անցէն 'ի
տղայական հասակին։ Քանզի իմացաւ և ծանեաւ ե-
թէ սնոտի է ամենայն թագաւորութիւն և մեծութիւն և
փառք աշխարհիս, և ցանկացաւ անանց թագաւորու-
թեանն և մեծութեան փառաց՝ նայեցեալ 'ի Քրիստոս առաջ-
նորդն կենաց, և 'ի ծննդենէ աւազանին որ մերկացու-
ցեալ զհին մարդն և զգեցեալ զնորն որ ըստ Քրիստոսի՝ սկսեալ ան-
դուստ իսկ զլուսաւոր վարս առաքինութեան կատարէր։
Քանզի ուսեալ և վարժեալ էր յամենայն գիրս յիմաս-
տութեան հանդերձ, որով անէր և զօրանայր հոգւով և
մարմնով, և շնորհք Աստուծոյ էր 'ի վերայ նորա։

Այս իբրև եղև երկոտասանամեայ, այսպիսի բան եղև
պատահումն ըստ նախախնամութեան Աստուծոյ։ Եկեալ եր-
կուց եղբարց ձգնաւորաց առաքինեաց 'ի քաղաքն Հռոմ
և պատահեալ Ներսեհի որդւոյ թագաւորին, հարցա-
նէր զնոսա վասն վարուց ձգնաւորաց և առէր. որպիսի
են վարք նոցա, ով հարք, որք ըստ Աստուծոյ կրօնաւորեալք

են եղբարքն որ 'ի վանս ձեր ։ Իբրև լուաւ 'ի նոցանէ զմիշտ աղօթից և զպահոց զտքնութեան զպարտաստուաց զխոնարհութիւն և զհնազանդութիւն և զամենայն վարուց առաքինութիւն, երանէր զնոսա և ասէր՝ Թէ ամենայն աշխարհ չարժէ զնոսա որք այնպիսի վարուք ընթանան առ Ած ։ Եւ առժամայն արձակեաց զնոսա, զի մի ոք գիտասցէ զոր խորհեցաւն 'ի սրտի իւրում ։ Եւ դարձեալ կոչէ զնոսա առանձինն և ասէ ցնոսա. ով սուրբ հարք կոչեցեալք 'ի տեառնէ 'ի հրեշտակային վարս, ըն-բռուք ինձ առիթ կենաց և տարայք զիս զկնի ձեր 'ի բանակս հրեշտակաց որբոց, որ մարմնով զանմարմնոցն բերեն վարս՝ որպէս պատմեցէք ինձ, զի ընդ նոսա փառաւորեցից զամենեցունց արարիչն աղօթիւք ձեր ։ Եւ նոքա ասեն. և զիարդ իշխեսցուք տանել զասացեալդ 'ի քէն յահէ թագաւորին և թագուհւոյն, և որպէս անգիտանայ այդքան բարութիւն քաղաքին. այլ գտանելով ըմբռնեսն զմեզ և պէսպէս տանջանօք մահու մատնեն, և լինիցիս մահուան մերոյ պատճառ, թէպէտ բաղձանքդ քո ըստ Այ է. աղաչեմք զքեզ, խնայեա 'ի մեզ ։ Եւ նորա պատասխանի տուեալ ասէ. և զիարդ յուսացեալքդ յԱծ երկնչիք 'ի մահուանէ որ ոչ իսկ է երկիւղ. զի ով յուսացաւ 'ի տէր, և ամաչեցաւ և յամօթ եղև. այլ մի իւիք երկնչիք, զի Ած որում ցանկան՝ զկամս նոցա առնէ, նա ծածկէ և սատարէ մեզ հաստուցանելով 'ի բանակս հրեշտակաց ։ Եւ հաւանեալ աղաչելոյն քաջալերեցան արքն այնորիկ և ասեն. արա զոր ինչ և կամիս, և յաջողեսցէ Տր որ կարողն է յամենայնի. և մարդկօրէնքս մեր ամենայն և ասացեալքս անյայտացին, և քոյդ Ածահաճոյ կամք յաջողեսցին ։ Եւ լուեալ զայս գոհացաւ զԱյ, և աղօթս արարեալ միաբան յանձնեցին զինքեանս յԱծ ։

Եւ երանելին Ներսէհ առեալ հազար և երեք հարիւր դահեկան և աւետարան մի փոքրիկ, յորում չորեսին աւետարանչացն և հօր և մօր իւրոյ և իւր պատկերք նկարագրեալ էին 'ի նմա Ճշգրտագործ յօրինուածովք, և ոսկեգիր գրով և ոսկետուփ ամանօք ։ Եւ ինքն զգեցեալ զաղքատութեան զգեստ, և 'ի կերպարանս նոցա եղեալ որք չջադայ աղքատք էին, և եկին 'ի նաւարկութիւնն Եգիպտոսի. և գտեալ նաւ՝ ետ նաւավարացն

հարիւր դաշնական զի փութով նուաճեսցէ և հանցէ զնո-
սա յԵգիպտոսէ։ Եւ ըստ յաջողելոյն նոյ յաջողակ հաղ-
մով արագ հասանէր յԵգիպտոս։

Եւ ոչ սակաւ խռովութիւն եղև 'ի Հռոմ և 'ի տան
թագաւորին, և սուգ անմխիթարելի ծնողացն եթող.
բայց զի գիտէին զնա անձնայն առաքինութե՛ զարդա-
րեալ, այնու ծանեան և խնդացին զի յանապատ ուրեմն
գնացեալ ողջեալ ծածկեաց զինքն ըստ ըղձմանն սրտին
իւր. քանզի բազում անգամ լուեալ էին 'ի նմանէ զբա-
նսն զկրօնաւորական վարս, որով ափոփեալ մխիթա-
րէին զինքեանս։ Եւ յուզախնդիրք եղեալ ընդ աշխար-
հըն ամենայն, ոչ գտին զերանելին մանուկն, քանզի ծած-
կեալ 'ի նոցանէ ըստ նոյ նախախնամութեանն։

Եւ խաղաղութեամբ հասեալ յԵգիպտոս՝ եկին 'ի
վանսն սուրբ հօրն Մակարի առ հայր ուխտին որ բա-
զում եղբարս ունէր, և ծանուցին նմա զերանելի մա-
նուկն Երսեհ։ Եւ երդմնեցոյց զհայր ուխտին և զեղ-
բարսն որ ընդ նմա եկին, զի մի ոք գիտասցէ վասն նորա
թէ ո ոք իցէ. զի մի առաւելեսցին 'ի պատիւ քան զայ-
նուսիկ՝ որ դեռամուսք իցեն՝ առանց կարգի և կրօնից։
Եւ յանձն առին զխնդրուածս նորա և ոչ ումեք յայտ-
նեցին։ Եւ այնպիսի խոնարհ կերպարանօք կայր և հնա-
դիտանայր 'ի բարեկարգութեան ջանա ըստ ամենայն ա-
ւանդից և խրատու հօր ուխտին։

Եւ մարտ եղեալ դիւացն զանազան և աչքտեսէս փոր-
ձանօք մարտնչէին ընդ նմա, զի կարասցեն վրիպեցուցա-
նել զնա 'ի սխալանս ինչ. այլ նա ընդդէմ կայր ըստ խ-
րաքանչիւր փորձանաց յաղթական խաչակրօն վարուք
ըստ Քրիստոսի։ Նախ կթով հօր և մօր, և պատուականացն
սիրով և խրախձանօք և զծառայիցն աղաւաւորութիւն
յուշ ածելով պատերազմէին, և զյոլովութիւն գան-
ձուցն և զթագաւորական իշխանութե՛ բարձր հրաման
և զփառս զոր ունէր 'ի թագաւորութեան իւրեանց։ Իսկ
նա ընդդէմ կայր այնոցիկ, և հայր և մայր զնոսա հա-
մարէր որք խրատոյն սիրէին զնա, որք կամարարք էին
նոյ և ընտրեալ ծերունիքն էին. իսկ թագաւորութի և
մեծութի և փառք համարէր զՔրիստոսի մարդասիրութիւն
և զշնորհս հոգւոյն սրբոյ որով մխիթարէր 'ի փառս նոյ։
Պարծեալ զպատանեկութե՛ խորհրդոյն արկանելով 'ի միտս

ջերմեցուցանէր զնուաղեալսն, զի կարասցէ զսուրբն խո-նարհեցուցանել 'ի կամս սրտի հոգւով կամ մարմնով: Իսկ աղքատացն այն և սուրբն իբրև զաղբ ինչ զայլոց զանց առնէր մտօք և զգայութեամբք և յաղթէր փառ-ձաղկն: Եւ յետ այնորիկ հպարտութե պատերազմէր՝ թէ որպիսի ոք էիր և յորս խոնարհեցար յանարգագոյն ծառայութի և սպասաւորութե եղկայրութե կրսերա-գունիցն: Իսկ երանելին յուշ առնէր զՔ̃ի խոնարհու-թիւնն և զփառս բանին ա̃յ մի ըստ անտեսութեն խո-նարհութիւն, և 'ի բաց դարձուցանէր զխորամանկութիւն սատանայի: Եւ այսպէս ընդ ամենայն զգայութիւնս և ընդ խորհուրդսն և ընդ բանսն և ընդ գործս պատե-րազմեալ 'ի չար դիւացն, ոչ ինչ պարտեցաւ ըստ կա-մաց նոցա այրն ա̃յ. այլ իբրև յամուր պարսպէ մեքե-նայք չարին 'ի բաց դառնային յողջախոհ և սուրբ անձնէ:

Եւ այսպէս յառաջադէմ եղեալ յամենայն առաքի-նութիւնս երանելին՝ վերակոչեն զնա 'ի կարգ ա̃ծային կրօնիցն յետ երկոտասան ամի, և զգեցուցանեն նմա մա-զեղէնս և մաշկեղէնս ըստ աւանդութե սուրբ հարցն: Եւ հանգեաւ 'ի վերայ նորա շնորհք հոգւոյն սրբոյ, որ և ամենեցուն քաջայայտ ցուցաւ: Եւ ինքն երանելին այլ ոչ ինչ ունէր, բայց միայն երկու մազեղէն. և զու-կլին զդահեկանսն զոր էառ՝ զհարիւրն նաւավարին ետ և զերկերիւրն կարօտելոց և զհազարն 'ի հայր սուրբ ուխտին, բայց միայն աւետարանիկն յիւր անուն յեկե-ղեցւոջն ա̃յ կայր: Եւ երթալով երթայր և զարգանայր և հաճոյ էր ա̃յ և մարդկան, և ամենեցուն աչք 'ի նա հայէին յաղագս ա̃ծասէր և բարեբարոյ անձինն, և ոչ գտաւ նման նմա յայնմ ժամանակի 'ի ճգնաւորական վարս և 'ի միաբանակեանացն վարս, և 'ի գործս ոչ վեր-ջանայր յամենայն աշխատութիւնս, և կրսերագոյն զինքն քան զամենեսեան երևեցուցանէր: Եւ տուաւ նմա շը-նորհք յա̃յ 'ի վերայ հիւանդաց և այսահարաց բժշկու-թեան. և զայս անյայտաբար ներգործէր աղօթիւք յախ-տաժէտս, զի մի փառաւորեսցի 'ի մարդկանէ: Եւ էր խոնարհ մտօք և հանճարեղ բանիւ, և զխաղալս ինչ եղբարցն ուղղէր և յառաքինութիւնս յորդորէր, զամ-բարտաւանսն 'ի խոնարհութի զիջուցանէր, զբարկա-ցողսն 'ի հեզութի, զանհաւանսն 'ի հաւանութի հօրն

և եղբայրութեան ։ Այլ զամենայն օգտակարս որ միանգամ ՚ի թշնամեացն լինէր մարտ յեղբարսն, երանելին այրն այ ուղղեալ զայն նորոգէր յողջմտութիւն զամենեսեան խոհեմագոյն և հանճարեղ խրատովն և զինքն յօրինակ ամենեցուն կացուցանելովն, երկնայնոցն վարուց մերձ լինելով հրեշտակական կարգաւորութեան իւրով երանելի այրն այ Ներսէս ։ Այլ կացեալ անդ այսպէս ամս երեսուն և երեք ամենայն առաքինութեամբ զարդարեալ, մինչ զի կարող գոլ ասել ըստ Քսի, գայ իշխանն աշխարհիս այսորիկ և յիս ինչ ոչ գտանէ զիւրսն չարութիւն ։ Ի վերայ այսոցիկ ազդեցաւ նմա մահն իւր և փոխումն առ Քս ։

Այլ եդ ՚ի մտի երթալ ՚ի Հռոմ և աղօթել յեկեղեցիսն այ ՚ի սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի և այլ սրբոցն, և տեսանել զհայր և զմայր իւր, և փոխել ՚ի նոսա շնորհս ինչ հոգևորս ։ Այլ ծանուցանէր զայս հօր վանացն, քանզի ոչ ինչ ծածկէր ՚ի նմանէ ըստ սուրբ հարցն աւանդից. և զի ըստ ամենայնի բարեխորհուրդ էր երանելին և իմաստուն, և զի յինքն ոչ վստահանայր, այլ այ հաւատայր և ասացելոցն յառաջնորդէն ։ Որպէս ասաց հօրն ամենայն ստուգութեամբ զոր խորհեցաւ առանձինն, պատասխանի տուեալ ասէ հայրն. ոչ առողջ թուի խորհուրդդ այդ ՚ի քում անձինդ. յուշ լիցին քեզ ասացեալքն առ Քս՝ թէ երթայց հրաժարեցից ՚ի տանէ իմմէ, և լուեալ թէ ոչ ոք արկանէ ձեռն զմաճով և հայիցի յետս թէ յաջողեալ իցէ արքայութիւնն այ. կամ այն որ ասաց թողել զմեռեալն, և լուաւ եթէ թող տուր մեռելոց թաղել զմեռեալսն իւրեանց, և դու երթ պատմեա զարքայութիւնն այ, և որ այսպիսիք ասացեալք ՚ի տեառնէ ։ Ասէ երանելին. բարւոք ասացեր, հայր, զայդ. բայց ո՞վ մեկնեսցէ զմեզ ՚ի սիրոյն Քսի, նեղութիւն թէ անձուկ հօր և մօր, թէպէտ և յանդգնութիւն է ասացեալս. բայց քանզի ազդ եղև ինձ ՚ի տեառնէ երթալ և աւանդել ինչ ՚ի նոսա շնորհս հոգևորս գրով առ ՚ի հաստատել զնոսա ՚ի գործս բարիս, և անծանօթս լինելով ՚ի նոցանէ՝ վախճանեսցայց, և յետ մահուանն ծանուցեալ եղիցի, որպէս կամք այ հրամայեսցեն ։ Յայնժամ պատասխանի ետ հայրն ուխտին և ասէ. երթ, ողջեաւ, և արա որպէս հրա-

մնացես քեզ 'ի տեսանել, և զամենայն զոր ինչ արասցես՝ յաջողեսցէ քեզ ած̃։

Եւ ճանապարհորդեալ յԵգիպտոսէ ընդ ծով և ընդ ցամաք եկն եհաս 'ի Հռոմ. և ապօթեալ 'ի սուրբ եկեղեցիսն նց̃, և հաղորդեցաւ 'ի սուրբ մարմնոյ և արեանն տեառն Յսի Քսի։ Եւ կենդանի էին ծնողքն նորա Թագաւորն և Թագուհին։ Եւ ունէր ինքն զգեստ խարազն և պնձղնաւոր, և բոկոտն և սնաւ ապօտագոյն կերակրանօք։ Եւ մատուցեալ առ մի ոմն 'ի սպասաւորացն որ բարեպաշտութե̃ էր համբաւեալ, որ զտեսչութի̃ աղքատաց 'ի Թագաւորէն հաւատացեալ էր նմա, և ասէ ցնա. ցոյց ինձ զԹագաւորն և զԹագուհին զի տեսից և գիտացից թէ ողջախոհք են, այլ և ունիմ ինչ ասել ցնոսա։ Եւ երթեալ այրն պատմեաց Թագաւորին և Թագուհւոյն։ Եւ լուեալ արհամարհեցին զասացեալսն 'ի նմանէ։ Եւ զի էր այրն այն երկիւղած յՔյ՝ ասէ. յուշ լիցին ձեզ ասացեալքն 'ի տեառնէ՝ թէ մի արհամարհիցէք զմի ոք 'ի փոքրկանցս յայսցանէ, զի հրեշտակ նոցա հանապազ յերկինս տեսանեն զերեսս հօր իմոյ։ Եւ զղջացեալ 'ի բանս նորա կոչեցին զերանելին, և նա եկեալ երկրպագութե̃ ետ զողջոյն որպէս զմի 'ի սպասաւորաց՝ ծնողացն իւրոց. և նոքա ոչ ծանեան զնա։ Եւ նա ասէ. որքան զանազանութի̃ է Թագաւորաց և ռամկաց, 'ի միոյ բնութենէ գոլով բաժանեալ զանազանին 'ի կենցաղումս. քանզի 'ի տեսանելն զձեզ ահ կալեալ զիս, և ոչ կարացի ասել ձեզ զոր ինչ ասելոց էի տերանց. բայց աղաչեմ զձեզ զի յետ երից աւուրց խնդիր լիցի իմում աղքատութեանս, զի համարձակեցայց ասել որ ինչ աւանդեցաւ ասել ինձ 'ի պատահելս։ Եւ լուեալ զայս արձակեցին զնա և յանձն առին կատարել զաղաչանս նորա։ Եւ երթեալ 'ի տեղի իւր գրեաց նամակ՝ որ ունէր օրինակ զայս։

Ով ծնողք իմ յորդւոյ ձերմէ կորուսելոյ և ծանուցելոյ յետ մահուան իմոյ, նշան աւետարանս՝ որ զձեր և զիմ նշանագրեալ ունի պատկեր, զոր ունիմ վկայ հաւատարիմ եթէ որդին ձեր եմ ես Ներսէս որ գնացի յԵգիպտոս և կրօնաւորեցայ 'ի վանս սրբոյն Անտոնի, ծածկեալ զիս թէ ով ոք իցեմ։ Ու իմացեալ ծանեայ եթէ մատն է երկրաւորացս փառք և պատիւ և Թա-

գաւորութիւն, և ցանկացայ անանց փառացն և պատուոյն և անվախճան թագաւորութեն, որ կայ և պահի յուսացելոց կեանքն յաւիտենական 'ի Քս։ Բայց դուք 'ի միտ առէք զասացեալսն 'ի մարգարէէն Դաւթի. արդ, թագաւորք, զայս 'ի միտ առէք, խրատեցարուք ամենեքեան որք դատիք զերկիր. ծառայեցէք տեառն երկիւղիւ և ցնծացէք առաջի նորա դողութբ. ընկալարուք զխրատ նորա, որ ձեզ աւանդեցաւ յերկնաւոր թագաւորէն Քսէ, որպէս պարտ է վարել զթագաւորութի երկրաւորացս ըստ կամաց երկնաւոր թագաւորին, որ գիտէ զամենայն և 'ի միտ առնու զամենայն գործս նոցա։ Արդարար և բարեխորհ լինել առ ամենեսեան, և մի հպարտանալ և վստահանալ 'ի փառս թագաւորութեան, այլ յած որ հաւատաց ձեզ զթագաւորութիւնդ՝ գանձել անձանց զարդարութիւնս ամենայնի հանդերձեալ աշխարհին, և մեծանալ իրաւամբք և արդարութեամբ, և ոչ թողուլ 'ի մտաց զյիշումն այ պատուիրանին. այլ և զմահ և զդատաստան արդար դատաւորին, որ ըստ արժանեաց և ըստ գործոց հատուցանէ թագաւորաց և ռամկաց, և ակնառութիւն ոչ է առաջի նորա։ Եւ արդ մի իւիք տայցէք պատճառս ընդդէմ պատուիրանացն այ։ Եւ այլ սոյնպիսիք բանք խրատականք և օգտակարք որք գրեալ կան 'ի ձեռն սրբոց, 'ի միտ առէք և ընծայեցուցէք զանձինս ձեր այ, որպէս արդարեւ սուրբ թագաւորքն որոց անուանքն գրեալ են 'ի գիրս դպրութե կենացն անվախճանից, յորս կայ Աւգար թագաւորն 'ի թագաւորաց սրբոց միջի։ Արդ հաւանեալ իմոյ դուզնաքեայ խրատուցս՝ պատուեցէք զողջախոհութի և զսրբութի., զի յետ փոխմանն յաստեացս անթառամ պսակօքն պսակիցիք, որ կան և մնան և ոչ ապականին. այլ երկրաւորաց պայծառութիք թագաց և ծիրանեաց և ոսկեհուռն հանդերձից պայծառութիւնք ապականեալ կորնչին։ Արդ եթէ այսպէս առնիցէք որպէս և ես, և 'ի փառաց և 'ի մեծութե կորութենէ ոչ ընկղմիցիք, յայնժամ զտէրն իմ Քս և զիս ուրախացուցեալ բերկրեցուցանիցէք, և 'ի միասին կալցի 'ի գաւիթս երկնաւոր թագաւորին արժանաւորեջիք։ Այլ 'ի վերայ իմ սուգ մի առնուցուք, աղաչեմ զձեզ. զի յորմէհետէ Քսի ընծայեցայ և աստուածայինն

կղզեաց. զամենայն աշխարհահիւրաց զօտզս 'ի բաց մերկացին:

Այլ առ ուխտն իւր գրեաց այսպիսի ինչ. Պղծութիւն լցեալ ձեր հարց իմոց և եղբարց հոգևորաց, որոց եղէ ես ծնունդ հոգևոր կարգաց և կրօնից, այսպէս համձեցաւած և ելցած զիս 'ի կենաց. և անծանօթ եղեալ 'ի կենդանութէ իմում 'ի ծնողաց իմոց և յամենեցունց, այլ և ոչ 'ի վախճանիս իմում ունէի ընդ իս 'ի հոգևոր եղբարց իմոց եթէ ընտանեբար հոգացէ զիս: Բայց աղաչեմ զձեզ մի մոռացեալ եղէց 'ի յառաջնոց հարց և յեղբարց իմոց, զի արժանի եղէց ընդ ձեզ վայելել զանսպառ բարիսն որպէս խոստացաւ է սուրբ հարցն մերձաւորացն Քրիստոսի, և տէր ընդ ձեզ:

Այլ իբրև անցին աւուրքն երեք, եղև խնդիր երանելւոյն, և եկեալ գտին զնա վախճանեալ 'ի տեղւոջ իրում իբրև զմի 'ի տառապելոց, և անփոյթ արարեալ հրամայեցին թաղել զնա 'ի գերեզմանս օտարաց: Այլ տեսեալ զմախաղն կրօնաւորական զոր էր 'ի մնարան, բացին և տեսին զաւետարանն ոսկետուփ ոսկեգիր գրեալ, և զթուղթն որ առ ծնողսն և առ ուխտն: Այլ պատմեցաւ բանն առ Թագաւորն և առ Թագուհին. և տեսեալ Թագաւորն զաւետարանն և զնկարեալ պատկերսն իւրեանց, ծանեան զաւետարանն որդեկին իւրեանց, քանզի բերին առ Թագաւորն զմախաղն երանելւոյն և ընթերցեալ զթուղթսն ծանեան՝ եթէ որդին իւրեանց է: Այլ աղաղակ և կական բարձրացաւ 'ի մէջ պալատան Թագաւորին, մինչ դղրդեցաւ քաղաքն առ հասարակ. և ընթացեալ 'ի տեղին Թագաւորն և Թագուհին զի հաւաստեաւ քննեսցեն. և եկեալ զննեցին զանձն և նշանն ինչ որ ունէր յանձն, տեսեալ զայն ստուգեցին ճշմարտապէս անկարծիք՝ եթէ որդին իւրեանց է, և զի տիպ պատկերացն յայտնի երևեցուցանէր: Յայնժամ ողբերգութիւք և ձայնիւք և աշխար ընդ արտասուս խառնեալ լինէին ողորմ ողորմ բանաւոր: Այլ հրամայեաց Թագաւորն պատուել զհանգուցեալ այծեան և Թագաւորական զգեստուք զարդարել և ըստ օրինի Թագաւորաց թաղել: Այլ բազում հարեալ ոչ կարացին մերձել 'ի մարմնոյն և պատուել, զի մածեալ էր ընդ մարմինն. և զահի հարան և ահ կալաւ զամենեսին, և խնդրեալ ծա-

նեան զի կամք որոյն ոչ հաւանեցաւ պաշտել 'ի մեղեդի-նէն. և այնպէս իւր այծազգեստ հանդերձիւն եդին 'ի թագաւորական գահոյս և տարան 'ի պալատն արքունի, և սգացեալ լացին զպանդխտութի և զնեղութիւն կրօ-նաւորական, և երանելով որոյն մխիթարէին զինքեանս:

Յայնժամ տեսին նոր նշան, քանզի եղև երես նորա լուսաւորեալ յորմէ ճառագայթք հատանէին. յայտնի զարմանք և ափշութի կալաւ զամենեսին, և դադարեալ լացին 'ի կոծոյ և 'ի կականաց, և զարմանչացեալ օրհնու-թիւն տային այ: Եւ պատահեալ անդ այր երկիւղածք յայ առաքինութե զարդարեալք և բանական իմաստու-թեամբ աճեցեալք, սկսեալ 'ի դէպս խօսեցան առ թա-գաւորն և թագուհին և առ ամենայն բազմութի պա-տուաւորացն և ռամկին, յորմէ մխիթարեցան ոչ սակաւ 'ի փառս և 'ի գովութի այ. և հաւանեցան 'ի հանգըս-տարանս սրբոց հարցն անդր հանգուցանելոց հանգու-ցանել զսուրբն ըստ աւանդութե սրբոց հարցն: Յայն-ժամ հրամայեցաւ յամենայն եկեղեցեաց բերել սըր-բութիւնք և զարդք հանդերձ պաշտօնէիւքն. և բերու ամենայն պայծառութիւնք Հռովմայ առ 'ի պատիւ սրբոյն Ներսէհի: Եւ այնպէս սաղմոսիւք և օրհնութիւնք խըն-կօք և լուցելովք տարեալ եդին 'ի հանգստարանն սրբոց հարցն պատուով և փառօք որպէս վայել էր երանելւոյն: Եւ տօնի արժանի համարեցան զաղքատացեալն հո-գւով նմանեալ Քսի, որ վասն մեր աղքատացաւ որ տէրն էր երկնի և երկրի: Եւ եթող ծնողացն իւրոց յի-շատակ բարի և յորդորումն 'ի բարեպաշտութե վասն ըստ ամենայնի, որով կեցին և արդարացան և հաճոյ եղեն այ, ոչ միայն նորա ազեշահ խրատուքն զոր եթող նոցա ձեռնագրով իւրով, այլ և յիշատակաւ արդարոյն որ այնպէս արհամարհեաց զերկրաւոր թագաւորութե զփառս և զհանգիստ, և ժառանգեաց զանմահ թագա-ւորութիւն: Եւ գրեալ յերանելւոյն յուխտ իւր՝ տա-րեալ եղև, և պտղաբերութե արդիւնքն ոչ սակաւ 'ի թագաւորէն և 'ի թագուհւոյն: Եւ յամ տեղիս հռչա-կեցաւ անուն երանելւոյն Ներսէհի, և զամենեսեան շարժեաց համբաւ նորա 'ի յորդորումն առաքինութե:

Եւ հայր Պաղիկ թարգմանեցի զպատմութիւս զայս զորդւոյ թագաւորացն երկրացունց յԱսորւոց 'ի մեր, և

առաջնորդեցի ուխտի իմոյ և ժողովրդեանս, որով լուեալ զվարս սրբոցն նախանձաւորք լինիցիք նոցա նահատակութեանցն որք վասն Ք՛սի յանձն առին զկամաւոր աղքատութիւն. որպէս զի բարեխօսութեամբ նոցին արժանի լիցուք պսակաց նոցին 'ի Ք՛սէ 'ի տեառնէ մերմէ:

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ՎԱՐՔ

# ԵՐԱՆԵԼԻ ԿԱՄԱՒՈՐ ԱՂՔԱՏԱՑԵԼՈՑՆ
## ՎԱՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ

### ԱՐԴԻՒՈՑ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀՌՈՄՈՑ

Արք եղբարք և հարք, լուարուք զպատմութիւն առն միոյ որդւոյ թագաւորին Հռոմոց. որ զամենայն փառս աշխարհիս և զմեծութիւն և զպատիւ թագաւորութեանն արհամարհեալ աղքատացաւ և հոգւով ճշմարտեալ սիրովն Ք՛սի զայն խորհեալ որ 'ի Ք՛ս Յ՛ն, որ զանձն ունայնացոյց որ տէրն է փառաց, զի ընդ նմա փառաւորեսցի. վասն այնորիկ փոքրկացոյց սա զանձն իւր, զի անվախճան թագաւորութեանն ժառանգորդ լիցի: Ատեաց զերկրաւոր զբաղմունս, զի միշտ աղօթիւք ընդ ա՛յ խօսելով զա՛ծ տեսցէ 'ի մաքուր միտս իւր և երանելի լիցի, զվերինն խորհելով ուր և նստի Ք՛ս ընդ աջմէ ա՛յ. և ըզկեանս իւր ծածկեաց ընդ Ք՛սիւ յա՛ծ, զի յորժամ գայցէ կեանքն մեր Ք՛ս յայնժամ և սա ընդ նմա յայտնեսցի փառօք: Այլ եղև սա հաստատուն արթուն զգայարանաց իւրոց հսկելով զժամն առաջին և զերկրորդն և զերրորդն. զի 'ի գալ և 'ի բախել տանուտեառն պատրաստ եղիցի բանալ զդուռն մտիցն ա՛յ, և բազմեսցի 'ի սեղան յարքայութեանն երկնից: Պահեաց զմարմին իւր անարատ 'ի գիջութե համանէ, և յամենայնի սրբեալ և ազատեալ 'ի մեղաց հոգւով և մարմնով, գտցի օթևան սրբոյ երրորդութեան: Օ փառս երկրաւոր թագաւորութե և զառ 'ի սորա ամենայն արհամարհեալ ցանկայր ելանել յԵրուսաղէմն վերինն ուր ժողովք սրբոցն են յանճառելի փառսն: Այլ ով ոք կարիցէ արժանապէս զսո-

տանելով զնա զի ոչ ունէր զաշխարհասիրութիւն և զմեծամտութիւն հօգս. վասն այսորիկ կամեցան մուծանել զնա յաշխարհական վարս, զի գտնէ օրինաւոր ամուսնութիւն զնա 'ի կամս իւրեանց մեծութեան ածիցեն սիրել զփառս թագաւորութեան աշխարհիս և լինել ժառանգորդ իւրեանց մեծութեան թագաւորութեանն: Այլ իբրև խօսեցան ընդ նմա ծնողքն նորա թագաւորն և թագուհին առանձինն իմանալ զկամս նորա, երանելին ցածութեամբ և խոնարհ ձայնիւ պատասխանի ետ նոցա և ասէ. գիտեմ, ով տէր իմ թագաւոր և մեծ դշխոյ մայր իմ, զի զկամս բնութեան իմոյ և սրտի կամիք ճանաչել. վասն որոյ յայտնեցից այսօր առաջի մեծութեան ձերում զսրտիս բաղձանքն իմ: Այլ արդ տէր իմ արքայ, զինչ օգուտ է ինձ եթէ զաշխարհս ամենայն շահեցայց և զանձն իմ զրկեցից յայնքան առատութենէ բարեաց և երանութեանցն՝ զոր խոստացաւ Ք͞ս աղքատացն հոգւով և որք զանձինս իւրեանց արարին ներքինիս վասն արքայութեանն ա͞յ: Զայսպիսի պատասխանիս լուեալ 'ի նմանէ, 'ի տրտմութեան եղեալ յարտասուս հարան թագաւորն և թագուհին, իբրև թէ որոշեցաւ 'ի նոցանէ սիրելի որդին իւրեանց. քանզի ոչ զայնպիսին բարբառի, յայտ առնէ թէ ոչ կամի բնակել 'ի փառս աշխարհի ատելովն զսա: Այլ ասեն. զինչ եղև օգուտ յուրախութեան մերում 'ի ծննդեան սորա և մինչև ցայսօր մխիթարութեան մերում վասն դորա, իբր թէ յիշատակ մեր յաշխարհիս անջինջ եղեալ՝ հաստատեալ կայ թագաւորութիւն մեր յետ վախճանի մերում, քանզի ետ մեզ ա͞ծ ժառանգ թագաւորութեան մերում: Եթէ դա անհնազանդ եղեալ ծնողացն իւր՝ զա͞ծպաշտութիւն դնէ պատճառ առաջի մեր և սրով խոցոտէ զսիրտս մեր, զինչ այլ այլ մխիթարութիւն կացցէ առաջի մեր: Այլ յոյժ սգային և խոցոտէին զինքեանս սգով տրտմութեան և արտասուաց առաջի երանելի մանկանն: Այլ տեսեալ իմաստուն մանուկն զշփոթս ծնողացն, երկեաւ թէ դուցէ խափան առնիցեն զընթացս նորա ճմլեցուցանելով զսիրտս նորա. քանզի հաստատեալ էր 'ի սիրտ իւր գնալ 'ի մեծութենէ և 'ի թագաւորութենէ իւրմէ յաղքատութիւն և 'ի տնանկութիւն վասն սիրոյն Ք͞սի, զի զնա շահեսցի, բայց մնայր պատշաճ ժամու: Վասն այսորիկ

ցածուցանել կամելով զամբոխումն ծնողացն ասէ. զի տրտմեալ էք, եղիցի որպէս և կամիք. քանզի թէ կամաց խնոց հեռուէիք, լինէր որպէս ես կամիմ. իսկ արդ որպէս տեսանեմ ոչ կամիք զայն որ ես կամիմ, այլ զոր դուք հաճեալ էք զայն առնել փութայք, եղիցին արա որպէս դուք կամիք և հաճիք, զի հնազանդ լինել ծնողաց հրամայեցաւ մեզ 'ի տեառնէ: Այսուիկ լռեալ 'ի սիրելի որդւոյն իւրեանց, հաւատացին հնազանդութեան նորա, և մեծապէս ուրախութ̃ լցեալ եղեն:

Յայնժամ վաղվաղակի փութացուցեալ պատրաստեցին զհարսանիսն երանելի մանկանն, երկնչելով թէ գուցէ դարձեալ երկմտեալ հրաժարեսցի յաշխարհէ: Եւ հրաւիրեցին զամենայն աշխարհն 'ի հարսանիս որդւոց թագաւորին, և լցաւ քաղաքն ամենայն մեծամեծօք արամբք և կանամբք, և էր անպատմելի ուրախութիւն 'ի քաղաքին ձայնիւ երգոց և պարուց: Եւ երանելի մանուկն որ ոչ սիրէր զպայծառութիւն աշխարհի զգեստուցն, նա ըստ արժանի մեծութ̃ թագաւորութեանն ոսկեզօծ և ընդելուզեալ մարգարտով և անգին ականբք զարդարեալ հանդերձիւ շքեղացուցին և թագաւորական կայսերակերպ թագիւ մեծացուցին, որ 'ի տեսողացն ահարկու և սխրալի և գեղեցկազարդ երևէր: Այնպէս և հարսն մեծաւ պատուով և փառօք բազմօք ածաւ 'ի տուն փեսային:

Եւ իբրև ամենայն ինչ կատարեալ եղև, քանզի յանկարծակի ըմբռնեալ եղև 'ի բանից իւր և զերս իրացն ոչ եգիտ վաղվաղակի, խորհուրդ 'ի սրտի իւրում անկաւ 'ի վերուստ այսպէս զի ազատեսցի նա յայնմանէ զոր ոչն սիրեաց, որպէս զի երթիցէ նա մինչև 'ի նաւահանգիստն, և գտցի նմա յաջողումն 'ի տեառնէ: Եւ քաղցրացաւ ոգի երանելւոյն 'ի նմին ժամու, և գնաց և ծանեաւ եթէ յԱյ̃ է խորհուրդն այն որ յայտնեցաւ նմա: Վասն որոյ ասէ երանելին ցփեսաւէրսն. եկ երթիցուք 'ի նաւահանգիստն 'ի պատճառս զբօսանաց և դարձցուք այսրէն վաղվաղակի: Եւ փեսաւէրսն արգելցոր զնա և ասէր. յաղագս քո քաղաքս ամենայն ժողովեալ է 'ի խնդութ̃, և մեք զիարդ վայրապար շրջեսցուք առանց բազմութ̃ զինուորական դասուն և առանց մեծութ̃ և փառաց որպէս և վայել է ձերում կայսերական թա-

գաւորութեանց. զի որք տեսանիցեն զմեզ այնպէս շրջեալ, այսպէս աղաղակեալ նախատիցեն զմեզ իբրև զառանցեալս և խելաթափեալս: Ասէ երանելին. ոչ այնպէս որպէս դու կարծես, այլ այլափոխեալք զմեզ այնպէս երթի֊ ցուք. զի տղայութիւն որ յիս անկեցաւ՝ փարատեսցի փոքր մի գնալովս մեր 'ի զբօսանս նաւահանգստին: Եւ ծա֊ նօթ էր փեսաւէրն տղայութեան նորա՝ զոր ոչ կամէր նա զուգել ընդ անձին, վասն այսորիկ կամակից եղև նմա. և այլակերպեալ զինքեանս և հեծեալք յերիվարս գնա֊ ցին 'ի նաւահանգիստն ուր բազմութիւն նաւաց դադա֊ րեալ էին: Եւ 'ի յանքոյթ տեղւոջ ուրուք ասէ երանե֊ լին ցեղբայր փեսայութեանն իւր. կալ զերիվարս 'ի տե֊ ղիս յայս մինչև փոքր մի աղօթեալ առ տէր խնդրեցից զի փարատեսցէ զտղայութիւն իմ, զի և ծնողքն իմ մի՛ տրտմեսցին 'ի վերայ իմ: Եւ հաւատաց փեսաւէրն բա֊ նից երանելւոյն և թոյլ ետ գնալ և աղօթել: Եւ իջեալ գնաց. և իբրև սակաւ ինչ հեռացաւ, աներևոյթ եղև յաչաց փեսաւէրին: Եւ եդեալ ծունր եկաց յաղօթս և ասէ. որ կատարիչդ ես խնդրուածոց և պարգևիչ ո֊ ղորմութեան, Տ՜ր ա՜ծ, բաց ինձ զդուռն ողորմութեան քո և զմարդասիրութեան ըստ խոստմանց քոց, և տուր ինձ ըստ ցանկութեան իմոյ աղքատանալ և հոգւով, և զվերին կոչմանդ քաղցրութիւն հարազատապէս ընդունել և ժա֊ ռանգորդ լինել երկնից արքայութեանդ. զի դու կարող ես ամենայնի, տէր իմ Տ՜ր, և 'ի քո փառս կատարեցից զկամաւոր աղքատութիւն իմ: Եւ թէ 'ի տեսչութենէ քոյոյ ողորմութեանդ եղև խորհուրդ ազգական սրտիս, նա երևեցո, տէր իմ, յաջողումն ճանապարհիս իմոյ:

Եւ իջեալ յեզր ծովուն նոյնժամայն գտանէ նաւ մի պատրաստական որ երթայր յԱսորիս, և մակոյկն առ եզր ծովուն. եմուտ 'ի մակոյկն երանելին և գնաց 'ի նաւն, և նոյնժամայն առագաստեցին զնաւն ընդ յաջողակ հող֊ մոյն: Եւ ասէ նաւավարն. ո՞ւր կամիս երթալ, տէր իմ: Ասէ երանելին. 'ի Սելևկիա կամիմ մտանել վասն գոր֊ ծոյ ինչ յոյժ պիտոյից: Եւ ոչ ծանեան զնա որք նաւին թէ սա ինքն է տէր աշխարհաց իւրեանց թագաւորու֊ թեանն կայսեր որդին, քանզի յօտար աշխարհէ էին նաւավարն և հնազանդեալքն իւր վարձականքն. և ոչ գոյր 'ի նաւի անդ ոք որ ճանաչել կարէր զթագաւոր֊

զինս 'ի յաղօթելոյն նմա յայ, այլ իբրև իշխանն որ 'ի գործ ինչ հարկաւոր փութալ կարծեցին, և այնպէս գնացին 'ի Սելևկիա: Եւ ետ նաւավարին հանդերձ մի պատուական 'ի հանդերձից իւրոց զոր զգեցեալն էր, և ել անդ և վաղվաղակի զինքն աներևոյթ առնէր, և զգենոյր հանդերձս աղքատութե և զկերպարանս մուրողի, և այնպէս գնաց 'ի քաղաքն Եդեսիա որ այժմ կոչի Ուռհայ: Եւ արգելոյր զինքն 'ի սրահ մեծի եկեղեցւոյն ածածնի ուր հանգիստ աղքատաց էր և բնակութիւն տնանկաց կարգեալ, միաւորեալ ընդ աղքատս ապաստանէր նոցա ըստ իւրաքանչիւր կարեկցութե որպէս և պէտք իւրեանց լինէին, և այնպէս ծայրագոյն խոնարհութբ ամենեցուն 'ի ծառայութի կայր զամենայն ժամանակս կենաց իւրոց: Եւ ամենայն առաքինութբ զարդարէր զինքն, և 'ի ձգունս մեծամեծս տայր զանձն, և ցանկալի առնէր զինքն այ և սրբոց հրեշտակաց նորա ածահաճոյ վարուքն իւրովք:

Իսկ փեսաւէրն երանելւոյն որ ընդ նմա էր 'ի նաւահանգիստն և ունէր զերիվարն, իբրև ժամ մի էանց և ոչ դարձաւ ըստ ասացելոյն իւր, փութացաւ վաղվաղակի 'ի նաւահանգիստն խնդրել զնա և ոչ եգիտ. և յետ բազում քննութեց ասեն կարծելով՝ թէ ել նա 'ի նաւն ասորեստանեաց, որ 'ի պահուս այս առագաստեալ և գնաց յաջողակ հողմով: Եւ զահի հարեալ փեսաւէրն 'ի գործոյն զոր եղև, 'ի սուգ անտանելի մտեալ տարակուսէր թէ զիարդ ծանուցից թագաւորին զիրսն աղէտից, և արտասուօք թանայր զինքն երկնչելով յեղելոց իրացն: Եւ զի ոչ էր հնար ծածկել, վասն այնորիկ դարձաւ և պատմեաց ծնողացն զոր ինչ եղև:

Եւ նոքա լուեալ ափշեցան և յահի եղեալ դողային 'ի զարմանալի գործոյ նորա զոր արար, և մեղադիր ինքեանց եղեալ կական բարձեալ լալով ասէին՝ թէ մեք եղաք պատճառք երանելւոյ զաւակին մեր հեռանալ 'ի մէնջ և անկանիլ 'ի տնանկութի և 'ի կարօտութի. և զմեզ անորդի և անմխիթար մեք արարաք, զի ոչ գնացաք ըստ կամաց նորա ածսիրութեանն: Եւ արդ այսօր վախճանեցաւ որդեակն մեր, և այլ ոչ եւս տեսանել զնա կարելի է մեզ, զի գնաց նա ընդ այ՝ ուրանալով զմեզ և զմեծութիւս աշխարհիս: Վասն որոյ որ ինչ գերեզ-

մահու արժանի է գործ և բան սոցա՝ եղիցի այնպէս։ Այլ իբրև եւ հրաման 'ի թագաւորէն և 'ի թագուհւոյն սոցա զփախուստ որդեկին իւրեանց, հասին անդ վաղվաղակի ողբալով կանայքն այնոքիկ որք զքաղաքացեալն եւ ողբացուցանէին։ Այլ այսպէս զարմանալի խնդութիւն նոցա 'ի սուգ և ուրախութիւն յարատեւ զոր ոչ է բաւական բանս պատմել, քանզի թագաւորական էին իղձքն. զի որպէս խնդութիւն և ուրախութիւն թիւ ոչ էր, զի աշխարհաւ էր, նոյնպէս և սգոյն և արտասուաց թիւ ոչ լինէր, քանզի ծնողքն երանելոյն յոյժ մորմոքէին և կծկէին զինքեանս վասն տարաշխարհիկ լինելոյ սիրելի որդեկին իւրեանց. և զի թագաւորական խանձարրօք սնեալ էր և ծայրագոյն մեծութեամբ և փառօք աճեալ և տէր աշխարհաց լեալ, յայնպիսի անանկութիւն և յօտարութիւն և յանծանօթութիւն ետ զինքն։ Այլ պատճառ զինքեանս դնէին թագաւորն և թագուհին մեծ դշխոյ մայրն երանելոյն. վասն այսորիկ աղէխարշէին և սետանելի կսկիծ և ողորմելի սուգ առնէին ինքեանց, և կանայն և աշխար և արտասուս առ հասարակ քաղաքաւն ամենեցուն լինէր։ Այլ այսպէս յար և հանապազ հալէին և մաշէին յիշելով զանանկացեալ վեհազգին որդեակն իւրեանց։

Այլ խորհեցան առաքել զինուորս ընդ ամենայն երկիր խնդրել զնա ըստ երևելի մեծութեան իւրեանց, թերևս գտցեն զնա։ Այլ գնացեալ սփռեցան ընդ ամենայն երկիր և պարգևս մեծս խոստանային գուշակողացն, և ոչ ոք 'ի նոցանէ կարաց տեղեկանալ և իմանալ թէ զինչ եղև և կամ ուստեք գնաց այնպիսի երևելի այր և մեծաշուք գեղեցկութիւն և հսկայաձև անձն և ահարկու դէմք, սնեալ 'ի թագաւորական գահոյսն իւր, և թէ զիարդ ոք 'ի մարդկանէ զայնպիսի փառաւորութիւն ճանաչել ոչ կարողացան տեսանելով զնա, թէպէտ այլափոխեալ զինքն ցուցանիցէ։ Այլ այսպէս և որ նմանն սոցա ասելով զարմանալին հիացեալ զինուորքն և նորքինի իշխանքն խնդրելով և հարցափորձ լինելով յամենայն տեղիս։

Իսկ նորքինապետեան հանդերձ զինուորօք յՈւռհայ քաղաք իջանէր պատուիրել քաղաքին և աղքատացն այնոցիկ որք անդ առ մեծի եկեղեցւոյն ունէին զմնա-

կութիս ։ Նայլ նախ մտանէր առ եպիսկոպոս քաղաքին ա-
րում անուն էր Բասիլաս , և պատմէր նոցա զգործսն ամ̃ ։
Նոյ լուեալ զայս 'ի նմանէ , յաՀի մեծի լինէին և զար-
մացմամբ Հիանային վասն եղելոյ իրացն , թէ զիարդ զայն-
պիսի մեծութիւն զթագաւորական փառացն և զինքնակա-
լութիւն թողեալ տարաշխարՀիկ եղեալ վտարանդի արկցէ
զինքն 'ի տնանկութի ։ Նոյ այսպիսի բազում բանիւք Հիա-
նալով երանէին զերջանիկն զայն ։ Նոյ եկեալ յեպիսկոպո-
սէն եկն յեկեղեցին ած̃ամօրն առ ժողովս աղքատաց բաշ-
խել ինչս յոլովս՝ լնուլ զամենայն կարօտութի նոցա Հրա-
մանաւն արքունի , զի 'ի ձեռն առատաբաշխ ողորմու-
թեանն այն և աղօթիւք կարօտելոցն գտցի վարձատրեալ
ժառանգ թագաւորութեն իւր ։ Որամօր և երանելին
կայր անդ ընդ աղքատսն միաւորեալ . և 'ի բաշխելն ա-
մենեցուն , տայր և երանելւոյ որդւոյ թագաւորին ըստ
այլոց աղքատաց ։ Նոյ ոչ կարէին ճանաչել , զի ծածկեաց
ած̃ զերանելին յաչաց նոցա զի մի գիտասցեն . քանզի
Հայցէր երջանիկն այն յած̃ , զի մի յայտնեսցի նա իւրոցն
'ի կենդանութե իւրում . և զի այն ևս էր՝ զի ով ոք էր
որ զմտաւ ածել և կարծել կարէր այնպիսւոյ մեծի և
ինքնակալի յայնքան անարգագոյն խոնարՀութի իջա-
նել և 'ի ծայրագոյն աղքատութի ։ Նոյ պատուիրեցաւ
և աղքատացն ամենեցուն առ Հասարակ վասն մեծին
այն որդւոյ թագաւորին , զի թէ ոք գուշակեսցէ , մեծ
պարգևք 'ի թագաւորէն ընդունիցի ։

Նոյ գնաց ներքինապետն և ամենայն խնդրողքն առ
թագաւորն 'ի քաղաք Կոստանդինուպօլիս , ոչ ինչ խնա-
ցեալ ինչ և ոչ ինչ ծանուցեալ . վասն որոյ կրկին աղէտ
և անմխիթար սուգ արքունի պալատանն լինէր ծնողացն
երանելւոյն թագաւորին և թագուՀւոյն ։ Նայսուհետև
այլ ոչ ևս զգենուին զթագաւորական պայծառութիւնն
զանգին թագն կայսերական և զծիրանին , այլ տխուր
և սևաւ Հանդերձիւ . և ոչ երգարանք և երգիչք 'ի դա-
ւրն արքունի , այլ ըստ սովորութեն արքունի պալատանն .
և ոչ առաջի արքային 'ի գնալն իւր ուրեք մեծութիւն
և աՀարկութի և փառք ըստ սովորութե արքայից , այլ
զամենայն ժամանակս իւրեանց 'ի տրտմութի և 'ի Հա-
շուամն կացին , և յիշելոյ արտասուախառն զերանելւոյ որ-
դւոյն իւրեանց ոչ դադարէին և այնպէս մաշէին զինքեանս
մինչև յելիցն իւրեանց յաշխարՀէս ։

Իսկ ինքն երանելի կամաւոր աղքատն էր ցանկա-ցեալ հանապազորդ յաղօթս զցայգ և զցերեկ. և պա-հօք եւս մաշէր զինքն, զի զշաբաթն ողջոյն ոչ լուծա-նէր, բայց 'ի յաւուր շաբաթու և կիրակէի լուծանէր յերրորդ ժամուն հացիւ և աղիւ և ջուր լոկ ըմպելի. այսպիսի պահօք կացեալ եղև 'ի կեանս իւրում: Եւ գործէր ձեռագործ 'ի պէտս կարօտելոց. և յորժամ յողորմածաց ողորմութիւն ընդունէր, բաշխէր վաղվաղա-կի զայն աղքատաց զորոց գիտէր զպակասութիւնն, և զանակութիւն իւր ընդ նոսա ունէր: Եւ 'ի քուն լինել ամենեցուն յառնէր և կայր յաղօթս գնալով առ դրան եկեղեցւոյն հառաչանօք և բազում արտասուօք, և 'ի գալ ժողովրդեանն 'ի ժամ պաշտամանն դառնայր առ աղքատսն և ընդ նոսա կայր յաղօթս մինչև 'ի վախճան հասարակաց աղօթիցն. այսպէս զամենայն աւուրս իւր առնէր: Եւ զանուն իւր ոչ յայտնեաց ումեք, և ոչ այլ եւս անուն եդ իւր. վասն անչափ հեզութեան իւր ոչ հանձե-ցաւ զանունն իւր յիշատակել յաշխարհի և անուամբ յայտնապէս փառաւորիլ: Վասն որոյ ընկերքն իւր աղ-քատքն այնոքիկ նեղանային յոյժ չյայտնելոյ զանունն, քանզի յոյժ սիրէին զնա վասն քաղցրութեան նորա և վասն սպաս տանելոյն նոցա ծնողապէս և վասն ողորմած բարուցն նորա: Բայց ինքն երանելին այսպէս ասէր նո-ցա՝ թէ ոչ է արժանի անունս իմ յիշատակել 'ի միջի ձերում վասն բազում յանցանաց իմոց, զի յոյժ մեղա-ւոր եմ: Եւ հաւատային պարզամիտքն խմաստայեղծ պա-տասխանւոյ նորա՝ որ խոցոտիչ էր բանսարկու բելիա-րայ: Եւ ոչ ոք խուզել և պարսաւել կարէր տեսեալ զան-չափ առաքինութիւնն, համարելով մեղուցեալ յոյժ և յապաշխարութիւն եկեալ:

Եւ որ զմեծի եկեղեցւոյն ա̃ծածնի՝ ուր աղքատանոց էր՝ ունէր զհոգաբարձութիւնն, էր այր արդար և եր-կիւղած յա̃յ, կամեցաւ ա̃ծ յայտնել սակաւ որում ա-նուն էր փակակալ՝ զկամաւոր աղքատացելոյն զառն ա̃յ զխորհուրդ: Եւ այսպէս լինէր. զի յաւուր միում 'ի գի-շերի. գայր փակակալն յեկեղեցին յանկայթ տեղւոջ վասն առանձնական աղօթից, և տեսանէ զերանելի սուրբն յաղօթս, զձեռս համբարձեալ արտասուագոչ աղաղականօք հայցէր յամենեցունց ա̃յ զողորմութիւն: Եւ

քահանայն մեր լուա եղեալ հանէր ընդ նմա զգիշերն ա-
մենայն յաղօթսն մեր, և 'ի հասարակաց պաշտամանէն
ոչ թուլանայր: Այս յայտնիկ հիացեալ՝ 'ի մտի ունէր
քահանայն մեր. և 'ի բազում գիշերս զայս առնէր ան-
երևութաբար և ոչ յայտնելով նմա, և խնացեալ ծա-
նեաւ եթէ այր մեր է և ընտրեալ ոք է 'ի սրբոցն մեր:
Նաև երանելի այրն մեր 'ի կարծիս անկեալ լինէր՝ եթէ
է ոք որ տեսանէ զաղօթսն նորա անդ, այնուհետև գնայր
'ի փակեալ դուռն մեծի եկեղեցւոյն: Նաև 'ի գալ սրբ-
բոյն՝ դուռն ինքնին բացեալ լինէր առաջի երանելւոյն,
և մտեալ յեկեղեցին յանկեան ուրեք կայր յաղօթս
համարձակապէս անկասկած 'ի տեսանելոյ մարդկան, և
'ի մերձենալ հասարակաց ժամուն ելանէր յեկեղեցւոյն
և երթայր առ աղքատսն: Այս եկեալ քահանայն մեր ոչ
գտանէր զերանելի այրն մեր յիւրում սովորական տե-
ղւոջ յաղօթսն: Այս 'ի ժամ հասարակացն գայր բա-
նալ զդուռն մեծի եկեղեցւոյն, և գտանէր բացեալ ըզ-
դուռն, և մտախոհ եղեալ կարծէր 'ի գողոց բացեալ.
վասն որոյ վաղվաղակի փութայր տեսանել զամենայն
անօթս եկեղեցւոյն զոսկեղէնսն և զարծաթեղէնսն և
զամենայն կահ սպասուց տանն տեառն, և գտանէր ամբողջ
զամ և ոչ մի ինչ պակաս, և հիանայր 'ի միտս իւր թէ
զինչ արդեօք իցէ այս: Այնուհետև կրկին անկուժբ
ամրացուցանէր զդուռն, և յերկրորդում աւուրն եկեալ
գտանէր դարձեալ բացեալ զդուռն զայնքան ամրափա-
կեալն նզօք և յարտաքուստ փականօքն. և դարձեալ յեր-
կիւղի եղեալ յաւազակաց լինել կարծելով ընթանայր
տեսանել դարձեալ զամ կահ սպասուցն եկեղեցւոյն, և
գտանէր լի և ամբողջ զամենայն և մի ինչ ոչ պակա-
սեալ, և հիացմամբ պակուցեալ լինէր քահանայն մեր և
տարսեալ զարհուրէր 'ի գործոյն: Այս մտախոհ ե-
ղեալ ասէր. այս նշան ինչ և զօրութիւն իմն յԱյ լեալ
ցուցեալ իցէ. այսուհետև հսկել պարտ է ինձ և տե-
սանել եթէ յայտնեսցէ ինձ Ած անարժանիս զեղեալ
սքանչելիս զայս:

Այս 'ի գիշերին յայն եկեալ քահանայն մեր՝ արժանա-
ւորն տեսլեան հրաշից սրբոցն մեր՝ դօղեալ կայր ընդդէմ
դրան եկեղեցւոյն, և հայցէր արտասուօք յամենազօրութ-
եանէն յայտնել նմա զգործն զայն մեծ: Այս առհա տե-

սանէր զի գայր աղքատն այն՝ զորոյ զաղօթսն տեսեալ և զամենայն առաքինութիւնսն զննեալ յընկերակցաց յաղքատացն հաւատայր զնա յընտրելոց սրբոցն այ՝ հասանէր յանդիման դրան եկեղեցւոյն, և յորդառուղխ արտասուօք և տարածմամբ ձեռացն դիմէր 'ի դուռն եկեղեցւոյն, և 'ի մերձենալ սրբոյն՝ դուռն եկեղեցւոյն հեզիկ բացեալ լինէր ընդդէմ նորա այնքան ամրափակեալն նգօք և փականօք։ Այլ մտեալ յեկեղեցին այրն այ կամաւոր աղքատն կայր յանկեան միոջ յաղօթս։ Իսկ քահանայն այ փականակալն կալով առ դուռն եկեղեցւոյն միտ դնէր աղօթից սրբոյն և գոհացեալ օրհնէր զտէր ած՝ որ արժանաւորեցոյց հրաշիցն սրբոց։ Այլ ոչ այլ յամեաց, այլ փաղատագողի եկեալ առ նա յանկարծակի բուռն հարեալ կալաւ զնա յամենայն զօրութէ իւրմէ, և ոչ եթող զնա 'ի ձեռաց իւր պրծանել։ Ասէ. վասն տեառն այ քո կացջիր, քանզի յայ ազդեցաւ ինձ վասն քո պատմել ինձ զվարս քո. արդ հրամայեալ է քեզ յայ պատմել առաջի իմ եթէ ով ես դու և ուստի և զինչ ոք ես դու որ այդպէս սքանչելի գործ առնես։ Իսկ երանելին ասէ ցնա. ես զոր տեսանես՝ այր տառապեալ եմ և աղքատ և մուրացիկ և օտար. հարց ընդ ընկերսն իմ, զի մի 'ի նոցանէ եմ ես և նոքա պատմեսցեն քեզ, թէ որչափ ժամանակս կացեալ եմ ընդ նոսա։ Իսկ քահանայն այ ոչ հանդուրժեաց հարցանել զաղքատսն, այլ ջերմեռանդն սրտիւ աղաչէր զնա երդմամբ յած կենդանւոյ և 'ի փրկչական պատկերն զի ասասցէ նմա թէ ով ոք իցէ նա։

Այլ երանելի այրն այ թախանձեալ 'ի նմանէ ասէ. վասնզի մեծ է ինձ ասելս, և դարձեալ լսել վասն երդմանդ յած կենդանւոյ և 'ի փրկչական ահաւորին պատկերն երկիւղ է. տարակուսանօք արարեր զիս, ով դու քահանայ այ։ Արդ նմանապէս և ես իսկ երդմնեցուցանեմ զքեզ յահաւորն ած և 'ի կենսատու պատկերն փրկչական, զի մի յայտնեսցես զասացեալսն յինէն մինչև ցժամ վախճանի իմոյ։ Այլ դարձեալ զի որպէս թախանձեցեր զիս աստ, մի այլ սոյնպիսի թախանձանք յարուսցես ինձ և հանել ջանասցես զիս տխմարութե յաղքատութենէ յայսմանէ և 'ի տառապանաց զոր սիրեցի, և ցանկացայ սմա ակն ունելով բարեացն որ 'ի տեառնէ և երանելի

Ճանապարհի նորա փափագելով, սիրելագին զանխափանօք և զանձնաս գթութի նորա։ Այլ քահանայն այ յամենայն սրտէ իւրմէ և ամենայն ճշմարտութեամբ երգաւանեաց ըստ կամաց նորա, զի մի առացէ ումեք, և զոր ինչ կամեցաւ՝ ախորժելով արարից, ասէ, քեզ այդպէս։

Այլ ասէ Երանելին. Ես եմ որդին Թագաւորին Հռոմոց, որ ներքինին այն եկն 'ի խնդիր որպէս և գիտէք ամենեքեան։ Այլ աղաչեաց զնա քահանայն յոյժ թախանձանօք ասել զամենայն եղեալն ստուգիւ. զոր և ներքինին յառաջագոյն ասացեալ էր եպիսկոպոսին և ժառանգաւորացն զամենայն պատահեալսն և զեղեալսն և զպարեպաշտութիւն Երանելւոյն, զնոյն և Երանելին կրկնեալ զիւր զամենայն եղեալսն առաջ քահանային։ Այլ իբրև լուաւ թէ ով ոք է և զամենայն եղեալսն նորա, արտասուեալ ապա քահանայն հառաչմամբ գիրկս արկեալ համբուրէր և փարէր զնովաւ՝ երանելով զանկշռելի գործն նորա։ Այլ ասէ աղաչելով զսուրբն՝ եթէ կամակից եղեալ հաւանեա, ով Երանելիդ, ինձ անարժանիս, և եկեալ կացցես 'ի տան իմում, և ըստ կամաց քոց շահեցայց զքեզ։ Նա է ցնա այրն այն խոնարհութեամբ և հեզահամբերն այն. ո՞չ ասացի քեզ եթէ մի թախանձեալ նեղացուցանես զիս։ Այլ դարձեալ ասեմ. մի ներհակութիւն ինչ առներ ճանապարհիս զորս ընտրեցի սիրով վասն տեառն. այլ օգնական լիջիր աղօթիւք, որպէս զի կատարեցից զկեանս իմ այսպէս որպէս տեառնես ընդ աղքատսն այ։ Այլ դարձեալ պատուիրեմ քեզ քահանայիդ այ, զի որպէս ոչ ծանուցի զանուն իմ ումեք և ոչ ընկերակցաց իմոց աղքատաց և ոչ այլ ես անուն ինչ յորջորջել ինձ հաճեցայ, զի ոչ համարեցայ զանձն իմ արժանի փառաց կենաց անցաւորիս, և ոչ յետ կենացս առասի զանուն իմ յիշատակի արժանի վարկանել, այսպէս խնդրեմ 'ի քէն և հաստատեմ զբանս զայս 'ի լսելիս քո՝ զի և ոչ դու կոչեսցես զանուն իմ և ոչ այլ ումեք ծանուսցես և ոչ գրով ինչ արձանագրեսցես կարասցես. զի որովհետև հաճեցաւ տէր ած իմ յայտնել զիս զանարժանս քում արժանաւորութեանդ, որպէս և պատուիրեաց ինձ 'ի տեսլեանն գիշերոյն, և ծանեար թէ ով և կամ ուստի եմ ես, այսպէս և դու պարտիս կատարել զպատուիրեալսն քեզ զհրամանեալսն 'ի տեառնէ ըստ ըղձմանն իմոյ։

Այլ քահանայն Աստուծոյ հիացեալ եւ ապշեալ 'ի զարմանցմանէ կայր առաջի հսկայաձեւին եւ ահարկու դիմացն երանելւոյ առն Աստուծոյ, եւ իբրեւ զՔրիստոս 'ի նմա տեսանելով խոնարհէր 'ի գարշապարս նորա եւ անյագ համբուրէր զերեսս նորա եւ ոչ կարէր այլ ինչ աւելի հարկել զնա, այլ 'ի կամս նորա թողացուցանէր ասելով. եղիցի որպէս եւ երանելւոյդ հաճոյ թուեցաւ եւ յԱստուծոյ հրամայեցաւ։ Այլ 'ի մերձենալ հասարակաց ժամուն գնաց երանելին այրն Աստուծոյ առ ընկերսն իւր, իսկ քահանայն Աստուծոյ ոչ դադարեաց 'ի լալոյ աղիողորմ եւ դառն արտասուելով զգիշերային հասարակաց ժամուն յայն մինչեւ 'ի վախճան աղօթիցն։ Այլ զարմացեալք ընթերակայքն նորա ասէին. զինչ պատահեալ եղեւ է քեզ, ով տէր փակակալ, որ այդպէս անմխիթար կոծեալ արտասուես անդադարելի։ Ասէ ցնոսա. քանզի տեսի այսօր նոր նշան եւ անպատմելի իր՝ զոր ոչ է հնար պատմել ումեք։ Այլ լուեալքն 'ի նմանէ հրաշացեալք լինէին եւ այլ ոչ եւս ինչ հարցանէին։

Իսկ ինքն երանելի այրն Աստուծոյ կամաւոր աղքատացեալն վասն Քրիստոսի յորդորեալ 'ի մրցումն նեղութեան ճգնութեանն հանդիսանայր խոնարհութեամբ եւ հեզութեամբ 'ի վեր քան զչափ մարդկան, այնքան մինչ 'ի բարձրութիւն խոնարհութեան հասանէր, եւ ուրախացեալ ցնծայր 'ի գործս ծայրագոյն նուաստութեանն իւր եւ խոնարհագոյն եւ անփառ կեանս իւր եւ 'ի վերայ անծանօթ լինելոյն 'ի մարդկանէ թէ ով ոք է։ Այլ ասէր ինքեան երանելին, եթէ ով դու, այս են կեանք քո որ ըստ արժանւոյն տառապանօք եւ նեղութեամբ եւ անմխիթար կենօք, որպէս եւ ընկերակիցք քո են այսօրինակ զոր տեսանես. զի ո՞վ ոք իցես դու՝ զի թագաւորական ճոխութիւն եւ իշխանական վայելչածովք զկեանս դայս վարեսցես, եւ ոչ այսպիսի տառապանօք եւ նեղութեամբ վճարիցեն զինքեանս. այլ այսպէս վայել է քում տրկութեանդ վարել զկեանս քո, որպէս զի մի ոք յաղքատաց աշխարհի նուաղագոյն լիցի քան զքեզ։ Այլ այսպէս դատապարտելով զանձն իւր՝ ոչ ինչ դրդուէր եւ կամ տարակուսէր 'ի փորձութիւն արհամարհ եւ գծուծ կենացն իւր, այլ հաւատով եւ յուսով եւ համբերութեամբ բազմաւ կատարէր զտնանկութիւն իւր, եւ սրտիւ բերկրեալ լինէր հանապազ յարտասուելն իւր յաղօթս եւ 'ի սպասաւորելն իւր տնանկաց եղբարցն իւր։

ցաւ զկարս մտուցողին հոգևոր մօրն իւրոյ և եղև նմանող ձգնութեան նորա։ Այլ յորժամ վախճանեցաւ հայր վանացն, նստուցին զնա փոխանակ նորա առաջնորդ և հայր վանացն ուխտին 'ի փառս Քի այ մերոյ։

## ՎԱՐՔ

# ԵՐԱՆՈՒՀԻ ԿՈՒՍԻՆ ՄԱՐԻԱՄՈՒ

## ՈՐ ՄԱՐԻՆՈՍ ԱՆՈՒԱՆԵՑԱՒ

Էր այր մի 'ի Բիւթանիա, որում անուն էր Եւգենիոս, և ունէր կին, և ծնաւ նմա դուստր մի միամօր և կոչեաց զանուն նորա Մարիամ, և վախճանեալ մօրն նորա՝ մտուցանէր հայրն նորա զմանուկն բազում ուսմամբ և պարկեշտութեամբ։ Այլ իբրև զարգացաւ, ասէ ցնա հայրն իւր. որդեակ, ահաւասիկ զամենայն ինչս իմ տամ 'ի ձեռս քո և երթամ զանձն իմ ապրեցուցանեմ։ Իսկ նորա լուեալ զայս 'ի հօրէն իւրմէ ասէ ցնա. հայր, դու կամիս զանձն քո ապրեցուցանել և զիս կորուսանե՞լ. ո՞չ գիտես զի ասէ տէրն՝ հովիւ բարի դնէ զանձն իւր 'ի վերայ ոչխարաց իւրոց. և դարձեալ ասէ, որ ապրեցուցանէ զանձն իւր՝ որպէս այն թէ կորուսցէ։ Զայս լուեալ հօրն ստրջացաւ 'ի բանս նորա, զի լալով և ողբալով խօսէր։ Ասէ ցնա հայրն. որդեակ իմ քաղցրիկ, զի՞նչ արարից քեզ, զի դու կին մարդ ես, և ես յարանց վանս երթամ, դու զիա՞րդ կարես ընդ իս գալ. քանզի սատանայ ձևօք մարտնչի ընդ ծառայս այ։ Ասէ ցնա դուստրն. ոչ, տէր իմ, ոչ մտից որպէս դու ասես, այլ 'ի բաց կտրեալ զհեր գլխոյ իմոյ և առնացի ձև զգեցեալ մտից ընդ քեզ 'ի վանսն։ Իսկ հայրն կամակից եղեալ բանից դստերն, ետ զինչս իւր աղքատաց, և կսրեաց զհերս դստերն և անուանեաց զանուն նորա Մարինոս և պատուիրեաց նմա և ասէ. զգոյշ լեր, որդեակ, 'ի մէջ հրոյ կալոց ես, հանապազ զանձնդ պատրաստեա 'ի Քս, զի կատարեսցես անարատ զկեանս քո և զկուսականութիւն առաջի այ։

Եւ առեալ զդուստրն իւր մտին 'ի վանս միաբանակեցաց։ Եւ օր ըստ օրէ զօրանայր Մարինոս յամենայն առաքինութիւնս և 'ի լռութեան և 'ի բազում ճգնութիւնս։ Իբրև արարին ժամանակս ինչ 'ի վանսն, կարծէին եթէ ներքինի է Մարինոս առ 'ի չգոյէ մօրուացն և վասն նուաղութեան ձայնին. իսկ ոմանք կարծէին եթէ 'ի բազում պահոցն է, զի ընդ երկուս աւուրս մի անգամ ուտէր։ Եւ դէպ եղև վախճանել հօրն նորա. իսկ յետ այնորիկ նա ևս յաւել 'ի լռութեան և 'ի ճգնութեան. որ և շնորհս առնոյր յայ 'ի վերայ հիւանդաց, զի ձեռն եդեալ առժամայն բժշկէին։ Եւ էին 'ի վանսն նոցա արք քառասուն, և սուրբք ամենեքեան։ Եւ ըստ ամսոյ ամսոյ առաքէին արք չորք յեղբարցն 'ի սպասաւորութիւն առ 'ի պէտս վանիցն, զի և այլ խցաւորացն հոգս տանէին։ Եւ 'ի հասարակ ճանապարհին էր պանդոկի մի. և իբրև երթային և գային՝ վասն հեռաւորութեան ճանապարհին իջեւանէին անդ, որով և բազում ընդունելութիւն առնէր նոցա պանդոկապետն։

Իսկ 'ի միում աւուր կոչեաց վանահայրն զՄարինոս և ասէ ցնա. եղբայր Մարինոս, գիտեմ զբարուք վարս քո, զի կատարեալ ես յամենայնի և փոյթ 'ի սպասաւորութեան. արդ կամեցայ ելանել ընդ եղբարսդ 'ի սպասաւորութիւն, զի եղբարքդ տրտնջեն ընդ չելանելդ քո ընդ նոսա 'ի պէտս վանացս. զայս առնելով առաւել վարձս ընկալցիս յԱստուծոյ։ Զայս լուեալ Մարինոսի անկաւ յոտս նորա և ասէ. աղօթս արա ինձ, հայր, և ուր և հրամայես երթամ։ Եւ 'ի միւսում աւուրն ելեալ Մարինոս երեք եղբարբքն երթայր 'ի սպասաւորութիւնն, և իջեալ նոքօք 'ի պանդոկին օթեվանեցան։ Իսկ զինուորի ումեմն դէպ եղև 'ի գիշերին այն ապականել զդուստրն պանդոկապետին, և ասէ ցնա զինուորն. եթէ յայտնի այդ հօր քո, ասասջիր եթէ միայնակեացն այն գեղեցիկ Մարինոս զոր ասեն քրիստոնեայ, նա արար ինձ զայս։

Եւ իբրև իմացաւ պանդոկապետն, եկն 'ի վանսն մեղադրելով և ասելով՝ ո՞ւր է այն սուտ քրիստոնեայն։ Եւ ընդ առաջ եկեալ սարկաւագի վանիցն ասէ. բարի եկիր։ Եւ նա ասէ. չար ժամու ծանեայ զձեզ, մի լիցի ինձ այլ միայնակեաց տեսանել։ Իբրև հարցին զպատ-

ձառն, ասէ. դուստր ունէի միամօր յոր ունէի յոյս հան-
գուցանել զծերութիւն իմ, և արդ տեսէք թէ զինչ ա-
րար ինձ զոր Մարինոս ասէք: Եւ եկեալ առ նա վա-
նականն ասէ ցնա. եղբայր, զինչ է զոր նուաղիս: Եւ
պատմեաց հօրն և ամենեցուն զեղեալն, գայթակղեալ
'ի միայնակեցաց: Ասէ ցնա վանականն. եղբայր, զինչ
արարից նմա, այլ յորժամ եկեսցէ նա 'ի սպասաւորու-
թենէն, հալածեցից զնա 'ի վանացս: Իսկ իբրև եկն
Մարինոս ընդ այլ եղբարսն, ասէ ցնա վանականն. Մա-
րինէ, այդ են վարք և ճգնութիւք քո՝ զի երթեալ քո
'ի պանդոկն ապականեցեր զդուստր պանդոկապետին,
և եկեալ հայր նորա 'ի վանս նախատինս արար զմեզ
առաջի ամենայն աշխարհականացս: Զայն լուեալ Մա-
րինոսի անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց և ասէ. Թողու-
թիւն արա ինձ, հայր, վասն այ՟. զի որպէս մարդ մեղա-
րեցայ: Իսկ վանականն բարկացեալ եհան զնա 'ի վա-
նացն ասելով՝ եթէ ոչ ևս մտանես այլ 'ի վանս: Եւ ե-
լեալ Մարինոս նստաւ արտաքոյ վանացն:

Իբրև եհաս ժամանակ ծննդոց դստեր պանդոկապե-
տին՝ ծնաւ արու: Եւ առեալ զմանուկն հօր աղջկանն
և բերեալ զնա 'ի վանսն և գտեալ զՄարինոս արտա-
քոյ վանացն՝ ընկէց 'ի նա զմանուկն ասելով. առ զոր
չարեօք սերմանեցեր զզաւակդ, և գնաց: Եւ Մարինոս
առեալ զմանուկն տրտմեցաւ յոյժ ասելով. ես ըստ մե-
ղաց իմոց դատիմ, բայց զինչ արարից զտղայս զի մե-
ռանի ընդ իս: Եւ սկսաւ Մարինոս 'ի հօտից խնդրել
կաթն և սնուցանէր այնու զմանուկն որպէս հայր: Եւ
ոչ էր բաւական նեղութիւնն իւր, այլ և մանուկն լա-
լով զբաղէր զնա, և զհանդերձն բազում անգամ խանձ-
գարէր մանուկն:

Իսկ յետ երից ամաց յարեան եղբարքն 'ի վերայ հօր
վանիցն և ասեն՝ եթէ բաւական է նմա տառապելն առա-
ջի ամենեցուն, և զի խոստովանեցաւ զմեղս իւր և այս-
չափ տառապեցաւ առաջի վանացս, արդ հրամայեա զի
մտցէ 'ի վանս. իսկ վանականն ոչ հաւանէր: Ասեն եղ-
բարքն. եթէ զնա ոչ ընդունիս, գնամք 'ի վանացս. և
զիա՞րդ ունիմք յոյ՟ զթողութի՟ մեղաց մերոց, ահա այս
երեք ամք են յորմէհետէ նստի բացօթեայ արտաքոյ
դրանն: Զայս լուեալ վանականին յեղբարցն՝ ասաց.

վասն սիրոյ ձերոյ ընդունիմ զնա։ Այլ կոչեաց զՄարինոս և ասէ ցնա. ոչ ես արժանի կալ յառաջին տեղւոջ քո վասն մեղաց քոց զոր գործեցեր, այլ վասն սիրոյ եղբարցս ընդունիմ զքեզ քան զամենեսեան կրտսեր 'ի վանս։ Իսկ Մարինոս ասէ. այս կարի մեծ է ինձ, տէր իմ, որ արժանի արարեր զիս ներքոյ սեմոց մտանել, թերևս արժանաւորեցայց ծառայել սուրբ հարցս։ Այլ արկ զնա վանականն յանարգագոյն գործ վանացն, և առնէր զայն զգուշութբ և բազում ջանիւք. ունէր և զմանուկն զկնի երթեալ և ձայնէր պապա պապա, և որ ինչ սովորութիւն է տղայոյ հայրակոչ լինել։ Այլ ոչ էր բաւական զբաղումն վանաց ծանր գործոյ, այլ և մանկան հոգան եթէ ուստի տացէ նմա ջամբ։ Այլ իբրև զարգացաւ մանուկն, կայր 'ի վանսն սնեալ բազում պարկեշտութբ, արժանաւոր եղեալ կրօնաւորական սքեմի։

Իսկ յետ ժամանակի ինչ անցանելոյ եհարց վանականն զեղբարսն և ասէ. ահա երեք աւուրք են յորս ոչ եմ տեսեալ զՄարինոս 'ի սաղմոսերգութեան, քանզի յառաջ քան զամենեսեան գտանէր 'ի սաղմոսի անդ, երթայք 'ի խուցն և տեսէք մի գուցէ հիւանդ է։ Իսկ իբրև եկին եղբարքն 'ի խուցն նորա, գտին զնա վախճանեալ 'ի Տէր, և եկեալ պատմեցին վանականին եթէ ննջեաց Մարինոս։ Այլ ասէ վանականն. ո զիարդ արդեօք գնաց թշուառական անձն նորա, կամ զինչ պատասխանի տացէ Տեառն։ Այլ հրամայեաց պատել զնա։ Իբրև եկին եղբարքն լուանալ զնա, գիտացին եթէ կին մարդ է բնութբ. և հիացան ամենեքեան սոսկմամբ, և սկսան ասել աղաղակաւ՝ տէր ողորմեա։ Իսկ վանականն լուեալ եհարց եթէ զինչ տեսէք։ Այլ նոքա ասեն, եթէ եղբայրն Մարինոս կին մարդ է։ Այլ եկեալ վանականն ետես, և ընկեց զինքն 'ի գետին և արտասուօք ասէր. թողութի արա ինձ զի մեղայ քեզ տգիտութբ, աւասիկ մեռանիմ առ սուրբ ոտս քո յանցանելս առ քեզ. և բազում ինչ այսպիսիս ասէր ողբալով կական բարձեալ և դառն արտասուօք։ Յայնժամ եկն նմա 'ի վերուստ ձայն որ ասէր. եթէ գիտութեամբ էիր գործեալ զայդ, ոչ թողուլին քեզ մեղքն. բայց որովհետև անգիտութբ արարեր, թողութի եղև մեղաց քոց։ Զայսպիսի բարբառ իբրև լուաւ վանականն, յահի մեծի եղեալ գոհանայր զտեառնէ։

Իսկ նորին ժամուն առաքեաց վանահայրն եղբայր մի առ պանդոկապետն և կոչեաց զնա։ Նորա եկն՝ ասէ ցնա վանահայրն. եղբայրն Մարկոս վախճանեցաւ այժմ։ Ասէ պանդոկապետն. ած Թողութիւն արասցէ նմա, զի ազդով եկից զատուն իմ։ Ասէ ցնա վանահայրն. զգուշացիր, եղբայր, և մի բարբառիր զայդպիսի բան, զի մեղար առաջի այ և զիս արկեր 'ի փորձութիւն, և ես պատրեալ 'ի բանս քո մեղս գործեցի և մեղայ առաջի Տն, քանզի եղբայրն Մարկոս կին մարդ է։ Զայս լուեալ լուաւ պանդոկապետն սոսկացեալ կայր 'ի վերայ առացեալ բանին, և վանահայրն կալեալ զձեռանէ նորա եցոյց նմա զի կին մարդ է Մարկոս։ Իսկ ապա ողոցեալ պանդոկապետն զարհուրէր 'ի վերայ գործոյն զոր արար զրպարտութիւն արդարոյն, և լայր ողբալով և կոծէր զանձն և Թողութիւն հայցէր։ Իսկ պատուեալ զմարմինս սրբոյն եդին 'ի գերեզմանի հանդերձ սաղմոսիւք և օրհնութեամբ և հոգևոր երգովք 'ի փառս և 'ի գովութիւն այ։ Իսկ յետ այսորիկ դուստր պանդոկապետին վարանեալ յայսոյ պղծոյ եկն խոստովանելով եԹէ զինուորն պատրեաց զիս, և բժշկեցաւ 'ի վերայ գերեզմանի սըրբոյ կուսին Մարիամու։ Իսկ փառաւորեցին զած 'ի վերայ եղելոց նշանացն, և վասն համբերութեան նորա որ մինչև 'ի մահ համբերեաց և ոչ յայտնեաց։

Արդ եղբարք, և մեք նախանձաւոր լիցուք համբերութեան և ժուժկալութեան նորա, և բարեխօսութեամբ սըրբուհւոյ կուսին Մարիամու նոյն պսակացն հասցուք 'ի Քն Յն 'ի տէր մեր։

## ՃԵՂՋ ԵՒ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԻՒՆ

## ՏԱՅԻՍԱՅ ՊՈՌՆԿԻՆ

ԵՂԲԱՐՔ իմ սիրելիք, պատմեմ ձեզ զսքանչելի և զպայծառ ապաշխարութիւն Տայիսայ, որ և կատարեալ փառաւորեցաւ։ Քանզի որ կամիցին ապաշխարել զոր գործեցին 'ի ժամանակս պղերգութեան, օգտակար է ճառս յոյժ, և մխիթարելի որոց սիրեն զած։

Արդ երանելին այս մայր ունէր ըստ մարմնոյ, և էր սա գեղեցիկ երեսօք. զսա առեալ մօր իւրոյ 'ի տղայութենէ կացոյց 'ի տեղի կորստեան, և սփռեցաւ անուն գեղեցկութեն նորա ընդ ամենայն երկիր։ Եւ որք լսէին 'ի հեռաստանէ վասն գեղոյ նորա, փափաքէին տեսանել և ոչ յագենային գեղեցկութեն երեսաց նորա. և որպէս բոց վառէր մոլորութեն սիրոյ նորա 'ի սիրտս տեսողացն։ Եւ բազումք վաճառէին զինչս նախնեացն, իսկ աղքատքն յընչից զհանդերձս իւրեանց վաճառէին առ 'ի կատարել զցանկութիւնս իւրեանց։

Իսկ երբեմն լուաւ աբբայ Սերապիոն[1]՝ վասն նորա թէ զապականս ծգեաց 'ի կորուստ գեղեցկութեն նորա, զգեցաւ աշխարհական տարազ, և էառ դահեկան մի և գնաց առ նա. երբեմն ետես զնա, եհան զդահեկանն և ետ ցնա։ Իսկ նորա առեալ ասէր. մտցուք 'ի ներքս։ Եւ երբեմն մտին, տեսանէ անկողին մի բարձր կազմեալ. և ելեալ կնոջն կոչէր զծերն առ ինքն։ Իսկ նա ասէ ցկինն. ունիս այլ սենեակ ներքսագոյն քան զայս։ Եւ նա ասէ՝ այո։ Ասէ ծերն. մտցուք 'ի նա։ Եւ նա ասէ ցծերն. եթէ 'ի մարդոյ պատկառես, ոչ ոք տեսանէ զքեզ այստ. ապա թէ յայ երկնչիս, ուրանօր և մտանեմք տեսանէ զմեզ Ած։ Իսկ ծերոյն լուեալ զբանս զայս՝ ասէ ցնա. և գիտես հաւատաս եթէ է Ած։ Ասէ ցնա. գիտեմ եթէ է Ած և արքայութիւն և տանջանք։ Ասէ ցնա ծերն. իսկ եթէ գիտես, ընդէր այդպէս կորուսեր զորդիս մարդկան։ Եւ նորա վաղվաղակի զղջացեալ 'ի բանէ ծերոյն անկաւ առ ոտս նորա և ասէ. գիտեմ եթէ է ապաշխարութիւն որոց դառնան, բայց թոյլ տուր ինձ երիս աւուրս միայն և ապա այնպէս արա յիս որպէս և կամիս փոխանակ չարեացն զոր գործեցի։ Եւ առեալ ներումն 'ի ծերոյն եդ պայման ընդ նմա թէ ուրանօր գտանիցէ զնա, և արձակեաց զնա։

Իսկ Տայսան ժողովեալ զամենայն որ ինչ ստացեալն էր 'ի պոռնկութենէ անտի, տարեալ 'ի մէջ քաղաքին և լուցեալ հուր այրեաց զամենայն և ասէր. եկայք ամենեքեան որք ընդ իս պոռնկեալքդ էք, տեսէք զոր ինչ չարով ստացայ, անհաւատիկ այրեալ եղև առաջի աչաց

1 Լատինն Պափնուտիոս ասէ։

ձերոց 'ի ժամուս յայսմիկ։ Եւ էր կշիռ ոսկւոյն լիտր չորեքհարիւր՝ զոր այրեաց 'ի հուրն։ Եւ յետ այրելոյ նորա զամենայն, փախեաւ և գնաց առ ծերն։

Իսկ ծերն տեսեալ զնա կալաւ զձեռանէ նորա և առ-եալ եարկ զնա 'ի վանս կուսանաց, և յուզեալ եգիտ խուց մի խաւարին և արգել զնա անդ. փակեալ զդուրսն կնքեաց կապարով, և եթող ծերպ մի միայն ուստի ըղ-պէտս իւր առնուցու. և պատուիրեաց ծերն մօր վանացն տալ նմա աւուրն հաց մի ըստ չափոյ և ջուր ըմպելոյ։ Ասէ երանելին ընդ ծերն 'ի պատուհանէ անտի. հայր, ուրանօր հրամայես որ արարից զջուր իմ։ Ասէ ցնա. 'ի խցի այդր, որպէս վայել է քեզ։ Ասէ ցնա դարձեալ. զիարդ կամիս որ աղօթեցից առ Ա̃Ծ, որպէս զի թողցէ ինձ։ Ասէ ցնա ծերն. արժանի ոչ ես աղօթել առ նա և ոչ անուանել զանուն նորա շրթամբք քով կամ տարածել զձեռս քո առ նա. քանզի շրթունք քո աղտեղի են և պիղծ, և ձեռք քո շաղախեալ է յանօրէնութեանց, այլ լոկ միայն նիստ նայելով յարևելս ոչ ինչ ասելով՝ բայց միայն զբանս զայս, որ ստեղծերդ զիս՝ ողորմեա ինձ։ Եւ արար անդ 'ի խցի ամս երիս։

Իսկ ծերն գթացեալ նմա գնաց առ աբբայ Անտոնիոս լսել 'ի նմանէ եթէ եթող նմա Ա̃Ծ եթէ ոչ. և եկեալ առ նա ասաց վասն նորա։ Իսկ աբբայ Անտոնիոս կոչեցեալ զաշակերտսն իւր և ասէ ցնոսա. արգելէք զինքեանս իւրաքանչիւր ոք 'ի խցի զա̃մ գիշերս զայս և աղօթեցէք առ Ա̃Ծ խստաբար սրտով, որպէս զի տեսցուք ում յայտնեսցէ իրքն որոյ վասն եկն ծերս աբբայ Սերապիոն։ Եւ արարեալ իւրաքանչիւր ոք որպէս և հրամայեաց։ Եւ 'ի տարաժամել գիշերոյն հայեցաւ աբբայ Պաւղոս երիցագոյն աշակերտն ծերոյն, և տեսանէ յերկինս անկողին մի մեծ կազմեալ փառօք և երիս կուսանս որ ունէին երիս լապտերս առաջի անկողնոյն և պահէին զնա և պսակ անթառամ որ եդեալ էր 'ի վերայ անկողնոյն։ Եւ տեսեալ զայն ասէ 'ի միտ. ոչ ումեք է փառք անկողնոյս այսորիկ և պսակիս այսմիկ, բայց եթէ աբբայ Անտոնի հօր իմում։ Եւ եկն նմա ձայն և ասէ. ոչ է Անտոնի հօր քո, այլ Տայիսայ պոռնկին է։ Եւ իբրև այգ եղև, պատմեաց զերազն զոր ետես. և դարձաւ ծերն խնդութ̃բ յաբբայ Անտոնէն և եմուտ 'ի վանս

կուսանացն և եբաց զդուրս խոցին հանել կամելով զնա ։ Իսկ Նորա լուեալ աղաչէր զնա և ասէր. Թող զիս մինչև 'ի մահ 'ի խոցի իմում, քանզի բազում են մեղք իմ, որպէս զի քաւեսցէ զնոսա Ած ։ Ասէ ցնա ծերն. արդէն մարդասէրն Ած գթացեալ 'ի վերայ քո ընկալաւ զապաշխարութի քո. և եհան զնա 'ի խոցէն ։ Ասէ ցծերն երանելին Տայասիա. հաւատա ինձ, հայր, յորմէհետէ մտի 'ի խուցս յայս, զմեղս իմ զամենայն բեռն մի մեծ արարի և եդի առաջի իմ, և որպէս շունչս հոտոտելեաց առ վայրկեան մի ոչ դադարէ, նոյնպէս և մեղք իմ 'ի մտաց իմոց ոչ վերացան մինչև 'ի ժամս յայս ։ Այլ ասէ ցնա ծերն. ոչ եթէ վասն ապաշխարութեան քո եթող Ած զմեղս քո, այլ վասն խորհրդոյս այսմիկ որ յանձնեցեր զքեզ ինքն Քի ։ Այլ եկաց յետ առաւել ապաշխարութեանս այսմիկ ընդ կուսանսն աւուրս հնգետասանս ։ Այլ յետ կատարելոյ հնգետասան աւուրն հիւանդացաւ զերիս աւուրս, և այնպէս ննջեաց փառաւորապէս խնամօքն փրկչին մերոյ Այ ։



# ԿԵԱՆՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ՍՈՒՐԲ ՀԱՐԱՆՑ

# ԲԱՆՔ

ԵՒ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ՍՈՒՐԲ ՀԱՐԱՆՑ

### ԵՒ ՅԱՒԱՋԱԴԻՄՈՒԹԵԱՄԲ ԿԱՑԱՐՈՒՄՆ ՆՈՑԱ

## Ա

## ՎԱՄՆ ԿԱՏԱՐԵԱԼ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ

ԵՂԲԱՅՐ՝ ոմն եհարց ցաբբայ Նստոնիոս և ասէ. զի՞նչ պահեցից զի արժանի եղէց այ: Պատասխանի ետ ծերն և ասէ. զոր ինչ պատուիրեմ քեզ, պահեա և կեցցես. յամենայն ընթացս քո զած կալջիր առաջի աչաց քոց, և զամենայն զոր ինչ գործես՝ կալջիր վկայութի աստուածային գրոց, և յամենայն տեղի ուր նստիցես՝ մի դիւրաշարժ լինիր. զերիս զայսոսիկ պահեա և կեցցես:

ԱՍԱՑ աբբայ Նստոնիոս. երեք գործք են պատուականք առաջի տեառն. յորժամ մարդ տկարանայ և եկեսցէ 'ի վերայ նորա փորձանք և գոհութի ընդունի զնո-

1 ԵՀԱՐՑ ոմն ցհայրն Անտոնիոս և ասէ. զի՞նչ պահեցից զի հաճոյ եղէց այ: Պատասխանի ետ ծերն և ասէ ցնա. զոր պատուիրեմ քեզ, պահեսջիր. ուր և երթիցես՝ զած ունիցիս ամենեւին առաջի աչաց քոց, և զինչ և գործեսցես՝ ունիցիս վկայութիւն 'ի սուրբ գրոց, և յորում տեղւոջ նստիցես՝ արագ մի շարժեսցիս և կամ ելցես ոչ. զերեքեանս զայսոսիկ պահեսջիր և կեցցես:

2 Ասաց հայրն Յովսէփ Թեբայեցին՝ եթէ երեք գործք են պատուականք առաջի այ. մին այն՝ զի յորժամ հիւանդանայցէ ոք և յաճախեն փորձութիւնք 'ի վերայ նորա, նա գոհութի ընկալցի զամենայն. իսկ երկ-

սա, և յորժամ ոք զգործս իւր գործէ ուղղութեամբ առաջի Տեառն և ոչ մարդահաճութեամբ, և յորժամ ոք նստի ընդ հոգևոր հօր և հրաժարէ յամենայն կամաց իւրոց։

ԵՂԲԱՅՐ՝ մին եհարց զծեր մին և ասէ. ո՞ր գործ է բարութէ, զի արարից և կեցից նովաւ։ Իսկ ասէ ծերն. Տէր գիտէ, որդեակ, զբարին. այլ լուայ թէ եհարց մին ցաբբայ Նեսթերիոս ընդ մեծ սիրելւոյն աբբայ Անտոնիոս՝ ո՞ր է բարի գործն զի արարից։ Իսկ ասէ. ոչ է ամենայն կենցաղս հաւասար. զի Աբրահամ օտարասէր էր և Տէր էր ընդ նմա, և Դաւիթ հեզ էր և Տէր էր ընդ նմա, և Եղիա զլռութիւն սիրէր և Տէր էր ընդ նմա. զայս ամենայն և դու պահեա և կեցցես։

ԴԱՐՁԵԱԼ՝ ասաց աբբայ Նեսթերոս. տառապանք և նեղութիւնք այս են գործիք՝ որ բարձրացուցանեն զհոգևոր կարգս միայնակեցին, զի գրեալ է. եթէ իցեն երեք արք՝ Յոբ, Դանիէլ, Նոյ։ Յոբ պատկեր է վշտաց, Դանիէլ իրաւանց, Նոյ պատկեր է անստացուածութէ. եթէ իցեն երեք գործքս այս 'ի մարդ, ապա և Տէր բնակեսցէ 'ի նմա։

ԱՍԱՑ ծեր մին՝ եթէ պարտ է մարդոյ ունել մի գործ. և յորժամ ունի զբարի գործն՝ գայ առ նա բանսարկուն, այլ ոչ գտանէ տեղի, և երթայ գնայ. և յորժամ

րորդն յորժամ արասցէ մարդ զամենայն գործս իւր ուղղութեամբ առաջի ծոյ և ոչ ինչ մարդահաճելս արասցէ 'ի նոսա. և երրորդն յորժամ նուաճի ոք 'ի հնազանդութէ հոգևոր առաջնորդի իւրոյ և յամենայնէ կատարելապէս հրաժարեսցէ 'ի կամաց իւրոց, յայնժամ ունիցի նա առաւելս պտուղ. այլ ես զանկարութիւն ընտրեցի։

։ Եղբայր մին եհարց (ցհայրն Պաֆնուտի) և ասէ. որք են բարեգործութիւնք, զի արարից և կեցից նովաւ։ Ասէ ցնա. Տէր գիտէ զբարին, որդեակ. այլ զայդ բանդ եհարց մին 'ի հարանցն ցհայրն Նեստերոն որ էր ընկեր մեծին Անտոնի, և նա ասէ. ոչ են մի ամենայն գործք և առաքինութիւնք և ոչ հաւասարք, քանզի ասէ գիր. Աբրահամ օտարասէր լեալ՝ հաճեցաւ Տեառն, և Եղիա զմիայնակեցութիւն սիրէր և Տէր էր ընդ նմա, իսկ Դաւիթ հեզ և խոնարհ էր և Տէր էր ընդ նմա. արդ յոր ոք յայդոցիկ բարի գործոց հեշտեսցի անձն քո՝ առ Աստուծով գործեա զնա և մի ձանձրասցիս, և պահեա որչափ կարող իցես զսիրտ և զհոգի քո և կեցցես 'ի նմանէ։

։ Ասաց դարձեալ. աղքատութիւն և վիշտք և նեղութիւնք և պահք սոքա են գործք կրօնաւորի, վասն զի գրեալ է. եթէ եղիցին երեքին արքս այսոքիկ Նոյ և Յոբ և Դանիէլ, կենդանի եմ ես՝ ասէ տէր։ Նոյ օրինակ է անընչութէ, Յոբ կերպարան վշտաց և համբերութէ, իսկ Դանիէլ զգաստութեան. արդ եթէ իցեն երեքին այս գործք յայդ մարդոյ, և տէրն բնակէ 'ի նմա։

իցեն գործքն իւր չար, գայ առ նա Հոգին Այ ստէպ ըն-ստէպ. այլ վասն զի չգտանէ տեղի, դառնայ 'ի բաց. և դարձեալ եթէ խնդրեսցէ զնա, գայ վաղվաղակի*։

ԲՕԱՅ ծերն. ատեա զորովայն քո և զպէտս աշխարհականս և զպատիւս, և ունիս հանգիստ։ Բայց երկրորդ անգամ՝ եթէ չորք գլուխ են ախտից. և հարցեալ եղբօրն եթէ որպիսիք են այնոքիկ, պատասխանի ետ-ւեալ ծերոյն և ասացեալ՝ տրտմութիւն թէ յորժամ ընդերկարեսցի, և արծաթսիրութիւն և մեծափառութիւն և պոռնկութիւն. զայսոսիկ պարտ է յառաջագոյն պահել։

Նորին ծերոյ ասացեալ. եթէ երկու իրս կամիցի միայնակեացն ատել, կարէ ազատանալ յաշխարհէ աստի։ Եւ հարցեալ եղբօր՝ եթէ որպիսի ինչ իցէ այս, և նորին պատասխանի տուեալ՝ զմարմնական հանգիստ և զունայնափառութիւն։ Նոյն ինքն ասաց՝ եթէ բնական է մարդոյ բարկութիւն ոչ ըստ ախտից, այլ շարժելով յախտն և կոտրելով զնա։ Բնական է մարդոյ քաղցն առ 'ի պէտս մարմնոյ, այլ ոչ ըստ ախտից, որպէս Պաւղոս ասէ՝ թէ ընդ ակամն ամբարտաւանի և անյագ սրտի՝ ընդ նոսա ոչ ճաշակէի։ Նոյն ինքն ասաց՝ եթէ քուն բնական է մարդոյ, այլ ոչ մինչև ցյագումն։

Եղբայր ոմն եհարց ցհայր ոմն՝ ասա ինձ բան։ Եւ նորա պատասխանի տուեալ և ասացեալ՝ փութասջիք և առ սակաւ սակաւ գործեսջիք և մի հեղգասջիք և աղօթիւք. և պատմեաց նոցա այսպիսի ինչ։ Էր՝ ոմն երկրագործ մեծատուն, և կամեցեալ զորդիս իւր ուսուցանել երկրագործութիւն՝ ասէ ցնոսա. որդեակք, տեսէք զիս ահա որպէս մեծացայ ես, և դուք եթէ կամիք լսէք ինձ և մեծանայք։ Իսկ նոցա ասացեալ՝ աղաչեմք զքեզ,

* Նոյն խմաստ են այսուհետև տար-ջեալ 'ի հին թարգմանութենէ. Ասէր ոմն 'ի հարանցն՝ եթէ պարտ է ամ մարդոյ ունել 'ի ներքս գործս բարիս. զի եթէ 'ի գործն ոչ պարապիցէ, գայ առ նա Թշնամին մի ժամ, այլ տեղի ոչ գտանէ հանգստեան. ապա եթէ դարձեալ տիրեսցի 'ի գերութենէ Թշնամւոյն, գայ առ նա հոգին այ ստէպ ստէպ, այլ ոչ տայ նմա տեղի. և վասն չարութեանն մարդոյ որոշի 'ի մէնջ։

։ Ասաց դարձեալ. էր ոմն մշակ երկրագործ մեծատուն յոյժ, և կամէր ուսուցանել որդւոց իւրոց զմշակութիւն իւր. վասն այսորիկ ասէր ցնոսա. որդեակք իմ, գիտէք որպէս հարստացայ ես քան զհարսն իմ. և դուք եթէ լուիցէք ինձ, հարստանայք յոյժ։ Իսկ նոքա ասեն

և ծերն զամենայն առաքինութիւս ունելով, և լուսաւո-րելով զամենեսեան գործով յառաջացուցանէր:

ԱՍԱՑ¹ ոմն 'ի հարանցն. թէ ոչ յառաջագոյն ատե-ցես, ոչ կարասցես սիրել. եթէ ոչ ատեսցես զմեղս, ոչ կարես առնել արդարութիւն, որպէս և գրեալ է՝ խոտո-րեա 'ի չարէ և արա զբարի: Բայց սակայն և յայսմ յամենայնի յօժարութիւն կամացն խնդրի ամենայն ու-րեք. Ադամ 'ի դրախտին էր և պատուիրանազանց եղև, իսկ Յոբ յաղբիսն էր և պահեաց զպատուիրանն, վասն զի զյօժարութիւն կամացն խնդրէ ած 'ի մարդկանէ, զի երկիցեն 'ի նմանէ յամենայն ժամ:

ԱՍԷՐ² հայրն Զենոն աշակերտ Սիղուանոսի. մի բնակեսցես յանուանի տեղւոջ, և մի նստիցիս ընդ մար-դոյ որոյ իցէ անուն իւր մեծ, և մի արկաներ հիմն շի-նել քեզ խուղ ուրեք:

ԱՍԱՑ³ ծերն. եթէ լինիցի 'ի մէջ քո և ընկերացդ բանք ինչ խռովութեան, և ուրանայցէ և ասիցէ եթէ ոչ ասացի զբանդ զայդ, մի ևս հակառակեսցիս ընդ նմա և ասասցես՝ եթէ ասացեր. ապա թէ ոչ՝ յանդգնի և ա-սասցէ՝ այո ասացի, և այնպէս լինի մեծ զարմացումն: Այս պատմեաց իրս ինչ այսպիսի. երկու ծերք 'ի խրձիթեան խօսեցան բանս ինչ 'ի գրոց, և մինն յանցեաւ 'ի բանսն և միւսն ևս ասաց ցերէցն, և յարուցեալ երէցն չոգաւ և ասաց ցնա. դու ասացեր զբանս զայս: Եւ նա ասէ՝ այո: Ասէ ցնա երէցն. եթէ եկեսցես յեկեղեցին և հար-ցից ցքեզ, ուրասցիր զբանդ զայդ: Այնպէս և միւսանգամ եկն ասաց, եթէ եկեսցէ եղբայրն և ուրասցի զբանսն՝ մի

պէս էր և նա լի ամենայն առաքինութեամբ, մինչև ցայն՝ զի լաւութեամբ կա-լով բժշկէր զամենեսեան:

¹ Ասաց դարձեալ, եթէ ոչ նախ ատեսցես, ոչ կարասցես սիրել. այսինքն է զի թէ ատեսցես զմեղս, արասցես զարդարութիւն որպէս և գրեալ է՝ եթէ խոտորեա 'ի չարէ և արա զբարի: Եւ յամենայն ժամ յամենայն իրս յօժարութիւն խնդրելի է. վասն զի Ադամ 'ի դրախտին կալով էանց զպատուիրանաւն նոյ, և Յոբ յաղբի նստելով պահեաց զնմին նոյ, զի զխնդրումն յօժարութիւն բարւոյ խնդրէ ած 'ի մարդկանէ. և զի միշտ երկիցէ 'ի նմանէ:

² Ասաց հայրն Զենոն որ էր աշակերտ երանելւոյն Սեղուանոսի. մի բնակեսցիս յանուանաւոր տեղի, և մի նստցիս և կեցցես ընդ մեծանուն մարդոյ, և մի դիցես ուրեք հիմն եթէ շինեսցես անձնական քեզ:

³ Ասաց ծեր ոմն. եթէ լինիցի 'ի մէջ քո և այլում եղբօր բանս դժ-ուարութեան, և նա ուրասցի զայն և ասէ՝ եթէ ոչ բնաւ ասացեալ է իմ զայն բան, դու մի յանդիմաներ զնա և ասել՝ եթէ այո ասացեր.

յաւելցես խօսել։ Եւ իբրև եկն եղբայրն յեկեղեցին, կոչեաց և զայն որ ասաց վասն նորա։ Եւ եհարց երիցն ցեղբայրն և ասէ. դո՞ւ ասացեր զբանս զայս։ Եւ նա ասէ՝ թէ ոչ։ Ասէ և ցմիւսն եւս. դու լուա՞ր զբանս զայս։ Եւ նա ուրացաւ. և անկեալ առաջի իրերաց արարին խաղաղութիւն։

ԱՍԷՐ [1] հայրն Յովսէփ երեց խրախճացն վասն հօրն Թէոդորոսի. ոչ եթէ այժմ միայն է այնպէս մեծ, այլ և 'ի Սկիւթ յորժամ էր՝ ասէին վասն նորա թէ ունէր զերիս ինչս զայս զգլխաւոր քան զբազում մարդիկ՝ զանստացուածութիւն, զկրօնաւորութիւն և զփախչելն 'ի մարդկանէ։ Ասէին վասն նորա՝ եթէ յորժամ աւերեցաւ Սկիւթ և եկն զի բնակեսցէ 'ի Փերմի, և ծերացեալ հիւանդացաւ. և որ ինչ բերէին նմա, զոր բերէր առաջինն՝ տայր զայն երկրորդին, և այսպէս ըստ կարգին. զոր եթէ առնոյր 'ի միւսմէն, միւսումն եւս տայր։ Իսկ 'ի ժամ ճաշակելոյն նորա զոր ինչ բերէր ոք՝ զայն ճաշակէր։ Ասէր աշակերտ նորա՝ եթէ եկն ոմն երբեմն և վաճառէր սոխ, և ելից զսկաւառակն իմ։ Ասէ ցիս ծերն. լից զայդ ցորենով և տուր դմա։ Եւ էին երկու շեղջք ցորենոյ, միոյն մաքուր էր և միւսն ոչ եւս էր մաքուր։ Եւ լցի ես 'ի խառն ցորենոյն զի տաց առնն, և հայէր ընդ իս ծերն տրտմութեամբ և պարկեշտութեամբ. յահէ նորա անկայ և բեկի զսկաւառակն, և անկայ առաջի նորա։ Եւ ասէ ցիս ծերն. արի, զի ոչ է քո յանցումն, այլ ես յանցեայ զի ասացի քեզ։ Եւ մտեալ ծերոյն ելից զգոգն իւր 'ի մաքուր ցորենոյն և ետ նմա, նոյնպէս և զսոխն ետ նմա։

ԱՍԷԻՆ [2] վասն սուրբ հարանցն հօրն Պամբոայ և հօրն Բեսարիոնի և հօրն Եսայեայ և հօրն Պայխոու՝ եթէ զօրաւոր էին յոյժ. դիպեալ նոցա հատորակաց հօրն Յաթրի, եհարց ցնոսա երեց լերինն՝ Նիտրիայ և

տայր թէ ոչ՝ 'ի բաց ձգեսցէ նա զամօթն և ասասցէ քեզ՝ այս ասացի և զինչ եղիցի։

1 Ասացին վասն հօրն Թէոդորոսի փերեմացւոյ՝ եթէ զերեքին զայսոսիկ գործս առաւել ունէր յանձին իւրում քան զայլս. զանընչութիւն, զձգնութիւն և զփախչելն 'ի մարդկանէ։

2 Ասացին վասն հօրն Պամբոյի և վասն հօրն Եսայեայ և վասն հօրն Պայխոսիսի՝ եթէ զօրաւորք էին բանիւք յոյժ. սոքա հանդիպեալ մեծանդամայն Նիտրիոյ լերինն և հարցեալ եղեն եթէ որպէս պարտ է կալ

տաէ՝ եթէ զիմոյդ պտուղ է եղանակ վարել : Եւ նոցա առաջեալ՝ եթէ մեծաւ կրօնաւորութբ. և պահել ըղ-խիղճ՝ 'ի մերձաւորէն :

ԱՍԷՐ ոմն 'ի ծերոցն՝ եթէ հայրքն մեր կարճառօտ պնդութբ մտին 'ի նեղքս. իսկ մեք եթէ կարասցուք, քաղցրութեամբ մտցուք :

ԱՍԱՑ[1] ծեր մի. մի ընդ ումեք բանս հաճիր և մի կցորդա-կից լինիր. յամր հաւատա, և ասէպ խօսեաց զճշմարիտն :

ԱՍԱՑ հայրն Պիմէն. 'ի գործ որ ոչ ես հասեալ՝ մի խօսիր. ամենայն բնութի վասն ՟այ խոստովանութի է ՟այ : Ասէր վասն հօրն Օվրայ նիտրացւոց՝ եթէ յորժամ վախճանէրն ասաց, եթէ յորմէհետէ եկի 'ի տեղիս յայս, ոչ կացի առանց ձեռագործի և ոչ մի օր, և ոչ կերայ ձրի հաց յումեքէ, և ոչ զղջացայ ընդ բանս իմ վասն որոց խօսեցայ : Եւ ասաց այսպէս. վախճանիմ այժմ որպէս թէ և սկիզբն չիցէ արարեալ ծառայութեան : Եւ լուեալ լինէր այս վասն նորա եթէ գիտէր քան զբազում մարդիկ յորժամ հարցանէր բան կամ 'ի գրոց կամ 'ի հա-դւոյ, և ոչ տայր պատասխանի վաղվաղակի, այլ ասէր թէ ոչ գիտեմ զբանդ. և զամիս մի աւելագոյն ոչ տայր պատասխանի :

ԱՍԷԻՆ[2] ոմանք 'ի ծերոցն. 'ի սկզբանէ յորժամ ժո-ղովէաք առ իրեարս և խօսէաք վասն օգտի մերոյ, շա-հէաք յիրերաց, և լինէաք դասք դասք և յերկինս ել-անէաք. իսկ այժմ ժողովիմք և 'ի չարախօսութիս գամք և ընկեր զընկեր ձգեմք 'ի խորխորատ :

ՀԱՐՑԻՆ երբեմն հարքն ցհայրն Սիղուանոս և ա-սեն. որպիսի վարս վարեցար զի ընկալար զայդպիսի ի-մաստութի : Եւ ասէ ծերն. ոչ թողի երբէք 'ի սրտի իմում խորհուրդս որով զԱծ բարկացուցանէի :

ԱՍԱՑ[3] ոմն 'ի հարանցն. եթէ ներքին մարդս մեր

եղբարցն. իսկ նոքա առաջին նման մեծաւ ճգնութեամբ և ժրութբ, և զի պահեցին զխորհուրդս սրտից ընկերաց իւրեանց :

[1] Ասաց դարձեալ. մի ամենայն բանի հաւատայցես և մի ընդ ամե-նայնի միաբանիցիս. յամր հաւատասցես, և փութով հաւատացուցես :

[2] Ասաց դարձեալ, եթէ յառաջին ժամուն ժողովէաք 'ի միասին և խորհէաք և խօսէաք զօգուտն անձանց մերոց, և դասն մեր յերկինս 'ի վեր ելանէր. իսկ այժմ ժողովիմք և վաղվաղակի բամբասել և դատել սկսանիմք զընկերս. և այսպէս կռուելով և նենգութբ քարշեմք զմե-մեանս 'ի խորխորատս կորստեան :

[3] Ասաց դարձեալ. եթէ ներքին մարդն մեր զգաստ իցէ և արթուն,

տրթուն իցէ, կարող է պահել և զարտաքինն. ապա թէ այս ոչ՝ գէթ զլեզուս պահեսցուք որքան կարեմք։ Այն ինքն ասաց. գործոց պէտք են հոգևորաց, վասն զի յայս եկաք. մեծ աշխատութի է ելանել՚ի մարմնոյ, և ոչ առնել զգործ հոգւոյ։

Ասէ ծերն. որ ոչ արհամարհէ զամենայն նիւթ և զփառս մարմնականս և զամենայն հանգիստ, և որ ոչ կարէ հատանել զկամս իւր և փոխէ զաղքատութիւն և զտրտմութիւն և հանգուցանէ զմերձաւորն, ոչ կարէ ապրել։ Ասէ դարձեալ. եթէ սկսանի մարդ փախստական լինել՚ի կանանց իւրոց, թողցէ զմեղս իւր և փախչի առ ած, նախ կամքն իւր մարտնչի ընդ իւր և խորհրդակցի դարձուցանել զնա՚ի մեղս իւր. իսկ եթէ թողցէ զնա, այս է առ ած անարատութի. և որ զնայ անարատութի, գտանի՚ի ժուժկալութի. և որ պահէ զժուժկալութի, է մարմնական տառապանք։ Յայնժամ առաքէ մարդ առ ած զոհութի և ասէ. ոչ ես, այլ դու օգնական իմ։ Պիտել պարտ է եթէ անկարելի է միայնակեցին պահել զաշխատանս իւր առանց լռութեան և չհամարելոյ զինքն ինչ։ Ասէ դարձեալ. նեղութի շարժէ զողորմութին այ՚ի յանձն որպէս հողմ զանձրև։ Ասէ դարձեալ. եթէ գտցի եղբայր որ ունիցի տկարութի և նուաղեալ է, պարտ է բառնալ զնա. ապա թէ գող իցէ՝ հալածել զնա, զի զանձն իւր գայթակղեցուցանէ և զամենեսեան որ են՚ի տեղւոջն՝ խռովեցուցանէ։

ԱԲԲԱՅ՝ Պամբոս առաքեաց զաշակերտն իւր յԱղեքսանդրիա վաճառել զձեռագործն. և աւուրս վեշտասան, և գնացեալ նստէր՚ի տաճար սրբոյն Մարկոսի և տեսանէր զկարգս կաթողիկէ եկեղեցւոյ, ուսաւ և տունս և դարձաւ առ ծերն։ Ասէ ցնա ծերն. տեսա-

կարող իցէ և զարտաքինն պահել. ապա եթէ այս ոչ իցէ, որչափ կարողութի իցէ զգուշասցուք և կալցուք զլեզու մեր։ Դարձեալ ասէ. աշխատել պարտ է մեզ յոյժ զգործս հոգւոց մերոց, զի յայս սակս ժողովեալ եմք. իսկ մեծ աշխատութիւն իցէ ուսուցանել ումեք կամ ուսանել բանիւք զոր ինքն ոչ իցէ գործեալ մարմնով։

։ Առաքեաց երբեմն հայրն Պամբոյ զաշակերտ իւր՚ի քաղաքն Աղեքսանդրիա վաճառել զձեռագործ իւր. և եկաց նա՚ի քաղաքին աւուրս վեշտասան որպէս ինքն ասէր, և՚ի գիշերի գնայր կալ՚ի դասիթս եկեղեցւոյն Մարկոսի աւետարանչին. և տեսեալ զամենայն կարգ եկեղեցւոյն զաղօթից և զպաշտամանց երգոց և ապա դարձաւ առ ծերն, և ուսեալ էր տունս եամոսից։ Ասէ ցնա ծերն. տեսանեմ,

նեմ զքեզ, որդեակ, ամբոխեալ. միթէ փորձանօք պա-տահեաց քեզ 'ի քաղաքն: Ասէ եղբայրն ցծերն. զիարդ այսպէս մոռացաք զամենայն ուսումս մեր յանապատի, և ոչ կանոն և ոչ տունս շարականաց ուսաք. զնացի յԱ-ղեքսանդրիա և տեսի զշուքս եկեղեցւոյն թէ որպէս սաղմոսէին. և 'ի բազում տրտմութեան եղէ, զի ոչ երգի 'ի մէջ մեր ոչ եղանակս և ոչ շարականաց տունս: Ասէ ցնա ծերն. վայ ինձ, որդեակ, 'ի հասանելոյ աւուրն՝ յորս ունիմք 'ի կրօնաւորաց թողուլ զհաստատուն կե-րակուրն զոր 'ի սրբոյ հոգւոյն հրամայեցաւ, և երթալ զհետ երգոց և ձայնից. զի՞նչ բանայ կամ զի՞նչ հաս-տատէ երգ շարականաց կամ ո՞ր է որ լուսաւորէ զմիայ-նակեացն. յորժամ կայ յեկեղեցին և բարձրացուցանէ զձայն իւր, բռչէ իբրև զցուարակ, եթէ յորժամ կամք առաջի այ բազում բանիւք պտղաբերեալք 'ի մտաց. քանզի պարտ է մեզ կալ յաղօթս ոչ մռնչելով, և՛ այն-պէս հոգւոյս 'ի թիկունս հասանէ. քանզի ոչ ելին կրօ-նաւորք յանապատս յայս ձայնս հնչել կամ երգել երգս կամ վերագուշել եղանակս կամ շարժել ձեռս և զոփել ոտիւք, այլ բազում երկիւղիւ և դողութեամբ, արտասուօք և հեծեծանօք 'ի բարեպաշտութիւն և 'ի մտաց սրբութիւն կալ, և ըստ չափու խոնարհութեան զձայն աղաչանաց այ մատուցանել: Ահա որդեակ, ասեմ քեզ, զի եկեսցեն

զքեզ, որդեակ, զի շփոթեալ ես. միթէ փորձութիւն ինչ 'ի քաղաքին պատահեաց քեզ: Ասէ եղբայրն ցծերն. լուր լեր, հայր. յանապա-տի կորուսաք զամենայն ուսումս կենաց մերոց, և պաշտօնս երգոց ոչ կատարեմք և ոչ զկարգ աղօթից գիտեմք. քանզի մինչ էի ես յԱղեք-սանդրիա քաղաքին՝ տեսի զգունդս եկեղեցականս թէ որպէս երգէին. և տրտմութիւն մեծ կալաւ զիս եթէ ընդէ՞ր և մեք ոչ երգեմք զերգս և զեղանակն զայն և ընտեմք զկարգ ժամուն: Ասէ ցնա ծերն. վայ մեզ, որդեակ, վասն զի եկեսցեն աւուրք յորում թողցեն կրօնաւորք զհա-տատուն կերակուրս հոգւոյ զոր ետ հոգւոյն ասացեալ բանս, և հե-տեւեսցեն երգոց և ձայնից. քանզի ո՞ր զղջումն ո՞ր արտասուք ծնանին յեղանակաց ձայնից, ո՞ր զեղջ կայցէ կրօնաւորի յորժամ յեկեղեցի կամ 'ի տան կալով ամբարձեալ զձայնն գոչեսցէ իբրև զեզն. զի եթէ ա-ռաջի այ կամք յաղօթս՝ բազում երկիւղիւ և զղջմամբ և հանդարտութեամբ պարտիմք կալ, և ոչ բարձրաձայնութեամբ և ցրուեալ մտօք և տեսակօք. զի ոչ ելին կրօնաւորք յանապատս յայս զի հրճուեսցին և ցնծասցեն ա-ռաջի այ կալով և երգեսցեն զաղօթս և ձայնիւ զղջասցեն զբազում հե-տեւելով և զձեռս կարկառեսցեն շաշաչելով և ոտիւք կաքաւեսցեն, այլ պարտ է մեզ այսպէս կալ առաջի այ բազում ահիւ և դողութեամբ և արտասուօք և հառաչմամբ և գոհական ձայնիւք առնել ընծայս այ զա-ղօթս մեր, որպէս աննէին երանելի հարքն մեր: Եւ արդ պատուիրեմ

աւուրք յորս ապականեն քրիստոնէայք զնծայսն գիրս ա-ւետարանին և զսուրբ առաքելոցն և զմարգարէիցն. Ընջեն և գրեն հելլենացի բանս և տունս շարականաց ՚ի հելլե-նացւոյն. վասն այսորիկ հարքն մեր ասացին մեզ. զի մի գրեսցեն որք են իմաստուն գրիչք յանապատիս՝ զվարս և զբանս սրբոց հարցն և մարգարէիցն ՚ի մագաղաթս, այլ ՚ի թուղթս պտտուեղէնս. զի ազգ որ կամին գալ՝ Ընջեն զվարս սրբոց հարցն և գրեն ըստ կամաց իւրեանց: Այլ ասէ ցնա եղբայրն. զի՞նչ արդեօք, փոխեա՞ս զսովորու-թիւնս և աւանդս քրիստոնեայս: Ասէ. յայնժամ ժամա-նակի նուազէ սէր բազմաց, և եղիցի նեղութիւն ոչ սակաւ և հեթանոսաց յարձակումն և ժողովոց շարժումն, թա-գաւորաց անհաստատութիւն և իշխանաց անկարգութիւն, քահանայք ապականողք և կրօնաւորք հեղգք. և եղիցին հարքն արհամարհողք իւրեանց փրկութեան և հօտիցն, յառաջողք և փոյթք լինին ՚ի սեղանս, կռուողք և ծոյլք լինին յաղօթս, և պատրաստք ՚ի շատախօսութիւն և հա-մարձակ ՚ի դատապարտել զկարգս ծերոցն և զբանս. ոչ նմանեն և ոչ թէ լուեալ իցեն, այլ մանաւանդ պա-տասխանեն և ասեն՝ եթէ եւք յաւուրսն յայնոսիկ, Ջմեռայսք և մեք: Այլ եպիսկոպոսք աւուրցն այնոցիկ լի-

քեղ, որդեակ, զի եկեղեցեն աւուրք յորում ապականեսցեն և լուծ-ցեն կրօնաւորք զգիրս աւետարանի և զառաքելոցն Ք.ի և զմարգա-րէիցն բանս. եղծցեն և զհարանց գրեալսն, և գրեն իւրեանց ետմոս և ձայնաւոր տունս հելլենացիս և սատիկեցիս բարբարոսս, և գար-ձուցանեն զմիտս իւրեանց և զփոյթ ՚ի տունս և ՚ի բանս և ՚ի ղօղանջ-մունսն յայնոսիկ: Վասն այսու բանից ասացին սուրբ հարքն մեր՝ զի մի գրեսցեն յանապատս յայս, որք ասա բնակեալ իցեն գրիչք. ըզ բանս և զվարս հարանց ՚ի մագաղաթի, այլ ՚ի թուղթս. զի հանդեր-ձեալ ազգն որ գալոց է ընջեն զգեանս հարցն ՚ի գրել իւրեանց և այլ ինչ գրել ըստ կամաց իւրեանց: Ասէ ցնա եղբայրն. և զի՞նչ լինիցի. հայր, փոփոխեսցի՞ն կարգ և օրէնք քրիստոնէից, և մի՞չ լինիցին եկե-ղեցիք և քահանայք յորժամ այս լինիցի: Ասէ ցնա ծերն. յաւուրսն յայնոսիկ ցամաքեսցի սէր բազմաց, և յաշխարհի նեղութիւն մեծ ՚ի գա-լըստենէ բարբարոսաց. ժողովրդոց խառնակմունք, թագաւորաց ան-հանդարտութիւն և իշխանաց անկարգութիւն. քահանայք եղիցին որկրա-մոլք, կրօնաւորք հեղգ, առաջնորդք գանձասէրք, որք ոչ զհօտս պա-հեն և ոչ զանձինս փրկեն. այլ միանգամայն որկորոյ և սեղանոյ պա-րապին և կռուոց և արբշռութեանց, և եղիցին թշնամիք միմեանց և ա-տեցողք և ատելք: Իսկ աղօթից և յամենայն բարի գործոց ծոյլք և ան-գործք. իսկ գտանել և մտանել զննկերն փոյթ և արագ: Որք զվարս և զգեանս հարանցն լսել բնաւ ոչ կամին և ոչ նմանել նոցա, այլ եւս առաւել նախատել զնոսա և մոլիս լեալ անուանեն: Իսկ եպիսկոպոսք·

նեմ զքեզ, որդեակ, ամբոխեալ. միթէ փորձանօք պատահեաց քեզ 'ի քաղաքն։ Ասէ եղբայրքն ցծերն. զիա՞րդ այսպէս մաշեցաք զամենայն աւուրս մեր յանապատի, և ոչ կանոն և ոչ տունս շարականաց ուսաք. գնացի յԱղեքսանդրիա և տեսի զդասս եկեղեցւոյն թէ որպէս սաղմոսէին. և 'ի բազում տրտմութեան եմ, զի ոչ երգի 'ի մէջ մեր ոչ եղանակս և ոչ շարականաց տունս։ Ասէ ցնա ծերն. վայ ինձ, որդեակ, 'ի հասանելս յաւուրս՝ յորս ունինք 'ի կրօնաւորաց թողուլ զհաստատուն կերակուրն զոր 'ի սրբոյ հոգւոյն հրամայեցաւ, և երթալ զհետ երգոց և ձայնից. զի՞նչ բանայ կամ զի՞նչ հաստատէ երգ շարականաց կամ ո՞ր է որ լուսաւորէ զմիայնակեացն. յորժամ կայ յեկեղեցին և բարձրացուցանէ զձայն իւր, բղչէ իբրև զցուարակ, եթէ յորժամ կամք առաջի այ բազում բանիւք պտղաբերեալք 'ի մտաց. քանզի պարտ է մեզ կալ յաղօթս ոչ մանչելով, և այնպէս հոգին 'ի թիկունս հասանէ. քանզի ոչ ելին կրօնաւորք յանապատս յայս ձայնս հնչել կամ երգել երգս կամ վերադոչել եղանակս կամ շարժել ձեռս և զոփել ոտիւք, այլ բազում երկիւղիւ և դողութբ, արտասուօք և հեծեծանօք 'ի բարեպաշտութի և 'ի մտաց սրբութի կալ, և ըստ չափու խոնարհութե զձայն աղաչանաց այ մատուցանել։ Ահա որդեակ, ասեմ քեզ, զի եկեսցեն

զքեզ, որդեակ, զի շփոթեալ ես. միթէ փորձութիւն ինչ 'ի քաղաքին պատահեաց քեզ։ Ասէ եղբայրն ցծերն. լուր, հայր. յանապատի կորուսաք զամենայն աւուրս կենաց մերոց, և պաշտօնս երգոց ոչ կատարեմք և ոչ զկարգ աղօթից գիտեմք. քանզի մինչ էի ես յԱղեքսանդրիա քաղաքին՝ տեսի զդասս եկեղեցականս թէ որպէս երգէին. և տրտմութի մեծ կալաւ զիս եթէ ընդէ՞ր և մեք ոչ երգեմք զերգս և զեղանակն զայն և լսեմք զկարգ ժամուն։ Ասէ ցնա ծերն. վայ մեզ, որդեակ, վասն զի եկեսցեն աւուրք յորում թողցեն կրօնաւորք զհաստատուն կերակուրս հոգւոյ զսուրբ հոգւոյն ասացեալ բանս, և հետեւին երգոց և ձայնից. քանզի ո՞ր զղջութիւն ո՞ր արտասուք ծնանին յեւմտոսաց ձայնից, մի՞ զերդ կայցէ կրօնաւորն յորժամ յեկեղեցի կամ 'ի տան կալով ամբարձեալ զձայնն գոչեսցէ իբրև զեզն. զի եթէ առաջի այ կամք յաղօթս՝ բազում երկիւղիւ և զղջմամբ և հանդարտաբար պարտիմք կալ, և ոչ բարձրաձայնութբ և ցրուեալ մտօք և ակամբ. զի ոչ ելին կրօնաւորք յանապատս յայս զի հրճուեսցին և ցնծասցեն առաջի այ կալով և երգեսցեն զաղօթս և ձայնիւ զղջասցեն զբազում հեծելով և զձեռս կարկառեսցեն շղշղելով և ոտիւք կաքաւեսցեն, այլ պարտ է մեզ այսպէս կալ առաջի այ բազում ահիւ և դողութեամբ և արտասուօք և հառաչանօք և գոհական ձայնիւք առ ընծայս այ աղօթս մեր, որպէս առնէին երանելի հարքն մեր։ Եւ արդ պատուիրեմ

աւուրք յորս ապականեն քրիստոնեայք զձայն գիրս ա-
ւետարանին և զաւուրս առաքելոցն և զմարգարէիցն. Ընջեն
և գրեն հելլենացի բանս և տունս շարականաց 'ի հելլե-
նացւոցն. վասն այսորիկ հայրքն մեր ասացին մեզ. զի մի
գրեսցեն որք են իմաստուն գրիչք յանապատիս՝ զվարս և
զբանս սրբոց հարցն և մարգարէիցն 'ի մագաղաթս, այլ
'ի թուղթս պատուեղէնս. զի ազգ որ կամին գալ՝ Ընջեն
զվարս սրբոց հարցն և գրեն ըստ կամաց իւրեանց: Այս
ասէ ցնա եղբայրն. զի՞նչ արդեօք, փոխեա՞ս զսովորու-
թիւնն և մատնես զքրիստոնեայս: Ասէ. յայնմ ժամա-
նակի նուազէ սէր բազմաց, և եղիցի նեղութիւն ոչ սակաւ
և չէթամոնաց յարձակումն և ժողովոց շարժումն, թա-
գաւորաց անհաստատութիւն և իշխանաց անկարգութիւն,
քահանայք ապականողք և կրօնաւորք հեղգք. և եղիցին
հայրքն արհամարհողք իւրեանց փրկութեան և հօտիցն,
յառաջնորդք և փոյթք լինին 'ի սեղանս, կռուողք և ծոյլք
լինին յաղօթս, և պատրաստք 'ի շատխօսութիւնս և հա-
մարձակ 'ի դատապարտել զկարգս ծերոցն և զբանս. ոչ
նմանեն և ոչ թէ լուեալ իցեն, այլ մանաւանդ պա-
տասխանեն և ասեն՝ եթէ էաք յաւուրսն յայնոսիկ,
Ջանայաք և մեք: Այս եպիսկոպոսք աւուրցն այնոցիկ լի-

քեզ, որդեակ, զի եկեսցեն աւուրք յորում ապականեսցեն և լուծ-
ցեն կրօնաւորք զգիրս աւետարանի և զառաքելոցն Ք.ի և զմարգա-
րէիցն բանս. եղծցեն և զհարանց գրեալսն, և գրեն իւրեանց եւամուս
և ձայնաւոր տունս հելլենացիս և տաճիկեցիս բարբարոսս, և դար-
ձուցանեն զմիտս իւրեանց և զփոյթ 'ի տունս և 'ի բանս և 'ի ղօղանջ-
մունսն յայնոսիկ: Վասն այսու բանից ասացին սուրբ հայրքն մեր՝ զի
մի գրեսցեն յանապատս յայս, որք աստ բնակեալ իցեն գրիչք. ըզ
բանս և զվարս հարանց 'ի մագաղաթի, այլ 'ի թուղթս. զի հանդեր-
ձեալ ազգն որ գալոց է ընջեն զկեանս հարցն 'ի գրէ իւրեանց և այլ
ինչ գրել ըստ կամաց իւրեանց: Ասէ ցնա եղբայրն. և զի՞նչ լինիցի.
հայր, փոփոխեսցի՞ն կարգ և օրէնք քրիստոնէից, և մի՞չ լինիցին եկե-
ղեցիք և քահանայք յորժամ այս լինիցի: Ասէ ցնա ծերն. յաւուրսն
յայնոսիկ ցամաքեսցի սէր բազմաց, և յաշխարհի նեղութիւն մեծ 'ի գա-
լստեանն բարբարոսաց. ժողովրդոց խառնակմունք, թագաւորաց ան-
հանդարտութիւն և իշխանաց անկարգութիւն. քահանայք եղիցին ոսկեա-
մոլք, կրօնաւորք հեղգ, առաջնորդք գանձասէրք, որք ոչ զհօտս պա-
հեն և ոչ զանձինս փրկեն. այլ միանգամայն ոսկւոյ և սեղանոյ պա-
րապին և կոչմանց և արբշռութեանց, և եղիցին թշնամիք միմեանց և ա-
տեցողք և ոստիք: Իսկ աղօթից և յամենայն բարի գործոց ծոյլք և ան-
գործք. իսկ դատել և մատնել զընկերն փոյթ և արագ: Որք զհրաման
և զկեանս հարանցն լսել բնաւ ոչ կամին և ոչ նմանել նոցա, այլ եւս
առաւել նախատել զնոսա և մոլիս լեալ անուանեն: Իսկ եպիսկոպոսք

նին կատարողք խնդրուածոց բռնաւորաց. դատեն զդատաստանս իւրեանց տրիւք, և ոչ ողորմին աղքատին 'ի դատաստանս, տրտմեցուցանեն զայրին և ցաւեցուցանեն զորբս ։ Աճեսցեն և անհաւատութի 'ի ժողովուրդսն, անառակութի ատելութի թշնամութի նախանձ արբեցութի պոռնկութի չնութի սպանութի յափշտակութի ։ Եւ ասէ եղբայրն. զի՞նչ արասցեն որք յաւուրսն յայնոսիկ և 'ի ժամանակի հանդիպին ։ Եւ ասէ ծերն. կեցցէ որ կեցուցանէ զանձն իւր, և մեծ կոչեսցի յարքայութեան երկնից ։

ՀԱՐՑԱՔՆՆԵՑԱՒ՝ աբբայ Նեսթերոն յաբբայ Պիմենէ՝ ուստի՞ ուսար զայդչափ վարս, զի յորժամ վշտանաս 'ի միաբանութենդ՝ լռես ։ Եւ նա ասէ. Թողութի արա ինձ, հայր, զի յորժամ եկի 'ի միաբանութիս, ասացի ցմիտս իմ՝ եթէ դու և յաւանակն մի էք. որպէս յաւանակն 'ի գանելն ոչ խօսի, անարգի և ոչ պատասխանէ, զնոյնն և դու. որպէս 'ի սաղմոսն ասէ՝ եղէ ես որպէս գրաստուն առաջի քո, և ես յամենայն ժամ ընդ քեզ եմ ։

ԱՍԷ աբբայ Պիմէն. խոնարհութի և նեղութիւն և վիշտք տանի զմիայնակեացն 'ի հանգիստն ։ Ասէ դարձեալ. որչափ և կարես՝ գործեա ձեռօք, զի 'ի նմանէ արասցես ողորմութի. քանզի գրեալ է՝ ողորմութի և հաւատք 'ի քէն մի պակասեսցին ։

ԱՍԷԻՆ վասն սրբոյն Յովհաննու արքեպիսկոպոսին

յայնմ ժամանակի եղիցին աչառու և կաշառառու, զուենն հաճել զմեծատանց և զմեծս, նեղեն զայրին, զրկեն զորբսն ։ Այլ և մնանէ 'ի ժողովուրդս նոցա անհաւատութիւն անառակութիւն յղփութիւն ատելութի թշնամութի հեռ նախանձ գողութի արբեցութիւն գռաւանութի չնութի պոռնկութի մարդասպանութիւն և յափշտակել զմիմեանս ։ Ասէ ցնա եղբայրն. և զի՞նչ արասցէ ոք յայնպիսի ժամու ։ Ասէ ցնա ծերն. յայնպիսի ժամանակի, որդեակ, որ կարիցէ կեցուցանել զանձն իւր, մեծ կոչեսցի յարքայութեան նոյ ։

։ Հարցեալ եղև հայրն Նեսթերոն 'ի հօրէն Պիմենի եթէ ուստի՞ ստացար զշնորհս զայս, հայր, որպէս զի մինչ լինիցի տրտմութի ինչ 'ի ժողովս եղբարցն՝ դու ոչ ինչ խօսիս և լռութբ բառնաս զնա ։ Պատասխանի ետ և ասէ. Թողութի շնորհեա, հայր, զի մինչ եկի 'ի ժողովս յայս, ասացի ցմիտս իմ՝ եթէ դու և յաւանակ մի էք և հաւասար էք. և կամ որպէս էշ զի հարկանի և ոչ ընդդիմաբանէ կամ անարգէ զոք, այսպէս և դու արասցես մինչև յօրն յետին. այսպէս և Դաւիթ ասէ՝ եթէ իբրև զանասուն համարեցայ առաջի քո, և ես յամենայն ժամ ընդ քեզ եմ ։

Կոստանդնուպօլսի, որ արժանապէս անուանեցաւ ըստ վարդապետական բանիցն ոսկեբերան և պայծառապէս փայլեաց, թէ յետ որոյ էառ զփրկական մկրտութիւնն՝ ոչ երդուաւ և ոչ զոք երդմնեցոյց և ոչ զոք բամբասեաց, ոչ ստեաց և ոչ տգեղ խօսեցաւ և ոչ յումեքէ ակնատեաց։

ԱՍԷԻՆ ամենքը 'ի ծերոցն վասն պատրիարգի մեծի քաղաքին այ Գրիգորի զի ուղղեաց 'ի վարս իւր զողորմութիւն և զանյիշաչարութիւն և զարտասուս, և ունէր բազում գութ 'ի վերայ մեղուցելոց։

ԱՍԱՑ՝ հայրն Յովհաննէս կարճահասակն. Ես կամիմ եթէ երթայք փոքր մի զկնի ամենայն վարուց մեծանաւորն և լաւէր զինքն յամենայն օր. քանզի և ես սկըսեալ յառաւօտէ առնում սկիզբն յամենայն առութիս և 'ի պատուիրանս այ. մնամ փութալ 'ի ժուժկալութիւն երկիւղիւ և երկայնմտութեամբ, անձամբ և մարմնով 'ի խոնարհութիւն լինիմ. ժուժամ նեղութեան սրտի յաղօթս բազումս և 'ի հեծեծանս. սիրեմ սրբութիւն լեզուի, պատրուակեմ զաչս. անարգեալ՝ ոչ բարկանամ, և ոչ տամ չար փոխանակ չարի, և ոչ միտ դնեմ մեղուցելոցն առ իս, և ոչ չափիմ ընդ նոցա, այլ քան զամենեսեան զիս խոնարհ կոչեցից. 'ի խաչ ջանամ, յաղքատութիւն հոգւոյ ըստ կամաց և յօժարութեան, 'ի պահս յաշխարանս 'ի հառաչանս, 'ի ջանս վասն մարտիցն և վասն գիտութեան անձին, որով առնում քաղցրութիւն լռութեան. 'ի ձեռագործ, 'ի գիշերային հսկումն, 'ի քաղց 'ի ծարաւ

¹ Ասաց հայրն Յովհաննէս. Ես կուզեմ որ դուք ամէն մարդ փոքր փոքր բնչ յամենայն առաքինութենէ։ Ու արդ յամենայն առտու յարիցես ընդ առաւօտն և կապեսցես 'ի գլուխ յամենայն առաքինութենէ և պատուիրանացն այ բազում համբերութեամբ և սիրով այ և ամենայն յօժարութեամբ և ըղձմամբ հոգւոյ և մարմնոյ, բազում խոնարհութեամբ զաւագնելով սրտիւ և զգուշութեամբ, մշտնջենաւոր և անդադար աղօթիւք և պաղատանօք հառաչանօք և ըղձմամբ և սուրբ մտօք զլեզու կալնլով. և այսպէս մինչև զի անարգեսցիս յումեքէ՝ մի զայրասցիս 'ի մտի քո. այլ կացցես հեզ և հանդարտ, և մի ումեք չարի չար հատուսցանես. և մի նայեսցիս 'ի յանցանս այլում, այլ կարծեսցես զանձն քո անարգ քան զամենայն ստեղծուածս. հրաժարեա յամենայն աշխարհական նիւթոց և յամենայնէ որ ինչ հանգիստ է մարմնոյ։ Ու զի համառօտ ասացից, խաչեսցես զանձն քո ճգնութեամբ և աղքատութեամբ մտօք և յօժարութեամբ, և զօրագոյն պահօք և աղաչխարութեամբ և ողբովք և առաքինութեամբ 'ի պատերազմունս. ջերմ արտասուօք և սրբութեամբ հոգւոյն, և զկերակուրս չափաւորս առնելով, և 'ի ձեռագործս հանդարտութեամբ ժրանալով, յաղօթս գիշերայինս արթնութեամբ հսկեսցես, սովով և ծա-

'ի ցուրտ 'ի մերկութի 'ի ցաւս. խոնարհիմ 'ի գերեզմանին գիտութք մահուն, և մերձ 'ի փախճանին փնտրամ յաւիտենայն ժամ:

ԱԲԲԱՅՆ ' Իսինէոս ' ասաց ցեղբարսն. Ջանասցուք հանդերձել բազում մարտին, զի զինուորք եմք Քի երկնաւոր թագաւորին: Որգ որպէս զինուորք երկրաւոր թագաւորաց 'ի գլուխ իւրեանց ունին սաղաւարտս, մեր զինուորութիւս զերկնային շնորհսն. նոքա վահանս երկաթով մածուցեալս, մեք զհաւատս. նոքա զեղարդս, իսկ մեք զաղօթս. նոքա կապարճս, իսկ մեք առ Ած զյոյսն. նոքա խրախուսութք և պատկարքիւք զզօրագլուխսն, իսկ մեք զզօրագլուխն հաւատոյ և զկատարիչն ըղ-ձեր մեր ՅՍ ՔՍ. նոքա 'ի մարտն արիւն հեղուն, իսկ մեք զպարիսպ միտս մատուցանեմք: Որդ երկնաւոր թագաւորին թոյլ տայ դիւացն մարտնչել ընդ մեզ, զի մի մեք մոռասցուք զօգնականութիւն նորա. զգուշասցուք ոչ ապերախտացուցանել զմտածութիւս մեր: Նաղուեք 'ի մարդկանէ ոչ աղօթելով աղօթեն. ընդ այ եթէ խօսիմք շրթամբք և յաշխարհս զմիտս մեր դնեմք, որպէս լուիցէ. յորժամ 'ի նեղութիւս անկանիմք, մոռանեմք յառաջասա աղօթիցն: Իսկ թէ շրթամբք ոչ աղօթեմք,

քաղցով և մերկութեամբ և ցրտիւ, ցաւօք և դժնութեամբ ներքնոցն դիւաց. որպէս զի մեռցես և հանապազ մնասցես մահու քո. այս է Ճանապարհ փրկութեան կրօնաւորի:

¹ Ասաց հայրն Իսինէոս առ եղբարսն. Ճգնեսցուք, ով եղբարք, և ժուժկալք լիցուք և համբերեսցուք 'ի պատերազմունս մեր, վասն զի մեք զինուորք թագաւորին երկնից եմք Քի: Եւ զոր օրինակ զինուորք երկրաւոր թագաւորի ունին սաղաւարտս պղնձիս, նոյնպէս և մերս զինուորութեան ունի սաղաւարտ զարդարութիւն և զյոյս բարեաց. նոքա ունին զզրահս երկաթիս, և մեք զպատուազէն հոգւոյն հաւատով ամրացեալ. նոցին են զէնք, և մեր զէն աղօթք. նոքա սուր ունելով, իսկ մեք զյոյսն այ. նոքա ասպարս, և մեք զԱծ. նոքա զարիւնս հեղուն 'ի մարտի, իսկ մեք միտս հանդիսանամք 'ի մարտի: Քանզի վասն այսորիկ թոյլ ետ թագաւորն երկնից դիւաց պատերազմել ընդ մեզ, որպէս զի մի անզգուշաբար կալով մոռասցուք զբարերարութիւնսն այ որ 'ի վերայ մեր է: Վասն զի բազումք 'ի մարդկանէ յորժամ յաղօթս են և 'ի խաղաղութեան են՝ բնաւ ինչ ոչ աղօթեն առ Ած, և թէ աղօթեն կա՛ այլ ոչ երկար և բոլորով սրտիւ, այլ ցնդելով մտօք և յողդողդեալ մարմնով. այն և ոչ աղօթս համարեսցին: Քանզի մինչ աղօթեսցեն շրթամբք, իսկ սրտիւ և միտք 'ի հոգս աշխարհիս յածեալ դեգերին և ցնդին, որպէս լսելի լինիցին աղօթք նոցա. իսկ յորժամ 'ի նեղութիւն անկցին, յայնժամ բոլորով սրտիւ գիտեն և արթունս և դժնդակս առաւաւուքք դեգերին յաղօթս: Բազում անգամ և շրթունք ոչ շարժին

խնդացի յոյժ։ Եւ ասեմ ցնա՝ թէ կրեցե՞ր ՚ի միտս քո թէ դարձուցեն առ իս։ Եւ ասէ ցիս. մի՛ լիցի, ոչ անկաւ այն ՚ի սիրտ իմ գիտելով Այ։ Եւ փառաւորեցաք զԱծ ՚ի վերայ բանիցն։

ՈՄՆ ՚ի ծերոցն գնեաց կտաւս ասուեաց. եդեալ ՚ի ներքոյ իւր նստաւ ՚ի վերայ նորա և հատանէր զգլխանն ՚ի կրպակաւորն, և ոմն մի կամէր գողանալ զասուէն և սպասէր յետուստ։ Եւ ծերոյն իմացեալ՝ փոքրացոյց զինքն որպէս թէ ՚ի կողմն առնն որում տայր զգլխանն, և առեալ գողն գնաց. և ծերն ոչ եւս խնդրեաց և ոչ ինչ խօսեցաւ վասն այնորիկ, այլ վճարեաց զգինն, գնաց խնդութ. զի մինչ ունէրն՝ իբրև զոչ ինչ ունէր, և երբ կորոյս՝ ոչ ինչ ցաւեաց, իբրև թէ պակասեաց ինչ ՚ի նմանէ։

ԾԵՐՈՑ մի զինչսն և զգրեանս գողացաւ դրացին իւր, և առժամայն մտեալ ծերոյն և իմացեալ՝ չոգաւ առ նա զանգատել՝ չգիտելով զգողն, և ահա դեռ չեւ եւս ծածկեալ էր զգողօնն։ Եւ տեսեալ զկարասին իւր եղ առաջքս, որպէս թէ թուք ձգէ ՚ի դուրս, և յամեաց շատս մինչև ամփոփեցաւ իրքն, և ապա մտեալ՝ այլ ինչ առաջի արկեալ խօսեցաւ, և գնաց ՚ի տուն իւր անտրտում։ Եւ յետ աւուրց եղաւ ՚ի բանտի գողն. և ծերն առեալ հինգ ձու և հաց չոգաւ մխիթարել զնա՝ չգիտելով զպատճառ բանտին։ Եւ նորա անկեալ առ ոտս նորա խոստովանեցաւ զյանցանսն։ Եւ ծերն լուեալ զբանն՝ եթող նմա, և երթեալ առ աւագն՝ եւտ արձակել զնա ՚ի փառս անուանն Քնի Այ մերոյ։

ԵՒՐԱՆԵԼԻՆ Մակար գրել եւտ գիրս ՚ի պէտս ինքեան, և ՚ի վճարմանն այլ ոմն գիտելով զայն՝ չոգաւ յերեւաց Մակարայ և առ զայն. իսկ Մակար առաքեաց զեղբայր իւր վասն գրոցն, և գրիչն բարկացեալ յոյժ կամեցաւ գնալ առ խաբողն և տանջել զնա և առնուլ զգիրքն։ Եւ լուեալ Մակարայ յղեաց առ գրիչն աղաչանս և ասէ. մեք գիրս ստանամք զի ուսցուք անտի զհեզութիւն և զհամբերութիւն. թող տուր թող կալցի զնա և օգտեսցի ինչ ՚ի նմանէ։

ՍԵՐ հայրն Պիմէն՝ եթէ ոմն բնակեալ էր առ իս, որ առեալ էր յինէն զմեծ պքեմն և սնունդ յոլով, և ասէր ցիս թէ սիրեմ զքեզ յոյժ։ Եւ ասեմ ցնա՝ թէ ոչ զոք գտի սիրել զիս որպէս և ես զնա. և դու թէ նե-

զիս ինչ յինէն, հեռանաս 'ի սիրոյդ. իսկ ես յամենայն կողմանս որ 'ի քէն պատահէ ինձ՝ պահեմ զիմն: Այլ զկնի սակաւուց զատս հայհոյիչ ինձ 'ի յօտարելոց լսելիս, որք և պատմէին ինձ յականջս. և լուէին յինէն թէ զոր ասէն ճշմարիտ է, զի զտեսեալն խօսի, և առաւել է զոր ա̃ծ միայն գիտէ: Այլ զի մեկնեալ էր յինէն, տեսաք զմի-մեանս և ողջունեցաք սիրով և դարձեալ բնակեցաք 'ի միասին յատակ սիրով ոչ ինչ յիշելով զառաջին եղեալ-սն: Այլ յաւուր միում հարեալ 'ի խղճէ մտացն՝ ան-կաւ առաջի իմ խոստովանելով զասացեալսն: Այլ ես ծա-նուցի նմա զառաջագուշակումն իմ, և զայն զի լսեալ էր զամենայն նախատինսն 'ի բազմաց և ոչ ամբոխեալ, այլ միշտ յաղօթսն խնդրէի նմա թողութիւն: Այլ նորա նշա-նակ խնդրեալ անախտութեան սրտիս, և ասեմ ցնա՝ եթէ աւուրս ինչ ցաւեցաւ ակն իմ, և ես կնքեցի խաչիւ և կա-լայ առ Տէր բարեխօս զքեզ և զաղօթսն քո, և ողջացայ:

ԱՍԱՑ հայրն Դանիէլ՝ թէ այսքան ժամանակս լեալ ընդ մեզ հայրն Արսէն, ոչ կարաց հասանել վարուց առաքինութեան նորա: Ասաց դարձեալ՝ եթէ յերեկորին շաբաթուն 'ի լուսանալ կիւրակէին թողոյր զարեգակն 'ի թիկունս իւր և համբառնայր զձեռս իւր յաղօթս մինչև դարձեալ գայր արեգակնն 'ի դէմս իւր:

ԵՀԱՐՑ՝ ոմն ցհայրն Պիմէն. եթէ ունիցի ոք ընդ իս տրտմութիւն, և անկայց առաջի նորա և ոչ լուիցէ, զինչ գործեցից: Ասէ ցնա հայրն. առ ընդ քեզ այլ եւս երկու սիրելիս և անկիր առաջի նորա: Այլ ասէ. թէ և նոքա ոչ լուիցէ: Ասէ հայրն. առ ընդ քեզ հինգ սիրելիս. և եթէ ոչ լուիցէ և նոցա, առ ընդ քեզ և զերէցն: Այլ ասէ. թէ և նոցա ոչ լուիցէ զինչ գործեցից: Ասէ ցնա հայրն Պիմէն. անխռով յայնմհետէ յաղօթս կաց առ ա̃ծ, զի նա կատարեսցէ զկամս նորա և դու անհոգ լինիս:

1 Իսկ վասն հօրն Արսենի ասէին՝ եթէ յերեկոյի շաբաթուն յա-րում լուսանայր աւուրն կիրակէն, թողոյր զարեգակն յետոյ իւր և համ-բառնայր զձեռս իւր յերկինս և կայր յաղօթս մինչև ելանէր դարձեալ արեգակն ընդդէմ իւր, և այնպէս դադարեալ յաղօթիցն նստէր:

2 Եհարց հայրն Թէոփիլոս ցհայրն Պիմէն և ասէ. եթէ ոք ունիցի տրտմութիւն ընդ իս և անկայց առ ոտս նորա և ոչ թողցէ ինձ զինչ ա-րարից: Ասէ ցնա ծերն. առ ընդ քեզ երկու այլ եղբարս և այնպէս անկիր առ ոտս նորա. և եթէ ոչ լուիցէ, առ ընդ քեզ հինգ եղբարս և այնպէս խնդրէ. իսկ եթէ ոչ լուիցէ, առ ընդ քեզ քահանայք. իսկ թէ և նոցա ոչ լուիցէ, և դու անշփոթապէս աղօթեա առ ա̃ծ, զի հաւատացուսցէ զնա լսել քեզ և դու անհոգ լեր:

ԱՅԼ անձն եհարց ցծեր՝ եթէ որով գործով ապրեցայց հոգւով։ Նա պատասխանի եւ ասէ. կապեա զորովայն եւ զլեզու եւ փախիր 'ի մանկանց եւ 'ի կանանց եւ մի ստա_նար իշխանութիւն եւ ստացուած մարմնականս, եւ մի հա_ւատարիր զքեզ եղբարցն 'ի գործ եւ 'ի բանս, եւ մի հա_կառակիր ումեք, այլ զիրաւն զամենեա եւ վասն սորին ա_սա՝ թէ դու գիտես. զայդ արա եւ կեցցես։

ԱՍԱՑ հայրն Մովսէս. անհնար է մարդոյ ստանալ զՏր, բայց եթէ ջանիւ եւ խոնարհութեամբ եւ անդադար աղօթիւք։ Պատմեալ ասաց նոյն ծեր. զամենայն զոր ինչ զմտաւ ածէ մարդ յերկնից մինչեւ 'ի վայր, որ զինչ եւ ածէ՝ ունայն է. իսկ որ կանխէ 'ի յիշատակս Այ, այն_պիսին գտանի 'ի ճշմարտութեան։ Պատմեցաւ՝ ասաց նոյն ինքն հայրն. որ ոք ունի մերձ յինքն զՏր եւ խոկայ նո_վաւ, բարւոք առնէ. եթէ ոչ՝ թողու 'ի խուց իւր զմարտն։

ԵԿՆ՝ եղբայր ոմն, որ բնակեալ էր 'ի Խորձիլթան, առ ոմն 'ի հարանցն եւ ասաց զխորհուրդս նորա ուստի նե_ղէր։ Ասէ ցնա ծերն. դու թողեր զմեծ գործն 'ի գե_տին՝ որ է երկիւղն Այ, եւ առեալ ունիս եղեգնեայ գա_ւազան՝ որ են խորհուրդք չարք. առ դու 'ի քեզ նախ զերկիւղն Այ որ է հուր, եւ յորժամ եկեսցէ մերձենալ 'ի քեզ եղեգնն՝ այրի 'ի հրոյն, վասն զի չհանդարտէ չարութիւն ընդ այնմ որ ունիցի զերկիւղն Այ։ Եւ էր ծերս այս մեծ յոյժ մինչեւ ասել աշակերտի նորա վասն նորա թէ զքսան ամ ոչ ընկողմանեցաւ, այլ 'ի նստելումն յորում գործէր՝ 'ի նմին ննջէր, եւ ճաշակէր զկնի երից աւուրց. զայս արար զքսան ամ։ Եւ յորժամ ճաշա_

1 Ասաց հայրն Մովսէս թէ որ ունիցի մերձաւոր զՔս եւ պարապի 'ի նմա, բարւոք առնէ. իսկ եթէ ոչ՝ ոչ կարէ արկանել զնա 'ի սենեակ իւր։

2 Եկն երբեմն եղբայր ոմն, որ բնակէր 'ի սենեակս, առ մի ոմն 'ի հարանց եւ պատմեաց նմա զխորհուրդս իւր որ նեղէր զնա։ Ասէ ցնա ծերն. Դու թողեալ ես, եղբայր, զմեծ գործ անձին՝ որ է երկիւղն Այ, եւ առեր 'ի ձեռսն քո ցուպ եղեգնեայ չախչախեալ՝ որ են չար խորհուրդք. զնացես կալցես 'ի քեզ հուր՝ որ է երկիւղն Այ, եւ յոր_ժամ գայցէ մերձենալ 'ի քեզ առաւ ինչ իբրեւ զեղէգն՝ կիզեսցի 'ի հրոյն յայնմանէ, վասն զի ոչ է կարող մերձենալ 'ի նա չար՝ որ ունի զերկիւղն Այ։ Ասէր ոմն եղբայր զհոգեւոր վարդապետէ իւրմէ՝ եթէ զքսան ամ ոչ բնաւ ննջեաց կողմանեալ, այլ 'ի վերայ աթոռոյն ուր նստէր եւ գործէր՝ անդ ննջէր նստելով. իսկ կերակրէր երբեմն զեր_կու աւուրս եւ երբեմն զչորեք աւուրս միանգամ. զայս առնէր զքսան ամ։ Իսկ յորժամ առնէր զկերակուրս, զաջոյ ձեռն համբարձեալ

կէր, զմի ձեռն յերկինս համբառնայր և միւսովն ճա-շակէր: Այլ իմ երբեմն ասացեալ ցնա՝ ընդէ՞ր առնես զայդ, հայր, և նա ասէ ցիս. զդատաստանն այդ զնեմ առաջի և ոչ կարեմ ժուժել: Երբեմն արկեալ մեր պաշ-տօն՝ դէպ եղև զի յանցեայ ես 'ի սաղմոսին. և իբրև կատարեցաք զպաշտօնն, ասէ ցիս ծերն. ես յորժամ արկանեմ զպաշտօնն, կարծեմ եթէ հուր իցէ ներքոյ իմ և այրիցէ զիս, և ոչ կարեն խորհուրդք իմ կամ յաջ կամ յահեակ խոտորել. և քո խորհուրդք ո՞ւր էին յորժամ զպաշտօն արկաք զի յանցեար 'ի սաղմոսին. ո՞չ գիտես թէ առաջի այնր կաս և ընդ այն խօսիս: Երբեմն ելեալ նորա արտաքս ետես զիս 'ի գիշերին զի ննջէի 'ի գաւթին, և սկսաւ լալ և հեծեծելով ասէ ցիս. ո՞ւր են խորհուրդք քո զի այդպէս անհոգութեամբ ննջես:

ԱՍԱՑ՝ երանելւոյն հայրն կոչեցեալն ոսկեբերանն՝ եթէ 'ի նստելն քում յընթեռնուլ զԱծային գիրս, նախ զԱծ կոչեա յօգնականութիւն քեզ, որպէս զի բացցէ զաչս սրտի քո ոչ միայն ընթեռնուլ զգրեալսն, այլ և առնել, զի մի 'ի դատապարտութիւն անձանց զվարս սրբոցն և զբանս ընձեռիցեմք: Ասաց նոյն ինքն ծերն՝ եթէ ամե-նեքեան արք և կանայք զաղօթումն գիտեմք, և յանձանց հեղգութէ գտանիմք կորուսեալք: Դարձեալ նոյն ծեր ասաց. եթէ ոք գողէ զմիայնակեաց, մատնէ զնա որս սատանայի:

յերկինս ունէր յաղօթս առ Աստուած, և ձախոյ ձեռամբն կերակրէր: Իսկ ես հարցի նմա եթէ ընդէ՞ր այդպէս առնես, հայր: Իսկ նա ասէ. զի դատաստանն այն միշտ է առաջի աչաց իմոց և ոչ կարեմ համբերել, յայն սակս առնեմ զայս: Իսկ էր երբեմն զի աղօթէաք 'ի միասին, և զիս յանցեաւ տուն սաղմոսին. և իբրև կատարեցաք մեք զսաղմոսն, ասէ ցիս ծերն. ես մինչ կամ յաղօթս իմ, որպէս թէ 'ի հնո-ցի կամ և կիզիմ, և սակս այսորիկ ոչ կարեն միտք իմ խոտորիլ յաջ և կամ յահեակ. իսկ քո ո՞ւր էին միտքդ 'ի յաղօթսն յորժամ կորեաւ սաղմոսն 'ի նմանէ. և կամ թէ ո՞չ գիտես զի առաջի այն կաս և խօսիս ընդ նմա: Այլ երբեմն 'ի գիշերի ել ծերն և եգիտ զիս 'ի քուն զի ննջէի 'ի գաւիթս եկեղեցւոյն, և կացեալ 'ի վերայ իմ սկսաւ լալ և ողբալ և ասէ. ո՞ւր արդեօք իցեն խորհուրդք այդմ եղբօր, զի այդպէս ննջէ անհոգաբար:

: Ասաց երանելին Յոհաննէս ոսկեբերանն. յընթեռնուլ զսուրբ Աստուածային գրոց, նախ կարդասցես զԱծ, որպէս զի բացցէ զաչս սրտի քո. իբր զի մի միայն կարդասցես զգրեալսն, այլ զի և գործեսցես զա-սացեալսն, զի մի 'ի դատապարտութիւն անձին քո ընթերցցես զկենա-բուխ բանս գրոց:

ԱՍԱՑ ¹ դարձեալ ծերն՝ եթէ. պարտ է միայնակեցի յորժամ իցէ ընդ եղբարս՝ հանապազ 'ի վայր հայել յերկիր և չհայել յերեսս մարդոյ համբուն, և մանաւանդ 'ի տղայոց. իսկ յորժամ առանձին իցէ, հանապազ 'ի վեր հայել, քանզի յոյժ խռովին և երկնչին դևք յորժամ 'ի վեր հայիմք առ հայրն մեր։

ԵՀԱՐՑ ոմն 'ի հարանցն ընդ իմաստուն բժիշկ մի և ասէ. ամենայն ցաւոց դեղ գիտես, ով իմաստուն։ Ասէ բժիշկն. յոյժ գիտեմ թէ լսես ինձ. առ զշաքարն առաշխարութեան և զծաղիկն եղբայրսիրութեան և զտերևն աղքատասիրութեան և զպտուղն խոնարհութեան, և լից 'ի հաւանն ողորմութեան, և աղա զնիւթն ծանր ածելով, և քամէ 'ի դաստառակն տուայտութեան, և արտասուախառն ըմպէ յամենայն մէջ գիշերի. այս է ամենայն ցաւոց դեղ, որ ոչ միայն զներքին մարդն բժշկէ, այլ և զարտաքինն սրբէ և նորոգէ և մաքրէ։

¹ Ասաց դարձեալ՝ եթէ պարտ է կրօնաւորի մինչ յայլոց կրօնաւորի իցէ՝ զի ստորև յերկիր նայիցի միշտ, և զի մի բնաւ նայիցի յերեսս մարդոյ, և առաւել երիտասարդի. իսկ մինչ միայն իցէ, պարտ է զի միշտ յերկինս 'ի վեր հայեսցի և առ Ած յոյժ զգուշութիւն, զի յոյժ դժուարին և երկնչին դևք մինչ 'ի վեր նայեսցուք առ Ած։



# ՄՆԱՑՈՐԴՔ

## յերկրորդ թարգմանութենէ

---

Եհարց հայրն Պամբոյ ցհայրն Անտոնիոս և ասէ. զի՞նչ արարից առաւել յօգուտ։ Ասէ ցնա ծերն. մի յուսացիր յարդարութիւն քո և մի ապաշաւեր զգործս զանցեալս, և պահող զգուշալի լեր լեզուի և որովայնի և կոկորդի քո։

Ասաց հայրն Անտոնիոս. առաջին հարքն մեր ելին յանապատ և բժշկեցան նախ և եղեն բժիշկ հոգևոր հմուտք, և դարձեալ անտի և զայլս բժշկէին։ Իսկ մեք ընդ ելանելն յաշխարհէ նախ քան զբժշկելն զմեզ զայլս ձեռնարկեմք բժշկել, և դառնայ 'ի մեզ ախտն այն և լինի յետինն չար քան զառաջինն, և գայ 'ի վերայ մեր բանն տեառն՝ եթէ բժիշկ, բժշկեա զանձն քո։

Ասաց հայրն Անդրէաս. վայել է կրօնաւորի երեքին ողքա՝ օտարսիրութիւն, աղքատութիւն և լռութիւն համբերութեամբ։

Ասաց հայրն Աթանասիէ Աղեքսանդրու եպիսկոպոսն. ասեն բազումք 'ի մէնջ՝ եթէ ո՞ւր են հալածանք զի վկայեսցուք և մեռցուք. այլ ես ասեմ, վկայեցիր մտօք, մեռջիր 'ի մեղաց, մեռ և զանդամս երկրաւորս և սրբեսցիս մտօք քովք, և վկայես Քրիստոսի։ Սուրբ վկայքն Քրիստոսի ընդ թագաւորս պատերազմէին և ընդ բռնաւոր իշխանսն. ունիս և դու առաջ քեզ զիշխանսն մեղաց զսատանայէլ և զիշխանսն նորա զչար դևսն։ Եւ սուրբքն ունէին դրեալ առաջի իւրեանց զմեհեանս կուռոցն և զսեղան զոհից նոցա լի ամենայն պղծութեամբ նոցին. և դու 'ի միտ ածցես յանձին քում և մեհեան համարեսցիս զորկրամոլութիւն և սեղան զոհից զփառասիրութիւն, իսկ կուռս՝ զցանկութիւն մեղաց։ Ասեն զի որ

ղք պտղնկութեանց և ցանկութեանց հեռացեալ իցէ, զՔ՜ս ուրացեալ է և կռոց երկիր պագանէ, վասն զի ունի յոգի իւր զԱփրոդիտէ 'ի նկարել ցանկութեն մեղացն և զաղտ-ծութիւն մարմնոյն: Եւ դարձեալ որ 'ի սրտմտութէ և 'ի բարկացողութէ յաղթի և ոչ հատանէ յիւրմէ զախ-տն զայնորիկ խստութի, և նա զՔ՜ս ուրացեալ է և զԱ՜-րէս ունի ա՜ծ յանձն իւր. վասն զի հարկեցաւ 'ի բար-կացողութիւն՝ որ է 'ի նմա թիւնաւորութեն կուռք: Եւ այլ ոմն արծաթասէր և նիւթահաւաք, և փակեալ է զաղխք յողորմութէ եղբօրն և ոչ ընդարձակէ զողորմու-թիւն ընկերին, նոյնպէս և նա ուրացող Յ՜սի Ք՜սի եղև, և պաշտէ զկուռս և ունի յոգի իւր ա՜ծ զԵռմիս կուռք, զի դեռ ևս արարածոց ծառայէ և ոչ արարչին. զի ստա-գապէս արմատ ամենայն չարեաց արծաթսիրութիւն է: Իսկ որ յախտիցս յայսցանէ հեռացեալ իցէ, նա կախեալ զկռապաշտութի և ուրացեալ է զանօրէնութիւն և մե-կուսեալ իցէ Ք՜սի, կատարեալ և ճշմարիտ մարտիրոս է և խոստովանեալ զբարուոք խոստովանութիւն:

ԱՍԱՑ հայրն Բեսարիոն. յորժամ խաղաղութե՛ կեաս և ոչ յումեքէ պատերազմ ունիցիս ինչ, յայնժամ ա-ռաւել խոնարհեսջիր, մի գուցէ ուրախութի ինչ օտար մտեալ՝ կալցէ զքեզ գովութի յայլոց կամ պարծենա-լութիւն, և անկցիս 'ի պատերազմ: Վասն զի բազում անգամ ա՜ծ վասն տկարութեն մերում ոչ թողացուցանէ գալ 'ի վերայ մեր պատերազմ, զի մի կորիցուք 'ի նոցանէ:

ԵՂԲԱՅՐ ոմն որ բնակէր ընդ եղբարսն՝ եհարց զհայրն Բեսարիոն և ասէ. զի՞նչ արարից, ո՛վ հայր: Ասէ ցնա. լուռ լեր և մի կշռեր զքեզ և քննեա զանձն քո միայն:

ԱՍԱՑ հայրն Բեսարիոն աշակերտաց իւրոց 'ի վախ-ճանելն իւրում. միշտ խնդացէք, անպակաս աղօթե-ցէք, յամենայնի գոհացէք, և կեցջիք:

ԵՀԱՐՑ ոմն զհայրն Բեսարիոն բան խրատու: Ասէ ցնա ծերն. երթ և արասցես զորովայն փոքր մի և զձեռս գործ փոքր մի, և մի շփոթեսցիս 'ի սենեկի քո, և կեցցես:

ԱՍԱՑ հայրն Ափոմեկրատէ. եթէ զգեցցուք զերկնա-ւոր հանդերձն զայն, մի ևս մերկ գտցուք 'ի հանդերձէն յայնմանէ յոր ելցուք: Օ՜ն ինչ արասցուք, ո՛վ եղբարք, վասն զի լսելոց եմք զսոսկալին զայն բան որ ասէ. հանէք ընկեցէք զդա 'ի խաւարն արտաքին, անդ եղիցի լալ և

կրձել տառամանց։ Որքան իցեն ամօթք և պատկառանք մեզ՝ որք այսքանի ամք զգեցաք զտեսակս զայս և զկարգ, և 'ի ժամանակին յայն ընտրութե՜ գտցուք մերկ 'ի հանդերձէն հարսանեաց և հանցուք 'ի բաց։ Ով որպիսի ահ և դողումն եկեսցէ յայնժամ 'ի վերայ մեր. ով որպիսի զեղջ կալցէ զմեզ. ով որպիսի ահ և դողումն ըմբռնեսցէ զմեզ յորժամ տեսցուք զհարս և զեղբարս զկարգակիցս մեր 'ի փառս և 'ի պատիւ հարսանեացն, և զմեզ 'ի տանջանս մատնեալ 'ի ձեռս անողորմ հրեշտակաց. որպիսի տրտմութի՜ ըմբռնեսցէ զհայրն Անտոնիոս և զհայրն Մակար Նիտրացի և զհայրն Պաւղոս փառտեցի և զՄակար արաբացի և զՄակարի աղեքսանդրացի և զԱրսենիոս իտալացի և զՄովսէս թեբայիտացի և զՅոն քերենիտացի և զամենայն սուրբ հարցն և զարդարոցն, մինչ տրտմեսցին և երկնեսցեն հառաչմամբ, յորժամ իւրեանք 'ի վեր հրաւիրեալ լինին յերկինս, և զմեզ բախելով հանցեն 'ի խաւարն արտաքին։

ԱՍԱՑ հայրն Եպիփան՝ եթէ որ օրինակ միայն ՝Ք՜նի էր Մելքիսեդեկ արմատն եբրայեցւոց՝ օրհնեաց զԱբրահամ, որչափ ևս առաւել ճշմարիտն ա՜ծ օրհնեսցէ և որբեսցէ զհաւատացեալսն իւր։ Դարձեալ նա ասաց. հարկ է քրիստոնէին որ կարօղն է՝ զի ստասցի զգիրս. վասն զի տեսանել միայն զգիրս ծուլացուցանէ առ 'ի մեղս զմարդն, թող թէ ընթեռնուլն, և առ արդարութիւն հրաւիրէ և յարուցանէ զհոգին։ Նոյն դարձեալ. մեծ հաստատութի՜ է անմեղութի՜ և ընթերցումն սուրբ գրոց։ Նոյն նոյն. մեծ խորխորատ մթին է կորստեան և խոր խաւարապատ անգիտութիւն բանից սուրբ գրոց։ Դարձեալ ասաց նա. լքումն 'ի կենաց է և կորուստ անգիտութիւն օրինացն ա՜յ։

ԼՈՑՆՆ ասէ՝ թէ արդարոց և գիտնոց մեղք մինչև 'ի շրթունս միայն են, իսկ անօրինաց և տգիտաց ընդ բոլոր մարմինն և 'ի միտս. վասն այսորիկ երգէր ա՜ծայինն Դաւիթ և ասէր. դիր տէր պահապան բերանոյ իմոյ և դուռն ամուր շրթանց իմոց. և ասացի թէ պահեցից զճանապարհս իմ, զի մի մեղայց լեզուաւ իմով։

ԴԱՐՁԵԱԼ ասաց նա. մեղաւորաց ա՜ծ դիւրաբար թողու զյանցանս յորժամ ապաշխարեսցեն, որպէս պոռնկին և մաքսաւորին արար. իսկ արդարոյն մեղանաց տա-

կոխս պահանջէ, որպէս և բանն տեառն է զոր առ առաքեալսն ասաց. եթէ ոչ առաւելուցու արդարութիւն ձեր քան զդպրացն և զփարիսեցւոցն՝ ոչ մտանէք յարքայութիւնն երկնից։

ԱՍԱՑ և հայրն Եպրեպիէ. եթէ ունիցիս յանձն քո զհաւատսն ա̃յ, կատարեալ հաւատա 'ի նա և զամենայն ինչ առցես նովաւ. իսկ եթէ ոչ առցես զխնդիրսն, կարճամիտ ես և ոչ հաւատաս 'ի նա. զի հաւատամք ճշմարտիւ եթէ ամենայն ինչ որ է՝ յա̃յ է, և թէ նովաւ ստեղծան ամենայն ստեղծուածք որք երևելին և որք ոչ երևելին, և եթէ զամենայն զոր և կամի կարող է։

ԵՀԱՐՑ եղբայր ոմն ցնոյն ծեր և ասէ. ո՞րպէս եկեսցէ երկիւղն ա̃յ յանձն մարդոյ բնակել։ Ասէ ծերն. եթէ ունիցի մարդ խոնարհութ̃ի և անընչութ̃ի, սովաւ գայ 'ի վերայ նորա երկիւղն ա̃յ։ Դարձեալ ասէ. զերկիւղն ա̃յ և զխոնարհութ̃ի և զաղքատութ̃ի կերակրոց ողբ և զզջումն բնակեցուսցէ միշտ ընդ մեզ։

ԱՅՍ ևս հայր Եպրեպիէ գնաց երբեմն առ ծեր ոմն և ասաց ցնա. ասա ինձ, հայր, բան ինչ զի կեցից նովաւ։ Ասէ ցնա ծերն. եթէ կամիս կեալ, ուր և գնասցես՝ դու մի արասցես բան ինչ նախ քան զհարցանելն զքեզ։ Իսկ նա զղջացաւ 'ի վերայ բանիս այսորիկ և անկաւ առ ոտս նորա և ասէ. ստուգապէս, հայր, բազում գիրս ընթերցեալ եմ և այսքան շահս ոչ յումեքէ 'ի նոցանէ կթեցի. և շահ յոյժ եղև նմա և գնաց։

ԱՍԱՑ հայրն Եւժենիոս. լաւագոյն է մեզ մուրացիկ գոլ և միայն Տ̃նի մերձաւոր լինել. և ստուգապէս մեծ իցէ նա՝ որ մերձաւոր Ք̃նի իցէ, թէպէտ և մարմնով աղքատ լինիցի։ Իսկ որք զերկրաւորս առաւել պատուեցեն քան զերկնաւորն, յերկոցունց անկցին. նոյնպէս և որ երկնաւորին կարօտասցի, երկոցունցն հանդիպեսցի՝ կենցաղոյս այսմիկ և յաւիտենական կենացն։

ԱՍԱՑ հայրն Մակարի ցհայրն Զաքարիաս. ասա ինձ, հայր, և ուսո զգործ կրօնաւորութ̃ե։ Պատասխանի ետ և ասէ. և դու ընդ իս հարցանես, ով հայր։ Ասէ ցնա Մակարի. ես հաւատացեալ եմ և վստահացեալ 'ի քեզ, ով որդեակ Զաքարիա. զի է ինչ որ դեղէ զմիտս իմ և բռնադատէ հարցանել զքեզ։ Ասէ ցնա Զաքարիա. ես այսպէս կարծեմ, հայր, զի յամենայն գործս բռնադատել զանձն՝ այս միանձնաւորութ̃ի մեծ է։

ՆՈՅՆ Եսայիաս հայր և քահանայ՝ եթէ ասէր մեզ ոմն 'ի հարանց անտի եթէ պարտ է կրօնաւորի նախ քան զամենայն ստանալ հաւատս առ Ած, և սէր և կարօտ առ Ած անփոփոխելի և անմեղութի, և ոչ ումեք չարի չար հատուցանել։ Նոյնպէս դարձեալ ստանալ ջգնութի ըստ կարի և խոնարհութի և արթութի և մարդասիրութի և առ ամենեսեան սէր և հնազանդութի և հեզութի և երկայնմտութի և համբերութիւն։ Եւ ունիցի կարօտ առ Ած, և աղաչեսցէ զնա միշտ ցաւագնեալ սրտիւ, և զի մի նայեսցի յետս երբէք, զգուշասցի ընդ յառաջ, և զի մի յուսասցի յարդարութի իւր, և միշտ աղերսանօք խնդրեսցէ զօգնականութիւն յԱյ սակս որ գալոց են փորձութեց 'ի վերայ նորա։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Եսայիաս բան խրատու։ Պատասխանի ետ ծերն. եթէ կամիս հետևել Յի, պահեա զբանս նորա և 'ի խաչ հանցես զքեզ բոլորովիմբ իբրև զնա մինչև ցմահ, զի պարտ է քեզ պատրաստել զանձն քո համբերել ամենայն չարեաց և փորձութեանց որ գայցեն 'ի վերայ քո. և զի հանգուսցես դու զմիտս լլկողաց և տրտմեցուցչաց քոց, և զի խոնարհեցուսցես զքեզ առաջի ամենայն նեղչաց քոց, և զի ունիցիս միշտ 'ի լռութի զբանս քո, և զի մի եղիցիս դատել կամ բամբասել զոք բնաւ 'ի սիրտ և 'ի միտս քո։

ՆՈՅՆ դարձեալ. աշխատութի մարմնոյ և աղքատութիւն և օտարութի և արթութի և լռութի ծնանին զխոնարհութի, և խոնարհութի ջնջէ զբազմութի մեղաց. իսկ որ ոչ պահէ զայսոսիկ, ընդունայն է միանձնաւորութիւն նորա։

ՆՈՅՆ դարձեալ. ատեա զամենայն գործ աշխարհական և զհանգիստ մարմնոյ քո, զի սոքա կարող են առնել զքեզ թշնամի Այ. զի զոր օրինակ մարդ որ ունիցի թշնամի և պատերազմի միշտ ընդ նա, և այսպէս արժան է պատերազմել ընդ մարմինս մեր զի մի հանգուսցուք զնա։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Եսայիաս վասն բանին որ ասէ՝ հայր մեր որ յերկինս ես։ Ասէ ցնա ծերն. այդ աղօթք կատարելոցն է. քանզի որ ոք ընդ մարմնական ախտից պատերազմեսցին, ոչ կարէ 'ի նմա սուրբ լինել անուն տեառն։

ՊԱՏՄԷՐ մեզ հայրն Եսայիաս վասն հօրն Մակարայ

և ասէր. Նստէի ես երբեմն ընդ հօրն Մակարայ առանձինն, և եկին եղբարք եօթն յԱղեքսանդրիա փորձելով զհայրն Մակարի և ասեն ցնա. ասա մեզ, հայր, բան խրատու, զի կեցցուք 'ի նոսին: Իսկ ես առի տախտակ և սկսայ գրել զբանս նորա որքան ասէր առ նոսա: Իսկ ծերն հառաչելով 'ի խորոց սրտէ, և բացեալ զբերան իւր 'ի բանս լուսաւորս և ասէ ցնոսա: Ով եղբարք, իւրաքանչիւր ոք 'ի մէնջ գիտէ զճանապարհս որով կեցցէ, այլ դուք կամիք զի կեցցէք: Իսկ նոքա ասեն. յոյժ կամիմք զի կեցցուք, այլ ոչ թողուն զմեզ կալ չար խորհուրդք մեր: Ասէ ցնոսա ծերն. արդ եթէ կրօնաւոր էք, ընդէ՞ր շրջիք և կայք ընդ աշխարհականաց; կամ ընդէ՞ր բնաւ մերձ լինիք 'ի տեղին ուր իցեն գռեհիկք, և կամ ընդէ՞ր ոչ գիտէք եթէ որ ոք հրաժարեաց յաշխարհէ և զսուրբ զայս կերպարան զգեցաւ և դարձեալ խառնեալ ընդ գռեհիկ աշխարհականաց կեալ, թէ իւր ոք և թէ ընդ օտարաց. սոքա զանձինս և զա̃ծ խաբեն, և սուտ և ընդունայն է կրօնք նոցա: Վասնզի զի՞նչ շահեսցի յաշխարհականաց, այլ կամ զվիշտս և կամ ըզհանգիստ մարմնոյ իւրոյ. իսկ ուր իցեն հոգք կամ հանգիստ մարմնոյ, անդ անկար է բնակել երկիւղն ա̃յ. քանզի զի՞նչ այլ ինչ է կրօնաւոր, բայց եթէ ոչ՝ միայն այս, զի միայն ընդ միայնոյ ա̃յ կեցցէ և խօսեսցի զտիւ և զգիշեր: Վասն զի պարտ է կրօնաւորի զի մի՛ կացցէ ընդ աշխարհականի և ոչ ժամ մի. իսկ եթէ 'ի գործս անհնարինս հարկ է՝ կացցէ օր մի, և այս յայնմ ժամու՝ եթէ առանց այնմ գործոյ կալ անհնար իցէ. կամ թէ վաճառեսցէ զձեռագործ իւր և գնեսցէ իւր պէտս կարևորս 'ի կեանս իւր և դարձեալ ապաշխարեսցէ ջերմապէս արտասուօք վասն այն աւուր զոր եկաց 'ի քաղաքի ծախել զձեռագործ իւր, զի ոչ շահեցաւ:

Վասնզի կրօնաւոր որ ընդ գռեհիկս բնակի, զայսոսիկ առաքինութի̃ս յաւելու. քանզի նախ քան զամենայն մինչ գնայ յարել ընդ նոսա, սկիզբն կենաց այսպէս լինի. լռութի̃ կալցէ և հեզութի̃, նուազ խօսիլ և դաշն նայել, և պահս սկսանի յոյժ մինչև ծանիցի ամենեցուն, և ելանէ համբաւ զնմանէ և լսի անուն նորա՝ եթէ այս անուն կրօնաւոր սուրբ և առաքինի է: Իսկ ապա յորդորէ սատանայ զաշխարհականս տեղւոյն այ-

նորին աշակերտել նմա և ընուլ 'ի նա զպէտս և զինչս առատապէս և զամենայն պէտս հացի և գինւոյ և ձիթոյ մեծի խաչարարութե. և սկսանին զովել և ասել՝ սուրբ սուրբ սուրբ է։ Իսկ նա, որպէս սովորութիւն է ամբարհաւաճութե և մնափառութե, մինչ լսէ զսուրբ սուրբն և զգովութիւն զայն, վաղվաղակի փքանայ եղկելի կրօնաւորն այն, և յայնմհետէ սկսանի նստել ընդ նոսա ուտել և ըմպել և պարարիլ. և ստացեալ նիւթ կեղծաւորացն, պահօք յայնժամ սկսեալ, աւարտէ զյղփութի մարդասիրութե, հիւրընկալութի և հոգեշահութիւն կոչելով։

Այս ապա յարուցեալ յետ արբենալոյն սկիզբն առնէ հսկման աղօթից և բարձրացուցանէ զձայն իւր յերգս՝ մինչ սկսանին որք ընդ իւր գաւհիկքն՝ զովել զնա և ասել, եթէ սուրբս այս միայնակեաց բարիոք պաշտէ, իբր թէ հրեշտակային ձայնիւ, և յոյժ հսկէ և աղօթէ. և սովաւ ևս առաւել բարձրավզեալ ամբարտաւանի եղկելին։ Այս ապա յանկարծակի 'ի բաց ձգէ զխոնարհութիւն իւր, և հոգի դիւական ամբարտաւանութե կալնու զնա. և եթէ ոք ասիցէ ցնա բան ինչ ոչ հեզ, իսկ նա խստագոյնս և սաստիկս պատասխանի առնէ, խոշոր ձայնիւ և գոռոզ բանիւք վայրենացեալ նայեցմամբ։ Այս ապա մինչ յամառէ յայսոսիկ ընդ գաւհիկս, և գիրացեալ ըստ զօրովայն մարմնոյն և զհոգին կրկնակի ախտիւք, յայնժամ հարկանէ գինին 'ի սիրտ նորա զնետս պոռնկութե առ կանայս և առ մանկունս սաստկապէս և խեղդէ և նեղէ զնա սովաւ և այլ ամենայն հոգովք կենցաղոյս, մինչև 'ի խորխորատ մեղաց ձգեսցէ զնա, և կամ յայն ինչ զոր տէրն ասաց՝ թէ ամենայն որ հայի 'ի կին մարդ և ցանկայ նմա, անդէն շնացաւ ընդ նմա 'ի սրտի իւրում։ Ապա թէ և զայսիւ արհամարհեալ առասպել համարեսցի, յայնժամ գթեալ 'ի դիւէն՝ 'ի կատարեալն անկանի 'ի շնութի, կամ ընդ ազգակից մարմնոյ զոր այլք ոչ կարծեսցեն, և կամ ընդ խոստովանաքոյրս և դստերս և կամ ընդ աշակերտեալ երիտասարդսն, և այսպէս որոշեալ յա̃յ հեռանայ 'ի նմանէ, և հեշտանայ և արհամարհէ զմեղս և կորիցէ իսպառ։

Յայնժամ սկսանի զկատարեալ տարւոյն ժողովել զպիտոյսն բազմապէս՝ զքւրն և զհիւրոցն պատճառելով,

և տալս զերկու ամի և զերեք ամի, և իւր գործ առնէ զմեծ մասն երկրին. և 'ի վերայ այսոցիկ սկսանի հաւաքել զինչս բազումս ոսկւոյ և արծաթոյ և զայլ ամենայն ստացուածոց, մինչև ձգեսցեն զնա դևք յարմատ ամենայն չարեաց որ է արծաթսիրութիւն կրկին կռապաշտութիւն։ Այլ եթէ տացէ ոք նմա փոքր ինչ ոսկի կամ արծաթ և կամ այլ ինչ, յետս դարձուցանէ ասելով. ոչ պիտոյ է ինձ այդ, զի ոչ բնաւ ինչ առնում յումեքէ, և ամօթով առնէ զքերողն և տրտում։ Իսկ եթէ ոք բերէ նմա ոսկի կամ արծաթ բազում որ հաճոյ թուեսցի իւր, վաղվաղակի առնու խնդութեամբ, և փութապէս դնէ սեղան բարձր և լի ամենայն բարութեամբ, և դնէ բազմականս և բերէ գինիս ծաղկահոտս, և սկսանի ուտել և ըմպել յղփութեամբ, և զհիւրասիրութիւն գործէ։ Իսկ աղքատն ես առաւել Քն՝ առ դրանն արտաքոյ կալով և բախէ զդուռն և խնդրէ ինչ, և ոչ ոք է որ լսէ և ոչ ոք ողորմի նմա։ Վասն այսպիսեացս ասաց տէրն մեր Յն Քն, եթէ դիւրին է ուղտու ընդ ծակ ասղան անցանել, քան մեծատան յարքայութիւն այ մտանել։

Այլ միթէ ասիցէ ոք 'ի ձէնջ՝ եթէ ես ոչ եմ մեծատուն և ոչ հարուստ. և այլ ոք ասիցէ՝ ոչ պիտոյ է ինձ առնուլ ինչ յումեքէ, այլ ձեռօք իմովք գործեմ, և ես ինձ ած և զինն ունիմ։ Այլ արդ ասասցէք ինձ, ով հարք, հրեշտակք յերկինս ոսկի հաւաքեն երբէք. ոչ. այլ փառաբանեն միայն զած։ Այլ արդ մեք, ով եղբարք, ընդէ՞ր զգեցեալ եմք զտեսակս նոցա. յո՞յն ինչ զգեցաք զի ստասցուք և հաւաքեսցուք՝ ոսկի և արծաթ բազում, թէ յայն ինչ՝ զի իբրև զհրեշտակս անինչս և սուրբս եղիցուք. միթէ ո՞չ գիտէք եթէ զդասուն զայնորիկ որք անկան յերկնից՝ կրօնաւորաց պարտ է լնուլ։ Այլ արդ ընդէ՞ր հրաժարեցաք յաշխարհէ. և եթէ հրաժարեմք՝ ընդէ՞ր երկմտեմք և յետս դառնամք 'ի ճանապարհէ խոնարհութեն, և կամ թէ ո՞չ գիտէք զի գինի և ոսկի և արծաթ և կանայք և մարմնոյ հանգիստ և հեշտալիք նացին և խառնիլն ընդ գեհիկս և այլ ամենայն այսպիսիք հեռացուցանեն զմեզ յայ. զի արմատ, ասէ, ամենայն չարեաց արծաթսիրութիւն է. և այնչափ չար է, որպէս զի որչափ հեռի են երկինք յերկրէ, այնչափ հեռի է կրօնաւոր արծաթասէր յայ. և զի ստուգապէս ոչ ինչ է չար քան զարծաթասէր միանձն։

Այլ որք խոստակիցն կանանց և մանկանց և աշխարհա-
կանաց են կրօնաւորք, սոքա ողբալիք են ամենայն մարդ-
կան, սոքա և փախչելիք են ամենայն կրօնաւորաց, սո-
քա մերժեալք յայ և բաժին լեալք դիւաց: Ո՞չ լսեն
զինչ ասէ Յովհաննէս առաքեալ և աւետարանիչ. մի,
ասէ, սիրէք զաշխարհս և մի զոր ինչ յաշխարհի են. և
եթէ ոք սիրէ զաշխարհս, ոչ է 'ի սէրն այ: Նոյնպէս և
առաքեալն Յակոբոս խրատէ զմեզ և ասէ. որ կամի սի-
րել զաշխարհս, թշնամի լինի նա այ: Փախերուք, ով
եղբարք, յաշխարհէ, փախերուք որպէս փախչի ոք յօձից
քարբից. քանզի օձք զորս հարցեն՝ դժուարաւ բժշկին,
նոյնպէս և աշխարհ. և եթէ մեք կամեսցուք կրօնաւորս
լինել, փախիցուք յաշխարհէ. քանզի լաւագոյն է մեզ
եթէ մի պատերազմ ունիցիմք և ոչ բազումս և ան-
թիւս: Այլ արդ ասացէք, ով հարք և եղբարք, հարքն
ո՞ւր ստացան զառաքինութիւն, 'ի քաղաքս և 'ի գիւղս,
եթէ յանապատս և յանտառս. և թէ նոքա անդէն ստա-
ցեալ զառաքինութի, իսկ մեք ո՞րպէս կարասցուք ստա-
նալ 'ի գիւղս և 'ի քաղաքս: Այլ եթէ ոչ քաղցեսցուք
և ոչ ծարաւեսցուք, և եթէ ոչ ցրտասցուք և ընդ գա-
զանս բնակեսցուք, և զի համառօտիւ ասացից՝ եթէ ոչ
մեռցուք մարմնով, զի՞արդ կեցցուք հոգւով. և ո՞րպէս
կամիմք ժառանգել զարքայութիւն երկնից ընդ համաշ-
խարհիկս բնակելով: Նայեցարուք ընդ զինուորս թա-
գաւորաց. զի եթէ ոչ պատերազմեսցի զինուորն և յաղ-
թեսցէ՝ ոչ պատուեսցի, ևս առաւել մեք ուտելով և ըմ-
պելով և խառն ընդ գուեհիկս կալով և ընդ էգս՝ ոչ
մտցուք յարքայութիւն երկնից: Մի՛ կարծեսցեն 'ի մեզ
դևք չար խորհուրդս և ասասցեն՝ հաւաքեսցուք ինչս զի
ողորմութի արասցուք. վասն զի որ ոք յեղջերուէ իւղոյն ոչ
առնիցէ ողորմութի, նա և ոչ 'ի բիւրուց տաղանդաց առնիցէ:

Մի՛ եղբարք իմ, մի այսպէս. այս գործ աշխարհակա-
նաց է. ոչ կամի ած մեզ կրօնաւորացս ունել ոսկի և
արծաթ և ոչ հանդերձս բազմագինս և ոչ զայլ ինչ նիւթ
աշխարհական և ոչ ողորմածս լինել. և զի ինքն տէրն
ասէ, հայեցարուք ընդ թռչունս երկնից՝ որ ոչ վարեն և
ոչ հնձեն և ոչ ժողովեն յշտեմարանս, և հայրն ձեր
երկնաւոր կերակրէ զնոսա: Կրօնաւոր որ ստասցի ոսկի
կամ արծաթ և կամ այլ ինչ ստացուածս, ոչ հաւա-

տայ թէ կարող է ած կերակրել զնա. զի եթէ հաց ոչ կարող է տալ մեզ ած, ապա և ոչ զարքայութիւն կարասցէ տալ մեզ: Նոյն և զայս գիտասջիք, զի եթէ ոք ունիցի զինչ և իցէ 'ի պիտոյիցն՝ և բերէ աշխարհական ոք յայնմանէ այլ ինչ, այն ոչ յայ է, այլ յազդմանէ սատանայի լինի այն. իսկ եթէ ոչ ունիցի և խնդրեսցէ մի անգամ և երկիցս՝ և բերէ ոք, այն յայ է առաքեալ, որպէս Դանիէլի 'ի գբին առիւծուց, զի գիտէ ած 'ի ժամու շնորհել զպիտոյսն: Իսկ եթէ ոք ոչ կարօտ իցէ, կամ թէ ունիցի ոսկի և արծաթ կամ այլ ինչ նիւթ, և ոչ ինքն ցրուեսցէ զնա, այլ կացցէ և մնասցէ զի այլ ոք գայցէ և բերիցէ ինչ նմա, կամ ոչ բաշխեսցէ իւրն. նա մասնակից լինի Յուդայի իսկարիովտացւոյն որ եթող զշնորհս բժշկութեան և զվիճակ առաքելութեան որ տուեալ էր իւր 'ի տեառնէ, և 'ի ցանկութիւն արծաթսիրութեան խեղդեցաւ. զոր գիտելով երանելին Պաւղոս՝ արմատ ամենայն չարեաց անուանեաց զնա և կռապաշտութիւն: Տեսէք, ով եղբարք, եթէ յորպիսի գուբս չարեաց 'ի վայր ձգեսցէ զկրօնաւորն այս ախտ, մինչ զի և 'ի կռապաշտութիւն ընկենու զնա. քանզի ճշմարտապէս հեռացի այնպիսին յայ, և կրոց ձեռագործաց և դրօշելոց մարդկան երկիր պագանէ՝ որ է ոսկի և արծաթ:

Ով արծաթսիրութիւն չար, որ հեռացուցանես զկրօնաւորս 'ի սիրոյն այ: Ով արծաթսիրութիւն, որ ես դառնագոյն նենգութիւն, որ զերկես զմիաբանձունս 'ի դասակարգութենէ հրեշտակացն: Ով արծաթսիրութիւն, որ դու կոչեալ եղեր արմատ ամենայն չարեաց, որ առնես զկրօնաւորս հոգացող աւելաստացութեան: Ով արծաթսիրութիւն, ժողովարան ամենայն չարեաց, որ որսես զեղբմիաբանձինս յանարգանս և յատելութիւն և 'ի չփոթս և 'ի կռիւս, մինչև գայցէ նա յատեան աշխարհական դատաստանաց: Վայ արծաթասէր կրօնաւորի, զի ընակեսցի յոգի նորա դեւն յղփութեան և կռապաշտութեան: Վայ արծաթասէր միաբանձին, զի եղծ զօրէնս այ որ ասէ՝ թէ մի ստանայք ոսկի և արծաթ. վայ նմա, զի զմեծամեծս պահելով յօրինացն՝ 'ի մինն այն ուրացող այ եղև:

Բազում անգամ ձգէ 'ի սիրտ արծաթասէր կրօնաւորին դեւն խորհուրդ և ասէ՝ եթէ արասցես յայսմ գիշերի հսկումն և կոչեսցես յայգուցն զեղբարսն և արա-

ցես ընդունելութի և սէր, և տուր ինչս եղբարցս և կարօտելոց։ Եւ ապա դարձեալ թուլացուցանէ և ասէ. անհնար է քեզ թողացուցանել, ծանօ ինձ զլռութիւն և զպահս. լցուցից յերեսնամն զկարգ երրորդ ժամուն և զվեց ժամուն և զինն ժամուն, և պահեցից զցերեկ. և ոչ 'ի միտ առնու եղկելին զբանն տեառն որ ասէ՝ եթէ ոչ ամենայն որ ասէ ցիս տէր տէր՝ մտցէ յարքայութի երկնից, այլ որ առնէ զկամս հօր իմոյ որ յերկինս է։ Եւ զայս ասեն՝ թէ զինչ շահեսցէ ոսկին և արծաթ որք են նիւթ ողորմութեն։ Եւ ոչ գիտել կարասցեն զայն թէ ուր ժողովլի ոսկի և արծաթ և նիւթ երկրաւոր, անդ մտցեն ամենայն ախտք, և ընդ նոսին մտանէ լեգէոն գլուխն դիւաց. ուր հեղձումն է հոգւոյ և մարմնոյ. քանզի ոչ ինչ 'ի բարեացն բնակէ անդ՝ ուր իցէ ագահութի, այլ կոծ մշտնջենաւոր և վայ անսպառելի։ Եւ զքանդ կարիցէ բնակել 'ի նմա կրօնաւոր ագահ և արծաթասէր, որովհետև եթող նա զկամս արարչին իւրոյ՝ որ կոչեաց զնա 'ի կեանս յաւիտենից, և զոսկի պաշտելով զնա հաւաքէ։ Բազում անգամ արկանեն դևք 'ի սիրտ այնպիսւոյն զզջութի, և սկսանի տրտմել և հոգալ, բախել զկուրծս և արտասուել և ասէ. ահա ես ինձ ամ ոսկի և արծաթ յոյժ, ընդէ՞ր ոչ տաց 'ի սմանէ աղքատաց։ Եւ ապա 'ի վերայ զղջութեն վաղվաղակի յիշէ զսէր ոսկւոյն, և 'ի բաց թողու զզեղջն և զաղտօսրն, և ոչ կարէ տալ այլոց և ոչ դանկ մի և ոչ խլել զարմատ չարին։

Ով եղբարք իմ սիրելիք, զի՞ է զի ունիմք մեք միանձունքս ոսկի և արծաթ և հանդերձս բազումս, և ոչ դադարեմք 'ի ժողովելոյ. և աղքատն որ նոյն ինքն Քս իցէ՝ տկար և քաղցեալ և մերկ շրջի արտաքոյ, և ոչ ինչ բարիս գործեմք 'ի վերայ նորա։ Եւ արդ զինչ պատասխանի տացուք յաւուրն ահագին. քանզի հրաժարեմք յաշխարհէ և դարձեալ 'ի նմա դեգերիմք և շրջիմք, և երկմտեմք և ստեմք մերում տեսակի և կարգի. զի սա հրեշտակային, և մեք դարձուցանեմք զսա յերկրաւոր կենցաղականս, և սիրեմք զանցաւորս առաւել քան զվերնականն, և կամ բնաւ ոչ առնեմք բարի ինչ, և կամ թէ հազիւ ինչ առնեմք փոքր և զայն ևս կեղծաւորութեամբ 'ի ցոյց մարդկան, զի որսասցուք փառս 'ի մարդ֊

կամէ ։ Եւ արծաթսիրութիւն ոչ եթէ 'ի բիւր տաղանդս ոսկւոյ և ընչից սահմանի, այլ մինչև ցդանկ մի. զի որ զփոքրն զայն սիրէ, նա չար և արծաթասէր է ։ Եւ զոր օրինակ ողորմութիւն ոչ 'ի բազմութիւն նիւթոյն է, այլ 'ի կամս տուողին, նոյնպէս արծաթսիրութիւն ոչ 'ի բազումն՝ այլ 'ի կամս առնողին դատեսցի ։

Ո՛չ այսպէս, սիրելի եղբարք իմ, մի. այլ փախիցուք յաշխարհէ. զի եթէ յանապատի կալ հոգւով դժուարին է, որչափ ևս առաւել 'ի մէջ աշխարհի ։ Եւ որպէս կարասցուք կալ 'ի մէջ աշխարհականաց և 'ի շփոթս. յայտնի է ճշմարտապէս ոչ կարող գոլ կալ 'ի բանէն տեառն որ ասէ՝ թէ ամենայն ոք որ ոչ հրաժարեսցէ յերկրէ և յամենայն գործոյ նորա և ատեսցէ զանձն իւր, ոչ է ինձ արժանի. և կենդանի եմ ես՝ ասէ տէր. և թէ՝ ելէք 'ի միջոյ նոցա և մեկնեցարուք. և մերժեցէք զչարիս յանձանց ձերոց ։ Տեսէք, ով եղբարք իմ սիրելիք, եթէ որքան շահս բերէ փախչելն 'ի խօսակցութենէ գեղջկացն. քանզի բարուք է փախուստն և մեզ և նոցա. քանզի նոցին բանքն վասն գնելոյ և վաճառելոյ է միշտ, տնկելոյ և սերմանելոյ, շինելոյ և վիճելոյ, և վասն կնոջ և մանկանց, ստացուածոց և ռոճկաց և ատենից, հօտից և խաշանց. արդ այսպիսի մտավարժութիւն և լսելութիւն 'ի բաց մերժէին զխորհուրդս մեր յյս ։ Իսկ եթէ խօսակցութիւն նոցա միայն հեռացուցանէին զխորհուրդս մեր յյս, ապա ընդ նմին ուտել և ըմպել և կեալ որքան առնէին մեզ վնաս ։ Ոչ եթէ անսուրբ են նոքա և պիղծ և յայն սակս ասեմ, քաւ լիցի. այլ զի ուտեն նոքա յաւուրն երկիցս անգամ և երիցս, ուտեն և զպարարտանըս[1] և զմիս և ըմպեն անյագապէս և նոցա ոչ վնասէ. իսկ մեք հրաժարեալ եմք 'ի մսոյ և յամենայն գիրացուցչաց կերակրոց, և յաւուրն մի անգամ առնումք կերակուր ։ Ի վերայ սոցին դարձեալ թէ տեսանեն ըզմեզ եթէ կերիցուք և յագեսցուք, առժամայն բամբասեն զմեզ և ասեն. ահա կրօնաւորք կերողք և արբեցողք և որկորամոլք, և ոչ իմանան եթէ մեք իբրև զնոսա մարմին տկար եմք ։ Իսկ եթէ տեսանեն զմեզ ոչ ուտելով և պահօղս, բամբասեն ասելով՝ ահա կրօնա-

[1] Օրինակ Գ. պարարտանս ։

ւորք մտախառ և մարդահաճոյ. և կորուսանեն զանձինս իւրեանց վասն մեր: Այլ դարձեալ թէ տեսանեն զմեզ անկրուայ ուտելով կամ անարգ զգեստիւք և բոկս գոլ, ասեն՝ ահա խենեշք և ախտաժէտք, ժահահոտք և խաբեբայք: Իսկ եթէ տեսցեն զոք լուացեալս և զգեցեալըս, ասեն՝ ահա պճնողք և անձնապաշտք և մեղկք. և այսպէս ասելով կորուսանեն զանձինս իւրեանց վասն մեր, և մեք լինիմք պատճառական և պատճառ կորստեան նոցա:

Արդ փախչելով փախիցուք, ով եղբարք, 'ի սեղանոց և 'ի կոչմանէ նոցա և զատել զմեզ 'ի նոցանէ, և պատրաստեալ լեալ խնդրեսցուք աղաչեմ և մի զգուշել տիրել, թէպէտ հայր կամ եղբայր կամ ազգականքս իցեն. վասն այսորիկ զի տեսցեն նոքա կամ ողորմեսցին կամ գովեսցեն մանանէ զմեզ 'ի տանջանս յաւիտենականս. իսկ ասել և բամբասել նոցա լինին մեզ պատճառք պսակին փառաց: Ոչ ապաքէն զինչ շահիցիմք եթէ մարդկան հաճոյ եղիցուք և բարկացուցուք զտէր մեր: Այլ վկայէ այսոցիկ առաքեալն Պաւղոս և ասէ. եթէ տակաւին մարդկան հաճոյ լինէի, ապա Քրիստոսի ծառայ ոչ էի: Արդ աղօթեսցուք ամենեքեան առ տէր և ասասցուք. տէր Յիսուս Քրիստոս մեր, 'ի բաց արասցես 'ի մէնջ զթըշնամիս մեր և զնեղիչս. մեկնեա զմեզ յաշխարհականնաց, փրկեա զմեզ 'ի գովութենէ և 'ի պարսաւանաց մարդկան: Այլ մի ինչ բնաւ գործեսցուք մեք 'ի հաճոյս նոցին. զի ոչ կարող է գովութիւն նոցին տանել զմեզ յարքայութիւն երկնից, և ոչ պարսաւանք նոցա կարող են փակել մեզ զմուտս կենաց: Այլ զայս գիտասցուք, եղբարք, եթէ ըստ ամենայն դատաստանի բանի հատանել տալոց եմք յաւուրն յետնում առաջի տեառն այ և ատենադատողին մերոյ: Այլ լուեալ 'ի խօսիցն Մակարայ, իսկ նոքա գնացին շինեալք անձամբ և մտօք 'ի լուսազարդ բանից երանելւոյն:

ԱՂԲԱՅՐ ոմն եկն առ հայրն Աղլիա միայնակեաց, որ բնակեալ էր յայրն սրբոյն Սաւայի, և ասէ ցնա. ասա ինձ բանս կենաց, ով հայր: Ասէ ցնա ծերն. յաւուրս հարցն մերոց փայլէին երեքին այսոքիկ առաքինութիւնք՝ անընչութիւն, անմեղութիւն և պահք. իսկ այժմ տիրեալ են կրօնաւորաց ագահութիւն, որկրամոլութիւն և լըրբն յանդգնութիւն. և արդ զոր կամիս դու՝ յանձին կալցես յայսցանէ:

ԱՍԱՑ հայրն Թէոդորէ փերմեցի. կրօնաւոր որ միշտ յապաշխարութեան կենայ, ոչ կալեալ լինի յօրինացն։

ՀԱՐՑ ումն 'ի կրօնաւորացն ցԹէոփիլէ եպիսկոպոսն և միայնակեաց զբանս առաքելոյն որ ասէ՝ եթէ գնեցէք զժամանակս, զի աւուրքս չարութեան են։ Ասէ ծերն. անուանն յայտ առնէ զզօրութիւն և զօգուտ բանիդ. և այսպէս իցէ. եկն եհաս քեզ ժամանակ արհամարհանաց, գնէ զժամանակն պատկառանօք և խոնարհութեամբ և երկայնմտութեամբ, և ձգէ զշահն յանձն քո։ Դարձեալ. եհաս ժամանակ անարգութեան, գնեա դու զժամանակն զայն անյիշաչարութեամբ և հեզութեամբ, և շահեաց անձին քո զօգուտ։ Նոյնպէս և յամենայն ներհակսն որ են ախտք և առաքինութիւնք, գնեսցուք ներհակովն առաքինութեան զժամ շարժելոյ ախտին, և շինիմք եթէ կամեսցուք։

ԱՍԱՑ դարձեալ. հսկեսցուք մտանել ընդ նեղ դուռն. և զոր օրինակ ծառք և տունկք եթէ ոչ առցեն զձմեռն և զանձրեւն՝ ոչ կարեն պտղաբերել, այսպէս և մեք. և քանզի կենցաղս այս ձմեռն է, եթէ ոչ կրեսցուք և յանձն առցուք 'ի սմա զվիշտս բազումս և զձգնութիւնս՝ ոչ կարեմք մտանել յարքայութիւն ա̃յ։

ՆՈՅՆ ասէ դարձեալ. պարտ է վարդապետի եղբարցն զի օտար լիցի յիշխանասիրութենէ և օտար յամբարտաւանութենէ, հեռի 'ի հպարտութենէ, և զի մի կատակեսցի յաչաղանաց այլոց և ոչ բռնադատեսցի յորովայնէ իւրմէ և ոչ 'ի սրտմտութենէ և 'ի բարկութենէ. այլ հարկ է լինել երկայնամիտ, հեզ և խոնարհ և պահեցող գոլ յամենայն զօրութենէ, հարցաքննող, ողորմած և ոգեշահ։

ՊԱՏՄԷՐ մեզ հայրն Կասիանէ վասն Յոհաննու հօր ումեմն առաջնորդի վանաց՝ եթէ մեծ էր նա 'ի վերայ երկրի. և յորժամ մերձ էր 'ի փոխադրիլ յաշխարհէս և անցանել առ ա̃ծ, 'ի յետնոյն շունչն ուրախ էր յոյժ և կարօտ էր գնալ. շուրջ կային զնովաւ եղբարքն և աղաչէին որպէս զի բան ինչ կարճառօտ և կենսաւոյց աւանդեսցէ նոցա և իբրև զվիճակ ժառանգութեան թողցէ նոցին, որով կարող լինիցին 'ի վեր ելանել առ ա̃ծային կատարելութիւն։ Իսկ նա հառաչեաց և ասէ ցնոսա. ոչ երբէք արարի զկամս իմ, և ոչ երբէք ուսուցի զոք զայն ինչ զոր նախ ես ոչ արարի։

ԱՍԷՐ և հայրն Յոհաննէս կիլիկեցի, որ էր առաջ-

նորդ Ոսայիթու լեռինն. որպէս փախեայք յաշխարհէ, փախերուք նոյնպէս և 'ի ցանկութեց մարմնոց. նմանեսցուք հարցն մերոց, և յիշելով թէ որպիսի խստագոյն ճգնութիւնս միայնակեցութեան ընթանային միշտ. և մի պղծեսցուք, ով եղբարք, զտեղիքս զայս զոր հարքն մեր ճգնութեամբ. և քրտամբք իւրեանց սրբեցին 'ի դիւաց. և զի սա տեղի ճգնողաց է և անմարմնոց սրբոց, և ոչ է տեղի վաճառոց կրպակաւորն փերեզակաց:

ԵԼԱՆԷԱՔ երբեմն 'ի Պետթսեմանոյ 'ի լեառն ձիթենեաց, և էր անդ վանս հօրն Աբրահամու. յայսմ վանս առաջնորդէր հայրն Յոհաննէս կողիկեցի. հարցաք նմա և ասեմք՝ եթէ որպէս ստանալ կարիցէ ոք զառաքինութիւն: Պատասխանի ետ ծերն և ասէ ցմեզ. եթէ կամեսցի ոք ստանալ զառաքինութիւն, ոչ ստասցի՝ եթէ ոչ նախ հատցէ յիւրմէ զչարութիւն համագունն նորայն. այսինքն է եթէ կարօտիս ստանալ զողբս, ատեա և հատ 'ի քէն զուրախութիւն և զհրճուանս. և եթէ սիրես ստանալ զխոնարհութիւն, ատեա և հատ զամբարտաւանութիւն. և եթէ կամիս ստանալ զպահս, ատեա զհեշտասէր որկորամոլութիւն. եթէ կամիս ստանալ զսրբութիւն, ատեա զպղծութիւն և զցանկութիւն. և եթէ կամիս զանընչութիւն, ատեա զարծաթսիրութիւն. եթէ սիրես զմիայնակեցութիւն, ատեա զքաղաքս և զգեօղս և զցանգս գայթակղութեան նոցին. եթէ սիրես զլռութիւն, հեռասցիս յընտանեաց քոց: Զի որ սիրէ ըստանալ զհեզութիւն, ատեսցէ զսրտմտութիւն և զընդ բազմաց կեալն. և որ սիրէ զանոխակալութիւն ստանալ, ատեսցէ նա զչատելն և զբամբասանս ընկերին. և որ սիրէ զանշփոթութիւն, սիրեալ ստասցի զառանձին բնակութիւն: Որ սիրէ զլռութիւն, խցցէ զունկն, զի մի լուիցէ զբանս բազմաց. և որ սիրէ բևեռել զմիտսն ընդ երկիւղն այ, միշտ ատեսցէ զամենայն հեշտալիս մարմնոյ և առցէ յանձն զվիշտս և զնեղութիւնս հանապազորդս:

ԵՂԲԱՅՐ մի եհարց ցհայրն Յովսէփ և ասէ. եթէ եղիցին հալածմունք և տանջմունք, բարւոք է, հայր, փախչել յանապատ՝ և եթէ 'ի քաղաքս և 'ի գեօղս: Ասէ ցնա ծերն. ուր և լինիցես եթէ իցեն ուղղափառք, անդ գնասցես մերձ առ նոսա, և մի ունիցիս բնաւ սէր երիտասարդական 'ի սրտի քո, և մի նստիցիս մերձ 'ի

նմա և ոչ բնաւ, այլ ատեա և փախիր 'ի նմանէ իբրև 'ի չար գազանէ. և եթէ կարասցես հանդարտել 'ի սենեկի քո, և այն բարւոք է. և գործեա դու զձանձար քո, զի մի հարկեսցիս գնալ առ այլ ոք խնդրել զնա 'ի նմանէ ։ Ասէ ցնա եղբայրն. կամիմ նստել 'ի մէջ ժողովից եղբարցն և միանձնանալ 'ի խցին իմում, և տաց զձեռագործս իմ և առից 'ի նոցանէ զպէտս իմ։ Ասէ ցնա ծերն. հարքն մեր ոչ կամեցան զայդպիսի գործ և ոչ ետուն թոյլ. զի թէ արասցես, ոչ ումեք տացես զհաց քո, զի ոչ թողու զքեզ սատանայ ։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Իերաքս և ասէ. ասա ինձ բան, հայր, զի կեցցեմ նովաւ ։ Եւ ասէ ցնա ծերն. նիստ 'ի խցին քում և ողբա զմեղս քո և մի դատեսցես զոք. և եթէ քաղցիցես կերիցես, և եթէ ծարաւեսցիս արբցես, և մի խորհեսցիս չար զումեքէ և կեցցես ։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Ամոնաս և ասէ. ասա ինձ բան խրատու, հայր ։ Ասէ ցնա ծերն. յորժամ գնաց Եղիսէ առ սոմնացին այն և գտաւ զնա զի ոչ առ ոք ունէր բան ինչ կամ գործ, և յղացաւ և ծնաւ 'ի գալն առ նա Եղիսէի ։ Ասէ ցնա եղբայրն. զինչ է զօրութիւն բանիդ, հայր ։ Ասէ ցնա ծերն. անձն յորժամ արթուն և զգաստ իցէ և ժողովէ զինքն 'ի շփոթմանց բազմաց և յետս ձգեսցէ զկամս իւր, յայնժամ գայ հոգի ա̃յ 'ի վերայ նորա, և յայնժամ կարէ ծնանել զառաքինութիւս, քանզի ամուլ է ։ Ասէ եղբայրն ցԱմոնաս. զինչ արարից մոռացմանս՝ որ միշտ գերէ զխորհուրդս իմ և ոչ թողու իմանալ մինչև ձգեսցէ 'ի մեղս ։ Ասէ ցնա ծերն. յորժամ տարան զտապանակ ուխտին այլազգիքն վասն չար գործոց որդւոցն Իսրայէլի և քարշէին զնա մինչև տարան զնա 'ի տուն Դագոնի չաստուածոյն իւրեանց, և յայնժամ անկան նոքա 'ի վերայ երեսաց իւրեանց ։ Ասէ ցնա եղբայրն. զինչ իցէ սա ։ Ասէ ցնա ծերն. յորժամ յառաջեն դևք և գերեն զմիտս մարդոյն առ պատճառն իւրեանց, այնչափ քարշեսցեն զնա մինչև ձգեսցեն զնա 'ի վերայ գլխոյ չարաչար մեղացն ։ Իսկ 'ի նմին ժամու և 'ի տեղւոջ մեղացն մինչ զղջացին միտք և դարձցին խնդրել զա̃ծ և յիշեսցէ զատաստանն յաւիտենից, յանկարծակի խորտակեսցին ախտքն այնոքիկ և աներևոյթ լինին. քանզի գրեալ է՝ եթէ

յորժամ դարձցիս և հառաչեսցես, առժամայն կեցցես և ծանիցես թէ ուր իցես։ Ասաց դարձեալ հայրն Պյո-նոս. եթէ ոչ էր հանեալ Մովսէս զոչխարսն 'ի լեառն Սինեա, ոչ էր տեսեալ զհուրն և զմորենին վառեալ։ Ասէ եղբայրն. և զինչ դուշակի մորենին, ով հայր։ Ասէ ծերունին. մորենին նշանակէ զօրինակ մարմնական գործոց. զի գրեալ է՝ նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ յագարակի։ Ասէ եղբայրն ցծերն. որպէս և նման է՝ առանց մարմնաւոր աշխատութեանց ոչ կարէ մարդ առնուլ զպատիւ յա̃յ։ Ասէ ծերն. քանզի գրեալ է՝ նայեցարուք յառաջնորդս հաւատոյ մերոյ և 'ի կատարիչն Յի̃ս, որ վասն հանդերձեալ փառացն համբերեաց խաչի. և Դաւիթ ասէ՝ եթէ ոչ տաց քուն աչաց իմոց և ոչ նինջ արտևանաց իմոց։

ԱՍԱՑ հայրն Մակարի. մի՛ ննջեսցես 'ի սենեակ կրօնաւորի զորոյ անունն վատթար լուեալ իցէ։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Մակարի վասն մեծի կատարելութեան։ Ասէ ցնա ծերն. եթէ ոչ ստասցի մարդ զխոնարհութիւն մեծ՝ մտօք և մարմնով, և յամենայն գործս ոչ ինչ համարեսցի զանձն իւր և ունիցի զինքն վատթար քան զամենայն մարդ գոլ, և ոչ զմի ոք դատեսցէ բնաւ, այլ միայն զգործ իւր քննեսցէ և դատեսցէ, և համբերեսցէ ամենայն ամօթոյ և պատկառանաց, և յետոյ ձգեսցէ յիւրմէ զամենայն չար, և որպէս զի նեղեսցէ զանձն իւր 'ի սակս երկայնմտութեան և քաղցրութեան և եղբայրսիրութեան, և զի եղիցի նա սուրբ և պահեցող, զի գրեալ է՝ բանադատողացն է արքայութիւն ա̃յ, և բռունք յափշտակեն զնա, և զի եղիցի ուղիղ հայելով աչօք և զգաստախօս լեզուաւ, և զի յետոյ փախիցի նա յամենայն ունայն լտղութեանց, և զի ունիցի արդարութիւն 'ի ձեռս իւր և սրբութիւն 'ի սրտի իւրում առաջի ա̃յ և ամբծութիւն 'ի մարմին իւր և յիշատակ մահուն առաջի աչաց գոլով միշտ, և զի մերժեսցի յամենայն բարկութեանց և 'ի խստութենէ հոգւոյ և մարմնոյ, և հրաժարեսցէ յամենայն մարմնական նիւթոց և 'ի հեշտութեանց նորա, և փախիցէ 'ի սատանայէ և յամենայն գործոց նորա, և զի հաստատուն հաւատասցէ յամենեցուն ա̃ծն և զամենայն պատուիրանս նորա կատարեսցէ, և զի անդադար աղօթեսցէ, և յամե-

նոյն ժամ և յամենայն գործս և 'ի մտածութիւնս իւր բևեռեալ ընդ ա՟յ իցէ, որ զայս ամենայն ոչ արասցէ՝ ոչ կարող է նա կատարեալ լինել:

ԱՍԱՑ հայրն Մարկոս. ազատութիւն ուսուցանէ ամենայն մարդոյ զճշմարտութիւն, և բազումք են որ ընթեռնուն զնա և սակաւք են որ ծանիցեն զնա. զի ըստ գործելոյ զպատուիրանսն տացի նոցա և գիտութի: Մի խնդրեր զկատարումն նոցա 'ի մարդկային առաքինութի, զի ոչ գտանի 'ի նոսա կատարեալ գոլ, քանզի և կատարելութի նորա ընդ խաչիւն Ք՟նի ծածկեալ կայ:

ԱՍԱՑ դարձեալ. ոչ ոք կարէ ստանալ զՔ՟ս, բայց միայն ջանիւք և քրտամբք, խոնարհութբ և միշտ աղօթիւք:

ԱՍԱՑ հայրն Մատոյէ՝ եթէ երեք եղբարք գնացին առ հայրն Պափնուտիէ, որ կոչէր Կեփաղա, զի հարցցեն զնա բան շահու: Ասէ ցնոսա ծերն. զինչ կամիք լինել զի ասացից ձեզ, բան հոգևո՞ր թէ մարմնաւոր: Ասեն ցնա՝ հոգևոր: Ասէ ցնոսա ծերն. գնացէք սիրեցէք զվիշտս առաւել քան զհանգիստ և զարհամարհանս լաւ քան զփառս և սիրեցէք զտալ լաւ քան զառնուլ:

ԱՍԱՑ հայրն Պիմէն. պահպանութիւն պատուիրանացն և զգուշանալ անձին և դատել զգործս իւր՝ երեքին սոքա առաքինութիք վարդապետք են հոգւոց:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. ո՞րպէս արժան է մարդոյ քաղաքավարիլ: Ասէ ցնա ծերն. տեսանեմք զԴանիէլ զի ոչ ոք եգիտ մատնութի զնմանէ ինչ, այլ միայն պաշտել զա՟ծ:

ՊԻԱՐՁԵԱՅ ասէ. եթէ երկուց գործոց յաղթեսցէ կրօնաւոր, կարող լինիցի ազատել յերկրէ: Ասէ ցնա եղբայրն. տուր մեզ զբանն: Ասէ ծերն. որքան կարող իցես ջանա 'ի ձեռագործի զի արասցես ողորմութի, զի գրեալ է՝ թէ ողորմութբ և հաւատով սրբին մեղք: Ասէ ցնա եղբայրն. և զինչ է հաւատ: Ասէ ծերն. հաւատ է խոնարհութբ կալ և առնել ողորմութիւն:

ԱՍԱՑ դարձեալ. յորոյ գործոյ վերայ սիրտ քո ոչ հաստատեալ իցէ, մի թողցես ընաւ զգործն զայն 'ի սիրտ քո:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. զինչ արարից, հայր, անօգուտ եղբարցս որ ընդ իս են: Ասէ ցնա ծերն. մի թէ գուցէ մարդ 'ի վերայ երկրի որ խաւսցէ զկեանս շունչ մահուն և խնդրեսցէ քննել զըն-

կերս աշխարհիս. մի՛ մերձենար և մի՛ հպիր 'ի նոսա, և ինքեանք անձամբ իւրեանց հեռասցին 'ի քէն։

ԱԲԲԱՅ դարձեալ. եթէ ոք կամեսցի շինել տուն, յառաջագոյն ժողովեսցէ զամենայն նիւթս նորա և ապա սկսանիցի շինել. իսկ որ ոչ ժողովեսցէ, ոչ կարէ շինել մինչ սկսցի. այսպէս և մեք ժողովեսցուք զամենայն առաքինութիւնս, զի կրօնաւորք լիցուք։

ԴԱՐՁԵԱԼ ասէ. Դաւիթ գրեաց առ Յովաբ՝ եթէ զգուշացիր 'ի պատերազմի և յաղթեա քաղաքին այդմիկ և աւերեսցես զդա։ Նոյն դարձեալ՝ ասէ Յովաբ ընդ զօրսն Իսրայէլի. արիացիք և եղերուք որդիք զօրութեան և պատերազմեցարուք ընդ այլազգիսն յաղագս ժողովրդեան մերոյ, որ եմք մեք։

ԱԲԲԱՅ դարձեալ. եթէ տեսիլ տեսցես և կամ լսիցես լուր ինչ, մի պատմեսցես զայն ընկերին քո, զի յետսդարձումն պատերազմի իցէ։

ԱԲԲԱՅ դարձեալ. նախ փախիցես մի անգամ և երկիցս, իսկ յերրորդումն եղիցիս սուր սրեալ։

ԴԱՐՁԵԱԼ ասաց Պիմէն ցհայրն Իսահակ. թեթեւացո զկողմն արդարութեան քո, և գտցես հանգիստ 'ի սակաւ աւուրս։

ԵՂԲԱՅՐ ոմն երթայր 'ի վաճառ և եհարց ցհայրն Պիմէն և ասէ. զի՞նչ կամիս զի արարից 'ի վաճառս։ Ասէ ցնա ծերն. լեր սիրելի նորա որ բռնադատէ զանձն քո, և հանգստեամբ վաճառեսցես զձեռագործ քո։

ԱԲԲԱՅ դարձեալ. մարդոյ որ ոչ հաւատասցես թէ սուրբ է, մի հաւատար զխորհուրդս քո։

ԴԱՐՁԵԱԼ ասէ. այսպիսի օրէնս եդ ա՟ծ Իսրայէլի կանխաւ, զի արգելցին 'ի գործոց որ արտաքոյ է բնութեան, որք են բարկութիւն սրտմտութիւն նախանձ ատելութիւն դատել զեղբայրն և այլ այսպիսիք։

ԵԿՆ երբեմն իշխան ոմն առ հայրն Պաղատի, քանզի կամէր տեսանել զնա վասն բարեհամբաւութեան որ ելանէր զնմանէ, եբեր ընդ ինքեան և դպիր արադագիր և ասէ ցնա. ես մտանեմ 'ի տուն հօրն, և դու նիստ առ դրանն և գրեա հաստատուն զամենայն բանս որ ելանէ 'ի բերանոյ նորա։ Եմուտ Իշխանն առ Պաղատի 'ի տունն և ասէ ցնա. օրհնեա, հայր, և աղօթեա վասն իմ զի բազմամեղ եմ։ Ասէ ցնա ծերն. անմեղ միայն

ած է Յս Քս։ Ասէ ցնա իշխանն. ստուգիւ, հայր, եթէ
ընդ ամենայն մեղաց դատելոց եմք։ Ասէ ցնա ծերն.
գրեալ է եթէ դու հատուսցես իւրաքանչիւր ըստ գործս
իւր։ Ասէ ցնա իշխանն. մեկնեա ինձ զբանդ զայդ։ Ասէ
ցնա ծերն. ինքն բանն պարզ և մեկն է, այլ դու լուի-
ցես խոնարհաբար. վշտացուցեր զեղբայր քո, մնասցես
զփոխարէնն առնուլ յայ. զրկեցեր զվատթարն և զաղ-
քատն խեղդեցեր, բերան անիրաւ բացեր 'ի դատաս-
տանի, ամաչեցուցեր զտնանկն, ոչ դատեցեր ուղիղ և
ոչ քննեցեր, սուտ վկայեցեր, աչառեցեր հարուստին,
ատեցեր զիրաւն, 'ի վերայ օտարի ամուսնոյ մտեր, եր-
դուար սուտ, զսահմանս հարանց շարժեցեր, զորբոց
զինչս և զսահման խլեցեր, զայրիսն նեղեցեր, զփափ-
կութիւն և զհամս աստիս քան զյաւիտենականն լաւ հա-
մարեցար. այսոցիկ և նմանեաց սոցին, մնասցես առնուլ
զփոխարէն հատուցումն. զի զոր սերմանեսցես, զնոյն և
հնձեսցես։ Այնպէս և եթէ բարի ինչ արարեալ իցես,
և նորին ակն կալցես հարիւրապատիկ առնուլ զվարձս.
զի ասէ՝ դու հատուցանես իւրաքանչիւր զգործ իւր։ Ե-
թէ զայսոսիկ յիշեսցես միշտ 'ի միտս զամենայն աւուրս
կենաց քոց, կարասցես փախչել 'ի բազում մեղաց քոց։
Ասէ ցնա իշխանն. և զինչ պարտ է առնել, հայր։ Ասէ
ցնա ծերն. 'ի միտ առցես միշտ զյաւիտենական բարիսն
զանհատան և զանփոխադրելիսն, ուր ոչ իցէ գիշեր և
ոչ խաւար մեղաց, ուր ոչ գոն ուտել և ըմպել և ննջել
և քուն դրացի մահու, ուր ոչ են կերակուրք և ոչ ծա-
ռայք տկարութեան բնութեանս, ուր ոչ են ախտք և ցաւք
և խայթմունք և ոչ բժիշկ և կամ դեղք հիւանդութեանց,
ուր ոչ գոն դատաւորք և դատք, ոչ ատեանք և ոչ ժո-
ղովք հրապարակաց և ոչ ընչիւք այն չար իշխանութիւն
և սկիզբն պատերազմաց և արմատ թշնամութեանց։ Այլ
երկիր իցէ կենդանեաց և բնակութիւն արդարոց, տեղիք
պատուելոցն այ. ուր ոչ իցէ մեղացն դառն մահն, այլ
ամենայն կենդանեաց և փրկելոց և ճշմարիտ կեանս՝ որ
'ի Քս Յս 'ի տէր մեր։ Ի վերայ այսր ամենայնի հա-
ռաչեաց իշխանն և ասէ. ճշմարտապէս այս այնպէս է
որպէս ասացեր, հայր։ Եւ շահեցաւ յոյժ և շինեցաւ
և գնաց ուրախութեամբ 'ի տուն իւր և գոհանայր զայ։

ՊԱՏՄԷԻՆ մեզ վասն հօրն Պամբոյի՝ եթէ յորժամ

փոխադրելոց էր ; 'ի ժամու ելանելոյ հոգւոյն ասէր ցայ նոսիկ որք շուրջ զնովաւն էին՝ եթէ յօրէն յայնմանէ յորմէ եկի յանապատս յայս և շինեցի սենեակ և բնակեցայ 'ի նմա , ոչ յիշեմ եթէ կերայ ես հաց առանց ձեռագործի իմոյ , և ոչ 'ի վերայ բանից իմոց ապաշխարեցի . և արդ այսպէս գնամ առաջի այ , որպէս թէ բնաւ ոչ սկսայ կրօնաւորութն : Իսկ զայս գործ առնէր առաւել քան զամենեսեան . եթէ ոք հարցանէր ցնա բան ինչ 'ի գրոց կամ խրատու , ոչ վաղվաղակի առնէր պատասխանի , այլ ասէր՝ ոչ գիտեմ զբանդ զայդ . և անցանէր 'ի վերայ ամիս մի կամ առաւել ևս , և ապա պատասխանի առնէր :

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Պամբոյ և ասէ . ընդէ՞ր խափանեն դևքն զիս , հայր , 'ի բարի առնելոյ ընկերին : Ասէ ցնա ծերն . մի՛ ասասցես զայդ , եթէ ոչ՝ սուտ առնես զած . այլ ևս առաւել ասասցես՝ եթէ ոչ կամիմ ես բարի առնել ընկերին և ոչ առնել ողորմութի . քանզի նախ ժամանեաց ած և ասաց՝ ահա ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս և զկարիճս և զամենայն զօրութիւնս թշնամւոյն :

ԱՍԱՑ հայրն Սիսոյի . լե՛ր դու արհամարհեալ , և ընդկամս քո յետս ձգեսցես 'ի քէն , և լե՛ր անհոգ յամենայնի և ունիցիս հանգիստ :

ՅՈՎՀՆՆ ասէ . են ումանք որք ծուլութեամբ և հեղգութեամբ անցուցանեն զաւուրս իւրեանց , և բանիւք և մտօք խնդրեն կեալ , իսկ գործովք ոչ առնուն յանձն . և զկեանս և զբանս սրբոց հարցն ընթեռնուն , իսկ զխոնարհութի նոցա և զանընչութի , զաղօթս և զտքնութի , զպահս և զհանդարտութի , զգետնախշտութի և զծնրադրութի և զայլ ճգնութիւնս ոչ նմանեն . այլ հպարտութեամբ իւրեանց սուտ ասեն զգրեալ և լեալ զվարս նոցին , և ասեն՝ անկարելի է ումեք այսպէս կեալ և համբերել . և ոչ կարեն իմանալ զայս՝ եթէ ուր ած բնակէ շնորհօք մկրտութե և պատուիրանաց իւրոց կատարելութեամբն , անդ ամենայն գործք և ամենայն շնորհք 'ի վեր քան զբնութիւնս կատարեսցին դիւրաւ :

ԱՍԷԻՆ վասն հօրն Պախոմէի՝ եթէ մինչ հանդերձեալ էր փոխադրիլ , ասէր ցորդիսն իւր եթէ մի՛ բնակեսջիք ընդ առն հերձուածողի և մի՛ ծանօթանայք իշ-

ած է Յիսուս Քրիստոս։ Ասէ ցնա իշխանն. սուտ գիտես, հայր, եթէ ընդ ամենայն մեղաց դատելոց եմք։ Ասէ ցնա ծերն. գրեալ է եթէ դու հատուսցես իւրաքանչիւր ըստ գործս իւր։ Ասէ ցնա իշխանն. մեկնեա ինձ զբանդ զայդ։ Ասէ ցնա ծերն. ինքն բանն պարզ և մեկն է, այլ դու լուիցես խոհեմաբար. վշտացուցեր զեղբայր քո, մնասցես զփոխարէնն առնուլ յայնմ. զրկեցեր զվաստակս և զաղքատն խեղդեցեր, բերան անիրաւ բացեր 'ի դատաստանի, ամաչեցուցեր զտնանկն, ոչ դատեցեր ուղիղ և ոչ քննեցեր, սուտ վկայեցեր, աչառեցեր հարուստն, առեցեր զիրաւն, 'ի վերայ օտարի ամուսնոյ մտեր, երդուար սուտ, զսահմանս հարանց շարժեցեր, զորբոյ զինչս և զսահման խլեցեր, զայրիսն նեղեցեր, զփափկութիւն և զհաճոյս առաւել քան զյաւիտենականն լաւ համարեցար. այսոցիկ և նմանեաց սոցին, մնասցես առնուլ զփոխարէն հատուցումն. զի զոր սերմանեսցես, զնոյն և հնձեսցես։ Այնպէս և եթէ բարի ինչ արարեալ իցես, և նորին ակն կալցես հարիւրապատիկ առնուլ զվարձս. զի ասէ՝ դու հատուցանես իւրաքանչիւր զգործ իւր։ Եթէ զայսոսիկ յիշեսցես միշտ 'ի միտս զամենայն աւուրս կենաց քոց, կարասցես փախչել 'ի բազում մեղաց քոց։ Ասէ ցնա իշխանն. և զինչ պարտ է առնել, հայր։ Ասէ ցնա ծերն. 'ի միտ առցես միշտ զյաւիտենական բարիսն զանհատսն և զանփոխադրելիսն, ուր ոչ իցէ գիշեր և ոչ խաւար մեղաց, ուր ոչ գոն ուտել և ըմպել և ննջել և քուն դրացի մահու, ուր ոչ են կերակուրք և ոչ ծառայք տկարութեան բնութեանս, ուր ոչ են ախտք և ցաւք և խոցմունք և ոչ բժիշկ և կամ դեղք հիւանդութեանց, ուր ոչ գոն դատաւորք և դատք, ոչ ատեանք և ոչ ժողովք հրապարակաց և ոչ ընչիւք այն չար իշխանութիւն և սկիզբն պատերազմաց և արմատ թշնամութեանց։ Այլ երկիր իցէ կենդանեաց և բնակութիւ արդարոց, տեղիք պատուելոցն այ. ուր ոչ իցէ մեղացն դառն մահն, այլ ամենայն կենդանեաց և փրկելոց և ճշմարիտ կեանս՝ որ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր։ Ի վերայ այսր ամենայնի հաւանեցաւ իշխանն և ասէ. ճշմարտապէս այս այնպէս է որպէս ասացեր, հայր։ Եւ շահեցաւ յոյժ և շինեցաւ և գնաց ուրախութեամբ 'ի տուն իւր և գոհանայր զայ։

ՊԱՏՄԷԻՆ մեզ վասն հօրն Պամբոյի՝ եթէ յորժամ

փոխադրելոց էր, 'ի ժամու ելանելոյ հոգւոյն տայր ցայ նաւիկ որք շուրջ զնովաւն էին՝ եթէ յօրէն յայնմանէ յորմէ եկի յանապատս յայս և շինեցի սենեակ և բնակեցայ 'ի նմա, ոչ յիշեմ եթէ կերայ ես հաց առանց ձեռագործի իմոյ, և ոչ 'ի վերայ բանից իմոց ապաշխարեցի. և արդ այսպէս գնամ առաջի այ, որպէս թէ բնաւ ոչ սկսայ կրօնաւորութի: Իսկ զայս գործ առնէր առաւել քան զամենեսեան. եթէ ոք հարցանէր զնա բան ինչ 'ի գրոց կամ խրատու, ոչ վաղվաղակի առնէր պատասխանի, այլ ասէր՝ ոչ գիտեմ զբանդ զայդ. և անցանէր 'ի վերայ ամիս մի կամ առաւել ևս, և ապա պատասխանի առնէր:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Պամբոյ և ասէ. ընդէր խափանեն դևքն զիս, հայր, 'ի բարի առնելոյ ընկերին: Ասէ ցնա ծերն. մի ասասցես զայդ, եթէ ոչ՝ սուտ առնես զած. այլ ևս առաւել ասասցես՝ եթէ ոչ կամիմ ես բարի առնել ընկերին և ոչ առնել ողորմութի. քանզի նախ ժամանեաց ած և ասաց՝ ահա ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս և զկարիճս և զամենայն զօրութիւնս թշնամւոյն:

ԱՍԱՑ հայրն Սիսոյի. լեր դու արհամարհեալ, և ըղկամս քո յետս ձգեսցես 'ի քէն, և լեր անհոգ յամենայնի և ունիցիս հանգիստ:

ՅՈՑՆՆ ասէ. են ոմանք որք ծուլութբ և հեղգութբ անցուցանեն զաւուրս իւրեանց, և բանիւք և մտօք խընդրեն կեալ, իսկ գործովք ոչ առնուն յանձն. և զկեանս և զբանս սրբոց հարցն ընթեռնուն, իսկ զխոնարհութի նոցա և զանընչութի, զաղօթս և զտքնութի, զպահս և զհանդարտութի, զպետանախշտութի և զծնրադրութի և զայլ ճգնութիւնս ոչ նմանեն. այլ հպարտութբ իւրեանց սուտ ասեն գրեալ և լեալ զվարս նոցին, և ասեն՝ անհնարելի է ումեք այսպէս կալ և համբերել. և ոչ կարեն իմանալ զայս՝ եթէ ուր ած բնակէ շնորհօք մկըրտութե և պատուիրանաց իւրոց կատարելութբն, անդ ամենայն գործք և ամենայն շնորհք 'ի վեր քան զբնութիւնս կատարեսցին դիւրաւ:

ԱՍԷԻՆ վասն հօրն Պախօմէի՝ եթէ մինչ հանդերձեալ էր փոխադրիլ, ասէր ցորդիսն իւր եթէ մի բնակեսջիք ընդ առն հերձուածողի և մի ծանօթանայք իշ-

խանաց և մի՛ մեկնեսցին ձեռք ձեր 'ի ժողովել ինչս, այլ առաւել մեկնեսցին 'ի ցրուել և 'ի տալ:

ԱՍԱՑ դարձեալ. 'ի բաց խլեսցես զգանձար քո և ցրուեա: Ասէ ցնա եղբայրն. ոչ թոյլ տան ինձ առնել ախտք իմ: Ասէ ցնա ծերն. գրեալ է՝ կարդասցես դու առ իս յաւուր նեղութե քո, ես փրկեցից զքեզ և դու փառաւոր արասցես զիս. կոչեա դու զնա բոլորով սրտիւ, և նա փրկեսցէ զքեզ յամենայն փորձութեց:

ԱՍԱՑ դարձեալ՝ եթէ կնկուղն օրինակ է անմեղութեան և սքեմն օրինակ խաչի, իսկ գօտին արիութե և քաջութե նշան է. արդ մեք քաղաքավարեսցուք ըստ կերպի մերոյ և զամենայն փութապէս գործեսցուք, զի մի՛ գտցուք զօտար կերպ զգեցեալ:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցմի ոմն 'ի հարանցն և ասէ. որպէս եղիցուք յիմար յաղագս այ: Ասէ ցնա ծերն. մանուկ ոմն եկն 'ի մէջ ժողովոց եղբարցն և տուեալ եղև 'ի ձեռս բարւոք ծերոյ զի ուսուսցէ զնա առնել զերկիւղն այ, և ասէր ցնա ծերն. եթէ ոք անարգէ ըզքեզ, որդեակ, օրհնեսցես զնա, և նստեալ 'ի սեղան կերիցես զյոռին և թողցես զլաւն, և թէ իցէ առաջի քո հանդերձ՝ թող զլաւագոյնն և ընտրեա զվատթարն: Ասէ մանուկն ցծերն. մի թէ յիմար իցեմ, հայր, զի ասես ինձ առնել զայդ: Ասէ ցնա ծերն. վասն այսորիկ ասեմ քեզ, որդեակ, առնել զայս, որպէս զի եղիցիս յիմար վասն տեառն և տէր իմաստնացուսցէ զքեզ: Նա արդ յայտնեաց ծերն եթէ որպէս եղիցուք յիմար յաղագս տեառն:

ԱՍԱՑ դարձեալ. կացցուք 'ի վերայ հաստատուն այնմ վիմի, եղբարք. և եթէ բախեսցեն զմեզ հեղեղք գետոց, մի՛ երկիցուք, զի ոչ կարասցեն տանել և կամ ծածկել զմեզ. այլ երգեսցուք հանդարտութբ և ասասցուք՝ որ յուսայն 'ի տէր, որպէս լեառն սիոնի մի՛ սասանեսցի յաւիտեան բնակեալն յԵրուսաղէմ:

ԱՍԱՑ դարձեալ. վասն քո մարդ եղև Քս և եկն յաշխարհ, ով մարդ, զի փրկեսցիս դու. և եղև տղայ, որ էր որդի այ անսկիզբն. եղև երբեմն ընթերցող վասն քո յայնժամ յորժամ ետուն զգիրսն, և նա առեալ 'ի ձեռս և յարեաւ ընթեռնուլ և ասէ՝ հոգի տեառն 'ի վերայ իմ. կիսասարկաւագ եղև վասն քո յայնժամ

մինչ արար խարազան չուանեայ և եհան 'ի տաճարէն զարջառս և զոչխարս. սարկաւագ եղև յայնժամ մինչ զգեցաւ ղենջակ և լուաց զոտս աշակերտացն և պատուիրեաց զի և նոքա լուասցեն զոտս ընկերաց իւրեանց. իսկ քահանայ եղև յորժամ նստէր ընդ վարդապետս, լսէր 'ի նոցանէ և հարցանէր զնոսա. իսկ եպիսկոպոս և քահանայապետ եղև յայնժամ մինչ օրհնեաց զհացն և զբաժակն և՛ բաշխեաց աշակերտացն. աւազակ լեալ վասն քո մինչ ընդ աւազակսն համարեցաւ. զանեցաւ վասն քո, խաչեցաւ մեռաւ խոցեցաւ և թաղեցաւ և զամենայն կրեաց ըստ կարգի. նա զայս ամենայն յանձն էառ վասն մեր, և մեք և ոչ փոքր ինչ նախատինս և ամօթս կրեմք վասն նորա: Զգոյշ լերուք, եղբարք, և արթունս, և գնեսցուք զփրկութիւն անձանց, պատրաստեացուք աղօթից և ամենայն բարեգործութեանց, որպէս զի միշտ զհաճոյսն ա՟յ արասցուք:

ԱՍԱՑ դարձեալ. աղաչեմ զձեզ, եղբարք, որպէս դադարեցէք 'ի գործոց մեղացն, նոյնպէս դադարեսջիք և 'ի չար խորհրդոց նենգութեան:

ԱՍԱՑ դարձեալ. այս է բան գրոցն որ ասէ. 'ի վերայ երկուց և երից մեղացն տիրոնացւոց, իսկ 'ի չորրորդումն ոչ ևս դարձայց յետս: Այսինքն է նախ մտածել զչարն և ապա հաստատել զխորհուրդն և ապա ասել զհաստատեալն, իսկ չորրորդ է կատարել զմեղսն զոր խորհեալն էր. յորմէ ոչ ևս դարձցի բարկութիւն ա՟յ, եթէ ոչ ըստ պատշաճի ջերմանպէս ապաշխարեսցէ[1]:

ԱՍԱՑ դարձեալ. յորժամ գործք զպակասութիւն ունիցի կրօնաւորի, դևք անդ բնակեսցեն և յաւելուն. վասն զի բազմաժամանակեայ սովորութիւն զբնութեն զօրութիւն առնու, և ևս առաւել 'ի վերայ հեղգացունիցն: Զամենայն կերակուր զոր փափկասիրութեամբ ախորժեսցես, մի կերիցես, և ևս առաւել մինչ ողջ իցես մարմնով, այլ զկարևորն միայն: Եւ զամենայն պճնողական հանդերձ մի զգեցցիս. իսկ յորժամ մերկ իցես, զտուեալն

1 Նոյն բանք էն դարձեալ այլուր յեբրայեցւոց թարգմանութենէ. Եւ այս է բանն գրոց որ ասէ՝ եթէ 'ի վերայ երկուց և երից մեղանաց Տիւրոսի, և 'ի չորրորդն ոչ ևս դարձայց յետս: Այսինքն է մտածել զմեղս և հետևել խորհրդով և ասել բերանով. իսկ չորրորդ է գործել զմեղս մարմնով. յորոց վերայ ոչ դարձայց 'ի նոցանէ ցասմամբ, թէ ոչ ապաշխարեսցեն՝ ասէ տէր.

յՔս քեզ գոհանալով զզեցցիս և կերիցես, և յամենայն գործս և 'ի ժամու գոհացիր զՔս: Զկարգ և զձև և զտեսակ կրօնաւորական ունիմք կատարեալ. բայց դեռ ևս կրօնաւոր ոչ եմք. այլ արհասցուք, եղբարք, և քաջասցուք, որպէս զի մի տեսակ օտար զգեցեալ լիցուք, այլ զկնիքն Քի բարձցուք, այսինքն է զխոնարհութիւն նորա. զի պարտ է կրօնաւորի պատերազմել մինչև 'ի մահ ընդ դևն ձանձրութեան և կարճմտութեան, ևս առաւել 'ի ժամու աղօթիցն: Եւ եթէ կամօքն Այ և օգնականութեամբ նորին այսօրիկ յաղթեսցես, զգոյշ լինիցիս յանձնահաճութեան և յամբարտաւանութեան և 'ի սնափառութեան դիւէն, և ասասցես ցխորհուրդ քո. եթէ ոչ տէր շինէ զտուն, 'ի նանիր վաստակին շինողք նորա. և թէ ոչ ինչ իցէ մարդ, բայց հող և մոխիր. յիշեսցես և զայս՝ եթէ տէր ամբարտաւանից հակառակ կայ, և տայ շնորհս խոնարհաց:

ԱՍԱՑ դարձեալ. եթէ ննջեսցես 'ի քուն և կամ թէ յարիցես կամ թէ այլ ինչ արասցես, եթէ զԱծ միշտ ունիցիս առաջի աչաց քոց, և ոչ միով իւիք կարասցէ թշնամին երկեցուցանել զքեզ. և եթէ խորհուրդ քո կացցէ անմեկնելի ընդ Այ, զօրութիւն Այ ճշմարտապէս կացցէ ընդ քեզ. զի պարտ է կրօնաւորի զի մի եղիցի հետաքննին և ոչ խարդաւանող, ոչ մատնող, ոչ չարախօս և ոչ գայթակղեցուցիչ այլոց ումանց:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. ասա ինձ բան որով կարացից կեալ: Ասէ ցնա ծերն. փութացիր հանապազ աշխատել և գործել զբարիս և կեցցես. զի զայս ինչ խնդրէ Ած 'ի մարդկանէ, որպէս զի հաւատասցէ սուրբ գրոց և զգրեալսն 'ի նոսին արասցէ ըստ կարի, և դարձեալ զի հնազանդ լիցի առաջնորդաց և հարանց հոգևորաց:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցնա դարձեալ և ասէ. զի՞նչ արարից, հայր, զի պատերազմին ընդ իս խորհուրդք իմ ելանել շրջել և տեսանել զկրօնաւորս 'ի լերինս: Ասէ ցնա ծերն. եթէ տեսանես զխորհուրդ քո որպէս զի յաղագս նեղութեան և պակասութեան պիտոյից մարմնոյ քո նեղէ հանել զքեզ 'ի սենեկէն քումմէ, արա դու մխիթարութիւն անձին քո 'ի սենեկին քում, և ոչ բռնադատեսցէ զքեզ ելանել 'ի նմանէ. իսկ եթէ 'ի շահ անձին

քո կամիցիս գնալ առ ծերսն, փորձեսցես նախ զխորհուրդ քո և այսպէս ելցես արտաքս ։ Ո՛ւր լաւ ես 'ի ծերոց ումեմնէ եթէ յորժամ ասէր ցնա խորհուրդ իւր ելանել 'ի տեսանել զեղբարսն, յառնէր և առնոյր զմախաղ իւր և ելանէր շուրջ անցանէր մի անգամ զխցաւ իւրով, և ապա մտեալ 'ի ներքս և առնէր մխիթարութիւն օտարաց. այսպէս առնէր երանելին այն, և ոչ մեկնեցաւ 'ի տեղւոջէն ։

ԵՂԲԱՅՐ ոմն փոյթ նստէր և լսէր միշտ զառաքինութիւն սրբոց հարցն և փութայր նմանել նոցա, և կարծէր եթէ առանց մեծի աշխատութեանց և ձգնութեանց կարող էր ուղղել զնոսա . այսպէս և դու տացես զանձն քո զամ մի ողջոյն պատերազմել ընդ միում, որպէս զի մի յաղթեցուցես զորովայն քո . և յորժամ զայս ուղղեսցես օգնականութեամբն այ, դարձեալ աշխատեաց զմիւս ամն մինչև առեսցես իսպառ իբրև զթշնամիս այ զհպարտութն և զամբարտաւանութիւն ։ Եւ յորժամ զերկոսեանս զայսոսիկ քարուք ուսանիս զտունս, յայնժամ ձգնեսցիս 'ի սակս երրորդին և 'ի բաց ձգեսցես 'ի քէն զամենայն նիւթս ընչից կենցաղոյս . և վստահացո յած զանձն քո և հաւատա ստուգապէս, զի եթէ զերեսինս զայսոսիկ ուղղեսցէ մարդ, ուրախութբ ընդ առաջ ելանէ Քնի յորժամ գայցէ փառօք ։

ԵՂԲԱՅՐ ոմն փորձեցաւ, և գնացեալ առ ծեր ոմն և պատմեաց նմա զփորձութիւնն զոր կրեաց ։ Ասէ ցնա ծերն . մի երկեցուսցէ զքեզ փորձութիւնդ այդ որ պատահեաց քեզ . քանզի որքան տեսանեն թշնամիք մեր զհոգի մարդոյ ելանել 'ի վեր և յարել առ ած, դժուարին և տրտմին նախանձու կռուելով ։ Եւ գիտասցես ստուգապէս, եղբայր, զի անհնար է եթէ ոչ անդ իցէ ած և հրեշտակք իւր՝ ուր վասն իւր փորձութիւն իցէ . բայց միայն մի դադարեսցես բազում խոնարհութբ անուանել և կոչել յօգնականութի զբարերարն և զողորմածն զայն ։ Եւ յորժամ դիպեսցի քեզ այսպիսի ինչ, վաղվաղակի յիշեսցես զօգնականին քո զօրութի 'ի տկարութե քո և զթշնամեաց մերոց զչարութի, և ստուգապէս դիպեսցիս օգնականութե 'ի փառացն այ ։

ԱՍԱՑ դարձեալ ծերն . զոր օրինակ 'ի տուն օտար ոչ կարող է կացուցանել զոք այլ ոք եթէ ոչ հարցանի-

ցէ զդուռն տանն, այսպէս և թշնամին եթէ ոչ վնասու-ցանէ յանձն՝ ոչ կարէ վնասել։ Այլ դու աղօթելով ա-սասցես. Տէր, դու գիտես թէ որպէս ստացար զիս. իսկ ես անզգամ և անմիտ անասուն եմ և գիտեմ և ոչ ինչ. դու արկեր զիս ՚ի գունդս յայս ոչխարաց քոց կոչեցե-լոց. դու կեցուսցես զիս որպէս և գիտես, զի ես ծառայ քո եմ, ծառայ և որդի աղախնոյ քո. փրկեա զիս ըստ կամաց քոց, զի օրհնեալ է անուն քո յաւիտեանս։

ՄԻԱՅ ղարձեալ, եթէ ո՞րք զմերս աշխարհականացն հաւատերէ, իսկ յանապատս զմիաբանեանց մերս ոչ հաւա-տերեսցէ։ Տեսէք, ով եղբարք, զի ոչ ըստ աշխարհա-կանաց դատին կրօնաւորք. քանզի որ յաշխարհի կեան՝ պատճառս բազումս ունին, իսկ մեք զինչ պատճառս գիտցուք. Ճշմարտապէս ահագին է հուրն և բազում են տանջանք այնոցիկ որ գիտեն զկամս տեառն և ոչ առ-նեն, այլ զիւրեանց ըստ կամս։ Վասնզի որ փափկու-թեանց և հանոց ունայնութեանց և աշխարհական հեշ-տութեանց և հանգստեան տան զանձինս իւրեանց, պատ-ճառս ստութեան խարդախեն և ասեն՝ եթէ վասն տկա-րութեան մարմնոյ ստանամ զոսկի և զամենայն նիւթս երկրաւորս, որպէս զի հովուեսցի բարւոք զմարմին իմ. և ստուգապէս յայտ է ըստ բանի նոցին եթէ զպիտոյս մարմնոյ միայն հոգան։ Այլ քանզի ոչ է պարտ կրօնա-ւորի բազմութեան ընչից և ոչ խոհարարութեան կերակրոց, այլ միայն զկարևոր պէտս մարմնոյն, և զի զդիւրաբարձն ստասցի, այսինքն զհարկաւորն։ Նա արդ ո՞ւր են նոքա որք այնչափ ինչս ժողովեցին և դեռ ևս խնդրեն, և որ-քան զայս կերակուրս ուտեն՝ և ևս այլոց բազմահա-մոցն ցանկան։

ԴԱՐՁԵԱԼ ասաց. եթէ աշխատեսցիս՝ մի՛ առցես զոր այլք բերեն քեզ, և եթէ առցես զայլոցն՝ մի՛ աշխատիր զի մի՛ ՚ի չփոթս արկցես զքեզ. և թէ ախորժելի է այն որ բերեն քեզ ինչք՝ և առեր և ցնծացեր, և ոչ գիտա-ցեր թէ քանի պատճառք և քանի ախտս բարդեցեր քեզ. քանզի սակս այսորիկ բերին եթէ կրօնաւոր է, և դու ոչ ես, այլ չար քան զաշխարհականքն ես և զա-տապարտեսցիս։ Վասնզի բազումք յաշխարհականաց սրբութ̃բ և պարկեշտութ̃բ կեան, և ոչ յումեքէ առ-նուն թիւրս, և ողորմութիւնս բազումս առնեն. իսկ դու

զգլխա մեղաց առնուս յամենեցուն, և մնաս և մարմնով պիղծ ես, և ոչ եղբօր քո ողորմիս կամ հօր, այլ որկրամոլիս պճնիս և փափկանաս. և արարեր զտուն իմ տուն վաճառաց, և թէ մարթելի է ասել՝ տուն պղծութե̄ն և սպանողանոց և կրպակս. քանզի հարկ է զիւրաքանչիւրն ասել յանուանէ զգործս ունայնութե̄ն, իբր զի ուսցուք զնոցին նենգութի̄ն և փախիցուք 'ի նոցանէ և կեցցուք: Քանզի կարծեն ոմանք 'ի մէնջ եղբարք՝ թէ մինչ զգենումք զսեաւակս զայս, կամ թէ ասեմք միայն եթէ տէր տէր, կամ թէ անուանիմք կրօնաւոր, յայնժամ եղիցի կատարելութի̄ն ուխտի մերում: Արդարեւ ասեմ ձեզ, եղբարք, եթէ ոչ բնաւ ամենեւիմբ զգուշասցուք անձանց, չար քան զյանցաւոր աշխարհիկ և քան զանօրէնս դատապարտիմք և անկանիմք 'ի տանջանս յաւիտենից և 'ի խորխորատս դժուարինս, ուստի ոչ կարասցուք կարդալ առ տէր ա̄ծ մեր, յորմէ երկնչել պարտ է բազում խոնարհութե̄: Քանզի բազումք յեղբարց մերոց նմանեն իբր թէ խոնարհ են և կրօնաւորաբար կեան, այլ զկամս իւրեանց խնդրեն կատարել և կամացն ա̄յ ոչ հնազանդին. զի ըստ կամաց իւրեանց գնան և ընդունայն շփոթիւք խարբալին և կորուսանեն զանձինս իւրեանց զոր առին յա̄յ զկարգ 'ի սակս ապաշխարութե̄ն, զոր փոքր մի յետոյ խնդրեսցեն արտասուօք և ոչ գտցեն:

ԱՍԱՑ դարձեալ. ամենայն զգուշութե̄. փութա զի մի մեղիցես, զի մի զանակեալն յանձն քո զա̄ծ անարգեսցես և վարեսցես յոգւոյ քումմէ:

ԱՍԱՑ դարձեալ. հսկեսցուք, ով եղբարք, և արթունս լիցուք և պարապեսցուք աղօթից, որպէս զի կեցցուք. գործեսցուք զբարիս, զի հաճոյ լիցուք ա̄յ. նմանեսցուք զինուորի որ վառի 'ի պատերազմի, որ ոչ այլ ինչ հոգայ քան զկեանս իւր. նոյնպէս և որսորդ հոգայ զորս միայն. որոց նմանողք լիցուք: Զի որ զբանսն ա̄յ պահէ, նա յա̄ծ բնակի. քանզի գրեալ է՝ բնակեցայց 'ի նոսա և եղէց նոցա ա̄ծ և նոքա եղիցին ժողովուրդ իմ:

ԱՍԱՑ դարձեալ. մի վարդապետել յառաջ քան ըզժամանակն իւր. ապա թէ ոչ՝ յամենայն աւուրս կենաց քոց պակասեսցիս 'ի գիտութե̄:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ծերոյն և ասէ. ասա ինձ, հայր, զինչ բարի գործեցից զի արարից զկամս ա̄յ: Ասէ ցնա

ծերն. որդեակ, եթէ կամիս առնել զկամս ա̃յ, հրաժարեա յամենայն անխրատութենէ և յագահութենէ, յարծաթսիրութենէ և յամենայն գործոց չարեաց. մի հատուցաներ չար փոխանակ չարի և մի անարգեր զանարգիչն քո. մի ապտակեր զապտակողսն քո և մի անէծս ընդ անիծողսն. այլ յիշեսցես զտեառն ասացեալսն՝ թողէք, առէք, և թողցի ձեզ. ողորմեսջիք և ողորմութիւն գտջիք։ Նաև զայս գիտասջիք հաստատուն, որպէս զի աչք տեառն բիւրապատիկ լուսաւոր է քան զարեգակն, և տեսանեն զամենայն ոգիս մարդկան, և ոչ ինչ թաքչել կարող իցէ 'ի նմանէ, ոչ միտք և ոչ խորհուրդք և ոչ ինչ 'ի ծածկելոցն 'ի սրտի։ Նաև ստուգապէս պարտ է մեզ կալ առաջի աթոռոյն ա̃յ, և տացուք իւրաքանչիւր զգործս իւր. վասն այսորիկ պարտական ես, որդեակ, ծառայել նմա ահիւ և դողութ̃ և բազում զգուշութ̃, որպէս ինքն տէրն և առաքեալքն իւր ուսուցին մեզ զի զգաստք եղիցուք և արթուն յաղօթս և քաջք և ախոյեանք 'ի պահս, և զի ահիւ և դողութ̃ աղաչեսցուք յամենայն ժամ զամենատեսն ա̃ծ ոչ տալ զմեզ 'ի փորձութիւն։ Վասնզի նա ասաց. եթէ ոք կամեսցի ուսուցանել զայլս՝ նախ զկեանս իւր հոգասցէ, զի ինքն կթեսցէ կանխաւ զպտուղ վարդապետութեան իւրոյ. զի որ զանձն իւր ոչ ուղղեսցէ նախ, ո՞րպէս կարասցէ նա զայլս ուղղել. և որ ինքն արծաթսիրութ̃ ըմբռնեալ իցէ և յագահութեան դիւէն խեղդեսցի միշտ, ո՞րպէս կարասցէ ուսուցանել զայլ ոք ողորմած լինել. և որ ոք գնելոյ և վաճառելոյ և տալոյ և առնլոյ պարապեալ իցէ, և ամենայն կենցաղոյս հոգոց, և ունայնութ̃ ծախեալ զաւուրս իւր, ո՞րպէս կարիցէ ուսուցանել այլոց զյաւիտենական բարիսն։ Ո՜վ եթէ ինքն որ վարդապետն է՝ եթող և 'ի բաց ձգեաց զերկնաւորն զայն գործ և 'ի կենցաղոյս և յանցանելիս մաշեաց զանձն իւր, յայտ է զի ամենայն աշակերտեալքն և հետևեալքն նորա ոչ բանից և ուսմանցն նորա՝ այլ գործոցն նորա հետևեսցին. և ևս առաւել ուսանին նոքա 'ի նմանէ մոռանալ և անտես առնել զյաւիտենականն և զամենայն հոգս իւրեանց ծախել 'ի խափանելի երկրաւորս։ Նաև ընդ այնպիսի ուսուցիչսն ասէ ա̃ծ. դու ընդէ՞ր բնաւ պատմես զարդարութիւն իմ կամ առնուս զուխտ իմ 'ի բերան քո. զի դու ատեցեր զխրատ իմ,

մերժեսցեր և յետս ընկեսցեր զամենայն բանս բերանոյ իմոյ։ Եւ դարձեալ ասէ. վայ այնոցիկ վասն որոյ անուն իմ հայհոյեսցի։ Բարի է ուսուցանել և յոյժ բարի. այլ յայնժամ բարի իցէ յորժամ նախ ինքն առնիցէ զոր ինչ այլոց ուսուցանէ, և բան իւր հաստատեսցի 'ի գործոյն և լռութ̃բ ծանիցի իւր առաքինութիւն. քանզի երանելի այն ոչ է որ ուսուցանէ, այլ այն որ առնէ և ուսուցանէ։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ծերոն և ասէ. որպէս իցէ, հայր, զի որք յերկրի աշխարհականքն են՝ պահոց հեռի են և յաղօթս ծոյլ և օտարք յամենայն զգուշութենէ. և ևս ամենահամ և բազում կերակրովք լնուն զորովայնս իւրեանց և ըստ ցանկութեանց ախտից իւրեանց գնան. արբենան ամուսնանան շնան պոռնկին գիճանան, և տակս առնելոյ և տալոյ ուտեն զմիմեանս, վաճառեն խաբեն վաշխեն գողանան սպանանեն, և յերդմունս և 'ի սուտ երդմունս և 'ի կռիւս զօրն ողջոյն ծախեն, և ոչ անկանին առաջի ումեք և ոչ ասեն թէ մեղաք, ոչ ապաշխարեն և ոչ 'ի հաղորդութիւն սուրբ խորհրդոյն մերձենին բնաւ։ Եւ կրօնաւորքս պահոց և աղօթից հետևելով, չոր ճաշակելով, գետնախշտելով և խարազն զգենլով և յամենայն հանգստութեանց մարմնականաց մերժելով՝ և դեռ ևս ողբամք և կոծիմք ասելով, թէ կորեաք ելաք յարքայութենէն և պարտական գեհենին արարաք զանձինս։ Եւ ծերն հառաչելով 'ի խորոց սրտէ ասէ ցնա. բարւոք ասացեր, եղբայր, եթէ ոչ անկանին գեղջուկք. վասն զի միանգամայն անկան 'ի դառնագոյն անկումն, և ոչ ևս յառնել կարող են և ոչ գիտեն ուստի կամ ուր անկան. քանզի զինչ հոգացեն դևք ձգել զայնոսիկ որք միշտ անկեալ կան 'ի ստոր, որք ոչ երբէք յարիցեն։ Եւ կրօնաւորք երբեմն յաղթեն և երբեմն յաղթին, երբեմն անկանին և երբեմն յառնեն, նեղին և նեղեն, պատերազմին և պատերազմեալ լինին, այլ յամենայնի 'ի պատերազմելոյ դիւացն ոչ դադարեն. իսկ գեղջուկքն յառաջին մարտին հարան և անկան, և յաղագս առաւել անմտութեանն կան յանկումն յայն, և ոչ կարծել կարասցեն եթէ անկեալ դնին։ Եւ որպէս զի ծանիցես, որդեակ, եթէ մեք որ կարծեմք եթէ կրօնաւորք եմք, թէպէտ եմք, այլ հե֊

ուի ունք 'ի քաղաքավարութեան կրօնաւորաց, և պարտ է մեզ ողբալ միշտ. այլ և մեծամեծ հարքն և ճգնաւորքն և հեռացեալքն և անապատաւորքն և կատարեալքն պարտ է զի լացցեն և ողբասցեն: Իսկ եթէ ընդէ՞ր՝ լուիցես խիստապէս. ասաց նմ՝ եթէ սնոտի 'ի սատանայէ իցէ. և որ հայի 'ի կին մարդ և ցանկայ նմա, կատարեալ շնացող է. և բարկանալ եղբօրն մարդասպանութիւն է. և ընդ դատարկաբանի պատասխանի տալ պարտ է: Արդ ո՞ իցէ այնպիսի ոք կամ ո՞ւր գտցուք այնպիսի մարդ՝ որ հեռացեալ է յամենայն ախտից, և ոչ զփորձ սուութեան կրեաց և ոչ երբէք ցանկութիւն ընդ միտս նորա էանց և ոչ երբէք բարկացաւ եղբօրն 'ի տարապարտուց և ոչ բան դատարկ ել 'ի բերանոյ նորա, որպէս զի մի ունիցի պէտս ապաշխարութեան: Դու զայս գիտասցես. որ ոչ կատարելապէս խաչեացէ զանձն իւր և տացէ զինքն 'ի խոնարհութիւն և յարհամարհանս և դնէ զինքն ամենայն ձաղանաց, իբր զի նախատեսցեն զնա ամենեքեան և կատակեսցեն, և ինքն գոհութեամբ և խոնարհութեամբ համբերեսցէ յաղագս ա̃յ, և զի մի բնաւ ինչ խնդրեսցէ մարդկային, ոչ փառս, ոչ կերակուր, ոչ ըմպելի և ոչ զգեստ, և ապա կարասցէ նա ճշմարիտ կրօնաւոր լինել. այլ դու ջանա գործել զբարիս և մի երկնչիր 'ի տկարութենէ քումմէ:

ԱՍԱՑ դարձեալ ծերն. եթէ հրաժարեցեր յաշխարհէ յաղագս ա̃յ և հեռացար յընտանեաց և յազգէ քումմէ, մի թողցես վասն նոցա զողորմութիւն 'ի սրտէ քո և մի գթասցես յարտասուս մօր քո կամ հօր քո կամ եղբօր կամ քոր քո, և մի յիշեսցես զսէր կնոջ քո 'ի միտս քո և կամ զայլոյ ումեք կնոջ յորժամ նստիցիս 'ի խցին քում, զի զամենայն ինչ 'ի բաց ուրասցիս յաղագս սիրոյն ա̃յ. բայց միայն յիշեսցես միշտ զօր մահուան քո, յորում և ոչ մի ոք 'ի նոցանէ կարող իցէ օգնական լինել քեզ:

ԱՍԱՑ դարձեալ. զոր օրինակ 'ի մարտի փարձեսցի հզօրն, այսպէս և 'ի պատերազմի խորհրդոցն փարձեսցի կրօնաւորն. և պարտ է զի միշտ 'ի յերկինս 'ի վեր ամբարձեալ ունիցի զձեռս 'ի տուէ և 'ի գիշերի, և անտի խնդրեսցէ զա̃յ օգնականութիւնն:

ԱՍԱՑ դարձեալ. մերկ մտանէ ըմբիշն յասպարէզ

մարմին, մերկ օծանի ձիթով և ուսանի 'ի վերակացուէն զմարտն, և գայ պատերազմակիցն իւր ընդդէմն հանդիպել նմա, և աւազել զձեռս՝ ըմբռնէ զնա զի յաղթեսցէ նմա։ Այս դու ծանիցես, միանձն, զի 'ի քեզ նկարէ զառակդ. վերակացուն ամենեցուն Ած է որ տայ մեզ զօրութիւն յաղթութեան, և զի ըմբիշն մեք եմք և դիմամարտքն մեր դևքն են և աւազ է հարստութիւն աշխարհիս. տեսանես դու զհմտութիւն թշնամւոյն, կացցես դու մերկ 'ի մարտի և յաղթեսցես նմա. քանզի որում մինչ ծանրացեալ 'ի նիւթս երկրի, ոչ կարէ կռել յօդի իւր զբանս անձնիւթս կրօնաւորական։

ԱՂԲԱՑՐ ումն եհարց ծերոյն և ասէ ցնա. ընդէ՞ր յորժամ ելանեմ 'ի գործ, ծուլանամ առնել զշահս հոգւոյ իմոյ։ Ասէ ցնա ծերն. վասն զի ոչ կամիս կատարել ըղձանս զրոց որ ասէ, եթէ օրհնեցից զտէր յամենայն ժամ, յամենայն ժամ օրհնութիւն նորա 'ի բերան իմ։ Քանզի եթէ 'ի տան և եթէ արտաքոյ մի երբէք դադարեսցես յօրհնութենէ և 'ի փառաբանութենէ Այ. և մի միայն բանիւ, այլ և մտօք և գործովք փառաւորեա միշտ զտէր քո. զի ոչ կարէ պարագրիլ և արգելուլ Ած ընդ տեղեաւ, այլ յամենայնի է և զամ լնու զօրութեամբ իւրով։

ՊԱՏՄԷՐ մեզ եղբայր ոմն եթէ հարցի ծեր ոմն և ասացի՝ եթէ զինչ արարից 'ի ծուլութենէ իմմէ։ Ասէ ցիս ծերն. եթէ խլեսցես յագարակէ քումմէ զփուշս զայն փուշ որ է ծուլութիւն, մեծամեծ արտորայս լինիցի քեզ։

ԽՕՍԱՑ դարձեալ ծերն. եթէ ումեք ասասցես բանս կենաց խրատու, զզղջութեամբ և արտասուօք և հեղ ձայնիւ ասասցես լռողին. ապա թէ ոչ՝ մի ասասցես, զի մի մեռցիս և անօգուտ լիցիս յորժամ օտարաց բանիւք զայլս բժշկել կամիցիս։

ԽՕՍԱՑ դարձեալ՝ եթէ ուր և երթիցես, զգոյշ կացցես քեզ և յիշեսցես եթէ բոյն բարի զլուխ ձագուց ապաւէնք են նոցա. այսինքն է կրօնաւոր ուր և երթիցէ՝ բնակութիւն է նորա, բայց միայն ջանասցէ կատարել զկանոնս իւր և զժամս իւր զտուընջեան և զգիշերոյ, և մի հեղգասցի յիշել 'ի մտի զբարիս, և յամենեցուն յամենայնի վերջոտ ունիցիս առաջի աչաց քոց. խոկ այս ամենայն առաջնոց մեծի աշխատութեանց ոչ ուղղեսցի։

ԽՕՍԱՑ դարձեալ. լեր դու իբրև զուղտ որ բարձցես

զմեղս քո, և սանձել 'ի քթի հեռաւեսցիս այնորիկ՝ որ գիտէ զճանապարհս ա̃յ և տանիցէ զքեզ:

ԱՍԱՑ դարձեալ. եթէ զփոքունս արհամարհեսցուք, 'ի մեծամեծսն անկանիցիմք: Ի միտ առ զոր ասեմս. ծիծաղեսցի ոք 'ի մէնջ անկարգաբար, իսկ այլ ոք յանդիմանեաց զնա. իսկ նա դարձեալ մերժեաց յիւրմէ զերկիւղ և ասէ՝ և զի՞նչ թէ ծիծաղեցայ. և 'ի սմանէ ծնանի լկտութիւն և 'ի լկտութենէն ծնանին բանք տգեղք և 'ի բանիցն լինին գործք ամօթոյք և անօրէնութիւնք. և այսպէս 'ի փոքունցն յայնցանէ զմեծամեծս 'ի ներքս մուծանեն չար դևքն, և 'ի մեծամեծն մեղաց 'ի վերայ ածեն զյուսահատութիւն: Վասնզի որ մեղիցեն և ապաշխարեսցեն և ուղղին՝ ջնջին յանցանքն այն և կեցցէ մարդն. իսկ որ անյոյսն լինիցի զկնի մեղանացն, նա խոպառ կորիցէ: Ո՛հ մոռանայք և անտես առնէք զյանցանս փոքունս, զի մի 'ի մեծամեծս անկանիցիք. զի նենգութ̃ առնեն ընդ մեզ և զայսոսիկ դևքն. զի թէ յայտնի երևէին պատրանք խաբէութեան նոցին, դիւրաբար պատերազմեալ լինէին և յաղթելի, և ևս առաւել եթէ արթուն և զգաստ լիցուք: Արդ դիւրագոյն իցէ. քանզի ա̃ծ զբեհեալ զօրացոյց զմեզ ընդդէմ ախտիցն, զի մի և զփոքրն ինչ զանց արասցուք: Լուր թէ զինչ ուսուցանէ զմեզ փրկիչն և ասէ. որ ասէ ցեղբայր իւր յիմար, պարտական լիցի գեհեանն հրոյն. և որ ակամբ միայն հայի անառակաբար, շնայ. այսպէս և ծուլացելոցն վայ իցէ, ասէ. և ընդ դատարկ բանի տացեն համարս. վասն այսորիկ արդարն Յոբ զմտածել մեղս որդւոցն բժշկէր՝ ընծայս քաւութ̃ մատուցանելով: Ո՛ այս ամենայն փորձեսցուք, եղբարք, և զգուշասցուք պատերազմաց թշնամւոյն, զի մի երբէք անկցուք 'ի նոսին:

ԱՍԱՑ դարձեալ ծերն. անհնար է մարդոյ մինչ ունիցի զքաղցրութիւն կենցաղոյս՝ եթէ ունիցի զքաղցրութիւն ա̃յ, և դարձեալ եթէ որ ճաշակեսցէ զքաղցրութիւն ա̃յ՝ ատեսցէ նա միանգամայն զկենցաղոյս այսմիկ զախորժելիս: Որպէս յաւետարանին գրեալ է՝ եթէ ոչ ոք կարէ երկուց տերանց ծառայել. այսպէս և մեք մինչ ունիցիմք զմարդկայինս և զաշխարհի սէր և ըղձամք զհանգիստ մարմնոյ, ոչ եւս կարող ճանաչել զքաղցրութիւնն ա̃յ: Իսկ զայս ասեմ յուսով ա̃յ. զի եթէ ոք նստիցի 'ի

սենեկի իւրում և զլռութիւն և զաղօթս ստասցէ և զգու-շասցի և զգործս իւր գործեսցէ անձանձիր յամենայն անձնէ, կարիցէ կեալ:

ԱՍԱՑ դարձեալ. մի՛ ընդեր սեղան յառաջ քան զժամն մինչ միայն իցես, և մի՛ ասասցես բան ինչ նախ քան զհարցանելն, և մինչ հարցեալ լիցիս՝ ասասցես վայե-լուչ և խոնարհութեամբ:

ԱՍԱՑ դարձեալ. ուսանելես եթէ որպէս սատանայ յառաջին հարուածս 'ի վերայ Յոբայ զընչից կորուստն էած. և մինչ ետես զի ոչ մեկնել կարաց զնա յայն, և ապա երկրորդ 'ի մարմինս նորա յարեաց զտանջանս. և ոչ այնու մերժաւ քաջ զինուորն և ճգնաւորն այն, և ոչ յանցեաւ բանիւ բերանոյ իւրոյ, զի ունէր 'ի սրտի իւ-րում ամբարեալ զգանձս շնորհացն այն, և նովաւ զամե-նայն արկածսն դիւրաւ արհամարհեաց:

ԱՍԱՑ դարձեալ. եթէ ոք մտանիցէ 'ի տուն անու-շահոտ խնկեփեցաց, թէպէտ ոչ գնեսցէ, այլ հոտոտես-ցէ զանուշահոտութիւն նորա, այսպէս և որք երթիցեն առ հարս հոգևորս և զգաստս՝ շահեսցին. իսկ եթէ կա-մեսցին գործել՝ ցուցանէ նոցա զճանապարհս փրկութեան և խոնարհութեան, որ եղիցի նոցա պարիսպ ընդդէմ պա-տերազմացն դիւականաց:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցծերն և ասէ. եթէ զամենայն ինչ առնեմ զոր պարտ է առնել 'ի սենեկի խցում, և ոչ գտի մխիթարութիւն յայն: Ասէ ցնա ծերն. յերկուց գործոց դիպեսցին քեզ այդ, մինն զի շրջիցիմք ընդ մար-դոց որք իցեն անգործք և անպիտանք, և երկրորդն զի կամիմք հաստատել զկամս մեր և ոչ զայլում: Ասէ ցնա եղբայրն. և զինչ կամիս զի արարից զայն, հայր: Ասէ ցնա ծերն. գնա միաբանեաց ընդ առն երկիւղածի այն և խոնարհեցո զանձն քո առաջի նորա և տուր զկամս քո 'ի ձեռս նորա, և յայնժամ գտցես յայն մխիթարութիւն:

ԾԵՐ ոմն բնակէր յանապատն 'ի Սկիտէ և գնաց յԱղեքսանդրիա երբեմն վաճառել զձեռագործս իւր, և ետես անդ երիտասարդ կրօնաւոր մի զի եմուտ 'ի կապ-ելայն. և զարմացեալ ծերոյն և տրտմեալ յոյժ և կացեալ արտաքս և մնայր կանգուն, զի յորժամ ելա-նիցէ անտի խօսեսցի ընդ նմա, որ եղև իսկ: Վասնզի մինչ ել անտի, կալաւ զձեռանէ նորա ծերն և տարեալ

առանձին ասէ ցնա. տէր իմ և եղբայր, ո՞չ գիտես զի հրեշտակական զգեցեալ ես կերպարանս, և ո՞չ գիտես զի մանուկ ես, և ո՞չ գիտես զի բազում են յոյժ որոգայթք չարին. ո՞չ գիտես զի 'ի ձեռն տեսարանաց և ըղ-գայտարանաց շարժութիւն հանդերձ մեծապէս վնասեն կրօնաւորք 'ի գիւղս և 'ի քաղաքս. որպէս դու առանց երկիւղի մտեր 'ի տունս պոռնկաց. և զոր ոչ կամէիր՝ լսես, և զատելիսն տեսանես զգործս զազրալիս, և ընդ անկարգ և գարշելի արանց և կանանց շրջիս: Մ՛ի աղաչեմ, որդեակ իմ, մի այսպէս. գուցէ զրկես և ընկղմես զանձն քո. այլ փախիր յանապատ ուր և կարասցես կեալ ող-նականութեամբ ա՟յ: Պատասխանի ետ մանուկն այն ծերոյն և ասէ ցնա. գնա, բարի ծեր, գնա. քանզի այլ ոչ ինչ խնդրէ ա՟ծ, բայց միայն սիրտ սուրբ: Յայնժամ ամբարձեալ ծերոյն զձեռս իւր յերկինս և ասէ. փառք քեզ, ա՟ծ, փառք քեզ, զի ունիմ 'ի Սկիտէ յիսուն ամ և սիրտ սուրբ ոչ կարացի ստանալ. իսկ մանուկս այս 'ի կապելոնի կալով սիրտ սուրբ ստացեալ ունի: Եւ ապա դարձաւ 'ի մանուկն և ասէ. ա՟ծ զքեզ փրկեսցէ, որդեակ, և զիս մի յամօթ արասցէ: Ասաց ցնա ծերն. որդեակ, աղ 'ի ջրոյ գոյանայ, իսկ եթէ մերձեսցի 'ի ջուր՝ հալի և կորնչի. այսպէս և կրօնաւոր 'ի կնոջէ ծնեալ է, իսկ եթէ մերձեսցի 'ի կին՝ հալի և կորնչի:

ԻՍԱՅ դարձեալ. քանզի աղօթեմք առ ա՟ծ և ասեմք՝ մի տանիր զմեզ 'ի փորձութի՟, ոչ վասն այսորիկ ասեմք զի մի փորձեսցուք, քանզի այն անհնար է, այլ հայցեմք զի մի ընկղմեսցուք 'ի փորձութե՟ն յայնմանէ, այսինքն է զի մի արասցուք նովաւ ինչ զոր ոչ հաճի ա՟ծ: Զի զոր օրինակ որ ընդ գազանի մարտիցէ, եթէ ոչ կերեալ լիցի 'ի գազանէն ոչ մտանէ 'ի բերան նորա, այսպէս և 'ի վերայ ամենայն ախտից իմասցիս. եթէ ոչ յաղթեսցի ոք յումեքէ 'ի նոցանէ, ոչ մտանէ 'ի փորձութիւն նորա, այլ փրկի 'ի չարէն:

ԵՐԱՆԵԼԻՆ Զոսիմա էր ընդ եղբարսն, և կնքեաց նշանաւ խաչին զբերան իւր և ասէ. մինչ մարդացաւ բանն ա՟ծ, այսպիսի և այսքան շնորհս ետ որոց հաւատացին և հաւատան յանուն նորա՝ որ ոչ գոյ թիւ. վասն որոյ և մեզ պարտ է հաւատալ և սպասել 'ի գործս բա-

ըլա եթէ կամեսցուք. զի յորժամ շնորհն ա̃յ և կամքն մեր և ըղձութի̃ւն բարւոյ ժողովին ՚ի միասին, անդ ամենայն դժուարինքն դիւրաբար լինիցին: Եւ արդ պարտ է ամենայնի որ կամիցի զայս՝ որպէս թէ զամենայն աշխարհ ոչ ինչ համարեսցի, և առցէ ՚ի ձեռին շիւղ մի անպէտ և ասասցէ՝ եթէ ուր այս և այսչափ ինչ պիտոյ է կամ փութայ ունել, նա ոչ ունի հնար փրկութե̃. քանզի որ ոք ընթանայցէ զբարւոք ճանապարհն և ուղղեսցի ՚ի սպասաւորութ̃ի ա̃յ, նա զամենայն աշխարհիս զայտորիկ զցանկալիս և զատելիս իբրև զշիւղս զայս համարեսցէ, թէպէտ և իշխան աշխարհի իցէ և զամենայն ինչ ունիցի. զի ոչ եթէ ունել ինչս վնասեալ կորուսցէ զոք, այլ չարաչար ունելն վնասէ: Քանզի ո՞վ ոք իցէ որ ոչ գիտէ զայս, զի քան զամենայն զգալի գոյս մեր մարմինք մեր լաւ և պատուական են. այլ յորժամ ժամանակն խնդրեսցէ, հրամայեալ եմք և զնոսին արհամարհել և ատել. եթէ զմարմինն մեր այս պարտ է ատել, ապա ո՞րչափ ևս առաւել զարտաքինն ինչս մեր: Ո ի որպէս ոչ պարտ է սուտ և անօգուտ և ընդ վայր ցրուել զինչս, այլ բարւոք ՚ի պէտս աղքատաց և անձին ծախել, այսպէս և ոչ զմարմինն տալ ՚ի մահ ՚ի նանիր. զի այսոքիկ նոցին են որք կորուսանեն զզգայութ̃ի մտաց և յիմարին. այլ պարտ է մնալ և ակն ունել ՚ի դէպ ժամու առնել զայն:

Յիշեաց և աստ զեղբայրն զայն որ ունէր զբանջարն, և ասէր. միթէ նա ո՞չ սերմանեաց, միթէ ինքն ո՞չ աշխատեալ էր, միթէ ո՞չ տնկեաց նա և կամ ո՞չ կազմեաց նա, միթէ ինքն խլեաց և ձգեաց ՚ի բաց. այլ նա ունէր զայն իւր՝ իբր թէ ոչ ունէր: Վասն այսորիկ իբրև գնաց առ նա ծերն փորձել զնա և սկսաւ խորտակել զբանջարն, իսկ նա ոչ երևեցաւ նմա, այլ թաքեաւ ՚ի նմանէ. և իբրև մի մնաց բանջար, ասէ հեզաբար. եթէ կամեսցիս, հայր, թողցես զդա, զի ՚ի վերայ սորա արասցուք սէր ես և դու: Յայնժամ ծանեաւ ծերն եթէ կատարեալ ծառայ ա̃յ է նա և ոչ բանջարոյ, և ասէ ցնա. հանգուցեալ է հոգի ա̃յ ՚ի քեզ, ով եղբայր: Իսկ եթէ ախտաբար ստացեալ էր զպարտէզն, վաղվաղակի ցուցանէր զտրտմութ̃ի և զշփոթումն անձին. այլ յայտնեաց գործովք եթէ այնպէս ունէր՝ իբր թէ ոչ ունէր:

Այս ասէր երանելին. եթէ զիտասցեն զայսպիսիս դևք, և եթէ տեսանեն զոք զի ոչ ինչ համարեսցի զերկիր և զամենայն նիւթ իւր և ոչ շփոթի 'ի սակս նորա և ոչ դժուարի ինչ, յայնժամ ծանիցեն զնա՝ զի թէպէտ և 'ի վերայ երկրի շրջի այնպիսին, այլ քաղաքավարութ̃ի նորա յերկինս է:

Դարձեալ ասէր. շարժմունք իմն են ջերմագոյն մտաց և ընծայեն փոյթ միտք 'ի միում ժամու այսպիսի ինչ ա̃յ, զոր ոչ կարէ ընծայել հեղգացեալ միտք 'ի յիսուն ամ: Այս եթէ տեսանեն դևք եթէ անգոսնեցաւ ոք, անարգեցաւ և կամ արհամարհեցաւ կամ զրկեցաւ և տուժեցաւ կամ այլ ինչ չարչարեցաւ և ոչ տրտմեցաւ և ոչ դժուարացաւ ընդ այն, այլ ախոյանաբար և ուրախութեամբ կրեաց զայն, յայնպիսւոյն երկնչին դևք. զի ծանեան եթէ մերձեցաւ 'ի ճշմարիտ շաւիղս, և կամի գնալ 'ի պատուիրանս ա̃յ:

Այս յիշէր և սա զհօրէն Պախոմէոսի յորժամ սատանեաց նմա անդրանիկ եղբայրն իւր և ասէ. դադարեա յունայնմանէդ, ամբարհաւաճ և սնափառ դու. զի կամիս ընդարձակել զվանս, յորժամ յա̃յ հրամայեալ էր նմա շինել զվանսն: Օ՛ր մինչ լուաւ զասաա եղբօրն, միթէ շարժեցաւ բարկութ̃բ, որպէս թէ բարիս գործէր հրամանաւն ա̃յ. ոչ. այլ ոչ ինչ ասաց նմա այսպէս, այլ լռեաց: Իսկ մինչ երեկոյ եղև, էջ 'ի ներքին իւր փոքր գուբն բնակարան, և սկսաւ արտասուել և լալ, և աղօթէր և ասէր. ա̃ծ և արարիչ իմ, դեռ ևս միտք մարմնաւոր են իմ, դեռ ևս մարմնաբար կեամ. վայ ինձ եղկելւոյս, զի կայ և մնայ ինձ մահ որպէս և գրեալ է. այսչափ ճգնութ̃ի և պատրաստութիւն փութամ սրտի իմոյ, և դեռ ևս 'ի սրտմտութիւն յափշտակիմ բարուց կամ յուսոյ. ողորմեաց ինձ, տէր, զի մի կորիցեմ. զի թէ գտցէ թշնամին առ իս փոքր մի, դիւրաբար յափշտակեսցէ զիս, եթէ ոչ դու զօրացուսցես զիս, տէր. զի եթէ ոք պահեսցէ զամենայն օրէնս և գթեսցէ միով իւիք, եղև ամենայն օրինացն պարտական. այլ ես յուսամ 'ի բազում ողորմութ̃ի քո. զի եթէ դու օգնեսցես ինձ, տէր, կարացից գնալ 'ի ճանապարհս քո. կամ որպէս ուսուցից զնոսա, տէր, զոր ժողովեցեր ընդ իս 'ի շաւիղս յայս կենաց, եթէ ոչ նախ ես գնացից ընդ նսա

և պահեցից զերկիւղ քո։ Օ՜ այսպիսի մինչ աղօթէր և զայսպիսիս, և կացեալ զգիշերն ողջոյն ողբովք մինչև ցառաւօտն, և 'ի քրտանց և յարտասուացն ծովացեալ կաւ եղև երկիր ընդ ոտիւք իւր ուր կանգուն կայր, զի էր ամառն և տեղին ջերմ յոյժ։ Այս ասէր հիմնաւորել երանելին. մինթէ գոյր չափ արտասուացն նորա։ Արդ ո՛ր-պէս ոչ շնորհէր ած այսպիսի մտաց զամենայն զոր ինչ խնդրէր. ես հաւատամ զի յայնմ գիշերի զամենայն շնորհեաց զոր և խնդրեաց, որպէս զի եղև նա յայնմ-հետէ մեռեալ յամենայն ախտից։

Այս ասէր նա. եթէ ոք թողցէ յաղագս ումեք խոր-հուրդ չար 'ի սրտի իւրում վասն տրտմութեան իրիք կամ վասն զրկանաց կամ անարգանաց կամ վասն այլոց չարի և խնդրեսցէ մնասել նմա խորհելով, նա ինքն սպան զինքն յոգւոյ իւր. և ոչ պիտոյ են նմա դեղք, այլ ինքն սպանող է անձին իւրում։ Այս ոչ ասեմ զխորհելն միայն, այլ եթէ ոչ բարեգործ և բժիշկ հոգւոյ համարեսցի զնա, յոյժ մնասէ զանձն իւր. զի զինչ ասաց վասն քո որ մնասեաց զքեզ. մի եղիցի, ոչ մնասեաց, այլ ես ա-ռաւել օգնեաց զքեզ. այսպէս արժան է համարել զնա իբրև 'ի Քսէ առաքելոյ բժշկի։ Վասն զի պատճառական ես Քսի և պարտ է քեզ չարչարիլ վասն նորա անուանն, նոյնպէս և զնա պատրոն բարեգործ համարել. իսկ եթէ ոչ՝ ոչ դադարեալ իցես յախտից և ոչ կամիս 'զի ազա-տեսցիս. անպարտ է յարենէ քումմէ տէր ած քո, զի այդ ինչ որ վշտացոյց զքեզ՝ 'ի հիւանդութենէ հոգւոյ քումմէ. զի եթէ ոչ էիր հիւանդ հոգւով, ապա ոչ եր-կընչէիր. և վասն այսորիկ առաւել գոհանալոյ զնմանէ պատճառական ես, զի նովաւ ծանեար զհիւանդութիւն անձին քո, և հարկ է քեզ առնուլ 'ի նմանէ զբժշկական դեղն զոր առաքեաց նովաւ քեզ Յս Քս։ Իսկ եթէ ոչ միայն ոչ գոհացիս, այլ և չար ինչ խորհիս վասն նորա, յայտ է զի հակառակ կաս դու Յսի և ասես ցտէր. ոչ կամիմ բժշկիլ 'ի քէն, ոչ պիտոյ է ինձ դեղ քո, նեխել կամիմ 'ի վէրս իմ, հնազանդիլ կամիմ ախտից և ոչ քեզ։ Այս զինչ արասցէ քեզ տէր յայնմհետէ, զի ողորմած և բա-րերար է տէր, և ընդդէմ մեղաց մերոց ետ մեզ դեղ զպատուիրանս իւր՝ որք ըստ նմանութեան արբողաց դեղոց և կիզողականաց բժշկեն զխելագարութիւն մեր։ Այս արդ

որք կամին արդարս լինել, ականայ պարտին համբերել ամենայնի զոր բժիշկն առիցէ. քանզի և ոչ հիւանդքն ախորժեն զհատումն և զկիզումն անդամոց իւրեանց և ոչ ըմպել զդառնութիւն մաքրական դեղոց, այլ երբեմն յիշեն՝ ախտք նոցա շարժին. այլ յամենայնի հաւատացուցանէ զանձն իւր և նեղէ. գիտէ զի առանց նորա ոչ զերծանի 'ի ցաւոցն, և վասն այսորիկ դնէ զանձն իւր 'ի ձեռս բժըշկին, զի գիտէ եթէ այնու փոքու դժուարահանութեամբ զերծանի 'ի բազմաժամանակեայ հիւանդութենէն: Մաքրիչք և կիզիչք դեղք Տեառն են զրկմունք ընչից, արհամարհութիւնք քրտանց, առեւգումն մարմնոց և ամենայն երկրաւոր նիւթոց, և գերագոյն լինել ամենայն ախտից. իսկ եթէ ոչ յանձին կալցես, զքեզ վնասեսցես և դու քեզ մեղադրեսցես և մի զընկերն պատճառեսցես: Այլ մեք անփորձք և անմիտք եմք, յետս դարձուցանեմք 'ի մէնջ զողջացուցանող դեղսն Տեառն, և թողումք զմեղադրութիւնս անձանց, և չար խորհիմք և նենգեմք բարերարին մերոյ:

Այլ ասէր նա. զի եթէ բառնան փորձութիւնք յերկրէ, ոչ ոք ուրեք գտանիցի սուրբ, զի 'ի փորձութիւնսն սրբին անձինք. և որ ոչ փորձի, ոչ է սուրբ. և որ ոք փախիցէ 'ի փորձութեանց շահիցն, ոչ կարէ զերծանել 'ի փորձանացն յաւիտենից: Քանզի ո՞վ եւս վկայիցն զպսակն փառաց, բայց միայն դատողքն նոցին. կամ ո՞վ եհան ըզսուրբն Ստեփաննոս յայնպիսի փառս, եթէ ոչ քարկոծողքն նորա:

Այլ յիշէր զբանն Աւագրի որ ասէր՝ եթէ ես ոչ մեղադրեմ միայն չարարարաց մերոց, այլ և բարերարս անուանեմ, և ոչ ասեմ զբժշկող դեղ հոգւոց. երկնչիմ թէ առ հոգի իմ ասասցի 'ի տեառնէ՝ եթէ բժշկէի զԲաբիլոն և ոչ բժշկեցաւ: Այլ ասէր՝ եթէ երկնչէր Աւագրէ վասն իւր մի գուցէ դատապարտեսցի 'ի Քրիստոսէ, և ասէր ցանձն իւր. եղկելի Աւագրէ, հիւանդ ես սնափառութեամբ և ամբարտաւանութեամբ, և առաքեաց քեզ դեղ Տէր Քրիստոս զարհամարհանս յընկերէն և դու ոչ բժշկեցար: Այլ զայս գիտասցուք, զի այլ ոչ ոք ասէ զճշմարիտն զմէնջ իբրև զբամբասողս մեր. զի տէր գիտէ զծածուկսն մեր և նմա յայտնին՝ որ քննէ զսիրտս և զերիկամունս: Այլ թէպէտ և ամենայն աշխարհ գովեն և

երանեն զմեզ, զի՞նչ օգուտ են մեզ, զի ներքինն մեր լի ամօթով և ատելի և գարշելի են. և ոչ ոք այնպէս ատէ և անիրաւ խօսի իբրև զայն որ գովէ զմեր գործ և երանէ զմեզ, և ոչ ոք այնպէս ճշմարտէ որպէս այն որ բամբասէ և նախատէ զմեզ: Նա զի և ոչ նոքա գիտեն զամենայն գաղտնիս մեր իբր զի իւրաւ ասասցեն, այլ զմի 'ի բիւրոց. իսկ եթէ կարէին գիտել զխորս մեղաց մերոց, այլ թէ և մասն ինչ փոքր տեսանէին՝ իբրև 'ի նեխելոյ գիշոյ փախչէին 'ի մէնջ, և իբրև 'ի չար դիւէ փախչէին 'ի հոգւոյ իմմէ: Նա եթէ ամենայն անդամք ամենայն մարդոյ լեզու էր, հաւատամ զի ոչ կարէին ասել ըստ արժանեաց զամենայն յանցանս մեր. զի ամենայն չարախօս և դրժող զփոքր մասն ինչ ասէ զմեր վատ, այլ զկատարեալն ոչ գիտէ: Ո՜ի եթէ Յոբ արդարն ասէր՝ եթէ լի եմ ամենայն գարշելեօք, իսկ մեք զի՞նչ ասասցուք որ խոր ջրհոր և գուբ եմք ամենայն ախտից և մեղաց, յորս յամենայն ժահահոտ մեղացն ձգեաց տատանեալ զանձինս մեր. իսկ որք իմացին և 'ի խոնարհութիւն դիմեն, զերծանին 'ի դիւաց: Նա որպէս ասացին հարքն, եթէ որ իջցէ խոնարհութեամբ մինչև 'ի խորս դժոխոց՝ մինչև յերկինս բարձրասցի. և դարձեալ՝ եթէ բարձրասցի ամբարտաւանութեամբ մինչև յերկինս բարձունս, մինչև 'ի դժոխս ներքինս իջցէ: Ո՜ի ո՞վ հաւատացուսցէ զխոնարհն որպէս զի չարս խորհեսցի զումեքէ. զի զամենայն ինչ զոր և դիպեսցի խոնարհին կամ վնասեսցի յումեքէ կամ լուիցէ, պատճառս առնէ զնոսա արհամարհանաց և առաւել խոնարհի:

Յիշէր նա և զհայրն Մովսէս և ասէր. տեսանէք եթէ որպէս արար նա, յորժամ սպասաւորք եկեղեցւոյն՝ ել ել յեկեղեցւոյն ասացին ցնա, ել գնա արտաքս՝ մորթի սեաւ դու, թէ որպէս սկսաւ մեղադրել անձին և ասէր. մոխրագոյն մորթ սևագոյն դիւանման, բարի ասացին քեզ, մինչ դու մարդ ոչ ես՝ 'ի մէջ մարդոց ընդէ՞ր իշխեցեր մտանել:

Նա ասէր. զի որքան ինչ հանդիպեսցի խոնարհին, փութանակի յաղօթս յառնէ, և զամենայն մարդ զվնասողս իւր բարեգործ համարի. այլ մեք թողեալ զճշմարիտն շաւիղս և զուսումն սրբոցն, և ընդ այլ մոլար ճանապարհ գնամք ըստ թիւրութեան մտաց մերոց: Այս ե-

թէ ոչ՝ զինչ այլ հեշտալի է լսել բարւոյ և փորձ վար-դապետին հօրն Մինասայ որ ասէ. զգոյշ լեր անձին քում, որպէս զի թէ ոք տրտմեցուսցէ զքեզ վասն որոյ գործոյ ինչ՝ լուռ լեր իսպառ և մի ասասցես ինչ մինչև աղօթիւք հեզասցի և հանդարտեսցի սիրտ քո, և այնպէս աղա-չեա զեղբայրն հաշտել ընդ քեզ: Վասնզի որ ցանկա-ցեալ իցէ ճանապարհին ճշմարտութեան՝ 'ի շարժել սրտմտութեան 'ի մտի՝ առաւել հարկանէ և տանջէ զան-ձըն, և միշտ նախատէ և ասէ. ընդէ՞ր յիմարեալ ես, անձն իմ զառածեալ, և որպէս կատաղեալ մոլեալ շփո-թիս և սրտմտութ. փրփրեալ ես. արդարև այդ յայտ-նէ զհիւանդութի. քո. զի եթէ ոչ էիր հիւանդ, ոչ ցա-սուցանէիր ընդ բանս. ընդէ՞ր թողեալ զմեղադրութի. ան-ձին քո՝ եղբօրն մեղադրես, որ եցոյց քեզ զհիւանդու-թիւն քո բանիւք և գործովք. ուսիր, ով անձն, զպա-տուիրանս Տ. նի, որ անարգիւր և ինքն ոչ փոխանակ անարգէր, չարչարիւր և ոչ հակառակէր. ո՞չ լուար ըղ-բանն՝ որ ասէր և գործովք կատարէր, զթիկունս իմ ե-տու 'ի հարուածս և զերեսս ոչ դարձուցի 'ի հարկանե-լոյ և յամօթոյ թքանելոյ: Իսկ դու եղկելի և հեղգ անձն իմ, և ոչ մի պատկառանս և նախատինս յանձն առնուս յընկերէն հեզութեամբ, այլ զբազում և զխիստ չար-խորհուրդս հիւսես և առաւել քան զչեաս մնասես ան-ձին քում. զինչ աւելի մնասել կարեն զեք որչափ դու մնասես քեզ: Հաւատամնեմք զխաչն Տ. նի և օր ըստ օրէ ընթեռնումք զչարչարանս նորա. և որչափ նա չարչա-րանս կրեաց վասն մեր լսեմք, իսկ մեք և ոչ աղճատա-նաց բանի համբերեմք վասն նորա. ստուգապէս թիւ-րեցաք յուղիղ ճանապարհէն:

Այլ ասէր նա. եթէ կեցցէ մարդ զաւուրս Մաթու-սաղայի և ոչ ընթանայ ճշմարիտ ճանապարհ ընդ որ գնացին հարքն մեր, որ են պատկառանք և արհամար-հանք, զրկութիք և ամենայն վիշտք և չար պատահմունք, և խնդութ. ընկալցի զսոսին, ոչ կարէ հասանել կենաց բնաւ և ոչ ուղղէ առաքինութիւն ինչ, այլ մնոտի ծա-խէ զժամանակ իւր:

Պատմէր և զայս ինչ՝ եթէ էր երբեմն առ երանու-հւոյն Պափնուտիայի, և մինչ նստէաք 'ի միասին՝ խընդ-րեաց եղբայր մին 'ի նմանէ օրհնութի. ինչ, և ետ նմա

որչափ կարող էր տալ։ Իսկ մինչ ոչ ունէր՝ տալ որչափ նա խնդրէր, սկսաւ աղքատն անարգել զնա և ասէր վասն նորա և վասն իմ յոյժ աղտեղի և տգեղ բանս զոր ոչ է պարտ յիշման տալ լեզուաւ։ Իբրև լուաւ զայն սրբուհի կինն, տրտմեցաւ յոյժ և խնդրէր չար ինչ առնել նմա։ Իսկ իմ ուսեալ զայն և ասացի ցնա. ընդէ՞ր կամիս առնել զայդ և կորուսանես զանձն քո և զամենայն առաքինութիւն մերկանալ 'ի քէն. զի՞նչ գործես, համբերեա դու վասն Ք͞նի որպէս Ք͞ս համբեր վասն քո. գիտեմ զի ցրուեցեր զա͞մ զանձս քո իբրև զապաւառան. իսկ եթէ ոչ ստասցիս դու զհեզութիւն, նմանիցես դու խստադոյն շանթոյ երկաթոյ՝ որ աշխատի 'ի վերայ նորա դարբնին և անօթ ոչ կարիցէ առնել 'ի նմանէ. քանզի ասէ Իգնատիէ ա͞ծազգեացն՝ եթէ պարտ է նախ քան զամենայն հեզ լինել, զի նա լուծանէ զամենայն զօրութիւ իշխանի աշխարհիս այսորիկ։ Արժան կրօնաւորի՝ եթէ եթող զաշխարհս զայս՝ այս ինչ է, անբարկացողն լինել և անշփոթ. զի են ոմանք որք թողցեն զբազում տաղանդս ոսկւոյ, և սակս միոյ ասղան բարկացցին և 'ի սիրոյ ասղանն այն շփոթեսցին յոյժ, և ընդ զտեղի տաղանդոյն և զկենդանարին ասեղն այն, և լինի մարդն այն ծառայ ասղանն կամ կնկղոյն այնորիկ կամ գրոց կամ նուեթի ինչ երկրաւորի, և ոչ է նա յայնմհետէ ծառայ Ա͞յ։ Այլ բարուք ասաց ո͞մն 'ի ծերոցն՝ եթէ որքանիք իցեն ախտք յանձին՝ այնքանիք տիրեն նմա. և առաքեալ ասէ. յորմէ ոք յաղթեալ է, նորին ծառայեալ է։ Յորժամ լուաւ զայս սրբուհին այն, զարհուրեցաւ և նայեցաւ յիս և ասէ ցիս. գտեր դու զա͞ծ որում ըղձայիր։

Այլ ասէր երանելին՝ եթէ հոգի կամի զկեանս, այլ սիրէ զունայնութիւն սա կենցաղոյս և փափկութիւն պարապի, այլ զվիշտս մերժէ յիւրմէ. ապա թէ 'ի վշտաց և 'ի նեղութեանց ոչ փախչէր անձն, ոչ էին ծանունք պատուիրանքն ա͞յ. այլ ծանր և դժուարին են չար կամք մեր, զոր հատանել դժուարիմք։ Ապա թէ ոչ՝ որպիսի՞ իցէ այս, զի 'ի սակս երկիւղի ծովու կամ բարբարոսաց և աւազակաց զամենայն ինչ արհամարհեմք, և փութով ցրուեմք և մերժեմք 'ի մէնջ զամենայն գոյս մեր վասն փոքր մի կենաց մերոց աւուրց, և այս զի գիտեմք ստուգիւ զի փոքր մի յետոյ մեռանելոց եմք. այլ յամենայնի

Այլ ասէ. բերէք այսր զարկեղս՝ ականց և մարգարտաց։ Այլ նոքա բերին։ Յայնժամ բացեալ զնստուկն և հանեալ զամենայն ականս և զմարգարիտսն սփռեաց ՚ի վերայ սիգանին։ Այլ իբրև զամենայն եդ առաջի ամենայնի, սկըսաւ ասել բարձրաձայն այսպէս. մի՛թէ այս են կեանք իմ և վասն սորա՞ վշտագնեալ դատիմ ՚ի ծովու և ՚ի ցամաքի, վասն ա՞յսորիկ հատանեմ զխորս ծովու և հալիմ միշտ յերկիւղէ. մի՛թէ ո՞չ մեռանելոց եմ յետ սակաւու միոյ. և որպէս ոչ ինչ բերի ընդ իս յերկրի, նոյնպէս մերկ և ամօթալի ելանելոց եմ յերկրէ. Այլ ապա ասէ ցծառայսն. առէք զայս ամենայն և ցրուեցէք ՚ի ծով։ Այլ ընդ բանին վաղվաղակի ընկեցին զամենայն ՚ի ծովն։ Այլ զարմացեալ նաւավարացն և ընդունայն եղև խորհուրդ նոցա։

Այլ ասէր երանելին. տեսարո՞ւք զայս, եղբարք, եթէ որպէս մինչ շարժեցաւ խորհուրդն և ուղղեցաւ, դիւրաբար եղև իմաստասէր բանիւք և գործովք։ Այլ այս՝ զի շահեսցի փոքր ինչ ժամանակս կենաց, և բարւոք և իմաստասիրաբար արար. զի խորհեցաւ ՚ի միտ, եթէ ես մեռանիմ այսօր՝ ակունքս ո՞ւմ լինիցին։ Իսկ մեք և ոչ զփոքր զըկանս կամիմք յանձն առնուլ յաղագս պատուիրանացն այ̅։ Իսկ եթէ պարտ է տրտմել սակս կորստեան ընչից, ապա պարտ է և վասն զրկողին տրտմել և ոչ վասն ընչիցն կորստեան. զի որ զրկեացն՝ զրկեալ եղև յարքայութենէն երկնից, զի գրեալ է՝ եթէ անիրաւք և ագահք զարքայութիւնն այ̅ ոչ ժառանգել կարեն. իսկ դու որ զրկեցար՝ զկեանս յաւիտենից շահեցար, զի գըրեալ է՝ խնդացէք և ուրախ լերուք զի վարձք ձեր բազում են յերկինս։ Այլ մեք թողումք զանդաման Ք̅ի գերեալ տեսեալ, և տրտմիմք վասն անպէտ և ապականացու ընչից որք բնաւ ոչ յիշելոյ արժանի իցեն, և յիրաւի դատապարտիմք։ Այլ զի ըստ կարգի անդամոց մարմնոյ յօդեաց զմեզ այ̅ծ, և գլուխ մեր Ք̅ս այ̅ծ է, որպէս ասէ առաքեալն՝ եթէ ամենայն բազմութիւն անդամոցն զմի մարմին կազմէ, որոյ գլուխ Ք̅ս է։ Այլ յորժամ տրտմեցուցանէ զքեզ եղբայրն, իբրև ձեռն կամ ակն ցաւագնեալ տրտմեցուցանէ զքեզ. այլ թէպէտ և ցա-

1 Երկ. օրինակն զարկեղս։

գիր վասն անուանն Քրիստոսի. ոչ ամենեցուն է սատուգապէս, այլ արդարոցն և սրբոցն միայն, որպէս ասացի. իսկ 'ի մէնջ որք խնամատունքն են՝ խոստովանեսցուք և ասեմք՝ եթէ յիրաւի անարժանք վասն բազում չար և ապիրատ գործոց մերոց: Այլ անձն այսչափ երկելի է, որ գիտէ զամենայն չար գործս իւր և գիտէ թէ ամենայն ինչ զոր և դիպեսցի նմա՝ յիրաւի դիպեսցի, և յիմարեալ 'ի մըտաց իւրոց մոռանայ զիւրն ամենայն, և նստեալ չար խորհի զխորհուրդս դիւականս և ասէ. զայս ինչ ոմն ասաց ինձ և այս ոմն անարգեաց զիս. և ոչ գիտէ երկելին եթէ սովաւ կորուսանէ զանձն՝ դև լինելով ինքն իւր: Ո՛չ ի որ ինչ յարուեստան տեսանի, նա և 'ի գործ անձին տեսանի. զի որպէս անդ ուսուցիչք արուեստին տան 'ի ձեռն աշակերտացն զգործն, և թող տայ զի գործեն՝ ոչ մերձ նստեալ իւր, այլ ժամ ըստ ժամէ գայ տեսանէ թէ ո՛րպէս գործէ՝ մի՛ գուցէ խափանեալ թիւրեսցէ ինչ կամ ծուլասցի գործել, այսպէս և դևք առնեն. յորժամ տեսանեն զոք դիւրահնազանդ իւրեանց որ առնէ 'ի մտի զխորհուրդս նոցա, տան 'ի սիրտ նորա զդիւականս զայն և զթունաւոր չար խորհուրդս, և ոչ կարօտին կալ մերձ, գիտեն զի այնպիսի չար անձն բաւական է սպանանել զինքն. այլ ժամ ըստ ժամէ գան և նորոգեն զայն 'ի սիրտ նորա, մի՛ գուցէ ծուլասցի ինչ: Արդ զի՞նչ դժուարին է առ գործ, սիրե՞լ զամենայն և սիրելի լինել յամենեցունց, եթէ ատել և մարտնչել միշտ: Ո՞ր հանգիստ ոչ բերեն պատուիրանքն տեառն, այլ մեր ոչ ողջին միտք և կամք 'ի վերայ բարւոյ. իսկ ապա եթէ ողջասցին, ամենայն բարիքն դիւրին լինիցին: Եւ որպէս ասացի՝ փոքր մի յօժարութիւն զմեծ առաքինութիւն 'ի մեզ 'ի ներքս բերեն. որպէս ասաց մեծն Նոնոն՝ եթէ յառաքինութիւնս միայն կամք մեր պիտոյ են, և ոչ պիտոյ է մեզ գնալ հեռի Ճանապարհ և խնդրել զարքայութիւնն այ և ոչ անցանել ըստ ծով սակս առաքինութեան: Ո՞ր հանգիստ ոչ ունի հեզն և խոնարհն. զի Ճշմարտիւ հեզք ժառանգեսցեն զերկիր և բնակեսցին բազում խաղաղութեամբ 'ի նմա:

Դարձեալ ասէր երանելին այն՝ եթէ երթայաք երբեմն ես և եղբայր ոմն ընդ աշխարհականաց ոմանց ընդ Ճանապարհն Նեապօլոյ. և 'ի գնալն մեր եկաք 'ի տե-

զի մինչ որ ստանալին մարմս կայանէր, և աշխատաՀինքն ըստ ամբողջութեն խոցեանց իբրև անսուծն զմեղաւորան՝ նոյնպէս զգաստ լինել խոցեանց զոր պարտ էր ։ Իսկ եղբայրն որ ընդ իս էր՝ տրտմեցաւ յոյժ, սկսաւ կռուել ընդ նմա և ասել ․ ընդունելին իշխէք ասնել 'ի կրօնաւորէ Հայրդ ։ Իսկ ես ասացի ցնա ․ զի՞նչ ասես, ով եղբայր ․ ոչ այլ ինչ ասեմ ցնոսա, այլ զայս, եթէ կամիք և եթէ ոչ՝ պատուեցէք զիս իբրև զսուրբս ․ ես ասաւել օտար պարտ էր անսանել զխոնարՀութիւն քո, և պատսպարել 'ի խոնարՀութեանն քումմէ և ասէին քեզ՝ Թողութիւն տացես մեզ ։ Արդ եթէ լսես ինձ, իբրև զաշակերտ Հեզոյն Յիսուսի առ զՀարկ նոցա և երթ խաղաղութեամբ ։

Պատմեաց յայլում ժամու եկի ես 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և եկն առ իս մին կրօնաւոր և ասէ՝ եթէ ես և եղբայր իմ փոքր մինչ գժտեցաք ընդ միմեանս և այժմ ոչ կամի Հաշտել ընդ իս ․ այլ աղաչեմ զքեզ, Հայր, կոչեսցես զնա զի տրասցուք եկր ։ Իսկ ես խնդութեամբ ընկալայ զբանն և կոչեցի զեղբայրն և որչափ Հնար էր վասն խաղաղութեան և սիրոյ խօսեցայ նմա յոյժ, և թուէր թէ Հաւանեալ ինձ ․ իսկ յետոյ ասէ ցիս ․ ոչ կարեմ Հաշտել ընդ նմա, զի երդուեալ եմ 'ի խաչն Քրիստոսի ոչ բնաւ Հաշտել ընդ նմա ։ Իսկ ես ժպտելով ասեմ ցնա ․ այսպիսի ինչ է երդումն քո, իբր թէ ասացեր՝ զօրութիւն խաչի քո, Քրիստոս, որ ոչ պաՀեմ զպատուիրանս քո, այլ յամենայնի ասնեմ զկամս դիւաց ։ Արդ ոչ եթէ միայն ստել զերդումն քո պարտ է քեզ, այլ և վասն երդմանն ապաշխարել պարտ է քեզ յոյժ, որպէս սուրբն Աստիլ ասէ ։ Եթէ Հերովդէս թէ ոչ Հաստատեալ էր զերդումն իւր՝ ոչ էր պատրաստեալ լեալ արեանն Յովհաննու մկրտչի ․ նոյնպէս և Պետրոս 'ի լուացումն ոտիցն եթէ ոչ փոյթ ապաշխարեալ էր, թէպէտ և պատուոյ սակս ասաց զայն, սակայն 'ի մասնէ առաքելութեանն զրկեալ գտանէր ։

Հարցեալ եղև երբեմն երանելւոյն այն՝ եթէ որպէս ոք կայցէ զսրտմտութեն ։ Իսկ նա ասէ ․ սկիզբն բանականն և արգելլոյ զսրտմտութիւն այն ինչ է, զի յորժամ լուիցէ ինչ և շարժի միտս՝ զի ոչ ինչ խօսեսցի ինչ, որպէս Հայրն Մովսէս արար ․ զի մինչ անարգեցաւ յերիցանց, ոչ ինչ ասաց առ ժամայն, թէպէտ և բարկացաւ 'ի միտ,

և ապա յետոյ հանդարտեաց զսիրտն և մաքրամորթ և սև և դիւատեսակ կոչեաց զինքն ։ Այլ մեք այնչափ պակասեմք, զի և ոչ 'ի չափ նոր եկելոցն հասեալ եղաք, և վասն բազում ծուլութեան մերոյ ծանունս և անհնարս կարծեմք գոլ զպատուիրանս այ ։ Վասնզի չփորձեալ 'ի բարկութէ և ոչ ինչ ասել՝ այն ոչ կատարելոցն, այլ դեռ ևս եկելոցն է. իսկ կատարելոցն է և ոչ բնաւ 'ի մտի շարժել կամ դժուարիլ կամ զայրանալ՝ ըստ մարգարէին՝ թէ պատրաստեցայ և ոչ խռովեցայ ։ Այլ մեք բնաւ և ոչ սկսանիմք գործել զբարիս և ոչ յօժարիմք թէ եկեսցեն շնորհք այ յօգնութի մեզ. և թէպէտ և կամիցիմք երբէք ցուցանել յօժարութի ինչ բարւոյ, և զայն ևս քքեալ և լուծեալ ծուլութբ ցուցանեմք և ոչ արժանի իմիք այ ։

Միևնոյն ինչ մեր սերման նման է, որ սերմանի և արդիւնաւոր լիցի. և զոր օրինակ միակ սակաւ սերմանէ, իսկ թէ յաճախեսցէ ած՝ բազմապատիկ ժողովեսցէ, որպէս 'ի սա ' գրեալ է՝ եթէ սերմանեաց զանդաստանն և եգև ընդ միոյն հարիւրապատիկ, այսպէս թէ յաճախեսցէ 'ի վերայ սերման յօժարութե մերոյ՝ շահի զբիւրաւորս. իբր զի անբռնադատաբար և անախտ դիւրաբար տրասցուք զամենայն գրեալն մեզ և շահեսցուք յամենայնի ։ Վասնզի բռնութբ և վշտիւք և ակամայ աղօթք համբերութբ՝ ծնանին զսուրբ և զյօժարական և զկամաւոր աղօթս, զի ոչ պիտոյ լիցի բռնադատութի. զի բռնութբ և վշտիւք աղօթք՝ է մերոյն յօժարութեան, իսկ հանդարտեանքն և սուրբ աղօթք՝ է պարգևացն և շնորհացն այ. նոյնպէս և 'ի վերայ ամենայն առաքինութեց այսպէս լինելն ։ Իսկ զոր օրինակ եկեալ ոմն յուսումն արուեստից իմիք և կամի զի դիւրաբար ուսցի, այլ նախ աշխատեալ վշտանայ և ոչ կարէ գործել, բազում անգամ և խանգարէ զգործն, այլ ոչ ձանձրանայ և լքի, այլ բռնադատէ զինքն և դարձեալ սկսանի գործել, և թէ բազում անգամ խանգարէ ոչ դադարի 'ի յօժարութենէն, այլ զջանս ցուցանէ ուսուցչին իւրոյ միշտ, իսկ եթէ ձանձրանայ և լքի և թողեալ մեկնեսցի՝ ոչ կարէ ուսանել զայն արուեստ, իսկ եթէ դարձեալ 'ի վերայ

1 Այսպէս ամենայն օրինակք ։

կացցէ և որքան բազումս խանգարեսցէ ոչ ձանձրասցի և մերկնեսցի՝ այլ աշխատի և գործէ միաբանութիւն, յայնժամ նայեսցի ած 'ի ձգտումն նորա և տայ զնա նմա, և առժամեայն ուղղին ձեռք և գործէ զխորհուրդ և հեշտ և կերպարէ զինքն 'ի նմանէ, այսպէս լինի և 'ի վերայ ամենայն հոգևոր գործոց։ Որ եթէ ոք կամիցի գործել զառաքինութիւն, ոչ է պարտ կամել թէ առժամեայն ուղղեսցէ, վասն զի ոչ կարէ. այլ յորժամ սկսանիցի, թէպէտ և խախտեսցէ ինչ 'ի նմանէ, մի մերկնեսցի. ապա թէ ոչ՝ ոչ ինչ կարասցէ ուղղել. այլ դարձեալ սկսցի և դարձեալ ձգնեսցի իբրև զարուեստաւորն զայն։ Այլ յորժամ բազում անգամ փութայ և աշխատի յոյժ և համբերեսցէ և ոչ ձանձրասցի և ոչ թողցէ 'ի բաց ըղգործ առաքինութեան, յայնժամ նայեսցի ած յաշխատութիւն նորա և 'ի բարի ըղձանս և տանէ ողորմութիւն 'ի վերայ նորա, որպէս զի դիւրաւ և անաշխատաբար գործեսցէ նա։ Որպէս և հայրն Մովսէս ասէ՝ եթէ այս է կարգ և փորձութիւն նոցին որք կամին ստանալ զառաքինութիւն, որպէս զի թէ անկցին՝ ոչ վհատեսցին և կարճամանեալ հեռասցին, այլ զի դարձեալ փոյթ սկսանիցին գործել. զի ամենայն առաքինութեան աշխատութիւն մեծ պիտոյ իցէ և ժամն յերկար և կամք և յօժարութիւն մեծ. և նախ քան զամենայն պիտոյ է օգնականութիւն այ, զի եթէ ոչ օգնեսցէ տէր յօժարութեան մերոյ՝ ունայն է վաստակ և ջան և ըղձութիւն մեր։

Այլ որպէս 'ի վերայ մշակացն է տեսանել, զի որչափ աշխատի մշակն գործելով զերկիր և սերմանելով և սրբելով, իսկ եթէ ոչ տեղասցէ տէր անձրև և ծագեսցէ զարեգակն 'ի վերայ նորա՝ ընդունայն լիցին ջանք մշակին, այսպէս պիտոյ է օգնականութիւն այ աղօթից մերոց և պահոց և ամենայն գործոց բարեաց, զի նովաւ ձգեմք զողորմութիւն այ յօգնականութիւն մեզ, որպէս Դաւիթ ասէ՝ եթէ լուսով երեսաց քոց տեսանեմք ըղլոյս։ Ապա թէ ծոյլ լիցուք աղօթից և ամենայն գործոց բարեաց, որպէս նայեսցի տէր օգնել մեզ. զի եթէ հեղգս և լուծեալս և ծոյլս լեալ և ձանձրացեալ 'ի բաց կացցուք, ոչ ինչ բարւոյ արժանի լիցուք յայ. զի ած նայի միշտ 'ի յօժարութիւն մտաց մերոց և ըստ չափոյ նոցին բաժանէ զպարգևս։

Մ՚իթէ ո՛չ էր հայրն Մ՚ովսէս գլխաւոր առաջակաց, միթէ ո՛չ էր գործեալ բիւր չարիս, և այնչափ մինչ առ-տաքսեաց յիւրմէ զնա տէրն իւր սակս չարամտութեան իւրոյ. այլ 'ի վերայ այսր ամենայնի յորժամ արիաբար զմտեաց նա 'ի գործս առաքինութեան և այնպիսի յօժա-րութեան՝ գիտէք դուք ամենեքեան յոր չափս բարձրու-թեան հասեալ եղև, մինչև ըստ գլխաւոր սուրբս թուե-ցաւ, որպէս և պատմութիւն կենաց իւրոց յայտ առնէ։ Այլ մեք զորս կարծեմք թէ ունիմք ջերմութիւն յանձինս մինչ եղանեմք յերկրէ, և 'ի յամել ժամուց՝ մեղօք հեղ-գութիւն և զայն ևս կորուսանեմք և հեռանիմք 'ի նանիր գործոց և սիրեմք զնիւթս ընչից ընդունայն կենացս, որք և ոչ յիշման արժանիք իցեն, և դարձուցանեմք զսէր Այ և զընկերին 'ի նոսա, որպէս թէ անձամբ մերով առ-նեմք զնոսա և ոչ յԱյ շնորհեալ ստանալով։ Քանզի զինչ ունիս, ով մարդ, զոր ոչ առեր յԱյ, որպէս ասէ առաքեալ. և եթէ առեր, ընդէ՞ր պարծիս իբրև չառեալ։

Այլ ասէք. միթէ աղքա՞տ ոմն իցէ Ածն, և ո՛չ կարող իցէ առատէն տալ մեզ զպարգևս բարիս որպէս նախա-հարցն արար. զի եթէ տեսանէր զմեզ շահեալ ինչ 'ի բարեացն յայնցանէ, տայր և մեզ. այլ զմեզ տեսանէ զի վնասիմք առնուլ և ոչ շահիմք 'ի փոքր պիտոյիցն սակս չարութեան մտաց մերոց, վասն այսորիկ ոչ վստա-հանայ 'ի մեզ զպարգևսն, զի մի կորիցուք իսպառ. իսկ եթէ տեսանէր զմեզ շահեալս 'ի փոքունցն յայնցանէ, կարող էր վստահանալ 'ի մեզ զպարգևսն։ Այլ եթէ այս ոչ այսպէս իցէ, ո՞վ հաւատացոյց զառաջինն դարձեալսն ընկել զինչս իւրեանց առ ոտս առաքելոցն։ Իսկ Ած վասն զի ողորմած և մարդասէր է, կամի զմեզ զի յամենայն գործոց օգտեսցուք. իսկ մեք 'ի սակս չարութեան մտաց մերոց 'ի չարիս ծախեմք զբարիսն որ տուեալ են մեզ յԱյ։

Այլ ասէք՝ եթէ գտանէին բազում անգամ անձինք հաւատացեալք և գոհացողք՝ որք և ոչ միոյ իրիք վնա-սեցին, այլ զոր ինչ և դիպեցի նոցա՝ յամենայնէ շա-հեցին։ Այն և այլ անձինք անգոհք և անշնորհակա-լոք, և թէպէտ և գործեցէ ինչ՝ իբրև զվարձկան գոր-ծէ, և այնպէս դատապարտի 'ի գործս իւր անհաւատու-թեամբ իւրով։ Իսկ հաւատացեալքն այն յաշխատութի և 'ի տանջանս ևս հաստատուն է, և զլուխ բարեաց և

վարձս աշխատանաց իւրոց համարեսցի զաւանդեանս որ վասն այ կրէ. վասն այսորիկ առնու մխիթարութիւն բազում: Իսկ անհաւատն այն կիզեալ անյուսութեամբն իւրով և ոչ աշխատի պատշաճաբար և ոչ առնուցու մխիթարութիւն 'ի տեառնէ, այլ անկեալ կայ նստեալ նեխեալ և հոտեալ 'ի ցանկութիւն սրտի իւրոյ և 'ի խորհուրդ: Եւ եթէ փոքր ինչ վնասեսցի յումեքէ, ասէ 'ի խորհուրդն՝ նա զայս ինչ ասաց ինձ և ես զայս ինչ ասացից նմա. զոխակալութիւն խորհի և զանգործ բանս մտածէ, զոր ոչ բնաւ առնել կարող է. զի ոչ եթէ զամենայն ինչ զոր խորհեսցի մարդ՝ առնել կարող է, այլ զորս թողացուցանէ այ, և զայն իւրովի անքննելի դատաստանաւն որ գիտէ զամենայն: Բազում անգամ կամեսցի ոք չար առնել ընկերին, այլ ոչ թողուցու առնել տէր, վասն այսորիկ սուտ լինի ընդունայն խորհուրդ նորա. այլ սովաւ փորձին միտք մարդկան: Որքանիցս կամեցան չարիս առնել նահապետացն մերոց. այլ մինչ ոչ թոյլ ետ այ, ոչ ինչ կարացին վնասել նոցա, որպէս և գրեալ է՝ եթէ ոչ եթող մարդկան մեղանչել նոցա, կշտամբեաց զթագաւորս վասն նոցա. մի մերձենայք ասէ յօծեալս իմ, և 'ի մարգարէս իմ մի մեղանչէք: Որքան կամեսցի այ ցուցանել զառաւել զօրութիւն իւր, և զխրատս անողորմացն 'ի գութս դարձուցանէ. որպէս և գրեալ է 'ի Դանիէլի գիրսն՝ եթէ ետ այ ողորմութիւն և քաղցրութիւն 'ի սիրտ իշխանին ներքինեաց վասն նորա: Եւ երանի իցէ այնորիկ որ պատրաստեալ ունէ զանձն իւր այ և ծառայեսցի միշտ սիրոյն այ և զգոյշ լիցի ընդունել յամենայնի զպարգևս այ. զի ոչ թողու զայնպիսին տէր, այլ և յամենայնի օգնական լինի նմա, և յայնմ ժամու յորում ոչ գիտէ և ոչ խնդրեսցէ. և բարուոք ասէ իմաստունն՝ եթէ օգնեալ լիցի յայ: Եւ որքան փութացաւ Սաւուղ սպանանել զԴաւիթ. զինչ ոչ փութաց և կամ զինչ ոչ խորհեցաւ. այլ մինչ ունէր օգնական զտէր, ամենայն խորհուրդքն Սաւուղայ ունայն եղեն. և ոչ այսչափ միայն, այլ և տուեալ եղենա 'ի ձեռս սորայն. այլ նա խնայէր 'ի նա, զի ոչ ունէր յինքն չարութիւն եթէ սրտմտեսցի 'ի վերայ նորա:

Հարցեալ եղև եղբօրն յումեմնէ՝ եթէ որպէս արժան է ոչ բարկանալ 'ի վերայ սրտմտութեան ընկերին

չարախօսութեան։ Այլ նա ասէ. եթէ դու ունիցիս զինքն վատթար քան զընկերսն, ոչ սրտմտեսցիս այնպիսեաւն. որպէս և ասաց Հայրն Պիմէն, եթէ փոքրացուցանես զքեզ, գտանես հանգիստ յամենայնի։

Այլ պատմէր և ասէր. էր երբեմն եղբայր ոմն որ բնակէր ընդ իս, և յիմմէ զգեցեալ էր զպէտսն և ունեալ էր յինէն յոյժ, և զի մանուկ էր, և ես զիջանէի զկնի տկարութեան նորա։ Ի միում աւուր ասէ ցիս. Հայր, ես յոյժ սիրեմ զքեզ։ Այլ ես ասեմ ցնա. և ոչ գտի դեռ զոք որ սիրէր զիս իբրև ես սիրէի զնա. ահա ասես, որդեակ, եթէ սիրեմ զքեզ, և հաւատամ քեզ. այլ եթէ լիցի ինչ յինէն զոր դու ոչ կամեսցիս, ոչ կարես կալ 'ի վերայ խորհրդոյդ այդորիկ. իսկ ես որչափ և ակամայ սէր ընդունիմ 'ի քէն, և մեկնել ոչ կարեմ 'ի սիրոյ քումմէ։ Մնացին 'ի վերայ այսոցիկ բանից ժամս սակաւս և ոչ գիտեմ եթէ զինչ դիպեցաւ նմա, և սկսաւ ասել վասն իմ առ բազումս բանս խենեշս և աղտեղիս, և լսէի զամենայնն և խորհէի ընդ միտս և ասէի՝ այս դեղ հատիչ և կիզիչ է զոր առաքեաց Տէր բժշկել զմնափառութիւն հոգւոյ իմոյ. 'ի յայսցանէ շահեցի մարդ եթէ զգաստացայ, իսկ 'ի գովողաց և յերանողաց առաւել վնասեցայ. սա ստուգապէս բարերար և խրատիչ է անձին իմոյ։ Այլ ես համարէի զնա իբրև զբժիշկ հոգւոյ իմոյ և աղօթէի վասն նորա, և ասէի ամենեցուն որոց պատմէին զնորա չար խօսս վասն իմ՝ եթէ իրաւ է, և նա զյայտնիքսն և զփոքունս գիտէ զիմ չարիս, իսկ ծածկեալ չարիքն իմ անթիւք են՝ որ միայն Այ է գիտելի։ Այլ զկնի աւուրց ինչ դիպեցաւ ընդդէմ իմ 'ի Սկետարիս, և եկեալ ըստ սովորութեան գիրկս էարկ ինձ և սկըսաւ համբուրել զիս և ես զնա, իբր թէ ոչ ինչ 'ի միջի մերում անցեալ էր. և խօսեցաք ընդ միմեանս բանս բազումս և արարաք սէր, և յայնմհետէ ուր և տեսանէաք, սիրով համբուրէաք զմիմեանս և գթով հարցանէաք. այլ ես բնաւ ոչ եւս կարծիս նմա ինչ թէ լըւեալ է իմ բան և ոչ ցուցի տրտմութիւն ինչ, թէպէտ և լուեալ էի զբանսն։ Իսկ 'ի միում աւուր անկաւ առ ոտս իմ, և համբուրէր արտասուօք գիրկս արկեալ և ասէր. Թողցես ինձ, Հայր, յաղագս Այ, զի բազում չարիս խօսեալ է իմ վասն քո։ Իսկ ես յարուցի զնա և

ողջունեցի սիրով և ասացի ցնա. գիտես, ով որդեակ, յորժամ ասացեր ինձ եթէ սիրեմ զքեզ, և ես քեզ ասացի այսպէս՝ եթէ ոչ գոյ մարդ որ սիրեսցէ զիս որպէս և ես սիրէի զնա, և թէ լինիցի ակամայ ինչ քո՝ ոչ կացցես 'ի սէրդ յայդ. իսկ ես եթէ բազում լինիմ 'ի քէն, ոչ մերժիմ 'ի սիրոյ քումմէ: Հաւատա ինձ զի և ոչ մի ինչ ծածկեցաւ յինէն զոր ինչ ասացեր, այլ ուր և զինչ ասացեր ումեք՝ լուայ զամենայն, և ոչ ասացի երբէք եթէ ոչ այդպէս է այդ, և ոչ ասացի երբէք ինչ զքէն բան վատթար, այլ ասէի ես ասողացն եթէ զամենայն ինչ զոր և ասէ՝ ճշմարիտ և սիրով ասէ. և ոչ երբէք դադարեցի 'ի յիշելոյ զքեզ յաղօթս իմ: Ցուցից քեզ և զնշան սիրոյ իմոյ. ցաւագնեցաւ երբեմն աչք իմ յոյժ և 'ի վտանգի կայի, և յիշեցի 'ի ցաւս իմ զանուն քո, կնքեցի զաչն իմ նշանաւ խաչին և ասացի՝ աղօթիւք նորա, տէր, բժշկեա զաչս իմ. և առժամայն բժշկեցաւ: Զայս առ եղբայրն ասաց:

Եւ ասէր բազում անգամ, եթէ ոչ գիտեմ մարդիկ զսէր և զպատիւ, զի կորեան միտք և գիտութիւք մեր. ապա թէ ոչ՝ զիւրդ փոքր մի ոչ բառնայ ոք զեղբայրն բարկացեալ կամ զսրտմտեալն. և նա յետ սակաւ միոյ գայ 'ի միտս իւր և ծանիցէ եթէ համբերեաց նմա, և յայնմհետէ այնպէս սիրէր զնա իբրև զանձն իւր:

Ասէր զայլոյ ումեմն եղբօրէ որ պատմեալ էր նմա՝ եթէ ունէր նա վարդապետ և հայր՝ հեզ և խոնարհ և քաղցր, և յաղագս մեծամեծ առաքինութեանց իւրոց և բարձր նշանացն զոր առնէր նովաւ ա՟ծ՝ իբրև զհրեշտակ համարեալ էր յամենայն երկրէ: Իսկ 'ի միում աւուր յաղթեցաւ ոմն եղբայր 'ի չարէն և եկն առ նա. կռուէր ընդ նմա և անարգէր դժնեայ անարգանս, և ժողովեցան 'ի վերայ նորա անթիւ բազմութիւն: Իսկ ծերն կայր յաղօթս, և հայեցեալ ընդ երեսս նորա ասէ ցնա. շնորհք են ա՟յ 'ի բերան քո, եղբայր: Իսկ նա կատաղեալ ասէր. այո, չար ծեր, չնացող որկրամոլ և արբեցող. վասն այսորիկ ասես զայդ, զի զքեզ հեզ և խոնարհ ցուցանիցես սոցա ամենեցուն: Ասէ ցնա ծերն. ճշմարիտ զոր ինչ ասես, որդեակ, բարւոք և իրաւ ասես: Ասէ ոմն ցնա. և ո՞չ 'ի միտ շարժեալ բարկացար, ով հայր: Ասէ ցնա ծերն. և ոչ ամենևին, վասն զի տեսանեմ

զանձն իւր պահեալ անաւր 'ի Քսէ : Այլ ասէր մանկունքն' եթէ պարտ է զոհանալ 'ի վերայ այսպիսեաց և համարել զնոսա բժիշկս, որ բժշկեսցէ զախտ անձին իւրոյ. և զի համարել զնոսա բարերարս, զի նոքօք հանդիպեսցի նա արքայութեան երկնից :

Ասէր դարձեալ մանկունք, վասն զի սա կոչէր երանելի, եթէ մինչդեռ էի 'ի վանսն իմ Սկիտոսի, նախ քան զերանելին իմ անուն եկին առ մեզ ծեր ոմն սուրբ և հաճոյ Այ, և ընթեռնուաք մեք զգիրս սրբոց հարցն. զի սիրէր զնա մանկունք, մինչ զի յարատեւ միշտ զնա ընթեռնոյր, իբր թէ շունչ և հոգի նորա զնա ասելի է, յորմէ ժողովեաց բազում առաքինութիւնս յանձն իւր : Այլ յընթեռնուլն զգիրսն եկն յայն տեղի ուր գրեալ էր ծերոյն, առ որս եկին աւազակք 'ի գիշերի և ասեն' եթէ զամենայն ինչ զոր կայ 'ի խցի քո՝ տանել եկաք այսր : Այլ նա ասէ. զամենայն ինչ զոր կամիք, որդեակք, տարջիք : Այլ նոքա առեալ զամենայն գնացին : Իսկ մնաց մի քրիչ միայն, և առեալ զայն ծերոյն ընթանայր զկնի նոցա, ձայնէր ուժգին և ասէր. որդեակք, տարջիք և զայս ևս ընդ ձեզ, զի մնաց սա 'ի սենեկի իմոյ : Իսկ նոցա զարհուրեալ ընդ անչարութիւն ծերոյն՝ դարձուցին զամենայն ինչս նորա 'ի սենեակ նորա և ասեն. Ճշմարիտ մարդ Այ է սա : Այլ մինչ ընթերցաք զայս, ասէ ցիս ծերն. գիտես, ով հայր, զի շահ բազում եղև ինձ յընթերցուածս յայս : Իսկ ես ասացի. որպէս, հայր : Այլ նա ասէ. մինչ շրջէի ես յանապատս Յորդանանու և բնակէի անդ, ընթերցայ ես զսա և զարմացայ ընդ առաքինութիւնս ծերոյն այնորիկ և ասացի. տէր, արժանի արա և զիս հետևել զկնի նորա հետոյ որ զգեցեալ եմ զկարգ նորա, և ունէի զայս կարօտ 'ի միտի : Արդ և անցին 'ի վերայ աւուրս երկուս, և ահա հասին աւազակք 'ի վերայ իմ. և իբրև բախեցին զդուռն 'ի գիշերի, և զի ծանեայ եթէ աւազակք են, և ասեմ ցանձն իմ. գոհութիւն Այ, ահա եհաս ժամ ցուցանել զպտուղ կարօտին քո : Այլ բացեալ զդուռն ընկալայ զնոսա ուրախութեամբ, և վա

1 Յաւելուած յայսմ տեղւոջ է առ Թարգմանիչն և յօրինակ Յունականն 'ի բանն Զօսիմայի, խախտեալ ... երանելին, զոր յայտնի Թարգմանիչն ... է ծերն. զի ... Մակարիոս ... բանին, ... Թարգմանիչն զՄակարիոս ... 427. 428, որպէս և ...

ռեալ լոյս սկսաւ ցուցանել նոցա զամենայն ինչս իմ և ասեմ ցնոսա. մի շփոթիք ինչ, հաւատամ յՏէր զի ոչ թարուցանեմ 'ի ձէնջ զամենայն ինչ զոր իմ իցէ: Իսկ նոքա ասեն ցիս. ունիս ոսկի: Եւ ես ասեմ. այո ունիմ երիս դահեկանս: Եւ զայն ևս բերի առաջի նոցա, և առեալ զամենայն գնացին խաղաղութեամբ: Եւ ես աւացի լրջմտութեամբ ծերոյն որ պատմէրն զայս ինձ. և զքոյն դարձուցին աւազակքն զինչս իւրև զծերոյն այնմիկ դարձուցին: Իսկ նա ասէ. մի արասցէ Աստուած, քաւ լիցի. զի ոչ վասն դարձուցանելոյ արարի զայն, այլ և զի ոչ էր պիտոյ ինձ այն, այլ առին և գնացին: Տեսանէք եթէ և 'ի պատրաստ լինել ծերոյն զինչ արարին. զի ոչ եթէ միայն ոչ տրտմեցաւ, այլ և ցնծայր և գոհանայր զայ վասն այնպիսի բարւոյ հանդիպելոյ. և ես յիշեցի զմերազգոյն բանն, եթէ փոքր մի բաժանանք զեղբայրն մեր, շահիմք զանձինս նոցա:

Պատմել կամիմ ձեզ գործ ինչ զոր երանելին Սերգի առաջնորդն Պետիադոյ ասաց մեզ: Քանզի ասէր Սերգի՝ եթէ երթայի երբեմն ընդ ծերոյ ումեմն սրբոյ, և մոլորեալ յուղւոյն ոչ գիտէաք եթէ յո երթայաք, զի աննշան էր վայրն. և գտաք յանկարծակի յերդս ուղւոյն սերմանեալ արտորայս և կոխեցաք զբազում սերմանեալս գնալով 'ի վերայ նորա: Իմացաւ զայն մշակն զի անդ էր 'ի գործ, և սկսաւ կռուել ընդ մեզ և անարգէր բարկութեամբ և ասէ. արդ և դուք կրօնաւորք էք, դուք երկնչէք յայ. ոչ բնաւ. և զի թէ երկիւղն այ առաջի աչաց ձերոց էր, զայդ ոչ առնէիք: Ասէ ցիս ծերն. վասն տեառն՝ դու մի բնաւ պատասխանի առներ: Ասէ ցնա ծերն հեզաբար. բարւոք ասես, որդեակ. եթէ էր 'ի մեզ երկիւղն այ, ոչ առնէաք զայս. այլ թող մեզ վասն տեառն: Եւ դարձեալ անարգէր, իսկ ծերն դարձեալ զնոյն ասէր: Զարմացաւ ընդ անչարութեան ծերոյն և ասէ. թողցես ինձ վասն տեառն և տարջիք զիս ընդ ձեզ: Եւ հետևեալ մեզ առժամայն եղև կրօնաւոր: Եւ ասէր Սերգի. ահա հեզութիւն և քաղցրութիւն հոգւոյն, տեսէք թէ զինչ գործեաց շնորհօքն այ, և որպէս կեցոյց զանձն 'ի պատկեր այ ստեղծելոյն, զոր առաւել սիրէ տէր քան զբիւր երկինս և երկիր:

Եւ ես մինչ էի առ նմա, և ասէր ցիս Սերգի. ասա-

ցից ձեզ բանս գրոց։ Այլ սկսաւ ուսուցանել բան զառակաց որ ասէ՝ եթէ ՚ի փայտ բազում ցնծասցէ հուր․ իսկ ուր ոչ իցէ բարկութի, անդ լռեալ է կռիւ։ Հարցի ցնա և ասեմ․ Հայր, զի՞նչ է զօրութի բանիս այսորիկ։ Իսկ նա ասէ ցիս․ զոր օրինակ փայտ պատճառ է հրոյ և բոցոյ, և յորժամ ոչ դիցի փայտ՝ շիջանի հուր, այսպէս լինի և ՚ի վերայ ամենայն ախտից։ Քանզի են ինչ որք են պատճառք ախտիցն, և եթէ ոք հատցէ ըզպատճառ նոցին՝ ոչ կարեն առնել ինչ․ զի պատճառ պոռնկութե է ուտել և ըմպել անառակութբ և յագումն քնոյ և դատարկութի և բերկրումն և դատարկութի բանից և զգենուլ զփափուկս․ և եթէ ոք հատցէ զայսոսիկ, տկարանան ախտք պոռնկութեան։ Այլ զի պատճառ բարկութե իցէ տալ և առնուլ, վաճառել և գնել և կատարել զկամս իւր, և սէր վարդապետութե և զանձն առ իմաստունս ունել․ և եթէ ոք զսոսա հատցէ, տկարանայ ախտ սրտմտութե որպէս և ասաց հայրն Մովսէս։

Այլ այս է բան հօրն զոր ասաց եղբօր ումեմն մինչ եհարց ցնա և ասէ, ընդէ՞ր, Հայր, ախտք ոչ հեռանան յինէն։ Այլ նա ասէ ցնա․ վասն այսորիկ զի պատճառք նոցին ՚ի ներքս ՚ի քեզ են, և զանօթ նոցին և զնիւթս բարձեալ ունիս․ տուր զգրաւականս նոցա և գնան ՚ի քէն։ Իսկ կրկին բարկացող ուր ոչ ծածկի շփոթս՝ այն ոմն է, որ ՚ի վերայ բարկութե անդէն բարկանայ և ոչ յագի առաջին բարկութբն, այլ առաւել բորբոքի բարկութբ և ջանայ յաղթել բարկութբ բարկութեն։ Իսկ եթէ ոք բարկանայ եղբօրն, և ապա զղջանայ և գայ ՚ի միտս իւր և մեղադրէ անձինն, և գնայ անկանի առաջի եղբօրն և թողութի հայցէ բարկութեն, սա ոչ կոչի կրկին բարկացող, զի աստ լռեալ են կռիւք, զի մեղադրեաց անձին և խոնարհեցաւ եղբօրն և արար խաղաղութի։ Իսկ բարկացող որ ոչ զղջանայ և ոչ մեղադրէ իւր, այլ առաւել սրտմտի և ջանայ զի ոչ ընաւ յաղթեսցի բարկութբ ընկերին ՚ի շփոթմանն, սա կոչի կրկին բարկացող․ ՚ի սմանէ ոչ լռեն կռիւք․ ունին զնա ոխակալութիք և սրտմտութիք։ Այլ տէրն Յիս Քս փրկեսցէ զմեզ ՚ի վիճակէ այսպիսեացս, և արժանի արասցէ զմեզ վիճակի հեզոցն և խոնարհացն և որք սիրեն զխաղաղութի։

Այս ասէր երանելին մակարի՝ եթէ յոյժ զգաստութիւն և իմաստութի պիտոյ են մեզ, զի ընդդէմ կացցուք բազում հնարից սատանայի. զի է երբեք զի և ոչ ընաւ բարկացեալ մարդ 'ի վերայ մեծամեծ պատճառի, և է երբեք զի խրատուս ցուցանեն զեք բարկանալ 'ի սակաւ պատճառս և զանձն իրաւ համարի. այլ այս հնարք թշնամւոյն է և ոչ կարգ նոցին որք կամին գնալ ընդ ճանապարհ սրբոցն։ Որպէս մակարի ասաց՝ եթէ հեռի է 'ի կրօնաւորէ բարկութի և կամ տրտմեցուցանել զեղբայրն։

Այս ասէր՝ եթէ պատուիրեցի երբեմն արագագրի ումեմն գրչի եղբօր զի գրեսցէ ինձ գիրքս, և արկի զվարձս նորա։ Եւ նա զկնի կատարման գրոցն պատուիրեաց ինձ եթէ ահա կատարեցի զգիրսն քո և առաքեալ տարցես զնա քեզ։ Լուաւ յինէն զայս եղբայր ոմն, և գնաց իբրև յինէն ետ զգիրս 'ի գրողն և առեալ տարաւ զնա. իսկ իմ ոչ իմացեալ զայն՝ առաքեցի զեղբայր իմ և ընդ գինն զի բերցէ զգիրսն։ Եւ իբրև ծանեաւ զայս գրիչն եթէ խաբեցաւ 'ի նմանէ որ տարաւ զգիրսն, և զայրացաւ բարկութ. և ասէ. գնամ առ նա և արհամարհեմ զնա և զանեմ, վասն զի խաբեալ ծաղր արար զիս, և զի ոչ էր նմա գիրքն։ Եւ իմ լուեալ զայս՝ պատուիրեցի առ գրողն՝ գիտեա, ով եղբայր, զի վասն այնորիկ ստանամք գիրս զի ուսցուք 'ի նոցանէ զհեզութի և զխոնարհութի և զսէր. իսկ եթէ սկիզբն գրոցն շփոթ և կռիւս արասցուք, ոչ ընաւ ստանամք գիրս, զի մի կռուօղս լիցուք, և զի ծառայի տեառն ոչ է պարտ կռուօղս լինել. Թող զգիրսն 'ի նմա և մի նեղեր զնա։ Այս լուաւ ինձ զայն։

Նստեալ երբեմն մակարի խօսէր ընդ եղբարսն զշահ հոգւոյ՝ ունելով 'ի ձեռս զգիրս հարցն, և եկն յայն տեղի որ ասէր Պիմէն՝ եթէ որ մեղադրէ անձին՝ գտցէ հանգիստ յամենայնի. և դարձեալ զբանն որ ասաց հայրն Նիտրիոյ լերինն՝ եթէ պարտ է յամենայնի խրատել զանձն և մեղադրել նմա. և որք լուանն ասեն՝ այդ է ճանապարհ կենաց կրօնաւորի։ Այս ասէր. տեսէք թէ որքան զօրութի ունին բանք սուրբ հարցն, և իրաւի է վասն զի զոր ասացին բանիւք՝ նախ փորձեցին գործովք և ապա ասացին, զի փորձիւ իմացան և ճշմարիտ ասացին. վասն այսորիկ զօրաւորք են բանք նոցա, զի նախ

ինքեանք գործեցին և ապա ասացին, որպէս իմաստուն ոմն ասէ՝ եթէ զբանս քո հաստատեսցեն գործք քո։

Ասաց մեզ և զպատմութիւն այսպիսի ասն՝ եթէ Նըստէի երբեմն ՚ի վանս հօրն Պօղոսիմէի, և էր անդ ծեր ոմն բարեկամ իմ։ Ի միում աւուր նստեալ խօսէաք բանս շահաւէտս, և յիշեցաք զբանս Պիմէնի հօրն և զայլոց հարցն, և նա ասէ ցիս․ ես գործովք փորձ առի զայս բանից և զշահս նոցին։ Քանզի էր երբեմն սարկաւագ ոմն ՚ի վանս յայս և յոյժ բարեկամ իմ էր, և ոչ գիտեմ եթէ ուստի՞ եղև նմա կարծիս յինէն, և բան ինչ տրտմեցուցանէր զանձն նորա, և սկսաւ տրտմել ընդ իս և գրգռել։ Իսկ ես մինչ տեսի զնա տրտմեալ՝ ասեմ ցնա․ զի՞ է քեզ, եղբայր, զի այդպէս տխրեալ ես։ Եւ նա ասէ ցիս՝ թէ զայս բանս արարեալ և ասացեալ է քո վասն իմ։ Իսկ ես որպէս ոչ գիտէի ինչ զանձնէ խիղճ, սկսայ երդմամբ հաւատացուցանել զնա։ Եւ նա ասէ․ ոչ կարես հաւատացուցանել զիս։ Եւ բազում անգամ արարի զայն, և ոչ էառ յանձն։ Իսկ ես խորհէի ՚ի միտ՝ մի՞թէ արարեա՞լ է իմ․ և ոչ արարեալ էր իմ։ Եւ ՚ի միում աւուր տեսի զնա զի ՚ի սուրբ բեմին բարձեալ էր նա զսկիհն և հաղորդէր զեղբարսն յարենէն և ՚ի մարմնոյն Քի․ և ես գնացի մերձ և երդուայ ՚ի սուրբ խորհուրդն Քի թէ ոչ գիտեմ զայն, և ոչ էառ յանձն, այլ տխրէր։ Յայնժամ եկի ՚ի միտս իմ և յիշեցի զբանս հարցն զմեղադրելոյ անձին և հաւատացի նոցա և սկսայ մեղադրել անձին և ասել, թէ Ճըշմարիտ սարկաւագն այն կատարեալ սէր ունի ՚ի վերայ իմ, և ՚ի սիրոյն առաց ինձ զոր կրէր ՚ի սրտի իւրում, որպէս զի յառաջ զգուշասցիմ։ Այլ ով եղկելի անձն իմ, որ ասես եթէ ոչ է իմ արարեալ զայն, այլ զբիւր չարիս գործեալ ես և զամենայն մոռացեալ, մի՞թէ զայն ես արարեալ մոռացար․ ո՞ւր են քո երեկեան և յեռանդեան չար գործքն զորս բազում անգամ գչարս գործելով զանց արարեր․ արդ որպէս և զայն ամենայն արարեալ է քո և մոռացեալ՝ ստուգիւ և զայն արարեալ և մոռացար։ Իսկ այսպէս հաւատացուցի զսիրտ իմ թէ արարի և զայն և մոռացայ, իբրև զայլն ամենայն զոր և արարեալ և մոռացայ․ և այսու օրինակաւ գոհանայի զԱյ և զսարկաւագէն զայնմանէ, որով ծանեայ զմեղս իմ և զյան-

ցանս, զի թերեւս ապաշխարեսցէ։ Եւ յարուցեալ այսու խորհրդով գնացի առ սարկաւագն խնդրել թողութիւն 'ի նմանէ։ Նա մինչ բախեցի զդուռն և եբաց նա, և փաղփաղակի ինքն անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց յերկիր և ասէ. թողութիւն շնորհեա ինձ, ով եղբայր, զի դուք այպանեցիք զիս և խորհեցայ քեզ առնել զայդ. այլ արդ ա̄ծ հաւատացոյց զիս զի ոչ ես արարեալ զազայն գործ։ Եւ ոչ բնաւ եթող զիս առաջի իւր անկանել, այլ ասաց՝ բաւական է այս։

Եւ ասէր. տեսէք զկատարեալ խոնարհութիւն եթէ որպէս չինեաց զսիրտ նորա 'ի վերայ ընկերին իւրոյ. զի ոչ բնաւ գայթակղեցաւ 'ի վերայ սարկաւագին զբամբասանացն, և այն զի մի անգամ և երկիցս երդուաւ և աղաչեաց, և նա ոչ ընկալաւ զաղաչանս նորա. այլ նա զմեղսն զոր ոչ գործեալ էր, եդ 'ի վերայ անձին և զնոյն անկանել առաջի նորա և գոհանայր զնմանէ։ Եւ ասէր. տեսանէք թէ զինչ գործէ առաքինութիւն և կամ յորպիսի բարձրութիւն չափ 'ի վեր հանէ զմշակ իւր. զի թէ առեալ էր 'ի միտ, բազում պատճառս գտանէր ունայնս՝ տեսանել զսարկաւագն իբրեւ զդեւս. այլ զի յառաքինութիւն ուղղեցաւ, ոչ միայն զի ոչ ատեաց և ոչ արտաքսեցոյց զնա, այլ և առնուլ գոհանայր, զի առաքինութիւն լուսաւորեաց զմիտս նորա։ Նոյնպէս և մեք եթէ պատրաստեմք զսիրտ և զմիտս մեր և կակղեսցուք զերկիր հաղուոց մերոց և սերմանեսցուք զսերմն հեզութեան և խոնարհութեան 'ի նմա, նա ոչ բերէ որոմն զոր սերմանէ սատանայ. ապա թէ գտանէ զմեզ քակեալս յոյժ բարի խորհրդոց և պատրաստեալս առ ա̄մ չարութիւն, յայնժամ մտանէ նա և սերմանէ 'ի մեզ զսերմանիս չարեաց իւրոց մինչև լցցէ զարտորայս անձին և մտաց։ Նոյնպէս և ջանալ 'ի վերայ առաքինութեանց լինելն. զի եթէ տեսանէ տէր զդք զի ծառայեսցի փրկութեան և գործէ զսերմանս բարիս, յայնժամ ընդունի զյօժարութիւն նորա և զկամս բարիս, և տայ նմա զշնորհս և զպարգևս իւր։

Յիշեցի և զծերոյն այնորիկ գործ՝ զորոյ գողանայր ղրացի եղբայրն զպէտսն իւր, և նա ոչ երբէք յանդիմանեաց. այլ առաւել ևս աշխատէր՝ թէ սուղապէս կարիս՝ ունի և պիտոյ է նմա. և զարմանային ընդ քաղցրութիւն սրտի նորա։

Եւ դարձեալ պատմէր մեզ այսպէս ասելով՝ եթէ էի երբեմն ես 'ի Պեղխոդա, և ասաց ինձ առաջնորդ վանաց ումեմն՝ եթէ մերձ 'ի վանս մեր էր անձն միայնակեաց ծեր՝ ուղիղ և բարեգործ այր, և էր մերձ նորա բնակութիւն այլ անձն եղբօր. և յորժամ ել ծերն 'ի սենեկէ իւրմէ, յաղթեալ եղև եղբայրն այն 'ի սատանայէ, և բացեալ եղբայրն զդուռն և գողացաւ զգիրս և զամենայն ինչս նորա։ Իբրև եկեալ ծերն եմուտ 'ի տուն իւր և ոչ եգիտ զինչս և զգիրս իւր, և յարուցեալ գնաց առ եղբայրն զի պատմեսցէ նմա զեղեալ գործն. իբրև եմուտ 'ի տունն, ետես զինչս իւր 'ի տան նորա զի ոչ ծածկեալ էր զնոսա դեռ ևս։ Իսկ ծերն ոչ կամեցաւ ամաչեցուցանել զնա կամ յանդիմանել. ել արտաքս իբրև եթէ 'ի կարիս ինչ որովայնի ելից, և յամեաց անդ ժամս բազումս մինչև ծածկեսցէ և թագուսցէ զնոսա։ Եւ եկն ծերն առ եղբայրն դարձեալ և սկսաւ խօսել ընդ նմա զայլ ինչ բանս, և զեղբայրն ոչ յանդիմանեաց և ոչ ամաչեցոյց։ Իսկ զկնի աւուրց ինչ ծանեան զանօթս և զգիրս ծերոյն առ եղբայրն, և տարեալ արկին զնա 'ի բանտ։ Իսկ ծերն ոչ իմացեալ զպատճառս բանտին, այլ լուաւ միայն եթէ արկին զնա 'ի բանտ, այլ թէ վասն էր պատճառի արկին՝ ոչ գիտէր։ Այլ եկն առ իս և ասէ. արա սէր և տուր ինձ ձուս հինգս և հաց սուրբ։ Եւ ես ասեմ ցնա. միթէ օտար ոմն եկն առ քեզ։ Եւ նա ասէ՝ այո։ Իսկ առեալ զայն ծերոյն և գնաց 'ի բանտըն։ Իսկ եղբայրն իբրև ետես զծերն, անկաւ առ ոտս նորա և ասէ. վասն քո եմ 'ի բանտիս, ով հայր, զի ես գողացայ զտուն քո. այլ ահա գիրք և հանդերձք քո անդր ուրեմն է։ Ասէ ցնա ծերն. հաւատա ինձ, որդեակ, զի ոչ յայն սակս մտի այսր և ոչ գիտէի թէ վասն իմ ես 'ի բանտի, այլ միայն լուայ թէ 'ի բանտի ես և եկի այսր մխիթարել զքեզ, և ահա սէր իմ ընդ իս է. և արդ փութամ մինչև հանից զքեզ աստի։ Եւ գնացեալ աղաչեաց ծերն զմի յիշխանացն զի ծանօթ նոցին էր ծերն. իսկ նա աղաչեաց զգլխաւոր իշխանն, և գնացեալ ընդ նմա եհան 'ի բանտէն զեղբայրն։

Ասէին և վասն այնր ծերոյն՝ եթէ գնաց երբեմն 'ի վաճառ զի գնեսցէ հանդերձ իւր և չուխայ. և առեալ եառ դահեկան, և պակասեաց դրամն ինչ 'ի գնոց նորա.

և նա եդ զգլուխայն 'ի ներքոյ իւր և սկսաւ հառաչել զփողս 'ի դուռն կրպակին։ Այլ մինչ թուէր, եկն ոմն գող և կամէր տանել զկտաւն որ 'ի ներքոյ իւր էր։ Այլ խնայեաց զայս ծերոյն, այլ զի ունէր սիրտ գթած՝ թե-թեւացոյց զինքն և կորացաւ 'ի կրպակին՝ իբր թէ հանգս-տեացէ զփողսն, և թող նմա տանել զկտաւն որ 'ի ներ-քոյ իւր էր, և ոչ յանդիմանեաց և ոչ մատնեաց զնա ծերն։ Այլ ասէր եղբարցն. որչափ արժէր կտաւն այն և ինչքն իւր զոր կորոյս կանխաւ. այլ յամենայնի եցոյց յօժարութիւն ընտրեալ և յոյժ մեծ և քաղցրադոյն. զի սուրբ ծերն գործովք եցոյց եթէ մինչ ունէր զայն՝ իբրև ոչ ինչ ունէր, վասն այսորիկ իբրև կորեաւ կտաւն՝ 'ի նոյն միտս եկաց և ոչ շփոթեցաւ և ոչ տրտմեցաւ։ Այլ որպէս բազում անգամ ասացի, ոչ թէ ունելն վնասեա-ցէ զքեզ, այլ չարաչար ունելն. զի նա թէ ունէր զամ աշխարհ, այնպէս էր որպէս թէ բնաւ ինչ ոչ ունէր. և յորմէ արար նա, յայտնեաց զանձն իւր եթէ յամե-նայն ախտից ազատ է։ Զայս ամենայն և մեք փորձեա-ցուք, եղբարք, և զխրատս սուրբ հարցն մերոց յօժարու-թեամբ ընկալցուք 'ի փառս և 'ի պատիւ տեառն և փրկ-չին մերոյ Յսի Քսի։



## Բ

# ՎԱՍՆ ՀԱՆԴԱՐՏՈՒԹԵԱՆ

ԵՂԲԱՅՐ ոմն նստէր 'ի խցի իւրում, և սերմանեաց 'ի նա սատանայ զի ելցէ 'ի խցէն իւրմէ, ասելով ցնա այսպէս՝ թէ արժան է քեզ երթալ առ այս անուն ծեր։ Եւ նա ասէ. յայլ ժամու երթամ։ Ասէ ցնա դարձեալ խորհուրդն իւր. եթէ յանկարծ մեռանի ծերն, մնաս այնուհետև և ոչ տեսանես զնա. այլ մանաւանդ երթ տես զնա, և խօսիս առժամայն ընդ նմա վասն հնձոց։ Ասէ դարձեալ ցխորհուրդս իւր՝ եթէ չէ ժամանակ այժմ վասն հնձոց խօսելոյ։ Դարձեալ սատանայ 'ի միտս արկանէր նմա և ասէր՝ թէ այժ երթ. մինչ տեսանես զծերն և հնձես քեզ սակաւ մի կնիւն, լինի ժամանակ հնձոց։ Եւ յանձին կալեալ ասէր. իբրև կատարեմ 'ի մանելոյ զսակաւ արմաւենիս զայս զոր ունիմ 'ի ձեռին իմում, ապա ելանեմ։ Իսկ նոքա ասեն ցնա. ահա մինչ ջերմագոյն է օդդ գարնանային, արի երթ։ Եւ թողեալ զձեռագործն ել և գնաց։ Եւ էր նորա դրացի ոմն ծեր տեսանող, կոչեաց զնա և ասէ. գերեալդ և յուսարի երթեալդ, եկ այսր։ Եւ իբրև եկն ասէ ցնա. դարձիր 'ի խուցն քո։ Եւ պատմեաց նմա եղբայրն զամենայն զպատերազմն՝ որ եթէ դիպեցաւ նմա։ Եւ իբրև եմուտ 'ի խուցն, ընկէց զինքն 'ի գետին՝ ապաշխարելով առ ա͞ծ։ Եւ աղաղակեալ 'ի ձայն մեծ դևքն ասելով. յաղթեցէք մեզ, միայնակեացքդ։ Եւ եղև պղտաւեզէնն 'ի ներքոյ նորա իբրև հրով այրեցեալ, և նոքա որպէս զծուխ ցրուեցան, և իմացաւ եղբայրն զնենգութիւն նոցա։

ԵՂԲԱՅՐ[1] ոմն եհարց ցհայրն Արսէն և ասէ՝ եթէ խորհուրդք իմ խռովեցուցանեն զիս զայս ասելով՝ ոչ կարես գործել և պահել, այլ տեսուչ լեր հիւանդաց,

[1] ԱՍԱՑ ոմն ցհայրն Արսենիէ. խորհուրդք իմ նեղեն զիս և ասեն՝ եթէ պահել և աշխատել կարող ոչ ես՝ զհիւանդս տեսցես, զի և այն սէր է։ Իսկ ծերն գիտէր զխարդաւանանս չարին, ասէ ցնա. գնա, ով

և այդ գործ մեծ է։ Ասէ ցնա ծերն՝ գիտացեալ զներմանման սատանայականս. երթ կեր արբ և ննջեա և մի գործեր, բայց միայն 'ի խցէ անտի մի ելաներ, գիտելով զայս եթէ համբերութիւն խցին ածէ զմենակեացն 'ի կարգ իւր։ Եւ արար այնպէս աւուրս երիս. ուտէր և ըմպէր և 'ի քուն կեայր։ Ապա յագեալ ձանձրացաւ, և եգիտ տերև արմաւենւոյ 'ի գետնի, և առեալ եհերձ. դարձեալ 'ի վաղիւն սկսաւ գործել, և քաղցեալ ասէր. այլ սակաւ ունիմ յարմաւենւոյս, զայս սպառեմ և ապա ճաշակեմ։ Եւ յորժամ սպառեաց, ասէ առանձինն. կարդացից սակաւիկ մի և ապա ճաշակեցից։ Եւ իբրև կարդաց, ասացից, ասէ, սակաւ մի սաղմոսկունս, և այնպէս անհոգութեամբ ճաշակեմ։ Եւ այսպէս առ սակաւ սակաւ աճէր և յառաջէր ձեռնտու լինելով այ̃ մինչև եկն 'ի կարգ իւր, և քաջութեամբ առեալ ընդդէմ խորհրդոցն յաղթէր նոցա։

ՀԻՒԱՆԴԱՑԱՒ[1] երբեմն հայրն Յովսէփ մերձ 'ի մահ, և յղեաց առ հայրն Թէոդորոս և ասէ. եկ զի տեսից զքեզ մինչ չև ելեալ եմ 'ի մարմնոյս։ Եւ էր մեծ շաբաթուն, վասն այնորիկ ոչ կամեցաւ երթալ, այլ յղեաց առ նա և ասէ. եթէ անցանեմ մինչև 'ի շաբաթ օր և գամ. ապա եթէ երթաս, յայնմ աշխարհի տեսանեմք զիրեարս։

ԱՍԷՐ[2] ամն՝ եթէ երեք վաստակաւորք էին ոմանք սիրելիք, և եղեալ նոցա միայնակեացք՝ այլ և այլ խորհուրդս ունէին. մինն 'ի նոցանէ նախ ախորժեաց ընդունել զճանապարհորդութիւն, և ուր կագ և կռիւ լինէին՝ խաղաղութիւն առնէր. իսկ երկրորդն ախորժեաց տեսուչ լի-

եղբայր, կեր և արբ և ննջեա և մի ինչ արասցես, բայց միայն 'ի սենեկէ քումմէ մի մեկնեսցիս. զի գիտէր ծերն եթէ համբերելն 'ի սենեկի միայն՝ ածէ զկրօնաւորն յառաջին կարգն իւր։

1 Հիւանդացեալ եղև երբեմն հայրն Յովսէփ և պատուիրեաց առ Թէոդորէ փերեմացին՝ եթէ եկեսջիր զի տեսից զքեզ նախ քան զելանելն իմ 'ի մարմնոյս։ Եւ նա ոչ գնաց, զի էր 'ի մէջ եօթնեկին, այլ պատուիրեաց և ասէ. եթէ կեցցես մինչև ցշաբաթն՝ եկեցայ առ քեզ, իսկ եթէ գնասցես՝ 'ի յայնմ աշխարհի տեսցուք զմիմեանս։

2 Պատմէր մեզ ոմն 'ի ծերոցն՝ եթէ էին ոմանք արք երեք ուսեալք զիմաստութիւն և սիրելիք միմեանց յոյժ, և եկեալք 'ի կրօնաւորութիւն մինն ընտրեաց, զի 'ի մէջ կռուելոց արասցէ խաղաղութիւն ըստ բանին տեառն որ ասէ՝ եթէ երանի խաղաղարարացն. և երկրորդն ընտրեաց սպասաւորել հիւանդաց վասն բանին որ ասէ՝ թէ հիւանդ էի և տեսէք զիս. իսկ երրորդն գնացեալ յանապատ և միայնացեալ հանգար-

նել Հիւանդաց, և երրորդն չոգաւ գնաց յանապատ զի անդ դադարեսցէ։ Յետ այսորիկ առաջինն աշխատեալ յոյժ վասն թշնամանաց և կռուոյ մարդկան՝ ոչ կարաց այսու ամենեցուն սպասաւորել, և ձանձրացեալ եկն առ տեսուչ Հիւանդացն՝ եգիտ և զնա խռովեալ և չժամանեալ զպատուիրանն կատարել, և միաբան չոգան առ անապատաւորն. և տեսեալ զիւրեարս խնդացին և պատմեցին նմա զնեղութիւն իւրեանց, և աղաչէին զի լուիցեն 'ի նմանէ թէ որպիսի ուղղութիւն արար նա։ Իսկ նարա ոչ ինչ տուեալ պատասխանի, և յետ սակաւ մի ժամու ասէ ցնոսա. եկայք երթիցուք և լցցուք մէն սափոր ջուր։ Եւ իբրև լցին՝ ասէ ցնոսա. արկէք զայդ յայս լական և հայեցարուք 'ի խոնարհ 'ի ջուրդ. և ասէ ցնոսա՝ զինչ տեսանէք, և ասեն՝ ոչ ինչ։ Եւ յորժամ դադարեաց ջուրն 'ի շարժելոյն, ասէ ցնոսա. հայեցարուք դարձեալ 'ի ջուրդ 'ի խոնարհ. և նոցա հայեցեալ՝ ասէ. արդ զինչ տեսանէք. և նոցա ասացեալ՝ թէ զդէմս մեր տեսանեմք յստակ, յայնժամ ասէ ցնոսա. այսպէս և որ 'ի մէջ մարդկան բնակէ, վասն զի 'ի խռովութենէն ոչ կարէ տեսանել զմեղս իւր. այլ եթէ յանապատի դադարեսցէ, յայնժամ յստակմտութ՟բ զայ 'ի տեսիլն ա՟յ։

ԵՐԹԵԱԼ՝ երբեմն հայրն Արսէն 'ի տեղի եղէգնուտ և շարժեցաւ եղէգնն 'ի հողմոյ, և ասէ ցեղբայրն ծե-

տեաց։ Իսկ առաջինն այն աշխատեցաւ յոյժ և ձանձրացաւ 'ի շփոթելոյ մարդկան և ոչ կարաց ամենեցուն շնորհել խաղաղութիւն, այլ և ինքն 'ի շփոթս նոցա մտանեալ եղև։ Վասն այսորիկ յարուցեալ գնաց առ այն որ տեսուչ հիւանդացն լեալ էր, և եգիտ նոյնպէս և զնա վհատեալ յոյժ, և ոչ կարող լեալ պատուիրանին այնորիկ՝ որ հիւանդաց տեսուչքն երանեցան. վասն այնորիկ ուխտեցին 'ի միասին և գնացին տեսանել զայն որ հանդարտեալն էր։ Իսկ իբրև տեսին զնա 'ի հանդարտութեան, պատմեցին նմա զվիշտս և զաշխատանս իւրեանց և զձանձրանալն, և աղաչեցին զնա պատմել նոցա եթէ նա զինչ ինչ ուղղեաց։ Իսկ նա լռեաց փոքր մի, և ապա յարուցեալ արկանէ ջուր 'ի տաշտի և ասէ. նայեսջիք անդր եթէ զինչ երևի ձեզ։ Իսկ նոքա նայեցեալ 'ի շարժել ջրոյն՝ ինչ ոչ տեսին։ Արդ յետ անցանելոյ ժամու ինչ յստակեալ կանգնեցաւ ջուրն։ Ասէ ցնոսա դարձեալ. և արդ հայեցարուք։ Եւ նայեցեալ տեսին զպատկերս իւրեանց իւրաքանչիւր 'ի նոցանէ մաքուր իբրև 'ի հայելւոջ։ Ասէ ցնոսա հանդարտեալն. այսու օրինակաւ իցէ և ներքին մարդն մեր, զի 'ի յամբոխս և 'ի շփոթս կալով ոչ կարէ տեսանել զմեղս իւր. իսկ մինչ հանդարտի առանձին յանապատի, յայնժամ քաջ տեսանէ զիւրն վատթարութիւն և զպակասութիւն։

։ Անցանէր երբեմն հայրն Արսենի ընդ տեղի ինչ, և անդ էր տեղիս եղեգանց, և զի շարժէին եղեգունքն 'ի հողմոյ անտի։ Ասէ ծերն ցեղ-

րանին. զի՞նչ է շարժումն այս: Ասէ ցնա. եղէգն շարժի 'ի հողմոյ: Ասէ ցնա. եթէ որ ճշմարտութիւն նմանցի 'ի լաւութեան եւ լսիցէ լոկ ձայն հաւու՝ ոչ ունի սիրտն զնոյն լաւութիւն, քանզի նինչ դուք ունելով այսր շարժումն զե-զեգանոդ:

Ա՝ՑԼ՝ երբեմն մինչդեռ նստէր նա 'ի Կանոպոսի, եկն ամն 'ի սինկղիտոսացն կուսան մեծատուն յոյժ եւ երկիւղած յԱյ 'ի Հռոմայ տեսանել զհայրն Արսէն. եւ ընկալաւ զնա եպիսկոպոսապետն Թէոփիլոս, եւ աղաչեաց զնա զի հաւանեցուսցէ զծերն ընդունել զնա: Եւ երթեալ առ ծերն աղաչեաց զնա եւ ասէ. այս անուն կին եկն 'ի սինկղիտոսացն 'ի Հռոմայ եւ կամի տեսանել զձեզ եւ օրհնիլ 'ի քէն: Իսկ ծերն ոչ կալաւ յանձին տեսանել զնա: Եւ իբրեւ պատմեաց թէ ոչ կամի ծերն տեսանել, հրամայեաց պատրաստել գրաստս ասելով՝ այսպէս՝ թէ հաւատամ յԱծ զի տեսանեմ զնա, վասն զի ոչ եթէ զմարդ եկի տեսանել ես, եւ 'ի քաղաքին իմում էին մարդիկ, այլ մարգարէ եկի տեսանել: Եւ իբրեւ եկեն 'ի խուցն կոյս ծերոյն, դէպ եղեւ ըստ շնորհացն Այ եւ դիպեցաւ ծերն արտաքոյ, եւ տեսեալ զնա անկաւ յոտս նորա: Եւ յարուցեալ զնա բարկութեամբ՝ հայեցաւ 'ի նա եւ ասէ. եթէ զերեսս իմ կամիս տեսանել, ահա տեսեր:

բարսն որ գնայքին ընդ նմա. զի՞նչ է ձայն և շարժումն այս: Ասեն ցնա. շարժումն եղեգանն իցէ, հայր: Իսկ ծերն ասէ ցնոսա. ասեմ ձեզ, եղբարք, եթէ նմանցի միայնակեաց հանդարտեալ 'ի խցի իւրում և լսիցէ ձայն թռչնոյ միոյ՝ ոչ կարիցէ ունել զհանդարտութիւն իւր, ո՞րչափ եւս առաւել եղեգունքս այս չփոթեն զմտրձաւորս իւր:

։ Նստէր հայրն Արսենիոս երբեմն 'ի Կանոպէ Աղեքսանդրոյ, և եկն առ նա կոյս մի դուստր իշխանի 'ի Հռոմայ՝ մեծատուն յոյժ և երկիւղած յԱյ 'ի տեսանել զնա: Եւ ընկալաւ զնա պարկեշտութեամբ Թէոփիլոս արքեպիսկոպոսն, զոր և աղաչէր կոյսն այն, որպէս թէ հաւատացուսցէ զծերն տեսանել զնա: Եւ յարեաւ Թէոփիլոս եկն առ ծերն և աղաչէր զնա զի տեսցէ զնա. զի ասէր՝ թէ կոյս մի աւագ և ազգական քո եկն 'ի Հռոմայ և կամի տեսանել զքեզ: Իսկ ծերն ոչ էառ յանձն առնել զայն: Իբրեւ լուաւ զայս կոյսն, ելեալ յերիվար իւր գնայր և ասէր. հաւատամ յԱծ տեսանել զնա. և ոչ թէ զմարդ խնդրեմ տեսանել, միթէ ո՞չ էին 'ի Հռոմ մարդիկ բազումք. այլ ըղհրեշտակ մի գնամ տեսանել: Եւ իբրեւ մերձեցաւ 'ի սենեակ ծերոյն, խնամօքն Այ գտաւ ծերն արտաքոյ խցին. և տեսեալ զնա կոյսն անկաւ առ ոտս նորա: Իսկ նորա յարուցեալ զնա բարկութեամբ և նայեցեալ 'ի նա իբրեւ զայրացեալ՝ ասէ. եթէ կամիս տեսանել զերեսս իմ, ահաւասիկ եմ, տեսցես: Իսկ նա յամօթոյն ոչ կարաց տեսանել զերեսս նորա: Ասէ ցնա ծերն. միթէ ո՞չ լուեիր զգործսն իմ, և կամ զխօսք

Իսկ նա յանձնթոյն ոչ նշմարեաց զզղջումն նորա։ Ասէ ցնա ծերն. ո՞չ լուար զգործս իմ, զի զայն է հարկաւորագոյն տեսանել. զիա՞րդ իշխեցեր ընդ ծով գալ. ո՞չ գիտես եթէ կին մարդ ես և չէ արժան քեզ ելանել ուրեք. արդ թերևս երթիցես 'ի Հռոմ և ասիցես ցայլ կանայս եթէ տեսի ես զԱրսէնիոս, և առնիցես ճանապարհ ընդ ծով կանանց որք եթէ գայցեն առ իս։ Եւ նա ասէ. թէ կամի Տէր, ոչ ումեք տամ գալ այսր. այլ աղօթս արա յիմ վերայ և յիշեա զիս հանապազ։ Եւ նա ասէ ցկինն. աղօթս առնեմ առ Տէր, զի ջնջեսցէ զյիշատակս քո 'ի սրտէ իմմէ։ Եւ զայս լուեալ կնոջն՝ ել և գնաց խռովեալ. և իբրև եկն 'ի քաղաքն, սկսաւ ջեռնուլ 'ի տրտմութենէն։ Եւ պատմեցաւ եպիսկոպոսապետին եթէ հիւանդ է կինն։ Եւ եկեալ առ նա եպիսկոպոսապետն հարցանէր զնա և ասէր եթէ զի՞նչ ցաւէ։ Եւ նա ասէ. երանի եթէ չէր դիպեալ աստ, վասն զի ասացի ցծերն եթէ յիշեա զիս, և ասաց ցիս՝ աղօթս առնեմ առ Տէր զի ջնջեսցէ զյիշատակս քո 'ի սրտէ իմմէ. և ահա ես մեռանիմ 'ի տրտմութենէ աստի։ Եւ ասէ ցնա եպիսկոպոսապետն. ո՞չ գիտես զի կին մարդ ես, և թշնամին 'ի ձեռն կանանց պատերազմի ընդ սուրբս, յաղագս այնորիկ ասաց ծերն զբանսն զայնոսիկ. բայց վասն հոգւոյ քո աղօթս առնէ հանապազ։ Եւ առողջացան խորհուրդք նորա և չոգաւ խնդութեամբ 'ի տեղի իւր։

ԱՍԷՐ հայրն Մովտոյիս. եթէ ոք 'կամի բնակել 'ի

իշխեցեր գալ հասանել, զայսչափ խորս ծովուց. մի՞թէ ծանեար դու թէ կին իցես, և ոչ արժան էր քեզ ելանել ուրեք երբէք. կամ թէ զիա՞րդ գնասցես դու 'ի Հռոմ և պատմեսցես այլ կանանց եթէ տեսի ես զԱրսէնի, և արասցես ճանապարհ զծով ամենայն կանանց զի գան առ իս։ Իսկ նա ասէ. եթէ կամեսցի Տէր, ես գնացից և ոչ մի ոք եկեսցէ աստ. այլ աղօթեա վասն իմ, հայր, և յիշեսցես զիս յաղօթս քո։ Ասէ ցնա ծերն. և ես աղօթիւք խնդրեցից 'ի Տեառնէ որպէս զի խլեսցէ զյիշատակս քո 'ի սրտէ իմմէ։ Իբրև լուաւ կոյսն զայս, գայձաւ մեծի խռովեալ և շփոթեալ յոյժ։ Եւ լուաւ զայս մեծն Թէոփիլէ եպիսկոպոսն. եկեսս զնա և հարցանէր զպատճառ տրտմութեանն։ Իսկ նա ասէ ցնա. լաւագոյն էր եթէ ոչ էի եկեալ այսր. զի ասացի ծերոյն եթէ յիշեա զիս յաղօթս քո, և նա ասէ՝ այսպէս աղաչեմ զՏէր զի ջնջեսցէ զյիշատակս քո 'ի սրտէ իմմէ, և ահա մեռանիմ ես յանչափ տրտմութենէս։ Ասէ ցնա եպիսկոպոսն. ո՞չ գիտես զի կին ես դու, և զի 'ի ձեռն կնոջ մարտնչի թշնամին ընդ սուրբսն, և վասն այսորիկ ասաց զայն ընդ քեզ ծերն. այլ վասն հոգւոյ քո միշտ աղօթեսցէ։ Եւ այսպէս բժշկեցաւ միտք և խորհուրդք կուսին և գնաց ուրախութեամբ։

ՊԻԱՐԶԵԱԼ[1] ասէ աբբայ Անտոնիոս. որ նստի յանապատ և ստանայ զլռութիւն, երեք պատերազմաց վանէ, զլսողութիւն և զշատախօսութիւն և զտեսութիւն, և առ մինն միայն կալցի զսիրտն։

ԱԹԲԱՑ[2] Արսենիոս յորժամ էր 'ի պալատն աղօթս առնէր առ Ած և ասէ. առաջնորդեա ինձ, տէր, թէ որպէս կեցից։ Եւ եկն առ նա ձայն որ ասէր. Արսենիէ, փախիր 'ի մարդկանէ և կեցցես։

ԱՍԱՑ[3] աբբայ Մարկոս ընդ աբբայ Արսենիէ. Արսենիէ, ընդէ՞ր փախստական լինիս 'ի մէնջ։ Ասէ ցնա ծերն. գիտէ Ած զի սիրեմ զձեզ, այլ ոչ կարեմ լինել ընդ Այ և ընդ մարդկան. զի 'ի վերն անդր բիւրք և հազարք մի կամս ունին, բայց մարդիկ բազմադիմի կամս ստացան. ոչ կարեմ որոշել յԱյ և գալ զհետ մարդկան։

ԵՂԲԱՅՐ[4] ոմն գնաց 'ի Սկիւթ առ աբբայ Մովսէս և խնդրէր 'ի նմանէ լսել բան։ Եւ ասէ ցնա ծերն. գնա և լռութիւն ստացիր 'ի խցին քում, և խուցն քո վարդապետէ քեզ զամենայն։

ԱՍԷՐ[5] աբբայ Աբրահամ աշակերտն աբբայ Սիսոյի ցնա. հայր, ծերացար, երթիցուք սակաւ մի մօտ յաշխարհ։ Ասէ ցնա ծերն. ուր ոչ գտանիցի կին, անդր գընամք։ Եւ ասէ ցնա աշակերտն. և ո՞ւր իցէ տեղի ուր

1 Ասաց (հայրն Անտոն) եթէ որ բնակին յանապատի հանդարտութեամբ, յերից պատերազմաց ազատեալ է, 'ի տեսութէ, 'ի լսողութէ և 'ի խօսակցութէ, և զմի ունի պատերազմ՝ որ է միտք և խորհուրդք։

2 Արսենիոս հայրն մինչդեռ 'ի պալատին էր աղօթէր առ Ած և ասէր. տէր, առաջնորդեա ինձ և ասա զիս թէ որպէս կեցցեմ։ Եւ եկն առ նա ձայն յերկնից որ ասէր. Արսենիէ, փախիր 'ի մարդկանէ և կեցցես։ Իսկ մինչ մեկնեցաւ 'ի մարդկանէ և եղև կրօնաւոր, աղօթէր և զնոյն բանս ասէր. և լուաւ դարձեալ ձայն յերկնից որ ասէր. Արսենիէ, փախիր և լռեա և հանդարտեա, զի սոքա արմատք անմեղութեան իցեն։

3 Ասաց հայրն Մարկոս ցհայրն Արսենիոս. ընդէ՞ր փախչիս 'ի մէնջ, հայր։ Ասէ ցնա ծերն. գիտէ տէր զի յոյժ սիրեմ զձեզ, այլ ոչ կարեմ կեալ ընդ Այ և ընդ մարդկան. զի հրեշտակաց բիւրաւորք մի կամք ունին յերկինս, իսկ մի մարդ բազում կամս ունի, և ես ոչ կարեմ թողուլ զկամս Այ և առնել զկամս մարդկան։

4 Եղբայր ոմն գնաց 'ի Սկիւթէ առ հայրն Մովսէս և խնդրէր 'ի նմանէ բան։ Ասէ ցնա ծերն. գնա նիստ 'ի սենեկին քում, և խցիկն քո ուսուսցէ քեզ զամենայն որ լաւն իցէ։

5 Ասէր ցհայրն Սիսոյի աշակերտն իւր. հայր, ծերացար յոյժ և ոչ կարես ժուժկալել աստ, եկ գնասցուք մօտ 'ի գիւղս։ Ասէ ցնա ծերն. ուր ոչ իցէ կին մարդ, գնասցուք։ Ասէ ցնա աշակերտն. և ո՞ւր գտա

ոչ գտանիցի կին, բայց եթէ յանապատ։ Ասէ ցնա ծերն. ապա երթիցուք յանապատ։

ԵՂԲԱՅՐ՝ մի եհարց զծերն եթէ զինչ իցէ լռութի կամ զինչ որ 'ի նմանէ օգտակարութի։ Եւ ասէ ցնա ծերն. լռութի՛ յորժամ նստի ոք 'ի սենեակ իւր լռութե և երկիւղիւն այ, և զգուշանայ 'ի յիշատակելոյ զչար և 'ի բարձրամտութէ. այսպիսի լռութիւն ծնող է ամենայն արիութե և պահէ զմիայնակեացն յամենայն հրացեալ նետից թշնամւոյն՝ աներկիւղ կացեալ 'ի հարուածոց նորա։ Ով լռութի, սանդուխք յերկինս. ով լռութի, ճանապարհ արքայութե երկնից. ով լռութի, բացող մօր. ով լռութի, ապաշխարութե ընդունող. ով լռութիւն, հայելի մեղուցելոցն՝ որ ցուցանես մարդկան զգործս իւրեանց. ով լռութի, արտասուաց և հեծեծանաց ոչ անհատող. ով լռութի, նուաստութե առաջաւոր. ով լռութիւն, հեզութե մայր. ով լռութի, որ 'ի խաղաղութե համար բերես զմարդ. ով լռութի, հոգւոյ փայլեցուցիչ. ով լռութի, հրեշտակաց կցորդակից. ով լռութի,

նիցի գիւղ որ ոչ լինիցին կանայք, բայց միայն յանապատի։ Ասէ ցնա ծերն. ապա և մեք յանապատ գնասցուք, որդեակ, և մի՛ 'ի գիւղ։

։ Եղբայր ոմն եհարց զհայրն Ռուփինէ և ասէ. զինչ է հանդարտութի և զինչ շահ նորա։ Ասէ ցնա ծերն. հանդարտութիւն այն է, նստել 'ի սենեկի գիտութ և երկիւղիւն այ, և զի հրաժարեսցէ յամենայն յիշաչարութէ և 'ի հպարտութէ. և զի այսպիսի հանդարտութիւն ծնող է ամենայն առաքինութեց և պահէ զկրօնաւոր յամենայն հրավառ նետից սատանայի։ Աղաչեմ զքեզ, եղբայր, տածցիր զայս և յիշեսցես միշտ զժամ ելից քոյ զոր մահուն, զի ոչ գիտես եթէ յորում պահու գայ գող, վասն այնորիկ արթուն լեր և զգաստ և հոգա զանձն քո։ Եղբայրն ասէ. և զինչ է հանդարտութի և զինչ շահք 'ի նմանէ մարդ։ Ծերն ասէ. հանդարտութիւն իցէ նստել 'ի սենեկի խոնարհութ և ահիւն այ, և հրաժարել յամենայն գործոյ աշխարհի, յոխակալութէ, 'ի մեծափառութէ և յանհամբերողականութենէ։ Քանզի այսպիսի հանդարտութեն մայր է ամենայն առաքինութեանց։ Եւ սկսաւ ծերն գովել զնա և ասէ. ով հանդարտութի, վերաձեռութի կրօնաւորի. ով հանդարտութի, սանդուխք երկնաւորք. ով հանդարտութի, ճանապարհ արքայութեն երկնից. ով հանդարտութի, մայր զղջութե և վարդապետ ապաշխարութե. ով հանդարտութիւն, հայելի ամենայն առաքինութե և տեսութի մեղաց և երեւումն յանցանաց. ով հանդարտութի, առաջնորդ արտասուաց, ուղղումն մտաց և լուսաւորիչ անձանց. ով հանդարտութի, մայր ուղղութե և բնակակից խոնարհութեան. ով հանդարտութի, որ բերես անդորր և խաղաղութիւն. ով հանդարտութի, խորհրդակից հրեշտակաց և ճրագ մտաց. ով հանդարտութիւն, հանդարտութի և մտութի յերկիւղն այ և քննել ընդ նմա խորհրդով և ընարել զզգաստութիւն նորա. ով հանդարտութի, ծնող

մտաց լռութիւն․ ով լռութիւն, որ ընդ երկիւղն այ ծնեալ կաս, մտաց դէտ և դատաստանի ցաւակից․ ով լռութիւն, ծնող ամենայն բարեաց, ջան 'ի պահս, երասանակակալ լեզուի և որկրամոլաց արգել․ ով լռութիւն, դադարեցուցանող յաղօթս, դադարեցուցանող յընթերցումն, նաւահանգիստ անդորր, հանգստարան անխռով․ ով լռութիւն, առ ած աղաչանք, մանկանց զէն, անպղտոր պահապան մտաց, և որք խորհին 'ի լռութիւն անխռով ուղղիչ նոցա․ ով լռութիւն, լուծ քաղցր և բեռն փոքրոգի, հանգուցանես և բառնաս որք բարձող են քո․ ով լռութիւն, վայելչագեղ սրտից և անձանց․ ով լռութիւն, զոր 'ի քեզ միայն յիշատակես և Քրիստոսի հարազատաբար պարես և առաջի աչաց ունիս զմահ․ ով լռութիւն, աչաց և լեզուի երասանակ․ ով լռութիւն, 'ի տուէ և 'ի գիշերի Քրիստոսի հետեւող և զլապտեր անշէջ պահող, զի 'ի նմա անձկաս հարազատաբար, սաղմոսես՝ պատրաստ է սիրտ իմ, ած, պատրաստ է սիրտ իմ․ ով լռութիւն, զգաստութե անփորձ, ընդ ծաղեր հառաչանաց արարող առ այն որ ստեղծն զքեզ․ ով լռութիւն, անկոխ թշնամութեան, և լքութե ատող, հանապազ Քրիստոսի զգուշանաս․ ով լռութիւն, անդաստան Քրիստոսի․ ով լռութիւն, բարեպաշտութե մայր․ ով լռութիւն, կապանք չարչարանաց․ ով լռութիւն, ծառ կենաց, պտղաբերող պտղոյն բարութե։ Արդ այս, եղբայր, զայս ամ գործեա՝ յիշատակեալ յամի զմահ։

ամենայն բարեաց, պահոց հիմն, սանձումն լեզուի, յագեցման խափանիչ և լուսցիչ հոգւոց․ ով հանդարտութե, հրահանգիչ մտաց, զգաստութե սրտի և նաւահանգիստ խաղաղական․ ով հանդարտութիւն, մանկանց սպառազէն, ծերոց ուսուցիչ, որ պահես զունողսն քո յամենայն պատրանաց թշնամւոյն․ ով հանդարտութիւն, լուծ քաղցր և բեռն փոքրոգի, որ և հանգուցանես և բառնաս զբարձողսն քո․ ով հանդարտութիւն, ցնծութե հոգւոց․ զղջութե մտաց և հոգալ զիւրն միայն, և միշտ յիշել զՔն, և զի առաջի աչաց ունել զօր մահուն իւրոյ․ ով հանդարտութե, սանձք անսանձելեաց և լռելեաց և լեզուի, և զի մնաս միշտ բարեացն հանդերձելոց, և ունիս միշտ զլապտեր քո անշիջանելի և զտամն քո լի ձիթով․ ով հանդարտութե, որ միայն կարօտիս այ և երգես ասելով՝ պատրաստ է սիրտ իմ առ քեզ, ած, պատրաստ է սիրտ իմ․ ով հանդարտութե, թշնամի լկտութե և սաստող յանդգնութե, որ միշտ մնաս զայլոյն Քի․ ով հանդարտութիւն, մայր զգուշութե և բանտ արգելող տխրոց և աղատող 'ի յաւիտենից կապանացն․ ով հանդարտութե, ագարակ Քի, որ բերես բազմապատիկ պտուղս առաքինութեց։ Այս ցուա ծերսն․ ով եղբայր, ստացիր զսա և կեցցես շնորհօքն Քի․ յիշեա և միշտ զօր մահուն, քանզի ոչ գիտես թէ յորում ժամու գող գայցէ, և դու հոգա վասն կենացն յաւիտենից։

տանջրոս և զՕղիոս, և հիւանդացաւ յոյժ ։ Եւ յողջանալն գնաց կարօտիւ առ նոսա և ասէ ․ ո՞չ լուայք զհիւանդութիւն իմ ։ Եւ ասեն՝ այո ։ Եւ ասէ ․ ապա ընդէ՞ր չեկիք առ իս ։ Ասեն ցնա ․ զի գայթակղեցուցեր 'ի մեզ զքաղցրումն՝, որպէս թէ զայրացար 'ի մեզ և փախեար 'ի մէնջ ։ Եւ ասէ ցնոսա ․ ապաքէն և զայս ասելոց էին՝ եթէ չգտեալ աղաւնոյ հանգիստ ոտից դարձաւ 'ի տապանն առ Նոյեանն ։ Եւ դադարեաց անդ նոսա մինչև ցօր մահուան իւրոյ ։

ԲՆԱԿԵԱՑ[1] ոմն զդուռնն Արսէնի, և եբաց ․ և իբրև գիտաց թէ չէ աշակերտն իւր՝ անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց, և եկեալն աղաչէր զնա յառնել և խօսել ինչ օգուտս ։ Եւ ասէ ոչ յառնեմ մինչև գնասցես աստի ։

ԵԿՆ[2] ոմն 'ի Սկիւթայ, և առեալ իւր առաջնորդ 'ի մերձակայ վանիցն՝ չոգաւ առ Արսէնիոս ․ և իբրև տեսին՝ նստեալ լռելեայն, և 'ի շատ յամելն ասաց վանեցին ․ արա, հայր, աղօթս վասն իմ, զի գնացից ։ Եւ

պատահման յինքեանս երբէք լեալս անհնազանդութեան ։ Ողջացաւ ծերն 'ի հիւանդութենէ և ասէ ․ գնացից դարձեալ առ եղբարսն իմ ։ Եւ այնպէս դարձեալ անցեալ յայնկոյս և եկն առ աշակերտսն իւր 'ի վիմին ։ Իսկ մինչ էր նա առ ափն գետոյն, եկն առ նա աղախին ոմն հնդիկ սեաւ և մերձեցաւ 'ի հանդերձս ծերոյն ։ Իսկ ծերն սաստեաց նմա, և նա ասէ ․ եթէ կրօնաւոր էիցես, ընդէ՞ր ոչ գնաս յանապատ կեաս ։ Զղջացեալ ընդ այն ծերոյն ցաւագնեալ և ասէր ցանձն իւր ․ Արսէնի, եթէ կրօնաւոր ես, ընդէ՞ր դու ոչ գնաս յանապատ կեաս ։ Եւ զայս ասացեալ գնաց, և ընդ առաջ եկին նմա Աղեքսանդրէ և Զոյիլէ և անկան յոտս նորա ․ նոյնպէս և ծերն անկեալ յերկիր, և ողբային երկոքեանն ։ Ասէ ցնոսա ծերն ․ ո՞չ լուայք դուք զհիւանդութիւն իմ ։ Իսկ նոքա ասեն ․ այո լուաք ։ Եւ ծերն ասէ ․ ընդէ՞ր ոչ եկեալ տեսէք զիս ։ Ասէ Աղեքսանդրէ ․ ոսկի այսօրինակ զի բաժանիլն քո 'ի մէնջ ոչ եղև կամաւ մերով, և զի բազումք գայթակղեցան 'ի մեզ և ասացին ․ եթէ հնազանդ լեալ էին ծերոյն, ապա ոչ էր մեկնեալ 'ի նոցանէ ։ Ասէ ցնոսա ծերն ․ և դարձեալ կամին ասել մարդիկ արդեօք՝ եթէ ոչ եգիտ աղաւնին հանգիստ ոտից իւրոց և դարձաւ 'ի տապանն տաճարայն առ Նոյ ։ Եւ այսպէս բժշկեաց զմիտս նոցա, և բնակեցան առ միմեանս մինչև ցմահ ։

1 Եկն ոմն երբեմն առ հայրն Արսէնի, և բախեալ զդուռն, և նա եբաց, կարծէր եթէ աշակերտն իւր էր ․ իսկ մինչ ետես զի այլ ոմն էր, անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց ։ Ասէ ցնա եկեալ եղբայրն ․ հայր, արի զի հարցից զքեզ ։ Ասէ ցնա ծերն ․ ոչ յարեայց աստի եթէ ոչ նախ գնասցես դու ։ Եւ աղաչեաց եղբայրն յառնել, և նա ոչ յարեաւ մինչև գնաց 'ի նմանէ ։

2 Ասէին վասն եղբօր ուրումն, որ եկն 'ի Սկիւթայ առ հայրն Արսէնի, եթէ եկն նախ յեկեղեցին և աղաչէր զպաշտօնեայն և զմանուկ եկեղեցւոյն զի ցուցցէ նմա զհայրն Արսէնիոս ։ Ասեն ցնա եղբարքն ․ փոքր

ոք առ նա, փախչէր 'ի ներքսագոյնս ։ Այլ ասէին ցնա. ընդէ՞ր առնես զայդ ։ Այլ ասէր՝ եթէ որք փախուցեալք 'ի յորջս՝ զերծանին յորսորդացն ։

ԱՅԼ[1] ասէր հայրն Դուլաս՝ եթէ հատ զսէր բազմաց, զի մի՛ ծառայեսցեն միտք քո շահելոյն զնոսա և կուրացին, և ո՞ կարէ բազմաց և ո͞չ հաճոյ գտանել ։

ԿՐՕՆԱՒՈՐ[2] ոմն ժրաջան 'ի ժամ յառնելոյն յաղօթս ունէր սարսուռ և գլխացաւութիւն ։ Այլ նա ասէր. ահաւասիկ մեռանիմ, ջանալ պարտ է ։ Այլ այնպէս արիացեալ կատարէր զաղօթսն զբազում ժամանակս, մինչ ետես տէրն զհաւատս նորա և առ 'ի նմանէ զփորձութիւնն 'ի փառս իւր ։

ԱՍԷՐ[3] Մովսէս հայրն. որ փախչի 'ի մարդկանէ՝ նըման է հասուն խաղողոյ, և որ խառնի ընդ նոսա՝ նման խակ է քացախոյ և ժանտ է. զի զոր աչք ոչ տեսանեն, միտք ոչ որոնեն և ոչ շարժեն զմարմին և ոչ տիրեն նմա ախտք ։

ՀԱՅՐՆ[4] Կոզմաս կուսանն և պահողն և ողորմածն 'ի պահանջելն 'ի նմանէ զմեծ մասն բարեաց թէ ո՞ր է 'ի քեզ՝ ասաց. երեք մասն է յիս 'ի շնորհաց տեառն,

նա 'ի ներքսագոյն սենեակ իւր ։ Իսկ եղբարքն ասէին ցնա. հայր, ընդէ՞ր առնես զայդ ։ Եւ նա ասէր. յորժամ փախիցեն որք 'ի ներքին որջ իւրեանց, յայնժամ զերծանին յորսորդաց ։ Եւ զայս ասէր 'ի շահ և յօգուտ եղբարցն ։

[1] Ասաց հայրն Դուլաս. հատցես 'ի քէն զսէր բազմաց, զի մի՛ գուցէ բևեռեսցին միտք քո ընդ շահելն զնոսա, և կորուսցես զշահ հանդարտութեան ։

[2] (Ասաց հայրն Թէոդորէ.) էր առ մեզ ոմն կրօնաւոր ժիր յոյժ. և յորժամ յառնէր յաղօթս, վաղվաղակի կալնոյր զնա ջերմ, դողայր և ցաւէր գլուխն և ամ͞ յօդքն ։ Իսկ նա ասէր ցանձն իւր. ահա արդ հիւանդ եմ և զի ստուգապէս մեռանիմ, ընդէ՞ր հեղգամ. յարուցեալ կատարեցից զաղօթս իմ ։ Եւ այսու մտածութեամբ նեղէր զանձն և կատարէր զաղօթսն ։ Իսկ մինչ դադարէր յաղօթիցն՝ դադարէր և ջերմն, և մինչ դարձեալ սկսանէր յաղօթսն՝ դարձեալ ջերմանայր և սրտատուէր. և այնպէս կատարէր եղբայրն, և 'ի փոքր ինչ ժամս եհաս նմա օգնութիւն յա͞յ, և ազատեցաւ 'ի դիւէն յայնմանէ համբերութեամբ իւրով ։

[3] Ասաց հայրն Մովսէս. կրօնաւոր որ փախիցէ 'ի մարդկանէ, նման է հասուն խաղողոյ. իսկ որ ընդ մարդիկ խառնեալ կեցէ, է նա իբրև զկոխածն ։

[4] Էր ոմն գանիր յԱղեքսանդրիա, որ կոչէր Կոզմաս, այր սքանչելի և զարդարեալ ամենայն առաքինութեամբք, և զի էր նա խոնարհ, հեզ և ողորմած, պահեցող, կոյս, օտարասէր ։ Իսկ ես զի ունէի բազում համարձակութիւն առ նա, ասեմ ցնա. արա սէր և ասասցես ինձ եթէ

ոչ ծիծաղեցայ, ոչ երդուեցայ, ոչ խօսեցայ սուտ յա՛մ աւուրս իմ: Նա պարտ է գիտել, զի 'ի ձեռնադրութեան չառ-նանի ինչ և ոչ 'ի միտս կոխեալ 'ի յանձանս խորհրդոց:

ՀԱՐՑԱՒ՝ ծերն՝ եթէ զորքան ամս ինչ ուղղեցեր 'ի կեանս քո: Նա ասէ. երթ և յետ տասն աւուր եկ: Նա իբրև չոգաւ, էր նա մեռեալ և գիր առընթեր՝ եթէ մինչ կատարէի զկանոն իմ, ոչ տայի խորհրդոց իմոց 'ի վայր իջանել:

Այր՝ ոմն 'ի ծերոցն որ մինչ յիշէր զդատաստանն ած, փախչէր իբրև զմոլեկան ընդ անապատ. և եղբայր նորա կայր առ նմա, զկնի գնացեալ զառնէր և անզգերեն ածէր և ասէր ցնա. դու միայն գործեցեր զմեղս ամենայն աշխարհի: Նա նորա պատասխանեալ ասէր. հաւատամ և ես եթէ թողու ինձ ած զմեղս իմ, սակայն ո՛ կարէ հանդուրժել 'ի պատահելն ահագին ատենին և մեծի բեմին:

քանի՞ ամ ունիս 'ի հանդարտութեան յայդ: Իսկ նա լռեաց և ոչ ինչ ետ պատասխանի ինձ: Իսկ ես աստի դարձեալ. վասն սիրոյն այ ասա ինձ: Իսկ նա պատկառեալ փոքր մի և ասէ ցիս. ունիմ երեսուն և երկու ամ: Եւ ես դարձեալ ասեմ. գիտե՞ս դու զի 'ի սակս շահու հարցանեմ. արդ ասասցես ինձ, եթէ յայնքան ամս լռութեն և հանդարտութեն քո զի՞նչ ինչ առաւել ուղղեցեր: Իսկ նա հառաչելով 'ի խորոց սրտէ և ասէ. զի՞նչ ինչ կարասցէ ուղղել մարդ աշխարհիկ որ նստի 'ի տուն իւր: Եւ ես սկսայ երդմամբ աղաչել զի շահեսցի զիս: Իսկ մինչ բանադատեցաւ յինէն յոյժ, յայնժամ ասաց ցիս. Թողութիւն արասցես, հայր, զի զերեքեին զայսոսիկ ուղղեցի շնորհօքն այ, ոչ երբէք ծիծաղեալ և ոչ երդուեալ է իմ և ոչ ստեալ: Իսկ ես իբրև լուայ, փառս մատուցի այ:

: Եղբայր ոմն նստէր 'ի լերինն, և եհարց ցնա ծեր ոմն 'ի վանացն Կալամոնի և ասէ. ասա ինձ, եղբայր, եթէ յայսքան ամս միայնակեցութեն և ճգնութեն քո զի՞նչ ուղղեցեր: Ասէ ցնա եղբայրն. գնա արգեսջ և զկնի տասն աւուրց եկեսցես և զամենայն պատմեցից քեզ: Իսկ ծերն գնացեալ և եկն զկնի աւուրցն տասանց և գտաւ զի վախճանեալ էր եղբայրն, և էր գրեալ 'ի վերայ խեցի այսպէս. Թողութի՞ շնորհեա ինձ, հայր, զի տանէի զկանոն իմ և ոչ երբէք թողլ տայի մտաց իմոց իջանել 'ի վերայ երկրի:

: Եղբարք երկու բնակեալ էին յանապատի. մինն մինչ յիշէր զդատաստանն այ, փախչէր 'ի ներքսագոյն անապատն, մոլորեալ շրջէր իբրև զխմորեալ: Իսկ եղբայրն գնայր զկնի նորա և խնդրէր զնա և զի յոյժ աշխատէր, մինչև գտանէր զնա և ասէր ցնա. ընդէ՞ր այդպէս փախչիս, ով եղբայր, միթէ դու միայն գործեցեր զմեղս աշխարհի: Ասէ ցնա եղբայրն. միթէ կարծես թէ ես անգէտ եմ, իբր թէ ոչ թողցէ ինձ ած զմեղս իմ. այո գիտեմ և հաւատամ զի թողցէ ինձ զմեղս իմ. այլ վասն այսորիկ մշտամնամ, զի տեսանեմ միշտ զօրն զայն՝ յորում 'ի դատաստան գնալոց եմք՝ յոյժ ահագին և սարսափելի, և 'ի տեսանելն և յիշելն զարհուրիմ յահաւորութենէ նորա:

# ՄՆԱՑՈՐԴՔ

## յերկրորդ թարգմանութենէ

---

ՆՍՏԷՐ երբեմն հայրն Անտոնիոս յանապատի և անկաւ 'ի ձանձրութիւն մեծ և կուրացան խորհուրդք իւր, նեղէր և ասէր առ Աստուած. Տէր, կամիմ զի կեցցեմ և ոչ թողուն ինձ խորհուրդք իմ, և զինչ արարից Տէր 'ի նեղութեան իմում և կամ որպէս կեցից: Ապա փոքր մի շրջեալ յարևելս արտաքոյ խցին, ետես զոմն նման իւր Անտոն զի նստեալ գործէր զձեռագործ իւր, և փոյթ յառնէր 'ի գործոյն և աղօթէր, և դարձեալ նստէր և հիւսէր զխիրայն և դարձեալ յառնէր և աղօթէր. զայս այսպէս առնէր բազում անգամ. այլ էր նա հրեշտակ տեառն զոր առաքեալ էր 'ի զօրացուցանել զԱնտոն: Ապա լուաւ զձայն հրեշտակին որ ասէր ցնա. Անտոնիէ, այսպէս արա և կեցցես. և գնաց 'ի նմանէ: Զայս իբրև լուաւ, լցաւ ուրախութեամբ և գոհանայր զԱյ և այնպէս առնէր մինչև իսպառ:

ԱՍԱՑ հայրն Անտոն. զոր օրինակ ձկունք թէ յամեսցեն 'ի ցամաքի՝ մեռանիցին, այսպէս և կրօնաւորք թէ ելեալ 'ի սենեկէ յամեսցեն և կամ ընդ գեղջուկս շրջեսցին՝ մեռանիցին 'ի հանդարտութենէ: Այլ պարտ է զի որպէս ձուկն զի դիմեալ փախչի 'ի ծովն, նոյնպէս և մեք փախիցուք 'ի սենեակս մեր. զի մի գուցէ 'ի յամելն մեր արտաքոյ՝ մոռասցուք զներքինն մեր, որ է պահումն մտաց:

ԳՆԱՑԵԱԼ երբեմն մեծն Թէոփիլէ եպիսկոպոսն և իշխան ումն առ հայրն Արսէնիէ և խնդրէին 'ի նմանէ լսել բանս կենաց: Եւ ծերն լռեաց փոքր մի և ապա ասէ ցնոսա. եթէ ասացից ինչ ձեզ՝ պահէ՞ք զնոսա: Եւ նոքա ուխտեցին պահել: Ասէ ցնոսա ծերն. եթէ ուր

և լուիցէք զկեանս Արսենիոսի, մի՛ բնաւ մերձենայք 'ի տեղին յայն :

ՊԱՐԶԵԱԼ յայլում ժամու կամեցաւ Թէոփիլէ գնալ առ Արսենիոս, և պատուիրեաց և ասէ. եթէ գամ, բացցե՞ս ինձ զդուռն տան քո : Իսկ նա պատուիրեաց և ասէ. եթէ գայցես բացից զդուռն, և եթէ քեզ բացից՝ և ամենեցուն բացից որք գայցեն, յայնմհետէ այլ ոչ ևս նստցիմ աստ : Ապա և լուաւ եպիսկոպոսն զայս՝ ասէ, եթէ հալածե՞լ զսուրբն 'ի տեղւոյն երթամ, ոչ ևս գնացից երբէք առ նա յայնմհետէ :

ԵԿԻՆ երբեմն ծերք ոմանք առ հայրն Արսենիոս և խնդրէին խօսել ընդ նմա. իսկ նա բացեալ զդուռն էառ զնոսա 'ի սենեակ իւր : Յայնժամ աղաչեցին զծերն զի պատմեսցէ նոցա և ցուցցէ եթէ զինչ լինիցի նոցա որք հանդարտին 'ի խցի և բնաւ ոչ տեսանեն զոք : Ասէ ցնոսա ծերն. կոյս մինչդեռ ընդ յարկաւ հօր իւրոյ իցէ, բազումք կարօտին խօսել զնա իւրեանց. իսկ յորժամ եղանէ արտաքս և առամբի լինի, և այլ ոչ ոք ըղձացի նմա. այլ ոմանք պարսաւեն, իսկ ոմանք գովեն. և ոչ է նա պատուական որպէս էրն կանխաւ մինչ թաքուցեալ կայր 'ի տան հօր իւրոյ. այսպէս և անձին դիպեսցի, զի յորժամ հրապարակագոյժ լինի՝ ոչ կարէ հաճոյ ա̃յ լինել :

ԱՍԱՑ հայրն Պօղոս. եթէ նեղեսցէ զմեզ թշնամին թողուլ զհանդարտութիւն միայնութեան, մի հնազանդեսցուք նմա, զի ոչ ինչ այնպէս խոցոտէ զթշնամին մեր որպէս հանդարտութիւն և պահք և աղօթք, և զգաստ և արթուն ունել զակն անձին :

ԱՍԱՑ հայրն Թէոդորէ փերմեցի. եթէ որ ոք ըղփորձ առցէ զքաղցրութիւն սենեկի իւրոյ, նա այնպէս փախիցի 'ի մարդկանէ զի որպէս փախիցի ոք 'ի թունաւոր օձից. զի եթէ ոչ հասցեմ զանձն իմ 'ի սիրոյ աշխարհականաց, ոչ կարեմ մերձենալ 'ի սէրն ա̃յ :

ԵՂԲԱՅՐ ոմն եկն առ հայրն Թէոդորէ իբր զի ուսցի 'ի նմանէ կարել զսիրայն, բերեալ ընդ ինքն տերև արմաւոյ : Իսկ ծերն ասէ ցնա. գնա արդեօք և ընդ այգն եկեսցես փութով : Յարեաւ ծերն և ցօղեաց զարմաւն և պատրաստեաց զկարան սիրային և եդ 'ի ձեռն և ասէ. այս և այսպէս արասցես : Եւ թողեալ զնա եմուտ 'ի խուց իւր և նստաւ 'ի ցերեկի : Եւ իբրև մերձեցաւ

ժամն՝ ես նմա կերակուր, և այնպէս առաքեաց զնա 'ի տուն իւր. և առաւօտուն եկն դարձեալ եղբայրն, և ասէ ցնա ծերն. առ աստի զարմաւ քո և զնա, զի 'ի փորձութի̃ իմ եկիր դու, իբր զի արկցես զիս 'ի հոգս սուտս. և ոչ եթող զնա ծերն մտանել 'ի տուն իւր:

ԱՍԱՑ դարձեալ. բարւոք է հանդարտեալն, զի այր իմաստուն հանդարտ է, և զի մեծ է ստուգիւ կրօնաւորի հանդարտեալն, և ևս առաւել եթէ մանկագոյն իցէ: ԱՅԼ և զայս գիտասցէ. եթէ ոք սկսանի հանդարտել, առաւել կռուին ընդ նա դևք, և բերեն 'ի վերայ նորա ձանձրութի̃ և ծանրացուցանեն զհոգի և զմարմին նորա կարճմտութե̃ և տկարութի̃ դնեն 'ի նա և հիւանդութիւն, և լքէ և լուծանէ զձեռս և զամենայն անդամս, և բառնայ զզօրութիւն նորա, արկանէ և 'ի խորհուրդս նորա՝ եթէ տկար ես և ոչ կարես աղօթել, ննջիցես և հանգիցես: ԱՅԼ եթէ ծանիցէ այնպիսին թէ պատրանք թշնամւոյն է, այն ամենայն փութով անցանի:

ԱՍԷՐ և հայրն Յոհաննէս կարճիկն. եթէ ունիցի մարդ յանձն իւր զանօթսն ա̃յ, կարիցէ հանդարտել 'ի սենեկի իւր, թէպէտ յանօթից աշխարհիս աղքատ իցէ: Իսկ եթէ ունիցի ինչս որ է անօթք աշխարհի, թէպէտ և զա̃մենայն պիտոյս ոչ ունիցի, 'ի սակս անցանելի անօթոցն կարասցէ նստել 'ի սենեկի իւրում: Իսկ որ ոչ հոգևոր և ոչ մարմնաւոր ունիցի մխիթարութի̃, նա ո՞րպէս կարասցէ նստել հանդարտեալ 'ի խցի իւրում:

ԵՂԲԱՅՐ ոմն բնակէր 'ի մէջ ժողովոց, և էր ճգնաւոր յոյժ. լուան զնմանէ եղբարք սկիտացիք և եկին 'ի տեսանել զնա, և մտեալ 'ի տեղին ուր ճգնէրն և ողջունեցին զնա. նոյնպէս և նա զնոսա, և դարձեալ սկըսաւ գործել զիւրն գործ: Եւ իբրև տեսին զնա այնպէս գործող՝ ասէ ցնա հայրն Յոհաննէս. ո՞ զգեցոյց քեզ զտեսակդ զայդ և կամ ո՞վ արար կրօնաւոր զքեզ, և ուսոյց զքեզ հանել յեղբարց զմախաղս նոցա: Իսկ նա ասէ. աղօթեցէք և կամ նստարուք այդր: Ասէ ցնա Յոհաննէս. այր մեղաւոր զայդ ոչ ատիկեսցէ առնել: Եւ իբրև ոչ գտին 'ի նա համարձակութի̃, ելեալ գնացին:

ԱՍԱՑ հայրն Մովսէս ցհայրն Մակարիոս 'ի Սկիտէ. կամիմ հանդարտել, հայր, և ոչ թող տան ինձ եղբարքն իմ: Ասէ ցնա Մակարի. տեսանեմ զքեզ թող

բնութիւն զի ոչ կարես մերձենալ 'ի նոցանէ. այլ եթէ կա-մեցցես կեալ, գնասցես 'ի խորքն անապատին եւ բնակես-ցես 'ի վիմի անդ։ Այլ նա զայս արտաքսեալ համարեցաւ։

ԵՀԱՐՑ հայրն Եսայիաս ցհայրն Մակար եւ ասէ ցնա. ասա ինձ բան ինչ կենաց, հայր։ Ասէ ցնա ծերն. փախիր 'ի մարդկանէ։ Ասէ ցնա Եսայիաս. զինչ իցէ շահ փախչելոյն 'ի մարդկանէ։ Իսկ եւ ծերն ասէ. Նստա-ցիր 'ի սենեկի քո եւ ողբասցես, եւ մի կամեսցիս լսել բնաւ զձայն մարդոյ, եւ կեցցես։

ՀԱՅՐՆ Պիոս եհարց ցհայրն Մակար եւ ասէ ցնա. հայր, ասա ինձ բան կենաց։ Ասէ ցնա. փախիցես 'ի մարդ-կանէ եւ հանդարտեաց 'ի խցի քո եւ ողբա զմեղս քո եւ կեցցես։

ԱՍԱՑ հայրն Մակար. որք կամին անցանել ընդ երեւելի այս ծով, նաւու պէտս ունին զի անցցեն. իսկ որք կամին անցանել ընդ իմանալի այն ծով, պարտին ստանալ զառաքինութիւնս զայսոսիկ, զհաւատ, զյոյս եւ զսէր եւ զերկայնմտութիւն, զխոնարհութիւն, զպահս եւ զա-ղօթս։ Իսկ որ բաց 'ի սոցանէ մտցէ յիմանալի ծով, վիշապս մեծամեծս եւ աշխատանս կրեսցէ, եւ անցանել յայնկոյս ոչ կարասցէ։ Հանդարտութիւն օգուտ է, զի լուացուցանէ 'ի չարէ. իսկ որք ստանան զայն առաքինու-թիւնքն, դիւրաւ ստանան զանախտութիւն. քանզի ոչ կարասցէ հանդարտել միտքն որ ոչ հանդարտի նախ մարմնով, եւ ոչ լուծանի միջնապարիսպն այն առանց հանդարտելոյ։

ԱՍԱՑ հայրն Պետրոս. ոչ խոցոտի 'ի նետից թշնա-մւոյն ծեր որ հանդարտի 'ի խցի. իսկ որ ընդ բազմաց խառնի, փոյթ ընդ փոյթ խոցոտեսցի։ Վասն զի սրբու-թիւն եւ սրտմտութիւն եթէ հրահանգեսցի, ցանկութիւն շիջանի. եւ զի համառօտիւք ասացից, եւ զի ամ ախտք փոքրասցին։ Այլ ընդ երկարել ժամուն՝ բնութիւն ստեղ-ծողին բարիքն եւ մոռասցին ախտքն, եւ բնական բարիքն աճեսցեն, եւ մեղքն ապաւեսցին յայնցանէ որք մնաց-նասցին։ Դարձեալ ասէ. վասն այսորիկ բարի է հան-դարտելն, որպէս զի զվաստակարս ինչ ոչ առեսցէ, եւ միտքն զխորհուրդ խնդրեսցէ. եւ զոր միտքն ոչ քննեսցէ եւ ոչ ցնո-րեսցի եւ ոչ շարժեսցէ զմարմինն, ոչ կարիցէ յաճախել 'ի վերայ անձին ախտքն։ Իսկ մինչ անշարժն ըմբռնեսցի 'ի

չարեաց, հանդարտեցի յոյժ, և կատարեալ խաղաղու-
թիւն ունիցի ներքին մարդն:

ԱՍԱՑ հայրն Յովսէփ ցհայրն Իսթերան. զի՞նչ ա-
րարից զլեզու իմ, հայր, զի ոչ կարեմ կալնուլ զնա: Ա-
սէ ցնա ծերն. յորժամ ասես ինչ՝ գտանե՞ս հանգիստ:
Պատասխանի ետ՝ թէ ոչ: Ասէ ցնա ծերն. իսկ եթէ
ոչ ունիս հանգիստ, ընդէ՞ր ասես ինչ, այլ և առա-
ւել լուռ լեր. եթէ պատահեսցի քեզ ուրեք ասել բան
ինչ, փոքր մի ասասցես և բազում լռեսցես և լուիցես
և գտցես հանգիստ:

ԱՍԱՑ հայրն Պիմէն. սկիզբն ամենայն չարեաց ամ-
բոխ և շփոթ իցէ, վասն որոյ փախչել պարտ է 'ի մար-
մնական ախտից. և զի որ մերձ յախտս մարմնոյ իցէ,
նման իցէ մարդոյ որ կայցէ 'ի յափն խաւարային գբոյ,
և մինչ կամեսցի թշնամի նորա՝ դիւրաւ ձգեսցէ զնա 'ի
նմա: Իսկ որ յախտից մարմնոյ մեկնեսցի, նման է մար-
դոյ որ հեռի լիցի 'ի գբոյն յայնմանէ կորստեան. զի թէ-
պէտ և կամեսցի թշնամին, ոչ կարասցէ զնա ընկենուլ
'ի նմա սակս հեռաւորն գոլոյն. և զի յորժամ և նա
քարշեսցէ զնա և գթել կամեսցի, առաքեսցէ տէր զօգ-
նութիւն իւր և փրկեսցէ զնա. և զի թէ լռեսցես, ուր և
նստցիս՝ յամենայնի գտցես հանգիստ:

ԵՂԲԱՅՐ ոմն նստէր 'ի Թեբայիդայ անապատն, և
ասէին ցնա խորհուրդք իւր. ընդէ՞ր նստիս աստ անպը-
տուղ կալով. արի և գնա 'ի ժողովս, զի արասցես անդ
պտուղս ինչ: Յարեաւ և գնաց առ հայրն Պափնուտի և
ասաց նմա զխորհուրդ իւր: Ասէ ցնա ծերն. երթ նիստ
'ի սենեկի քո և արասցես մի աղօթս առաւօտուն և մի
յերեկոյին և մի 'ի մէջ գիշերոյն. և երբ քաղցիցես
կեր, և 'ի ծարաւին արբ, և մինչ նիրհես ննջեա, և անդ
կեցցես, մի լսեր խորհրդոց քոց: Եւ գնացեալ առ հայրն
Յովհաննէս և ասաց նմա զբանս հօրն Պափնուտի զոր ա-
սաց նմա: Ասէ ցնա Յովհաննէս. մի՛ բնաւ առներ աղօ-
թըս. միայն հանդարտեա 'ի խցին քում: Յարեաւ եղ-
բայրն և գնաց առ հայրն Արսէնի և պատմեաց նմա զամ՟:
Ասէ ցնա ծերն. երթ արա, որդեակ, զոր նոքա ասացին
քեզ, զի ես աւելի քան զայդ ասել ինչ ոչ ունիմ:

ԵԿՆ երբեմն հայրն Ամմոա յՍարիթայ 'ի Կելլիզմն
տեսանել զհայրն Անտոնի. և ետես զնա տխուր յոյժ,

քանզի թողեալ էր զանապատն, և ասէ ցնա. ընդէ՞ր տրտմեալ ես դու, հայր, կամ ո՞ւր է զօրութիւնք առդ կեալ յանապատի: Այպնեցեալ 'ի նա ծերն բարկութեամբ և ասէ. զի՞նչ ասես, Սիմոն, ո՞չ լաւագոյն էր ինձ միայն ազատ լինել 'ի խարհրդոց յանապատն քան զամենայն:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ընդ հայրն Միոայի և ասէ ցնա. ո՞րպէս թողլիք զՍկիտէ դու և հայրն Սվր և եկեալ բնակեցայք աստ: Ասէ ցնա ծերն. յորժամ սկսաւ բազմանալ Սկիտէ, և լուաք եթէ ննջեաց հայրն Անտոն` յարուցեալ եկաք 'ի լեառնս այս և գտաք զսա անդորր և բնակեցաք աստ փոքր ժամս ինչ: Ասէ եղբայրն. և քանի՞ ամք են, հայր, կալոյ քո աստ: Ասէ ցնա ծերն. են արդեօք եօթանասուն և երեք ամ:

ԱՍԷԻՆ վասն հօրն Սիսոյի թեբայեցւոյ` եթէ յորժամ թողոյր զաղօթսն յեկեղեցին, վաղվաղակի փախչէր 'ի սենեակ իւր փոյթ, մինչ զի ասէին մարդիկ եթէ դիւահարեալ իցէ և մոլի. այլ նա զգործն այ գործէր միշտ:

ԵՂԲԱՅՐ ոմն ասաց ցհայրն Սարմատան. խորհուրդք իմ ասեն ցիս` ել արտաքս: Ասէ ցնա ծերն. մի՛ լսեր նմա և մի՛ հնազանդիր, այլ ասասցես նմա. յառաջագոյն լըւայ քեզ և եկի այսր, այլ զայդ այժմիկ խրատն ոչ լսեմ: Դարձեալ ասէ ցնա. բազումք են զի կեան յանապատ և զքաղաքայնոցն գործեն գործ և կորուսանեն զանձինս իւրեանց, վասն զի կարողութիւն է կեալ 'ի ժողովս և մնօք հանդարտել յանապատս միայն. դարձեալ կարէ մնօք ընդ ժողովս լինել և շփոլթել միշտ:

ՆՍՏԷՐ երբեմն հայրն Տիմոթի 'ի Կոլիզմա և ասէ ցաշակերտ իւր յաւուր միոջ` եթէ թողցես, որդեակ, զջուրդ և առոգէ զարմաւենիսդ զայդոսիկ: Եւ նա ասէ. 'ի Կոլիզմա ո՞ւր իցէ ջուր առոգել զդրախտ, հայր: Եւ նա ասէ. 'ի Կոլիզմա զի՞նչ իցէ իմ, տարցես զիս յանապատ դարձեալ. և զի զարտօսր ասէր: Եւ ասէր. նստեալ 'ի սենեկի հանդարտեալ` ինու զծեր ամենայն բարեօք: Ասաց դարձեալ. պարտ է կրօնաւորի զի գնեսցէ զնոց զհանդարտութիւն իւր. և թէ զրկեսցի յընչից մարմնաւոր, մի՛ ձանձրասցի, այլ թողցէ:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցծերն և ասէ. զի՞նչ արարից, հայր, զի վշտագնիմ յոյժ: Ասէ ցնա ծերն. հանդարտեա և նիստ 'ի տան քո, և տէր տացէ քեզ հանգիստ:

ՄՈԱՑ դարձեալ ծերն. զոր օրինակ 'ի ձմնապարհի կոխեալ ոչ բուսանի դալարի խոտոյ՝ թէպէտ և սերմանի ևս, վասն զի կոխեն զնա ուղևորք, այսպէս պատահեացի և մեզ 'ի խորհրդոց մերոց։ Իսկ յորժամ հանդարտեալ պարապես և արգելցիս յամենայնէ, յայնժամ բուսեալ ծաղկին ամենայն հոգևոր գործք, քանզի 'ի քեզ ամենայնն էին. այլ վասն այնորիկ ոչ երևէին, զի 'ի վերայ նոցա գնացին աւազք և կոխեցին զնոսա։

ՍՂԲԱՑՐ ոմն եհարց ծերն և ասէ. բարւո՞ք է, հայր, բնակել յանապատի։ Ասէ ցնա ծերն. որդիքն Իսրայէլի մինչ մերձեցան 'ի շփոթմանց Եգիպտոսի և յանապատ ելին, յայնժամ տուաւ նոցա օրէնք և ուսուցան երկիւղին այ։ Քանզի և նաւք ալէկոծեալք 'ի ծովու ունայնանան յամենայն բարի կարծեաց. իսկ յորժամ 'ի նաւահանգիստն ժողովին, յայնժամ ծանիցեն զշահս։ Այնպէս և մարդն եթէ ոչ համբերեսցէ 'ի միում տեղւոջ, ոչ առնու զծանօթութիւն ճշմարտութեան. զի վերագոյն և առաջին ամենայն առաքինութեանց զհանդարտութիւն ընտրեաց ած, որպէս և գրեալ է՝ եթէ ես յո՞ հանգեայց, եթէ ոչ 'ի հեզս և 'ի խոնարհս և որք դողան 'ի բանից իմոց։ Եւ եղբայրն ասէ ցնա. և ո՞րպէս պարտ է հանդարտել և միայնանալ։ Ասէ ցնա ծերն. ըմբիշն եթէ ոչ կռուեսցի ընդ բազում 'ի ժողովս՝ ոչ ուսանի զարուեստ յաղթութեան. իսկ մինչ ընդ բազում փորձի և ուսանի, յայնժամ կարասցէ միամարտիկ լինել և յաղթել։ Այնպէս և կրօնաւոր իցէ, եթէ ոչ նախ ուսցի ընդ եղբարսն զարուեստն զընդդէմ կալոյ խորհրդոցն, ոչ կարասցէ միայնութեամբ հանդարտել և կալ ընդդէմ խորհրդոցն։ Իսկ եղբայրն ասէ. եթէ դիպեսցի ուրեք 'ի հարկէ տեսանել զկին մարդ, զի՞նչ պարտ է առնել։ Ասէ ցնա ծերն. և զի հարկն այն 'ի սատանայէ է, վասն զի բազում պատճառս առնէ զայն և հնարս դնէ կորուսանել զանձինս մեր։ Այլ թէ դիպեսցի քեզ փորձութիւն այն և հանդիպեսցի քեզ ընդ կանայս խօսել, թէ և քոյր քո իցէ՝ մի թողցես զնա բազում խօսել, և դու փոքր խօսեա և կարճեա զբանն. և դիր 'ի բանսն փոքր վիշտս և փութապէս փախիր 'ի տեղւոջէն, և թողցես զնա անդր։ Զի եթէ յամես ընդ քեզ խօսել, գիտեա զի ժահահոտութիւն նորա քարշէ

զկամբքս որչափ կարող է, և կամեսցի ընդ չար խորհուրդս զոր գնէ թշնամին 'ի միտս նորա. այս է ճշմարիտ լսել և փախչել յաշխարհէ: Ասէ եղբայրն. և զինչ է աշխարհ: Ծերն ասէ. աշխարհ է գործել զհակառակն բնութեան հոգւոյ, և աշխարհ է կատարել զկամս մարմնոյ, աշխարհ է խորհել ինչ զոր ոչ մնան յերկրի, և զի աշխարհ է առաւել հոգալ զմարմնոյ քան զհոգւոյ, աշխարհ է պարծել 'ի վերայ գործոյ. զայս ամենայն ոչ յանձնէ ասեմ, որդեակ, այլ Յովհաննէս առաքեալ ասէ՝ մի սիրէք զաշխարհ և որ ինչ աշխարհի է: Այլ զի պարտ է միայնակեցի զի յամենայն ժամ քննեսցէ զանձն իւր՝ եթէ կարո՞ղ իցէ անցանել ընդ նոսա որք յօդս իցեն, և կամ թէ ազատեցա՞ւ 'ի նոցանէ մինչդեռ 'ի մարմնի իցէ. քանզի որ ոք պատերազմի յախտէ իմիք, ծառայ նորա իցէ: Եղբայրն ասէ. և զինչ պարտ է գործել միայնակեցի: Ծերն ասէ. հանդարտել պարտ է. իսկ հանդարտելոյն երեքեան սոքա պիտոյ են, նախ երկիւղն այ անպակասելի, երկրորդն խնդրել ողորմութին 'ի նմանէ անձանձրանալի, երրորդն ոչ բնաւ հատանել զմիտս 'ի յիշմանէն այ:

ՊՈՆԱՑ ումն յեղբարցն առ ծեր ումն 'ի լաւրայն Մելքեսանդրոյ, որ կոչի երկոտասանից, և ունէր ընդ ինքն զեղբայր ումն աշխարհիկ, և ասէ ցծերն. տես մեզ բան, հայր, եթէ որպէս կացցուք առ միմեանս, զի եղբայրս այս աստ կամի կրօնաւորիլ: Ասաց ծերն. բարւոք առնէ, որդեակ, զի թողու զաշխարհ և հնազանդի այ. նստարուք 'ի սենեակ ձեր ուր և կամիք, և կալէք յանձին ըզհանդարտութին և զտքնութին և զանդադարելի աղօթս. և զի յուսամ 'ի շնորհն այ, որդեակ, զի առաքեսցէ պարգևս և լուսաւորեսցէ զմիտս ձեր գիտութբ ճշմարտութեան իւրոյ:

ԱՍԷԻՆ և վասն ծերոյ միայնակեցի ումեմն եթէ երեսուն և չորս ամ եկաց 'ի հանդարտութեան, երկու երկուպահէր և լսեալ կայր իսպառ ամենևին անբանաբար: Այլ եթէ դիպէր ինչ բան կարևոր յոյժ, 'ի ձեռն ձեռին և թուոյ յայտնէր զայն. զսա և իմ տեսեալ է յերկիրն իւր յԱշլիան, և կացի ես առ նմա իբրև տասն ամ:

ԱՍԱՑ ծերն. եթէ ոք կամեսցի հանդարտել, պարտ է զի կամ յանապատի բնակեսցէ և կամ 'ի զօրաժողո-

վայ բազում եղբարց. զի եթէ մերձ 'ի շէնս 'ի միում տեղւոջ բնակի, հոգս և շփոթս բազումս պատահէ նմա: Այլ զի եթէ ոք գտցէ 'ի տեղին այն, յանկարծայ դիպեցեցի նմա ընդդիմանել զնա, զի ոչ գոյ տեղի այլ՝ ուր հանգիցէ նա. իսկ եթէ իցէ տեղի ընդարձակ՝ թէպէտ և գտաոչ ընդդիմանիս զնա, ոչ դատապարտէ զքեզ միտք քո, զի գտանէ նա այլ ուրեմն հանգիստ: Ապաւինեաց բազմութեան եղբարցն լինելն քեզ պարիսպ և պահապան, և գտցես դու հանգիստ զօրութեամբն Տեառն:

ԱԲԲԱՅ ծերն. բանտարկելոցն է միշտ նստել 'ի սենեկի միայն, իսկ յիշատակ այ՜ անձին՝ արքայութիւն երկնից է. և այս է բանն որ ասէ՝ եթէ 'ի բանտի էի և եկիք առ իս:

ԱԲԲԱՅ դարձեալ ծերն. է մարդ որ նստի 'ի սենեկի հարիւր ամ, և ոչ կարէ ուսանել եթէ որպէս 'ի սենեկի նստել պարտ իցէ:



Գ

# ՎԱՍՆ ՄՏԱԲԱՑՈՒԹԵԱՆ*

կամ

# ԶՂՋՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐՏԱՍՈՒԱՑ

ԱՍԱՑ[1] աբբայ Անտոնիոս. առաջի աչաց ձերոց կալարուք զերկիւղն այ, յամենայնի յիշատակեալ զմահ: Ատեցուք զաշխարհս և զամենայն զոր ինչ 'ի նմա. ատեցուք զամենայն մարմնական հանգիստ՝ հրաժարեսցուք 'ի կենացս յայսմանէ, զի կեցցուք այ՝ որ խնդրէ զայս 'ի մէնջ յաւուր դատաստանին: Քաղցեսցուք ծարաւեսցուք մերկասցուք հսկեսցուք սգասցուք հեծեսցուք փորձեսցուք եթէ արժանի եմք այ: Զնեղութիւն սիրեսցուք, զի գտցուք զած. արհամարհեսցուք զմարմնականս քըս, զի կեցցեն անձինք մեր:

ԱՍԷ[2] աբբայ Եղիաս. ես յերից իրաց երկնչիմ, յոր-

* Զայս բառ վարեալ են ոմանք յօրինակս հին թարգմանութեան, ուր երկրորդ թարգմանութիւն դրեալ է վասն զղջութեան և արտասուաց: Թերեւս կործեալ յոմանց եթէ այսպիսի բառն κατάνυξις որ է զղջութիւն, ընթերցեալ իցէ թարգմանիչն κατανόησις մտադրութիւն, այս է արթնութիւն մտաց. ուստի և բաղում ուրեք յընթացս երկրորդ գլխոյս ուր հին թարգմանութիւն մտաց արթնութիւն առաջեալ է, երկրորդն զեղջ և արտասուք ունի, կամ սուգ և ողբ:

1 ԱՍԱՑ հայրն Անտոնիոս. առաջի աչաց քոց կալցես միշտ զերկիւղն այ և յիշեսցես զօր մահու քո միշտ և կեցցես: Ատեսցուք զաշխարհս զայս և զամենայն ինչս նորա. ատեսցուք և զհանգիստ մարմնոյ, հրաժարեսցուք և յամենայն ըղձալեաց նորա, որպէս զի գտցուք զկեանս որ առ այ են. և յիշեսցուք միշտ թէ զինչ ուխտեցաք այ, զոր և խնդրելոց է 'ի մէնջ յաւուրն դատաստանի: Քաղցեսցուք, ով եղբարք, և ծարաւեսցուք և մերկասցուք, ցրտասցուք տքնեսցուք ողբասցուք և հառաչեսցուք 'ի խորոց սրտէ, և փորձեսցուք զանձինս մեր եթէ հաճոյ այ իցեմք. արհամարհեսցուք զանձինս մեր, զի շահեսցուք զհոգի:

2 Ասաց հայրն Եղիաս. ես յերից գործոց երկնչիմ, մի յորժամ

ժամ եղանէ հոգի իմ ՚ի մարմնոյս, և յորժամ հանդիպի այ, և յորժամ պատասխանիքն եղանէ յինէն։

ՀԱՅՐՆ՝ Սիղուանոս նստէր ընդ եղբօրն. եկն ՚ի տեսիլ և անկաւ ՚ի վերայ երեսաց իւրոց, և յետ բազում ժամու յարուցեալ լայր։ Աղաչէին զնա եղբարքն և ասէին. զի՞նչ եղև քեզ, հայր։ Եւ նա լռութեամբ միայն լայր, և բռնադատէին զնա. ասէ. եղբարք, ես ՚ի դատաստան ամբարձայ, և տեսի բազում կրօնաւորս զի երթային ՚ի տանջանս, և բազում աշխարհականս զի երթային ՚ի կեանս յաւիտենականս։ Եւ աշխատէր ծերն և ոչ կամէր այլ ելանել ՚ի խցէ իւրմէ. եթէ բռնադատէր ելանել, ծածկէր զերեսս իւր կնգղովն և ասէր. զի՞նչ կամիմ տեսանել զլոյս զայս զառօրեայ՝ որ ոչ ինչ է օգուտ։

Ասէ ծերն. ոհ եթէ զի՞նչ պատահէ ՚ի գալստեան որդւոյն այ ՚ի հանդերձելումն. զի յետ յարութեան ելանեն ողիք մարդկան յերկիւղէն եկելոյ ՚ի վերայ ամենայն աշխարհի, որպէս ասաց տէրն, և տատանեին ՚ի հանդերձեալն։

Ասէ ծերն. որպէս սուսերն իւրովք յամենայնի բերի, այսպէս պարտական եմք լալ և զգուշանալ և արթուն կալ ուր և իցեմք։

Ասէ ծերն վասն յանդգնութեան՝ եթէ յանդգնութիւն իբրև զհողմ խորշակ է՝ որ ապականէ զպտուղ միայնակեցին. բայց վասն ծաղու այժմ լուր, զի ծաղրն պչարաչար հեծեծանս տապատս վարէ. ծաղրն ոչ շինէ ոչ պահէ, այլ կորուսանէ և զշինեալն կործանէ. ծաղրն զհոգին սուրբ տրտմեցուցանէ և զանձինս ոչ օգտեցու-

հանցեն զհոգի իմ ՚ի մարմնոյ իմոյ, երկրորդ յորժամ կացուցեն զիս առաջի այ, և երրորդն յորժամ հատցի դատաստանն իմ։

։ Նստէր երբեմն հայրն Սիլուանէ ընդ եղբարց ոմանց, և տուեալ եղև ՚ի զարմացումն, և անկաւ ՚ի վերայ երեսաց իւրոց և կայր ընդարձակ ժամս անկեալ. և իբրև յարեաւ, լայր ուժգին։ Եւ անկեալ եղբարցն առաջի նորա և ասեն. զի՞ է քեզ, հայր, ասա մեզ։ Իսկ նա լայր լռութեամբ։ Իսկ մինչ բռնադատեցին զնա յոյժ, ասէ. ես ՚ի տանջանս յափշտակեալ եղէ, և զի տեսի անդ բազում կրօնաւորս զի երթային ՚ի տանջանս, և աշխարհականք զի ելանէին յարքայութիւն այ։ Եւ քանզի ողբայր ծերն ՚ի վերայ այսորիկ և ոչ կամէր ելանել ՚ի սենեկէ իւրմէ. իսկ եթէ ՚ի հարկէ գիտէր ելանել արտաքս, ծածկէր զաչս իւր կնկղաւ իւրով և ասէր. զի՞նչ պիտոյ են ինձ տեսանել զայս խաւարանելի և անշահ։

ցանէ, և զնորոգմնն ապականէ, զարիութիւն հալածէ. ոչ տանի զյիշատակ մահու, և ոչ որոճայ զգժոխսն:

ԱՍԱՑ ոմն 'ի ծերոցն՝ եթէ առաջին ապաշխարութիւն միայնակեցին՝ դարձն 'ի զբաղմանց. իսկ որ ստանայ ըզծաղր և զհամարձակութիւն, կորուսանէ զպտուղ անզբաղութեան: Ծաղր և յանդգնութիւն 'ի տեղի աղտեղի արկանէ զմիայնակեացն՝ ոչ միայն զմանկունս, այլ և զծերս. ծաղր և յանդգնութիւն ստորաքարշէ զմիայնակեացն:

ԵՂԲԱՅՐ¹ ոմն եհարց ցաբբայ Անտոնիոս և ասէ. զինչ արարից զմեղս: Ասէ ծերն. որ կամի փրկել 'ի մեղաց, հառաչանօք ազատի 'ի նմանէ: Նոյն ինքն դարձեալ ասէ՝ եթէ որք արտասուեն, է ճանապարհ զոր ես մեզ գիրն. և հարքն մեր ասէին՝ լացէք, այլ ոչ գոյ ճանապարհ, բայց միայն այս: Եթէ անկանիցիս 'ի մեղս և դարձցիս 'ի նմանէ և սկսանիս տրտմել և ապաշխարել, տես մի դադարեր 'ի տրտմութենէ և 'ի հառաչելոյ առ տէր մինչև յօր մահուան քո, զի մի գուցէ դարձեալ 'ի նոյն տեղի անկանիցիս: Եւ այսպիսի տրտմութեամբ հաւատա առ Տէր լինել, զի երաշխաւոր է անձինն և զգուշացուցանէ յընկղմելոյ. գիտեա զի յառաջ քան զամենայն չար և յառաջ քան զլինել մարդոյն՝ սկիզբն մեղաց ամբարտաւանութիւնն եղև 'ի կամակոր մտաց նախագիւտ դիւին, որով ինքն անկաւ:

ԱՍԵՆ վասն Արսենի հօր՝ եթէ եկին առ նա եղբարք 'ի Սկիւթ և ոչ կարաց ընդունել զնոսա 'ի բազում սգոյ և 'ի տրտմութենէն զոր ունէր. և տեսեալ եղբարցն զահի հարեալ գնացին:

ԵՂԲԱՅՐ² ոմն փառանացի, անուանեալ Արեթաս,

¹ Եղբայր ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. զինչ արարից զմեղս իմ, հայր: Ասէ ցնա ծերն. որ կամիցի արձակել 'ի մեղաց, ողբալով և լալով զերծցի. և որք կամիցին ստանալ զառաքինութիւն, ողբովք ստասցին, քանզի ճանապարհ կենաց և փրկութեան ողբք են, որպէս ուսուցանեն հարքն և ասեն. լացէք և ողբացէք, որդեակք, զի այլ ճանապարհ փրկութեան խոյս զաս ոչ գոյ: Ասէ եղբայրն. և զինչ արարից, հայր, զշփոթութիւն իմ որ շարժէ զիս 'ի արտմտութիւն: Ասէ ցնա ծերն. լացցուք առաջի գթութեան այ յամենայն ժամու և տեղւոջ մինչև արասցէ զգթութիւն իւր 'ի վերայ մեր: Ապա դարձեալ. եթէ անկանիս 'ի մեղս և դառնաս 'ի նմանէ և սկսանիս լալ և ապաշխարել, տես մի դադարեր 'ի ողբալոյ և 'ի հառաչելոյ առ տէր մինչև յօր մահու քո. ապա թէ ոչ՝ 'ի նոյն գուբ դարձեալ փութասցես անկանիլ. և քանզի որ լսէ նոյն տրտմութիւն է, պահէ է անձին և ոչ թողու անկանել զնա:

² Մերձ առ ծեր ոմն բնակէր այլ եղբայր ծոյլ 'ի ջանս կրօնաւորու-

բեմն խորովլի խոկ գայ, և երբեմն և ոչ աշխատութեամբ։ Վայ տասց ծերոյն. արտասուք նմանին են ձմերայնոյ անձրևաց, խոկ միայնակեացն մշակ է. յորժամ տեսանէ եթէ անձրև գայ, պարտ է փութալ և ջանալ զի մի ինչ կորնչիցի ՚ի նմանէ, այլ զի մտանէ ՚ի պարտէզն և ոռոգիցէ զնա։ Ի՞նչ զի ասեմ ձեզ, որդեակք, յաղագս զտանի օր մի անձրևոյ որ լաւ է քան զամենայն տարին և մնացանէ զամենայն պտուղս, և վասն այսորիկ յորժամ գըտանիցուք թէ եկն՝ ջանասցուք և պահեսցուք զանձինս և պաղատեսցուք աղաչելով յամենայն անձնէ և ՚ի սրտից, քանզի ոչ գիտեմք եթէ գտանեմք յայլում աւուր զանձրևն զայն։ Պարձեալ մեք հարցաք ցնա. Հայր, զինչ պահեսցէ մարդ զուգ յորժամ գայցէ։ Ասէ ծերն. Նախ քան զամենայն զի մի յառուցանէ մարդ յաւուրն յայնմիկ և ՚ի ժամանակի, և զորովայն իւր պահեսցէ և զլեզու՝ զի մի հպարտասցի թէ ունի հանգիստ, պատարագիցէ աղօթից և ընթերցմանս. սակայն յորժամ գայցէ մեզ սուգն, նա ուսուցէ մեզ զկերպն որ ածեն զնա և դարձեալ որ են որ արգելուն զնա։ Ասէ պատմեաց ասելով՝ եթէ գիտեմ եղբայր մի որ նստէր ՚ի խցի իւրում և գործէր սիրայ. և իբրև գայր արտասուքն՝ յաղօթս յառնէր, և ՚ի նոյն արգելուլն.

բեմն դիւրաւուր յինքեան է գան արտասուք և երբեմն և ոչ աշխատանօք գան, և ծերն ասէ. արտասուքն նման է ձմերային անձրևոյ, և կրօնաւորն նման է մշակի. և պարտ է այնպիսի որք գայցեն ՚ի մշակութիւն կրօնաւորական՝ որպէս զի մի ինչ կորուսցէ անձրևոյն և կորուսցէ յանձրևոյն յայն, այլ զամենայն արկցէ յպարտէզս իւր։ Ճշմարիտ ասեմ ձեզ, որդեակք, զի լինի բազում անգամ որպէս զի միոյ աւուր անձրև յաղթեսցէ զանձրև բոլոր ամին և լնու զորայս ամենայն բարութեամբ, և զպտուղս պարարտացուցանէ և այգեաց և անգոյս. Իսկ պարտ է զգուշանալ ժամու և աւուրն այնմիկ, զի յորժամ գայցէ՝ սիրով և փութով աղաչեսցուք զնա ՚ի նմա. զի ոչ գիտեմք եթէ դարձեալ գըտցուք այնպիսի ժամ անձրևի փրկութեան հոգւոյ։ Իսկ մեք հարցաք դարձեալ. և որպէս պահեսցէ ոք զնա յորժամ եկեսցէ։ Իսկ ծերն ասէ. յորժամ գայցէ զնա ՚ի սրտի քում, մի ևս ոք գնասցես ՚ի մարդկանէ ՚ի ժամու և յաւուր յայնմիկ, և պահեա զորովայն քո և զլեզու քո և մի ցրուեսցի ինչ, և մի պարապեսցիս աղօթել և կամ ընթեռնուլ գիրս. այլ մինչ գան ողբ և արտասուք՝ զնա միայն արասցես. Նա և ինքն զնա ուսուսցէ մեզ զկերպն որք զօրացուցանեն զնա, և որք խափանեն և մերժեն։ Իսկ զի ասաց մեզ ծերն զայս ինչ դարձեալ, եթէ տեսանեմ ես եղբայր մի որ նստէր ՚ի սենեկի իւրում և հիւսէր զախորս արմաւոյն, և հասեալ յաչաց նորա արտասուք իբրև զվտակս գետոց. և յորժամ յառնէր յաղօթս՝ դադարեին արտասուքն, և մինչ նստէր ՚ի գոր-

և նստէր դարձեալ գործէր զախրայն և ժողովէր զմիտս իւր և 'ի նոյն գայլն. և յընթանալն նոյնպէս յորժամ գայր զղջումն՝ յառնէր, և 'ի բաց վերանայլն. և իբրև լռկ առնոյր զգիրսն, դարձեալ գայլն: Այս յայնժամ ասէ եղբայրն. բարւոք ասացին հարքն՝ թէ ոսկ փորձական է, քանզի նա ուսուցանէ մարդոյ զամ օգտակարս նորա*:

ՊԱՏՄԵԱՑ՝ մեզ զայս ծերն և ասէ. 'ի կենդանութեան իւրում վարդապետն իմ սիրէր համապաղ 'ի հեռագոյն

ծեր՝ դարձեալ բղխէին. այսպէս և յընթերցումն գրոց լինէր, և 'ի գալ արտասուացն մինչ առնոյր զգիրս՝ դադարէր արտօսրն: Եւ նա ասէ. բարւոք ասացին հարքն՝ եթէ ողբ վարդապետ է և նա ուսուցանէ մարդոյ զամենայն ինչ որ շարժէ զնա:

* Այս օրինակ պարմութեանս որ կայ գրեալ 'ի հին թարգմանութեան. Ասէ դարձեալ. երբեմն երթայ-ոք 'ի կանոնս յԱղեքսանդրիա տան մեղնաւ հեռագոյն՝ խօսել ընդ աբբայ Թէոդորոս առն առ-աքինականի, որ շնորհս բաւեթեան ունէր. և պատմեաց մեզ եթէ էր ամն եղբայր բնակեալ 'ի սենեակ, և հասեալ էր շնորհաց մեծաց արթ-նութեան. Եկն մի յաւուրց, և 'ի նե-ղաւորութեանէն եկն նմա բաղում արտասուք, և ասէր ինքն առ ինքն. Ճշմարտութիւն այս նշանակ է թէ մերձեալ է վախճան իմ: Յորժամ զայս մտածէր, առաւելապէս ար-տասուքն բազմանային, և դարձեալ ասէր՝ Ճշմարտիւ մերձ է ժամն. և այսպէս յամենայն աւուր առաւե-լուր յարտասուսն: Եւ մեր օգ-տեալք 'ի պատմութենէ ծերոյն, հարցաք զնա վասն արտասուաց՝ ընդէր երբեմն իւրովի գայ, և եր-բեմն ոչ ջանիւ: Ասէ ծերն. ար-տասուք նման է ձմերայնի անձ-րևոյ. որպէս գործանեայն 'ի գալ անձրևոյն ջանայ 'ի յանձրևոյն ոչ կորուսանել, այլ ընդունել 'ի պար-տէզն և սաղգանէ զնա: Այսեմ ձեզ, որդեակք. եթէ յամենայն ժամ ընդունի զգուշութիւն զանձրևն, և յօծ-տոյ առանց անխայելեացս: Նոյնպէս և մեք միայնակեացքս՝ յորժամ ե-կեսցէ մեզ արտասուք, ըստ մեծաց արթնութեան պարտիմք ջանալ զի մի կորիցէ պտուղն մեր, գուցէ ոչ յայլ աւուրս գտցուք զանձրևն զայն: Հարցաք զնա դարձեալ և ասեմք. և որպէս, հայր, պահէ ոք զմեծաց արթնութեան յորժամ եկեսցէ: Ասէ ծերն. այնու զի ոչ հեռի արասցէ յինքենէ զօրն զայն և զգ-ժամն, պահելով զորովայնն և զլե-զուն 'ի շաղակրատաց, զի յամենայ-նի արտասուեսցէ և դադարեսցէ յաղօթս և յընթերցումն. և յոր-ժամ եկեսցէ 'ի վերայ մեր վիշտ, առաւելապէս ուսուցանէ մեզ զլե-գործս զայս: Պատմէր առնելով ե-թէ ասաց զեղբայրն նստեալ 'ի սե-նեակ իւր որ գործէր զախրայն և արտասուեալ, և կանգնեալ յա-ղօթս՝ առաժամայն որդեկաւ, և դարձեալ նստեալ 'ի գործել զախ-րայն՝ արտասուէր ժողովեալ զլե-մխոս. զնոյն և յընթանալն յոր-ժամ զզգատանայր՝ կանգնէր յա-ղօթս և արտասուքն խափանէր, և յառնելն զգիրսն դարձեալ գայր: Յայնժամ ասէ եղբայրն՝ եթէ բա-րւոք ասացին հարքն, եթէ հառա-չանքն իւրովի ուսուցանէ զմարդ զամենայն օգտակարութիւնս իւր:

ւ Ասաց մեզ ամն 'ի ծերոցն՝ եթէ առաջնորդն մեր սիրէր յոյժ ար-տասուս բնութեն 'ի ներքսագոյն սենեկան զգենալն և զհանգստեան:

անապատս երթալ և անդ լինել։ Եւ 'ի միում աւուր ասեմ ցնա. ընդէ՞ր այսպէս փախչիս յանապատս. քանզի որ բնակէ մերձ յաշխարհ և տեսանէ և անտես առնէ վասն այ, աւելի վարձս ընդունի։ Ասէ ցնա ծերն. աւասիկ ինձ, որդեակ, մինչև գայցէ մարդ 'ի չափն Մովսիսի և լինի գրեթէ որդի այ, ոչ օգտի յաշխարհէ. սակայն ես որդի Ադամայ եմ, և որպէս հայրն իմ՝ յորժամ տեսանեմ զպտուղ մեղացն՝ 'ի նոյն ցանկամ նմա, և առնում ուտեմ և մեռանիմ։ Վասն այսորիկ հարքն մեր յանապատս փախչէին և անդ սպանանէին զորովայնամոլութի, իբր ոչ գտանէին կերակուր որ ծնանէին զախտս։

ԱՍԵՐ դարձեալ՝ եթէ մարդ որ կամաւ տայ զանձն 'ի նեղութի վասն այ, աւատամ թէ զնա ած ընդ մարտիրոսս համարի, քանզի փոխանակ արեան համարի ած նոցա զարտասուս իւրեանց։

ԱՍԱՑ դարձեալ՝ թէ որպէս ամենայն մեղք արտաքոյ մարմնոյն են, իսկ որ պոռնկէն՝ յիւր մարմինն մեղանչէ, քանզի յիւրմէ անտի ելանէ պղծութի և պղծէ զնա, նոյնպէս ամենայն գործ բարի զոր առնէ մարդ՝ արտաքոյ մարմնոյն են. իսկ որ արտասուէ, զանձն և զմարմին իւր սրբէ. քանզի 'ի վերուստ 'ի վայր իջանելով արտասուքն զամենայն մարմինն լուանայ և սրբէ։

ԵՂԲԱՅՐ՝ ոմն բնակեալ մերձ 'ի յաբբայ Լոնգինոսի խցի՝ բազում անգամ գայր 'ի վհատութիւն, քանզի անկեալ էր 'ի մեղս մեծս, և ապա սգայր. և իբրև ոչ գիտէր ինչ առնել, ասէր՝ որ ինչ եղև եղև. և ասէին նմա խորհուրդք իւր՝ այլ չարով եղև, սակայն եղև։

Յաւուր միոջ ես ասացի նմա. ընդէ՞ր այդպէս փախչիս 'ի խորին անապատս, հայր. և քանզի որք 'ի շէնս մերձ բնակին՝ տեսանեն միշտ ըղմիշտս և զքինս և զգուշանան 'ի նոցանէ, և առաւել վարձս առնուն յայ։ Եւ ծերն ասէ. հաւաստա ինձ, որդեակ. եթէ ոչ ոք հասցէ 'ի չափս Մովսէսի և բոլորովին որդի այ եղիցի, ոչ կարիցէ շահել յաշխարհէ ինչ. իսկ ես որդի Ադամայ եմ, և զոր օրինակ հայրն իմ արար, յորժամ տեսանեմ զպտուղն մեղաց, վաղվաղակի ցանկամ ուտեմ և մեռանիմ։ Եւ վասն այնորիկ փախչէին յանապատ հարքն մեր և սպանանէին անդ զորկրամոլութի, իբր զի ոչ գտցեն զկերակուրս, որք և ծնանին զանկումն և զախտակրութիւնս։

։ Եղբայր ոմն բնակէր 'ի խցի ուրեմն, և բազում անգամ լինէր հագացեալ իբրև զմոլեալ և շփոթեալ, զի անկանէր նա 'ի մեծամեծ մեղս. և միշտ ողբայր և լայր և ոչ գիտէր թէ զինչ արասցէ, և ասէր ցանձն իւր. արդ որ ինչ եղև եղև։ Եւ դարձեալ 'ի միտ ասէր. այլ չար ինչ եղև։ Եւ այնպէս ողբալով կատարեաց զամ աւուրս կենաց իւրոց։

ՍԱՅԼ[1] անձն 'ի հարանց նստէր 'ի Սկիւթ 'ի տեղւոջն որ կոչի Պետղկաս. եկն առ նա անձն 'ի ծերոցն և ասէ ցնա. աբբայ, տրտմիմ և հոգամ յորժամ արձակեմ զեղբար-սըն ուրեք 'ի սպասաւորութիւն: Եւ նա ասէ ցնա. Եւ յորժամ արձակեմ զսպասաւոր իմ վասն պիտոյից իմոց՝ նստիմ մերձ 'ի դուրսն, և յորժամ ասեն ցիս խորհուրդք իմ՝ Ե՞րբ արդեօք դայցէ եղբայրն, ասեմ և ես. արդ եթէ յառաջեսցէ միւս ևս այլ եղբայրն որ առնելոցն է զքեզ առ տէր, այսինքն հրեշտակն, զի՞նչ լինի ար-դեօք. այսպէս նստելով հայիմ ընդ դուրսն հոգալով և լալով զմեղս իմ և ասելով՝ ո՞ր եղբայր արդեօք յառա-ջեսցէ և մտանիցէ, նորքի՞նս թէ վերինն: Եւ մեծա-պէս օգտեալ 'ի ծերոյն գնաց այնուհետև և նա զնոյն գործ կալաւ*:

ՊԱՏՄԵԱՑ[2] հայրն Յովսէփ եթէ ասաց հայրն Իսա-հակ՝ թէ նստէի երբեմն առ հօրն Պիմենի, և տեսի զնա զի 'ի զարմացման լինէր. և վասն զի ունէի առ նա բազում համարձակութիւն, անկայ առաջի նորա և աղա-չեցի զնա և ասեմ. ասա ինձ ու՞ր էին խորհուրդք քո: Եւ նա հարկաւորեալ ասաց՝ թէ իմ խորհուրդս ուր

[1] Այլ անձն 'ի հարանցն բնակէր յՍկիւթիա 'ի տեղւոջն որ կոչի ուԹից հօրն. և առ նա եկն անձն եղբայր և ասէ ցնա. դժուարիմ ես յոյժ յորժամ առաքեմ զեղբայր իմ 'ի սպասաւորութիւն ուրեք: Եւ նա ասէ ցնա. Նոյնպէս և ես յորժամ առաքեմ ուրեմն զսպասաւոր իմ, դժուարիմ և նստիմ առ դրանն և դիտեմ. և յորժամ ասեն ցիս խոր-հուրդք իմ եթէ Ե՞րբ գայցէ եղբայրն, և ես ասեմ ցնա. եթէ յառա-ջեալ եկեսցէ քան զնա միւս այլ ևս եղբայրն որ է հրեշտակ Աստուծոյ՝ որ գալոց է պահանջել զհոգիդ քո, զի՞նչ արասցես յայնժամ ժամու. և այսպէս զօրն ողջոյն նստիմ առ դրանն և նայիմ. և զի խորհելով զայս ողբամ զմեղս իմ և ասեմ. արդ ո՞ր ոք եղբայր նախ եկեսցէ առա-ջեալ, վերի՞նն եթէ ներքինն: Եւ շահեալ 'ի նմանէ եղբայրն գնաց, և յայնմ օրէ խորհէր և նա այնպէս:

* Օրինակ մի հին Թարգմանութեան այսպէս համառօտէ. Ասաց ցեղբայր ծեր անձն 'ի ծերոցն. զսպասաւորն յուղի առաքելով նեղիմ յոյժ ասէ 'ի Ճանապարհ: Եւ նա ասէ. Նոյն-պէս և ես առնեմ գիտելով զուղի գնացելոյն 'ի գործ. բայց և ասեմ զայս՝ ո՞ գիտէ, նախ եկեսցէ այն որ հոգւոյս պարտէ. և տանջիմ թէ մի՞ նախ գայցէ՝ վերի՞նն թէ ներ-քին սպասաւորն:

[2] Ասաց հայրն Իսահակ՝ եթէ նստէի երբեմն առ հօրն Պիմենի, և նա յափշտակեցաւ միտք. և զի ունէի բազում համարձակութիւն առ նա, և խնդրեցի առնել ինձ թէ ու՞ր յափշտակեալ կայր միտքդ: Իսկ նա մինչ բռնադատեցաւ յինէն՝ ասէ. խորհուրդք իմ էին անդ՝ ուր առ-

տուրքն Մարիամ կայր և լայր 'ի խաչելութեան տեառն, և ես կամէի այնպէս լալ։

ՄԲԱՑ՝ Հայրն Պաֆնուտ աշակերտ երանելւոյն Մակարայ, եթէ ասէր երանելին ծերն՝ թէ մինչ ես մանուկն էի՝ արածէի եզինս ընդ այլ մանկտեակս, և չոգան հատանել նոքա խնձեանց սեխ. և մինչդեռ երթային, անկաւ մի 'ի սեխոցն, և ես առի և կերայ. արդ յորժամ յիշեմ զայն, նստիմ և լամ։

ՄԵՐ՝ Հայրն Յակոբ՝ թէ որպէս ճրագ զի զխաւարչտին տուն լուսաւորէ, այսպէս և երկիւղն այ եթէ եկեսցէ 'ի սիրտ մարդոյ՝ լուսաւորէ զնա և ուսուցանէ նմա զամենայն առաքինութիւնս և զպատուիրանս այ։

ՄԵԻՆ՝ վասն հօր որումն Մատղեայ 'ի Սկիւթ՝ եթէ հովիւ գաղան էր. և տեսեալ կին մի յղի 'ի վայրին, և գործակցեալ 'ի բանսարկուէն ասէ. կամիմ տեսանել եթէ զիարդ կայ մանուկն յորովայնի նորա։ Եւ պատառեաց զորովայնն և ետես զմանուկն, և զղջացեալ եկն 'ի Սկիւթ և պատմեաց հարանցն զոր ինչ թէ գործեացն։ Եւ լուաւ նոցա զի սաղմոսէին և ասէին. ժամանակ ամաց մերոց 'ի նոսա եօթանասուն ամ, ապա թէ առաւել են՝ ութսուն ամ, որ ինչ աւելի քան զայն՝ ցաւօք և հեծութեամբ։ Եւ ասէ ցնոսա. ահա եմ քառասնամեայ և մի ժամ յաղօթս ոչ եմ կացեալ. և այժմ

աստուածածինն Մարիամ կայր առ խաչին և լայր, և ես կամէի զի միշտ այսպէս լայի։

1 Ասաց Հայրն Պափնուտի որ էր աշակերտ հօրն Մակարիոսի, եթէ ասէր երանելի ծերն՝ եթէ մինչ մանուկ էի և արածէի զէշախերս ընդ այլոց մանկանց, և գնացեալ նոքա թուզս գողացան. և 'ի փախչելն նոցա անկաւ 'ի նոցանէ թուզ մի, և առեալ կերայ զնա. և զի դեռ ես երբէք յիշեմ զայն, օղբամ յոյժ։

2 Ասաց Հայրն Յակոբ. որպէս ղամբար զի մինչ մտանէ 'ի տուն՝ լուսաւորէ զմութն, այսպէս և երկիւղն այ յորժամ մտանէ 'ի սիրտ մարդոյ՝ լուսաւորէ զնա և ուսուցանէ նմա զամենայն առաքինութիւն և զիմաստութիւն։

3 Ասաց Հայրն Ալիոս՝ թէ էր ուրեմն ոմն հովիւ վայրենի և չար յոյժ, որ կոչէր Աղաղոն. սա ետես կին մի յղի 'ի վայրի, և բանսարկեալ եղև 'ի գլուխն և ասէ 'ի միտ խորհրդոմ. եկ զի տեսից եթէ որպէս բնակի տղայն յորովայնի մօր իւրոյ. և զի կալեալ զկինն հերձեաց և ետես թէ որպէս կայր մանուկն յորովայնին։ Եւ երբէք գործեաց զայն, վաղվաղակի հարաւ խորհրդով և խղճեցաւ, զղջացաւ սիրտ նորա և յարեաւ գնաց 'ի Սկիւթ և պատմեաց հարցն զգործն զոր արար։ Եւ լուաւ 'ի նոցանէ յերգս զի ասէին. ժամանակ ամաց մերոց անցաւոր որպէս սարդի, և թիւ աւուրց ամաց մերոց 'ի նոսա եօթանասուն ամ, և զի աւելին 'ի նոսա ցաւօք և հեծութեամբ։ Եւ ասէր. որպէս և ես կար-

եթէ կացից այլ քառասուն ամ, ոչ դադարեցից աղաչել զՏէր զի թողութիւն արասցէ մեղաց իմոց։ Վասն զի ձեռագործ ինչ ոչ ունէր, այլ համապազ յաղօթս կայր և ասէր. մեղայ իբրև զմարդ, իբրև զՏէր թողութիւն արա ինձ։ Եւ էին նորա աղօթք խոկումն 'ի տուէ և 'ի գիշերի։ Եղբայր ոմն որ եթէ ընդ նմա բնակէր, և լսէր 'ի նմանէ զի ասէր. ձանձրացուցի զքեզ, Տէր, թողութիւն արա ինձ, զի հանգեայց փոքր մի։ Եւ կատարեցան կամք նորա, զի եթող նմա Տէր զամենայն զմեղս նորա և զմահ կնօջն. բայց վասն մանկանն ոչ կատարեցան կամք նորա։ Եւ ասաց ցնա ոմն 'ի ծերոցն՝ եթէ և զմանկանն եթող քեզ Տէր. այլ կամօք եթող զքեզ յաշխատութեան, զի օգտակար է հոգւոյ քում։

ԵՂԲԱՅՐ՝ ոմն եհարց ցհայրն Սիսոն և ասէ. ասա ինձ բան։ Ասէ ցնա ծերն. երբ արա զխորհուրդս քո որպէս չարագործքն 'ի բանդին են և հարցանեն զմարդիկն՝ թէ ո՞ւր է իշխանն կամ ե՞րբ գայ, և յականկալութենէ երկիւղին դողան և զարհուրին։ Նոյնպէս և միայնակեցին արժան է հայել և յանդիմանել զհոգի իւր և ասել՝ վայ ինձ, զիա՞րդ կացից առաջի ատենին Քի և զի՞նչ պատասխանիս ունիցիմ տալ։ Եթէ այսպէս խորհիցիս համապազ, կարես ապրել։

ծեր զի քառասուն ամաց եմ ես, և ոչ մի օր կացի 'ի կամս իմ. իսկ եթէ եղէց կենդանի այլ ևս քառասուն ամ, մի դադարեցից աղաչել զՏէր աղօթիւք, զի տացէ թողութիւն մեղաց իմ։ Եւ լեալ կրօնաւոր եկաց անդ, և ոչ բնաւ առնէր ձեռագործ ինչ, այլ զտիւ և զգիշեր աղօթէր և ասէր. Տէր Տէր, ես որպէս մարդ մեղայ քեզ, և դու որպէս Տէր ողորմեա ինձ։ Եւ խորհէր զաղօթս զայս 'ի մտի միշտ։ Եւ էր ոմն եղբայր այլ մերձ առ նա, և լսէր 'ի նմանէ զի ասէր. Տէր, ձանձրացուցի ըզքեզ. թող ինձ զի հանգեայց փոքր մի։ Եւ եկն ձայն յերկնից՝ եթէ թողի զամենայն մեղս քո, նա և զարիւն կնոջն, այլ զմանկանն ոչ թողի զեա ես։ Եւ պատմեաց զայս ծերոյ ումեմն, և ասէ ցնա ծերն՝ եթէ զմանկանն ևս եթող քեզ. բայց յայն սակս ասաց քեզ զայն, զի մի ծուլասցիս։

։ Եղբայր ոմն եհարց ցհայրն Սիսոյ և ասէ. ասա ինձ, հայր, բանս կենաց։ Ասէ ցնա ծերն. երբ և արա զխորհուրդ քո իբրև զչարաց որք արգելեալն 'ի բանտի, զի նոքա քննեն խորհրդածելքն իւրեանց յարաժամ և հարցանեն ամենայն մարդկան միշտ՝ եթէ ո՞ւր իցէ իշխանն և ե՞րբ գայցէ այսր և զի՞նչ գատ է իմ. և 'ի մտաւորն և յերկիւղէն դողայ միշտ և սարսէ։ Այնպէս և կրօնաւոր պարտական է զի միշտ ողբասցէ զանձն իւր և ասասցէ. վայ ինձ, վա՜յ ինձ, որպէս կարասցից կեալ առաջի աթոռոյն Քի և կամ զի՞նչ պատասխանի տաց վասն բազում մեղաց իմոց։ Եթէ այսպէս արասցես, կարասցես կեալ կամաւն Այ։

ԱՍԱՑ հայրն Հեղիաս՝ եթէ զինչ հանդուրժեն մեղք ուր ապաշխարութիւն է, և զինչ օգուտ է սիրտ` ուր ամբարտաւանութիւն է:

ԱՆՑԱՆԷՐ[1] երբեմն հայրն Պիմէն ընդ Եգիպտոս, և ետես կին մի զի նստէր 'ի գերեզմանսն և լայր դառնապէս: Ասէ ծերն. եթէ եկեսցեն ամենայն տաւիղք ցնծալի աշխարհիս այսորիկ, ոչ կարեն որոշել զանձն նորա 'ի սգոյն յայնմանէ. այսպէս և միայնակեցին արժան է հանապազ սուգ ընդ ինքեան ունել:

ԱՆՑԱՆԷՐ[2] երբեմն հայրն Պիմէն հարամբն Անուբաւ ընդ կողմն Դիոլկոսի. և եկեալ 'ի գերեզմանսն տեսանէին զկին մի զի կոծէր չարաչար և լայր դառնապէս, և նոքա ուշ կային և ունէին. և անցեալ սակաւիկ մի յառաջ՝ դիպեցաւ նոցա ոմն, և եհարց ցնա հայրն Պիմէն և ասէ. զի լայ այնպէս դառնապէս կինն: Եւ ասէ. վասն զի մեռաւ այր նորա և որդի և եղբայր: Եւ ասէ հայրն Պիմէն ցԱնուբ. ասեմ քեզ, եթէ ոչ մեռուցէ մարդ զամենայն կամս մարմնոյ և ստասցի զսուգս զայս, ոչ կարէ լինել միայնակեաց, վասն զի ամենայն կեանք նորա 'ի սուգ անդր են և միտք նորա:

ԵՂԲԱՅՐ[3] ոմն եհարց ցծեր և ասէ. որպէս եկեսցէ մարդոյ արտասուք, հայր: Եւ ասէ ծերն. արտասուքն սովորութիւն է, որդեակ, և անպարապ պահել զանձն յամենայն ժամ որք խնդրեին զնա, զի միտք նորին յամե-

[1] Շրջէր երբեմն հայրն Պիմէն յԵգիպտոս, և ետես զկին մի որ նստէր մերձ 'ի գերեզմանի և լայր դառնապէս: Եւ ասէ. սա եթէ տեսցէ զամենայն ցնծութիւնս աշխարհի, ծիծաղել ոչ կարասցէ. այսպէս և կրօնաւորի լինել պարտ է, որ ողբասցէ միշտ զմեղս իւր. որ ողբք կերպին շահս ունին, մի որ աշխատեալ գործէ զարարիս, և երկրորդ որ պահէ զգործ իւր և զինքն:

[2] Շրջէին երբեմն հայրն Պիմէն և հայրն Պամբոյ ընդ եզր ծովու, և տեսին զկին մի որ լայր դառնապէս և կոծէր յոյժ, և կացեալ ժամ մի տեսանէին զայն. իսկ մինչ անցին սակաւիկ մի՝ հանդիպեցան մարդոյ, եհարց ցնա հայրն Պիմէն և ասէ. ընդէր այդպէս լայ կինն այն, զինչ եղեալ է նորա: Եւ նա ասէ. մեռան նորա այր և որդի և եղբայր 'ի միում աւուր: Ասէ Պիմէն ցՊամբոյ. Ճշմարիտ ասեմ քեզ, զի եթէ ոչ մեռանիցի մարդ յամենայն կամաց մարմնոյ և ստասցի ողբս այսպիսի, նա ոչ կարէ կրօնաւոր լինել, զի ամենայն կեանք իւր և միտք և սիրտ ողբք և լաց են:

[3] Եղբայր ոմն եհարց ցծերն և ասէ. Որպէս եկեսցէ ողբ 'ի սիրտ մարդոյ: Ասէ ցնա ծերն. ողբ սովորութիւն է, որդեակ, զի 'ի նմա պարապել պարտ է բազում ժամանակս որք խնդրեն զնա, 'ի մտի ու-

Նոյն ժամ յիշատակեսցէ զմեղս իւր զոր գործեալ իցէ, կամ զզժոխս կամ զյիշատակ գերեզմանին. և այսպիսի թշուառականն և ողորմելի մտածութեամբ խոկայ և զծընողսն իւր թէ որպէս գնացին և ուր իցեն այժմ: Նշէ եղբայրն. և օգտէ՞ այդ կրօնաւորին յիշատակ ծնողացն: Նշէ ծերն. զոր և յիշատակ գիտես եթէ բերէ արթնութիւն անձին, աներկիւղ զօրացիր 'ի նմա: Նա յորժամ գայցէ քեզ արտասուքն և խոցոտեալ ձկլիս 'ի նմանէ՝ վասն որոյ էրաց և իցէ՝ մխիթարեսցիս. զի տեսի ես եղբայր գործօնեայ, որ խիստ ունելով զսիրտ, հարկանէր զանձն և 'ի ցաւոցն արտասուեալ յայնժամ յիշատակէր զմեղս իւր:

Նոյ՝ դարձեալ. եթէ գիտասցես եթէ ա՛ծ յառաջամիք շնորհեսցէ քեզ մտաց արթնութիւն, 'ի ժամանակին յայնմիկ արհամարհես զձեռագործն քո և արգել զքեզ 'ի հառաչանս, թերևս մերձեալ է օրն ելից քոց, և վասն այնորիկ ա՛ծ շնորհեաց քեզ զարտասուքն, զի նովաւ գտցես սակաւ մի ողորմութիւն. զի սատանայ մերձ 'ի վախճանին փութայ ըմբռնել զմարդն, իսկ ա՛ծ 'ի վախ-

նելով հանապազ զմեղս իւր զոր գործեաց. յիշելով և զօր մահուն միշտ և զդատաստանին. և զի միշտ մշտալի էրս 'ի զարմանականս խորհեսցի 'ի միտ, զմահ հօր և մօր և անձնոյն աղքատահնձի և զհեռա նոցուն, և ասիցէ եթէ մեք արգելքք են նոքա: Այսէ ցնա եղբայրն. և զաղտ իցէ, հայր, կրօնաւորի յիշել զծնողսն և զաղքատահնձ իւր սակս ողքոց: Ասէ ցնա ծերն. և որ աղք յիշմանց բերցեն զոգիս՝ զայն յիշեսցես մինչև մնացէ յանձին սղղջն և զղջութիւն և արտասուք: Մինչ ջերմացի սիրտ քո, յայնժամ սուր և կամեսցիս ուղղեսցես զնա, թէ վասն մեղաց քոց և թէ վասն այլ բարւոյ իմիք կամեսցիս. զի տեսի ես եղբայր ողբական և ձգնող, որ յորժամ խառնեայր սիրտն և ոչ կարէր լալ, հարկանէր զզլուխն իւր և 'ի ցաւէն սկսանէր լալ. և իբրև սկսանէր արտասուր, ասա յիշէր զմեղս իւր և անդ ձնայր: Զոր օրինակ որպէս ջուր արկեալ 'ի պարանոց՝ սուր և կամեսցիս սառեսցէ, այնպէս և զարտասուս իմասցիս: Իսկ վասն հաւատոյ կամ վասն իմաստութեան խօսել և զիրս ընթեռնուլ՝ ցամաքեցուցանէ զսիրտ և զզջութիւն. իսկ խորհուրդ և բանք սուրբ հարցն նորոգեն զնա 'ի միտ:

Ասաց դարձեալ. եթէ տացէ քեզ տէր ողբս, մի կարծեսցես զա 'ի միտ քո թէ մեծ ինչ առնես, և զի երանելի նոքա են որոց ոչ պիտոյ իցէ սուգ: Այլ թէ տեսանէ ա՛ծ զմարդ զի զղջացեալ արտասուօք՝ առնու զնա 'ի նմանէ, և խառնեայ սիրտ նորա յայնմհետէ և մնայ անզղջեալ: Արդ եթէ տեսցես զի տացէ քեզ տէր արտասուս 'ի ժամու, թողցես զա յայնժամ զձեռագործ քո և սկսիր ողբալ յասով, մ գիտէ եթէ մերձեալ է վախճան քո, և վասն այնորիկ ետ քեզ տէր սուգ, զի նովաւ գտցես 'ի նմանէ ողորմութիւն: Զի որպէս սատանայ 'ի ժամ վախճանին առաւել փութայ կորուսանել զմարդ, նոյն-

ճան մարդոյն բազում պատճառս նիւթէ հեռացուցանել զմարդն *:

Ոչ է՝ դարձեալ. յորժամ տեսանէ սատանայ զԱծ ողորմեալ քեզ և տուեալ արթնութիւն անձին քում, յայնժամ վարէ զքեզ 'ի սենեակ քո 'ի գործ, բանադատէ և ասէ՝ գործեա զայս այսօր զի պիտոյ է, կամ գնա առ այս անուն, կամ տես զայս ինչ. զայս ամենայն առնէ, զի մի թողցէ զքեզ 'ի լռութե քում յափշտակել զքաղցրութի հառաչանաց քոց: Իսկ եթէ զխոստացեն ծառայքն սատանայի եթէ յամես յաղօթս մտադիւրութի, յայնժամ փորձեն զքեզ փորձութիւք կամ 'ի մարդկանէ կամ 'ի դիւաց. զի յայնժամ զօրէ մարտն սատանայի յանձնելն մեր զբարի, և բարկութե զինուք կքուցանել զարթնութի մտաց խոնարհ անձինն: Պատահէ և 'ի նստելն քո շուրջ պաշարել զքեզ դիւական մտածութեանց, առժամայն արի յաղօթս և շիջեա սադմոխիւք՝ յարեաւ Ած և ցրուեսցին թշնամիք նորա: Իսկ առժամայն ցրուեսցին 'ի քէն:

ՊԱՏՄԵՑԻՆ՝ մեզ եղբարք ոմանք որք գային ընդ մեզ

օրինակ և Ած իւր անթիւ մարդասիրութեամբն առ վախճանին տայ սուգ 'ի սակս փրկութեան մարդոյ:

* Օրինակ մի հին բարգմանութէ հաճառեալ այսպէս. Այսպ ծեր. եթէ գայ քեզ արտասուս, զամենայն ինչ խափանեա զգործ և փութա յաղօթս, ո՛ զիտէ թէ մերձեալ է օր ելից քոց. քանզի մերձ 'ի վախճանին սատանայ ջանայ արկանել 'ի մեղս, և մարդասէրն Ած արկանէ 'ի զեղջ, զի գտցէ ողորմութի և պաշարով գնասցէ:

¹ Այսպ դարձեալ. յորժամ տեսանէ սատանայ զի ետ Ած զզջումն անձին քո, յայնժամ բերէ քեզ գործ և հոգս 'ի սենեկի քո և ասէ՝ արասցես այսօր զայս գործ զի հարկաւոր է, և կամ թէ՝ գնասցես 'ի տեսանել զայն ոմն եղբայր քանզի հիւանդ է. այլ զայս վասն այն առնէ, զի մի թողցէ զքեզ պարապորդ յագիլ 'ի քաղցրութենէն՝ որ լինի քեզ յողբոց քոց: Իսկ եթէ խմասցիս դու զնենգութի սատանայի, և պարապեսցիս աղօթից զղջումն, յայնժամ մեասցես դաւ յանկարծակի փորձութե 'ի վերայ քո՝ կամ 'ի դիւաց և կամ 'ի մարդկանէ: Զի գեն յայնժամ խաղաղոյն պատերազմի ընդ մարդն, յորժամ և մարդն բարւոք պատերազմի ընդ նմա. իսկ սրտմտութիւն առաւել է քան զամենայն ախտս, զի շիջուցանէ զզեղջ և զխոնարհութի անձին խանգարէ: Իսկ է երբեմն զի մինչ նստցիս առանձինն, պաշարեն զքեզ չար խորհուրդք և պատերն զքեզ գիւք խռովեցուցիչքն ախտից և նեղեն. այլ դու յարիցես առժամայն և աղօթեսցես և շիջեսցես զնոսա մի արտասուօք խցին, և առժամայն ցրուեսցի 'ի մտաց քոց:

² Պատմեցին մեզ եղբարցն առաքինացիք վասն ծերոյ ումեմն ողբա-

'ի յՍայիթու՝ եթէ էր ծեր մի ցաւագնեալ անձամբ, նստէր յայրս՝ վերոյ քան զկոչեցեալն Սարայել։ Եւ այնպիսի արթուն էր միտք, որպէս զի թէ յորժամ շրջէր ուրեք՝ ըստ քայլ քայլ գրեա թէ զտեղի ունէր և այց աճնէր խորհրդոյ իւրում և ասէր. զի՞ է, եղբայր, ո՞ւր եմք։ Եւ եթէ գտանէր զմիտս իւր յաղօթելն կամ 'ի սաղմոսել. ասէր՝ ահա բարւոք է. ապ' թէ գտանէր զմիտքն յայլ ինչ սնոտիս խորհելով, 'ի նոյն անարգէր և ասէր. եկ այսր, կորացեալդ 'ի գործս քո։ Եւ այս էր բանք ծերոյն համապազ առ ինքն. եղբայր, մերձ է ժամ գնալոյն, և արդ ոչ ինչ տեսանեմ 'ի մէջ մեր։ Երևեցաւ նմա սատանայ և ասէ. զի՞ տառապիս, հաւատա ինձ՝ ոչ կեցցես։ Ասէ ցնա. ոչ ինչ է քեզ փոյթ կեանս իմ, և թէ ոչ կեցից՝ վերոյ գլխոյ քո կանգնիմ։

Ասէ՛ վասն Արսէնի ասէին՝ թէ միշտ սպունգ ունէր 'ի վերայ ծնկացն, և նովաւ սրբէր զարտասուս իւր։

ՕՀԱՅՐՆ՝ Եսայի 'ի մեծ հիւանդութեանն տեսեալ աշակերտոյն տրտմեցաւ։ Եւ նա ասէ. մի տրտմիր, յայսմանէ կարեմք յիշել զժամանակ դատաստանին. և վասն այնր խնդրեն մարմինք զառողջութի, զի հեռասցին յմյ.

ցոցն որ բնակէր յայրի, և այնպէս փոյթ զգուշալի էր զի յամենայն քայլափոխի ուր և գնայր՝ քննէր զանձն իւր և ասէր. զի՞նչ է, եղբայր, ո՞ւր կցեմք մեք։ Եւ եթէ գտանէր զմիտս իւր զի խորհէր զաստուածոյսն՝ լռէր. իսկ եթէ ոչ՝ և այլ ուրեք ցրուեալ էր՝ հարկանէր զինքն, անարգէր նախատէր և ասէր. դարձ 'ի քեզ և հեռանալեաց գործոց քոց, չար ծեր։ Այսպէս խոցոտէր զինքն ծերն, և գանէր զերեսս իւր և ասէր. եղբայր, մերձեալ է վախճան քո, և զի՞ գտեալ ես միջնորդն կայ քո և եմ։ Սորա երևեցաւ սատանայ և ասէ. հաւատա ինձ, ծեր, զի ոչ կարես կեալ, ընդէ՞ր վշտագնիս։ Ասէ ցնա ծերն. դու մի՛ ինչ հոգասցես զինէն, որչափ և ոչ փրկիմ՝ այնպէս 'ի վերայ գլխոյ քո կայցեմ 'ի գժոխս, և զքեզ 'ի ներքոյ ոտից իմոց դատապարտեալ տեսից։

։ Ասէին վասն հօրն Արսենիոսի՝ եթէ զամենայն աւուրս կենաց իւրոց մինչ նստէր 'ի գործել՝ ունէր միշտ սաւանակ, այսինքն սպունգ՝ 'ի վերայ ծնկացն, և ջնջէր այնու զարտասուսն որ հոսէին յաչաց իւրոց։

։ Աստ հայրն Պետրոս որ աշակերտ էր հօրն Եսայեայ՝ եթէ տեսի զնա զի էր 'ի տկարութի մեծ և տրտմեցայ յոյժ։ Իսկ նա իբրև ետես զիս տխրեալ՝ ասէ ցիս. զի՞նչ վիշտ են այսպիսիք որք հանդարտեան ակն ունին. այլ վիշտք և նեղութիւնք մեծամեծք յայնժամ լինին յորժամ անկցուք յերեսացն Այ, ուր ոչ ոք լուիցէ մեզ, և ոչ ակն կալցուք գըտանել հանգիստ։ Դարձեալ ասէ. գնացի առ նա յայլում ժամու և գտի զնա 'ի խիստ հիւանդութե։ Իսկ նա իբրև ետես ցաւագնեալ ըզտիրտ իմ, ասէ ցիս. միայն այսպիսի մահացու հիւանդութիւնս հանդիկարասցուք յիշել զգալն ժամն այն, այլ և առողջութե մարմնոց մերոց մահու ոչ օգտեն ինչ։ Զի վասն այսորիկ խնդրեն մարմինք զա-

զի ծառ միշտ առոգեալ ջրով ոչ չորանայ և ոչ լինի անպտուղ։ Այլ վասն սուրբ խորհրդոյն ասէր. վայ մեզ, ծով է արժանի նմա, զի քահանայն գոչէ՝ սրբութիւնք սրբոց են։ Այլ ասէր. վայ ինձ վայ, զի առաջի իմ ընթանան մատնիչք իմ, և ոչ կարեմ ուրանալ զմեղս իմ. վայ ինձ վայ, որպէս կարեմ համարձակել նմա և սրբոց իւրոց. վայ ինձ վայ, զի և ոչ մի յանդամոց իմոց սուրբ է առաջի նորա։

ՊԱՏՄԵՑԱՆ՝ Յովհաննիսի՝ եթէ ունէին եղբարքն սէր, և որ կայր անդ՝ ծիծաղեցաւ։ Այլ սկսաւ Յովհաննէս լալ և ասաց. ո՜հ թէ զի՞նչ կայ 'ի սրտի քում, զի ծիծաղեցար յորժամ պարտ էր լալ, զի լուար եթէ ունէին եղբարքն սէր. զի պարտ է վախել յատենէն ահաւոր, որպէս զաւազակ եդեալ 'ի բանդի՝ որ դողայ 'ի դատաստանէն։ Այլ որպէս Աբրահամ նախ զգերեզման ստացաւ յաւետեացն երկիր, և մեք զողբումն մեր*։

առողջութիւն, զի հեռացեալ յինէ. քանզի որպէս ծառ որչափ որ լաւ ջրէ առոգեսցի, ոչ չորասցի արմատ նորա զի արասցէ պտուղ։ Ասաց դարձեալ՝ եթէ հարցի ցնա երբեմն եթէ զի՞նչ է երկիւղն այն։ Եւ նա ասէ. մարդ որ հնազանդեսցի ուխտք արարչին հոգւոր հարցն՝ ոչ լիցէ այնպիսին յերկիւղն այն։ Դարձեալ ասէր վասն սուրբ խորհրդոյն հաղորդութեան՝ եթէ վայ լիցէ մեզ, զի ընդունիմք և 'ի դատապարտութիւն ճաշակեմք, և ընդ թշնամիսն այլ հաղորդիցիմք. զի հաղորդեալ 'ի բարեգործս եղելոցն ճաշակեմք, որպէս և քահանայն ասէ՝ եթէ սրբութիւնք սրբոց են. և ես եթէ սուրբ լինեմ, ընդէ՞ր զատանէ թշնամին առնէ յիս՝ որ են ախտք։ Վայ ինձ վայ, զի ոչ կարացի կեցուցանել զանձն իմ որպէս թէ արժանի եղէց ողորմութեան այս։ Վայ ինձ վայ, զի ոչ հանեցի ազատել թշնամեաց իմոց մարմնական ախտից, որպէս զի եկեալ էր 'ի վերայ իմ արքայութիւն այս։ Վայ ինձ վայ, ասէր, զի կոչեցեալ է 'ի վերայ իմ անուն քո, և ես ծառայեմ թշնամեաց իմոց։ Վայ ինձ վայ, զի ոչ փախչիմ յայնցանէ զոր ատէ ասէր, և վասն այնորիկ ոչ բժշկէ զիս։ Վայ ինձ վայ, զի առաջի իմ ընթանան մատնիչքն իմ, և ոչ կարեմ ուրանալ զչարիս իմ։ Վայ ինձ վայ, ո՞րպէս երեւեցայց առաջի Տեառն իմոյ և ամենայն սրբոց նորա, զի և ոչ մի յանդամոց իմոց սուրբ լիցէ առաջի նորա։

։ Ասաց հայրն Յոհաննէս՝ թէ ունէին երբեմն եղբարք սէր. զայն լուեալ ծիծաղեցաւ եղբայր մին 'ի վերայ անդանոյ։ Իսկ տեսեալ զայն ծերն, սկսաւ լալ և ասէ. զի՞նչ ինչ լիցէ սիրտ եղբօրս այսորիկ զի ծիծաղեցաւ վասն որոյ պարտ էր լալ՝ մինչ լուաւ թէ ունէին զսէրն։

* Նոյն բան և զհօրէն Եսայեայ սառցեալ է տպեալ 'ի հին Բուրգմանեան. Ասէր զնա 'ի հարանցն՝ եթէ մինչդեռ ճաշակէին եղբարքն, ծիծաղեցաւ եղբայր մի 'ի սեղանն. և տեսեալ զնա հայրն Եսայի եւլաց և ասէ. ո՜հ, զի՞նչ ունիցի եղբայրս այս 'ի սրտի իւրում զի ծիծաղեցաւ. մանաւանդ զի լալ արժան է զի 'ի սիրոյ ճաշակէ։

ՀԱՐՑԱՒ՝ հայրն Սիղուիանէ՝ թէ զի՞ արասցուք զղ-ջումն և զծուլութիւն և զանզգջութիւն, զի չտան մեզ 'ի գիշերի աղօթել առանց երգոց և ձայնից: Եւ նա ասէ. երգով պաշտելն հպարտութիւն առնէ, խստութիւն սրտի և խաւար մտաց. զի ասէ՝ ես պաշտեմ և նա ոչ, իմ ձայն և բառ քաղցր է, և նմայն ոչ: Այլ 'ի գիշերի մինչ յառնես, ել արտաքս և շրջեաց, օրհնելով զԱծ, և տես զհայր մեր որ յերկինս, և մուտ 'ի սենեակն և սկսիր զկանոնն առանց ձայնի, բերանն յասել և միտք 'ի քննել զզօրութիւն սաղմոսին 'ի յիշել զմեղս քո և զմահն և զդատաստանն. Եւ ասէ եղբայրն. ես զամե-նայն ժամանակս իմ 'ի վերայ ութ ձայնից պաշտեցի զսաղմոսն: Եւ ծերն ասէ. այդ առնէ զանզգջութիւն. յիշեա զհարսն սուրբ, զի բազումք յանուսմնութենէ ե-կին, և գիրս ոչ գիտէին ոմանք՝ և սաղմոս և ձայնս, և այնպէս հաճոյացան այ, և արարին զօրութիւնս բազումս, որպէս Պաւղ պարզամիտն և Պաւղոս և Անտոն և Պամ-բոյ և այլք յոլովք, որք ոչ երգով և քաղցրաձայնութբ

1 Եղբայր ոմն եհարց ցհայրն Սիլուանէ և ասէ. զի՞նչ արարից, ով հայր, և ո՞րպէս ստասցից զղջութն, զի յոյժ պատերազմին ընդ իս ձանձ-րութն և քունն. և մինչ յառնեմ յաղօթս գիշերայինն՝ յոյժ նեղիմ, և առանց պաշտամանց և երգոց սաղմոսել ոչ կարեմ, և ոչ կարեմ յաղ-թել զքունն և զծուլութն իմ: Ասէ ցնա ծերն. զսաղմոսս ձայնիւ եր-գել և ասել, որդեակ, և երգս երգել առանձինն՝ պատճառ է ամբար-տաւանութն և ատելութն. զի ասէ՝ ես երգեմ և նա ոչ երգէ, իմ բառս քաղցր է և նորա ոչ. և զի ձայնիւ երգել զաղօթս՝ խստացուցա-նէ զսիրտս և խաւարէ զմիտս և ոչ թողու զանձն գալ 'ի զեղջ: Արդ եթէ կամիս ստանալ զեղջ և զարտասուս, 'ի բաց ձգեա զերգս և զձայնս. և յորժամ կացցես առաջի այ առնել աղօթս՝ բերան քո սաղմոսեսցէ անմռունչս, իսկ միտքդ զզօրութն բանիցն քննեսցէ. և զի գիտես զի առաջի այ կեաս որ քննող է սրտից և խորհրդոց: Եւ յորժամ զար-թիցես 'ի քնոյն, նախ քան զամենայն փառաւորեսցէ բերան քո զած, և մի առժամայն սկսցես 'ի սաղմոսս, այլ ելցես արտաքոյ սենեկի քո և շրջեսցես փոքր մի ասելով զհայր մեր յերկինս, և դարձեալ մուտ 'ի տուն և սկսցես 'ի կանոնի քո հեզ ձայնիւ և հառաչանօք սրտի, և յի-շեսցես զմեղս քո և զդատաստանն ահաւորին՝ յոր և քննելոց իցես: Ասէ եղբայրն. ես, ով հայր, յորմէհետէ կրօնաւորեալ եմ, զսաղմոսս և զկանոնս իմ 'ի վերայ ութ ձայնից երգով կատարեմ: Ասէ ցնա ծերն. վասն այնորիկ փախչին 'ի քէն զղջութն և ողբ. այլ յիշեա դու զսուրբ և զերանելի հարքն, թէ որպէս գեղջուկք և անուսմունք էին և ոչ ինչ գիտէին, բայց փոքր ինչ բանս գրոց, և ոչ զձայն և ոչ զեղանակս գիտէին բնաւ, և որպէս զլուսաւոր փայլեցին յաշխարհի: Վկայեն բանից իմոց հայրն Պաւղոս և հայրն Անտոն և Պաւղ պարզամիտն և Պամբոյ և Ա-պողոն և այլ ամենայն հարքն, որք և զմեռեալս յարուցանէին և զդևս

տանէլին փչանան. և երգով պսակելոյն՝ աշխարհի եկեղեցեաց են և ոչ անապատաւորաց։ Այլ զերկնաւորացն չէ գրեալ թէ ուր ձայնիւ պսակեն, այլ բանք գրեալ են՝ թէ ասեն նոքա, ոմանք սուրբ սուրբ ասեն և ոմանք ալէլուիա և կէսք թէ օրհնեալ են փառք տեառն 'ի տեղւոջէ իւրմէ ։

ԱՅԿԻՆ [1] ոմանք առ հայրն Փիլիպ և ասեն. ասա մեզ բան, հայր։ Եւ ասէ ցնոսա. յաւուրսն առաջինս վասն գործելոյ հարցանէին ցծերսն բան, և Տն տայր նոցա բանս վասն խնդրողացն. բայց այժմ ոչ գոյ բան առ ծերս, զի ոչ ոք վասն առնելոյ խնդրէ, այլ վասն գիտելոյ, զի երևեցուսցէ զինքն գիտուն գոլ։

ՇՈՒՆՐՔՆ [2] Աւր և Թէոդորոս արարին կաւ վասն ծեփելոյ զխրճիթն, և ապա ասեն ցմիմեանս. եթէ տես-

հանէլին, ոչ քաղցրաձայն երգով և ոչ եղանակաց յեղանակօք առնելով, այլ լերամ աղօթիւք և անձայն և զի պահօք և արտասուօք. զի ոչ ձայն երգոց փրկէ զմարդ, այլ երկիւղն Այ և պահպանութիւն պատուիրանաց նորա, քանզի ձայնից քաղցրութիւն զբազումս յանդգնեալ ընկղմեաց ոչ միայն զաշխարհականս, այլ և զկրօնաւորս 'ի պոռնկութիւնս և 'ի բազում անառակութիւնս ցնդեաց։ Եւ արդ, որդեակ, պսակաւորութիւնք և ձայնք՝ աշխարհականաց եկեղեցեացն է, զի վասն այնորիկ ժողովին միշտ։ Եւ յիշեա զի բազում դասք են երկնաւորաց և ոչ գրեալ է թէ զուսթ ձայն գոչեն, այլ զի մի դասն ասէ ալէլուիա անդադար, իսկ երկրորդ դասն ասեն սուրբ սուրբ սուրբ տէր զօրութեանց, իսկ երրորդն ասեն օրհնեալ են փառք տեառն 'ի տեղւոջ իւրում։ Եւ դու, ով որդեակ, յանձն առցես զխոնարհութիւն Քի, և զգուշացո զանձն քո և պահեա զմիտս քո 'ի ժամու աղօթիցն. և ուր և գնասցես, մի ցուցաներ զքեզ իբր թէ իմաստուն և գիտուն ես և վարդապետ իցես, այլ լեր դու խոնարհ և անմեղ, և տայ քեզ Աստուած զզղջութիւն ընդ ամենայն առաքինութիւնս։

[1] Եկին երբեմն եղբայր ոմն առ հայրն Փիլիպ՝ և ունէր ընդ ինքեան այլ զուեհիկս. և ասէ ցծերն. ասա մեզ բանս կենաց, հայր։ Իսկ ծերն լռեաց։ Աղաչէր դարձեալ եղբայրն և ասէր ցծերն. հայր, ասա մեզ բան։ Ասէ ցնա ծերն. բա՞ն կամիք զի լուիցէք։ Եւ նոքա ասեն՝ այո։ Ասէ ցնոսա ծերն. արդեօք ոչ գոյ բան առ ումեք, զի 'ի ժամանակին մինչ հարցանէին եղբարք ծերոցն և առնէին զասացեալն 'ի նոցանէ, տայր Աձ բանս ծերոցն եթէ զինչ ասասցեն. իսկ արդ այժմ քանզի հարցանեն և ոչ առնեն զոր լսեն, եբարձ Աձ զշնորհս ծերոցն բանի անտի, և ոչ գտանեն զինչ ասասցեն, վասն այսորիկ զի ոչ ոք գործէ։ Եւ լուեալ զայս եղբարցն լռեցին և հառաչելով ասեն. աղօթեա վասն մեր, հայր սուրբ։

[2] Ասէին վասն հօրն Աւրի և հօրն Թէոդորոսի՝ եթէ արարին կաւ զի ծեփեսցեն զխրճիթս իւրեանց, և ապա ասեն ցմիմեանս. արդ եթէ նայեսցէ Աձ 'ի տեսանել զմեզ՝ զինչ արասցուք։ Եւ այսպէս աղա-

ցէ ինձ և կոչեսցէ՝ զի՞նչ արասցուք ։ Եւ տարաւ սկսան լալ, և թողին 'ի բաց զծնօղս խորհրդին ։

ՊԱՏԱՆԻ՝ ոմն գնայր 'ի կրօնաւորութիւն և արգելոյր զնա մայր իւր այրի, և բռնադատեալ գնաց և եղև ծոյլ կրօնաւոր ։ Եւ զկնի մահու մօրն կալաւ զնա ցաւ մահու, և եղև 'ի տեսլեան և տեսանէր զինքն 'ի տեղի տանջանաց, ուր կայր և մայրն իւր և ասէր ցնա. ո՞չ ասէիր դու՝ եթէ կամիմ կեցուցանել զոգիս իմ ։ Եւ նա ոչ կարաց տալ պատասխանի. և ահա եկն ձայն 'ի բարձանց՝ թէ ոչ զդա կոչեցի, այլ զայս նիշ ծեր համանուն դորա ։ Եւ զարթեաւ նա և ողջացաւ, և մեռաւ ծերն զոր լուաւ. և այնչափ անհանգիստ կենօք և ճգնութեամբ լայր զցայգ և զցերեկ, զի աղաչէին զնա տալ փոքր մի հանգիստ, զի մի թափեսցի 'ի խելաց, և նա ոչ լսէր ասելով. եթէ մօր իմոյ ոչ կարացի տալ պատասխանի, տեառն իմոյ արարչի զի՞նչ արարից հեղգացեալս ։ Եւ

ցին երկրպագեան, և զի թողեալ անգրէն զկեանս 'ի սոսր և գնացին յիւ-րաքանչիւր սենեակս իւր ։

Դարձեալ պատմեաց մեզ ծերն՝ եթէ եղբայր ոմն կամեցաւ հեռանալ յաշխարհէ և կրօնաւորիլ և խափանէր զնա մայր իւր գնալ։ Իսկ նա կարգէր և ասէր ցմայրն. արձակեա զիս զի կամիմ կեցուցանել զանձն իմ։ Եւ իբրև բազում անգամ բռնադատեաց մայրն և ոչ թողլ ետ գնալ, և իբրև ոչ կարաց յաղթել՝ արձակեաց զնա, և յաւրեաւ գնաց և եղև ծեր, այլ ծուլութեամբ կատարեաց զաւուրս իւր. և մեռաւ մայրն նորա։ Եւ զկնի ժամուց ինչ հիւանդացաւ և նա զմահկանացու ախտ՝ մինչև թողեալ եղև 'ի բժշկաց. և իբրև 'ի գժուարս եղև՝ յափշտակեցաւ միտք և եւես զինքն 'ի տանջանս լեալ, և եւես անդ և զմայր իւր ընդ տանջելոյն դատապարտեալ։ Եւ իբրև եւես նա զորդին իւր անդ եկեալ, հիացաւ և ասէ. զի՞նչ իցէ այս, որդեակ, և դու աստ տանջիս, և ո՞ւր իցեն բանք քո զոր ասէիր ցիս՝ եթէ կեցուցանել կամիմ զհոգի իմ։ Եւ յոյժ ամաչեալ եղև ընդ այնոսիկ եղբայրն, և զարմացեալ ոչ գիտէր թէ զի՞նչ պատասխանի արասցէ։ Եւ ապա լուաւ այլ ձայն որ ասէր՝ թէ առէք զդա աստի, զի ոչ այլ ոմն ծեր առաքեցաք զձեզ յայս ինչ վանս որոյ անուն նորայն և սորայն մի և նոյն է։ Իսկ զկնի այսր տեսլեան եկն 'ի միտս իւր եղբայրն՝ և պատմեաց զայս ամենայն որոց էին անդ։ Իսկ 'ի սակս ստուգելոյ զտեսիլն առաքեցին զեղբայր ոմն 'ի վանսն յայն առ այն ծեր, զի տեսցէ եթէ վախճանեա՞լ իցէ։ Եւ իբրև գնաց առաքեալն եղբայր, գտաւ այնպէս որպէս տեսիլն ասաց։ Եւ իբրև ողջացաւ եղբայրն, արգելեաց զինքն 'ի սենեկի ուրեմն, և նստեալ անդ հոգայր զփրկութիւն անձին իւրոյ, լայր և ողբայր անդադար և աշխարէր զաւուրսն անցեալ հեղգութեան։ Եւ զի այնքան էին զեղջ և ողբ նորա, մինչ զի բազումք աղաչէին զնա եթէ փոքր ինչ հանգիցես 'ի կոծոյդ, զի մի յիմարեսցիս։ Այլ նա ոչ կամեցաւ առնել զայն, այլ կոծէր և ասէր. եթէ զնախատինս մօր իմոյ ոչ կարացի բառնալ, որչափ ևս ոչ կարասցեմ բառնալ զնախա-

տասց ամն 'ի տեսողացն. եթէ ոչ զգեցուցանէր մեծ զանմահութիւն որդւոց Ադամայ 'ի զօրութեանն ահագին, և այժմու կենօքս լինէին, 'ի սակամնէ անտանելի երկեղի աւուրն յետնոյ քաղէին ամենայն հոգիք մեղաւորաց յանհանդուրժական երեւմանէ դատաւորին և 'ի սասանելոյն երկնի և երկրի և 'ի մեծ հրապարակին, ուր հաւաքեալ կայցեն անթաւութիւնք երկնաւոր զօրացն և ամենայն լրութիւնք բնութեան որ յԱդամայ հետէ:

Ի ԾԻԾԱՂԵԼ[1] կրօնաւորի միում տասց աւագն. առաջի ծյ և երկնի և երկրի համարս տալոց ես վասն խորհրդոց բանից և գործոց, և ծիծաղիս ես, այր դու, այդպէս անհոգ:

ԱՍԱՑ[2] ամն ծեր՝ եթէ որպէս որ պոռնկին՝ յիւր մարմին մեղանչէ, նոյնպէս որ արտասուէ՝ զինքն պատշաճեբէ ծյ. և որդիքն Իսրայէլի աշխատ եղեն զքառասուն ամ և ապա մտին յաւետեացն երկիր, նոյնպէս վաստակել պարտ է մինչև տացէ տէր զշնորհն զայն, և հնարիւք ածել յինքն զլացն և ապա տանել 'ի մեղս իւր, որպէս միակ զջուր յո և կամի՝ տանի և ոռոգէ:

ԵՂԲԱՅՐ[3] ոմն բնակեալ յանուանեալ միաբանակս, 'ի ներգործութէ սատանայի յոլովս անկանէր 'ի պոռնկութիւն, և համբերէր բռնադատեալ զինքն չթողուլ զկրօ-

ւօնան ՔՆի և հրեշտակաց իւրոց յաւուրն դատաստանի: Ասաց դարձեալ ծերն. եթէ էր հնար մեռանել մարդոյ յետ յարութեանն և մեկնելոյ հոգւոյն 'ի մարմնոյն, ապա յերկրորդ գալստեանն ՔՆի մեռցանայն մեռանէր ամենայն երկրածին յահէն և յերկիւղէ և 'ի դողմանցն որ լինելոց է յայնժամ: Քանզի տեսանէին երկինք բացեալ և ծն երեւեալ զօրութբ անհանդուրժելի ընդ անթիւ գնդոց հրեշտակաց, և եղիցին անդ ամենայն ազգ մարդկան յԱդամայ մինչև 'ի վախճան աշխարհի եղեալս: Եւ այսպէս պարտ է քաղաքավարել, զի ամենայնի համարս տալոց եմք անդ:

1 Տեսեալ ծերն զեղբայրն զի ծիծաղեցաւ, ասէ ցնա. 'ի մէջ երկնի և երկրի ծյ քեզ պատասխանի տալ, և ամենայն գործոց զոր արարեր 'ի կեանս քոյ, և դու ծիծաղիս ես:

2 Ասաց դարձեալ ծերն. զոր օրինակ ամենայն մեղք զոր գործէ մարդ՝ արտաքոյ մարմնոյ իւրոյ է, իսկ որ պոռնկին՝ յանձն իւր մեղանչէ, և զի յիւրմէն ելանէ պղծութիւն այն, նոյնպէս և ամենայն առաքինութիւնք զինչ և արասցէ մարդ՝ արտաքոյ մարմնոյ իւրոյ է. իսկ որ լացցէն և արտասուէն, զանձն իւր մաքրեսցէ, զի 'ի վերուստ 'ի բարձանց անտի գան արտասուքն և սրբեն զնա:

3 Եղբայր ոմն բնակէր 'ի վանս, որ կոչէր Մոնիգէն, և պատերազմեալ չարին անկանէր 'ի պոռնկութիւն, և զի բռնադատէր զինքն ոչ թողուլ զկարգ կրօնաւորութեան, այլ առնէր միշտ զկարգ աղօթից իւրոց: Ա-

նաւորութիւն. այլ սկսեալ զփոքր պաշտօնն իւր, աղաչէր համարձակօք զԱծ և ասէր. Տէր, տեսանես զնեղութիւնս իմ. բանաւորեա զիս, Տէր. և եթէ կամիմ և եթէ ոչ կամիմ փրկեա զիս, Տէր. զի ես որպէս հող ըզմեղս սիրեմ, այլ դու որպէս զԱծ խափանեա զիս և որպէս զՀզօր. զի եթէ արդարոց ողորմիս՝ ոչ ինչ է մեծ, և եթէ զսուրբս կեցուցանես՝ ոչ ինչ են զարմանք, քանզի արժանի են ողորմութեան. յիս անարժանս, Տէր, սքանչացո զողորմութիւնս քո, զի 'ի քեզ թողեալ է աղքատն, և որբոյն դու ես օգնական։ Օ այս ասէր հանապազօր, եթէ անկանէր և եթէ ոչ։ Իսկ 'ի միւսում գիշերի անկեալ ըստ սովորութեանն 'ի մեղս, յարեաւ 'ի նոյն և սկսաւ կանոն։ Իսկ դևն զարմացեալ ընդ յուսոյ նորա և ընդ բարւոք լրբութեան նորա առ Ած, երևեցաւ նմա ակն յանդիման մինչդեռ սաղմոսէր, և ասէ ցնա. զխիղճ ոչ պատկառես համբուն կալ առաջի Այ, կամ անուանել զանուն նորա։ Ասէ ցնա եղբայրն. խուցս այս դարբնոց է, մի ուռն կոփես, և մի առնուս. այլ համբերեմ մինչև ցմահ մարտնչելով ընդ քեզ, մինչև հասանիցեմ յօրն յետնումն. և երդմամբ հաւանեցուցանեմ զքեզ, նա գիտէ որ եկն զմեղաւորս ապրեցուցանել ապաշխարութբ՝ ոչ դադարեցից կալով առաջի Այ վասն քո մինչև դադարիցես դու 'ի մարտնչելոյ

ղաչէր զԱծ և ասէր. Տէր Տէր, Տէր ամենակալ ես, եթէ կամիմ և եթէ ոչ՝ դու կեցո զիս. և ես զի կաւ եմ և տիղմ, զի սիրեմ զմեղս, այլ դու որպէս ամենազօր խափանեա զիս և լուծ զիս 'ի մոլի մեղաց իմոց։ Զի եթէ արդարոյն ողորմիս՝ ոչ մեծ է, և եթէ զսուրբն կեցուցանես՝ ոչ են սքանչելիք, զի արժանի ողորմութե են նոքա. այլ 'ի վերայ մեղաւորիս սքանչացո զգթութե քո և յիս ցոյց զանթիւ ողորմութիւն քո, Տէր, քանզի 'ի քեզ թողեալ է աղքատն և անկելոյն դու ես օգնական։ Զայս աղօթէր և այսպէս ասէր եթէ անկանէր 'ի մեղս և եթէ ոչ անկանէր։ Իսկ 'ի գիշերի միոջ անկաւ ըստ սովորութեան 'ի մեղս, և յարեաւ և սկսաւ կատարել զկանոն իւր և աղօթէր։ Եւ խիթն եռեալ դևն զյոյս նորա որ առ Ած և զբարի յանդգնութիւն նորա, երևեցաւ նմա և ասէ. յորժամ աղօթես, այր դու, ընդէր ոչ ամաչես և կամ զխիղճ իջխես երկնչելով քով զանուանն Այ յիշել և կամ ընդ կալ առաջի նորա։ Ասէ եղբայրն ցդևն. սեննակս այս դարբնոց է, զի ուռն դու հարցես և զերկիրօրդն ես հարից, և կամ ես 'ի պատերազմ ընդ քեզ մինչև 'ի մահուան օրն իմ. և զի երդմամբ ասեմ 'ի զօրութե և յողորմութե Այնորիկ որ եկն 'ի կոչել զմեղաւորս 'ի յապաշխարութե, ոչ դադարեմ բողոքել 'ի քէն առ նա և մաղթել ըզքեզ յաղօթս իմ, մինչև դադարես դու 'ի պատերազմելոյ ընդ իս. և

ընդ իս . և տեսցուք եթէ ո՛վ յաղթեսցէ, դու՛ թէ ես : Զայս լուեալ դիւլին, ասէ ցնա . արդարև առաս ոչ մարտընչիմ ընդ քեզ, զի մի 'ի ձեռն քոյդ համբերութեանդ պսակ պատրաստեսցի քեզ : Եւ գնաց 'ի նմանէ յայնմ օրէ հետէ : Ահաւասիկ համբերութիւն բարի է, որ ոչ վհատէ յամենայնէ իւրմէ, թէպէտ և դէպ լիցի մեզ 'ի փորձութիւնս և 'ի ձախպատահարս և 'ի մեղս անկանել : Իսկ եղբայրն այնուհետև եկեալ 'ի զղջումն, նստէր և լայր զմեղս իւր . իսկ յորժամ լայր, ասէին ցնա խորհուրդք իւր եթէ բարւոք առնես : Եւ ասէ ցխորհուրդսն . աւաղ այդպիսում բարւոյ . քանզի զինչ պէտք են ինձ զի կորուսցէ մարդ զանձն իւր, և նստի սուգ ունել վասն նորա, և կամ ապրեցուցանէ զանձն յետոյ կամ ոչ :

Այլ եղբայր նստէր 'ի նոյն վանս առանձին, և այս էին աղօթք նորա հանապազ . Տէր, վասն զի ոչ երկնչիմ 'ի քէն, առաքեա յիս փորձանս հրոյ կամ այլ նեղութիւն կամ հիւանդութիւն կամ դև . գոնեա այնպէս եկեսցէ երկիւղ կորուսեալ անձին իմոյ : Զայսոսիկ ասէր և աղաչէր զած խնդրաբար . գիտեմ եթէ անհնար է թողուլ ինձ, քանզի բազում եմ մեղուցեալ առաջի քո, Տէր, բազում և չարաչար յոյժ . այլ վասն բազում գթութեան քո փոքր ինչ մասն թող ինձ . և եթէ այսմ չիք հնար, խրատեա զիս այսրէն, և անդ մի խրատեր . և եթէ այսմ չիք հնար, հատո ինձ այսրէն մասն, և

թող. տեսցուք թէ դո՛ւ յաղթեսցես եթէ ես : Զայս իբրև լուաւ դևն՝ ասէ . ես այսուհետև այլ ոչ ես պատերազմեցայց ընդ քեզ, որպէս զի մի գուցէ համբերութեամբ քով պսակազգեստ առնիցես զքեզ : Եւ մեկնեցաւ 'ի նմանէ 'ի ժամուն յայնմիկ : Տեսանէք, եղբարք, եթէ որքան բարի է համբերութիւն և ոչ հատանել զյոյս, թէպէտ և բազում անգամ անկցուք : Զգաց եղբայրն այն և զարմաւ յինքն և զղջացաւ յոյժ. և նստեալ ողբայր զմեղս իւր : Իսկ մինչ ասէին խորհուրդք իւր եթէ բարւոք առնես զի ողբաս, իսկ նա ասէր՝ անիծեալ լիցի այս բանի, զի ոչ կամի ես զի եղիցի մարդ մեղաւոր և կորուսցէ զանձն իւր և նստեալ ողբասցէ, և կեցուսցէ զանձն և կամ ոչ :

1 Այլ ոմն եղբայր նստէր միայնացեալ 'ի վանս Մոնիգլիոյ և զայս աղօթէր միշտ . Տէր, ես ոչ երկնչիմ 'ի քէն, առաքեա յիս զփորձութիւնս քո կամ այլ ինչ միշտ և տանջանս և զհիւանդութիւնս և կամ այլ ինչ ցաւս, զի գուցէ 'ի սոցանէ երկուցեալ եկից յերկիւղ քո : Եւ աղաչէր զտէր և ասէր . Տէր, գիտեմ զի անհնար է թողուլ ինձ զմեղս իմ, զի անթիւ են . այլ եթէ պարտ է վասն անթիւ ողորմութեան քո թող ինձ : Իսկ եթէ այս անհնար է, դու խրատեսցես զիս աստ տանջանօք, և անդ մի խրատեսցես : Իսկ եթէ և այս են անհնա-

թեթեւացո՛ ինձ անդ փոքր ինչ ՚ի տանջանաց անտի մահուն. լոկ միայն սկսիր յայսմհետէ խրատել զիս, այլ մի՛ ստամբութեա՛ք քո, տէր, այլ մարդասիրութեա՛ք: Սոյնպէս ժուժկալեալ բոլորովին զտարին, մաշեալ սրտիւ անդադար աղօթելով առ Ած, պահօք և բազում խոնարհութեա՛ք, զմտաւ ածելով ասէր. զի՞նչ է բանն զոր ասաց Ած երանի է սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին: Իսկ ՚ի միւսում աւուրն իբրև նստէր նա ՚ի գետին և սգայր ըստ սովորութեանն, ՚ի տրտմութենէն ՚ի քուն եղև. և ահա երևեցաւ նմա Տր և ասէ ցնա զուարթ ձայնիւ. զի՞ է քեզ, մարդ դու, զի՞ լաս: Եւ նա ասէ ցտէր. քանզի անկայ, տէր: Ասէ ցնա Տր. արի: Պատասխանի ետ նմա որ անկեալն էր. ոչ կարեմ, տէր, եթէ ոչ տացես ինձ ձեռն: Եւ ձգեալ զձեռն իւր յարոյց զնա, և դարձեալ ասէ ցնա զուարթութեա՛ք. մարդ դու, զի՞ լաս և տրտմիս: Ասէ ցնա եղբայրն. տէր, ո՞չ կամիս զի տրտմեցայց և լացից, որ այնչափ տրտմեցուցի զքեզ, տէր: Յայնժամ ձգեաց զձեռն իւր տէր առ նա, և եդ զափ իւր ՚ի վերայ սրտի նորա, օծանէր և ասէր. մի՛ խռովիր, օգնէ քեզ Ած. որովհետև դու տրտմեցար, ես ոչ ևս տրտմեցայց ՚ի վերայ քո. քանզի վասն քո եստու զարիւն իմ, որչափ ևս առաւել տաց զմարդասիրութիւն իմ Ածմ անձին աշխատելոյ: Եւ եկեալ ՚ի միտս իւր ՚ի տրտմութենէ անտի եղբայրն եգիտ զսիրտ իւր

րին լցէ, հատո ինձ աստ զմի մասն և անդ թեթեւացո մասն ինչ ՚ի տանջանացն յաւիտենից. և սկսեալ յայսմհետէ խրատեա զիս, այլ մի՛ բարկութեա՛ք քո, տէր: Այսպէս կացեալ ամ մի ողջոյն և արտասուօք աղաչէր զտէր բազում խոնարհութեա՛ք և բեկեալ սրտիւ և պահօք, և խորհէր ՚ի միտ միշտ թէ զի՞նչ է բանն Քի որ ասէ՝ երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին: Ի միում աւուր նստեալ նա լայր ըստ սովորութեան, և ՚ի բազում հոգոց և ՚ի տրտմութենէն ննջեցաւ ՚ի քուն. և ահա երևեցաւ նմա յանուրջս Քս պարզ երեսօք և պայծառ ձայնիւ ասէ ցնա. զի՞ է քեզ, մարդ, ընդէ՞ր ողբաս և այսպէս վշտագնիս: Ասէ եղբայրն. վասն այնորիկ զի անկայ ՚ի մեղս, տէր: Ասէ ցնա տէր. եթէ անկար, դարձեալ արի: Ասէ ցնա անկեալն. ոչ կարեմ յառնել եթէ ոչ զձեռն քո տացես ինձ: Եւ վաղվաղակի ձգեալ զձեռն իւր փրկիչն կալաւ և յարոյց զնա և ասէ. ընդէ՞ր լաս և տխրեալ ես դառնապէս: Ասէ եղբայրն. և դու, տէր, ո՞չ կամիս թէ ողբացից և լացից որ այնչափ մեղայ քեզ: Յայնժամ մեկնեաց զձեռն իւր տէրն, եդ զգլուխ նորա իւրով և ասէ. մի՛ տրտմեսցիս յոյժ, զի Ած ողորմութեան եմ. և վասն զի տխրեցար դու վասն իմ, ես ոչ տխրեցայց վասն քո, և զի ես վասն կենաց քոց հեղի զարիւն իմ. զի եթէ զարիւն հեղուլ ոչ վշտացայ, որչափ ևս առաւել տամ զմարդասիրութիւն իմ որոց ապաշխարեն բոլորով սրտիւ: Եւ իբրև զարթեաւ ՚ի քնոյն եղբայրն զուարճացեալ ՚ի [illegible]

ինչ տայցեն գրել։ Մնաց և ոչ ինչ ունէր գրելոյ, բայց միայն փոքր ինչ քարտիսի գրելոյ և Թողլոյ զհուրաքանչիւր քարտէզս անելով. Թողութիւն արա, տէր եղբայր, քանզի փոքր ինչ գործ ունէի ընդ ուսմանն և վասն այնորիկ ոչ ժամանեցի գրել։ Իսկ մերձ 'ի սա էր այլ եղբայր։ և 'ի միում աւուր երթայր 'ի բան ինչ, և ասէ եղբայրն գրչին. արա սէր, եղբայր, և մնա զպարտէզս իմ մինչև եկից։ Ասէ ցնա եղբայրն. հաւատա, որքան կարեմ՝ ոչ ծուլանամ։ Եւ իբրև գնաց եղբայրն, ասէ ցանձըն իւր. տառապեալ, մինչդեռ գտեր ժամանակ, հող տար պարտիզիդ։ Եւ կացեալ յերեկորեայ մինչև յառաւօտն 'ի կանոնի ոչ դադարեաց արտասուօք սաղմոսելով և աղօթելով. նոյնպէս և զամենայն տիւն, քանզի սուրբ կիւրակէ էր։ Իսկ եղբայրն եկեալ ցերեկոյն որ դրացին էր, եգիտ որ թէ կինձքն ապականեալ էին զպարտէզն, և ասէ ցնա. ա̃ծ թողութիւն արասցէ քեզ, եղբայր, որ ոչ տարար խնամ պարտիզին։ Եւ նա ասէ. ա̃ծ գիտէ՝ ըստ զօրութեան իմոյ արարի և ոռոգեցի և պահեցի, այլ ա̃ծ տացէ մեզ որ զի արասցէ պտուղ պարտէզն։ Ասէ ցնա եղբայրն. արդարև ամենայն ապականեցաւ։ Ասէ գրիչն. գիտեմ, բայց հաւատամ որպէս ա̃յ որ թէ ծաղկէ։ Ասէ ցնա տէր պարտիզին. թող ոռոգեմք։ Ասէ ցնա. երթ ոռոգեա դու այժմ, և ես ո-

նա վախճանեալ եղև և ոչ գրեաց 'ի նոսա, այլ միայն յիւրաքանչիւրն զանուանս նոցա որոց էր մագաղաթն։ Եւ զայս ես յաւել՝ եթէ թողութիւն արարէք, եղբարք, զի փոքր ինչ բան ունելով իմ ուրեք և վասն այնորիկ ոչ պարապեցայ գրել զաւանդեալն ձեր։ Մերձ առ նորա բնակէր այլ եղբայր մին եղիսեցի, և 'ի միում աւուր գնալ խորհէր 'ի քաղաքն և ասէր ցգրիչն եղբայր. արասցես սէր, եղբայր, և յանձն առցես զպարտէզ իմ մինչև եկից ես։ Ասէ ցնա գրիչն. հաւատա ինձ զի ոչ հեղգանամ 'ի պահել որչափ կարող լեցեմ։ Եւ իբրև գնաց եղբայրն, ասէ գրիչն ցանձն իւր. ահա, ով անձն իմ, գտեր ժամ զի պահեսցես և գործեսցես զպարտէզն։ Եւ սկսեալ եկաց 'ի կարգ աղօթիցն յերեկոյէ մինչև ցառաւօտն, և արտասուօք եթաց զերկիր, և այսպէս արար յառաւօտէ մինչև ցաւարտումն աւուրն, և քանզի օրն կիրակի էր։ Եւ եկեալ ընդ երեկս եղբայրն այն՝ եգիտ զպարտէզն զի խանգարեալ և կերեալ էր յերամակէ խոզիցն, և ասէ ցնա. ա̃ծ թողցէ քեզ, եղբայր, զի ոչ զգուշացար պարտիզին իմոյ։ Իսկ նա ասէ. հաւատա ինձ, եղբայր, զի արարի զոր և կարողութեան իմ էր, և պահեցի զբոլոր պարտէզն զայն, իսկ զի տացէ մեզ պտուղ։ Ասէ եղբայրն. առես, հայր, զի բովանդակ աւերեալ և քակեալ է։ Ասէ գրիչն. գիտեմ, այլ հաւատամ յա̃ծ զի դարձեալ բուսուսցէ։ Ասէ ցնա եղբայրն. եկ ռոգեսցուք զնա։ Ասէ ցնա գրիչն. գնա արգեօք առա-

ոռոգեցից 'ի գիշերի։ Իսկ 'ի ժամանակին եղև երաշտ․ տրտմէր պարտիզպանն և ասէր ողբացուցն իւրոյ գրքին․ Հաւատա, եղբայր, որ եթէ ոչ օգնէ ած, ոչ ունիմ ջուր այսմ։ Ասէ և նա․ վայ մեզ, եղբայր, որ եթէ ցամաքին աղբերք պարտիզին մերոյ՝ արդարեւ ոչ ունիմք փրկութի։ Իսկ սա վասն արտասուաց ասէր։ Նայց յոր-ժամ մեռանելոց էր սա բարւոք նահատակս, աղաչեաց զգրոցի իւր և ասէր․ մի՛ ումեք ասեր թէ հիւանդ եմ, այլ կաց այսրէն այսօր․ և յորժամ երթայց առ տէր, բարձ զմարմին իմ և ընկեա մերկ յանապատի, զի կե-րիցեն զդա գազանք և թռչունք, քանզի մեղաւ ածոյ բա-զում անգամ և ոչ է արժանի թաղման։ Ասէ ցնա պար-տիզպանն․ Հաւատա, եղբայր, որ խղճէ սիրտ իմ առ-նել զկրոգ։ Պատասխանի ետ հիւանդն և ասէ․ այդ մեղքդ յիմ վերայ, և տաց քեզ բան՝ որ եթէ լուիցես ինձ և արասցես այսպէս։ Եւ իբրև մեռաւ, 'ի նմին ա-ւուր արար եղբայրն որպէս հրամայեաց նմա, և ընկէց զմարմին նորա մերկ յանապատն, քանզի էին հեռի քան մղոնաւ 'ի բերդէ անտի որ կոչի Մեսեմբր։ Իսկ յերկ-րորդում աւուրն երևեցաւ նմա յանուրջս որ գնաց առ տէր, և ասէ ցնա․ ած ողորմեսցի քեզ, եղբայր, որպէս ողորմեցար դու ինձ․ Հաւատա որ մեծ ողորմութի արար

գեա դու, և 'ի գիշերի ոռոգեմ ես։ Եւ իբրև եղև երաշտութիւն, տրտմեցաւ պարտիզպանն և ասէ ցգիրքն․ Հաւատա, եղբայր, եթէ ոչ օգնեսցէ ած, ոչ գոյ մեր ջուր 'ի յայսմ ամի։ Ասէ գիրքն․ վայ մեզ, թէ ցամաքեսցի աղբիւր պարտիզին՝ ոչ կարասցուք կեալ։ Այլ սա զամենայն ասէր վասն արտասուաց և անձին։ Իսկ մինչ հանդեր-ձեալ էր մեռանել երանելին այն ճգնազգեաց գիրքն, աղաչեաց զեղբայրն իւր զեգիպտացին և ասէ․ արա սէր, եղբայր, և մի ասա-ցես ումեք եթէ հիւանդ է․ այլ և կացցես առ իս այսօր․ և յորժամ մեռանիմ, առ դու զդէշ իմ և մերկացեալ ընկեսցես յանապատ տեղի, զի կերիցեն զնա գազանք անապատի և թռչունք երկնից, զի յոյժ մե-ղայ ածոյ, և զի ոչ է արժան մարմին իմ թաղելոյ 'ի գերեզմանի։ Ասէ ցնա եղբայրն եգիպտացին․ Հաւատա ինձ, եղբայր, զի յոյժ տրտմութիւն է ինձ առնել զայդ զոր ասես։ Ասէ ցնա եղբայրն գիրք․ մեղքդ այդ 'ի վերայ իմ եղիցի և ես տաց ընդ այդ պատասխանի ածոյ․ զի եթէ լուի-ցես ինձ և արասցես զայս զոր պատուիրեմ քեզ, թէ կարասցեմ ես՝ օգնեսցեմ քեզ։ Եւ զայս ասացեալ կատարեցաւ 'ի նմին ժամու, և եղ-բայրն արար ըստ բանի նորա, և առեալ զմարմին նորա մերկացեալ ըն-կէց յանապատի, և ուր բնակեալ էին մերձ էր 'ի քաղաքն քան մղո-նաւ որ կոչէր Մեսեմբր։ Եւ զկնի աւուր երրորդի երևեցաւ գիրքն պարտիզպանն եղբօրն և ասէ․ ած ողորմեսցի քեզ, եղբայր, որպէս և դու ինձ ողորմեցար․ Հաւատա զի յոյժ բարի արար ինձ ած սակս

րինձ ած վասն որոյ առանց Թաղման մնաց մարմին իմ և ասաց ցիս. ահա վասն խոնարհութեան քո հրամայեցի քեզ զի լիցես դու ընդ Նաւոնի։ Եւ ահաւասիկ աղաչեցի վասն քո։ Այլ երթ Թող զպատարագդ և հոգ տար միւս այլ պարտիզին. քանզի 'ի ժամ մահուան իմոյ յորժամ ել հոգի իմ, տեսի որ արտասուք իմ շիջուցին ըզհուրն յոր ես այրելոց էի։

ԵՂԲԱՐՔ՝ երկու ըստ մարմնոյ հրաժարեալք յաշխարհէ գնացին առ ծեր ոմն 'ի լեառն Սկիտեայ, և ետ ած երկոցունց շնորհս զղջման և արտասուաց։ Իսկ 'ի միում աւուր տեսանէ ծերն յանուրջս զերկոսեան եղբարսն իւրաքանչիւր առանձինն որ կային յաղօթս և Թրմէին արտասուօք իւրեանց. և միոյն գիրն դիւրաւ ջնջէր, իսկ միւսոյն վաստակաւ, քանզի էր որպէս գրադեղ պինդ։ Եւ աղաչեաց ծերն զած մեկնել նմա զերազն։ Եւ երևեալ հրեշտակն ասէ ցնա. գրեալքն 'ի քարտիզին՝ մեղքն նոցա են, և սակայն մինն ըստ բնութե մեղաւ և վասն այնորիկ դիւրաւ ջնջին, իսկ միւսն 'ի պիղծ և յաղտեղի յանցանս շաղախեցաւ արտաքոյ բնութեան, վասն այնորիկ աւելի աշխատութեան պէտք են առ 'ի յապաշխարութե և 'ի խոնարհութե յոյժ։ Եւ յայնմհետէ ասէ ծերն ընդ այն եղբայրն. աշխատեա,

այնորիկ զի ոչ Թաղեցաւ մարմին իմ, և ասէ ցիս ած. ահա վասն մեծի խոնարհութե քո հրամայեմ ընդ մեծին Անտոնի բնակել քեզ։ Եւ ես աղաչեցից զաէր վասն քո։ Այլ դու Թողցես զայդ և հոգասցես զմիւս այլ պարտէզն, զի 'ի ժամուն յորում մեկնեցաւ հոգի իմ 'ի մարմնոյ իմոյ՝ տեսանէի զի արտասուք իմ շիջուցին զհուրն յոր ես երԹալոց էի։

։ Երկու եղբարք մարմնաւորք հրաժարեալք յաշխարհէ և կրօնաւորք եղեն և մտին 'ի հնազանդութե հոգևոր վարդապետի 'ի լեառն Նիտրիոյ, և ետ ած երկոցունցն շնորհս զղջութե և արտասուաց։ Յաւուր միոջ տեսիլ եաես ծերն, իբր թէ կային երկոքեանն յաղօթս, և ունէին 'ի ձեռս քարտէզս գրեալս և լուանային զնոսա արտասուօք իւրեանց։ Իսկ միոյն նամակին գիրն դիւրաբար ջնջէր, իսկ երկրորդին աշխատութբ. և զի գեռ ևս երևէր արձան գրոյն 'ի վերայ տետրակին. որպէս թէ եփեալ մելանաւ գրեալ էր։ Եւ աղաչեաց ծերն զաէր յայտնել նմա զտեսիլն եթէ զինչ իցէ։ Եւ երևեցաւ նմա հրեշտակ այ և ասէ. գիտակքն այն գրեալ եղեն երկոցունց եղբարցն. իսկ միոյն մեղանք բնութեանք են՝ վասն այնորիկ դիւրաւ ջնջին, իսկ երկրորդին այն խենէշ պղծութիք և գարշելի անառակութիք պղծեցաւ արտաքոյ բընութե, վասն այնորիկ դժուարաւ ջնջին. և արդ պարտ է նմա զի առաւել ճգնեսցի և աշխատեսցի յապաշխարութե և խոնարհեսցի յոյժ։ Եւ յայնմհետէ ասէր ծերն ցեղբայրն այն. աշխատեա, եղբայր, զի

եղբայր, քանզի զբաղեալ են և վաստակաւ ընչին, բայց սակայն ընչին։ Նա ոչ յայտնեաց նմա զիրսն մինչև ցվախճան նորա, որպէս զի մի խափանեսցէ զյօժարութիւն նորա, բայց միայն զայս ասէր նմա. Ջանացիր, եղբայր, զի վաստակաւ ընչին։

ԱՅԼ՝ ումն եղբայր ճգնող իբրև առնէր զկանոնն ընդ եղբօր իւրում, յաղթէր յարտասուացն և թողոյր զտուն սաղմոսին։ Նա 'ի միում աւուր աղաչեաց զնա եղբայրն իւր ասել նմա՝ եթէ զի՞նչ մտածելով 'ի կանոնին այնպէս դառնապէս լաս։ Նա ասէ ցնա. Թողութիւն արա ինձ, եղբայր, ես հանապազ 'ի կանոնին իմում զդատաւորն նստեալ տեսանեմ, և զիս որպէս դատապարտեալ առաջի կալով և քննելով, և զնա որ ասէ ցիս՝ ընդէ՞ր մեղար. և ապա ոչ ինչ գիտելով պատասխանի՝ խնու բերան իմ, և անտի կորուսանեմ զտուն սաղմոսին. բայց թողութիւն արա ինձ, տէր, խռովեցուցի զքեզ. և եթէ հեշտ թուի քեզ, արասցուք իւրաքանչիւր առանձին զկանոն։ Ասէ ցնա եղբայրն. քաւ լիցի, հայր. այլ թէպէտ և ես ոչ սգամ, այլ որպէս քար հարեալ սրտիւ, սակայն տեսանելով զքեզ աւաղ տամ անձին իմոյ։ Նա տեսեալ զայս զխոնարհութիւն նորա, շնորհեաց նմա զտուգ եղբօր իւրոյ։

ԳՆԱՑ[2] եղբայր մի առ ծեր ումն որ. նստէր 'ի լերինն

եփեալ մեղանաւ է գրեալ և գծուարաւ ընչից։ Այլ ոչ յայտնեաց եղբաւրն զայն ծերն եղբօրն մինչև յօր մահուան իւրոյ, որպէս զի մի հատցէ զյօժարութիւն և զյոյս նորա։

[1] Եղբայր ումն փոյթ կատարէր զկանոն իւր միշտ ընդ եղբօրն և յաղթէր յարտասուացն յոյժ, մինչև բազում անգամ անկանէր տուն սաղմոսին 'ի նմանէ։ Եւ յաւուր միոջ աղաչեաց զնա եղբայրն և ասէ. ասա ինձ եթէ զի՞նչ խորհիս դու յաղօթս զի այնչափ ողբաս։ Եւ նա ասէ. ներեա ինձ, եղբայր, զի մինչ կամ յաղօթս՝ միշտ առաջի աչաց ունիմ զդատաւորն զայն, և ես որպէս դատապարտեալ կամ առաջի նորա և մնամ զի քննեսցէ զմեղս իմ, և ասէ ցիս՝ ընդէ՞ր մեղար դայս. և ես եղկելիս զի ոչ ունիմ թէ զինչ պատասխանի տաց, և վասն այնորիկ կարկի բերան իմ, և անկանի տուն սաղմոսին 'ի բերանոյ իմոյ. այլ շնորհեա ինձ թողութիւն զի վրդովեմ զքեզ 'ի սաղմոսելն. և եթէ կամիս, իւրաքանչիւր 'ի մէջ առանձին կատարեսցուք զկանոնս մեր։ Ասէ ցնա եղբայրն. ոչ, հայր, մի լիցի. զի թէպէտ և ես ոչ ողբամ, այլ իբրև տեսանեմ զողբս քո, և ես վայ տամ անձին իմոյ որ պակասեալ է 'ի շնորհացն այդ։ Եւ ետես ած զխոնարհութիւն նորա, և ետ նմա զողբ եղբօր իւրոյ։

[2] Գնաց ումն եղբայր առ ծեր ումն որ բնակէր 'ի Սքինէս, աղաչէր զնա

# ՄՆԱՑՈՐԴՔ

## յերկրորդ թարգմանութեան

ԱՍԷ Հայրն Իմնա. յորժամ նստցիս 'ի սենեկի քո, ժողովեա զմիտս քո և յիշեա զօր մահու քո, և կնքեա 'ի սրտի զերանելի հոգւոյ և զմահ մարմնոյ։ Ի միտ առ զփորձութիւն զայն, և դիր 'ի սրտի քո երկիւղ և զեղջ, և ատեսցես զունայնութիւն և դիցես 'ի մտի քո զբարեգործութեան փոյթս, զի այսու օրինակաւ կարասցես կեալ բարեօք յառաքինութիւնս, և զի յօժարեսցիս միշտ համդարտել խաղաղութեամբ և նստել 'ի սենեկի քո։ Ի վերայ այսոցիկ յիշեսցես և զօրն ահագին դատաստանին և թէ որպէս լինիցին անդ հոգիքն, ոմանք 'ի դառն լռութեան և ոմանք 'ի դժուարին հառաչմունս, և թէ յորպիսի ահ և 'ի դողումն իցեն, և զինչ մնասցեն որք 'ի տանջանս յաւիտենից են 'ի լալաչայ և 'ի կրճել ատամանցն որ լինին յետ յարութեան։ Յիշեսցես և զօրն զայն զհասարակացն յարութեան և զկայլոյն առաջի այ. մտածեա և զահագին և զանաչառ դատաստանն. 'ի միտ առ և ակնկալեալ զամօթն յանցաւորացն, որ և լինելոցն է առաջի այ և հրեշտակաց դասուց և դիւաց և ամենայն ադամեան ազգի և հոգւոց արդարոց։ Յիշեա և զամենայն տեսակ տանջանացն, զհուրն անշիջանելի և զորդն անքուն, զմրթագին տարտարոսն և զխաւարն և զկրճել ատամանցն, զահ և զերկիւղ և զպատիժս անհատս և անկատարածս։ Յիշեա և զարդարոցն պատրաստեալ բարիսն և զհամգիստն և զհամարձակութիւն որ առաջի այ և հրեշտակաց նորա և առաջի հոգւոց արդարոցն, և զցնծութիւն որ յարքայութեան երկնից։ Զսոցին երկոցունց յիշմունս ժողովեա 'ի մի 'ի մտի քում, և միոյն հետեւեսցիս և 'ի միւսոյն փախիցիս։ Եւ յարաժամ ողբասցես լացցես

և արտասուեսցես և երկիցես միշտ՝ մի գուցէ և դու 'ի թիւ դատապարտելոցն անկցիս. զի թէպէտ և արդար իցես, յայսու մտածութեն կայցես, և լաւագոյն իցէ քեզ։ Իսկ զարդարոցն պատրաստեալ բարիսն 'ի մտի քո խորհեսցես միշտ, և յուսով բարեացն յարուսցես զանձն քո, և փութասցիս բարի գործովք խառնել զքեզ 'ի թիւս նոցա։ Տես և 'ի միտ առ և զգոյշ լեր՝ զի մի պակասեսցի երբէք յիշատակն այն 'ի մտաց քոց և մի մոռասցես զդատաստան նորա, և զի գուցէ սոքօք զերծանիցիս 'ի չար խորհրդոց քոց։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. զինչ արարից, հայր, զի չփոթեն զիս խորհուրդք իմ և չտան թողուլ ինձ զմեղս իմ և շարժեն զիս 'ի քննել զյանցանս ընկերին։ Ասէ ցնա ծերն. էր ոմն ծեր զի նստէր 'ի սենեկի իւրում, և աշակերտն իւր նստէր հեռագոյն 'ի նմանէ յայլ խցի. և յորժամ երթայր 'ի տեսանել զծերն, գտանէր զնա 'ի լաց և յարտասուս։ Ասէ ցնա եղբայրն. ընդէ՞ր միշտ ողբաս, հայր։ Ասէ ցնա ծերն. վասն բազում մեղաց իմոց լամ, որդեակ։ Իսկ ասէ ցնա եղբայրն. ոչ է մեղս ինչ քո, հայր։ Ասէ ցնա ծերն. զինչ ասես, որդեակ. եթէ էր հնար տեսանելոյ զմեղսն իմ, և ոչ տասն անձն բաւական էր ողբալ զնոսա. այլ և դու յիշեսցես միշտ զօր ելից քոց և զօրն դատաստանին այն, և ոչ կարասցես յայնմանէ դատել զընկերն։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. զինչ արարից, հայր։ Ասէ ցնա ծերն. Աբրահամ յորժամ գնաց յերկիրն աւետեաց, նախ գերեզման իւր գնեաց և նովաւ ժառանգեաց զնա։ Ասէ ցնա եղբայրն. և զինչ իցէ գերեզմանն։ Ասէ ցնա ծերն. տեղի ողբոյ կոծոյ և և արտասուաց և սգոյ։

ԱՍԱՑ հայրն Եղիա միայնակեաց. պարտ է ունել զերկիւղն այն քան զշունչս մերձաւոր լինել. քանզի մինչև դարձցին միտք մարդոյ 'ի մեղս յիշել զնոսա, ոչ ունի նա 'ի մտի զերկիւղն այն, և զի հեռի իցէ յողորմութենէն այն։

ԱՍԱՑ Թէոփիլէ եպիսկոպոսն՝ եթէ որպիսի ահ և դողումն առաջի կան մեզ, եղբարք, յորժամ հեռասցին հոգիքս մեր 'ի մարմնոյս, զի և գան յայնժամ փութանակի զօրականք և գունդք հակառակ զօրութեանց, իշխանք աշխարհիս և խաւարայինն դևքն և դատաւորս

զնոսն անձինս մեղուցելոց, և բերելով զամենայն զխոստու-
թեան և զանզգուշութիւն զյայտնի և զգաղտնի մեղսն և
զնոսն առաջի նորա, և զի կամս ընդդէմ և ճնշմամբն բըռ-
նաբար զամենայն գործս նորա ասելով՝ այսքանեաց չա-
րեաց գործող է սա: Այլ արդ աղաչեմ առ Հ և զաղօթս
ունիցի անձն այն մինչև եղջէ վճիռ և ապաշաւեսցի 'ի նո-
ցանէ. զի ժամն այն դժուարին է, դառն և չար, և զի
երկիւղ մեծ իցէ ամենայն ազգականացն մինչև տեսցէ
անձն այն զվախճանն գործոյն այնորիկ: Ո՛ ի զան և աս-
տուածային զօրքն սուրբ հրեշտակք, և բերեն և նոքա
զորս ինչ ունէրն բարի գործս, և զի նայի դողալով անձն
այն յայսկոյս և յայնկոյս և երկնչի յոյժ 'ի խաւարային
դասէն, մինչև յիրաւ և յանաչառ դատաւորէն հասցի
դատաստանն: Այլ եթէ արժանի լինիցի ողորմութեան
անձն այն, յայնժամ լսեն զբարկութիւն չար դևքն յանկի-
տակմանէն Այ, և առժամայն յափշտակեն զայն հոգի 'ի
ձեռաց դիւաց սուրբ հրեշտակք Այ, և յանմահն հանէ այլ
ոչ ևս երկիցէ: Այլ զի լցցի յայնժամ բանք գրոց որ ասէ՝
եթէ որպէս ուրախացելոց բնակութիւն են 'ի քեզ: Այլ
զի դարձեալ միւս գիր ասէ. յորմէ փախիցեն ամենայն
վիշտք և հեծութիւնք և հառաչանք: Իսկ մինչ ազատես-
ցի 'ի հալածչացն յայնցանէ, տանին զնա յանպատմելի
ուրախութիւն և 'ի փառս աննկատելիս առաջի Այ և ե-
րեսացն Տ՛նի և կարգեն զնա յօթևանս երանելի ար-
դարոցն ամենեցուն. Իսկ եթէ գտցի անձն եղկելի և
վատթար գործովք կենցաղոյս, լսէ նա զդառն զայն բան՝
եթէ բարձցի ամբարիշտն և մի տեսցէ զփառս Այ: Այլ
յայնժամ պաշարէ զնա օր բարկութեան և դառն, օր
վշտաց և նեղութեան, օր մթոյ և խաւարի, օր որ հանէ
'ի խաւարն արտաքին և 'ի հուր գեհենին զի տանջեսցի
'ի նմա յաւիտեան: Այլ ո՞ւր իցեն պարծանք աշխարհիս
այսորիկ, ո՞ւր զօրութիւն մեծութեան և հանգիստ, և ո՞ւր
իցէ բարձրավիզն հպարտութիւն, ո՞ւր ինչք և գանձք և
ստացուածք, ո՞ւր զօրաց և ծառայից և մարդոց բազմու-
թիւնք, և ո՞ւր իցէ ազնուականութիւն, ո՞ւր հօր և մօր և
ազգին բարեպաշտութիւն, և որք ասացեն մխիթարանք և
խափանեալքն քեն և սիրելի և ցանկալի մարմնոյ՝ զինչ
կարիցեն օգնել յայնժամ կամ փրկել 'ի տանջանացն
'ի սակաւուք կենդանեաց հոգոյն և կամ յայլոցն յամենեցունց

բազում և ազգի ազգի տանջանացն։ Եւ արդ զի այս ամենայն այսպէս իցէ, և որպէս պարտ իցէ մեզ լինել՝ ասեմ զճշմարիտն թէ որպէս պարտ է առնել. մնանիլ սրբութեամբ, և կեալ յաստուածպաշտութեան միշտ, և ստանալ սէր կատարեալ առ Աստուած և առ ամենայն մարդ. զսուրբ քաղաքավարութիւն ստանալ, և զընթացս ճգնութեանց իմաստութեամբ ընթանալ աղօթիւք և զգուշութեամբ և պահօք, և զի փութասցուք զի մի յապաղելով տատասցուք զբարիս, և փախիցուք 'ի չարեաց։ Որպէս զի արժանի լիցուք լսել զքաղցր ձայնն զայն 'ի բերանոյ Տեառն մերոյ որ ասէ. եկայք, օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւն զոր պատրաստեալ է ձեզ 'ի սկզբանէ աշխարհի. և որ զկնի այսորիկ։ Այս Թէոփիլոս ասէր յօր մահուն իւրոյ. երանի է քեզ, հայր Արսէնիոս, զի միշտ յիշէիր զօրս զայս։

ՀԱՅՐՆ Իսահակ և հայրն Աբրահամ 'ի միասին բնակէին. և մտեալ երբեմն հայրն Աբրահամ և եգիտ զԻսահակ զի ողբայր յոյժ, և ասէ ցնա. ընդէ՞ր այդպէս լաս, հայր։ Ասէ ցնա ծերն. և ընդէ՞ր ոչ լացից՝ զի ոչ ունիմք տեղի ուր և գնասցուք, զի ննջեցին սուրբ հարքն մեր, և ոչ էր բաւական 'ի վարձս նաւուց ձեռագործ մեր, զոր տուեալ նաւավարաց գնայաք տեսանել զնոսա և խրատիլ 'ի նոցանէ. և արդ որբ մնացեալ մեք 'ի նոցանէ՝ ոչ ունիմք տեղի ուր երթամք, և զայս ինչ լամ։

ՊԱՏՈՒԻՐԵԱԼ երբեմն ծերք լերինն առ հայրն Մակարի 'ի Սկիտէ և ասեն. որպէս զի մի աշխատեսցի այս բազում ժողովս, աղաչեմք զքեզ եկ առ մեզ դու, և արժանի եղիցուք տեսութեան քո յառաջ քան զգնալն քո առ Տէր։ Յարեաւ հայրն Մակար և գնաց առ նոսա 'ի լեառն. և ժողովեցան ամենայն բազմութիւն առ նա և աղաչէին զնա զի ասասցէ նոցա բանս կենաց։ Իսկ նա իբրև ետես զնոսա և լուաւ զայս, ասէ. լացէք, եղբարք, և հոսեսցեն աչք ձեր զհոսանս արտասուաց նախ քան զելանելն մեր աստի և գնալ յերկիրն յայն ուր ոչ օգնեսցեն մեզ ողբք և արտասուք. այլ և հուր կիզանողս պատահէ մեզ։ Եւ ողբաց յոյժ ամենայն բազմութիւնն, և անկան ամենեքեան 'ի վերայ երեսաց իւրեանց և ասեն. աղօթեա վասն մեր, հայր։

ԱՍԱՑ հայրն Մակարիոս եթէ երթայի երբեմն յան-

զնեն անձին մեղուցելոյ, և բերեալ զամենայն զխստու-
թեան և զանզգուշութե զյայտնի և զգաղտնի մեղսն և
դնեն առաջի նորա, և զի կան ընդդէմ և մատնեն ընդ-
նաբար զամենայն գործս նորա ասելով՝ այսքանեաց չա-
րեաց գործող է սա։ Այլ արդ որպիսի ահ և դողումն
ունիցի անձն այն մինչև եղցէ վճիռ և ազատեսցի 'ի նո-
ցանէ. զի ժամն այն դժուարին է, դառն և չար, և զի
երկիւղ մեծ լիցէ ամենայն ազգականացս մինչև տեսցէ
անձն այն զվախճան գործոյն այնորիկ։ Ո՜վ ի զան և աս-
տուածային զօրքն սուրբ հրեշտակք, և բերեն և նոքա
զորս ինչ ունէրն բարի գործս, և զի նայի դողալով անձն
այն յայսկոյս և յայնկոյս և երկնչի յոյժ 'ի խաւարայլեն
դասէն, մինչև յիրաւ և յանաչառ դատաւորէն հասցի
դատաստան։ Այլ եթէ արժանի լինիցի ողորմութեան
անձն այն, յայնժամ լսեն զբարկութի չար դևքն յանկ-
արկանանէն տյ, և առժամայն յափշտակեն զայն հոգի 'ի
ձեռաց դիւաց սուրբ հրեշտակք տյ, և յայնմհետէ այլ
ոչ ևս երկիցէ։ Այլ զի լսցի յայնժամ բանք գրոց որ ասէ՝
եթէ որպէս ուրախացելոց բնակութիւք են 'ի քեզ։ Այլ
զի դարձեալ միւս գիր ասէ. յորմէ փախիցեն ամենայն
վիշտք և հեծութիւք և հառաչանք։ Իսկ մինչ ազատե-
ցի 'ի հալածչացն յայնցանէ, տանին զնա յանպատմելի
ուրախութիւն և 'ի փառս աննկատելիս առաջի տյ և ե-
րեսացն Քրի և կարգեն զնա յօթեվանս երանելի ար-
դարոցն ամենեցուն. իսկ եթէ գտցի անձն եղկելի և
վատթար գործովք կենցաղոյս, լսէ նա զդառն զայն բան՝
եթէ բարձցի ամբարիշտն և մի տեսցէ զփառս տյ։ Այլ
յայնժամ պաշարէ զնա օր բարկութեան և դառն, օր
վշտաց և նեղութե, օր մթոյ և խաւարի, օր որ հանէ
'ի խաւարն արտաքին և 'ի հուր գեհենին զի տանջեսցի
'ի նմա յաւիտեան։ Այլ ո՞ւր իցեն պարծանք աշխարհիս
այսորիկ, ո՞ւր զօրութի մեծութե և հանդիսա, և ո՞ւր
իցէ բարձրավզին հպարտութիւն, ո՞ւր ինչք և գանձք և
ստացուածք, ո՞ւր զօրաց և ծառայից և մարդոց բազմու-
թիւնք, և ո՞ւր իցէ ազնուականութի, ո՞ւր հօր և մօր և
ազգին բարետոհմութիւն, և որք առաւելն մեծացականք և
խափանելիքն են և սիրելի և ցանկալի մարմնոյ՝ զինչ
կարիցեն օգնել յայնժամ կամ փրկել 'ի տանջանացն
'ի սաստկալի կիզմանէ հրոյն և կամ յայլոցն յամենեցունց

բազում և ազգի ազգի տանջանացն։ Այլ արդ զի այս ամենայն այսպէս իցէ, և որպէս պարտ իցէ մեզ լինել՝ ասեմ զճշմարիտն թէ որպէս պարտ է առնել. մնալ սրբութեամբ, և կեալ յածպաշտութեան միշտ, և ստանալ սէր կատարեալ առ ած և առ ամենայն մարդ. զսուրբ քաղաքավարութիւն ստանալ, և զընթացս ճգնութեանց իմաստութեամբ ընթանալ աղօթիւք և զգուշութեամբ և պահօք, և զի փութասցուք զի մի յապաղելով ստասցուք զպարիս, և փախիցուք ՚ի չարեաց։ Որպէս զի արժանի լիցուք լսել զքաղցր ձայնն զայն ՚ի բերանոյ Յսի այ մերոյ որ ասէ. եկայք, օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւն զոր պատրաստեալ է ձեզ ՚ի սկզբանէ աշխարհի. և որ զկնի այսորիկ։ Այս Թէոփիլոս ասէր յոր մահուն իւրոյ. երանի է քեզ, հայր Արսէնիոս, զի միշտ յիշէիր զօրս զայս։

ՀԱՅՐՆ Իսահակ և հայրն Աբրահամ ՚ի միասին բնակէին. և մտեալ երբեմն հայրն Աբրահամ և եգիտ զԻսահակ զի ողբայր յոյժ, և ասէ ցնա. ընդէ՞ր այդպէս լաս, հայր։ Ասէ ցնա ծերն. և ընդէ՞ր ոչ լացից՝ զի ոչ ունիմք տեղի ուր և գնասցուք, զի ննջեցին սուրբ հարքն մեր, և ոչ էր բաւական ՚ի վարձս նաւուց ձեռագործ մեր, զոր տուեալ նաւավարաց գնայաք տեսանել զնոսա և խրատիլ ՚ի նոցանէ. և արդ որբ մնացեալ մեր ՚ի նոցանէ՝ ոչ ունիմք տեղի ուր երթամք, և զայս ինչ լամ։

ՊԱՏՈՒԻՐԵԱԼ երբեմն ծերք լերինն առ հայրն Մակարի ՚ի Սկիտէ և ասեն. որպէս զի մի աշխատեսցի այս բազում ժողովս, աղաչեմք զքեզ եկ առ մեզ դու, և արժանի եղիցուք տեսութեան քո յառաջ քան զգնալն քո առ տէր։ Յարեաւ հայրն Մակար և գնաց առ նոսա ՚ի լեառն. և ժողովեցան ամենայն բազմութիւն առ նա և աղաչեցին զնա զի ասասցէ նոցա բանս կենաց։ Իսկ նա իբրև ետես զնոսա և լուաւ զայս, ասէ. լացէք, եղբարք, և հոսեսցեն աչք ձեր զհոսանս արտասուաց նախ քան զերթալն մեր անտի և գնալ յերկիրն յայն ուր ոչ օգնեսցեն մեզ ողբք և արտասուք. այլ և հուր կիզանողս պատահէ մեզ։ Այլ ողբաց յոյժ ամենայն բազմութիւնն, և անկան ամենեքեան ՚ի վերայ երեսաց իւրեանց և ասեն. աղօթեա վասն մեր, հայր։

ԱՍԱՑ հայրն Մակարիոս եթէ երթայի երբեմն յան-

ապատի, և գտի անմկեալ և չորացեալ գլուխ մարդոյ, և նստայ մերձ առ նա և ասեմ ցնա. ո՞վ ես դու: Իսկ նա պատասխանի ետ և ասէ ցիս. ես էի քահանայապետ կռոց հեթանոսաց որ բնակեալ էին անդ, իսկ դու ես հոգևոր հայրն Մակար. զի յորժամ աղօթես դու հոգւոյն որ 'ի դժոխս են՝ առնուն փոքր մի հանգիստ և մխիթարութիւն[1]: Ասէ ցնա ծերն. զի՞նչ և կամ որպէս իցէ մխիթարութիւն այն և կամ որպէս են տանջանքն: Ասէ ցնա գլուխն այն. որչափ բարձր են երկինք և խոր է երկիր, այնչափ խորագոյն են յերկրէ տեղիքն ուր մեք դատապարտեալ կամք, և զի կեամք յոտից մինչև ցպարանոց թաղեալ 'ի հուրն անշէջ. և ոչ գոյ մեզ հնար տեսանել զերեսս միմեանց, այլ իւրաքանչիւրն հայի 'ի թիկունս ընկերին իւրոյ. և զի է խաւար յոյժ: Իսկ իբրև սկսանիս դու աղօթել վասն մեր, յայնժամ փոքր մի տեսանեմք զդէմս միմեանց, և այն է մխիթարութիւն մեր: Եւ յայնսիկ ողբայր և ասէր՝ վայ աւուրն այնորիկ յորում ծնաւ մարդ: Ասէ ցնա Մակարի. է՞ այլ ինչ դժուարին տանջանք ուրեք քան զայն յորում էք դուք: Ասէ ցնա գլուխն այն. է և այլ ինչ խստագոյն ևս տանջանք 'ի ներքոյ քան զմեզ: Ասէ ցնա ծերն. և ո՞յք եղկելիք են 'ի նմա: Եւ ասէ ցնա գլուխն. մեք որպէս զանգէտսն այ փոքր մի ողորմելի եմք 'ի նմանէ. իսկ որք գիտէին զած և ուրացան զնա, նոքա ներքոյ մեր իցեն: Եւ առեալ ծերոյն զգլուխն զայն թաղեաց յերկիր:

ԵՀԱՐՑ ոմն եղբայր ցհայրն Մովսէս և ասէ. զի՞նչ պարտ իցէ առնել մարդոյ յամենայն փորձութիւնս որ գայցեն 'ի վերայ նորա և կամ յամենայն խորհրդոց թըշնամւոյն որ անկանի 'ի միտս նորա: Ասէ ցնա ծերն. անկանել և լալ պարտ է առաջի այ, որպէս զի օգնեսցէ և փրկեսցէ զնա. և եթէ զայս արասցէ, փոյթ գտցէ հանգիստ եթէ զղջութբ̃ և խնամութբ̃ աղօթեսցէ, որպէս և գրեալ է. ոչ երկեայց ես 'ի բիւրուց զօրաց 'ի

1 Զայս հարցում բանի և ածուբանն Հռովմայեցւոյ Ցիլանուեան յիշրամ ծոյս փաղաքշութեանն սոնի ընդ մերում թարգմանութեան, և ասէ եթէ զաղացոնսն առաջնորդաբար նորին ուղխար ունին 'ի մեկնութեան դժուար ասելոյ բանիցս. առեալ յիշատակէ և զայն եթէ առաջի թալմա 'ի ձորեանս նոր ասեցէ՝ եթէ որպէս զնա, այսպէս և զարտաքարգէաց ասաց ինչ և զպաշտոնական միտքութեան տանցին 'ի դժոխս:

նոցանէ. և թէ՝ զինչ արասցէ ինձ մարդ, զի դու տէր ընդ իս ես. և որքան յաղթեսցուք 'ի մարմնական ախտից, մի դադարեսցուք յողբալոյ և 'ի կոծելոյ մինչ չև հատեալ իցեմք ողբոցն յաւիտենից: Դարձեալ ասէ. արտասուօք ստացի մարդ զառաքինութիւն, և զի արտասուօք առնու զթողութիւն մեղաց: Իսկ մինչ ողբասցես, մի բարձրացուսցես զձայն հառաչանաց քոց, և զի մի գիտասցէ ձախ քո թէ զինչ գործէ աջ քո. և այս յայտնի է, զի ձախ կոչի ամբարտաւանութիւն:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Մատոյի և ասէ. ասա ինձ բան ինչ: Ասէ ցնա ծերն. զամենայն հակառակութիւն յամենայն բանի հատցես 'ի քէն, և ողբասցես և լացցես զի մերձեալ է վախճան:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. զինչ արարից, ով հայր: Ասէ ցնա ծերն. յորժամ այց արար ա͞ծ և կոչեաց զմեզ, այլ զինչ հոգասցուք մեք: Ասէ եղբայրն. զմեղս մեր հոգասցուք, ով հայր: Ասէ ծերն. մտցուք 'ի սենեակս մեր, նստցուք և յիշեսցուք զմեղս մեր և լացցուք առաջի տեառն ա͞յ մերոյ, և նա օգնեսցէ մեզ:

ԵՐԱՆԵԼԻՆ Աթանաս արհիեպիսկոպոսն Աղեքսանդրու աղաչեաց զհայրն Պամբոյ, որպէս թէ իջցէ 'ի լեռնէն յԱղեքսանդրիա: Եւ իբրև էջ, ետես կին մի պոռնիկ անդր և սկսաւ լալ: Հարցանէին ցնա որք տեսանէին եթէ ընդէ՞ր ողբաս, հայր: Եւ նա ասէ. լամ վասն երկուց պատճառաց, մի վասն կորստեան հոգւոյ նորա և երկրորդ վասն իմ լամ, զի ոչ ունիմ ես փոյթ այնչափ հաճոյ լինել ա͞յ որչափ ունի սա փոյթ հաճոյ լինել մարդկան:

ԱՍԱՑ հայրն Պաւղոս. 'ի գուբ տղմոյ թաղեալ կամ մինչև ցպարանոց իմ, վասն այսորիկ լամ միշտ առաջի ա͞յ, որպէս զի թէ հանցէ զիս 'ի նմանէ:

ԱՍԷԻՆ վասն հօրն Արսենի՝ եթէ այնպէս էին կեանք նորա իբրև զթռչնոյ միոյ, զի ոչ բնաւ ստացաւ ինչ 'ի ստացուածոց երկրի և ոչ բնակեցաւ 'ի սենեկի երբէք, այլ զի և զգեցեալ էր խորգ ինչ, և աւետարան մի փոքրիկ ունելով 'ի ձեռին և այնպէս շրջէր իբրև զանմարմին. Բազում անգամ գտին զնա զի նստէր 'ի ճանապարհին արտասուօք լինէին և լայր դառնապէս.

մինչ հարցանէին որք անցանէինն՝ ընդէ՞ր այդպէս ող-բաս, այր դու, և նա պատասխանէր և ասէր. տէրն իմ հաւատաց ինձ ինչս բազումս, և իմ կորուսեալ զայն ա-մենայն երկնչիմ զի հանդերձեալ է տանջել զիս: Իսկ մինչ լսէին զայս ճանապարհորդքն՝ կարծէին եթէ զա-կի և զինչս ասէ, և ընկենուին նմա հաց և ասէին. ա-ռեալ կերիցես զայդ, եղբայր, և զմեծութիւն զոր կորու-սեր՝ կարող է ա͞ծ տալ քեզ: Այլ ծերն ասէ՝ ամէն:

ԱՍԱՑ ծերն. մեծ ճգնութիւն և աշխատանս ունին ընդ առաջինսն այնք որք դիմեն առ ա͞ծ, իսկ յետոյ գտանեն խնդութիւն անպատմելի. և լինի այնպէս որպէս զայն որ փութան լուցանել զհուր, և նախ արտասուեն հարեալ 'ի ծխոյն, և ապա վառեսցեն զհուրն և զղամպարս իւ-րեանց: Այսպէս եղիցին և այնք որք կարօտին ա͞յ և յա͞ծային սէրն, որպէս և գրեալ է՝ եթէ ա͞ծ մեր հուր ծախիչ է. և պարտ է մեզ զերանելի զայն և զտռփելի հուրն վառել 'ի մեզ բազում աշխատութե͞ և վտակօք արտասուաց, զի լուսաւորեսցէ զմեզ:

ԱՍԱՑ հայրն Ապերիքսէ. տիւ արասցէ զգիշեր կրօ-նաւորն արթուն՝ հսկելով յաղօթս, և խոցոտեսցէ ըղ-միտս և զհոգի իւր, և հոսեսցէ հեղեղս արտասուաց, մինչև ձգեսցէ յինքն յերկնից զողորմութիւն ա͞յ:

ԵՂԲԱՅՐ ոմն եկն առ ծերն և ասէ ցնա. ընդէ՞ր սիրտ իմ խիստ է, հայր, և ոչ երկնչիմ յա͞յ: Ասէ ցնա ծերն. եթէ կալցի մարդ զարհամարհանս անձին 'ի մտի, այն-պիսին ստանայ զերկիւղն ա͞յ: Այլ եղբայրն ասէ. զի՞նչ է արհամարհութիւն: Ասէ ցնա ծերն. այն է զի յամե-նայն գործս իւր նախատեսցէ մարդ զինքն և ասասցէ. քաջալերեա, եղկելի, զի կալոց ես առաջի աթոռոյն Ք͞սի, և զի՞նչ ունիս ընդ մարդոյ: Եթէ կացցէ 'ի մտի նորա այսպիսի խորհուրդ, ստանայ զերկիւղն ա͞յ:

ԱՍԱՑ ծերն. զոր օրինակ չարութիւն ընդ մեզ գայ ուր և երթիցուք, և այսպէս արժան է մեզ զեղջ և արտա-սուս ընդ մեզ ունել ուր և գնասցուք:

ՍԻՄԵՈՆ 'ի հարանցն պատահեաց մեհ, և զկնի բա-զում ժամու դարձեալ եկառ զհոգի իւր. և մեք հարցաք ցնա եթէ զի՞նչ տեսեր, հայր: Իսկ նա պատմէր արտա-սուօք՝ եթէ լուայ ձայն ողբոց և կոծոյ, որ ասէր անդա-դար. վայ վայ վայ: Այլ կրօնաւորի այսպէս պարտ է լինել:

ԵՀԱՐՑ եղբայր մի ցծերն և ասէ. զի՞ է զի փափագի անձն իմ արտասուաց որպէս և հարցն փափագելին, և չգան ինձ, և դժուարի միտք իմ: Եւ ծերն ասէ ցնա. որդեակ՝ Իսրայէլի քառասուն ամ լցեալ հասին մինչև յերկիրն աւետեաց, ուր բնակելով ոչ երկեան այլ 'ի պատերազմողաց խուսեանց. սոյնպէս և կամի ած զի միշտ տխրեսցի անձն և այնպէս մտցէ յերկիրն կենդանեաց:

ԱՅԼ ծերն. այս գործ վայել է որ ապաշխարողին, որպէս զի միայնասցի և անհոգ լիցի յամենայն աշխարհականաց գործոց, և եղիցի զղջական և ողբական. և զի մի ձանձրացուսցէ զոք և մի նեղեսցէ, այլ նախատեալ նեղեսցէ զանձն իւր և արթուն լինիցի և զգաստ մտօք, և զի հասանիցէ արտասուաց ջերմապէս խնդրեսցէ միշտ զողորմութիւն այ:

ՀԱՐՑԻՆ ումանք ցհայրն Սիսոյի և ասեն ցնա. եթէ անկանիցի եղբայր ումն՝ պարտ իցէ զի ապաշխարեսցէ ամ մի: Ասէ ծերն. խիստ է բանդ այդ: Իսկ նոքա ասեն. ապա բաւ է եթէ զամիսս վեց ապաշխարիցէ: Ասէ ծերն. և այդ ևս շատ է: Իսկ նոքա ասեն. և արդ պարտ է զի մեղիցէ և նստցի 'ի սէր ընդ մեզ: Ասէ ծերն. ոչ, այլ ապաշխարել զսակաւ աւուրս. և ես հաւատամ յած, որպէս զի թէ կատարեալ մտօք և զղջութեամբ սրտի ապաշխարեսցէ զերիս աւուրս, ընդունի ած զապաշխարութիւն նորա և թողու զյանցանս նորա:

ԱՍԱՑ ծերն. մարդ որ նստի 'ի սենեկի և սաղմոսէ, նման է նա մարդոյ որ խնդրիցէ զանէր. իսկ որ լայ և ողբայ, նա զոտից կալեալ զՏեառն խնդրէ զողորմութիւն 'ի նմանէ իբրև զկինն պոռնիկ:

ԱՍԱՑ դարձեալ. սովորեցո զմիտս քո 'ի վերայ ամենայն եղբարց և ասասցես՝ եթէ այս եղբայր լաւագոյն է քան զիս առաջի այ, և այս մին այլ փոյթ է և այլ մին այլ ազգ, և այսպէս եկեսցես 'ի չափ՝ ունելով զքեզ վատթար քան զամենեսեան, և բնակեսցի 'ի քեզ յայնմանէ հոգի այ: Իսկ եթէ արհամարհեսցես զոք, փախչի 'ի քէն շնորհն այ և անկանիս 'ի պղծութիւն մարմնոյ, և խստասցի սիրտ քո, և զերկիւղ ամենևին ոչ գոյ 'ի քեզ:

ԴԱՐՁԵԱԼ ասէ. եթէ լինիցի մարդ ճգնաւոր, խնդրեսցէ 'ի նմանէ ած զամենայն առաքինութիւնս, ոչ ունել 'ի մտի և ոչ ասել մի. զի կարող է ասեղն այն խափանել զխորհուրդ նորա և հատանել 'ի նմանէ զերկիւղ և զողբ և զարտասուս:

նիցիս միշտ 'ի քեզ զերկիւղն Տն, զի նա պահեսցէ զքեզ և հալածեսցէ յանձնէ քումմէ զամենայն մեղս և զանօրէնութիւնս քո. զի որ ունիցի յինքեան զերկիւղն Տն, ունի նա գանձարան լի բարուոք մեծութբ. զի երկիւղն Տն փրկէ զանձն 'ի մեղաց:

ՈՒԵՐ ոմն նստէր առանձին 'ի սենեկի, և զի ունէր անդ վաղեմութեան սէր 'ի կրօնաւորութեան. նա ոչ երբեք զառարեաց յողբոց զամենայն աւուրս կենաց իւրոց, այլ նստէր միշտ և լայր և ասէր՝ եթէ զժամս զայս ես ինձ տէր 'ի սակս ապաշխարութեան, զոր յոյժ խնդրեմ և ոչ գտանեմ յետոյ:

ՄԻՒՍ ոմն ծեր նստէր յանապատի առանձին միայնակեաց. նա մինչ մանուկն էր սպասաւորէր զՀօրիս եղբարցն. և իջեալ երբեմն յՆիտրիով Հանդերձ Ջորեօքն, և յօթեւանին նոցա էր մանուկ մի փոքր և յազգմանէ չարին կախեալ եղև 'ի Ջորեացն և սպանաւ: Իսկ մինչ իմացան եղբայրքն, տրտմեցան յոյժ սակս այսորիկ, և յարուցեալ մեկնեցաւ անտի և գնաց յՄեմփիան և եղև անդ միայնակեաց: Նա ողբայր միշտ և ասէր. Ես սպանի զմանուկն ձեռօք իմովք, և որպէս զմարդասպան դատեցայց եմ: Եւ էր մերձ առ նա բնակեալ այրի ինչ աղքատ մի չար, և երթայր նա Հանապազօր յայրին աղքատուն և Հարկանէր զնա և զրգռէր, թէրևս յարիցէ և կերիցէ զինքն. իսկ աղքատն ոչ ինչ վնասեաց նմա: Ապա եւս եղբայրն եթէ ոչ մերձեցաւ 'ի նա աղքատն, տրտմեցաւ յոյժ, և գնացեալ նստաւ 'ի վերայ զրանն 'ի յանցս նորա, զի գուցէ քաղցիցի և կերիցէ զնա: Իսկ աղքատն իբրև քաղցեաւ՝ եկն անդր և եսես զեղբայրն 'ի վերայ ճանապարհին իւրոյ, և հեզութբ և սիրով քայլեաց 'ի վերայ նորա և գնաց յորս: Յայնժամ հաւատաց եղբայրն եթէ եթող Տր իւր զայն մեղսն, և եկեալ 'ի վանս իւր և անդ կատարեաց զինքն աւուրս իւր բազում զղջութբ և ուսուցանէր զամենեսեան:

ԱՂԲԱՅՐ ոմն եհարց զծերոն և ասէ. զինչ արարից, հայր, զի մինչ տեսանեմ զոք մեղուցեալ՝ դատեմ զնա, և մինչ լսեմ ծոյլ զոք զեղբայրն՝ ասեմ զնա, և այնպէս կորուսանեմ զանձն իմ: Ասէ ցնա ծերն. յորժամ լսես պարսաւանս ինչ, առժամայն հեռացո զմիտս քո յայնմ զրուցոյ, և սաստեա զմիտս քո խորհել զահաւորն օրն զա-

տաստանացն. յիշեա և զանթառամ առակացն և զպատուհասն անաչառ, զգեհեանն հրեղէն որ գայ առաջի նորա և զանհանդուրժելի տանջանս որ 'ի նմա, և զսուրն հրեղէն և զանողորմ դահճսն, զլալ աչաց և զկրճել ատամանց և զորդն անքուն և զամենայն դառն և զանվախճան տանջանս, զողբս և զկոծս յաւիտենականս։ Զայսոսիկ զամենեսեան յիշեսցես, և փութա զղջանել ընկերին 'ի դառնել զքեզ, և քննեա զմեղս քո և խորհեսցես յոյժ եթէ որպէս ահաւոր են դատաստանքն այ։ Վասն զի սուրբ և անմարմինն զօրք հրեշտակացն ահիւ և դողութբ. լռութիւն յայնժամ, որչափ ևս առաւել մարդ 'ի մեղս ծնեալ և 'ի նոյն սնեալ։ Ոչ կարող է ոք անդ այլում օգնել և կամ վնասել ինչ, և ոչ ոք կարող իցէ փրկել զոք 'ի տանջանացն, ոչ հայր և ոչ մայր և ոչ եղբայր և ոչ քոյր և ոչ որդի և ոչ ազգատոհմ և ոչ փառք և ոչ մեծութի և ոչ ընտանին ոք, բայց միայն ողորմութիւնն այ և ամենայն գործք արդարութե և հաւատ ուղիղ։ Եւ զի մեծ յիմարութի է թողուլ զմեղս իւր և դառնել զընկերին, զի իւրաքանչիւր ոք 'ի մէնջ զիւր բեռն բարձցէ և իւրաքանչիւր ոք 'ի մէնջ ըմբռնեսցի 'ի ցանցս մեղաց իւրոց, և զի տեառն իւրում է ամենայն ոք եթէ արդար իցէ և եթէ մեղաւոր։ Եւ զի կարող է ած կեցուցանել զմեղաւորն և զարդարն, որպէս և արար մաքսաւորին և պոռնկին և աւազակին և մշակացն որք զմետասան ժամն գործեցին։ Զայս ամենայն խորհեսցես, որդեակ, և հրաժարեա 'ի դառնալոյ և յատելոյ զընկերն, քանզի չար է այդ և դժնդակ քան զամենայն մեղս, և զի յափշտակումն է աթոռոյն և դատաստանի միածնին. և եթէ կամիս զերծանել յայդմանէ, դատ դիցես միշտ առաջի քո և ասասցես՝ զայս ինչ ընդէ՞ր գործեցի ես և կամ զայս ինչ ընդէ՞ր խորհեցայ. և զի բազումս գտանես պատճառս դառնալոյ զքեզ, զի որովհետև մարդ ես դու։ Զայս այսպէս առնելով և խորհելով ոչ պարտապեսցիս դառնալ կամ ատել զայլս, և հանգիցես շնորհօքն այ։

Ոմն որ յաւազակաց էր, զղջացեալ եկն առ ծեր ոմն մեծ և սքանչելի, որ էր հայր վանից։ Հրամայեաց զաւուրս եօթն 'ի հանգստեան պահել միայն 'ի պետութիւն տեղւոյն հաստատութե։ Եւ յետ եօթն աւուրն

կոչեալ զնա հովիւն առանձինն՝ հարցանէր ցնա թէ հաճո՞յ է նմա առ նա զբնակութիւն իւր առնել. իսկ նա կամեցաւ ուղիղ սրտիւ։ Դարձեալ հարցանէր ցնա վասն յանցանացն. իսկ նա առժամայն խոստովանեցաւ նմա յօժարութեամբ։ Դարձեալ փորձէր զնա ասելով՝ կամիմ ամենայն եղբարցս հրապարակել զքեզ. և նա յանձն էառ յօժարութեամբ։ Յայնժամ ժողովեաց հայրն զամենայն եղբարսն երկերիւր և յիսուն, և բերեալ զամբիծ զաստուածապաշտեալն զայն՝ ոմանք յեղբարց 'ի քարշ տանէին զնա և ոմանք չափաւոր հարուածովք նեղացուցանէին, և զի քուրձ զգեցուցեալ էին և մոխիր 'ի վերայ գլխոյն լցեալ, որպէս զի 'ի տեսութեն նորա ամենեքեան զարհուրէին և արտասուօք աղաղակէին։ Իսկ նա զողութեամբ խոստովանէր զամենայն մեղս իւր մի ըստ միոջէ, որով և զամենեցունց լսելիս զարմացոյց. զի բազում յոյժ յանցանս գործեալ էր։ Յայնժամ պատմեաց հայրըն եղբարցն՝ եթէ տեսանէի ես զոմն ահաւոր որ ունէր թուղթ գրեալ 'ի ձեռն և եղէգն, և համանգամայն զմեղսն զոր առնէր յոյժ արդար, նա ջնջէր զամենայն, քանզի գրեալ է՝ եթէ զանօրէնութիւս իմ պատմեցից ինձէն, և դու թողցես զյանցանս մեղաց իմոց, տէր իմ և ա̃ծ իմ։



Գ

# ՎԱՍՆ ԺՈՒԺԿԱԼՈՒԹԵԱՆ

## ՈՉ ՄԻԱՅՆ Ի ԿԵՐԱԿՐՈՑ, ԱՅԼ ԵՒ ՅԱՄԵՆԱՅՆԷ ՈՐ ՇԱՐԺԷ ԶԱՆՁՆ

ԾԵՐՔ' ասենք երթային առ հայրն Անտոն և անդադար խօսէին 'ի գործոց հարանցն սրբոց և յայլոց ինչ շինելոց. և ուղեկից եղև նոցա այլ ոմն ծեր և գնայր ընդ նոսա լռութեամբ: Եւ իբրև չոգան, ասէ սուրբն Անտոն ցպատուական ծերն. բարւոք գտեր զեղբարսդ ուղեկից: Եւ ասէ ցնա. այլ անդրուռն են ապարանք դոցա, և գողք ուտեն զյողանակ դոցա: Եւ ասէր վասն անզգոյշ բերանոյ նոցա:

ԱՄԷՒԻՆ' ասենք վասն հօրն Մովսի թէ հիւանդացաւ, և 'ի ջերմնութեն լեալ բազում ամս' ոչ երբէք թոյլ ետ խորհրդոց իւրոց հայել 'ի ներքսագոյն խուցն և տեսանել թէ զինչ կայցէ, վասն զի բազումք բերէին նմա: Այլ 'ի մտանել և յելանել աշակերտին իւրոյ Յովհաննու խնայր զաչս իւր զի մի տեսցէ զոր ինչ թէ նա առ-

1 Եւ երթեալ եղբարք առ հայրն Անտոնիոս 'ի Սկիւտոյ և մտին 'ի նաւ որ գնայր անդ. և գտին զայլ ոմն ծեր որ գնայր և նա անդ, և ոչ ճանաչէին զնա եղբարքն. և նստեալ 'ի նաւին խօսէին 'ի բանից հարցն և 'ի գրոց և վասն գործոց նոցին. և ծերն այն լուռ եկեաց կայր: Եւ իբրև ելին 'ի ցամաք, գտին զի և ծերն այն անդ գնայր առ հայրն Անտոնիոս. և յարուցեալ յառաւօտուն 'ի միասին գնացին առ հայրն Անտոնիոս: Ասէ ցնոսա հայրն Անտոնիոս. բարի ճանապարհակից գտէք, եղբարք, զծերդ զայդ: Եւ ցծերն ասէ. բարւոք ճանապարհակից և դու գտեր, ով ծեր, զեղբարսդ զայդոսիկ: Պատասխանի ետ ծերն Անտոնի և ասէ. բարւոք են դոքա, այլ բանից դոցա դրունս ոչ գոյ. և որ ոք կամի՝ դիւրաւ մտանէ յախոռս դոցա, և լուծեալ տանի զգրաստս դոցա: Զայս ասէր ծերն առ այն, զի զոր ինչ բան գայր 'ի բերանս նոցա՝ անզգուշաբար ասէին:

2 Ասէին վասն հօրն Ամմոնի՝ եթէ հիւանդացաւ և ամս բազումս եկաց յանկողնի, և ոչ եթող զխորհուրդ իւր նայել 'ի ներքսագոյն սենեակն իւր տեսանել թէ զինչ ունիցի անդ. և զի յոյժ բերէին նմա ինչս վասն հիւանդութեան: Եւ մինչ մտանէր Յոհաննէս աշակերտ իւր

նիցէ. գիտէր վասն նորա թէ հաւատարիմ միայնա-կեաց է։

ԵՐԹԵԱԼ՝ ոմն 'ի հարանցն առ ծերն Աքիղաս և տեսանէ զնա զի արիւն եթուք ընդ բերանն։ Եւ հարցեալ զնա և ասացեալ թէ զինչ է այդ, հայր, և ասացեալ ծերոյն թէ բան է այդ եղբօր որ զիս տրտմեցոյց, և մրցեցայ զի մի ումեք պատմեցից զայն, և պաղատեցայ առաջի Այ զի առցէ յինէն զայս, և ահա եղև բանն արիւն 'ի բերան իմ. և իբրև թքի զնա, հանգեայ և զտրտմութիւն մոռացայ։

Էր ոմն եղբայր 'ի խորձիթմն. և յորժամ արձակէր ժողովուրդն, նա զկնի ամենեցուն մնայր, ակն ունելով թէ ով գիտէ առ ինքն ոք տարցի։ Արդ յաւուր միոջ ելեալ 'ի ժողովրդեանէն յառաջագոյն ընթանայր 'ի խուցն իւր, և.ուշ եղեալ երիցուն սքանչանայր։ Եւ եղև իբրև եկն դարձեալ 'ի ժողովուրդն, ասէ ցնա երէցն. ասա ինձ ճշմարիտ զինչ են իրքդ զոր եթէ դու արարեր, զի յորժամ ժողով լինէր՝ հանապազ զկնի մնայիր, իսկ յեռանդեան աւուրն ելեր յառաջագոյն քան զամենեսեան։ Ասէ ցնա եղբայրն. վասն զի ժուժկալեցուցանէի զիս զի մի եփեցից ջերմ, յաղագս այնորիկ անսայի անդ զի թերեւս արգելցէ ոք զիս անդ. իսկ յեռանդեան աւուրն յառաջ քան զելանելն իմ 'ի ժողովն եփեցի ինձ սակաւ մի ոսպնաթան, վասն այնորիկ յորժամ թէ հաղորդեցայ օրհնացն՝ առժամայն ելի։ Արդ իբրև լուաւ զայս երէցն՝ ետ հրաման յեկեղեցւոջն և ասէ. եղբարք, յառաջ քան զգալն ձեր յեկեղեցիս եփեսցէ իւրաքանչիւր ոք սակաւ մի թան 'ի խցի իւրում, զի յաղագս այնորիկ յաժարութբ ընթասջիք 'ի խորձիթս ձեր։

ՈՒՆԷՐ[2] երբեմն հայրն Ագաթոն երկուս աշակերտս որոշեալս առանձինն։ Արդ յաւուր միում հարցեալ ցմի

կամ ելանէր անդ, ծածկէր ծերն զերեսս և զաչս իւր, զի մի տեսցէ թէ զինչ արասցէ. և գիտէր զնա զի հաւատարիմ էր։

[1] Գնաց ոմն երբեմն առ հայրն Աքիլաս և ետես զնա զի արիւն ե-թուք 'ի բերանոյ իւրոյ։ Եւ եհարց ցնա. զինչ իցէ այդ, հայր։ Եւ ծերն ասէ. այս բան է եղբօրն որ տրտմեցոյց զիս, և ես բանադատեցի զիս ոչ ումեք ասել զայն, և ոչ ելանէր 'ի մտաց իմոց. և աղաչեցի զտէր, զի բարձցէ զայն յինէն, և եղև բանն այն արիւն 'ի բերան իմ. և զի ա-հա թքեալ հանգեայ և մոռացայ զտրտմութիւնն զայն։

[2] Ունէր երբեմն հայրն Ագաթոն երկու աշակերտս որք հեռագոյն իւրաքանչիւր առանձին նստէին։ Ի միում աւուր եհարց ցմինն 'ի նո-

ումն 'ի նոցանէ եթէ զիա՞րդ վարիս 'ի խցի քում, և նա ասէ. պահեմ մինչև ցերեկոյ և ճաշակեմ երկուս պաքսիմատս: Եւ ասէ ցնա. բարի է կարգդ, ոչ ինչ ունելով աշխատութիւն մեծ: Ապա և ցմիւսն. և դու ո՞րպէս կրօնաւորիս: Նորա պատասխանի տուեալ և ասացեալ՝ եթէ զերկուս աւուրս պահեմ և երկուս պաքսիմատս ճաշակեմ, ասէ ցնա ծերն. աշխատիս յոյժ՝ երկուս պատերազմունս ամբառնալով. զի եթէ աւուր աւուր ոք ճաշակէ և ոչ յագեսցի՝ աշխատութիւն է: Այն ամենք որ եթէ կամին պահել զերկուս աւուրս, և 'ի ժամ ուտելոյն յագել. իսկ դու զերկուս աւուրս պահես, և յետ ուտելոյ ժամուն ոչ յագիս:

ԵՐԹԵԱԼ՝ երբեմն երէցն Սկիւթայ առ եպիսկոպոսն Աղեքսանդրի և դարձեալ անդրէն 'ի Սկիւթ, և կամեցեալ հաստատել զեղբարսն՝ ասէ ցնոսա. լուեմ յանանց զի ասեն՝ թէ սաստիկ բազմութիւն մարդկան է յԱղեքսանդրի. արդարեւ մտեալ իմ չկարացի տեսանել զերեսս մարդոյ, բայց միայն զեպիսկոպոսապետին: Իսկ նոցա լուեալ խռովեցան և ասեն. միթէ ընկղմեցա՞ն մարդիկն, հայր: Եւ նորա պատասխանի տուեալ ասաց. ոչ այդպէս, այլ խորհուրդք իմ ոչ յաղթեցին ինձ համբառնալ զաչս իմ և նայել 'ի վեր, զի մի պղծեսցին խորհուրդք իմ: Եւ նոցա լուեալ սքանչացան և հաստատեցան 'ի բանէ նորա, զի պահեսցեն զաչս իւրեանց առ 'ի չտեսանելոյ զընդունայնութիւն յաւիտենից այտորիկ:

ցանէ և ասէ. ո՞րպէս կենաս դու 'ի խցի քում: Եւ նա ասէ. պահեմ մինչև ցերեկոյ և ապա ճաշակեմ երկուս պաքսիմատս: Ասէ ցնա ծերն. բարւոք է այդ կարգ, և ոչ ունի աշխատութիւն յոյժ: Իսկ ցերկրորդն ասէ. և դու ո՞րպէս կենաս, եղբայր: Եւ նա ասէ. երկուս աւուրս պահեմ, հայր, և ապա ճաշակեմ երկուս պաքսիմատս: Ասէ ցնա ծերն. դու աշխատիս, որդեակ, վասն զի երկուս պատերազմս կրես, մի զի պահես երկու երկու, և երկրորդ զի յորժամ ճաշակես՝ ոչ յագիս: Զի որք պահեսցեն մինչև ցերեկոյ և 'ի ճաշակելն ոչ յագին՝ աշխատանք է, ո՞րչափ ևս առաւել որք պահեն զերկուս աւուրս և 'ի ճաշակելն ոչ յագին՝ աշխատութիւն ունիցին:

: Գնաց երբեմն հայրն Խաքղորէ առ հայրն Թէոփիլէ եպիսկոպոսն Աղեքսանդրու. և իբրև դարձաւ անդրէն 'ի Սկիւտէ, հարցանէին ցնա եղբարքն և ասէին՝ թէ ո՞րպէս իցէ քաղաքն այն, հայր: Ասէ ցնոսա ծերն. Թոյլ տուք, եղբարք, զի ոչ տեսի ես զերեսս մարդոյ, բայց միայն զարհիեպիսկոպոսին: Իբրև լուան զայս եղբարքն, շփոթեցան և ասեն ցնա. միթէ ափշեցար անդ, հայր: Եւ նա ասէ. ոչ այդպէս, այլ ոչ եթող զիս խորհուրդ իմ տեսանել անդ զերեսս մարդոյ:

ԱՍԷԻՆ[1] վասն հօրն Սերենոսի եթէ շատ գործէր և երկուս պաքսամատս ճաշակէր հանապազ։ Չոգեալ առ նա հայրն Յոբ գործակից նորա՝ և նա ինքն մեծ կրօնաւոր էր, ասէ ցնա՝ եթէ 'ի խցին իմում զկարգն իմ վարեմ. բայց եթէ արտաքս ելանեմ, խոնարհիմ յեղբարսն։ Նա ասէ ցնա հայրն Սերենոս. ոչ է այդ մեծ առաքինութիւն եթէ 'ի խցին քում ժուժկալես, այլ եթէ ելանես 'ի խցէն քումմէ։

ԱՍԷԻՆ[2] վասն հօրն Սիսոյ Թեբայեցւոյ թէ լինէր նա յեղեգնատին յԱրսենիոս, և միւս այլ ոմն ծեր հիւանդացաւ յայլ վանորեայ ուրեմն. և յորժամ լուաւ՝ նեղեցաւ, վասն զի զերկուս աւուրս պահէր, և էր օր յորում ոչ ճաշակէր։ Նա յորժամ լուաւ, ասէ ցխորհուրդս իւր. զինչ գործեցից, եթէ երթամ անդր՝ մի գուցէ հարկաւորեցուցանեն զիս եղբարքն ճաշակել, և եթէ անսամ մինչև 'ի վաղիւն՝ մի գուցէ վախճանեսցի. բայց սակայն առնեմ զայս, երթամ և ոչ ճաշակեմ։ Նա այսպէս երթեալ և եկեալ ոչ ճաշակեաց, կատարեալ զպատուիրանն ա̃յ, և զվարս իւր որ եթէ վասն տեառն էին՝ ոչ ելոյծ։

ԱՍԷԻՆ[3] վասն ուրումն ծերոյ 'ի Խորձիթան եթէ արգելեալ էր զինքն, և յեկեղեցի անգամ ոչ երթայր։ Նա էր նորա եղբայր մարմնաւոր որ նստէր յայլում խցի, և հիւանդացաւ և առաքեաց առ նա զի եկեսցէ տեսցէ

[1] Ասէին վասն հօրն Սերենոսի՝ եթէ զօրն ողջոյն աշխատէր և երկու պաքսիմատս կերակրէր միշտ։ Եւ եկն առ նա հայրն Յոբ սիրելի իւր և ճգնաւոր յոյժ և ասէ ցնա. ես զկարգ իմ 'ի սենեակի իմում պահեմ. իսկ մինչ ելանեմ 'ի խցէն իմմէ, ընդ եղբարսն հաւասարիմ։ Ասէ ցնա հայրն Սերենոս, ոչ է այդ մեծ առաքինութիւն 'ի խցի պահել, այլ և արտաքոյ պահել մեծ իմն է։

[2] Ասէին վասն հօրն Սիսոյի Թեբայեցւոյ՝ եթէ բնակէր նա 'ի կալուածնի Արսենիոսի, և այլ ոմն ծեր հիւանդացեալ էր յայլ վանս. իբրև լուաւ զհիւանդութիւն ծերոյն Սիսոյի՝ տրտմեցաւ յոյժ, և վասն զի երկու երկու աւուրս պահէր, և խորհէր 'ի միտ և ասէր. զինչ արարից, եթէ գնամ տեսանել զծերն՝ ոչ թողլ տան ինձ եղբարքն պահել, և եթէ մնամ առ վաղիւն՝ միթէ վախճանի ծերն. այլ զայս արարից, գնացից և այլ մի ճաշակեցից ինչ։ Եւ գնաց այսպէս՝ պահօք կեցեալ կատարեաց զկամս այ, և զքաղաքավարութիւն իւր զծածուկն ոչ եղոյծ և կամ լքեաց։

[3] Ասէին ոմանք զծերոյ ումեմնէ եթէ այնպէս արգելեալ էր, մինչ զի և յեկեղեցին ոչ ելանէր։ Եւ էր նորա այլ եղբայր մարմնաւոր յայլում սենեակի. և զի տկարացաւ մեծաւ հիւանդութեամբ, և առաքեաց առ

զնա քան զելանելն 'ի մարմնոյն ։ Եւ ասէ. ոչ կարեմ ե-րթալ, վասն զի մարմնաւոր եղբայր իմ է ։ Դարձեալ ա-ռաքեաց և ասէ ցնա. գէթ 'ի գիշերի եկ այսր, զի տեսից զքեզ ։ Եւ նա ասէ. ոչ կարեմ, մի գուցէ սիրտ իմ ոչ գտցի յստակ առաջի տեառն ։ Եւ ննջեցաւ ոչ տեսեալ զիրեարս ։

ԱՍԷՐ՝ հայրն Բենիամին՝ եթէ յորժամ եկաք 'ի հնձոց 'ի Սկիւթ, բերին մեզ յԱղեքսանդրէ մէն քսեստ ձիթոյ պտղաբերելով առ մեզ, և էր զբերանով ամանեցն պն-դեալ կրով ։ Եւ իբրև եկին դարձեալ ժամանակ հնձոցն, որ ինչ թէ աւելի մնաց՝ բերին և եդին յեկեղեցւոջն ։ Եւ ես ոչ բացի զբերանս ամանոյն իմոյ, այլ ասղանաւ ծակեալ արկի փոքր մի, և պանծացեալ յանձին խոհէի որպէս մեծ ինչ իրս արարի ։ Եւ յորժամ բերին այլ եղբարքն զիւրաքանչիւր որպէս էին կրով պնդեալ՝ նոյն-պէս կային, և իմն ծակեալ էր. եղէ ես յամօթոյն յայն-ժամ այնպէս որպէս ոք զի թէ պոռնկեցի ։

ԿՈՉԵԱՑ՝ հայրն Եսայի զոմն յեղբարցն լուանալ զոտս նորա, և արկ բուռամբն ոսպն 'ի պղինձն. և իբրև սկիզբն արար եռալոյ, իջոյց զնա ։ Ասէ ցնա եղբայրն. չև ևս է եփեալ, հայր ։ Ասէ ցնա ծերն. չէ՞ քեզ շատ, զի ետես զկրակն, և այդ մեծ մխիթարութիւն է ։

արդէն լսական եղբայրն իւր և ասէ. եկ առ իս և տեսից զքեզ մինչ չև մեռեալ իցեմ ։ Իսկ նա ասաց յառաքեալն այն՝ եթէ ոչ կարեմ գնալ և տեսանել զնա, զի մարմնաւոր եղբայր իմ է ։ Եւ դարձեալ պատուիրեաց հիւանդն՝ եթէ 'ի գիշերի եկ զի տեսից զքեզ ։ Եւ նա ասէ. ոչ կարեմ գալ և տանել զայդ, ապա թէ ոչ՝ ոչ կարէ սիրտ իմ լինել սուրբ առաջի Այ ։ Եւ այնպէս վախճանեցաւ եղբայրն և ոչ տեսին զմիմեանս ։

։ Ասաց հայրն Բենիամին՝ եթէ իբրև եկաք 'ի հնձոց 'ի Սկիւթէ, բերին մեզ օրհնութիւն յԱղեքսանդրիոյ մի մի չափ ձէթ ամանօք՝ որ և ծեփեալ էր կրով ։ Եւ եկին դարձեալ ժամանակ հնձոցն, և զոր ինչ մնացեալ լինէր 'ի պիտոյիցն՝ հարքն ամենայն բերէին զայն, յեկեղեցին տային մինչ գնային 'ի հունձս ։ Իսկ ես զիմ աման ձիթոյն ոչ բացեալ էի, այլ մախաթով ծակեալ էի զծեփ նորա, քանզի փոքր ինչ պիտոյացաւ 'ի նմանէ. և կարծէի եթէ մեծ ինչ գործեալ է իմ. իսկ մինչ բերին եղբարքն զիւրեանց ամանն, բովանդակ ծեփեալ և լի էր, և միայն իմն պատու ծակեալ և պակասեալ. այնպէս ամօթ և պատկառանս եկն 'ի վերայ իմ, իբր թէ 'ի պոռնկութիւն անկեալ եղեալ էի ։

։ Զհայրն Եսայիա ասեն եթէ կոչեալ եղև երբեմն զեղբայր ոմն, և լուաց զոտս նորա, և ոսպն բուռն մի առեալ էարկ յեփ. և մինչ եռացեալ եղև մի անգամ, 'ի հրոյն էառ զնա ։ Ասէ ցնա եղբայրն. դեռ ևս ոչ իցէ եփեալ, հայր ։ Ասէ ցնա ծերն. և մի՞ իցէ բաւական քեզ, զի տեսեր մի անգամ հուր, և զի այս ևս մեծ մխիթարութիւն իցէ ։

ԱԴՂԲԱՑՐ[1] ումն ՚ի խուղ իւր տարեալ զհաց իւր ջերմ, կոչեաց ՚ի սեղան մի ՚ի ծերոց կրօնաւորաց։ Այլ իբրև կերան մին երկուս հաց, իւրաքանչիւր ոք դադարեցին։ Իսկ եղբօրն տեսեալ զաշխատութիւն ճգնութեանց նոցա, անկաւ առաջի նոցա. վասն տեառն՝ կերայք այսօր և յագեցարուք։ Այլ կերան այլ մին տասն ևս պաքսամատս։ Ահա տես քանի ինչ նուազ թաղուէին զինքեանս և սովորեցուցանէին։

ՊՈՒՏԵՄ ես զհայրն Պետրոս զպիոնացի զի գինի ոչ ըմպէր. արդ յորժամ ծերացաւ նա, աղնէին եղբարքն տակաւ եղկ ջուր և հարկաւորեցուցանէին զնա ըմպել։ Այլ ասէր՝ եթէ հաւատացէք ինձ զի որպէս զանոյշ գինի թուի ինձ. և դատապարտէր զինքն վասն ըմպելոյն զեղկ ջուրն։

ԱՍԷՐ[2] հայրն Պիմէն. եթէ ոչ էր եկեալ Նաբուզարդան խոհակեր, ապա ոչ երբէք այրէր տաճարն Տեառն հրով. այսինքն է եթէ ոչ նախ հանգիստ որովայնամոլութեան եկեալ էր ՚ի հոգին, ոչ երբէք մխտէին խորհուրդքն ՚ի պատերազմի թշնամւոյն։

ԱՍԷԻՆ[3] վասն հօրն Ադաղեայ ՚ի խորձիթան՝ եթէ եղև զքսան ամ և ոչ համբարձ զաչս իւր ՚ի վեր և ետես զձեղուն եկեղեցւոյն։ Ասէին վասն նորա՝ եթէ հաց և աղ միայն ուտէր։ Արդ յորժամ եկին պահք զատկին, ետես զի եղբարքն հաց և աղ միայն ճաշակէին՝ ասէ. արդ ինձ արժան է յաւելուլ յաշխատութիւնս վասն պահոցս. և տաայ թէ արդ այսպէս արարէք, վասն զի

[1] Եղբայր ումն եբեր ՚ի սենեակս զհաց իւր գեռ ևս եփեալ, և կոչեալ զոմանս յեղբարցն եդ զհացն զայն առաջի նոցա։ Իսկ նոքա ճաշակեալ երկուս պաքսիմատս դադարեցին յուտելոյ։ Իբրև ետես եղբայրն զճգնութիւնս նոցա, աղաչեաց զնոսա և ասէ. վասն Այ կերիցուք այսօր մինչև յագեսցուք։ Եւ նոքա լուան աղաչանաց նորա և կերան այլ ևս տասն տասն պաքսիմատս իւրաքանչիւրն։ Արդ տես թէ որքան հեռի էին ՚ի յագեցմանէ ճշմարիտ կրօնաւորքն այնոքիկ, և թէ որպէս նեղէին զանձինս իւրեանց պահել զկամս Այ։

[2] Ասաց հայրն Պիմէն. եթէ Նաբուզարդան եկեալ ոչ էր, ոչ էր այրեալ տաճարն Այ. այսպէս եթէ փափկութիւն ոչ գայցէ նախ ՚ի վերայ անձին, ոչ անկանի միտքն ՚ի պատերազմունս թշնամւոյն։

[3] Ասէին վասն հօրն Եղադիոյ՝ եթէ զքսան ամ եկաց ՚ի սենեակս և ոչ երբէք ամբարձ զաչս իւր ՚ի վեր տեսանել զերկինս և կամ զձեղունս եկեղեցւոյն։ Ասէին զնմանէ՝ եթէ հաց և աղ միայն ճաշակէր։ Իսկ յորժամ հասանէր մեծ զատիկն՝ ասէր եթէ եղբարքն այսօր հաց և աղ ճաշակեն, այլ և ինձ պարտ է փոքր մի աշխատել այսօր, վասն

յայլ աւուրսն նստէր և ճաշակէր, իսկ այժմ զի պահք էին՝ յուսն կալով ճաշակեցելոց զհացիկն, զի աղօթեսցի վաստակին իւր։

ՄԵԻՆ՝ վասն հօրն Պիմենի՝ եթէ յորժամ կոչէին զնա 'ի ճաշել, եկեալ արտաքս կամաց իւրոց երթայր արտասուելով, զի մի անհնազանդ երևեսցի եղբարցն իւրում և տրտմեցուսցէ զնա. այլ թողոյր զիւր կամսն, և խոնարհեցուցեալ զինքն երթայր զհետ։

ՄԵՐ՝ ոմն 'ի ծերոցն. գիտեմ զեղբայր ոմն 'ի խորշիթսն զի պահեաց զամենայն շաբաթս զատկին. և յորժամ հաղորդեցաւ օրհնացն երիկունն, փախեաւ զի մի ճաշակեսցէ յեկեղեցւոջն. և փոքր մի ճակնդեղ աղախարշեալ՝ համդերձ աղիւ ճաշակեաց առանց հացի 'ի խցին իւրում և թաքոյց զժուժկալութիւն իւր։

ՄԻԱՔԵԱՑ՝ երբեմն հայր Եպիփան եպիսկոպոս Կիպրոսի առ հայրն Հիլարիոն աղաչելով զնա և տեսելով. եկ զի տեսցուք զիրեարս յառաջ քան զելանելն 'ի մարմնոյս։ Եւ երթեալ անդ ուրախացեալ ընդ իրեարս. և մինչդեռ ճաշակէին, բերին հաւ 'ի սեղանն, և առեալ եպիսկոպոսին Եպիփանու ետ հօրն Հիլարիոնի։ Եւ ասէ ցնա ծերն. թողութիւն արա ինձ, զի յորմէհետէ առի ես զձևս զայս, ոչ ճաշակեցի զենեալ ինչ։ Ասէ ցնա Եպիփան. ես իբրև առի զձևս զայս, ոչ ետու ումեք թշնամութիւն ննջել, և ոչ ես ննջեցի թշնամութիւն ու-

զի պահք է. արդ զի ինձ պարտ է յուսն կալով ճաշակել վասն սորա յարութեան, թէպէտ և զայլ աւուրսն նստելով կերակրէի։

1 Ասէին՝ եթէ հայրն Պիմէն յորժամ հրաւիրեալ լինէր 'ի սեր, գնայր իբրև յակամայ առ եղբարսն. և գնայր վասն այնորիկ, զի մի տրտմեցուսցէ զեղբարսն։

2 Եղբայր ոմն էր 'ի սկետակս, որ պահեաց բովանդակ զշաբաթ զատկին. և իբրև ժողովեցան երեկոյին յեկեղեցին եղբարքն, փախեաւ նա 'ի նոցանէ, զի մի կերիցէ ինչ ընդ նոսա. և եկեալ 'ի խուց իւր եկեր փոքր ինչ ճակնդեղ անխարշ առանց հացի. քանզի անարժան զինքն համարէր երանելին միաբանել ընդ եղբարսն 'ի կերակուր և 'ի սանախմբել։

3 Պատուիրեաց սուրբն Եպիփանէ առ հայրն Իլարիոն և ասէ. եկ առ իս և տեսցուք զմիմեանս նախ քան զելանելն մեր աստի։ Եւ իբրև եկն առ նա, ուրախացան առ միմեանս։ Իսկ ճաշակելին նոցա զաւէր. և զի բերեալ եդն առաջի նոցա թռչուն ինչ, և առեալ զնա եպիսկոպոսն եդ առաջի հօրն Իլարիոնի։ Եւ նա ասէ. թողութիւն արա ինձ, հայր, զի յորմէհետէ զգեցայ զսքեմս զայս, ոչ ճաշակեցի զենեալ ինչ։ Ասէ ցնա եպիսկոպոսն. և ես յորմէհետէ եկեալ եմ յայսմ ա-

նելով ընդ ումեք։ Ասէ ցնա ծերն. Թողութիւն արա, զի քո վարքդ առաւելագոյն է քան զիմն։

ՍՆԵՐՒՆ երբեմն 'ի Սկիւթ բանջար և դդում, և եդին յեկեղեցւոջն, զի յորժամ ելցեն եղբարքն՝ առցեն մէն մի սակաւ 'ի խուղսն իւրեանց. և առ ծեր մի սակաւ մի բանջար և դդում և գնացեալ առ քաղցին հում եկեր զբանջարն և զդդումն 'ի Ճանապարհին։ Եւ դիպեալ նմա եղբայր մի ասէ. ուր է բանջարն քո։ Եւ նա ասէ. կերայ զայն։ Ասէ ցնա եղբայրն. ահա ես զիմն պահեմ։ Ասէ ցնա ծերն. դու ոչ ես քաղցեալ, եղբայր, յաղագս այնորիկ պահեցեր։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Սիսոյ և ասէ. զիա՞րդ վարեցայց 'ի խղճին իմում։ Ասէ ցնա ծերն. կեր սակաւ աղաջուր, և չեն ինչ պէտք քեզ եփել ինչ։

ՊԱՏՄԵԱՑ[1] ոմն 'ի հարանցն վասն հօրն Սիսոյ որ բնակեալ էր յեղէգանն, եթէ երբեմն կամեցաւ յաղթել քնոյ և կախեաց զինքն 'ի վախէ վիմին։ Եւ եկեալ հրեշտակն տեառն եբարձ զնա և ասէ. մի ևս զայդ առներ և մի այլոց ուսուցաներ այդպիսի ինչ։

ԵՂԲԱՅՐ[2] ոմն եհարց ցհայրն Աբրահամ և ասէ. եթէ դէպ լինիցի ինձ Ճաշակել, և դնէ ոք առաջի իմ սեղան և կերայց երիս պաքսամատս, շա՞տ արդեօք իցէ։ Եւ ասէ ծերն. զի՞նչ խօսիս, եղբայր, այդքան շա՞տ ուտես, եթէ ածիցես զմտաւ եթէ 'ի կա՞լ եկիր։

տիճան, ոչ զոք Թողի ննջել Թէ ունիցի խէթ ինչ 'ի մտի զինէն։ Ասէ ցնա ծերն. մեծ քան զիմս իցէ քաղաքավարութիւն քո։

[1] Պատմէին մեզ հարք ոմանք վասն հօրն Սիսոյի կալամոնացւոյ՝ եթէ կամէր երբեմն յաղթել քնոյ և կապեաց զինքն 'ի կանգուն 'ի պարիսպ վիմին։ Եւ եկեալ հրեշտակ տեառն եբարձ զնա և պատուիրեաց նմա և ասէ. մի երբէք իշխեսցես առնել զայդ և մի այլում ուսուցաներ զԹիւր գործդ զայդ։

[2] Եղբայր ոմն եհարց ցհայրն Զոյիլէ և ասէ, հայր եթէ գիպեսցիմ ուրեք և կերայց երիս հացս՝ շա՞տ իմն է։ Ասէ ցնա ծերն. միԹէ կա՞լ կամիս լինել զի ասացեր զայդ։ Այլ օրինակ յերկրորդ Թարգմանութեն վասն նորին հօրն Աբրահամու. Եղբայր ոմն եհարց ցհայրն Աբրահամ և ասէ ցնա. եթէ գիպեսցի ինձ յաւուրն երկրորդ անգամ Ճաշակել, զի՞նչ հրամայես ինձ առնել։ Ասէ ցնա ծերն. զի՞նչ ասես, եղբայր, այդչափ կերակրիլ. միԹէ կարծես եթէ կա՞լ եկեալ ես լինել և ոչ ծեր։

Եւ համաձայն նմին 'ի հին Թարգմանութէ. Եղբայր ոմն առաց ցաբբայ Աբրահամ՝ եթէ երկիցս ուտեմ յաւուր, հայր։ Եւ նա ասէ. կալծես զքեզ կա՞լ գոլ կամ շահեմարան և ոչ միայնակեաց զայդ առնելով, և ո՞չ ձնշես զմարմինդ։

ԱՍԷԻՆ՝ ոմանք ցհայրն Պիմէն վասն եղբօր ուրումն եթէ ոչ ըմպէ գինի։ Ասէ ցնոսա հայրն Պիմէն. գինի ամենեւին ոչ է միայնակեցաց։[1]

ԿՈՉԵՑԱՆ՝[2] եղբարքն 'ի Սկիւթ մաքրել ոստոյ. եւ էր մի ոմն 'ի նոցանէ հիւանդ 'ի կրօնաւորութենէ, եւ ընդ հազելն ձգէր խուխ եւ թքանէր, եւ ոչ կամօք նորա երթայր 'ի թքոյն 'ի վերայ եղբօրն։ Իսկ ասէին խորհուրդք եղբօրն՝ ասա ցեղբայրն զի դադարեսցէ 'ի թքանելոյ 'ի վերայ քո։ Իսկ նորա առեալ եւ կերեալ վաղվաղակի 'ի թքոյն յայնմանէ, յայնժամ ասացին խորհուրդքն՝ մի՛ ատեր եւ մի՛ ինչ ասեր ցնա։

ՔԱՂՑԵԱՒ՝[3] ոմն յեղբարց ընդ առաւօտս եւ պատերազմեցաւ ընդ խորհուրդսն մինչեւ ցերեք ժամն. եւ իբրեւ երեք ժամ եղեւ, բռնաբարեաց զինքն մինչեւ ցվեցերորդ ժամն. եւ իբրեւ եղեւ վեցերորդ ժամն՝ թրմեաց զհացն, եւ իբրեւ նստաւ յուտել՝ եւ դարձեալ յարուցեալ ասաց 'ի խորհուրդս իւր՝ անսացից մինչեւ յիններորդ ժամն. եւ իբրեւ եղեւ իններորդ ժամն, եւ կացեալ յաղօթս տեսս զազդեցութիւն իբրեւ զծուխ զի ելանէր 'ի հացէն փիւրտանէ, եւ դադարեաց քաղցն 'ի նմանէ։

ԱՍԱՑ՝[4] աբբայ Դանիէլ վասն աբբայ Արսենիոսի՝ եթէ յամենայն գիշեր կատարէր զհսկումնն. եւ յորժամ

[1] Ասացին ցհայրն Պիմէն՝ եթէ այս ոմն ծեր գինի ոչ ըմպէ։ Իսկ նա ասէ. գինին ոչ բնաւ պիտոյ է կրօնաւորին, զի պիղծ է առաջին ալ ամենայն հանդիսա մարմնոյ։

[2] Եղբայրք ոմն կոչեցան 'ի Սկիւթ ընտրել զարմաւենիս եւ կաղամել. եւ էր անդ հիւանդ ոմն ծեր, հազայր եւ թքանէր զխուխ 'ի վերայ նորա, եւ զի ակամայ անկանէր թուքն 'ի վերայ կոչեցեալ եղբօրն առ 'ի չգոյէ տեղւոյն։ Վշտանայր եղբայրն ընդ այն, զայրանայր եւ կամէր ընդ խորհուրդ իւր չյանդիմանել զհիւանդն զի դադարեսցէ 'ի թքանելոյ 'ի վերայ նորա։ Իւ ընդդէմ կացեալ խորհրդոյն իւրոյ, եւ մեկնեալ զձեռն իւր եւ առեալ զխուխ հիւանդին տարաւ 'ի բերանն եւ կամէր կլանել զնա, եւ ապա ասէ ցանձն իւր՝ մի՛ կերիցես եւ մի՛ յանդիմանեսցես։

[3] Եղբայր ոմն քաղցեաւ ընդ առաւօտն եւ պատերազմէր ընդ խորհուրդն չուտել մինչեւ յերրորդ ժամն. իբրեւ եղեւ ժամ երրորդ, նեղեաց զինքն կալ մինչեւ ցվեց ժամն. եւ ապա թացեալ պաքսիմատս եւ նստաւ յուտել, եւ ապա ասէ ցխորհուրդ իւր՝ կացից մինչեւ ցինն ժամն. եւ իբրեւ եղեւ ժամ, աղօթեաց զերեկոյին եւ նստաւ յուտել. եւ տեսեալ զօրութիւն ինչ գիւական իբրեւ զծուխ՝ ել 'ի ձեռագործէ իւրմէ եւ ցնդեցաւ յօդս, եւ այնպէս դադարեաց քաղց նորա։

[4] Ասէր հայրն Դանիէլ վասն հօրն Արսենիոսի՝ եթէ զգիշերն ողջոյն կայր յարթնութեան. եւ մինչ վշտանայր 'ի տքնութենէն, 'ի սաստիկ տկարութեան բնութեան յառաւօտուն ասէր ցքունն. եկ, չար ծառայ, եւ կա

խօսէին ընդ միմեանս վասն օգտի հոգւոց։ Եւ դարձեալ ասէ ցաշակերտսն իւր. արա մեզ սակաւ մի ոսպնաթան, որդեակ։ Եւ ասէ աշակերտն. յերեկեան պատրաստեցի, հայր։ Եւ յարեան ճաշակել։

Ասէ[1] ծերն. որկրամոլութիւն արմատ է պոռնկութեան. եւ որ ըմբռնէ զորովայն, կարող է ըմբռնել զպոռնկութիւն եւ զլեզուն։

Ասէ[2] ծերն. հարստութիւն հոգւոյ է ժուժկալութիւն. զայս ատացուք խոնարհութեամբ եւ փախիցուք յամբարտաւանութենէ, որ մայր է ամենայն չարեաց։

ՊԱՏՄԵՆ[3] վասն աբբայ Դէոսկորոս Նաքաստեայ՝ եթէ հաց նորա էր գարի եւ ոսպն, եւ յինքենէ եդեալ սկիզբն քաղաքավարութեան ասէ. ոչ պատահեմ ումեք ի ժամանակիս յայսմիկ եւ ոչ ուտեմ եփեալ ոչ պտուղ ոչ բանջար, եւ ոչ խօսիմ։ Զայս առնէր իւրովի, եւ կատարեաց զոր սկսաւ։

ԱՍԵՆ[4] վասն աբբայ Մարկոսի անապատաւորին՝ եթէ սա ինքն նստէր մերձ ի վանսն Պենթուկլայ։ Յետ վաթսուն եւ երեք ամաց ունէր զգործս զայս. զամենայն շաբաթն պահէր, մինչեւ կարծել ումանց թէ անմարմին է. գործէր զցայգ եւ զցերեկ եւ տայր զայն աղքատաց, եւ յումեքէ ինչ ոչ առ։ Լուան վն նորա քրիստոսասէրք, եկին եւ տային նմա սէր, եւ նա ասէր. ոչ առից, զի ձեռագործն իմ կերակրէ զիս եւ զպանդխտսն որ վասն այ առ իս գան։

սէին ընդ միմեանս վասն հոգւոր կենացն։ Եւ դարձեալ ասէ ծերն ցաշակերտս իւր. պատրաստեա մեզ ոսպնաթան։ Եւ ասէ. պատրաստեալ է իմ յերեկուընէ, հայր։ Եւ այնուհետեւ ճաշակեցին։

[1] Ասաց ծերն. որկրամոլութիւն մայր իցէ պոռնկութեան. եւ որ ոք կարող իցէ ըմբռնել զորովայն, նա եւ զլեզու կալնուլ կարող է։

[2] Ասաց ծերն. պահք իցէ հարստութիւն հոգւոյ. ստացուք զայս խոնարհեալ մտօք եւ փախիցուք յամբարտաւանութենէ, որ է մայր ամենայն չարեաց։

[3] Պատմեցին մեզ վասն հօրն Դիոսկորոսեայ, որ էր [illegible], եթէ հացն էր նորա ոսպնէ եւ գարւոյ, եւ զի խոստացեալ էր ամի սկսանէր յայլ եւ այլ քաղաքավարութիւնս։ Զի ի միում ամի բնաւ ոչ խօսէր ընդ ումեք, եւ ի յայլում ամի եփեցեալ ոչ ճաշակէր բնաւ, եւ երբեմն միւս կամ բանջար ոչ կերակրէր։ Եւ զոր սկսանէր կատարէր զամն ողջոյն։

[4] Ասէին եւ վասն հօրն Մակարիոսի անապատականի՝ եթէ վաթսուն ամ այսպէս մնէր, պահէր շաբաթս ողջոյն, եւ ի կերակրոյ ճաշակէր սակաւ, մինչեւ բազմաց կարծեցաւ եթէ անմարմին իցէ, եւ գործէր ըզցայգ եւ զցերեկ եւ տայր զայն աղքատաց, եւ ոչ երբէք յումեքէ առնոյր եւ ոչ փոքր ինչ։ Լուեալ զայս քրիստոսասէր ոմն աշխարհիկ մարդ եւ գնաց առ նա տալ նմա սէր. իսկ նա ոչ եառ, այլ ասաց ցնա. ձեռագործ իմ բաւական են ինձ ի պէտս եւ նոցին եւս որոց գալոցեն առ իս։

գնացեալ իմ ծեր ոմն վասն օգտի, և 'ի բանից կարգի յիշեաց վարդապետն իմ և ասաց՝ եթէ յոչ ինչ այնպէս բարկանայ Ած որպէս թէ ոք ծածկէ ինչ 'ի հօգևոր հօրէ իւրմէ: Եւ իբրև լուայ ես, խոստովանեցայ և հանի զհացն 'ի ծոցոյ իմմէ և անկայ յառաջ նորա և խոստովանեցայ լալով, և ծերն իմ յարոյց զիս և ասէ. Որդի Ած ազատեսցէ զքեզ 'ի ծառայութենէ այտի: Եւ ճչեալ դիւլն ել 'ի ծոցոյ իմմէ իբրև զծուխ, և լցաւ տունն ծխով և հոտով ծծմբոյ: Եւ ասէ ցիս վարդապետն իմ. ահա ետ քեզ Ածն իմ զազատութիւն իւր, զի ունկնդիր եղեր բանից իմոց:

ՀԱՐՑԱՒ՝ ծերն Օղիլէ. եթէ երբեմն բաժակս գինւոյ ըմպիցեմ, շնան է, հայր: Եւ նա ասէ. եթէ զեւք չեն կենդանի, չեն շատ:

ՍՐԱՅ հայրն Սիսոյ՝ թէ արք երկոտասան գնային 'ի միասին և առաջնորդն մոլորեցաւ, և գիտացին ամենքեան, և պահելով զպահման լռութեն ոչ ոք խօսեցաւ. և գնացին այնպէս մոլոր զերկոտասան միլ և պահեցին զլռութիւն:

խորհրդածին այ, զի եկն ոմն եղբայր վասն օգտի առ ծերն, և եհարց ցծերն վասն խորհրդոց իւրոց. իսկ ծերն պատասխանի ետ նմա և ասէ՝ եթէ ոչ այլ ինչ այնպէս ձեռնտուեսցէ կրօնաւորի և ուրախացուսցէ զդևսն իբրև զծածկել խորհրդոցն 'ի հոգևոր հօրէն: Ցորոյ վերայ յաւելան բանք վասն պահոց և վասն այլոց առաքինութեանց: Զայսոսիկ իբրև ասէր հայրն Թէոփիլոս, ես խորհէի 'ի միտս եթէ Ած իմացոյց ծերոյն զգործս իմ. և առժամայն սկսայ լալ դառնապէս, և հանեալ զպաքսիմատն 'ի ծոցոյ իմմէ եդի առաջի նորա և խնդրէի զթողութիւն անցելոց զայթակղմանցն, և զզգուշութիւն առաջի կայի, և նորա աղօթքն եղեն յօգնականութիւն ինձ: Ասէ ցիս ծերն. ազատեսցէ զքեզ Քս 'ի ծառայութենէ քումմէ. և զի թէպէտ ես լռեցի այսքան ժամանակս, այլ 'ի ձեռն խոստովանութեն քո՝ որ խօսեցին զքեզ զեն՝ յանդիմանեցաւ ուժգին և խոցոտեցաւ, զի նա տիրեալ էր քեզ լռութեամբ իմով, որ ոչ յանդիմանեցի զքեզ և ոչ հակառակեցաւ որդեկի: Եւ արդ գիտասցես, որդեակ, զի ոչ գտանէ յայսմհետէ տեղի 'ի քեզ թշնամին, քանզի զծածկեալն 'ի սրտի քո զախտն յայտնի երևեցուցեր: Դեռ ոչ ևս էր կատարեալ զբանն իւր ծերն՝ մինչ տեսեալ եղև յայտնեցաւ զի իբրև զծուխ հնոցի ել 'ի ծոցոյ իմոյ վարդապետին և ուռուցին այն չարին, և լցան ամենայն տունն 'ի գարշան հոտոյն յայնմանէ՝ մինչև կարծեցին մարդիկ եթէ բազում ծծումբ այրեսցի, և ցնդեցաւ յօդս: Յայնժամ ասաց ծերն. ահա որդեակ զազատութիւն ետ քեզ Ած առ 'ի հաստատել զբանս իմ, որդեակ, և 'ի չար գիւտից ազատեսցէ զքեզ:

: Եւ այլ ոմն եհարց. եթէ արբից բաժակս երկու գինի՝ միթէ աւելորդ իցէ, հայր: Ասէ ցնա ծերն. միթէ ոչ կենդանիք են գեղ, զի ոչ են շատ մեղք. ապա եթէ իցեն կենդանիք, շատ իսկ է. քանզի և զինի ըմպաւղին աստ է 'ի կրօնաւորէ եթէ կամիցի փրկել զանձն իւր:

ՈՐՍԱՑ[1] ծեր ոմն, եթէ այս է առանձին ուսումն՝ թէ որ ունիցի ձորձ, տացէ և գնեսցէ սուսեր․ որ թէ ոք հանգիստ ունիցի, և խնդրեսցէ նեղութիւն։ Իսկ թէ Դաւիթ ոչ առնոյր զերախոյն և զփողից առիւծուց, ոչ կարէր հեղձուցանել․ նոյնպէս թէ ոչ բանեսցէ ոք զպղեղուխուր և զորկոր, ոչ կարէ յաղթել այնմ որ իբրև զառիւծ գոչէ։

ՀԱՅՐՆ[2] Սիլուան գնայր աշակերտաւն միով, և հանդիպեցաւ եղբարց՝ կերան, և մինչև գնային՝ ծարաւեցան ջրոյ և կամեցաւ աշակերտն ըմպել։ Իսկ ասէ Սիլուան․ ո՞չ պահք է օրս։ Իսկ նա ասէ․ և ո՞չ լուծաք ուտելովն։ Իսկ նա ասէ․ ոչ՝ զի ոչ կերաք, այլ սէր կատարեցաք։

ԲԵՐԱՒ[3] գինի 'ի Սկիւթ, և հաւաքեցան եղբարքն զի առցեն իւրաքանչիւր ոք սակաւ․ և իբրև եկեալ զոյն եղբայր մի, փախեաւ 'ի տեղւոյն, և փլաւ կամարն յարոյ վերայ եւ, և ջախջախեաց զնա․ զոր տեսեալ եպերեցին այլքն։ Իսկ առաջնորդն նոցա առեալ զնա 'ի գիրկս, գոմէր զնա և ասէր․ կենդանի է տէր, ոչ շինեցից զանղիս, զի գիտասցէ ամենայն երկիր եթէ վասն պահելոյն 'ի գինւոյ զանձն՝ փլաւ սա։

[1] Ասաց հայրն Յովսէփ, եթէ ասէր հայրն Պիմէն՝ եթէ այս է բանն աւետարանին զի ասէ, որ ոչ ունիցի սուր, վաճառեսցէ զձորձս իւր և գնեսցէ իւր սուսեր։ Այսինքն է որ ոք ունիցի հանգիստ մարմնոյ, թողցէ զնոսա և մտցէ ընդ անձուկ ճանապարհն կենաց և գնայ ընդ նա։ Դարձեալ ասէ․ Դաւիթ մինչ վանէր ընդ առիւծունս, զխեղդդեցն կալեալ խեղդէր զնոսա․ այսպէս և մեք եթէ կալցուք զխոկորդ և զորովայնս մեր, յաղթեմք աներևոյթ առիւծուն պահօք։

[2] Գնաց երբեմն հայրն Սիլուանէ և աշակերտ իւր Զաքարիա 'ի վանս ինչ, և արարին նոցա կերակուր, և կերան և գնացին զի յայգ էր գնացեալ օրն, և 'ի ճանապարհին գտին ջուր ինչ և կամէր ըմպել աշակերտն նորա։ Ասէ ցնա ծերն․ մի՛ արդեօք պահք է օրս։ Իսկ նա ասէ․ և մի՛ կերեալ իցէ մեր այսօր։ Ասէ ցնա ծերն․ այն կերակուր, որդեակ, սէր էր և 'ի հարկէ, այլ մեզ պարտ է զի կալցուք զկարգս պահոց մերոց։

[3] Բերին երբեմն գինի 'ի սեննական առաջնորդութեանս, զի բաժանեսցեն եղբարցն զի արբցեն․ և իբրև նոսան ըմպել, եկ եղբայր մի 'ի վերայ կամարացն զի փախիցէ 'ի գինւոյն․ և իբրև գնայր, անկաւ կամարն այն և կործանեցաւ։ Եւ իբրև լուան զձայն անկելոյ հիմանն՝ գնացին եղբարքն և գտին զկամարն քակեալ, և զեղբայրն զի անկեալ դնէր խորտակեալ, և սկսան եղբարքն նախատել զնա և ասել․ յիրաւի զիջեցաւ քեզ այդ, սնապարծութեան գոլ։ Իսկ հայր վանիցն ընկալաւ զնա և գգուէր գոմէլով և ասէր․ թող տուք եղբօր իմոյ, զի բարի գործ գործեաց․ կենդանի է տէր զի ոչ շինեցից զկամարդ զայդ յաւուրս իմ, որպէս զի ծանիցէ ամենայն երկիր եթէ վասն միոյ բաժակի գինւոյ անկաւ կամարն 'ի Սկիւթ։

Մ`ԻԱՅՆԱԿԵԱՑ՝ մի իջանէր 'ի լեռնէն և ետես հաւատաւոր մի և փախեաց զուղին։ Իսկ նա ասէ. եթէ լեալ էր քո կատարեալ կրօնաւոր, ոչ էիր մտածեալ եթէ կին զոք տեսեր։

Ա`ՍԱՑ՝ ծերն. յամեցուցանել արժան է զխորհուրդս որկորոյ, և յորժամ ուտէ՝ մեղմութեամբ և մի անյագաբար։

Հ`ԻՒԱՆԴԱՑԱՒ՝ ոմն 'ի ծերոց հիւանդութիւն մեծ, մինչև 'ի փորոյն արտաքս արիւն գալ յոլով։ Պէտք եղև եղբօր ուրումն զի եգիտ մրգ ինչ չոր, և վասն հիւանդութեան նորա արարեալ խիւս՝ արկ սակաւ մի և մեղր և եբեր ծերոյն և աղաչեաց զի ճաշակեսցէ. ասէ՝ առ կեր, հայր, վասն սիրոյ, զի օգուտ է քեզ։ Իսկ աչուցեալ ծերոյն 'ի բազում ժամս՝ ասէ. յո՞ր գիրս գտեր զայդ բանս. Ճշմարիտ ասեմ՝ կամք են ինձ թէ թողցես զիս ամ 'ի հիւանդութեանս յայսմ այլ ևս երեսուն ամ։ Իսկ ոչ ընկալաւ ծերն 'ի խիւսոյն յայնպիսի հիւանդութեանն։

Լ`ՍԵՐ՝ ծեր ոմն 'ի հեռաւոր անապատի. դէպ եղև եղբօր ումեմն երթալ առ նա, և գտեալ զնա հիւանդ և առեալ եղբօրն լուաց զնա, և բերեալ յանդաստանէն արար նմա փոքր մի ջերմ և եբեր առ նա զի կերիցէ։ Պատասխանի տուեալ ծերոյն ասէ. արդարեւ,

1 Եղբայր ոմն դիպեցաւ 'ի ճանապարհի կնոջ կրօնաւորի ումեմն և 'ի բաց եւլ 'ի ճանապարհէն։ Ասէ ցնա քոյրն. եթէ էիր դու կատարեալ կրօնաւոր, ոչ դիտեալ էիր զմեզ եթէ կանայս։ Եւ ասէ եղբայրն. Ճշմարիտ այդ. այդպէս իցէ։

2 Ասաց ծերն. զորկորամոլութեան գեն յապաղելու և ասա ցնա. մնասցես և մի երկիցես, զի ոչ քաղցեացիս. և որչափ նա փութայցուսցէ, դու առաւել յամեցուսցես. և յորժամ ճաշակես, մեղմ կերիցես. քանզի զամանս այնչափ ներելն՝ մինչ զի փութան զանգան և զանօթս որ 'ի նմա և զաղէտան 'ի մի պատառ կլանել։

3 Ծեր ոմն վտանգեցաւ 'ի մեծամեծ ախտս՝ մինչ զի արիւն փախէր և հեղէր 'ի խոնարհ. իսկ այլում եղբօր բերելն սակաւ հունքն, և նա եփեալ զհունկն 'ի հացի խառնելով և տարաւ զնա ծերոյն և աղաչէր զնա և ասէր. Ճաշակեա զայս, հայր, գուցէ սփոփեսցես և շահ արասցէ տկարութեան քո։ Նայեցաւ ընդ նա բազում ժամս ծերն և ասէ ցնա. կամիմ զի թողցէ զիս ամ 'ի տկարութեանս յայս այլ ևս երեսուն ամ։ Եւ ոչ կամեցաւ առնուլ 'ի կերակրոյն յայնմանէ. այլ և յանձն առ այնչափ տկարութեն քան թէ ճաշակել զայն. և առեալ գնաց որ եբերն զկերակուրն։

4 Այլ ոմն ծեր բնակէր յանապատ հեռաւորոյն. և գնաց առ նա եղբայր ոմն և եգիտ զնա 'ի տկարութեան մեծ, և առեալ ջուր լուաց զնա, և 'ի պիտոյիցն զոր ունէր՝ եբեր ընդ ինքն և արար կերակուր և եբեր առ ծերն։ Եւ առեալ եկեր և օրհնեաց զնա և ասէ. ոչ գիտէի բնաւ

եղբայր, մոռացեալ էր իմ եթէ ունիցին մարդիկ այդպիսի հանգիստ։ Այլ բերէր նմա ըմպելեաւ միով գինի։ Այլ տեսեալ զայն ծերոյն ելաց և ասէ. ոչ ունէի ակն մինչև 'ի մահ իմ ճաշակել գինի։

ԱՍԷՐ աբբայ Սղիգիտոս ցաշակերտս իւր. որդեակ, սովորեցո ըստ փոքու փոքու նեղել զորովայն քո պահօք. զի որպէս տիկ ձկտեալ անօսրագոյն լինի, նոյնպէս և որովայն ընդունելով զբազում կերակուրս. ապա եթէ սակաւ ընդունիցի, գայ 'ի նեղութիւն և սակաւ խնդրէ։

ՔԱՐՈԶԵՑԱՒ երբեմն 'ի Սկիւթ քառասնականաց պահոցն, և եկեալ ոմն ծերոյ մեծի ասէ. աբբայ, պահք եկին։ Ասէ ծերն. ո՞ր պահք։ Եղբայրն ասէ. քառասնակատարմանն, հայր։ Յայնժամ պատասխանի ետ ծերն. արդարև, որդեակ, ահաւասիկ յիսուն և երեք ամ է որ ոչ գիտեմ երբ մտանեն և կամ երբ ելանեն, այլ ամենայն ժամանակք իմ պահք են։

ԿՐՕՆԱՒՈՐԵՑԱՒ[1] ոմն ծեր ոչ ըմպել ջուր զքառասուն օր. և եթէ լինէր երբեք տօթ, լուանայր զպնակն և լնոյր ջրով և դնէր առաջի իւր ընդդէմ. և հարցեալ լինէր յեղբարց թէ ընդէ՞ր առնես զայդ, պատասխանի տուեալ ծերոյն և ասէ. զի առաւել աշխատեցայց 'ի ծարաւոյն և առաւել վարձս առից յԱյ։

ԱՍԷԻՆ[2] վասն հօրն Մակարայ եգիպտացւոյ. եթէ դէպ լինէր նմա ընդ եղբարս ճաշակել, սահմանն դնէր անձին իւրում՝ զի թէ գտցի անդ գինի և արբցէ ընդ եղբարսն, փոխանակ ընդ միոյ ապակւոյ զօր մի ջուր ոչ ըմպէր։ Իսկ եղբարքն վասն հանգստեան նորա տային

եթէ իցէ այսպիսի հանգիստ 'ի մարդիկ։ Եւ տուեալ բաժակ մը գինեաւ մատոյց նմա. իսկ ծերն սկսաւ լալ և ասէր. ոչ կարծէի տեսանել գինի 'ի կեանս իմ։ Եւ սակաւ մի ճաշակեաց գազարեաց, և լայր խորև օրինազանց. բայց օրհնեաց զեղբայրն, զի վասն՝ սիրոյ ինչ արար նմա զհանգիստ զայն։

[1] Կամեցաւ ծեր ոմն ճգնել և ոչ ըմպել ջուր զաւուրս քառասուն. և յորժամ լինէր տօթ ուժգին, լուանայր ծերն զպնակ իւր և լնոյր զնա ջրով և դնէր առաջի իւր։ Եւ հարցեալ եղև յեղբօրէն եթէ ընդէր առնես զայդ, հայր. իսկ նա պատասխանի ետ և ասէ. որպէս զի առաւել երկնեսցի ծարաւ իմ և առաւել վարձս առից յԱյ։ Այսպիսիք էին և այլ ամենայն ժուժկալութիւնք երանելի ծերոյն այն։

[2] Ասէին վասն հօրն Մակարայ՝ եթէ յորժամ պարապէր ընդ գնայր 'ի սէր եղբարցն, դնէր սահման անձին և ասէր. եթէ տան եղբարքն գինի քեզ, արբ զայն սակս սիրոյ նոցա. բայց ընդ բաժակս գինւոյ արբցես, այնչափ աւուրս ջուր մի արբցես 'ի սենեկի քո։ Եղբք որ մի

նմա գինի. իսկ ծերն խնդութեամբ ընդունէր, զի յետոյ
տանջեսցէ զինքն: Իսկ աշակերտն վասն զի գիտէր եթէ
վնասեն նմա՝ ասէ. վասն ա͞յ՝ մի տայք դմա գինի, ապա
թէ ոչ՝ 'ի խղճին տանջէ զինքն: Իսկ գիտացեալ եղբարցն
զիրսն, ոչ տային նմա գինի:

Առ՝ ծերոյ ումեմն մեծի բնակեալ էր եղբայր ոմն
պղերգագոյն. և տեսանելով զծերն 'ի շաբաթն մի ան-
գամ ուտելով, 'ի միում աւուր ասէ ցնա. աբբայ, ա-
սեն ոմանք եթէ առաւել ժուժկալութիւն ածէ զմարդ
յամբարտաւանութիւն: Ասէ ցնա ծերն. որդեակ, ապա
եթէ պղերգութիւն գայ խոնարհութիւն, երթիցուք առ
կանայս, կերիցուք և արբցուք. վայ մեզ, որդեակ, զխորհ-
կատակիմք և ոչ գիտեմք. ոչ լսեմք Դաւթայ ասելոյն
առ ա͞ծ՝ տես զխոնարհութիւն իմ և զվաստակ իմ, և
թող ինձ զամենայն մեղս իմ: Ասաց դարձեալ՝ թէ որ
մեղուցեալն է ա͞յ, պարտ է որոշել զանձն յամենայն սի-
րոյ մարդկան մինչև հաւանեսցի թէ եղև ա͞ծ բարեկամ
նորա. քանզի սէր մարդկան բազում անգամ որոշէն ըզ-
մեզ 'ի սիրոյն ա͞յ:

զի էր ընդ եղբարսն, և՛ վասն հանգուցանելոյ զծերն տային նմա եղ-
բարքն գինի. իսկ ծերն խնդութեամբ ընդունէր, իբրև զի տանջեսցէ զանձն
իւր: Եւ աշակերտն նորա աղաչէր զեղբարսն և ասէր. մի տայք գինի
ծերոյն, ապա թէ ոչ՝ 'ի սենեկին տանջեսցէ զանձն իւր չարաչար:
Իբրև ծանեան զայս եղբարքն, այլ ոչ ևս մատուցին նմա գինի.

: Առ միոյ մեծի ծերոյ բնակէր եղբայր մի հեղգ, և տեսանէր զծերն
զի հոգայր զնա: Ասէ ցծերն աշակերտն այն հեղգ. լուեալ իցեմ յի-
մաստնոց, հայր, եթէ խիստ ճգնութիւն 'ի ներքս ածէ զհպարտութիւն:
Ասէ ցնա ծերն. զիւրին է այնորիկ դեղն, որդեակ. զի թէ հեղգու-
թեամբ գայ խոնարհութիւն, գնասցուք ապա ես և դու արասցուք կա-
նայս, կերիցուք և արբցուք, որպէս զի խոնարհ լիցուք. ապա վայ ինձ,
որդեակ, թէ որպէս այպանեն զմեզ դևք և ոչ կարեմք զգալ. ոչ լսես
զինչ ասէ Դաւիթ. տես զխոնարհութիւն իմ և զվաստակ իմ, և թող
ինձ, ասէ, զամենայն մեղս իմ: Ստուգիւ գիտասցես, որդեակ, մարդ որ
մեղիցէ ա͞յ և ապաշխարել կամիցի՝ պարտ է զի հեռասցի յամենայն սի-
րոյ մարդկային և յամենայն երկրաւոր գործոց, մինչև ստուգեսցէ ե-
թէ հաշտեցոյց զա͞ծ. քանզի մարդկային սէր հեռացուցանէ զմեզ 'ի
սիրոյն ա͞յ: Վասն զի պատասխանի տալոց իցէ կրօնաւոր վասն սիրոյն
զոր ընդունի 'ի մարդկանէ:

# ՄՆԱՑՈՐԴՔ

## յերկրորդ թարգմանութենէ

---

Ասէր հայրն Դանիէլ վասն հօրն Արսենիոսի՝ ե-թէ այսքան ժամանակս եկաց ընդ մեզ, և մեք մի քուրձ ալիւր տանէաք նմա յամին. և մինչ գնայաք առ նա, 'ի նմանէ կերակրէաք, և նմա բաւական լինէր։

Դարձեալ ասէին վասն նորա՝ եթէ յորժամ լսէր եթէ բարձաւ և հասաւ ամենայն ազգ մրգաց, ասէր եթէ յամենայն մրգաց բերէք ինձ. և տեսեալ զհամ ամենեցուն սակաւիկ մի միանգամ 'ի տարւոջն և գո-հանայր զտուողէն ամենայն բարեաց։

Հայրն Աղաթոն և աշակերտք իւր երթային 'ի ճա-նապարհի, և մի ոմն 'ի նոցանէ եգիտ ոլոռն դալար փոք-րիկ 'ի վերայ ճանապարհի ուղւոյն և ասէր ցծերն. հայր, եթէ կամիս հրամայեա ինձ զի առից զսա։ Իսկ նայե-ցեալ 'ի նա ծերն զարմացմամբ ասէ ցնա. դու եդեր զդա այդր։ Իսկ եղբայրն ասէ՝ ոչ, հայր։ Իսկ ծերն ասէ. և ո՞րպէս կամիս առնուլ զոչ եդեալն քո։

Ասէին և վասն նորա և վասն հօրն Ամոյէսի՝ եթէ մինչ վաճառէին զձեռագործս իւրեանց՝ մի անգամ ա-սէին զգինն, և զոր ինչ տայր ոք՝ լռութեամբ առնուին զայն յինքեանս. նոյնպէս և զոր ինչ գնէին, որքան և ասէին տեարքն նոցա՝ զայն լռութեամբ տային և ոչ ինչ բնաւ խօ-սէին ընդդէմ։

Ասաց հայրն Անուբ. յորմէհետէ կոչեցեալ է ա-նունն Քրիստոսի 'ի վերայ իմ, ոչ ել բան սուտ երբեք 'ի բերանոյ իմոյ։

Ասաց հայրն Անիխամին քահանայ սկեւտացւոյն՝ եթէ գնացաք երբեմն 'ի Սկիւտէ առ ծեր ոմն և կամեցաք ա-նուլ փոքր ինչ ձէթ 'ի նմանէ. և իբրև խնդրեցաք, ա-

սէ ցմեզ. տեսէք ուր կայ ամանն ձիթոյն զոր բերիք ինձ յառաջ քան զերիս ամս, և զի որպէս եդիք՝ այնպէս կայ: Իսկ մեր տեսեալ զարմացաք ընդ քաղաքավարութիւն ծերոյն:

ԱՍԵՆ վասն հօրն Օխնամի՝ եթէ շրջէր նա երբեմն 'ի Պաղեստինի և վաստակեալ նստաւ ընդ թզենեաւ զի կերիցէ հաց: Եւ ասէ ցնա խորհուրդ իւր. առեալ առաջի թուզ կերիցես: Եւ պատասխանի տուեալ ասէ. ապա և զինչ արարից զի գողք 'ի տանջանս մատնեն, և դու փորձեսցես առաջի զքեզ եթէ կարող ես ժուժկալել տանջանացն: Եւ յարեաւ փութանակի և եկաց առաջի տօթոյն արևու իբրև հինգ աւուրս, և կիզեաց շուրջ զամոր մարմին նորա: Եւ ասէր ցանձն իւր. եթէ ոչ կարես համբերել հրոյ և տանջանաց, և եթէ տանջանաց ոչ ժուժեսցես, մի երբէք գողացեալ կերիցես:

ԱՍԱՑ հայրն Եսայիա. սիրեսցես դու զլռութիւն առաւել քան զխօսել. զի լռութիւն ժողովէ զմիտս, իսկ խօսելն ցրուէ և կորուսանէ:

ԱՍԱՑ հայրն Թէոդորէ. մի՛ նստիցիս կամ ննջեսցես 'ի տեղւոջ ուր իցէ կին և կամ մանուկ, քանզի պակասութիւն հացի ցամաքեցուցանէ զմարմին և տքնութիւն սպառէ զախտսն:

ԱՍԱՑ Յովհաննէս կարճահասակն՝ եթէ ելանէի երբեմն 'ի ճանապարհին Սկիտոյ յարմաւենիսն զոր գործեալ էր իմ, և տեսի զպապանաւոր ուղտուց զի խորհէր ոչ բարւոք և շարժէր 'ի սրտմտութիւն զիս. իսկ ես թողի զանօթս իմ և փախեայ 'ի նմանէ:

ՊԻԱՐՁԵԱԼ ասաց՝ եթէ հաց և աղ միայն ճաշակէին հարքն 'ի Սկիտէ և ասէին՝ եթէ և այս շատ ես է մեզ. և տեսէք թէ որչափ զօրաւորք էին 'ի գործսն այ:

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց զհայրն Իսիդորէ և ասէ ցնա. ընդէ՞ր այնպէս երկնչին դևքն յոյժ 'ի հեզոց: Ասէ ցնա ծերն. ես յորմէհետէ եղէ կրօնաւոր, աշխատեցայ վասն սորա, զի մի թողից զսրտմտութիւն իմ ելանել ընդ կոկորդ իմ:

ԱՍԵՆ վասն հօրն Իսիդորէ քահանային՝ եթէ եկն առ նա եղբայր ոմն և հրաւիրեաց զնա 'ի սէր. իսկ ծերն ոչ կամեցաւ գնալ, այլ ասէ ցնա. Ադամ 'ի կերակրոյն յաղթեցաւ և անկաւ 'ի դրախտէն: Ասէ ցնա եղբայրն.

և զու ես երկնչիս 'ի կերակրոց, հայր, և ելանել 'ի խցէ։ Ասէ ցնա ծերն. և ընդէ՞ր ոչ երկնչիցեմ, որդեակ, մի՞թէ ո՞չ որպէս զառիւծ մռնչելով շրջի զհետ և խնդրէ եթէ զո՛ կլանիցէ և կորուսցէ։ Նազուամ անդամ ասէր նա. եթէ ոք տայ զանձն 'ի կոչմունս և յարբմունս գինւոյ, ոչ կարէ զերծանիլ 'ի պատրանաց խորհրդոց ցանկութեանց. զի և Ղովտ յորժամ հարկեալ եղև 'ի դստերացն և արբեցաւ գինւով, դիւրաբար ձգեաց զնա զհետ յարբեցութէ յանօրէն շնութիւնն այն։

ԱՍԱՑ հայրն Իսահակ. տեսի զեղբայր մին զի հնձէր զորայ, և կամեցաւ ուտել հասկ մի յորայէն, և ասէ ցտէր որային. կամիս զի կերայց 'ի սմանէ հասկ մի։ Իսկ նա իբրև լուաւ՝ զարմացաւ և ասէ. քո է որայդ, ընդէ՞ր հարցանես զիս։ Ո՛ ի մինչև ցայս վայր ճգնէր 'ի հնազանդութիւն երանելին այն։

ԱՍԷԻՆ վասն հօրն Իսահակայ՝ եթէ զմոխիր հրոյ բուրվառին որով խնկէին եղբարքն՝ խառնէր ընդ հաց և այնու ճաշակէր, և այն էր միշտ կերակուր նորա։

ՏԿԱՐԱՑԱՒ երբեմն հայրն Իսահակ տկարութի՛ մեծ և յամեաց 'ի նմա ժամս բազումս. և արար եղբայրն նմա փոքր ինչ կերակուր, և նա ոչ կամեցաւ ճաշակել։ Այլ ասէ եղբայրն. առցես փոքր ինչ 'ի սմանէ սակս տկարութե՛ քո։ Իսկ ծերն ասէ. թո՛յլ տուր ինձ, եղբայր, քանզի կամիմ զի կացից 'ի տկարութիս յայս այլ ես երեսուն ամ։

ԳՆԱՑ երբեմն ծեր մին առ այլ ծեր և ասէ ցնա. եկ երթիցուք և տեսցուք զհայրն Յովսէփ, և ասա ցաշակերտն քո պատրաստել մեզ յաւանակ։ Իսկ նա ասէ. դու ասասցես, հայր, և առնէ զկամս քո։ Ասէ ծերն. զի՞նչ է անուն նորա։ Իսկ աշակերտին ծերն ասէ. ճշմարտութի՛ ասեմ քեզ, զի ոչ գիտեմ զինչ է անուն նորա։ Ասէ ցնա ծերն. քանի՞ ամ է կալոյ նորա առ քեզ։ Ասէ ծերն. երեք ամք են։ Իսկ միւսն ասէ. եթէ դու զերիս ամս ոչ գիտացեր զանուն աշակերտին քո, ապա ո՞րչափ ես անպատշաճ իցէ ինձ յաւուր միոջ ուսանել զանուն նորա։

ՊԱՏՄԵԱՑ մեզ հայրն Կասիանէ՝ եթէ եկն երբեմն հայրն Յոհաննէս առաջնորդ մեծի վանացն հօրն Պասիոսի, և բնակէր ինքն 'ի ներքին անապատն զքառա-

տուն տմ. և ունէր նա սէր մեծ և 'ի սիրոյ անտի համարձակութիւն մեծ ։ Ասէ ցնա. այսքանի ամք են զի հեռացար 'ի մարդկանէ և 'ի մարդաբնակ տեղւոջէ, և ոչ երբէք 'ի մարդկանէ տրտմեցար, և արդ յայնքան ժամանակս զինչ ուղղեցեր ։ Ասէ ցնա ծերն. յորմէհետէ եղէ կրօնաւոր, ոչ ետես արեգակն զկերակրին իմ և ոչ գիշեր 'ի սրտմտութիւն զմիտս իմ ։

ԾԵՐ ոմն նստէր 'ի հասարակաց վանս սուրբ հօրն Թէոդոսի արքիմանդրիտին, որոյ անունն էր Կոնոն. և զայս ինչ ունէր Կոնոն, զի զամեն երեսուն և հինգ ամ անգամ առնոյր կերակուր 'ի շաբաթօջն հաց միայն և ջուր, և միշտ աշխատէր և յեկեղեցւոյն ոչ ելանէր բնաւ ։

ՀԱՅՐՆ Պունկինոս անդամալուծեցաւ 'ի բազում ցաւոց, և ասէր ցանձն իւր. չարչարեցիր և մեռցիս. և եթէ դու 'ի տարաժամու խնդրեսցես կերակուր, ես և ոչ 'ի դէպ ժամու տաց քեզ զկերակուր քո ։

ԱՍԱՑ հայրն Մակար. եթէ կամիցիս տեսանել զծերս ոմն և նա իցէ խելացնորեալ, մի 'ի սրտմտութիւն շարժեսցիս և զկամս քո կատարեսցես յանդիմանել զնա, զի ոչ է պարտ զայլս կեցուցանել և զանձն կորուսանել ։

ԵՒ երբեմն հայրն Մակար քաղաքացի 'ի լեառն Կափատքայոյ, և այլ եղբարք ընդ նմա ։ Իսկ յառաջնումն աւուր ասեն ցնա եղբարքն. հայր, եկ առ մեզ ճաշակեա ։ Եւ նա նստեալ ընդ նոսա եկեր հաց ։ Իսկ յերկրորդումն աւուր դարձեալ հրաւիրէին զծերն ճաշակել ընդ նոսա, և ոչ լուաւ նոցա, այլ ասէ. դուք կերիջիք, որդեակ՝ զի նորեկք էք, այլ մեզ անպատշաճ է տարաժամ ճաշակել՝ քանզի ծեր եմք ։

ԱՍԷՐ մեզ հայրն Սինոա՝ եթէ նստէի երբեմն 'ի սենեկի իմում, և եկն առ իս եղբայր ոմն օտար և աղաչեաց զիս տանել զնա առ հայրն Մակար, և ես յարուցեալ տարայ զնա առ ծերն ։ Եւ իբրև անցաց աղօթս 'ի վերայ մեր՝ նստաք ։ Ասէ եկեալ եղբայրն ցծերն. հայր, ունիմ ես երեսուն ամ յորմէհետէ ոչ ճաշակեալ եմ միս ։ Ասէ ցնա ծերն. այլ և զայս հաւատացո ինձ, որդեակ, և իրաւունս ցուցցես եթէ քանի աւուրս ունիս յորմէհետէ ոչ դատեցեր զեղբայր քո և ոչ բամբասեցեր կամ չարախօսեցեր 'ի մտի և կամ բան դատարկ ոչ ել 'ի բերանոյ քումմէ ։ Յայնժամ անկեալ առ ոտս

ծերոյն և ասէ. աղօթս արարցես վասն իմ, հայր, զի թերևս արարից սկիզբն բարւոյ:

ԱՍԱՑ հայրն Պիմէն. եթէ հաւատասցէ ծեր բանին տեառն որ ասէ՝ եթէ 'ի բանից քոց արդարասցիս և 'ի բանից քոց պարտաւորեսցիս, և զի այնպիսին ընտրեսցէ զլռութիւն:

ԽՆԴՐԱՑԻ ոմն եհարց զհայրն Պիմէն և ասէ. հաց ոչ ուտեմ, այլ բանջար բազում կերակրիմ. արդ, հայր, բարւո՞ք իմն է: Ասաց ցնա ծերն. ոչ է բարւոք, այլ առաւել կերիցես հաց և բանջար, և մի գնասցես վասն այդտոյից քոց 'ի հայրենիսն քո:

ԱՍԱՑ դարձեալ. զերեքին սոքա ոչ կարեմք հատանել զմտաւն՝ զկերակուր, զծածկոյթ և զքուն. այլ զի մասն ինչ պարտ է զի հատցուք 'ի սոցանէ:

ԱՍՑԷԻՆ երբեմն 'ի միաւորին հայրն Պամբոյ և հայրն Նեսարիոն և հայրն Պայեսիոս և հայրն Աթերիս և խօսէին ընդ միմեանս 'ի Սկիտոյ լերինն: Եհարց զնոսա ոմն եղբայր և ասէ. որպէս արժան իցէ, հարք, քաղաքավարել եղբարց: Ասեն ցնա ծերքն. բազում ձգնութեամբ և ժրութեամբ պարտ է կեալ, և զի պահեսցեն ընդ միտս 'ի դատել զընկերն:

ՀԱՅՐՆ Պիոր գնայր երբեմն և ուտէր, և ասեն ոմանք ցնա. ընդէ՞ր այդպէս ուտես, ծեր: Նա ասէ. ոչ կամիմ զի գործ արարից զաս ինձ, այլ անպարգ գործ. և զի մի և 'ի աս խնայեցի անձին իմ զհանգիստ մարմնոյ:

ԱՍԷԻՆ և վասն հօրն Պաւղոսի եթէ եկաց նա զքառասուն աւուրս 'ի վերայ սակաւ ոսպան և միոյ ամանանի ջրոյ և միոյ սփրիդի, վասն զի հիւսէր զնա և քակէր և դարձեալ հիւսէր, մինչև կատարել աւուրն այսպէս առնէր. և իբրև մերձեցաւ տօնն, ել արտաքս:

ԽՆԴՐԱՑԻ ոմն եհարց զհայրն Պաղամոնն և ասէ. ասա ինձ զինչ արարից, զի երեք աւք են զի պահեմ երկուս աւուրս և ոչ կարացի ազատիլ 'ի պատանկութեան զիւէն: Ասէ ցնա ծերն. որդեակ, Եսայի մարգարէ մինչ տակաւին կենէր 'ի տեառնէ առ ժողովուրդն Իսրայէլի, ասացաւ առ նա. գոչեա զօրութեամբ և մի խնայեր. բարձ զձայն քո և պատմեա ժողովրդեանն զմեղս իւրեանց և տանն Յակոբայ զանօրէնութիւն իւր, զի խնդրեն զիս և կամին մերձենալ առ իս և ասեն՝ պահեցաք և ոչ ծա-

նեար դու, խոնարհեցուցաք զանձինս մեր և դու ոչ նայեցար 'ի մեզ: Արդ պատասխանի տուաւ և ասացաւ առ նոսա՝ եթէ յաւուրս պահոց ձերոց առնէիք դուք զչար կամս ձեր, վշտագնէիք զորս ընդ ձեռամբ ձերով էին, և պահէիք 'ի դատաստանս և 'ի կռիւս: Այլ լուէին 'ի տեառնէ զայս՝ եթէ ես ոչ այդպիսի պահս ընտրեցի ինձ ասէ տէր, և եթէ դարձուցես զպարանոց քո իբրև զօղ երկաթի և նստցիս 'ի մոխիր և 'ի քուրձ, և ոչ այսպէս կոչեսցի պահս: Այլ արդ դու, որդեակ, յորժամ պահեսցես որպէս կացցես կամ զինչ արասցես: Ասէ եղբայրն ցծերն. ես յառաւօտուն առեալ զարմաւ զործեմ, և բերանովս սաղմոսեմ, և յարուցեալ աղօթեմ զերրորդ ժամու և զվեց ժամն և սակաւ մի ննջեմ, և յարուցեալ ելանեմ արտաքս և շրջիմ փոքր մի, և դարձեալ մտեալ նստիմ և առնեմ զձեռագործ մինչև կատարեմ երիս մախաղս, և յարուցեալ աղօթեմ զինն ժամն և զերեկոյին և կրկնեմ ծունր հարիւր և ննջեմ սակաւիկ մի, և յարուցեալ աղօթեմ զհասարակաց գիշերոյն և զառաւօտին: Իսկ յերկրորդումն աւուրն 'ի յիններորդ ժամուն առնեմ խարշեալ ինչ և ճաշակեմ մինչև ցյագումն: Ասէ ցնա ծերն. այդ ոչ է կատարեալ պահք, զի եթէ պահեսցես 'ի կերակրոց և 'ի մեղաց ոչ, և կամ չար ինչ ասասցես զումեքէ և կամ դատեսցես և կամ չարախօսեսցես կամ ախորժեսցես չար ինչ առնել ումեք և կամ խորհեսցիս զախտալի և զաղիր և պիղծ գործս, ապա լաւագոյն ես էր քեզ հինգ անգամ կերակրել յաւուրն և զգոյշ լինել յայսցանէ զորս ասացի քան եթէ քաղցենալ 'ի հացէ և յագենալ այնպիսի զաղիր մեղօք և չարեօք. և զի զինչ շահ իցէ 'ի կերակրոց արգելել և ամենայն ախտիւք լի լինել: Այլ քանզի պահք ճշմարիտ այն է ըստ բանի հարցն՝ դադարումն յամենայն չարեաց. կամ թէ ո՞չ գիտես դու զի որք զցանկութիւս սրտի մտօք կատարեն, թէպէտ և հացիւ ստվեալ և ցամաքեալ իցէ, մեղօք յագեալ և արբեալ է այնպիսին: Այլ եթէ դու կամիս պահել զհաճոյ այ պահս, նախ պահեա զայդ զի մի երբեք բան ստեղ 'ի բերանոյ քումմէ ելցէ. հրաժարեա 'ի դատելոյ զընկերն և յամենայն չարաբանութեանց և յամենայն ունայն խօսութեանց, և զի որչափ կարող ես սրբեա զսիրտ և զմիտս

քո և մնասցես յամենայն աղանդոց և աղանդեցի խորհրդոց որ արծիւք են հոգւոյ և մարմնոյ, և յամենայն ապականութէ և յագահութէ։ Իսկ յորում աւուր պահեսցես, հաց և ջուր բաւականն եղիցի քեզ. իսկ յորում աւուր ոչ կերիցես, թուեա զծախս այնքան աւուրց և տուր զայն տառապելոց եղբարց և սփռեա աղքատաց, որպէս զի և նոքա աղօթեսցեն վասն քո։ Զառաւելեալ զմարմինդ քո աշխատութեամբ և ծնրադրութեամբ և տքնութեամբ և յիշատակաւ մահու. և զի ՚ի նիրհս ննջեսցես զքուն քո, և զայն ևս սակաւիկ մի։ Ի բաց թողցես ըզգործ մախաղին և արասցես զուփրիր. զի մանկութիւնն եթէ ոչ վարժեսցի բազում վշտիւ և նեղութեամբ և պահօք և ճգնութեամբ տքնութեամբ և գետնախշտութեամբ, ոչ կարէ զերծանիլ ՚ի դիւաց։ Վասն այսորիկ և երանելի հայրքն մեր ոչ կոչէին զմանկունս ՚ի սենեկի և ոչ ՚ի միայնակեցանոցս բնակիլ թոյլ տային, այլ ՚ի ժողովս եղբարցն հրամայէին կեալ համբերել և վարժիլ. և հանդերձ փափուկս ոչ զգեցուցանէին, այլ հինս և կարկատունս և խարազն, և ճգնաւորի ծերոյ յանձնէին և ընդունայցուցանէին յոյժ. քանզի դատարկութիւն և հանգիստ մարմնոյ և ուտել յագ երկու անգամ և քուն, այլ և այսպիսիք՝ ոչ թէ միայն զդեւն պոռնկութեան յարուցանէ ՚ի վերայ մեր, այլ և ձանձրութիւն և ամբարհաւանութիւն և զայլ բազում չարիս տնկէ ՚ի մեզ. յորոց փրկեսցէ զմեզ տէր։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Սիսոյի և ասէ. զինչ արարից, հայր. եթէ ելանեմ գնալ յեկեղեցին և դիպեսցի սէր լեալ և հրաւիրեն զիս, լուծի՞ց նոցա եթէ ոչ։ Ասէ ծերն. յոյժ աշխատութիւն ունի այդ գործ։

ԵՀԱՐՑ երբեմն ցհայրն Սիսոյի աշակերտն իւր Աբրահամ և ասէ. եթէ լինիցի ժողով եղբարցն և դիպեսցի շաբաթ և կամ կիրակէ և արբցէ ոք բաժակս երիս գինի, մե՞ծ ինչ իցէ, հայր։ Ասէ ծերն. եթէ դևն ոչ է, ոչ է մեծ։ Բազում անգամ ասէր աշակերտն ցնա. հայր, ճաշակեսցուք ինչ։ Իսկ ծերն ասէ. և ո՞չ կերաք, որդեակ. եթէ ոչ կերեալ է մեր, կերիցուք, որդեակ։

ԱՍԷՐ երբեմն ցաշակերտն իւր հայրն Սիսոյի՝ եթէ ափխացիր, եղբայր, զի ահա ունիմ ես երեսուն ամ զի ոչ աղօթեցի երբէք առ ած վասն մեղաց իմոց, այլ և

զայս աղաչելով առնեմ միշտ. տէր Յիսուս Քրիստոս, պահեա զիս 'ի լեզուէ իմմէ. մինչև ցայժմ դեռ ևս հանապազօր ան-կանիմ նովաւ և մեղանչեմ։

ԵՂԵՒ երբեմն մատուցանել զսուրբ խորհուրդն 'ի լեառն հօրն Անտոնի, և գտաւ անդ փոքր ամանաւ ինչ գինի. և առեալ մի 'ի ծերոցն զբաժակն և զպակի 'ի ձեռին, տարեալ գինի ետ ցհայրն Սիսոյի. իսկ նա ա-ռեալ ըմպեաց. և երկրորդ ևս ետ, առեալ և զայն ևս եարբ ծերն. և զի կամէր զերրորդն տալ, և ոչ էառ, այլ ասէ ցնա. դադարեա, եղբայր, ո՞չ գիտես զի կեն-դանի են դևքն։ Եհարց ցնա եղբայրն վասն սուրբ քա-ղաքավարութեան։ Ասէ ցնա ծերն. Դանիէլ գրեալ է՝ ե-թէ զհաց ցանկալի սրտի իմոյ ոչ կերայ։ Ասէ եղբայրն ցհայրն Սիսոյի. եթէ գնասցուք մեք 'ի ճանապարհի և մոլորեսցի առաջնորդն մեր, պա՞րտ է եթէ զգուշացու-ցուք նմա։ Ասէ ցնա ծերն. ոչ, մի լիցի։ Ասէ ցնա եղ-բայրն. այլ թողցո՞ւք զի խոտորեսցէ զմեզ։ Ասէ ցնա ծերն. և զի՞նչ իցէ, կամիք բրո՞ք հարկանել զնա. ա-սեմ քեզ, որդեակ, զի տեսի ես եղբարք զի գնային յուղի և առաջնորդն նոցա գթեալ թիւրեցաւ յուղւոյն 'ի գիշերի, և էին եղբարքն երկոտասան և ամենեքեան գիտէին թէ մոլորեալ գնային և ճգնէր իւրաքանչիւրն առանձինն, զի մի ասասցէ և մի յանդիմանեսցէ։ Իբրև այգ եղև, ծանեաւ առաջնորդն զի մոլորեալ էր յու-ղւոյն և ասէ ցնոսա. թողութիւն շնորհեցէք ինձ, եղ-բարք, զի գթեալ եմ։ Յայնժամ ասացին ամենեքեան՝ եթէ գիտեմք և մեք, այլ լռեցաք ասել։ Իսկ նա իբրև լուաւ զայս, զարմացաւ յոյժ և ասէ. ո՜ մինչև ցմահ ճգնե-նէին եղբարքս այս պահել զլռութիւն։ Եւ գոհանայր զԱյ վասն համբերութեան նոցա։ Իսկ մոլորեալ ուղին էր իբր երկոտասան մղոն։

ԱՍԷԻՆ վասն հօրն Սիսոյի թեբայեցւոյ՝ եթէ հաց բնաւ ոչ ճաշակեաց, և յաւուր մեծի զատկին աղաչէին զնա եղբարքն եթէ եկ ճաշակեա ընդ մեզ։ Ասէ ցնոսա ծերն. զհա՞ց միայն կերայց, եթէ զամենայն ինչ զոր պատրաստեալ է ձեր։ Եւ նոքա ասեն. զհաց միայն կե-րիցես։ Եւ արար այնպէս։

ԵԿԻՆ երբեմն հարքն սկիտացիք առ հայրն Սառռա, և նա եդ առաջի նոցա սեղան. իսկ նոքա թողեալ զա-

բուղձն կերակուր՝ ճաշակեցին զյուղն ։ Իսկ նա խրախ ետես՝ ասէ․ ստոյգ սկիսացիք էք դուք ։

ՆՈՒԱՑ մայրն Անկլիտիկէ․ պարտ է մեզ որ զգեցցուք զանտակս զայս՝ սատանայ զկատարեալ սրբութի, զի և զանհետիկք կարծիւն սրբութե֊ գնալ, այլ փարի զնդէջը պղծութի․ զի որպէս են զգայարանք որոց ականջ պատահեն մեղք, որք են տեսանելիք, լսելիք և ծաղր, այսպէս նոցունց կամաւ պատահին մեղք ։

ՆՈՒԱՑ դարձեալ․ զոր օրինակ սպանանող զաղանքն զդեղս յետս դարձուցանեն, այսպէս և զչար խորհուրդս յետս ձգեն 'ի մտացն պահք և աղօթք ։ Այլ մի խաբեսցեն զքեզ մեծութի և պատրանք աշխարհի, զի անցանելի և ունայնք են․ այլ և կարող ես պահօք առաւել ախորժելի առնել զկերակուրս, վասն զի յագելոյն տաղտկայ սիրտ, իսկ սովելոյն զուարճանայ յուտել․ և մի յագեսցիս հացիւ, զի մի ըղձասցիս գինւոյ ։

ՆՈՒԱՑ հայրն Տիթոյի՝ եթէ ստարութի իցէ կատարեալ աղքատութի, եթէ զգուշասցի բերանոյ իւրոյ ։

ԱՂԲԱՑՐ ոմն եհարց ցհայրն Տիթոյի և ասէ․ որպէս պահեսցից, հայր, զմիտս իմ, զի բերան իմ և լեզու իմ 'ի բաց կայ մերձ ընդ որովայնի ։

ՆՈՒԱՑ հայրն Իպերիքոսէ․ որպէս առիւծ որ ահագին է քան զգիւ, այսպէս և կրօնաւոր փորձեալ՝ քան զդեւս և քան զցանկութի և զախտս իւր վերադոյն է, և զի պահք սանձք է ծերոց առ մեղս․ և որ 'ի բաց ձգէ ըզպահս, ձի վրնջող եղիցի ։

ՆՈՒԱՑ դարձեալ․ Թէպէտ և ցամաքի մարմին ծերոյ 'ի պահոց, այլ հոգի նորա 'ի խորոց ախտից վերակոչեսցի․ քանզի պահք զհեղեղս ախտից ցամաքեցուցանէ, և կրօնաւոր սրբեալ պահօք՝ 'ի վերայ երկրի փառաւոր է և յերկինս պսակաւոր եղիցի ։

ՊԻԱՐՁԵԱԼ ասէ․ բան չար մի ելանիցէ երբէք 'ի բերանոյ քումմէ, քանզի որթ խաղող բերէ և ոչ փուշ ։

ՓԻԼՈՐԻՄՈՍ ոմն կրօնաւոր ընտրեալ բազում համարձակութե֊ յանդիմանէր զՅուլիանոս անօրէնն, յորմէ բազում չարչարանս կրեաց ։ Սա մինչ արձակեցաւ 'ի կապանաց նորա, պատերազմեցան ընդ սա սատանայէս պոռնկութե և որկրամոլութեան դեւք, որոց յաղթեաց զօրութե֊ Ք՞ի բազմօրինակ ճգնութե֊ իւրով ։

Ոմանք երբեմն կապէր երկաթով զինքն և երբեմն ար-գելոյր 'ի խցի. երբեմն մեկնէր 'ի կերակրոց և 'ի սուրբ հացէ, մինչ զի ջեռուցեալ լինէր 'ի հրոյ ութ և տասն ամ ոչ բնաւ ճաշակեաց, մինչև յաղթեաց դիւաց և չար ցանկութեան մեղացն պոռնկութեան և որկրամոլութեան : Այլ ասէր նա՝ եթէ ունիմ քառասուն ամ յորմէհետէ ոչ ճա-շակեալ է իմ 'ի մրգաց ինչ. եղև երբեմն և պատերազ-մունք դիւականս, մինչ զի և 'ի տուէ երկնչէի, և արգելի զիս 'ի գերեզմանս մեռելոյ վեց ամ և յաղթեցի նմա :

ԵՂԲԱՐՔ երկու բնակեալ էին 'ի միասին 'ի միում լերին. իսկ միոյն սովորեալ գողանայր զդրամն երկրոր-դին և դնէր 'ի սենեկի իւրում, նոյնպէս զհաց և զդար-ման տանէր. և ոչ գիտէր միւս եղբայրն զայն գործ, այլ միայն զարմանայր ընդ հարստանալ նորա : Ի միում ա-ւուր եկն 'ի վերայ մինչ տանէր զայս, և սկսաւ կագել ընդ նմա և ասէր. զի՞ գործես զայդ. և գողանաս ընդ մարմնաւոր ախտից և զհոգևոր : Այլ ոչ ինչ խնդրեաց 'ի նմանէ, բայց միայն այլ ոչ տանել զայն :

ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ ունէր եպիսկոպոս ոմն զի ամ ըստ ա-մէ ելանէր 'ի Սկիտէ տեսանել զեղբարսն : Այլ 'ի միում ելանելն ընդ առաջ ել նմա եղբայր ոմն և տարաւ զնա 'ի տուն իւր և եդ առաջի նորա հաց և աղ և ասէ. Թո-ղութի՞ արասցես ինձ, զի այլ ինչ ոչ է իմ 'ի դնել առա-ջի քո : Ասէ եպիսկոպոսն. այսպէս կամի անձն իմ զի իբրև դարձեալ եկից այսր, և ոչ աղ լինիցի 'ի տան քո :

ԵՂԵՒ երբեմն խնդիր ինչ 'ի մէջ եղբարցն 'ի վանս Եգիպտոսի, մինչև ամենեքեան ասացին ինչ. իսկ մի ոմն յեղբարցն ոչ խօսեցաւ ինչ : Այլ իբրև յարեաւ 'ի նմին ատեղւոջէ, ասեն ցնա եղբարքն. ընդէ՞ր ամենայն եղբար-քըն ասացին ինչ, և դու ինչ ոչ ասացեր : Իսկ նա լռեաց դարձեալ. և իբրև բռնադատեցաւ յոյժ՝ ասէ. այսպէս ասացի 'ի միտս իմում, եթէ ասասցէ ինչ քարս այս որ 'ի ներքոյ իմ իցէ՝ և ես ասացից. ապա թէ ոչ՝ լռեցից, և տակաւ լռեցի և ինչ ոչ ասացի :

ՈՒՏԷԻՆ երբեմն եղբարքն 'ի դաւիթս եկեղեցւոյն և 'ի սենեակսն, և մատուցին եղբարց միում զինի բաժա-կաւ և բռնադատէին ըմպել : Իսկ նա ասէ. Թողութի՞ արարէք ինձ, հարք, զի հերու ինձ այսպէս արարիք, և անկայ ես 'ի բազում փորձութիւս և 'ի վիշտս :

Այլ եղբայր ոմն 'ի Սկիւթէ, և ճանապարհակից եղև նմա այլ ոմն եղբայր. իբրև եկին 'ի տեղին ուր բաժանելոց էին 'ի միմեանց, ասէ ցնա ծերն. ճաշակեսցուք ինչ, եղբայր, այսօր 'ի միասին և ապա մեկնեսցուք 'ի միմեանց: Այլ զի էր օրն սկզբան եօթնեկին, և արարին այնպէս. իսկ յորժամ եհաս շաբաթն, փութացեալ ծերն ընդ առաւօտն գնաց առ եղբայրն այն և ասէ. ո՞չ քաղցեար դու եւս զի կերիցուք ինչ: Ասէ ցնա եղբայրն. ոչ եմ սովեալ, հայր, զի համապազօր ճաշակեմ: Ասէ ցնա ծերն. Թոյլ տուր ինձ, եղբայր, զի ոչ այլ ինչ ճաշակեալ է իմ քան զայն որ առաք 'ի միասին: Այլ իբրև լուաւ զայն եղբայրն, զղջացաւ և յոյժ շահ եղև նմա:

ԱՅԼ ոմն եղբայր գնաց առ մի ոմն 'ի հարանցն, և նա արար նմա ասպնջականութիւն և ասէ ցհիւրն. ասասցուք փոքունս սաղմոս: Այլ մինն կատարեաց զսաղմոսն ողջոյն, և միւսն ուսեալ էառ 'ի բերան երկուս մարգարէս: Այլ իբրև այգ եղև, և գնաց այն եկեալ ծերն, և ուտել մոռացան զհաց հիւրեանց:

ՀԻՒԱՆԴԱՑԱՒ երբեմն մի ոմն 'ի ծերոցն, և ոչ կարէր առնուլ կերակուր 'ի բազում աւուրս: Յայնժամ աշակերտն իւր սկսաւ աղաչել զնա զի արասցէ նմա կերակուր եռացեալ, և զի գնացեալ արար զնա և եբեր առ ծերն զի կերիցէ զնա: Այլ էր անդ աման ինչ յորում էր մեղր, և զի էր այլ աման յորում էր ձէթ հին և նեխեալ և ժահահոտեալ զոր ունէին 'ի նիւթ ճրագի յայրել. իսկ եղբայրն յանցեաւ զամանն և մոռացաւ զաման մեղրն, և փոխանակ մեղր արկ 'ի կերակուրն զհոտեալ ձէթն և տարեալ եդ առաջի ծերոյն: Այլ իբրև ճաշակեաց ծերն, ինչ ոչ ասաց, այլ էառ փոքր ինչ 'ի նմանէ լռութեամբ: Իսկ աշակերտն իւր բռնադատէր ուտել, և առեալ փոքր ինչ ծերոյն և դադարեաց: Իսկ աշակերտն սկսաւ երրորդ անգամ տալ ծերոյն զկերակուրն, և նա ոչ էառ, այլ ասէ. Թոյլ տուր ինձ, որդեակ, զի ոչ կարեմ: Այլ եղբայրն սկսաւ յօժարել ըզծերն և ասէ. ճաշակեսցես, հայր, զի քաղցրիկ է, և ես կերայց ընդ քեզ: Այլ իբրև ճաշակեաց, ծանեաւ զոր արարն. յայնժամ անկաւ առ ոտս ծերոյն և ասէ. վայ է ինձ, հայր, զի ես սպանի զքեզ և դու ոչ յանդիմա-

նեցեր զիս ։ Ասէ ցնա ծերն․ մի՛ տրտմեսցիս, որդեակ, զի եթէ կամեցեալ էր Ա̅յ ճաշակել մեզ մեղր, և դու մեղրիւ քաղցրացուցեալ էիր ։

ԱՍԷԻՆ և վասն ծերոյ ումեմն՝ եթէ ցանկացա՛ւ ճաշակել թուզ, և առեալ զթուզն կախեաց առաջի աչաց ընդդէմ իւր և ասէ ցանձն իւր․ յագի՛ր, մոլեալ և չար ծեր ։ Այսպէս վշտացոյց զանձն իւր և եսպան զցանկութիւն զայն 'ի միտաց իւրոց․ և թէպէտ և ոչ ճաշակեաց, սակայն ապաշաւէր զայն եթէ ընդէ՞ր բնաւ ցանկացաւ ուտել ։

ԵՂԲԱՅՐ ոմն գնաց 'ի վանս կանանց տեսանել զքոյր իւր, քանզի հիւանդ էր․ և էր քոյրն սուրբ և հաճոյ Ա̅յ, և ոչ յանձն էառ բնաւ տեսանել զերեսս առն մարդոյ և ոչ զեղբայրն իւր կամեցաւ մտանել 'ի մէջ կանանց վասն իւր, այլ պատուիրեաց և ասէ ցնա․ գնասցես, եղբայր, խաղաղութ̅բ 'ի սենեակ քո․ մի՛ գուցէ զքեզ խոցոտեսցես և մի՛ խոցոտեսցիս և դու, և զի աղօթեսցես վասն իմ առ Տէր, և շնորհօքն Ք̅ի տեսցուք զմիմեանս յարքայութ̅ն երկնից ։ Այնպէս շինեալ եղբայրն նորա 'ի բանից նորա գնաց ։

ՄՏԻՆ երբեմն սուրբ հարքն յԱղեքսանդրիա, զի կոչեալք էին 'ի սրբոյն Թէոփիլէ եպիսկոպոսէ, որպէս զի արասցեն աղօթս և քակեսցին նոքօք մեհեանք կռոցն ։ Եւ մինչդեռ ուտէին 'ի միասին, բերեալ եղև միս որթու 'ի սեղանն․ և առեալ 'ի նմանէ մասն ինչ փափուկ եդ առաջի ծերոյն որ նստէր առ նմին և ասէ ցնա․ առեալ կերիցես զդա, հայր, զի բարւոք է ։ Ասէ ցնա ծերն․ մեք բանջարիւ կեամք մինչև ցայժմ, քանզի միս մեր բանջար իցէ ։ Եւ այսպէս ժուժկալութիւք նոցա և փառքն օգուտ եղև անդ բազմաց․ այսպիսիք էին երանելի հարքն, զի և միայն տեսոն նոցա շահեցուցանէր զամենեսեան ։

Այր ոմն ծեր 'ի լեառն բարձր և ոչ առնոյր ինչ յումեքէ բնաւ, և զի ունէր ջուր սակաւ որով առնէր զբանջարս և կերակրէր նովաւ զամս յիսուն, և ոչ երբէք ել արտաքոյ ցանկի իւրոյ․ և առնէր նշանս մեծամեծս Ա̅ծ 'ի ձեռս նորա այնմ որ բանջարով էր շատացեալ այնքան ամս, և ճնշեալ զմարմին իւր պահօք՝ տաճար մաքուր եղեալ նշանագործին ։

ԱՍԱՑ դարձեալ․ լուեալ է իմ զի ասեն զՄողոմին

զդրախտին ուրեմն զրեալ եղև տախտակս փղոսկրեայս, և արկին 'ի նմա անկողինս փափուկս և բազմագինս, և ըզսուրբն զայն եղին 'ի վերայ նորա կապեալ ձեռամբ և ոտիւք, և կին մի պոռնիկ յոյժ գեղեցիկ տեսլեամբ և լիրբ և անօրէն մուծին 'ի վերայ նորա, որպէս զի 'ի տեղւոյն փափկութեան և յայլոց հրճուալեացն ամենեցուն և 'ի ձեռնամերձ լինելոյ մոլեգին կնոջն՝ ոչ կարիցէ զերծանել 'ի մեղացն, և յակամայ արկցեն 'ի ցանցս խորեանց պղծութե։ Նա եկեալ կինն փարէր զնովաւ, խաղայր և նեղէր։ Նա և սրբասէր և հաւատարիմ ծառայն Քի յետս դարձոյց զորոգայթս դիւին. զի մինչ եկայր 'ի վերայ նորա կինն և զտռփութեան մեղացն բորբոքէր, հակ սուրբն յանձնապահութեան կապանացն այլ ինչ ոչ կարաց, բայց զայս, քանզի զլեզուն իւր ատամամբք իւրովք հատեալ ծամեաց և եթուք յերեսս նորին պոռնկին. և ամօթ մեծ եղև լկտի լրբենութեան այն։ Եւ սուրբն 'ի ցաւոցն և 'ի կսկծոյն ազատեցաւ 'ի գործելոյ ցանկութեանցն, և զհեղեղ արեան լեզուին և զդառնութի անբծութեան ընծայ յաղթութեան մատոյց Քի, և զկինն եւս կեցոյց։ Նմանօրինակք են սէրն Քրիստոսի, զի ամենայն հեշտալեաց և ցանկալի գեղեցկութեանց աշխարհիս զեր 'ի վերոյ եղեալ յաղթեն և հասանեն այն երանելի փառացն Քրիստոսի։

ՄԻԱՅՆԱԿԵԱՑ ոմն նստէր 'ի խորին անապատին օտար ամս վաթսուն և կերակրէր 'ի բանջարոց միայն. յետոյ եկն 'ի խորհուրդն յիմարն և ասէր՝ եթէ ընդունայն և զուր նստիմ աստ և կորուսանեմ զաւուրս այսքան ամաց. և զի աստ 'ի վայրի ոչ ինչ ճաշակեցի զայս վաթսուն ամ, բայց միայն խոտ, և այս մահաբեր եւս է, և ոչ բնաւ տեսիլ ինչ տեսի և ոչ սքանչելիք արարի ինչ զոր արարին առաջին հարքն մեր. յարուցեալ գնացից աստի 'ի շէնս, զի ոչ բարւոք նստիմ աստ։ Եւ մինչդեռ մտածէր զայս, եկն եկաց առ նմա հրեշտակ տեառն և ասէ ցնա. զի՞նչ խորհիս և կամ զի՞նչ ասես, ով մարդ։ Եւ նա ասաց նմա զամենայն զվերոգրեալսն։ Ասէ ցնա հրեշտակն. և զի՞նչ սքանչելիս կամիս լինել 'ի քեն առաւել քան զայս զի կեաս, և կամ ո՞վ զօրացոյց զքեզ այսքան ամս համբերել 'ի տեղս յայս, և կամ ո՞վ օրհնեաց զմահաբեր զայն խոտ որով կերակրէիր դու. դադարեա 'ի տեղս յայս և խնդրեսցես յոյս, որպէս զի տացէ քեզ

խոնարհութեն։ Իսկ նա զօրացաւ 'ի վերայ բանից հրեշ-
տակին, և եկաց 'ի տեղին յայն մինչև յօր մահուան իւ-
րոյ. զի պահօք որբեալն թէպէտ և գայթակղեցի, նա
մի կործանեցի, քանզի տէր է ձեռնկալու նմա։

ՊԱՏՄԵՑԻՆ մեզ ոմանք 'ի հարցն՝ եթէ էր ոմն ծեր
ազգաւ պոնտացի որ և մեծամեծ ուղղութիւս գործեալ
էր։ Զայս ծերոյ ասէր Յոհաննէս եպիսկոպոսն Սուսա
քաղաքի, եթէ եկն առ իս երբեմն մինչ էի ես յանձն
Յորդանանու 'ի վանս Պերգզի, և ասէ ցիս. արա սէր,
եղբայր Յոհաննէս, և եկեսցես ընդ իս 'ի լեառն Սի-
նեա, զի ուխտեցի աղօթել անդ։ Իսկ ես ոչ կարացի
անհնազանդ լինել ծերոյն, այլ ասացի նմա՝ եկ գնաս-
ցուք։ Եւ յորժամ անցաք ընդ Յորդանան գետ, ասէ
ցիս ծերն. եղբայր Յոհաննէս, եկ արասցուք աղօթս
որպէս զի մինչև ցգնալն և հասանելն մեր անդ ոչ ինչ
կերիցուք։ Իսկ ես ասեմ ցնա. ես, հայր, զայդ առնել
ոչ կարող եմ։ Եւ իբրև ոչ կամեցայ ես առնել զայդ, առ-
ժամեայն ծանր եղեալ ծերոյն յուղի անկաք և գնացաք,
մինչև հասաք 'ի Սինեա ոչ ինչ ճաշակեաց բնաւ ծերն.
իսկ 'ի Սինեա հաղորդեալ եղև 'ի սուրբ խորհրդոյն մար-
մնոյ և արեան տեառն, և էառ կերակուր ծերն։ Նոյն-
պէս և դարձեալ գնացաք 'ի սուրբ լեռնէն Սինայէ 'ի
սուրբն Մինա Աղեքսանդրոյ. դարձեալ և ոչ ուրեք էառ
ծերն կերակուր մինչև հաղորդեալ եղև և անդ և ապա
եկեր։ Եւ դարձեալ 'ի սուրբ Մինայէ Աղեքսանդրոյ ե-
կաք 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. և յամենայն ճա-
նապարհն այն ոչ ինչ ճաշակեաց ծերն, և հաղորդեալ
եղև դարձեալ 'ի սուրբ խորհրդոյն 'ի յարութիւն տեառն
մերոյ Յի Քի և ապա էառ կերակուր։ Արդ այսքան
և յայսպիսի հեռաւորութեան ճանապարհին երեք ան-
գամ ճաշակեաց ծերն, մի անգամ 'ի Սինեա, երկրորդ
'ի սուրբ Մինա, երրորդ անգամ 'ի սուրբ յարութիւն
տեառն և այ մերոյ։ Արդ յայտնանէ յայտնի եղէ զի
բնակեալ էին շնորհքն այ 'ի ծերն յայն. յորմէ ելանեն
ամենայն տուրք բարիք և պարգևք կատարեալք 'ի հօ-
րէն լուսոյ և 'ի հոգւոյն սրբոյ և 'ի միածնին որդւոյն.

Ե

ԽՐԱՏՔ ՕԳՏԱԿԱՐՔ

## ՎԱՍՆ ԶԳՈՒՇՈՒԹԵԱՆ ՊԱՌՆԿՈՒԹԵԱՆ

### ՅՈՐԺԱՄ ԿԱՆԳՆԻ Ի ՎԵՐԱՅ ՄԵՐ ՄԱՀՆ

Ասէ[1] աբբայ Անտոնիոս՝ եթէ մտածեմ զի ունի մարմինս շարժումն բնական, որ խառնեցուցանէ զնա որ ոչ է կամ անձինն, միայն նշանակի 'ի մարմինն՝ անչարչարանք շարժումն։ Եւ է այլ շարժումն որ 'ի կերակրոց՝ յորժամ զուարճացուցանէ զմարմինն կերակրովք և ըմպելեօք, յորմէ է ջերմութի արեան՝ որ յարուցանէ ըզմարմինն շուայտութբ և հոգովք աշխարհականօք։ Եւ է այլ շարժումն ջանացելոցն 'ի խորհրդոց և յաղտեղի խօսից ունկնդրութեց։ Գիտասջիք զի այս երեսեան են շարժողք մարմնոյն, մին բնութբ և միւսն այլ առաւելութբ կերակրոց և երրորդն 'ի դիւաց։

Ասէ[2] աբբայն Գերոնտիոս վիմացն՝ եթէ բազումք են որք փորձին 'ի մարմնաւոր կրից, որք ոչ մերձեցուցին զմարմինս իւրեանց յիմացումն արտաքին պոռնկութեն,

[1] Ասաց հայրն Անտոնիոս՝ եթէ ունին մարմինք մեր բնական շարժութիւն խառնեալ ընդ սեռի շինուածոյն, բայց ոչ կարիցէ գործել եթէ ոչ կամեսցի հոգին, այլ ցուցանի միայն 'ի մարմնի անխլաս շարժումն միայն։ Են և այլ շարժմունք մարմնոյ, որք լինին 'ի կերակրոց և յըմպելեաց բազմութենէ և այլոց փափկութեց և շուայտութեց, յորմէ լինին ջերմութիւնք և եռացմունք արեան և սերման, որք ձգեն զմարմին 'ի շարժումն անհնարին և 'ի գործս պղծութեն. սակայն ըստ առաքելոյ ասելոյ՝ եթէ մի արբենայք գինւով յորում զեխութի է. և զի Տէրն հրամայէ՝ թէ զգոյշ լերուք անձանց մի գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութբ և արբեցութբ և հոգօք աշխարհականօք։ Են և այլ շարժութիւնք մարմնոյ որք դիւալին ճգնաւորաց հնարիւք և նախանձու դիւէն։ Եւ զի ձեզ գիտել պարտ է զի երիս տեսակս են մարմնոյ շարժութիւնք. առաջինն բնութբ է, երկրորդն յորկրամոլութեց, իսկ երրորդն 'ի դիւական արկածից խորհրդոց։

[2] Նոյն հայրն Գերոնտի. բազում են պատերազմունք որք լինին 'ի յղփութէ մարմնոյ, և առանց մարմնոյ մերձենալոյ մտօք պոռնկին.

և զմարմնական կուսութիւն պահեցին և յանձինս իւրեանց պատնիկեցան։ Բարիոք է, սիրելիք, ըստ գրոյն զգուշա-նալ ամ պահպանութեամբ իւրաքանչիւր ումեք սրտի իւրում։

ԵՂԲԱՅՐ՝ ոմն եհարց ցոմն ծեր և ասէ. Եթէ պա-տահեսցէ մարդոյ 'ի փորձութիւն անկանել՝ թողլով զիւր վասն օգտի հոգւոյ նորա, զի՞նչ պարտ է լինել վասն գայ-թակղեցելոյն 'ի փորձութէ նորա։ Ասէ ցնա ծերն. Եթէ ապաշխարեսցէ և յապաշխարութեան գոհասցի զԱյ և ա-սասցէ՝ Թէ յիրաւի խոնարհեցայ, կարող է ա՛ծ զգայ-թակղեալն միւանգամ հաւատացուցանել։ Եւ պատ-մեաց ծերն և ասաց այսպէս. Էր սարկաւագ ոմն անուա-նի 'ի միաբանակեացսն յԵգիպտոս. և փախեաւ քա-ղաքապետն և տուն նորա յիշխանէն հալածեալք, եկեալ առ միաբանակեացսն, անկաւ սարկաւագն ընդ կնոջ քա-ղաքապետոյն և եղև ամենեցուն ամօթ։ Եւ երթեալ առ ոմն սիրելի իւր պատմեաց նմա զիրսն, և աղաչեաց զնա զի մի՛ ոք գիտասցէ թէ ուր է։ Եւ էին թաքստոցք 'ի տան նորա, և ասէ. Թաղեա զիս աստ կենդանւոյն։ Եւ իջեալ 'ի խաւարն յայն ապաշխարեաց առաջի ա՛յ ճշմարտութեամբ։ Եւ յետ բազում ժամանակաց ոչ ել գետն։ Եւ մինչդեռ էին նոքա յուխտս, երևեցաւ ումեմն 'ի սրբոցն և ասաց. Եթէ ոչ եկեսցէ սարկաւագն, որ թաքուցեալ է 'ի տան այսր անուանս, ոչ ելանէ ջուրդ։

թեպետ և մարմնին կոյս մնայ, սակայն հոգւոյն պղծի։ Բարւոք է, եղ-բարք, պահել զգրեալսն, և ամենայն զգուշութեամբ զգուշանալ հոգւոյ և մարմնոյ, մտաց և խորհրդոց իւրոց ընդ մարմնոյ և ընդ գործոց նորա։

։ Եղբայր ոմն եհարց զծերն իւր և ասէ ցնա. Եթէ անկանի մարդ յոր ինչ և իցէ ազգ փորձութե մեղաց, զի՞նչ արասցէ առ նոսա, հայր, որք գայթակղին։ Իսկ ծերն ասաց նմա օրինակ զայս ինչ. Էր եղբայր սարկաւագ ոմն մեծանուն յԵգիպտոս 'ի հասարակաց վանս, և էր այր ոմն այլ քաղաքացի զոր ըմբռնել խորհէր իշխան քաղաքին։ Եւ յա-րեաւ նա ամենայն տամբ իւրով և գնաց 'ի վանսն յայն ուր բնակէր սարկաւագն այն։ Եւ 'ի հնարից սատանայի գթեալ սարկաւագն և ան-կաւ 'ի կին նորա և եղև ամօթ ամենայնի։ Եւ յարեաւ և գնաց առ մի 'ի ծերոցն և պատմեաց նմա զայն. և զի ունէր ծերն դարան ինչ 'ի տան իւրում, և աղաչեաց զնա սարկաւագն և ասէ՝ եթէ թաղեսցես զիս կենդանի 'ի դարանի քում և մի ումեք յայտներ զիս։ Եւ եմուտ սար-կաւագն 'ի մթագին յայն տեղի և ապաշխարեաց ճշմարտութեամբ։ Եւ զկնի ժամանակաց ինչ ոչ ել գետն Նեղոս ոռոգել զերկիրն Եգիպ-տոսի, և էին ամենեքեան յաղօթս և 'ի հակմունս։ Ցայնժամ յայտնե-ցաւ ումեմն 'ի սրբոցն 'ի տեսանելն և ասէ. Եթէ ոչ գայցէ սարկաւագն այն և աղաչեսցէ զտէր, ոչ ելցէ գետն։ Իսկ նոքա լուեալ զայս զար-

և քարն որ եթէ անկաւ՝ բանտարկումն է, և ձայնն որ լուար՝ ցանկութիւն է. Հայեաց յանձն քո և պաղատեա առ տէր զի տէր օգնեսցէ քեզ և անցցէ 'ի քէն պատերազմդ: Եւ ուսոյց նմա թէ զիարդ հանդիսասցի ընդդէմ դիւացն. և արարեալ աղօթս, արձակ զնա: Եւ նորա երթեալ 'ի խուցն իւր մրցեցաւ պաղատելով առ Ած ըղցայգ և զցերեկ. և լուաւ նմա տէր և ետ նմա յառաջադէմ լինել այնպէս, մինչ թէ վախճանէր եղբայր՝ և դեռ լինելով յայտնէր նմա թէ բարի է հոգի նորա:

ԵՂԲԱՅՐ՝ ոմն տագնապեալ 'ի պոռնկութէ յայսոց չոգաւ առ ծեր ոմն մեծ և ասէր. արա սէր և աղօթս արա 'ի վերայ իմ, զի շտապիմ 'ի պոռնկութենէս: Իսկ ծերն աղաչեաց վասն նորա զԱծ: Դարձեալ կրկին անգամ եկն առ ծերն և զնոյն բանս ասաց ցնա. Նմանապէս և ծերն ոչ յապաղեաց աղաչելով վասն նորա զԱծ: Եւ բազում անգամ եղբայրն տագնապեալ, որքան շտապեալ լինէր 'ի պոռնկութենէն՝ գայր առ ծերն: Իսկ ծերն աղաչեաց զԱծ և ասէ. տէր, յայտնեա ինձ զնստել եղբօրս այսորիկ և ուստի է դատարկութիւս, զի աղաչեցի զքեզ վասն սորա, և ոչ եգիտ հանգիստ եղբայրս: Եւ յայտնեաց նմա Ած վասն եղբօրն. և ետես զի նստէր և այսք պոռնկութեան մերձ 'ի նա, և զնա զի զբօսնոյր ընդ նոսա, և հրեշտակ տեառն կայր առ նմա՝ յօգնականութիւն նմա առաքեալ, և բարկանայր եղբօրն զի ոչ ըն-

էր, իսկ ձայնն զոր լսեար ըղձալի՝ ցանկութեան մեղաց էր. այլ դու ըղձայր լեր անձին քո և աղաչեա զԱծ զի օգնէ քեզ և անցուսցէ 'ի քէն զպատերազմն զայն: Եւ ուսոյց նմա թէ որպէս պատերազմել պարտ է ընդ դևս, և արձակեաց զնա: Եւ գնաց 'ի սենեակ իւր և ճգնէր յոյժ, և այնպէս յառաջեաց 'ի լաւ անգր և էառ յԱյ պարգևս զայս, զի մինչ փոխադրէր եղբայր ոք՝ նա գիտէր եթէ ուր գնայր հոգի նորա: Ահա զի զգաստութիւն և արիութիւն 'ի ձեռն առաւել փորձին 'ի վտանգէ ախտից յայսմանէ:

Եղբայր ոմն նեղեալ և վհատեալ եղև 'ի պոռնկական խորհրդոց, և գնացեալ առ ծեր ոմն մեծ և աղաչէր զնա և ասէր. արասցես սէր, հայր, և աղօթեսցես առ Ած վասն իմ, վասն զի վշտանամ 'ի պոռնկութենէ: Իսկ ծերն աղաչեաց զԱծ վասն նորա: Բայց նա եկեալ երկրորդ անգամ և զնոյն բանն ասաց ցծերն, և ծերն աղաչեաց զԱծ և ասէ. տէր, յայտնեա ինձ զկեանս եղբօրս այսորիկ թէ որպէս կեայ և կամ ուստի է գործն այն վասն որոյ աղաչեցի ես զքեզ, և նա ոչ եգիտ հանգիստ: Եւ եցոյց նմա Ած վասն նորա, և զի ետես զնա նստեալ կայր և գևն պոռնկութեան մերձ առ նա, և հրեշտակ տեառնն կայր մերձ առ նմա եկեալ յօգնութիւն, և սաստէր եղբօրն վասն զի ոչ

կենոյր զինքն առ ա̃ծ, այլ հեշտանայր 'ի խորհուրդսն, և զբովանդակ զմիտս և զխորհուրդս իւր անդէն խոնարհեցուցանէր և ոչ առ ա̃ծ ։ Իսկ իմացաւ ծերն եթէ եղբայրն է պատճառք, և ծանոյց նմա ծերն և ասէ՝ եթէ դու ես պատճառք խորհրդոցն քոց. և ուսոյց նմա եթէ զիարդ ընդդիմակացի խորհրդոցն ։ Իսկ սթափեալ եղբօրն վարդապետութեա̃մբ և աղօթիւք ծերոյն եգիտ հանգիստ և ողորմութի̃ւն ։

ԵՂԲԱՅՐ՝ ոմն եհարց զոմն 'ի հարանցն՝ եթէ զիարդ բանսարկուն ածէ զփորձութիւնս 'ի վերայ սրբոց ։ Իսկ ասէ ցնա ծերն. լուայ եթէ էր ոմն 'ի սրբոցն որում անուն էր՝ Նիկոն, և բնակեալ էր 'ի լերինն Սինայ. և ոմն երթեալ 'ի տաղաւար փարանացւոյն և գտեալ զդուստր նորա միայն, անկաւ ընդ նմա և ասէ. եթէ հարցցէ ըզքեզ ոք եթէ ո՛վ էր, ասա եթէ անապատաւոր հայրն՝ Նիկոն արար զիս այսպէս ։ Իսկ իբրև եկն հայր նորա և գիտաց, առեալ զդուստրն իւր և գնաց 'ի վերայ ծերոյն, և բախեալ նորա զդուռն՝ ել ծերն. և ձգեալ նորա ըզտուրն զի հարցէ զնա, ցամաքեցաւ ձեռն նորա ։ Իսկ երթեալ փարանացւոյն յեկեղեցին՝ ասաց երիցունսն. և առաքեցին զնմանէ, և եկն ծերն. և հարեալ զնա գան յոյժ, կամեցան հալածել ։ Իսկ նորա աղաչեալ՝ եթէ

անկանէր առաջի նոյ, այլ կայր նստեալ և հեշտանայր 'ի յիշմունս չար խորհրդոցն, թուէր զինքս և խորհէր և մտածէր և կրէր զգործն և կայր բևեռեալ 'ի նոսա ։ Յայնժամ ծանեաւ ծերն սուրբ եթէ 'ի ծուլութէ իւրմէ էր 'ի ներքութիւնն յայն եղբայրն ։ Ապա դարձաւ և ասէ ցեղբայրն. 'ի քեն է պատճառն քո, զի խորհիս միշտ զչար և զպղծալից գործս ։ Յայնժամ ուսոյց նմա թէ որպէս պարտ է կալ ընդդէմ նոցա, և զգաստացոյց զեղբայրն. և աղօթիւք և խրատիւք սուրբ ծերոյն զարթեաւ եղբայրն և ողջացաւ ։

։ Եղբայր ոմն եհարց ցհայրն Թէոփիլա և ասէ ցնա. որպէս արկանէն դևք զփորձութիւն 'ի վերայ սրբոց ։ Ասէ ցնա ծերն. էր ոմն 'ի հարանցն որոյ անունն էր Նիկոն, որ բնակէր 'ի լեառն Սինեա. և ոմն մի աշխարհիկ գնացեալ 'ի խորան փարանացւոյ ումեմն, և գտեալ զդուստրը նորա անկաւ ընդ նմա և ասէ. թէ գիտասցէ հայր քո, այսպէս ասա նմա՝ եթէ ծերն Նիկոն արար զայս ընդ իս ։ Եւ իբրև եկն հայրն նորա և գիտաց զայս՝ լուեալ 'ի դստերէն եթէ ծերն Նիկոն արար, յայնժամ առեալ զսուր իւր գնաց 'ի վերայ ծերոյն. և իբրև բախեաց զդուռն, ել առ նա ծերն ։ Իսկ ձգեաց զսուրն փարանացին և կամէր սպանանել զծերն, և առժամայն չորացաւ ձեռք նորա և ոչ զօրեաց հարկանել զծերն ։ Յայնժամ դարձաւ և գնաց փարանացին այն և պատմեաց քահանայիցն ։ Իսկ նոքա կոչեցին զծերն, և եկն առ նոսա. և նոքա գանեցին զնա յոյժ, և կամէին արտաքսել զնա ։ Իսկ նա աղաչէր

թողութիւն արարէք ինձ վասն Ա՛յ զի ապաշխարեցից աստ, և սահմանեցին նմա զերիս ամս և պատուիրեցին զի մի ոք երթիցէ առ նա։ Եւ զերիս ամն գայր 'ի կիրակէ 'ի կիւրակէ և ապաշխարէր և աղաչելով ասէր՝ եթէ աղօթս արարէք 'ի վերայ իմ։ Եւ յետ այսորիկ դիւահարեցաւ այրն փարանացն որ զմեղսն արար և զփորձութիւնն ած 'ի վերայ անապատաւորին, և խոստովանեցաւ յեկեղեցւոջն՝ եթէ ես արարի զմեղս և զրպարտեցի զծառայն Ա՛յ։ Եւ երթեալ ամենայն ժողովուրդն ապաշաւեցին և անկան առ ոտս ծերոյն և ասեն. Թողութիւն արա մեզ, հայր։ Եւ ասէ ցնոսա. վասն թողութեան առնելոյ լեալ է թողութիւն ձեզ. այլ վասն բնակելոյ ինձ աստ՝ ոչ ևս բնակեմ ես ընդ ձեզ, վասն զի ոչ ոք գտաւ 'ի ձեզ որ ունէր ընտրողութիւն վշտակցութեան ընդ իս։ Եւ այնպէս գնացեալ անտի։ Եւ ասէ ծերն. տեսանես զիարդ բանսարկուն ածէ զփորձութիւնս 'ի վերայ սրբոց։

ԵՂԲԱՅՐՆ Պօղիկրոնիոս պատմէր մեզ և ասէր՝ եթէ 'ի միաբանակեացս Պենթուկլայ էր եղբայր մի ամենևին զգոյշ անձամբ, մարտնչէր 'ի պոռնկութենէ։ Յորժամ ծանրացաւ մարտն 'ի վերայ նորա, ել 'ի վանիցն և գնաց յԵրիքով կատարել զցանկութիւն իւր. և յորժամ եկն 'ի ներքնատունն պոռնկանացին, առժամայն ուրուկ եղև ամենևին. և տեսեալ զինքն ըստ արժանի, դարձաւ 'ի վանսն գոհացեալ զԱ՛յ, և ասէ՝ թէ Ա՛ծ ած զխարազանս զայս 'ի վերայ իմ, զի անձն իմ կեցցէ։

ԾԵՐ ոմն որ էր 'ի Սկիւթ, և անկեալ 'ի տկարութիւն մեծ՝ աղաչէր զեղբարսն զի հրամայեսցեն նմա գնալ

զնոսա և ասէր. Թոյլ տուք ինձ կեալ աստ և ապաշխարել զմեղս իմ։ Բայց նոքա արգելին զնա առանձին հեռի ուրեք զերիս ամս ոչ տեսանել զոք, և եդին նմա կանոնս ծանունս։ Եւ եկաց նա յարգելանին զերիս ամս և ապաշխարեաց յոյժ, բայց միայն 'ի կիրակէ աւուրս գայր յեկեղեցին և ասէր. Թողութիւն արարէք ինձ զի մեղայ. և այլ ինչ ոչ խօսէր ումեք բնաւ, և երթայր դարձեալ յարգելականին։ Իսկ զկնի այնորիկ դիւահարեալ եղև այն որ գործեաց զմեղս և զրպարտեաց զանպարտ ծերն, և եկեալ յեկեղեցին խոստովան եղև զայն առաջի բազմութեանն յայտնի՝ թէ իմ արարեալ է զայն և զրպարտեցի զանպարտն։ Յայնժամ յարուցեալ ամենեքեան եկին առ ծերն և ծունր կրկնեալ ասէին. Թողցես մեզ, հայր, զի արատացուցաք զքեզ։ Ասէ ցնոսա ծերն Նիկոն. Թողութիւն արասցէ ձեզ տէր. այլ ես ոչ ևս կացից ընդ ձեզ, զի ոչ ոք էր 'ի ձեզ որ դատէր ուղիղ և աշխատեալ էր ընդ իս։ Եւ գնաց անտի։ Ահա այսպէս գայ փորձութիւն 'ի վերայ սրբոց։

զպխտոյսն, և դարձեալ առ քոյսն վաղվաղակի առի և գնա և մի ումեք ծանրանար։ Զայս ածեալ 'ի նմանէ նենգաւորն առ 'ի յապականել զկուսութիւնն նորին և զաղօթսն զոր ունէր դադարմամբն առ տէր. և զնա որ ամենեցուն վշտակիցն էր բանիւք և բարի վարուցն օրինակաւ՝ փութայր 'ի ձեռամբն յանմեղայնի որսալ և ըմբռնել։ Այլ նա որպէս բարւոք խորհրդոց հաւատոց, էջ յարդելանոցէն իւրմէ՝ որ երբեմն սքանչելին էր, և անփոյծ յորոգայթից թշնամւոյն, ծանօթ և հուշակեալ ամենայն լեռլաց զբազում ժամանակս, և եկեալ 'ի քաղաքն՝ կնոջ միում ընտանեցաւ, և յանկարծակի յանպարժան գործս ոտնհար եղև, և ընթացակից ունելով զնենգաւոր վիշապն և զթշնամին։ Որդ անկեալ կործանումն և ընկղմեալ երկնէր հեծեծելով զոր և գործեաց, և թէ ուրախ եղև 'ի վերայ նորա թշնամին, որ և յառաւել տրտմութիւն անկանգնելի կամէր զնա կործանել և անյոյս առնել, մանաւանդ զհոգին ն̃յ տրտմեցուցանել և զհրեշտակաց և զսուրբ հարցն, յորոց բազումք և 'ի քաղաքի թշնամւոյն յաղթեցին։ Իսկ սա ոչ 'ի միում 'ի տոցանէ նմանեալ, այլ ուժգին տրտմութեամբ մերկեալ ոչ բանայր զգիտութիւն իւր. և տեսանէր զա̃ծ օգնական ամենայն հիւանդաց՝ որպէս և ինքն զամենեցունց յոյս ընտանեցուցանէր ն̃յ։ Փորձէր 'ի վտակս գետոյն որ մերձ

տարեալ վաճառեա 'ի քաղաքն և բերցես քեզ զգեստ քո և զարկղս 'ի տեղ քո. դու աշխատեսցես քեզ և մի զոք ձանձրացուցանես դու։ Զայս խորհել ետ չարն, զի նախանձէր ընդ սրբութիւն նորա և ընդ հանդարտութիւն և ընդ երանելի պարապումն որ առ ա̃ծ և ընդ շահ եկեղեցւոյն առ նա, և փութայր ամենայն հնարիւք որսալ զնա։ Յարեաւ նա, քանզի բարի կարծէր զխորհուրդն, և զի անփորձ էր 'ի խարդախութեան թշնամւոյն, և յամենեցուն սքանչելին այն և մեծանունն 'ի մէջ կանանց 'ի հրապարակս և 'ի փողոցս քաղաքին շրջէր։ Եւ յայնուհետև մինչ սովորեաց զնա ուսուցիչն չարեաց, գիրկեցաւ կնոջ տարփոյ և անկաւ ընդ նմա, զի անփորձ էր խորհրդոց թշնամւոյն. և եղև անկանելին նորա այսպէս։ Եւ եկեալ նա 'ի քաղաքէն գնայր 'ի սենեակ իւր, և դիպեցաւ 'ի տեղի անփայլէ յեզր գետոյն ուրեմն կին մի միայն և անկաւ ընդ նմա, և զկնի անկանելոյն այսպէս խոցեցաւ դառնապէս սիրտ նորա, և յիշեաց զի ծիծաղելի եղև դիւաց և տրտմեցոյց զսուրբ հոգին ա̃յ, և եղև տրտմութիւն հրեշտակաց և հոգւոց արդարոց. և զի այնոցիկ ևս ոչ կարացեալ նմանել որ 'ի քաղաքն կան։ Զայսոսիկ ուսուցանէր նմա բելիար հին թշնամին մարդկան. և որ յայնժամ զանկումն ուսուցանէր, նա և արդ զյուսահատութիւն գնէ։ Արդ եդ 'ի վերայ նորա տրտմութիւն և մոլութն, և 'ի չար յուսահատութենէն խորհէր ձգել զինքն 'ի գետն զի խեղդեսցի, և տարցեն ալիք գետոյն զդիակ նորա, և հոգին երթիցէ 'ի

էր՝ ընկղմել զանձն իւր 'ի մարմնական մահ. այլ աղօթ-
մամբն ած օգնեաց նմա և ոչ ներեաց 'ի լրութիւն գալ
ուրախութե թշնամւոյն, և ոչ անտես արար զառաջին
վաստակս և զջանս ծառային իւրոյ. դարձոյց զսիրտ նո-
րա 'ի չար ցանկութեացն, և եկեալ ինքն առ ինքն՝ ասէ
ցանձն գործսն իւր. բազում վաստակս ջանացիք և 'ի
կրօնաւորեան վիհս զիս կացուցիք, այլ օգնական է ած.
Դարձաւ 'ի սենեակն իւր և մտեալ ընդ դրունսն փա-
կեաց զնոյն. լայր 'ի վերայ անձին իւրոյ որպէս 'ի վերայ
մեռելոյ. ողբայր և աղաչէր զած, պահէր և հսկէր, տա-
ռապեալ և նուաղեալ մինչև 'ի վախճան մարմնին նորա.
ունէր ծունր, և թողութեան ոչ յուսայր: Այլ եղբարքն
զայլինն առ նա բազում անգամ վասն օգտի իւրեանց,
բախէին զդրունսն, և սա ինքն ասէր. ոչ կարեմ բա-
նալ, և իւրաքանչիւր յանձնէ իւրմէ ծանիցէ. աղօթս
արարէք վասն իմ, կարող լինել պատասխանատուութե:
Այլ ահա լինէր գայթակղութի որոց լսէինն, քանզի էր
նա 'ի նոցանէ պատուեալ իբրև զյոյժ միայնակեաց մեծ.
սակայն նա անփոյթ արարեալ զայսմանէ կատարեաց
զամենայն վաստակս իւր յոյժ զգաստութբ ապաշխա-
րեալ: Այլ յաւուր պահքային 'ի սուրբ տէրունական յա-

զեհեն հրոյն, զի այսպիսիք են խորհրդակցութե նորա: Այլ ոչ թու-
լացոյց խորք ողորմութեն այ կործանել խաղաղ զարարածս իւր, զի մի
կորիցէ վաստակ նորա ունայն. այլ ձեռն ետ 'ի փրկել զնա: Քանզի
մինչ զինեաց խելագարեալ ոմն 'ի գետն անկանիլ, յայնժամ վաղվաղա-
կի լուաւ զձայն որ ասէր. զի՞նչ կամիս առնել, ով անմիտ, և յաւե-
լուլ չար 'ի վերայ չարեաց և լինել քեզ բաժին Յուդայի և կորուսա-
նել զանձն քո. այլ դարձիր 'ի սենեակ քո և ողբասցես զմեղս քո և
զղջութբ անկիր առ ած, զի ողորմած և մարդասէր է, երկայնամիտ և
բազումողորմ, և ընդունի զորս գան առ նա: Իսկ իբրև լուաւ զձայնն
զայն որ թմրեալն էր 'ի թշնամւոյն՝ յարեաւ վաղվաղակի և զարթեաւ
որպէս 'ի քնոյ և գնաց 'ի սենեակ իւր 'ի լերինն, և կալեալ քարամբք
զդրունն խցին արգել զինքն 'ի նմա, և իբրև զմեռեալ այնպէս լայր և
կոծէր զանձն առաջի այ. և յայնպիսի ջանս և ճգնութիւս ետ զինքն,
մինչև հատեալ եղեն և լքեալ ամենայն անդամք նորա. այլ նշան թո-
ղութե ոչ կարաց առնուլ գեռ ևս: Եւ եթէ ոք յեղբարցն գնայր
առ նա վասն շահու և օգտի ինչ անձին և բախէր զդուռն, նա 'ի ներ-
քուստ ասէր. թողութե արա, եղբայր, ոչ կարեմ բանալ, զի ուխ-
տեցի այ ոչ բանալ զդուռն և ոչ տեսանել զմարդ, այլ այսպէս 'ի
մթին կալ և ողբալ զմեղս իմ ամ մի: Եւ զմեղացն ոչ ինչ ասէր եկելոցն,
իբրև զի մի գայթակղեցուսցէ զնոսա, քանզի էր մեծանուն յոյժ: Եւ
եկաց 'ի ճգնութիւս յայս և ապաշխարութիւս ամ մի: Իսկ իբրև եկն օր
յարութե տեառն, և 'ի գիշերի լուսոյ յարութեան տեառն առեալ

րութիւն առ Ճրագ եւ պատրաստեալ՝ եդեալ զնա 'ի Ճրա-
գարանին նոր, եւ զգիշերն ամենայն մնացեալ յաղօթս
ասէր ինքն առ ինքն. եթէ կամ է Տ՜ի եւ Ճրագն վա-
ռի՝ հաւատամ եթէ շնորհեցաւ 'ի տեառնէ ինձ թո-
ղութիւն։ Եւ ընդերկարեալ զամենայն գիշերն, աղօթս
մատուցանէր առաջի Տ՜ի եւ ասէր. գթած եւ ողորմած
Ած, որ զբարեբարոս կամիս կեցուցանել եւ 'ի գիտութիւն
ճշմարտութեան առ քեզ ածել, առ քեզ մխիթարականին
լինիմ, փրկիչդ, հաւատով. ողորմեա ինձ որ բազում
դառնացուցի զքեզ յուրախութիւն դիւացն, եւ ահա մեռոյց
զիս թշնամին. բայց դու, Տէր, անհաւատից եւ անօրինաց
ողորմիս եւ մեղաւորաց ողորմիս եւ գթաս եւ փրկես.
գթա 'ի տառապեալս իմ, զի 'ի քեզ անկարութիւն ոչ գոյ,
քանզի մինչեւ 'ի դժոխս ցրուեցաւ անձն իմ. արա ողոր-
մութիւն ձեռակերտի քում, զի դու քաղցր ես՝ որ կամիս
եւ 'ի հանդերձեալսն զեղծեալ մարմինսն յարուցանել.
լուր ինձ, Տէր, զի նուաղեցաւ յիս հոգի իմ, եւ նուա-
ղեցաւ անձն իմ, կորուսեալ է եւ մարմին իմ զոր ապակա-
նեցի, եւ ոչ ես զօրեմ մնալ կենդանի յերկիւղէ քում-
մէ, եւ ոչ ես այլն ունիմ համարել կենդանի եւ գտանել
թողութիւն յանցանաց իմոց ապաշխարութեամբ, քանզի
կրկին ունիմ զյուսահատութիւնս, բժշկեա զմոլորեալս.
եւ Հրոյ քո հրամայեա, զի Ճրագս այս լուսցի, որով ա-
ռից քաջալերութիւն յողորմութիւնս քո ըստ ժամանակի

Ճրագ նոր և էարկ 'ի նա ձէթ և պատրոյգ և եդ ընդդէմ իւր. և յերե-
կոյէ եկաց յաղօթս և ասէր. ամենողորմ և գթած ած, որ և զհեթա-
նոսս կամիս զի կեցցեն և եկեսցեն 'ի գիտութիւն ճշմարտութեան,
'ի քեզ դիմեալ անկանիմ ես մեղաւորս, ընկեալ զանարժանս զիս որ
քան զամենեսեան առաւել բարկացուցի զքեզ, և եղէ խնդութիւն
թշնամեաց իմոց. արդ ահա, Տէր, մեռեալ եմ հոգւով և մարմնով
որով մեղայ քեզ և հնազանդեցայ դիւաց, այլ դու, Տէր, և յանօ-
րէնս գթաս և մարդկան պատուիրես ողորմել անկելոյն. արդ գթա
'ի տառապեալս իմ, և զի ոչ ինչ անհնարին է քեզ, զի 'ի դժոխս մեր-
ձեցաւ անձն իմ. ողորմեաց ինձ, Տէր, զի քաղցր է ողորմութիւն
քո։ Որ զհին մեռեալսն յարուցանես 'ի յետին աւուրն յարութեան,
յարո և զիս զմեռեալս 'ի մեղաց իմոց. լուր, Տէր, աղօթից իմոց, զի
տկարանաց հոգի իմ և չորացան ոսկերք իմ զոր աղծեցի ես, և այլ
ոչ կարեմ կեալ, զի կիզիմ յահէ քումմէ. և որովհետև համարձակիմ
խնդրել թողութիւն մեղաց իմոց, կրկին անյուսութիւն պաշարեաց զիս։
Կենդանացո զմոլորեալս, հաստատեա զխախտեալս, կանգնեա զգլ-
գլորեալս, տուր ինձ յոյս կենաց և հրով քով հրամայեա վառել զՃրա-
գս զայս 'ի փառս ամենասուրբ անուան քում առ 'ի յայտնել զա-

ապաշխարութեան յորում մնայի 'ի պատուիրանս քո՝ պահելով զերկիւղ քո, որով 'ի յանցանացն զգուշանայի և միայն հարազատութեամբ զքեզ պաշտէի: Զայս ասէր 'ի գիշերի յարութեան տեառն բազում արտասուօք: Նա յարեաւ տեսանել եթէ լուցեալ իցէ ճրագն. եբաց և ետես, զի ոչ էր վառեալ: Դարձեալ անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց աղաչէր զտէր և ասէր. գիտեմ, տէր, զի յառաջ կոչէիր պսակել զիս, և ոչ զգուշացայ ոտից իմոց. առաւելեալ մարմնական տիղմն սողոսկեաց զիս և յամբարշտից դժոխս էարկ զիս: Կեցո զիս, տէր, զի դարձեալ խոստովան լինիմ քաղցրութեան քո զանամօթութիւն իմ առաջի հրեշտակաց քոց և ամենայն արդարոց, և թէ ոչ էր գայթակղութիւն՝ և առ մարդիկ խոստովանէի. այլ դու քոյին գթութեամբդ գթա յիս. այո տէր, կենդանացո զիս, զի և զայլս խրատեցից 'ի յայս ապաշխարութեան: Նա այսպէս յերկիցս անգամ աղաչեալ՝ գտաւ լոյսն փայլեալ լուցմամբ. ուրախ լինէր 'ի վերայ լուսոյն, զօրացաւ սրտիւ, զուարճանայր յինքեան և սքանչանայր ընդ շնորհսն որով զպակասութիւն իւր ելից: Նա ասէր. գոհանամ զքէն, տէր, որ այսմ իրի արժանի էի վասն կենաց աշխարհի ողորմեցար ինձ, զմեծ և զնոր

ւսոյ ողորմութեան քո և 'ի մխիթարութեան մեղաւոր ծառայիս քո, որպէս զի յառաջնականս ունիցիմ յայս յաւուրս յորս առաջ ես ինձ, և ներեսցես լինել 'ի վերայ երկրի և պահել զպատուիրանս քո, որպէս զի մի երբէք հեռացայց յերկիւղէ քումմէ. այլ ըստ կարի իմում նըւաստութեան սպասաւորեցից քեզ զամենայն աւուրս կենաց իմոց: Զայսափ աղօթս մատուցանէր զգիշերն ողջոյն զառկին՝ անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց բազում արտասուօք և հառաչանօք: Եւ 'ի մէջ գիշերին մինչ վառէին զճրագն և զլապտերս եկեղեցւոյն, ետես լոյս եկեալ յերկնից իբրև զմեծ հուր և վառեաց զճրագ նորա: Իսկ նա դարձեալ անկաւ յերկիր 'ի վերայ երեսաց իւրոց, և աղաչէր զԱծ և ասէր. գիտեմ, տէր, զի ոչ եմ արժանի ողորմութեանս այսմիկ, զի զժամ ողորմութեան և զպսակացն՝ ժամանակ մեղաց արարի, այլ մի թողուր զիս, տէր, վասն մեղաց իմոց. մի ընկենուր և մի մերժեր զիս ըստ անօրէնութեան իմում. զի ահա դարձեալ անկանիմ առաջի քո, տէր, և խոստովանիմ զամօթս իմ առաջի քո և հրեշտակաց քոց և ամենայն հոգւոց արդարոց: Եւ եթէ ոչ լինէր գայթակղութեան ժողովրդեան քո, առաջի ամենայն մարդկան յայտնապէս խոստովանէի զպիղծ գործս իմ. այլ թող ինձ, տէր, ըստ բազում ողորմութեան քում, զի և այլոց քարոզեցից զմեծութեան մարդասիրութեանց քոց. տէր տէր, որ ես յայս ամենայն ծառայից քոց, յորս զիս որ անկայ զառնապէս: Զայս աղօթեաց երիցս անգամ և ետես զճրագ իւր բորբոքեալ իբրև զամբար մեծ. վասն զի լուաւ տէր աղաչանաց նորա, և էառ անոր յայս բարի

նշանս յայտնեալ ինձ՝ խնայեցեր տէր յանձն որ քո է ։ Եւ այսպիսի խոստովանութեամբ հեղցր զանձն իւր առաջի տեառն մինչև 'ի գալ աւուրն ։ Եւ էր ուրախ 'ի տէր, զմարմնական կերակուրն մոռացեալ ։ Իսկ զլոյս Ճրագին զամենայն աւուրս իւր պահեաց . ձէթ արկանէր և պատրաստէր, զի մի շիջցի ։ Եւ այսպէս դարձեալ բնակեցաւ առ ինքն, եղեալ առ ամենեսեան նշանաւոր և խոնարհամիտ 'ի խոստովանութ̃ն և 'ի գոհութիւն առ տէր ուրախութ̃ք ։ Եւ յորժամ կամէր աւանդել զհոգին, էառ յառաջ աւուրբք յայտնութ̃ն* ։

ԱՂԲԱՅՐ մի յարևելս՝ անուն նորա Ափրեմ, ասորի ազգաւ . սա ինքն մարդ ա̃ծապաշտ և հեռի յամենայն գործոց չարաց, ցանկայր տեսանել զԵդեսիա քաղաքն, և աղօթս արարեալ ասէ . տէր Յ̃ս Ք̃ս և Ա̃ծ, արժանացո զիս տեսանել զքաղաքն Եդեսիա ։ Եւ 'ի գնալն իմ 'ի նմա այնպիսի առն արժանացո զիս պատահել, որ կարօտի զրով քննութիւն առնել ընդ իս ։ Եւ հասեալ 'ի դրունս քաղաքին՝ պատահեաց նմա կին մի, որ էր պոռնիկ ։ Եւ տեսեալ զնա ծառայն ա̃յ՝ եկեաց տր-տում և ասէր ցինքն . տէր, ամենայն արարեր զաղաչանս

և ուրախացաւ սիրտ նորա խնդութեամբ մեծաւ և սքանչացաւ ընդ շնորհսն ա̃յ, զի լուաւ տէր խնդրուածոց նորա և հաստատեցոյց զնա նշանաւն այնորիկ ։ Յայնպիսի գոհութ̃ն և յաղաչանս և 'ի խոստովանութեանս հսկեաց զգիշերն ողջոյն, և էր ուրախացեալ 'ի տէր վասն այնորիկ . և զկերակուր մարմնական մոռացաւ իսպառ ։ Իսկ զա̃ծատուրն զայն հուր որ 'ի Ճրագին՝ անշիջանելի պահեաց մինչև յօր մահուան իւրոյ՝ միայն ձէթ արկանելով 'ի նմա ։ Եւ բնակեցաւ 'ի նմա հոգի սուրբ, և եղև առաւել պատուական և երևելի առաջի ամենեցուն, և ընդ այլ առաքինութիւնս ստացաւ և զխոնարհութ̃ն յոյժ և գոհանալոյ զա̃յ ։ Իսկ մինչ փոխադրէր զնա ա̃ծ, ետես այլ տեսիլ զի կոչէր զնա յարքայութիւն երկնից ։ Արդ այսպէս եթէ ոք ոչ յուսահատեալ՝ անկանիցի առաջի բարերարին ա̃յ, գտցէ զողորմութիւն առատապէս 'ի նմանէ ։

* Համառօտութիւն պատմութեանս դարձեալ 'ի հին թարգմանութենէ ։ Միայնակեաց ոմն անկաւ երիցս 'ի պոռնկութ̃ն և կամէր ընկենուլ զինքն 'ի գետ, և ողորմածն Ք̃ս ձայնիւ արգելեաց զնա և հրամայեաց նմա երթալ 'ի խուցն իւր, և չոգաւ կալ զգուշան քարամբք ամ մի ։ Եւ 'ի վառելի գիշերին խնդրեաց 'ի Ք̃սէ ցուցանել նմա նշան թողութեան զվառումն Ճրագին զոր կազմեաց ձիթով և պատրուգիւ և եդ յանդիման իւր ։ Եւ 'ի մէջ գիշերին եկն լոյս մրրկատեսակ և կալաւ 'ի պատրոյգն . և յաւել 'ի մաղթանսն, և ընդ առաւօտն բորբոքեցաւ իբրև զարև . ցնծացաւ հոգւով և կերակրեաց զլոյսն ձիթով մինչև մեռաւ ։

ծառայիս քո, որպէս ունի դա զդրով խօսել ընդ իս ։ Եւ կ պոռնիկն կանգնեալ հայէր ընդ նա ։ Ասէ ցնա սուրբն Եփրեմ. տես, կին, զի պշուցեալ հայիս ընդ իս ։ Իսկ ասէ պոռնիկն. ինձ պարտ է հայել ընդ քեզ, զի 'ի քէն ելի. բայց քեզ նայել ընդ իս ոչ է պատշաճ, այլ ընդ երկիր ուստի առար ։ Զայս լուեալ սուրբն Եփրեմ զարմացեալ փառաւոր արար զնա, որ ետ նմա այնպիսի իմաստութիւն պատասխանւոյ, ծանուցեալ թէ ոչ անտես արար տէր զաղաչանս իւր ։ Եկն¹ 'ի քաղաքն, իջեվանս կալաւ մօտ 'ի վաճառանոցն տեղւոյն. և արարեալ անդ աւուրս սակաւս, ետես այլ պոռնիկ, որ շարժեալ 'ի սատանայէ խոնարհեցաւ ընդ պատուհանն, զի եկեալ գայթակղեցուսցէ զնա ։ Իսկ խոնարհեալ տեսանէր զսուրբն զի առնէր իւր ջերմ կերակուր, և ասէ. օրհնեա, հայր ։ Ասէ. ամենամաքուրն օրհնեսցէ զքեզ ամէն, դուստր ։ Իսկ ասէ աղջիկն. զի՞նչ է պակաս 'ի կերակրոյ քումմէ ։ Իսկ ասէ սուրբն. երիս քարինս և սակաւ մի տիղմ, զի ծեփեցից զպատուհանդ ընդ որ դու խոնարհիս ։ Ասէ կինն. ընդէ՞ր ինձ այդպէս բարկութեամբ պատասխանես. ես կամիմ ննջել ընդ քեզ, և դու ինձ այդպէս բարբառիս ։ Ասէ սուրբն. եթէ կամիս, ուր ասեմ՝ եկեսցես և ննջեսցուք 'ի միասին ։ Ասէ պոռնիկն. տես ինձ զտեղին, և գամ ուր խորհիս ։ Ասէ տէրն Եփրեմ. եթէ խորհիս ննջել ընդ իս, յայլ տեղւոջ ոչ, բայց միայն 'ի մէջ քաղաքիս ։ Իսկ նա ասէ. և ո՞չ ամաչեմք 'ի մարդկանէ գործելով զայս 'ի մէջ քաղաքիս ։ Ասէ տէրն Եփրեմ. եթէ 'ի մարդկանէ ամաչեմք, ապա մանաւանդ յԱյ պարտ է ամաչել և զարհուրել, որ գիտէ զգաղտնիս մարդկան. զի նա ինքն է որ դատի զկենդանիս և զմեռեալս և տացէ իւրաքանչիւրոց զգործս իւր ։ Զայս լուեալ պոռնիկն և զարթուցեալ 'ի վերայ բանիցն՝ եկն և

¹ Անցանէր երբեմն երանելին Եփրեմ 'ի քաղաքի, և պատահմամբ շարժին եկն առ նա կին մի պոռնիկ և ասէր զի անկցի ընդ նմա 'ի պղծութիւն. և զայս առնէր գէտ, զի գուցէ 'ի յերկուց միտաց 'ի մինն արկցէ զնա, կամ 'ի պղծութիւն և կամ 'ի բարկութիւն. և զի ոչ ոք երբէք ետես զնա բարկացեալ ։ Ցայնժամ ասէ հայրն Եփրեմ հեզաբար ցկինն. եկ դու զկնի իմ ուր և գնասցես ։ Իսկ հետևեցաւ նմա ։ Եւ առ րաւ զնա 'ի մէջ քաղաքին 'ի հրապարակին, ուր էր ամբոխ յոյժ, և ասէ ցկինն. 'ի յայսմ տեղւոջ արդ կամիմ զի կատարեսցես զկամս քո ։ Իսկ նա իբրև ետես զբազմութիւնն զայն ժողովեալ, ասէ ցծերն. և որպէս

անկաւ առ ոտս նորա, լայր և ասէր. Ծառայ եմ, աղաչ-
նորդես ինձ դժանդապարհս փրկութեան, զի և կեցից 'ի
քաղաքում և 'ի չար գործոց իմոց։ Իսկ տէրն Եփրեմ քա-
ղում յոյս եդ նմա 'ի գիրս սրբոց, և հաստատեաց զնա
յապաշխարութի, եդ 'ի վանս և կեցոյց զհոգի նորա։

ՊԱՏՄԷՐ մեզ աբբայն Եղիա բանսիկանացին՝ եթէ
նստեալ իմ երբեմն յայրին ուր Յորդանանու յայրն
իմ մերձ 'ի վանս ներքինեացն, 'ի մի յաւուրց յիննե-
րորդ ժամուն յամսեանն օգոստոս, յոր էր խորշակ սաս-
տիկ և ուժգին, բախեաց ոմն յայրն իմ. և ելի տեսի կին
և ասացի ցնա. զինչ է խնդիր քո այսր։ Եւ ասէ. Ես,
տէր աբբայ, վասն քաղաքավարութեանս այսորիկ եկի, և
լուր կերպարանաց քում այրիդ՝ ունէի փոքրիկ այր։ Ը-
ցոյց ինձ զտեղն 'ի կողմն հարաւոյ և ասէ՝ թէ յոր-
ժամ գայի ընդ անապատս ընդ այս, ծարաւեցայ 'ի խըս-
տութենէ խորշակին. այլ արա, հայր, սէր և տուր ինձ
սակաւիկ մի ջուր։ Մատուցի նմա զբաժակն, և առեալ
ըմպեաց, և արձակեցի զնա։ Եւ 'ի գնալն նորա սկսաւ
դեւն մարտնչել ընդ իս և ընկենուլ զիս 'ի մտածութիւ
պոռնկութե, տիրեաց և ոչ կարացի բառնալ զջերմու-
թիւնն. առի զգաւազանն և ելի յայրէն իմմէ 'ի խոր-
շակին՝ որ և զքարինսն կիզոյր, գնայի զցանկութիւն կա-
տարել։ Եւ յորժամ գնացի իբրև մղոն մի, հեղձեալ
'ի ցանկութենէն՝ եղէ 'ի զարմացման, և տեսի զերկիր
պատառեալ՝ զի կամէր և զիս կլանել. և տեսի անդ մար-
մինս մեռելոց անկեալ և հերձեալ և զազրութի իւրա-
քանչիւր ոք լցեալ, և ոմն վայելուչ քահանայ ցուցանէր
ինձ 'ի խորսն զննակութիւն՝ եթէ այս կանանց և այս
արանց և այս մանկանց, առ 'ի ողջանէ ոչչափ և կամիս
վասն ցանկութե քո այսմ զազրութե. տես քանի վաս-
տակս կամիս կորուսանել, վասն որոյ հեշտութե կամիս
պակասիլ քեզ յարքայութենէն երկնից և անկանել 'ի
մարդկայինս, վասն միոյ պահու զայնքան վաստակս կա-
միս տուժել։ Եւ ես 'ի բազում դժնդակութէն անկայ
'ի վերայ երկրի։ Եւ եկն որ երևեցաւ ինձ զեղեցկու-

հնար իցէ գործել զամենայն առանց գոյա։ Ասէ ծերն. եթէ 'ի մարդ-
կանէ ամաչես, ո՞չ ես առաւել ամաչել և երկնչել յԱյ որում իցէ.
որ անտանէ զծածկեալսն 'ի սրտի։ Յայնժամ պատկառեալ մեկնեցաւ
և գնաց կինն այն։

թիւնն, կանգնեաց զիս, և մարմն զաղտարեաց. դարձայ և գոհացայ զԱյ:

ՄԻԱԾՆԱԿԵԱՑ՝ մի կամեցաւ լինել ընդ կնոջ, զի լուանայր զձորձս, և ասէ. տես զյետ այսորիկն, զի կամ յուսահատեալ երթաս յաշխարհ և ընկղմիս, և կամ յոլով վաստակօք և արտասուօք ոչ կարես գալ 'ի չափդ յայդ: Իսկ նորա զղջացեալ օրհնեաց զԱծ և դարձաւ անդրէն 'ի վանս իւր:

ՄԻՒՍ՝ ևս միայնակեաց եղև ընդ կնոջ, զի լուանայր զինքն, և գնացեալ 'ի խրճիթն պատեցան զնովաւ դևք և ասէին. այլ ոչ գոյ քեզ յոյս փրկութեան, գնա յաշխարհ: Իսկ ել 'ի գնալ, և դարձեալ եկն 'ի միտս և ասէ. ուստի եկիք ինձ այսպիսի խորհուրդք դիւականք. ահա ինչ մեղայ, ոչ ինչ մեղայ, ոչ գիտեմ բնաւ զինչ ասէքդ: Իսկ մտեալ 'ի խուցն կայր անհոգ որպէս երեկն

¹ Եղբայր ոմն առաքեալ եղև 'ի ծերոյ ումեմնէ 'ի սպասաւորութիւն. և եկեալ 'ի տեղի մի ուր էր ջուր, և կին ոմն լուանայր անդր զձորձս իւր: Իսկ եղբայրն սկսաւ պատերազմել 'ի դիւէն, իբր զի խառնեսցէ ընդ կնոջն: Ասէ ցնա կինն. դիւրին է ինձ լսել քեզ վասն այդորիկ, այլ թէ լսեմ քեզ՝ պատճառ լինիմ քեզ բազում վշտաց և նեղութեան և անձկութեան: Իսկ նա ասէ՝ թէ որպէս և կամ որով օրինակաւ: Ասէ ցնա կինն. զկնի առնելոյ քո զայդ, խոյս պատանեակս մեր քո մինչ տեսանես զքեզ մեղուցեալ Այ. և յերկուց յայսցանէ միոյն դիպեսցի քեզ, կամ հատցես զյոյս քոյոյ փրկութեան և դարձցիս յաշխարհ և անկանիս յանհնարին չարիս և կորիցես իսպառ, իսկ եթէ զայս ոչ արասցես՝ բազում արտասուօք և հեծութեամբ և չարչարանօք գտանեսցիս մինչև 'ի մահ, և ոչ կարասցես գալ 'ի չափն յորում ես արդ. և նախ քան զվախճանն քո այդ ամենայն չարեաց՝ գնասցես խոստովանութեամբ զճանապարհ քո: Իբրև լուաւ զայս եղբայրն յիմաստուն կնոջէն, գոհացաւ զԱյ և զղջացաւ յոյժ և գնաց խոստովանութեամբ և եկեալ պատմեաց զայն ծերոյն: Եւ զարմացեալ ծերն օրհնեաց զկինն զայն, և այլ ոչ ևս եթող զեղբայրն ելանել արտաքոյ խցին. զի բազում չարիս հնարէ և որոգայթս կազմէ եղբարց որ շրջին միշտ անհոգաբար՝ զհետ չարութեան, և զիւրեանս որսայ 'ի ցանցս իւր:

² Եղբայր ոմն այլ գնաց 'ի գետն լնուլ ջուր. և գտեալ անդ կին ոմն լուացող՝ անկաւ եղբայրն ընդ նմա. և զկնի մեղանչելոյն լցեալ ջուր գնայր 'ի սենեակ իւր, և ճանապարհին պաշարեալ զնա դևք 'ի ձեռն խորհրդոց ասէին՝ եթէ ուր գնաս արդ, զի ոչ գոյ քեզ յայսմհետէ հնար փրկութեան. այլ մի՞ զեկիր 'ի փափկութէ կենցաղոյս: Իսկ իբրև ծանեաւ եղբայրն զպատերազմն թշնամւոյն եթէ խնդրէին կորուսանել զնա, ասէ ցխորհուրդս իւր. ո՞յք և կամ ուստի եկիք յիս՝ նեղել և յուսահատել զիս. ասեմ ձեզ՝ ոչ եմ մեղուցեալ բնաւ. ասեմ դարձեալ՝ ոչ ինչ մեղայ և ոչ գիտեմ զինչ ասէք դուք: Եւ գնաց 'ի սենեակ իւր և կայր որպէս յերեկն և յեռանդն: Եւ յայտնեաց Աձ 'ի տեսլեանն ծերոյ ումեմն մերձաւորի իւրոյ և ասէ. այն ոմն եղբայր

պէտ գայ նմա հոտ 'ի խոհակերացն՝ նա ոչ ուտելով ոչ լուծանէ զպահքն, որպէս և ոչ 'ի գարշ հոտոյն որ գայ՝ տղմոտ լինի: Այնպէս և դու՝ թէպէտ դիպի քեզ խորհուրդ, մի հեշտանար և մի յամեր:

ԻՄԱՍՏՆԱՍԷՐ՝ ոմն 'ի մեռանելն աւանդեաց զորդի իւր ընկերի իւրում, որ և սնեալ 'ի տան նորա՝ անկաւ ընդ կնոջ նորա. և եհան զնա 'ի տանէն, և նա աղաչէր տալ նմա ապաշխարութիւն և թողուլ 'ի տունն: Իսկ ասէ իմաստնասէրն. զերիս ամս նիստ մերկ 'ի ջուր, և զերեք ամ վարձ տուր զի անարգեսցեն զքեզ: Իսկ արար զայն, և գնաց յԱթէնս. և նստէր անարգիչ մի առ դրանն, և 'ի յանարգել զնա ծիծաղեցաւ, և յասելն թէ ընդէր ծիծաղեցար՝ ասաց. երեք ամք են զի վարձու անարգել տամ զիս, և զի դու առանց վարձու անարգեցեր զիս՝ խնդացի: Իսկ դուռն այն այ է, և նախատիչն սատանայ, և քաղաքն վերինն Երուսաղէմ և դժուարաւ մտանելի է նա:

բարուոք ճանապարհորդ. քանզի նոքա յորժամ շրջին 'ի կրպակս և 'ի հրապարակս, թէպէտ և դիպեսցի նմա հոտ խորշելոցն 'ի սպանդանոցի, ոչ մտեալ կերիցեն լաւքն, այլ վատթարքն գթին:

: Ասաց հայրն Յովհաննէս կարճահասակն՝ եթէ էին ուրեմն իմաստասէրք սիրելի միմեանց. և եւս մինչ մեռանէր միոյն 'ի նոցանէ, եթող զորդի իւր զանդրանիկ մանուկն՝ աւանդեալ ընկերի իւրում սնուցանել զնա: Իսկ իբրև աճեալ մանուկն զարգացաւ, անկաւ առ կինն նորա որ սնոյց զնա: Իբրև գիտաց իմաստասէրն այն, արտաքսեաց զնա 'ի տանէ իւրմէ. իսկ մանուկն զղջացեալ ընդ գործս իւր ապաշաւեաց յոյժ, և աղաչէր զնա դարձեալ ընդունել զնա: Եւ նա ոչ կամէր, այլ ասէր ցնա. եթէ կամիս առ իս կեալ, զայս ինչ պատիժ առցես յանձն քո վասն յանցանաց քոց. գնասցես և զամս երիս նստցիս մերկ 'ի ջուր գետոյն զտիւն ողջոյն, և ապա եկեալ գայցես զի թողից զմեղս քո և ընկալայց զքեզ: Եւ գնացեալ արար որպէս պատուիրեալն էր, և ապա եկն առ նա զկնի երից ամացն: Ասէ ցնա իմաստասէրն. ոչ պատշաճապէս ապաշխարեալ է քո դեռ ևս, և գնա դարձեալ այլ ևս երիս ամս տացես վարձս մարդկան, զի անարգեսցեն զքեզ, և ապա եկեսցես այսր: Իսկ մանուկն արար զամենայն զոր պատուիրեալն էր: Ասէ իմաստասէրն ցմանուկն. գնասցուք արդ 'ի քաղաքն աթենացւոց և ուսցուք իմաստութիւն: Եւ էր ծեր ոմն նստեալ առ դրան իմաստասիրացն և անարգէր զամենեսեան որք մտանէին 'ի նմա. և որպէս սովորութիւն ունէր, անարգեաց և զմանուկն զայն: Իսկ նա ծիծաղեալ զուարճացաւ: Ասէ ցնա ծերն. զի՞ է զի ես անարգեմ զքեզ և դու խնդաս: Ասէ մանուկն. և ո՞չ է արժան զի ժպտեցայց. զի ահա երեք ամք են յորմէհետէ վարձս տամ զի անարգեսցեն զիս, և ահա այսօր ձրի անարգեցայ, այնու ծիծաղիմ: Ասէ ցնա ծերն. արի մուտ 'ի քաղաքդ, զի կատարեալ ես դու: Արդ է դուռն այն դուռն այ, իսկ քաղաքն վերինն Երուսաղէմ, և անարգողքն են դեք և ախտք, և հարքն ամենայն բազում վշտօք և անարգանօք մտին ընդ նա, և մեզ այսպէս պարտ է առնել:

ՄՏԱՒ' առ հայրն Եսայի մանուկ մի բժշկել 'ի դիւէ. և նա ետես զծեր մի, զի մերձաւ ընդ սողայքն և ասէ Եսայի. եթէ որ ստեղծն զնա' ոչ կիզու զնա հրով, ես զինչ արարից:

ՄՂՐՈԱՑԻ' մի և քոյր կուսան լուռ տոկարութն խուրեանց գնացին 'ի խոստովանութի առ անուանի ծեր և մնացին առ նմա զգիշերն, և յայգն և յաշխէ նորա նիջեցին, և յաղղմանէ սատանայի շնացին, և վաղխեն ըղջմութի առաքեաց զնոսա ծերն. և 'ի Ճանապարհին ասէին' ո գիտէ իմացաւ ծերն թէ ոչ: Այլ դարձան առ նա և անկեալ առաջի նորա ասէին. գիտացէ՞ր, հայր, զի խայտառակեաց զմեզ սատանայ: Այլ ասէ ծերն. այո ծանեայ: Այլ ասեն ցնա. և ո՞ւր էին յայնժամ խորհուրդ քո: Այլ ասէ ցնոսա. առ ժամուն յայնմիկ յորում կայր խաչեալ արարիչն մծ, անդ կայի և լայի: Այլ առեալ 'ի նմանէ կանոնս' գնացին 'ի յարկան խցերանց 'ի վանս կանանց և արանց, ուստի 'ի գալն պատահեաց նոցա ուղեկցութի 'ի դիւաց. սակայն յայնմհետէ եղեն անօթք ընտրութե:

ՕՆԵՐ' ումն խնդրէր յայլ հասանել 'ի չափն Իսա-

1 Եկին երբեմն առ հայրն Եսայիաս մանուկ մի դիւահար զի բժշկեսցի, և էր անդ. եկն և եղբայր ոմն յԵգիպտոսէ, և ետես հայրն զի մերձանչէր եղբայրն այն ընդ մանկանն և ոչ յանդիմանեաց զնա, այլ ասէ. եթէ ած որ ստեղծ զնա տեսանէ զայն և ոչ հրկիզէ զնա, ես զի՞ դատեցայց զնա. և եթէ նա դատեսցէ, բաւական է:

2 Ասէին զծերոյ ումեմնէ մեծի որ նստէր միայնակեաց յԵգիպտոս, և երթայր առ նա ընդ ժամս ժամս եղբայր ոմն 'ի խոստովանութիւն. երթայր և կոյս ոմն այսպէս: Իսկ եղև օր մի զի գնացին երկոքեան 'ի միում աւուր առ ծերն. և իբրև երեկոյ եղև, կացեալ ննջեցին 'ի միասին 'ի սենեկին, և ծերն 'ի մէջ նոցա: Արդ յայնմ գիշերի պատերազմեալ եղբօրն յարեաւ 'ի վերայ կուսին և ննջեաց ընդ նմա. և գիտացեալ զայս ծերոյն ինչ ոչ ասաց նոցա, և իբրև լուսացաւ' պարզ երեսօք յուղարկեաց զնոսա ծերն: Եւ իբրև գնային, սկսան ասել ցմիմեանս 'ի ճանապարհին. միթէ գիտաց՞ զայն ծերն զոր գործեցաք' թէ ոչ գիտաց: Եւ խորհեալ 'ի միասին դարձան անդրէն առ ծերն և առ ոտն արտասուօք անկեալ առաջի նորա. մի՞չ ծանեար, հայր, թէ որպէս այպանեաց զմեզ գևն: Ասէ ծերն. այո ծանեայ: Եւ նոքա ասեն. և ո՞ւր էին յայնժամ միտք քո, հայր: Իսկ նա ասէ. անդ էին միտք իմ յայնժամ ուր կայր կախեալ 'ի խաչին Քս, և կայի առաջի նորա և լայի: Յայնժամ ապաշխարեալք առեալ կանոն 'ի ծերոյն գնացին և եղեն անօթք ընտրեալք 'ի ձեռն քաջքր ծերոյն, որ ոչ դատապարտեաց զնոսա, և աղօթք նորին օգնեաց նոցա և ոչ կորեան:

3 Պատմեցին մեզ ծերքն' եթէ էր 'ի Սկիւտէ կրօնաւոր ոմն որ աղաչէր զած և ասէր. տէր, արժանի արասցես զիս հասանել 'ի չափ Իսա-

հակայ. և լուաւ եթէ ոչ կարես, լուռ լեր։ Այլ ապա՝ հասո զիս 'ի չափն Յովբայ և պատրաստ եմ կռուել ընդ դևսն, և ոչ ասէր՝ զօրութեամբ քո, տէր։ Այլ ասէ հրեշտակն ծերոյն. ահա սպասէ յայսմհետէ։ Ահա ետես զինուոր ունելով երկերիւր լիտր ոսկի և տղայ մի և աղջիկ մի և ասէ. ողորմեաց ինձ և պահեա զայս, զի Թագաւոր խնդրէ սպանանել զիս, և ես երթամ Թագնուլ և դարձեալ գամ։ Այլ յանձն էառ, և մնաց ընդ աղջիկն, և երկեաւ. և սպան զնա և զտղայն, զի մի մատնեսցեն զգործն։ Այլ առեալ զոսկին գնաց և

հակայ նախահօրն։ Եւ իբրև աւուրս բազումս աղաչեաց, եկն առ նա ձայն յերկնից որ ասէր. ոչ կարող ես դու հասանել 'ի չափ Իսահակայ նահապետին։ Իսկ կրօնաւորն ասէ. եթէ ոչ կարող եմ գալ 'ի չափ Իսահակայ, ապա 'ի չափ Յոբայ հասուսցես զիս, տէր։ Ասէ դարձեալ ձայնն աստուածային ցծերն. եթէ պատերազմիս և դու, և յաղթես Թշնամւոյն իբրև զՅոբ, ապա գաս 'ի չափ նորա։ Իսկ կրօնաւորն խոստացաւ տանել զամենայն և մարտնչել ընդ սատանայի։ Յայնժամ դարձեալ լուաւ զձայնն յերկնից որ ասէր. գնա արդ 'ի սենեակ քո և պատրաստեաց բարւոք արիութեամբ։ Եւ նա գնաց 'ի պատրաստել զինքն 'ի պատերազմ, և յետ աւուրց մատուցաւ զայն զոր խոստացաւ արիանալ փորձանաց սատանայի։ Եւ ահա զկնի աւուրց ինչ փոխեցաւ սատանայ 'ի կերպ զինուորի և եկեալ առ ծերն այն ասէ. աղաչեմ զքեզ, հայր. ողորմեաց ինձ հալածելոյս 'ի Թագաւորէն, և առ յինէն զայս երկերիւր լիտր դահեկանս ոսկւոյ և զաղջիկս զայս և զմանուկս, և պահեսցես զսոսա 'ի ծածուկ տեղւոջ. և ես փախեայց և գնացից յաշխարհ հեռի և Թագեայց անդ առ ժամանակ մի. Ասէ ցնա ծերն. որդեակ, ես ոչ կարեմ պահել քեզ զայդ. զի ես այր աղքատ եմ և զինչ կարացից պահել և կամ ծածկել զայս ամենայն ինչ։ Իսկ զինուորն բանադատէր զծերն պահել զայնուսիկ բազում աղաղականօք։ Ասէ ցնա ծերն. գնասցես, որդեակ, և Թաղեսցես զոսկիդ 'ի վիմի անդ. քանզի ոչ գիտեմ Թէ պատրանք դիւաց է։ Իսկ իբրև ուղղեցաւ նա գնալ Թաղել 'ի վիմի անդ, ծերն ձայնեաց զկնի և ասէ. բեր յիս այսր զայդ, որդեակ, բեր յիս։ Եւ եբեր նա և ետ նմա. և էառ զոսկին և զաղջիկն և զմանկունսն պահել նմա, քանզի խաբեցաւ 'ի դիւէն։ Եւ զկնի աւուրց ինչ եմուտ պատերազմ սատանի 'ի միտս կրօնաւորին ընդ աղջկանն, և յարեաւ 'ի վերայ նորա և ապականեաց զնա, և դժուարեալ եղև ընդ գործն զոր արար. և յաւել ևս չար 'ի վերայ չարի և ասաց 'ի միտ՝ սպանից զմանուկս, զի մի մատնեսցեն զիս. և յարեաւ 'ի վերայ և սպան զմանուկն։ Իսկ յետ աւուրց ասէ խորհուրդն իւր ցնա. ահա եկեալ զինուորն, ոչ գտեալ զմանուկն, սպանցէ զքեզ վասն մանկանն. այլ յարուցեալ սպանցես և զաղջիկն, և զգանձդ զայդ առեալ փախիցես յերկիր օտար, զի մի անկանիցիս 'ի ձեռն զինուորին. և արար այնպէս։ Յարուցեալ եսպան և զաղջիկն և Թաղեաց ընդ երկիր որպէս և զմանուկն. և առեալ զգանձն գնաց յերկիր հեռի, և շինեաց անդ յենչեղն յայնմանէ եկեղեցի և տունս կեալ անդ։ Եւ իբրև կատարեաց զայն գործ, եկն զինուորն այն դև և սկսաւ ձայնել և ասել ուժգին. ով աստուածասէրք, վայ ինձ. օգնեցէք ինձ, մար-

իշխանն և կացոյց 'ի վերայ զքնաանս . և հրամայեաց իշ-
խանին կախել զնա : Այլ մինչդեռ տանէին ընդ փողոցն , եկաց հրեշտակն առաջի և ասէր . Դործն այդպէս արիանայր . զնա կրէ զայդ , և ապա եկ առ զշղթայսն մեր . զի զոր ինչ տացէ ած , բաւական համարեսցին միայնակեացք : Այլ արդ զգուշասցուք , եղբարք , յամենայնի և մի խօսեսցուք առանց այ շնորհացն . զի այն դև էր որ արար զայն ընդ միայնակեացն , որ յանձն իւր ապաստան եղեալ խնդրէր մեծամեծս :

Հեծն ծերերեթէ ուղիղ խցեն բանք զինուորին : Եւ նա ասէ . այդպէս էր ամենայն . եբեր յետ զայն , այլ եկեալ տարաւ յետ սակաւ միոյ և ետ եառ 'ի սա զամենայն անպակաս : Ասէ ցնա իշխանն . զի եբեր 'ի քեզ և դու վկայես , արդ ունիս զչիրս գորս և վկայ զի տարաւ զարձեալ 'ի քէն : Եւ նա պապանձեցաւ : Եւ իբրև բանադատեալ եղև , խոստովանեցաւ ուղիղ զպատճառանս աղջկանն և զմանկանն ձեռամբ իւրով և զծախուածս գանձին իւրոյ : Իբրև ետես իշխանն թէ ոչ ինչ շահի անտի , հրամայեաց սպանանել զգաւհեծն զայն : Եւ իբրև տանէին զնա 'ի տեղի մահուն , զինուորն այն մատնիչ նորա ընդ առաջ եկն նմա 'ի փողոցին և ասէ ցնա . Ճանաչես զիս , կրօնաւոր , թէ ով եմ ես : Եւ նա ասէ , կարծեմ թէ զինուորն այն իցես դու որ 'ի չար ժամու ծանեայ զքեզ՝ որ բերեր առ իս զաղջիկն և զմանուկն զայն և զգանձն 'ի պահել : Ասէ ցնա զինուորն . ես բանսարկուն սատանայ իցեմ որ զնախաստեղծն Ադամ խաբեցի , և այժմ ոչ զոք 'ի մարդկանէ թողլ տամ կեալ որչափ յինէն կարողութի իցէ , և ոչ 'ի չափ Իսահակայն և Յակոբայն և կամ Յոբայ ելանել թողացուցանեմ , այլ փութամ զամենեսեան առնել իբրև զԱքիտոփել և զՅուդա սկարիովտացին և զԿայէն և որպէս զծերսն Բաբելոնի և զամենայն նմանիս նոցա : Գնա և դու արդեօք զկնի նոցա , զի ոչ ծանեար զմեր հնարել շղթայս նենգութեան և խաբէութե . կրեսցես ընդ նոսա զոր ոչ ուսար զաներևոյթ պատերազմն մեր , և մի ոք հպարտացեալ վերացի քան զչափ իւր և խնդրել յանդգնեացի վեհագոյն և քան զորանց որոց նմանել . և զի ընդ Յոբայ ես ոչ պակասեցայ վանել յարուեստից իմոց զոր շարժեցի ես առ նա , այլ զամենայն մեծամեծս յարուցի 'ի վերայ նորա և 'ի նմանէ յաղթեալ գտայ և ամօթապարտ : Իսկ ընդ քեզ և ոչ մի ինչ 'ի մեծամեծացն իմոց արուեստից ինչ ցուցի . և այդպէս հեռացեալ չարեացն ամենայն զոր արարի ընդ քեզ և ընդ ամենայն ազգս մարդկան : Եւ ահա պատրաստեալ ընդ իս 'ի պատերազմ տեսեր զզօրութիւն քո և գտեր լաւս արժանեայն քո զտեղի քո ասա , և անդ նոյնպէս : Եւ զայս իբրև ասաց , աներևոյթ եղև թշնամին մարդկան : Եւ զի կրեաց եղկելի կրօնաւորն որ եղև դահիճ խեղդամահ զմահ , և խաբեցաւ 'ի դիւաց և այայն եղև 'ի ձեռն անհամբերութեան և անախորժութե իւրոյ : Եւ արդ մեք զգուշասցուք , եղբարք , և մի ինչ խնդրեսցուք յայ առաւել քան զչափ մեր . և մի ուխտեսցուք զոր ոչ կարող եմք գործով կատարել : Վասն այսորիկ բարւոք իցէ գնալ ընդ Ճանապարհ ուղղութե խոնարհութեն , և մի խոտորել 'ի յաջ կամ յահեակ . որպէս զի արժանի լիցուք զերծանել յաւուր չարի 'ի բերանոյ վիշապին այնմ , որ անյագաբար կլանել ջանայ զամենեսեան :

սրբութեան. և տեսին զեղեալսն երկու ծերքն տեսողք և պատմեցին մեզ:

ԱՂԲԱՅՐ' ոմն յերթևեկութեան վանիցն անկաւ 'ի դարշ մեղս. և 'ի գալն 'ի վանսն մեռաւ, և էր նշա-ցեալ երեսս նորա. և հայր վանից գիտաց հոգւոյն զե-ղեալսն, և ամենայն վանականքն զերիս աւուրս անդադար խնդրեաց յԱյ: Եւ ահա տեսանէր զի թափէր 'ի դի-ւաց զհոգի նորա տէրն ասելով' եթէ 'ի գործ վանիցն կալով մեղաւ, և խնդրեն այժմ բազում ուխտն. զոր եթէ քաղաք մի խնդրէ զմահապարտ 'ի թագաւորէ, ոչ ար-գելու. ես զի ոմն աղօթաւոր եմ, զիարդ արգելում զգութ

նեցաւ նախատացեալ հոգևոր ծերոյն եթէ չորեքքին 'ի միասին են առաջի Այ:

1 Այլ ոմն եղբայր էր որ գնայր 'ի սպասաւորութիւն մեծաժողով վանից առ իշխանս և առ արքայս և 'ի քաղաքս և 'ի գիւղս, և զամենայն բարութս կատարէր և յորդորէր զգործ ուր և առաքեալ լինէր: Իսկ եղև 'ի չղջելն իւր 'ի խորամանէ չարին անկաւ 'ի մեղս դարշ պոռնկութե. և վաղվաղակի ընդ մեղանչելն եհաս մեռանել նմա, և սևացան երեսք նորա և եղեն իբրև զածուխ տապակի: Իսկ հայր վանիցն վասն զի հոգևոր էր, իբրև ետես ծանեաւ զայն. և ժողովեալ զեղբարսն ողջոյն ասէ ցնո-սա. եղբայրս այս վասն ձերոյ սպասաւորութեան և հանգստեան ամ յօժարութե գնայր 'ի գիւղս և 'ի քաղաքս և գթեցաւ 'ի գիւղից իբրև զմարդ, այլ 'ի գործս և 'ի ջանս էր վասն ձեր. և արդ զի վասն մերոյ պատ-ճառի անկաւ նա 'ի մեղս, եկայք կացէք ընդ իս զի աղօթեսցուք վասն նորա, գուցէ ողորմեսցի նմա Տէր, զի ողորմած է: Իսկ սկսան միաբանա-մայն աղօթել արտասուօք վասն նորա, և պահեալ և աղօթեալ զերիս ա-ւուրս խնդրէին 'ի տեառնէ ողորմութի վասն նորա, և զերիս աւուրս ոչ ոք ճաշակեաց բնաւ և ոչ դադարեցին յողբալոյ և յաղօթելոյ: Իսկ եղև 'ի զարմացման հայր վանիցն, և ետես տեսիլ զի փրկիչն գթացեալ էր 'ի վերայ աշխատութեանց և մշտաջնութեց եղբարցն. և ետես զձեռն զի կայր մերձ և ասէր ցնէր. տէր արդար դատաւոր, մեր է հոգի սորա. զի մեղաւ և ոչ ապաշխարեաց: Ասէ ցնա փրկիչն. արդար դատաւոր եմ ես, այլ ողորմած իսկ եմ և մարդասէր. և զի մարդասէր և ողոր-մած եմ ես, ոչ է պարտ անտես առնել զաղաչանս այսքան կրօնա-ւորաց և զարտասուս այսքան արանց որոց զոր մատուցանեն ինձ. և այս ես զի նա վասն սոցա անկաւ 'ի մեղս, զի կարօղ էր և նա հանգստա-նալ 'ի վանս իբրև զսոսա և ոչ խոցոտիլ 'ի նետից քոց, այլ 'ի սոցա սպասու եղբարցն եղեալ հեզգութե և գթեալ խոցեցաւ 'ի քէն: Ո՞չ տեսանես զի ամենեքեան եզեալ են զանձինս 'ի մահ վասն նորա. և եթէ այսչափ բազմութե անտես արարեալ են զինքեանս և երիս ա-ւուրս անձամբ լեալք ողբովք աղաչեն զիս՝ մինչև ոչ լուայց աղա-չանաց նոցա որք վասն իմ խոնարհեալ և քրձազգեցեալք այսպէս զղը-ջութե կարգան առ իս այսչափ բազմութե, և այս վասն նորա որ պա-տահմամբ գիպեցաւ մեղքն և ոչ սովորութե, և ոչ վասն իւր գնա-ցեալ՝ այլ վասն բանից իմոց. զի եթէ թագաւորք երկրի առնեն զայն զի թէ աղաչեսցեն զնա քաղաքն ողջոյն վասն մահապարտի ուրումն՝ ոչ

խմ ։ Եւ պատմեաց զտեսիլն եղբարցն հայրն, և հայե-
ցան 'ի մեռեալն և պայծառացեալ էին երեսք նորա. և
առեալ Թաղեցին զնա 'ի փառս Քի այ մերոյ ։

ԵՊԻՍԿՈՊՈՍ՝ ոմն 'ի Լիբիա յաւուր միում 'ի մեծ
ժողովրդեան ասաց. լուր լիցի ձեզ, զի անկայ 'ի պոռնկու-
թիւն, և ոչ եմ եպիսկոպոս ։ Եւ հանեալ զեմիփորոնն
եդ 'ի սեղանն ։ Եւ ամենայն ժողովուրդն ելաց և ասէ.
'ի վերայ մեր լիցի մեղքն քո, կացցես և մի ելանիլ ։ Եւ
ապա ետ եպիսկոպոսն փակել զայլ դրունս եկեղեցւոյն,
և զինքն ընկէց առաջի միոյ դրանն և ասաց. չունի ոք
հրաման որ առանց կոխելոյ զգլուխ իմ ելցէ արտաքս ։
Եւ արարին այնպէս ։ Եւ մինչ ելանէր յետնին այրն, եկն

տղայքն առեալ 'ի ձեռանէ գահճացն շնորհէ նոցա, մինչդեռ եւս ա-
ռանել եւ որ եմ Թագաւոր յաւիտենից և դատաւոր արդար և մար-
դասէր՝ պարգևեմ զինուորաց իմոց զնոցիկս զայս և լսեմ ձայնի խնդ-
րուածոց նոցա ։ Զայս իբրև ասաց փրկիչն, փոխեաւ գեն ամաչեցեալ
և անյայտ եղև ։ Եւ 'ի միում եկեալ 'ի զարմացմանէ հայրն, պատմեաց
զտեսիլն եղբարցն, և ուրախ եղեն ամենեքեան ։ Եւ սկսաւ երեսս մե-
ռեալ եղբօրն սրբել առ սակաւ սակաւ 'ի սեւութենէն մինչև կատարեալ
լուսաւորեցաւ նա, և հաւատացին ամենեքեան զի դասեաց տէր զհո-
գի նորա 'ի դասս սրբոց ։ Եւ առեալ զմարմին նորա պատուով եդին
'ի գերեզմանի հարցն. զի որում ամենայն շնորհեաց զմեղս, ո՞ ոչ Թողցէ ։
Եւ փառաւոր առնէին զնա և ասէին. մեծ է տէր առ ամենեսեան
որ կարդան առ նա ճշմարտութեամբ ։

: Եպիսկոպոս ոմն էր 'ի քաղաքի ուրեմն և պատահմամբ դիպեաց ան-
կաւ նա 'ի պոռնկութիւն ։ Իսկ յաւուր միոջ եղև ժողով մեծ և աղօթք
յեկեղեցին, և ոչ ոք գիտէր զմեղս նորա. այլ ինքն առաջի ամենայն
ժողովրդեանն խոստովանեցաւ և ասէ. գիտասջիք ամենեքեան, զի ան-
կայ ես 'ի պոռնկութիւն ։ Եւ եդեալ զեմիփորոնն 'ի վերայ սուրբ սե-
ղանոյն ասէ. ես ոչ եմ եպիսկոպոս ։ Իսկ իբրև լուան զայսպիսի
մեղս նորա զոր ոչ ծածկեաց, այլ մանաւանդ առաջի մեծի ժողովրդեան
խոստովանեցաւ նշանակեաց զինքն անկեալ մեղաւոր գոլ. և այս վասն
խոնարհութեան սրտի զոր ունէր բնաւորեալ յինքն յառաջագոյն, ա-
մենեքեան միաբան ասէին արտասուօք միով ձայնիւ. 'ի վերայ մեր ե-
ղիցի այդ մեղք, և մի ելանէր 'ի մէնջ ։ Յայնժամ ասէ ցնոսա եպիսկո-
պոսն. եթէ կամիք զի մի ելից 'ի ձէնջ, արարէք զոր ասեմ ։ Եւ նոքա ցնա.
արասցուք զոր ինչ կամիս, զի ոչ գիտէին զկամս նորա ։ Իսկ նա փա-
կեաց զերկոսեան դրունս եկեղեցւոյն, և էր 'ի ներքս ամենայն ժո-
ղովն. և Թողեալ 'ի բաց զերրորդ դուռն, և ինքն կայր արտաքոյ և ան-
կաւ 'ի վերայ երեսաց իւրոց 'ի վերայ դրանն և ասէ ցժողովն. ոչ ու-
նիցի մասն և բաժին յԱյ որ ոչ կոխեսցէ զպարանոց իմ յելանելն աս-
տի ։ Ահա իբրև լուան և տեսին զոր կամէր, արտասուաց հեղեղօք
հանէին ամենայն ժողովն. և վասն սիրելոյ զնա և հաւանելոյ զկամս նորա
արարին նոքա ըստ բանի նորա ։ Եւ իբրև ելանէր որ յետոյ ամենեցուն
գայր, լուաւ ձայն յերկնից որ ասէր. վասն մեծի խոնարհութեան քո

ձայն յերկնից որ ասէր · վասն խոնարհութեան քո թողլի զմեղս քո :

Այլ երբեմն հայրն Աբրահամ և անցանէր ընդ գեօղ մի Եգիպտոսի, եւ ետես պառնիկ մի զի նստէր : Ասէ ցնա ծերն · ահն կալ գալ խնձ առ քեզ երիկուն : Ասէ պառնիկն · բարի է, հայր : Այլ պատրաստեցաւ և արկ անկողին՝ ահն ունելով ծերոյն հանդերձ պիտոյիւք : Եւ իբրև երեկոյ եղև, եկն ծերն ոչ ինչ ունելով, և մտեալ ասէ · պատրաստեցե՞ր զանկողինդ : Այն նա ասէ՝ այո, հայր · և եղին զդուրսն : Պատասխանի տուեալ ծերոյն ասէ ցկինն · անսա սակաւիկ մի, վասն զի օրէնս ինչ ունիմք մինչև կատարեցից զայն յառաջագոյն : Այլ սկսաւ ծերն պաշտամանն իւրոյ՝ սկիզբն արարեալ սաղմոսարանին, և ըստ միում միում սաղմոսի կատարէր աղօթս, և աղաչէր վասն նորա պաղատանօք առ Ած, զի ապաշխարեսցէ և կեցցէ · և լուաւ նմա Ած : Այլ կայր կինն մերձ առ ծերոյն դողալով և աղօթելով : Այլ իբրև կատարեաց ծերն զսաղմոսարանն, անկաւ կինն 'ի գետին : Եւ ծերոյն սկիզբն արարեալ քարոզելոյ յառաքելոյն բազում ժամս, և այնպէս կատարեաց զաղօթսն : Արդ զղջացեալ կինն և գիտացեալ թէ ոչ վասն մեղաց եկն առ նա՝ այլ զի զհոգի նորա փրկեսցէ, անկեալ առաջի նորա արտասուօք զայս ասելով · ով հայր սուրբ, որ և զի տես եթէ կարեմ ապրել, առաջնորդեա ինձ : Յայնժամ ծերն առաջնորդեաց նմա 'ի վանս մի կուսանաց, և ետ զնա 'ի ձեռն վանաց տիկնաջն և ասէ ցնա · մայր, առ զքոյրս զայս, և պատուիրան ինչ և լուծ մի դներ որպէս և այլ քերցդ · այլ որպէս և ինքն կամեսցի, զայն տացես նմա : Այլ իբրև եղև անդ աւուրս սակաւս, ասէ · ես մեղաւոր եմ և կամիմ թէ անագանելով ճաշակեմ : Զկնի սակաւ աւուրց ասաց դարձեալ · ես բազմամեղ եմ, և յետ չորից աւուրց կամիմ ճաշակել · և արար այնպէս : Այլ յետ սակաւ աւուրց աղաչեաց զվանաց տիկինն և ասէ · վասն զի բազում անգամ բարկացուցի զԱծ զարծովք իմովք, արա սէր և արկ զիս 'ի խրճիթ մի և փակեա յամենայն կողմանց և ընդ պատուհանն տացես ինձ

Թողի քեզ զմեղս քո : Իսկ զայս լուեալ ժողովոյն ուրախացան և մխիթարեցան :

խմ։ Եւ պատմեաց զտեսիլն եղբարցն հայրն, և հայե-
ցան 'ի մեռեալն և պայծառացեալ էին երեսք նորա. և
առեալ Թաղեցին զնա 'ի փառս Քրիստոսի մերոյ։

ԵՊԻՍԿՈՊՈՍ' ոմն 'ի Նիբիս յաւուր միում 'ի մեծ
ժողովութեան տօնաց. լուր լիցի ձեզ, զի անկայ 'ի պոռնկու-
թիւն, և ոչ եմ եպիսկոպոս։ Եւ հանեալ զեմիփորոնն
եդ 'ի սեղանն։ Եւ ամենայն ժողովուրդն ելաց և ասէ.
'ի վերայ մեր լիցի մեղքն քո, կացցես և մի ելանել։ Եւ
ապա ես եպիսկոպոսն փակել զայլ դրունս եկեղեցւոյն,
և զինքն ընկէց առաջի միոյ դրանն և ասաց. չունի ոք
հրաման որ առանց կոխելոյ զգլուխ իմ ելցէ արտաքս։
Եւ արարին այնպէս։ Եւ մինչ ելանէր յետինն այրն, եկն

տղայքէն առեալ 'ի ձեռանէ զանհնազանդ շնորհէ նոցա, մինչև եւ ա-
ռնուլ ես որ եմ Թագաւոր յաւիտենից և դատաւոր արդար և մար-
դասէր՝ պարգևեմ զինուորաց իմոց զնոխփրս զայս և լսեմ ձայնի խնդ-
րուածոց նոցա։ Զայս իբրև ասաց փրկիչն, փախեաւ գեն ամաչեցեալ
և անյայտ եղև։ Եւ 'ի միւս եկեալ 'ի զարմացմանէ հայրն, պատմեաց
զտեսիլն եղբարցն, և ուրախ եղեն ամենեքեան։ Եւ սկսաւ երես մե-
ռեալ եղբօրն սպիտակ առ սակաւ սակաւ 'ի սեաւթէն մինչև կատարեալ
լուսաւորեցաւ նա, և հաստատեցին ամենեքեան զի դատեաց տէր զհո-
գի նորա 'ի դասս սրբոց։ Եւ առեալ զմարմին նորա պատուով եդին
'ի գերեզմանի հարցն. զի որում ած շնորհեաց զմեղս, ո՞ ոչ Թողցէ։
Եւ փառաւոր առնէին զած և ասէին. մեծ է տէր առ ամենեսեան
որ կարդան առ նա ճշմարտութ̃բ։

։ Եպիսկոպոս ոմն էր 'ի քաղաքի ուրեմն և պատարանօք գիւաց ան-
կաւ նա 'ի պոռնկութի։ Իսկ յաւուր միոջ եղև ժողով մեծ և աղօթք
յեկեղեցւոյն, և ոչ ոք գիտէր զմեղս նորա. այլ ինքն առաջի ամենայն
ժողովրդեանն խոստովանեցաւ և ասէ. գիտասջիք ամենեքեան, զի ան-
կայ ես 'ի պոռնկութի։ Եւ եդեալ զեմիփորոնն 'ի վերայ սուրբ սե-
ղանոյն ասէ. ես ոչ եմ եպիսկոպոս։ Իսկ իբրև լուան զայսպիսի
մեղս նորա զոր ոչ ծանէին, այլ մնացեալ առաջի մեծի ժողովոյն
խայտառակեալ նշաւակեաց զինքն ասելով մեղաւոր գոլ. և այս վասն
խոնարհութե սրտի զոր ունէր քնաւորեալ յինքն յառաջագոյն, ա-
մենեքեան միաբան ասէին արտասուօք միով ձայնիւ. 'ի վերայ մեր ե-
ղիցի այդ մեղք, և մի ելանէր 'ի մէնջ։ Յայնժամ ասէ ցնոսա եպիսկո-
պոսն. եթէ կամիք զի մի ելից 'ի ձէնջ, արարէք զոր ասեմ։ Ասեն ցնա.
արտասցուք զոր ինչ կամիս, զի ոչ գիտէին զկամս նորա։ Իսկ նա փա-
կեաց զերկոսեան դրունս եկեղեցւոյն, և էր 'ի ներքս ամենայն ժո-
ղովն. և Թողեալ 'ի բաց զերրորդ դուռն, և ինքն կայր արտաքոյ և ան-
կաւ 'ի վերայ երեսաց իւրոց 'ի վերայ դրանն և ասէ ցժողովն. ոչ ու-
նիցի մասն և բաժին յայն որ ոչ կոխեսցէ զպարանոց իմ յելանելն ար-
տաքս։ Ահա իբրև լուան և տեսին զոր կամէր, արտասուաց հեղեղօք
հանին ամենայն ժողովն. և վասն սիրելոյ զնա և հաճելոյ զկամս նորա
արարին նոքա ըստ բանի նորա։ Եւ իբրև ելանէր որ յետոյ ամենեցուն
գայր, լուաւ ձայն յերկնից որ ասէր. վասն մեծի խոնարհութեան քո

ձայն յերկնից որ ասէր․ վասն խոնարհութեան քո թողի զմեղս քո ։

ԱՅԼ երբեմն հայրն Մակարիոս և անցանէր ընդ գեօղ մի Եգիպտոսի, ետես պատանեակ մի զի նստէր ։ Ասէ ցնա ծերն․ ակն կալ գալ ինձ առ քեզ երեկուն ։ Ասէ պատանեակն․ բարի է, հայր ։ Եւ պատրաստեաց և արկ անկողին՝ ակն ունելով ծերոյն համբերձ պիտոյիւք ։ Իսկ իբրև երեկոյ եղև, եկն ծերն ոչ ինչ ունելով, և մտեալ՝ ասէ․ պատրաստեցե՞ր զանկողինդ ։ Եւ նա ասէ՝ այո, հայր․ և եղին զզուրոն ։ Պատասխանի տուեալ ծերոյն ասէ ցկինն․ անսա սակաւիկ մի, վասն զի օրէնս ինչ ունիմք մինչև կատարեցից զայն յառաջագոյն ։ Եւ սկսաւ ծերն պաշտաման իւրոյ՝ սկիզբն արարեալ սաղմոսարանին, և ըստ միում միում սաղմոսի կատարէր աղօթս, և աղաչէր վասն նորա պաղատանօք առ Տ՜ն, զի ապաշխարեսցէ և կեցցէ․ և լուաւ նմա ա՜ծ ։ Եւ կայր կինն մերձ առ ծերոյն դողալով և աղօթելով ։ Եւ իբրև կատարեաց ծերն զսաղմոսարանն, անկաւ կինն 'ի գետին ։ Իսկ ծերոյն սկիզբն արարեալ քարոզելոյ յառաքելոյն բազում ժամս, և այնպէս կատարեաց զաղօթսն ։ Ապա զղջացեալ կինն և գիտացեալ թէ ոչ վասն մեղաց եկն առ նա՝ այլ զի զհոգի նորա փրկեսցէ, անկեալ առաջի նորա արտասուօք զայս ասելով․ ով հայր սուրբ, ուր և գիտես եթէ կարեմ ապրել, առաջնորդեա ինձ ։ Յայնժամ ծերն առաջնորդեաց նմա 'ի վանս մի կուսանաց, և ետ զնա 'ի ձեռն վանաց տիկնոջն և ասէ ցնա․ մայր, առ զքոյրս զայս, և պատուիրան ինչ և լուծ մի դնէր որպէս և այլ քերցդ․ այլ որպէս և ինքն կամեսցի, զայն տացես նմա ։ Եւ իբրև եղև անց աւուրս սակաւս, ասէ․ ես մեղաւոր եմ և կամիմ թէ անագանելով ճաշակեմ ։ Զկնի սակաւ աւուրց ասաց դարձեալ․ ես բազմամեղ եմ, և յետ չորից աւուրց կամիմ ճաշակել․ և արար այնպէս ։ Եւ յետ սակաւ աւուրց աղաչեաց զվանաց տիկինն և ասէ․ վասն զի բազում անգամ բարկացուցի զա՜ծ գործովք իմովք, արա սէր և արկ զիս 'ի խրճիթ մի և փակեա յամենայն կողմանց և ընդ պատուհանն տացես ինձ

թողի քեզ զմեղս քո ։ Նոյն ձայն լուեալ ժողովոյն ուրախացան և մխիթարեցան ։

խմ: Եւ պատմեաց զտեսիլն եղբարցն հայրն, և հայե-ցան 'ի մեռեալն և պայծառացեալ էին երեսք նորա. և առեալ թաղեցին զնա 'ի փառս Ք̃ի ա̃յ մերոյ:

ԱԳԻՍԿՈՂՈՍ' ոմն 'ի Լիբիա յաւուր միում 'ի մեծ ժողովումն ասաց. լուր լիցի ձեզ, զի անկայ 'ի պոռնկու-թիւն, և ոչ եմ եպիսկոպոս: Եւ հանեալ զեմոփորոնն եդ 'ի սեղանն: Եւ ամենայն ժողովուրդն ելաց և ասէ. 'ի վերայ մեր լիցի մեղքն քո, կացցես և մի ելանել: Եւ ապա ետ եպիսկոպոսն փակել զայլ դրունս եկեղեցւոյն, և զինքն ընկեց առաջոյ միոյ դրանն և ասաց. չունի ոք հրաման որ առանց կոխելոյ զգլուխ իմ ելցէ արտաքս: Եւ արարին այնպէս: Եւ մինչ ելանէր յետին այրն, եկն

ապաքէն առեալ 'ի ձեռանէ դահճացն շնորհէ նոցա, մինչդեռ ես ա-ռաւել ես որ եմ թագաւոր յաւիտենից և դատաւոր արդար և մար-դասէր' պարգևեմ զթողութիւն խնդրողաց զխնդիրս դոյս և լսեմ ձայնի խնդ-րուածոց նոցա: Զայս իբրև ասաց փրկիչն, փախեաւ դևն ամաչեցեալ և անյայտ եղև: Եւ 'ի միուս եկեալ 'ի զարմացմանէ հայրն, պատմեաց զտեսիլն եղբարցն, և ուրախ եղեն ամենեքեան: Եւ սկսաւ երեւ մե-ռեալ եղբայրն սրբել առ սակաւ սակաւ 'ի սնոտութենէն մինչև կատարեալ լուսաւորեցաւ նա, և հաւատացին ամենեքեան զի դասեաց տէր զհո-գի նորա 'ի դասս արդոց: Եւ առեալ զմարմին նորա պատուով եդին 'ի գերեզմանի հարցն. զի որում Ա̃ծ շնորհեաց զմեղս, ո՞ ոչ թողցէ: Եւ փառաւոր առնէին զԱ̃ծ և ասէին. մերձ է տէր առ ամենեսեան որ կարդան առ նա ճշմարտութ̃բ:

Եպիսկոպոս ոմն էր 'ի քաղաքի ուրեմն և պատերազմաւ դիւաց ան-կաւ նա 'ի պոռնկութիւն: Իսկ յաւուր միում եղև ժողով մեծ և աղօթք յեկեղեցին, և ոչ ոք գիտէր զմեղս նորա. այլ ինքն առաջի ամենայն ժողովրդեանն խոստովանեցաւ և ասէ. գիտասջիք ամենեքեան, զի ան-կայ ես 'ի պոռնկութիւն: Եւ եդեալ զեմոփորոնն 'ի վերայ սուրբ սե-ղանոյն ասէ. ես ոչ եմ եպիսկոպոս: Իսկ իբրև լուան զայսպիսի մեղս նորա զոր ոչ ծածկեաց, այլ մանաւանդ առաջի մեծի ժողովրդեան խայտառակեալ նշաւակեաց զինքն առնելով մեղաւոր զոլ. և այս վասն խոնարհութեն սրտի զոր ունէր բնաւորեալ յինքեն յառաջագոյն, ա-մենեքեան միաբան ասէին արտասուօք միով ձայնիւ. 'ի վերայ մեր ե-ղիցի այդ մեղք, և մի ելաներ 'ի մէնջ: Յայնժամ ասէ ցնոսա եպիսկո-պոսն. եթէ կամիք զի մի ելից 'ի ձէնջ, արարէք զոր ասեմ: Ասեն ցնա. արասցուք զոր ինչ կամիս, զի ոչ գիտէին զխորհս նորա: Իսկ նա փա-կեաց զերկուսեան դրունս եկեղեցւոյն, և էր 'ի ներքս ամենայն ժո-ղովն. և թողեալ 'ի բաց զերրորդ դուռն, և ինքն կայր առաջոյ և ան-կաւ 'ի վերայ երեսաց իւրոց 'ի վերայ դրանն և ասէ ցժողովն. ոչ ու-նիցի մասն և բաժին յԱ̃յ որ ոչ կոխեսցէ զաղաղարանաց իմ յելանելն ար-տաքս: Ահա իբրև լուան և տեսին զոր կամէր, արտասուելով հեծեծելով հանէին ամենայն ժողովն. և վասն սիրելոյ զնա և հաճելոյ զկամս նորա արարին նոցա ըստ բանի նորա: Եւ իբրև ելանէր որ յետոյ ամենեցուն գայր, լուաւ ձայն յերկնից որ ասէր. վասն մեծի խոնարհութեան քո

ձայն յերկնից որ ասէր. վասն խոնարհութեան քո թողի զմեղս քո։

Ասէին երբեմն հայրն Սերապիոն և անցանէր ընդ գեօղ մի Եգիպտոսի, ետես պոռնիկ մի զի նստէր։ Ասէ ցնա ծերն. ածն կալ զալ ինձ առ քեզ երեկոյն։ Ասէ պոռնիկն. բարի է, հայր։ Եւ պատրաստեցաւ և արկ անկողինն՝ ակն ունելով ծերոյն համբերձ պիտոյիւք։ Իսկ իբրև երեկոյ եղև, եկն ծերն ոչ ինչ ունելով, և մտեալ ասէ. պատրաստեցե՞ր զանկողինն։ Եւ նա ասէ՝ այո, հայր. և եղին զդուրսն։ Պատասխանի տուեալ ծերոյն ասէ ցկինն. անսա սակաւիկ մի, վասն զի օրէնս ինչ ունիմք մինչև կատարեցից զայն յառաջագոյն։ Եւ սկսաւ ծերն պաշտաման իւրոյ՝ սկիզբն արարեալ սաղմոսարանին, և ընդ միում միում սաղմոսի կատարէր աղօթս, և աղաչէր վասն նորա պաղատանօք առ Տէր, զի ապաշխարեսցէ և կեցցէ. և լուաւ նմա Ած։ Եւ կայր կինն մերձ առ ծերոյն դողալով և աղօթելով։ Եւ իբրև կատարեաց ծերն զսաղմոսարանն, անկաւ կինն 'ի գետին։ Իսկ ծերոյն սկիզբն արարեալ քարոզելոյ յառաքելոյն բազում ժամս, և այնպէս կատարեաց զաղօթսն։ Արդ զղջացեալ կնոջն և գիտացեալ թէ ոչ վասն մեղաց եկն առ նա՝ այլ զի զհոգի նորա փրկեսցէ, անկեալ առաջի նորա արտասուօք զայս ասելով. ով հայր սուրբ, որ և զիտես եթէ կարեմ առնել, առաջնորդեա ինձ։ Յայնժամ ծերն առաջնորդեաց նմա 'ի վանս մի կուսանաց, և ետ զնա 'ի ձեռն վանաց տիկնոջն և ասէ ցնա. մայր, առ զքոյրս զայս, և պատուիրան ինչ և լուծ մի դներ որպէս և այլ քերցդ. այլ որպէս և ինքն կամեսցի, զայն տացես նմա։ Եւ իբրև եղև անդ աւուրս սակաւս, ասէ. ես մեղաւոր եմ և կամիմ թէ անագանելով ճաշակեմ։ Օ կնի սակաւ աւուրց ասաց դարձեալ. ես բազմամեղ եմ, և յետ չորից աւուրց կամիմ ճաշակել. և արար այնպէս։ Եւ յետ սակաւ աւուրց աղաչեաց զվանաց տիկինն և ասէ. վասն զի բազում անգամ բարկացուցի զԱծ գործովք իմովք, արա սէր և արկ զիս 'ի խրճիթ մի և փակեա յամենայն կողմանց և ընդ պատուհանն տացես ինձ

Թողի քեզ զմեղս քո։ Եւ զայս լուեալ ժողովոյն ուրախացան և մխիթարեցան։

զսակաւ հացիկն և զձեռագործն։ Եւ լուաւ նմա վանաց տկլորն և արար այնպէս։ Եւ այսպէս հաճոյ եղեւ ա̃յ 'ի կեանս իւրում։

Այր միայնակեաց մի որ անկաւ 'ի շնութիւն երեք տարի, և հայր վանիցն հոգետես էր և ոչ կարէր իմանալ։ Եւ յաւուր միում խնդրեաց հայրն զգործ նորա, կոչեաց զնա և ասէ . ասա ինձ ո՞ւր էիր յայսմ գիշերի և ընդէ՞ր բարկացուցեր զա̃ծ։ Եւ անկեալ առ ոտս նորա և ասէ . մեղայ առաջի ա̃յ, և այս ամք երեք են աղաւղեալ գործոցս որով պատրեալ եղէ։ Ասէ հայրն . և զի՞նչ գործ առնէիր դու, որ ա̃ծ յիմէն ծածկէր զայրիսն յորում ըմբռնեալ էիր։ Եւ նա ասէ՝ թէ իմ սովորութիւն էր որ յամէն գիշեր որ երթայի 'ի գործն աղտեղութեան, ես զութ կանոն սաղմոսն և ապաշխարութեան շարականս լալով ասէի 'ի գնալն և ընդ 'ի գալն, և յայսմ գիշերի ծուլացոյց զիս չար դեւն և անյուսացոյց և անօգուտ արար զաղօթսն իմ, և բնաւ զա̃ծ ոչ յիշեցի և ոչ սաղմոսեցի։ Եւ ասէ հայրն . օրհնեալ է ողորմութիւն ա̃յ և քաղցրութիւն, որ ոչ կամի զկորուստ մարդոյ։ Եւ արդ որովհետեւ ա̃ծ ոչ յիշէր զայլ գործսն քո զերիցն ամաց, նոյնպէս և ես թողում քեզ զայսմ գիշերիս ողորմութեամբն ա̃յ։ Եւ նա դարձաւ յա̃ծ և եղև այր կատարեալ ապաշխարութեամբ և բարեգործութեամբ։

Այր և այլ միայնակեաց մի որ յաղագս մեծի նախանձոյ չարին զլորեալ անկաւ 'ի մեղս՝ կացեալ ամս բազումս 'ի գործ կամաց այնորիկ որ զշնալն ախորժէ։ Եւ սովորութիւն մի ունէր բարի, զի երբ գայր 'ի նանիր գործոցն յայնցանէ 'ի խուցն իւր, նա ձգէր զկնգուղն իւր և հանէգրիձէր և սկսանէր սաղմոսել և ծունր դնել ուժգնաբար, և լայր հառաչանօք և ջերմ արտասուօք, և հարկանէր զերեսսն և զկուրծսն, և ձգէր զմօրուսն և թքանէր 'ի նա։ Եւ ձանձրացաւ սատանայ յաղօթից նորա . գնաց առ նա 'ի գիշերի մի և ասէ ցնա . ով դարշելի պիղծ, քանզի անհանգստեա զիս և նեղես . զի գաս առնես ընկեան իմ և շնալով զիս ուրախ առնես, և դարձեալ տրտմեցես զինէն առ ա̃ծ, լաս և հառաչես և տրտմեցուցանես զիս։ Եւ ասէ միայնակեացն . ով դու նզովեալ շուն, որ մեղօք ոչ յագիս . այս խուցս դարբնոց է, գաս դու և ուռամբ հարկանես զգլուխ իմ և յիմարեալ զար-

ծեմ զմեղս. իսկ յորժամ զարթնում և խելք իմ յիս գայ՝ ես ունիմ մի քեզ հարկանեմ, զի ած̃ իմ ողորմած է և ոչ թողու զիս 'ի ձեռս քո: Այս շնորհօքն այ̃ հալածեցաւ 'ի նմանէ դեւն պոռնկութե̃ն:

ՄԱՆՍ մի էր 'ի վերայ Եփրատ գետոյ, որում անուն էր շրջապատեալ, յորում էին բազում կրօնաւորք: Այս հայրն արձակեաց հինգ յեղբարցն վաճառել զձեռագործն 'ի քաղաքն և բերել զպէտսն: Իբրև գնացին, մին մի 'ի նոցանէ բաժանեցաւ 'ի պէտս ինչ. իբրև փոքր մի հեռացաւ, եգիտ զնա պոռնիկ կին մի և պատրեաց հաւանեցոյց և անկաւ ընդ նմա, և եղբարքն երթեալ ոչ կարացին տանել զնա 'ի վանսն, զի հատեալ էր յոյս նորա. իբրև գնացին, սուգ մեծ էր առ եղբարսըն: Այս 'ի տեսլեանն տեսանէր հայրն զի եկին արք սեւերաւորք և ծակեցին զպձղանս հօրն, երկաթի կապանօք կապեցին և սաստիկ տանջանօք տանջեցին և ասեն. բեր զՔ̃սի պատկերն զոր յերաշխիս առեր: Այս ասէ հայրն. ոչ գիտեմ զինչ խնդրէք: Ասեն արքն. զՔ̃սի պատկերն զկրօնաւորն՝ զոր հատեր 'ի մարմնոյն Ք̃սի: Այս բազում աւուրս այսպէս տանջէին. և լինէր իբրև կիսամահ, և աղաչէր զեղբարսն աղօթիւք օգնել: Այս նոցա պահեալ շաբաթ մի մեծաջան վաստակով աղաչեցին զած̃, և ողորմեցաւ նմա, և ազատեցաւ 'ի տանջանացն. և յայնմհետէ ոչ եկաց յառաջնորդութե̃ն, այլ խոնարհութե̃բ կեայր ընդ եղբարսն:

ՊԱՏՄԵԱՑ՝ հայրն Յոհաննէս խորձթացն և ասէ. պոռնիկ մի էր յԵգիպտոսի մեծատուն և գեղեցիկ յոյժ, և իշխանքն մտանէին առ նա: Իսկ յաւուր միում դէպ եղև նմա յեկեղեցին կոյս երթալոյ և կամեցաւ մտանել 'ի ներքս: Իսկ կէսսարկաւագացն որ կային 'ի վերայ դրացն՝ ոչ տային նմա մտանել ասելով՝ թէ ոչ ես արժանի մտանելոյ 'ի տուն տեառն, զի պիղծ ես: Այս մինչդեռ նոքա ընդ իրեարս կռուէին, լուաւ եպիսկոպոսն զձայն

1 Պատմէր մեզ հայրն Յոհաննէս կիլիկեցի, որ էր առաջնորդ 'ի ռէնեաթս, եթէ էր յԵգիպտոս ոմն կին պոռնիկ և մեծատուն յոյժ, առ որ մտանէին իշխանք և մեծամեծք միայն: Եւ յաւուր միոջ տանի զղջացաւ և գնաց յեկեղեցին: Իսկ սարկաւագն որ պահապան դրան եկեղեցւոյն էր՝ արգել զնա մտանել յեկեղեցին և ասէր. ոչ ես դու արժանի մտանելոյ այսր 'ի տաճարի այ̃, քանզի պիղծ ես: Իսկ մինչ կռուէին ընդ միմեանս վասն այսորիկ, լուաւ եպիսկոպոսն զշփոթ նո-

գոյին և եկն առ նոսա, և ասէ ցնա պոռնիկն. ոչ տաս ինձ մտանել յեկեղեցիս: Ասէ ցնա եպիսկոպոսն. չէ արժան մտանել քեզ, զի պիղծ ես: Իսկ նորա զղջացեալ ասաց՝ եթէ ոչ ևս պոռնկիմ: Ասէ ցնա եպիսկոպոսն. եթէ բերես այսր զկարասիս քո, գիտեմ զի ապաշխարես: Եւ նորա բերեալ վաղվաղակի, և առեալ եպիսկոպոսին այրեաց հրով: Եւ եմուտ պոռնիկն յեկեղեցին լալով և ասելով. եթէ աստ այսպէս եղև ինձ, անդ զինչ կրեցից: Եւ ապաշխարեալ եղև անօթ ընտիր:

ԵՀԱՐՑ' երէցն Տիմոթէոս ցհայրն Պիմէն և ասէ. է կին ոմն յԵգիպտոս, որ պոռնկի և տայ զվարձս իւր աղքատաց: Եւ պատասխանի տուեալ հօրն Պիմէնի ասէ. ոչ մնայ 'ի պոռնկութե, վասն զի երևի 'ի նմա պտուղ հաւատոյ: Դէպ եղև գալ մօրն երիցուն Տիմոթէոսի առ նա. և նորա հարցեալ ցմայր իւր և ասացեալ՝ եթէ կինն այն կա՞յ մնայ նոյնպէս 'ի պոռնկութե, պատասխանի տուեալ մօրն և ասէ. յաւել ևս 'ի հոմանիս իւր, բայց սակայն յաւել և յողորմածութիւն: Եւ երթեալ երիցուն պատմեաց հօրն Պիմէնի. և նորա

ցա և եկն առ նոսա: Ասէ ցնա կինն. ոչ թոյլ տայ ինձ մտանել յեկեղեցին սարկաւագս այս: Ասէ ցնա եպիսկոպոսն. ոչ է արժան մտանել քեզ աստ, քանզի անսուրբ ես: Իսկ նա զղջացեալ արտասուեաց և ասէ ցեպիսկոպոսն. յայսմհետէ այլ ոչ ևս պոռնկիմ: Ասէ ցնա եպիսկոպոսն. եթէ բերես զամենայն ինչս քո աստ, տուեալ գիտացից զի այլ ոչ ևս պոռնկիս: Իսկ նա փութապէս արար զամենայն զոր ասաց նմա եպիսկոպոսն, և եբեր զինչս իւր զոր ունէր: Եւ ասէ եպիսկոպոսն ցսարկաւագն իւր. վառեցէք հուր մեծ և ուժգին. և նոքա լուցին հնոց մեծ: Եւ ապա ասէ ցկինն. առ զամենայն ինչս քո և ընրուեա զնոսա 'ի հուրն այն ձեռամբ քով: Եւ նա արար այնպէս և զամենայն կիզեաց 'ի հնոցին յայնմիկ ձեռամբ իւրով և ողբալով ասէր. եթէ յաշխարհիս յայսմիկ այսպէս պատահեաց ինձ, ապա զինչ լինելոց իցէ ինձ 'ի կեանս յաւիտենից և կամ 'ի հուրն անշէջ: Եւ զի այնպէս մտեալ յեկեղեցին, և յայնմհետէ առաջա կեանս սուրբ և հաճոյ Այ, և զի ապաշխարէր բոլորով սրտիւ զանցեալ մեղսն, և եղև անօթ ընտիր և սուրբ Այ:

: Եհարց ցհայրն Պիմէն Տիմոթէէ հայր և քահանայ, և ասէ. է յԵգիպտոս կին մի պոռնիկ, որ զինչ և առնու զվարձս, զամենայն տայ ողորմութե աղքատաց: Ասէ ցնա հայրն Պիմէն. ոչ կացցէ նա 'ի գործն յայն մեղք. այլ հանէ զնա 'ի զազրութէ անտի բարիքն ողորմութեան նորա, զի ունի նա պտուղ հաւատոյ: Եւ եղև երբեմն զի եկն մայրն Տիմոթէի տեսանել զնա: Եւ եհարց ցմայր իւր և ասէ. կինն այն պոռնիկ դեռ ևս 'ի պոռնկութեան կեայ: Իսկ նա ասէ. այո, և յաւել ևս 'ի պոռնկութիւն և յողորմութի: Եւ գնացեալ քահանայն պատմեաց զայն Պիմէնի հօրն: Իսկ նա ասէ. ոչ մնայ նա 'ի պոռնկութենէ յայն:

տեսցեալ՝ ոչ մնայ 'ի պոռնկութեան, եկեալ դարձեալ մօրն երիցուն Տիմոթէի առ նա՝ ասէ ցնա. դիտես զկինն զայն պոռնիկ. խնդրեաց այսօր գալ ընդ իս, զի աղօթս արասցես 'ի վերայ նորա: Եւ նորա լուեալ պատմեաց հօրն Պիմէնի: Ասէ ցնա Պիմէն. մանաւանդ թէ դու երթայիր և տեսանէիր զնա: Եւ երթեալ Տիմոթէոս ետես զկինն պոռնիկ. և նա նոյնպէս ախորժելով ետես զնա, և լուաւ 'ի նմանէ բանս ածայինս և ելաց յոյժ և զղջացաւ և ասէ ցնա. ես յայսմհետէ մերձենամ յերկիւղն այ և դադարեմ 'ի պոռնկութենէս: Եւ առժամայն գնացեալ եմուտ 'ի վանս կանանց և հաճոյ եղև այ մեծապէս:

ԱՐՕՆԱՒՈՐ՝ մի յութուտասնեկի վանացն ունէր որդի մի ամուսնացեալ, և ստէպ երթայր առ նա: Ասէր հայրն. մի երթար 'ի գեօղն, եթէ ոչ՝ գտանէ զքեզ սատանայ: Ասէ ծերն. գրոց հմուտ եմ և ծեր, և յորդին միայն երթամ: Ասէ հայրն. չես դու ծեր և գրոց հմուտ քան զսատանայ: Եւ իբրև ոչ անսաց ծերն, ած զնա առ եղբարսն և ասէ. ձերով վկայութը անպարտ եմ ես յարենէ ծերոյդ. եթէ կամի ուտել զկոտորակդ՝ ոչ արգելում, և այ չունիմ պատասխանի տալ վասն դորա, զի չեմ վկայ գործոց դորա: Ի միում աւուր եր-

Եւ դարձեալ յայլում ժամու եկն մայրն Տիմոթէի տեսանել զնա և ասէ ցորդին իւր. տեսանես, որդեակ, զի պոռնիկն այն կին կամեցաւ գալ ընդ իս, զի աղօթեսցեն ծերքն վասն նորա: Եւ նորա գնացեալ պատմեաց հօրն Պիմէնի զբանս մօրն իւրոյ: Ասէ ցնա ծերն. ասասցես մօր քո զի գնասցէ և խօսեսցի ընդ նմա: Իսկ նա գնաց առ նա և պատմեաց նմա. և եկն նա ընդ մօրն Տիմոթէի առ ծերսն 'ի վանս, և խօսեցան ընդ նմա բազում ինչ վասն փրկութեան անձին նորա: Եւ նորա զղջացեալ 'ի բանէ ծերոյն և ողբալով ասէր. ես յայսմհետէ հեռանեցայց այ և ոչ ես յաւելից մեղանչել: Եւ գնացեալ առժամայն 'ի վանս կուսանաց և հաճոյ եղև նա այ. զի ողորմած բարքն նորա զոր ունէր նա՝ ազատեաց զնա 'ի չարեաց անտի և ընծայեաց այ:

¹ Եւ ոմն 'ի հարցն հանդերձ աշակերտաւ իւրով յԱղեքսանդրիա, և 'ի լինելն իւր անդ՝ եղև գործ այսպիսի: Կրօնաւոր ոմն բնակէր անդ յԱղեքսանդրիա 'ի վանս երկոտասանիցն. և զի որդի ունէր աշխարհիկ, որոյ էր կին գեղեցիկ յոյժ՝ ամաց երկոտասանից, և բնակէր ընդ տան իւրում, և նա էր ձկնորս: Այլ որ 'ի սկզբանէ թշնամին է անձանց մերոց գեն՝ յարոյց պատերազմ պոռնկութեան ծերոյ հօրն մանկան առ հարսն, և խնդրէր ժամ զի զխաբեսցէ զնա, և ոչ գտանէր. և ստէպ ստէպ համբուրէր զնա և գիրկս արկելով փարէր զնովաւ: Իսկ աղջիկն սուրբ սրտիւ ընդունէր իբրև 'ի հօրէ մտերմոյ: Եւ յաւուր միոջ գնացին այլ ձկնորսք և կոչեցին զփեսայն, իբրև թէ գնասցեն 'ի գիշերի և որսա-

Թեալ ծերն 'ի տուն որդւոյն, եգիտ զհարսնն միայն և ցանկացաւ նմա և ասէ. Եկ լեր ընդ իս։ Ասէ աղջիկն. Երկիր յոյժ և տես 'ի քո կարգդ, չէ սակաւ չարիս զոր ասեսդ, խաչեա զզգայարանսդ և հեռացո զսատանայ։ Նորա ոչ անսաց ծերոյն, եհար սրով և սպան զաղջիկն և ինքն խաւարեցաւ։ Անկին դղրդայքն և տեսին զեղեռա-ւորն։ Ասէ ծերն. վայ ինձ, վասն պոռնկութեան սպանի զորդեակս իմ, և ես խաւարեցայ։ Իսկ տարան զնա առ իշխանն, սաստիկ տանջեալ եղին զնա 'ի բանտի։ Ազդ եղև 'ի վանսն. եկն հայրն և տարաւ 'ի վանսն զծերն, և զսուրբ աղջիկն մեծաւ պատուով թաղեցին յուրեանց գերեզմանին։ Իսկ 'ի տեսլեանն ասեն ցհայրն. եթէ յայ-ժամ չար խորհրդով ոք նեղի յեղբարցդ, առաքեա 'ի

ցեն ձկունս. և իբրև գնաց մանուկն, յարեաւ հայր մանկանն 'ի վերայ կնոջ որդւոյ իւրոյ և բռնադատէր զնա 'ի գործս մեղաց։ Ասէ ցնա աղ-ջիկն. զի՞նչ է այս, հայր, գնա յանկողին քո և զգուշեա խաչ յերեսս և 'ի միրս քո, զի այդ գործ գիւական իմն է։ Այլ նա ոչ յանձն առ-նոյր գնալ, և պատերազմէր ընդ նմա յոյժ և հարկանէր զնա, այլ ոչ եթող աղջիկն մերձենալ յինքն։ Եւ հայր կախեալ ընդ սնարից մահ-ճացն այն սուր երկսայրի որդւոյ իւրոյ, և առեալ զնա մերկացոյց իբ-րև թէ երկեցուցանել զնա, շարժեաց 'ի վերայ զսուրն և ասէ. եթէ ոչ լսես ինձ և ոչ առնես զկամս իմ, այսու թրով սպանանեմ զքեզ։ Ասէ ցնա աղջիկն. եթէ և անդամանթիւ զյօդս իմ կտորեսցես, ոչ առնեմ զանօրէնութիւնդ զայդ։ Եւ առժամայն շարժեալ բարկութեն արբեալն պատրանօք չարին, և եհար ուժգին զմէջս նորա և յերկուս եհատ զաղջիկն. և առժամայն կուրացոյց Տէր զաչս նորա, և ջանայր ելանել և գնալ և ոչ գտանէր զդուռս տանն զի ելցէ։ Իսկ իբրև այգ եղև, եկին և այլ ձկնորսք և կոչեցին զորդի նորա գնալ ընդ նոսա յորս։ Ասէ ցնոսա հայր մանկանն. նա գնաց յերեկոյին յորս, այլ դուք ցու-ցէք ինձ զդուռն, զի ես ոչ տեսանեմ. և նոքա ասեն՝ ահա աստ է դուռն։ Եւ իբրև բացեալ մտին 'ի ներքս և տեսին զանհարկու զայն գործ և զմարմինն զի կայր 'ի մէջ արեան, ասեն ցնա. զի՞նչ իցէ այս։ Եւ նա ասէ. կալէք զիս և տարէք առ իշխանն, զի մարդասպան եմ։ Իսկ նոքա կալան զնա և տարան առ իշխան քաղաքին։ Եւ իշխանն եհարց զնա և լուաւ 'ի նմանէ զամենայն, և տանջեալ զնա ընկեց 'ի հարուածս սաստիկս։ Եւ զկնի այսոցիկ ամենայնի ասէ ծերն այն զոր նախ աս-ցի՝ ցաշակերտս իւր. եկ, որդեակ, գնացեալ տեսցուք զնշխարս սրբոյ նահատակի աղջկանն։ Եւ գնացին նոքա 'ի վանս երկոտասանիցն զի անդ էր մեռեալն, և եկին այս ծերոյ ընդ առաջ եղբարք վանացն և ընկա-լան զնա մեծաւ պատուով։ Ասէ ծերն. արարէք աղօթս, զի ոչ այ-լուր թաղի մարմին աղջկանս, այլ 'ի գերեզման սուրբ հարցն դնիցի։ Իսկ ոմանք յեղբարցն տրտնջէին ոչ դնել անդ զմարմին կնոջ այսպէս սպանելոյ։ Իսկ ծերն ասէր. աղջիկս այս վկայ է, զի յաղագս սրբու-թեան մեռաւ։ Եւ զայս լուեալ հարցն՝ վկայեցին նմա, և բազում պա-տուով պատուեալ զմարմին աղջկանն եդին յանկերեզմանս հարցն. և ծերն դարձաւ յանապատն իւր 'ի Սկիւթէ ընդ աշակերտս իւր։ Այս-

գերեզմանն աղախնոյն Ինդի, և անդ աղօթեսցէ և արտաղ-ջասցի։ Այլ աւանէին այնպէս, և լինէր մեծ ուրախու-թիւն։ Այլ երկու ամ ապաշխարեալ ծերոյն, մեծաջան վաստակով և արտասուօք լուաց զմեղս իւր։ Այլ ե-րևեալ 'ի տեսլեանն աղջիկն հօրն և ասէ. աստ իմ ծե-րոյդ՝ եթէ մի տրտմիր. հաշտեցաւ ընդ քեզ ած, զի աղաչեցեր զնա։ Այլ յայնմհետէ չթողուր հայրն կրօնա-ւոր միայն երթալ ուրեք և ոչ փոքր մի։

ՊԱՏՄԵՍՑ՝ ոմն 'ի հարանցն՝ եթէ 'ի Թեսաղոնիկէ էր վանք մի կուսանաց. իսկ մի ոմն 'ի նոցանէն՝ 'ի բանսարկուէն գրգռեալ կամեցաւ ելանել 'ի վանացն, և ե-լեալ անկաւ 'ի պոռնկութի. և զղջացեալ 'ի բարերարէն այ, որ և գործակից եղև յապաշխարութի, և եկեալ 'ի վանս իւր յապաշխարել՝ անկեալ առաջի դրանն վախ-ճանեցաւ։ Այլ յայտնեցաւ ումեմն եպիսկոպոսի վախ-ճան նորա, և ետես զսուրբ հրեշտակս որք առին զոգի նորա, և զևս հետևեալս և վիճաբանութիւս 'ի մէջ նո-ցա, սուրբ հրեշտակացն ասելով՝ եթէ ապաշխարութ ե-կն, իսկ դիւացն ասելով՝ եթէ մեր է և մեզ ծառայ-եաց այսքան ժամանակս։ Այլ 'ի բազում ժամս վիճա-բանեալ ասէին դևքն՝ եթէ ոչ եհաս մտանել 'ի վանսն, իսկ զիա՞րդ ասէք թէ ապաշխարեաց։ Այլ ասեն հրեշ-տակքն՝ թէ յորմէհետէ ետես ած զկամս նորա և՛ զղղ-

ջես որք թողլ ասն անձանց արբիլ յիմարութ՝ ցանկութե, և սղա-նութիւս այսպիսի գործեն և զամենայն անկարգութիւնս առնեն և ըղ-քամենելիս աղեն, և ոչ երկնչին և ոչ ամաչեն յորմէհետէ արբին մո-լութ. վասն այն պարտ է յառաջագոյն նախ քան զարբենալն փոքր փոքր մերժել և հեռացուցանել յինքենէ զչարն զայն ցանկութե և զախտ։

։ Իսկ ոմն 'ի հարանցն պատմէր մեզ զայս՝ եթէ էր 'ի Թեսաղոնիկէ կուսանաց վանս, յոր էին Ճգնաւոր կանայք բազմամ յոյժ։ Իսկ մի 'ի նոցանէ պատերազմեալ եղև 'ի հասարակաց թշնամւոյն, և ելեալ 'ի վանիցն գնաց 'ի քաղաքն և անկաւ 'ի պոռնկութի, և կացեալ 'ի գործն յայն ժամս ինչ։ Իսկ զկնի այսորիկ օգնականութեամբ այ որ կամի զամե-նայն մարդ զի կեցցեն՝ եհարկ 'ի սիրտ նորա ապաշաւս, և զղջացաւ և եկն յապաշխարութի. և գիմեալ եկն 'ի դուռն վանիցն յորմէ ելեալն էր։ Իսկ իբրև մերձեցաւ 'ի դուռն վանիցն, մեռաւ անժամայն։ Եւ յայտ-նեցաւ մեռեալ 'ի սրբոյն մահ նորա, և ետես ծերն զհրեշտակս այ զի եկին առնել զհոգի նորա. եկին և դևք և կային 'ի ձախու կողմանէ, և եղև հակառակութի 'ի մէջ երկոցունցն. հրեշտակքն ասէին՝ յապաշխա-րութի եկն և մեր է. իսկ դևքն ասէին՝ թողեալ զՃգնութի իւր այս-չափ ժամս ծառայեաց մեզ և մեր է. և որպիսին ասէս այսորիկ զժտու-թիւն մեծ։ Ասեն դևքն. զի ոչ բաւեաց և ոչ եմուտ 'ի վանսն, այլ մե-ռաւ արտաքոյ, և արդ զիարդ ձեր է։ Ասեն հրեշտակքն. զի նախ կոյս

ջուցին, ընկալաւ զապաշխարութիւն նորա · և ապաշխարութեանն իւրոյ ինքն իշխէր 'ի ձեռն բարուց զոր մատոյց նոյ, իսկ կենդանութեան նորա ամենեցուն տէրն է ։ Իբրև այսու յանօթ եղեալ գեղքն գնացին ։ Իսկ որ զանեսին եւտես սուրբ եպիսկոպոսն՝ պատմեաց զայսոսիկ ամենեց, յորոց և մեք լուաք և պատմեցաք ձեզ ։ Զայս գիտացեալ, եղբարք, նախ զգուշասցուք անձանց օգնութեան նոյ առ 'ի չտալ խորհրդիւ իւիք մերձենալ. այլ ընդդէմ կալ և մարտնչել, մանաւանդ չեղանել 'ի վանաց · քանզի ուստի գնալքն՝ գիտեմք, բայց յինչ անկանելոց եմք՝ ոչ գիտեմք * ։

ԱՍԱՑ' ծերն վասն պոռնկութեան՝ եթէ բազում են պոռնկական տեսիլք · և հարցեալ ցնա եղբօրն՝ որպիսիք են այսոքիկ, և ասէ՝ թէ առաքեալ ասաց, եթէ պոռնկութիւն և պղծութիւն և ագահութիւն և ամենևին մի անուանեսցի 'ի միջի ձերում որպէս և վայել է սրբոց ։ Վասն զի պոռնկութիւն կատարէ 'ի մարմնի զմեղս · իսկ պղծութիւն շօշափել զմարմինն, ծաղր և համարձակու-

էր և ճգնաւոր մնեալ և այնչափ ժամանակս նոյ էր և յետոյ պատրեցեք գուշ 'ի յանդէսս · և խորև զգաց զմեղս և զպատրանս ձեր՝ զղջացաւ, և ահա յայնմ օրէ որ եդ 'ի մտի զզեղջ, թէպէտ և սրբոյ էր, այլ 'ի յապաշխարութիւն էր · և եւտես նծ զյօժարութիւն զորա, յիշեաց և զառաջին գործ ճգնութեան նորա և եթող զմեղս զորա, զի ապաշխարութեան տէր սա էր յոր և գիտեաց և եկն, այլ ամաց և աւուրց կենաց տէր նծ է · զա զոր և պարտէրն առնել՝ արար ։ Յայնժամ պատկառեալ դևքն յայնց բանից անյայտ եղեն ։ Իսկ զոր եւտեսն ծերն սուրբ և եպիսկոպոս քաղաքին՝ պատմեցին մեզ. և ես զրուցեալն 'ի նոցանէ պատմեցի ձեզ, որպէս զի զգուշասցուք չար խորհրդոց ոչ անկանել 'ի մեղս · իսկ եթէ մեղիցէ ոք, մի ելցէ 'ի վանից իւրոց · զի ուստի գնան և հեռանան՝ գիտեն զայն, այլ թէ որպէս գնան և կամ յինչ գլորեսցի ուր գնայն՝ զայն ոչ ոք գիտէ ։

* [illegible] օրինակի հին [illegible] · Կուսան մի գնաց 'ի բողանոց, և յետոյ զղջացեալ դարձաւ 'ի վանս իւր և մեռաւ առ դրանն · և պատերազմելին դևքն ընդ հրեշտակս թէ մեր է ։ Եւ ասեն հրեշտակքն · առաջին կեանքն նոյ էր, և թէ մեղաւ՝ դարձեալ զղջացաւ · և զա յայդմ էր կարող. իսկ կենաց և մահու տէր նծ է ։ Եւ 'ի բաց ելին դևք 'ի նմանէ ։

։ Ասաց ոմն 'ի հարցն՝ եթէ բազումք և բազմօրինակք են տեսք պոռնկութեան, որպէս և առաքեալ ասէ՝ եթէ պոռնկութիւն և կամ պղծութիւն և ագահութիւն բնաւ մի անուանեսցի 'ի ձեզ որպէս վայել է սրբոց ։ Քանզի պոռնկութիւն այն է զոր առնէ մարդ մեղս 'ի մարմնի այլում · իսկ պղծութիւն իցէ մերձենալ 'ի յանդամս իւր ձեռամբ իւրով.

թիւն ։ Բազում անգամ և խօսելով կամ վասն բարւոյ և կամ վասն արդարութեան՝ ահա հակառակութիւն քո կատարեցեր զմեզս պղծութեան և աճեցուցեր զախտն և պատերազմ ածեր, և սկիզբն առնել յարդարութեան երկիւղածութեան պատճառաւ ասելով՝ բարի է եղբայրս, լաւութիւն ունի յինքեան, ստացեալ զհամարձակութիւն ուտելոյ և ըմպելոյ՝ եւս 'ի թանձրագոյնն գայ, բազում անգամ և միաբան լինի, և նախանձ ծնանի 'ի միջի նոցա ։ Իսկ եթէ բնակեալ է ընդ եղբարս և տեսանէ զոք եթէ խօսի ընդ նմա, նեղի և ասէ . զինչ պէտք են քեզ ընդ այլում խօսելոյ ։ Իսկ եթէ միայն իցէ բնակեալ, և երթայ առ նա այլ եղբայր և տեսանէ զնա համարձակեալ ընդ նմա, վաղվաղակի դարձեալ խռովի ասելով՝ եթէ զինչ պէտք են քեզ ընդ նմա ։ Իսկ ապա 'ի նոյն ինքն պարապէ հոգւոյն, և խորհուրդքն խառնեալ գտանին յաղօթիցն և յա̃ծայինն երկիւղէն ։ Նոյնց դարձեալ թէ բազում անգամ որպէս թէ յա̃ծպաշտութենէ և յուղղութենէ 'ի գրեալ օրինացն խօսելով կատարէ ըղցանկութիւն ։

ԵՐԿՈՒ՝ եղբարց գնացեալ 'ի վաճառ՝ վաճառելին զիւրեանց զկահ ։ Իսկ եղև իբրև չոգաւ մին զպարտաւորութիւնն իւր կատարել, պատերազմեալ լինէր միւսն և անկեալ 'ի փորձութիւն ։ Ապա եկեալ եղբայր նորա ասէ ցնա . եկ երթիցուք 'ի խուցն մեր, եղբայր ։ Իսկ նորա պատասխանի տուեալ և ասացեալ՝ թէ ոչ գամ, և աղաչէր զնա և ասէր՝ ընդէր, եղբայր իմ ։ Իսկ նա ա-

և ծաղր լինի և համարձակութիւն նոյն է ։ Բազում անգամ ասեմք ինչ և կրեմք 'ի մեծի մեղս կամակամս ինչ կամ ծաղրականս ինչ կամ խանդաղատականս բան ։ Քանզի 'ի բազում տեսակաց ժողովի սկսա ցանկութեան, և ապա պատերազմ սկսանի . է երբեմն զի ձայն միայն զմեզ և երբեմն բան, երբեմն տեսակ, երբեմն հոգք հանդերձից ։ Այսպէս բազում գլուխ և բազմագոյն են ախտք ցանկութեանց, յորմէ զգուշանալ պարտ է յամենայնի ։ Բազում անգամ լինի և այս զի վասն որ- [illegible] կենացն և վասն սուրբ քաղաքավարութեան խօսին ընդ գեղեցկադէմս միմեանց և առաջի իրերաց սուրբ և պատկառելիս . իսկ 'ի ներքոյ միտք և խորհուրդք զմեղս գործեն, որով և լինին բազում անգամ և մարմնոց պղծութեան և անկանումն ։ Այսպէս բազմապատիկ են տեսակք ախտից ցանկութեանց, վասն այսորիկ և բազմապատկապէս եւս պարտիմք ըզգուշանալ ։

։ Եղբարք երկու գնացին 'ի քաղաքն վաճառել զձեռագործս իւրեանց ։ Եւ իբրև մեկնեցան 'ի միմեանց, մինն անկաւ 'ի պոռնկութիւն, և եկն միւս եղբայրն և ասէ . արի գնասցուք 'ի խուցս մեր ։ Իսկ նա ա-

սէ · յաղագս այսորիկ զի 'ի մեղս անկայ ։ Իսկ եղբայրն կամեցեալ շահել զնա, սկսաւ երդնուլ և ասէ՝ թէ և ես յորժամ որոշեցայ 'ի քէն, այդպիսի իրաց դիպեցայ. այլ եկ երթիցուք և ապաշխարեսցուք, և կարողութի է ա՟յ թողութիւն առնել մեզ ։ Եւ եկեալ 'ի խրճիթն իւրեանց պատմեցին զայս ծերոցն եթէ որ ինչ պատահեացն նոցա փորձութին, և զոր ինչ խոստացան ընդ նոսա ծերքն զամենայն ինչ յապաշխարութի. բայց միւսն ես ընդ եղբօրն ապաշխարէր, որպէս թէ և նա յանցաւոր իցէ ։ Եւ տեսեալ ա՟յ զապաշխարութի սիրոյ նորա, ընդ սակաւ ժամանակս երևեցաւ ումեմն 'ի ծերոցն իրքնոցա՝ եթէ վասն սիրոյ անյանցին թողութի արար յանցաւորին ։ Արդ այս է դնել զանձն 'ի վերայ եղբօր իւրոյ ։

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ծեր և ասէ . թէ անկցի միայնակեաց 'ի մեղս, աշխատի մինչև դարձեալ կանգնեացի . իսկ որ յաշխարհէն գայցէ, որպէս և սկիզբն արարեալ յառաջադէմ լինի . իսկ մենակեացն յառաջադէմ լինելով յորժամ յանարգութի՝ նեղի ։ Եւ պատասխանի տուեալ ծերոյն ասէ ցնա . մենակեացն որպէս ապարանք զի անկեալ իցեն, եթէ կամիցի շտտանալ և առթուն լինել խորհրդովք իւրովք և շինեսցէ զանկեալ ապարանսն, գտանէ բազում նիւթս յանկելոյ անտի, զհիմունսն գտանէ հաստատուն և զքարինսն կազմ և զհողն պատրաստ, և վաղվաղակի յառաջէ քան զայն՝

սէ . ես ոչ երթամ, եղբայր, ընդ քեզ ։ Եւ նա ասէ . ընդէր, ով եղբայր ։ Իսկ նա ասէ . 'ի մեկնելն քո յինէն անկայ ես 'ի պոռնկութի. վասն այն ոչ կարեմ գալ ։ Ասէ եղբայրն ցնա . այդ գործ զոր ասացեր դու, և ինձ դիպեցաւ 'ի մեկնելն իմ 'ի քէն ։ Զայս ասաց քանզի կամեր շահել զեղբայրն, և ասէ . յարուցեալ գնասցուք 'ի սեննակս մեր և ապաշխարեսցուք 'ի խորոց սրտէ, և ած թողցէ մեզ, զի ողորմած է ։ Զայսուհետև եկեալ պատմեցին ծերոցն զոր ինչ դիպեցաւ նոցա, և նոքա ետուն նոցա կարգս զի ապաշխարեսցեն ։ Իսկ միւսն վասն միւսոյն ապաշխարէր, վասն այնորիկ նայեցաւ ած 'ի սէր և 'ի ջանս նորա, և զկնի սակաւ ինչ աւուրց յայտնեաց ծերոյ ումեմն առերն և ասէ . վասն սիրոյ ոչ անկանելոյ եղբօրն թողի և զանկելոյն մեղս ։ Ահա զի այսպէս պարտ է դնել զանձն վասն եղբօրն, և բառնալ զյուսահատութիւն վասն սորա ։

1 Եղբայր ոմն եհարց ծերին և ասէ . եթէ անկանի կրօնաւոր 'ի մեղս և ապա դարձեալ ապաշխարեսցէ ջերմագէս, և այլ ոմն գնա ես գալէ յերկրէ և սկսցի բարւոք ընթանալ, ո՞ր ոք յերկոցունց յառաջանէ փութով ուղղեսցի ։ Ասէ ծերն . կրօնաւոր որ 'ի մեղս անկանիցի՝ նման իցէ անկեալ տան, և եթէ դարձեալ փութայ զխնամութի և ապաշխարիցէ՝ յուսկրաւեալս շինեսցի, քանզի և նիւթքն ամենայն ծածկեալ կան և

որոյ թէ զհողն չիցէ փորեալ և ոչ ակիզըն արարեալ և ոչ այլ ինչ ունիցի յառաջինկայ պիտոյիցն, այլ յուսով և եթ գործիցէ՝ սպասելով թէ զիւրդ կատարիցէ։ Նոյնպէս է որպէս թէ ոք 'ի միայնակեցացն վարուց իցէ, և թէ անկանիցի 'ի փորձութիւն և դարձցի՝ ունի բազում պէտս առ ինքեան առ միայնակեցաց գործոց՝ զխոկումն և զպաշտօն, որ այս ամենայն է հիմն։ Իսկ տխմարն մինչ զայս ուսանի, դառ յառաջին կարգն հասանես։

ԵՂԲԱՅՐ՝ ոմն ճանապարհ երթայր, ունէր և զմայր իւր ընդ ինքեան պառաւեալ յոյժ։ Եւ իբրև եկին 'ի գետ, ոչ կարայ պառաւն անցանել ընդ գետն. և առեալ որդւոյ նորա զարկանելեն զիւր պատեաց զձեռս իւր, զի մի մերձեսցի 'ի մարմին նորա. այսպէս համբարձեալ զնա տարաւ յայնկոյս։ Ասէ ցնա մայր իւր. որդեակ, ընդէր պատեցեր զձեռս քո։ Նորա պատասխանի տուեալ և ասացեալ՝ եթէ մարմինք կնոջ մարդոյ հուր են, և շօշափելով զքո մարմինդ յիշատակէր 'ի միտս իմ և այլոց կանանց, յաղագս այնորիկ արարի այդպէս։ Տեսանես զի մինչև առ իւրեանց մայրն այնպիսի հաստատութիւն ունի ճշմարիտ միայնակեցացն։

պատրաստ են հիմունք և քարը և փայտ և հող և ամենայն ինչ. վասն այսորիկ այս դիւրաշէն լինի քան զնոր ակնաւլն, որ ոչ բրեալ իցէ և ոչ ունիցի նիւթ ինչ, այլ միայն զկամս շինողին։ Այսպէս է եթէ գթէ 'ի մեղս կրօնաւոր և դարձցի յապաշխարել, ունի յինքն զանօթութ՝ այսինքն զխորան, զաղօթք, զառաջմոս և զձեռագործ, որք են հիմունք իրին շինուածոյ. իսկ գեաւեկն զի թափուր է 'ի սոցանէ, մինչ զայս ամենայն ուսցի և վարժեսցի՝ անկեալն այն յառաջնոգոյն վաղվաղակի գայ յառաջին տեղին իւր։

¹ Եղբայր ոմն երթայր ընդ մօր իւրոյ ծերոյ 'ի ճանապարհի, և 'ի գնալն իւրեանց դիպեցան գետոյ ինչ և ոչ կարէր անցանել մայրն. և առեալ որդի նորա զփակեղն իւր պատատեաց զերկուս ձեռս իւր, իբր թէ մի մերձեսցի ձեռն իւր 'ի մարմին ձեռաց մօր իւրոյ. և այնպէս բարձեալ զմայր իւր անցոյց յայնկոյս գետոյն։ Եւ իբրև անցին յայնկոյս, ասէ մայրն ցորդին. ընդէր փաթաթեցեր զձեռն քո, որդեակ, միթէ ո՞չ եմ մայր քո և ո՞չ ես իսկ ծնեալ 'ի քէն և սնուցի և ո՞չ առաջինն ծեր իցեմ մեռեալ և 'ի հող դարձեալ։ Պատասխանի ետ որդին և ասէ ցմայրն. այո այդ ամենայն այդպէս է որպէս ասացերդ. այլ վասն զի հուր են մարմինք կանանց և 'ի հասանել յառն լուցանէ և 'ի նմանէ գայ յայլոց կանանց յիշումն և անտի լուցանէ հուր մեղացն, վասն այսորիկ արարի զայս։ Քանզի յամենայն տեղիս պարտ է զգուշանալ կրօնաւորին և արիանալ ընդդէմ չարագործ ներհակաւորին այն, որ ընդ անախնուանելի և անկարծելի ժամանակն գիտէ արկանել զիւր չարութիւնն, և տապալել 'ի նորա հերքին նետից։

ԵՂԲԱՅՐ՝ ոմն երթեալ առ մի ոմն 'ի ծերոցն ասէ ցնա՝ եթէ եղբայր իմ խռովեցուցանէ զիս երթալով յայսկոյս և յայնկոյս։ Եւ աղաչեաց զնա ծերն և ասաց. համբերեա, և ա͞յ տեսեալ զաշխատութիւն համբերութեան քո՝ ածէ զնա 'ի ճանապարհն. վասն զի ոչ խստութեամբ ածէ ոք զոք յուղղութիւն, և ոչ դև զդև հանէ, այլ մանաւանդ թէ. քաղցրութեամբ տար նմա, վասն զի և ա͞ծ մխիթարութեամբ ածէ զմարդիկ 'ի հաւան։ Եւ պատմեաց նմա և ասէ։ Երկու եղբարք էին 'ի Թեբայիդ. պատերազմեալ մինն՝ ասէ երթամ յաշխարհ. իսկ միւսն ասէր՝ ոչ տամ քեզ թոյլ երթալ, եղբայր իմ, և կորուսանել զհոգիդ քո և զկուսութիւն և զաշխատութիւն։ Իսկ նա ոչ հաւանէր նմա, այլ ասէ ցնա. ոչ նստիմ աստ, բայց եթէ երթամ, թէպէտ եկ և դու ընդ իս. և յորժամ կատարեցից զկիրս իմ, գամ դարձեալ ընդ քեզ. և կամ արձակեա զիս զի բնակեցայց ես յաշխարհի։ Եւ երթեալ եղբայր նորա առ ոմն ծեր մեծ՝ պատմեաց նմա զիրսն։ Ասէ ցնա ծերն. երթ ընդ նմա, և ա͞ծ վասն քո աշխատութեանն ոչ թողու զնա անկանել 'ի փորձութիւն։ Եւ յարուցեալ եկին յաշխարհ. և իբրև եկին 'ի գեօղն, տեսեալ ա͞յ զաշխատութիւն մերձաւորի նորա, առ 'ի բաց զպատերազմն յեղբօրէն։ Ասէ ցնա պատերազմեալն. եկ, եղբայր, դարձեալ երթիցուք յանապատն մեր. զիրս-

¹ Գնաց երբեմն եղբայր ոմն առ ծեր խոր և ասէ ցնա. եղբայրս իմ վրդովեցնէ զիս՝ աստ և անդր շրջելով, և ես տրտմեալ եմ 'ի նմանէ յոյժ։ Ասէ ցնա ծերն. աղերսիւ քաղցրես զեղբայր քո, որդեակ. և զի տեսանէ Ա͞ծ զհամբերութիւն և զվաստակս քո, և բերցէ զնա յուղղութիւն. և զի ոչ ոք կարէ ածել զոք բռնութեամբ յուղղութիւն, այլ քաղցրութեամբ գայցէ, քանզի և Ա͞ծ քաղցրութեամբ ածէ ըզմարդն առ բարին։ Եւ ասաց նմա պատմութիւն այսպիսի։ Եղբարք երկու բնակէին 'ի Թեբայիդա, և մինն 'ի նոցանէ պատերազմեցաւ 'ի պոռնկութեն և ասէր ցեղբայրն. ես գնամ յերկիր։ Իսկ երկրորդն ողբայր և ասէր. ոչ թողից զքեզ, եղբայր, զի գնասցես և կորուսցես զվաստակս և զկուսութիւն քո։ Իսկ նա ոչ լսէր, այլ ասէր ցնա. անհնարին է եթէ ոչ գնացից. այլ դու եթէ կամիցիս, եկ ընդ իս և դարձցուք աստ 'ի սենեակս մեր, և կամ արձակեա զիս զի գնացից և կացից անդ։ Յարեաւ եղբայրն և գնաց առ ոմն 'ի ծերոցն և պատմեաց նմա զայս ամենայն։ Ասէ ցնա ծերն. գնասցես ընդ նմա, և տեսցէ Ա͞ծ զջանս քո և ոչ թողուցու անկանել նմա։ Յայնժամ ըստ բանի ծերոյն յարուցեալ երկոքեանն գնացին 'ի միասին 'ի գիւղն. և իբրև հասին անդ, նայեցաւ Ա͞ծ 'ի վաստակս միւսոյն և եբարձ զպատերազմ երկրորդին։ Եւ դարձաւ եղբայրն և ասէ ցնա. եկ, եղբայր, գնասցուք յանապատ

ցուք թէ կատարեցի զկրօնս, զի՞նչ օգտեցայ։ Եւ դարձեալ անդրէն 'ի խուցն իւրեանց անվնաս պահեալ։ Ահա որ առնէ իրս վասն այ, ոչ կորուսանէ տէր զվաստակութիւն նորա։

ՊԱՏՄԵՑԻՆ[1] ոմանք վասն եղբօր ուրումն որ անկեալ էր 'ի մեղս, և երթեալ առ հայրն Պօղոս խռովէր և ելանէր և մտանէր և ոչ կարէր 'ի տեղւոջն նստել։ Եւ ասէ ցնա հայրն Պօղոս. զի՞ է, եղբայր։ Եւ նա ասէ ցնա. մեղս մեծ արարի և ոչ կարեմ զայն խոստովանել հարանց։ Ասէ ցնա ծերն. խոստովանեա ինձ և ես համբառնամ ընդ քեզ։ Ապա յայնժամ պատմեաց նմա։ Ասէ ցնա ծերն. քաջալերեաց, զի գոյ ապաշխարութիւն. արդ երթ նիստ յայրին և պահեա զերկուս երկուս աւուրս, և ես համբառնամ ընդ քեզ զկէս մեղացն։ Արդ իբրև կատարեցան երեք շաբաթք, իմացաւ ծերն եթէ ընկալաւ ած զապաշխարութիւն եղբօրն. և եկաց առ նմա հնազանդելով ծերոյն մինչև 'ի մահ նորա։

ՊԱՐԶԵԱԼ[2] եհարց հայրն Ամոն ցհայրն Պիմէն վասըն խորհրդոց պղծոց և ընդունայն ցանկութեանց զոր ծնանին մարդիկ։ Եւ ասէ ցնա հայրն Պիմէն. միթէ բարձրասցի՞ փայտատ առանց կտրողի. արդ դու մի ձեռնկալու լինիր նոցա, և մնացեալ լինին ընդունայն։

'ի սենեակս մեր. և եթէ մեղկցեմ ես՝ զի՞նչ շահեցայց 'ի նմանէ։ Եւ դարձան 'ի տեղի իւրեանց անախտս։ Այսպէս փրկութեան և բարւոյ պատճառ անձն՝ որ բնակի ընդ եղբօր բարւոյ և երկիւղածի և քաղցրի։

[1] Պատմէին մեզ զեղբօրէ ումեմնէ որ անկաւ 'ի մեղս, և գնացեալ առ հայրն Ղովտ և շփոթելով մտանէր և ելանէր և ոչ կարէր նստել կամ կալ 'ի միում տեղւոջ։ Ասէ հայրն Ղովտ ցնա. զի՞նչ է քեզ, որդեակ, ընդէ՞ր այդպէս տրտմեալ ես։ Ասէ ցնա եղբայրն. 'ի մեծ մեղս անկեալ եմ, ով հայր պատուական, և ոչ եմ կարող պատմել զնա քեզ։ Ասէ ցնա ծերն. խոստովանեա ինձ, և ես բարձից զնա։ Ասէ եղբայրն. 'ի պոռնկութիւն անկայ, հայր, և զոհեցի կռոց զի հաւանեցայ գործոյն այնորիկ։ Ասէ ցնա ծերն. քաջալերեաց և զօրացիր, որդեակ, զի գոյ հնար ապաշխարութեան. արդ երթեալ նստցիս յայրն յայն և պահեսցես զերկու աւուրբք, իսկ զկէս մեղաց քոց ես բարձից։ Եւ իբրև անցին 'ի վերայ երիս եօթնեակս, ետես յայտնի ծերն զի ընկալաւ ած զապաշխարութիւն եղբօրն և եթող զմեղս նորա։ Իսկ եղբայրն եկաց 'ի հնազանդութեան ծերոյն մինչև ցօր մահուան իւրոյ։ Այսպէս իմաստուն և սուրբ բժիշկքն շահին զոգիս բազմաց։

[2] Եհարց հայրն Պամբոյ ցհայրն Պիմէն վասն զազիր և պիղծ խորհրդոց և ցանկութեանց զոր ծնանին սիրտք մարդկան։ Ասէ ցնա հայրն Պիմէն. միթէ վերասցի՞ կացին առանց ձեռին մարդոյ փայտահատի. այսպէս և դու ձեռն մի՛ տայցես, և նոքա անզօրասցին։

ԱՍԷՐ¹ Եւդեմոն վասն հօրն Պափնուտի և առաջնորդին Սկիւթայ՝ եթէ իջի ես անդր մանուկ և ոչ եթող ինձ անդր լինել ասելով՝ եթէ ես ինքն ոչ տամ թոյլ մանկան տիօք լինել 'ի Սկիւթ վասն պատերազմի թշնամւոյն *։

ԱՍԷՐ հայրն Իսահակ երէց ցեղաարտն. մի ածէք այսր մանկունս, վասն զի չորք եկեղեցիք 'ի Սկիւթ աւերեցան վասն մանկանց։

ԱՍԷ² հայրն Կարիոն. մարդ եթէ լինիցի ընդ մանկան, եթէ ոչ ունիցի զօրութիւն, 'ի վայր անկանի. ապա եթէ ունի զօրութիւն և ոչ անկանի 'ի վայր, սակայն յառաջել ոչ կարէ։

ԵՂԲԱՅՐ³ ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. զինչ գործեցից, զի պատերազմիմ 'ի պոռնկութենէ և յափշտակիմ 'ի բարկութենէ։ Ասէ ծերն. յաղագս այդորիկ Դաւիթ ասէր՝ եթէ զառիւծս սատակէի և զարջս ահեղս հեղձուցանէի. այսինքն է եթէ զբարկութիւն 'ի բաց կտրէի, և զպոռնկութիւն վաստակօք նեղէի։

ԱՍԱՑ Պիմէն ասաց. կրօնաւոր որ ունի մտանել 'ի խցի և գիտէ զմեղս նորա և ոչ արտաքսէ զնա, նման է փայտի որ ուտիցի յորդանց սիրտ և մէջ նորա։

ԱՍԷԻՆ ծերքն՝ եթէ երիս զօրութիւնս ունի սատանայ, մոռացութեան, հեղգութեան և ցանկութեան։

ՊԱՏԵՐԱԶՄԵՑԱՒ⁴ երբեմն հայրն Մովսէս որ 'ի վի-

¹ Ասաց հայրն Դեմոն վասն հօրն Պափնուտի, որ էր առաջնորդ Սկիւտայ, եթէ իջի երբեմն 'ի Սկիտէ 'ի մանկութեան իմում, և ոչ ետ ինձ թոյլ կալ անդ և ոչ օր մի, այլ ասէ ցիս. ես յաւուրս իմ զերեսս կնոջ ոչ թողում մտանել 'ի Սկիտէ վասն պատերազմաց դիւացն։

* Նոյն բանք են գրքեալ այլուր 'ի հին թարգմանութէ. Ծերն Եդեմոն ասաց՝ եթէ 'ի աղայութեան իմում գնացի 'ի Սկիւթէ, և օր մի ոչ ետ ինձ կալ առաջնորդն ասելով՝ եթէ պատկերի կնոջ ոչ տամ ես առա յամել 'ի Սկիւթ։

² Ասաց հայրն Կարիոն. եթէ որ բնակէ ընդ մանկան ծեր, եթէ տկար իցէ խորհրդով, 'ի խորս կորստեան անկցի միշտ. իսկ եթէ զօրաւոր իցէ և կատարեալ խորհրդով՝ նա ոչ անկցի, սակայն գթեսցի [illegible]
³ Եղբայր ոմն եհարց ցհայրն Պիմէն և ասէ. զինչ արարից, հայր, զի պատերազմիմ ես պոռնկութեամբ և սրտմտութեամբ։ Ասէ ցնա ծերն. վասն այդորիկ ասէր Դաւիթ՝ եթէ զառիւծ սպանանէի և զարջ խեղդէի. այսինքն է եթէ զբարկութիւն մեռուցանէի, իսկ զպոռնկութիւն նեղէի և խեղդէի։
⁴ Պատերազմեցաւ երբեմն հայրն Մովսէս 'ի պոռնկական խոր-

մին էր՝ 'ի պոռնկութէ, և ոչ ևս կարաց հանդարտել 'ի տեղւոջ իւր, չոգաւ և պատմեաց հօրն Իսիդորոսի: Եւ աղաչեաց զնա ծերն զի դարձցի անդրէն 'ի խուցն իւր, և ոչ առ յանձն ասելով՝ եթէ ոչ հանդարտեմ, հայր: Եւ առեալ եհան զնա 'ի տանիսն և ասէ ցնա. հայեաց յարևմուտս: Եւ հայեցեալ տեսի բազմութիւն դիւաց զի էին խռովեալք և երևեցուցանէին որպէս թէ պատերազմ: Ասէ ցնա հայրն Իսիդորոս. հայեաց յարևելս: Եւ հայեցեալ տեսի բազմութիւն սրբոց հրեշտակաց: Ասէ ցնա հայրն Իսիդորոս. ահա որ յարևմուտս են, սոքա են որ պատերազմին ընդ սուրբս. իսկ զոր տեսեր յարևելս, սոքա են առաքեալք յԱյ յօգնել սրբոց: Եւ տեսի զի բազումք են որ ընդ մեզ են: Եւ այսպէս գոհացեալ հայրն Մովսէս զԱյ, քաջալերեցաւ և դարձաւ 'ի խուցն իւր*:

ԱՍԱՑ հայրն Պիմէն՝ եթէ նշան միայնակեցի 'ի փորձութիւնս երևի:

ԱՍԱՑ՝ դարձեալ՝ թէ որպէս սուսերակիր թագաւորին կայ հանապազ պատրաստ առ նմա, այսպէս հոգւոյն պարտ է հանապազ պատրաստ լինել ընդ դիւին պոռնկութե:

հրրդոց, այնպէս զօրաւոր մինչև ոչ կարէր նստել 'ի սենեկի. և յարեաւ գնաց նա առ հայրն Իսիդորէ և պատմեց զայն նմա: Իսկ նա խրատէր զնա գնալ 'ի սենեակ իւր, և նա ոչ առնոյր յանձն, այլ ասէր. ոչ կարեմ, հայր: Յայնժամ առեալ զնա ծերն եհան 'ի վերայ տան իւր և ասէ. նայեաց ընդ արևմուտս: Եւ նա նայեցեալ ետես բազմութիւն դիւաց յօդս՝ զի շփոթեալ պատերազմէին ընդ նա: Դարձեալ ասէ. նայեաց ընդ արևելս: Եւ նայեցեալ ետես բազմութիւն յոյժ հրեշտակաց որք էին զարդարեալ գեղեցիկս: Եւ ասէ ցնա հայրն Իսիդորէ. ահա սոքա առաքեալ են յօգնականութիւն սրբոց իւրոց. և արևմտեանքըն կռուէին ընդ նոսա: Եւ ասէ տեսանես թէ սոքա քանի բազումք են և զօրաւորք օգնականքն մեր քան զպատերազմողսն: Եւ այսպէս զօրացեալ հայրն Մովսէս և հանդարտեալ դարձաւ 'ի սենեակ իւր:

* Այս օրինակ համառօտեալ դրեալ 'ի հին թարգմանութեն. Հայրն Մովսէս պատերազմեալ 'ի պոռնկական դիւաց՝ չոգաւ առ հայրն Իսիդորոս խոստովանել նմա: Եւ հանեալ զնա 'ի տանիսն՝ ասէ. հայեաց ընդ արևմուտս և ընդ արևելս. և ասէ, տեսանեմ զզօրս դիւաց յարևմտից և զզօրս հրեշտակաց յարևելից. և ասէ Իսիդորոս, այդու օգնականօք յաղթեա դիւացն:

: Ասաց հայրն Պիմէն. զոր օրինակ զէնհակիր միշտ փութայ առաջի արքային կալ զգաստ, այսպէս և անձն կրօնաւորի արժան է զի զգուշասցի ընդդէմ պոռնկական դիւին:

ՊԱՏԵՐԱԶՄԵՑԱՒ[1] երբեմն աշակերտ մեծի ծերոյն 'ի պոռնկութէ. իսկ ծերոյն տեսեալ զնա զի աշխատէր, և ասէր ցնա. կամիս զի աղաչեցից զԱծ, զի թեթևացուսցէ 'ի քէն զպատերազմդ: Այլ նա ասաց. հայր, թէպէտ և աշխատիմ, բայց տեսանեմ յիս պտուղ. զայս միայն, հայր, աղաչեա յաղօթս քո զի տացէ ինձ զօրութիւն և համբերեցից: Ասէ ցնա հայրն նորա. այսօր գիտացի եթէ յառաջեցեր և անցանես զինև:

ՉՈԳԱՒ[2] ոմն 'ի Սկիւթ լինել մենակեաց, առեալ և զորդի իւր ընդ իւր հատեալ 'ի ստենէ: Այլ իբրև եղև որդի նորա պատանի, սկսան պատերազմունք շարժել 'ի վերայ նորա, և ասէ ցհայրն իւր. երթամ յաշխարհ, վասն զի ոչ հանդարտեմ պատերազմի պոռնկութեանս համբերել: Իսկ հայրն նորա աղաչէր զնա զի համբերեսցէ: Օ կնի դարձեալ ասէ ցհայրն իւր. հայր, ոչ ևս ժուժեմ, արձակեա զիս զի երթայց: Ասէ ցնա հայրն իւր. լուր ինձ, որդեակ, այս անգամ, և առ ընդ քեզ քառասուն կցակս հացի, և սակաւ արմաւենի քառասուն աւուր, և երթ 'ի ներքսագոյն անապատն և նիստ անդ զաւուրս քառասուն, և կամքն Տն կատարեսցին: Այլ լուաւ նմա որդի նորա. և էր անդ մանելով և աշխատելով զչոր արմաւենին և ճաշակէր զհացն չոր, և դադա-

[1] Պատերազմեալ եղև երբեմն աշակերտ ծերոյ մեծի ումեմն 'ի պոռնկութէ, իսկ սուրբ ծերն տեսանէր զվիշտս և զճգնութիւն նորա և ասէ ցնա. կամիս, որդեակ, զի աղաչեցից զԱծ վասն քո, զի թեթևացուսցէ զդա 'ի քէն: Պատասխանի ետ եղբայրն և ասէ. թէպէտ և աշխատիմ, հայր, սակայն տեսանեմ յիս զպտուղ վաստակոյն. մի խնդրեր յԱյ զի բարձցէ զայս յինէն, այլ աղաչեա զի տացէ ինձ համբերութիւն: Իսկ սուրբ ծերունին ասէ ցնա. արդ գիտացի, որդեակ, զի վերագոյն քան զիս եղեր:

[2] Ելեալ ոմն յերկրէ և եկն 'ի Սկիտէ և կրօնաւոր եղև, և ունէր ընդ ինքն զորդի իւր տղայ մանուկ: Եւ իբրև զարգացաւ համբակն և եղև մանուկ, յարեան 'ի վերայ նորա պատերազմունս խիստս, և ասէ ցհայրն. գնացից ես յաշխարհ, զի ոչ կարեմ բառնալ զպատերազմ զայս: Իսկ հայրն աղաչէր զնա համբերել և կեալ: Եւ մանուկն ասէր. ոչ կարեմ բառնալ զայս, հայր, այլ արձակեա զիս և գնացից: Յայնժամ ասէ ցնա հայրն. արդ վասն անձին քո յինէն զայս լուր ինձ, առ ընդ քեզ հացս քառասունս և նոյնչափ արմաւս և կացցես 'ի խորին անապատս զաւուրս քառասունս, և կամք Այ եղիցին յամենայնի, և զոր ինչ յայտնեսցի քեզ առնել՝ արասցես: Լուաւ նա զպատուիրանս հօր իւրոյ և գնաց 'ի խորին անապատն և կայր անդ, աշխատէր և ճգնէր, հիւսէր զսփրայն և հաց ցամաք և սակաւ ճաշակէր: Եւ իբրև եկաց անդ աւուրս քսան, ետես զհարգախտութեն Թշնամւոյն, որ և գայր 'ի վերայ

րեաց անդ զաւուրս քսան։ Այլ ահա տեսանէր զի գայր առ նա ազդողութիւն պոռնկութեան, և եկաց առաջի նորա կին եթեովպացի ժահահոտ. և նա ոչ կարաց տանել ժահահոտութեան, այլ հալածեաց զնա։ Այլ կինն ասէ ցնա. ես յամենայն մարդոց ախորժ քաղցր երևիմ, բայց վասն հնազանդութեանդ և աշխատութեանդ ոչ ետ ինձ ած խաբել զքեզ, այլ յայտնեաց քեզ զիմ չարահոտութիս։ Այլ նորա յարուցեալ եկն առ հայրն իւր և ասէ ցնա. ոչ ես կամիմ երթալ յաշխարհ, հայր, վասն զի տեսի զազդողութիւն չարահոտութեան նորա։ Այլ էր իմացեալ և զայս հօր նորա և ասէ ցնա. եթէ էր լեալ քո զքառասուն օր և պահեալ զպատուիրանն, ունէիր տեսանել այլ մեծ տեսութիւնս։

ԱՂԲԱՅՐ ոմն պատերազմեցաւ 'ի պոռնկութենէ, և դէպ եղև անցանել ընդ գիւղ ուրեմն Եգիպտոսի. և տեսեալ զդուստրն քրմի ուրումն հեթանոսաց՝ սիրեաց զնա և ասէ ցհայր նորա. տուր ինձ զդուստրն քո կնութեան։ Այլ նա ասաց. ոչ կարեմ տալ զնա քեզ, եթէ ոչ հարցից զածսն իմ։ Այլ երթեալ առ դևն ասաց ցնա. ահա մենակեաց ոմն խնդրէ զդուստրն իմ կնութեան. Այլ ասէ դևն. քննեա զնա, եթէ ուրանայ զածն իւր և զմկրտութիւն և զխոստովանութիւն մենակեցութեան։ Այլ եկեալ քուրմն եհարց ցնա և ասէ․ ուրանա՞ս զխոստովանութիւն մենակեցութեանդ և զածն քո։ Այլ նա յանձին կալաւ։ Այլ դարձեալ ասաց քուրմն. ուրանա՞ս զմկրտութիւն յոր. մկրտեցար։ Այլ նա ասէ՝ այո։ Այլ առժա-

նորա յարաժամ պատերազմ. և երևեցաւ առաջի նորա աղջիկ ինչ սևաւ եթովպացի և այնպէս ժահահոտ՝ մինչ զի ոչ կարէր հանդուրժել չար հոտոյ նորա. և զի գայր ի յարիլ 'ի նա, և մանուկն արտաքս վարէր զնա և ասէր. մեկնեա աստի և գնա, որպէս ժահահոտ ես դու և վատ ես և տգեղ յոյժ։ Իսկ աղջիկն այն ասէ. ես 'ի սիրտս արանց յոյժ քաղցրահամ եմ համարեալ, այլ վասն աղօթից հօրն քո և վասն հնազանդութեան քո ոչ եթող զիս ած խաբել և գթել զքեզ, այլ յայտնեաց քեզ զտգեղն խենեշութե և ժահահոտութեան իմոյ։ Իսկ մանուկն իբրև լուաւ զայս, յարեաւ առժամայն և գոհանայր զաստուծոյ։ Եւ եկն առ հայր իւր և ասէ. ոչ կամիմ գնալ յաշխարհ, հայր, վասն զի տեսի ես զխարէշութե գիւղացն, և հոտոտեցի զչար հոտ նորա։ Ասէ ցնա հայրն. եթէ կացեալ էիր անդ զքառասուն աւուրս և լցեալ էիր զխօսս իմ, մեծամեծս քան զայդ ցուցեալ էր քեզ տէր։ Ահա զի 'ի ձեռն արիութե և զգաստութե և աղօթից փրկեցաւ մանուկն, և յայտնեցաւ ժահահոտութե պղծալից գարշութեանն։

մայն ետես զհոգին սուրբ իբրեւ զաղաւնի զի ելանէր 'ի բերանոյ նորա եւ թռեալ յերկինս ։ Իսկ երթեալ քուրմն առ դեւն ասաց ցնա · ահա յանձին կալայ վասն երեւմանցն զոր ասացերն ։ Իսկ ասէ դեւն · մի տար զդաւարըն քո նմա, վասն զի ոչ է հեռացեալ ա̃ծ նորա 'ի նմանէ, այլ եւ այժմ օգնէ նմա եւ ընդունի զնա յապաշխարութիւն ։ Իսկ եկեալ քրմին ասաց ցնա · ոչ կարեմ զնա տալ քեզ, վասն զի ա̃ծն քո եւ այժմ ընդ քեզ է եւ ոչ է հեռացեալ 'ի քէն, այլ օգնէ քեզ ։ Իսկ զայս լուեալ եղբօրն սատանայինն՝ թէ այսքանի բարութիւնս առնէ ա̃ծ առ իս, իսկ ես տառապեալս ուրացայ զնա եւ զսուրբ մկրտութիւն եւ զխոստովանութիւն միակեցութեան, եւ բարերարն ա̃ծ եւ այլ օգնէ ինձ ։ Իսկ զգացեալ անձին իւրոյ զօրացաւ եղբայրն, եւ գնացեալ յանապատն առ մի ծեր մեծ եւ պատմեաց նմա ասելով զիրս ։ Իսկ ասէ ցնա ծերն · նիստ առ իս յայրիս եւ պահեա զերիս շաբաթս եւ պահեա ազանելով, եւ ես հանդերձ քեւ աղաչեմ զա̃ծ վասն քո ։ Իսկ աշխատեցաւ ծերն վասն եղբօրն եւ աղաչեաց զա̃ծ եւ ասէ · աղաչեմ զքեզ, տէր ա̃ծ, շնորհեա ինձ զհոգիս զայս եւ ընկալ զապաշխարութիւն սորա ։ Իսկ լուաւ նմա ա̃ծ ։ Իսկ 'ի կատարել առաջին շաբաթուն եկն ծերն առ եղբայրն եւ եհարց ցնա եւ ասէ · տեսե՞ր ինչ եթէ ոչ ։ Իսկ ասէ ցնա · այո, տեսի զաղաւնին 'ի վեր 'ի բարձունս երկնից զի կայր հանդէպ գլխոյ իմոյ ։ Իսկ ասէ ծերն · հայեաց յանձն քո եւ աղաչեա զա̃ծ անդադար ։ Իսկ յերկրորդ շաբաթուն եկեալ ծերն եհարց ցեղբայրն եւ ասէ · տեսե՞ր ինչ ։ Իսկ ասէ եղբայրն · տեսի զաղաւնին զի եկն մօտ 'ի գլուխս իմ ։ Իսկ պատուիրեաց նմա ծերն եւ ասէ · արթուն կաց եւ աղօթս արա անդադար ։ Իսկ 'ի կատարել երրորդ շաբաթուն եկն ծերն՝ հարցեալ ցնա եւ ասացեալ թէ զինչ տեսեր, եւ նա ասաց · տեսի զաղաւնին զի եկն եւ նստաւ 'ի վերայ գլխոյ իմոյ, եւ ձգեցի զձեռն իմ զի կալայց զնա, եւ նորա յարուցեալ եմուտ 'ի բերան իմ ։ Իսկ գոհացեալ ծերն զա̃յ, ասաց ցեղբայրն · ահա ընկալաւ ա̃ծ զապաշխարութիւն քո, արդ յայսմհետէ հայեաց յանձն քո ։ Իսկ ասէ եղբայրն · ահա յայսմհետէ ընդ քեզ եմ, եղբայր եւ հայր իմ, մինչեւ զվախճան իմ փառաւորելով զտէր Յ̃ս Ք̃ս յաւիտեանս յաւիտենից ։

Ասէ աբբայ Կասիանոս՝ եթէ ասէր ցմեզ աբբայ Յով-
հաննէս կարճահասակն. պիղծ է թաքուցանել զխոր-
հուրդն, այլ պարտ է ածել զնա 'ի հոգևոր դատաստան
և պատմել ոչ զժամանակաց միայն գործեալն, այլ և
զբազում ինչ զոր ետես 'ի չափ կանոնին իւրոյ, և զմր-
տածութիւնս որ 'ի նմա՝ արտաքս ածել առ 'ի հանգչել
սահմանաւ ապաշխարութեան փորձելոցն և լողայն։

Եղբայր՝ ոմն եհարց ցծերն. զինչ արարից, զի հա-
նապազ սիրտ իմ մարտնչի 'ի պոռնկութիւն, և ոչ թո-
ղու զիս հանգչել մի պահ, և տրտմի անձն իմ։ Ասէ.
յորժամ դևք սերմանեն զմտածութիւնս, մի խօսիր ընդ
նոսա. քանզի նոքա յամենայնի սերմանեն զչարութիւն
առանց հեղգութեան, բայց 'ի մէնջ է ընդունելն և ոչն։
Տես թէ որպէս արարին մադիանացիքն. զարդարեցին
զդստերս իւրեանց և կացուցին՝ յումեքէ ոչ բռնադա-
տեալք, և ապա տրտնջէին ընդ անչափ սպանութիւն որ
լինէր. զնոյն և մտածութիւնքն։ Ասէ եղբայրն ցծերն.
զինչ արարից, զի տկար եմ և վերն յաղթէ։ Եւ նա
ասէ. հեռացո զնոսա, և յորժամ սկիզբն առնեն՝ մի
տար պատասխանի, այլ արի աղօթեա, և եդեալ ծունր
ասա. որդի ա՟յ, ողորմեա ինձ։ Ասէ ցնա եղբայրն. ահա
խոկամ, հայր, և ոչ զարթնու միտք իմ, զի ոչ գիտեմ
զզօրութիւն բանիցդ։ Եւ նա ասէ. առ քեզ միայն զխո-
կալն. լուեալ եմ զի ասաց աբբայն Պիմէն և բազումք
'ի հարցն զբանս զայս. թէպէտ և ոչ գիտէ ոք 'ի սաղ-

¹ Եղբայր ոմն եհարց զմի 'ի ծերոցն և ասէ ցնա. զինչ արարից.
հայր, զի խորհուրդք իմ միշտ զպոռնկութեան խոկան և ոչ տան թոյլ ինձ
հանգչել և ոչ ժամ մի, և սակս սորա տրտում է անձն իմ խիստ։ Ասէ
ցնա ծերն. դևք մինչ սերմանեն զայն խորհուրդ 'ի սիրտ քո, դու մի
խօսեսցիս ընդ նոսա, զի զմտաւ ածէ քեզ միշտ զայն և ոչ հեղգայ եր-
բեք. այլ և կրել զա՟ն 'ի կամս քո է, և զի նոս բռնադատել ոչ կարէ։ Գի-
տես զինչ արարին մադիանացիքն. զարդարեալ զդստերս իւրեանց դա-
քեցին 'ի բանակն. բայց ոչ ումեք բռնացան նոքա, այլ որք կամեցան պոռ-
նկեցան ընդ նոսա. իսկ այլք ոչ միայն ոչ անկան, այլ և բարկացան 'ի
վերայ նոցա և սրով սատակեցին զնոսա. այսու օրինակաւ լինին և 'ի չար
խորհուրդս։ Ասէ եղբայրն. և զինչ արարից, հայր, զի անկար եմ և
յաղթէ զիս սաստն այն։ Ասէ ծերն. զգոյշ լեր նմա, և յորժամ սկսա-
նին խօսել ընդ քեզ՝ դու մի տայցես պատասխանի, այլ յարուցեալ
կրկնեա ծունր աղօթեա և ասա. տէր Ք՟ս, ողորմեա ինձ։ Ասէ ցնա
եղբայրն. ահա արդեօք ասեմ զաղօթսն և ոչ գոյ զեղջ 'ի սրտի ի-
մում, զի ոչ իմանամ զմիտս բանին։ Ասէ ցնա ծերն. դու սառանց
ձանձրութեան աղօթեա, որդեակ. քանզի լուայ ես 'ի հարցն Պիմէնէ

մխիթարելով զնա բանիւք. և յետքն փնացեալ ամըլութեր աննեկի տխմար ծերոյն ասաց. ած իմ Տն, առաքեա զփորձութիւն տրտմեալ եղբօրն 'ի ծերս յայս, զի զոր ոչ ծանեաւ 'ի մանկութեան իւրում, ծանիցէ 'ի ծերութիւս ։ Այս առժամայն ետես հնդիկ մի ելեալ 'ի տանէ եղբօրն տխրելոյ, և եկեալ առընթեր ծերոյն ձգեաց նետ մի ուժգին և եհար 'ի սիրտ ծերոյն. և նա սկսաւ յայնմ օրէ այրիլ և ջեռնուլ և ոչ կարաց համբերել և կամ պատմել ուրուք յամօթոյն, այլ յարեաւ գնալ 'ի պոռնկութիւն ։ Այս սուրբն Պօղոսն իմացեալ՝ չոգաւ զհետ և ասէ. չար ծեր, յո՞ երթաս ։ Իսկ նա դողալով սկսաւ՝ որպէս թէ յայտնեցաւ նմա 'ի հոգւոյն, ապա ասէ ցնա. ո՞չ լուար եթէ փրկեա զորս 'ի մահ տանին, զի ասէ առակողն. և ո՞չ լուար զտեառնն՝ եթէ զեղէգն ջախջախեալ մի բեկցես ։ Այլ ընդէ՞ր ածեր 'ի յուսահատութիւն

րութեան յայս, և ներքին կաս ես յայդպիսի խորհրդոց պոռնկականաց. և դու մի կործանաներցես և մի հոգացես վասն ջերմութեան քո՝ որ է մարդկային կարգ, և առաւել կարող են շնորհքն այ օգնել ։ Այլ դու, տխրելի, զայս որ շնորհեսցես ինձ և դարձցիս 'ի սենեակն քո, և եղիցին կամք այ ։ Լուաւ եղբայրն ծերոյն և դարձաւ 'ի խուց իւր ։ Իսկ հայրն Պօղոսն գնաց առ այն ծեր՝ որ եհատ զյոյս եղբօրն, և կացեալ արտաքոյ խցի նորա աղաչեաց զտէր և ասէ. տէր Յս Քս, որ զփորձութիւն յաղագս օգտի առաքես, դարձո զպատերազմ եղբօրն այն 'ի ծերս յայս, որպէս զի գործովք ուսցի 'ի ծերութեան իւրում զոր ոչ ծանեաւ 'ի բազում աւուրս իւր, որպէս զի ցաւակից լինել կարասցէ փորձելոց և պատերազմելոցն ։ Եւ իբրև կատարեաց զաղօթս հայրն, ետես զի սեաւ ոմն եթովպացի ել 'ի խցէ եղբօրն և եկաց մերձ առ ծերն, և ձգեալ նետ 'ի ծերն խոցեաց ուժգին զսիրտ նորա և ինքն անյայտ եղև ։ Ապա յայնմ ժամէ վաղվաղակի սկսաւ ծերն իբրև զարբեալ ոք անկանել աստ անդր ։ Եւ իբրև ոչ կարող էր ժուժկալել, յարեաւ և ել 'ի սենեկէ իւրմէ և գոչէր և փրփրայր, և անկաւ յուղին որ գնայր 'ի գեօղ ուրեմն ընդ որ գնայր այն մանուկն եղբայր ։ Իսկ հայրն Պօղոսն հանդիպեցաւ նմա և ասէ. ո՞ւր հեռացեալ ես գնալ, չար ծեր, և կամ զի՞նչ է պատճառ շփոթման քո ։ Յայնժամ տխրեցաւ ծերն և երկեաւ իբրև լուաւ 'ի սուրբ հօրէն զայս, և իմացաւ զի յայտնեցաւ այն հօրն, և յամօթոյն պատասխանի ոչ ետ ։ Ասէ ցնա հայրն Պօղոսն. դարձիր, ծեր, 'ի խուց քո. և ծանիր յայսմհետէ զտկարութիւն քո և ունիցիս զքեզ անարգ իբրև զոչինչ գիտող, զի ոչ կարացեր մարտնչել ընդ դևս և դէմ կալ խորհրդոյ քո և ոչ մի ժամ աւուր՝ որ գայր 'ի վերայ եղբօրն այն ։ Այլ այս յայն սակս եղև քեզ, զի յուսահատեցեր դու զեղբայրն որ 'ի հասարակաց թշնամւոյն պատերազմէր, զոր առաւել զօրացուցանել պարտ էր քեզ. իսկ դու փոխանակ արիացուցանելոյ հատեր զյոյս նորա ։ Եւ ոչ լուար զխրատս իմաստնոյն զոր ասէր՝ եթէ փրկեա զորս գնան 'ի մահ, և օգնեա վհատելոյն. և ոչ զձայն տեառն լուար որ ասէ՝ զեղէգն ջախջախեալ մի

զկրեալն 'ի հասարակաց բնութեց կրից․ դարձիր 'ի խուցն քո, և արասցուք աղօթս և ողջասցի խոց սրտի քո ։ Եւ եղև այնպէս, և առաջինն ևս ողջացաւ ։ Եւ ահա անգիտի ոչ է պարտ տանել զփորձանս, թէպէտ և ծեր իցէ ։

Այր' մի ծեր 'ի խորձիթան, և ասեն ցնա խորհուրդք իւր․ երթ առ քեզ կին ։ Եւ յարուցեալ առ կաւ և ըստեղծ կին և եդ զնա 'ի խցին, և խօսէր ընդ անձին իւրում և ասէր․ ահա կին քո, պէտք են արդ գործել շատ, զի կերակրեսցես զկինդ ։ Եւ գործէր և աշխատէր զինքն շատ ։ Եւ զկնի սակաւ աւուրց արար դարձեալ կաւ և ստեղծ իւր դուստր և ասէ ցխորհուրդսն իւր․ ահա ծնաւ կին քո, պէտք են արդ յոլովագոյն գործել, զի կարասցես զարմանել զդուստր քո և զգեցուցանել ։ Եւ այսպէս արարեալ, յաշխատութենէն հալեաց զանձմին իւր, և ասէ 'ի խորհուրդս իւր․ ոչ ևս համբերեմ տանել աշխատութեանս ։ Ասէր և նա ցխորհուրդս իւր․ արդ եթէ ոչ համբերես, և կին մի խնդրեր ։ Եւ տեսեալ ա̃յ զաշխատութիւն նորա՝ առ 'ի նմանէ զխորհուրդն զայն, և ապա հանգեաւ նա գոհանալով զա̃յ* ։

բեկցես, և զպատրոյկն առկայծեալ ոչ շիջուցես ։ Զի ոչ ոք կարող է համբերել պատերազմաց թշնամւոյն և եռման հրոյ բնութեն, եթէ ոչ շնորհքն այ̃ պահեն զմեզ ։ Եւ արդ եկ զի աղաչեսցուք զՏէր, որպէս զի զխոց սրտի քո բարձցէ 'ի քէն․ զի նա է որ հարկանէ և բժշկէ, խոնարհեցուցանէ և բարձրացուցանէ, իջուցանէ 'ի դժոխս և հանէ 'ի նմանէ ։ Զայս իբրև ասաց, աղօթեաց և վաղվաղակի ազատեցաւ ծերն 'ի պատերազմէն որ դիպեցաւ նմա ։ Եւ հայրն Ապողոն պատուիրեաց նմա խնդրել յայ̃ բան իմաստութեան, զի գիտասցէ զինչ ասիցէ, և ծանիցէ զժամ լալոյ․ Նոյնպէս և եղբայրն ազատեցաւ 'ի խորհրդոց իւրոց չարաց ։ Այսպէս 'ի ձեռն սուրբ և ճարտար բժշկին առողջացան երկոքին կողմանք, և անգէտն ևս որ կորուսիչ էր եղբօրն յուսահատութեամբ՝ 'ի գիտութիւն եկն ։

։ Հայրն Ողոմպի 'ի սեննեակին պատերազմեալ եղև 'ի պոռնկութէ, և ասեն ցնա խորհուրդք իւր․ ոչ կարես կեալ, գնասցես կին արասցես ։ Եւ յարուցեալ արար կաւ և 'ի կաւոյ անտի կին, և եդ առ գըրանն և ասէ ցինքն․ ահա դու և կին քո, և պարտ է քեզ առաւել աշխատել զի կերիցէ կին քո ։ Եւ աշխատէր 'ի գործ առաւել քան զկար իւր ։ Եւ զկնի աւուրց ինչ արար 'ի կաւոյն դուստր, և եդ մերձ կնոջն և ասէ ցմիտսն․ ծնաւ կին քո դուստր, աշխատեսցես բազմապատիկ զի սնուցանել կարասցես զնոսա ։ Եւ այսու օրինակաւ աշխատեցաւ և ցամաքեցոյց զմարմին իւր ։ Ասէ ցնա խորհուրդն իւր․ այլ ոչ կարես գործել ։ Եւ նա ասէ․ եթէ ոչ կարես գործել, ապա և մի կին խնդրեսցես ։ Եւ նայեցաւ տէր 'ի գործս նորա և եբարձ զպատերազմն զայն ։

* Օրինակ մի հին Թարգմանութեանն Ողոմպի պատերազմեալ 'ի պառն-
Պեղեգիոս համառօտէ այսպէս․ Հայրն կուլթէ գիւղին, ասէր խորհուրդն

Ասէր՝ ոմն 'ի ծերոցն վասն խորհրդոց ցանկութեանց՝ որ լինի 'ի սրտին և ոչ կատարի. զոր օրինակ տեսանիցէ ոք այգի և ցանկանայցէ բոլորով սրտիւ իւրով ճաշակել 'ի խաղողոյն, և կասկածէ մտանել և պղծանալ, մի գուցէ կալցեն և սպանցեն զնա. ապա եթէ արտաքոյ այգւոյն կալցեն, ոչ մեռանի, վասն զի ոչ եմուտ և կերաւ՝ այլ միայն ցանկացաւ, գան լոկ հարկանեն զնա, այլ ոչ սպանանեն զնա*:

Մովսէս էր ոմն հնդիկ մեծատուն յոյժ, ցանկացաւ միայնակեցութեան. և զամենայն ինչս իւր ետ 'ի վանորայս, և ինքն չոգաւ առ Մակար և առ Իսիդորոս: Եւ յետ երից ամաց սկսան նեղել զնա խորհուրդք պոռնկութեան, և եկեալ առ երանելին Մակար ասաց նմա զիրսն: Իսկ նա ասէ ցնա. ո՞չ գիտես եթէ ամենայն ծառ որ արմատքն դալար են՝ պտուղն ոչ չորանայ. և շուն որ 'ի խոհակերանոցն սովորի, առանց գանի ոչ մեկնի. աղէ արկ դու 'ի քեզ պահս և աղօթս, և տեսանես թէ զինչ լինիցի: Եւ եմուտ Մովսէս 'ի պահս, որպէս զի ոչ ոք այնպէս պահեալ էր յառաջ քան զնա և ոչ յետոյ պահեսցէ: Ասէ Մակար. Մովսէս եղբայր, չափ է ամենայն իրաց, կեր սակաւ մի կերակուր: Զի եօթն կարիզ թրջէր արմաւս և զայն ուտէր ամենայն աւուր: Եւ շինեաց Մովսէս վանս մի 'ի լերինն, որ է 'ի մէջ ընդ Եգիպտոս և ընդ հնդիկս. և ժողովեաց 'ի վանս իւր հարիւր և եօթանասուն անձն: Էր անդ և Պաւղոս միայնակեաց 'ի Սկիւթայ, այր ճգնաւոր. ոչ առնէր ինչ գործս, և ոչ խնդրէր ինչ յումեքէ, այլ օր զաւուրն

¹ Ասաց հայրն Պիմէն յաղագս չար խորհրդոցն՝ որ կան 'ի մտի մերում և ոչ կատարեն զնա գործովք՝ զառակս զայս. զոր օրինակ եթէ տեսանէ ոք այգի պտղալից և ցանկայ ուտել 'ի խաղողէ նորա, այլ երկնչի մտանել և գողանալ զի մի մեռցի, այսպէս և այս գործ է. քանզի եթէ արտաքոյ ցանկոյ այգւոյն գտցի, ոչ մեռցի վասն ցանկանալոյ ուտելոյն զի ոչ եհաս և ոչ գողացաւ, այլ ձաղի միայն սակս մտածելոյն գողանալ. վասն ձաղանացն այն պարտիմք հեռանալ 'ի խորհրդոյ ցանկութեանց:

* Օրինակ մի հին Եւրփմնաւոբինեան այսպէս ունի. Հայրն Պիմէն ասէր յաղագս այսորիկ՝ եթէ որպէս գող գտանեալ 'ի յայգւոջն պատժի խաղողոյն, իսկ արտաքոյ որմոյն կացեալ գիտելով 'ի ներքս և ցանկալով ոչ պատժի՝ այլ նախատանս միայն բանիւ, նոյնպէս է անկեալն գործով 'ի մեղս, և որ միայն ցանկացաւ և ոչ կատարեցաւ արդեամբք:

հացն ձեռօքն գործէր. և կարգեալ էր աւուրն հինգ հարիւր աղօթս զոր համարեալ և թուեալ էր։ Եւ յաւուր միում չոգաւ առ Մակար և ասէ. հայր, նեղէ զիս խորհուրդ իմ. զի է կուսան մի ՚ի գեօղ մի, և քառասուն ամ է զի յարգելանի կայ, և բազումք պատմեցին ինձ վասն նորա՝ թէ զամենայն աւուրս կենաց իւրոց զշաբաթ հանէ, և յաւուրն մետասան հարիւր աղօթս առնէ, և ցանկամ թէ և ես այնպէս առնէի, այլ չէ կարգ ՚ի կնոջէ ուսանել ինչ։ Եւ պատասխանի տուեալ Մակար և ասէ. Պաւղոս եղբայր, վաթսուն ամ է իմ զի կարգեալ է իմ հարիւր աղօթս աւուրն, և զաւուրն կերակուր ձեռօք իմովք գործեմ և եղբարց սպասաւորեմ, և զիս դատեն խորհուրդք իմ. և դու ասես թէ հինգհարիւր, և այդ զինչ է։ Եւ օգտեցաւ նա յոյժ։

ԱՐՈՆԻՈՍ պատմեաց մեզ և ասէ. ՚ի վարդապետէն իմմէ փախեայ և չոգայ հասի ուր նստէր Մակարիս և Մանգիս աշակերտն Անտոնի սրբոյ. պատահեաց անդ և Եւագր մենակեաց. եկն անդ և Պաքոմն անուն ոմն, զի անդէն ՚ի լերինն նստէր նա. էին ամք կենաց նորա եօթանասուն ամ։ Եւ եկն այլ ծեր մի, անկաւ առ ոտս ծերոցն և ասէ. դև դառնութեան հարաւ յիս և տոփէ զիս ցանկութիւն կանանց, զտիւ և զգիշեր այսպէս նեղէ զիս մինչև ՚ի մահ։ Եւ ասեն ցնա հարքն. աղէ արկ դու ՚ի քեզ պահս և աղօթս, և տես փորձեա զկարգ առնի։ Պատասխանի ետ Պաքմէոս մենակեաց և ասէ. հաւատամ քեզ այդմ իրաց, զի երբեմն և ես այդպէս եղեայ. և արդ ոչ եթէ յայլ ումեքէ է, այլ ՚ի ծուլութենէ։ Ահա տեսանես զիս ծերացեալ. քառասուն ամ է իմ զի է իմ ծերացեալ ՚ի խրճիթս յայսմիկ, և զայս միայն հոգամ վասն փրկութե̃ անձին իմոյ, մինչև ցայժմ փորձիչն ոչ հեռացաւ յինէն. զերկոտասան ամ ոչ զտիւ և ոչ զգիշեր ոչ ետուն ինձ դադար խորհուրդքս. և այսպէս կարծէի՝ եթէ ուրեմն ա̃ծ եթող զիս ՚ի ձեռանէ. այսպէս եդի ՚ի մտի իմում, եթէ լաւ է ինձ մեռանել քան զկամս մարմնոյ առնել։ Եւ ելի ՚ի խրճթէն իմմէ և չոգայ յանապատ և գտի անդ քարայր մի և տեսի անդ ՚ի ներքս ընձու կորիւնս երկուս և անկայ առ դուրս նոցա մերկ և ասացի՝ եթէ յորժամ ելանեն թերևս ուտիցեն զիս։ Եւ իբրև եղև երեկոյ, որպէս և գրեալ է՝

թէ արեգակն ծանեաւ զնա իւր. կորիւնք առիւծուց մռնչէին և խնդրէին զկերակուր. 'ի ծագելն արեւու ժողովին։ Եւ այլ ինձք արտաքուստ եկին ժողովեցան 'ի դուռն, և 'ի ներքուստ եկին արտաքս, և կային կէսն աստի և կէսն անտի և ես 'ի մէջ, և սկսան հատանել յիս յատից մինչև ցգլուխ, և կէսքն սկսան լեզուլ. մինչդեռ ակն ունէի թէ կերիցեն զիս, թողին և գնացին յենէն, և կայի այնպէս մերկ զերիս աւուրս և զերիս գիշերս և ոչ մերձեցան յիս, և այսպէս կարծեցի եթէ ա̃ծ առահեաց զիս. յայնժամ յարեայ և դարձայ անդրէն 'ի խուցն իմ և դադարեցին յինէն խորհուրդքն։ Եւ դարձեալ այլ խորհուրդք յուզեցան 'ի վերայ իմ առնել քան զառաջինսն. փոքր միւս ես և հայհոյել տային ինձ զաստուածութիւնն։ Եւ եղև դևն 'ի կերպարանս աղջկան միոյ՝ որ երբեմն 'ի մանկութե̃ տեսեալ էր իմ, և եկն նստաւ առ իս, և այսպէս թուէր ինձ եթէ ազգական իմ իցէ. և ես իբրև տեսի զնա զի նստէր առ իս, ածի նմա ապտակ մի, և նա չիք եղև առաջի իմ։ Եւ դարձեալ առ 'ի յուզել խորհրդոցն ելի ընդ անապատն, շրջեցայ և գտի իժակորիւն մի և առի արկի 'ի ծոց իմ և ասացի՝ թերևս սա հարկանիցէ զիս և մեռայց. և այսպէս լեսի զգլուխ նորա, մինչև եղև իբրև զպտուղ և ինձ ոչ կամեցաւ մեղանչել։ Եւ յետ այսորիկ լուայ ձայն որ ասէր ցիս. երթ այսուհետև դադարեա և այլ մի ևս հպարտացիր և յանձնապաստան լինիցիս և մի յուսացիս 'ի զօրութի̃ անձին քո, այլ յա̃յ օգնականութի̃ն։ Եւ դարձեալ դարձայ անդրէն 'ի խրճիթն իմ, և այնպէս քաջալերեցայ և նստայ 'ի խրճիթին իմում, և այլ ոչ ևս մերձեցաւ յիս մոլորումն կենաց։

ԵՂԻԱՍ ոմն մենակեաց յոյժ ցանկացեալ էր կուսութեան և ասէր. լաւ է մի յանդամոց իմոց կորուսանել քան զկուսութի̃ս իմ։ Սա շինեաց երկուս վանս, մի 'ի քաղաքի և մի յանապատի, և ժողովեաց յանապատին եղբարս. և 'ի քաղաքին կուսանս, և կարգէր զամենայն պէտս նոցա և պարտէզս և ջրհորս։ Եւ սատանայ խառվեցոյց զեղբարսն և կազէին ընդ միմեանս, զի էին աւելի իբրև հինգ հարիւր և կուսանքն եօթանասուն։ Սա ձանձրացաւ համապազօր համոզել նոցա. ել գնաց 'ի վանացն և մոլորեալ շրջէր երկուս աւուրս յանապատի,

և զայս խնդրէր և ասէր. տէր, կամ սպան զիս, զի մի՛ տեսից զնոսա նեղեալս, կամ տուր ինձ ցաւս, զի զիմով հոգովք եղէց: Եւ իբրև եղև երեկոյ, ննջեաց սակաւ մի, և եկին երեք հրեշտակք, որպէս և ինքն պատմէ մեզ, և կալան և ասեն ցնա. ընդէ՞ր ելեր 'ի կանանց վանացն: Եւ պատմեաց նոցա որպէս էին իրքն և ասէ. երկեայ գուցէ մեղանչեմ նոցա: Եւ ասեն ցնա հրեշտակքն. եթէ այժմ համանեն քեզ ցաւք ինչ՝ երթա՞ս եթէ ոչ: Եւ նա ոչ ինչ տայր պատասխանի: Եւ ասեն ցնա դարձեալ. երդուիր մեզ և ասա՝ թէ որ հոգայն ինձ՝ հոգացայց և ես նոցա: Եւ յայսմ երդուաւ նոցա: Զայնև ժամ կալան զնա հրեշտակքն ոմն զոտիցն ոմն զձեռացն և երրորդն դանակաւ եհար զերկուորիս նորա, և այս եղև առաջօք և ոչ ճշմարիտ. և բժշկեցին զնա հրեշտակք և ասեն ցնա. սիրեցեր զկուսութիւն և մնացէ ընդ քեզ: Եւ առաքեցին զնա 'ի վանս իւր յետ հինգ աւուր և ուրախ եղեն, և այլ ոչ եղև 'ի սիրտ նորա ցանկութի:

ԻՍԻԴՈՐՈՍ[1] ասէր՝ քառասներորդ ամ ունել յորմէհետէ զգալ ըստ մտածութեան մեղաց ոչ երբէք զհետ երթեալ ոչ զցանկութէ, ոչ զսրտմտութեան:

ՊԱՐՏԵՏԱՒ[2] ոմն եղբայր 'ի միաբանակեցաց վասն պոռնկութէ և յարուցեալ եկն առ Անտոն: Եւ եկին եղբարք 'ի միաբանակեցացն, զի հանձեսցեն զմիտս նորա և ածցեն անդրէն. սկսան յանդիմանել զնա և ասեն՝ թէ արարեր զայդ: Եւ նա պատասխանի տայր և ասէր՝ թէ ոչ գիտեմ զիրսդ զայդ: Դէպ եղև զի անդ էր հայրն Պափնուտիոս, և ասաց առակ այսպիսի ինչ. տեսի այր մի զի անկեալ էր յեզր գետոյն 'ի տիղմ մինչև 'ի ծունկս իւր, և եկեալ ոմանց ձեռն տալ նմա՝ ընկղմեցին զնա

1 Ասէր հայրն Իսիդորէ՝ եթէ ունիմ արդ քառասուն ամ յորմէ զգամ ես զմեղաց միտս, և ոչ երբէք զիջայ ընդ նմա ոչ 'ի ցանկութի և ոչ 'ի սրտմտութիւն:

2 Զեղբօրէ ումեմնէ սուտ վկայեցին՝ թէ շնութիւն է գործեալ, որ էր 'ի ժողովս եղբարցն: Սա յարուցեալ գնաց առ հայրն Անտոնիոս. իսկ եկին և եղբարքն վանիցն այնորիկ անդ, զի բժշկեսցեն զնա և տարցեն 'ի տուն իւր. և սկսան յանդիմանել զնա և ասել՝ եթէ զայդ այսպէս արարեր: Իսկ նա գիտացուցանէր՝ եթէ ոչ արարեալ է իմ զայդ: Գտաւ անդ և հայրն Պափնուտիոս, որ կոչէր Կեփալաս, և ասէ ցնոսա. տեսի ես զայր ոմն թաղեալ մինչև ցծունկսն 'ի տղմոյ մուրաւոյ յեզր գետոյն. և եկին ոմանք տալ նմա ձեռն 'ի հանել զնա, և շարժեալ

մինչեւ 'ի պարանոցն : Եւ ասէ հայրն Անտոն վասն հօրն Պափնուտիոսի․ ահա արդարեւ այր Ա̃յ, որ կարող է ապաքինեցուցանել եւ առողջացուցանել զհոգիս : Եւ զղջացեալք վասն բանից ծերոյն, անկեալք առաջի եղբօրն եւ մխիթարեալք 'ի ծերոյն՝ տարան զեղբայրն 'ի միաբանակեացն :

ՊԱՏԵՐԱԶՄԵՑԱՒ ոմն 'ի հարանցն 'ի պոռնկութենէ, եւ եդեալ զշուրս խցին եւ յանապատ եւ եղեւ անդ քառասուն եւ մի օր շրջելով յանապատին՝ ոչ ինչ ճաշակելով, այլ պատերազմէր եւ նահատակէր զի մի տացի տեղի խորհրդոց : Յետ այսորիկ աղօթս արարեալ առ Ա̃ծ ասէ․ տէր, օգնեա ինձ զի ոչ եւս համբերեմ, ողորմեա ինձ եւ թեթեւացո զպատերազմս յինէն : Եւ գտեալ այր մի, մտեալ անդ եւ ասէ․ լաւ է ինձ մեռանել այսր եւ ոչ մեղանչել : Եւ առժամայն թեթեւացաւ պատերազմն եւ ոչ եւս տագնապէր :

ՊԱՏԵՐԱԶՄԵՑԱՒ՝ եղբայր ոմն 'ի պոռնկութենէ, եւ էր պատերազմ նորա իբրեւ զհուր վառեալ, եւ այրէր զսիրտ նորա 'ի գիշերի եւ 'ի տուընջեան․ եւ այլ եղբայր ոմն աղաչէր զնա զի մի ելանիցէ 'ի խրձթէն, եւ կամօքն Ա̃յ փախեաւ 'ի նմանէ պատերազմն, եւ լուսաւորեցաւ սիրտ նորա զի համբերեաց պատերազմին :

ԱՅԼ.[2] ոմն եղբայր պատերազմեցաւ 'ի պոռնկութենէ դիւին, եւ յարուցեալ 'ի գիշերին գնաց առ ծերն սուրբ եւ ասաց նմա․ եւ մխիթարեաց զնա ծերն եւ դարձոյց անդրէն 'ի խուցն իւր, եւ ասէ ցնա ծերն․ մի տար տեղի,

թաղեցին զնա մինչեւ՝ ցպարանոց նորա : Եւ իբրեւ լուաւ զայս Անտոնիոս, ասէ վասն հօրն Պափնուտի․ ահա այր արդարախօս եւ ճշմարիտ, որ կարող է ուղղել եւ կեցուցանել զանձն : Եւ պատկառեալ 'ի վերայ բանից ծերոյն եղբարքն, ծունր եդեալ առաջի եղբօրն մխիթարեցին զնա եւ տարան 'ի վանս իւր :

[1] Եղբայր ոմն պատերազմէր 'ի պոռնկութենէ, եւ էր վառեալ 'ի սիրտ նորա ախտն այն 'ի տուէ եւ 'ի գիշերի․ իսկ եղբայրն ճգնէր զի մի 'ի վայր անկցի ընդ խորհրդոցն : Եւ զկնի բազում ամաց փախեաւ 'ի նմանէ խիստ պատերազմն, քանզի համբերութեամբն իւրով եւ շնորհօքն Ք̃ի լուսաւորեցան սիրտք եւ միտք նորա, եւ եգիտ հանգիստ :

[2] Այլ ոմն եղբայր պատերազմեալ եղեւ 'ի պոռնկութենէ, եւ գնաց առ ծերն 'ի գիշերի եւ պատմեաց նմա զխորհուրդ իւր․ իսկ ծերն արիացոյց եւ մխիթարեաց զնա, եւ շահեցաւ եղբայրն 'ի նմանէ եւ գնաց 'ի սենեակ իւր : Եւ ահա դարձեալ եկին առ նա պատերազմն այն, եւ դարձեալ գնաց առ ծերն, եւ նա արար նմա այնպէս զկարգն : Այս եղեւ բազում անգամ, այլ ծերն ոչ երբէք տրտմեցոյց զնա, այլ ա-

այլ փութապէս յանդիմանեա զդևն. և եթէ նենգիս՝ եկ առ իս և մի՛ ամաչեր. զի եթէ յայտնես՝ յամօթ լինի չարն, և թէ թաքուցանես՝ ուրախ առնես զդևսն։ Այլ դադարեաց պատերազմն եղբօրն աղօթիւք ծերոյն։

Այլ՝ ոմն եղբայր յոյժ ժուժկալ բնակեալ յԵնատէոն Աղեքսանդրեայ անկեալ 'ի մեծ մեղս, և 'ի տրտմութէ անտի ածին զնա դևքն 'ի վհատութիւն։ Իսկ նորա տեսեալ զինքն 'ի տրտմութէ պատրեալ, իբրև զփորձ բըժիշկ ետ անձին իւրոյ յոյս բարի և ասէ. Հաւատամ 'ի գթութիւնն Այ որ առնէ ինձ ողորմութիւն։ Իսկ յորժամ զայս ասէրն, ասէին ցնա դևքն. և ուստի՞ յայտ է եթէ առնէ ողորմութիւն։ Այլ նա ասէ ցնոսա. և դուք ո՞վ էք, եթէ առնէ և եթէ ոչ առնէ, միանգամայն դուք որդիք գեհեննին էք և կորստեան. իսկ եթէ Ած բարի է, դուք զի՞նչ գործ ունիք։ Այլ այսպէս յամօթ եղեալ դևքն գնացին։ Յայլում ժամու երևեցաւ բանսարկուն և ասէ ցնա. ասեմ քեզ, ծեր դու, ոչ ես դու քրիստոնեայ։ Ասէ ցնա ծերն. որ ինչ և եմ՝ քան զքեզ լաւագոյն եմ։ Ասէ ցնա սատանայ. ասեմ քեզ՝ եթէ 'ի դատաստան երթաս։ Ասէ ցնա ծերն. ոչ ես դու դատաւոր իմ և ոչ Ած իմ։

րուցանէր զնա և խրատէր և ասէր՝ եթէ որքան պատերազմի ընդ քեզ թշնամին, եկ առ իս և հրապարակեա զնա, և ինքն փախչի 'ի քէն շնորհօքն Քի. քանզի ոչ ինչ այնպէս յաղթէ նմա որպէս յայտնելն զգործս նորա, և գարշեալ ոչ ինչ այնպէս զօրացուցանէ զնա իբրև զծածկելն. և զի 'ի ձեռն խոստովանութե և խրատու ծերոյն բժշկեցաւ եղբայրն հանգերձ խոնարհութեամբ։

։ Այլ ոմն ճգնաւոր ծեր բնակէր յԱղեքսանդրիա 'ի վանս իննուցն կոչեցելոց։ Սա անկաւ 'ի մեղս ահագին յոյժ, և անկան 'ի վերայ նորա դևք յուսահատութե. իսկ նա իբրև ետես զանձն իւր յաղթեալ 'ի տրտմութէն, իբրև զբժիշկ հմուտ ինքն իւր ետ յոյս բարւոյ և ասէր. յուսամ յանհասանելի ողորմութիւն Այ, զի արասցէ ողորմութիւն 'ի վերայ իմ։ Եւ մինչ նա զայս ասէր, ասէին դևքն. այո առնէ քեզ թողութե։ Իսկ նա ասէ ցնոսա. և ո՞ իցէք դուք, եթէ արասցէ և եթէ ոչ արասցէ՝ դուք միանգամ որդիք խաւարի և կորստեան եղեալ էք, ձեզ զի՞նչ փոյթ իցէ. Ած ողորմած է և երկայնամիտ, իսկ եթէ գթայ յիս և թէ ոչ գթայ՝ ձեզ ոչ օգնէ։ Եւ այնպէս յաղթեալ յուսահատութե կործանեաց զնա։ Դարձեալ երևեցաւ նմա դևն և ասէ ցնա. ով ծեր, գիտես դու մեղաւոր և չար ես ես։ Ասէ ցնա ծերն. զինչ և իցեմ, քան զքեզ լաւագոյն իցեմ։ Ասէ ցնա դևն՝ ասեմ քեզ ծեր, զի 'ի տանջանս գնալոց ես դու։ Ասէ ցնա ծերն. ոչ ես դու դատաւոր իմ և ոչ Ած, այլ դատապարտեալ յԱյ և կործանեալ և փախստական 'ի նմանէ. քեզ չէր փոյթ այդպիսի բան, թէ զգուշացեալ էիր զամենաթշուառ կորուսանդ քո։ Իբրև լուաւ զայս դևն խորդախութե, փախըստական եղեալ գնաց 'ի նմանէ։

զաւուրս կենդանութեան նորա։ Եւ մարդիկն ասէին. ա-հաւասիկ հատոյց Աստուած կնոջն՝ որ զի սուտ խօսեցաւ, քան-զի վասն պոռնկելոյ մեռանէ չարածերն և ոչ վասն այ-լոց իմիք։

Նոյն և որքոյն Վիտաղիոսի կամեցեալ 'ի մարդկայինն փառաց խորշել և զհոգին 'ի խաւարէ անտի փրկել, ա-սէր 'ի լսելիս ամենեցուն յորժամ գործէր զմշակութիւն և արձակիւր 'ի վարձուն իւրոյ. գնա, ասէր Վիտաղիոս, 'ի գործն քո, զի այժմ տիկնայքն կան և մնան քեզ։ Եւ բազմաց պարսաւելով զնա, և կատակելով ասէր նոցա. զի՞ է, ես ո՞չ ունիմ մարմին որպէս ամենեքեան, և կամ միայն միայնակեցա՞ց բարկացաւ Աստուած՝ որ զի մե-ռանիցին 'ի բռնութենէ անտի. արդարեւ նոքա մարմին են որպէս ամենեքեան։ Իսկ ասէին ցնա ոմանք. արա դու քեզ մի կին և փոխեա զզգեստ քո, զի լաւ է քեզ, զի մի հայհոյեսցի Աստուած քեւ, և ունիս դատապարտանս գայ-թակղեցոյն 'ի քեզ։ Դարձեալ ասէր նոցա երդմամբ և ցուցանէր զինքն խռովեալ և ասէր. կենդանի է տէր, ոչ լռեմ ձեզ, 'ի բաց թափերուք յինէն, այժմ ոչ ինչ գործեմ. բայց երթամ առնեմ կին և հոգամ տուն և առնեմ չա՞ր աւուրս. մի տացէ Աստուած. որ կամի գայթակ-ղել գայթակղեսցէ և զերեսն քարի տացէ։ Զի՞նչ կամիք յինէն, մի թէ դատաւո՞ր էք իմ. երթայք ան-ձանց հոգ տարայք. դուք ընդ իմ ոչ տայք պատասխա-նի, մի է դատաւոր և մի օր դատաստանի. եթէ ոչ կա-մէր Աստուած, ես յԱղեքսանդրիա ոչ գայի։ Իսկ զայսոսիկ ա-սէր աղմկելով և սաստելով, որպէս զի այնուհետև ա-մենեցուն խորշել և պատկառել 'ի նմանէն։ Իսկ դար-ձեալ ասէր. արդարեւ եթէ ոչ թափիք, չարով թափիք։

Իսկ ոմանք զայսոսիկ լուեալ 'ի նմանէ 'ի քորեպիս-կոպոսացն ծանուցին սրբասէր հայրապետին Յոհաննու վասն նորա։ Եւ Աստուած որ ոչն կամէր զարդարոյն զխոտո-րումն, խստացոյց զսիրտ նորա և ոչ հաւատաց ումեք, այլ արտաքսեաց և սաստեաց որոց չարախօս եղեն զաբ-բայ Վիտաղեայ։ Իսկ ասէ ցնոսա. դադարեցէք 'ի զըր-պարտելոյ զմիայնակեացս. եթէ չէ՞ք լուեալ զշարագիր մեծին Կոստանդիանոսի, որ վասն նորա գրեալն է՝ որ ա-սէ. ոմանք աներկիւղածք յայդ յետ կատարելոյ սուրբ ժողովոյն սկսան վասն միմեանց գիր չարախօսութեան տալ

ցաւուրքն Կոստանդիանոս, և ոմանք 'ի նոցանէ եպիսկո-
պոսք էին և ոմանք միայնակեացք: Իսկ նորա երես' առ
երես կացուցեալ, այսինքն զչարախօսն և զչարախօ-
սեալսն, տայր ասել չարախօսին զմեղսն յերեսս մեղա-
ցելոյն' եթէ շնութի էր և եթէ մոհապաշտութի, որ
ինչ և էր: Եւ իբրև ստուգութիւն էր ինչ որ գտանէր,
յիշելով զբանն առաքելոյն որ և ասէր' ո՞ տկարանայ և ես
ոչ տաուելում; և դարձեալ տեառն ոչ դատապարտե-
լով զշնացեալ կինն, այլ ասացեալ ցնա' ոչ ես դատա-
պարտեմ զքեզ, նորին նմանող եղեալ և նորա' հրաման-
եաց բերել մամեղէնս լուցեալս, առաջի նոցա այրեաց ըղ-
տուեալս իւր չարախօսութեան քարտէսս ասելով. եթէ
աչօք իմովք տեսանէի զքահանայս այ կամ որ զհրեշ-
տակային ձևն զգեցեալ են, քղամիդաւս ծածկէի, որ-
պէս զի մի յումեքէ տեսանիցեն: Քանզի և այնպէս ա-
րարէք 'ի ծառայն այ նեղքինեին յայն միայնակեացն, և
արկէք զնս 'ի հրապարակս, և արարի մեծ մեղս անձին ի-
մոյ: Եւ սաստեալ նոցա արձակեաց:

Իսկ ծառայն այ Միստաղիոս 'ի գործոյ իւրոյ ոչ դադա-
րէր. և զայս աղաչէր զած, զի մի համարեսցի մեղս որոց
գայթակղին 'ի նա. քանզի գործն զոր գործէր' գայթակ-
ղելի էր, և ոչ համարեցաւ մարդոյ մեղք որ ինչ և խօսե-
ցաւ ոք 'ի նա: Եւ զբազումս յանպարկեշտ կանանցն 'ի
զղջումն էած գործ նորա, և մնացեալ յարժամ տեսա-
նէին զձեռս իւր տարածեալ 'ի կիշերի և աղօթեալ ի-
րաքանչիւր ումեք 'ի նոցանէ: Վասն որոյ ոմանք 'ի նո-
ցանէ դադարէին 'ի պոռնկելոյ' խրատեալք 'ի նմանէն,
և ոմանք արանց լինէին և այսուհետև նստէին ազատա-
բար, և ոմանք ամենևին հրաժարէին յաշխարհէ և ըղ-
կրօնաւորութի ընտրէին. սակայն ոչ ոք գիտաց մինչև
ցվախճան նորա' թէ նորա վարդապետութբն և գործովն
անարգ կանայք 'ի մեղաց դադարէին:

Եւ 'ի միում աւուր յեղանել նորա յաւուրէ այնպիսի
կանանցն' առաւօտին պատահեաց նմա մարդ մի պիղծ,
որ կամէր մտանել առ աւուրն պոռնկել ընդ նմա: Իբրև
ետես զոէր Միստաղիոս, որ եղանէր 'ի նմանէ, ած նմա
ապտակ և ասէ. դառնածեր կատակող Քի, մինչև
յե՞րբ ոչ 'ի բաց կաս 'ի յանձիր գործոց քոց: Եւ նա ա-
սէ. համաստ իմն, տառապեալ, թէպէտ և յամեա-

գոյն, առնուլ ունիս օրինակ, որպէս զի ամենայն Աղեքսանդրիա ժողովեսցին 'ի յօրինակս քո։ Եւ յետ սակաւ ժամանակի ննջեաց երանելին Միտաղիոս 'ի խցի իւրում խաղաղութեամբ, քանզի ունէր խուց փոքրիկ յարում կողմ արեգական դուան․ ուստի և բազում անգամ 'ի մատուցանելոյ պատարագի՝ որ մերձ 'ի խուց նորա էր եկեղեցի՝ ժողովէին ոմանք 'ի բազենոյն առ միմեանս և ասէին․ երթիցուք քանզի աբբայ Միտաղիոս զարմացեալ պատարագ ունի։ Եւ իբրև գային, ուրախ առնէր զնոսա և ուտէր և ըմպէր ընդ նոսա, որպէս զի բազում անգամ բազմաց սխանալ 'ի վերայ նորա և ասել՝ թէ ամենեքեան այսպէս սիրեն զսուտ աբեղայս զայս, և զիջանեն և ոչ գիտեն զծածուկ գործս նորա։ Եւ որ զի մըտանէր յիւրաքանչիւր տանս նոցա, ամենեքեան տեսանէին, բայց ոչ գիտէին թէ որպէս քաջն և պարկեշտն 'ի փրկութի նոցա ընթանայր։

Իսկ յորժամ կատարեցաւ, որպէս ասացի, 'ի խցին իւրում՝ ոչ ուրուք իմացեալ. 'ի նոյն եհաս դև մի որպէս եթովպացի չարադէմ առ մարդն այն որ տուեալ էր աբբայ Միտաղիոսի զպատարագն, և ետ նմա ապտակ և ասէ․ կալ զպատարագն զոր դարձոյց 'ի քեզ աբբայ Միտաղիոս։ Եւ անկեալ 'ի խոնարհ սկսաւ փրփրել։ Եւ ժողովեցաւ ըստ մարգարէութենն աբբայ Միտաղեայ ամենայն Աղեքսանդրիա 'ի ձայն վշտացելոյն 'ի դիւէ անտի, և մանաւանդ որ եթէ զհնչիւն լսեցին տալոյ նմա ապտակ զրեթէ ապարխուռ մեռոլ։ Իսկ յետ բազմաղակ ժամու սթափեալ վշտացելոյն՝ պատառեաց զհանդերձս իւր և մերկացոյց զլանջս իւր և ընթանայր 'ի խուց սրբոյն, աղաղակէր և ասէր․ մեղայ, ծառայ այ Միտաղիէ, ողորմեաց ինձ։ Եւ ամենեքին ընթանային որք լսէին։ Եւ իբրև հասին 'ի խուց սրբոյն, եւ դարձեալ դևն՝ ամենեցուն տեսանելով և զարկոյց զնա։ Եւ իբրև մտին 'ի խուց նորա որք հետևեալն էին, գտին զսուրբն կանգուն 'ի ծունկս յաղօթս կալով և զհոգին 'ի ձեռս այ աւանդելով, և յատակին այսպէս գրեալ էր․ աղեքսանդրացիք, մի ինչ յառաջ քան զժամանակն դատիք մինչև եկեսցէ տէր։ Այնժամայն և դևն եթող զմարդն, և ամենեցուն խոստովանեալ որ ինչ արար առ սուրբն և որ ինչ նորա ասացեալ էր նմա։ Եւ ծանուցին զայս ա-

չա, որպէս զի արկանիցէ զնա 'ի վանս ուրեք, եգիտ կինն յեկեղեցւոջ մանուկ մի ընկեցիկ, և էառ զի սնուցանէ: Իսկ ոմանք եկին յետ տարւոյ միոյ 'ի քաղաքէն 'ի կողմն յայն ուր էին աբբայն և Պորփիւրի. և տեսեալ զնա որ ունէր զմանուկն, ասեն ցնա. արդարեւ, ազնիւ աբեղայ, որդեակ ծնար. զի չև ևս էր առեալ զսուրբ սքեմն: Այլ երթեալ դարձեալ 'ի Տիւրոս համբաւեցին թէ ծնաւ յաբբայէն տփկնին Պորփիւրի, և մեր աչօք տեսաք զմանուկն և ընդ նմա զաբբայն: Իսկ յորժամ գիտաց աբբայն յայս զվախճան իւր՝ ասէ ցՍմեղեգէ, քանզի զայն անուն փոխեալ էր նորա յորժամ ետ նմա զսուրբ սքեմն. եկ երթամք 'ի Տիւրոս, քանզի ունիմ անդ սակաւ ոսկի, և կամիմ զի զաս ընդ իս: Այլ նա ասէ. որպէս հրամայես: Այլ եկին երկաքեան և մանուկն ընդ նոսա, և էր իբրև ամաց եօթանց: Այլ ել համբաւն 'ի քաղաքն՝ եթէ եկն Պորփիւրի արամբն իւրով միայնակեցան: Այլ յետ սակաւ աւուրց հիւանդացաւ միայնակեացն, և եկին 'ի քաղաքէն հիւանդատես մինչև 'ի հարիւր այր: Այլ խնդրեաց կայծակունս վառեալ, և բերին լի ամանով, և առեալ թափեաց 'ի պարեգօտս իւր և ասէ. Տէր հանդերձ՝ որ պահեաց զմարմինն անկէզ 'ի հրոյն, որպէս ոչ մերձեցան կայծակունքս այս 'ի պարեգօտս իմ, և ոչ ես մերձ կնոջ գիտեմ 'ի ծննդենէ իմմէ: Այլ զայս իբրև ասաց, հաւանեցոյց զամենեսեան, աւանդեաց զհոգին 'ի ձեռս այ խաղաղութբ: Իսկ ամենեցուն հիացեալ 'ի վերայ եղելոյ սքանչելեացն, որ զի համբաւն ոչ կիզեցան պարեգօտքն 'ի հրոյ անտի, փառաւորէին զած որ այնքան ունի ծառայս 'ի ծածուկ: Իսկ 'ի պատճառանացն Սմեղեգեայ, որ և Պորփարան անուանիւր, և այլ պառնիկք հետեւեալ նմա գնացին և յանձն առին զկրօնաւորութի և բազում ձգնեալք 'ի վանս ընդ նմա: Արդ այսուհետեւ ասեմ ձեզ, որդեակք, մի յաճախէք 'ի դատել զոք. քանզի բազում անգամ զմեղս պոռնկացելոցն գիտացաք, կամ զգողոցն կամ զերդմնազանցիցն. բայց զապաշխարութիւնն և զհառաչմունս և զարտասուսն զոր մատուցին այ 'ի ծածուկ և ընդունելի եղեն առաջի այ, զայն ոչ իմացաք:

ԾԵՐ ոմն մեծ, անուն Յոհաննէս, պատմեաց այսպիսի ինչ՝ եթէ յառաջ ժամանակաւ եկն առ իս մանուկ

այր և առէ ցիս՝ թէ վասն ո՞յ ընկալ զիս, քանզի կամիմ ապաշխարել. և զայս ասէր բազում հառաչանօք։ Իսկ ես իբրև տեսի զնա յոյժ արտասուեալ, և թախանձեալ ասեմ ցնա. ուստի եկիր յայսքան զղջումն, ասա ինձ զպատճառն, և ո՞վ ուսոյ օգնել քեզ։ Իսկ նա ասէ ցիս. արդարև, տէր իմ, յոյժ մեղաւոր եմ։ Իսկ դարձեալ ասեմ ցնա. հաւատա ինձ, որդեակ, թէ որպէս բազում և այնպէս են մեղքն, նոյնպէս բազում և այնպէս բժշկութիւնքն. այլ եթէ կամիս բժշկութեան հանդիպիլ, ասա ինձ ճշմարտութեամբ զամենայն գործս քո, և բաց նոցին պատաշաճեանց ածից և զդէպն։ Իսկ քանզի այլ օրինակաւ բժշկի պոռնիկն և այլ մահապարտն և այլ կախարդն և այլ զրպարտողն և այլ ագահն և այլ ախտականն և այլ գողն և այլ շնացողն, և զի մի զամենայն ախտս համարեցից քեզ, որպէս մարմնաւոր հիւանդութեանց՝ այնպէս գոլով նոյնպէս տեսանելիք և զօգնադեղսն, նոյնպէս և հոգևոր ախտից այլ և այլ գոլով այնպէս ունին և զբժշկութիւնն։ Իսկ նորա յոգւոց հանեալ և կոծեալ զկուրծս իւր, և ամենևին խառնեալ արտասուօք և հառաչանօք ՚ի բազում խոնարհութիւն՝ որ կայր զարտուղին՝ և ոչ զձայնն պարզաբար կարող էր թողուլ։ Իսկ իբրև տեսի զնա այնպէս յանհնարին և յանհամբեր տրտմութիւն անկեալ, և ոչ որոց հանդիպեցաւ կամ գործեաց չարեացն՝ պատմել կարաց լինել, ասեմ ցնա. լուր ինձ, որդեակ, և բանաւորեա փոքր ինչ զմիտս և ասա զիրսն, և Աստուած տացէ քեզ զօգնութիւն իւր. քանզի ոչ վասն անճառ մարդասիրութեան իւրոյ և անչափ գթութեան զամենայն կլեաց, և մաքսաւորաց զինջեալ հաղորդակից եղև, և ՚ի պոռնկէն ոչ բացատրածաւ և զաւազակին ընկալաւ և սիրելի եղև մեղաւորաց, նա ինքն, որդեակ, և զքեզ ընդունի՝ յապաշխարութիւն տուեալ զանձն և դարձ արարեալ առ նա. քանզի ոչ կամի զմահ մեղաւորի, այլ զդարձ նորա և զկենդանութիւն։

Այնժամ բանաւորեալ զինքն և փոքր ինչ արդելեալ զարտասուսն ասէ ցիս. տէր աբբայ, որ մեղօք ամենայնիւ լցեալս եմ, որ անարժանս եմ երկնի և երկրի,

1 Օրինակ մի հիւանդութեանս այնպէս տեսանելիք և զուգելիք նմա դեղս, նոյնպէս և։

յառաջ երկու աւուրբք լեցի՝ եթէ մի օր 'ի քաղաքէս անտիոքացւոց 'ի նախարարաց դուստր վախճանեցաւ կուսան և թաղեցաւ պատուական և մեծագին հանդերձիւք 'ի մի գերեզմանացն որ արտաքոյ քաղաքին էին. զոր լուեալ իմ, 'ի սովորութենէ ածիր գործոյս այսորիկ, գնացի 'ի գիշերի 'ի գերեզմանն, և մտեալ սկսայ մերկացուցանել զնա։ Իսկ իբրև մերկացուցի զամենայն որ ինչ զգեցեալն էր մինչև 'ի ներքին իսկ շապիկն որ յանդամսն զգեցեալն էր՝ թողի զնա մերկ իբրև 'ի ծնէ։ Իսկ իբրև կամեցայ ելանել 'ի գերեզմանէն, կանգնեցաւ մեռեալն առաջի իմ. և յարձակեալ ձախ ձեռամբ կալաւ զաջոյ ձեռանէս և ասէ ցիս. ո՜ մարդ դու, այսպէս պարտ էր մերկացուցանել զիս, զի՞արդ ոչ երկեար յաստուծոյ, զի՞արդ ոչ զանգիտեցեր 'ի դատաստանաց ընդհանրական հատուցմանցն, զի՞արդ ոչ որպէս 'ի մեռեալ գթարկումն անկաւ 'ի քեզ. և ոչ 'ի հասարակաց բնութենէ պատկառեցեր, այլ քրիստոնեայ գոլով այսպէս մերկ եդիր զինձ կալ առաջի Քրիստոսի, և ոչ 'ի կանանց բնութենէ ամաչեալ. ո՞չ ապաքէն նոյն բնութիւն ծնաւ ըզքեզ, ո՞չ ապաքէն զքո մայրն զնև անարգեցեր. որպիսի՞ ինչ պատասխանի, թշուառ մարդ, տացես վասն իմ առաջի սոսկալի բեմին Քրիստոսի. որ եթէ 'ի կենդանութեան իմոյ մարդ զերեսս ոչ ետես, իսկ յետ մահու և թաղման մերկացուցեր զիս և մերկ եդեր զմարմին իմ. աւաղ մարդկան, յո՞րքան տառապանս հանդիպեցաց. որո՞վ սրտիւ, ով մարդ, կամ որո՞վ ձեռօք մատուցեալ հաղորդեսցիս 'ի սուրբ և 'ի պատուական մարմնոյ և յարենէ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Իսկ իմ զայսուիկ լըւեալ զարհուրեցայ և ամենևին պապանձեցայ. իսկ յետոյ հազիւ ուրեմն ահիւ և դողութեամբ ասեմ ցնա. արձակեա զիս և ոչ ևս գործեցից զայդ։ Իսկ նա ասէ ցիս. արդարև ասեմ քեզ, որպէս կամեցար մտեր այսր, բայց որպէս կամիս՝ աստի ոչ ելանես, այլ գերեզմանս այս հասարակաց լինիցի մեզ. և մի կարծեր եթէ նոյնժամայն ունիս մեռանել, այլ յերկար աւուրս տանջեալ ըստ փոքու փոքու՝ չարով չարչարեալ՝ դառնապէս աւանդեսցես

1 Օրինակ մի զփոքու փոքու աւուրբք չարչարեալ. Երկրորդ Թարգմանութիւն ըստ փոքուն փոքուն։

զոգիդ։ Իսկ ես աղաչեցի արտասուօք արձակել զիս, բազում անգամ երդուեալ յամենակալն ած՝ եթէ ոչ ես գործեցից զամօրէն գործս զայս և զոճիր։ Յայնժամ յետ բազում աղաչանաց իմոց և արտասուաց պատասխանի ետ և ասէ ցիս. եթէ կամիցիս ապրել և փրկիլ 'ի նեղութենէս յայսմանէ, տուր ինձ բան՝ որ թէ արձակեցից զքեզ, ոչ միայն յայսպիսի պիղծ և 'ի գարշելի գործոց 'ի զատ կալ յորոց գործեաց, այլ և 'ի նոյն իսկ ժամէ երթաս և հրաժարես յաշխարհէ և լինիս միայնակեաց և ապաշխարես վասն որոց գործեցեր, և ծառայես Քի։ Իսկ ես երդուայ նմա ասելով՝ թէ աստուծով հանդերձ որ ընդունելոց է զհոգի իմ, ոչ միայն որքան ասացեր ինձ՝ արարից, այլ և յայսմ օրէ հետէ և ոչ 'ի տուն իմ դարձայց, բայց 'ի նոյն իսկ աստի 'ի վանս երթայց։ Յայնժամ ասէ ցիս աղջիկն. զգեցո զիս որպէս և զանձն։ Եւ իբրև զգեցուցի զնա, 'ի նոյնն բազմեալ ննջեաց. և ես աւասիկ եկի առ քեզ, յետ այ ապրեցո զիս ոպ և կամիս։

Օ՜ այսոսիկ լուեալ իմ 'ի պատանւոյն, և մխիթարեալ զնա բանիւք ապաշխարութեան, և ժուժկալութեան կրթեցի զնա և՝ կարգեցի զնա միայնակեաց, արգելի յայր մի 'ի լերինն որ յայնկոյս քաղաքին է, մեծապէս գոհանալով զայ և ջանալով վասն փրկութեան անձին իւրոյ։

ԵՂԲԱՅՐ ոմն միայնակեաց, էր սա 'ի քաղաքէն Աղեքսանդրու, և անուն նորա Կիւրակոս և անուն քեռ նորա Պարասկևի։ Իսկ յորժամ մեռան ծնողք նորա, ցանկացաւ Կիւրակոս կրօնաւորական վարուցն. և թողեալ զամենայն ստացուածս հայրենեաց իւրոց և զքոյրն, և գնացեալ նորա յանապատս առ մեծն Գաբրիէլ 'ի Սկիւթ և կրօնաւորեցաւ ճգնաւորական վարուք և եղև հաճոյ յամենայն վարս կրօնաւորութեան իւրոյ, և սէր կատարեալ ունէր առ ած։ Իսկ քոյր նորա Պարասկևի էր յոյժ գեղեցիկ պատկերաւն. եղև խաբեալ 'ի բանսարկուէն, ետ զանձն իւր 'ի գործ պոռնկութեան, և անառակ վարուքն զբազում ոգիս կորուսանէր։

Եւ լուեալ զայս ամենայն եղբօր նորա Կիւրակոսի, և յոյժ տրտմեալ լինէր 'ի վերայ կորստեան քոր իւրոյ, և ուրացեալ լինէր զնա վասն անառակ գնացիցն։ Եւ

1 Օրինակ մի՝ և զգեցուցի նմա միայնակեցաց զգեստ, արգելք։

յետ ամաց ինչ լուեալ զայս մեծն Պամփիլ և այլ ծերքն անապատին, մեղադրէին յոյժ Սիւրակոսի՝ թէ զիարդ թողեր զքոյրն քո անտէր և ետուր կորուսանել սատանայի: Իսկ զայն լուեալ Սիւրակոսի՝ սուգ առեալ հառաչէր զկորուստն Պարասկևեայ քեռն իւրոյ: Յայնժամ ասեն ցնա ծերքն. եղբայր Սիւրակոս, արժան է քեզ ինքնին 'ի խնդիր երթալ կորուսելոյն այնորիկ և հանել զմոլորեալ ոչխարն 'ի սատանայական գործոցն:

Իսկ յայնժամ յարուցեալ Սիւրակոս հրամանաւ և աղօթիւք ծերոցն գնաց և էջ 'ի քաղաքն Աղեքսանդրեայ, և հարցանէր և յուզէր զտունն Պարասկևեայ քեռն իւրոյ. և երթեալ գտանէր զդուռն նորա, և կայր կանգնեալ միայնակեացն 'ի դուռն պոռնկանոցին անօթալից պատկառանօք, և քոյրն կայր յուրախութեան բազում արամբք 'ի գինեըմբունս և յերգս: Իսկ լուեալ զձայն երգոցն Սիւրակոսի և արտասուօք ողբս առեալ հայէր յերկինս և աղաչէր զա̃ծ օգնել կորուսեալ անձինն: Իսկ յայնժամ առաքեաց 'ի ներքս պատանեակ մի առ քոյր իւր և ասէ՝ թէ եղբայր քո Սիւրակոս կայ արտաքոյ դըրանն և կոչէ զքեզ: Իսկ էր Պարասկևէի զխաբացեալ և բոկ ոտանք, անառակութ̃բ պարէր և խաղայր 'ի մէջ բազմականացն ընդ մեղսասէր երիտասարդսն: Իսկ յորժամ լուաւ վասն եղբօր իւրոյ՝ յոյժ ուրախացեալ ցընծաց, և ընթացեալ արտաքս ետ ողջոյն եղբօրն և երկիր եպագ 'ի վերայ երեսաց իւրոց: Իսկ տեսեալ զնա Սիւրակոսի յայնպիսի կերպարանս, բախեալ արտասուօք վերացոյց զձեռս իւր առ ա̃ծ և ողբալով ասէր. ով քոյր իմ Պարասկևէի, զի՞նչ է այդ զոր տեսանեմ զքեզ, որ և արհամարհեցեր զա̃ծ և ատեալ անարգեցեր զհոգիդ քո. ահա կորեար դու և կորուսեր զբազումս. վայ ինձ, քոյր իմ, զի այդպէս տեսանեմ զքեզ. լաւ էր ինձ եթէ ես առաջի քո մեռեալ էի. վայ ինձ, քոյր իմ, զի հայիմ 'ի քեզ և զի՞նչ է զոր տեսանեմ, զի զյաւիտենական կորուստն բարձեալ ունիս զանձամբդ:

Իսկ յորժամ լուաւ զայս Պարասկևէի, բախեալ անկաւ յոտս նորա և ողբալով ասէր. վայ ինձ թշուառականիս, եղուկ եմ ես որ 'ի սպառ կորեայ և մեղօք անցուցի զժամանակս կենաց իմոց. աղաչեմ զքեզ, հայր իմ ըստ հոգւոյ և եղբայր ըստ մարմնոյ, արդ եթէ գիտես

որ ընդունի զիս ա՛ծ և տեսանէ զպատանեկի զզղջումն գթու-թե՛ և զանխառնակ կեանս զապաշխարութե, մի թողուր զիս առանց աղաչելոյ զքեզ, տէր իմ. ով հայր իմ, լաւ լինիմ և հնազանդիմ հրամանաց քոց ամենայն դիմօք, և յամենայն սրտէ և 'ի կամաց ծառայեցից տեառն: Իսկ յայժամ լուաւ զայս Սիւրակոս, ուրախ եղև յոյժ և ասէ ցնա. մուտ 'ի տուն քո և ծածկեա զգլուխ քո և ագիր կօշիկ 'ի յոտն քո. վասն զի յերկար է և քարուտ յոյժ ճանապարհն և խորշակ սաստիկ է 'ի լերինս, մինչև տարայց զքեզ և 'ի կուսանաց վանս մատուցից: Եւ յայնժամ ասէ ցնա աղջիկն. կենդանի է տէր ա՛ծ իմ, զի որպէս եկի ես 'ի ձեռս քո գլխիբաց և բոկոտն, այնպէս եկից զկնի քո, ոչ մտից 'ի տուն իմ և ոչ առից ինչ 'ի սատանայական ընչիցն այն. եկ, եղբայր, և երթիցուք որպէս և եմս իսկ անծածուկ գլխովս իմով և բոկ ոտիւքս. լաւ է ինձ, եղբայր իմ, մերկ գալ զկնի քո, քան դառնալ ինձ և մտանել 'ի կորստական յարկսն իմ: Իսկ Սիւրակոս յորժամ լուաւ զայս 'ի քուրջէ իւրմէ, առաւելապէս խնդաց մեծաւ ուրախութե, գոհանալով զտեառնէ՝ որ լուսաւորեաց զխաւարեցեալ սիրտս նորա: Եւ յուղի անկեալ գնացին 'ի լեառնն և սկսան մտանել 'ի ներքսագոյն անապատն, զի երթիցեն 'ի վանսն տօնիտացուոցն:

Եւ 'ի ճանապարհին ասէր Պարասկեւէ ցեղբայրն իւր Սիւրակոս. ով հայր իմ և եղբայր, ասա ինձ՝ եթէ կա՞յ ինձ յոյս ողորմութե առ ա՛ծ եթէ ոչ: Եւ ասէ Սիւրակոս ցքոյր իւր. այո կայ իսկ մեծ յոյս, ոչ թէ միայն քեզ, այլ ամենայն մեղաւորաց որ դառնայցէ 'ի Քս ապաշխարութե հանդերձ. քանզի Քս այսպէս աւետարանէ և աւետիս երբեր մեզ 'ի յերկնից 'ի հօրէ իւրմէ և ասէ՝ եթէ ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութի: Դարձեալ աւետարանէ և ասէ՝ եթէ ոչ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառնալ նորա 'ի չար ճանապարհէն և զկեալ: Դարձեալ հաստատէ զմեղաւորս 'ի յոյս կենաց իւրոց և ասէ՝ թէ ուրախութի լինիցի յերկինս 'ի մէջ հրեշտակացն այ վասն միոյ մեղաւորի որ ապաշխարիցէ զմեղս իւր. և ակնարկեալ ասէ վասն մոլորեալ կորուսելոցն մեղօք՝ թէ ով որ ունիցի հարիւր ոչխար և մոլորիցի մի 'ի նոցանէ, միթէ ո՞չ թո-

ղուցու զիննսուն և զինն յանապատին և երթիցէ զհետ մոլորելոյն մինչև գտանիցէ • և յորժամ գտանէ, 'ի վերայ ուսոյն բառնայ և տանի խառնէ 'ի հօտն իւր • այսպէս և Տ՟ր զամենայն մեղաւոր որ դառնան առ նա, 'ի յուս իւր բառնայ և 'ի յերկնից հրեշտակս տանի խառնէ ։ Այս լուեալ զայս Պարասկևէ, գոչէր արտասուօք և հառաչանօք աղաչէր զտուողն ողորմութե Տ՟ն ։ Այս Ակիւրակոսի տեսեալ զապաշխարութի քեռն իւրոյ, 'ի խորոց սրտէ աղաչէր զա՟ծ ընդունել զապաշխարութի նորա ։ Այս Պարասկևէ գնայր գլխիբաց և երկու ձեռքն կապեալ 'ի վերայ գլխոյն ։ Այս եղև մինչդեռ երթայրն ընդ դժուարին ճանապարհ անապատին, հերձեալ լինէին ներբանք երկու ոտիցն Պարասկևեայ և արիւնն սաստկապէս հեղեալ 'ի մարմնոյն, և բխեաց արտասուսն և կոծ հառաչանացն ընդդէմ ա՟յ, և յորդեալ վտակք արտասուացն անդադար, և յիշելով զմեղսն իւր, և զլուխն և երեսն 'ի տօթոյ խորշակէն և 'ի կիզմանէ արեգականն որպէս հրով այրեցեալ լինէր ։ Այս սկսաւ երկու բռունքըն ծեծել զկուրծսն իւր, որ և կապուտակեալ ուռուցեալ եղև և հերձաւ, և ելեալ արիւնն ելից զհանդերձն իւր և զծոցն • լայր և ասէր հառաչանօք • ընկալ, տէր իմ Յ՟Ք Ք՟Ս, զապաշխարութիւնս իմ որպէս ընկալար զպոռնիկ կնոջն ։

Այս մինչդեռ երթայրն, ետես եղբայր նորա զի այլ եղբարք անապատաւորք կրօնաւորք գային ընդ ճանապարհ անապատին, ասէ ցքոյրն իւր • խոյս տուր սակաւիկ մի 'ի ճանապարհէդ և թաքիր մինչև անցանեն զի մի՛ գայթակղեսցին, զի ոչ գիտեն թէ քոյր իմ ես դու • և Պարասկևէ թիւրեցաւ 'ի ճանապարհէն և թաքեաւ ։ Իսկ յորժամ անցին անապատաւորքն, գնաց Ակիւրակոս ձայն տուեալ քեռն իւրոյ, և տեսեալ զնա զի մեռեալ կայր՝ յայնժամ յոգւոց եհան հառաչանօք և ասէ • վայ ինձ մեղաւորիս, որ չեղէ արժանի կեցուցանել զհոգի տառապեալ քեռն իմոյ ։ Այս ապա փորեաց զերկիր և սաղմոսիւք և օրհնութ՟բ թաղեաց զնա, և 'ի բազում նեղութեանց և 'ի տրտմութ՟էն ննջեաց 'ի վերայ գերեզմանի նորա ։

Այս տեսանէ յանուրջս զարմանալի տեսիլս • ետես ըզտէր նստեալ 'ի վերայ բարձրութեան աթոռոյ, և կային

շուրջ զնովաւ բազմութիւն հրեշտակաց և ունէին զՊարասկևի առաջի Քի հին և աղտեղի պատառոտուն հանդերձիւք, և ունէր զգլուխն իւր 'ի կոր : Եւ ասէ տէր. բերէք զամենայն գործս պոռնիկ կնոջդ առաջի իմ : Եւ եկեալ սևադէմ մարդիկ և բերին տոմար գրեալ և բացին առաջի նորա և ընթերցան զամենայն գործս մեղաց նորա. և եկին երկու արք լուսաւորք և մատուցանէին առաջի տեառն շիշ մի լցեալ արտասուք և արտասուօք և ընթեռնուին առաջի նորա փոքր ինչ քարտէզ եթէ որպէս լաց եղև եղբօրն իւրոյ, և բազմապատկեալ և բոկ ոտիւքն գնաց զդժուար և զքարուտ ճանապարհ անապատին, և կոծելով բաղխէր զկուրծս իւր զճանապարհն մինչև խաչառ վիրաւորեցաւ մարմինն : Յայնժամ առացին սևադէմքն այն. ահա այսչափ ժամանակս ընդ մեզ էր և զհաճոյս մեր կատարէր և զձեռագիր յանցանացն ելից երկուց կողմանց տումարիս, և վասն սակաւ մի աւուրս որ եկեր զկնի ձեր՝ կամիք յափշտակել զնա 'ի մէնջ : Եւ ասէ տէր. բերէք կշիռս, և բերին. և որպէս 'ի կշռացէ թափէին սևքն զմեղս կնոջն 'ի տումարէն, և լցին զմի կողմն կշռոց նոցա : Նոյնպէս և լուսաւորքն եդին ըզշիշն 'ի միւս այլ կողման կշռոցն, և ծանրացաւ և ելից զչարաչից կողմն, և ցրուեցան ամենայն չարիքն իբրև զծուխ, և իբրև զփոշի անյայտ եղև : Յայնժամ բուրեաց անուշահոտութիւն, և երթեալ յափշտակեցին ըզՊարասկևի 'ի ձեռաց թշնամեացն որք կամէին տանել զնա 'ի տանջանսն, և բերեալ կացուցին զնա առաջի Քի : Եւ հրամայեաց հանել 'ի նմանէ զաղտեղի և զհին պատառոտուն զհանդերձն, և ագուցին նմա բեհեզս և ծիրանիս և եդին պսակ 'ի գլուխ նորա, և առին զնա արքն լուսաւորք և թռուցեալ հանին յերկինս :—

Յայնժամ զարթեաւ Ակիւրակոս 'ի քնոյ անտի և ուրախ եղև յոյժ ընդ տեսիլ երազոյն, և երթեալ պատմեաց զայն մեծին Դանիէլի և այլոց սրբոց հարանցն որք 'ի Սկիւթ էին, և ամենեքեան փառաւորէին զԱծ : Եւ գրեցին զերանուհին Պարասկևի ընդ այլ կրօնաւորսն և 'ի սուրբ կանոնսն 'ի տախտակս յիշատակացն 'ի մարտի քսան և ութ :

ԱՂԵԳԵՈՍ ոմն անուն միայնակեաց նեղեցաւ 'ի դիւէ անտի ձանձրութեան 'ի խցի իւրում. և իբրև յերկարեաց

մարտն, յարուցեալ գնաց յանապատն, որ կոչի Նիղոս.
և շրջելով նորա անդ՝ ետես այր մի մերկ՝ յոյժ ծերու-
նի, որոյ տեսեալ զնա 'ի փախուստ եկաց։ Իսկ սուրբ
Նիղեգէոս զհետ մտեալ պնդաբար; եկաց նա յաղօթել.
և յետ աղօթելոյն ասէ ցնա. զիա՞րդ եկիր այսր, և զի՞
այդքան աշխատեցար։ Եւ նա ասէ. տաղտկացայ 'ի ձանձ-
րութէ անտի 'ի խցին իմում, և յարուցեալ ելի յանա-
պատ աստ, շրջելով 'ի սմա և աղօթելով, որպէս զի 'ի
բաց կացցէ յինէն դեւն ձանձրութեան, խորհեալ եթէ
գտցի արդեօք ծառայ այ՝ որ աղօթեսցէ 'ի վերայ իմ.
և աՀաւասիկ անտես արարեալ այ զմեղս իմ՝ առաքեաց
զքո սրբասիրութիւդ. արդ մաղթեալ վասն այ՝ աղօթեա
'ի վերայ իմ և ընկալ զիս, զի բնակեցայց ընդ քեզ։ Իսկ
նորա ողջոյն տուեալ և աղօթեալ ասէ. այդմ անհնար
է, զի ոչ տուեալ է քեզ յայ։ Յայնժամ ասէ Նիղե-
գէոս. աղաչեմ զքեզ, զիա՞րդ եկեալ ես այսր և քանի՞
ժամանակ ունիս և զի՞նչ շնորհ ետ քեզ ած։
Իսկ նա յօժարութ. ասէ ցնա. եթէ զիա՞րդ եկի և
որպէս պատճառանօք, յայտ է թէ որպէս մեղաւոր և
վասն ապրել կամելոյ եկի այսր, այսինքն այ առաջնոր-
դեալ իմում տկարութեան. և ունիմ յայսմ տեղւոջ ամ-
բիս եօթանասուն աւելի, ոչ տեսեալ զերեսս մարդոյ
մինչև ցայսօր։ Իսկ յառաջ սակաւ մի ժամանակի Հպար-
տացաւ սիրտ իմ 'ի ներգործութէ Թշնամւոյն, իբրև թէ
'ի մեծ չափս Հասեալ քան զբազումս։ Եւ նախախնա-
մութեամբ այ եմուտ յիս խորհուրդ աղաչել զնա ծանու-
ցանել ինձ՝ թէ ընդ ո՞ւմ ունիմ բաժին, և թէ իցէ՞ ար-
դեօք Հաւասար իմ յերկիր։ Եւ աղաչեալ զած իմ խոր-
տաբար՝ յեօթներորդ աւուրն եկն ինձ յաներևութից
ձայն՝ եթէ ընդ Մերգեայ, որ է յԱ՛ղեքսանդրիա, 'ի խա-
ղացուկ և պոռնկայոյզ։ Իսկ իմ տրտմեալ յոյժ՝ ասէի
ընդ միտս իմ. վայ քեզ, տառապեալդ Պիւռիէ, աՀաւա-
սիկ այսքանի տարիս ունիս ծառայելով այ յայսպիսի և
յայսքան խստութե, և արդ ընդ պոռնկայոյզ կարգե-
ցար։ Եւ ամբարտաւան կարծեօք 'ի Թշնամւոյն Համա-
րեցայ զալ ձայնին, վասն որոյ և յերկմիտս էի։ Եւ ա-
րարեալ դարձեալ եօթն ևս օր այլ աղօթելով, նոյնպէս
լուայ նոյն ձայնին՝ որ ասէր ցիս. ասացի քեզ, եթէ ընդ
Մերգեայ Հրապարակաշրջողի յԱ՛ղեքսանդրի ունիս բա-

ժին։ Յայնժամ ասեմ ընդ միտս. եթէ այս հաճոյ եղև ա՟յ, ոչ թողից՝ եթէ ոչ տեսից ով իցէ և զինչ իցէ գործ նորա։

Եւ յարուցեալ գնացի յԱղէքսանդրիա քաղաքն. և իբրև հարցի, ցուցին ինձ զնա որ նստէր 'ի կապեղէն ընդ պոռնիկս 'ի գինեարբուս խայտալով. և պոռնիկք ոմանք մտանէին և ոմանք ելանէին, քանզի նա էր 'ի վերայ ամենեցուն նոցա։ Եւ իբրև մտի 'ի կապեղէնն, հարցի եթէ նա՞ իցէ Սերգի անուանեալն։ Եւ նա ասէ՝ ես եմ։ Յայնժամ ասեմ ցնա. կամիմ առնել ընդ քեզ սէր։ Եւ նա ասէ. խաղաղութ՟ն նիստ։ Եւ հրաման տուեալ կապեղէնին՝ եբեր որ ինչ 'ի կապեղէնն սովոր էր ծախել։ Եւ հարկաւորեցայ յետ այնքան տարեաց՝ յամենեցունց հաղորդել վասն սիրոյն ա՟յ, համարեալ՝ եթէ ա՟յ այս հաճոյ եղև և ընդ իս համարեցաւ, ո՞չ առնեմ ընդ դմա սէր։ Եւ իբրև ուրախ եղեաք, ասեմ ցնա. ունիս տուն. ասէ՝ այո։ Ասեմ. արդ երթիցուք 'ի տուն քո, զի ունիմ ինչ ասել քեզ։ Իսկ նա դայթակղեցաւ ընդ միտս իւր, մի՛ գուցէ փորձեալ 'ի թշնամեացն՝ կամի 'ի մեղս անկանել. և սակայն սակայն հայելով պարսաւէր զիս 'ի միտս իւր, և զարմանայր՝ թէ զիա՞րդ յայդպիսի ծերութեան և կարգաւորութե՟ գոլով պատրեցաւ այդպիսի ախտիւ, որպէս յետոյ պատմեաց ինձ։ Իբրև գնացաք 'ի տուն նորա, և արարեալ իմ աղօթս՝ ասեմ ցնա. վասն ա՟յ պատմեա ինձ անխտրշաբար զվարս քո, և որ ինչ բարի գործեալ ես։

Իսկ նորա զարմացեալ յայտնիկ՝ ասէ ցիս. մարդ ա՟յ, ահաւասիկ 'ի կապեղէն գտեր զիս՝ ընդ պոռնիկս ուտելով և ըմպելով և զբօսանելով, քանզի եմ իսկ 'ի վերայ նոցա. և առանց իմ 'ի նոցանէ 'ի մի ոք ոչ մերձեցի ոք. այլ ինձ ասէ, և զոր կամիմ՝ տամ նմա. և դեռ ես, որպէս ասեսդ, կամիս զվարս իմ գիտել. ահաւասիկ ինքնատես եղեր, զի՞ ևս այլ կամիս ուսանել յինէն։ Իսկ իմ առաւել աղաչելով և երդմնեցուցանելով չծածկել յինէն, եթէ գործեալ ինչ է բարի. ասա և վասն ձայնին զոր լուայ, ասացի նմա։ Յայնժամ նորա զարմացեալ վասն մարդասիրութեան ա՟յ, և յոգւոց հանեալ ասէ. թողութի՟ արա ինձ, եթէ այդպէս իցէ, յիշեմ 'ի միում աւուր մտեալ 'ի կապեղէնն ըստ սովորութեան՝ տեսի կին մի գեղեցիկ յոյժ, որ նստէր 'ի յատակին, և

գործէր 'ի վարձու. որում ցանկացեալ՝ ասեմ ցկապեղուհին. ուստի է կինս այս: Եւ նա ասէ. յայսմ քաղաքէ է: Եւ ասեմ ցնա. խօսեաց ընդ դմա, զի լինիցի ընդ իս: Եւ ասէ. ոչ կարեմ այդպիսի ինչ ճառել նմա. զի թէպէտ և այժմ 'ի խոնարհութեան է, յոյժ ազնուական է: Ասեմ ցնա. իսկ ընդէ՞ր յայդպիսի կարգ եկեալ է: Եւ նա ասէ. այր դորա պարտական եղև իշխանին հարիւր դահեկանի. և իբրև ոչ կարաց հատուցանել, արկ զնա 'ի բանտ, եառ և զերկուս որդեակս դորա 'ի ծառայութիւն. և արդ աշխատի և շրջի 'ի տուէ և 'ի գիշերի, թերևս կարասցէ ազատել զնոսա: Զայս լուեալ իմ ասեմ ցնա. երթ ասա նմա, որ զի թէ լինիցի ընդ իս, և ես տամ զհարիւր դահեկանն: Նա դարձեալ ասէ. ոչ կարեմ, զի որպէս կարծեմ՝ և ոչ հաւանի իսկ երբեք. քանզի գիտեմ եթէ սգաւոր է: Եւ ասեմ ցնա. թերևս հաւանի. ապա եթէ չհաւանի, ոչ ինչ կորուսեր: Եւ նորա հաւանեալ ինձ՝ գնաց ասել նմա:

Իսկ նորա յոգւոց հանեալ և արտասուեալ, սակայն յանձին կալեալ՝ ասելով, որքան ժամանակս ունիմ ջանալով և աշխատելով 'ի տուէ և 'ի գիշերի, որպէս զի ազատեցից զնոսա, և չհասանեմ. արդ և ձանձրացայ ես, և զինչ արարից՝ ոչ գիտեմ. կարծեմ եթէ մարդասէր գոլով ած՝ թողութիւն արասցէ ինձ զայս զմին մեղս վասն երից հոգւոցն. որպէս գիտակ իսկ է, թէ ցայս վայր ոչ գիտացի զփորձ այլ առն, այլ 'ի հարկէ մատնեմ զմարմին իմ 'ի մեղս վասն նոցա: Իբրև եկն կապեղուհին և ասաց ինձ՝ եթէ յանձին կալաւ, ընթացայ և բերի զհարիւր դահեկանն, և թուեալ ետու 'ի ձեռս նորա: Եւ նորա առեալ արտասուօք և բազում հառաչանօք, մտաք 'ի սենեակն. և համբարձեալ զաչս իւր յերկինս ասէ. տէր, դու գիտես զնեղութիւնս իմ: Իբրև զայս լուայ, խղճեաց միտ իմ և ասեմ ընդ միտս իմ. եթէ այդպիսի նեղութիւն է դմա, զիա՞րդ արարից ընդ դմա զայդպիսի չար զպիղծ և զանօրէն: Եւ թողեալ զնա արձակեցի հարիւր դահեկանաւն, և ազատեաց զայրն իւր և զորդեակսն:

Զայս լուեալ ասացի. փառք մարդասիրին այ, արդարեւ յիրաւի կարգեցայ ընդ քեզ: Եւ նորա դարձեալ յոգւոց հանեալ՝ ասէ ցիս. արդարեւ եթէ այս հաճոյ

եղև այ̃, որպէս և ասեմ, և յայ̃ եկիր առ իս, որ յոյժ մեղաւոր եմ, և այլ ևս լաւագոյն յիշեցից քան զայս : Աշխան ոմն չարարուեստ և մեղսասէր և օտարոտի եկեղեցւոյ այ̃ եկն 'ի քաղաքս Աղեքսանդրու, և զօրհանապազ առնոյր յինէն երկուս կամ երիս բոզս : Դէպ եղև 'ի միում աւուր մինչդեռ անցանէր առ վանօք մի կուսանաց, ետես 'ի նոցանէ մանկամարդս խոնարհեալս 'ի պատուհանացն. և 'ի ցանկութի̃ նոցա վառեալ՝ հրամայեաց զինուորացն շուրջանակի զվանօքն զդրունսն պահել ըզգուշութե̃, զի մի գուցէ փախիցէ մի ոք 'ի նոցանէ. և մտեալ 'ի ներքս՝ ժողովեալ զամենեսեան և թուեալ եգիտ եօթանասուն կուսան. զոր ետ ցիս՝ պատուիրեալ ասելով. ահաւասիկ ունիս զդոսա, որպէս կամիս արա, և յամենայն աւուր որքան և խնդրեցից, ածցես ինձ, մինչև կատարեսցին եօթանասունքինդ : Զայս իբրև ետես և լուայ, ասեմ 'ի միտս իմ. վայ ինձ մեղաւորիս, այսքան տարիս ունին վասն այ̃ զկուսութիւն պահեալ, մաշեալ զմարմինս իւրեանց պահօք և հսկմամբ և ամենայն Ճգնութե̃, որպէս զի զանձինս սուրբս կացուցանեն երկնաւոր փեսային, և ինև կորուսանեմ զայսքան և զայսպիսի ջան և զվաստակ՝ պղծելով յայսպիսի ապականութեան գազանէ. քաւ լիցի ինձ այսպիսի ինչ գործել : Ապա թաղամ ինչ խորհեալ և յանհնարս եկեալ և զած աղաչեալ տալ ինձ միտս, որով գիտացից Ճարակ՝ ազատել զնոսա յայնպիսի պղծութե̃, ամենողորմ ած գթացեալ արկ 'ի միտս իմ խորհուրդ բարի : Ապա յարուցեալ գնացի առ բոզեան քաղաքիս. և ցուցեալ նոցա զինչս իմ՝ հազիւ հաւանեցուցի կտրել զհերս և զգենուլ զգեստ կրօնաւորական. և արգելեալ զնոսա 'ի վանսն և թողեալ զնոսա անդէն և առեալ զկուսանս թաքուցի յայլ տեղի : Ապա տայի Թշուառական իշխանին հանապազօր 'ի կորեկոյ պոռնկացն, ցորքան լցաւ համար եօթանասնիցն : Ապա իբրև լցաւ, գնաց չարափառն այն և պիղծն. յանժամ առեալ զկուսանսն՝ տարայ դարձեալ 'ի վանս իւրեանց, և զնոսա դարձեալ մտածէի արձակել : Որոց տեսեալ զաղախինեայսն և զհարսնացեալսն Քի̃ այ̃ մերոյ՝ ոչ կամեցան անտի ելանել, ասելով. եթէ արժանաւորեաց զմեզ ած պատՃառանօք զգենուլ զսուրբ կրօնաւորութեան ձև, քաւ լիցի մեզ այսուհետև դառնալ

'ի յայն պղծութիւն և 'ի կորուստ անձանց մերոց։ Եւ մնացեալ 'ի նոյն վանսն սուրբ զգեստովն՝ հաճոյանալով ապաշխարութեամբ ճշմարտի ամենազօր և գթածին այ։

Օ այսուհետև լուեալ իմ, և առաւել փառաւորեալ զա͞ծ, որ միայն օգնական և փրկիչ է յուսացելոց 'ի նա և հաւատացելոց ճշմարտութեամբ, ասեմ ցնա. արդարեւ, եղբայր, թէպէտ և յոյժ վատտակեցի, ծանեայ եթէ ոչ միայն հաւատար իմ, այլ և առաւել քան զիս ես. բայց վասն այ աղօթս տուր ինձ, որ զի երթայց 'ի տեղի իմ։ Եւ նա ասէ. աղօթեցից քեզ տէրամբ իմով զի երթիցես 'ի տեղի քո. որպէս ասեմ՝ եթէ ընդ քեզ համարեցայ, ոչ թողից զքեզ, այլ ընդ քեզ եկից։ Եւ աղաչեաց զիս անսալ նմա օր մի կամ երկուս, և տուեալ զինչս իւր աղքատաց՝ եկն զկնի իմ. և բնակեալ ընդ իս այրս այս ամս երիս, այժմ կատարեցաւ չորք աւուրք յառաջ։ Եւ զքեզ աղաչեմ, յելանել հոգւոյ իմոյ՝ ընդ դմա դիցես. այլ այժմ երթ և յետ երից աւուրց եկ, զի ունիմ ինչ ընդ քեզ կարեւոր պէտս խօսել։ Եւ իբրև գնացի, և յետ երից աւուրց դարձեալ ըստ բանի ծերոյն, եկի գտի զնա ննջեալ։ Եւ թաղեալ զնա առ աբբայ Սերգեայ, ոպ հրամայեաց ինձ, և գոհացեալ զա͞յ 'ի վերայ սքանչելեացն հրաշալի, գնացի փառաւորելով զա͞ծ։

Օ ԵՂԵԱԼ[1] Նշանս մանաւանդ զառաւել զարմանալիս յաւուրս մեր, հանձն թուեցաւ մեզ Յակովբու սարկաւագի և մեղաւորի գրել առ ձեզ, եղբարք հոգևորք, զի լսելով ձեր՝ շահիցն պատահիցին անձինք ձեր. և ըղմարդասէրն ա͞ծ փառաւորեցէք, որ ոչ կամի զկորուստ ուրուք։ Եւ լուարուք ինձ և միտ դիք ասացելոցս առ յինէն, քանզի լի են շնորհօք բանք իմ։

Օ ի սուրբ եպիսկոպոսն Անտիոքայ կոչեաց շուրջ զքաղաքաւն զեպիսկոպոսունս վասն իրաց ինչ. և ժողովեցան եպիսկոպոսունք ութ, ընդ որս էր սուրբն Նոնոս, որ իմ եպիսկոպոսն էր, այր սքանչելի, միայնակեաց եղեալ ընդ բազմութեան վանաց տաբեննացւոց. և վասն անարատ վարուց և առաքինութեան գնացից արժանի եղև այսպիսի պատուոյ։ Եւ ժողովեալ սոցա յառաջասացեալ քաղաքին, իջանել 'ի մատրանն սրբոյն Յուլիանոսի.

1 Պատմութիւնս այս արտաքոյ օրինաց 'ի ձեռագրական գրոցանն. որում համաձայն հարանց վարուց որ առ մեզ, գտանի յայն գրանք և լատին թարգմանութեան։

մնեալ էր մեր անդր, իջեալ ընդ այլ եպիսկոպոսունս ։ Այլ յաւուր միաշաբաթւոջ իջեալ եպիսկոպոսացն նս-տան 'ի վերայ փառաւորանի 'ի պաշտօն աղօթիցն 'ի դրան մատրանն. և նստեալ եպիսկոպոսքն հարցին զտէրն իմ ՝Նոննոս, զի օգտեսցին 'ի նմանէ ։ Այլ սուրբ հոգին խօ-սելով 'ի ձեռն շնորհաց նորա, շահէին 'ի փրկութիւն ։ Այլ ահաւասիկ գայր անցանէր առաջի մեր վարձակաց բոզապետն Անտիոքայ և գլխաւոր դասուն կաքաւչացն. և էր նստեալ 'ի վերայ գնացող գրաստու, սաստիկ հրա-շալեօք և գեղեցիկ հանդերձիւք զարդարեալ, անչափ ոսկւով և մարգարտով յօրինեալ. և բազմութիւն ա-րանց և կանանց շուրջ զնովաւ, որք սպասաւորէին նմա պատուական հանդերձիւք զարդարեալ, և մանեակ ոսկի ընդ պարանոցս իւրեանց ։ Ոմանք կային առաջի նորա, իսկ ոմանք զհետ երթային. և ոչ գոյր յագուրդ տեսա-նելոյ զնա և զհանդերձս նորա, որք ախորժէին զնա ։ Այլ անցեալ առաջի նորա ելից զամենայն օդն անուշահոտու-թեամբ մշկոյն և իւղոցն անուշահոտութիւքն պատուա-կանացն ։ Այլ տեսեալ զնա դասուց սրբոցն եպիսկոպո-սացն, զի այնպէս արձակ և համարձակ բաց երեսօք անց առաջի մեր այնպէս յայլրատաբար, և զգլուխն իւր ան-դամ ոչ ծածկելով, այլ զպատուական զգլխադիրն զոր ունէր՝ ընկէնոյր զուսովք իւրովք. և ամենեքեան իբրև 'ի սաստիկ մեղաց դարձուցին զերեսս իւրեանց ։

Բայց սուրբն այ̃ ՝Նոննոս տէրն իմ խորհրդովք աչօք սրտի հայեցաւ 'ի նա. և յետ այսորիկ եդեալ զերեսս 'ի վերայ ծնկաց իւրոց, և զանձեռոցն զոր ունէր 'ի սուրբ ձեռս իւր՝ եթաց արտասուօք, և զամենայն գոգն այծեաց եթաց սուրբ արտասուօքն. և ապա հառա-չեաց սաստիկ յոյժ և ասէ ցեպիսկոպոսունսն որք նս-տէին անդ առ նմա. տեսէք, եղբարք, թէ որքան փոյթ կալաւ յանձին վասն երկրաւոր իրաց ։ Այլ նոքա 'ի լռու-թեան ձգնեցան, և ոչ ինչ պատասխանի տուեալ. և նա դարձեալ եդ զերեսս իւր 'ի վերայ ծնկաց իւրոց, և հա-ռաչելով ծեծէր զկուրծս իւր, և զամենայն այծէան ե-թաց արտասուօք ։ Այլ դարձեալ ասաց. արդարև ա̃ծ զայս յաւուր ածելոց է և կացուցանելոց է առաջի սա-կալի ատենին իւրոյ դատելով զմեզ և զեպիսկոպոսու-թիւնս մեր և զկարգս մեր ։ Որպէս կարծէք, սիրելիք,

մրչափ ժամանակս եղև սա 'ի սենեկին իւրում լուանալով և օծելով և մաքրելով, և պաճուճել 'ի դեղ և 'ի պէսպէս հպատանս · և սատանիկ գթասիրութբ ընդ հայելի հայելով, զի մի զառաջին բարեկամաց իւրոց 'ի պատրաստութե՛ վրիպեսցի, և տգեղ երևեսցի ցանկացողաց իւրոց · արարեալ զայս զի հաճոյ թուեսցի մարդկան, որ այսօր են և վաղիւն ոչ ևս են ։ Իսկ ես որ ունելով զառագաստն 'ի յերկինս զանապական և զանմահ փեսայն, որ զանապականութի տայ զարդարելոցն 'ի պատուիրանս իւր, բաժին մեծապէս ունելով զերկնաւորսն որ ոչ կար ծեօք զանկանի, զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ զոր ած պատրաստեաց սիրելեաց իւրոց, բայց զի՛ շատ ասեմ, խոստումն ունելով տեսանել զանքննելին և զանհաս գեղն զոր սերովբէքն և քրովբէքն նայել ոչ կարեն, այսպիսի ունելով՝ ոչ պատրաստիմք և ոչ զարդարիմք և ոչ լուանամք զաղտ տառապեալ ոգւոց մերոց, այլ թողումք 'ի սուգ և 'ի տխրութի ։

Զայս ասացեալ՝ առ զիս և ելաք 'ի խորշիցն մեր · և ընկեցեալ զինքն 'ի վերայ քարի և զերկիր ծածկելով և ընդ գետինն նայելով, լայր սաստկապէս, աղաչէր ասէր · ած, քաւեա զիս զմեղաւորս, զի միոյ աւուր զարդարումն պոռնկին յաղթեաց զարդարմանն վարուց ամաց իմոց · որո՞վ երեսօք նայեցայց ընդ քեզ, ած իմ · կամ որպիսի՞ բանիւ արդարացայց առաջի քո, տէր, որ տեսանես զգաղտնիս իմ, տէր · ոչ մատուցանել զգեղ ոգւոյս առաջի քո, տէր, որպէս խնդրես դու յինէն, ած իմ · առ սակալի և ահաւոր սեղան քո կացեալ եմ, և ոչ եմ զարդարեալ զիս ըստ կամաց քոց, տէր ած իմ · որ 'ի չգոյէ 'ի գոյ ածեր զամենայն ինչ, և անարժան գոլով տառապելութեանս իմոյ՝ արժանաւորեցուցեր ծառայել քեզ ։ Մ՝ի որոշեր զիս յերկնաւոր սեղանոյ քո · մի դատապարտեսցէ զիս զարդ պոռնկին առաջի ահաւոր և սքանչելի բեմի քո ։ Զի սա վասն երկրաւորիս և հողւոյս սատանիկ փոյթ կալաւ յանձին · իսկ ես զքեզ անմահ փեսայդ արհամարհեալ՝ յանփոյթութի մատնեցի զանձն իմ, և վասն հեղգութե՛ զրկեցայ 'ի զարդու պատուիրանաց քոց · նա մարդկան հաճոյ խոստացաւ լինել և արդարեւ[1] եղև, զի վասն այսր զարդարեալ եղև 'ի

1 Յօրինակին արդար եղև ։

վերայ երկրի․ իսկ ես մարդասիրին ո̃չ խոստացայ հա-
ճոյ լինել և ստեցի, և վասն այսորիկ ոչ գոյ յիս փըր-
կութեան գործոց իմոց․ այլ հայելով 'ի գթութիւն քո կա-
միմ զայդ իմանալ, և վասն բազում ողորմութեան քում
տառապեալ ծառայ քո եմ։ Օ այս ասացեալ նորա լա-
լով և հառաչմամբ, ևս բազում քան զայս խոստովա-
նելով, անցուցաք զաւուրս շաբաթուն։

Այլ 'ի վաղիւ անդր որ էր սուրբ կիւրակէն, յետ կա-
տարելոյ զգիշերականն պաշտօնն, ասէ ցիս սուրբն Ար-
նոս տէրն իմ․ եղբայր սարկաւագ, տեսիլ տեսի և յոյժ
խռովեցայ եմ, և պատմել զնա ոչ կարեմ․ բայց ա̃ծ ըղ-
հաճոյսն իւր արասցէ և զոր 'ի մեզ օգուտ։ Այլ դար-
ձեալ ասէ․ յերազի տեսանէի ես զի կայի առ անկեան
սեղանոյն, և տեսի աղաւնի մի գեռաթաթախ զի թըռ-
թռայր զինև, և ժահահոտութեան զայսն ոչ կարէի տա-
նել․ և նա յերկարէր թռթռալովն զինև, մինչև կատա-
րեցին զաղօթս երախայիցն․ և յորժամ քարոզեաց սար-
կաւագն, 'ի նոյնժամայն աներևոյթ եղև յինէն։ Այլ
յետ կատարման պատարագին արձակեցան ժողովուրդ-
քըն․ և յելանելն իմ յորժամ հասի 'ի տուն իմ, գայր
նոյն աղաւնին գեռաթաթախ և թռթռայր զինև, և
իմ կարկառեալ զձեռս իմ, կալայ և ընկեցի յաւազան
ջրոյ զաւթի եկեղեցւոյն․ և եթող 'ի ջուրսն զամենայն
աղտեղութիւնս իւր, և ելանէր սպիտակ իբրև զձիւն,
և թռուցեալ 'ի վեր բարձրանայր։ Այլ ամբարձեալ զաչս
իմ տեսի 'ի բարձունս զի ելանէր, մինչև հեռացաւ յա-
չաց իմոց և ոչ ևս կարէի տեսանել զնա։

Այլ զայս ասացեալ նորա՝ յարուցեալ չոգաք 'ի մեծ
եկեղեցին ընդ այլ եպիսկոպոսունսն, և տուաք ողջոյն
եպիսկոպոսապետի քաղաքին․ և յորժամ եղև ժամ ա-
ւետարանին, նստան եպիսկոպոսունքն 'ի բեմին․ և յետ
կարգաւոր պաշտամանցն և գրոցն և սաղմոսացն առա-
քեն զաւետարանն առ սուրբն Անոս աղաչելով՝ զի կաց-
ցէ 'ի թարգմանութիւն։ Իսկ նորա յարուցեալ և բա-
ցեալ զա̃ծաշունչ բերան իւր՝ ոչ ևս ինքն խօսէր, այլ
սուրբ հոգին որ բնակեալ էր 'ի նմա․ բայց խօսէր ոչ
ճարտարութ̃. ինչ, քանզի ոչ ունէր զարտաքնոցն իմա-
ցուածս բանից, այլ լի էր սուրբ հոգւովն և ա̃ծային շը-
նորհօքն․ և յա̃ծաբանելն նորա լուսաւորէր զժողովուր-

տեղւոյն բազում օգտութեամբ : Այլ շրջեալ ընդ վանօրէայն և ընդ անապատն օրհնել 'ի սրբոց հարցն, ոչ այլ ինչ գիտաւ ածեալ վասն նորա. և յամենայն վանօրէայն լսէր զհամբաւ սրբութեան և զճգնութեան իւրեանն մարդոյ :

Այլ իբրև անցին աւուրք ութ, լուր եղև յԱղեքսանդրէմ՝ եթէ սուրբն Պեղագիէ հանգեաւ 'ի Տէր. և ժողովեցան վանականքն ամենայն երուսաղէմացիքն, և 'ի նիկոպօլսեցւոցն և յԱղեքսանդրէ և որ յայնկոյս Յորդանանու, ժողովեալ բազմութեան միաբանեցան՝ որք 'ի տեսչութեան նոյ հանդիպեցան յԱղեքսանդրէմ յաւուրն յայնմիկ : Այլ քակեցին զխուցն և հանին զմարմինն զպատուական նշխարս նորա, 'ի վերայ փայտի եդին : Այլ մատուցեալ հայրապետն և սուրբ հարքն սկսան ամփոփել և օծանել խնկով. և գիտացին եթէ կին մարդ է բնութեամբ, ամբարձին զձայնս խնդութեան առ Տէր բարբառելով՝ Թէ փառք քեզ, տէր, որ լոյս բազում [illegible] թեան քում զգաղտնի սուրբս քո յայտնես, ոչ միայն զարս, այլ և զկանայս : Այլ կամէին Թաքուցանել 'ի ժողովրդենէն զայնպիսի սքանչելիսն, բայց ոչ կարացին. զոր և տէրն ասացեալ է 'ի սուրբ աւետարանին, եթէ ոչ ինչ է 'ի ծածուկ որ ոչ յայտնեսցի, կամ առ անկեան Թաքուսցի, կամ գործեալ և ոչ եկեալ 'ի յայտ : Այլ այս գիտելի եղև ամենայն Աղեքսանդրէմ : Այլ ժողովեցան ամենայն ժողովք կուսանացն լապտերօք և խնկօք և մոմեղինօք, և բարձեալ բերին զպատուական նշխարսն յարանց պատուականաց և երկիւղածաց և սուրբ հարց : Այլ արդարև կատարեցան աւուրքն 'ի տեսանել՝ Թէ փայլեսցէ լոյս ձեր առաջի մարդկան, որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս և փառաւորեսցեն զհայրն ձեր որ յերկինս է : Այլ այսպէս փոխեցաւ 'ի հանգիստն Տեառն :

Նհա այս են վարք սորանկին և այս կատարումն նորա : Որք նմանեցարուք նմա ոչ առաջին վարուցն, այլ վերջին ճգնութեան և քաջութեան համարեալ. և նորին բարեխօսութեամբ յերկնից բարութեան վայելեսցուք 'ի Տէր Յիսուս, որք և կանայք և ամենայն զաւակք բարի սեռից հաւատացելոց 'ի Տէր Յիսուս 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն :

# ՄՆԱՑՈՐԴՔ

## յերկրորդ թարգմանութեան

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Ագաթոն յաղագս պոռնկութեան : Իսկ ծերն ասէ ցնա . գնացեալ դիցես զտկարութիւն քո առաջի այ և գտցես հանգիստ :

ԳՆԱՑ երբեմն ծեր ոմն մեծ առ հայրն Աքիլա Թեբայիդոյ և ասէ ցնա . պատերազմ ունիմ, հայր, ընդ ծերոյ ումեմն մեծի : Ասէ ցնա ծերն . ոչ է այդ պոռնկութիւն, այլ և նախանձ է դիւաց՝ որք փութան մեղանչեցուցանել զընտրեալսն :

ԵՂԲԱՅՐ ոմն եհարց ցհայրն Դանիէլ և ասէ . տուր ինձ, հայր, պատուիրան զի պահեցից զայն : Ասէ ցնա ծերն . մի երբէք մխեսցես զձեռն քո 'ի սկաւառակ ընդ կնոջ և մի կերակրեսցես ընդ նմա, մի ուտեսցես և մի խօսեսցես ընդ նմա՝ թէ և մայր ևս քո իցէ, և սովաւ զերծցիս փոքր ինչ 'ի դիւէն պոռնկութեան :

ԱՍԱՑ հայրն Ամոյ՝ եթէ եղբայր ոմն եկն առ իս և ասէ՝ եթէ դատելն զեղբայրն չար է քան զպոռնկութիւն : Եւ ես ասեմ ցնա . խիստ է բանդ այդ, եղբայր : Իսկ նա ասէ . ապա որպէս է, հայր : Ասացի ցնա . չար է դատել զընկերն, այլ դիւրաւ բժշկի . քանզի եկեալ որ դատեացն՝ անկանի առ ոտս դատեցելոյն և ասէ՝ թողցես ինձ, և առժամայն սրբի . իսկ պոռնկութեան բժշկան մահ է և դժուարաւ քաւելի :

ՓՈՐՁԵՑԱՒ երբեմն 'ի դիւաց հայրն Աբրահամ աշակերտ հօրն Սիսոյի և անկաւ 'ի պոռնկութիւն : Իսկ ծանեաւ ծերն, յարուցեալ համբարձ զձեռս իւր յերկինս և ասէ . ած իմ, եթէ կամիցիս դու և եթէ ոչ կամիցիս՝ ոչ թողից զքեզ մինչև բժշկեսցես զնա : Եւ առժամայն բժշկեցաւ յախտէ պոռնկութեան մինչև բնաւ

նորա 'ի գիւղ իւր կին ոմն աղքատիկ մօտաւոր, որ և 'ի բազում ժամանակաց կամէր տեսանել զծերն, և հարցանէր և քննէր զնմանէ թէ ուր բնակէ, և լուաւ զնմանէ եթէ 'ի խորին անապատն իցէ: Եւ յարուցեալ անկաւ յուղի անապատին, և գտեալ զուղտապան ոմն ընկեր՝ և եմուտ ընդ նմա յանապատն. և եղև այս առաջնորդութ՟ն չարին: Եւ իբրև գնաց 'ի սենեակ ծերոյն, սկսաւ ցուցանել զինքն ծերոյն և ծանուցանել թէ այն ոմն կին իցէ որ աղքատիկն է իւր. վասն որոյ և բնակեցաւ ընդ նմա: Իսկ մինչ յամեալ անդ աւուրս ինչ, եմուտ պատերազմ 'ի ծերն, և անկաւ ընդ նմա: Եւ էր այլ ոմն ծեր մերձ նորա 'ի ներքին կողմն, և լնոյր նա զստամանն իւր ջրով, և 'ի ժամ ուտելոյն վաթէր նա. և իբրև եղև այս բազում անգամ, գնաց առ ծերն այն հարցանել թէ ընդէ՞ր լինի այն: Եւ իբրև գնաց յանապատն, և զի էր երեկոյացեալ աւուրն՝ ել 'ի սենեկէն, վասն այն մնացեալ 'ի հիւրանոցի եղբարցն ննջեաց. և լուաւ 'ի գիշերի զի ասէին դևք ընդ միմեանս՝ եթէ յայսմ գիշերի ձգեցաք 'ի մեղս պոռնկութեան զծերն զայն: Իսկ իբրև լուաւ զայս ծերն որ 'ի հիւրանոցին էր ննջեալ՝ տրտմեցաւ յոյժ, զի առ նա գնալոց էր, և գնաց առ նա և եգիտ զծերն զայն տրտմեալ յոյժ, և ասէ ցնա. զի՞նչ արարից, հայր, զի յամենայն աւուր լնում զստամանն իմ ջրով. իսկ իբրև ճաշակեմ և կամիմ ըմպել, շրջի նա և հեղու ջուր իմ: Ասէ ցնա ծերն. դու եկիր հարցանել վասն ջրոյն եթէ զինչ արարից զի շրջի միշտ, այլ ես զի՞նչ արարից զի յայսմ գիշերի անկայ 'ի պոռնկութ՟ն: Եւ նա ասէ. և ես ծանեայ զայդ, հայր: Իսկ ծերն ասէ. և ո՞րպէս ծանեար, հայր: Եւ նա ասէ. մինչ ննջէի 'ի տաճարին, լուայ զայդ 'ի դիւացն որ պատմէին վասն քո: Ասէ ցնա ծերն. ահա, հայր, ես գնամ յաշխարհ, քանզի անկայ չարաչար: Իսկ նա աղաչեաց զնա և ասէ. մի, հայր, այլ դադարեա 'ի տեղի քո, իսկ զկինդ առաքեա 'ի գիւղն, և քեզ ոչ այնչափ մեղադրեսցէ Տէր, զի այդ պատահումն դիւաց էր: Իսկ ծերն լուաւ նմա և դադարեաց անդ և յաւելաւ յամենայն ճգնութ՟ի և յարտասուս՝ մինչև եկն յառաջին չափ իւր, և էառ նշան թողութ՟ե մեղաց իւրոց և թուելոյ 'ի դասս արդարոց: Ահա տես արդեաք թէ որչափ բարւոք իցէ

յոյս հաստատուն առ բարերարն և ներողն ամէն, իսկ յուսահատութիւն կորուստ իցէ անդարձանելի:

ԵՂԲԱՐՔ երկու պատերազմեցան 'ի չար խորհրդոց պոռնկութե, և գնացեալ յաշխարհ խոտեցան կանանց իւրեանց: Իսկ յետոյ ասեն ցմիմեանս՝ թէ զինչ շահեցաք զի թողաք զկարգ հրեշտակաց և եկաք յաղտեղութիւնս յայս, և յետոյ կայ և մեզ մեղ գնալ 'ի հուրն յաւիտենից. արդ եկայք ելցուք դարձեալ յանապատ և ապաշխարեսցուք զմեղս մեր: Եւ յարուցեալ եկին յանապատ և խոստովանեցան հարցն զյանցանս իւրեանց և խնդրեցին կանոնս առ իւրեանց: Իսկ նոքա արգելին զնոսա ուրոյն ուրոյն զամ մի, և երկուցուն միապէս տային հաց և ջուր, զի և նման միմեանց էին: Իբրև լցան ժամանակ ապաշխարութե նոցա և ելին արտաքս, տեսին զնոսա հարքն՝ զի միոյն դեղնեալ և նուաղեալ էր յոյժ, իսկ երկրորդն գեղեցկացեալ և պայծառացեալ էր երեսօք, և զարմացան, զի միապէս առնէին կերակուրս: Հարցին զդալկացեալն և ասեն. դու զինչ խորհէիր 'ի մէջ յարգելարանին քում: Եւ նա ասէ. զչարիսն թուէի զոր գործեցի, և զտանջանսն մտածէի յորում մտանելոց եմ, և վասն այնորիկ չորացան մարմինք և ոսկերք իմ: Հարցին և զմիւսն որ գեղեցկացեալն էր. և դու զինչ խորհէիր 'ի խցին: Իսկ նա ասէ. ես գոհանայի զԱյ որ ազատեաց զիս 'ի պղծութենէ աշխարհիս և 'ի տանջանաց հրոյն, և եբեր զիս 'ի հրեշտակական յայս կարգ, և յիշէի զԱծ և ուրախ լինէի: Իսկ հարքն ասեն. ապաշխարութիւն երկոցունց հաւասարք են. զի վասն մեղաց տրտմութիւնն բարւոք է, իսկ վասն հեռանալոյ յաշխարհէ և մեղաց՝ ուրախութիւն առաւել ևս լաւագոյն է:

ԵՂԲԱՅՐ ոմն պատերազմեալ եղև 'ի գիւէն պոռնկութեան յոյժ, վասն զի չորք դևք փոփոխեցան 'ի կերպարանս գեղեցիկ կանանց և պատերազմէին ընդ նա խիստ զաւուրս քառասուն և նեղէին պղծիլ ընդ նոսա. իսկ նա քաջապէս ընդդէմ կայր և ոչ յաղթեցաւ անկանիլ ընդ նոսա: Իսկ ողորմածն Ած իբրև ետես զճգնութիւն նորա, ետ նմա պարգևս, զի յայնմհետէ այլ ոչ ևս շարժեսցին մարմին և խորհուրդ նորա խաղաղ: Նոյնպէս է, քանզի արիացեալքն ոչ անկանին, այլ պարգևաւորին ևս:

ԿՈՂԲԱՑԻ անուն եհարց ցհայրն Ագաթոն և ասէ. զի՞նչ արարից, հայր, զի վտանգէ զիս որովայն իմ. յորժամ ճնշեմ զնա, մտէ և կիզէ զմարմին իմ։ Ասէ ցնա ծերն. որդեակ, մարմին անօթ է հոգւոյ և պարտ է զնա 'ի կարգի կրթել պահել, որպէս զի մի գիրացեալ 'ի պարարտս մեղաց զօրացուցէ զնա. և դարձեալ ոչ է պարտ եթէ տկարացի և անզօրձ լեալ անօգտակարասցի 'ի գործս և 'ի ջանս բարեաց, այլ 'ի կշիռս պարտ է կեալ մինչև յօր մահուն. և աղօթեսցուք ջերմ արտասուօք, որպէս զի ա̃ծ օգնեսցէ մեզ։

ՄԻԱՅՆԱԿԵԱՑ անուն էր կայս, զի բնաւ ոչ էր տեսեալ կին մարդ և ոչ ճանաչէր զնա։ Ոսոխն նեղէր զնա պոռնկութեան խստաբար, քանզի ջեռնոյր յոյժ և սիրէր զոմն, այլ թէ զո՞ սիրէր՝ ոչ գիտէր. և հնարեալ դևք ցուցին նմա 'ի տեսլեան մարդ մի զի 'ի վերայ կնոջ անկեալ մեղս գործէր. բայց ողորմածն ա̃ծ եսես զանմեղութի ծերոյն և զնենգութի դիւացն, և երբարձ ըզպատերազմն զայն 'ի ծերոյ անտի և ազատեցաւ 'ի նմանէ։ Ասեն զի պատճառ և նիւթ պատերազմի դիւացն մեք լինիմք և զօրացուցանեմք զնոսա առ 'ի նեղել զմեզ և դառնացուցանել զհոգիս 'ի պիղծ ցանկութիւնս. վասն զի կամ 'ի կանանց թուլութէ մերմէ՝ զի տեղիք տամք, և կամ 'ի ծուլութենէ և մարմնոյ հանգիստ լինելոյ և կամ 'ի կերակրոց յղփութէ։ Իսկ յորժամ պատճառք ապաքինելք 'ի մէնջ ոչ իցէ առընթեր, յայնժամ վաղվաղակի զփախուստ նոցա և զանկարելի տկարութիւն նոցա տեսանելոց եմք առ 'ի փրկչէն մերմէ Քսէ յիւր հալածելոցն։

ԱՍԷԻՆ վասն ծերոյ ումեմն մեծի՝ եթէ գնաց երբեմն 'ի միաբանից վանս և եսես անդ մանուկ մի և ոչ կամեցաւ բնաւ կալ և ճաշել անդ կամ ննջել։ Ասէ ցնա եղբայրն որ ընդ նմա էր. զի՞նչ իցէ, հայր, և դու ես երկնչիս յայսմանէ։ Ասէ ծերն. թո՛յլ տուր, եղբայր, ոչ երկնչիմ, այլ ոչ իցէ շահ յընդունայն կռուոյ. քանզի ամենևին հեռանալով յայսմանէ և պայծառ սրբութեանն լինել ընդ Քսի լաւագոյն իցէ, քան պատերազմաւ կեալ ընդ ախտին այն վասն աշխատութէ փոխարինին. քանզի եթէ արտաքոյ կանանց մեր գայցէ պատերազմն այն, բարւոք պահպանեալ տոփեալ է յաղթութի

զինելով ընդ նմա և հալածել սա 'ի հասանել ամենայն աղբ-բութեան:

ՀԱՅՐՆ Պիմէն երբեմն նստեալ յայնկոյս ծովուն՝ ուր էր անապատ կրօնաւորաց, և եկեալ կին մի 'ի նաւէ և նստաւ 'ի բլուր ուրեմն. և գնաց եղբայր մի ճաշել ջուր, և իբրև ետես զկինն անդ, գնաց և պատմեաց հօրն և ասէ. ահա արդեօք յանդիման գետոյն, հայր, 'ի բլ-լուրն նստեալ է կին մի, զի այլ բնաւ ոչ եկեալ է աստ կին արժանա: Եւ իբրև լուաւ զայս ծերն, առեալ զգա-ւազանն իւր ել արտաքս և ընթանայր և գոչէր մեծա-ձայն՝ օգնեցէք, եղբարք, օգնեցէք, զի աւազակք ե-կեալ են աստ: Եւ իբրև ետես զայն, առին զնա ա-մենեքեան և ընթանային ընդ նմա և գոչելով դիմեցին 'ի նաւն, և նաւորդքն երկեան յոյժ և առին զկինն և փախեան և մտին 'ի նաւն. իսկ եղբարքն հաստեալ զկա-ռափն նաւին ետուն սանձել ալեացն զնա:

ԱԲԲԱՅ ոմն ծերակաշատ և տուրք բնակէր ընդ մօր իւ-րում 'ի քաղաքի ուրեմն. և մերձ սոցա բնակէր զինուոր մի չար, և սաստկեալ էր 'ի կնոյն, և ոչ գտանէր ժամ դի-պող գործելոյ մեղացն: Եւ 'ի միում աւուր գնաց 'ի ճա-նապարհ մայր նորա. իբրև ետես զինուորն, որ և լրտեսէր 'ի վաղուց հետէ, եմուտ 'ի տունն և կալեալ զկոյսն բռ-նութեամբ ապականեաց զնա: Իսկ իբրև ել անտի նենգա-ւորն այն, մերկացաւ կոյսն զկրօնաւորականն իւր հան-դերձն և հերձեալ՝ նստաւ 'ի վերայ խոտի միոյ և լայր դառնապէս: Եւ իբրև եկն մայրն և լուաւ զայն, սգայր և նա. և եկաց յողբս և 'ի կոծս յայն աւուրս բազումս. Եւ լուան զնմանէ կուսանք և քահանայք եկեղեցւոյն, և եկեալ առ նա մխիթարէին և ասէին. ոչ կամաւ քո եղև, ոչ գոյ քեզ մեղս: Նա ոչ լսէր, և ողբայր և ասէր. ատեաց և մերժեաց զիս Տէր, և որպէս զեկեղեցւոյ զանեսակն զայն զոր Տէր ոչ կամեցաւ. միթէ ո՞չ էր կա-րող Տէր խափանել զայն, այլ զի անարժան համարեցաւ զիս. և զի կամ ես այսպէս մինչև 'ի մահ: Եւ եկաց այնպէս մինչև ցկէտ կենաց իւրոց, և ողբայր այնպէս զզրկութիւն զկուսութեանն և զգողմելոյ զայն ողբ: Արդ այս գրե-ցաւ առն վասն այն՝ զի թէ յակամայ 'ի մեղացն այն-պէս անմխիթար լալ և ողբալ պարտ իցէ մինչև յօր մա-հուան, ապա որչափ առաւել են որք կամաւ և յօժա-

նակաւ ։ Պատասխանի ետ եղբայրն․ որպէս և ասացեր դու, հայր, կրկնեալ իմ երկոտասան ծունր և անկայ 'ի վերայ գերեզմանի հարցն և ննջեցի սակաւիկ մի, և եկն առ իս աղջիկ մի և ասէ ցիս․ կրօնաւոր, առ դու զօրհնութիւն զայս և գնա խաղաղութե՛ 'ի սենեակ քո ։ Եւ իբրև առի զայն, առժամայն թեթևացաւ պատերազմ իմ. այլ թէ զինչ առի՝ ոչ գիտեմ ։ Եւ ասէ ծերն․ այսպիսի համարձակութիւն ունի առ ա͞ծ աղջիկն այն որ մեռաւ վասն սրբութեան[1] ։

ԵՂԲԱՅՐ մի եհարց ցծերն վասն ախտից և ցանկութեանց ։ Ասէ ցնա ծերն․ ազգին են որք երգեն լեզուաւ կացեն [illegible] ․ զի եթէ ոչ էին լուեալ յայնժամ զձայն երգոց և զպարուց մարդկի, ոչ երկրպագեալ էին կռոց․ այսպէս և ախտք մարդկոց աղանդեն զհոգի և զթեւն 'ի մեղս մարդկոյ․ և զի փոքր մի ակախնթին դառնացուցանէ զմեղր կարասս, այնպէս և փոքր մի համ մեղաց արտաքսէ զմեզ յարքայութէն ա͞յ ։

ԱՍԱՑ ծեր մի․ լաւութի և հեզութի և ոչ ինչ հագալ 'ի մտի՝ ծնանի զսրբութի․ զայս պահեսցես մինչև 'ի մահ և կեցցես ։ Մի՛ կերիցես հաց ընդ կնոջ և մի խօսեսցիս ընդ նմա, և մի լիցիս բնակակից և սիրելի մանկանց, և մի մտցես կամ նստցիս կամ ննջեսցես 'ի տան՝ ուր իցեն նոքա․ և մի թողացուսցես նայել 'ի մարմինն քո զաչս քո 'ի ժամու փոխելոյ զհանդերձս քո, այլ զգուշացո զաչս քո ։ Եւ եթէ հարկեսցիս յումեքէ, երկու բաժակ գինւոյ բաւական է քեզ ։ Եւ մի լուծցես զպատուիրանս հօրն քո վասն հարկի ումեք, և մի բնակեսցիս 'ի տեղին յայնմիկ յորում մեղիցես ա͞յ․ և մի մոռանար զպարտաւորութի քո, որպէս զի մի՛ անկցիս 'ի ձեռս թշնամեաց քոց ։ Եւ նեղեսցես զանձն 'ի սաղմոսերգութիս, և զամենայն չարակրութիս սիրեսցես, յայնժամ հնազանդեսցին քեզ ախտք․ և մի համարեսցես զանձն քո լաւ բնաւ ամենեքին յորժամ իցես 'ի բարի գործս, այլ համարեա զքեզ խոնարհ, զի մի որոշեսցի 'ի քէն բարին, և պարապեսցիս սովաւ ողբալ զմեղս քո ։ Եւ պահեսցես զլեզու քո 'ի սուտ խօսելոյ, զի նա մերժէ 'ի քէն զերկիւղն ա͞յ ։ Յայտնեսցես զխորհուրդ սրտի

1 Ակնարկէ շղթայաձևութիւնն յէջ 625 ։

քո հոգևոր հօրն քո ասէպ, որպէս զի հալածեսցի. այ̃ ծածկեսցէ զքեզ. և զի ջանասցես աշխատել 'ի ձեռագործ քո, և երկիւղն այ̃ բնակեսցէ 'ի քեզ:

ՊԱՏՄԷԻՆ մեզ և զայս ինչ՝ եթէ միայնակեաց ոմն հարեալ եղև յօձէ յանապատի, և գնաց 'ի քաղաքն յաղագս բժշկութեան. և ընկալաւ զնա 'ի տուն իւր կին ոմն սուրբ և երկիւղած յայ̃, զի բժշկեսցէ զնա: Եւ իբրև փոքր ինչ սթափեցաւ 'ի թունիցն օձին և սկսաւ ողջանալ, ընկեց 'ի սիրտ նորա զէն պոռնկութեան խորհուրդս գարշելիս և խնէնէշ առ կինն այն որ բժշկէրն զնա, մինչև ձեռն ես ձգեաց 'ի նա: Ասէ ցնա կինն. բժշկել ըզմարմինդ եկիր աստ, հայր. իսկ եթէ հոգւով մեռանիս, զի՞նչ շահեսցիս. 'ի թունիցն որ սպանանէր զմարմին՝ երկեար, և 'ի թունիցն որ սպանանէ զհոգի՝ ո՞չ երկնչիս. ո՞չ յիշես զաշխատութիւնն զոր կրեցեր յանապատին վասն կենաց քոց, և ո՞չ հայիս 'ի պատիւ կարգի քո, և զի՞ մոռացար զարտասուս և զհառաչանս քո որ առ աստուած միշտ: Զայսոսիկ և այլս այսպիսիս իբրև լուաւ եղբայրն յիմաստուն կնոջէն, պատկառեցաւ յոյժ և կամէր զաղտ փախչել, և զի ոչ զօրէր յամօթոյն 'ի վեր նայել: Եւ իբրև ծանեաւ զայն բարի կինն, մխիթարէր և ասէր ցնա. մի ամաչեր վասն այդորիկ և մի գնասցես, զի դեռ ես բժշկիլ պարտ է քեզ. զի ոչ էր այդ խորհուրդ՝ գործ սուրբ մտաց քոց, այլ հնարք թշնամւոյն էր և պատրանք նորա: Եւ բժշկեալ զնա արձակեաց խաղաղութեամբ և սրբութեամբ և պիտոյիւք 'ի սենեակս իւր: Վասն այսորիկ արի և պատրաստ պարտիմք լինել յամենայն ժամ. քանզի տես զթուլացեալն, զի ոչ ինչ համարեալ էր առաջի նորա կարգն զոր ունէր. իսկ զգաստն ոչ լինի պատրեալ, այլ և զայլսն փրկէ յեկեալ հասեալ փորձանաց սատանայի:

ՕՒԵՐՈՑ ուսմամբ մեծի էին աշակերտք երկոտասան, և պատահմամբ դիւական փորձութեանց 'ի նոցանէ մինն անկաւ 'ի մեղս առ կին մի. և զի մերձ 'ի վանս նոցա էր գիւղն և համապազ գնայր անդ զինչ գիշերայինն աղօթիցն կատարման, անդ անկանէր և դառնայր անդրէն 'ի խուց իւր նախ քան զարթուցանելն, զի վաղագոյն աղօթէին: Որք ծանեան եղբարքն զայն, և ծանեաւ և հայրն, այլ պահէր զեղբայրն յայլոցն և ոչ յանդիմա-

նէր. բազում անգամ յարեան 'ի վերայ նորա և կառե-
ցան ընդ հայրն վասն նորա, այլ հայրն քաղցրութեամբ շի-
ջուցանէր զնոսա և հրահանգեալ ծածկէր զպարծն.
Պնդեաց եղբայրն ըստ սովորութեան և յամեաց անդ. և եր-
կեալ 'ի լուսանալոյ փութայր, և 'ի փութոյն եթող ըղ-
տանողալ իւր և արկ յուս զմուշտակ կնոջն և գնաց 'ի սե-
նեակ իւր. Իսկ եռես զնա ծերն զի գայր, և էր յուս
նորա օդ կնոջն, յարեաւ և գնաց 'ի սենեակ եղբօրն,
և եղբայրն եդ 'ի բացի զայն 'ի տան կախեալ յորմն.
այլ ծերն լռեաց և ասէ ցեղբայրն. ո՞ւր էիր, որդեակ.
Իսկ նա խաբեալ էր սուտ և ասէր. անդ ուրեմն էի. Ա-
սէ ցնա ծերն. և ո՞ւմ է այս օդ կնոջական որ կախեալ
կայ 'ի մարմնի քո. Իսկ եղբայրն ծանեաւ եթէ կնոջ է, անկաւ
առ ոտս նորա և ասէ. թող ինձ, հայր, և յայսմհետէ
այլ ոչ առնեմ զայն գործ. Իսկ ծերն ասէ. զգոյշ լեր
անձին քում յայսմհետէ, զի զինչ չար եղև քեզ 'ի
պղծութենէն յայնմանէ, այլ ամօթ և նախատինս 'ի մարդ-
կանէ աստ, իսկ անդ հուրն անշէջ և խաւարն արտա-
քին և որդն անքուն. մի, որդեակ, մի յայսմհետէ մի
թաւալեսցիս 'ի տիղմն յայն, և մի ամօթ առներ զծե-
րութիւն իմ. Այս այնուհետև կամօքն Այ դադարեաց
եղբայրն այն 'ի մեղաց և եղև ձգնող մեծ. Հարցին եղ-
բարքն ցծերն եթէ ասասցես մեզ՝ եթէ առ ինչ եր-
կայնամտեցեր այնչափ յառ եղբայրն այն. Ասէ ցնոսա
ծերն. տեսանէի զդևն զի կապեալ զձախու ձեռանէ նո-
րա ձգէր յաշխարհ, իսկ ես ունէի զաջու ձեռանէ նորա
և ձգէի յիս, վասն այնորիկ ոչ յանդիմանէի, զի մի
գնասցէ յաշխարհ. իսկ մինչ համբերեաց Տր, կապեալ իմ
այժմ զերկոսեան ձեռացն ունիմ զդա 'ի կեանս յաւիտե-
նից. Նարուաք է, որդեակք. երկայնամտել և աղօթել
վասն եղբօրն մինչ 'ի փորձութեան իցէ, և ջերմագին ա-
ղօթել առ Տր, և նա դարձուսցէ զմիտս նորա գթու-
թեամբ իւրով.

ԵՊԻՍԿՈՊՈՍ ոմն էր 'ի քաղաքի ուրեմն և անկաւ 'ի
հիւանդութիւն մեծ. և այնչափ ծանրացաւ ախտ նորա,
մինչև բժշկաց 'ի բաց թողեալ զնա, զի եհատ զյոյս կե-
նաց. Իսկ լուաւ զայն սարկաւագուհի մայր վանիցն,
եթէ եղաւ 'ի մահ եպիսկոպոսն և թողին բժիշկքն
զնա, առեալ ընդ ինքեան երկուս քորս՝ գնաց 'ի տեսանել

զէլս նորա ։ Իբրեւ մտեալ 'ի տունն նստաւ մայր վանիցն 'ի մնացից կողմանն եւ խօսէր ընդ նմա, եւ քողքն նորա-տէլին յատիցն․ իսկ մի 'ի քերցն տարեալ զձեռն մերձեցոյց յատ եպիսկոպոսին տեսանել թէ որպէս իցէ, տառուցեալ է թերեւս ։ Իսկ 'ի մերձենալ ձեռինն յոտսն՝ էառ պատերազմ եպիսկոպոսն յանձն իւր ։ Այլ իբրեւ յարեաւ գնաց սարկաւագուհին 'ի տեղի իւր, աղաչեաց զնա եպիսկոպոսն եւ ասէ․ ոչ զոք ունիմ զի սպասաւորեսցէ 'ի ժամու տկարութեան իմոյ․ աղաչեմ, արասցես ինձ եւ թողցես աստ զքոյրս զայս ծառայել զիս աւուրս ինչ ։ Իսկ նա չար ինչ ոչ իմացաւ 'ի միտ, եւ եթող անդ զքոյրն եւ գնաց 'ի վանս իւր ։ Իսկ եպիսկոպոսն զօրացաւ ; եւ աղջկանն չարին բորբոքեցաւ 'ի մէջս սիրտ նորա եւ ասաց ցքոյրն․ արասցես ինձ կերակուր ջերմ զի կերայց ։ Այլ նա արար նմա, եւ եկեր եւ էարբ, եւ զկնի ուտելոյն ասէ․ եկցես յանկողին իմ, եւ ել, եւ անկաւ ընդ նմա․ եւ իբրեւ կատարեաց զմեղս, առժամայն յղացաւ ։ Իսկ սպասաւորքն եկեղեցւոյն իբրեւ տեսին զկինն յղացեալ, կալեալ զնա ասէին․ ասա մեզ, ո՞ յղացոյց զքեզ ։ Այլ նա ոչ կամեցաւ ասել, այլ լռեաց ։ Ասէ ցնոսա եպիսկոպոսն․ չկայ ինչ ձեր եւ դորա, թոյլ տուք գնալ դորա, ես գործեցի զմեղս զայդ ։ Այլ իբրեւ ողջացաւ 'ի ցաւոց անտի, յարեաւ եւ մտեալ յեկեղեցին եդ զզգեստ իւր 'ի վերայ սեղանոյն սրբոյ, եւ առեալ 'ի ձեռին ցուպ ել 'ի քաղաքէն փութով ինքն միայն՝ եւ գնաց 'ի հեռագոյն վանս յանապատ ուր ոչ ոք ճանաչէր զնա ։ Իսկ առաջնորդ վանիցն յորում դիմեալ գնայր՝ հոգեւոր էր, եւ իմացաւ եթէ եպիսկոպոս ոմն գնայ անդ, պատուէր ետ դռնապանին եւ ասէ․ եպիսկոպոս մինչ գայցէ, ազդ արա ինձ զի ելից ընդ առաջ նորա ։ Այլ մնայր դռնապանն, զի կարծէր եթէ երիվարօք եւ ամբոխիւ եւ փառօք գալոց էր, զի ոչ գիտէր զգործն զայն ։ Իսկ իբրեւ եկն եպիսկոպոսն 'ի դուռն վանիցն մերկ եւ բոկ եւ միայն, դռնապանն ոչ ծանեաւ եւ ոչ ազդեաց․ այլ հայրն իմացեալ զգալուստ նորա՝ ել ընդ առաջ նորա, եւ ողջունեաց զնա գթով եւ համբուրեաց զնա եւ ասէ․ բարւոք եկիր, տէր եպիսկոպոս ։ Իսկ նա սքանչացաւ եւ ծանրամտեալ ամաչեաց, զի ծանեաւ եղեւ, եւ ասէ․ որ զանուն իմ գիտէ, նա եւ զգործն իմ գիտէ ։ Այլ սկսաւ

յանօթութն փախչել, զի երթիցէ յայլ վանս: Ասէ ցնա ծերն. ուր և գնասցես դու, եկից և ես ընդ քեզ: Եւ աղաչեաց զնա և եած 'ի վանսն և զաւեաց ընդ եղբարսն բազում աշխատութբ: Իսկ նա ապաշխարեաց կատարելապէս և ճշմարտութբ և ջերմ արտասուօք, և անդ վախճանեալ գնաց սուրբ առաջի այ, մինչև բազում նշանս եղև և բժշկութի յաւուր մահուան նորա շնորհօքն Քի: Այսպէս է յոյս ապաշխարութե. զի ոչ միայն թողութե հանդիպին, այլ և շնորհաց և փառաց եւս:

ԾԵՐ ոմն ունէր սպասաւոր 'ի գիւղ ուրեմն, և յամեաց երբեմն նա գնալ առ ծերն այնչափ՝ մինչև բնաւ պակասեաց կերակուրն և ձեռագործ ծերոյն. և նեղեալ ծերն 'ի բազում ժամս սովու և դատարկութեան իւրում, և ասէ ցաշակերտ իւր. կամիս գնալ 'ի գեօղն: Եւ նա ասէ. զոր կամիս դու, արարից զայն. զի երկնչէր եղբայրն երթալ 'ի գիւղն 'ի պատերազմէ մարմնոյն. այլ զի մի ևս անհնազանդ լիցի ծերոյն՝ յանձն էառ գնալ: Եւ ծերն ասէ. գնասցես, որդեակ, և յուսամ յած հարցն մերոց պահել զքեզ 'ի փորձութէ: Եւ արարեալ աղօթս արձակեաց զնա գնալ 'ի գիւղն: Եւ իբրև եկն 'ի գիւղն, եգիտ զի սպասաւորն իւրեանց ամենայն ընտանեօք իւրովք գնացեալ էր 'ի տօն սրբոց հեռի 'ի գեղջէն. և դուստր նորա միայն էր 'ի տանն, և իբրև լուաւ աղջիկն զբախել դրանն՝ եբաց զդուռն և էառ 'ի ներքս զեղբայրն, և փակեալ զդուռն սկսաւ վանել ընդ նմա: Իսկ նա իբրև ետես զինքն բռնադատեալ 'ի պղծութի և 'ի խորհրդոց իւրոց նեղեալ՝ յոգւոց եհան դառնապէս և ասէ առ այ. տէր, աղօթիւք հօր իմոյ կեցո զիս 'ի ժամուս յայսմանէ: Եւ իբրև զայս ասաց, նաժամայն գտաւ յաւետն պետոյն 'ի ճանապարհի գնալով 'ի վանս իւր: Եւ նա այսպէս ազատեալ եղև օգնականութբն այ և աղօթիւք ծերոյն այն սրբոյ, որ վասն հնազանդութե եղբօրն աղօթեաց փրկել զնա: Այսպէս իցէ զօրաւոր հնազանդութիւնն:

ԱՍԱՑ հայրն Պիմէն. գրեալ է՝ զոր ինչ տեսցեն աչք քո, զայն վկայեսցես. այլ և ասեմ՝ թէ և աչօք իմովք տեսցեմ և ձեռօք կալցեմ, մի վկայեմ և զայն: Քանզի եղբայր ոմն այսպէս եղև 'ի դիւաց այսու տեսակաւ. զի ետես զեղբայր ոմն այլ՝ որ մեղանչէր ընդ կին ոմն, և

պատերազմէր 'ի խորհրդոցն իբրև թէ համբերեսցէ և մի յանդիմանեսցէ զնա, այլ ոչ կարաց իսպառ համբերել. և գնացեալ եհար ստիւքն զնոսա, կարծէր թէ նոքա են առ միմեանս, և ասէ. դադարեցէք յայսմհետէ, որքան ժամանակս առնէք զայդ մեղսդ. և ահա գըտան նոքա քուրձս լի ցորենով: Արդ զայն վասն այնորիկ ասացի՝ որ և թէ աչօք ինչ տեսանիցէք, մի յանդիմանէք զեղբայրքն ձեր:

ՀԱՐՑԻՆ ծերոն վասն խաբէութեանց գիշերայնոց, որք լինին յերազի հոսմունք ընդ տես կանանց և կամ առանձինն: Պատասխանի ետ ծերն. մի ինչ ընաւ համարեսցես զայն գործ. այլ այսպէս համարեսցիս զնոսա, որչափ և համարեսցես զայլ նուաթսն որք հեղցին վասն տկարութեան և կարեաց մարմնոյ: Նա զոր օրինակ եթէ շրջեսցիս 'ի հրապարակս և հաւաքեսցես զմորիկս մսոյ 'ի կաթսայի և ոչ կերիցես անտի, բայց հոտոտեսցաս միայն, այսպէս և ոչ անրջոյ հեղմունք կարեն պղծել զքեզ, յորժամ հեռի ես խորհրդով 'ի նմանէ 'ի գործոյ նորա. ապա թէ ոչ՝ կեալ ոչ ոք կարող իցէ: Այլ եթէ տեսանէ զքեզ թշնամին երկուցեալ 'ի յայսմանէ, առաւել եւս զօրանայ 'ի վերայ քո: Այլ դու զգոյշ լեր, զի մի 'ի յարթնութեան եւս շաղախեսցիս ընդ աղտակիր խորհուրդս մտօք:

ՀԱՐՑԻՆ ոմանք զհայրսն Սկիտոյ վասն պոռնկութեան և ասեն. եթէ տեսցուք դէմս գեղեցիկս, զարմանալ պարտ է վասն նորա, եթէ բարկանալ: Պատասխանի ետուն ծերքն և ասեն. զարմանալ անչափ և բարկանալ՞ երկոքեին եւս 'ի տափմանէ լինին. և զի նման է այդ գործ սեղանոյ որ լի իցէ ամենայն բարութեամբ, և թէ ոք ունիցի կամք և ցանկայ ճաշակել 'ի նմանէ, բայց եթէ ոչ ձգեսցէ զձեռն իւր 'ի նա և առցէ 'ի նմանէ և կերիցէ՝ սովեալ մնասցէ, այսպէս իցեն և ցանկութիւնքն, եթէ զոր ոչ գործեսցէ մարդ մեղս գործով՝ ոչ համարեսցի նմա մեղս:

ՀՐԱԺԱՐԵԱԼ ոմն յաշխարհէ լինել կրօնաւոր, և մինչդեռ ելանէր յանապատ՝ ետես 'ի բացեայ սիւն մի կրօնաւորի ծերոյ և ասէ 'ի միտ. գնացից 'ի սիւնն յայն, և ծերոյ որ իցէ անդ՝ աշակերտեցից նմա մինչև ցօր մահուան իմոյ: Նա եկեալ 'ի յաշտարակն բախեաց ըղ-

դուռն, և ել առ նա ծեր ոմն միայնակեաց և ասէ. զինչ պիտոյ է քեզ, եղբայր: Ասէ եղբայրն. յաղօթս եկեալ եմ, հայր: Իբրև լուաւ ծերն ընկալաւ զնա և հանգոյց բարւոք: Իսկ ապա ասէ. ունիս դու ուրեք գործ ինչ, եղբայր: Ասէ եղբայրն. ոչ, հայր, այլ կամիմ բնակել աստ: Իսկ ծերն թոյլ ոչ ետ կեալ անդ և կամ բնակել 'ի միասին. քանզի ծերն այն անկեալ էր 'ի պոռնկութի և դեռ ևս ունէր անդ թաքուցեալ զկինն զայն, վասն այն ասէր ցնա. եթէ կամիս շահել զանձն քո, գնա դու 'ի վանս կեալ, զի ես աստ կին ունիմ ընդ իս և մեղան-չեմ ընդ նմա: Ասէ ցնա եղբայրն. եթէ քոյր իցէ քո և եթէ կին՝ ես ոչ գիտեմ, այլ եկեալ եմ զի ապաստա-նորիցեմ քեզ մինչև ցմահ: Իսկ ծերն իբրև ետես զջերմ սէր նորա, թոյլ ետ կեալ անդ: Իսկ իբրև լցաւ ամ մի ապաստանութե նորա, ասէ ծերն ցկինն. ոչ բաւական է մեզ բեռն ծանր մեղաց մերոց, այլ և զհոգի եղբօրս այսորիկ տուժեալ խնդրեն 'ի մէնջ. եկ գնասցուք աս-տի և թողցուք զսենեակս զայս եղբօրս այսորիկ: Իսկ առեալ զոր ինչ կարող էին բառնալ և ելին գնալ և ա-սեն ցեղբայրն. մեք գնամք յաղօթս և քեզ բարւոք յան-ձին սենեակ մեր: Իսկ իբրև մեկնեալ հեռացան նոքա, ծանեաւ եղբայրն զխորհուրդս նոցա զի այլ ոչ ևս դառնա-լոց էին, և ընթացեալ զկնի եհաս նոցա: Իսկ նոքա տե-սեալ զնա շփոթեցան և ասեն. մինչև ցե՞րբ, եղբայր, դա-տես զմեզ. ահա սենեակս մեր քեզ լիցի, նստեալ կեց-ցես 'ի նմա: Պատասխանի ետ եղբայրն. ես ոչ եմ եկեալ վասն սենեկի ձերոյ, այլ վասն ձեր, զի ապաստանեցայց ձեզ. և արդ ուր և գնայք, եկից և ես ընդ ձեզ: Զար-մացան նոքա ընդ իմաստութի միամտութե և հնազան-դութե եղբօրն. յայնժամ երկեան յայ և ամաչեցին յաշակերտէն: Իսկ վասն այսորիկ խորհուրդ բարի և ածային խորհեցան մեկնել 'ի մեղացն, և դարձան 'ի սենեակս իւրեանց և սկսան ապաշխարել. և կինն մը-տեալ 'ի վանս կանանց բնակեցաւ անդր և առաքինա-ցաւ յոյժ, և ծերն համբերութբ ընդ ժուժկալ եղբօրն ապաշխարեաց. և կեցին երկոքեանն 'ի ժուժկալութե բարի եղբօրն այն:

Էր ոմն ծեր 'ի Սկիտէ՝ որոյ անուն Դանիէլ, և էր նորա աշակերտ, և բնակէր առ աշակերտն այն այլ ոմն

եղբայրն՝ որոյ անուն էր Սերգի։ Այլ զկնի փոքր ինչ ժամանակաց Սերգի փոխեցաւ առ տէր. իսկ զկնի մահուն Սերգեայ եւս ծերն համարձակութեամբ աշակերտին իւրոյ կեալ առ իւր, քանզի սիրէր զնա։ Յաւուր միում առեալ ծերն ընդ իւր զաշակերտն իւր և եկն յԱղեքսանդրիա, զի սովորութիւն էր աստիճանորդացն Սկիտոյ եկանել առ պապայն 'ի տօն զատկին. և հասին 'ի քաղաքն 'ի մեռելոտան ժամու աւուրն։ Այլ իբրև գնացին յուղին, եսեն անդ Դանիէլ զեղբայր ոմն մերկ, որ միայն փերթ ինչ քրձոյ եդեալ ունէր 'ի վերայ ամօթոյ իւրոյ, և եղբայրն այն ցուցանէր զինքն իբր թէ յիմար իցէ։ Այլ էին այլ ևս յիմարք ընդ նմա, և առաջի գնայր նոցա եղբայրն այն իբրև զմոլի, և խլէր ինչ 'ի կրպակէ վաճառացն և տայր այլոց յիմարացն. իսկ կոչէր նմա անուն Մարկոս հիպպացի, և էր հիպպէն այն թագաւորական ձիրնթաց։ Այլ անդ կայր Մարկոս յիմարն և անդ ննջէր 'ի գիշերի, և ծախէր յաւուրն դրամս հարիւր, և ննջէր յաթոռի նստեալ. իսկ 'ի հարիւր դրամիցն գնէր զպէտս իւր դրամս տասն, և զայլն տայր յիմար ընկերաց իւրոց. և քաղաքն ամենայն Աղեքսանդրիա ճանաչէր զՄարկոս յաղագս մոլի յիմարութեան նորա։ Ասէ ծերն ցաշակերտ իւր. գնացեալ տեսցես եթէ ուր բնակէ Մարկոս յիմարն։ Իսկ նորա գնացեալ եհարց և իմացաւ, և եկեալ ասէ ցծերն՝ եթէ յիմարն այն 'ի ձիրնթացս և 'ի բացեայ բնակի։ Այլ մտեալ ծերն առ պապն ազդաւ առ նմա։ Իսկ յերկրորդումն աւուրն իբրև ելանէր ծերն անտի, տնտեսութեամբն ա՞յ դիպեցաւ նմա Սալոմ Մարկոս 'ի մեծ դուռն, և փութացեալ ծերն կալաւ զնա և սկսաւ ասել մեծաձայն. արք աղեքսանդրացիք, օգնեցէք ինձ։ Իսկ յիմարն խաղայր ընդ ծերոյն։ Այլ ժողովեցաւ անդ ամենայն քաղաքն. իսկ աշակերտ ծերոյն կայր 'ի հեռաստանէ և նայէր ահիւ, իսկ այլքն ասէին. մի՛ գուցէ անարգեսցէ զքեզ, հայր, զի յիմար է և մոլի։ Այլ նա ասէ. յիմար և մոլի մեք եմք, որդեակք. այլ ես 'ի քաղաքս յայս ոչ գտի այլ մարդ քան զսա։ Յայնժամ եկին և քահանայքն եկեղեցւոյն, որք ճանաչէին զծերն, և ասէին. միթէ վնասեա՞ց քեզ ինչ, հայր, յիմարդ այդ։ Ասէ ցնոսա ծերն. բերէք զդա զկնի իմ մինչև ցպապն, զի ոչ գոյ 'ի քաղաքիս յայս այսօր

գուամ, և եւ առ նա ծեր ոմն միայնակեաց և ասէ. զինչ պիտոյ է քեզ, եղբայր: Ասէ եղբայրն. յաղօթս եկեալ եմ, հայր: Իբրև լուաւ ծերն ընկալաւ զնա և հանգոյց բարւոք: Եւ նա ասէ. ունիս դու ուրեք գործ ինչ, եղբայր: Ասէ եղբայրն. ոչ, հայր, այլ կամիմ բնակել աստ: Եւ ծերն թոյլ ոչ ետ կեալ անդ և կամ բնակել 'ի միասին. քանզի ծերն այն անկեալ էր 'ի պատանկութի և դեռ ևս ունէր անդ թաքուցեալ զկինն զայն, վասն այն ասէր ցնա. եթէ կամիս շահել զանձն քո, գնա դու 'ի վանս կեալ, զի ես աստ կին ունիմ ընդ իս և մեղանչեմ ընդ նմա: Ասէ ցնա եղբայրն. եթէ քոյր իցէ քո և եթէ կին' ես ոչ գիտեմ, այլ եկեալ եմ զի սպասաւորիցեմ քեզ մինչև ցմահ: Իսկ ծերն իբրև ետես զջերմ սէր նորա, թոյլ ետ կեալ անդ: Եւ իբրև լցաւ ամ մի սպասաւորութե նորա, ասէ ծերն ցկինն. ոչ բաւական է մեզ բեռն ծանր մեղաց մերոց, այլ և զհոգի եղբօրս այսորիկ տուժեալ խնդրեն 'ի մէնջ. եկ գնասցուք աստի և թողցուք զսենեակս զայս եղբօրս այսորիկ: Եւ առեալ զոր ինչ կարող էին բառնալ և ելին գնալ և ասեն ցեղբայրն. մեք գնամք յաղօթս և քեզ բարւոք յանձին սենեակ մեր: Իսկ իբրև մեկնեալ հեռացան նոքա, ծանեաւ եղբայրն զխորհուրդս նոցա զի այլ ոչ ևս դառնալոց էին, և ընթացեալ զկնի եհաս նոցա: Եւ նոքա տեսեալ զնա շփոթեցան և ասեն. մինչև ցե՞րբ, եղբայր, դատես զմեզ. ահա սենեակս մեր քեզ լիցի, նստեալ կեցցես 'ի նմա: Պատասխանի ետ եղբայրն. ես ոչ եմ եկեալ վասն սենեկի ձերոյ, այլ վասն ձեր, զի սպասաւորեցից ձեզ. և արդ ուր և գնայք, եկից և ես ընդ ձեզ: Զարմացան նոքա ընդ իմաստութի միամտութե և հնազանդութե եղբօրն. յայնժամ երկեան յԱյ և ամաչեցին յաշակերտէն: Եւ վասն այսորիկ խորհուրդ բարի և ա̄ծային խորհեցան մեկնել 'ի մեղացն, և դարձան 'ի սենեակս իւրեանց և սկսան ապաշխարել. և կինն մըտեալ 'ի վանս կանանց բնակեցաւ անդր և առաքինացաւ յոյժ, և ծերն համբերութբ ընդ ժուժկալ եղբօրն ապաշխարեաց. և կեցին երկոքեանն 'ի ժուժկալութե բարի եղբօրն այն:

Էր ոմն ծեր 'ի Սկիտէ' որոյ անուն Պամիբել, և էր նորա աշակերտ, և բնակէր առ աշակերտն այն այլ ոմն

եղբայր՝ որոյ անուն էր Սերգի։ Այլ զկնի փոքր ինչ ժամուց Սերգի փոխեցաւ առ տէր․ իսկ զկնի մահուն Սերգեայ եւս ծերն համարձակութեամբ աշակերտին իւրոյ կեցալ առ իւր, քանզի սիրէր զնա։ Յաւուր միոջ առեալ ծերն ընդ իւր զաշակերտն իւր և եկ յԱղեքսանդրիա, զի սովորութիւն էր առաքինոցացն Եգիպտոյ ելանել առ պապայն 'ի տօն զատկին․ և հասին 'ի քաղաքն 'ի մեծապատուն ժամու աւուրն։ Այլ իբրև գնացին յաւղին, եւտես անդ Պաւնիէլ զեղբայր մի մերկ, որ միայն փերթ ինչ քրձոյ եդեալ ունէր 'ի վերայ ամօթոյ իւրոյ, և եղբայրն այն ցուցանէր զինքն իբր թէ յիմար իցէ։ Այլ էին այլ ևս յիմարք ընդ նմա, և առաջի գնային նոցա եղբայրքն այն իբրև զմոլի, և խօսէր ինչ 'ի կրպակէ վաճառացն և տայր այլոց յիմարացն․ իսկ կոչէր նմա անուն Մարկոս խպպացի, և էր խպպէն այն թագաւորական ձիթենեաց։ Այլ անդ կայր Մարկոս յիմարն և անդ ննջէր 'ի գիշերի, և ծախէր յաւուրն դրամս հարիւր, և ննջէր յաթոռի նստեալ․ իսկ 'ի հարիւր դրամիցն գնէր զպէտս իւր դրամս տասն, և զայլն տայր յիմար ընկերաց իւրոց․ և քաղաքն ամենայն Աղեքսանդրիա ճանաչէր զՄարկոս յաղագս մոլի յիմարութեան նորա։ Ապա ծերն ցաշակերտն իւր․ գնացեալ տեսցես եթէ ուր բնակէ Մարկոս յիմարն։ Իսկ նորա գնացեալ եհարց և իմացաւ, և եկեալ ասէ ցծերն՝ եթէ յիմարն այն 'ի ձիթենեացս և 'ի բացեայ բնակի։ Այլ մնեալ ծերն առ պապն ազատ առ նմա։ Իսկ յերկրորդումն աւուրն իբրև եկանէր ծերն անտի, տնտեսութիւն ոչ դիպեցաւ նմա Սալոն Մարկոս 'ի մեծ դուռն, և փութացեալ ծերն կալաւ զնա և սկսաւ ասել մեծաձայն․ արք աղեքսանդրացիք, օգնեցէք ինձ։ Իսկ յիմարն խաղայր ընդ ծերոյն։ Այլ ժողովեցաւ անդ ամենայն քաղաքն․ իսկ աշակերտ ծերոյն կայր 'ի հեռաստանէ և նայէր ահիւ, իսկ այլքն ասէին․ մի՛ զուցէ անարգեսցէ զքեզ, հայր, զի յիմար է և մոլի։ Այլ նա ասէ․ յիմար և մոլի մեք եմք, որդեակք․ այլ ես 'ի քաղաքս յայս ոչ գտի այլ մարդ քան զսա։ Յայնժամ եկին և քահանայքն եկեղեցւոյն, որք ճանաչէին զծերն, և ասէին․ միթէ զինասեաց քեզ ինչ, հայր, յիմարդ այդ։ Ասէ ցնոսա ծերն․ բերէք դդա զկնի իմ մինչև ցպապն, զի ոչ գոյ 'ի քաղաքիս յայս այսօր

այսպիսի անօթ սուրբ։ Իսկ պատրաստ ծանեաւ, զի յետ յայտնեցաւ այն ծերոյն. և անկաւ առ ոտս յիմարին, և երդմնեցուցանէր և աղաչէր և ասէր. յայտնեա մեզ զքեզ և զգործ քո։ Իսկ նա խոնարհեալ յաղաչանս նորա, և եկեալ 'ի միտս իւր ասէ ցնոսա. ես կրօնաւոր էի և բռնադատէի 'ի դիւէն պոռնկութե զամս վեշտասան, և եկեալ 'ի միտս իմ ասեմ. Եղկելի Մարկոս, ամս վեշտասան ծառայես թշնամւոյն. արդ եկ այժմ և սպասաւորեա այնպէս Թագաւորին քո Քի։ Եւ գնացի ես 'ի վանսն Պեմպտոյի, և կացի ես անդ ամս ութ 'ի վիրապին խոր, և զկնի ութ ամաց ասացի ցանձն իմ. Մարկոս աղքատ, մտցես 'ի քաղաքն և եղիցես դու յիմար այլ ևս ութ ամ. և ահա այսօր կատարեցաւ ութ ամ յիմարութեան իմոյ։ Եւ իբրև լուան զայս 'ի նմանէ, ողբացին ամենեքեան 'ի վերայ բանիցս այսոցիկ։ Յետ բանիցս պատմութե իւրոյ ննջեաց 'ի մահ յայնմ աւուր Մարկոս մերձ առ ծերոյն 'ի պատրիարգանոցն։ Եւ առաւօտին իբրև ետեսին զի ննջեալ էր Մարկոս և գնիւր, ասաց ծերն զայս ցպապն, և պապն պատմեաց զայս ստակլին, և ասաց տուեն դադարեցուցանել զկանչառն, և ժողովեցաւ անդ ամենայն քաղաքն։ Եւ առաքեաց ծերն զաշակերտ իւր 'ի Սկիտէ և ասէ. ժողովեալ զամենայն եղբարսն պատմեցէք զայս, զի գայցեն աստ ամենեքեան և օրհնեսցին 'ի սմանէ։ Եւ ել ամենայն Սկիտէ և զգեցեալ զգեստ սպիտակ, ունելով 'ի ձեռին ոստս արմաւենեաց։ Նոյնպէս և Ենետասցիք և օկնեկացն և լերինն Նխարոյ վանիցն և յամենայն լաւրայիցն Աղեքսանդրիոյ. և ժողովեցան այնչափ բազմութիւնք կրօնաւորաց՝ մինչ ոչ ետուն թոյլ թաղել զմարմին նորա զաւուրս հինգ։ Նոյնպէս և քաղաքն Աղեքսանդրիա ժողովեալ ոստովք արմաւենեաց, և ոռոգէին արտասուօք զերեսս երկրի։ Եւ այսպէս հազիւն թաղել զնշխարս երանելւոյն Մարկոսի Սալոսին, և փառաւորէին զԱծ՝ որ տայ շնորհս և ժուժկալութիւն ամենայնի որ ընթանան առ նա։

## Ջ

# ՎԱՍՆ ԱՆԸՆՉՈՒԹԵԱՆ

ԵՂԲԱՅՐ¹ ոմն եԹող զաշխարհ և ետ զինչս իւր աղ-
քատաց, և Թողեալ իւր յընչիցն սակաւ՝ գնաց առ աբ-
բայ Անտոնիոս: Զայս իմացեալ ծերոյն ասէ ցնա. կա-
միս լինել միայնակեաց, գնա յայս անուն գեօղ և գնեա
միս և դիր մերկ 'ի վերայ մարմնոյ քո և եկ այսր: Եւ
արարեալ եղբօրն՝ գազանք և Թռչունք խոցոտէին ըզ-
մարմին նորա 'ի գնալն առ ծերն. և եկեալ եցոյց զմար-
մինն խոցոտեալ: Ասէ ցնա սուրբն Անտոնիոս. որք Թո-
ղին զաշխարհս և կամին ունել ինչս, այսպէս խոցոտին
'ի դիւաց մարտից:

ԱՍԷԻՆ² վասն հօրն Թէոդորի փերմացւոյ՝ եԹէ ստա-
ցաւ 'ի մանկուԹեան իւրում երիս գիրս ազնիւս և ասէ
ցհայրն Մակար. զի՞նչ արարից, տէր, արգելի՞ց զգիրսն
առ իս վասն օգտի իմոյ յորժամ Թէ կարդամ զնա, և
եԹէ ոք կամեսցի՝ տաց նմա զի օգտեսցի, եԹէ վաճա-
ռեցից զնոսա և տաց աղքատաց: Ասէ ցնա հայրն Մա-
կար. երկոքին իրքդ ազնիւ են, այլ մեծագոյն է ան-

¹ ՀՐԱԺԱՐԵԱԼ ոմն 'ի յաշխարհէ եղբայր, և զինչս իւր բաժանեալ
աղքատաց և կալեալ ինչ 'ի նմանէ վասն իւրն պիտոյից. և յարուցեալ
գնաց առ հայրն Անտոն: Եւ իբրև գիտաց ծերն զայն, ասէ ցնա. ե-
Թէ կամիս միայնակեաց լինել գնա՛, գնա յայս անուն գիւղ և գնեա-
ցես միս և պատատեա զայն ընդ մարմնոյ քո 'ի մերկուց և եկ այսր:
Եւ զի երԹեալ գնեաց եղբայրն և արար այնպէս: Եւ մինչդեռ եկանէր
'ի գեղջէն, յարեան 'ի վերայ նորա շունք գեօղին և հերձին ընդ մսոյն
զջիլս ոտից նորա: Եւ իբրև եկն առ ծերն, ասէ ցեղբայրն. արարե՞ր
զոր ինչ ասացի քեզ: Եւ նա ասէ. արարի, հայր. և եցոյց նմա զհեր-
ձեալ անդամս իւր: Ասէ ցնա հայրն. ամենայն ոք որ ելանէ յերկրէ
և կամի ունել զինչս նորա, այսպէս հերձեսցին ոտիք նոցա 'ի դիւաց
և յախտից մարմնականաց:

² Թէոդորէ հայրն փերմեայցի ստացաւ գիրս երիս մեծամեծս, և
երԹեալ առ հայրն Մակար և ասէ ցնա. ունիմ ես գիրս երիս և յըն-
Թեռնլոյ զնոսա շահիմ ես և այլք բազումք որք ընԹեռնուն. արդ ա-
սա ինձ՝ պահեմ զնոսա յոգուտս օգտի ինձ և բազմաց, եԹէ վաճա-
ռեմ և տամ զգինս նոցա աղքատաց: Ասէ ցնա ծերն. բարւոք է բան
գրոցն, այլ առաւել բարի են գործք, և զի անընչուԹեան լաւ քան զա-

ստացուածութիւն։ Իսկ նորա լուեալ զայս, զաւետարանն վաճառեաց և ետ աղքատաց։

ՀԱՐՑԵԱԼ[1] հօրն Մարկոսի ցհայրն Արսէն և ասացեալ՝ բարւոք է որ եթէ ոչ ոք ունիցի մխիթարութիւն 'ի խցի իւրում, վասն զի գիտեմ զոմն եղբայր զի էր նորա սակաւ մի բանջար և արմատաքի խլեաց 'ի բաց, ասէ ցնա հայրն Արսէն. աղէկ է, այլ է ըստ բնութեան մարդոյն. զի թէ ոչ ունի զօրութիւն յայսպիսի կարգի, դարձեալ այլ տնկէ։

ՄԵԾԱՏՈՒՆ[2] ոմն եկն 'ի հեռուստ և եբեր սաստիկ ոսկի 'ի Սկիւթ, և աղաչէր զերիցն զի բաշխեսցէ զայն եղբարցն. և շատ բռնադատեալ զնա՝ եդ զփիլոնիդն լի ոսկւով 'ի դուռն եկեղեցւոյն, և ասէր երիցն. եղբարք, եթէ պէտք ինչ ումեք իցեն՝ առցէ։ Եւ ոչ ոք մերձեցաւ յայն. ոմանք և հայեցան իսկ ոչ 'ի նա. իսկ ոմանք ասացին՝ երթ, Ած ընկալցի զպատարագդ քո, և տուր զայդ աղքատաց։ Եւ մեծապէս օգտեալ չոգաւ։

ԱՍԷ[3] հայրն Պամբէ՝ եթէ հիւանդացաւ երբեմն հայրն Արսէն 'ի Սկիւթ, և պէտք եղեն նմա իրս ինչ լումա միոյ լումայից. և վասն զի ոչ ուստեք կայր զի գնեսցէ, առ յումեմնէ սէր և ասէ. գոհանամ զքէն, տէր, զի արժանի արարեր զիս ընդունել սէր վասն անուան քում։

մնայն է։ Իբրև լուաւ զայս հայրն Թէոդորէ, գնաց վաճառեաց զնոսա և ետ աղքատաց զգինս նոցա։

1 Եհարց զհայրն Արսէնիոս հայրն Մարկոս և ասէ. բարւոք իցէ, հայր, զի ոչ ունիցի կրօնաւոր մխիթարութիւն ինչ 'ի սենեկի իւրում. զի տեսի ես եղբայր ոմն զի ունէր սակաւ բանջարս, և զայն ես խլեաց և ցնդեաց։ Ասէ ցնա Արսէնի. յոյժ բարի է այդ գործ, այլ 'ի վերայ համբերութեան մարդոյն է. զի թէ զայն առնիցէ և համբերել ոչ կարիցէ, նա այլ տնկիցէ ևս կրկին։

2 Եկն ոմն մեծատուն 'ի Սկիտէ, և եբեր ընդ ինքեան ոսկի բազում յոյժ, և աղաչէր զհայրն բաժանել զայն եղբարցն։ Ասէ ցնա ծերն. ոչ պիտոյ է այդ եղբարցն։ Եւ իբրև նեղեաց զնա յոյժ առնուլ զայն, արար այսպէս. էարկ զոսկին 'ի զամբիղն և եդ զնա 'ի պատուհան եկեղեցւոյն և ասէ քահանայն ցեղբարսն. եթէ ոք պէտս ունիցի ոսկւոյ, առցէ աստի։ Եւ ոչ ոք բնաւ մերձեցաւ և կամ նայեցաւ 'ի նա։ Ասէ քահանայն ցմարդն այն. ընկալաւ Ած զսէր և զհաւատ քո, առ զդա աստի և տարեալ տացես աղքատաց։ Եւ շահեցաւ այրն յոյժ, և տարեալ արար այնպէս։

3 Արսէնիոս հայրն հիւանդացաւ երբեմն 'ի Սկիտէ. և զի հարկ եղև նմա պէտս ինչ՝ և ոչ ունէր զի գնեսցէ, և ապա խնդրեաց յումեմնէ սէր ինչ։ Եւ նա ասէ. գոհանամ զքէն, հայր, զի խնդրեցեր յինէն սէր և կամեցար առնուլ։

[1]Ասէ՝ դարձեալ հայրն Դանիէլ՝ եթէ այլ երբեմն եկն մագիստրոսն առ հայրն Արսէն և եբեր նմա կտակ զորումն ազգականի նորա՝ թողեալ նմա ժառանգութիւն բազում յոյժ ։ Իսկ առեալ զկտակն կամէր պատառել ։ Անկեալ առաջի նորա մագիստրոսն և ասէր . աղաչեմ զքեզ, հայր, մի պատառեր զայդ, ապա թէ ոչ՝ գլուխ իմ կորուսի ։ Ասէ ցնա հայրն Արսէն . ես յառաջ քան զնա վախճանեցայ յաշխարհէս, և նա արդ վախճանեցաւ ։ Իսկ դարձոյց անդրէն զկտակն՝ ոչ ինչ ընդունելով յինքեան ։

[2]Էր՝ ոմն 'ի սրբոցն՝ որ անուանեալ կոչէր Փիլագրիոս և բնակեալ էր յԵրուսաղէմ, և գործով աշխատէր հանապազ, զի կարասցէ ունել զիւր հացիկն ։ Իսկ մինչդեռ 'ի վաճառափողոցին վաճառէր զձեռագործն իւր, ահա ընկէց ոմն քսակ՝ որ ունէր հազար դահեկան . և գտեալ զնա ծերոյն՝ եկաց 'ի նմին տեղւոջ ասելով՝ թէ որ կորեայն, այսրէն 'ի տեղիս գալոց է ։ Իսկ նա գայր լալով և արտասուելով ։ Իսկ տեսեալ զնա ծերոյն՝ առ զնա 'ի մի կողմն և ետ ցնա զքսակն ։ Իսկ ունէր զնա այրն՝ կամեցեալ տալ նմա մասն ինչ, և նա ոչ կամէր առնուլ ։ Իսկ սկսաւ այրն աղաղակել և ասել . եկայք տեսէք զինչ գործեաց այրս այ ։ Իսկ ծերոյն գաղտ փախուցեալ 'ի քաղաքէն, զի մի ծանիցեն զնա վասն իրացն առնելոյ և պատուիցեն զնա ։

1 Պատմէր մեզ հայրն Դանիէլ վասն հօրն Արսէնիոսի՝ եթէ եկն առ նա մագիստրոս ոմն և եբեր առ նա կտակագիր հռոմայեցւոյ ընտանեաց, որ ինչս անթիւս աւանդեալ և թողեալ էր նմա ։ Իսկ ծերն իբրև էառ զգիրն, փութացաւ պատառել զնա ։ Իսկ մագիստրոսն ասէ . աղաչեմ զքեզ, հայր, մի պատառեր զայդ, ապա թէ ոչ հատանի գլուխս իմ ։ Ասէ ցնա հայրն Արսէնի . ես յառաջագոյն մեռեալ եմ յաշխարհէ, և նա արդ եւս մեռաւ ։ Եւ յետոյ դարձոյց զինչս զայն և ոչ ինչ էառ 'ի նմանէ ։

2 Եղբայր ոմն անուն Փիլագրիոս բնակէր յանապատն Յորդանանու և կերակրէր ձեռագործիւ իւրով ։ Եւ յաւուր միում ել 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ վաճառել զձեռագործ իւր, և անկաւ ումեմն 'ի փողոց վաճառանոցին արկղ ինչ՝ յորում էր հազար դահեկան ։ Եւ եկեալ ծերն 'ի տեղին յայն և տեսեալ զնա՝ առեալ նստաւ 'ի տեղին, և մնայր գալոյ խնդրողի արկեղն կորուսանողի ։ Եւ ահա գայր այր մի և ձայնիւ մեծաւ ողբայր և կոծէր և հարցանէր ։ Արդ առեալ զնա ծերոյն առանձին՝ ետ զայն 'ի ձեռս նորա ։ Եւ կամեցաւ տալ մասն ինչ ծերոյն յինչիցն, և ծերն ոչ ինչ էառ ։ Եւ սկսաւ այրն ասել մեծաձայն . եկայք և տեսէք մարդ այ՝ թէ զինչ արար ։ Իսկ ծերն փախեաւ և ել 'ի քաղաքէն ։

եղև նմա մեռանել և ոչ խոստովանեցաւ։ Արդ յետ մեռանելոյն և թաղելոյն զնա՝ ասէ հայրն ցեղբարսն. առէք զանկողինդ զայդ այտի։ Եւ իբրև իջուցին զանկողինսն, գտին զոսկին. և ասաց հայրն միաբանակեցացն՝ թէ ՚ի կենդանութեան իւրում ոչ խոստովանեցաւ, այլ յայդ ունէր զյոյս իւր. և ՚ի մահուն իւրում ոչ ասաց, ոչ մերձենամք յայդ. այլ երթայք թաղեցէք զայդ ընդ դմա։ Եւ իջեալ հուր յերկնից այրէր ՚ի վերայ գերեզմանի նորա առաջի ամենեցուն, և ամենեքեան որք տեսանէին՝ զարմանային։

ՊԱՏՄԵՑԻՆ՝ սմանք ՚ի հարանցն՝ եթէ երբեմն եկն եղբայր ումն և զգեցեալ էր կարճ կամաւ՝ յեկեղեցին ՚ի խորհրդեան առ հարքն Իսահակաւ. և հալածէր զնա ծերն և ասէր՝ թէ այս բնակութիւն միայնակեցաց է, իսկ դու աշխարհական ես և ոչ կարես բնակել աստ։

ԱՍԷՐ՝ հայրն Իսահակ ցեղբարսն՝ եթէ հարքն մեր և հայրն Պամբով ասղնաթոոպս և կապերտս ագանէին և սեբինէս, իսկ այժմ ագանիք հանդերձս մեծագինս. երթայք աստի ՚ի բաց, զի խանգարեէք զմենակութիւնս։ Եւ յորժամ կամէին դառնալ երթալ ՚ի հունձս՝ ասէր ցնոսա. ոչ ևս տամ ձեզ պատուէրան, վասն զի ոչ պահէք. բայց զայս աղաչեմ զձեզ, յորժամ երթայք ուրեք, ասացէք եթէ ՚ի լեռնէն եմք, և մի ասէք եթէ ՚ի խորհրդայն եմք, զի մի հայհոյեսցի տեղիս վն ձեր։

անդ։ Իսկ զկնի ոչ բազում աւուրց մեռաւ ծերն, և ումեք ոչ ասաց զայն։ Իսկ իբրև թաղեցին զնա, ասաց հայրն մաքրել և յորդարել զտեղին ուր անկեալ դնէր հիւանդն այն. և ՚ի կողմնըն զտեղին, գտին զոսկին և պատմեցին հօրն զայն։ Ասէ հայրն. որովհետև ոչ ՚ի կենդանութեան և ոչ ՚ի մահուանն իւրում ասաց զայս ումեք, ապա ոչ յԱծ, այլ ՚ի սա ունէր զյոյս իւր, և արդ մի մերձեսցուք զնա ՚ի սմանէ։ Եւ տարեալ թաղեցին ընդ նմա, և առժամայն անկաւ հուր յերկնից և այրէր զգերեզմանն զայն զաւուրս բազումս։ Եւ զայս տեսեալ եղբարցն փառաւոր առնէին զԱծ։

։ Ասաց ումն ՚ի հարցն՝ եթէ եկն երբեմն եղբայր ումն ՚ի սենեկացն յեկեղեցին հօրն Իսահակայ և ունէր զգեցեալ նոր կնկուղ։ Իսկ ծերն արտաքսեաց զնա և ասէ. գնա աստի, այս տեղի միանձանց է, իսկ դու աշխարհիկ գոլով ոչ կարես աստ կեալ։

։ Ասաց հայրն Իսահակ՝ եթէ հայրն Պամբոյ հին և կարկատունս ագանէր հանդերձս, և մեղուն նորա հիւսած ուրև արմաւոյ, իսկ արդ մեք ունիմք հանդերձս բազմագինս. գնացէք դուք աստի, զի քակեցիք զտեղիս զայս։ Եւ դարձեալ յորժամ գնային եղբարքն ՚ի հունձս՝ ասէր ցնոսա. ոչ ևս տամ ձեզ պատուէրան, զի ոչ պահէք զնոսա։

ԱՍԷԻՆ՝ վասն հօրն Մովսիսի սկիւթացւոյ՝ եթէ մինչդեռ հանդերձեալ էր մտանել 'ի վէմն, աշխատեցաւ 'ի ճանապարհին և ասէր առանձինն. զիարդ կարացից մուծանել զջուրն աստ 'ի ներքս: Եւ եղև նմա ձայն որ ասէր. մուտ և մի ինչ հոգար: Մտեալ առ նա բազմութիւն արանց, և ոչ ինչ կայր, բայց միայն սափոր մի ջուր. և արարեալ նոցա սակաւիկ մի ոսպնաթան՝ ծախեցաւ ջուրն: Իսկ ծերն նեղէր, և ընդ մտանելն և ընդ ելանելն աղօթէր առ Աստուած. և ահա ամպ անձրևոյ եկն յանդիմանս վիմին, և այնուհետև լցին զամենայն սափորսն և զամենայն ամանս խուցեանց: Եւ յետ այսորիկ ասեն ցծերն. ասա մեզ զի՞նչ ելանէիր և մտանէիր: Եւ ասէ ծերն. դատաստան վարէի ընդ Այ և ասէի՝ եթէ դու ածեր զիս աստ, և ահա ոչ ունիմ ջուր զի արբուցեն ծառայքս քո. յաղագս այսորիկ մտանէի և ելանէի աղաչելով զԱծ մինչև առաքեաց մեզ ջուր:

ՊԱՏՄԵԱՑ՝ ոմն 'ի ծերոցն վասն հօրն Յովհաննու պարսկի՝ եթէ 'ի բազում առաքինութենէն հասեալ յանմեղութիւն անկաւ: Նորա լինէր առ յԱրաբիա եգիպտացւոց՝ փոխ առեալ երբեմն յեղբօրէ ումեմնէ դահեկան մի, և գնեաց կտաւ զի գործեսցէ: Եւ եկն եղբայր ոմն աղաչէր զնա և ասէր. շնորհեա ինձ սակաւ մի կտաւ, զի արարից ինձ լեբիտոն: Եւ խնդութեամբ ետ նմա: Դարձեալ

[1] Ասէին վասն հօրն Մովսէսի 'ի Սկիտէ՝ եթէ յորժամ գնայր մտանել 'ի վէմն այն, վաստակեցաւ յոյժ 'ի ճանապարհին և ասէր. ես միայն կարացից բերել զջուր իմ աստ: Եւ գնա խորհէր զայս, եկն առ նա ձայն զի ասէր. մուտ յայրդ և մի ինչ հոգասցես: Եւ եմուտ բնակեցաւ անդ: Եւ եկին առ նա ծերք ոմանք և ոչ գոյր նոցա ջուր, բայց միայն մի ամանաւ. և արարեալ ոսպնաթան՝ ծախեցաւ 'ի նա զջուրն զայն: Եւ տխրեցաւ ընդ այն ծերն, և մտանէր և ելանէր 'ի տունն և աղօթէր առ Աստուած վասն ջրոյ, և ոչ գիտաէր թէ զինչ առնասցէ: Եւ ահա ամպ մի լի ջրով եկաց 'ի վերայ վիմին և ելից զամենայն նորա ջրով: Ասէին ցնա ծերքն. ասասցես մեզ եթէ վասն էր մտանէիր և ելանէիր 'ի սենեակս: Իսկ նա ասէ. դատէի ընդ Այ և ասէի՝ ասէր, ընդէր բերեր զիս աստ, զի ջուր ոչ գոյ ընծայելոյ այսոցիկ ծառայից քոց. և ետ մեզ ջուր:

[2] Պատմեցին մեզ վասն հօրն Յովհաննու պարսկին՝ եթէ 'ի բազմութենէ շնորհացն Այ որ էին 'ի նմա, կատարեալ պարզամիտ եղև: Սա բնակէր յԵգիպտոս, և խնդրեաց երբեմն յեղբօրէն 'ի փոխ դահեկան մի և գնեաց կտաւահատ ած 'ի գործս. և եկեալ եղբայր ոմն խնդրեաց 'ի նմանէ հատ կտաւ զի արասցէ հանդերձս, և ետ նմա խնդութեամբ, և զի դարձեալ այլ ոմն եկն, ետ և նմա. այնուհետև և այլքն խնդրէին՝ ետ

այլ՝ ամէն ծաղաչէր զնա և ասէր. տուր ինձ սակաւ մի կը-
տաւ, զի արարից ինձ զենջակ: Եւ ետ նմա. նմանապէս
և այլոց բազմաց խնդրեալ՝ ետ զբովանդակն խնդութ̃բ:
Յետ այսորիկ եկեալ տէր դահեկանին՝ խնդրէր զդա-
հեկանն: Եւ ասէ ցնա ծերն. ես երթամ և բերեմ զնա
քեզ: Եւ վասն զի ոչ ուստեք գոյր տալ, յարուցեալ
գնաց առ հայրն Յակոբ աղաչել զնա զի տացէ զդահե-
կանն, զի առեալ տացէ եղբօրն: Եւ մինչդեռ երթայր,
եգիտ դահեկան 'ի գետնի և ոչ մերձեցաւ 'ի նա, և ա-
ղօթս արարեալ դարձաւ անդրէն 'ի խուցն իւր: Եւ ե-
կեալ դարձեալ եղբօրն տագնապէր զնա վասն դահե-
կանին, և ասէ ցնա. ես հոգամ հաստատութ̃բ: Եւ
ելեալ ծերոյն եգիտ զդահեկանն դարձեալ 'ի նմին տե-
ղւոջ, և արարեալ աղօթս դարձաւ անդրէն: Եկեալ
միւսանգամ եղբօրն շտապէր զնա: Ասէ ցնա ծերն. այս
անգամ հաստատ բերեմ զդահեկանն: Եւ յարուցեալ
դարձեալ եկն 'ի տեղին, և գտեալ զնա՝ արարեալ ա-
ղօթս առ զդահեկանն, եկն առ հայրն Յակոբ և ասէ
ցնա. մինչդեռ գայի առ քեզ, հայր, գտի զդահեկանս
զայս 'ի ճանապարհին. արդ արա սէր, հայր, և քարո-
զեա 'ի սահմանս՝ եթէ ո՞ կորոյս զդահեկանս. և եթէ
գտցի տէր դորա, տուր զդա: Եւ երթեալ ծերոյն զե-
րիս աւուրս աղաղակեաց, և ոչ ուրեք գտաւ տէր դա-
հեկանին: Յայնժամ ասէ ծերն ցհայրն Յակոբ. եթէ

ամենեցուն մինչև սպառեաց զամենայն: Յետոյ եկն տէր դահեկանին և
ասէ ցնա. հայր, պիտոյ են ինձ դահեկանն իմ, տուր զնա: Ասէ ծերն.
գնա, որդեակ, և ես ստացեալ տամ քեզ. զի ոչ ունէր ինչ, զի հա-
տուցանիցէ նմա զպարտսն: Եւ ուղղեցաւ առ հայրն Յակոբ որ էր ա-
ռաջնորդ վանացն՝ խնդրել 'ի նմանէ դահեկան մի զի տացէ եղբօրն.
և մինչդեռ գնայր, եգիտ դահեկան մի զի անկեալ կայր 'ի վերայ ու-
ղւոյն և ոչ մերձեցաւ 'ի նա, այլ արար աղօթս և դարձաւ 'ի սենեակ
իւր: Եւ ահա եկն դարձեալ եղբայրն և նեղէր զնա խնդրելով 'ի նմա-
նէ զդահեկանն, և նա ասէ. հոգացից ուստեք: Եւ գնաց դարձեալ
առ հայրն Յակոբ. և իբրև գնայր՝ եգիտ զդահեկանն զի կայր 'ի տե-
ղւոջն այնմիկ. և դարձեալ արար աղօթս և դարձաւ 'ի տունն իւր: Եւ
ահա եղբայրն եկն և դարձեալ թախանձէր զնա և ասէր. տուր ինձ
զպարտսն իմ: Ասէ ցնա. արդ եկ բերեմ զնա: Եւ յարուցեալ գնաց
յայն տեղն և եգիտ զդահեկանն, և առեալ տարաւ զնա առ հայրն
Յակոբ և ասէ ցնա. հայր, մինչ գայի առ քեզ, գտի զայս դահեկան
անկեալ 'ի ճանապարհի. արա սէր և հարցանել տացես եղբարցն
գուցէ ոք կորոյս զսա. և եթէ գտցի տէր սորա, տացէ զսա: Գնաց
ծերն և քարոզեաց զերիս աւուրս 'ի սահմանսն յայն, և ոչ գտաւ տէր
նորա: Յայնժամ ասէ ցհայրն Յակոբ ծերն. հայր, և վասն զի ոչ գը-

ոչ ոք կորոյս զդա, տուր զդա այսմ անուան եղբօր զի պարտիմ նմա. և կամեցայ զդա առնուլ 'ի քէն սէր, և գնի 'ի ճանապարհի : Նա զարմացաւ ծերն եթէ զխորդ պատահէր և եգիտ, առժամայն ընդդէմ ոչ առ և ետ, այլ որպէս թէ լուտ սիրոյ յումեքէ առեալ ետ : Նա այս էր նորա սքանչելի. եթէ գայր ոք խնդրել ինչ 'ի նմանէ, ոչ եթէ ինքն տայր, այլ առէր ցեղբայրն՝ երթ քեզէն իսկ առ զինչ պէտք են. և եթէ բերէր ոք դարձեալ, առէր ցնա՝ եթէ դիր զայդ 'ի տեղւոջ իւրում. ապա եթէ ոչ ինչ բերէր, ոչ առէր նմա ինչ* :

ԱԲԲԱՅ Մակարիոս որ յԱղեքսանդրիա եկն 'ի սենեակն իւր, եգիտ այր մի որ ունէր ընդ իւր գրաստ և ած զնա 'ի սենեակ հօրն, և բառաչեաց ոչխարն, և հայրն յետ բազում լռութեան արձակեաց զնա 'ի բաց և ասէ ցաշխարհականսն. ոչ մերձենամք 'ի դա, տէր ետ որպէս ինքն կամեցաւ, նոյնպէս և եղև. օրհնեալ է տէր 'ի վերայ ամ̃ի :

ԾԵՐ՝ ոմն ասաց՝ եթէ մարդ որ ճաշակէ զքաղցրութիւն անստացուածութեան, ծանր համարի և զհանդերձն զոր զգեցեալն է, և զկուժ ջրոյն, զի միտք նորա յայլ դէմս ժուժկալէ : Որ զխութն ասէ, կարող է ա-

տաւ տէր սորա որ կորոյսն՝ եթէ կամիս՝ տուր զսա եղբօրն ում պատրաստական իցեմ. զի վասն այսորիկ գայի առ քեզ, զի խնդրեսցես 'ի քէն գանձեկան հատուցանելոյ զայն : Զայս իբրև լուաւ հայրն Յակոբ, զարմացաւ եթէ զի պատրաստական էր և գտաւ՝ վաղվաղակի զխորդ ոչ էառ և տարեալ ետ ցնա : Արդ այս Յոհան հայրս ունէր և զայս սքանչելի կարգս, զի եթէ ոք խնդրէր ինչ 'ի նմանէ պէտք, ինքն ոչ յառնէր և տայր, այլ ասէր ցնա՝ երթեալ առցես որչափ պիտոյ իցէ քեզ : Եւ եթէ բերէր ոք ինչ՝ ասէր. զնա որդեակ, դիր անդր 'ի տեղի իւրում :

* Օրինակ մի հին թարգմանութեան այսպէս համառօտէ զպատմութիւնս զայս. Հայրն Յոհան խնդրեաց գանձեկան մի յառնէ աղեքսանդրացւոյ, և գնեաց կտաւս և ետ ում պիտոյ էր : Եւ եկն այրն խնդրել զգանձեկանն, և ասաց. այո՛ վաղիւն տամ, և չոգաւ առ սուրբն Յակոբ մենաւոր խնդրել և տալ : Եւ 'ի գնալն երկիցս անգամ տեսանէր գանձեկան մի և աղօթեալ անցանէր, և պատկառէր 'ի Յակոբայ հայցել : Եւ ապա 'ի գնալն էառ զգանձեկանն և տարաւ առ Յակոբ և ասէ. գտի զսա, քարոզեա թերևս ոք ընկէց զսա : Եւ իբրև ոչ գտաւ նորա տէր, ասէ ցՅակոբ. հայր, կամիս եթէ տանիմ զսա առն որում պարտիմ. և ասաց նմա զամենայն : Եւ զարմացաւ Յակոբ և օրհնեաց զՔ̃Ս ա̃ծ զհատուցանողն բարեաց ամենայնի :

Ասաց ոմն ծեր՝ եթէ կրօնաւոր որ զխորձ առնու զանձնչութեն, նա առաւելէ և զձորձն իւր զոր զգեցեալ է. և զի որ ոք կամաւ զաղ-

տել և զանձն իւր. եթէ պակասէ քեզ պիտոյք մարմնոյ՝ մի՛ աստացես մարդոյ տալ զայն, այլ մանաւանդ ընկեա առ ա̃ծ զհոգս քո. այլ՝ եթէ զա̃ծ թողուս և խնդրես 'ի մարդկանէ, ոչ հաւատաս եթէ կարող է ա̃ծ օգնել քեզ:

ՈՒՆԷՐ ոմն 'ի ժամ աղօթիցն մեծ շնորհս տեսանէր. եկն զօրավար մի, եւ նմա դահեկանս, և առ ծերն. և իբրև առ, ոչ կարէր տեսանել զսովորական տեսիլն և զարհուրեցաւ: Եւ խնդրէր արարեալ խորհրդոցն՝ ոչ ինչ եգիտ պատճառս. ապա աղաչեաց զա̃ծ յայտնել նմա զիրսըն: Եւ գայ ցնա հրեշտակն. որչափ առ քեզ են դահեկանքդ, չես արժանի շնորհս տեսանել, զի մասն ունիս 'ի չարեաց զօրավարին ըստ չափոյ դահեկանացն. արդ եթէ կամիս՝ դարձո 'ի զօրավարն, և եթէ կամիս՝ տուր կարօտելոց. պահելն ոչ է գործ կրօնաւորաց և ոչ հաճոյ ա̃յ: Եւ ծերոյն ժողովեալ զեղբարսն պատմեաց նոցա, և յայնմհետէ ոչ առնուին ինչ յաշխարհականացն, այլ ասէին՝ կարօտելոց տուք, և մեք ձեզ աղօթս առնեմք:

ՊԱՏՄԵԱՑ՝ ոմն 'ի հարանցն վասն ուրումն պարտիզպանի եթէ գործէր, և զոր ինչ շահէր՝ աղքատաց բաշխէր: Յետ այսորիկ ասէն ցնա խորհուրդք իւր. արգել քեզ սակաւ մի լումայս, մի՛ գուցէ ծերասցիս և պիտոյ է քեզ: Եւ ժողովեաց և ելից սափոր մի: Դէպ եղև նմա զի ախտացաւ յոտանէն և ծախեաց զլումայսն բժշկաց և ոչ ինչ օգտեցաւ: Յետոյ գայ հմուտ բժիշկ և ասէ. եթէ ոչ կտրեսցի ոտն քո, ամենայն մարմինդ նեխեսցի: Եւ կամք եղև նմա 'ի վաղիւ գալ և կտրել զոտն նորա: Եւ 'ի գիշերին զմտաւ ածեալ և յոգւոց հանեալ

խարհս ոչ ատեայէ և զորս յաշխարհի, նա և զանձն եւս իւր յաղագս պատուիրանին ա̃յ և տեառն մերոյ, նա զիարդ ոչ իցէ հեռացեալ 'ի խնամոցն ա̃յ և 'ի կրօնաւորական պատակացն:

։ Ասացին մեզ ծերքն՝ եթէ եղբայր ոմն գործէր պարտէզ և տայր զբանջար իւր զամենայն տէր, և ոչ ինչ բնաւ պահէր, բայց միայն զկերակուր իւր: Իսկ յետոյ անկեաց զեն 'ի սիրտ նորա և ասէ. ժողովեսցիս սակաւ ինչ կերակուր՝ գուցէ ծերասցիս և տկարասցիս, և 'ի պէտս գայցէ ինձ: Եւ սկսեալ ժողովեաց և ելից ամանն ինչ լի դրամովք: Իբրև զայս արար, գիտեցաւ նմա հիւանդութիւն երկար, և նեխեցան և փտեցան ոտքն նորա, և ծախեաց զայն ամենայն կերակուր առ բժիշկս և ոչ ինչ օգտեցաւ: Յետոյ եկն այլ հմուտ բժիշկ և ասէ. եթէ ոչ հատցին ոտք քո 'ի բաց, նեխեսն և ապականեսն զամենայն մարմին քո: Եւ պատրաստեցաւ հատանել սրով զոտս իւր: Իսկ 'ի գիշե-

-զօրացեալ զերծաւ 'ի նմանէ և փախեաւ։ Գնաց զկնի եղբայրն, աղաղակէր և ասէր. վասն ՏՐ՝ կացցես։ Նա դարձաւ և ասէ. ես վասն ՏՐ փախստական լինիմ 'ի քէն։ Յետոյ ընկէց զկիթառոնն և մտեալ զհետ նորա։ Յորժամ ետես եթէ եղերծ զհանգերձն, մերձեցաւ առ նա և ասէ. ընկեցեր 'ի քէն զնիւթ աշխարհիս, վասն այսորիկ քեզ մնացի։ Աղաչեաց զնա և ասէ. ասա ինձ բան զի կեցից։ Նա ասէ ցնա. փախիր 'ի մարդկանէ և կեցցես։

մուտ լինէր, և ողջմտութեան նորա ոչ էր կարող հասանել եղբայրն, և աղաղակէր եղբայրն և ասէր. վասն ՏՐ՝ կացցես։ Նա դարձաւ և ասէ. ես վասն ՏՐ փախստական լինիմ 'ի քէն։ Իսկ եղբայրն տարակուսեալ՝ 'ի միտս եկեալ ընկէց զծանրութիւն յինքենէ զկիթառոնն, և թեթեւացաւ մերկ գոլով առհասարակ որպէս և նոյն, և մտաւ զհետ նորա։ Իսկ յորժամ նայեցեալ ետես եթէ զերծ զհանդերձն յինքենէ, եկաց և ոչ փախեաւ։ Եւ իբրև եկն եհաս եղբայրն, և ողջունեալ զմիմեանս նստան, ասէ խոստովանողն. վասն այնորիկ փախուցեալ լինէի 'ի քէն, զի զնիւթ աշխարհիս ունէիր, որ կարէ ծանրութեամբ իւր հակել զմարդ զկնի իւր. իսկ յորժամ ընկեցեր զնիւթն զայն 'ի բաց, կացի մնացի քեզ։ Իսկ եղբայրն աղաչեաց զնա և ասէ. ասա ինձ բան զի կեցից։ Եւ նա ասէ ցեղբայրն. ով որդեակ, կամիս կեալ. փախիր 'ի մարդկանէ և կեցցես։ Զայս պատուիրելով և հաստատելով զնա 'ի նոյն՝ յարեաւ և հեռացաւ յեղբօրէն։ Իսկ եղբայրն օրհնելով զԱծ և աղօթելով դարձաւ և ասէր՝ թէ որպէս յանապատի մոլորեալք 'ի լերինս և 'ի յայրս և ուրացեալք զաշխարհս՝ թեթեւաբար մարմնով ալացան առ ած յոյժ իւրեանց, և հասին առ անձկալին և երանելիք եղեն։

Այլ օրինակ [illegible]. Պատմեցին մեզ զայս ծերքն վասն միայնակեցի ուրումն՝ եթէ եւ ինքն միայն յանապատի և զգեցեալ էր բանձկոն մի միայն. և իբրև գնաց զերիս աւուրս, եւ 'ի վէմ մի և նստաւ 'ի վերայ նորա։ Եւ տեսանէր առաջի վիմին խառվայր, և մարդ մի որ արածէր զայն կանանչ խոտ զվայրի որս ինչ։ Եւ իջեալ 'ի վիմէն եկն գաղտ և կալաւ զարօտականն զայն, և էր նա մերկ բնաւ. իսկ նա ոչ կարաց կրել զհոտ մարդոյ, զերծաւ 'ի ձեռաց ծերոյն և փախեաւ 'ի նմանէ։ Իսկ ծերն գնայր զկնի նորա և ասէր. աղաչեմ զքեզ, զի փախչիր յինէն վասն սիրոյն ՏՐ։ Իբրև լուաւ զայս, դարձաւ և ասէ. ես, եղբայր, վասն սիրոյն ՏՐ փախչիմ 'ի քէն։ Յայնժամ մերկացեալ ծերն զբանձկոն իւր ընկէց 'ի բաց, և մերկ գնայր զկնի արօտականին։ Իբրև ետես փախստականն եթէ մերկացաւ որ վարէրն զնա, կանգնեցաւ և ընկալաւ և համբուրեաց զնա և ասէ. առհա իբրև ընկեցեր 'ի քէն զնիւթ երկրաւոր, և ոչ այլ փախեայ 'ի քէն։ Եւ դու, որդեակ, փախիր 'ի մարդկանէ և լռեա, և ընկեա 'ի քէն զնիւթ երկրաւոր և կեցցես։

# ՄՆԱՑՈՐԴՔ

## յերկրորդ թարգմանութենէ

---

ԱՍԷԻՆ վասն հօրն Ագաթոնի՝ եթէ զբազում աւուրս շինէր սենեակ ընդ աշակերտս իւր. և իբրև կատարեցին զտունն և կամէր նստել, ետես յայնմ աւուր տեսիլ ինչ՝ զի էր գործ ինչ վնասու, և ասէ ցաշակերտսն իւր. արիք գնասցուք աստի: Իսկ նոքա տրտմեցան յոյժ և ասեն. եթէ կամէր գնալ աստի, մեք ընդէ՞ր աշխատեցաք սուտ և շինեցաք զդա. գայթակղին ոմանք 'ի մեզ և ասեն՝ եթէ դարձեալ գնացին անդադարեկլքն այնոքիկ: Իբրև ետես ծերն զնոսա տրտմեալ, ասէ ցնոսա. զի թէպէտ և ոմանք գայթակղին 'ի մեզ, այլ ոմանք շինին և ասեն՝ երանի է սոցա, զի վասն այ շրջին և զաստիսն ամենայն արհամարհեն. եթէ դուք, որդեակք, ոչ գայք, ես գնալոց եմ: Եւ գնացին զկնի նորա: Եւ ուր և շրջէր նա, այլ ոչ ինչ բառնայր ընդ ինքն, բայց մի ձևիչ արմաւոյ ունէր:

ԵՂԲԱՅՐ ոմն եկն առ հայրն Ագաթոն և կայր ընդ նմա. և իբրև երթային 'ի Ճանապարհն, եգիտ եղբայրն փոքր մի բորակ, և առեալ զայն տարաւ առ նա: Ասէ ծերն. ուստի՞ է այս: Պատասխանի ետ եղբայրն և ասէ. 'ի Ճանապարհի գտի զսա, հայր: Ասէ ցնա ծերն. եթէ ընդ Ագաթոնի եկեալ ես բնակել, զոր ոչ եդեալ է քո՝ զայն մի առցես: Եւ առաքեաց դնել զնա 'ի տեղի իւր:

ԱՍԷԻՆ և վասն հօրն Գելասիոյ՝ եթէ 'ի մանկութենէ իւրմէ անինչք և միայն ընթանայր. իսկ էին և այլք բազումք յայնժամ անդ որք զնոյն առաքինութիւն ստանային, յորս էր ծեր ոմն սքանչելի և բնաւ անինչք, որ 'ի միում դատարկ այրի եկաց զամենայն աւուրս կենաց իւրոց: Ունէր և աշակերտ իւր, այլ ոչ ստացաւ երկուս հան-

դերձս երբէք, և ոչ երբէք հոգաց վասն վաղուի՝ ոչ ինքն և ոչ աշակերտքն իւր։ Իսկ յորժամ հրաման եառ 'ի տեսլեանն հայրն Գելասի շինել զվանսն, բերէին նմա 'ի գեղջուց զպէտսն. և ստացաւ 'ի սպասաւորութի͞ն վանիցն յաւանակս և եզինս և ինչս բազումս, մինչ զի և հօրն Պախումէոսի ևս ետ մինչ շինէր և նա վանս։ Ասէ ցնա վերոյասացեալ ծերն իբրև տեսանէր զայն՝ եթէ երկնչիմ, հայր Գելասի, մի գուցէ կապեսցին միտք քո 'ի ստանալ ագարակս և գիւղս 'ի պէտս վանից քոց։ Ասէ ցնա հայրն Գելասի. եթէ կապեսցին միտք քո ընդ այդ հերուն որով կարես դու, այնպէս ոչ կապեսցին միտք Գելասի առ ինչս։

ԱՍԷԻՆ վասն հօրն Գէորգէոսի միայնակեցի՝ եթէ երեսուն ամ մերկ բնաւ և միայն շրջէր յանապատս։

ԱՍԱՑ հայրն Իպերեքիոս՝ եթէ ամենայն նիւթ մարմնոյ 'ի վայր քարշէ և ձգէ. և որ ոք սիրէ զերկիր, սիրէ նա և զնիւթ նորա. իսկ որ ոչ սիրէ զնիւթ սորա, եթէ դիպեսցի պէտս ինչ պակասել 'ի հոգոց նոցուն՝ ևս ուրախ լինիցին յոյժ ընդ ազատիլն 'ի նոցանէ։

ԱՍԱՑ հայրն Իսիդորէ. դժուար և յանդուգն իցէ տէր ընչից, որ և զյագուրդն ամենևին ոչ գիտէ, և 'ի վերայ յետին չարութե͞ն կացուցանէ զհոգին, և զի պարտ է յառաջագոյն փախչել 'ի նմանէ. զի թէ բնակի 'ի քեզ, յաղթէ և կորուսանէ զքեզ։

ԱՍԷԻՆ և վասն հօրն Յովհաննէսի՝ եթէ զամս եօթանասուն եկաց յայրի միոջ փոքու և ոչ բնաւ ստացաւ ինչ 'ի պիտոյից աշխարհիս, բայց միայն փիլոն մազեայ հնացեալ և հասիր և թաս մի փայտեղէն։

ԱՍԱՑ հայրն Կասիանէ՝ եթէ իշխան ոմն եղև կրօնաւոր և զամենայն ինչս իւր բաժանեաց աղքատաց և կալաւ սակաւ ինչ 'ի պէտս իւր, և ոչ կամեցաւ առնուլ յանձն զկատարեալ հնազանդութի͞ն և զխոնարհութի͞ն և զանընչութի͞ն և զմիաբանութի͞ն մինչև ոչ ունել առանձին և ոչ ասեղն մի։ Առ սա գրեաց մեծն Բասիլիոս այսպէս՝ եթէ զիշխանութի͞ն քո կորուսեր, և զմիանձնութիւն ոչ գտեր։

ԳՆԱՑԵԱԼ երբեմն եղբարք առ հայրն Մակարի 'ի Եգիպտէ և ոչ ինչ գտին 'ի տուն նորա, բայց միայն ջուր հոտեալ և ասեն ցնա. եկ ընդ մեզ, հայր, և տարցուք

զքեզ 'ի գիւղ, զի հանգիցես սակաւ մի։ Ասէ ցնոսա ծերն. գիտէ՞ք զփուռն հացանոցի այսոր ուրեմն 'ի գիւղին յայն։ Ասեն ցնա. այո։ Ասէ ցնոսա ծերն. գիտեմ և ես. և յորժամ կամեցիմ գալ, ես եկից, դուք առաջնորդ ինձ ոչ պիտոյ էք։

ԱՍԷԻՆ և վասն հօրն Սեղբեթանի. եթէ ելանէր 'ի սենեկէն և թէ կամէր գնալ այլուր, ոչ դառնայր փակել զդուռն տանն, և զի ոչ ինչ ընդ ունէր 'ի նիւթոյ երկրի 'ի նմա, բայց միայն ձեռիչ և տերև արմաւոյ։

ԵՀԱՐՑ ումն ծեր ցհայրն և ասէ. զի՞նչ արարից, հայր, զի վշտանամ ես 'ի վաճառել զձեռագործ իմ։ Ասէ ցնա հայրն. և ամենայն հարքն վաճառէին զձեռագործ, և այս ոչ է վնաս հոգւոյ. այլ դու մի անգամ դիր զգինն և պակասաբար, և զոր ինչ տացէ ոք՝ առանց դիմաբանութեան առցես և ոչ վշտասցիս, այլ հանգիցես։ Ասէ եղբայրն. և եթէ ունիցիմ այլուստ զպէտս իմ, պիտո՞յ է զի թողից 'ի բաց զգործելն։ Ասէ ցնա ծերն. զձեռագործ մի թողցես բնաւ, այլ գործեա առանց շփոթելոյ։

ԱՍԷԻՆ և վասն հօրն Սիլուանեայ՝ եթէ աշակերտք նորա առանց հրամանի նորին քակեալ զցանկ պարտիզին և արտաքոյ եղեալ ածեցուցին զնա։ Երթեալ գիտաց ծերն, եբարձ զմախաղ իւր և ել առ նոսա և ասէ ցնոսա. աղօթեցէք վասն իմ, եղբարք. և սկսաւ գնալ։ Եւ նոքա մինչ տեսին զնա այնպէս, անկան առաջի նորա և ասեն. զի՞նչ իցէ, հայր, ասա մեզ։ Ասէ ծերն. ոչ դարձայց յետս և ոչ կացից աստ, եթէ ոչ քակիցէք դուք զցանկ պարտիզին այնմիկ և դիցէք յառաջին իւր տեղին։ Եւ նոքա արարին առժամայն այնպէս։

ԱՍԷ հայրն Սիլուանէ. ես ծառայեմ տեառն իմոյ, և տէր իմ պատուիրեաց և ասէ ինձ՝ դու աշխատեաց 'ի գործս իմ, և ես կերակրեմ զքեզ, և դու մի խնդրեսցես յումեքէ. արդ եթէ գործեմ ես՝ ուտեմ զվարձս իմ, և եթէ ոչ գործեմ՝ ուտեմ զսէր այլոց։

ԵՀԱՐՑ ումն եղբայր ցհայրն Սրապիոն և ասէ ցնա. հայր, ասա ինձ բան խրատու։ Ասէ ցնա ծերն. զի՞նչ ասացից քեզ, եղբայր, զի առեալ է քո զորբոց և զայրեաց ինչս, և լցեալ ես զպատուհան քո։ Վասն զի ետես զպատուհան նորա զի էին 'ի նմա գիրք։

ԵՀԱՐՑ ումն ցհայրն. Սինկղիտիկէ՝ եթէ բարւո՞ք իցէ

բնաւ անստացուածս լինել։ Եւ նա ասէ. կատարեալ բարի է անընչութիւն նոցին որք կարողք իցեն, զի որք առնեն զայդ՝ վիշտս մարմնոյ կրեն, այլ հոգիք նոցա հանգիցեն յոյժ։ Եւ զոր օրինակ զօրեղ հանդերձ անկակած լուանայցի բախելով ոտամբ՝ շրջելով քարշելով և քամելով, և ոչ պատառի, այսպէս է և անխինջ անձն՝ 'ի գալ 'ի վերայ բազում փորձութեանց առաւել ամրանայցէ։

ԱՍԱՑ հայրն Օլիկէ քահանայն Տամիաթոյ՝ եթէ որք եօթն իշխանք սինկլիտիկոսք հռոմայեցիք նախանձեալ հօրն Արսէնիոսի և եկեալ միանձնացան յանապատին Սկիտոյ. որք յայնպիսի խոնարհութիւն և յաղքատութիւն եկուն զանձինս, մինչև անօթ նոցին էր խեց կղմայից, և ասէին. գուցէ տեսցէ տէր զաշխատութիւն զայս և թողցէ զմեղս մեր։

ԵՂԲԱՅՐ ոմն կամեցաւ կրօնաւոր լինել, և գնաց առ ծերն և ասաց նմա զայն։ Ասէ ցնա ծերն. ոչ կարես։ Իսկ նա ասէ. կարող եմ։ Ասէ ցնա ծերն. եթէ կամիս կրօնաւոր լինել, երթ ցրուեա զինչս քո, և եկեալ նստասցիս 'ի սենեկի քո։ Գնաց եղբայրն և բաշխեաց զամենայն ինչս իւր աղքատաց, բայց միայն եթող 'ի պէտս իւր դահեկանս հարիւր և այսպէս եկն առ ծերն։ Ասէ ցնա ծերն. գնացեալ նստցիս 'ի սենեակն յայն։ Եւ նա նստաւ անդ։ Եւ զկնի աւուրց ինչ ասեն ցնա խորհուրդքըն՝ եթէ հնացեալ է դուռն խցիդ, նորոգեսցես զսա։ Եւ եկեալ պատմեաց զայն ծերոյն՝ եթէ խորհուրդք իմ ներքին զիս նորոգել զդուռն խցին։ Ասէ ցնա ծերն. ո՞չ ասացի քեզ թէ ցրուեա զինչս քո. արդ զմնացեալն զայն եւս բաշխեա։ Եւ արար եղբայրն զհրամայեալն, բայց եւս մնացոյց անտի դահեկանս տասն։ Եւ անցեալ ինչ, դարձեալ ասեն ցնա խորհուրդքն. ձեղուն սենեկիս հին և փտեալ են, և պարտ է քեզ շինել զսա։ Եւ գնաց և պատմեաց և զայս ծերոյն։ Ասէ ցնա ծերն. ունիս այլ եւս ոսկի, գնացեալ ցրուեսցես զնա եւս, զի հանգիցես։ Եւ նա գնացեալ ցրուեաց զտասն զայն դինար, և եկեալ առ ծերն ասէ. հրաժարեցի յամենայնէ, հայր, ըստ բանի քո։ Ասէ ցնա ծերն. բարւոք արարեր, արդ գնա նիստ 'ի սենեկին քո։ Եւ նա գնացեալ նստաւ անդ և եկաց 'ի լռութեան զկեանս իւր։

Ս՛ԱՆՈՒԿ ոմն խորհէր ելանել յաշխարհէ և միանձնանալ, և բազում անգամ ել զի գնասցէ ՚ի վանս, և արգելեալ զնա խորհուրդ իւր, զի էր մեծատուն յոյժ։ Ի միում աւուր եգև զի գնալ կամէր, և շուրջ պատեալ զնովաւ դևք և խորհուրդք իւր՝ ամենայն հնարիւք խորեանց ջանային յետս դարձուցանել զնա։ Իբրև ետես զանձն յաղթեալ ՚ի նոցանէ, յայնժամ մերկացեալ ըզհանդերձս իւր ՚ի մարմնոյն ՚ի բաց ընկէց յիւրմէ, և բնաւին մերկ գնաց ՚ի վանսն։ Իսկ հօր վանիցն յայտնեաց տէր և ասէ. արի փութով և ընդունեա ՚ի ներքս զճգնաւորացն իմ։ Եւ յարեաւ ծերն և ել ընդդէմ նորա. և իբրև լուաւ զայն ամենայն հայրն յեղբարցն, զարմացաւ և զգեցոյց նմա զտեսակ կրօնաւորի։ Եւ որք գային և ասէին ծերոյն զխորհուրդս իւրեանց, ամենայնի ինքն առնէր պատասխանի. իսկ որ զելն յաշխարհէ հարցանէր ցնա, ասէր ծերն՝ ընդ այն եղբայրն հարցցես, և նա ուսուսցէ քեզ զօրինակ ելոյն յաշխարհէ։

Ե՛ՂԱԶԷՐ եղբայր ոմն մեծատուն զծերն ածանել ինչս ՚ի նմանէ ՚ի պէտս իւր։ Եւ ծերն ասէ. ոչ եմ կարօտ ես ընչից, բաւական են ինձ ձեռք իմ և գործ նորա։ Իսկ մարդն այն աղաչէր և ասէր սակաւ ինչ առնուլ ՚ի պէտս իւր։ Ասէ ծերն. կրկին ամօթ է ինձ այդ, եղբայր, մի՝ զի առից զոր ոչ իմ իցէ, և երկրորդ՝ զի յօտարի իրս բարեգործեցից և փքացայց։ Եւ ոչ էառ ՚ի նմանէ և ոչ ինչ, մինչև զարմանալ մեծատունն այն՝ տեսանելով զնոսա աստուծով զօրացեալ և անկարօտ ընչից ամենայնի։

Ե՛ՂԲԱՅՐ ոմն եհարց ցծերն իւր և ասէ. կամիս, հայր, զի պահեցից ինձ երկուս դահեկանս վասն տկարութեան մարմնոյ։ Ասէ ցնա ծերն. ոչ բարւոք է պահել զաւելի պիտոյն. զի թէ պահեսցես երկուս դահեկանս, յոյս քո ՚ի նոսա լինիցի. և այլ ևս տէր ոչ հոգասցէ վասն քո. այլ զամենայն յոյս մեր ՚ի տէր դիցուք, և նա կերակրեսցէ զմեզ։

ՊԱՏՄԵՑԻՆ մեզ հարքն՝ եթէ էր ոմն ծեր մեծի շնորհաց արժանացեալ յաստուծոյ, և ել անուն նորա ընդ ամենայն երկիրն վասն առաքինութեան իւրոյ և մեծի քաղաքավարութեան։ Եւ լուեալ թագաւորն զանուն նորա, կոչեաց զնա առ ինքն օրհնել ՚ի նմանէ, և տա-

րեալ անձն կայցէ զնա առ իւր թաղեալ ասացիս, և խա-
սեցաւ ընդ նմա թաղումն ինչ և օգտեցաւ յոյժ, և եւս
նմա ոսկի թաղումն և արձակեաց զնա: Իսկ ծերն առեալ
զայն և գնաց 'ի տեղի իւր, և սկսաւ շինել գիւղս և
գնել այլ և ս լաւագոյն ինչ և մեծացաւ յոյժ: Յետ
այսորիկ բերին առ նա դիւահար մի, որպէս զի բժշ-
կեսցէ՝ հանելով զդեւն ըստ սովորութեան առաջնոյ: Ասէ
ծերն ցդեւն. ել դու 'ի ստեղծուածոյդ այ̃: Ասէ ցնա դեւն.
այլ ոչ և ս լսեմ քեզ: Ասէ ցնա ծերն. և ընդէ՞ր ոչ լսես:
Ասէ դեւն. վասն այնորիկ զի եղեր դու իբրև զմի 'ի մեզ,
և թողեր դու զյիշատակն այ̃ և ետուր զանձն քո հո-
գոց կենցաղոյս այսորիկ, վասն այն ոչ լսեմ քեզ և ոչ
երկնչիմ աստի: Եւ ոչ կարաց հանել զդեւն. զի ընչա-
ւոր կրօնաւոր ճշմարտիւ իբրև զմի յատելեացն այ̃ է.
և ոչ լսէ նմա տէր, այլ դարձուցանէ զերեսս իւր 'ի
նմանէ:

ԵՂԲԱՅՐ ոմն եգիտ փայտ 'ի ճանապարհին որ ան-
կեալ էր յուղտուց բարձելոց, և եբեր զայն 'ի սենեակն:
Ասէ ցնա ծերն իւր. ուստի՞ բերեր զայդ: Ասէ եղբայրն.
գտայ, հայր, 'ի ճանապարհին: Ասէ ծերն. թէ և 'ի
հողմոց խորտակեալ գտեր, դիցես զնա 'ի տեղի իւր:
Եւ տարեալ եդ ուստի առեալ էր զնա: Այսպիսի է
կրօնաւորական զգուշութիւն:

ԵՂԲԱՅՐ ոմն ճգնաւոր յոյժ պատերազմեալ եղև
յարծաթսիրութէ̃: Նա ստացաւ 'ի ձեռագործէ իւրմէ
դահեկան մի և ապա արար զնա հինգ, և վաղվաղակի
անկաւ 'ի հիւանդութի̃ և նեխեցան ոտք նորա, և սկը-
սաւ բերել զդեղս և ծախեաց զդահեկանսն զայնոսիկ
և ոչ ինչ օգտեցաւ 'ի դեղոցն: Եւ իբրև ծանրացաւ
ցաւն, ասացին բժիշկքն հատանել զոտս նորա: Իսկ նա
զղջացաւ յոյժ և ելաց հառաչմամբ առ ա̃ծ, և 'ի գիշե-
րին յայնմիկ ողբայր յոյժ՝ զի կամէր առաւօտուն հա-
տանել զոտս նորա: Յայնժամ եկաց 'ի վերայ նորա
հրեշտակ տեառն և մերձեցոյց զձեռն իւր 'ի շարաւ ո-
տիցն և քամեաց զնա և ասէ ցնա. արդ զի՞նչ ասես, կա-
միս զի ունիցիս հինգ դահեկանս և 'ի բաց տալ զոտս
քո, եթէ կամիս զոտս քո և տալ զդահեկանսն: Իսկ
եղբայրն 'ի յամօթոյն ոչ գիտէր զինչ տացէ պատաս-
խանի, զի գիտաց եթէ վասն ժողովելոյ ինչս 'ի բաց

